

ԱԿԱԴ. ՄԱՆՈՒԿ ԱԲԵՂԵԱՆ

# ՀԱՅՈՑ ՀԻՆ ԳՐԱԿԱՆՈՒԹԵԱՆ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

## ԳԻՐՔ ԱՌԱՋԻՆ

(ՍԿԶԲԻՑ ՄԻՆՉԵՒ X ԴԱՐ)

Գ. ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԻՒՆ
1968

Ս Ե Ւ Ա Ն
ՏՊԱՐԱՆ ՍԵՒԱՆ

ՀՐԱՏԱՐԱԿՉԱԿԱՆ ՏԱՆ
Պ Է Յ Ր Ո Ւ Թ



Նկար՝ Մհեր Աբեղյանի

**Ակադ. ՄԱՆՈՒԿ ԱԲԵՂՅԱՆ**

**(1865 – 1944)**

# ԵՐԿՈՒ ԽՕՍՔ



*Ներկայ աշխատութիւնը Հայոց հին գրականութեան առաջին ամբողջական գիտական ընդարձակ պատմութիւնն է։ Այս մասին անցեալում գրուած գրքերը (Յ. Գաթրճեան, Ստ. Պալասանեան, Գ. Զարբհանալեան, Ա. Զամինեան) եղել են՝ կա՛մ զուտ փաստագրական ոչ լրիւ շարադրանքներ, առանց գրական յուշարձանների հասարակական – գաղափարական բովանդակութեան եւ գեղարուեստական առանձնայատկութիւնների քիչ թէ շատ մանրամասն վերլուծման ու գնահատութեան, եւ կա՛մ համառօտ դասագիրք—ձեռնարկներ (դարձեալ ոչ լրիւ) միջնակարգ դպրոցների աշակերտութեան համար։*

*Ակադեմիկոս Աբեղեանի այս գիրքը բազմահմուտ գիտնականի տարիների յամառ աշխատանքի արդիւնք է, ուր առաջին անգամ մեր գրականութեան մէջ դրւում եւ իրենց գիտական լուծումն են ստանում բազմաթիւ կարեւոր պրոբլեմներ, որոնց վրայ հեղինակը տքնել է տասնեակ տարիներ, մի առ մի հետազօտելով ամէն մի առանձին խնդիր։ Իր այս հոյակապ գործում Մ. Աբեղեանը բացայայտում է Հայոց հին գրականութեան բուն էութիւնը, նրա ոգին եւ ընդհանուր ուղղութիւնը, դիտելով այն իբրեւ օտարերկրեայ (պարսկական, արաբական եւ այլն) բռնապետութիւնների դէմ հայ ժողովրդի մղած ազատագրական դարաւոր ու անդուլ մաքառումների եւ քաղաքական պայքարի մի գրականութիւն։*

*Ներկայ աշխատութեան մէջ լուսաբանուած են ոչ միայն զուտ գրական փաստերն ու երեւոյթները, այլեւ վերջիններիս*

*հետ անմիջօրէն առընչուող եւ մեր ժողովրդի կուլտուրայի պատմութեան համար խիստ կարեւոր նշանակութիւն ունեցող մի շարք խնդիրներ (Եզնիկ Կողբացու գործի եւ Ցաճախապատումի առընչութեան, քաղկեդոնականութեան նկատմամբ հայոց եկեղեցու ունեցած դիրքի, Տիմոթէոս Կուզի Հակաճառութեան ժամանակի եւ այլն)։ Աշխատութիւնը նոր լինելով՝ պարունակում է հեղինակի անցեալում գրած մենագրական բնոյթի մի քանի գործերի եւ բանասիրական հետազօտութիւնների կարեւոր թէզերն ու եզրակացութիւնները։ Այստեղ դրսեւորուած են անուանի գիտնականի մեծ էրուդիցիան, բանասիրական հմտութիւնը, ուսումնասիրութեան նիւթի խոր իմացութիւնը։*

*Ակադեմիկոս Մ. Աբեղեանի աշխատանքն անդրադարձնում է հեղինակի մտքի զարգացման էտապները հայոց հին գրականութեան ու ժողովրդական բանահիւսութեան նկատմամբ, էտապներ, որոնք ո՛չ միշտ են ներդաշնակել իրար։*

*Նոյն եռանդով ու ոճով գրւում էր նաեւ աշխատութեան երկրորդ հատորը, որը, հեղինակի մահուան պատճառով, ցաւօք, մնաց անաւարտ։ Ակադեմիկոս Մ. Աբեղեանին յաջողուեց շարադրել երկրորդ հատորի Ա. մասը միայն (շուրջ 20 մամուլ), որ եւ լոյս կը տեսնի 1945 թ.։*

ԳՐԱԿԱՆՈՒԹԵԱՆ ԻՆՍՏԻՏՈՒՏ



# ՑԱՆԿ

## ԱՌԱՋԻՆ ՀԵՂԻՆԱԿՆԵՐ

## ԱՌԱՋԻՆ ՊԱՏՄԱԳԻՐՆԵՐ



## ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՎԷՊ

## ԴԱՍԱԿԱՆ ՊԱՏՄԱԳԻՐՆԵՐ

## ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆՆԵՐ



## ԴԱՒԱՆԱԲԱՆԱԿԱՆ ՊԱՅՔԱՐԻ ԳՐԱԿԱՆՈՒԹԻՒՆ

## ԲԱՆԱՍՏԵՂԾՈՒԹԻՒՆ



## ՊԱՏՄԱԳՐՈՒԹԻՒՆ



## ՎԻՊԱԿԱՆ ԲԱՆԱՀԻՒՍՈՒԹԻՒՆ



## ՄԱՔԱՌՈՒՄ ԱՐԱԲԱԿԱՆ ԲՌՆԱՊԵՏՈՒԹԵԱՆ ԴԷՄ

## ՏՈՀՄԱՅԻՆ ՊԱՏՄԱԳՐՈՒԹԻՒՆ



## ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ



## ՎԻՊԱԿԱՆ ԲԱՆԱՀԻՒՍՈՒԹԻՒՆ



## ՀՈԳԵՒՈՐ ԵՐԳ

## ԽԱՂԱՂ ՇԻՆԱՐԱՐՈՒԹԵԱՆ ԴԱՐ



# ՅԱՒԵԼՈՒԱԾՆԵՐ

## *ԱՌԱՋԻՆ ՅԱՒԵԼՈՒԱԾ*

## ԵՐԿՐՈՐԴ ՅԱՒԵԼՈՒԱԾ



## ԵՐՐՈՐԴ ՅԱՒԵԼՈՒԱԾ



## ՉՈՐՐՈՐԴ ՅԱՒԵԼՈՒԱԾ



## ՀԻՆԳԵՐՈՐԴ ՅԱՒԵԼՈՒԱԾ



## ՎԵՑԵՐՈՐԴ ՅԱՒԵԼՈՒԱԾ



## ԵՕԹՆԵՐՈՐԴ ՅԱՒԵԼՈՒԱԾ

# ԱՌԱՋԱԲԱՆ

Դեռ 1890-ական թուականների վերջից մտադրուել էի գրել հայոց հին գրականութեան պատմութիւնը, բայց առաջին փորձից յետոյ տեսայ, որ անհնարին էր այդ անել, որովհետեւ չկային առանձին ուսումնասիրութիւններ, եւ շատ գրական խնդիրներ դեռ պարզուած չէին: Ուստի սկսեցի մենագրութիւններով զբաղուել: Հետագայում էլ մի քանի անգամ փորձեցի կատարել այդ, բայց դարձեալ թողի: Երբ 1940 թ. ՍՍՌՄ Գիտութիւնների Ակադեմիայի Հայկական Ֆիլիալից առաջարկ եղաւ ինձ այդ մասին, ես երկար տատանւում էի յանձն առնելու կատարել այդ ինձ համար ոչ հեշտ գործը, որովհետեւ այժմ էլ ամենամեծ մասով չեն վերացած այն դժուարութիւնները, որ հայոց հին գրականութեան պատմութիւնը գրելու համար կային քառասուն տարի առաջ: Ի՞նչ են դրանք:

Այս երկար ժամանակի ընթացքում համեմատաբար սակաւ մենագրութիւններ եւ քննագիրներ հրատարակուեցին, այնպէս որ դեռեւս կարելի չէ ժամանակագրական յաջորդութեամբ յօրինել մի աշխատութիւն՝ բաւարար չափով պարզելով մեր հին գրականութեան հիմնական մոմենտները: Դեռ շատ բաց տեղեր են մնում այդ ընդարձակ շրջանի մէջ:

Երկրորդ դժուարութիւնն այն է, որ մինչեւ այժմ լոյս չտեսաւ հայոց պատմութեան մի գիտական ուսումնասիրութիւն, մեր դարաւոր պատմութեան զանազան շրջանների սոցիալ-տնտեսական-քաղաքական կեանքի պարզաբանութիւնը՝ հասցրած մինչեւ 19-րդ դարը: Այդպիսի մի գործը պիտի օգնէր գրականագէտին իր աշխատանքը կատարելիս եւ երբեմն հեշտացնէր յայտաբերել տուեալ դարաշրջանի այն քաղաքական ու սոցիալական իրականութիւնը, որի անդրադարձումն են եղել այս կամ այն գրական յիշատակարանները: Եւ քանի որ չկայ այդպիսի պատմութիւն, գրականագէտն ինքը պէտք է մտնի պատմական խնդիրների պարզաբանման մէջ, յատկապէս եկեղեցական պատմութեան վերաբերեալ, որովհետեւ մեր հին գրականութիւնը մի ստուար մասով եկեղեցական է: Նա պիտի զբաղուի նաեւ այնպիսի կողմերով, որոնք գրականութեան պատմութեան մէջ առանձին տեղ պիտի չգտնէին, այլ իբրեւ յայտնի իրողութիւններ մի երկու խօսքով միայն պէտք է մէջ բերուէին:

Ապա պիտի ասել նաեւ հետեւեալը: Հին գրականութեան պատմութիւնը գրելուց առաջ՝ անհրաժեշտ է, որ եղած լինէին երկու տեսակ քննադատութիւններ — գրական եւ բանասիրական: Մեր հին երկերի գրական քննադատութիւնը, սակայն, մեծ մասամբ չի կատարուած: Այժմ գրականագէտը

պէտք է գրեթէ միշտ իր գաղափարային ու ձեւական վերլուծութիւնն անի եւ մեծ մասամբ միայն իր տեսակէտները մէջ բերի, յաճախ առանց ուրիշների տեսութեանը, որ չկայ: Դրանից առաջանում է, հարկաւ, անցանկալի միակողմանութիւն: Ինչ վերաբերում է բանասիրական քննադատութեանը, պէտք է ասել, որ գրականութեան պատմութեան համար առաջուց պիտի որոշուած լինէին բանասիրական խնդիրները, ինչպէս են՝ տուեալ հեղինակի ապրած ժամանակը, նրա երկերը, կենսագրութիւնը, նրա ստեղծագործութեան հանգամանքները եւ այլն: Առանց դրանց՝ հնարաւոր չէ ամէն մի հեղինակ ու երկ դնել իր տեղում իբրեւ տուեալ ժամանակաշրջանի արտայայտութիւն եւ գրականութեան զարգացման պրոցէսն անխախտ կապել հայոց պատմութեան ընդհանուր ընթացքի հետ: Մեր հին գրականութեան համար, սակայն, շատ այդպիսի կենսագրական կէտեր տակաւին որոշ չեն: Կան երկեր էլ, որոնց հեղինակն ու դարն անգամ յայտնի չեն կամ վերջնականապէս չեն ստուգուած: Գրականագէտը պատմութիւն գրելիս՝ ստիպուած է կանգ առնելու նաեւ բանասիրական քննադատութեան վրայ եւ շատ անգամ մտնելու հակաճառութեան մէջ ընդդէմ ուրիշների կարծիքների:

Իմ այս աշխատութեան մէջ յիշուած պատմական ու բանասիրական նիւթերի պարզաբանումն անհրաժեշտօրէն բռնել է բաւականին տեղ: Ես չէի կարող, օրինակ, Մովսէս Խորենացի եւ Եղիշէ պատմագիրներն ուղղակի 5–րդ դարում կարգել՝ առանց կանգ առնելու հակառակ կարծիքների վրայ եւ մերժելու դրանք, կամ յունաբան դպրոցի սկիզբը 5–րդ դարի երկրորդ կէսից ի վեր ընդունել՝ առանց հերքելու ուրիշների ասածները, եւ շատ նմանները: Այսպիսի քննաբանութիւնների մի մասը, որպէսզի սովորական ընթերցողների համար ծանրաբեռնութիւն չլինի, դրուած են գրքիս վերջում իբրեւ յաւելուածներ․ միւսներն առնուած են բնագրի մէջ, բայց պէտք է տպագրուեն աւելի մանր տառերով եւ զատուեն մնացածից: Այսպիսի անջատումից յետոյ՝ կը մնայ, գլխաւորապէս («գլխաւորապէս» եմ ասում) գրականութեան պատմութիւնն ըստ իր էութեան՝ իբրեւ մի նշանակալից մասն հին հայկական կուլտուրայի պատմութեան:

Հիմա հարց է՝ հին գրուածքներից ի՛նչը իբրեւ յատկապէս գրական երկ՝ պէտք է նիւթ դառնայ գրա–պատմական ուսումնասիրութեան: — Անշուշտ գեղարուեստական երկերը: Նոր գրականութեան պատմութեան համար այդ պարզ է — դրամա, վէպ, քնարերգութիւն իրենց ենթատեսակներով: Հին գրականութեան պատմութեան նիւթի ընտրութիւնն անելիս՝ նկատի պիտի ունենալ, որ կրիտերիումն անհրաժեշտօրէն տարբեր պիտի լինի: Բանն այն է, որ հնում մեզնում չի եղել ոչ դրամա, ոչ վէպ այժմեան իմաստով, ոչ էլ ընդհանրապէս այնպիսի գեղարուեստական գրականութիւն, որ ոչ–գեղարուեստական տեսակներից անջատ եւ անկախ լինէր իբրեւ մի ինքնուրոյն բնագաւառ: Այնտեղ բանաստեղծականն եւ ոչ–բանաստեղծականը կազմում են մի չտարբերակուած միութիւն: Նոյնիսկ հոգեւոր երգերի մէջ, որ քնարերգութիւն են, մեծ է եղել ոչ միայն Աւետարանի, այլեւ դաւանաբանութեան եւ մեկնաբանութեան ազդեցութիւնը, որ չափազանց թուլացրել է դրանց գեղարուեստականութիւնը եւ քնարերգութիւնը դարձրել կրօնագիտութիւն սովորեցնելու միջոցներից մէկը: Գրիգոր Նարեկացու բանաստեղ–

ծութեան մէջ անգամ, թէպէտ եւ պակաս չափով, երեւում է նոյն ազդեցութիւնը: Բայց եւ այնպէս՝ ամենից առաջ դրանք են մեր հին գրականութեան գեղարուեստական երկերը:

Երկրորդ կարգի մէջ են հայկական վկայաբանութիւնները: Դրանք հին գրականութեան վիպական պատումներն են իրենց առանձնայատուկ ձեւով ու նպատակով, ոչ մաքուր գեղարուեստական երկեր, որոնք դեռ չեն ի մի ամփոփուած եւ որեւէ քննադատութեան առարկայ դարձած: Իմ այս աշխատութեան մէջ առնուած են երեքը միայն, որոնցից մէկն իբրեւ պարսկական շրջանի արտայայտութիւն, միւսը՝ արաբական:

Մաքուր գեղարուեստական եղել է բերանացի ժողովրդական բանահիւսութիւնը, բայց այդ էլ հարազատութեամբ չի հասել մեզ. պատմագիրները միայն օգտուել են ժողովրդական երգերից եւ վէպ ու զրոյցներից՝ իբրեւ աղբիւրներից: Զնայելով դրան՝ մեր հին պատմական յիշատակարաններ մէջ աւելի կամ պակաս անդրադարձած է մեր հին ժողովրդական բանահիւսութիւնը, եւ իմ այս աշխատութեան մէջ միշտ գրուած է նաեւ բերանացի բանաստեղծութեան մասին: Հին գրականութեան պատմութիւնը թերի կը լինէր առանց դրան, որովհետեւ ժողովրդական եւ գրաւոր բանահիւսութիւնները, այդ երկուսը միասին արտայայտում են մեր գրականութեան ամբողջական պրոցէսը:

Գեղեցիկ գրականութեանը երկրորդաբար պատկանում են պերճախօսութիւնը, ճառերը, որոնք բոլորը կրօնական բովանդակութիւն ունեն: Դրանց մէջ կան այնպիսիները, որ յօրինուած են հռետորական վսեմ արուեստով: Բայց դրանց համար եւս պակասում է բանասիրական քննադատութիւնը. ուստի իմ այս աշխատութեան մէջ ուսումնասիրուած են գլխաւորապէս «Յաճախապատում» կոչուած ճառերը:

Ոչ միայն ճառախօսները, այլեւ հին հեղինակներն ընդհանրապէս ստանում էին դպրոցական ճարտասանական ուսում եւ ձգտում էին իրենց երկերը յօրինել արուեստով: Նրանք կիրառում էին զանազան հռետորական ձեւեր, պատկերաւոր արտայայտութիւններով պերճ լեզու եւ իրենց գրուածքներին տալիս էին որոշ ոճաբանական ձեւաւորում: Այդպէս են վարուել մեր պատմագիրների մեծ մասը: Նրանց գրուածքները երբեմն խառնուրդ են բանաստեղծականի եւ պրոզայիկի. միեւնոյն երկի մէջ գրական եւ արտագրական տարրերը գտնւում են փոխէփոխ իրար կողքի: Դրանց մէջ կան գեղեցիկ հատուածներ, մանաւանդ երբ պատմագիրները գրի առել կամ քերթողաբար մշակել են ժողովրդական վիպական պատումներն ու զրոյցները, կամ մանրամասնօրէն պատմել են որեւէ իրողութիւն, կամ անկեղծ քնարական զեղումներով նկարագրել իրական կեանքի եղելութիւնները: Հասկնալի է, որ պատմագիրները, որոնք պատկառելի քանակով են մեր գրականութեան մէջ, այդ կողմերով մասամբ մտնում են գեղարուեստական գրականութեան մէջ: Բայց պատմական գրուածքները միշտ առանձին տեղ են գրաւել իմ այս աշխատութեան մէջ նաեւ ուրիշ պատճառով. դրանք իրենց ա'յն մասերի բովանդակութեամբ, որ ժամանակակից են հեղինակներին, սովորաբար լուսաբանում են այն դարաշրջանները, որոնց մէջ ծագել են այդ պատմական

եւ այլ երկերը: Այդպիսով լրացւում է անհրաժեշտ պատմական տեսութիւնը, որի մասին խօսուեց վերեւում:

Մի կողմ են մնում բազմաթիւ մաքուր պրոզայիկ գրուածքներ, ինչպէս են՝ ժամանակագրութիւններ, կենսագրութիւններ, կանոններ, թղթեր, դաւանաբանական ճառեր, մեկնութիւններ, մաթեմատիկական ու տիեզերագրական երկեր եւ այլն, յաջորդ շրջանում նաեւ բժշկական, իրաւաբանական եւ այլ աշխատութիւններ: Այս ընդարձակ գրականութիւնից առնուած է Անանիա Շիրակացու գործը, որ Եզնիկ Կողբացու գեղեցիկ հակաճառութեան հետ միասին կազմել են մեր միջնադարեան աշխարհայեցութեան հիմքը: Մնացածների մասին խօսուած է այնքան միայն, որքան դրանք նշանակութիւն են ունեցել հայկական ընդհանուր կուլտուրայի մէջ, որի զարգացումից մեկուսացած չէ գրականութեան պրոցէսը:

Մեր հին գրականութիւնը, ինչպէս եւ ամէն կուլտուրական երեւոյթ, հարկաւ, մեկուսի եւ անջատ չէ նաեւ այլ ազգերի ժամանակակից կուլտուրայից ու մասնաւորապէս գրականութիւնից: Գրաւոր դպրութիւնը նոյնիսկ ծագել է ասորիների ու յոյների հետ ունեցած հաղորդակցութեան հետեւանքով եւ 5–րդ դարից սկսած՝ թարգմանութեան միջոցով իւրացրել է ընդհանուր քրիստոնէական, առանձնապէս բիզանդական գրական տեսակները եւ ունեցել է նոյն զարգացումը, ինչ որ միջնադարեան քրիստոնէական գրականութիւնը: Ուստի այս աշխատութեան մէջ ոչ միայն բաւականին տեղ է տրուած թարգմանութիւններին, այլեւ գրականութեան պատմութիւնն ամենանախնական դարերից, առասպելներից սկսած, առնուած է այլ գրականութիւնների հետ համեմատութեամբ:

Այս աշխատութեան մէջ պարունակւում են հայոց հին գրականութեան առաջին երկու շրջանները: Պերիոդիզացիան կատարուած է ոչ թէ ձեւականօրէն, — ինչպէս սովորաբար վարւում են՝ բաժանելով անգիր (բանաւոր) գրականութիւն եւ գրաւոր դպրութիւն 5–րդ դարից ի վեր, — այլ ըստ բովանդակութեան, նայելով գրականութեան մէջ արտայայտուած պատմական իրականութեանը: Առաջին շրջանը՝ «նախնական առասպելա–պատմական բանահիւսութիւնը»՝ սկսւում է հնագոյն ժամանակներից եւ արտայայտութիւն է հայոց պատմական իրականութեան մինչեւ 3–րդ դարը (մեր թ.): Դա միայն աւանդական բանահիւսութիւն է: Շրջանի կոչումը՝ Առասպելա–պատմական»՝ արդէն ցոյց է տալիս այդ բանահիւսութեան ընդհանուր բնորոշ գիծը: Ուսումնասիրութիւնը կատարուած է նկատի ունենալով հայոց նախնական պատմութիւնն ու կրօնը, օտար ազդեցութիւններն ու միջազգային առասպելաբանութիւնը, ինչպէս նաեւ արուեստն ու կերպարները:

Երկրորդ շրջանը՝ «Մաքառման գրականութիւնը» իր մէջ անդրադարձրած ունի հայկական պատմական իրականութիւնը՝ սկսած 3–րդ դարից մինչեւ 11–րդ դարը: Այս շրջանի գրականութիւնը կազմուած է ե՛ւ աւանդական բանահիւսութիւնից, ե՛ւ գրաւոր երկերից: Դրա մէջ երեւան է գալիս ազնուականութեան եւ եկեղեցականութեան շահերի պաշտպանութիւնը: Թէ՛ գրաւոր դպրութեան եւ թէ՛ վիպական բանահիւսութեան մէջ, ինչպէս են՝

«Պարսից Պատերազմը», «Պատերազմ Տարօնոյ» եւ ուրիշները, իշխում է մի ընդհանուր միտում — ազգային խիստ մաքառում նախ՝ Պարսից Սասանեան տէրութեան ու յոյների, յետոյ՝ արաբական բռնապետութեան դէմ: Միւս կողմից՝ այս շրջանի գրականութեան համար բնորոշիչ է նաեւ եկեղեցական դասի ձգտումն ու պայքարն իր գաղափարախօսութիւնը հաստատելու հայ ժողովրդի մէջ, մինչեւ որ 10–րդ դարի երկրորդ կէսին թուլանում է օտարների դէմ մաքառումը, գերիշխում է եկեղեցական աշխարհայեցութիւնը, որին ենթարկւում են նաեւ իրենց իշխանութիւնների մէջ վերականգնուած ազնուականները: Չեն պակասում նաեւ աշխարհիկ գաղափարները եւ հայրենասիրական ոգին, աչքի է ընկնում ուժեղ ձգտում պաշտպանելու ազգային անկախութիւնը եւ ընդհանուր շահերը, որոնք, սակայն, սովորաբար արտայայտուած են Հայոց եկեղեցու շահերի հետ կապուած: Շրջանի վերջում յօրինուած մի քանի երկերի մէջ արդէն զգալի է յաջորդ շրջանի՝ «Վերածնութեան գրականութեան» շունչը:

Առանձին երկերի ուսումնասիրութեան մասին այստեղ այն միայն պիտի ասել, որ այդ կատարուած է՝ բնականաբար ըստ նրանց բովանդակութեան ու ձեւի: Հեղինակների յօրինելու արուեստն ու ոճը ցոյց տալու համար՝ բերուած են հատուածներ: Բացի այդ՝ ուշադրութեան են առնուած պատմագիրներից այնպիսի կտորներ, որոնց մէջ պատկերացւում է ժամանակի ընդհանուր դրութիւնը, կամ որոնք անհրաժեշտ են ժողովրդական վէպի պատմականութիւնը բացատրելու համար:

1942, *Ապրիլի* 2·
*Երեւան*

*Մ. ԱԲԵՂԵԱՆ*

# ՇՐՋԱՆ ԱՌԱՋԻՆ

## ՆԱԽՆԱԿԱՆ ԱՌԱՍՊԵԼԱ-ՊԱՏՄԱԿԱՆ ԲԱՆԱՀԻՒՍՈՒԹԻՒՆ

### ՍԿԻԶԲՆԵՐԸ

1. Լեզուն եւ սկզբնական պատմութիւնը.— *Թէ ի՛նչ ծագում ունի հայ ցեղը, ի՛նչպէս եւ ե՛րբ է հաստատուել նա Հայաստանում, ո՛րտեղից եւ ո՛ր ճանապարհներով է եկել նա իր պատմական հայրենիքը, ի՛նչ ցեղերի հետ է շփում ունեցել մինչեւ Հայաստան գալը եւ գալուց յետոյ, որի՛ց եւ ի՛նչքան է ազդուել լեզուով եւ արենակցական խառնուրդով, — այս ամէնի մասինստոյգ եւ ընդարձակ տեղեկութիւններ չկան: Բայց հիմնուելով յոյն մատենագիրների հաղորդածների, սեպագրական յիշատակարանների եւ հայերի պահած հին աւանդութիւնների, ինչպէս եւ լեզուաբանական ուսումնասիրութիւնների վրայ՝ որոշ եզրակացութիւններ են անում: Ամենից առաջ այն, թէ հայոց լեզուն, ըստ հնդեւրոպական լեզուաբանութեան, կազմում է ուրիշներից անկախ մի առանձին ճիւղ հնդեւրոպական (արիական) լեզուների ընտանիքի մէջ, որին պատկանում են եւրոպական լեզուների մեծ մասը՝ յունարէն, լատիներէն, ռուսերէն, գերմաներէն եւ այլն, իսկ Ասիայում՝ պարսկերէն, հնդկերէն, եւ ուրիշները:*

*Յաբեթական լեզուաբանական տեսութեամբ, սակայն, հայերէնը կատարեալ հնդեւրոպական լեզու չէ: Դա յաբեթական լեզուների ընտանիքից հնդեւրոպական լեզուների սիստեմին անցման լեզու է:*

*«Յաբեթա-պրոմեթէիդեան քերականութիւնը, որի մշակումն սկսուած էր բաւական վաղ, սկզբում առաջ տարաւ հայերէնի հարցը, որովհետեւ վաղուց սկսուել էր պարզուել, որ Հայաստանում շատ լեզուներ են եղել, որոնք իբրեւ վերապրուկներ այժմ մնում են մի երկայն շարք բարբառների մէջ, որոնց թւում մինչեւ այսօր մի քանիսը, ինչպէս՝ զոկերէնը, իսկապէս ինքնուրոյն լեզու են, եւ այժմ Հայաստանում ունենք ոչ թէ մէկ, այլ յոգնակի թուի կազմութեամբ երկու լեզու, — Ք-հայերէն, որ եւ հին գրական, փէոդալական լեզուն է, եւ Ր-հայերէն, նոր գրականը: Ի վերջոյ պարզուեց, որ Հայաստանի այս երկու լեզուներից իւրաքանչիւրը, ըստ ձեւաբանական-ձեւական յատկանիշների, պատկանում է մի առանձին սիստեմի, մէկը՝ Ք-հայերէնը Ֆլեկտիւ (թեքական) սիստեմին, միւսը՝ Ր-հայերէնը ագգլյուտինատիւ (կցական) սիստեմին, միաժամանակ երեւան եկաւ, որ դրանք ընդհանուր առմամբ յաբեթական սիստեմից պրոմեթէիդեան-հնդեւրոպական սիստեմին անցման լեզուներ են, սակայն բնաւ չէր բացառւում դրանցից իւրաքանչիւրի խաչակցութեան հնարաւորութիւնը եւ իրականութիւնը... Արդէն կազմուած տիպերը, Ք-հայերէնը... եւ Ր-հայերէնը, «ժողովրդական», ռամկական լեզուն... նոյնպէս ազդել են միմեանց վրայ եւ խաչակցուել իրար հետ»* (1):

---

(1) Ն. Մառ, *Յաբեթաբանութեան Տեսութիւն (ռուսերէն)*, Բաքու, 1928, էջ 154:

*«Այնպիսի աւելի ակնառու հիբրիդները (խառնուածոները), ինչպէս, օրինակ, Հայաստանի լեզուները, մասամբ եւ ալբաներէն լեզուն, — ոչ թէ յաբեթական լեզուների հետ հնդեւրոպականների անազանազոյն խաչակցութեան մարմնացումն են, այլ ներկայացնում են անցման վիճակի միջնական էտապը մաքուր յաբեթական եւ կատարեալ հնդեւրոպական լեզուների միջեւ. դրանք յաբեթական ընտանիքի նախապատմական վիճակից հեռացած եւ լիովին հնդեւրոպականութեան չհասած լեզուներ են»* (1)։

*«Ֆլեկտիւութիւնը — թեքականութիւնը, որին բոլորովին մօտեցել է վրացերէնը, ոչ թէ պրոմեթէիդեան (հնդեւրոպական) կարգի է, այլ սեմական. մինչդեռ, ընդհակառակն, հայերէն լեզուի ֆլեկտիւութիւնը — թեքականութիւնը պրոմեթէիդեան («հնդեւրոպական») կարգի է։ Իսկապէս ոչ միայն հայերէնը, այլեւ վրացերէնը ագգլուտինատիւ — կցական սիստեմից ֆլեկտիւին — թեքականին անցման լեզուներ են, հայերէնը յենւում է պրոմեթէիդեան (հնդեւրոպական) սիստեմին, իսկ վրացերէնը՝ սեմական»* (2)։

*Ինչ վերաբերում է պատմութեանը՝ ենթադրում են, թէ հայերի նախահայրերը, մեր թուականութիւնից շատ առաջ, բնակուելիս են եղել Եւրոպայում յոյների ու թրակացիների նախահայրերի մօտիկ։ Այդտեղից նրանք անցնել են Փոքր Ասիա, ուր հաւանօրէն մի առժամանակ ապրել են փռիւգացիների հարեւանութեամբ, քանի որ յոյն մատենագիրներից Հերոդոտը հայերին համարում է փռիւգացիներից ծագած մի գաղութ։ Այդ ցոյց է տալիս, որ Հերոդոտի ժամանակ, 5-րդ դարում մեր թ. ա., պարզ գիտակցութիւն է եղել այն մասին, թէ հայերն արեւմուտքից են եկել իրենց երկիրը* (3)։

*Այնուհետեւ հայերը շարժուելով դէպի արեւելք՝ մտել են Կապադովկիա եւ Փոքր Հայք՝ Եփրատից արեւմուտք եւ Գայլ գետից հարաւ գտնուած երկիրը։ Խալդական Մենուա թագաւորի մի արձանագրութեան մէջ յիշուած «Ուրմենի» անուան մէջ տեսնում են դեռ Կապադովկիայում ապրող հայերին։ Նոյնպէս հայերի յիշատակութիւնն են համարում «Իլիականի» մէջ Նաւերի ցուցակում յիշուած «Արիմ-ները», որոնց բնակութեան վայրը դնում են Կապադովկիայում, Կեսարիայի կողմերը։ Այստեղ ու Փոքր Հայքում 7-րդ դարում մեր թ. ա. հայերի հարեւան եղել են վաչկատուն կիմմերները — գամիրները, որոնք այդ դարում շարժւում են ամբողջ Առաջաւոր Ասիայի վրայ։ Դրանց անունով հայերը Կապադովկիան կոչել են Գամիրք։*

*Եփրատից արեւելք ի հնուց անտի բնակուել է մի կուլտուրական ժողովուրդ, որ իր սեպագիր արձանագրութիւնների մէջ իրեն կոչում է խալդինի, իսկ ասորեստանցիները նրա երկիրը կոչում են Ուրարտու, որի յիշատակը մնացել է Հայաստանի Այրարատ նահանգի եւ Արարադ գաւառի (Կորդուք նահանգում) անունների մէջ։ Ուրարտացիները 9-րդից մինչեւ 6-րդ դարի սկիզբները մեր թ. ա. կազմած են եղել բաւական զօրեղ պետութիւն, որի դէմ երկար ժամանակ պատերազմներ են մղել ասորեստանցիները։Նրանք չի-*

---

(1) Ն. Մառ, *Յաբեթաբանութեան Տեսութիւն* (*ռուսերէն*), Բաքու, 1928, էջ 9։

(2) Անդ, էջ 75։

(3) *Prof. Dr. Jos. Marquart,* Die Entstehung and Wiederherstellung d. armenischen Nation. *Berlin, 1918, էջ 5 եւ հտն.։*

*նած են եղել քաղաքներ, ամրոցներ: Նշանաւոր են նրանց ջրանցքները, ժայռերի վրայ եւ մէջը շինած բնակարանները: Նրանցից են մնում Հայաստանի զանազան կողմերում սեպագիր արձանագրութիւնները:*

*Ուրարտուն 6-րդ դարի սկիզբներում ենթարկւում է մարերի գերիշխանութեանը: Այդ ժամանակներում հայերը, հաւանօրէն Թիկունքից — արեւմուտքից ճնշուելով, շարժւում են դէպի արեւելք: Նրանց մի ճիւղը հիւսիսից Եփրատն անցնելով գնում, բռնում է Եկեղիք, միւս ճիւղն անցնում է դէպի Արածանու հովիտը, մտնում Տարօն: Իսկ մի երրորդ ճիւղն էլ հարաւով է շարժւում դէպի արեւելք եւ հասնում մինչեւ Աղիարբենէ Ասորեստանում, Հայաստանի սահմաններից դուրս, եւ ասորեստանցիներից գրաւում մի քանի գաւառներ, ինչպէս՝ Տմորիք եւ այլն: Հաւանօրէն 5-րդ դարում մեր Թ. ա. հայերը Տարօնի կողմից սկսել են անցնել դէպի հիւսիս, եւ յետոյ մտել են Արաքսի հովիտը: Այստեղ 5-րդ դարի վերջում դեռ ապրում էին ալարոդցիները, որոնք մատիէնների հետ (Ուրմիոյ լճի վրայ) կազմելիս են եղել մի առանձին շրջան:*

*Երբ բարձրանում է Պարսից Աքեմենեան իշխանութիւնը, Հայաստանը Մարաց ուրիշ բոլոր երկիրների հետ մտնում է նրանց տիրապետութեան տակ (մօտ 520—486 Թ. մեր Թ. ա.): Հայ ազգի անունը յիշատակւում է Դարեհ Թագաւորի (421—486-ին մեր Թ. ա.) մի սեպագիր արձանագրութեան մէջ: Այս Թագաւորը մի քանի պատերազմներից յետոյ միայն կարողանում է նուաճել հայերին (արմէններին), որոնք նոյնիսկ Հայաստանի սահմաններից դուրս, Ասորեստանում են կռիւներ մղել Դարեհի դէմ: Այնուհետեւ Հայաստանը դառնում է Պարսից տէրութեան մի երկիր, բաժանուած երկու սատրապութիւնների, արեւելեան եւ արեւմտեան, որոնք կառավարւում էին Թագաւորական տոհմի մարդկանցով: Ապա պարսկական միւս երկիրների հետ Հայաստանն էլ Ալեքսանդր Մակեդոնացու ժամանակից մտնում է Մակեդոնեան իշխանութեան մէջ (330 Թ. մեր Թ. ա.)եւ յետոյ, չնայելով մի քանի ապստամբութիւններին, Սելեւկեան իշխանութեան տակ մնում է մինչեւ 2րդ դարը (189 Թ. մեր Թ. ա.):*

*Այս աւելի քան երեք հարիւր տարուայ ընթացքում հայերն աճելով տարածւում են դէպի հիւսիս ու մտնում Կուր գետի հովիտը: Այդ շրջանում տեղի է ունենում այլ եւ այլ տոհմերի միացումը: Կազմակերպւում, առաջ է գալիս հայութիւնն իբրեւ մէկ ընդհանուր լեզուով խօսող ցեղային միութիւն՝ ուրիշ ցեղերի դիմաց: Թէպէտ եւ իրենք օտարների տիրապետութեան ներքոյ, բայց խաղաղութեամբ ապրելով եւ տնտեսապէս ու կուլտուրապէս զարգանալով՝ լեզուով եւ ազգագրօրէն նուաճում են երկիրը: Տեղացի բնիկ ժողովուրդներն այդ շրջանում եւ աւելի եւս հետագայում, Արտաշիսեան հարստութեան ժամանակ, հետզհետէ ձուլւում են հայերի մէջ: Տեղ-տեղ միայն, այն էլ լեռնային կողմերում, յարատեւում են նրանց մնացորդները մինչեւ երկար դարեր:*

2. Օտար ազդեցութիւններ: — *Դեռեւս պարզուած չէ, Թէ հայ ցեղը Փոքր Ասիայում եւ Փոքր Հայքում ունեցած դարաւոր կեանքի ընթաց-*

քում, ո՞ր ցեղերից ի՛նչ տարրեր է ընդունել իր մէջ եւ ինչո՛վ ու որքա՛ն է ազդուել ուրիշներից: Պարզուած չէ նաեւ տեղացի ուրարտացիների եւ ուրիշների կուլտուրական եւ ցեղային ազդեցութիւնը, որ անպայման մեծ է եղել: Բայց մի բան պարզ է հիմա, որ հայոց լեզուի միայն մի մասն է հնդեւրոպական: Բազմաթիւ բառեր ու մասնիկներ, անպայման նաեւ քերականական ձեւեր, որոնք դեռ բացատրուած չեն, հաւանօրէն գալիս են ոչ-հնդեւրոպական լեզուով խօսող ցեղերից, որոնց հետ չփուել է հայ ցեղն արեւմուտքում: Բացի այդ՝ հայերէն լեզուն իշխել է Հայաստանի հին ժողովուրդների համար, բայց սրանց լեզուներն էլ տեղի չեն տուել առանց հայերէնի վրայ ազդելու. այնպէս որ հայերէնը նոյնիսկ մի խառնուածոյ լեզու է: Միւս կողմից՝ խառնուրդ է եւ հայ ցեղը, որ իր հետ ձուլել է ուրարտացիներին եւ ուրիշ շատ հարեւաններ: Այսպէս՝ Փոքր Ասիայում եւ Ուրարտական երկրում տեղի ունեցած խառնուրդներով կազմուել է հայ էթնոսը — հայ ժողովուրդը եւ իր լեզուն:

Ուրարտականից շատ աւելի մեծ է եղել իրանական կուլտուրայի ազդեցութիւնը նոյնիսկ կենցաղի, բարքերի, սովորութիւնների վրայ: Քսենեֆոնի ժամանակից արդէն, 5-րդ դարի վերջում մեր թ. ա., պարսկերէն լեզուն անհասկանալի չի եղել հայերի մէջ: Իրանական ազդեցութիւնը տեւում է ոչ միայն մինչեւ մակեդոնացոց տիրապետութիւնը, այլ եւ յետոյ՝ հարեւանութեամբ մարերի ու պարսիկների հետ, ապա աւելի՝ Արշակունի հարստութեան ժամանակ. համեմատաբար պակաս չափով նաեւ Սասանեանների իշխանութեան օրով: Այդ ազդեցութիւնն ամենից առաջ երեւում է հայ լեզուի վրայ: Հայերէնում այնքան շատ են այժմ արդէն բոլորովին հայացած պարսկերէն բառերը — մեծ մասամբ պարթեւական շրջանում փոխառած եւ պահլաւերէնին նման, — որ մի ժամանակ հայերէնը դնում էին հնդեւրոպական լեզուների իրանական ճիւղի մէջ: Մի կողմ թողած բազմաթիւ յատուկ անունները, մօտ ութ հարիւր արմատներ արդէն ճշտուած են իբրեւ պարսկերէնից փոխառութիւն: Դրանք վերաբերում են կուլտուրայի զանազան կողմերին՝ զինուորական կարգերի, դասակարգերի, արուեստների, վաճառականութեան, բոյսերի, կրօնի եւ այլն (1):

Իրանացիների հետ միաժամանակ հայերը յարաբերութեան մէջ են մտել հարաւում՝ Միջագետքի եւ Ասորեստանի բնակիչների — արամէացիների հետ, որոնք այս կողմերի քրիստոնեայ դառնալուց յետոյ ասորի են կոչւում: Հայերը նրանց աւելի բարձր կուլտուրական ազդեցութիւնն եւս կրել են, մանաւանդ որ սահմանակից ասորաբնակ գաւառները մասամբ մտել են Հայաստանի մէջ, եւ հետագայում այդ կողմերի ասորի ժողովրդի մի մասը, ենթարկուելով հայերի քաղաքական ազդեցութեանը, խառնուել է հայերի հետ: Դրա հետեւանքը եղել է այն, որ հայերը ասորիներից էլ շատ բան են սովորել: Ասորերէն լեզուն, թէպէտ եւ պարսկերէնից համեմատաբար պակաս չափով, ազդել է մեր լեզուի վրայ: Հայերէնի մէջ մտել են բաւականին

(1) Հայ ժողովրդական լեզուի վրայ ազդել է նաեւ նոր պարսկերէնը, մասամբ թուրքերէնի միջնորդութեամբ:

թուով ասորական բառեր, որոնք հին ժամանակներից արդէն հայացած են, օրինակ՝ գուլպայ, կաթսայ, կացին, կնիք, մախաթ, մանգաղ, քնար, շամփուր, շղթայ, ձէթ, խանութ, հաշիւ եւ այլն:

Ուրիշների այսպիսի ազդեցութեամբ հայերը Հայաստան մտնելուց յետոյ սկզբնական պատմական շրջանում բնականաբար արագ բարձրանում են կուլտուրապէս: Նրանք ոչ միայն անասնապահութեամբ, այլեւ վաղուց արդէն երկրագործութեամբ ու պարտիզագործութեամբ էին պարապում եւ գիւղերում ապրելով՝ անցել էին նստակեաց կեանքի: Ճարտարարուեստի արդիւնքները ձեռք էին բերում հարեւան ժողովուրդներից: Նրանց կենցաղը հնագոյն շրջանում նահապետական էր. կազմած էին շատ տոհմեր, ապա եւ գիւղական համայնքներ, որոնք կառավարւում էին տոհմապետներով, նահապետներով ու գիւղապետներով: Միաժամանակ եւ նրանց մէջ արդէն տեղի էր ունենում սոցիալական խաւաւորումը. ժողովուրդն արդէն բաժանուած էր «ճոխ» եւ «նուաստ» դասակարգերի: «Ճոխերի» մէջ էր եւ քրմութիւնը, որ եւ մշակում էր աստուածների ու գիւղացիների պաշտամունքն ու առասպելները ոչ բոլորովին ինքնուրոյն կերպով:

3. Նախնական աշխարհայեցութիւն եւ հաւատալիքներ: — Պարսկական ազդեցութիւնը զօրեղ է եղել նաեւ կրօնական հաւատալիքների ու պաշտամունքի վերաբերմամբ: Իրանական ծագում ունեն հայ աստուածների անունների մեծ մասը, որ են՝ Արամազդ, Վահագն, Միհր, Տիր: Պարսիկներից են անցել հայերին նաեւ շատ հաւատալիքներ բարի ու չար ոգիների մասին, ինչպէս են՝ հրեշտակ, դեւ, վիշապ, շահապետ, պարիկ եւ այլն. այլեւ կրօնական աշխարհհայեցութիւնը եռմահեան կեանքի, դրախտի ու դժոխքի մասին: Այս ազդեցութիւնը դեռ մինչեւ մեր օրերն էլ ապրում էր մեր ժողովրդի սնոտիապաշտական հաւատալիքների մէջ (1): Կրօնի նկատմամբ ազդել են եւ ասորիները: Նրանց աստուածներից հայերի մէջ մտել են՝ Բարշամին, Նանէ, Աստղիկ, Անահիտ, որոնք պաշտւում էին գլխաւորապէս Հայաստանի հարաւ-արեւմտեան կողմերում: Ասորերէնից է եւ «քուրմ» բառը:

Բայց այդ պանթէոնը, աստուածների կաճառը, համեմատաբար աւելի ուշ ժամանակի զարգացման արդիւնք է: Սկզբնական շրջանում հայերի մէջ, ինչպէս առհասարակ նահապետական տոհմային հասարակութիւնների մէջ, եղել են մութ գաղափարներ արտաքին աշխարհի եւ իրեն՝ մարդու բնութեան մասին: Այդ նախնական ժամանակների կրօնի մէջ գտնում ենք ամենից առաջ հոգու հաւատքը, մի միամիտ պատկերացում մարմինը կառավարող հոգու մասին: Դրա հետ սերտ կապուած էր անիմիզմը, որով բնութեան բոլոր առարկաները երեւակայւում էին մարդկային հոգեբանութեամբ: Այդ պատկերացման հետ հետագայում, տոհմային հասարակութեան կազմակերպումից յետոյ, կապուած էր բնութեան պաշտամունքը, աստուածացումն այն տարերային ուժերի, որոնցից կախուած էր տոհմի մարդկանց բարօրութիւնը:

---

(1) *Manuk Abeghian*, Der armenische Volksglaube. Leipzig, 1899. **Մ. Աբեղեան**, Հայ ժողովրդական հաւատքը. — Այս աշխատութեան մէջ ցոյց է տրուած այդ ազդեցութիւնը մեր հին հաւատալիքների ու պաշտամունքի վրայ:

Նախնական մարդու երեւակայութեան վրայ զօրեղ տպաւորութիւն են թողել բնութեան երեւոյթներից առանձնապէս ամպրոպը, փոթորիկը, հողմայոյզը, ամպերն իրենց շարժումով, գոյների ու ձեւերի խաղերով եւ չանթընկէց որոտմունքով. ապա եւ արեգակը, լուսինն ու աստղերը, լոյսի ու խաւարի հակադրութիւնը: Մարդու (կամ կենդանու) յատկութիւնները եւ նրա յարաբերութիւններն իր շրջապատի հետ՝ փոխաբերութեան միջոցով վերագրուել են բնութեան այդ երեւոյթներին ու լուսատուներին: Նրանց մէջ երեւակայուել են առասպելական ոգիներ — մարդակերպ եւ կենդանակերպ դեմոններ, ապա եւ աստուածներ ու հերոսներ. լուսատուների եւ օդերեւոյթային շարժումները համարուել են դեմոնների կամ աստուածների գործերը: Ամէն ինչ, հարկաւ, երկրային առարկաների, մթնոլորտային շարժումների, կենդանիների եւ մարդկային կեանքի նմանողութեամբ կամ անդրապատկերումով: Արեգակի, ամպրոպի եւ այլ աստուածները պաշտւում էին նուէրներով, զոհաբերութեամբ ու ծէսերով: Առանձին տեղ ունէր եւ նախնիների, — ցեղի կամ տոհմերի վարիչ նախնիների, նահապետների, — պաշտամունքը, որի մի ձեւն էր տոտեմիզմը, առանձնակի պաշտամունքը մի տոտեմի (մի սրբազան առարկայի, օրինակ՝ մի կենդանի՝ գայլ, օձ կամ մի բոյս, կամ բնութեան մի երեւոյթ՝ քամի, որոտ եւ այլն), որ պաշտողները համարում էին իրենց նախնին եւ որի անունով կոչում էին իրենց: Տոտեմների պաշտամունքի հետ յաճախ կապուած է եղել նաեւ կենդանակերպ ոգիների ու կենդանակերպ աստուածների պաշտամունքը:

4. Գերապրուկներ: — *Այս նախնական կրօնը, ինչպէս եւ տոհմային կենցաղը, բնականաբար միանգամից չեն վերացել, դրանց մի քանի բնորոշ առանձնայատկութիւնները յարատեւել են երկար: Դրանց հետքերը գտնւում են ոչ միայն մեր փէոդալական հասարակարգի շրջանում, մեր հին առասպելների, ժողովրդական վէպի ու հաւատալիքների մէջ, այլեւ հասել են մինչեւ 19–րդ դարը եւ երեւում են անգամ մեր ժամանակի ժողովրդական հաւատալիքների ու առասպելների եւ կենցաղի մէջ: Այդ հին շրջանի կենցաղի գերապրուկներն են եղել 19–րդ դարում՝ հայ գերդաստանի մեծութիւնն ու նահապետական կազմութիւնը.. գերդաստանի հօր, այլեւ մեծ նանի իշխանութիւնն ընտանիքի միւս անդամների, մեծ նանինը՝ հօր կենդանութեան ժամանակ յատկապէս կանանց եւ երեխաների վերաբերմամբ. կանանց առեւանգումն ու գնումը, եւ վերջապէս՝ արեան վրէժխնդրութիւնը, որ կատարւում էր սպանուածի ազգականների ձեռով մարդասպանից կամ նրա ազգականներից: Ամբողջ գերդաստանն, ուրեմն, պատասխանատու է եղել իր անդամներից մէկի կատարած եղեռնի համար: Հին դարերում աւելի եւս մնացած են եղել այս տոհմային կենցաղի գծերը: Գերդաստանի հայրը կամ տան դըլխաւորը մեր Թ. 2–րդ դարում, օրինակ, ինչպէս երեւում է, դեռ անսահման իշխանութիւն է ունեցել ընտանիքի միւս անդամների վրայ: Հայաստանում այդ ժամանակ կարելի է եղել առանց պատասխանատուութեան սպանել իր*

կնոջը, իր երեխաներին, նոյնպէս եւ իր անզաւակ եղբօրն ու քրոջը (1)։ Այդ հին դարերում անպայման կատարուելիս են եղել նաեւ այն սպանութիւնները, որ Մ. Խորենացին (Բ. 60) պատմում է վիպական Արտաշէսի թաղման համար. «...Ամբոխութիւնք մեռան ի մահուան Արտաշիսի, սիրելի կանայք եւ հարճք եւ մտերիմ ծառայք... Եւ շուրջ զգերեզմանաւն լինէին կամաւոր մահունք...»։

Առանձնապէս հոգու հաւատքի եւ նախնիների պաշտամունքի գերապրուկները նոյնպէս դեռ պահուած են եղել մինչեւ 19-րդ դարի վերջերը եւ, հաւանօրէն, մինչեւ օրս էլ (2)։ Այսպէս՝ մեր օրով էլ դեռ շատերը կարծում էին, թէ մարդու հոգին կարող է բաժանուել մարմնից եւ թափառել, «տեսիլք գնալ», շատ բաներ տեսնել։ Իբր առանձին դեր կարող են կատարել ուրուականները — մեռելների հոգիները։ Նրանք իբր կարող են ընդունել զանազան տեսանելի կերպարանքներ՝ մարդու, կենդանու, թռչունի։ Նրանք իբր վնասում են մարդկանց, հիւանդութիւններ են առաջ բերում եւ այլն։

Հոգիների այս հաւատքի հետ սերտ կապուած էր մեռելների պաշտամունքը, որ առանձնապէս կատարւում էր մի ամբողջ տարի, սկսած մեռնելուց անմիջապէս յետոյ, եւ որի նպատակն էր լուսաւորել նրանց հոգիները։ Մեծապէս պաշտելի են եղել տան նահապետների — նախնիների հոգիները։ Հաւատում էին, թէ այդպիսի մեռելների հոգիները հոգում են իրենց զարմերի համար. նրանք իբր գալիս, մտնում են իրենց տները; ձայն են տալիս իրենց զաւակներին, խօսում նրանց հետ, խորհուրդներ տալիս նրանց։ Ինչպէս հին իրանացիների մէջ Ֆրաւաշիները — ուրուականները, մեռելների հոգիները — իրենց արօշ տօներին աւելի պաշտելի էին, նոյնպէս եւ հայերի մէջ մեռելների պաշտամունքն առանձնապէս կատարւում էր տարին հինգ անգամ՝ հինգ մեծ տօներին։ Հաւատում էին, թէ հինգ նաւակատիքներին «անցելոց» հոգիներն այն աշխարհից վերադառնում են, ման գալիս իրենց գերեզմանների կամ տների շուրջը, լինում իրենց սերնդի մօտ։ Ուստի պէտք էր խունկ ու մոմով «յիշատակ մեռելոց» կատարել։ Երեք օր նրանք իբր մնում էին երկրի վրայ եւ երրորդ օրը, «մեռելոցքը» կատարելուց յետոյ, վերադառնում երկինք՝ իրենց տեղերը։

Եւ վերջապէս, այս նախնական հաւատքի մնացորդներից կարեւոր է յիշել եւ հետեւեալը։ Ինչպէս հին իրանացիների մէջ Ֆրաւաշիները, նոյնպէս եւ հայերի մէջ մեռելների հոգիները եւ նրանց պաշտամունքը մօտիկ յարաբերութեան մէջ են դրուել աստղերի հետ։ Հաւատում էին եւ մինչեւ հիմա էլ «Սասնայ Ծռերի» ասացողները հաւատում են, թէ ամէն մարդ ունի մի աստղ,

---

(1) Eusebius, Praeparatio evangelica, VI,10 § 12. Եւսեբիոս Կեսարացին այդ տեղեկութիւնը, ինչպէս եւ արեան վրէժխնդրութեան վերաբերեալ մասը, առնում է մեր թ. 2-րդ դարի հեղինակ ասորի Բարդածանից։ Տե՛ս Գ. Խալաթեանց, *Ուրուագիծ Հայաստանի Պատմութեան (ռուսերէն)*, Մոսկուա, 1910, էջ 327 եւ հտ.։

(2) *M. Abeghian*, Der armenische Volksglaube. — Հոգու հաւատի մասին, էջ 8—29։

որ խաւարում է, երբ մարդ վտանգի մէջ է ընկնում: Փայլուն աստղերը, որոնք երբեք չեն ընկնում, պատկանում են երկնքում աստղերի վրայ նստող արդարներին: Ինչպէս հին իրանցիների մէջ սրբերի Ֆրաւաշիները նոյնացւում էին աստղերի հետ, միանգամայն եւ իբրեւ բարի ոգիներ էին ըմբըռնըւում, նոյնպէս եւ հայերի մէջ աստղերն իբրեւ պահապան ոգիներ էին մըտածւում եւ պահապան հրեշտակներին հաւասար դասւում: Երդւում էին աստղերով, ինչպէս եւ հօր գերեզմանով. «էն մեծ ու պստիկ աստղերը վկայ». «էն հօրս գերեզմանը վկայ»: Աղօթում էլ էին աստղերին. «Ձեռ–պեռ [մեծ–փոքր] աստղունք, օգնական պահապան կայնէք. Գաբրիէլ, Մուքայէլ հրեշտակներաց հետ մե ապաւէք հըմէն փորձանաց, չար մարդուց, չար սըհաթից» (1): Այս ամէնը նախնիների պաշտամունքի մնացորդներ են, որոնք գալիս են, — հարկաւ, ոչ բոլորը, — նախնական ժամանակներից իբրեւ գերապրուկներ:

Այդ դարաշրջանի կրօնական հաւատալիքների ու բնահիւսութեան գերապրուկային մնացորդներն են մեր ժամանակի հմայական աղօթքները, արեգակին ու լուսնին ուղղուած եւ այլ աղօթքները, սնահաւատական զրոյցներից շատերը, այլեւ այն առասպելները, որ գտնում ենք Մ. Խորենացու Հայոց Պատմութեան մէջ, եւ որոնց ուսումնասիրութիւնը կարելի չէ անել՝ առանց նկատի ունենալու հայոց սկզբնական պատմութիւնը, հայոց եւ միջազգային նախնական հաւատալիքները ոգիների, աստուածների ու հերոսների մասին:

5. **Հմայական աղօթքներ եւ սնահաւատական զրոյցներ**: — Երբ առաջ է եկել կրօնի նախնական ձեւը, բնութեան վրայ իշխող ոգիների հաւատն ու պաշտամունքը, դրա հետ միաժամանակ նախնական մարդը բնութեան դէմ կռուի մէջ մշակել է դիւթութիւնը: Դրա սկզբնական գլխաւոր եղանն է թովելը, այն է՝ խօսքեր կամ բանաձեւեր թոթովելով, մրմնջալով, երբեմն նաեւ անիմաստ լեզուական հնչիւններ արտասանելով, ազդել ոգիների վրայ՝ ուզած երեւոյթներն առաջ բերելու, կամ անցանկալի երեւոյթները խափանելու համար: Նախնական մարդը կարծում էր, թէ դրանով կը լրացնի բնութեան վրայ ազդելու իր տեխնիկայի թերին: Այդ կապակցութեամբ որոշ դիրք են գրաւել սկզբում առանձին անհատներ — թովիչներ, դիւթեր, որոնք իբր կարող էին ազդել ոգիների վրայ: Հետագայում, երբ հասարակութեան դասակարգային խաւաւորման հետ կազմւում է քրմերի ազդեցիկ դասը, դիւթութիւնը կամ հմայութիւնն անցնում է նրանց:

Այս հաւատքը խօսքի ուժի մասին՝ այնպէս խոր արմատացած է եղել, որ բազմաթիւ նախնական հաւատալիքների ու կենցաղային կողմերի հետ՝ շատ երկար յարատեւել է մեր ժողովրդի մէջ, — եւ ոչ միայն մեր: Ինչպէս երեւում է, հնում այդ կարծեցեալ արուեստը բաւական զարգացած է եղել Հայաստանում: Մեր մատենագիրները 5-րդ դարից ի վեր յաճախ գրում են զանազան տեսակի հմայութիւնների, դիւթութիւնների դէմ: Մինչեւ վերջերս էլ մեր ժողովրդի մէջ շատ տարածուած էին եւ հմայական բանաձեւերը,

(1) Սրուանձտեանց, Մանանայ, Կ. Պոլիս 1876, էջ 308. «Վանայ պառաւանց աղօթք»:

*երդմնեցումներն ու երդմնեցուցական խօսքերը, որոնք կոչւում էին «կապքի աղօթք», կամ պարզապէս լոկ «աղօթք», իսկ հմայելու գործողութիւնը՝ «աղօթել», որովհետեւ դրանք իսկապէս նախնական աղօթքներ են եղել: Դրանք բերանացի էին: Կային նաեւ գրաւոր «հմայքներ», որ դիւթերը գրում էին երկայն չերտ մագաղաթների կամ թղթերի վրայ եւ ծալած կարում էին այն անձերի հագուստների մէջ, որոնց պիտի դիւթէին, կամ հմայքից ազատէին: Դրանք կոչւում էին «հմայեակ», «հմայեկ» («հմայիլ») եւ այլ անուններով: Բերանացի «աղօթքներն» ապրում էին հէնց ժողովրդի մէջ, եւ հարկաւոր համարուած դէպքերում ասւում էին երեք անգամ կրկնուելով: Իսկ գրաւոր հմայեկներ յօրինելու կամ, ինչպէս ասում են, «գիր անելու» կամ «թուղթ անելու» գործով պարապում էին քահանաները, տիրացուներն ու խալֆաները ,որոնք փոխանակել էին հին քրմերին: Գրաւոր հմայեկների վրայ աւելացւում էին երբեմն նաեւ քրիստոնէական աղօթքներ, բայց դրանց իսկական հմայական բանաձեւերը միեւնոյն բովանդակութիւնն ունեն, ինչ որ ժողովրդական «կապքի աղօթքները»: Գրաւոր հմայեկներն ընդհանրապէս արձակ են յօրինուած, մինչդեռ ժողովրդական «աղօթքները» թռուցիկ ազատ ոտանաւորներով են: Դրանք մեծ մասամբ տրամախօսական կամ վիպական ձեւով են կամ թէ սկսւում են մի վիպական փոքրիկ նախաբանով* (1), *կրում են հնութեան դրոշմ եւ ըստ էութեան գալիս են խորին հնութիւնից: Դրանք նորոգուած լեզուով, կերպարանափոխուած, խաւաւորուած դերապրուկներ են, թէպէտ եւ կը լինեն, անշուշտ, եւ այնպիսիները, որոնք ուշ դարերում այլադաւաններից անցած լինեն հայերին: Ծաւաւորումը քրիստոնէական է. յաճախ հին անուններին փոխանակել են քրիստոնէական սրբերի անուններ: Բացի այդ՝ դրանք երբեմն անհասկանալիութեան աստիճանի աղճատուած են:*

*Հմայական աղօթքները, լինեն գրաւոր թէ բերանացի, ունեն ընդհանրապէս երդմնեցուցական բնաւորութիւն, ուղղուած են իբրեւ խնդիրք բարի ոգիներին, սովորաբար չար ոգիների դէմ, որոնք իբր վնասում են մարդկանց եւ ամէն տեսակ հիւանդութիւններ բերում: Իբրեւ այդպիսիներ առանձնապէս երեւան են գալիս գիշերուայ չարունքը, չարքերը, նորածիններին ու ծննդականներին վնասող ալերը (ալքերը), չար աչքը եւ այլն, նոյնպէս եւ կենդանակերպ ոգիները եւ հէնց իրական վնասատու կենդանիները՝ գայլ, օձ, կարիճ, դրանց հետ միասին գորտն ու մրջիւնը: Վերջին չորսը ահրիմանական չար կենդանիներ են համարուել հին պարսկական կրօնով եւ հիւանդութիւններ բերել: Նոյնը եղել է եւ հայերի մէջ. նրանք, իբրեւ չար ոգիներ, ըստ սնահաւատքի, առաջ են բերել* գորտնուկ, մրջմուկ, օձիկ կոչուած *հիւանդութիւնները: Նրանց դէմ էլ ուղղուած են եղել հմայական աղօթքներ: Կարծում էին, թէ «գէլկապի», կարիճի եւ այլ «աղօթքներն» ասելուց յետոյ՝ իրական գայլը, կարիճը եւ այլն տեղներում կապուած կը մնան անշարժ:*

*Բերենք մի քանի այդպիսիները, ամենից առաջ մի «գորտնուկի աղօթք», որ իսկապէս մի հին աղօթք է. «աղօթողը» դիմելով «նորին», այսինքն նորած*

---

(1) Այդպիսի «աղօթքներ» կարելի է տեսնել՝ Ե. Լալայեան, Ջաւախքի բուրմունք, Թիֆլիս, 1892, էջ 3—18:

*լուսնին, որ հին ժամանակ պաշտուել է հայերի մէջ իբրեւ բարի ոգի, խընդրում է նրան ազատել իրեն այդ հիւանդութիւնից.*

Նո՛ր, նո՛ր, թագա թագաւոր,
Ես ալեւոր, դու թագաւոր,
Էն աշխարհից ի՞նչ խաբար ես բերել:
Նո՛ր, նո՛ր, տես զիս·
Գործնուկն էկե կ'ուտայ զիս,
Կեր գործնուկին՝ չուտայ զիս:

*Բազմաթիւ «գէլկապի աղօթքներից» մէկն է հետեւեալը.*

Որդի Գալուստին,
Հովիւ էր Քրիստոսին,
Նստեր օխտը ճամփին,
Կը լար, կ'ողբար:
— Հէ՞ր լաս, հէ՞ր ողբաս, —
Հարցուց նորան Քրիստոս:
— Իմ տէր, կը լամ, կ'ողբամ·
Կը վախեմ գէլից-գազանից,
Եւ ամենայն ջանաւարից,
Որ շուռ կը գան մէջ գիշերին:
— Գնա՛, մտի՛ր սուրբ Սիմէոնին,
Ա՛ռ երկթէ գնջիլ, պողպտէ քալնիք,
Դի՛ր գողն ի ոտին, գէլն ի բերան,
Եւ ամենայն ջանաւարին,
Որ շուռ կը գան մէջ գիշերին:

*Մէկ ուրիշ «աղօթքի» մէջ կատարւում է այս վիպական «աղօթքի» մէջ պատուիրուածը.*

Ուսին, ուսին, Մայր Կուսին,
Երեք պիպեռ (բեւեռ) կայ Քրիստոսին·
Մէկն ի սիրտն սատանին,
Մէկն ի բերան գէլ-գազանին,
Մէկն էլ ի սիրտ չարին,
Որ չոլորտի մէջ գիշերին (1):

*Չարահալած են ըստ ընդհանուր տարածուած նախնական հաւատալիքների՝ չար փուշը, կրակը, երկաթը: Վերեւի «աղօթքների» մէջ, ինչպէս կարելի է տեսնել, գործադրւում են երկաթ, պողպատ:*

*Չար ոգիների վնասակար ազդեցութիւնը, ըստ սնահաւատքի, լի–*

---

(1) Տե՛ս Տ· Նաւասարդեանց, Հայ ժողովրդական հէքիաթներ, վեցերորդ գիրք· Թիֆլիս, 1890, էջ 143—148: Այստեղ նաեւ «չար աչքի» եւ այլ «աղօթքներ»: Այլեւ նոյնի եօթներորդ գիրք, Թիֆլիս, 1891, էջ 133 եւ հտ·:

*նում է նաեւ մարդու մարմնի զանազան մասերի վրայ, առաջանում է «կապ» կոչուածը, այսինքն կարկամում, կաղ ու կապ են լինում, չարժուելու ընդունակութիւնը կորցնում են մարմնի այս կամ այն մասերը: Այսպէս, օրինակ, գրաւոր հմայեկներ կան «լեզուակապի», «քնակապի», «գողկապի» եւ այլն: Բերենք այդպիսիներից հետեւեալը.*

Հաւքայն նստեալ
Ի յանհուր եւ յանջուր եւ յանեղեմն դաշտին,
Լայր զերդ զայրի,
Եւ ողբայր զինչ զգերի,
Եւ ձայն ածէր զինչ զանեղբայր քոյր:
Հրամայեաց տէրն… թէ՝
— Հա՛ւքայ, է՞ր ես նստել
Ի յանհուր, ի յանջուր եւ յանեղեմն դաշտին.
Է՞ր կու լաս զերդ զայրի:
Եւ կ'ողբաս զերդ զգերի,
Եւ ձայն ածես զինչ զանեղբայր քոյր:
Հաւքայն արար պատասխանի, թէ՝
— Ի՞նչ ցեղ չի նստիմ
Ի յանհուր, ի յանջուր եւ յանեղեմն դաշտին.
Ի՞նչ ցեղ չի լամ զերդ այրի,
Եւ չողբամ զերդ զգերի,
Եւ ձայն ածեմ զերդ անեղբայր քոյր.
Երբ չի ծնանին իմ յղիքն,
Ձյղենան իմ երըննիքն,
Եւ չի արձակեցան իմ զողարգելքն:
Նա հրամայեաց տէրն, թէ՝
— Մի՛ նստել
Ի յանհուր, ի յանջուր եւ յանեղեմն դաշտիդ.
Եւ մի՛ լայր զերդ այրի,
Եւ մի՛ ողբայր զերդ զգերի,
Եւ ձայն ածել զերդ անեղբայր քոյր:
Քո յղիքն ծնանեցան,
Եւ քո երըննիքն յղեցան,
Եւ արձակեցան քո զողարգելքն: —
Արձակեցաւ երկինք,
Եւ արձակեցաւ երկիր.
Եւ արձակեցաւ ծառայն Աստուծոյ… (1)

*Սկզբնական «աղօթքները», հարկաւ, այսպէս երկայն չեն եղել, այլ միայն կարճ ու կրկնուած խօսքեր են եղել, ինչպէս հետեւեալն է.*

Չար աչքը չար փշին,
Չար աչքը չար փշին,
Չար աչքը չար փշին:

---

(1) Ղ. Ալիշան, Հին հաւատք. Վենետիկ, 1895, էջ 383:

*կամ հեռեւեալը մի հմայեկից.*

Չար ակն ի չար փուշն,
Չար փուշն ի բարկ կրակն,
Բարկ կրակն ի ծարն,
Ծարն ի յանյատակ ծովն...

*Բերենք մի ծննդկանի «աղօթք» եւս.*

Ելանք դարով, շրջանք ձորով.
Մեր տէրն էկաւ, հազար բարով:
Ասինք՝ «Տէ՛ր, ո՞ւր կ'երթաս»:
— Կ'երթամ դուռը հիւանդին,
Ելնեմ երդիկ տղոցկանին,
Զնջիլ ճաշեմ բոլոր պատին,
Չվախենայ սիրտն ի փորին:

*Հմայական աղօթքների հետ կապուած են զանազան ոգիների, չարքերի, քաջքերի եւ ուրիշների մասին անահաւատական զրոյցները, որոնք կոչւում են «բան», «բանս»: Այդ զրոյցներն եւս մեծ մասամբ նախնական ժամանակներից են գալիս: Պատմողներն ու լսողները հաւատում են դրանց բովանդակութեան իրապէս կատարուած լինելուն: Յաճախ այդպիսի զրոյցներն աւում են ականատեսի կամ գործողութեան մասնակցի անունից, թէ ինչպէս իրենց ծանօթ այս կամ այն ինչ մարդն իսկապէս տեսել է չարունք, քաջք, ալք, եւ իր գլխին ինչ են արել նրանք. յիշւում են գործողութեան տեղն ու ժամանակը եւ այլն: Այդպիսի հանդիպումների հետեւանքն ըստ անահաւատքի լինում է յաճախ հիւանդութիւն, որ եւ կոչւում է «հանդէպք» (1): Հմայեկների մէջ էլ պատմւում են անցեալում չարքերին տեսնելու եւ նրանց հետ խօսելու դէպքեր: Բերենք մէկը.*

Սուրբ Սիսիանոս զայր ի լեռնէ
ի վայր,
Եւ տեսաւ պեղծ մի չար.
Եւ ունէր աչք հրեղէն,
Եւ ի ձեռին երկաթի կտրոց,
Եւ հանդիպեցաւ ի տեղի աւազոյ:
Ասէ Սուրբ Սիսիանոս.
— Ո՞ւր երթաս, նզովա՛ծ պեղծ:
Պատասխանի ետ նմա եւ ասէ.
— Երթամ զմանկունս կանանց
թառամեցուցանեմ,
Զկաթն պակասեցուցանեմ,
Զաչսն խաւարեցուցանեմ,
Զբղեղն ծծեմ եւ համր առնեմ,
Եւ առնեմ զտղայն անժամանակ
յորովայնի, *եւ այլն:*

*Դա նորածիններին ու ծննդկաններին վնասող արիւնարբու ալքն է:*

*Այսպիսի զրոյցներն ու հմայական աղօթքները, հարկաւ, նոր եւ զարգացած ձեւով են, բայց դրանց սկիզբն եւս թաղուած է նախնական դարաշրջանի մէջ: Ինչքան էլ նոր լինեն այդ «աղօթքներն» ու զրոյցները, դրանցով այժմ մօտաւոր գաղափար ենք կազմում անցած կնացածի մասին, քանի որ այդ նոր համարուածներն անցեալից են գալիս եւ դրանցից շատերը հների փոփոխուած մնացորդներ են: Կան այնպիսի «աղօթքներ», որոնք շատ նման են աստուածաշնչեան երդմնեցուցական հիմներին, իսկ զրոյցներից մի քանիսը գտնւում են նաեւ հնդկական վէդաների մէջ:*

---

(1) Մի ճանիսը կան Գ. Սրուանձտեանցի «Մանանայ», Կ. Պոլիս, 1876, էջ 78 եւ հտ.. Առանձնապէս Տ. Նաւասարդեանցի «Հայ ժողովրդական հեքիաթներ», հօթներորդ գիրք, Թիֆլիս, 1891, էջ 24 եւ հտն. «Ոգիներ. Մ. Աբեղեանի ժողովածուից»:

# ՀԻՆ ԱՌԱՍՊԵԼՆԵՐԸ

## ՀԱՅԿ ԴԻՑԱԶՆ

1. Հայկ եւ Օրիոն: — *Հնագոյն բանաստեղծութեան մի տեսակն են եւ առասպելները: Դրանք փոքրիկ գրուցիկներ են, որոնց մէջ, ըստ նախնական աշխարհայեցութեան ու հաւատալիքների, «բնութիւնն ու հասարակական ձեւերը... անգիտակցօրէն մշակուած են ժողովրդի երեւակայութեամբ»: Դրանց մէջ՝ ոգիների, դիցազների կամ աստուածների պատկերով՝ ձեւաւորուած ու դրոշմուած են նախնական ժողովուրդների հայեացքը մի կողմից՝ հասարակական յարաբերութիւնների, միւս կողմից՝ բնութեան ուժերի եւ երեւոյթների վրայ: Հնուց ի վեր հայ ժողովրդի մէջ պատմուել են բազմաթիւ առասպելներ, որոնք մասամբ կապուած են նաեւ Հայոց սկզբնական պատմութեան եւ կրօնի հետ: Այդպիսին են Մովսէս Խորենացու Հայոց Պատմութեան մէջ բերուած մի քանի առասպելները, որոնցից եւ Հայկինը: Հայկի առասպելը, ըստ Մ. Խորենացու, ծագում է «գուսանականից»* (1)*: Այդ պատմում է նաեւ Սեբէոս եպիսկոպոսը* (2)*, եւ յիշատակում է Անանիա Շիրակացին:*

---

(1) Մ. Աբեղեան, Հայ ժողովրդական առասպելները Մ. Խորենացու Հայոց Պատմութեան մէջ (Արտատպած «Արարատ» ամսագրից, Վաղարշապատ, 1899, էջ 176—258, 581—590): Այստեղ տեսնել նաեւ աղբիւրները եւ ուսումնասիրութեան մանրամասները:

Հին աւանդական բանահիւսութեան ուսումնասիրութեան նկատմամբ կարեւոր է յիշել հետեւեալները.

Մկրտիչ Էմին, Վէպք հնոյն Հայաստանի, Մոսկուա, 1850:

Յովսէփ Գաթըրճեան, Պատմութիւն մատենագրութեան Հայոց, անգիր ժամանակ, Վիեննա, 1851:

Ստ. Պալասանեան, Պատմութիւն Հայոց գրականութեան, հատ. առաջին, բանաւոր գրականութիւն, Թիֆլիս, 1865:

Մ. Էմին, Մ. Խորենացի եւ հայոց հին վէպերը, թարգմ. Գ. Խալաթեանց, Թիֆլիս, 1886. ռուս. բնագիրը Մոսկուայում, 1881 թ.:

Տաշեան, Հայկական աշխատասիրութիւնք պ. Ֆեթթերի, ի մի ամփոփուած եւ թարգմանուած, Վիեննա, 1895:

Գ. Զարբհանալեան, Հայկական հին դպրութեան պատմութիւն, Վենետիկ, 1897:

Աբր. Ջամինեան, Հայ գրականութեան պատմութիւն, Նոր-Նախիջեւան, 1914: Վերջին երկուսը նկատի են առնուած եւ ուրիշ դէպքերում:

(2) Սեբէոսի եպիսկոպոսի Պատմութիւն, ի ձեռն Ստ. Մալխասեանց, Երեւան, 1939, էջ 2—5:

(3) Անանիա Շիրակացի, Տիեզերագիտութիւն եւ Տոմար, ի ձեռն Աշ. Աբրահամեանի, էջ 76 (գլուխ ԽԲ). «Հայկ ոմն անուն աղեղնաւոր հսկայ՝ յազգէ Յաբեթի որդւոյ Նոյի, եկեալ ի Բաբելոնէ՝ տիրեաց Հայոց: Եւ բնակեալ ի Հայս, եւ յանուն նորա կոչեցան Հայք. նոյնպէս որդւոց եւ դստերաց իւրոց եդ անուանս. զոր առեալ Հայոց զանուանս ուստերաց եւ դստերաց նորա՝ եդին ի վերայ ամսոցդ՝ վասն մեծարանաց հօրն եւ զաւակացն. եւ են այսոքիկ Նաւասարդ, Հոռի, Սահմի եւ Մահեկի, Արեգ եւ Մարերի, դստերք էին Հայկին: Տրէ, Քաղոց, Արաց եւ Հրոտից որդիք էին Հայկին: Իսկ Մարգաց եւ Հարաւանց, զոր այժմ Անկի կոչեն, այս ի գործոց անուանեցան. զի ընդ այն ժամանակս ամառնայինք էին սոքա»:

*Մեր հին թարգմանիչներն օտար աստուածների ու դիցազների անունների տեղ դնում են համապատասխան հայկականները, կամ, ընդհակառակն, ինչպէս Զեւս — Արամազդ, Ափրոդիտէ — Աստղիկ, Հերակլէս — Վահագն, այսպէս եւ Օրիոն — Հայկ: Այս ցոյց է տալիս, որ հսկայ դիցազն Հայկն իր էական գծերով նման է եղել Օրիոնին: Աստուածաշնչի մէջ Օրիոն համաստեղութիւնը թարգմանուած է Հայկ անունով: Այժմ եւս մի քանի կողմերում, ինչպէս եւ մի ժողովրդական երգի մէջ, գտնում ենք Խէկ=Հայկ անունը նոյն համաստեղութեան համար: Օրիոնը, յունական առասպելաբանութեամբ, մի քաջ եւ անխոնջ որսորդ է, ծովի աստուած Պոսիդոնի որդին, մի վիթխարի հասակով հսկայ, բացառիկ ուժի եւ գեղեցկութեան տէր, Էոսի — Արշալոյսի սիրականը: Նա համարձակւում է մերժել Արտեմիսի սէրը եւ կամ սկաւառակ ձգելիս մրցութեան է հրաւիրում նրան: Դրա համար այդ դիցուհին պատժում է նրան, կծել տալով մի կարիճի, որից եւ մեռնում է հսկան: Բայց յետոյ անմխիթար մնալով նրա կարօտի համար, դիցուհին նրան փոխադրել է տալիս երկինք, ուր նա կազմում է ամենափայլուն համաստեղութիւններից մէկը: Հայկը նոյնպէս մի գեղեցիկ «դիւցազն» է, «գեղապատշաճ եւ անձնեայ, քաջագանգուր, խայտակն եւ հաստաբազուկ», «ի մէջ հսկայից քաջ եւ երեւելի»: Ապա՝ Հայկին իբրեւ որսորդ է ներկայացնում եւ Բէլի նրան ուղղուած խօսքը Սեբէոսի մէջ. «Կեաց ի տան իմում խաղաղութեամբ, ունելով ի գործս զմանուկս ի տան իմոյ որսականս»: Հայկն եւ Օրիոնը, ուրեմն, նման նկարագիր ունեն. բայց Հայկի առասպելը, այսինքն առասպելի գործողութիւնը տարբեր է Օրիոնի մասին պատմուածից:*

*Հայկը չկամենալով ենթարկուել բռնակալ Բէլին՝ իր գաւակներով հեռանում է հիւսիս: Բէլը հսկաների բազմութեամբ գալիս, յարձակւում է նրա վրայ, որպէսզի նրան էլ ստրկացնի: Բայց Հայկն իր սակաւաթիւ մարդկանցով ելնում է նրա դէմ, կռուի մէջ նետահար անում նրան, ցրւում նրա ամբոխը եւ ազատում իր երկիրը, որ իր անունով կոչւում է «Հայք»:*

2. Զրոյցի առասպելաբանական ծագումը: — *Այս առասպելն իր էական գծերով մի այնպիսի պատմուածք է, որ շատ տարածուած է: Դրա նմանները կան շատ ազգերի, ինչպէս եւ մեր գրականութեան մէջ, թէ՛ իբրեւ պատմական զրոյցներ եւ թէ՛ իբրեւ առասպելներ: Դրա նման են, օրինակ՝ հրէական Դաւթի ու Գողիաթի կռիւը, մեր Սասունցի Դաւթի ու Մսրամելիքի կռիւը, այլեւ հսկայ Սամի ու Քերքուլիի կռիւը Շահնամայի մէջ, եւ Շուէյցարական Տելի զրոյցը: Տելն էլ որսորդ եւ քաջաձիգ աղեղնաւոր է, նա էլ Շուէյցարիա մտնող բռնակալին սպանում է իր նետով եւ ազատում իր երկիրը: Այս զրոյցը պատմւում է նաեւ աստուածների, օրինակ, սկանդինաւական Օդհին աստուծու համար:Նա, աստուածների, հաւանօրէն և մարդկանց հայր, հանդէս է գալիս ոչ միայն իբրեւ մի զօրավար, որ իր զօրքի գլուխն անցած՝ կռւում է թշնամի զօրքի դէմ, այլեւ իբրեւ մի կատաղի որսորդ, որ նոյնպէս նետ-աղեղ է բանեցնում եւ կռւում է խաւարի բռնակալների դէմ: Նրա գերեզմանը շատ տեղ ցոյց էին տալիս Գերմանիայում, ինչպէս մեկնում՝*

*Բէլի գերեզմանը* (1)*: Այս շատ տարածուած գրոյցը, ըստ առասպելաբանների, բնութեան մի առասպել է, որ իր հիմքն ունի այն աշխարհայեցութեան մէջ, որ նախնական մարդիկ ունէին բնութեան երեւոյթների, լոյսի ու խաւարի վրայ: Դա լոյսի կռիւն է ընդդէմ գիշերուայ եւ ձմեռուայ խաւարի, որ մանուկ ազգերն ըմբռնել են իբրեւ մի աստուածային աղեղնաւորի կռիւ, մի բարի աստուծու, մարդկանց հօր կռիւն ընդդէմ մարդկանց թշնամի չար ոգու: Եւ այնուհետեւ բանաստեղծել շարունակելով եւ կատարելապէս մարդկային կերպարանք տալով, մարդկային յարաբերութիւնների անդրապատկերումով, դարձրել են այդ կռիւը քաջաձիգ աղեղնաւորի կռիւ բռնակալի դէմ, որ յարձակւում ու ստրկացնել է ուզում ուրիշներին: Բայց աղեղնաւորն սպանում է նրան: Հայկի առասպելն էլ նոյն քաջաձիգ աղեղնաւորի կռիւն է բռնակալի դէմ, դրա մէջ եւս կենտրոնը կազմում է քաջ նետաձգութիւնը, դրսից խուժող թշնամուն նետով սպանելը եւ իր երկիրն օտար բռնաւորից ազատելը:*

3. Պատմականը հայոց նախնի Հայկի առասպելի մէջ:— *Հայկի առասպելը, որ ծագած է ընդհանուր առասպելաբանական աշխարհայեցութիւնից, կապուել է հայոց նախնական պատմութեան հետ, եւ հին առասպելական աղեղնաւորը դարձել է հայոց նախնին, կամ հայոց պաշտելի նախնին նոյնացել է աստուածային աղեղնաւորի հետ: Եւ իսկապէս, այդ առասպելը մեզ տանում է ամենից առաջ այն նախապատմական դարը, երբ հայերը դրսից եկել են ուրարտացոց երկիրը: Թէ ի՛նչ մարտերով եւ ի՛նչ զօրավարների առաջնորդութեամբ են մտել հայերն Ուրարտու երկիրը եւ ի՛նչպէս տիրել նրան, մենք այդ չգիտենք: Բայց այդ շրջանում անպայման կատարուել են սխրագործութիւններ, որոնք նիւթ են դարձել երգերի եւ գրոյցների, որոնց մէջ գովուել են տոհմապետ զօրավարները: Հայկի առասպելի մէջ պահուած է դրա յիշողութիւնը: Եւ այս զարմանալի չէ: Աւանդական բանահիւսութիւնը երբ մի անգամ հաստատուն բիւրեղացած կերպարանք է ստանում, երկար դարեր այլեւս չի մեռնում, մանաւանդ, երբ կապւում է մի տեղի անուան հետ, ինչպէս եղել է Հայկի ու Բէլի առասպելի վերաբերմամբ: Առասպելի մէջ, յիշուած տեղանունները՝ Հարք, Հայկաշէն, Հայոց Ձոր եւ ուրիշները գտնւում են Վանայ լճի շուրջը, ուր եւ սկզբում տեղաւորուել է հայութիւնը: Հայկը նահապետական հասարակութեան մի հայր է, որի տոհմի մէջ հաշւում են մօտ երեք հարիւր տղամարդ: Նա չուզելով ենթարկուել Բէլին, գալիս է «Արարադայ» երկիրը, ոչ թէ «Այրարատ», այլ «Արարադ» գաւառը Կորդուաց աշխարհի մէջ (Վանայ ծովից դէպի հարաւ-արեւելք):*

---

(1) Հայկի առասպելի վիպական ծագումը երեւում է յատկապէս եւ այս կտորից· «Իսկ զբլուրն, ուր ճակատամարտօքն անկաւ Բէլ, անուանեաց Հայկ Գերեզմանս, որ այժմ ասին Գերեզմանք: Բայց զդիակն Բելայ պաճուճեալ իմն դեղովք... հրամայէ Հայկ տանել ի Հարք եւ թաղել ի բարձրաւանդակ տեղւոջ, ի տեսիլ կանանց եւ որդւոց իւրոց» (Խոր. Ա. 11): Հին գերեզմանները սովորաբար բարձրաւանդակ տեղերում են շինուած, եւ շատ հին ու նոր ազգերի մէջ, ինչպէս եւ Հայաստանում, ցոյց են տալիս, սովորաբար բարձր տեղերում մի տեղ հսկայի — օղուզի կամ ազնաւուրի գերեզման կոչմամբ, որ պաշտամունքի առարկայ է:

«Զու արարեալ գնայ յերկիրն Արարադայ... հանդերձ որդւովք իւրովք եւ դստերօք եւ որդւոց որդւովք, արամբք զօրաւորօք, թուով իբրեւ երեքհարիւր, եւ այլովք ընդոծնօք եւ եկօք յարեցելովք ի նա եւ բոլոր աղխիւ: Երթեալ բնակէ ի լեռնոտին միում ի դաշտավայրի, յորում սակաւք ի մարդկանէ յառաջագոյն ցրուելոցն դադարեալ բնակէին. զորս հնազանդ իւր արարեալ Հայկ՝ շինէ անդ տուն բնակութեան կալուածոց եւ տայ ի ժառանգութիւն Կադմեայ որդւոյ Արամանեկայ»: «Եւ ինքն խաղայ... այլով աղխիւն ընդ արեւմուտս հիւսիսոյ, գայ բնակէ ի բարձրաւանդակ դաշտի միում, եւ անուանէ զանուն լեռնադաշտին Հարք, այս ինքն թէ հարք են աստէն բնակեալք՝ ազգի տանն Թորգոմայ:Շինէ եւ գիւղ մի, եւ անուանէ յիւր անուն Հայկաշէն»: Նա բնակիչներ գտնում է նաեւ Տարօնում, Սիմ լեռան մոտերը. «Ի հարաւոյ կողմանէ դաշտիս այսորիկ, առ երկայնանստիւ միով լերամբ, բնակեալ յառաջագոյն արք սակաւք, ինքնակամ հնազանդեալ դիւցազինն» (Խոր. Ա. 10): Նրանք, այդ հին նախահայ բնակիչները, որոնք յիշողութիւն են ուրարտացիների, Հայկի ցեղից չեն, այլ տարբեր ցեղից: Նրանք, ըստ Խորենացու մշակած առասպելի, սեմական են, մինչդեռ Հայկն իր մարդկանցով յաբեթեան ցեղից է: Հայկի սերունդը նրա Արմենակ որդու առաջնորդութեամբ Հարքի կողմից տարածւում է դէպի հիւսիս-արեւելք եւ բնակւում Այրարատում: Այստեղ նոյնպէս գտնւում են հին բնակիչներ: «Ի յոլով տեղիս գտանէին բնակեալք ի մարդկանէ յերկրիս մերում ցան եւ ցիր սակաւք յառաջ քան զգալուստ բնկին մերոյ նախնւոյն Հայկայ» (Խոր. Ա. 12): Ապա հետագայում հայերն անցնում են Շիրակ եւ վերջապէս Գեղարքունիք ու Սիւնիք: Կը նշանակէ՝ Հայկի եւ իր սերնդի մասին եղած զրոյցների մէջ շատ պարզ կերպով պահուած է հայ ցեղի Հայաստան մտնելու եւ հետզհետէ այնտեղ տեղաւորուելու յիշողութիւնը: Միայն ըստ արդի ընդհանրապէս ընդունուած պատմական տուեալների՝ հայերն արեւմուտքից են անցնում արեւելք, մինչդեռ ըստ Հայկի առասպելի՝ նրանք հարաւից են գալիս դէպի հիւսիս: Եթէ դա մի յիշողութիւն չէ այն մասին, թէ հարաւով դէպի արեւելք շարժուած հայ ցեղի մի ճիւղը հետագայում դէպի հիւսիս է տարածուել, ապա դա պարզապէս ստեղծածն է քրիստոնեայ մատենագրի, որ հայերի ծագումը, ուստի եւ Հայկի առասպելը, կապել է աշտարակաշինութեան հետ:

Ինչքան էլ Խորենացու ձեռով գրական մշակութիւն է կրած Հայկի առասպելը, բայց եւ այնպէս դրա մէջ դեռ երեւում է նաեւ նախնիների պաշտամունքի հետքը: Բնական է, որ այն դարերում, երբ իշխում էր հոգու հաւատն ու նախնիների պաշտամունքը, հայ ցեղին առաջնորդող նահապետներից մէկը դառնար հայ ազգի նախնին: Այդպէս էլ հէնց կոչուել է Հայկը («Բնկին Հայկայ») եւ հայ ազգի ծագումն ու անունը բացատրել են նրա անունով: «Աշխարհս մեր կոչի յանուն նախնւոյն մերոյ Հայկայ՝ Հայք» (Խոր. Ա. 11):Թէ ի՞նչ լեզուաբանական կապ կայ Հայկ եւ հայ բառերի մէջ, այդ պարզ չէ: Բայց ժողովրդական ստուգաբանութեամբ Հայկ անունը, որ նշանակում է հսկայ, առնչութեան մէջ է դրուած «հայ» անուան հետ, եւ Հայկը դարձել է հայ ազգի նախնին, որից ժողովուրդն ստացել է իր անունը: Նոյնպիսի ստուգաբանութեամբ Հարք գաւառի անունը կապուած է եղել

նախնիների հետ, — «Հարք, այսինքն թէ հարք են աստէն բնակեալք՝ ազգի տանն Թորգոմայ»: Այդ նախնին, ըստ այն դարերի հասկացողութեան, մի պաշտելի էակ է, աստուածային ծագում ունեցող մի դիցազն, ինչպէս եւ կոչւում է Հայկն առասպելի մէջ: Այդպիսի նախնիների պաշտամունքը, ինչպէս վերեւում տեսանք, նախնական հաւատալիքով սերտ յարաբերութեան մէջ էր դրւում որեւէ աստղի հետ: Այդ պատճառով եւ Հայկ անունը կապուած է մի համաստեղքի հետ:

Միւս կողմից՝ այդ առասպելը — հայերի կամ թէ նախահայերի իրենց հարաւային դրացիների, յատկապէս ասորեստանցիների, գուցէ եւ բաբելացիների հետ ունեցած յարաբերութեան հետեւանքով — կրել է մի ուրիշ պատմական ազդեցութիւն: Հին թշնամի դեւի, դեմոնի, խաւարի ոգու տեղ անցել է, թշնամական յարաբերութեան պատճառով, Բէլը, որ Հայաստանի հարաւային դրացիների, սեմական ազգերի՝ ասորեստանցիների, բաբելացիների, քաղդէացիների եւ ուրիշների արեգական աստուածն է, երկնքի եւ լոյսի տէր, աշխարհի եւ մարդկանց արարիչ, որ աստղերին իրենց ճանապարհը ցոյց է տուել: Բէլ կոչումը, որ նշանակում է տէր, տրւում է եւ ուրիշ աստուածների ու աստղերի, ինչպէս եւ թագաւորների: Այսպէս եւ ըստ հների պատմութեան՝ Ասորեստանի թագաւորներից մէկը կոչուել է Բէլ, որի որդին է համարւում Նինոս: Բայց Բէլն սկզբնապէս արեգակնային աստուածութիւն է: Եւ եթէ նկատի ունենանք, որ մեր հսկայ Հայկն եւս իբրեւ նախնի մի համաստեղութիւն է, ապա պարզ կը լինի, որ հին առասպելն իր այս կերպարանքի տակ դեռեւս պահում է իր առասպելական դիցաբանական բնաւորութիւնը, որով արեգակի կամ աստղերի աստուած Բէլի դէմ, որից ծագում են աստուածներն ու մարդիկ, կռւում է մի աստղային դիցազն Հայկ, հայերի նախնին: Հայկի կռիւը Բէլի դէմ ցոյց է տալիս, որ այդ առասպելը զարգացել է հայերի մէջ արամէացիների սահմաններում: Դրա մէջ պահուած է ասորական քաղաքակրթութեան, կուլտուրայի եւ կրօնի՝ հայերի վրայ ունեցած ազդեցութեան յիշողութիւնը, եւ մի յիշատակ այն թշնամական յարաբերութեան, որ հայերն ունեցել են իրենց դրացի, հարաւային ազգերի հետ, որոնց աստուածն էր Բէլ: Բայց կարող է այդ կռոյցի մէջ մնացած լինել նաեւ ասորեստանցոց դէմ Հայաստանի նախահայ բնակիչների՝ ուրարտացիների մղած պատերազմների յիշատակը, որ յետոյ հայերը ժառանգել են իրենց հետ համաձուլուած ուրարտացիներից (1):

Հայկի առասպելի գրական մշակումը Մ. Խորենացու ձեռով՝ տեսնել Խորենացու մէջ:

---

(1) Հայկի ու Բէլի մասին զրոյցներ 19-րդ դարում՝ տե՛ս Սրուանձտեանց, Գրոց Բրոց, էջ 131 եւ հտ., Ներսէս Սարգիսեան, Տեղագրութիւնք ի Փոքր եւ ի Մեծ Հայս, Վենետիկ, 1864, էջ 273 եւ հտ.: Մ. Աբեղեան, Հայ ժողովրդական առասպելները, էջ 244 եւ հտ.: Մ. Աբեղեան, «Վիշապներ», Երեւան, 1941, էջ 60 եւ հտ.:

# ԱՌԱՍՊԵԼՆԵՐ ԱՐԱՄԻ ՄԱՍԻՆ

*Այս զրոյցներն եւս, ըստ Մ. Խորենացու, ծագում են գուսանական նից* (1), *բայց պատմուած են շատ համառօտ եւ աւելի եւս գրական մշակութեամբ, ուստի դժուար է ստուգութեամբ որոշել դրանց աւանդական բանահիւսական տարրերը: Դրանց մէջ երեւում է հայերի յարաբերութիւնն իրենց սահմանակիցների հետ՝ Մարաստանի, Ասորեստանի եւ Կապադովկիայի կողմերում:*

*Արամի կռիւն Ասորեստանի դէմ թերեւս մի աւանդական յիշողութիւն է ուրարտական հզօր Արամ թագաւորի, Սալմանասար Բ.ի* (860—826 *մեր թ. ա.) հակառակորդի, եւ նրա ռազմական գործողութիւնների ընդդէմ ասորեստանցիների: Պատմականի հետ միասին այդ զրոյցն ունի միաժամանակ նաեւ առասպելական բնաւորութիւն: Ասորեստանի կողմերում Հայոց երկրի աւերիչն է «Բարշան անուն, յազգէ սկայիցն... Սմա ճակատու պատերազմի ի դիմի հարեալ Արամ... Եւ զայս Բարշամ... աստուածացուցեալ պաշտեցին Ասորիք»* (*Խոր. Ա.* 14)*: Ուրեմն Արամի հակառակորդն է Բարշամ աստուածը, որին պաշտել են նաեւ հայերը:*

*Նոյնպէս սովորական մարդիկ չեն Արամի թշնամիները Կապադովկիական Կեսարիայի* (*Մաժաքի*) *կողմերում: Այստեղ նա պատերազմում է Տիտանեանների հետ, եւ առանձնապէս՝ նրա դէմ է դուրս գալիս «Պայապիս Քաղեայ Տիտանեան», որին յաղթելով՝ Արամը քշում է «ի կղզի ինչ Ասիական ծովուն»: Այս հսկայի անուան մէջ տեսնում են «Պապայոս խիմայրագենէս» — պապայոս խիմայրածին* (*քիմայրածին*)*, որ հայերէն լինում է Քաղի զարմ, Քաղեայ* (2)*: Յունական առասպելաբանութեամբ Տիտանները կամ Տիտանեաններն ապստամբում են Կրոնոսի, Զեւսի հօր դէմ. բայց Զեւսը կայծակներով զինուած՝ նրանց գահավիժում է Տարտարոս: Նրանց պարտութեան վրէժը կամենում են առնել նրանց մօտիկ ազգականները, Գիգանտները, վիթխարի հասակով հսկաներ, որոնք իրենց ուժին ու հրեշաւոր հասակին վստահացած, վերելակում են երկինք եւ փորձում են Զեւսին վայր կործանել: Բայց սա նրանց մի քանիսին անդունդ է գլորում, ուրիշներին բանտարկում հրաբխային լեռների տակ: Գիգանտների գլխաւորն է Տիփոն* (*Տիֆոն, Տիֆօս*, Typhaeus, *որ է իսկական ծուխ արձակող, ծխող, եւ իբրեւ հասարակ անուն նշանակում է պտուտահողմ, կայծակնացայտ եւ որոտալիր ամպրոպ*)*: Նա հրաբխային լեռների ու կրակ տարբեր փոթորիկների սիմբոլն էր. ունէր հարիւր գլուխ եւ իր հարիւր բերանից բոց էր արձակում: Զեւսը նրան դնում է հրաբխային Էտնա սարի ծանրութեան տակ կամ, ըստ ուրիշների՝ Միջերկրական ծովի Ինարիմ կամ Էնարիա հրաբխային կղզու տակ, որտեղից*

---

(1) Մ. Աբեղեան, Հայ ժողովրդական առասպելները, էջ 581—590:

(2) Jos. *Markwart*, Die Entstehung u. Wiederherstellung d. arm. Nation, *էջ 66-68*.

*նա չարունակում է բոց արձակել: Տիփոնի զաւակն է Քիմայրա, որ նշանակում է քաղ, մի հրէշ, որի երախից կրակ է դուրս հոսում: Նա սիմբոլ է Լիկիայի մի հրաբխային լերան:*

*Արդ՝ հայկական Արամի կռիւը Տիտանեաններին եւ Պայապիս Քաղեայ Տիտանեանի դէմ Մաժաքի (Կեսարիայի) կողմերում, ըստ Մարքուարտի, նոյնն է, ինչ որ Զեւսի կռիւը Տիտանեանների եւ Տիփոնի դէմ: Այդ առասպելը հայերը իւրացրել են այն ժամանակ, երբ դեռ Կապադովկիայում էին ապրում: Իլիականի մէջ* արիմ*-ների (որ է՝ հայերի) բնակութեան վայրը դրւում է այնտեղ, «ուր Տիֆոնի բնակատեղն է»: Իսկ այդ համարում են Արգայոս հրաբխային լեռը Կեսարիայից (Մաժաքից) հարաւ: Կը նշանակի՝ Զեւսի եւ Տիտանների կամ Զեւսի եւ Գիգանտների կռուի առասպելը, որ մեկնում են իբրեւ հրաբխային երեւոյթի առասպելական պատկերացում, պատմուած է եղել նաեւ Արգայոս լեռան վրայ: Այդ կողմերում ապրող արիմներն այդ առասպելը կապել են իրենց նախնու Արիմ անուան հետ, իբրեւ Արիմի կռիւ Տիտանների կամ Գիգանտների դէմ: Հետագայում* Արիմ *անունը դարձել է* Արամ, *թերեւս ուրարտացոց վերեւում յիշուած Արամ թագաւորի անուան յիշողութեամբ կամ, հաւանօրէն, ազդեցութեամբ Աստուածաշնչի մէջ յիշուած «Արամ» անուան, որ է՝ արամէացոց — Ասորիքի եւ Միջագետքի բնակիչների — նախնին: Բայց Տիտանների դէմ նրա կռուի վայրը դեռ յիշւում է նոյն Մաժաքի մօտ տեղում, եւ նա յաղթում է Տիփոնի զարմ Պայապիս Քաղեայ Տիտանին, նրան «փախստական արկանելով ի կղզի ինչ Ասիական ծովուն», որ է Միջերկրական ծովը, ինչպէս յունական առասպելի մէջ Զեւը Տիֆոնին դնում է նոյն ծովի մի կղզու տակ:*

*Այսպէս ուրեմն, Արամի այս առասպելի մէջ պահուած է մի յիշողութիւն Կապադովկիայի կողմերում հայերի բնակուած լինելուն: Բնութեան առասպելն այստեղ եւս դարձած է հայոց նախնու մի կռիւ: Այդ նախնին, Արիմ — Արամ, հանդիսանում է Հայկի մի երկրորդ տիպարը, իբրեւ Հայոց երկրի (հետն առած եւ Փոքր Հայք) սահմանների պաշտպան ընդդէմ օտարների: Միաժամանակ նրանից է ծագում հայ ազգի երկրորդ անունը. «Զորոյ անուն եւ զաշխարհս մեր անուանեն ամենայն ազգք, որպէս Յոյնք՝ Արմէն, իսկ Պարսիկք եւ Ասորիք՝ Արմէնի(կ)ք» (Խոր. Ա. 12) (1):*

---

(1) Այս անունը Մարքուարտը ծագած է համարում Արիմ անունից խալդական «ինի» (խալդ-ինի, Մուշկ-ինի) վերջաւորութեամբ իբրեւ Ար(ի)մինի, միջի ի ձայնաւորի դուրս ընկնելով: Դա խալդական արձանագրութեան մէջ երեւում է Ուրմենի ձեւով. պարսիկները դարձրել են Արմինա, յոյները՝ Արմենիոս, Արմենիա:— «Արիմ» եւ «Հայ» եղել են, անշուշտ, հայութեան մէջ մտնող առանձին ցեղերի անուններ, որոնք ընդհանրացել են մէկը հայերի մէջ, միւսը («Արմէն» ձեւով)՝ օտարների մէջ: Մի անգամ որ Արիմ դարձել է նախնի դիցազըն, բնականաբար եւ նրա տոհմը կարող է կոչուել «եան» մասնիկով Արմեանի: Արմեան, սեռ. տր. «Արմենի», ինչպէս եւ Խորենացին նոյն անուան «Արամ» ձեւից նոյն մասնիկով կազմած ունի «Արամեան» բառը «հայ» նշանակութեամբ. «Արք Արամեանք», «Արամեան ազն» (Բ. 92, Գ. 29):

# ՏՈՒՐՔ ԱՆԳԵՂԵԱՅ

1. Տուրք եւ Անգեղ աստուածներ:— *Նախնական ժամանակներն է տանում մեզ եւ այս հսկայի առասպելը, որի մասին շատ քիչ բան գիտենք* (1): *Նրա անունը, որ Մովսէս Խորենացուց է միայն յայտնի, ձեռագրերի մէջ կայ Թէ՛ Տուրք եւ Թէ՛ Տորք ձեւերով: Բերենք Մ. Խորենացու այն կտորը, որի մէջ յիշւում է Տուրքը. «Իսկ զայր խոժոռադէմ եւ բարձր եւ կոպտաբանձն եւ տափակաքիթ, խորակն եւ դժնահայեաց, ի զաւակէ Պասքամայ, ի Հայկայ Թոռնէ, Տուրք անուն կոչեցեալ, որ վասն առաւել ժահադիմութեանն ձայնէին Անգեղեայ* (2), *վիթխարի հասակաւ եւ ուժով, հաստատէ կուսակալ արեւմտից. եւ յերեսացն անպիտանութենէ կոչէ զանուն ազգին Անգեղ տուն»* (Բ. 8) (3): *«Բայց զԱնգեղ տունն առէ նոյն պատմագիր* [*Մար Աբաս*] *ի Պասքամայ ումեմնէ ի Հայկայ Թոռնէ լինել»* (Ա. 23):

*«Անգեղ» բառը նշանակում է «տգեղ», բայց այդ վիպական «Անգեղեայ» անունն իր կազմութեամբ չի կարող նշանակել «տգեղ»: Դա կազմուած է «եայ=եան» մասնիկով, ինչպէս՝ արեւելեան—արեւելեայ, արեւմտեան—արեւմտեայ, տասնամեան—տասնամեայ* (*սեռ. տասնամէի*), *Մամիկոնեան—Մամիկոնեայ* (*սեռական՝ Մամիկոնէի, Մամիկոնէից*): *Ըստ այսմ՝ «Անգեղեայ» նոյն է, ինչ որ «Անգեղեան»: Արդ, սեռականի կամ ածականի այս «եայ=եան» մասնիկը նշանակում է ծագում: «Անգեղեայ» կոչումն, ուրեմն, ցոյց է տալիս, որ Տուրքը համարուել է Անգեղի սերունդ, իբրեւ Անգեղեան Տուրք: Անգեղ կոչուել է հայկական աստուածներից մէկը: Աստուածաշնչի մէջ սեմական Ներգալ աստուծու անունը հայերէնի թարգմանուած է Անգեղ: Սեբէոսի Պատմութեան մէջ կարդում ենք. «Եւ որդիքն Բագարատայ ժառանգեցին զժառանգութիւնս իւրեանց ի կողմանս արեւմտից, այս ինքն է Անգեղ տուն. վասն զի կոչեցաւ Բագարատ եւ Անգեղ, զոր ի ժամանակին յայնմիկ ազգ բարբարոսացն աստուած կոչեցին»* (4): *Ուրեմն* Անգեղ աստուածը կոչ-

(1) Մ. Աբեղեան, Հայ ժողովրդական առասպելները, էջ 259—283:

(2) Պէտք է նկատի ունենալ, որ Մ. Խորենացին սիրով կանգ է առնում միւս նախարարների անունների բացատրութեան վրայ եւս եւ այդ բացատրութիւնները, ինչպէս երեւում է, նա ինքն է տալիս։«Եւ զԱրծրունիսդ գիտեմ՝ ոչ Արծրունիս, այլ արծուի ունիս, որք՝ արծուիս առաջի նորա կրէին»: «Գիտեմ եւ զԳնունիսդ զինի ունիս, որ զարժանի բազաւորին պատրաստէր զըմպելիսն»։«Ասեմ և զՍպանդունիսդ ի վերայ զենարանաց, և զՀաւունիսդ բազէակիրս... Եւ եթէ առ ցոփս ինչ ոչ ունիցիս, եւ զՋիւնականսդ՝ ամարանոցաց պահակս եւ ձիւնակիրս» (Բ. 7): «Աշխարհն յանուն քաղցրութեան բարուց նորա անուանեցաւ Աղուանք զի աղու ձայնէին զնա» (Բ. 8): Այս բացատրութիւնների կարգին է պատկանում նոյն գլխի մէջ եւ «Անգեղեայ» բառի մեկնութիւնը՝ «որ վասն առաւել ժահադիմութեանն ձայնէին Անգեղեայ... եւ յերեսացն անպիտանութենէ կոչէ զանուն ազգին Անգեղ տուն»:

(3) «Անգեղ տուն», «Անգեղ տունն գաւառ» է Չորրորդ Հայքի կամ Մեծ Ծոփքի գաւառներից մէկը, որի մէջ է Անգեղ բերդը (Փ. Բուզանդ, Դ. 24): Բայց «Անգեղ տուն» միաժամանակ եւ նախարարական տոհմի անունն է: Ագաթանգեղոսի մէջ հայոց «գլխաւոր նախարարների», «կուսակալների» մէջ առաջինն է «իշխանն Անգեղ տան», «զմեծ իշխանն Անգեղ տան»:

(4) Սեբէոսի եպիսկոպոսի Պատմութիւն, Երեւան, 1939, էջ 7:

ունել է եւ Բագարատ, *որ փոխառութիւն է հին պարսկերէնից եւ նշանակում է՝ «աստուածատուր»* (1), *կամ* «դից տուրք» (*Համմտ. Մ. Խոր. Բ.* 36. *«Սանատրուկ... Տուրք Սանատայ»*)։

*Միւս կողմից՝ Տորք կամ Տուրք անուան մէջ տեսնում են Միտանի եւ Խեթ ցեղերի Տարկու, Տարքու կամ Տուրգու աստուծու անունը, որ եղել է պտղաբերութեան ու բուսականութեան աստուած* (2)*։ Նրա պաշտամունքը մի ժամանակ տարածուած է եղել Փոքր Ասիայում եւ այլուր։ Կարծում են, թէ նա պաշտուած է եղել հարաւային Հայաստանում, «այսինքն Հայաստանի հարաւային մասում, Եփրատից մինչեւ Վանայ ծովը», այնտեղ, ուր «ընկնում է նաեւ Անգեղ գաւառը հին Նայիրի աշխարհում»։ Եթէ ստուգուի այս շատ հաւանական ենթադրութիւնը, այն ժամանակ պէտք է ընդունել, որ այդ անունը ժողովրդական ստուգաբանութեամբ նոյնացել է հայերէն «տուրք» բառի հետ, ըմբռնուել է իբրեւ «տուրք դից», եւ այն շրջաններում, ուր հայերէնի հետ խառն գործածուելիս է եղել պարսկերէնը, դա ասուել է նաեւ Բագադատա — Բագարատ, որ է «դից–տուրք»։ Ապա՝ ինչպէս դիցաբանութեան մէջ յաճախ պատահում է, որ սկզբնապէս ուրոյն աստուածներն ու հերոսները կա՛մ նոյնանում են միմեանց հետ, կա՛մ մէկը միւսի սերունդ է դառնում, — այնպէս եւ այդ երեւոյթը տեղի է ունեցել եւ այս դէպքում։ Տուրք աստուածը, պաշտամունքի տեղի նոյնութեան պատճառով, յարաբերութեան մէջ դրուելով Անգեղ աստուծու հետ, կա՛մ նոյնացել է նրա հետ («կոչեցաւ Բագարատ եւ Անգեղ»), կա՛մ դարձել է Անգեղի սերունդ — «Տուրք Անգեղեայ»։ Առասպելի հետագայ զարգացման ընթացքում, սակայն, «Անգեղեայ» անուան իսկական նշանակութիւնը մթնել է, այդ ըմբռնուել է իբրեւ «տգեղ» եւ առաջ է եկել, — թերեւս, գրական ճանապարհով ու Խորենացու ձեռով, — այդ հսկայի տգեղութեան նկարագիրը։ Այդ ժամանակ եւ մոռացուել է այդ հսկայի ծագումն Անգեղից, ու նրան կապել են հսկայ Հայկի հետ։*

2. Առասպելներ։— *Մ. Խորենացին Անգեղեայ Տուրքի մասին պատմածները յիշում է իբրեւ երգ եւ առասպել. նա արհամարհելով այն՝ բառացի ոչինչ չի բերում, այլ տհաճութեամբ տալիս է երգի բովանդակութիւնը, համարելով այն սուտ, փուճ բան, որովհետեւ դրա մէջ երեւում է չափազանց երեւակայութիւն։*

*«Բայց եթէ կամիս՝ սուտ եւ ես յաղագս նորա անյօդ եւ փցուն, որպէս եւ Պարսիկք վասն Ռոստոմայ Սագճկի հարիւր եւ քսան փղաց ոյժ ասեն ունել։ Քանզի կարի խոն անյարմար թուէին եւ ինձ երգ բանից վասն ուժեղութեանն եւ սրտեայ լինելոյն. որք ոչ Սամսոնի եւ ոչ Հերակլեայ եւ ոչ Սագճկին յարմարին այս զրոյցք։ Քանզի երգէին նմա բուռն հարկանել զորձաքար վիմաց ձեռօք, ուր ոչ գոյր գեղութիւն, եւ ճեղքել ըստ կամաց մեծ եւ փոքր. եւ քերել եղնգամբքն եւ կազմել որպէս տախտակ, եւ գրել նոյնպէս եղնգամբք իւրովք արծուիս եւ այլս այսպիսիս»։*

---

(1) *H. Hubschmann,* Armenische Grammatik. *Leipzig, 1897, էջ 31:*

(2) Ն. Ադոնց, Տորք աստուած հին հայոց, Յուշարձան, գրական ժողովածոյ, Վիեննա, 1911, էջ 389 եւ հտ. ։ «Տորք Անգեղեայ հայ հին մատենագրութեան եւ նոր բանասիրութեան մէջ», «Տեղեկագիր Գիտութեան եւ Արուեստի Ինստիտուտի», թիւ 5, Երեւան, 1931, էջ 4 եւ հտն. ։ Այստեղ «Տորք Անգեղեայ» բացատրուած է իբրեւ Անգեղի, Անգեղ բերդի Տորք։

*«Եւ յեզեր ծովուն Պոնտոսի դիպեալ նաւաց Թշնամեաց՝ դիմէ ի վերայ. եւ ի խաղալն նոցա ի խորն իբրեւ ասպարէզս ութ, եւ սա ոչ ժամանեալ նոցա՝ առնու, ասեն, վէմս բլրաձեւս, եւ ձգէ զկնի. եւ ի սաստիկ պատառմանէ ջուրցն ընկղմին նաւք ոչ սակաւք, եւ ամբարձումն ալեացն, որ ի պատառմանէ ջուրցն, վարէ զմնացեալ նաւսն բազում մղոնս: Ո՛հ, կարի է առասպելս, այլեւ առասպելաց առասպել: Բայց քեզ զի՞ է. քանզի էր արդարեւ սաստիկ հզօր եւ այսպիսեաց գործոց արժանի (Խոր. Բ. 8):*

*Տուրքը, առասպելի առաջին մասի մէջ, հանդիսանում է մի վիթխարի քարակոփ — քանդակագործ: Առասպելի երկրորդ մասի մէջ պատմուածը, թշնամիների նաւերի ետեւից ժայռեր ձգելը, նման է Հոմերոսի «Ոդիսականի» Կիկլոպ Պոլիփեմի արարքին: Այս նմանութիւնը, որ վաղուց ցոյց է տըրուած, զարմանալի չէ: Յաճախ ամբողջ ժողովրդական երգեր, վիպական մեծ քերթուածներ, որոնք երբեք գրուած չեն եղել, մի ազգից միւսին, մի լեզուից միւսին են անցնում՝ ասացողների բերանին գրեթէ բառացի ոտանաւորով թարգմանուելով: «Ոդիսականն» ինքը բազմազան ազգերի առասպելների մի ժողովածու է՝ արուեստով մշակուած: Ուստի անբնական չէ, որ հայերի մէջ եւս պատմուէր մի այդպիսի զրոյց, որ Պոլիփեմի մասին պատմուածի հետ ընդհանուր նմանութիւն ունենալով հանդերձ՝ շատ էլ տարբերութիւններ ունի իր վիպական մանրամասնութիւնների մէջ: Տուրքն իր բնաւորութիւնը պահում է եւ իր այդ արարքի մէջ: Նա, այդ հսկայ քարակոփը, որ կարողանում է բռնելով ճեղքել որձաքարը եւ եղունգներով քերել, տախտակ դարձնել այն ու վրան փորագրութիւններ անել, նա իր արուեստին յատուկ տարերային ուժն է գործադրում, թշնամիների ետեւից բլրաձեւ ժայռեր է առնում, ձգում:*

*Նման պինդ մարմնով եւ ուժեղ հսկաներ շատ ազգերի վէպերի մէջ երեւան են գալիս: Յիշենք միայն մեր Սասունցի Դաւթին, որի եղունգը երբ դիպչում է ջարդու քարին, քարից կրակ է դուրս գալիս: Իսկ նրա որդի Մըհերը «մէկ մեծ ահագին քար էրի, կցից քաղաքի քամակ, գիտու մէջ. գետ էլաւ էրկու ճող, մէկ ճող էն եանէն կիյա, մէկ էս. էլ քաղաք չի աւրի: Բրջայ բալաքն էլ վար էն քարին չինեց. իսկի աւիրիլ չկայ էն բերդին»: Նման ուժի եւ շնորհքի տէր, միաժամանակ եւ քանդակագործ է նաեւ Պարսից Ռոստոմը: Այդ լեռնանման կամ, ըստ Խորենացու, հարիւր քսան փղի ուժ ունեցող Ռոստոմի առաջ նոյնպէս ոչ միայն գետինը, այլեւ քարը դիմանալ չէ կարողանում:*

«Եթէ նա վեր ելնէր մի քարի վրայ ու կանգնէր,
Ծանրութիւնից երկու ոտքը քարի մէջը կը խրուէր»:
«Հսկայ Ռոստոմն, որ հէնց ժայռին ձեռ էր ձգում եւ բռնում,
Որձաքարը անգամ տեղից պոկում կռուի օրերում:
Եւ ահագին կորովովը սարը տեղից էր շարժում,
Ծանր, ամուր քարը մոմ էր նա համարում իր բռում» (1):

*Եւ այդ նոյն Ռոստոմը ներկայանում է, պարսից ժողովրդի աւանդութեամբ, իբրեւ արարիչ Պարսկաստանի ժայռերի վրայ եղած հին քանդակների, որոնք յայտնի են Նախշի Ռոստամ անունով:*

---

(1) Ֆիրդուսի, Ռոստամ եւ Սոհրաբ, թարգ. Գիւլզադեանի, էջ 113—125:

# ԱՐԱ ԳԵՂԵՑԻԿ ԵՒ ՇԱՄԻՐԱՄ

Աստղիկ Դերկետոյ դիցուհին եւ Շամիրամ:— *Հին Արեւելքում եղել է մի շատ սիրուած աստուածուհի, որ հազարաւոր տարիներ շարունակ չափազանց մեծ նշանակութիւն է ունեցել Արեւելքի կրօնական կեանքի համար: Նա իր հիմնական գաղափարով եղել է պտղաբերութեան ու սիրոյ, այլեւ ջրի դիցուհի եւ զանազան ժողովուրդների մէջ զանազան անուններով ու կերպարանքներով պաշտուել է շատ կողմերում: Նա Ասորեստանում կոչուել է Միլիտտա, Իշտար, Բաբելոնում՝ Իշտար, Փիւնիկէում՝ Աստարոթ, Աշտարտ, Դերկետոյ, Ասորիքում՝ Դերկետոյ, Ատարգատիս, Աստարտէ, յոյների մէջ՝ Աֆրոդիտէ, պարսիկների մէջ՝ Անահիտա, հայերի մէջ՝ Անահիտ* (1): *Այս սիրոյ դիցուհու պաշտամունքը ցոփ եւ անառակ է եղել բազմաթիւ այր եւ կին սպասաւորներով ու հետեւորդներով:*

*Այս սիրոյ ու հեշտութեան դիցուհին Հայաստանում պաշտուել է եւ Աստղիկ անունով: Նա ասորական Դերկետոյ աստուածուհին է, որ ասորական ազդեցութեամբ մտել է հայերի մէջ: Նրա Աստղիկ անունը հէնց թարգմանութիւն է ասորական «Կաուկաբտա» բառի, որ նշանակում է աստղիկ, այսինքն՝ Արուսեակ մոլորակը, որ այս սեմական դիցուհու սիմբոլն էր, ինչպէս եւ հայերէնում հէնց «աստղիկ» բառը նշանակում է նաեւ Արուսեակ, որ մեր ժողովրդի մէջ այժմ կոչւում է Լուս-Աստղ: Անահիտ եւ Աստղիկ սկզբնապէս եղել են միեւնոյն դիցուհու տարբեր կոչումները, մէկը՝ դիցուհու Անատու մականունից, միւսը՝ նրա սիմբոլ Արուսեակից — Աստղիկից:*

*Ըստ հների՝ ասորական Դերկետոյի կամ ասորեստանեան Միլիտտա դիցուհու դուստրն է Շամիրամը: Նա նոյն բնաւորութիւնն ունի, ինչ որ իր մայրը, սեմական ժողովուրդների աստուածուհին Իշտար, Դերկետոյ: Նա էլ յայտնի է իր գեղեցկութեամբ, այրասիրտ է, ռազմիկ, միաժամանակ եւ վաւաշոտ: Բաբելոնում նրա անուան հետ կապուած են եղել շատ շինարարութիւններ: Շատ տեղերում հին ժամանակ նրա անունով կոչուել են բլուրներ, բարձրաւանդակներ, ե՛ւ Փոքր Ասիայում, ե՛ւ ուրիշ կողմերում: Դերկետոյի պաշտամունքը ինչպէս եւ նրա դուստր Շամիրամինը մտել է նաեւ Հայաստան: Այստեղ եւս շատ տեղեր կապուած են եղել Շամիրամի անուան հետ: Յիշենք միայն, որ Վան քաղաքը կոչուել է Շամիրամակերտ, եւ մինչեւ վերջերս Շամիրամի անունով էր կոչւում Վան քաղաքի հոյակապ արհեստական ջրանցքը, Շամիրամայ առուն կամ Շամիրամայ գետը:*

*Շամիրամի մասին հին ժամանակ Հայաստանում պատմել են եւ առասպելներ, որոնց մի մասի բովանդակութիւնը բերում է Մ. Խորենացին: Շամիրամն իր թշնամիներից հալածուած փախչում է, առասպելը պատմում է նրա «զհետեւակ փախուստն, եւ զպապաքումնն, եւ զխղձս ջրոյն, եւ զարբումնն, այլ եւ ի մօտ հասանել սուսերաւորացն՝ եւ զյուռութոն ի ծով, եւ բան նմանէ՝ Ուլունք Շամիրամայ ի ծով: Այլ...եւ Շամիրամ քար»* (Ա. 18): *Խորենացին չի ասում, թէ Շամիրամի մահուան այս առասպելը ո՛ր ծովի հետ է կապուած: Քանի որ նա ասում է, թէ «առասպելք աշխարհիս մերոյ... աստ ուրեմն* (=*Հայաստանում*) *զմահն ասել Շամիրամայ», ենթադրաբար իմանում ենք Վանայ լիճը: Արդ՝ Շամիրամի մահուան մասին* 9-*րդ դարում գրի առնուած կայ մի ժողովրդական զրոյց, որ կապուած է Վան քաղաքից հարաւ լճի ափին գտնուող յայտնի Արտամետ աւանի հետ* (2): *Եւ այս առանձին նշանակութիւն է ստանում, քանի որ նոյն տեղում եղել է Աստղիկի պաշտամունքը:*

---

(1) Մ. Աբեղեան, Հայ ժողովրդական առասպելները, էջ 510—549:

(2) Ն. Սարգիսեան, Տեղագրութիւնք: — Զրոյցը տեսնել նաեւ Մ. Աբեղեան, Հայ ժողովրդական առասպելները, էջ 546 եւ հտ.: Այս աշխատութեան մէջ, էջ 511—549, նաեւ «Շամիրամի առասպելը»:

2· Արա Գեղեցկի եւ Շամիրամի առասպելը:— *Աստղիկ–Դերկետոյի պաշտամունքի հետ Հայաստան մտել են նրա առասպելները, որոնցից մի քանիսը պատմւում էին մեր ժողովրդի մէջ մինչեւ վերջերս: Նրա պաշտամունքի մնացորդներն էլ դեռ պահուած էին մինչեւ 20–րդ դարի սկիզբները* (1): *Նշանաւոր է այդ սիրոյ դիցուհու տարփածուի*, երիտասարդ աստուծու մահուան եւ յարութեան *շատ յայտնի առասպելը, որ տարածուած է եղել Առաջաւոր Ասիայում եւ կապուած Իշտարի, Աշտարտի, Աֆրոդիտէի եւ այլ անունների հետ: Հայերի մէջ դա Արա Գեղեցկի եւ Շամիրամի առասպելն է, որի մէջ Շամիրամը փոխանակել է իր մօրը՝ Աստղիկ–Դերկետոյին: Դրա հիմքն է գարնանային երիտասարդ բնութեան մահացման երեւոյթն աշնանն ու ձմեռը եւ ապա վերակենդանացումը յաջորդ գարնանը: Առասպելը հետեւեալն է: Սիրոյ եւ հեշտասիրութեան դիցուհի Իշտարը չամուսնացած աստուածուհի է: Նա իր տարփանքի համար հոմանիներ է որոնում: Բայց նա հեշտասէր կողմի հետ ունի եւ մի սոսկալի մահաբեր կողմ, որով նա իր տարփածուին մահացնում է, եւ ապա ողբում է նրա մահը եւ վշտից հետեւում է նրան մինչեւ Սանդարամետի բանտը՝ իր տարփածուին յարութիւն տալու: Իշտարի առասպելներից յայտնի է Գիլգամէշի* (2) *նշանաւոր վէպը:*

*Հրաշալի գեղեցիկ դիցազն է Գիլգամէշը, որին սիրում է Իշտարը: Դիցուհին ինքն իրեն առաջարկում է գեղեցիկ երիտասարդին, մեծ պարգեւներ եւ իշխանութիւն խոստանալով նրան, որ իր կամքը կատարէ: Բայց Գիլգամէշը մերժում է նրա բոլոր առաջարկութիւնները, ասելով թէ նա կորստի է մատնել իր բոլոր սիրականներին: Այն ժամանակ Իշտարը զայրանում է եւ ուզում է սպանել Գիլգամէշին: — Իրօք, նա սպանում է իր մի ուրիշ տարփածուին, Թամմուզին, որի մահը ողբում է նա եւ Սանդարամետ է իջնում անմահութեան ջուր ձեռք բերելու եւ նրան յարութիւն տալու* (3):

*Այս առասպելի պաշտամունքն եւս կար իր արարողութիւններով: Տիրոսում նոյնիսկ Թամմուզի յարութեան տօնն էին կատարում: Նոյն առասպելն ու տօնը կար նաեւ յունական Աֆրոդիտէի եւ Ադոնիսի համար: Այդ տօնը շատ մեծ հանդէսով կատարում էին Բիբլոսում (նաւահանգիստ Միջերկրականի ափին, Տրիպոլսի եւ Բէյրութի միջեւ)· տօնի առաջին օրը սգում էին երիտասարդ սիրականի մահը, կատարում էին Թամմուզի ողբը, որին մասնակցում էին դիցուհու հերոդուլներն իբրեւ ողբասաց կանայք: Երկրորդ օրն ուրախութեան հանդէս էին անում նրա յարութեան համար:*

---

(1) Այդ մասին բաւական նիւթ կարելի է գտնել սրա հեղինակի հետեւեալ աշխատութեան մէջ· Պրոֆ· Դ–ր Մ· Աբեղեան, «Վիշապներ» կոչուած կոթողներն իբրեւ Աստղիկ–Դերկետոյ դիցուհու արձաններ», հրատ· Արմֆանի, Երեւան, 1941, էջ 71—93: Այդ արձանները ձկնակերպ են եւ գտնւում են Հայաստանի Գեղամայ լեռներում եւ այլ կողմերում:

(2) Առաջ կարդում էին «Իզդուբար»: Վէպի մասին տես՝ Die Keilinschriften und das Alte Testament, von Eberhard Schrader. *Berlin, 1903, էջ 556-562:*

(3) Lehrbuch der Religionsgeschichte, herausg, von P. D. Chantepie de la Saussaye, *Leipzig,* 1897, 1, *էջ 192, 216: Նոյնը* Tübingen, *1905, էջ 292 եւ հտ·:*

Արդ՝ այս առասպելի հայկական պատումն ունենք իբրեւ Արա Գեղեցկի եւ Շամիրամի վէպ, որ գեղեցիկ մշակած բերել է Մ. Խորենացին (Ա. 15) ոչ իբրեւ աստուածուհու եւ դիցազնի առասպել. Արան Հայաստանի իշխան է, իսկ Շամիրամը՝ Ասորեստանի թագուհի: Բայց ինչպէս «այրասիրտն այն եւ կաթոտն Շամիրամ» նոյնն է, ինչ որ իր մայրը, սեմականների սիրոյ աստուածուհին, մարտիկ եւ տարփագին դիցուհին Իշտար, Դերկետոյ, նոյնպէս եւ մեր Շամիրամի եւ Արայի զրոյցը նոյնն է, ինչ որ Իշտարի եւ Թամմուզի առասպելը: Մեր Արան նոյնպէս գեղեցիկ է, ինչպէս Թամմուզ, Ադոնիս եւ միւսները: Ինչպէս Իշտար իր տարփածուին, նոյնպէս եւ Շամիրամն Արային իշխանութիւն եւ պարգեւներ է խոստանում իր կամքը կատարելու համար: Բայց Արան հաւանութիւն չի տալիս: Իշտարը զայրանում, մահացընում է տարփածուին. այսպէս եւ Շամիրամ տիկին «ի սաստիկ ցասման լեալ» գալիս, կռւում է Արայի դէմ, եւ Արան սպանւում է: Այնուհետեւ մեծ մայր Իշտարը սաստիկ ցաւում է եւ Սանդարամետ է իջնում իր տարփածուին յարութիւն տալու համար: Նոյնը եւ հայկական առասպելի մէջ, միայն մեր հեթանոս հայերի հաւատալիքով պատմուած, եւ այս շատ բնական է: Յայտնի է, որ ըստ հեթանոս հայերի հաւատքի,՝ եղել են Արալէզք կամ Առլէզք կոչուած ոգիներ, որ պատերազմի մէջ ընկած վիրաւոր քաջերին կամ դիւցազներին լիզում եւ ողջացնում էին: Այդպիսիների դիակները դնում էին բարձր տեղերում, աշտարակների տանիքներում, որպէսզի Առլէզներն իջնեն եւ ողջացնեն: Արդ՝ մարտի դաշտում իբրեւ քաջ ընկնում է Արան, եւ Շամիրամը նրա դին դնել է տալիս ապարանքի տանիքում եւ ասում. «Հրամայեցի աստուածոցն իմոց լիզուլ զվէրս նորա, եւ կենդանասցի»: Մ. Խորենացու պատմութեան մէջ առասպելի վերջը փոխուած է, բայց Արան կենդանանում, յարութիւն է առնում ըստ ժողովրդական հաւատքի (1):

Ըստ Մ. Խորենացու՝ Արայի եւ Շամիրամի զրոյցը կապուած է Այրարատեան դաշտի հետ: Մինչեւ վերջերս՝ Ծաղկեվանքի սարը (Ղանը եարըղ) կոչւում էր Արայի լեռ, իսկ Կոտան սարը (Քեօթան դաղ), որ Կոտայ-ք անուան մի երկրորդ ձեւն է, ասւում էր Շամիրամայ լեռ: Ըստ Թովմա Արծրունու՝ Արան կենդանանում է Վան քաղաքին մօտ «Լեզուոյ» գիւղում: Այս գիւղը 20-րդ դարի սկիզբներում դեռ կար՝ Լեզք անունով, եւ այդտեղի բարձըր գագաթի հետ, ըստ Սարգսեանի եւ Սրուանձտեանցի, դեռ կապուած էր Արայի կենդանանալու զրոյցը: Արա Գեղեցկի եւ Շամիրամի զրոյցի մէջ պահուած է Աստղիկ-Դերկետոյի եւ իր տարփածուի առասպելը (2):

---

(1) Մ. Աբեղեան, Հայ ժողովրդական առասպելները, էջ 525 եւ հտն. «Առլէզք եւ Արայի յարութիւնը», էջ 538 եւ հտն. «Լեզքի եւ Արտամետի զրոյցները»:

(2) Տես՝ Մ. Աբեղեան, «Վիշապներ», էջ 71 եւ հտն.:

# ՎԱՀԱԳՆ ՎԻՇԱՊԱՔԱՂ

1. Առասպելները:— *«Քաջն Վահագն» եղել է հին հայերի սիրելի աստուածներից մէկը, հաւասար Արամազդին եւ Անահտին, որոնց հետ եւ մի երրորդութիւն է կազմել նա: Նրանից էին հայ թագաւորները քաջութիւն խնդրում: Շատ հռչակաւոր եւ մեծ ուխտատեղ է եղել Վահագնի Վահեվահեան կոչուած մեհեանը Տարօնի Աշտիշատում, ուր նրա հետ պաշտւում էին եւ Անահիտ ու Աստղիկ դիցուհիները: Այսպիսի մի ժողովրդական աստուծու մասին երգերը, առասպելներն ու զրոյցները բնականաբար շատ են եղել եւ երկար ապրել են նոյնիսկ քրիստոնէութեան ժամանակ: Վահագնի մասին մի երգուած առասպել է հետեւեալը.*

Երկնէր երկին, երկնէր երկիր,
Երկնէր եւ ծովն ծիրանի.
Երկն ի ծովուն ունէր եւ զկարմրիկն եղեգնիկ.
Ընդ եղեգան փող ծուխ ելանէր,
Ընդ եղեգան փող բոց ելանէր.
Եւ ի բոցոյն վազէր խարտեաշ պատանեկիկ.
Նա հուր հեր ունէր,
(Ապա թէ) բոց ունէր մօրուս,
Եւ աչկունքն էին արեգակունք:

*Մ. Խորենացին այս կտորը բերելուց յետոյ՝ աւելացնում է. «Զայս երգելով ոմանց փանդռամբ, լուաք մերովք իսկ ականջօք: Յետ որոյ եւ ընդ վիշապաց մարտին յերգին կռուել նմա եւ յաղթել, եւ կարի իմն նմանագոյնս զՀերակլեայ նահատակութիւնսն նմա երգէին»* (Ա. 31):

*Պատմագիրը, բացի վիշապների դէմ կռուից, ոչ մի ակնարկ չի անում Վահագնի ուրիշ նահատակութիւնների, այսինքն քաջագործութիւնների բովանդակութեան մասին: Անանիա Շիրակացին* (7-րդ դար) *յիշում է, թէ Հայոց նախնին Վահագն մի ցուրտ ձմեռ գողացել եւ ասորեստանցոց նախնի Բարշամի յարդը, որից եւ առաջացել է Յարդգողի* (*Դարմանագողի*) *ճանապարհը, — մի առասպել, որ մնում է մինչեւ մեր օրերը: Հին յոյների մէջ Կաթին Ծրի ծագումը կապուած է Հերակլէսի մանկութեան հետ. մի ուրիշ առասպելով՝ դա այն ճանապարհն է, որով անցել է Հերակլը Գերիոնէսի արջառը յափշտակած:*

*Հելլենիստական ժամանակներում յունական ազդեցութեամբ տեղական աստուածները ոչ միայն հայերի, այլեւ ուրիշների մէջ նոյնացւում էին յունականների հետ եւ յունական անուններով կոչւում. մեր Վահագն հաւասար է դասուել Հերակլին: Դա պատահական չի եղել, այլ կատարուել է մի ներքին նմանութեան պատճառով: Այդ դէպքը միակը չի պատմութեան մէջ: Համանման մտածութեամբ նաեւ գերմանական ամպրոպային աստուած Թոռը կամ Դոնարը հռոմէական ազդեցութեամբ նոյնացել է Հերակլէսի* (*Հերկուլէսի*) *հետ: Եւ իսկապէս՝ Հերակլի առասպելները շատ բազմազան տարրերից են կազմուած, դրանից շատերը կան զանազան ազգերի մէջ: Ըստ որոշ առասպելաբանների՝ հնդկական Տրիտա, Ինդրա, իրանական Կերեսասպա-*

պա, գերմանական Թոռ աստուածները եւ Հերակլէսը, իբրեւ կայծակի կամ ամպրոպի հերոսներ կամ աստուածներ, իրենց մի քանի արարքներով եւ յատկութիւններով հաւասարւում են միմեանց:

2· Վահագն ամպրոպային աստուած:— Առասպելաբանութեան մասին քիչ ու շատ ծանօթութիւն ունեցող ամէն ոք իսկոյն կը նկատի, որ արեգակնանման աչքերով, հրամազ ու բոցամօրուս պատանեակ աստուածը երկնքի եւ երկրի, ծիրանի ծովի եւ մի բոյսի — եղեգնի որդին, բնութեան մի երեւոյթի անձնաւորում է: Այդ նկարագիրը բաւական համարւում է արեգակին: Ուստի եւ ոմանք հնումն Վահագնին նոյնացրել են արեգակի հետ իբրեւ Ապոլոն, ուրիշները նորումս երգի նկարագիրն արեգակին են վերագրել եւ բացատրել, թէ դա պատկերացնում է արեգակի ծագումը: Բայց այդ ընդունելի չէ: Վահագն ամպոպային աստուած է: Այդ պարզւում է համեմատական ուսումնասիրութեամբ(1):

Վահագնի պաշտամունքն իրանցիներից է անցել հայերին. Նրա անուան նոյն լինելն իրանական յաղթութեան աստուած Վերեթրագնայի անուան հետ՝ վաղուց ապացուցուած է: Արդ՝ Վերեթրագնան, ինչպէս բացատրում են, սկզբնապէս ամպրոպային աստուածութիւն է եղել: Թէպէտեւ պարսից Վերեթրագնայի համար յիշատակուած չկայ վիշապների դէմ կռիւը, որ յատուկ է բոլոր ամպրոպային աստուածներին, «բայց եւ այնպէս նա ճշդիւ պահպանել է հին Վրտրահան-Վրտրա սպանող, վիշապասպան աստուածների բոլոր առասպելական ֆիզիկական գծերը»: Վերեթրագնա անունը հնդկական ամպրոպային աստուած Ինդրայի մակդիրն է՝ Վրտրասպան, Վիշապասպան: Վերեթրագնա աստուծու անունն այն հին շրջանում են ընդունել հայերը, երբ դեռ կենդանի է եղել այդ անուան նշանակութիւնը, որ հայերէն թարգմանել են «Վիշապաքաղ», իսկ Վերեթրագնա անունը, փոխուած ձեւով՝ Վահագն, դարձել է աստծու յատուկ անունը: Արդ՝ քանի որ մեր Վահագնի անունն ու պաշտամունքն իրանցիներից է անցնել հայերին, շատ պարզ է, որ այդ անցումն եղած է իրանական Վերեթրագնայի նախնական ամպրոպային յատկութիւններով հանդերձ, որոնք եւ երեւում են մեր Վահագնի երգի մէջ:

Շատ տարածուած հաւատալիքներից մէկն է, թէ «ամպրոպի ժամանակ երկինքը երկնում է եւ, ամպը մրրկով յղի, հողմայոյզի հեծեծանքներով ու պտուտահողմի բախինի տակ, ծննդեան ցաւերով բռնւում է մի կամ երկու լուսեղէն էակ ծնելու համար: Այն ըմբռնումը, թէ ամրոպային աստուածը երկնքից ու երկրից է ծնւում, բոլորովին բնական է: Որովհետեւ փոթորիկն երկնքից է առաջ գալիս, ուստի եւ երկինքն իբրեւ ամպրոպային աստծու հայրն է ըմբռնւում, բայց փոթորիկն առաջանում է եւ հեռու հորիզոնում՝ երկրի վրայ, ուր երկինքը թւում է թէ գրկախառնւում է երկրի

(1) Վահագնի մասին մանրամասնութիւններ տեսնել Մ· Աբեղեանի «Հայ ժողովրդական առասպելները», Վաղարշապատ, 1899, էջ 96—175: Այս ուսումնասիրութեան մէջ Վահագն բացատրուած է իբրեւ ամպրոպային աստուածութիւն: Այստեղ եւ աղբիւրները հայ եւ այլ գրականութիւններից: — Վիշապի եւ անձրեւաբեր աստուծու մասին՝ նաեւ Մ· Աբեղեանի « «Վիշապներ» կոչուած կոթողներն իբրեւ Աստղիկ-Դերկետոյ դիցուհու արձաններ», Երեւան, 1941: Այստեղ նաեւ աղբիւրներ:

հետ. ուստի եւ երկիրն ամրոպային աստծու մայրն է: Այսպէս՝ Ռիգ–Վեդայում մեծազօր ամպրոպային աստծու՝ Ինդրայի ծնունդն իբրեւ մի ամպրոպային օդերեւոյթ է ըմբռնւում, որի ժամանակ դողում են երկինքն ու երկիրը, որոնք եւ Ինդրայի հայրն ու մայրն են»: Այսպէս եւ, եթէ մեր Վահագնի ծննդեան ժամանակ երկնում են երկին ու երկիր, Վահագնը դրանով ներկայանում է իբրեւ ամպրոպային աստուած:

Երկնի ու երկրի որդի Վահագն՝ է միանգամայն եւ ծովածին, ծիրանի ծովի որդին: Այդ ծիրանի ծովը ոչ թէ երկրաւոր, երկրի վրայ տեղափակուած մի ծով է, այլ երկնային ծովը: Երկինքը, ամպերով ծածկուած երկինքը, ծովի նմանեցնելը մի սովորական բան է հին ու նոր բանաստեղծների մէջ, եւ երկինքը, որտեղից անձրեւն է գալիս, ջրեղէն երեւակայելը յատուկ է նախնական ազգերին: Նոյն ըմբռնումն ունի երկնքի մասին եւ մինչեւ վերջերս մեր ժողովուրդը, որ իր աղօթքի մէջ կոչում էր «Երկինքը ծով ծիրանի»(1) :Այսպէս և ժողովրդական հաւատալիք է ,որ որոտում է ,երբ «ալեկոծն քամին» այդ երկնային ծովն է գալի: Պարսիկների մէջ եւս ամպրոպային աստուած Տիշտրիայի կռիւը ջրերը խափանող Ապաոշա դեւի դէմ՝ լինում է երկնային ծովի մօտ, որից եւ անձրեւում է այդ աստուածը: Իսկ Ռիգ–Վեդայի մէջ ամպրոպային աստուած Ինդրան՝ անձրեւելու համար՝ պատառում է երկնային ջրերն արգելող ամպերի կամարը, որ կանգնեցնում է Ինդրայի հակառակորդ Վիշապը, Վրտրան, որ միեւնոյն ամպն է կամ ամպի անձնաւորումը: Օրինակ՝ «Զօրութեամբ բարգաւաճած է Ինդրան, որ Մարուտներին բարեկամ ունի. Վրտրային անդամալոյծ արաւ եւ այդ ժամանակ դուրս թափեց ծովի ջուրը»: Այս ամպրոպի անձնաւորում աստուածը, որ կայծակով զինուած՝ հոսեցնում է երկնային ջրերը, համարւում է ծնունդ երկնային ջրերի: Հնդիկների մէջ նա կրում է Ապտիա, ջրածին, ջրերի որդի անունը: Այս մակդիրն այնքան առանձնապէս վերաբերում է Ինդրային, որ նա նոյնիսկ ապտիաների ապտիա է կոչւում: Միայն Ինդրան չէ ջրերի որդին, այլեւ նրա երկուորեակ եղբայրը՝ Ագնին, որին նոյնպէս վիշապի դէմ կռիւներ են վերագրում. նա կոչւում է, իբրեւ կայծակի կրակի աստուած, Ապամ Նապատ ջրերի զաւակ: Ապտիա — ջրածին, ջրերի որդի կոչւում է նոյնպէս վիշապի դէմ կռուող Տրիտա աստուածը, որ Ինդրայի յատկութիւններն ունի: Այսպէս եւ մեր Վահագնը, իբրեւ Վիշապի դէմ կռուող ամպրոպային աստուած, ծնունդ է երկնային ջրերի ծովի:

Երկնքի եւ երկրի որդի ծովածին Վահագնը երգի մէջ համարւում է սերուած եւ մի բոյսից — կարմրիկ եղեգնիկից: Այսպէս եւ երկնքի ու երկրի եւ ջրերի որդի Ագնին, իբրեւ կայծակի կրակի աստուածութիւն, ծնւում է միանգամայն եւ բոյսերից: Ռիգ–Վեդայի մէջ, օրինակ, երգւում է կայծակ Ագնիի համար. «Բոյսերը կանոնաւոր երեւացողին՝ Ագնիին իրենց մէջ են առել իբրեւ սաղմ. այս Ագնիին ծնեցին մայրական ջրերը, նմանապէս ծնում են նրան ծառերն ու խոտերը յաւէտ յղանալով»: Զանազան հին ազգերի առասպելների մէջ երկնային կրակը բոյսերի հետ կապուած է մտածւում, այսինքն՝ ինչպէս երկրի վրայ կրակը փայտից է առաջանում, հաւատում էին,

(1) Գարեգին Ս. Յովսեփեան, Փշրանքներ, Թիֆլիս, 1893, էջ 77:

թէ երկնքում էլ կայծակը բոյսերից է ծնւում։ Ուստի եւ կայծակը պատկերացնում են յաճախ իբրեւ զանազան բոյսեր, եւ կայծակի մարմնացումն են համարուած չար բոյսեր, ինչպէս, օրինակ, փշենին կամ փուշը, որ հայերի մէջ եւս, իբրեւ կրակի մարմնացում, զօրաւոր «կապք», այսինքն պաշտպանութեան միջոց է համարւում չար ոգիների դէմ եւ մեր հմայական կամ «կապքի աղօթքների» մէջ կրակի հաւասար է դասւում։

Ամպրոպի երեւոյթն ըմբռնւում է իբրեւ մի բոցավառում, հրդեհ երկնային, կարմիր բոցեղէն ծովի մէջ եւ ըստ հին հաւատալիքների՝ զօրեղ ամպրոպների ժամանակ՝ երկնային բոյսերի ծխախառն-միգախառն բոցավառման միջոցին երկնային կրակի՝ «կայծակի առաջնալը փոխակերպւում էր մի աստուածութեան ծննդեան», եւ յատկապէս կայծակի անձնաւորում աստծու, որ երկնքի ու երկրի եւ երկնային ծովի ու բոյսերի ծնունդ լինելով՝ ծնւում էր ամպրոպի բոցերի միջից։ Այսպէս եւ մեր Վահագն աստուածը։

Նա հուր հեր ունէր, բոց ունէր մօրուս,
Եւ աչկունքն էին արեգակունք։

Այս տողերի մէջ նկարագրուած է ծնուող աստծու կերպարանքը, որ նոյնպէս բոլորովին համապատասխան է ուրիշ ազգերի ամպրոպային աստուածների, ինչպէս՝ Ինդրայի, գերմանական Թոռի կերպարանքին։ Նորածին Վահագնը մի երեխայ չէ, այլ խարտեաշ պատանեակ։ Ինդրան եւս պատկերացւում է իբրեւ խարտեաշ պատանի։ Խարտեաշ եւ արեգակնաչեայ են նաեւ Ինդրայի ձիերը, որոնք նոյնպէս ամպրոպն են պատկերացնում։ Ինքն Ինդրան եւս արեգակնաչեայ է, երեսն արեգակի նման։ Հագնըւում է արեգակի գեղեցկութեամբ, անձամբ հրեղէն է։ Եւ թէպէտ պատանեակ, բայց մօրուք ունի, ինչպէս եւ մեր պատանեակ Վահագնը։ Պատանեակ խարտեաշ, հրեղէն, ոսկեհեր, թէ հուր հեր, դեղնամօրուս, բոց մօրուս, թէ կարմրամօրուս (ինչպիսին է Թոռ), արեգակնաչեայ, թէ հրաչեայ (Թոռ), — այդ առնուած է հէնց կայծակի երեւոյթից, նրա այրող, հըրեղէն ու բոցեղէն, կամ բոցի ու հրի ոսկեգոյն, կարմիր ու փայլուն յատկութիւններից։

Այսպէս ուրեմն, տեսնում ենք, որ Վահագնի անունը, նրա երգի մէջ, նրա ծննդեան եւ կերպարանքի բոլոր յատկութիւններն ամբողջապէս մի ամպրոպային աստծու՝ Ինդրայինն են։ Բայց այդ դեռ ամէնը չէ։ Ինդրան ծնուելուն պէս բոցերի միջից վազում է ամպրոպային վիշապի՝ Ահիի (օձի) կամ Վրտրայի (ամպի անձնաւորումի, որ յաճախ ներկայանում է իբրեւ վիշապ) դէմ կռուելու, եւ կռուելով յաղթում ու սպանում է նրան։ Նոյնն անում է եւ մեր Վահագնը. «եւ ի բոցոյն վազէր խարտեաշ պատանեկիկ»։ Խորենացին երգի շարունակութեան միայն համառօտ բովանդակութիւնն է մէջ բերել, ասելով. «Յետ որոյ (ծննդեան նկարագիրն անելուց յետոյ) եւ ընդ վիշապաց ասէին յերգին կռուել նմա եւ յաղթել»։

Բնական երեւոյթի անձնաւորում Վահագնի կռիւը ոչ թէ երկրի վրայ օձերի դէմ է եղել, այլ ըմբռնուել է իբրեւ կռիւ վիշապ դեմոնի դէմ, իբրեւ «ամպրոպային կռիւ», ինչպէս Ինդրային կռիւն է, — մի հայեացք, որ մինչեւ վերջերս էլ կենդանի է եղել մեր ժողովրդի մէջ։ Վիշապը մեր հին եւ մեր

ժամանակի ժողովրդական հաւատալիքներով՝ փոթորկի, պտուտահողմի, թաթառի եւ փոթորկալից ամպի անձնաւորումն է, հէնց ինքը փոթորիկը, «թանձրացեալ ամպով», կայծակներով ու որոտմունքով, — մի չար ոգի, որի նախատիպն է օձը, որ եւ սովորաբար չափազանց մեծ օձի կերպարանքով է ներկայանում, բայց իբրեւ ամպային ևակ յաճախ փոխում է իր կերպարանքը եւ զանազան կերպարանքներ է ընդունում: Եզնիկ Կողբացու գրելով, օրինակ, նա երեւում է մերթ իբրեւ օձ, մերթ իբրեւ մարդ, երբեմն ջորի կամ ուղտ, կամ իբրեւ ոսկին հեռապնդող ձիաւոր: Փոթորիկը, ասում է Անանիա Շիրակացին (7-րդ դար) «ի բաջաղանս եւ յառասպելս վիշապ հանել ասեն»: Իսկ Վանական վարդապետը (13րդ դար) փոթորկի երեւոյթի համար պարզապէս գրում է. «Ասեն, թէ զվիշապն ի վեր յօդն քարշեն»: Դա մի հին հաւատալիք է եղել, ըստ որի վիշապը, փոթորկի անձնաւորումը, փոթորկի ժամանակ վեր են քաշել: Նոյնը գտնում ենք եւ Եզնիկի մօտ, որ գրում է. «Եւ եթէ բառնայցի ի վեր այնպիսի վիշապն, ոչ եթէ եզամբք ինչ անուանելով»:

Ինչպէս ասուեց, Ինդրայի մականունն է Վերեթրագնա, որ պարսկական Վերեթրագնա աստուծուց անցել է հայերին, եւ հնչափոխութեամբ դարձել յատուկ անուն Վահագն: Հնումն, հարկաւ, դեռ կենդանի է եղել այդ մականուան նշանակութիւնը, բայց հայերէն թարգմանել են ոչ թէ Վիշապասպան, այլ «Վիշապաքաղ», որ նշանակում է վիշապ հանող, վիշապ վեր քաղող, վիշապ վեր քաշող: Այդ մակդիրը ցոյց է տալիս, որ Վիշապաքաղ Վահագն աստծու կռիւը վիշապների դէմ՝ մտածուել է իբրեւ «վիշապ հանել»: Վիշապ հանողը, վիշապ վեր քաղողը, վիշապ օդը քարշողը եղել է, ուրեմն, Վահագն աստուածը: Պարսից Վերեթրագնան իբրեւ ամպրոպային աստուած ներկայանում է բազմազան կերպարանքներով — իբրեւ գեղեցիկ, փայլուն պատանեակ, իբրեւ ցուլ եւ այլն: Նոյնպէս Տիշտրիան, իրանական ամպրոպային աստուածը, երեւում է գեղեցիկ պատանեակի, արջառի — «սպիտակ ոսկեղջիւր եզան» (1) եւ ձիու կերպարանքով: Ինդրան եւս յաճախ երեւում է իբրեւ ցուլ: Ցուլի կռիւը վիշապի հետ կայ եւ գերմանական առասպելաբանութեան մէջ: Նոյնը եղել է եւ հայկական առասպելներում: Եզնիկը, ինչպէս տեսանք, գրում է. «Եթէ այնպիսի վիշապը վեր բարձրացուի՝ այդ կը լինի ոչ թէ կարծեցեալ եզներով»... Կը նշանակի՝ վիշապ վերացընողը, «Վիշապաքաղը» մտածուել է մեզանում եւս իբրեւ եզ, ցուլ:

Ինչի՞ համար է այդ ամպրոպային կռիւը, կամ «վիշապ հանելը»: — Վիշապը, պտուտահողմի կամ ամպրոպի չար անձնաւորումը, իր ընկեր չար ոգիների հետ, իբրեւ հողմ «թանձրացեալ ամպով» բարձրանում է, արեգակի լոյսի երեսը կտրում, կամ փոթորկի մէջ յարձակւում է արեգակի վրայ, որ իբրեւ գեղեցիկ աղջիկ է անձնաւորւում, ամպրոպային ամենազօր աստուծու քոյրը կամ կինը. ուզում է կուլ տալ կամ առեւանգել նրան, եւ յափշտակում է նրան: Կամ, ուրիշ առասպելներով, այդ չար ոգին երկնային անձրեւաբեր ամպերի ջրերի կամ երկնային ծովի առաջը կտրում է, նստում է

(1) Lehrbuch der Religionsgeschichte *von P. D. Chantepie de la Saussaye, Tübingen, 1905, II, էջ 185*:

երկնային ջրերի վրայ եւ փակած պահում ջրերը, վայր հոսելն արգելում է՝ նրանց առաջ ցամաք ամպերի լեռներ ու բուրգեր կանգնեցնելով: Բայց այդ միջոցին ահա ծնւում է փոթորկի կամ ամպրոպի աստուածը, որ միեւնոյն օդերեւոյթի բարի անձնաւորումն է, մի գեղեցիկ պատանեակ հրեղէն մազերով, ինչպէս հնդիկների մէջ Ինդրան, երբեմն եւ Ագնին: Նա կայծակներով ու որոտմունքով, Մարուտների (հողմերի անձնաւորում աստուածներ) հետ միասին վրայ է վազում, կռւում է վիշապի եւ նրա չար ոգիների դէմ, արձակում է իր հրեղէն նետերը, խորտակում է նրա բուրգերը կամ լեռները, սպանում է վիշապին, կամ փախցնում, կամ բռնում շղթայում, կամ վեր հանում բարձրացնում է նրան ու ցած գլորում փշրում եւ այլն, եւ ազատում է գերուած արեգակը ու լուսաւորում երկիրը եւ վայր է հոսեցնում ծովի ջրերը: «Այս հզօր Ինդրան դուրս քշեց ջրերի ալեծուփ հոսանքը, վիշապասպանը մօտ վարեց ծովը, տեսանելի դարձրեց արեգակը, գտաւ արջառը. մի գիշերուայ մէջ կատարեց նա օրերի գործը»: Ինդրայի «յատուկ բնական աբարքն այն է, որ նա յաղթահարում է երաշտի դեմոնին», ինչպիսի հանդիսանում է Վրտրան. նա «անձրեւի աստուած» է եւ տալիս է անձրեւ ու արեգակ: Մ. Խորենացին այդ մասին ակնարկ չի անում, բայց քանի որ Ինդրայի համապատասխան հայկական աստուածն է Վահագն, — ինչպէս Ինդրան՝ երկնքի ու երկրի որդի, ծովածին, հրամազ, բոցամօրուս, արեգակնաչեայ, խարտեաշ մի պատանեակ, որ կռւում է վիշապների դէմ, քանի որ մեր այդ աստուծու անունն անգամ նոյնն է, ինչ որ Ինդրայի մակդիրը՝ «Վերեթրագնա», — պէտք է կարծել, որ նոյնպէս անձրեւ բերելու համար է Վահագնի կռիւը վիշապների դէմ:

Այդ հաւաստւում է մեր ժողովրդական հաւատալիքներով, նոյն առասպելի վերապրուկներով: Վիշապը, — կարծում են, — երբ շատ մեծանում է, վտանգաւոր է դառնում. նա փոթորկի ժամանակ չար ոգիների հետ բարձրանում է վեր՝ կա՛մ երկինքն ու ամպերը կապելու, որ անձրեւ չգայ, կա՛մ կուլ տալու արեգակը, որ իբրեւ աշխարհ լուսաւորող գեղեցիկ աղջիկ է պատկերանում: Բայց Գաբրիէլ հրեշտակը, ուրիշ հրեշտակների հետ, կռւում են վիշապի դէմ, սպանում նրան, կա՛մ վեր հանելով՝ բարձրից ցած են գցում նրան ու փշրում, եւ այդ ժամանակ արեգակը ցոյց է տալիս իր երեսը, կա՛մ անձրեւ է գալիս, կամ թէ, ինչպէս ասում են, կռուի միջոցին այդ վիշապը ջուր է փչում երկրի վրայ: Կռուից առաջանում է փոթորկի շառաչիւնը, որոտը: Փայլակը Գաբրիէլի թրի փայլքն է, կայծակը՝ նրա հրեղէն նետը:

Այս միեւնոյն չար վիշապի պատկերն է, երկրի վրայ տեղափոխուած, որ մեր «Սասնայ Ծռերի» մէջ հանդէս է գալիս իբրեւ լեռներում ապրող մի ջրարգել հրէշ: Նա նստում է աղբիւրի վրայ, խափանում է քաղաքի ջուրը եւ ջուրը բաց թողնելու համար պահանջում է աղջիկների զոհաբերութիւն, մինչեւ որ Ծովային Սանասարը, կայծակի թուր ունեցող այդ կայծակի հերոսը, սպանում է նրան եւ ջուրն ազատում:

Ի՞նչն է կազմում այս հետաքրքիր ֆիզիքական առասպելի հիմքը հասարակական կեանքից: — Երկրի ուժեղները, ամենահին դարերից, ջրազուրկ տեղերում բռնութեամբ տիրել են ջրերին եւ առանց զոհաբերութեան

չեն թողել, որ ուրիշներն օգտուեն դրանցից: Ահա այն նախատիպը, որի անդրապատկերումն է առասպելական աշխարհի երկնային աղբիւրի կամ ծովի ջուրն արգելող օձերեւութային վիշապը: Երաշտի ժամանակ երեւակայել են, թէ երկնքում չար վիշապը կտրում է երկնային ջրերի, անձրեւի առաջը, մինչեւ որ մարդկանց բարեկամ ամպրոպային բարի աստուածը յաղթում է այդ չար դեմոնին եւ մարդկանց ուղարկում է անձրեւ:

*Վահագնի երգը, որ բովանդակում է այս հին առասպելական ըմբռնումն ամպրոպի աստուածութեան մասին, Հայոց հնագոյն ժողովրդական երգերից մէկն է:*

# Ա Ւ Ա Ն Դ Ա Կ Ա Ն  Վ Է Պ

## Վ Ի Պ Ա Ս Ա Ն Ք

1. Աւանդական վէպ, Վիպասանք, Երգք վիպասանաց, Երգք առասպելաց: — *Առասպելից տարբեր ծագում ունի աւանդական վէպը (էպոսը): Մինչ առասպելներն ունեն աւելի դիցաբանական բնաւորութիւն, շատ քիչ պատմական ազդեցութիւն են կրած եւ յաճախ փոխառութիւն են ուրիշներից, — վէպն, ընդհակառակն, իր ծագումով, ընդհանուր առմամբ, բնիկ ազգային ինքնուրոյն ստեղծագործութիւն է* (1)*: Վէպը պատմական բանաստեղծութիւն է: Նրա նիւթը պատմութիւնն է, այս բառն ընդարձակ մտքով առած, լինի իսկական, թէ կեղծ պատմութիւն: Եւ մեր «վէպ» բառը հնում հէնց այդ ընդարձակ նշանակութիւնն էլ ունեցել է* (2)*:*

*Մ. Խորենացին մեր առաջին հին վէպն անուանում է «Վիպասանք», «Երգք վիպասանաց»: Սակայն նա գործածում է նաեւ «Առասպել» կամ «Երգք*

---

(1) «Էպոսը Արեւելքի հին բռնակալների, արիստոկրատների եւ Միջերկրական ծովի վաղ ֆէոդալիզմի ստեղծուած մի երեւոյթ է» (Մ. Գորկի):

(2) Մ. Խորենացին, որ մեր առաջին հին վէպի միակ աղբիւրն է, այդ բառը գործածել է միշտ գրաւոր պատմական յիշատակարանների համար: Նրա գրքի մէջ «վէպ» նշանակում է պատմութիւն, «վիպագրել»՝ պատմագրել, պատմել, «վիպագիր»՝ պատմագիր, «վիպասան» բառն էլ նշանակում է պատմութիւն ասող: Այժմ «վէպ» կամ «աւանդական վէպ» նշանակում է «էպոս», բայց «վիպել»՝ պատմել: 19-րդ դարից սկսած «վէպ» բառը գործած-

առասպելաց»(1)։ Առասպել չի կոչուած միայն Մեծն Տիգրանի պատմութիւնը։ Թէ մեր հին վէպը հէնց այդպէս «Վիպասանք», «Երգք վիպասանաց» եւ «Առասպել» էլ կոչուել է, այդ երեւում է նաեւ Փաւստոս Բուզանդի «Հայոց Պատմութիւնից», որի մէջ (Երրորդ դպր. Գլ. ԺԴ.) նա յիշում է, որ հայ նախարարներն ու շինականները սիրում էին Հայոց հեթանոսական հին երգերը, «դիւրեանց երգս առասպելաց զվիպասանութեանն»։ Բուզանդի այս կտորից իմացւում է, որ Հայոց հին հեթանոսական երգերը կոչւում էին «Երգք առասպելաց», «Երգք վիպասանութեան»։

2. Առասպելախառն վէպ եւ յարակցումներ։— Որ մեր առաջին աւանդական վէպն այսպէս կրկին-կոչումներ ունի, դրա պատճառն այն է, որ առասպելները նրա մէջ մեծ տեղ են ունեցել։ Եւ իսկապէս, այդ վէպի հիմունքըն է միայն պատմական։ Այլապէս էլ չէր կարող լինել բերանացի աւանդուած պատմութեան համար այն հին դարերում, երբ մանուկ միտքը տարբերութիւն չէր դնում իրականի ու երեւակայականի միջեւ, որով եւ այդ վէպի մէջ յարակցուել են առասպելական զրոյցներ, այլեւ իսկական պատմական եղելութիւններն էլ մասամբ ստացել են առասպելական գոյն։ Եւ այսպիսով առաջ է եկել առասպելախառն վէպ։ Բայց քանի որ վիպասանները եւ նրանց ունկնդիրներն իսկական պատմութիւն էին համարում նաեւ առասպելները, ապա նրանց համար վիպասանութիւնն իր ամբողջութեամբ մի պատմուածք է եղել անցեալում կատարուած եղելութիւնների։ Դա նրանց իշխողների պատմական յիշատակարանն է եղել։ Առասպելականն ու հրաշալին նոյնիսկ ցանկալի էր ֆէոդալների համար, որովհետեւ դրանով ամրանում էր նրանց դիրքը (2)։ Բայց եւ այնպէս, աւանդական վէպի մէջ էականն ու կարեւորն առասպելը չէ, այլ պատմութիւնը։ Մի անգամ որ մեր «Վիպասանքն» առասպելախառն պատմուածք է, դրա ուսումնասիրութեան ժամանակ «ամէն դէպքում, երբ հնարաւոր է, պէտք է վէպի ցուցմունքները զուգադրել պատմութեան ֆակտերի հետ» (Մ. Գորկի) եւ պատմականն անջատել առասպելականից։

---

ւում է նաեւ «ռոման» բառի նշանակութեամբ։ Ապա «զրոյց» բառն էլ, որ այժմ նշանակում է ընդհանրապէս բերանացի պատմուած աւանդութիւն, Խորենացու գրքին մէջ համանիշ է «վէպ» բառին եւ նշանակում է թէ՛ բերանացի եւ թէ՛ գրաւոր պատմուածք, պատմութիւն ընդհանրապէս, յաճախ գրաւոր պատմութիւն։ Խորենացին այս բառը «բերանացի զրոյցի» իմաստով գործածելիս՝ սովորաբար «անգիր, հին, վաղնջուց, նախնական» բառերով, կամ «յաւանդութենէ հասեալ», «որդի ի հօրէ առնելով յիշատակ», «զրուցեն պառաւունք» շրջաբանութիւններով տարբերում է աւանդական զրոյցը գրաւոր զրոյցից։ Տես՝ Մ. Աբեղեան, Հայ ժողովրդական առասպելները, էջ 10—22։

(1) «Զորմէ առասպելաբանեն».— «Զայս տեղի առասպելաբանելով վիպասանքն յերգելն իւրեանց ասեն», «Առասպելեալ երգեն», «Ըստ առասպելին», «Զայս կամելով երգել յառասպելսն», «Նոյն երգիչքն յառասպելին ասեն», «Զորմէ յառասպելս ասեն»։

(2) «Որ վաղ էպոսը յաճախ սերտ կապուած է առասպելի հետ, այդ կատարւում էր նաեւ արուեստական կերպով՝ առաւելագոյն չափով բարձրացնելու համար վէպի հերոսների — թագաւորների ու ազնուականների» (Մ. Գորկի)։

*Այդ կատարելիս՝ առասպելների համար նկատի պիտի ունենալ, որ միթական բնաւորութիւն ունեցող զրոյցները հեշտութեամբ չեն մոռացւում ժողովրդի մէջ, այլ երկար պահւում են, միայն կերպարանափոխ լինելով եւ ուրիշ առասպելների հետ կցուելով, եւ կամ իրենցից մասեր միայն մոռացութեան տալով: Միւս կողմից դիցաբանական բնաւորութիւն ունեցող առասպելները մեծ մասամբ միայն մի ազգի չեն պատկանում: Ուստի եւ շատ բնական է, որ մեր հին վէպի մէջ մտնող առասպելները, ոչ միայն ընդհանուր գծերով, այլ եւ մասնաւոր միջադէպերով, գտնենք այժմ թէ՛ հայերի եւ թէ՛ ուրիշ ազգերի մէջ: Իսկ վէպի պատմականութեան համար պիտի իմանալ, որ վէպի հիմնական մասը միայն պատմական է: Դրա մէջ պահուած է լինում պատմական անցքերի յիշողութիւն, բայց մեծ անաքրոնիզմներով եւ այլափոխութեամբ: Այդ առաջանում է վէպի էութիւնից: Պատմական երգ ու զրոյցը եւ վէպը, իբրեւ աւանդական բանահիւսութիւն, դարեր շարունակ ապրելով վիպասանների բերանին, անզգալի կերպով փոփոխութեան են ենթարկւում: Աւելի մեծ է այն փոփոխութիւնը, որ կատարւում է ուրիշ նշանաւոր իրողութիւնների եւ պատմական անձերի ազդեցութեամբ: Աւանդական երգն ու վէպը ժամանակագրութիւն չունի: Ուստի անջատ երգերն ու աւանդութիւնները, որոնք առաջ են եկել զանազան նշանաւոր պատմական անձերի եւ դէպքերի մասին, իրերի բնութեամբ յարակցւում են հետզհետէ միմեանց հետ: Հինը յաճախ մնում է, թէեւ մթնած ու ետ մղուած: Հնի վրայ աւելանում է նորը, հետագայում կատարուած դէպքերի զրոյցը: Այդ ժամանակ զրոյցներն ու երգերը սովորաբար ներքին փոփոխութեան են ենթարկւում եւ ոչ թէ մեքենայաբար կցւում իրար: Բնականաբար ամենից աւելի տուժում են հերոսների անունները: Միացման համար իբրեւ հանգոյց ծառայում է գլխաւորապէս՝ զանազան անձերի գլխին եկած դէպքերի կամ նրանց կատարած գործերի համանմանութիւնը: Նման դէպքերի ազդեցութեան տակ՝ հին պատրաստի վիպական երգը, եւ նոյնիսկ վէպը, իր մէջ ընդունում է նոր տարրեր նոր պատմական անցքերից:*

*Բացի տարբեր պատմական անձերի եւ նրանց գործերի այսպիսի միացումից, վէպի մի էական կողմն էլ այն է, որ հերոսները յարում են իրար ազգակցական կամ այլ կապերով: Մի հին վիպական հայեացք է՝ ցեղակցութիւնն ու ժամանակակցութիւնը տեսնել ոչ թէ ֆիզիկապէս, այլ հոգեպէս: Այս նախնական հայեացքով քաջերը, բնականաբար, իրար ցեղակից ու ժամանակակից են համարւում* (1)*: Ուստի աւանդական վէպին մէջ նրանք համախմբւում են կա՛մ մի մեծ հերոսի շուրջ, ինչպէս ռուսական վէպի մէջ, կա՛մ, ինչպէս յունական վէպի մէջ, մի նշանաւոր իրողութեան շուրջ՝ դառնալով մի մեծ գործի ժամանակակից ու մասնակից: Յաճախ սկզբնապէս իրարուց անկախ երգերի ու զրոյցների հերոսները դառնում են եղբայրներ, կամ հայր ու որդի եւ յաջորդում են միմեանց, որով առաջանում են վէպի ճիւղերը կամ սերունդները: Այս վերջին եղանն են ընտրել հայ վիպասանները թէ՛ մեր հին վէպերի եւ թէ՛ նոր վէպի համար: «Սասնայ Ծռերի» հերոսները՝ Սանասար, Առիւծաձեւ Մհեր, Դաւիթ եւ պստիկ Մհեր՝ քաջերի մի սերունդ են, հօրից որդի յաջորդութեամբ, որոնց շուրջն իբրեւ ազգականներ դրուած են՝ Ձէնով Յօվան, Վերգօյ, Քեռի Թորոս, Խոր Մանուկ եւ ուրիշները: Պատահում է, որ տարբեր անձերի տարբեր ժամանակներում կատարած արարքները հաւաքւում են ի մի եւ վերագրւում մէկ անձի, ինչպէս եւ բազմազան զրոյցներ, նիւթով ցեղակից լինելով, միանում են եւ մի ամբողջութիւն կազմում: Այդ ժամանակ նշանաւոր հերոսներն ու սիրելի անուններն իրենց են քաշում ուրիշների վրայ եղած երգերն ու զրոյցները, եւ նրանց պատկերը հարստանում է: Այսպէս՝ ֆրանսիական վէպի մէջ Մեծն Կարոլոսի անուանն են կապուած շատ արարքներ եւ գծեր, որոնք իրենը չեն, այլ Կարոլինգեան ցեղի ուրիշ թագաւորներինը: Նոյնիսկ Մերովինգեան հարստութեան*

(1) Այս հայեացքը վիպասաններից անցել է հին պատմագիրներին, որոնց գրածը շատ բանում չի տարբերւում աւանդական վէպից, որովհետեւ նրանք էլ յաճախ չեն զանազանում բանաստեղծութիւն, առասպել ու պատմութիւն: Այսպէս, օրինակ, Խորենացու Հայոց Պատմութեան մէջ գտնում ենք ցեղակցութեան ու ժամանակակցութեան այդ հին վիպական հայեացքը: Նա Ա. գրքի Ե. գլխի մէջ յայտնում է, թէ Նինոսը Բէլի որդին չէ, բայց կան այդպէս ասողներ, որ «ըստ նշանաւոր եւ անուանի լինելոյ» պատեհ են համարել այսպէս կարգել «զհեռին մօտաւոր»: Եւ ինքն իսկ Խորենացին ուրիշ տեղ (Ա. 31) գրում է. «Սիրեմ կոչել այսպէս ըստ քաջութեան՝ Հայկ, Արամ, Տիգրան, քանզի ըստ իմ քաջաց ազգք քաջքն իսկ միջոցքն՝ որպէս դէպ ումեք թուիցի կոչել»:

*թագաւորների գործերն անցել են Մեծն Կարոլոսի վէպին: Ասել չի ուզիլ, որ ամենից շուտ միանում են համանուն պատմական անձերի մասին եղած աւանդութիւնները: Մի քանի Արտաշէսների երգերն ու զրոյցները մեր վէպի մէջ կազմել են մեր վիպական Արտաշէսը*(1):

3· Վիպասանքի պատմական դարաշրջանն ու ծագումը եւ ունկնդիր հասարակութիւնը· ազնուական եւ շինական: — *Առաջին աւանդական վէպի համար իբրեւ նիւթ ծառայել են Հայաստանի պատմական դէպքերը մեր թուականութիւնից առաջ 2–րդ դարի սկիզբներից ի վեր: Այդ ժամանակներում սկսւում է մի նոր պատմական շրջան, տոհմային հասարակութիւնից անցնում է տեղի ունենում դէպի Փէոդալականը: Աւելի եւս զօրեղ կերպով եւ արագ առաջ է գալիս տոհմերի միացում, եւ հայերն աւելի եւս գիտակցում են իրենց իբրեւ մի ուրոյն ազգութիւն, իբրեւ մի համալեզու ցեղային ամբողջութիւն, եւ ուժ են զգում հանդէս գալու իբրեւ անկախ տէրութիւն: Վիպական շրջանն սկսւում է հէնց այս սոցիալական ու քաղաքական փոփոխութեամբ:*

*Անտիոքոս Մեծի պարտութիւնը հռոմայեցիներից Մագնեսիայի մօտ* (190 *թուին մեր թ. ա.*) *անմիջապէս ազդանիշ է լինում, որ հայ իշխանները, որոնք մի քանի անգամ ապստամբել էին Սելեւկեան տիրապետութեան դէմ, նորից ձգտեն անկախութիւն ձեռք բերելու: Կատարւում է քաղաքական մեծ յեղաշրջում: Հայերը երկար դարեր պարսիկներին ու մակեդոնացիներին ենթարկուելուց յետոյ՝ անկախանում են: Բնիկ իշխանների ձեռով Հայաստանում հիմնւում են երկու թագաւորութիւններ, որոնցից Արտաշէս Ա.ի հիմնածը, Արտաշատինը, կարողանում է շուտով ընդարձակել իր երկրի սահմանները եւ իր մէջ ընդունել ամբողջ Մեծ Հայաստանը:*

*Դարեր շարունակ խաղաղ կեանք վարելուց յետոյ՝ հայ ժողովուրդը տնտեսապէս ու քաղաքականապէս ուժեղացած, այժմ ապրում է մի իսկական վիպական–հերոսական շրջան: Արտաշիսեան հարստութեան սկզբից եւ Արտաշատ քաղաքի հիմնարկութիւնից* (180 *թ. մ. թ. ա.*) *մինչեւ Արշակունիների իշխանութեան հաստատումը Հայաստանում* (66 *թ. մ. թ.*) *եւ յետոյ, Հայաստանում կատարւում են մեծամեծ գործեր: Հիմնւում են թագաւորութիւններ ու քաղաքներ, փոխւում են հարստութիւններ, իրար հետ բախւում են մեծ տէրութիւններ, եւ Հայաստանը դառնում է երկարատեւ պատերազմների վայր: Այս պատմական մեծ իրողութիւններն ահա խորին ազդեցութիւն են թողնում ժամանակակիցների վրայ եւ առաջ են բերում բազմաթիւ պատմական երգեր, զրոյցներ եւ աւանդութիւններ: Պատմական նշանաւոր անձերն ու դէպքերը — Արտաշէս Ա.ն իր հիմնած թագաւորութեամբ, Մեծն Տիգրանն իր անձով ու բախտով, սրա որդի Արտաւազդը, թոռն Արտաշէսը, այս երեքի յարաբերութիւնը Մարերի հետ, եւ ապա Արշակունի Տրդատ Ա.ն իր նախորդներով ու յաջորդներով — նիւթ են դառնում պատմական երգերի ու զրոյցների եւ երգւում երգիչներից:*

*Այդ նախնական բանաստեղծութիւնը սկզբում, հարկաւ, չի եղել ամբողջական վէպ, մի ընդարձակ պատմուածք: Այլ դա եղել է տարրական ձեւով, պարզ ու միամիտ մի բանաստեղծութիւն, փոքր քերթուածներ ու զր–*

(1) Մ. Աբեղեան, Հայ ժողովրդական առասպելները, էջ 311—315:

*րոյցներ հերոսների ու նրանց քաջագործութիւնների մասին. պատմական երգեր, որոնց մէջ ասուած են եղել ազնուական տոհմերի ծագումը, քաղաքների հիմնարկութիւնը, պատմուած են եղել երկրի համար կարեւորութիւն ունեցող դէպքեր՝ պատերազմներ, իշխող հարստութիւնների սկիզբը եւ նըմանները: Այս ամէնը եղել է աւանդական վէպի տարրերը ազնուական բնաւորութեամբ, որովհետեւ դա ազնուական դասի արտադրութիւնն է եղել եւ մեծ մասամբ նրա պատուէրով ստեղծուած, եւ նրա կեանքն ու իդէալներն է պատկերացրել իր մէջ:*

*Ժամանակի ընթացքում այս սկզբնապէս անջատ պատմական երգերն ու աւանդութիւնները, յարելով իրար եւ նախորդ դարերից ժառանգած երգերի եւ առասպելների հետ, առաջ են բերել մի մեծ վիպական ամբողջութիւն մի քանի ճիւղերով, կազմուել է Վիպասանք կամ Վիպասանութիւն*(1), *կամ «Երգք առասպելաց», «Երգք վիպասանաց» (այլեւ «Երգք Թուելեաց»), որ շատ վաղ մշակել են արուեստաւոր երգիչները — վիպասանները: Դա մեր առաջին աւանդական վէպն է կամ առաջին հին վէպը, որ ծագել է մեր վաղ ֆէոդալիզմի սոցիալական պայմաններում, դրանց հետեւանքով եւ դրանց համապատասխան, իբրեւ արտայայտութիւն իշխող դասի վերին խաւի շահերի: Բայց չպիտի կարծել, թէ մեր այդ վէպը, ինչպէս եւ միւսները, սահմանուած են եղել միայն ազնուականութեան համար: Իշխողները միշտ էլ աշխատել են իրենց իդէալները պատուաստել ոչ միայն ազնուականների, այլեւ ռամիկների մէջ: Ինչպէս 5-րդ դարի հեղինակ Փաւստոս Բուզանդից իմանում ենք, մեր շինականութիւնն էլ սիրով լսելիս է եղել Հայոց վիպասանութիւնը:*

*Տես՝ Առաջին յաւելուած՝ «Վիպասանքի պատմական հիմքը»:*

4. Արտաշատեան եւ Արմաւիրեան վիպական ցիկլեր եւ Գողթան երգիչներ: — *Թէ Հայաստանի ո՛ր կողմերում է ծագել, զարգացել եւ տարածուած եղել Հայոց առաջին հին վէպը, այդ մասին վկայուած տեղեկութիւններ չունենք: Բայց այլ ազգերի վէպերի ծագման եւ զարգացման մէջ եղած մեծ նըմանութիւնը թոյլատրում է մեզ որոշել այն, որի բացատրութեան համար չունենք բաւարար փաստեր: Պատմական երգն ու զրոյցը ծագում են ընդհանրապէս այն տեղերում, կամ այն տեղերի մօտերը, ուր կատարուել են վէպի նիւթ դարձող պատմական նշանաւոր եղելութիւնները, եւ աւելի եւս այն տեղերում, ուր իրապէս ապրել ու գործել են վէպի պատմական հերոսները, ուր եւ հետաքրքրուել են նրանց բախտով: Արդ՝ Վիպասանքի մէջ մտնող ամենահին պատմական աւանդութիւնները վերաբերում են Արմաւիրին ու Երուանդաշատին եւ Արտաշատին: Հետեւաբար պէտք է ընդունել, որ այս քաղաքներում կամ դրանց կողմերում են սկիզբն առել վիպական երգերն ու զրոյցները: Առանձնապէս Արտաշատ քաղաքի շուրջը պատմուել ու երգուել են աւանդութիւններ, որոնք կապուած են եղել Արտաշատի իշխողների, Արտաշէս Ա.ի, Մեծն Տիգրանի եւ իր զարմերի, ինչպէս եւ ուրիշների անուան հետ: Դրանք կազմել են երգ ու զրոյցների Արտաշատեան ցիկլը:*

---

(1) Մ. Աբեղեան, Հայ ժողովրդական առասպելները, էջ 283—379:

Վէպի մէջ յիշուած Երուազ, Երուանդաշատ ու Երուանդակերտ, Երուանդաւան եւ Արմաւիր անուններն ու նրանց մասին պատմածներն աւելի վաղ ժամանակից են գալիս, քան Արտաշատն ու Արտաշիսեան հարստութիւնը: Մեր Թ. ա. 4–րդ դարում Հայաստանի մի քանի սատրապները կրել են Երուանդ անունը, եւ նոյնիսկ վերջին կառավարիչը Սելեւկեան իշխանութեան օրով, Արտաշէսի ու Զարեհի թագաւորելուց առաջ, կոչուել է Որոնտաս, որ է Երուանդ: Ստրաբոնը գրում է. «Արմենիային տիրել էին նախ պարսիկները եւ մակեդոնացիները, յետոյ՝ Ասորիքի եւ Մեդիայի իշխողները, եւ վերջոյ՝ կառավարիչ էր այստեղ Որոնտասը, որը եօթ պարսիկներից էր, իսկ ապա բաժանեցին երկու մասի հռոմայեցիների դէմ պատերազմող Անտիոքոս Մեծի զորավարները՝ Արտաշէսը եւ Զարեհը»(1): Վէպն, ուրեմըն, պահել է անունն Արտաշէս Ա.ի նախորդի, Երուանդի, որ բնականօրէն եղել է, ինչպէս է եւ Վիպասանքի մէջ, Արտաշէսի հակառակորդը, երբ նա ապստամբել է Սելեւկեան տիրապետութիւնից: Վէպի մէջ այս Երուանդի անուան հետ, սակայն, կապուած են յիշողութիւններ նաեւ նախորդ Երուանդների եւ ուրիշների արարքներից Հայաստանում նախքան 2–րդ դարը մեր Թ. ա., այլեւ յետոյ կատարուած դէպքերից:

Ինչպէս կը տեսնենք, մեր առաջին վիպասանութեան մէջ կարեւոր տեղ են բռնում մարերը, ըստ առասպելին՝ վիշապազները, որոնք բնակուել են Արտաշատի մօտերից սկսած ,Մասիսից դէպի արեւելք մինչեւ Գողթն: Նրանց գաւառում հէնց Արտաշէս Ա. թագաւորը շինել է իր մայրաքաղաքը, իբրեւ Հայաստանի արեւելեան եւ արեւմտեան մասերը միացնող միակ յարմար տեղը: Բնականաբար առաջ է եկել ընդդէմ մարերի մի մաքառում, որ եւ մտել է վէպի մէջ: Այս էլ ցոյց է տալիս, որ վէպը պիտի ծագէր ու զարգանար եւ ապրէր հէնց այն կողմերում ,կամ այն կողմերի մօտիկ տեղերում, ուր բնակուել են մարերը կամ մարացիները: Սրա համար ունենք մի պատմական վկայութիւն: Վէպը, ըստ Խորենացու, պահուած է եղել Մարքի սահմանակից Գողթն գաւառում. «Զոր պահեցին ախորժելով, որպէս լսեմ, մարդիկ կողմանն գինեւէտ գաւառին Գողթան» (Ա. 30). «Ի վիպասանացն, որ պատմին ի Գողթան» (Բ. 49). «Երգիչքն Գողթան» (Բ. 61): Որ Գողթան գաւառում երկար ժամանակ յարատեւել է հին Վիպասանքն իբրեւ երգ ու պատմուածք, այդ բացատրւում է նրանով, որ այդ կողմերում, ինչպէս յայտնի է, դեռ երկար մնում էր հեթանոսութիւնը, այսինքն նախաքրիստոնէական կրօնը: Կորիւնը Մաշտոցի համար գրում է, թէ՝ «Դիմեալ իջանէր յանկարգ եւ յանդարման տեղիս Գողթան», եւ ապա թէ՝ «Գերեալ զամենեսեան ի հայրենեացն աւանդելոց եւ ի սատանայական դիւապաշտ սպասաւորութենէն՝ ի հնազանդութիւն Քրիստոսի մատուցանէր... Դիւացն փախստական լինելով՝ անկանէին ի կողմանս Մարաց»: Բնական է, որ եկեղեցու տեսակէտով այդ «անկարգ եւ անդարման» տեղերի մարդիկը պահէին իրենց հայրենական աւանդութիւնները. «Դեգերեալ մաչէին... ի հնութիւն հեթանոսութեանց սովորութեանց», «սիրէին զիւրեաց Երգս առասպելաց զՎիպասանութեանն», ինչպէս գրում է Բուզանդը: Եթէ Գողթնի բնակիչները նոյն–

(1) Թարգմ. ակադ. Յակ. Մանանդեանի:

իսկ մարական ծագում ունեցած էլ չլինէին, նրանք կարող էին առնել ու իւրացնել եւ երկար պահել իրենց հարեւան մարերի առասպելներն ու վէպերը: Այսպէս և մեր նոր վէպը՝ «Սասնայ Ծռերը» մեր օրերում պատմուել է աւելի Մոկաց եւ ուրիշ կողմերում, ինչպէս եւ հին Յունաստանում Աքայեցոց վէպը պահել ու զարգացրել են Յոնիացիները: Թէ Գողթնի սահմաններից դուրս ուրիշ ո՛ր կողմերում է տարածուած ու պահուած եղել Վիպասանքը, մենք այդ չգիտենք:

Մարերի մասին եղած հին աւանդութիւնները, ինչպէս եւ Արմաւիրեան ցիկլի երգ ու զրոյցները, որոնք սկզբնապէս առանձին-առանձին խմբեր են կազմած եղել, երգիչները, վիպասանները միացրել են Արտաշատեան ցիկլի հետ եւ կազմել մի վէպ: Այդ կապուած է եղել քաղաքական իշխանութեան միացման հետ: Այդ վաղ դարերում արդէն Արտաշատի տէրութիւնը ձգտել եւ յաջողել է առաջ բերել Հայաստանի զանազան մասերի միացում, եւ Արտաշատը դարձել է ընդհանուր կենտրոն: Դրա համապատասխան՝ Արտաշատի շուրջը խմբուած պատմական երգերն ու զրոյցներն իրենց մէջ ընդունելով եւ ուրիշ աւանդութիւններ, ձգտել են «համազգային» դառնալու: Այսպիսով առաջ է եկել մի ընդհանուր վիպասանութիւն Հայաստանի իշխողների մասին: Հայոց հին Վիպասանքն, ուրեմն, կազմուել ու զարգացել է Հայաստանի կենտրոնական իշխանութեան հետեւանքով: Երկրի իշխանութեան միացումն առաջ է բերել եւ վիպական նիւթերի միացում: Այդ անհրաժեշտ է եղել Արտաշատի թագաւորների համար: Նրանց պէտք էր իրենց իսկական կամ կարծեցեալ նախնիքների մասին մի վէպ, մի պատմութիւն, որի մէջ փառաւորուէին նրանք, որ եւ լինէր միանգամայն իրենց դասակարգային շահերի եւ գաղափարների արտայայտութիւնը: Եւ վիպասանները կատարող են դարձել նրանց վիպական պահանջին, հին երգերից ու զրոյցներից եւ առասպելներից կազմելով մի վիպական պատմութիւն մի քանի ճիւղերով:

5. Վիպասան եւ վէպն աւանդելու եղանակները:— *Վիպական բանաստեղծութիւնը մշակուել է պրոֆեսիոնալ արուեստաւորների ձեռով, որոնք կոչուել են՝ երգիչ, վիպասան եւ գուսան: Նրանք երգել են նուագելով մի գործիքի վրայ, որ կոչւում է «փանդիռն»: Որոշ թւով ձեռագիրների մէջ այս գործիքի անունն աղճատուելով՝ դարձել է «բամբիռն», եւ այս ձեւով դա յայտնի է դարձել 19-րդ դարում մեր բանասիրութեան եւ բանաստեղծութեան մէջ: Մ. Խորենացի այս գործիքը յիշատակում է Տիգրանի վէպի եւ Վահագնի առասպելի մասին գրելիս (Ա. 24, 31), այլեւ Տարբան-Տարաւնի զրոյցը պատմելուց յետոյ՝ նա աւելացնում է. «Բայց առաւել յաճախագոյն հինքն Արամազնեայց ի նուագս փանդռան եւ յերգս ցցոց եւ պարուց զայսոսիկ ասեն յիշատակաւք» (Ա. 6):*

*Որ Խորենացին յաճախ «երգիչ», «երգել», «երգ» բառերն է գործածում (Ա. 24, 30, 31, Բ. 48, 49, 50, 54, 61), դրանից եզրակացրել են, թէ իբր եղել է ամբողջութիւն կազմող մի մեծ «Երգ»: Այս տեսակէտին հետեւելով՝ նոյնիսկ «ասել» բառին տուել են «երգել» նշանակութիւնը եւ «վիպասան» բառը բացատրել իբրեւ «վէպ երգող»: Բայց այդ սխալ է, «վիպասան» նշանակում է վէպ ասող, պատմող: Միւս կողմից պէտք է դիտել, որ*

«վիպասանք» բառը ոչ միայն «պատմողի» համար է գործածւում, ինչպէս՝ «վիպասանքն յերգելն իւրեանց ասեն» (Բ. 50), այլեւ «պատմուածքի» համար. «Արտաշիսի վերջնոյ գործք՝ բազում ինչ յայտնի են քեզ ի վիպասանացըն, որ պատմին ի Գողթան» (Բ. 49)։ «Վիպասանք» բարդ բառի թէ՛ «պատմողի» եւ թէ «պատմուածքի» այսպիսի երկու նշանակութիւն ունենալը տարօրինակ բան չէ հայոց լեզուի մէջ. օրինակ՝ հէնց նոյն կազմութիւնն ունեցող «գովասանք» բառը նշանակում է թէ՛ «գովք ասողներ» եւ թէ «ասած գովքը, գովեստը»։ Ինչպէս վերջին իմաստով գործ է ածւում «գովասանութիւն» իբրեւ համանիշ «գովասանք» բառին, այսպէս եւ «վիպասանութիւն» համանիշ է «վիպասանք» բառին՝ երկրորդ իմաստով առած։ «Երգք վիպասանաց» կապակցութեան մէջ «վիպասանք» բառն առաջին (պատմողի) թէ երկրորդ (պատմուածքի) իմաստով առնուած լինի, նշանակութիւնը նոյն է մնում. բայց հաւանական է, որ երկրորդ, այսինքն պատմուածքի իմաստով լինի, քանի որ այս երկրորդ իմաստով առնուած ժամանակն է համանիշ «վիպասանութիւն» բառին. իսկ «երգք վիպասանաց», ինչպէս տեսանք, Փաւստոսի մէջ կոչւում են «երգք վիպասանութեան»։

Այսպէս, Հայոց Վիպասանքը (կամ Վիպասանութիւնը), ինչպէս բառի կազմութիւնը ցոյց է տալիս, եւ ինչպէս Բ. գրքի 49 գլխի մէջ պարզապէս վկայում է Խորենացին, պատմուել է։ Բայց քանի որ յաճախ յիշւում են եւ «Երգք վիպասանաց» (վիպասանութեան) եւ թէ վիպասանները (վէպ ասողները) երգում են, ինչպէս եւ վիպասանների համար «երգիչք» բառն է գործածւում, — ապա պարզ է եւ այն, որ Վիպասանքը (Վիպասանութիւնը) ոչ միայն պատմուել է, այլեւ մասամբ երգուել։ Այսպէս եւ մեր արդի ժողովրդական վէպը մանրամասնօրէն պատմւում է, բայց եւ տեղ-տեղ երգւում է։ Վէպը պատմելու եւ մէջէ մէջ երգելու նոյն ձեւը եղել է ուրիշ ազգերի մէջ եւս։

**6. Թուելիք, «Թուելեաց երգք»։** — «Երգք վիպասանաց» Խորենացու մէջ մի տեղ (Ա. 30) կոչուած են «Թուելեացն երգք»։ Այս տերմինին զանազան մեկնութիւններ են տուել, որ կարեւոր չենք համարում այստեղ յիշատակել։ «Թուելեաց» եւ «Վիպասանաց երգերը» Խորենացու մէջ բերուած բովանդակութեամբ նոյնանում են, որով եւ ապահովապէս կարելի է ասել, որ նոյն «Վիպասանաց երգերի» մի ուրիշ կոչումն է միայն «Թուելեաց երգեր»։ «Թուելիք» բառը (որի սեռականն է «Թուելեաց») կազմուած է ոչ թէ «թուիլ» (երեւալ) բայից, այլ «թուել» բայից, բայց վերջինս ոչ թէ «համարել» (համրարել, համրել) իմաստով առած, այլ «ասել, պատմել» կամ «ի թիւ ասել»։ «Ի թիւ ասելը», դա «ի թիւ ուսած», այսինքն բերան արած՝ արտասանելն է, առանց որեւէ եղանակի, սովորական կարդալու կամ պատմելու ձեւով, որքան կարելի է, պարզ եւ մեկին։ Արդ՝ երբ «թիւ» արմատը եւ նրանից կազմուած «թուել» նշանակում է «ասել», «պատմել», «Թուելիք» բառն իր կազմութեամբ կարող է կրկին նշանակութիւն ունենալ, նախ՝ «թուողներ», այսինքն «թիւ ասողներ», ասող-պատմողներ, ապա՝ «թուածը», այսինքն՝ թիւ ասածը, ասած-պատմածը, ինչ որ ասւում, պատմւում է, քանի որ նոյն ածանցիկ մասնիկը թէ՛ ներգործականի եւ թէ կրաւորականի իմաստ ունի։ Եւ այսպէս, «Թուելիք» բառն իր երկու իմաստով եւս հա-

*մանիշ է «վիպասանք» բառին, որը, ինչպէս տեսանք, նոյնպէս նշանակում է թէ՛ պատմութիւն ասողներ, ասող պատմողներ, եւ թէ արած պատմութիւնը, պատմածը, ասած–պատմածը: Միեւնոյն երգերի «վիպասանաց երգք» եւ «թուելեաց երգք» կոչումները, երկուսն էլ մտածութեան միեւնոյն եղանակով են կազմուած, միայն տարբեր արմատներից, այսինքն՝ երկու կոչումն էլ վէպն ասելու եղանակից են առնուած: Այդ ցոյց է տալիս, որ մեր Վիպասանքը «թիւ է ասուել»: Մինչեւ մեր օրերն էլ, մեր նոր ժողովրդական վէպի, «Սասնայ Ծռերի» պատմողները, «ի թիւ ուսած», այսինքն բերան առած, բարձրաձայն արտասանելով ասում, պատմում էին լոկ, միատեսակ ուժով, միայն մէջէ մէջ երգելով: Մեր հին վիպասաններն էլ տարբեր եղանակով չպէտք է ասած լինեն իրենց վէպերը*(1):

## Մ Ե Ծ Ն Տ Ի Գ Ր Ա Ն

**1. Մեծն Տիգրանի վէպը եւ պատմական երգեր նրա մասին: —** *Վիպասանքի այս առաջին ճիւղը պատմականօրէն վերաբերում է առաջին դարում (մ. թ. ա.) ապրող Մեծն Տիգրանին: Նրա ժամանակը, որ իրօք դիւցազնական էր հայ ազգի համար, «քսան եւ հինգ ամք... անխառն յաջողութեան», երբ «հաւատային սուտակասպանք թէ ոգի իմն իցէ» Տիգրան, իր խորին տպաւորութիւնն է թողել ժողովրդի երեւակայութեան վրայ, եւ վիպասանները, ինչպէս յայտնում է Մ. Խորենացին (Ա. 24), փանդռի նուագակցութեամբ երգել են Արտաշիսեան թագաւորական ցեղի ամենից փառաւորին, արքայից արքային, անուանելով նրան «Երուանդեան Տիգրան» կամ «Մեծն Տիգրան»: Կազմուել է մի վէպ, որ 5–րդ դարում երկու անգամ գրական մշակութիւն է կրել, առաջին անգամ իբրեւ Ներբողեան մի «արդասաւոր ի բանս» քերթողի ձեռով (տես՝ «Մ. Խորենացի» գլխի մէջ՝ § 8), երկրորդ անգամ Մովսէս Խորենացու ձեռով: Վերջին մշակութիւնը եւ յայտնի է մեզ: Շատ մանրամասնութիւններ ծագում են, հարկաւ, այդ քերթողներից, բայց մնացել են եւ աւանդական գծերը:*

*Այս վէպը մի գեղեցիկ ժողովրդական պատմուածք է եղել, որի մէջ, ինչպէս Մ. Խորենացու մշակածից երեւում է, մէկ հիմնական նպատակ է ունեցել Փէոդալին ծառայող վիպասանը, այն է՝ փառաբանել իր աշխարհակալ թագաւորին: Ամբողջը հիմնուած է մի խնդրի վրայ, որ կազմում է գործողութեան միութեան կենտրոնը: Դա է երկու հարեւան ազգերի թագաւորների՝ Հայոց Տիգրանի եւ Մարաց Աժդահակի՝ յարաբերութիւնը, այդ երկուսի հակադրութիւնը, Աժդահակի դաւադրութիւնը Տիգրանի դէմ եւ նրանց բախումը:*

---

(1) Տես՝ Մ. Աբեղեան, Հայ ժողովրդական առասպելները, էջ 49—70. «Ասել, վիպասանք, երգք վիպասանաց, ի թիւ ասել, բուել, բուելեաց երգք»:

Սկզբում բացատրւում է ընդհանուր դրութիւնը, որից ծագում է գործողութիւնը: Մեծն Տիգրանը բնիկ թագաւոր է. նա հզօր է, իմաստուն, անուանի եւ յաղթող աշխարհակալ, մեր բոլոր թագաւորներից խոհեմ ու քաջ, իր ժամանակակիցների համար նախանձելի: Նա տիրել է շատ ազգերի, շատերին հարկատու դարձրել: Ունի մեծ հարստութիւն, բիւրաւոր զօրքեր, լաւ զինուած: Մարաց թագաւոր Աժդահակը վախենալով նրանից՝ դաշնակցում է նրա հետ: Այս խորամանկ միջոցների դիմելով՝ նա կնութեան է առնում հայոց թագաւորի քրոջը՝ Տիգրանուհուն, եւ ցանկանում է սրա միջոցով դաւաճանութեամբ սպանել տալ Տիգրանին: Բայց Տիգրանուհին, իրեն ենթարկելով վտանգի, եղբայրսիրութեան առաքինութիւն է ցոյց տալիս եւ եղբօրն իմաց է տալիս դաւադրութիւնը: Տիգրանը պատերազմով դուրս է գալիս Աժդահակի վրայ, հոգալով միաժամանակ իր քրոջ ազատութեան համար: Նա յաղթում, սպանում է Աժդահակին, եւ նրա ընտանիքը, բազմաթիւ գերիներով, բերում, բնակեցնում է Հայաստանում, Մասիսից դէպի արեւելք, Երասխ գետի երկու կողմերում մինչեւ Գողթնի սահմանները:

Ժամանակակիցների համար հետաքրքիր այս պատմուածքը զարդարուած է ոչ միայն Տիգրանի յաջողութիւններով, արտաքինի ու ներքինի եւ նրա շրջապատողների նկարագրով, — որ մեծ մասամբ, անշուշտ, Խորենացու գրչից են, — այլեւ աւանդական վէպերի մէջ սովորական մոտիւներով: Այսպիսիներից է Աժդահակի երազն իր մանրամասնութեամբ: Այս պատմւում է երազի պատճառով Աժդահակի խորհրդակցութիւնն իր իշխանների հետ, որ նոյնպէս վիպական գիծ է, որոշումը կին առնելու Տիգրանուհուն, խնամախօսութիւն, Աժդահակի ջանքը Տիգրանուհուն գործիք դարձնելու, զօրաժողով, Տիգրանուհու ազատուելն Աժդահակի ձեռից, մարտի նկարագիր, գերութիւն եւ այլն:

Վէպը շատ պարզ կերպով յօրինուած է Ֆէոդալական բարձր խաւի մէջ: Գործող անձերն ազնուականութեան համար հարազատ մարդիկ են, միայն թագաւորներ ու թագուհիներ: Նրանց իդէալն է հզօրութիւնն ու աշխարհակալութիւնը հարեւանի հաշուին: Վիպասանը բնականաբար իր ազգի թագաւորին ներկայացնում է ըստ ազնուականութեան գաղափարի, իդէալական հերոսական պատկերով: Ինչքան հուժկու, քաջարի, պայծառ ու բացսիրտ է ներկայացուած Տիգրանը, նոյնքան մռայլ է Աժդահակի դէմքը: Նա վախեցող է, անհանգիստ, շարունակ զգուշացող, խորամանկ ու խարդախ, շողոքորթ եւ դաւաճան, — մի հին Սասունցի Դաւիթ եւ Մսրամելիք: Պարտութիւնը կրում է, հարկաւ, չարը եւ օտարը: Ճնշւում, գերւում են մարերը, վիշապները: Ու փառաւորւում է Տիգրանը:

2. Պատմականը: — Ամէն ինչ որ իբրեւ պատմական կայ այս աւանդական վէպի մէջ՝ վերաբերում է Մեծն Տիգրանին, բայց Մ. Խորենացին սխալմամբ վերագրել է Պարսից Կիւրոս թագաւորի ժամանակակից Տիգրան թագաւորին (1): Պատմական Մեծն Տիգրանինն են վիպական Տիգրանի ե՛ւ աշխարհակալութիւնը, ե՛ւ մեծ հարստութիւնը, ե՛ւ զօրքի բազմութիւնը,

(1) Տես՝ Մ. Աբեղեան, Հայ ժողովրդական առասպելները Մ. Խորենացու Հայոց Պատմութեան մէջ, էջ 379—510. «Տիգրանի առասպելը»:

է՛ւ Տիգրանակերտ քաղաքը շինելը, է՛ւ առհասարակ ֆիզիկական ու հոգեկան յատկութիւնները, է՛ւ նրա «Մեծն» մականունը, եւ վերջապէս այն, որ նա մեր առաջին հին թագաւորներից է, «բնիկ եւ հարազատ» թագաւորը։ Մեծն Տիգրանի վէպի կազմուելու եւ նրա մասին եղած երգերի կենդանի ժամանակն եղել է անշուշտ այդ թագաւորի ժամանակից քիչ ուշ՝ այսինքն՝ մեր թուականութիւնից քիչ առաջ, եւ ապա մեր թուականութեան առաջին դարը։ Այդ միջոցին հայոց բնիկ թագաւորների տեղ բռնում են օտար թագաւորներ։ Եւ այդ բաւական չէ, երկիրը վրդովմունքի մէջ է ընկնում այդ մարացի, պոնտացի, վրացի թագաւորների օրով, մինչեւ պարթեւական Արշակունի օտար ցեղն իշխում է հայերի վրայ։ Այդ օտար թագաւորների խառնաշփոթ եւ խռովայոյզ տիրապետութեան ժամանակ տեղիք ունէր հայ ֆէոդալների վիպասանը կարօտով յիշելու առաջին բնիկ թագաւորներին եւ մանաւանդ «խաղաղութեան եւ շինութեան բերող» Տիգրանին, իր «բնիկ եւ հարազատ» թագաւորին։

Վիպական Տիգրանի եւ վիպական Մարաց թագաւորի յարաբերութիւնը նոյնպէս մի աւանդական յիշողութիւն է պատմական Մեծն Տիգրանի եւ նրա անմիջական յաջորդների յարաբերութեան մարերի հետ։ Մեծն Տիգրան թագաւորն առնում, աւերում է Մեծ Մարաստանի մայրաքաղաքը՝ Եկբատան, եւ նրա թագաւորին ստիպում է ճանաչել իր իշխանութիւնը։ Փոքր Մարաստանի թագաւորը դաշնակից է հայերին եւ յիշւում է Տիգրանի պատերազմների մէջ. նա կնութեան է առնում Տիգրանի դուստրը։ Վէպի մէջ Տիգրանուհին, որ սովորաբար նշանակում է Տիգրանի դուստր, Տիգրանի քոյրն է։ Մենք չգիտենք, թէ այդ փեսան ի՛նչպէս է վարւում, երբ Մեծն Տիգրանի աստղը թեքւում է, բայց շատ չուտով, Տիգրանի անմիջական յաջորդների՝ Արտաւազդի եւ Արտաշէսի ժամանակ Փոքր Մարաստանը թշնամանում է հայերի հետ։ Տիգրանի թոռ Արտաշէսը նոյնիսկ պատերազմ է ունենում մարերի հետ եւ յաղթում է նրանց։ Այս ամէնը կատարւում է մի քանի տասնեակ տարիներում եւ հեշտութեամբ կարող էր պատմուել մի հայոց թագաւորի՝ Տիգրանի եւ մի մարաց թագաւորի վրայ, եւ պատմուել է։

Մեծն Տիգրանի այս վիպական պատմութիւնը, ըստ ինքեան հասկանալի է, պէտք է հանել այն տեղից, ուր կայ Խորենացու Պատմութեան մէջ, եւ դնել իր իսկական տեղում։ Երգն ու գովեստը Մեծն Տիգրանի, ըստ Խորենացու՝ Միջին Տիգրանի վրայ է եղել, նրա վրայ էլ պէտք է պատմել այսուհետեւ։ Եւ այսպիսով, Խորենացու պատմութիւնը, «որ յաղագս Մեծին Տիգրանայ, որ... էր հուժկու, անուանի եւ յաղթող ընդ այլ աշխարհակալս», ստանում է իր իսկական պատմական արժէքը, եւ միանգամայն այդ պատմութիւնը դառնում է Խորենացու Հայոց Պատմութեան կարեւոր մասերից մէկը։ Երգը մեծ ճշմարտութեամբ պահել է Մեծն Տիգրանի պատմութիւնը։ Ցաւօք, Խորենացին սխալուել է իր ժամանակագրութեան մէջ։

Աժդահակի առասպելը:— Տիգրանի վէպը բուն պատմական յիշողութիւնների հետ ունի նաեւ առասպելական, յատկապէս ամբողջ վիշապի առասպելի բնաւորութիւն, որ ինչքան էլ Մեծն Տիգրանի պատմութեան ազդեցութեան տակ եւ հեմերական մտածութեամբ պատմական գոյն է ստացել, բայց դեռ երեւում է պարզապէս որոշ առասպելական գծերով։ Պատմուածքի

մէջ երկուութիւն կայ. գործող անձերը հանդէս են գալիս Ե՛ւ իբրեւ մարդ, Ե՛ւ իբրեւ վիշապ:

«Աժդահակ» անունը առասպելական Աժի Դահակա — վիշապ Դահակն է, որի դէմ կռւում է պարսիկների մէջ Հրուդէնը — Թրայետաոնան: Սրան համապատասխան է հնդիկների մէջ Տրիտա աստուածը, որ Ինդրայի յատկութիւններն ունի եւ նոյնպէս կռւում է Վիշապի դէմ: «Աժդահակ» բառի «վիշապ» նշանակութիւնը ծանօթ է նաեւ Մ. Խորենացուն: Աժդահակի կինը՝ Անուշ՝ վէպի մէջ (Ա. 31) յիշւում է պարզապէս իբրեւ «մայր վիշապաց»: Տիգրանը մարերի հետ գերում է նրան եւ իր որդիների հետ բնակեցնում է «յանդորրութեան սպառուածի փլածին մեծի լերինն» (Ա. 30), Մասիսի վրայ, որ վիշապների կամ վիշապազների բնակարան է համարուել հնումն եւ մինչեւ մեր օրերը: Մասիսի (առանձնապէս Փոքր Մասիսի) վիշապների մասին մեր օրերում «պէսպէս բաներ» էին պատմում, կամ, ըստ Խորենացու, «անյայտ իրք վիշապաց, որք են յԱզատն ի վեր ի Մասիս»: Այդ Անուշի զաւակները, ինչպէս եւ ընդհանրապէս Հայաստանի այդ «Մարք» շրջանի բնակիչները, կոչուել են «Վիշապազունք» կամ «զարմք Աժդահակայ»: Նրանք Վիպասանքի շարունակութեան մէջ էլ հանդէս են գալիս: «Վիշապաց մօր» երեւան գալը մեր առասպելի մէջ մի պատահական բան պէտք չէ համարել: Վիշապի կանայք ամպրոպային կռուի մէջ գերւում են ամպրոպային աստուծուց, երբ սա յաղթում է վիշապին: Ինդրայի կռուի մէջ Ահիի (վիշապի) դէմ՝ նոյնիսկ վերջինիս մայրն է դուրս գալիս: Ամպրոպային առասպելի մէջ ամպրոպի աստծու քրոջը կամ կնոջը յափշտակում է վիշապը եւ արգելում իր բուրգում: Բայց աստուածը յաղթելով վիշապին՝ ազատում է քրոջը կամ կնոջը: Մեր առասպելի մէջ Տգրանուհին նոյն դերն է կատարում: Աժդահակը, ամպրոպային վիշապը, յափշտակում է Տիգրանից (= սկզբնապէս ամպրոպային աստուծուց) նրա քրոջը եւ պահում իր մօտ: Բայց Տիգրանը յարձակւում է իր թշնամի վիշապի վրայ, սպանում է նրան, ազատում քրոջը եւ գերում է վիշապի կնոջը, «վիշապաց մօրն», եւ բնակեցնում նրան իր սերնդով Մասիսի վրայ:

Տիգրանի տեղ սկզբնապէս ամպրոպային աստուածը, Վիշապաքաղ Վահագն եղած պիտի լինի վիշապ Աժդահակի դէմ կռւողը: Այս ենթադրութիւնը հաւանական է դառնում այնու, որ Աժդահակի դէմ կռւող Տիգրանը Վահագնի հայրն է: Առասպելաբանութեան մի ընդհանուր յատկութեամբ, մանաւանդ երբ առասպելն սկսում է կորցնել իր դիցաբանական կերպարանքը եւ պատմական գոյն ստանալ, յաճախ մի աստուածութիւն կամ դիցազն բաժանւում է երկսի. ստեղծւում է աստծու կամ դիցազնի համար հայր կամ որդի, որի վրայ պատմւում է, երբեմն փոխուած ձեւով, միեւնոյն հին առասպելը: Հայկական դրոյցի այսպէս երկուսի բաժանուելն անհրաժեշտ պիտի լինէր այն ժամանակ, երբ արդէն մարերն ու վիշապներն սկսել էին շփոթուել պատմողների գիտակցութեան մէջ, երբ առասպել եւ պատմական վէպ խառնւում էին. վիշապների ազգի տեղ անցնում էր Մարերի ազգը. հին առասպելական օձերի կամ վիշապների թագաւոր Աժդահակին փոխանակում էր Մարաց թագաւորը, ինչպէս եւ նրա սերունդը համարւում էին Մարաց թագաւորի

զարմ մարեր, կամ, ընդհակառակն, մարերը համարում էին վիշապազն Աժդահակի զարմ:

4. Վիշապը կամ Աժդահակն իբրեւ տոտեմ:— Որ «վիշապ» եւ «մար» շփոթուել են իրար հետ, դրա մի պատճառն այն է որ «մար» նշանակում է օձ, վիշապ: Արդարեւ, մեր մատենագրութեան մէջ «մար» ( = օձ, վիշապ,) բառը չկայ գործածուած, բայց ոչ ամէն պարսկերէն բառեր, որ մեր ժողովրդի մէջ եղել են եւ կան այժմ, մտել են մեր հին մատենագիրների մէջ: Պարսկերէն լեզուն դեռ Քսենեփոնի ժամանակ ծանօթ է եղել հայերին, ուստի «մար» բառի «օձ» նշանակութիւնն ամենահին ժամանակներից կարող էր ծանօթ լինել մեր ժողովրդին, ինչպէս եւ այժմ ծանօթ է: Մի անգամ որ վիպասանների գիտակցութեան մէջ «մար» նշանակում է վիշապ, այն ժամանակ հեշտ հասկանալի է, թէ ինչպէս մարք եւ վիշապք, վիշապազունք եւ «զարմք Աժդահակայ» = «զարմք Վիշապ Դահակայ», շփոթուել են իրար հետ: Մանաւանդ որ առասպելական վիշապները կապուած են Մասիսի հետ, իսկ մարերը բնակուելիս են եղել Մասիսի ստորոտներում եւ այդ լեռից դէպի արեւելք, Արաքսի երկու կողմերում: Նրանք, որ մինչեւ 5-րդ դարն արդէն հայացած են եղել, համարուել են վիշապազունք, իբրեւ Վիշապ Դահակի զարմեր: Դա նախնական շատ ցեղերի հաւատալիքներից մէկն է, որով իրենց ծագած են համարում կենդանական գերբնական էակներից, — սրանց թւում եւ օձերից, վիշապներից, — եւ նրանց անունով կոչում իրենց: Ուրիշ խօսքով՝ վիշապը կամ Վիշապ Դահակը համարուել է Մասիսից դէպի արեւելք բնակուած մարական ծագում ունեցող տոհմի տոտեմը, իրենց պաշտած կենդանի նախնին, որի անունով եւ նրանք կոչուել են նաեւ վիշապազըն կամ Աժդահակի զարմ:

Հետաքրքիր է, որ այդ կոչումը մնացել է մինչեւ այժմ: Խորենացին յայտնում է, թէ «Թուելեաց» երգերը, որ է՝ Վիպասանքը, «պահեցին ախորժելով... մարդիկ կողմանն գինեւէտ գաւառին Գողթան» (Ա. 30). «Ցայտնի են քեզ ի վիպասանացն, որ պատմին Գողթան» (Բ. 49): Մի անգամ որ Գողնթի բնակիչները իւրացրել եւ ախորժելով պահել են մարերի մասին հին երգն ու առասպելը, վիշապազների առասպելը, զարմանալի չի լինիլ, որ նրանք իւրացրած եւ պահած լինեն նաեւ «Աժի Դահակի», Վիշապ Դահակի զարմ կոչումը: Հին առասպելական Դահակ անունը, ինչպէս յայտնի է, դարձած է Զոհակ, սրանից է ծագում Զոկ: Գողթն գաւառի բնակիչների արդի Զոկ կոչումն, ուրեմն, ոչ այլ ինչ է, եթէ ոչ հին «զարմք Աժի-Դահակայ» կոչման մնացորդը, որ հին դարերից պահւում է մինչեւ մեր օրերը: Դա տոտեմիստական աշխարհայեցութեան մի դերապրուկ է: Հայերի մէջ այդ նախնական հաւատքը շատ զօրեղ է եղել, ինչպէս այդ երեւում է օձերի պաշտամունքի արդի մնացորդներից:

5. Մեծն Տիգրանի եւ Երուանդ-Արտաշէսի վէպերի կապակցութիւնը: — Թէ այս երկու վէպերն առնչութիւն ունեցել են միմեանց հետ, այսինքն թէ այդ երկուսը մի ընդհանուր վէպի մասեր են եղել, թէ չէ, այդ որոշ կերպով չգիտենք Մ. Խորենացուց: Սակայն երեւում է, որ դրանք միացած են եղել, կենտրոն ունենալով մարերի, որ է՝ վիշա-

պագների հետ հայերի յարաբերութիւնը թէ՛ ըստ պատմականին եւ թէ՛ ըստ առասպելականին։ Հայաստանի մարերը, որ է՝ վիշապազները, ըստ վէպի, ինչպէս տեսանք, սերունդն են մարաց թագաւոր Աժդահակի կամ Վիշապ Դահակի, որին յաղթում է Տիգրանը եւ որի զարմերը գերում է նա եւ բնակեցնում Մասիսի ստորոտներում։ Վէպի մէջ, ուրեմն, պատմւում է, թէ Մասիսից մինչեւ Գողթն բնակւող մարերը գերի են բերուած Մեծն Տիգրանի ձեռով։ Այնուհետեւ նոյն մարերը, կամ վիշապները, երեւան են գալիս եւ Արտաշէսի վէպի մէջ։ Այս բնական յաջորդութեամբ Տիգրանի վէպի անմիջական շարունակութիւնն է դառնում Սանատրուկի որդի Արտաշէսի վէպը, սկսած նոյնիսկ վիշապ Երուանդից, որ թագաւորելուց յետոյ՝ երկրորդական դահը տալիս է մարաց տիրոջը կամ վիշապ Արգաւանին։ Այսպիսով հաւանական է դառնում, որ այդ վէպերը թէ՛ անջատ եւ թէ՛ կից եւս պատմուէին եւ կամ համարուէին միեւնոյն ընդհանուր վէպի մասեր։ Այդ երեւում է եւ Խորենացու իրեն Պատմութեան բովանդակութիւնից։

Մեր Պատմագիրը, ինչպէս տեսանք, վիպական Մեծն Տիգրանին փոխանակ դնելու Պոմպէոսի ժամանակ՝ դրել է մարաց Աժդահակ (Աստիագէս) թագաւորի ժամանակակից։ Միւս կողմից՝ մենք տեսնում ենք, որ պատմական Մեծն Տիգրանի (ըստ Խորենացու՝ Արշակունի Միջին Տիգրանի) որդի Արտաւազդի պատմութիւնից յետոյ (Բ. 23) նա մէջ է բերել Արշամի, Աբգարի, Անանունի եւ այլ ասորական պատմութիւնները (Բ. 24—34), որոնք, ինչպէս յայտնի է, հայոց պատմութեանը չեն վերաբերում։ Արդ, եթէ նա այդ ասորական պատմութիւնները չբերէր, եւ Մեծն Տիգրանի վէպը պատմէր իր տեղում, Պոմպէոսի ժամանակակից Տիգրանի վրայ, այսինքն իր Արշակունի Միջին Տիգրանի վրայ, այն ժամանակ Մեծն Տիգրանի վէպի անմիջական շարունակութիւնը կը լինէր Արտաշէսի վէպը՝ սկսած Սանատրուկից։ Այս ցոյց է տալիս, որ այդ երկու վէպերը հէնց այդպէս միութիւն են կազմած եղել, այսինքն՝ Տիգրանի վէպից յետոյ պատմուած է եղել Արտաշէսի վէպը, եւ այդ երկուսը եղել են մի ընդհանուր ամբողջական մեծ վէպի առանձին մասեր։ Դրանք իրարուց բաժանուել, հեռացել են միայն պատմագրի ձեռով։

## ՍԱՆԱՏՐՈՒԿ, ԵՐՈՒԱՆԴ, ԱՐՏԱՇԷՍ ԵՒ ԱՐՏԱՒԱԶԴ

**1. Առասպելներ Սանատրուկի եւ Երուանդի մասին։** — Վիպասանքի երկրորդ ճիւղն սկսւում է Սանատրուկի զրոյցով, որ, ըստ երեւոյթին, Տիգրանի վէպի շարունակութիւնն է։ Սանատրուկի մանկութեան մասին պատմւում է այս առասպելը, որ ստեղծուած է նրա անուան ժողովրդական ստուգաբանութեամբ։ Նրա մայրը ձմեռը ճանապարհորդելով Հայաստանում՝ Կորդուաց լեռներում պատահում է բքի։ «Ցրուեաց զամենեսեան մրրիկն, մինչ ոչ գիտել ընկեր զընկեր՝ ընդ ո՛ր վարեցաւ։ Իսկ դայեկին նորա Սանոտայ, քեռ Բիւրատայ Բագրատունւոյ, կնոջ Խոսրենայ Արծրունւոյ, առեալ զմանուկն, քանզի աղայ էր, եդ ի մէջ ստեանց իւրոց, մնալով ի ներքոյ ձեանն զերիս տիւս եւ զերիս գիշերս։ Զորմէ առասպելաբանեն, եթէ կենդանի իմն նորահրաշ սպիտակ յաստուածոցն առաքեալ՝ պահէր զմանուկն... Արդ՝ կոչեցաւ Սանատրուկ, ի դայեկէն զանուա-

նակոչութիւնն առեալ, որպէս թէ տուրք Սանոտայ» (Խոր. Բ. 36)։ Օտար Սանատրուկ անունը, որ պարսկերէն է, բացատրուած է, ուրեմն, հայերէն լեզուով։ Ապա վէպն անցնում է Սանատրուկի շինարարութեանը։

Սանատրուկի օրով կար Երուանդ իշխանը։Նրա ծագման մասին պատմուել է այս զրոյցը։ «Կին ոմն յազգէ Արշակունեաց, անձամբ հարստի եւ խոշորագեղ, վարար, զոր ոչ ոք դիմադրուեաց առնուլ կնութեան, ծնանի երկու մանկունս յանկարգ խառնակութենէ, որպէս Պասիփայէ զՄինոտավրոս։ Ե ի զարգանալ մանկանցն՝ կոչեն անուանս Երուանդ եւ Երուազ» (Խոր. Բ. 37)։ Մինոտավրոսը, Կրետէի հրէշը, ծնւում է հայր ցուլից եւ փակւում է լաբիրինթոսի մէջ, ուր նրան կերակրում են մարդկանց մսով։ Թեսեւս դիւցազնը մտնում է լաբիրինթոս եւ սպանում նրան։ Խորենացու տուած համեմատութիւնից իմանում ենք, որ Երուանդի եւ Երուազի մայրը ցուլից է ծընում իր երկուորեակներին։ Այսպիսի ծնունդը շատ տարածուած մի առասպել է։ Իտալական զրոյցով Պադուայի բռնակալ Եցցելինոյի եւ իր եղբայր Ալբերիկոյի ծնունդը նոյնպիսի է։ Նրանց մայրը ցուլի կերպարանք առած դեւից ծնում է այդ երկուորեակներին, որոնցից առաջինն աւելի կատաղի եւ նշանաւոր է, ինչպէս եւ մեր զրոյցի մէջ Երուանդը։ Եցցելինոն ամէն շաբաթ խօսում է իր հայր դեւի հետ եւ նրանից վայրագ խորհուրդներ ստանում։ Նրա երեսին, իբրեւ դիւական ծագման հետք, մնում են օտարոտի աչքերը։ Այդպիսի ծնունդներ կան եւ այլ ազգերի զրոյցների մէջ։ Դրանց, այս միստերիաների բանաձեւն է՝ «Ցուլը ծնեց վիշապ, վիշապը՝ ցուլ»։ Այսպէս եւ սերբական վէպի մէջ Մարկոն, մի քանի երգերով, ծնւում է կնոջից եւ օձից։ Հայկական Երուանդի զրոյցի մէջ գտնում ենք ոչ միայն այդ անբնական ծնունդը, այլեւ օտարոտի աչքերը. «Բայց ասեն զԵրուանդայ՝ ըստ հմայից դժնեայ գոլ ական հայեցուածով. վասն որոյ ընդ այգանալ աչալըրջացն սովորութիւն ունել սպասաւորացն արքունի՝ վէմս որձաքարեայս ունել ընդդէմ Երուանդայ, եւ ի հայեցուածոցն դժնութենէ ասեն պայթել որձաքար վիմացն։ Բայց այս կա՛մ եղիցի սուտ եւ առասպել, եւ կա՛մ դիւականս ինչ առ իւր ունել զօրութիւնս, զի այսպէս հայեցուածոցն անուամբ վնասեսցէ զորս կամի» (Խոր. Բ. 42)։

Այս չար աչքի առասպելը շատ տարածուած է հին ու նոր ազգերի մէջ։ Հայ ժողովրդի մէջ այսօր եւս հաւատում են, որ եթէ չար աչքը «քարին էլ տայ, կը տրաքի»։ Մեր Վիպասանքի տեսակէտից աւելի կարեւորութիւն ունի այդ միստերիաների բանաձեւը, թէ «ցուլը ծնեց վիշապ»։ Ալիշանը(1), առանց աղբիւրը յիշելու,գրում է, թէ «Երուանդ անուն օձ կամ վիշապ նշանակէ»։ Ապա նա Վահրամ վարդապետից բերում է ի միջի այլոց հետեւեալը. «Իսկ ընդէ՞ր որ ապա ասեն՝ տեսեալ ոմանց քաջաց եւ վիշապաց տաճարս ի լերինս բարձունս եւ բնակութիւնս, ուր եւ զԱղեքսանդր կապեալ ունին ի Հռոմ, եւ զԱրտաւազդ Հայոց թագաւոր ի Մասիս,եւ զԵրուանդ ի գետս եւ ի մառայլս»։ Այսպիսով՝ Երուանդն իր ծնունդով հանդիսանում է իբրեւ մի վիշապ, որին եւ, ինչպէս վիշապ Արտաւազդին, քաջքերը կապած պահում են։

---

(1) Ալիշան, Հին հաւատք, Վենետիկ, 1895, էջ 132:

Երուանդի այս առասպելի մէջ եւս երեւում է տոտեմիստական աշխարհայեցութիւն, որով մարդկանց ծագումը կապւում է զանազան կենդանիների հետ: Բայց միաժամանակ այսպիսի հրաշալի ծնունդն ինչպէս Փէոդալական վէպերի մէջ ընդհանրապէս, այնպէս եւ այս դէպքում, ծառայում է նոյն ընդհանուր ձգտումին, որ ունի վէպը, այն է՝ փառաւորել իր հերոսին: Դա, այդ գերբնական ծնունդը, նպատակ է ունեցել ցոյց տալ հերոսի իրաւունքն իշխելու: Երուանդը, կէս Արշակունին, որ իրաւունք չունէր թագաւորելու, իր այդ գերբնական ծագումով ու հայեացքով արժանի պիտի լինէր իշխելու: Դա ապօրինի գահակալութիւնն օրինաւոր դարձնելու մի եղանակ է եղել: Թագաւորին մեծացնելու նոյն ձգտումը պէտք է տեսնել նաեւ Սանատրուկի անուանակոչութեան առասպելի մէջ: Արդարեւ, այս դէպքում չկայ ապօրինի գահակալութիւն, բայց այդ նշանակութիւն չունի: Հնում բոլոր իշխաններն իրենց կեանքն ու ծագումը կապում էին որեւէ հրաշալի դէպքի կամ նշանաւոր անձի հետ: Հայ Արշակունիներն էլ իրենց անուանում էին «դիցախառն»:

2. Երուանդի վէպը: — *Երուանդ իշխանը Սանատրուկի յանձնարարութեամբ կատարած գործերով երեւելի է դառնում եւ նախարարների մէջ առաջինը: Իր խոնարհութեամբ եւ առատաձեռնութեամբ նա գրաւում է ամէնքին: Սանատրուկն սպանւում է որսի ժամանակ. շփոթութիւն է ընկնում երկրի մէջ: Նախարարները թագաւորեցնում են Երուանդին: Նա ժառանգը չէ ու գահ է բարձրանում ապօրինի կերպով: Այստեղից ծագում է գործողութիւնը՝ վէպի ծագման ժամանակի տեսակէտից՝ ժամանակակիցների համար հետաքրքիր մի թեմայով, իշխող հարստութեան — դինաստիայի համար մի կարեւոր հարցով: Պէ՞տք է Երուանդը մնար թագաւոր, թէ չէ: — Ո՛չ, պատասխանում է վէպը, որ իր մէջ պատկերացնում է իշխող տան շահերն ու ձգտումները: Երուանդն իսկական ժառանգը չէ, ազնուականները պարտաւոր են հաւատարիմ մնալ բնիկ հարստութեանը: Այս է Փէոդալական գաղափարախօսութեան կենտրոնը, որ աւելի զարգացրած է մեր երկրորդ հին վէպի՝ «Պարսից Պատերազմի» մէջ: Եւ ահա՛ նախարարական տներից մէկը, թագադիր Բագրատունիները, չեն ընդունում Երուանդին: Նրանց տոհմից ոչ ոք չի լինում թագադիր, ուստի եւ նրա թագաւորութիւնն օրինաւոր չի համարւում: Դրութիւնը բարդանում է. սկսւում է պայքարը երկու կողմի մէջ:*

*Այդ պատճառով հէնց սկզբից Երուանդի բոլոր հոգսը լինում է ապահովել իր թագը: Նա, այդ իր ծնունդով վիշապը, բնականաբար, մարացոց տէր Արգամին, որ նոյն է՝ վիշապ կամ վիշապազն Արգաւանին, «որ ի ծննդոցն Աժդահակայ», դարձնում է «զգահն երկրորդական, զոր հանեալ էր ի Նոցանէ (այսինքն մարացոց տէր Մուրացաններից) Տիգրանայ»: Նա թագաւորելուն պէս՝ հին թագաւորների սովորութեամբ, կասկածելով Սանատրուկի որդիներից, կոտորում է նրանց ամէնքին: Բայց ազատւում է մի երեխայ Արտաշէս անունով, որին փախցնում է իր սնոտուն: Երուանդը հետապնդում է բռնելու այդ երեխային, բայց նրա դայեակը, Սմբատ Բագրատունին, պահպանում է մանուկին եւ արկածալից թափառումներից յետոյ տանում է նրան Պարսկաստան: Պարսից թագաւորը սիրով ու պատւով ըն-*

դունում է նրանց, ինչպէս յաճախ վարուել են հարեւան իշխողներն իրենց շահի համար: Արտաշէսը մեծանում է այնտեղ:

Երուանդն ամէն հնարքների դիմելով, շողոքորթութեան ու քաղցր խօսքի, ոչ մի կերպ չի կարողանում ոչ Սմբատին համոզել, որ իր կողմն անցնի, ոչ Պարսից թագաւորին: Պարգեւներն ու խոստումները չեն օգնում: Ուստի նա հոգեկան հանգստութիւն չունի, գիշերը քուն չունի, ցերեկը կասկածոտ ու մտահոգ է: Վախենում է գաղտնի դաւադրութիւններից: Նախարարներին իր կողմը գրաւելու համար՝ նա առատ պարգեւներ է տալիս նրանց: Ամէն տեսակ շինարարութիւններ անում: Իր ապահովութեան համար՝ կռատունը հեռացնում է մայրաքաղաքից. Բագարանում նոր կռատուն է շինում եւ իր եղբայր Երուազին քրմապետ կարգում: Ապա շինում է Երուանդաշատը, արքունիքն էլ հեռացնում է Արմաւիր մայրաքաղաքից. Նոր քաղաքի մէջ ամէն զգուշութիւն ձեռք է առնում իր կեանքի ապահովութեան համար: Բարեկամանում է հռոմայեցիներին, նրանց զիջելով Միջագետքը եւ հարկ տալով: Վրացիներին օգնութեան է կանչում: Բայց ոչ մի բան չի օգնում, ոչ նրա այս արարքները, ոչ էլ նրա գերբնական ծագումը եւ աչքերի ուժը: Նրա սիրելիներն անգամ նրա տնից քսութիւններ են անում, եւ որքան նա առատ պարգեւներ է տալիս, այնքան աւելի ատելի է դառնում: «Քանզի գիտէին ամենեքեան, եթէ ոչ առ առատութեան տայ, այլ առ երկիւղի վասն էր: Եւ ոչ այնչափ սիրելի զայնոսիկ առնէր, որոց շատն տայր, քան թէ թըշնամի զայնս՝ որոց ոչն տայր պերճագոյնս» (Խոր. Բ. 45):

Հէնց որ բնիկ թագաժառանգը պարսից օգնութեամբ եւ Սմբատի առաջնորդութեամբ երեւում է Հայաստանի սահմանների վրայ, բոլորն անցնում են նրա կողմը: Հռոմայեցիք չեն գալիս օգնութեան, վրաց զօրքը փախչում է: Յաջողութիւն չեն ունենում եւ «արք քաջք տաւրացիք», այսինքն սասունցիք, «որոց զօգնս ի բաց եղեալ, Երուանդայ պայմանեալ սպանանել զԱրտաշէս»: Սմբատի որդին, Գիսակը, մէջ մտնելով՝ անձնազոհութեամբ փըրկում է Արտաշէսին: Երուանդին մնում է ճակատամարտի տեղից փախչել եւ ամրանալ իր շինած քաղաքաբերդում: Բայց այստեղ իր ամրոցի մարդիկն անձնատուր են լինում, եւ Երուանդ սպանւում է մի զինուորից: Այնուհետեւ Արտաշէսն իր հօր թագով թագադրւում է Սմբատից եւ օրինաւոր ժառանգը դառնում է օրինաւոր թագաւոր: Նա պարգեւներ է տալիս բարեկամներին, իր համար սպանուածների ժառանգներին ազնուական դարձնում: Սմբատի ձեռով սպանել է տալիս Երուազին եւ ընծաներ ուղարկում պարսից թագաւորին, իր բարերարին: «Բայց Արտաշիսի յիշեալ, թէ խառնուած Արշակունւոյ է Երուանդ, հրամայէ զդի նորա թաղել մահարձանօք» (Խոր. Բ. 46):

Այս պատմուածքը մի ամբողջական շքեղ վէպ է, որի գեղեցկութիւնը ծագում է ե՛ւ Վիպասանքից, ե՛ւ Մ. Խորենացուց: Գործողութիւնն ընթանում է բազմաթիւ վիպական մանրամասնութիւններով եւ միջադէպերով, որոնք միմեանց հետ միանում են մի ընդհանուր սիւժետով, ուստի եւ բնականօրէն յաջորդում են միմեանց: Ամբողջի մէջ երեւում է, թէ ինչպէս նախարարները, եթէ սկզբում մի ժամանակ թուլանում են, սիրով կապուած են մնում բնիկ թագաւորական տան հետ: Աչքի է ընկնում այս նկատմամբ Սմբատը, որ անձնուրացութեամբ ամէն նեղութիւն կրում է, օտարութեան մէջ ապ-

րում, միայն իր տիրոջ, իր թագաւորի որդուն հաւատարմութեամբ ծառայելու համար: Նա գեղեցիկ է, բարձրահասակ, քաջ է, լաւ կռուող, արագաշարժ, զգոյշ եւ յաջողակ: Նա մի բանի համար է միայն մտածում եւ աշխատում — պահպանել թագաժառանգին եւ բարձրացնել նրան հայրական գահի վրայ, կռուել նրա համար եւ մինչեւ վերջը ծառայել նրան:

*Վիպասանը Երուանդին էլ օժտել է բազմակողմանի հարուստ բնաւորութեամբ եւ մարդկային լաւ կողմերով, եւ այստեղ է վէպի գեղեցկութիւնը: Նա յաղթանդամ է, սրտոտ, խոնարհ, առատաձեռն, շինարար, խելօք կառավարիչ, աշխարհի համար հոգացող: Նա նոյնիսկ վեհանձն ու պատուաւոր է այն աստիճանի, որ իր թշնամի Սմբատի դուստրներին գերելով՝ «պահէ յամրոցին յԱնի ոչ վատթարապէս»: Բայց այս թագաւորը, որ պէտք է ժողովրդականութիւն վայելէր, մի պակասութիւն ունի. նա ժառանգը չէ, եւ արքայական տան վերաբերմամբ մի եղեռնով է գահ բարձրացել: Եւ այդ չարունակ հալածում է նրան, եւ վերջը նա պատժւում է դրա համար: Այսպէս է նրա տրագիկական վիճակը: Այստեղ է եւ վէպի ֆէոդալական գաղափարախօսութիւնը:*

3. Արտաշէսի ամուսնութիւնը եւ կենցաղական գծեր: — *Այս կազմում է մի առանձին ճիւղ: Ինչպէս «Սասնայ Ծռերի» մէջ Դաւթի ու Մսրամելիքի կռւից ու Դաւթի յաղթութիւնից յետոյ՝ գալիս է Դաւթի ամուսնութիւնը, նոյնպէս եւ Վիպասանքի մէջ՝ Արտաշէսի յաջողութիւնից յետոյ պատմւում է նրա ամուսնութիւնը:*

*Արտաշէսն զբաղուած է Արտաշատ քաղաքը շինելով եւ զարդարելով* (Բ. 43): *Այդ ժամանակ ալանները մտնում են հայոց աշխարհն աւարելու: Արտաշէս թագաւորը զօրքով քաջութեամբ ելնում է նրանց դէմ: Բռնում են ալանների արքայորդուն. ալանները քշւում են Կուր գետի միւս ափը: Ալանների թագաւորը խաղաղութիւն է խնդրում, խոստանալով տալ Արտաշէսին, ինչ որ նա ուզի: Բայց Արտաշէսը չի համաձայնում արձակել թագաւորի որդուն: Այն ժամանակ ալանների արքայադուստրը, եղբօրն ազատելու համար, գալիս է գետափը մի մեծ դարաւանդի վրայ եւ թարգմանների միջոցով ձայնում է դէպի Արտաշէսի բանակը.*

Քե՛զ ասեմ, այր քաջ Արտաշէս,
Որ յաղթեցեր քաջ ազգին Ալանաց.
Ե՛կ հաւանեաց բանից աչագեղոյ դստերս Ալանաց՝
Տալ զպատանիդ.
Զի վասն միոյ քինու ոչ է օրէն դիւցազանց՝
Զայլոց դիւցազանց զարմից բառնալ զկենդանութիւն,
Կամ ծառայեցուցանելով ի ստրկաց կարգի պահել,
Եւ թշնամութիւն յաւիտենական
Ի մէջ երկոցունց ազգաց քաջաց հաստատել:

*Արտաշէսը տեսնելով Սաթինիկին գեղեցիկ ու խելօք՝ հաւանում է նրան, ցանկանում է նրան կնութեան առնել, եւ իր միտքը յայտնում է Սմ-*

*բանին: Սա մարդ է ուղարկում ալանների մոտ հաշտուելու եւ օրիորդին ուզելու: Այն ժամանակ ալանների թագաւորն ասում է.*

Եւ ուստի՞ տացէ քաջն Արտաշէս
Հազարս ի հազարաց եւ բիւրս ի բիւրուց
Ընդ քաջազգւոյ կոյս օրիորդիս Ալանաց:

*Աղջկայ հայրն, ուրեմն, իր դուստրի համար մեծ գլխագին է պահանջում: Բայց Արտաշէսը ձին հեծած՝ սրաթեւ անցնում է գետով, պարանը ձգում է օրիորդի մէջքը եւ բերում նրան իր բանակը.*

Հեծաւ արի արքայն Արտաշէս ի սեաւն գեղեցիկ,
Եւ հանեալ զոսկէօղ շիկափոկ պարանն,
Եւ անցեալ որպէս զարծուի սրաթեւ ընդ գետն,
Եւ ձգեալ զոսկէօղ շիկափոկ պարանն,
Ընկէց ի մէջք օրիորդին Ալանաց,
Եւ շատ ցաւեցոյց զմէջքն փափուկ օրիորդին,
Արագ հասուցանելով ի բանակն իւր:

*Պատմական յիշողութիւն է ալանների պատերազմը, իսկ պատերազմների մէջ գերի բռնելը շատ սովորական, — մնացածը լոկ կենցաղական գծեր են, որոնք ամենայն վէպերի մէջ էլ կարող են մտնել եւ մտնում են: Դրանցից մէկն է «ոսկէօղ, շիկափոկ պարանի» գործածութիւնը: Պարանը մարտիկ ցեղերի մէջ շատ հնուց միշտ ծառայել է կենդանի որս — գազաններ եւ մարդիկ բռնելու համար: Դեռ Հերոդոտը յիշում է պարանն իբրեւ իրանացոց զէնք:Ինչպէս Յովսեպոսի Պատմութիւնից երեւում է, մեր թ. 1-ին դարում հայերի հետ կռուող ալանները պարանն իբրեւ զէնք գործ են ածել Հայոց թագաւոր պարթեւ Տրդատի դէմ: Մի անգամ որ պարանը կարեւոր զէնքերից մէկն է եղել հին ժամանակաշրջանում, բնականաբար դա կարող էր եւ Հայոց Վիպասանքի մէջ մտնել, ինչպէս եւ Շահնամայի մէջ սիրելի զէնք է պարանը: Նոյնիսկ մինչեւ այժմ էլ մեր «Սասնայ Ծռերի» մէջ եւս տեսնում ենք պարանը, որ մեր դարու զէնք չէ հարկաւ, այլ շատ հին ժամանակից է գալիս: Ոստանայ իշխանը «կապ էթալ, զՄհեր կապից: Մհեր ձիով ինկաւ կապ»: Դա հնութեան մնացորդ է: Արտաշէս թագաւորը պարանով բռնում, փախցնում է իր հարսնացու աղջկան: Թէ նախնական ազգերի մէջ կանայք որսի առարկայ են եղել եւ արշաւանքներ են գործուել բռնի կերպով կին ձեռք բերելու համար՝ այդ հանրածանօթ է: Դա հեռաւոր հնութեան վայրենի կենցաղական գծերից մէկն է, որի հետքերը մինչեւ վերջերս դեռ երեւում են ոչ միայն մեր հարսանեկան եւ ուրիշ երգերի մէջ, այլեւ նոյնիսկ մեր կենցաղի մէջ: Աղջիկ առեւանգելու սովորութիւնը մինչեւ վերջերս դեռ չէր վերացած մեզանում: Ուստի եւ շատ բնական է մեր «սիրողի երգի» մէջ կարդալ տղայի կողմից աղջկան ասած. «Ջիրինտ էնեմ վրադ կի գամ էլղարով ( = արշաւելով)»: Այսպէս եւ դեռ լսում ենք.*

Փեսան կու գայ սուրով զարով,
Մարդը շատ է՝ կ՚առնէ զոռով:

*Կամ հարս տանելու ժամանակ երգում են.*

Աղբօր շիւշէն կոտրտեցին,
Քրոջ վալէն պատռտեցին:

*Հարսի յափշտակութիւնը կամ առեւանգումը պատմւում է շատ ազգերի վէպերի մէջ՝ սկսած Հոմերոսից մինչեւ ռուսաց վէպը եւ քրդական երգերը: Ռուսաց Վլադիմիրն իր դեսպան Դունայն ուղարկելով հարս բերելու, տալիս է նրան զինուորներ ու շատ ոսկի եւ ասում է. «Գնա՛ այն քաջ Լիթովացոց աշխարհը եւ բարի խօսքերով աղջիկ ուզիր. բայց թէ որ խաթրով չտան, կանգնիր զօրքով առ»: Ոսկին գլխագնի (վարձանք, բաշլըղ) համար է, իսկ զօրքը՝ աղջիկը կռւով առնելու համար: Հնագոյն ժամանակների աղջիկ ուզելու այս երկու եղանակներից գլխագինը մի փոքր աւելի ուշ է երեւան եկել, բայց երկու եղանակն էլ երկար ժամանակ շարունակ միասին գոյութիւն են ունեցել, եւ գործ են դրուել մերթ մէկ եղանակը, մերթ միւսը, երբեմն երկուսն էլ միաժամանակ:*

*Արտաշէսը Վիպասանքի մէջ այն է անում, ինչ որ մինչեւ վերջերս երբեմն անում էին լեռնցիները, երբ իրենց ուզած աղջկան չէին ուզում տալ աղջկայ ծնողները, կամ երբ իրենց հարսնացուի համար մեծ գլխագին էին ուզում ծնողները: Նրանք երբեմն բռնի կերպով փախցնում էին աղջկան: Արտաշէսն աղջկանը փախցնելուց յետոյ՝ նրա հօրը տալիս է մեծ վարձանք, «մորթ կարմիր, լայքա շատ եւ ոսկի բազում»: Այս եւս մի սովորական կենցաղական գիծ է, որ մինչեւ վերջերս յարատեւում էր հայերի մէջ: Աղջիկը փախցնելուց յետոյ գլխագին էին տալիս նրա ծնողներին եւ հաշտւում, ապա հարսանիք անում: Եւ իրաւ, Խորենացին անմիջապէս անցնում է հարսանիքին, բերելով հարսանիքի նկարագրից մի փոքրիկ կտոր միայն.*

Տեղ ոսկի տեղայր ի փեսայութեանն Արտաշիսի,
Տեղայր մարգարիտ ի հարսնութեան Սաթինկանն:

*Խորենացին այս հատուածը մեկնում է այսպէս. «Քանզի սովորութիւն իսկ էր թագաւորացն մերոց, փեսայութեամբ ի դուռն տաճարին հասանել՝ դահեկանս ճապաղել... սոյնպէս եւ թագուհեացն յառագաստին՝ մարգարիտ: Այս է ճշմարտութիւն բանիցս» (Բ. 50): Հայոց թագաւորների ու թագուհիների այդ սովորութիւնը, յայտնի է, մինչեւ վերջերս պահում էին «թագաւորներն» ու «թագուհիները», ինչպէս կոչւում են հարսն ու փեսան հարսանիքի ժամանակ: Շատ տեղ, երբ նորապսակները եկեղեցուց դուրս էին գալիս, մանր դրամներ էին ցրւում: Գիւղերում, հարկաւ, փող ցրուելը շատ չէր պատահում, բայց փողի փոխանակ չամիչ, մրգեղէն կամ ցորեն եւ այլն շաղ տալը սովորական էր: Հարսանիքի ժամանակ փող ցրուելու նոյն սովորութիւնը գտնում ենք եւ Շահնամայի մէջ:*

4. «Գրգռութիւն ընդ Սմբատայ զարմիցն Արտաշիսի եւ ընդ միմեանս».
— *Այս ճիւղի պատմուածքն սկսւում է Սմբատի գովքով եւ թագաւորների դէմ ապստամբութիւններով: Սմբատը զօրքով գնում է նախ ալանների երկիրը՝ Սաթինիկի եղբօրն օգնելու ապստամբների դէմ եւ այստեղից գերիներ է բերում, բնակեցնում Արտազում: Յետոյ նա գնում է Գեղմանց լեռան եւ*

*Ծովեզերային կողմերը, պարսից թագաւորին չենթարկուողներին հնազանդեցնում է, ինչպէս եւ զսպում է հայոց թագաւորից ապստամբած կասպերին, ու շատ գերիներ բերում: «Վասն որոյ արժանի ըստ վաստակոցն պարգեւէ նմա Արտաշէս զմասն արքունի, որ ի չէնս Գողթան, եւ զՍւզառու ակունսն, եւ առ այսոքիւք՝ եւ զաւարն ամենայն նմա թողու»: Սմբատն, ուրեմն, փառաւորւում է եւ վարձատրւում իր հաւատարիմ ծառայութիւնների համար: Հետեւանքը լինում է այն, որ արքայորդին, «քաջ անձնահաճ եւ հպարտ» Արտաւազդը, նախանձում է Սմբատին եւ ուզում է սպանել նրան: Սմբատը թողնելով զօրքի իշխանութիւնը՝ քաշւում է Տմորիք, եւ Արտաւազդը դառնում է ընդհանուր զօրավար:*

*Այժմ էլ սրան եղբայրներն են նախանձում «ի գրգռութենէ կանանց իւրեանց»: Այդ ժամանակ «կարգէ Արտաշէս զՎրոյր՝ հազարապետ, զայր իմաստուն եւ բանաստեղծ, եւ հաւատայ ի նա զամենայն գործս տանն արքունի, եւ զՄաժան կարգէ քրմապետ ի յԱնի դից Արամազդայ»: Նա զօրքի իշխանութիւնը չորսի է բաժանում. արեւելեանը թողնում է Արտաւազդին, արեւմտեանը տալիս է Տիրանին, հիւսիսայինը՝ Զարեհին, իսկ հարաւայինը հաւատում է Սմբատին: Ապա պատմւում են նախ վրաց արքայի, յետոյ Դոմետիանոսի դէմ պատերազմները, որոնց մէջ մեծ յաջողութիւն է ունենում դարձեալ Սմբատը: Եւ վերջապէս, թէ՝ Մաժանը մատնութիւն է անում Արտաւազդի ու Տիրանի մասին՝ իր դայեակ Սմբատի համար քէն պահած լինելով նրանց դէմ՝ եւ սպանւում է նրանց ձեռքով:*

*Այս ճիւղին է պատկանում նաեւ Տիրանի ձիերի մասին պատմուածքը* (*Բ*. 62), *ինչպէս եւ նրա փեսայ Տրդատ Բագրատունու զրոյցը* (*Բ*. 63):

*Պարզ երեւում է, որ վիպասանը նպատակ է ունեցել այս ճիւղով մի կողմից՝ փառաւորել Սմբատին, միւս կողմից՝ պատկերացնել թագաւորական ընտանիքի անդամների մէջ տեղի ունեցող նախանձն ու գրգռութիւնն ի ձեռն կանանց, ինչ որ արեւելեան հին իշխողների մէջ յաճախ արիւնահեղ վախճան է ունեցել:*

5. Վիշապազանց պատերազմը: — *Հին առասպելական հաւատալիքները հեշտութեամբ չեն մոռացւում: Մինչեւ մեր օրերը յարատեւել են նաեւ վիշապների մասին առասպելները: Դրանք առասպելական էակներ են օձի կերպարանքով եւ յաճախ նոյնացւում են հէնց օձերի հետ: Հայաստանի լեռներից շատերի համար ցարդ առասպելաբանում է ժողովուրդը, թէ վիշապներ են կենում նրանց մէջ: Նրանք բնակւում են քարայրերում, ուր եւ ունեն իրենց ապարանքները կամ տաճարները. ունեն իրենց թագաւորներն ու թագուհիները, զօրքն ու զօրավարը, եւ իրար դէմ կռիւներ են մղում բոլորովին նման մարդկային կեանքին ու թագաւորութեան: Այդ վիշապներն իբր իսկապէս մարդիկ են, միայն «օձեղէն շապկով», որ ուզած ժամանակ հանում են եւ մարդկային կերպարանք ստանում: Նրանք մարդկանց հետ յարաբերութիւն ունեն եւ նրանց կանանց հետ սէր էլ են անում: Ի թիւս այլ լեռների այդպիսի վիշապներով բնակուած է համարւում եւ Մասիսը, որ կոչուել է նաեւ «Սեաւ լեառն», Մութն աշխարհ»: Հին ժամանակից ցայսօր Մասիսի*

*վիշապների մասին, ինչպէս Տիգրանի վէպի մէջ տեսանք, «պէսպէս բաներ», «անյայտ իրք» են պատմում: Այդ վիշապներն, ըստ Վիպասանքի, Աժդահակի եւ նրա կնոջ՝ «Վիշապաց մայր» Անուշի սերունդներն են, որոնք հանդէս են գալիս եւ Արտաշէսի վէպի մէջ: Նրանց գլխաւորը եւ հայրն է Արգաւանը:*

*Մի օր վիշապ Արգաւանը հայոց Արտաշէս թագաւորին եւ նրա որդիներին իր մօտ ճաշի է հրաւիրում: Արտաշէսը գնում է վիշապաց տաճարում ի պատիւ իր տրուած ճաշին: Արգաւանն ուզում է ճաշի ժամանակ խարդաւանակ լինել կամ դաւել թագաւորին: Սա զայրացած վերադառնալով Արտաշատ՝ իր Մաժան որդուն ուղարկում է զօրքով կռուելու վիշապների դէմ եւ նրանց կոտորելու: Բայց երկու տարուց յետոյ հանդիստ է թողնում նրանց:*

*Արտաշէսի քաջ որդին Արտաւազդը, Արտաշատ քաղաքը չէնացած լինելով, այնտեղ իրեն համար ապարանքի տեղ չի գտնում: Նա գնում է վիշապների մէջ մտնում, խլում է նրանցից նրանց կալուածները, Երասխի հիւսիսային կողմում նրանց բոլոր գիւղերը, ապարանքներով ու բերդերով միասին, բոլորն իրեն է սեփականում: Շինում է «ի մէջ Մարաց զՄարակերտ» Շարուրի դաշտում, եւ այնտեղ բնակւում: Արտաւազդի մայրը, Սաթենիկ տիկինը տրփանք է ունենում վիշապազնների հետ կամ տենչանք ու սէր առ Արգաւան վիշապը: Վիշապները չեն ուզում տանել Արտաւազդի արարքները եւ կռւում են Արտաւազդի դէմ: Բայց նրանց իշխանութիւնը քայքայւում է, որովհետեւ Արտաւազդը յաղթում է նրանց, կոտորում է ամէնքին, Արգաւանի բոլոր ծնունդն ու իրեն՝ Արգաւանին սպանում է, շինուածներն այրում է եւ իր ձեռը ձգում նրանց բոլոր գիւղերն ու իշխանութիւնը:*

*Այս առասպելը մի քանի մանրամասնութիւններով, որ չի բերել Մ. Խորենացին, դեռ պատմւում է հայերի մէջ իբրեւ հեքիաթ՝ դեւի կամ վիշապի մասին: Նոյնը կատարեալ նմանութեամբ կայ նաեւ ուրիշ ժողովուրդների մէջ, ինչպէս՝ սլովակների, վալախների, սերբերի*(1):

*Այս ընդհանուր տարածուած առասպելը, դառնալով Վիպասանքի մի մաս, բնականաբար յարմարուել է սրա նիւթին, որ է հայերի եւ մարերի, ըստ առասպելին՝ վիշապների կռիւը: Արգաւանն ուզում է դաւել Արտաշէսին, եւ հետեւանքը լինում է «մարտ ընդ նոսա եւ քայքայումն յիշխանութենէն, եւ սպանումն նոցա եւ հրկիզութիւն շինուածոցն»: Երեւում է, որ այստեղ պատկերացուած են եղել իշխանների դաւադրութիւնն ու ապստամբութիւնը թագաւորի դէմ եւ դրա հետեւանքով նրանց բնաջնջումն: Ցեղական գաղափարախօսութիւնն է, ուրեմն, նաեւ այստեղ իշխողը: Միւս կողմից՝ դրա հետ միացած է եղել եւ ընտանեկան խարդաւանքը՝ «տրփանք Սաթինկան ընդ Վիշապազունսն».*

Տենչայ Սաթինիկ տիկին տենչանս,
Զարտախուր խաւարտ եւ զտից խաւարծի
ի բարձիցն Արգաւանայ (*Ա.* 30):

*Սաթենիկ տիկինը տենչում է Արգամի բարձերից ունենալ հմայքի բըժ-*

---

(1) Տես՝ Մ. Աբեղեան, Հայ ժողովրդական առասպելները, էջ 325—379:

ժանքի բոյսերը՝ արտախուր խաւարտ եւ խաւարծի փունջ [տից = տցակ] ըստ հմայական հաւատալիքի, որով մէկին սիրահարեցնելու համար նրա բարձերի կամ զգեստի մէջ կարում էին բժժանքները եւ յետոյ առնում:

Թէ այս առասպելը, որ այժմ հեքիաթի բնաւորութիւն ունի, կարող էր հին ժամանակ հայերի մէջ Վիպասանքի եւ նոյնիսկ երգի նիւթ լինել՝ այդ մասին կասկածել կարելի չէ, քանի որ նոյն առասպելը Չեռնագորիայում վիպական երգ է, բացի այդ՝ նոյնը, այլեւ մի քանի ուրիշ հին առասպելներ, երեւան է գալիս եւ մեր «Սասնայ Ծռերի» մէջ:

Վիշապների դէմ կռուի այս առասպելին միացել է վիշապների եւ մի ուրիշ առասպել, — Արտաւազդի փակուելը Ազատ Մասիսի մէջ:

6. Արտաշէսի մահն եւ անէծքն Արտաւազդին: — Այս վերջին ճիւղի թեման է հօր եւ որդու յարաբերութիւնը եւ հօր անէծքի զօրութիւնը, որին ցարդ հաւատում է ռամիկը: Դրա համար նախ պատմւում է Արտաշէսի շինարարութիւնը (Խոր. Բ. 56, 59), որով նա սիրելի է դառնում աշխարհին, եւ ապա նրա հիւանդանալը, մահն ու փառաւոր թաղումը (Խոր. Բ. 60): Հօր այս փառքին նախանձել է Արտաւազդը, դժուարացել է եւ ասել է, դիմելով հօրը.

Մինչ դու գնացեր,
Եւ զերկիրս ամենայն ընդ քեզ տարար,
Ես աւերակացս ո՞ւմ թագաւորեմ:

Այդ պատճառով հայրն անիծել է նրան ասելով.

Եթէ դու յորս հեծցիս
յԱզատն ի վեր ի Մասիս,
Զքեզ կալցին քաջք, տարցին
յԱզատն ի վեր ի Մասիս.
Անդ կայցես, եւ զլոյս մի՛ տեսցես:

Եւ անէծքը կատարուել է: Նա քաջքերից բռնուելով որսի ժամանակ՝ շղթայւում է Մասիսի այրերից մէկի մէջ: Այստեղ վերջանում է վէպի պատմուածքը:

Վիպասանքն եւս, ինչպէս «Սասնայ Ծռերը» Մհերի համար, ունեցել է իր վերջաբանն Արտաւազդի մասին: «Զրուցեն զմանէ եւ պառաւունք, եթէ արգելեալ կայ յայրի միում, կապեալ երկաթի շղթայիւք. եւ երկու շունք հանապազ կրծելով զշղթայսն՝ ջանայ ելանել եւ առնել վախճան աշխարհի. այլ ի ձայնէ կռանահարութեան դարբնաց զօրանան, ասեն, կապանքն: Վասն որոյ եւ առ մերով իսկ ժամանակաւ, — աւելացնում է Մ. Խորենացին, — բազումք ի դարբնաց՝ զհետ երթալով առասպելին՝ յաւուր միաշաբաթւոջ երիցս կամ չորիցս բախեն զսալն, զի զօրասցին, ասեն, շղթայքն Արտաւազդայ»: — Այս աւանդութիւնը երկար դարեր պահուել է հայերի մէջ:

Լեռան մէջ փակուելու այս վիպական պատմուածքը տարածուած է շատ

ազգերի մէջ: Նոյնը կայ եւ մեր նոր վէպի մէջ Մհերի վրայ պատմուած(1):

7. Արտաւազդի բնաւորութեան երկուութիւնը:— Արտաւազդի առասպելը, բացի Խորենացուց, յիշում են նաեւ ուրիշները: Ըստ Եզնիկի՝ Արտաւազդին կապած պահում են վիշապները. «Եւ ոչ որս երբեք՝ որպէս մարդկան արարեալ են վիշապաց, կամ առնիցեն, եւ ոչ տաճարք [=ապարանք] իբրեւ մարդկան են նոցա ի բնակութիւն, եւ ոչ զօք թագաւորազգեաց եւ ի դիւցազանց ունին կապեալ առ իւրեանս կենդանի... Այլ որպէս զԱղեքսանդրը խաբէին դեւք, թէ կենդանի կայցէ... Նոյնպէս եւ մոլորութիւնն դիւաց խաբեաց զդիւցապաշտս Հայոց, եթէ զոմն Արտաւազդ անուն արգելեալ իցէ դիւաց, որ ցայժմ կենդանի կայ, եւ նա ելանելոց է եւ ունելոց զաշխարհս, եւ ի սնոտի յոյս կապեալ կան անհաւատք, որպէս եւ Հրեայք՝ որ ի զուր ակնկալութիւն կապեալ կան, եթէ Դաւիթ գալոց է՝ շինել զԵրուսաղէմ եւ ժողովել զՀրեայս, եւ անդ թագաւորել նմա նոցա»:

Կապուած Արտաւազդը, Եզնիկի պատմածի համեմատ, ներկայանում է իբրեւ թագաւորազգի կամ դիւցազն, եւ հայերը նրան սպասում են, որ ելնէ եւ տիրի աշխարհին: Այս զրոյցով նա բարի բնաւորութիւն ունի, ուստի եւ նրան կապողները չար են՝ վիշապներ: Մենք տեսանք՝ Վիպասանքի մէջ՝ Արտաւազդը նոյնպէս թագաւորի որդի է, որ կռուելով վիշապների դէմ, ներկայանում է իբրեւ դիւցազն: Դա կապուած Արտաւազդի զրոյցի սկզբնական ձեւն է: Պատմականօրէն դա Մեծն Տիգրանի որդի Արտաւազդն է, մարերի (=վիշապազների) թշնամին, որին Անտոնիոսը՝ մարերի հետ դաշնակցած՝ խաբէութեամբ բռնում, շղթայում ու տանում է Եգիպտոս: Երեւի իր ժամանակին սպասել են, որ նա գերութիւնից ազատուի եւ գայ վերստին տիրի Հայոց աշխարհին: Բայց այս ակնկալութիւնը չի կատարուել:

Այնուհետեւ կապուած Արտաւազդի այս պատմական զրոյցը շփոթուել է Հրուդէնի ձեռով շղթայուած Աժդահակի առասպելի հետ, որ շատ հին ժամանակներում իրանցիներից փոխադրուած է եղել հրաբխային Մասիս լեռան վրայ, եւ Աժդահակ անուան տեղ անցել է Արտաւազդ անունը: Զրոյցի այս զարգացման հետեւանքով՝ Մասիսի մէջ կապուած Վիշապ Աժդահակի, այդ չար ոգու առասպելն ազդել է Արտաւազդի պատմական զրոյցի վրայ: Ուստի Արտաւազդը Վիպասանքի մէջ եթէ մի կողմից՝ հանդիսանում է իբրեւ վիշապների — մարերի դէմ կռուող քաջ արքայորդի, որին, ըստ Եզնիկի, կապում են վիշապները, միւս կողմից՝ նա ունի չար ու նախանձոտ բնաւորութիւն, եւ նրան կապում են քաջքերը, որոնք բարի ոգիներ են: Վիպասաններն Արտաւազդի բնաւորութեան այս երկուութիւնը բացատրել են այնու, թէ Աժդահակի զարմի կանայքը կախարդել են նրան: «Եւ զայս նոյն երգիչքն յառասպելին ասեն այսպէս. եթէ Վիշապազունք գողացան զմանուկն Արտաւազդ, եւ դեւ փոխանակ եդին» (Խոր. Բ. 61): Ուրեմն նոյնիսկ Վիպասանքի մէջ Արտաշէսի թագաւորի որդի Արտաւազդը եթէ մի կողմից՝ վիշապների դէմ կռուող դիւցազն է, միւս կողմից՝ համարուել է իրօք մի դեւ: Այդ

(1) Տես՝ Մ. Աբեղեան, Հայ ժողովրդական առասպելները, էջ 354—379, ուր եւ «Քաջքերի» մասին մանրամասնութիւններ:

*մի շատ տարածուած ու հին հաւատ է, որ մինչեւ վերջերս դեռ կենդանի մնում էր մեր ժողովրդի մէջ: Ջարունքը կամ դեւերը, ըստ մեր սնահաւատքի, փոխում են իրենց երեխաները մարդկանց երեխաների հետ. մարդկանց երեխաները գողանում են եւ տեղն իրենցը դնում: Եւ եթէ մանուկ Արտաւազդին գողացողները վիշապազներ են՝ գողացածին տեղն եւս վիշապազն կամ վիշապ պիտի դնէին ըստ հաւատին: Արտաւազդն, ուրեմն, ներկայանում է իրօք իբրեւ վիշապ, եւ եթէ «դեւ» է ասուած նրա համար, այդ «դեւ» բառն եւս պէտք է հասկանալ ընդհանուր իմաստով՝ իբրեւ չար ոգի: Պէտք չէ մոռանալ եւ այն, որ դեւ, աղնաւուր եւ վիշապ-աժդահա սերտ կապուած են իրար հետ եւ յաճախ փոխանակւում են միմեանց:*

## ՎԻՊԱՍԱՆՔԻ ՑԻԿԼԻՆ ՊԱՏԿԱՆՈՂ ԵՐԳԵՐ ՈՒ ԶՐՈՅՑՆԵՐ

1. Վարդգէս Մանուկի վէպը: — *Վաղարշապատը 2—5-րդ դարերում մի առժամանակ իբրեւ մրցակից է հանդիսանում Արտաշատի դիմաց, եւ այնուհետեւ դարձեալ բարձրանում է Արտաշատն ու յետոյ Դուինն Արտաշատի մօտ: Արտաշատն ունէր անցեալ, հիմնադիր ունենալով հայոց հին թագաւորներից Արտաշէսին: Շատ բնականօրէն արտաշատցիների մրցակից վաղարշապատցիք եւս երգելով Վաղարշի շինարարութիւնը, միեւնոյն երգի ու զրոյցի մէջ աշխատել են իրենց* Նոր Քաղաքի *(Վաղարշապատի) անունը բարձրացնելու համար՝ նրա սկիզբը հին ցոյց տալ, կապելով նշանաւոր հին հայ թագաւորի՝ Մեծն Տիգրանի անուան հետ, ճիշդ ինչպէս իշխանները ձգտում էին իրենց տոհմի հնութիւնը ցոյց տալու՝ այս կամ այն թագաւորից սերուած համարելով իրենց: Զրոյցը յօրինուած է Նոր Քաղաքի հին Վարդգէսի Աւան անուան եւ նրա հիմնադիր Վարդգէսի վրայ* (1):

Հատուած գնացեալ Վարդգէս Մանուկն
Ի Տուհաց գաւառէն, զՔասաղ գետով,
Եկեալ նստաւ զՇրէշ բլրով,
զԱրտիմէդ քաղաքաւ, զՔասաղ գետով,
Կռել կոփել զդուռնն Երուանդայ արքայի:

*Առասպելի մէջ պատմել են, թէ Վարդգէս Մանուկը գաղթելով Տուհաց գաւառից, գալիս նստում է Շրէշ բլրի* (2), *Արտեմէդ քաղաքի, Քասաղ գետի մօտերը «կռել կոփել զդուռնն Երուանդայ արքայի»: Նա կին է առնում քրոջն այս թագաւորի, որ վիպական Մեծն Տիգրանի հայրն է, եւ շինում իր*

---

(1) Մ. Աբեղեան, Հայ ժողովրդական առասպելներ, էջ 550—568:

(2) Վաղարշապատցիք ի հնուց Շրէշ բլուր էին կոչում գիւղից հիւսիս ընկած բլուրը: Դա 1870-ական թուականներին բաւական մեծ եւ բարձր հողաբլուր էր, շուրջը կէս մետրաչափ բարձրութեամբ սրբատաշ քարերով պատած: «Պեղումները ցոյց տուին, որ սա եղել է նեկրոպոլ, սկսած յղկած քարի շրջանից մինչեւ երկաթէ դարը ներառեալ: Վերին շերտերում գտնուել են երկաթէ, միջինում բրոնզէ, իսկ ստորինում քարէ իրեր:... Տեղ-տեղ բացուեցին մոխրակոյտեր՝ խառն մարդկային եւ կենդանիների ատամների ու կարծր մասերի այրուած կտորներով: Սրանց մօտ կային քարէ մուրճեր», եւ այլն. տես՝ Երուանդ Լալայեան, Դամբանների պեղումներ Խորհրդային Հայաստանում, Երեւան 1931, էջ 61 եւ հտ.:

*անունով աւանը, որի մէջ Տիգրան Թագաւորը գերիներ է բնակեցնում, եւ աւանը մեծանում է: Եւ այդ աւանը Վաղարշը պատում է պարսպով ու հզօր պատուարով եւ անուանում Վաղարշապատ* (Խոր. Բ. 65):

*Նկատենք, որ «կռել կոփել զդուռն» նշանակում է դուռը թակել, ծեծել, իսկ մէկի «դուռը թակել, ծեծել» մինչեւ վերջերս մի քանի տեղ հայերի մէջ նշանակում էր մէկի աղջիկն ուզել: Այդ մի դարձուած է, որ երեւի հին սովորութիւնից է ծագում: Մեր հեքիաթների մէջ ցարդ եւս թագաւորի աղջիկն ուզելիս՝ խնամախօսը գնում թագաւորի դուռը ծեծում է եւ նստում դռանը «խնամաքարի» վրայ, որ նշան է, թէ աղջիկն ուզում են: Ուրեմն «կռել կոփել զդուռն Երուանդայ արքայի» նշանակում է նրա աղջիկն ուզել:*

*Պէտք է նկատել եւ հետեւեալը: Ըստ Խորենացու՝ Վաղարշը վիշապական*

*Արտաշէս Թագաւորի թոռն է, նրա որդի Տիգրանի որդին, միւս կողմից՝ նա մեր երկրորդ հին վէպի, «Պարսից Պատերազմի» սկզբում հանդէս եկող վիշապական Մեծն Խոսրովի հայրն է: Այդ վիշապական անձով, Վաղարշով, ուրեմն, մեր երկու հին վէպերը կապւում են միմեանց հետ:*

2. Ուրիշ զրոյցներ:— *Վիպասանքի ցիկլից են նաեւ վիշապական Արտաշէսի որդիների՝ Տիրանի ու Տիգրանի մասին պատմածները, այլեւ Տրդատ Բագրատունու զրոյցը* (Խոր. Բ. 62, 63, 64):

*Նոյն ցիկլին պատկանել է նաեւ Գրիգոր Մագիստրոսի իր նամակներից մէկի մէջ* (1)*բերած հատուածը — «ի զնեհիկս աւանդեալ», որ «Պարթեւ Արտաշէսն» ասել է վախճանուելիս.*

Ո՞ տայր ինձ զծուխ ծխանի,
Եւ զառաւօտն Նաւասարդի,
Զվազելն եղանց,
Եւ զվազելն եղջերուաց.
Մեք փող հարուաք,
Եւ թմբկի հարկանէաք,
Որպէս օրէն է թագաւորաց:

*«Պարթեւ» ըստ Մագիստրոսի նոյնն է, ինչ որ «Արշակունի»: Այդ կոչումն Արտաշէսի համար հաւանօրէն Մագիստրոսի իրեն աւելացրածն է, իսկ նրա բերած հատուածը մեր հին Վիպասանքի մի մնացորդ է, որ յարատեւել է մինչեւ 11-րդ դարը: Ցաւօք, Մագիստրոսն աւանդութիւնն ամբողջ չի բերում: Այս հատուածը պատմականօրէն յարմար է ժողովրդին սիրելի Արտաշէս Գ.ին* (18—34 *Թ.*)*, որ յայտնի է իր որսի եւ խնջոյքների սիրով:*

## ՎԻՊԱՍԱՆՔԻ ԱՐՈՒԵՍՏՆ ՈՒ ԳԱՂԱՓԱՐԱԿԱՆ ԿԵՐՊԱՐՆԵՐԸ

1. Մ. Խորենացու քննադատութիւնը: Բերանացի երգեր եւ երգարանք բանաւորք:— *Թէ ի՛նչպիսի արուեստով եւ յօրինուածքով է շարադրուած եղել մեր հին Վիպասանքը, այդ մասին քիչ բան կարող ենք իմանալ այժմ: Դրա միակ աղբիւրը Մովսէս Խորենացի պատմագիրն է, որ այդ երգերից մի քա-*

(1) Կ. Կոստանեանց, Գրիգոր Մագիստրոսի Թղթերը, Աղեքսանդրապոլ, 1910, Թուղթ ԼԳ., էջ 87:

նի հատուածներ է միայն բառացի մէջ բերել: Նա պատմում է մեծ մասամբ բովանդակութիւնը, այն էլ յաճախ խառնած ուրիշ աղբիւրներից քաղած նիւթերի, կամ թէ իր ենթադրութիւնների ու մեկնութիւնների հետ: Փաւստոս Բուզանդը, քրիստոնէաբար նայելով, բացարձակ արհամարհում է Վիպասանութիւնը, որովհետեւ դա հեթանոսական բնաւորութիւն ունէր. դրա մէջ մարդկանց հետ խառն գործող անձեր են եղել ոգիներ եւ աստուածներ:

Մ. Խորենացին, որ արուեստի նկատմամբ աւելի քննադատաբար է վերաբերւում, առանձին գովեստով չի խօսում հայ նախնիքների բանաստեղծական շնորհքի մասին: Նա իր գրքի հէնց սկզբներում (Ա. 3) ասում է. «Ինձ թուի, որպէս այժմ՝ եւ առ հինսն Հայաստանեայցս լեալ անսիրելութիւն իմաստութեան եւ երգարանաց բանաւորաց» (1): Նրա գանգատը ոչ թէ բերանացի երգեր չլինելու կամ չսիրելու մասին է, — այդպիսի երգեր շատ է յիշում նա, — այլ իմաստալից երգեր: Յիշենք միայն, թէ ինչպէս Խորենացին պարսից առասպելները «սուտ, փծուն, անճոռնի, անյարմար եւ անոճ բանք, անմիտ եւ անհանճար բանից յարմարանք», այլեւ երկու անգամ «անբանութիւն» եւ մի անգամ «անմտութիւն» է անուանում (Ա. գրքի յաւելուած), այլեւ «բարբաջմունք» (Բ. 70): Արդ, «իրանացած» Հայերի առասպելները յունական կրթութիւն ստացած Խորենացու համար, իրենց ձեւով եթէ աւելի անիմաստ չլինէին, աւելի իմաստուն էլ չէին լինի, քան պարսից առասպելները: Նա Տորքի մասին առասպելները նոյն ածականներով էլ հէնց բնորոշում է, ինչ որ պարսից առասպելները. Բագրատունիների ծագման մասին զրոյցը «յիմար, բայ բանք անոճ», իսկ Արծրունիների մասին առասպելը «բաջաղանք» (Բ. 7) է կոչում: Այս ամէնը նկատի ունենալով՝ հասկանալի է, որ նա չի գտնում Հայերի մէջ երգեր, որոնք պարսից առասպելների պէս «անճոռնի, փծուն, անհանճար (անիմաստ), անմիտ, անբան եւ անոճ» չլինէին, այլ բանաւոր, այսինքն իմաստալից, մաացի, «ոճով», «պերճ եւ ողորկ», մի խօսքով՝ ինչպէս յունաց առասպելները, այն էլ գրուած, ինչպէս պարզ երեւում է «երգարան» բառից:

Այսպէս ուրեմն, յունական առասպելների հետ համեմատած՝ հայոց աւանդական երգերը, Վիպասանքն ու առասպելները Մ. Խորենացու աչքին՝ իրենց արուեստով շատ ցած են, շատ մօտիկ պարսկական առասպելներին: Նրա այս քննադատութիւնը պէտք է իրականութեան մօտ համարել: Բայց եւ այնպէս մեր հին վէպը, հարկաւ, բոլորովին «արուեստական» չի եղել:

2. Վիպասանքի նիւթերը:— Վիպասանքը եղել է մի ամբողջութիւն, բայց ոչ այն իմաստով, թէ դա, իբրեւ գրական մշակութիւն կրած երկ, ունեցել է իր ընդհանուր թեման, որով միացած լինէին երկի բոլոր մասերը սկզբից մինչեւ վերջը: Վիպական մեծ նիւթը նրա մէջ մի հեղինակի ձեռքով չի մշակուած եւ միացած եղել. միացումը կատարուած է եղել հետզհետէ ժամանակի ընթացքում, առանց մի ընդհանուր ծրագրի: Ուստի մեր այդ

(1) «Երգարանք բանաւորք» բառերի բացատրութիւնը տեսնել՝ Մ. Աբեղեան, Հայ ժողովրդական առասպելները, էջ 28 եւ հետ.:

հին վէպը չի կազմել մի ամբողջական գեղարուեստական երկ, որի մարդիկն ու մարդկանց արարքները միմեանց հետ սերտ կապուած լինէին մի ընդհանուր խնդրով ու գործողութեամբ։ Արդարեւ, թէրեւ մի ընդհանուր սիւժետային թել երեւան է գալիս հայերի յարաբերութիւնը մարերի հետ, ըստ առասպելականին՝ վիշապազների հետ, բայց եւ այնպէս այդ ամբողջի մէջ բազմաթիւ եւ բազմազան նիւթերը յարած են եղել միմեանց ոչ ներքին, այլ արտաքին մի լոյծ կապակցութեամբ։

Ինչպէս «Սասնայ Ծռերի» մէջ, այնպէս եւ Վիպասանքի մէջ պատմուել են զանազան միջադէպեր նոյն հերոսի կամ իրար յաջորդող հերոսների կեանքից, կազմելով յաճախ առանձին վիպական ճիւղեր։ Այդ ճիւղերից իւրաքանչիւրն արդէն ունեցել է իր թեման, որով կազմել են մի-մի առանձին միութիւն։ Դրանց մէջ վիպասանները, ինչպէս տեսանք վերեւում, կարողացել են ժամանակակիցների համար կարեւոր եւ հետաքրքիր այս կամ այն գաղափարի ու խնդրի շուրջ զարգացնել գործողութիւնը ոչ միայն պատմական եւ առասպելական դիպուածներով, այլեւ կենցաղային գծերով։

3. Վիպասանքի գաղափարական հերոսները։ — Թէպէտ եւ բնագիրը չունենք, բայց եւ այնպէս վէպի բովանդակութիւնից բաւական պայծառ հասկացողութիւն ենք ստանում վէպի մէջ արծարծուած խնդիրների, իդէոլոգիայի եւ կերպարների մասին։ Այդ արդէն տեսել ենք Մեծն Տիգրանի եւ Երուանդի, Արտաշէսի, Արտաւազդի վէպերի մէջ։ Այստեղ ասենք եւ հետեւեալը։ Բանաստեղծները հետաքրքիր պատմուածքների մէջ ստեղծել են իրականութեան ազնուացրած պատկերներ, որ, հարկաւ Պատմագիրն էլ իր կողմից ճարտասանօրէն աւելի մշակել, գեղեցկացրել է։ Նրանք ձգտել են պատմական անձերին իրենց սիրած կերպարանքը տալու։ Վէպի մէջ ամենից առաջ աչքի են ընկնում թագաւորների ու զօրավարի գաղափարական տիպերն ի դէմս Տիգրանի, Արտաշէսի եւ Երուանդի ու Սմբատի։ Թէ այդ նկարագիրները գլխաւորապէս երգիչներինն են, այդ պարզւում է նրանով, որ դրանք, հակառակ Խորենացու, վերաբերում են իբրպէս պատմական Մեծն Տիգրանին։ Այստեղ տեսնում ենք, թէ ինչպէս վիպասանները, — ինչպէս եւ ինքը Խորենացին հետեւելով իր աղբիւրներին, — գովել են իրենց թագաւորներին եւ ստեղծել են կատարելատիպեր, որպիսիք կը ցանկանային, որ լինէին իրենց թագաւորներն ու զօրավարները։

Հակառակ քրիստոնէական ճգնաւորական ոգուն, որով մարմինը ոչինչ էր համարւում, մեր առասպելների եւ Վիպասանքի մէջ, նոյնիսկ հին քրիստոնեայ Պատմագրի բերած բովանդակութեամբ, տեսնում ենք, որ ամենից առաջ առանձին ուշադրութիւն է դարձրած դիւցազների ֆիզիկական առաքինութիւններին, նրանց մարմնին եւ անգամ զարդարանքներին։ Հերոսներն ընդհանրապէս օժտուած են արտաքին գեղեցկութեամբ եւ ուժով, յաջողակ եւ արագ շարժումներով։ Տիգրանն իր մարմնով մի «ազնուէլի դիւցազն» է, «խարտեաշ եւ աղեբեկ ծայրիւ հերաց․երեսօք գունեան և մեղուակն, անձնեայ եւ թիկնաւէտ, առողջաբարձ եւ գեղեցկոտն, քաջահասակ, ամենեւին բոլոր անդամովք համեմատ եւ ի դեղեցկութիւն ասարտեալ հասակի, առոյգ ամենայնիւ ըստ իրեարս պատշաճեալ եւ ուժով ոչ զոք ունելով իւր զոյգ»։ Մի խօսքով, նա «հասակաւ եւ բնութեամբ» կատարեալ դիւցազն է, որ «նիզակաւ

օրինակ իմն որպէս զջուր հերձեալ զերկաթի ամուր հանդերձն»: Աժդահակի երազի մէջ Տիգրանին ծնող կինն է «ծիրանազգեստ,երկնագոյն ունելով զիւր-բեաւ տեռ, աչեղ, բարձրահասակ եւ կարմրայտ»: Տիգրանուհին է «գեղեցիկն ի կանայս», «խորադէտ գեղեցիկն»: Տիգրանին շրջապատողներն եւս գեղեցիկ են, եւ արք ու կանայք պճնուած իրենց պատուական գոյնզգոյն զգեստներով, արծաթի, ոսկի զարդարանքներով ու պատուական ակներով, «որովք ազե-ղագոյնքն իբրեւ զգեղաւորս երեւէին աքանչելիք, եւ գեղաւորքն... առհասա-րակ դիւցազնացեալք» (1):

Մարմնի այս արժէքը երեւան է գալիս աւելի կամ պակաս չափով նաեւ ուրիշ հերոսների վրայ: Երուանդն է «սրտեայ եւ անդամովք յաղթ»: Նրա մայրն եւս «անձամբ հարստի եւ խոշորագեղ» է: Սմբատն «այր քաջ» է, «ու-նէր հասակ անդամոց՝ համեմատ քաջութեանն... գեղեցկութեան ալեօք վա-յելչացեալ... ի վերայ չոյտ անձին եւ մարմնոյ՝ զգոյշ յամենայնի, եւ տու-չութիւն յաջողուածոց ունէր ի մարտս առաւել քան զամենայն ոք»: Եթէ ա-ռասպելներին դիմենք, այստեղ էլ Հայկը ներկայանում է որպէս մի յաղթ-անդամ մարմնով վիթխարի հսկայ, բայց ոչ անհեթեթ, ինչպէս ուրիշները, այլ «գեղապատշաճ եւ անձնեայ, քաջագանգուր, խայտակն եւ հաստաբա-զուկ, կորովաձիգ եւ հաստաղեղն եւ աշտպաշարժ մեծ դիւցազն» («մեծդ ի դիւցազանց»): Նրա մարդիկն եւս «կորովիք էին յաղեղն եւ ի սուսեր»: Արան գեղեցիկ է, այնպէս որ այս մակդիրն անբաժան է նրա անունից, բայց միան-գամայն քաջամարտիկ է նա: Անգեղեայ Տուրքը սրտեայ է, վիթխարի հասա-կով եւ ուժով, պղպատի նման պինդ մարմնով: Նրա տգեղութիւնը, ինչպէս տեսանք, «անգեղեայ» բառի սխալ բացատրութեան հետեւանքով է ծագած: Առնական ուժի եւ գեղեցկութեան նոյն գաղափարն ենք գտնում նաեւ խար-տեաշ պատանեակ Բաջն Վահագնի մէջ իր հրեղէն մազերով եւ արեգակնա-փայլ աչքերով:

Հերոսները մարմնի գեղեցկութեան եւ ուժի հետ ունեն նաեւ հոգե-կան ուժ ու գեղեցկութիւն: Նրանք արի ու քաջ են, յաղթող, իմաստուն, զգաստ ու պերճախօս, թագաւորները նաեւ արդարադատ ու շինարար: Արու-թիւն ու քաջութիւն, իմաստութիւն ու զգաստութիւն եւ պերճախօսութիւն, թագաւորի համար նաեւ արդարադատութիւն, — ահա առաքինութեան այն-պիսի մի ըմբռնում, որ շատ մօտենում է հին յունական փիլիսոփական ըմբռնու-մին:

Պատմագիրը կամ իր ղրաւոր աղբիւրը, որ ունեցել է Տիգրանի համար (տե՛ս «Մ. Խո-րենացի», պարագրաֆ 8), անշուշտ քերթողաբար զարգացրել է այս յատկութիւնները, հե-տեւելով յունական հռետորութեանը: Բայց ընդունելով հանդերձ այդ, պէտք է կրկնել, որ

---

(1) Դա իսկապէս պատմական Մեծն Տիգրանի իրեն եւ իր պալատականների նկարա-գիրն է, որի յիշողութիւնը մնացել է վէպի մէջ: «Արքունիքն՝ ունայն շքով եւ պերճութեամբ արկանէր աի ժողովրդեան, որ տղայն էր: Թագաւորն մեծապատիւ մեծարեալ, մինչեւ կո-չիլ աստուած, ոչ երբեք երեւէր ի հրապարակի, եթէ ոչ մեծաշուք սպասու, զգեցեալ պատ-մուճան նկարէն, զաւազան, ի սպիտակէ եւ ի կարմրոյ (Դիոն Կաս. ԼԶ. 52), եւ վերարկու ի ծիրանւոյ խորշխորշան. գլուխն պսակեալ բարձր աստեղազարդ խուրիւ»: Փարթամացած իշխաններն եւս անշուշտ հետեւում էին իրենց թագաւորի օրինակին:

*Տիգրանի պատմութիւնը չինծու չէ, այլ առնուած է ժողովրդական երգերից։ Ինչքան էլ առաջին գրողը, «արգասաւորն ի բանս» քերթողն, այդ պատմութիւնը «Պիտոյից» կանոններով մշակել է, — ինչպէս է իրօք, — նրա արած պատմութիւնը երեւակայական ու «կամամտածական» չէ։ Այսպէս եւ ինչքան էլ նա, կամ Խորենացին, Տիգրանի մարմնի «գեղեցկութիւնը, զօրութիւնն ու արագութիւնը» եւ հոգեկան յատկութիւնները գովէր այնպէս, ինչպէս պահանջում էր «Ներբողեանի սահմանը», կարելի չէ ասել, թէ այդ գովեստի գծերը «կամամտածական» լինեն, եւ ոչ թէ մեծ մասամբ բուն աղբիւրից՝ ժողովրդական երգից առնուած։ «Ներբողեան է բան արտադրական եղելոյ բարեաց», ասուած է Պիտոյից գրքի մէջ (էջ 413) ամենից առաջ, եւ ոչ թէ կամամտածական մի բան։ Այսպէս եւ յետոյ ներբողեանի համար իբրեւ օրինակ դրուած «Մովսէսի ներբողեանի» մէջ (էջ 417 եւ հտ. Ժ. Ժա. Ժբ.) հեղինակը գովում է Մովսէս մարգարէի մարմնի «գեղեցկութիւնը, զօրութիւնը եւ արագութիւնը» եւ այլն, բայց նա այդ ամէնն իրենից չի ստեղծում, այլ Աստուածաշնչից է առնում, կամ Մովսէսի կեանքի այս կամ այն դիպուածից հանում։ Բայց որքա՜ն դժգոյն է այդ ամէնը. ոչ մի մակդիր, ոչ մի կենդանի նկարագիր. իսկ, ընդհակառակն, Տիգրանի եւ միւս հայկական վիպական հերոսների գովեստը որքա՜ն կենդանի է, վառ ու գունաւոր, եւ մակդիրներով հարուստ։ Այս մեծ տարբերութիւնն առաջացել է ոչ միայն հեղինակների շնորհքի տարբերութիւնից, այլ աւելի այն հանգամանքից, որ Տիգրանի ներբողեանի հիմքը, սկզբնական աղբիւրը եղել է Վիպասանքը։ Ժողովրդականի մէջ արդէն պատրաստ գտել է ներբողեանի հեղինակն իր մակդիրների ու նկարագիրների մի մասը։*

*Այդ յատկութիւնների վիպականութիւնը հաստատւում է մեր դիցաբանութեամբ, որ մեզ յայտնի է ուրիշ աղբիւրներից։ Կարելի չէ ենթադրել, թէ այս վերջինների քրիստոնեայ հեղինակներն այդ յատկութիւնները վերագրած լինեն աստուածներին, քանի որ նրանք աստուածների այդ յատկութիւնները մէջ են բերում այն ժամանակ, երբ աստուածների վատ ու սնոտի լինելն են ուզում ցոյց տալ։ Ագաթանգեղոսի մէջ Վահագն աստուածու մակդիրն է՝ քաջն, «Քաջն Վահագն», որից քաջութիւն էին հայցում։ Արութիւնն է ամենամեծ աստուծու, աստուածների հայր եւ երկնքի ու երկրի ստեղծող Արամազդի յատկանիշը. «արի» մակդիրն էլ նրա անուան կից է՝ «Արին Արամազդ»։ Նրա արութիւնն իր գործունէութեան նպատակ ունի հասարակաց բարօրութիւնը, երկրի շինութիւնը։ Արի Արամազդն իր արութեամբ «լիութիւն ու պարարտութիւն» է շնորհում աշխարհին։ Այսպէս եւ վէպի մէջ երգուել է, թէ Տիգրանն իր արութեամբ հարստացրել է երկիրը. «Արանց կացեալ գլուխ եւ արութիւն ցուցեալ՝ զազգս մեր բարձրացոյց... Մթերս ոսկւոյ եւ արծաթոյ եւ քարանց պատուականաց եւ զգեստուց եւ պէս պէս գունից եւ անկուածոց... բազմացոյց» (1)։ Վէպի մէջ եւս արութեան հետեւանքն այն է լինում, որ աշխարհը շէն է մնում. «խաղաղութեան եւ շինութեան բերող՝ իւղով եւ մեղու զհասակս ամենեցուն պարարեալ», ասում է երգիչը, դրանով արտայայ-*

---

(1) Սաստիկ ժիր, եռանդուն եւ արի է ներկայացնում Մեծն Տիգրանը. մի մարդ, որ մօտ 45 տարեկան հասակում թագաւորում է, քառասուն եւ հինգ տարի շարունակ քաջութեան եւ աշխարհակալութեան գործերով զբաղւում. մօտ եօթանասուն երկու տարեկան հասակում (69–68 թ. մ. թ. ա.) ձմեռը կռւում, անցնում է «զամենայն աշխարհս Հայոց կոչել զերիտասարդս ի զէն վասն հայրենի աշխարհին». գրում է «զբովանդակ աշխարհն ի զինուորութիւն, կալեալ զուժեղագոյնսն միայն ընդ դրօշու». բաժանում է այդ զօրքը վաշտերի ու գնդերի եւ

տելով նաեւ իր խաղաղասէր ու շինարար ոգին(1)։

Նոյն շինարարութիւնը տեսնում ենք նաեւ Երուանդի, Արտաշէսի ու Սանատրուկի, այլեւ Հայկի ու Շամիրամի համար, որոնք քաղաքներ կամ դաստակերտներ ու աւաններ են հիմնում, անտառներ տնկում, ինչպէս նոյնն անում են եւ մեր նոր վէպի մէջ։ Արտաշէսը երկիրը բազմամարդացնում է «եկամուտս բազումս ածելով ազգս եւ բնակեցուցանելով ի լերինս եւ ի հովիտս եւ ի դաշտս»։ Նա հոգ է տանում երկրագործութեան եւ արուեստների համար։ «Ասի ի ժամանակս Արտաշիսի ոչ գտանել երկիր անգործ յաշխարհիս Հայոց, ոչ լեռնային եւ ոչ դաշտային, յաղագս շինութեան երկրիս»։ — Ահա ամենամեծ գովեստը, որ տրւում է մի թագաւորի։

Արութեան ու քաջութեան հետ հաւասար շեշտւում է եւ զգաստութիւնն ու խոհեմութիւնը։ Ինչքան էլ հռետորական արուեստով էր պահանջւում նոյնը, բայց այդ գիծն եւս վիպական պէտք է համարել։ Սիրելի Անահիտ դիցուհին, ինչպէս 5-րդ դարի քրիստոնեայ մատենագրից իմանում ենք, համարուել է «մայր ամենայն զգաստութեանց, բարերար ամենայն մարդկային բնութեան», «որով կեայ եւ զկենդանութիւն կրէ երկիրս Հայոց», «որ է փառք ազգիս մերոյ եւ կեցուցիչ»։ Նրանից խնամակալութիւն են խնդրել աշխարհի համար։ Ուստի բնական է, որ մեր վէպի մէջ Տիգրանը ներկայանար «պարկեշտն ի կերակուրս եւ յըմպելիս եւ ի խրախճանութիւնս օրինաւոր. զորմէ ասէին ի հնոցն մեր որք փանդռամբն երգէին՝ լինել սմա եւ ի ցանկութիւնս մարմնոյ չափաւոր, մեծիմաստ եւ պերճաբան եւ յամենայն որ ինչ մարդկութեան՝ պիտանի»։ Անշուշտ, Խորենացու ճարտասանական մշակումը կայ այստեղ. բայց թէ այս գովքը հիմնուած է վէպի վրայ, այդ երեւում է նրանից, որ Խորենացին դրա համար իբրեւ աղբիւր յիշում է երգիչներին։ Այս գովքին պիտի աւելացնել եւ այն, որ արդարադատ եւ հաւասար աչքով է նայում նա ամէնքին. «Ոչ ընդ լաւագոյնն խանդայր, եւ ոչ զնուաստն արհամարհէր, այլ ամենեցուն հասարակաց հնարէր զխնամոցն ի վերայ տարածանել զզգեստս»։ Ահա գուսանների եւ Մ. Խորենացու գաղափարականացումը, եւ ցանկալի թագաւորը։ Վիպական Տիգրանը ոչ լաւա-

---

կրթում է կարճ ժամանակում, որչափ հնար է, «ըստ Հոռոմոց օրինի», որպէսզի կարողանայ զարնանը հռոմայեցի լեգէոնների դէմ կռուել։ Ահա «արութիւն ցոյց տուող» թագաւորը։

(1) Այդ էլ, երեւի, մի պատմական յիշողութիւն է։ Մեծն Տիգրանի ձեռով նուաճուած Ասորիքի համար ասում է պատմութիւնը. «Ոգի ա՛ռ Ասորւոց աշխարհն զամս չորեքտասան (Ապպիան. 17), թէպէտ ընդ օտար իշխանաւ՝ վայելեցին խաղաղութիւն, հանգիստ եւ աւուրս բարենշանս»։ Եթէ օտար աշխարհն այսպէս բարգաւաճում էր նրա օրով, որչա՞փ եւս աւելի բուն հայ երկիրը։ Նուաճուած ազգերի աւարով լիացած ու փարթամացած՝ անշուշտ հանգիստ էր վայելում Հայաստանը, որի շինութեան համար՝ հելլենիզմին հետեւող Տիգրանը հրեաներ եւ յոյներ էր գաղթեցնում։ Եւ որքա՛ն գեղեցիկ ու բուն վիպական ձեւով է արտայայտուած այդ շինութիւնն ու լիութիւնը. «Իւղով եւ մեղու զամենայն հասակ պարարեալ», որ անշուշտ ժողովրդական երգի խօսքերն են։ Իւղ ու մեղրը այժմ մեր ժողովրդի մէջ վիպական սիրելի կերակուրն է։

գոյններին, այսինքն բարձր դասի ազնուականներին է նախանձում եւ ոչ նուաստներին, ցածր դասի խեղճ ռամիկներին արհամարհում, այլ ամէնքին խնամում է: Այս հատուածը միակն է, որի մէջ յիշւում են «նուաստները», ինչպէս կոչուել են մեզնում «տառապեալ» դասի մարդիկը: Ձեռագիրների մի խմբի մէջ այդ «զնուաստսն» բառի փոխանակ է «զտրուկսն»: Յիշւում են եւ ուրիշ երկուսը հասարակ դասից՝ Արտաշէսի ստնտուի որդի Գիսակը եւ Երուանդի «ընտանի» Տուրը: Այս երկուսն էլ, սակայն, ոչ թէ իրենց դասակարգն են ներկայացնում, այլ հաւատարմութեամբ ծառայում են բնիկ Արտաշէսին: Գիսակը մարտի մէջ իրեն զոհելով՝ մահից ազատում է Արտաշէսին. իսկ Տուրը Երուանդի տնից քսութիւն է անում Սմբատին, որի համար եւ սպանւում է ինքը: Արտաշէսն այդ երկուսի զարմերին էլ ազնուական է դարձնում, «սեպհական ազգ», կոչում է Դիմաքսեան եւ Տրունի: Այդ էլ ֆէոդալական ժամանակի արտայայտութիւն է:

4. Ոճն ու ոտանաւորը: — Վիպասանքի մէջ պատմուածքը շատ կենդանի է, դրամախօսութիւններով հարուստ: Նկարագիրները շատ գունագեղ են, առանձնապէս Տիգրանի գովեստը պերճ է, վառ գոյներով ու մակդիրներով լի: Ժողովրդական երգի մէջ արդէն մասամբ պատրաստ եղել են այդ մակդիրները, ինչպէս, օրինակ, «հայկազն բազմաբիւրաւոր», որ ոչ թէ Կիւրոսի ժամանակակից Տիգրանին է վերաբերում, այլ միայն պատմական Մեծն Տիգրանին: Բայց եւ այնպէս՝ ինչքան էլ բովանդակութիւնը, գուցէ, սակաւ բացառութեամբ, Վիպասանքից է ծագում, նկարագիրները ոչ բոլորը երգից են: Պատմագիրն, անշուշտ, իր սիրած ճարտասանական ոճով էլ ծաղկեցրել է ամէնը: Այնպէս որ դրանցով ճիշտ հասկացութիւն չենք կարող կազմել Վիպասանքի ոճի մասին. դրա համար պէտք է առանձնապէս նկատի ունենալ այն փոքրիկ հատուածները, որ բառացի մէջ են բերուած առասպելներից ու Վիպասանքից: Դրանցից մէկն է Վահագնի երգը, որ խորին հնութիւնից է գալիս եւ, թէպէտ ուշ ժամանակում գրի առնուած, ոչ միայն իր բովանդակութեամբ, այլեւ ձեւով կրում է նախնական բանաստեղծութեան դրոշմը: Երգիչը Վիշապաքաղի ծնունդը նկարագրում է դանդաղ, առանց շտապելու: Նա նիւթը զարգացնել չգիտէ. զարգացման տեղը բռնում են պարզապէս կրկնութիւնները, որ՝ առանց ձանձրալի լինելու՝ անում է նա: Բայց արդէն երեւում է որոշ արուեստ: Բանաստեղծը գիտէ գեղեցիկ մակդիրների գործածութիւնը, ինչպէս՝ ծովն ծիրանի, որ մինչեւ մեր օրերն էլ գտնում ենք հնութիւնից եկող մի ժողովրդական աղօթքի մէջ՝ «երկինքն ծով ծիրանի». կարմրիկ եղեգնիկ, խարտեաշ պատանեկիկ, հուր հեր, բոց մօրուս: Ապա՝ բանաստեղծը գիտէ մի ուրիշ եղանակ եւս. նա, ինչպէս յատուկ է մեր ժողովրդական երգին, բանեցնում է նուազական-փաղաքշական բառեր, օրինակ՝ կարմրիկ, եղեգնիկ, պատանեկիկ, աչկունք (=աչիկներ): Նա գործ է ածում հանգիտութիւն, որ նոյնպէս յատուկ է ժողովրդական երգին, օրինակ՝ «երկնէր երկին, երկնէր երկիր, ծովն ծիրանի, հուր հեր, աչկունք արեգակունք»: Եւ վերջապէս այստեղ կրկնութիւնների մէջ գտնում ենք զուգահեռականութիւն ասածը, օրինակ՝

Երկնէր երկին, երկնէր երկիր,
Երկնէր եւ ծովն ծիրանի:

*Այսպէս նաեւ հետեւեալը.*

Նա հուր հեր ունէր,
Բոց ունէր մօրուս։

*Այս միեւնոյն արուեստը երեւում է եւ Արտաշէսի վէպից ըստ երեւոյթին բառացի բերուած հատուածների մէջ։ Օրինակ՝ մակդիրներ, որոնց գործածութիւնը բոլոր սկզբնական բանաստեղծութիւնների եղանակներից մէկն է.— «այր* քաջ *(Արտաշէս),* քաջ *ազգին (Ալանաց),* աչագեղոյ *դստերս (Ալանաց), ազգաց* քաջաց, քաջն *Արտաշէս,* քաջազգի *կոյս օրիորդ,* արի *արքայն, Սեւուն* գեղեցիկ, ոսկէօղ շիկափոկ *պարան, արծուի* սրաթեւ, փափուկ *օրիորդ, տեղ* ոսկի»։ *Զուգահեռականութիւնները՝*

Եւ հանեալ զոսկէօղ շիկափոկ պարանն,
Եւ ձգեալ զոսկէօղ շիկափոկ պարանն։

*Կամ հետեւեալները՝*

«Տեղ ոսկի տեղայր ի փեսայութեան Արտաշիսի,
Տեղայր մարգարիտ ի հարսնութեան Սաթինկանն»։

«Եթէ դու յորս հեծցիս
յԱզատն ի վեր ի Մասիս,
Զքեզ կալցին քաջք, տարցին՝
յԱզատն ի վեր ի Մասիս»։

*Բացի այդ՝ վիպասանը գիտէ Սաթինիկին փախցնելու պատմուածքի մէջ խօսքին տալ բովանդակութեան պահանջած ձեւը — կարուկ արագութիւն ու լարուածութիւն, որ առաջանում է խօսքերը դերբայով կազմելուց։*

*Թէպէտ եւ բառացի համարուած հատուածիկների բնագրի ճշտութեան համար եւս ապահով չենք, բայց եւ այնպէս հնարաւոր է լինում որոշել մեր հին վէպի մէջ գործածուած չափը։ Կատարեալ երաժշտականութիւն չունեն այդ երգերը, բայց ունեն որոշ ռիթմ։ Այդտեղ գտնում ենք արձակին շատ մօտիկ ազատ ոտանաւորի մի ձեւը, պարզոտնեայ խառն ոտանաւորը, որ յատուկ է մեր մի շարք հին հոգեւոր երգերին եւ մի քանի ժողովրդական վիպական երգերին, ինչպէս եւ «Սասնայ Ծռերին», վերջինիս թէ՛ երգուած եւ թէ պատմուած մասերի մէջ* (1)*։ Տողերի մէջ վանկերի թուի նոյնութիւն անհրաժեշտ չէ։ Բայց Վահագնի երգի մէջ առանձնապէս գտնում ենք տողերի որոշ չափակցութիւն, ինչպէս լինում է բարդոտնեայ խառն ոտանաւորների մէջ։ Առաջին երկու տողերը, որոնք իրար զուգահեռական են, կշռւում են 5-րդ եւ 6-րդ տողերի հետ, որոնք նոյնպէս իրար զուգահեռական են. իսկ 3-րդ ու 4-րդ տողերը, որոնք մի ամբողջութիւն են կազմում, կշռւում են 7-րդ եւ 8-րդ տողերի հետ, որոնք նոյնպէս մի ամբողջութիւն են կազմում։ Վերջընթեր տողի «ապա թէ» բառերը երգինը չեն, որով իրար հանդիպում են համակշիռ կերպով՝ հետեւեալ երկու տողերը.*

«Նա հուր հեր ունէր,
Բոց ունէր մօրուս»։

---

(1) Տես՝ Մ. Աբեղեան, Հայոց լեզուի տաղաչափութիւն, Երեւան, 1933, էջ 365-377։

*Եւ վերջապէս՝ վերջին տողն ինքն իր մէջ իր յանգական հանգիստութեամբ կազմում է մի առանձին միութիւն.*

— «Եւ աչկունքն *էին* արեգակունք»:

*Միւս կտորները, հարկաւ, այսպիսի յօրինուածք չունեն ու լոկ պարզ ոտանաւոր խառն ոտանաւորներ են տողերի ազատ դասաւորութեամբ:*

# ԵՐԿՐՈՐԴ ՇՐՋԱՆ

## ԵԿԵՂԵՑԱ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ՄԱՔԱՌՄԱՆ ԳՐԱԿԱՆՈՒԹԻՒՆ

### ՄԱՔԱՌՈՒՄ ՊԱՐՍԿԱԿԱՆ ԵՒ ՅՈՒՆԱԿԱՆ ՁԳՏՈՒՄՆԵՐԻ ԴԷՄ

1. Ազնուականութիւն եւ եկեղեցականութիւն:— *Հայոց գրականութիւնը 3-րդ դարի վերջերից մտնում է իր զարգացման երկրորդ շրջանը: Ստեղծւում է նոր վիպական բանահիւսութիւն իբրեւ արտայայտութիւն 3-րդ եւ 4-րդ դարերի պատմական իրականութեան: 5-րդ դարի սկիզբներին արդէն առաջ է գալիս հայերէն գիրն ու գրաւոր դպրութիւնը, եւ այս ոչ թէ ազնուական, այլ եկեղեցական դասի ձեռով: Ազնուականներն այդ ժամանակ առհասարակ իրենց բարքերով դեռ շատ կոպիտ էին, հեռամուտ միայն անձնական շահամոլական խնդիրների, ուսման ոչ մի նշանակութիւն չտուող: Նրանք ապրում էին առանց զգալու գրի ու գրականութեան կարիքը, եւ եթէ երբեւէ գրաւոր պայմանի կամ կալուածագրի պէտք ունէին, այդ կատարել էին տալիս այլազգի գրերով ու լեզուներով: Նրանց բաւարարում էին իրենց աւանդական բանահիւսութիւնը, բերանացի վէպերն ու պատմական երգերը եւ իրենց ուրախութեան ու կռծի բանաստեղծութիւնը: Դա նաեւ չինականութեան հոգեւոր սնունդն էր: Փ. Բուզանդը (Գ. 13) գրում է, թէ «Յառնազանձ բազմութիւն մարդկան ժողովրդոց նախարարացն եւ կամ շինականութեանն» «գեգերեալ մաչէին... ի հնութիւն հեթանոսութեանց սովորութեանց, բարբարոս խուժադուժ միտս ունելով: Եւ զիւրեանց երգս առասպելաց, զվիպասանութեանն սիրեցեալք ի փոյթ կրթութեանցն, եւ նմին հաւատացեալք, եւ ի նոյն հանապազորդեալք»:*

*Ազնուականութեան այդ աւանդական բանահիւսութիւնը պիտի կազմէր հիմունք մեր գրաւոր բանաստեղծութեան, որի մէջ պիտի ցոլար հայ ազգի յատուկ հանճարը, եթէ միայն մեր գրականութիւնը գրերի գիւտից յետոյ շարունակէր իր սեփական ճանապարհով ընթանալ: Բայց մեր ազնուականութիւնը գրի միջոցով չմշակեց իր բանաստեղծութեան տեսակները: Նրա բանահիւսութիւնը տեղի տուաւ եկեղեցական գրականութեան առաջ: Եւ այլապէս էլ չէր կարող լինել, դա անխուսափելի էր: Եթէ նոյնիսկ հին մեծ մը-*

չակոյթ ունեցող ազգերի մէջ, ինչպէս էին յոյներն ու հռոմայեցիք, նրանց հարուստ գրականութիւնը ոչ միայն ետ մղուեց քրիստոնէական գրականութեան առաջ, այլեւ մինչեւ անգամ հետզհետէ մոռացութեան տրուեց, ապա հայոց նախնական բանահիւսութիւնը չէր կարող դիմանալ նոր հոսանքի առաջ:

Քրիստոնէութիւնը հայերի մէջ մտել էր այն երկարատեւ խաղաղութեան միջոցին, որ 3-րդ դարի վերջերում հաստատուել էր պարսիկների ու հռոմայեցիների միջեւ: Դրա հետեւանքով հայերն սկսել էին աւելի սերտ յարաբերութեամբ կապուել կուլտուրապէս իրենցից աւելի բարձր քրիստոնեայ հարեւանների — յոյների հետ: Բայց այդ կապը սկզբում դեռ աւելի քաղաքական էր, քան կուլտուրական: Երկարամեայ պատերազմները 340-ական թուականներից սկսած՝ արգելք էին եղել քրիստոնէական ուսմանը տարածուելու հայ ժողովրդի մէջ: Հայերը պաշտօնապէս եւ անունով միայն քրիստոնեայ էին դարձած, բայց շատ կողմերում իշխում էր դեռ թանձր կռապաշտութիւնը: Ապա՝ հոգեւորականներն իրենք էլ դեռ ընդհանրապէս չափազանց տգէտ էին եւ քիչ էին մտահոգուած Հայաստանում քրիստոնէութիւնն իրապէս հաստատելու գործով: Բայց եւ այնպէս այդ նոր հարուստ դասը, եկեղեցականութիւնը, համեմատաբար աւելի զարգացած էր եւ իր անձնական փառասիրական ձգտումներից յետոյ՝ հետզհետէ աւելի էր հոգում եկեղեցու համար: Ուստի աւելի նա կարիք զգաց գրի ու գրականութեան, քան թէ ազնուականութիւնը, որ չկարողացաւ նոյնիսկ ազգային անկախութիւնը պահպանել: Հայերէն լեզուով գրականութիւնն ամենից առաջ եկեղեցուն էր հարկաւոր պարսկական եւ յունական ոտնձգութիւնների դէմ աջողութեամբ պայքարելու համար:

**2. Մեսրոպ Մաշտոց եւ հայերէն գրերի գիւտն ու գրականութեան սկիզբը:** — Առաջին մարդը, որ հոգացել է հայերէն գրի ու գրականութեան կամ, ինչպէս այն ժամանակ ասում էին, դպրութեան մասին, է Մեսրոպ Մաշտոցը: Նա հիմք է դրել հայ գրականութեան եւ հայերէն լեզուով դպրոցի: Ժամանակի տնտեսական, դասակարգային եւ քաղաքական պայմաններն էին առաջ բերել գրի ու գրականութեան անհրաժեշտութիւնը: Մաշտոցն, ի հարկէ, իր ժամանակի ծնունդ էր եւ բնականաբար նա մենակ չի եղել իր գործունէութեան մէջ: Նրա հետ եղել են եւ ուրիշները, բայց նա առաջինն է եղել այդ լուսաւորական գործի մէջ, եւ ժամանակակիցներն էլ առաջին պատիւը նրան են տալիս: Բարեբախտաբար մենք ստոյգ տեղեկութիւններ ունենք այս մեծ գործի մասին: Մաշտոցի կենսագրութիւնը գրել է նրա աշակերտ եւ գործակից Կորիւն վարդապետը 443 եւ 451 թուականների միջեւ (1):

Կորիւնը Մաշտոցի կեանքի ընթացքը բաժանում է երկու շրջանի — աշխարհական եւ կրօնական: Աշխարհական Մաշտոցի մասին նա քիչ բան է պատմում, բայց այդ քչով էլ պարզւում է նրա դէմքը: Մաշտոցը Տարօն գաւառի Հացեկաց գիւղից էր, Վարդան անունով մի մարդու որդին: Մանկական հասակում նա կրթուած էր հելլենական դպրութեամբ:

---

(1) Կորիւն, Վարք Մաշտոցի. բնագիրը այլ ընթերցուածներով, թարգմանութեամբ,

*Ինչպէս յայտնի է, Մաշտոցի օրով 387 թ. Հայաստանը բաժանւում է երկու մասի, արեւմտեանը հռոմայեցիների կամ, ինչպէս հայերը գրում են, յոյների գերիշխանութեան տակ, արեւելեանը՝ պարսիկների: Հռոմայեցիները շուտով վերջացնում են իրենց ենթակայ մասի հայկական իշխանութիւնը եւ երկիրը կառավարում են առանձին կուսակալների ձեռով. իսկ արեւելեան մասում դեռ մնում էր Հայոց թագաւորութիւնը՝ արքայից արքայի գերիշխանութեան ներքոյ: Մաշտոցը թողնում է Տարօնը եւ անցնում է Մեծ Հայաստանի Արշակունի թագաւորների մայրաքաղաքը՝ Վաղարշապատ: Նա, անշուշտ իր պատրաստութեան համար, կարգւում է պաշտօնեայ արքունի դիւանում՝ «լինել սպասաւոր արքայատուր հրամանացն առ հազարապետութեամբն աշխարհիս Հայոց՝ Առաւանայ ուրումն»:*

*Որ Կորիւնը թագաւորի անունը չի տալիս, այլ միայն ժամանակի հազարապետի անունըն է յիշատակում, դրանից հետեւցնում են (1), թէ «Հայաստանն այդ միջոցին չունէր իր սեփական թագաւորը, այլ պարսից վերին իշխանութեան ներքոյ էր եւ կառավարւում էր արքայից արքայի անունով բնիկ հազարապետի ձեռով»: Այդ անընդունելի է: Մաշտոցը դառնում է «արքայի տուած հրամանների սպասաւոր» Վաղարշապատի «արքունական դիւանում», իսկ այդ արքան չէր կարող լինել «արքայից արքան», որի վերին իշխանութեան տակ էր Հայաստանը, այլ միայն Հայոց թագաւորը, որ նստում էր Վաղարշապատում: Հազարապետը Հայոց Արշակունի թագաւորների օրով երկրի բարձրագոյն առաջին պաշտօնեան էր (2), նրա ձեռով էին թագաւորները կառավարում երկրի ներքին քաղաքական գործերը: Մաշտոցը դիւանում աշխատել է հազարապետի ձեռի տակ, դուցէ եւ այդ պատճառով Կորիւնը հազարապետի անունն է տուել: Ղազար Փարպեցին գրում է Մաշտոցի համար. «Զինուորեալ ի դուռն Հայոց արքային Խոսրովայ, կարգեալ յերամ մատենագիր արքունի դպրացն»: Նոյն պատմագիրը պատմում է, թէ պարսից Շապուհ արքան այս Խոսրով թագաւորին կանչելով իր մօտ՝ գահընկէց է անում եւ նրա փոխանակ թագաւորեցնում է նրա եղբայր Վռամշապուհին:*

*Մաշտոցը ծառայելով արքունի դիւանում՝ տեղեակ եւ հմուտ է դառնում «աշխարհական կարգերին», այսինքն է՝ ինչ որ երկրի ներքին կառավարութեանը, հազարապետութեանն է վերաբերում: Միաժամանակ նա եւ զինուորական էր, «ցանկալի եղեալ զինուորական արուեստին իւրոց զօրականացն», — գրում է Կորիւնը:*

---

առաջաբանով եւ ծանօթութիւններով, ի ձեռն պրոֆ. դ-ր Մ. Աբեղեանի, Երեւան 1941: Տե՛ս էջ 5 եւ հտն. «Առաջաբան»: Տե՛ս նաեւ «Սովետական գրականութիւն», Երեւան, 1941, **No.** 1, էջ 47 — 51 եւ **No.** 2, էջ 41 — 51, Մ. Աբեղեանի յօդուածը՝ «Մեսրոպ Մաշտոց եւ հայ գրի ու գրականութեան սկիզբը»:

(1) *Dr. Jos. Marquart.* Uber das armenische Alphabet in Verbindung mit der Biographie des hl. Maschtoz. Տպագր. «Հանդէս ամսօրեայ», Վիեննա, 1911, **No. No.** 9, 11, 1912, **No. No.** 1, 4, 11, 12 (գերմաներէնի հետ զոյգ նաեւ հայերէն թարգմանութիւնը): Մարկուարտի այս աշխատութիւնը յիշում եմ նաեւ միայն «Մարկուարտ» անունով:

(2) Արշակ թագաւորի մասին պատմելիս Փ. Բուզանդը (Գ. դպ. 2-րդ գլուխ) գրում է. «Եւ սկիզբն գործակալութեանն, հազարապետութեանն, աշխարհատեսն խնամակալութեանն, աշխարհաշէն աշխարհատած դեհկանութեան, շինականաշէն ազգն Գնունեաց»: Երկրորդ տեղը բռնում է սպարապետութիւնը — Մամիկոնեան ազգը:

Գիտե՞ր արդեօք Մաշտոցը, բացի յունարէնից, նաեւ ասորերէն ու պարսկերէն։ Այս մասին չի յիշատակում Կորիւնը։ Ղ. Փարպեցին գրում է, թէ Մաշտոցը արքունի դպիր է կարգւում, «վասն զի ասորի եւ յոյն գրով վճարէին յայնժամ զգործ Թագաւորացն Հայոց՝ արքունի դպիրքն, զվճռոցն եւ զհրովարտակացն»։ Հայաստանի բաժանումից յետոյ յունարէնի գործածութիւնն Արեւելեան Հայաստանում պակասած էր. պաշտօնական յարաբերութիւնները գերագոյն իշխանութեան հետ պարսկերէն լեզուով էին վարում։ Բացի պարսկերէնից՝ Իրանում ընդունուած էր նաեւ ասորերէնն արձանագրութիւնների համար։ Մաշտոցը չէր կարող Վաղարշապատում Թագաւորի դիւանում քարտուղար լինել եւ այդ լեզուները չիմանալ, իսկ եթէ չգիտէր՝ չսովորել։

Այստեղ, Վաղարշապատում, նա աւելի եւս ընդարձակում է իր ուսումը՝ պարապելով կրօնական գրքերի ընթերցանութեամբ։ Եւ այսպէս «ամէն պատրաստութեամբ զարդարելով իրեն՝ ծառայում էր իշխաններին», — գըրում է Կորիւնը։ Թէ նա ի՛նչպիսի ծագում է ունեցել, ե՛րբ է ծնուել, ե՛րբ է ծառայութեան մտել արքունի դիւանը եւ քանի՛ տարի է մնացել իր պաշտօնի մէջ, այդ մասին տեղեկութիւն չի տալիս կենսագիրը։ Նա ծառայութիւնը թողնում է 394 թ. եւ դառնում է կրօնաւոր, «մերկանալով իշխանակիր ցանկութիւնները», — գրում է Կորիւնը։ Այս ակնարկից, ինչպէս եւ այն հանգամանքից, որ նա շատ երիտասարդ հասակում արժանացել է արքունի քարտուղար դառնալու եւ եղել է զինուորական, այն էլ ոչ սովական զինուոր, պէտք է կարծել, որ նա ծագումով ազնուական է եղել եւ ոչ ժողովրդի «ստորին խաւերից», ինչպէս առանց որեւէ հիմքի գրեցին վերջերս։

Սկզբում նա մտնում է միայնակեցական կարգի մէջ։ Քրիստոնեաների մէջ Արեւելքում — Եգիպտոսում, Ասորիքում, Պաղեստինում եւ այլն, 3-րդ դարից արդէն հետզհետէ աւելի զարգանում էր կրօնաւորական կեանքը, առանձնապէս մենակեցութիւնը։ Մարդիկ, որոնց թւում եւ շատ նշանաւորները, մենանում էին անապատներում ու լեռներում, կամ մարդկանց բնակութիւնից դուրս առանձին տեղերում, եւ ճգնում էին, այսինքն իրենց ենթարկում էին զանազան նեղութիւնների։ Երեւի ազդուելով կրօնական գրքերի ընթերցանութիւնից՝ այդ ընդհանրացած ոգով տարւում է եւ Մաշտոցը «ոչ սակաւ ժամանակներ», — գրում է Կորիւնը եւ մանրամասն նկարագրում է նրա ճգնութիւնը։ Բայց նա մենակ չի մնում. ճգնութեան ժամանակ նա պահում էր աշակերտներ։ Հետագայում եւս նա իր աշակերտների հետ իրեն մէկ-մէկ նուիրում էր ճգնութեան, նրանց հետ գնում, մտնում էր քարայրերը։ Բայց այդ ժամանակ եւս, երբ նրան կանչում էին որեւէ գործի համար, նա իսկոյն ճգնարանից իջնում, օգնում էր կանչողներին՝ ինչով որ կարող էր։ Նա իր ճգնութեամբ մեծ հռչակ է վայելում։ «Ծանօթական եւ հաճոյ լինէր Աստուծոյ եւ մարդկան», — գրում է Կորիւնը։ Թէ ո՛րտեղ է եղել նրա ճգնութեան վայրը, այդ մասին լռում է կենսագիրը։ Բայց պատմուածքի ընթացքից երեւում է, որ Մաշտոցի մենարանը գտնուել է Գողթնի սահմաններին մօտիկ մի բարձր տեղում։ Աւանդութեամբ դա եղել է Գողթնին կից Երնջակ գաւառում, այնտեղ, ուր կար, դուցէ եւ այժմ կայ, Մեսրոպավանք կամ Մեսրոպավանիս, Մսրավանիս գիւղը։

Մաշտոցի նման անձը չէր կարող մինչեւ վերջն առանձնացած ճգնաւոր մնալ, թէկուզ մի քանի աշակերտների հետ: Նա աշխարհի մարդ էր, ծառայած մարդ, աշխարհական ու զինուորական կարգերի հմուտ. ինչքան էլ «մերկանում է իրենից իշխանակիր ցանկութիւնները», չի կտրւում աշխարհից եւ անգործութեան չի մատնում իրեն: Ի՞նչ էր նրա գործունէութիւնն իր կեանքի այս երրորդ շրջանի սկզբում:

Արդարեւ, հայերը մի դար առաջ պաշտօնապէս քրիստոնեայ էին դարձել, բայց, ինչպէս ասուեց վերեւում, միայն անունով էին քրիստոնեայ. «առան քրիստոնէութեան անունը», — գրում է Փ. Բուզանդը (Գ. 13): Ուստի Մաշտոցն իր ճգնարանից ելնելով՝ սկսում է պարապել «առաքելական» գործով, այսինքն քրիստոնէութիւն է քարոզում: Նա իր աշակերտների հետ գնում, իջնում է Գողթն գաւառը: Որովհետեւ արդէն հռչակուած էր նրա անունը, նա լաւ ընդունելութիւն է գտնում տեղի իշխանից եւ նրա օգնութեամբ տեղացիները քրիստոնեայ է դարձնում: «Գերեց ամէնքին հայրենական աւանդութիւններից եւ սատանայական դիւապաշտ ծառայութիւնից», — գրում է Կորիւնը: Բայց Մաշտոցն այնքան միամիտ չէր, որ կարծէր, թէ գողթնեցիք իսկապէս քրիստոնեայ դարձան, ինչպէս ինքը կը ցանկանար: Անշուշտ նրանք էլ միայն «քրիստոնէութեան անուն առան»: Հեթանոսութիւնն իր առասպելներով ու վէպերով Մաշտոցից յետոյ դեռ երկար դարեր ապրեց Գողթնում: Եւ Գողթնը մենակ չէր: Երբ գողթնեցիք քրիստոնեայ դարձան, այնտեղից «դեւերը զանազան կերպարանքներով փախան ընկան Մարաց կողմերը», — գրում է Կորիւնը: Այդ նշանակում է, որ քրմերը հալածուելով, իրենց կուռքերն առել, փախել, ապաստանել են Մարաց կողմերում, որ է՝ Մասիսից բռնած Արաքսի երկու կողմում մինչեւ Նախիջեւան եւ Ջուղա, մինչեւ Գողթն գաւառի սահմանները:

Այդ ժամանակ Մաշտոցը մտածում է հայոց բոլոր աշխարհի ժողովրդի մասին եւ դրա համար հոգալով՝ կրկնում է. «Տրտմութիւն է ինձ համար եւ անպակաս են իմ սրտի ցաւերն իմ եղբայրների և ազգայինների համար»: Նա այդ հոգսերով պաշարուած՝ մտածմունքի ծփանքի մէջ ընկած մնում է, թէ ի՛նչ ելք գտնի ժողովրդին իր տխուր դրութիւնից հանելու, ամբողջ Հայաստանում քրիստոնէութիւնը հաստատելու համար: Ելքը հայերէն լեզուով ուսումն ու գրականութիւնն էր: Քրիստոնէութիւնն ասորիներից եւ յոյներից էր մտել Հայաստան. եկեղեցու պաշտօնեաներն իրենք մասամբ դեռ ասորիներ եւ յոյներ էին որոնք մուտք էին գործել Հայաստան իբրեւ քարոզիչներ եւ պահում էին իրենց լեզուն: Ուստի սկզբից հէնց Հայաստանում եկեղեցական լեզուն ասորերէն ու յունարէն էր: Եկեղեցու պաշտամունքը կատարւում էր այդ օտար լեզուներով, եւ բնականաբար ժամասացութիւնն եւ ընթերցուածներն անիմաստ հնչիւններ էին ժողովրդականների համար: Քրիստոնէութիւնից փոքր ի շատէ բան հասկանում էին նրանք միայն, — գրում է Բուզանդը (Գ. 13), — ովքեր մի քիչ գիտէին հելլէն կամ ասորի դպրութիւն: Մնացածներն այդ կրօնից բնաւ բան չէին հասկանում եւ շարունակում էին մնալ հեթանոսութեան մէջ, նոյն հին հաւատալիքներով, առասպելներով ու սովորութիւններով: «Իսկ որք արտաքոյ քան զգիտութիւն արուեստին էին (այսինքն՝ ասորերէն կամ յունարէն չգիտէին), այլ խառնա-

ղանձ բազմութիւն մարքկան ժողովրդոց նախարարացն եւ կամ չինականութեանն, եթէ զցայգ եւ զցերեկ նստեալ վարդապետացն եւ ըստ նմանութեան ամպոցն իբրեւ զյորդահեղեղ ինչ անձրեւաց սաստկութեան զվարդապետութիւնն ի վերայ հոսէին, ոչ ոք ի նոցանէն եւ ոչ մի ոչ, եւ ոչ մի բան, եւ ոչ կէս բանի, եւ ոչ զոյգն յիշատակ ինչ, եւ ոչ նշմարանս ինչ որ լսէինն, եւ ոչ կարէին ինչ ունել ի մտի»:

Արդարեւ, քրիստոնէութեան սկզբից հէնց, ըստ Ագաթանգեղոսի, Հայաստանում հիմնուած են եղել եկեղեցական դպրոցներ, բայց ուսումն եղել է յունարէն եւ ասորերէն լեզուներով: Այդ մասին հոգ են տարել եւ հետագայում: Այսպէս՝ Փ. Բուզանդը (Գ. 4) պատմում է, որ Արշակ Թագաւորի օրով Մեծն Ներսէսը «Հայաստանի բոլոր գաւառներում եւ զանազան տեղերում հիմնել էր դպրոցներ յունարէն եւ ասորերէն» լեզուներով. բայց այդ օտար լեզուներով շատ բան չէին սովորել: Այս հանգամանքներն եւս ահա արգելք էին լինում, որ ժողովուրդը քրիստոնէութեան դարձից հարիւր եւ աւելի տարիներ յետոյ բոլորովին անտեղեակ էր մնում Աստուածաշնչի նոյնիսկ վիպական պատմուածքներին ու զրոյցներին, որ հեշտ կարող էր իւրացնել: Պէտք էր եկեղեցու եւ դպրոցի լեզուն դարձնել հայերէն, իսկ դրա համար հարկաւոր էր գիր ու գրականութիւն հայերէն լեզուով: Հարկաւոր էր այդ առաջ բերել եւ տարածել: Բայց այդ վեր էր ուժերեց մի մարդու, որի ձեռին չկային իշխանութիւն եւ նիւթական միջոցներ:

Եւ ահա Մաշտոցը հէնց այնտեղ՝ Գողթնում երկար ժամանակ այդ խնդրով զբաղուելուց յետոյ՝ գալիս է Վաղարշապատ Սահակ կաթողիկոսի մօտ, որին եւ պատրաստակամ եւ հաւան է գտնում այդ բանի համար: Հայերէն նշանագրեր գտնելու համար ժողովում են «զաշխարհահոգ խորհուրդըն երանելի միաբանելոց» — միաբանեալների, այսինքն վանականների, կրօնաւորների խորհուրդը: Խորհրդակցութեան նպատակի մասին իմաց են տալիս Վռամշապուհ Թագաւորին: Սա յայտնում է, թէ Դանիէլ անունով մի ասորի եպիսկոպոս «յանկարծ ուրեմն գտեալ նշանագիրս այփաբետաց հայերէն լեզուի» — յանկարծ (պատահաբար) հայերէն լեզուի այփաբետներ — նշանագրեր է գտել: «Եւ իբրեւ պատմեցաւ նոցա յարքայէ վասն գտելոյն ի Դանիելէ, յօժարեցին զարքայ՝ փոյթ առնել վասն պիտոյիցն այնոցիկ»:

Թագաւորը բերել է տալիս այդ նշանագրերը, եւ Սահակն ու Մաշտոցն առնելով «զյանկարծագիւտն», այսինքն Դանիէլի պատահաբար գտած նշանագրերը, Թագաւորից խնդրում են մատաղահաս մանուկներ, որ նշանագրերը սովորեցնեն նրանց: Սկիզբն է դրւում հայ դպրութեան: Մաշտոցը դառնում է վարդապետ, այսինքն ուսուցիչ, եւ մօտ երկու տարի մանուկներին սովորեցնում է դրանցով: Բայց վերջը հասկանում են, որ «չեն բաւական նշանագիրքն՝ ողջ ածել զսիւղոբայս զկապս հայերէն լեզուոյն, մանաւանդ զի եւ նշանագիրքն իսկ յայլոց դպրութեանց թաղեալք եւ յարուցեալք գիւտցան» — այդ նշանագրերը բաւական չեն հայերէն լեզուի սիղոբաները — կապերն ամբողջութեամբ արտայայտելու համար, մանաւանդ որ նշանագրերն էլ իսկապէս ուրիշ դպրութիւններից թաղուած եւ յարութիւն առած հանդիպեցին, այդինքն՝ այդ նշանագրերը բաւական չեն եղել հայերէնի համար, մանաւանդ այն պատճառով, որ ուրիշ դպրութիւնների են եղել, այն էլ մո–

ացութեան տրուած («թաղեալք») եւ նորից երեւան եկած («յարուցեալք»): Ուրեմն այդ՝ «Դանիէլեան նշանագրերը», — ինչպէս անուանում է Մ. Խորենացին, — յատկապէս հայերէնի համար չեն յօրինուած եղել: Դանիէլ եպիսկոպոսը պատահաբար («յանկարծ ուրեմն», որ կարող է հասկացուել նաեւ «պատահաբար մի տեղ») գտել է (1) դրանք իբրեւ հայերէն լեզուի այբուբեններ: Կը նշանակի՝ որեւէ մէկն ուզեցել է, գուցէ եւ փորձել է դրանք գործածել հայերէնի համար, քանի որ Դանիէլ եպիսկոպոսը դրանք գտել է իբրեւ հայերէնի նշանագրեր (2):

Այսպէս ուրեմն՝ տեսնում են, որ այդ նշանագրերը բաւական չեն հայերէնի համար: Նորից «ժամանակս ինչ» — մի քանի ժամանակ նոյն հոգսն են անում մի ելք, այսինքն նշանագրեր գտնելու համար: Ապա Մաշտոցը Թագաւորի հրամանով եւ Սահակի համաձայնութեամբ առնում է մի խումբ մանուկներ («դաս մի մանկտւոյ») եւ գնում է Ասորոց երկու քաղաքները, Ամիդ եւ Եդեսիա, երեւի յուսալով թէ այնտեղի մարդկանցից մի խորհուրդ կ'առնի: Նա ներկայանում է այդ քաղաքների եպիսկոպոսներին, բայց, ինչպէս երեւում է, այդտեղ էլ ոչ մի առանձին օգնութիւն չի գտնում այդ բանի համար, բացի սիրալիր ընդունելութիւնից եւ հոգացողութիւնից: Նա հետը տարած աշակերտներին, անշուշտ, ապագայ թարգմանիչներ պատրաստելու նպատակով, բաժանում է երկու խմբի. մի խումբը Եդեսիայում կարգում է ասորական դպրութիւն սովորելու, իսկ միւս խումբը յունական դպրութեան կարգելով՝ այնտեղից ուղարկում է Սամոսատ քաղաքը: Ինքը շարունակում է աշխատել նշանագրերի խնդրի վրայ:

Վերջապէս պսակւում է նրա մեծ ջանքը: Նա հնարում է հայկական նշանագրերը: «Հայրական չափուն ծնեալ ծնունդս նորոգ եւ սքանչելի՝ սուրբ աջովն իւրով, նշանագիրս հայերէն լեզուին» — նա իր սուրբ աջով հայրաբար ծնեց (= յօրինեց, գրեց) նոր եւ սքանչելի ծնունդներ — հայերէն լեզուի նշանագրեր, — գրում է Կորիւնն իր ճոռոմ ոճով եւ անմիջապէս շարունակում է. «Եւ անդ վաղվաղակի նշանակեալ, անուանեալ եւ կարգեալ, յօրինէր սիղոբայիւք-կապօք», — եւ այնտեղ շուտով նշանակեց (գրեց, գծագրեց), անուանեց եւ կարգաւորեց (դասաւորեց), յօրինեց սիղոբաներով-կապելով, — այսինքն՝ դասագիրք յօրինեց վանկերով հեգելու, վանկեր կապելու, գիրկապ կարդալու համար: Այնուհետեւ Մաշտոցն իր օգնականների հետ Եդեսիայից գնում է Սամոսատ քաղաքը, ուր նոյնպէս լաւ ընդունելութիւն է գտնում:

Տե՛ս Երկրորդ յաւելուած՝ «Մաշտոցի գործը Եդեսիայում եւ Սամոսատում»:

Սամոսատում հայերէնի նշանագրերը Հռոփանոս անունով մի յոյն գրագրի ձեռով վերջապէս յարդարելուց եւ յարմարեցնելուց յետոյ՝

---

(1) «Գտնել» բառի համար տես՝ Կորիւն, Վարք Մաշտոցի, Երեւան, 1941, էջ 108, ծան. 58:

(2) Դանիէլեան գրերի մասին եղած զանազան կարծիքները տես՝ Մ. Աբեղեանի «Մեսրոպ Մաշտոցը եւ հայ գրի ու գրականութեան սկիզբը», «Սովետական գրականութիւն», No. 1, Երեւան, 1941, էջ 49 եւ հտ. հատուած 5:

Մաշտոցն անմիջապէս փորձում է դրանք: Նա իր երկու աշակերտների հետ, մէկը Յովհան Եկեղեցացի, միւսը Յովսէփ Պաղնացի, ձեռնարկում է Աստուածաշնչի թարգմանութեանը՝ սկսելով Սողոմոնի առակներից, որ, ինչպէս Կորիւնը գրում է, սկզբում հէնց յանձնարարում է ծանօթ լինել իմաստութեան՝ ասելով. «Ճանաչել զիմաստութիւն եւ զխրատ, իմանալ զբանս հանճարոյ»: Ահա առաջին բառերը, որ գրուած են հայերէն լեզուով, հայերէնի այբբենով: Այդ թարգմանութիւնը գրուել է նոյն յոյն գրագրի ձեռով, միաժամանակ եւ մանուկներին սովորեցրել են հայերէն գրել եւ նրանց պատրաստել են հայերէնի համար գրագիրներ:

Վերջապէս ամէն ինչ պատրաստ եւ աջող էր: Նշանագրերը լիովին բաւական էին հայերէնի համար. թարգմանութեամբ փորձուել էր այդ: Դրանք յարմար էին ե՛ւ գեղագրական, ե՛ւ քաղաքական տեսակէտով. միաժամանակ եւ մանուկներին սովորեցրել էին այդ տառերով գրել: Ժամանակն էր վերադառնալու:

Մաշտոցը Սամոսատ քաղաքի եպիսկոպոսից թղթեր է առնում եւ «բոլոր իրայինների հետ», որոնք էին իր «օգնականները», «աշակերտները» եւ գրագրութիւն սովորած «մանուկները», գալիս է Եդեսիա եւ Ամիդ: Այդ քաղաքների եպիսկոպոսներից էլ թղթեր առնելով՝ այդ տեղերից էլ «բոլոր իրայիններով աջողութեամբ եւ հոգելից ուրախութեամբ» գալիս հասնում է Հայաստան աշխարհը, Այրարատեան գաւառի կողմերը, Նոր Քաղաքի (Վաղարշապատի) սահմանների մօտերը:

Մենք չգիտենք, թէ Մաշտոցը ե՛րբ գնաց Միջագետք եւ ե՛րբ վերադարձաւ: Կորիւնը Դանիէլեան գրերը Հայաստան բերելու, ինչպէս եւ Մաշտոցի՝ Եդեսիա գնալու եւ վերադառնալու թուականները յայտնել է Վռամշապուհ թագաւորի տարիներով, — ինչպէս վարւում էին այդ դարերում, — հայկական դպրութեան սկիզբն երկրորդ անգամ էլ յիշում է նա պարսից Վռամ թագաւորի տարիներով. յիշում է երրորդ անգամ էլ, թէ հայոց դպրութեան սկիզբը եղել է Մաշտոցի մահից 35 տարի առաջ: Բայց թուերից մէկը կամ միւսը աղճատուած է, ուստի եւ չեն բռնում իրար: Ընդունում են 403/404, 404/405 թուականները:

Երբ Վաղարշապատում լսում են Մաշտոցի վերադարձի մասին, Վռամշապուհ թագաւորը, Սահակ կաթողիկոսը եւ նախարարների բազմութիւնը քաղաքից դուրս գալով՝ դիմաւորում են նրան Ռահ գետի ափին եւ ցնծութեան երգերով ետ դառնալով քաղաք՝ օրեր են անց կացնում տօնական ուրախութեամբ: Դա մի ազգային տօն էր: Մինչ այդ հայերէն լեզուով մի բառ անգամ չկար մատեանների մէջ գրուած, նոյնիսկ օտար լեզուների տառերով, հիմա Մաշտոցը բերում էր աջողութեամբ յօրինած հայերէն նշանագրեր եւ հայերէն թարգմանուած ու գրուած Աստուածաշնչի մի գիրքը (գուցէ եւ մի քանի գրքեր): Նրա հետ գալիս էին եւ այն երիտասարդները, որոնց ուղարկել էր թագաւորը, որոնք եւ պատրաստուած էին թարգմանութիւններ անելու: Գրից ու գրականութիւնից զուրկ ժողովրդի համար վերջապէս «բացուել էր գիտութեան աղբիւրը»: Բացուել էր Մաշտոցի, Սահակի եւ նրանց աշակերտների համար գործունէութեան ընդարձակ ասպարէզ: Այժմ նրանք կարող էին «համաշխարհի», ամբողջ Հայաստանի մասին հոգալ: Դրա հա-

*մար նրանք երեք բան միաժամանակ էին կատարում. «Թարգմանել, գրել եւ ուսուցանել»: Թարգմանութիւններն եւ արտագրութեամբ բազմացրած գրքերն անհրաժեշտ էին աշակերտներին հայերէն լեզուով ուսում տալու համար:*

*Մաշտոցը ե՛ւ թարգմանիչ էր, ե՛ւ «ուսուցող»: «Ցաստիճան իսկ վարդապետութեան գեղեցիկ՝ երանելին հասանէր», — վարդապետութեան, այսինքն ուսուցչութեան գեղեցիկ աստիճանին հասաւ երանելին, — գրում է Կորիւնը: Սամոսատից վերադառնալուց յետոյ մինչ փութանակի թարգմանութիւններ էին անում, Մաշտոցը միաժամանակ եւ իր ուսուցչութիւնն եւ «առաքելութիւնն» էր շարունակում: Նա իր «առաքելական» գործունէութիւնը վերսկսում է Մարաց կողմերում, ուր, ինչպէս տեսանք, փախել էին քրդմերը Գողթնից, եւ որոնց բնակիչները դժուար մատչելի էին իրենց բարքի եւ «խեցբեկագոյն եւ խոշորագոյն լեզուի» պատճառով: Բայց Մաշտոցն այժմ աւելի զօրեղ միջոց ունէր. նա շնորհիւ հայերէն գրի ու դպրութեան կրթում, սովորեցնում է նրանց «շատ տարիների ծնունդներին» եւ նոյնիսկ «պարզախօս հռետորաբաններ» է դարձնում:*

*Այդ միջոցին առաջ է գնում Աստուածաշնչի թարգմանութիւնն ու «գրերը» եւ յարմարութիւն է ստեղծւում ուսուցման գործն ընդարձակ չափերով կատարելու: Ուսման կենտրոն դառնում է բնականաբար թագաւորների եւ քահանայապետների նստավայրը, Վաղարշապատ մայրաքաղաքը: Շատ աշակերտներ են ժողովւում այնտեղ. շատերն էլ հէնց իրենք են գալիս «նորագիւտ վարդապետութեան», հայերէն լեզուով ուսման համար, «ի բացեալ աղբիւրն գիտութեանն Աստուծոյ»: Նրանց սովորեցնում ու կրթում են եւ ուսուցիչներ են պատրաստում անգէտ մարդկանց համար: Երբ այդ աշակերտները կատարելագործւում են, նրանց խումբ-խումբ ուղարկում են Հայաստանի զանազան կողմերը հայերէն գիր ու գրականութիւն սովորեցնելու: Այդ խմբերից մէկի մէջ եղել է եւ Մաշտոցի կենսագիր Կորիւնը: Բացի այդպիսիներից՝ նրանք, Մաշտոցն ու Սահակը, Վաղարշապատում սովորեցնում են արքունիքի մարդկանց եւ ազնուականներին: Սահակն ուրիշների թւի մէջ՝ ուսուցանում է աւելի Մամիկոնեան տոհմի մարդկանց, որոնց առաջինն էր Վարդանը, իր՝ Սահակի թոռը, ապագայ հերոսը Վարդանանց պատերազմի:*

*Ապա կաթողիկոսը մնում է Այրարատում «կայենականներին», այսինքն զօրականներում կենտրոնացած մարդկանց սովորեցնելու* (1), *իսկ Մաշտոցն իր եռանդուն բնաւորութեամբ կարող չէր մնալ մի տեղում: Նա թոյլտուութիւն ստանալով՝ իր բազմաթիւ օգնականների հետ գնում է հեթանոսների մէջ քարոզելու: Նախ անցնում է Գողթն, իր առաջուայ դաստակերտը: Շաբաթ իշխանի եւ սրա որդի Գիտի օգնութեամբ քարոզում է աւետարանն այդ գաւառում, «և կարգէր յամենայն գիւղս գաւառին՝ դասս սրբոց վանականաց»:*

*Այնտեղից նա եկնում է սահմանակից Սիւնիք, ուր գործում է նախ Վաղինակ, ապա Վասակ իշխանների օգնութեամբ, «ժողովում է մանուկներ ուսում տալու համար», սովորեցնում ու կրթում է այդ «գազանամիտ, վայրե-*

(1) Այս մասին տես՝ Կորիւն, Վարք Մաշտոցի, Երեւան, 1941 թ., էջ 112, ծան. 93:

նազոյն, ճիւաղաբարոյ կողմերի» տղաներին, «այնպէս, որ հէնց այն վայրենիներից եպիսկոպոս են կարգում Սիւնիքի եկեղեցու համար», — գրում է Կորիւնը: Այդ երկիրն էլ նա «լցնում է վանականների խմբերով»: Այսպէս նա շրջում է կողմեր: Ամէն տեղ, ուր նա գնում է, սովորեցնում է հայերէն դպրութիւն եւ իր աշակերտներից մէկին վերակացու թողնում՝ գործը շարունակելու համար:

Նա հոգում է ոչ միայն հայկական դպրութեան համար, այլեւ վրացիների, հետագայում նաեւ աղուանների, որոնք կապուած էին հայերի հետ: Նա իր առաջին շրջագայութեան ժամանակ հէնց՝ իր աշակերտներից մի քանի լաւագոյններին հետը առած գնում է Վրաստան, ալփաբետ յօրինում վրացերէն լեզուի համար, թարգմանութիւններ անել տալիս: Այստեղ էլ նրանց թագաւորն ու եպիսկոպոսն օգնում են Մաշտոցին. նրանք մանուկներ են ժողովում զանազան գաւառներից եւ նրանց ուսում են տալիս: Դրանցից էլ հետագայում կարգւում են եպիսկոպոսներ: Այսպէս շատ կողմեր շրջելով՝ ամէն տեղ նոյն լուսաւորական գործն է կատարում իր աշակերտների հետ եւ իր աշակերտներին վերակացու թողնելով՝ վերադառնում է Վաղարշապատ:

Երբ Արեւելեան Հայաստանի բոլոր կողմերում սովորեցնում է եւ կրկին անգամ շրջում է իր կարգած տեղերը՝ աշակերտներին «զօրացնելու, նորոգելու, հաստատելու», «այնուհետեւ մտածում է, — գրում է Կորիւնը, — հայոց կէս ազգի համար, որ հռոմների թագաւորի իշխանութեան տակ էր»: Այնտեղ էլ պէտք էր տարածել հայկական դպրութիւնը: Եւ Մաշտոցն անցնում է Արեւմտեան Հայաստան: Այստեղ էլ աշխարհի եպիսկոպոսները, իշխանները եւ երկրի կուսակալը, Անատոլիս սպարապետը, պատուով ընդունում են նրան. բայց դպրոցներ բանալու գործը հեշտութեամբ գլուխ չի գալիս: Արեւելեան Հայաստանում կար հայոց թագաւոր, որ ամէն կերպ օգնում էր այդ ազգային գործին. իսկ Արեւմտեան Հայաստանում երկրի այլազգի կառավարիչը թոյլ չի տալիս յունարէն լեզուի փոխանակ հայերէն սովորեցնել:

Մաշտոցը ստիպուած է լինում հետը տարած աշակերտների բազմութիւնը թողնել Մելիտինէ քաղաքում եւ սակաւաթիւ աշակերտներով գնալ Կոստանդնուպոլիս այդ գործը յարդարելու համար: Այստեղ էլ նրան ընդունում են պատուով եւ պետական ծախքով առժամանակ պահում են, մինչեւ որ նա կարողանում է Թէոդոս Բ. կայսրին համոզել եւ նրանից հրաման ստանալ, որ հայերէն սովորեցնեն: Անատոլիս կուսակալը երբ ստանում է Մաշտոցի ձեռով բերուած կայսերական հրամանը, իսկոյն շտապում է կատարել այն: Կայսրի իշխանութեան տակ եղած հայկական գաւառներից ժողովում են բազմաթիւ մանուկներ, նրանց ապրուստ են կարգում զանազան յարմարաւոր տեղերում, ուր եւ սովորեցնում են նրանց հայկական դպրութիւն: Դպրոցական գործն Արեւմտեան Հայաստանում եւս աջողութեամբ կատարելուց յետոյ՝ Մաշտոցն իր աշակերտներից երկուսին վերակացու է թողնում այնտեղ նոյնն առաջ տանելու համար, իսկ ինքը շատ աշակերտներով վերադառնում Վաղարշապատ, ներկայանում է կաթողիկոսին եւ Վռամշապուհ որդի Արտաշէս թագաւորին ու բոլոր բանակին:

Այնուհետեւ էլ Մաշտոցը հանգիստ չի մնում: Նա գնում է Աղուանք, ուր

նոյն լուսաւորական գործը կատարում է տեղի թագաւորի եւ եպիսկոպոսի օգնութեամբ: Ժողովւում են մանուկների բազմութիւն, զանազան յարմարաւոր տեղերում դպրոցներ են կարգում եւ սովորեցնում Մաշտոցի յօրինած աղուաներէն այփաբետով: Նրանց Երեմիա եպիսկոպոսն էլ թարգմանում է Աստուածաշունչը: Այստեղ էլ յետոյ իր աշակերտներից մի քանիսին վերակացու կարգելով՝ անցնում է Գարդմանայ ձորը, այստեղից էլ Տաշիրք, Վրաստան: Ամէն տեղ էլ նոյն գործը կատարելով՝ վերադառնում է Վաղարշապատ՝ իր «սովորական տեղը»:

Այստեղ այժմ առանձին ուշադրութիւն են դարձնում Հայ գրականութիւնը ճոխացնելու: «Եւ այնպէս զամենայն ժամանակս իւրեանց՝ յընթերցուածս գրոց ծախէին հարքն զտիւ եւ զգիշեր, եւ նովիմբ ծաղկեալք եւ շահաւետեալք՝ օրինակ բարեաց ուսումնասէր աշակերտակային լինէին»:

Մաշտոցն Արեւմտեան Հայաստանում «բազում շնորհագիր մատեանս զհարցն եկեղեցւոյ ստացեալ՝ ծովացուցանէր զվարդապետութեանն խորութիւն, եւ լցեալ զեղոյր ամենայն բարութեամբ»: Այժմ էլ նա սկսում է «ճառս յաճախագոյնս, դիւրապատումս, շնորհագիրս, բազմադիմիս... յօրինել»: Այդ ճառերը մնում են «Յաճախապատում ճառք» անունով: Բացի դրանից՝ Մաշտոցը գրել եւ բոլոր գաւառներն ուղարկել է շատ խրատական եւ սովորեցնող թղթեր, «բազում թուղթս խրատադիրս եւ զգացուցիչս ընդ ամենայն գաւառս առաքէր»:

«Եւ այսպէս Հայաստանի, Վրաստանի եւ Աղուանքի բոլոր կողմերում, իր ամբողջ կեանքի ընթացքում, ամառ ու ձմեռ, գիշեր ու ցերեկ անվեհեր եւ առանց բնաւ յապաղելու» սովորեցրեց այդ մեծ ուսուցիչը, 45 տարի շարունակ աշխատեց այդ լուսաւորական գործի համար, իսկ հայկական դպրութեան համար՝ 35 տարի: Նրա հետ աշխատում էր եւ Սահակ կաթողիկոսը:

Երկուսն էլ հասնում են խորին ծերութեան: Սահակը վախճանւում է Բագրեւանդի Բլրոցաց գիւղում 439 թ. նաւասարդ ամսի 30-ին (սեպտեմբերի 7-ին) եւ մեծ հանդէսով տարւում, թաղւում է Տարօնի Աշտիշատ գիւղում: Մինչեւ վերջերս էլ դեռ կար նրա գերեզմանը:

Մաշտոցը վախճանւում է 440 թ. մեհեկան ամսի 13-ին (փետրուարի 17-ին) Վաղարշապատում, շրջապատուած իր սիրելի աշակերտներով: Նրան էլ մեծ հանդէսով եւ ժողովրդի բազմութեամբ տանում, թաղում են Օշական գիւղում: Նրա գերեզմանը մնում է մինչեւ այժմ Օշականի եկեղեցու սեղանի տակի խորանում եւ եղել է ժողովրդի համար մի սրբատեղի՝ «Թարգմանչի գերեզման» անունով:

**3. Կուլտուրական պայքար եւ եկեղեցա-քաղաքական մաքառման գրականութիւն:** — *Ի՞նչ է այս կուլտուրական մեծ շարժման հիմքն ու պատմական նշանակութիւնը:* — Ըստ Կորիւնի՝ Մաշտոցը մտածել է սկզբում քրիստոնէական դարձի գործ կատարելու մասին. այդ է եղել նրա լուսաւորական գործունէութեան սկզբնական դրդապատճառը: Ըստինքեան այդ էլ իր ժամանակի համար մեծ առաջադիմական գործ էր: Այդ դարերում շատ նշանաւոր անձեր, եւ ոչ միայն մեր երկրում, նուիրւում էին այդ գործին, որով բարձրացւում էր ժողովուրդների զարգացման մակարդակը, այն է՝ թանձր կռապաշտութեանը փոխանակւում էր զարգացման աւելի բարձր աստիճանի կրօն:

Հայաստանում քրիստոնէութեան քարոզչութիւնն աւելի եւս կարեւորութիւն ունէր, որովհետեւ դրանով հայերը հաղորդակից էին դառնում բիզանդական եւ ասորական քրիստոնէական կուլտուրային: Բայց Մաշտոցի սկսած ու գլուխ բերած մեծ գործը լոկ քրիստոնէութիւն քարոզելու համար չի եղել. կային նաեւ ազգային-քաղաքական եւ դասակարգային պատճառներ, որոնց մասին լռում է Կորիւնը՝ ժամանակի քաղաքական-եկեղեցական դժուարին պայմանների հետեւանքով: Քրիստոնէութեան քարոզչութիւնը նաեւ պարսիկների դէմ մաքառման մի ազգային գործ էր:

Հայաստան երկրի բաժանումով երկու հարեւան հզօր տէրութիւնների միջեւ 387 թ.՝ վերջ էր տրուել այն երկարամեայ աւերիչ պատերազմներին, որոնք 3-րդ եւ 4-րդ դարերում, Սասանեան հարստութեան սկզբից ի վեր, տեղի էին ունենում Հայաստանում մերթ հռոմայեցիների ու պարսիկների միջեւ, մերթ հայերի ու պարսիկների: Երկիրը խաղաղել ու կազդուրուել էր տնտեսապէս, բայց միաժամանակ եւ ազգային ինքնուրոյնութեան, անկախութեան ու միութեան տեսակէտով, թուլացել եւ նոյնիսկ անկման դուռը հասել: Շուտով արեւմտեան կողմում հռոմայեցիները վերացրին հայկական ինքնուրոյն իշխանութիւնը: Արեւելեան Հայաստանում դեռ կար Արշակունի թագաւորութիւնը, բայց չափազանց մեծ կախման մէջ Պարսկաստանի Սասանեան արքաներից: Այս դրութեամբ այլեւս անհնարին էր քաղաքական անկախութեան համար պատերազմ մղել հարեւան մեծ պետութիւնների դէմ. Մընում էր միայն կուլտուրական պայքարը ներքին անկախութեան համար, մանաւանդ որ չէր վերջացել Իրանի ու Հռոմի իդէոլոգիական պայքարը Հայաստանում: Պէտք էր այդ դրութեան առաջն առնել: Իսկ առաջն առնելու միջոցն էր քրիստոնէութիւնը եւ եկեղեցին հայերէն լեզուով: Ահա ազգային-քաղաքական, միաժամանակ եւ դասակարգային հիմքն այդ մեծ կուլտուրական գործի: Դա հետեւանք էր Հայաստանի բաժանման երկու հարեւան մեծ տէրութիւնների միջեւ եւ նրանց պայքարի՝ Հայաստանի վրայ ազդել իդէոլոգիապէս:

Հայաստանում օտար լեզուներով բացուած դպրոցներում, արդարեւ, շատ բան չէին կարող սովորել, բայց կային այնպիսի երիտասարդներ, որոնք ուսում առնելու համար դիմում էին Հայաստանից դուրս, բուն ասորական եւ յունական դպրոցները: Այս մասին շատ որոշ վկայութիւն ունենք Ղազար Փարպեցուց, որ գրում է, թէ Մաշտոցը «յարաժամ տրտմէր... տեսանելով զմեծ ջանն եւ զաւուելապէս ծախս մանկանցն Հայաստան աշխարհիս, որք բազում թոշակօք եւ հեռագնաց ճանապարհօք եւ բազմաժամանակեայ դեգերմամբ մաշէին զաւուրս իւրեանց ի դպրոցս ասորի դպրութեան»: Նոյնը լինում էր եւ Արեւմտեան Հայաստանում, որտեղից գնում էին յունական դպրոցները:

Քրիստոնէութիւնը մօտ հարիւր տարուայ ընթացքում այսպէս կամ այնպէս ազդել էր հայերի վրայ, եւ առաջացել էր մի նոր հասարակական խաւ, նոր սերնդի մարդիկ, որոնք Հայաստանում կամ դրսում ասորական կամ յունական ուսում էին առել, հասել ազգային ինքնագիտակցութեան եւ ըմբռնում էին ժողովրդի ու հայոց եկեղեցու համար հայերէն գրականութեան կարիքը: Պատմութիւնը մեզ թողել է այդպիսի մարդկանց իբրեւ ներ-

կայացուցիչ՝ երեքի անունը միայն, մէկը Մաշտոցը, որ, ինչպէս երեւում է, թէպէտեւ չունէր եկեղեցական աստիճան, բայց իբրեւ ե՛ւ «աւետարանիչ», ե՛ւ կրօնաւոր, պատկանում էր եկեղեցական դասին. միւսը՝ Սահակ կաթողիկոսը, իր հօր ու պապերի ժառանգական աթոռակալը. երրորդը՝ Արշակունի Վռամշապուհ թագաւորը: Նրանք երեքը միասին, ինչպէս Մաշտոցի կենսագրութիւնից տեսանք, պարագլուխ են հանդիսանում այդ մտաւոր շարժման, հոգում են հայերէն դպրութեան համար:

Ի՞նչն էր դասակարգային շահերի տեսակէտով կապում նրանց միմեանց հետ, երկու իշխող դասերի այդ ներկայացուցիչներին, որոնք նախորդ դարում երբեմն իրար դէմ էին ելնում:

Սահակը, Մեծն Ներսէսի որդին, յունական լաւ կրթութիւն ստացած եւ հռոմէական կողմնորոշման մի մարդ, մեծ կալուածների տէր, բնականաբար հոգում էր իր աթոռի հաստատութեան, հայ եկեղեցու եւ իր տնտեսական շահերի մասին: Նա գիտէր, որ քրիստոնէութիւնը վտանգուած էր Արեւելեան Հայաստանում: Սասանեան թագաւորները կենդանացնելով զրադաշտական կրօնը՝ դարձրել էին այն իրենց իշխանութեան հիմնաքարը, աշխատում էին ընդհանուր պետական կրօն դարձնել այն: Հռոմէական ազդեցութիւնը թուլացնելու համար նրանք Շապուհ Բ. թագաւորի (310—379) օրերից սկսած, 340 թուականից արդէն ընդհանուր հալածանք էին հանել քրիստոնէութեան դէմ, եւ այդ վտանգը շարունակւում էր մնալ եւ հետագայում: Նրանք նոյնիսկ փորձեր էին արել եւ անում էին իրենց կրօնը մտցնելու եւ հայ ժողովրդի մէջ: Երկիւղը մեծ էր ուրեմն, որ Արեւելեան Հայաստանի հայ ազնուականութիւնն ու շինականութիւնը կարող էին ետ կանգնել քրիստոնէութիւնից, որից բան չէին հասկանում: Թէպէտ Վռամ Դ. եւ Յազկերտ Ա. թագաւորների օրով հայ եկեղեցին համեմատաբար խաղաղութեան մէջ էր, բայց նրա դէմ կռիւը չէր դադարել, այլ միայն ուրիշ կերպարանք էր ստացել:

Արեւելեան Հայաստանն ունէր Արշակունի թագաւորներ, բայց գտնըւում էր պարսից գերիշխանութեան տակ: Պարսկաստանում իբրեւ քրիստոնէական պաշտօնական լեզու ընդունուած էր ասորերէնը: Արքայից արքաները, հռոմէական ազդեցութիւնը թուլացնելու նպատակով, Հայաստանում ուժ էին տալիս ասորերէն լեզուին եւ առաջ էին քաշում ասորի եկեղեցականներին: Նրանք հովանաւորում էին ասորական եկեղեցուն: Արեւելեան Հայաստանում եկեղեցու լեզուն ասորերէն էր: Սելեւկիայի ասորական կաթողիկոսը՝ արքայից արքայի թեւարկութեամբ՝ ձգտում էր գլուխ դառնալու բոլոր արեւելեան քրիստոնէութեան. Նա իր տիրողոսի մէջ մտցրել էր արդէն նաեւ Հայաստան, Վրաստան եւ Աղուանք: Հայաստանի Սահակ կաթողիկոսը չէր կարող այս ամէնի նկատմամբ անտարբեր մնալ:

Այսպէս ուրեմն, կար մի ուժեղ պայքար մի կողմից՝ հայ եկեղեցու եւ պարսիկ իշխանութեան ու մոգութեան միջեւ, միւս կողմից՝ հայոց եւ ասորոց եկեղեցիների: Հէնց այս պայքարի մէջ աջողութիւն ունենալու համար՝ պէտք էր Հայաստանում ծաւալել քրիստոնէութիւնը եւ հաստատ հիմքերի վրայ դնել այն՝ ընդդէմ զրադաշտական կրօնի նուաճողական յարձակումների. հակառակ դէպքում Հայաստանում կ'իշխէր մոգութիւնը եւ վերջ

կը տրուէր կաթողիկոսութեանն ու եկեղեցուն։ Քրիստոնէութիւնն ուժեղացնելու ելքն այն էր, որ եկեղեցու մէջ պէտք էր մտցնել ամէնքին հասկանալի հայերէնը, իսկ դրա համար հարկաւոր էր հայերէն գիր ու քրիստոնէական դպրութիւն։ Միւս կողմից՝ պէտք էր պայքարել ասորական ոտնձգութիւնների դէմ։ Պէտք էր հայ եկեղեցուց ու դպրոցից մերժել ասորերէնը եւ ստեղծել ինքնուրոյն ազգային եկեղեցի։ Դրա համար էլ հարկաւոր էր հայկական գիր ու դպրութիւն։

Ընդհանուր դիմադրութիւն ու թիկունք ստեղծելու համար նոյնը պէտք էր առաջ բերել նաեւ Վրաստանում ու Աղուանքում, որոնց եկեղեցիները կապուած էին հայերի հետ և նոյն սպառնալիքի տակ էին։ Այս պատճառով Մաշտոցը հոգում էր նաեւ վրացական ու աղուանական դպրութեան համար։ Կար եւ մի ուրիշ տխուր հանգամանք։ Երկիրը ինչպէս քաղաքականօրէն բաժանուած էր երկու մասի, նոյնպէս եւ պաշտօնական լեզուով։ Արեւմտեան Հայաստանում, որ Հռոմէական կայսրութեան մի մասն էր դարձած, պաշտօնական լեզուն էր յունարէնը։ Հայ եկեղեցու մէջ այնտեղ ընդունուած էր յունարէնը։ Այդպիսով հայոց եկեղեցին կորցնում էր իր միութիւնը եւ թուլանում էր։ Այդ ձեռնտու չէր հայ բարձր հոգեւորականութեանը։ Պէտք էր ուրեմն մտածել նաեւ Արեւմտեան Հայաստանի մասին, ուր յոյները ձգտում էին պահելու իրենց ազդեցութիւնը եւ հայոց եկեղեցին կախման մէջ դնելու Կապադովկիայի եպիսկոպոսից։ Այդտեղ էլ յունական ազդեցութիւնը ջլատելու համար՝ պէտք էր ուժեղացնել հայերէնը հայ գրի ու դպրութեան միջոցով եւ դպրոցի ու եկեղեցու ժամասութեան մէջ մտցնելով հայերէնը։

Վերջապէս՝ քաղաքական բաժանման հետեւանքով հայ եկեղեցին արեւելքում կտրուած էր մնում յարաբերութիւնից յունական եկեղեցու հետ, առհասարակ յունական ուսումից, որին սկզբից ի վեր սիրով հետեւում էին։ Ինքը Սահակ կաթողիկոսը, նրա հայրը՝ Ներսէս կաթողիկոսը եւ շատ ուրիշները յունական ուսում էին ստացել։ Այդ կտրուածութիւնը մտահոգութիւն էր պատճառում յունասէր մարդկանց։Պէտք էր ուրեմն հայերէն թարգմանութիւնների միջոցով մտաւոր հաղորդակցութիւնը շարունակել յոյների հետ։

Վռամշապուհ թագաւորի մասին շատ տեղեկութիւններ չունենք։ Արշակունի արքայական տոհմի այդ նախավերջին ժառանգը տեսել էր երկու դրացի հզօր տէրութիւնների ձեռով Հայաստանի բաժանումը եւ այն, որ Արեւմտեան Հայաստանում այլեւս գոյութիւն չունէր առանձին հայկական թագաւոր։ Նա իր եղբօրը, Խոսրով թագաւորին վիճակուած բախտով գիտէր, որ Արեւելեան Հայաստանի Արշակունի գահն էլ անուանական եւ շատ խախուտ էր։ Չկար այլեւս հռոմէական բարեկամութիւնը, որի վրայ յենուած՝ ժամանակով, 3-րդ եւ 4-րդ դարերում պաշտպանւում էին պարսիկներից եւ Հայաստանի քաղաքական անկախութեան համար պատերազմ էին տալիս նրանց դէմ։ Այլեւս հնարաւոր չէր ռազմական–քաղաքական կռիւը։ Ահա այն մեծ փոփոխութիւնը, որ ստիպում էր փոխել քաղաքականութիւնը։ Մնում էր ուրեմն միայն ներքին յենարանը, ներքին ուժերը զօրացնել եւ նրանց վրայ յենուելով՝ կուլտուրական պայքար մղել պարսկական ձգտումների դէմ։ Այդ ներքին յենարանն էր ամենից առաջ հայոց եկեղեցին, որի

միջոցով մի ընդհանուր միութեան իդէոլոգիական կապ կարող էին ունենալ բաժան-բաժան մանր փէոդալները: Ուստի եւ նա ամէն կերպ նպաստում է Մաշտոցի կատարած գործին: Նրա միջոցով են ձեռք բերում «Դանիէլեան նշանագրերը»: Նա է փոքրահասակ մանուկներ ժողովել տալիս այդ նշանագրերով սովորեցնելու, եւ երբ նրանցից շատերը տեղեկանում են, հրամայում են ամէն տեղ այդ նշանագրերով կրթել: Բայց երբ դրանք հայերէնի համար անբաւարար են դուրս գալիս, դարձեալ նա է հրամայում Մաշտոցին, որ մի խումբ մանուկներ առնի գնայ ասորոց կողմերը: Նա միւսներից պակաս չի ուրախանում, երբ Մաշտոցը աջողութեամբ վերադառնում է: Եւ վերջապէս՝ Մաշտոցն իր ուսուցչական գործունէութիւնը վերսկսելու համար՝ դարձեալ նրանից է հրաման առնում:

Մի անգամ որ թագաւորի հրամանով էր լինում ամէն ինչ, բնականաբար նա էլ հայթայթում էր այդ գործի համար անհրաժեշտ նիւթական միջոցները, որ փոքր չէին կարող լինել: Կորիւն այդ մասին բան չի գրում: Բայց նա պատմում է, որ Աղուանքում զանազան կողմերից ժողոված մանուկներին պահելու ծախքը թագաւորն է հոգում. տէրութեան հաշուով են պահում եւ Արեւմտեան Հայաստանում ուսման համար յարմարաւոր տեղերում ժողոված մանուկներին: Անշուշտ նոյնը եղել է եւ Արեւելեան Հայաստանում. արքունի ծախքով են կատարուած Մաշտոցի բազմաթիւ ուղեւորութիւնները աշակերտների մեծ խմբերով, եւ արքունի ծախքով են պահուած Հայաստանի զանազան կողմերում բացուած դպրոցները: Կարող էր եւ կաթողիկոսարանը մասնակից լինել այդ ծախքերին, որովհետեւ նրա եկամուտներն էլ փոքր չէին: Նոյնը պէտք է ընդունել նաեւ տեղական իշխանների համար, որոնց մի քանիսին անունները տալիս է Կորիւնը: Եւ այն ժամանակաշրջանում դժուար չէր ընդհանրապէս մեծ ծախքեր անել քաղաքական տեսակէտով մեծ անհրաժեշտութիւն դարձած այդ կուլտուրական գործի համար: Երկրի տնտեսական վիճակն այդ թոյլ էր տալիս:

Այսպէս ուրեմն, ե՛ւ հոգեւոր, ե՛ւ աշխարհիկ իշխանութիւնները միասին հոգում են հայերէն դպրութեան համար՝ իւրաքանչիւրն իր շահերի տեսակէտից: Եւ նրանք իրաւունք ունէին: Շուտով պարսկական քաղաքականութիւնը բռնանում է: Ինչքան էլ Սահակ կաթողիկոսը ջանում է Հայաստանի թագաւորական գահը պաշտպանել, այդ չի աջողւում նրան: Պարսկական ինտրիգների միջոցով վերջին Արշակունի թագաւորը, Վռամշապուհի որդի Արտաշէսը, ընկնում է գահից: Միւս կողմից զօրանում է եւ ասորական ազդեցութիւնը, եւ Սահակ կաթողիկոսն ինքն էլ իր կեանքի վերջին տասնամեակում զրկւում է կաթողիկոսական իշխանութիւնից, եւ նրա աթոռը գրաւում են ասորի եպիսկոպոսներ: Միաժամանակ եւ մոգութիւնը 5-րդ դարի կէսից սկսած՝ փորձում է տիրանալ եւ Հայաստանում:

Մաշտոցի ու Սահակի գործունէութեամբ, սակայն, մշակուած էր սեփական ազգային գաղափարախօսութիւն, կար արդէն ինքնագիտակցութեան եկած եւ լաւ պատրաստուած ու հոգեպէս զինուած մի սերունդ, որ չէր կարող հեշտութեամբ զինաթափ լինել: Սկսւում է մի զօրեղ կուլտուրական պայքար, մէկ-մէկ նաեւ ռազմական կռիւ (Վարդանանց պատերազմը եւ Վահանանց զինեալ մաքառումը) Սահակի ու Մաշտոցի աշակերտների եւ սը-

րանց աշակերտների ընդդէմ պարսկական եւ ասորական, հետագայում նաեւ յունական ուղղութիւնների։ Նրանք կարողանում են պաշտպանել քրիստոնէութիւնը մոգութիւնից եւ Հայոց եկեղեցին՝ ասորիներից ու յոյներից։Քաղաքական անկախութիւնը կորցնելուց քիչ առաջ սկսուած այս պայքարի գործը հետագայում աւելի եւս ընդարձակւում է, եւ կարողանում են դրանով պաշտպանել հայկական առանձնայատկութիւնները։ Կազմւում է ազգային ինքնագլուխ եկեղեցի, որ դարեր շարունակ կատարում է իր ժամանակի համար լուսաւորական դեր իր կուլտուրական գործօններով ու հիմնարկներով։

Այսպէս, այս հանգամանքներով ահա, մեր գրականութիւնը 5-րդ դարից ի վեր թեւակոխում է իր զարգացման երկրորդ էտապը։ Ստեղծւում է եկեղեցա-քաղաքական գրաւոր դպրութիւն, որ իր ձեւով ու բովանդակութեամբ խիստ տարբեր է Արտաշէս Ա.ի եւ Մեծն Տիգրանի օրով սկսուած աւանդական բանահիւսութիւնից, բայց իր էական առաջնորդող գաղափարով, ընդհանուր միտումով, հանդիսանում է իբրեւ շարունակութիւն 3-րդ եւ 4-րդ դարերի պատմական իրականութեամբ ծագած «Պարսից պատերազմ» նոր աւանդական վէպի։ Եթէ այս վերջինիս գլխաւոր մոտիւն էր զէնքով մաքառում, կռիւ պարսիկների դէմ՝ հայկական ազգային անկախութեան համար, այս նոր գրականութիւնը, գրաւոր դպրութիւնն, ինքը մի զէնք էր կուլտուրական պայքարի եւ մաքառման համար ընդդէմ պարսիկների, ապա յոյների եւ արաբների։ Նոյն նպատակին ծառայում էին իսկապէս նաեւ թէ՛ քրիստոնէական-կրօնական ոգու եւ գաղափարախօսութեան ծաւալումը կեանքի մէջ եւ թէ՛ մաքուր կրօնական գրուածքները, քանի որ սըրանք էլ վերջին հաշուով մաքառելու միջոցներ էին ընդդէմ հեթանոսութեան — պարսիկների եւ արաբների, իսկ դաւանաբանական երկերն՝ ընդդէմ յոյների։

4. **Վանքեր ու դպրոցներ**։ — Այս մաքառման գրականութեան ակութներն էին վանքերը, վանական-եկեղեցական դպրոցները։ Մաշտոցը, բացի քրիստոնէութիւն եւ հայկական դպրութիւն տարածելուց՝ շատ տեղերում հաստատում է վանքեր, ինչպէս Գողթնում, Սիւնիքում։ «Եւ դարձեալ բազում եւ անհամար զունդս վանականաց եւ ի շէնս եւ յանշէնս ... բնակեցուցեալ հաստատէր», — գրում է Կորիւնը։ Այդ վանքերն առաջին հերթին, հարկաւ, արտայայտութիւն էին կրօնաւորական բարեպաշտական կեանքի, որին նուիրւում էին 3—5-րդ դարերում նոյնիսկ շատ ուժեղ մտքի ու կամքի տէր մարդիկ, ինչպէս էր ինքը Մաշտոցը, Բարսեղ Մեծը կամ Բարսեղ Կեսարացին (Մեծ Կապադովկացիներից մէկը),որ դառնում է Կեսարիայի մետրոպոլիտ եւ 4-րդ դարում կանոնաւորում է այդ կրօնաւորական կեանքը։ Նա մենակեցութիւնից գերադասում է վանականութիւնը,կրօնաւորների խմբական կեանքը եղբայրանոցներում։Նա հաստատում է վանական կանոններ, որոնցով պարտադիր է դարձնում վանականների համար թէ՛ ֆիզիկական եւ թէ՛ մտաւոր աշխատանքը։

Նրա կանոնագրութիւնն ընդունւում է եւ Հայոց եկեղեցուց. Հայոց կաթողիկոս Մեծն Ներսէսը, Սահակ կաթողիկոսի հայրը, 4-րդ դարում Հայաստանում մտցնում է նոյն վանական կարգերը, ինչ որ տեսել էր Կապա-

դովկիայում։ Եւ որովհետեւ վանականները պիտի մտաւոր աշխատանքով եւս զբաղուէին, վանքերը դառնում են նաեւ դպրոցներ, հարկաւ, կրօնական կրթութեան համար։ Գրագիտութիւնն անհրաժեշտ էր վանականի համար, եւ քանի որ չկար հայերէն գիր ու դպրութիւն, Մեծն Ներսէսի հիմնած վանքերում սովորում էին ասորերէն եւ յունարէն։ Արդ՝ Մաշտոցի հաստատած վանքերում այդ օտար լեզուների տեղ անցնում է հայերէնը, եւ վանականները հայ դպրութեամբ, հայերէն թարգմանութիւններով էին ծանօթանում քրիստոնէական ուսմանը։ Այսպիսով՝ վանքերն ազգայնանում եւ դառնում են հայկական դպրոցներ, ուր պատրաստւում էին հայերէն լեզուով գրագէտներ ու քարոզիչներ եւ «գրիչներ», այսինքն արտագրողներ։ Միաժամանակ եւ ժամանակի գիտութիւնն ու գրականութիւնը, որ մեծ մասամբ կրօնական էր, կենտրոնանում էր վանքերում։ Այնտեղ եւ թարգմանութիւններ էին անում, ապա եւ ինքնուրոյն գրքեր հեղինակում։ Հայկական վանքերն իրենց այս դերը մերթ աւելի, մերթ պակաս չափով, երբեմն ժամանակի հետ ընթանալով, երբեմն յետադիմելով, կատարել են, կարելի է ասել, մինչեւ առ ի 19-րդ դարի վերջերը։

5. Եկեղեցա-գրական լեզու։ — Մաշտոցի ու Սահակի եւ նրանց աշակերտների ջանքերով ստեղծւում է եկեղեցական հայերէն լեզուն, որ ընդունւում է երկու կողմերի հայերից է՛ւ Արեւելքում, է՛ւ Արեւմուտքում։ Դրա հետեւանքով եւս պահւում է միութիւնը հայերի մէջ միշտ եւ ամէնուրեք։ Նոյնիսկ ուշ դարերում հռոմէական եկեղեցուն անցած հայերի հատուածները չեն իշխում դիպչել հայոց եկեղեցական լեզուին եւ լատիներէնով փոխարինել այն։ Այդ լեզուն դառնում է, ուրեմն, ազգային միութեան մի մեծ գործօն։

Բայց այդ դերը լեզուն կատարում է ո՛չ միայն եկեղեցու միջոցով։ Եկեղեցական լեզուն էր նաեւ գրական լեզու, որով գրել են թարգմանական եւ ինքնուրոյն երկերը։ Հետագայում եւս հայ դպրութիւնը զարգանում է նոյն լեզուով, եւ առաջ է գալիս համեմատաբար հարուստ հին հայկական գրականութիւնը, որ զանազան իշխանութիւնների ենթակայ, քաղաքականապէս անջատ եւ յաճախ սեփական պետութիւն չունեցող հայ ժողովրդի համար դառնում է ընդհանուր հոգեւոր կեանքի, համազգային միութիւն պահպանելու եւ նոյնիսկ դէպի ազգային անկախութիւն հրահրելու ամենամեծ պատմական գործօնը։

Այդ հին գրական լեզուն, որ սովորաբար կոչում ենք գրաբար, բնականաբար ունեցել է իր զարգացումը, իր փոփոխութիւնները դարերի ընթացքում, կամ իր պատմութիւնը. բայց հիմնականում մնացել է այն ձեւով ու կառուցուածքով, որով երեւան է եկել Մաշտոցի ու Սահակի եւ նրանց գործակից աշակերտների ձեռով Ս. Գրքի թարգմանութեան ժամանակ (1)։ Այն դարերում անպայման եղել են հայերէն լեզուի բարբառներ, բայց են-

---

(1) Այդ հին լեզուի բոլոր էական կողմերը բացատրուած են սրա հեղինակի հետեւեալ աշխատութեան մէջ՝ «Գրաբարի քերականութիւն», յօրինեց պրոֆ. դոկտ. Մ. Աբեղեան, երկրորդ տպագրութիւն, վերամշակուած, հրատ. ՀԽՍՀ Պետական Համալսարանի, Երեւան, 1936 թ.։

թադրւում է, թէ դրանք իրարուց այնքան հեռու չեն եղել, ինչպէս մեր ժամանակի հայերէնի բարբառները։ Կային, հարկաւ, տարբեր էթնիկական ծագում ունեցող ժողովուրդներ իրենց յատուկ բարբառներով, ինչպէս Մարաց կողմերինը, որոնք, ինչպէս գրում է Կորիւնը, «այլ եւ վաղն խեցբեկագոյն լեզուին դժուարամատոյց էին»։ Թարգմանութիւնները կատարուել են բնականաբար այն բարբառով, որով խօսում էին քաղաքական եւ կրօնական կենտրոնում, Վաղարշապատ մայրաքաղաքում, ուր նստում էր ե՛ւ թագաւորը, ե՛ւ կաթողիկոսը, ե՛ւ «Հայոց բանակը», ուր եւ ձեռնարկել են այդ գործին։ Այստեղ էլ առաջին մեծ դպրոցը հիմնեցին եւ շատ աշակերտներ ժողովեցին ուսում տալու, «եւ ինքեանք իսկ, — գրում է Կորիւնը, — ի կողմանց եւ ի գաւառաց Հայաստան աշխարհին յորդեալք եւ դրդեալք հասանէին ի բացեալ աղբիւրն գիտութեանն Աստուծոյ։ Քանզի յԱյրարատեան գաւառին՝ ի կայս թագաւորացն եւ քահանայապետացն, բղխեցին Հայոց շնորհք պատուիրանացն Աստուծոյ»։ Այրարատեան գաւառի ոստանիկ բարբառը, որ Արտաշատի և Վաղարշապատի ,600 տարուայ հայ քաղաքական իշխանութեան կենտրոնների բարբառն էր, անպայման վաղուց գերակշռութիւն էր ստացած եղել միւսների վրայ եւ դարձած ընդհանուր խօսակցական լեզու։ Դրանով են յօրինուած ազնուականութեան աւանդական բանահիւսութեան երկերը, որոնք փառաւորում էին այդ քաղաքներում նստող իշխաններին, եւ բնականօրէն այդ լեզուն էլ դարձել է նաեւ գրական լեզու։

Այդ անգիր բանահիւսական լեզուն մշակուած, կոկուած ու հարստացած է եղել վիպասաններից եւ ընդունակ՝ աջողութեամբ արտայայտելու ուրիշ ազգերի ոչ միայն այն գրականութիւնը, որ բանահիւսութիւնից է ծագում, այլեւ առաջին թարգմանիչների գրչի տակ ճոխանալով ու ճկուն դառնալով՝ կարողացել է նոյնպիսի աջողութեամբ ընդունել եկեղեցական գրականութիւնը։ Դրան շատ նպաստել է այն, որ մեր այդ հին լեզուն իր խօսքի կազմութեամբ — բառերի շարադասութեամբ եւ նախդիրների բազմազան գործածութեամբ — շատ մօտիկ է յունարէնին եւ հնարաւորութիւն ունի այս լեզուով գրուածները հեշտութեամբ շուռ տալու հայերէնի, գրեթէ միշտ բառերի դիմաց դնելով համապատասխան բառերը, ինչպէս եթէ այժմ մենք ռուսերէնից գրաբար թարգմանենք, կարող ենք ընդհանրապէս ազատ կերպով այդպէս վարուել։ Այդպէս յունարէնից գրեթէ բառացի թարգմանուած է Սուրբ Գիրքը։

Հին գրական լեզուի հիմք կազմող ոստանիկ բարբառի սերունդն է, ամենայն հաւանականութեամբ, արդի Արարատեան հարուստ բարբառը — հին Երեւանի, Քանաքեռ, Վաղարշապատ, Օշական, Փարպի, Աշտարակ, Կողբ եւ այլ գիւղերի բարբառը, որ եւ հիմք է դարձել մեր նոր գրական լեզուի համար եւ իր հնչիւններով ու բառերի անաղարտ պահպանումով շատ աւելի մօտ է գրաբարին, քան որեւէ ուրիշ բարբառ, ինչպէս, օրինակ, ունի գրաբարի պէս՝ հարսանիք, եւ ոչ հարսնիք, խարսնիս, հրսանիք, հարսինք եւ այլն, ինչպէս ուրիշ բարբառների մէջ։ Զհիմնաւորուած կամ շատ թոյլ հիմնաւորուած մի կարծիք է այն, թէ իբր Տարօնի բարբառն է դարձել գրական լեզու, թէ Մաշտոցը, որ Տարօնի մի գիւղից էր, իր գիւղի բարբառն է դարձրել եկեղեցա-գրական լեզու. այդ անընդունելի է։ Ինչքան էլ Մաշտոցն ազդեցիկ լինէր, նա չէր կարող այդ անել։

# ԹԱՐԳՄԱՆԱԿԱՆ ԳՐԱԿԱՆՈՒԹԻՒՆ

1․ Առաջին թարգմանիչներ եւ թարգմանութիւններ։— *Սահակը, Մաշտոցը եւ նրանց աւագ աշակերտները եղել են եւ առաջին թարգմանիչները։ Այդ աշակերտներն են՝ Յովսէփ Վայոց Ձորեցի կաթողիկոսը կամ կաթողիկոսական տեղապահը,— այս երկու անունով էլ կոչում են նրան,— Ղեւոնդ, Վարդանանց պատերազմի ժամանակ մեծ դեր խաղացող Ղեւոնդ երէցը, որ նախորդի եւ ուրիշների հետ նահատակուել է Պարսկաստանում, այսինքն՝ սպանուել է քրիստոնէութեան համար. ապա՝ Յովհան Եկեղեցացի, Յովսէփ Պաղնացի, Եզնիկ Կողբացի, Կորիւն, Մուշէ, Աբրահամ Զէնակացի կամ Աբրահամ Խոստովանող եւ ուրիշներ։*

*Թէ ի՛նչ թարգմանութիւններ են արել առաջին թարգմանիչները եւ թէ ո՛ր թարգմանիչն ինչ է թարգմանել, այդ մասին Կորիւնը սակաւ տեղեկութիւններ է տալիս։ Բայց եւ այնպէս գիտենք, որ այդ շրջանում թարգմանական մեծ գործ է կատարուած։ Այստեղ կը դնենք այն, որ յիշատակում է Կորիւնը։*

*Առաջին գործը բնականաբար էր Աստուածաշնչի թարգմանութիւնը։ Ինչպէս վերեւում ասուեց, Մաշտոցը Սամոսատ քաղաքում արդէն իր երկու աշակերտների հետ ձեռնարկել է դրան՝ սկսելով Սողոմոնի Առակներից։ Թէ նա այնտեղ Աստուածաշնչի ուրիշ գրքեր էլ թարգմանել է թէ ոչ, այդ մասին չի հաղորդում Կորիւնը։ Երբ նա վերադառնում է, այն ժամանակ «մեր երանելի հայրերը», այսինքն Մաշտոցն ու Սահակը, — ասում է Կորիւնը, — ձեռնարկում են թարգմանութեան աշխատանքը, եւ այս «երկու հաւասարեալների ձեռով հայաբարբառ, հայերէնախօս են դառնում» Մովսէսի գրքերը, մարգարէութիւնները, Պօղոսի եւ բոլոր առաքեալների թղթերը, Աւետարանը։ Այս անունները յիշելուց յետոյ՝ Մաշտոցի վարքագիրն աւելացնում է, թէ թարգմանութեան միջոցով երկիրն «առժամայն վաղվաղակի ամենայն իրացն եղելոց խելամուտ լինէր, ոչ միայն ժամանակաւ պաշտեցելոցն, այլ եւ յառաջագոյն յաւիտենիցն, եւ ապա եկելոցն, սկզբանն եւ կատարածի, եւ* ամենայն աստուածատուր աւանդութեանցն», — *շատ շուտով խելոյն իմացան բոլոր եղած բաները, ոչ միայն ժամանակով կատարուածները, այլեւ առաջագոյն յաւիտենականութիւնը եւ յետոյ եկածները, սկիզբը եւ վերջը, եւ բոլոր աստուածային աւանդութիւնները։ Ուրեմն ամբողջ Աստուածաշունչը, նոյնիսկ «Յայտնութիւն Յովհաննու» գիրքը, քանի որ «կատարածը», վերջը, վերաբերում է «աշխարհի կատարածին», վերջին, որի մասին խօսւում է այդ գրքի մէջ։Թէ ո՛ր լեզուից են թարգմանել Աստուածաշունչը, այդ մասին չի յիշում Կորիւնը։*

*Աստուածաշնչի այս թարգմանութեան հետ զուգընթաց թարգմանել են եկեղեցու մէջ ընդունուած աղօթքները։ Դրանք անհրաժեշտ էին գործնական պէտքի, ժամերգութեան համար։ Դրանք, բացի աղօթքներից ու սաղմոսնե-*

րից, էին նաեւ որոշ Թուով նոր երգեր, որոնք ընդունուած էին ընդհանուր եկեղեցու մէջ: Դրանց մի մասը հայերէնի նշանագրերից առաջ էլ թերեւս ասորերէնից կամ յունարէնից թարգմանուած են եղել բերանացի, քանի որ ժամերգութիւնը բերանացի էր կատարւում: Դրանց վրայ աշխատել է Սահակը. «Երանելոյն Սահակայ զեկեղեցական գրոց գումարութիւնն կանխաւ ի յունական բարբառոյն ի հայերէն դարձուցեալ, եւ բազում եւս զհայրապետաց սրբոց զճշմարիտ զիմաստութիւնն» — երանելի Սահակը, — գրում է Կորիւնը, — առաջուց յունական լեզուից հայերէն էր դարձրել եկեղեցական գրքերի ամբողջութիւնը, եւ շատ էլ սուրբ հայրապետների ճշմարիտ իմաստութիւնը: «Եկեղեցական գրքերը», դրանք, ինչպէս ընդունում են, եկեղեցու ժամերգութեան եւ ծիսակատարութիւնների ժամանակ գործածուած գրքերն են — ժամագիրք, պատարագամատոյց, տօնական, որոնց հիմնական մասերը հին են: Իսկ «սուրբ հայրապետների ճշմարիտ իմաստութիւն» ասելով հասկանալի են աստուածաբանական-դաւանաբանական գրուածքները:

Աստուածաշունչի եւ եկեղեցական գրքերի թարգմանութիւններն անհրաժեշտ էին: Աստուածաշնչի վրայ ուսում էին տալիս, խսկապէս աստուածաշունչ էին սովորեցնում: Դա և՛ ընթերցանութեան, և՛ կրօնի գիրքն էր:

Թարգմանութեան գործով, ինչպէս երեւում է, պարապել է աւելի Սահակ կաթողիկոսը, որ մանկութիւնից լաւ կրթութիւն էր ստացել յոյների մէջ, քաջ հելլենագէտ էր: Նա էլ մի ժամանակ անձնատուր էր եղել ճգնաւորական կեանքի, և բազմաթիւ աշակերտների հետ շրջում էր քարոզելու: Կաթողիկոս դառնալով՝ բնականաբար նուիրւում է եկեղեցու գործերին: Մաշտոցը շրջում էր գաւառները, իսկ կաթողիկոսն իր պաշտօնի պատճառով մընում էր աւելի Վաղարշապատում, ուստի եւ աւելի յարմարութիւն ունէր գրաւոր աշխատանքով պարապելու: Կորիւնը պատմում է, թէ երբ Մաշտոցը երկրորդ անգամ Վրաստանին այցելելուց յետոյ՝ վերադառնում է Վաղարշապատ՝ այն ժամանակ «երկու երանելիներն էլ ուշադրութիւն դարձրին իրենց ազգի դպրութիւնն աւելի յարգելու եւ զիւրացնելու», եւ անմիջապէս աւելացնում է, թէ «Մեծն Սահակը սկսեց թարգմանել ու գրել ըստ իր առաջուայ սովորութեան»: Ապա թարգմանութեան համար հարկ է լինում նոյնիսկ յատուկ թարգմանիչներ ուղարկել ժամանակի եկեղեցական-գրական կենտրոնները: Նրանք իրենց աշակերտներից երկուսին, Յովսէփին եւ Եզնիկին, որ Այրարատեան գաւառի Կողբ գիւղից էր, ուղարկում են Եդեսիա, որպէսզի ասորական սուրբ հայրերի աւանդութիւնները հայերէն թարգմանեն: Այդ գործը կատարելուց յետոյ՝ նրանք թարգմանութիւններն ուղարկում են Սահակին ու Մաշտոցին եւ իրենք գնում են Կոստանդնուպոլիս, «ուր եւ ուսանելով եւ հմտանալով՝ կարգւում են հելլենական լեզուից թարգմանիչներ»: Ապա այնտեղ գնում են եւ Ղեւոնդէսն ու Կորիւնը: Սա Մաշտոցի վարքագիրն է:

Այդ երիտասարդները Եդեսիայում ու Կոստանդնուպոլսում ծանօթանում են եկեղեցական գրականութեանը եւ մտաւոր հոսանքներին այն ժամանակ, երբ բորբոքուած էր դաւանաբանական մեծ վէճը. շատ բան թարգմանում են եւ վերադարձին հետները բերում են ձեռագրեր նոյն թարգմանական գործը Հայաստանում շարունակելու համար: «Այնտեղ միասին հոգեւոր

պիտոյքի խնդիրը վերջացնելուց յետոյ», — գրում է Կորիւնը,— վերադառնում են՝ բերելով իրենց հետ Ս. Գրքի «հաստատուն օրինակներ եւ շատ շընորհագիր հայրերի աւանդութիւններ» եւ Նիկիայի ու Եփեսոսի ժողովների կանոնները: Ըստ այսմ նրանք վերադառնում են Եփեսոսի ժողովից, ուրեմն 431 թուից յետոյ: Մաշտոցն ինքն էլ Արեւմուտքում, յունական կողմերում եղած ժամանակ «բազում շնորհագիր մատեանս զհարցն եկեղեցւոյ ստացեալ», անշուշտ յունական:

Այնուհետեւ, ասում է Կորիւնը, Սահակը «հանդերձ Եզնակաւ՝ զյառաջագոյն, զյանկարծագիւտ, զփութանակի զթարգմանութիւնս հաստատէր ճշմարիտ օրինակօք բերելովք, եւ շատ եւս մեկնութիւն գրոց թարգմանէին», — առաջուայ յանկարծագիւտ (պատահաբար գտած) փութանակի թարգմանութիւնները Եզնակի հետ միասին հաստատեց բերուած ստոյգ օրինակներով, եւ շատ էլ Ս. Գրքի մեկնութիւն թարգմանեցին: Կը նշանակի՝ Աստուածաշնչի թարգմանութիւնը սկզբում կատարուած է եղել շտապ կերպով, պատահաբար գտած օրինակից, եւ յետոյ այդ առաջուայ թարգմանութիւնը յունարէնի ստոյգ օրինակների հետ համեմատելով՝ ուղղել եւ հաստատել են: Թէ ո՛ր լեզուից է եղել առաջուայ թարգմանութիւնը, այդ մասին այստեղ էլ չի յիշում Կորիւնը: Ընդունում են, թէ դա թարգմանուած է եղել ասորերէնից: Ս. Գրքի հայերէն ձեռագիրների ուսումնասիրութիւնից էլ երեւում է, որ առաջին թարգմանութիւնն իսկապէս կատարուել է ասորերէնից: Մ. Խորենացին էլ ասում է, թէ Սահակն այդ թարգմանել է ասորերէնից «յոչ լինելոյ յունի» (Գ. 54):

2. Ս. Գրքի ազդեցութիւնը:— Այն, ինչ որ օտար լեզուներով հնարաւոր չէր անել, շատ հեշտութեամբ գլուխ է գալիս հասկանալի հայերէն լեզուով եւ Մաշտոցի ու Սահակի պատրաստած բազմաթիւ աշակերտների ձեռով, որոնց ուղարկել էին Հայաստանի զանազան կողմերը ուսուցանելու հայերէն գրել-կարդալ, իսկապէս Ս. Գիրք սովորեցնելու հայերէն լեզուով: Թարգմանութեան շնորհիւ մարդիկ արագ ծանօթանում էին այդ գրքի բազմազան բովանդակութեանը, որի նմանը չկար հայ աւանդական բանահիւսութեան մէջ: «Երկիր որ համբաւուցն անգամ օտար էր կողմանցն այնոցիկ, յորում ամենայն աստուածագործ սքանչելագործութիւնքն գործեցան, առժամայն վաղվաղակի ամենայն իրացն եղելոց խելամուտ լինէր», — մի երկիր, որ անունն անգամ չէր լսել այն կողմերի, ուր բոլոր աստուածային ըսքանչելի գործերը կատարուեցին, շատ շուտով, իսկոյն իմացաւ բոլոր եղած բաները, ոչ միայն ժամանակով կատարուածները, այլեւ աշխարհարարումից առաջ եղածը, դրանից յետոյ եղած բաները, աշխարհի սկիզբն ու վերջն ըստ Աստուածաշնչի:

Մի երեսուն-քառասուն տարուայ ընթացքում թարգմանական գրականութեան միջոցով պատրաստւում են սերունդներ, որոնք ունէին քրիստոնէութեան մասին գոնէ տարրական հասկացողութիւն եւ սերտ կապուած էին Ս. Գրքին եւ այնպէս տոգորուած նրանով, որ նրանից բաժանուելն այլեւս անհնարին պիտի լինէր: Սրանով արդէն մեծ յեղաշրջում էր մտնում հայ կեանքի եւ մտածութեան մէջ: Մարդիկ կապւում էին մի նոր աշխարհայեցութեան եւ աւանդութեան հետ, որ օտար էր, բայց բազմաթիւ ոգեւորուած

անձերի բերանով մի անգամից Հայաստանի բոլոր կողմերում քարոզուելով՝ սկսում էր թափանցել նաեւ ժողովրդի մէջ: Կռապաշտութիւնը վերջապէս սկսում էր տեղի տալ քրիստոնէութեան առաջ, գոնէ որոշ հասարակական խաւերի մէջ: Թողնում էին, ուրեմն, հին հայրենական հաւատալիքներն ու նրանց հետ կապուած աւանդութիւնները, հետեւաբար եւ հին բանաստեղծութիւնը, եւ նրանց տեղ ընդունում էին նոր հաւատքն իր աւանդութիւններով, իր կարգերով, սովորոյթներով ու գրականութեամբ: Դրա համար կենդանի օրինակ էին դառնում եւ բազմաթիւ վանականների խմբերը, որոնք իրենց մենակեցութեամբ կտրւում էին աշխարհական կեանքից ու աշխարհից, ուրեմն եւ հին հայրենականից. իսկ այդ նշանակում էր, Կորիւնի խօսքով ասած, «Գերել զամենեսեան ի հայրենեացն աւանդելոց», «ի բաց այնչափ անջատել ի հայրենեաց իւրեանց եւ անյիշատակ ցուցանել, մինչեւ ասել իսկ թէ՝ մոռացայ զժողովուրդ իմ եւ զտուն հօր իմոյ»: Իրական կեանքն, ուրեմըն, քրիստոնէական կրօնով տոգորուած մարդկանց համար մի տեսակ շարունակութիւն էր դառնում Ս. Գրքի պատմութեան եւ ոչ ազգային անցեալի:

Դրսից եկած օտարը, հարկաւ, այնպէս շուտ ամէն տեղ եւ ամէնքին մոռացնել չէր կարող տալ հայրենի աւանդութիւնները, որոնց մի մասը մինչեւ վերջերս էլ դեռ մնում էր իբրեւ ժողովրդական հաւատք՝ սնահաւատք: Բացի այդ՝ ոչ միայն ժողովրդի, այլեւ նոյնիսկ շատ վանականների համար, հարկաւ, դեռ ըմբռնելի չէին քրիստոնէական սկզբունքները: Բայց եւ այնպէս՝ Ս. Գրքի, առանձնապէս Հին Կտակարանի ազդեցութիւնը, ինչպէս երեւում է մեր մատենագիրներից, չեշտուած է մեր հին սովորութիւնների ու բարքերի մէջ սկսած 5-րդ դարից: Սաղմոսներն ու մարգարէական օրհնութիւնները հետզհետէ անցնում են հին բնիկ երգերի տեղ. նախարարները 5րդ դարում սաղմոսներ են երգում: Նոյնիսկ լեռնական կիսավայրենի «գազանաբարոյ, արիւնարբու» սասունցիների համար հաղորդում են 10-րդ դարում, թէ «գիտէն զսաղմոսսն զհին թարգմանեալսն վարդապետացն Հայոց, զոր հանապազ ի բերան ունին» (Թովմա Արծրունի): Աստուածաշնչի առաջին թարգմանութիւնն, ուրեմն, հէնց սկզբից մուտք է գործել նոյնիսկ այդ լեռնական ժողովրդի մէջ: Եւ այս հասկանալի է. քրիստոնէութեան քարոզիչները, ինչպէս եւ ինքը Մաշտոցը, յատուկ ուշադրութիւն էին դարձնում այնպիսի լեռնային խուլ կողմերի վրայ, ուր քրիստոնէութիւնը մուտք չէր գործում. «անկարգ եւ անդարման», «գազանամիտ, վայրենագոյն, ճիւաղաբարոյ» կողմերում էր քարոզում Մաշտոցը:

Հին Կտակարանի երգերից աւելի նրա պարզ զրոյցներն ու պատմուածքները ոչ միայն հասկանալի, այլեւ շատ հաճելի պիտի լինէին դեռ մանկական հայ մտքերին: Նրանք դիւրութեամբ իւրացնելով այն՝ նոյնիսկ միամտութեամբ կապում էին իրենց երկրի այս կամ այն տեղի հետ եւ վերամշակելով դարձնում բանաստեղծութեան նիւթ: Այսպէս, օրինակ, Աստուածաշնչի այս խօսքը՝ «Նստաւ տապանն ի լերինս Արարատայ» ներշնչում էր տեղական հետաքրքրութիւն դէպի Ջրհեղեղի եւ Նոյեան տապանի զրոյցները, մանաւանդ որ հայերին դրացի ասորիների եւ ուրիշների մէջ, Ս. Գրքից անկախ, եղել են հին զրոյցներ Ջրհեղեղի մասին, որից ազատուող Նաւը իբր դուրս է եկել ու կանգնել Հայաստանի Կորդուաց աշխարհում: Այս ասորական զրոյցներն

ամենավաղ ժամանակից հաւանօրէն ծանօթ են եղել եւ Հայերին եւ Աստուածաշնչի ազդեցութեամբ աւելի կենդանացել են: 5–րդ դարում արդէն ստեղծուած է մի նոր զրոյց, Նոյեան տապանի հետ կապուած, որ մանրամասն պատմում է Փ. Բուզանդը (Գ. 10): Մծբինի եպիսկոպոս Յակոբը, որ իբր Լուսաւորչի ազգական էր, գալիս է «ի լերինս Հայոց, ի լեառնն Սարարադայ, ի սահմանս Այրարատեան տէրութեանն, ի գաւառն Կորդուաց... տեսանել զփրկական տապանն Նոյեան շինուածոյն. զի յայս լերին հանգեաւ Նա ի ջրհեղեղէն»: Եւ նա հրաշալի կերպով իբր ձեռք է բերում տապանի մի կտոր: Այս զրոյցը հետագայում Կորդուաց Արարադ լեռից փոխադրուած է Մասիսի վրայ, որ եւ եւրոպացիները կոչում են Արարատ: Այնտեղ՝ Ակոռի գիւղի մօտ շինուել է եւ Ս. Յակոբայ վանքը, եւ կայ Ս. Յակոբայ «հրաշագործ» աղբիւրը, եւ նմաններ:

*Սիփան սարի համար էլ են պատմել նման բան. «Բնակիչները մէկ բան կ'երգեն այս լեռան վրայ իբրեւ հին երգ եւ կ'ասեն՝ Նոյայ տապանն եկաւ ի Սիփան, ասաց.*

«Սիփան, ա՛ռ զիս, ա՛ռ զիս»:
Սիփանն ասաց.
«Գնա ի Մասիս, գնա ի Մասիս,
Որ մեծ է քան զիս,
Որ բարձր է քան զիս» (1):

*Այս առասպելը պատմում են նաեւ Փոքր Մասիսի վերայ, որ կոչւում է Սիս անունով: Թողնում ենք ուրիշ զրոյցներ Նախիջեւանի Նոյայ տապանի եւ այլ տեղերի վրայ, որոնք կապուած են Նոյի հետ: Այսպիսի զրոյցներ շատ են եղել եւ միջին ու նոր դարերում: Քրիստոնէութեան երկրպագող մոգերից մէկի գերեզմանը Մոկաց գաւառում էին ցոյց տալիս եւ այլն* (2):

Բացի սրանից՝ Նոյի, Սեմի եւ սրա որդի Տարբանի մասին, ըստ Խորենացու, ամենավաղ ժամանակներից արդէն յիշատակութիւններ են եղել Հայ ժողովրդական երգերի մէջ, եւ այդ անունները ժողովրդական ստուգաբանութեամբ կապուած են եղել Հայաստանի Սիմ սարի, Տարօն եւ Ցրօնք անունների հետ: Նոյնն աւելի եւս ուշ ժամանակներում երեւան է գալիս Աղջիկ Տարօնի վէպի մէջ: Նոյն Սիմ լեռան բնակիչները շատ հին ժամանակներից իրենց Սանասունք անունը կապել են Ս. Գրքի Սարասարի հետ, որ իր եղբօր հետ փախչում է Հայաստան եւ բնակւում այդ լեռան վրայ, մի զրոյց, որ դարձել է Սասնայ Ծռերի առաջին ճիւղի հիմքը: Այդ Սարասարի կամ իր եղբօր հետ են կապել Արծրունիներն եւ ուրիշներն իրենց ծագումը, իսկ Բագրատունիները՝ հրէական Դաւիթ թագաւորի հետ:

Եւ վերջապէս, մեր գրականութեան սկզբում արդէն տեսնում ենք, որ Հայ ազգի ծագումը կապում են Աստուածաշնչի անունների հետ. Հայաստանին անուանում են «Թորգոմայ տուն»: Կորիւնը եւ ուրիշները Հայ ազգը կոչում են «Ասքանազեան ազգ», նկատի ունենալով Աստուածաշնչի հետեւեալ խօսքը. «Պատուէր տուք յինէն Այրարատեան թագաւորութեանցն եւ Ասքանազեան գնդին» (Երեմիա, ԾԱ. 27): Աստուածաշնչի «Արարատ» անունը

---

(1) Սրուանձտեանց — Գրոց Բրոց, էջ 56:

(2) Մ. Աբեղեան — Հայ ժողովրդական առասպելները, էջ 574 եւ հտն.:

մեկնաբանները նոյնացրել են Հայաստանի հետ եւ նրա հետ յիշուած «Ասքանազեան գունդն» էլ մեկնել են իբրեւ հայկական գունդ:

Ս. Գրքի ազդեցութիւնը մեծ է եղել ոչ միայն հայկական ժողովրդական բանահիւսութեան վրայ, այլ նոյնչափ եւ աւելի եւս գրաւոր դպրութեան վրայ, թէ՛ իր բովանդակութեամբ եւ թէ՛ ձեւով: Մի կողմ թողնելով այդ գրքի ազդեցութիւնը կրօնական գրուածքների բովանդակութեան եւ գաղափարախօսութեան նկատմամբ, պէտք է շեշտել, որ նրա լեզուն օրինակելի է դարձել բոլոր գրողների համար եւ յարատեւ իշխել է բոլոր դարերում: Աստուածաշնչի լեզուն սկզբից հէնց մեր հին գրականութեան համար դարձել է կլասիկական իր քերականութեամբ, իր բառերով ու դարձուածներով, պատկերաւոր ասացուածներով ու բանաձեւերով, եւ այսպէս ոչ միայն կրօնական, այլեւ պատմական ու բանաստեղծական երկերի համար, մանաւանդ այն հետագայ շրջաններում, երբ գրաբար լեզուն այլեւս կենդանի խօսակցական չի եղել, այլ արուեստական կերպով սովորովի:

**3. Ուրիշ թարգմանութիւններ:** — Եթէ աշխարհականի համար բաւական էր Ս. Գիրքը, եկեղեցականի համար, որ ուսուցիչ էր, այդ քիչ էր: Նա պէտք է իր ժամանակի կրօնական ուսման բարձրութեան վրայ կանգնէր՝ ծանօթ լինելով ասորական եւ յունական եկեղեցիների կրօնական հարկաւոր երկերի, ընդհանուր եկեղեցու մէջ մշակուած գիտութեանն ու գրականութեանը: Եւ Սահակի ու Մաշտոցի գործունէութեան կարեւոր կողմերից մէկըն այն է, որ նրանք հոգում են նաեւ այդ մասին՝ անձամբ անելով եւ անել տալով զանազան թարգմանութիւններ: Կորիւնի վկայութեամբ, ինչպէս տեսանք, թարգմանել են «շատ եւս մեկնութիւն գրոց» եւ «բազում եւս զհայրապետաց սրբոց զճշմարիտ զիմաստութիւնն», այսինքն դաւանաբանական գրուածքներ: Եւ այս հասկանալի է: Ընդունելով Եփեսոսի եւ նախորդ ժողովների վճիռները՝ պէտք է ծանօթ լինէին նաեւ եկեղեցու հայրերի դաւանաբանական երկերին:

Մի կարեւոր հանգամանք եւս պէտք է նկատի ունենալ: Նրանց միջոցով ստեղծւում է թարգմանական գործը շարունակելու աւանդութիւն, որով եւ 5-րդ դարում արդէն առաջանում է հայկական թարգմանական ճոխ գրականութիւնը: Իր այս ուղղութիւնը հայկական հին գրականութիւնը շարունակում է պահել հին հայերէնով եւ հետագայ դարերում, երբեմն ուժեղ, երբեմն թուլացած կամ ժամանակաւոր կերպով դադար առած, կարելի է ասել, մինչեւ 19-րդ դարը, մինչեւ նոյնիսկ այդ դարի կէսերը: Դրանով ընդարձակւում է հայ գրագէտների ու գրողների մտաւոր հորիզոնը. նրանք սահմանափակուած չեն մնում հայրենականի մէջ, այլ շարունակ հաղորդակից են դառնում արեւմտեան քրիստոնեայ աշխարհին, երկար ժամանակ նաեւ ասորականին, ձեռք են բերում նոր հասկացութիւններ եւ նոր աշխարհայեցութիւն: Այդ նպաստում է բնականաբար հայ կուլտուրայի զարգացմանն եւ ազգային ինքնագիտակցութիւն առաջ բերելուն:

Այժմ դժուար է որոշել, թէ ե՛րբ եւ ո՛րքան թարգմանութիւններ են արել մեր գրականութեան առաջին դարերում: Դրանց մեծ մասի ժամանակն ու թարգմանիչներն անյայտ են: Շատ բան կորած է, կը լինեն երկեր էլ, որ դեռ երեւան չեն եկել: Բայց ինչ որ մինչեւ այժմ մնում է եւ յայտնի է, դա

էլ ցոյց է տալիս, որ հին թարգմանական գրականութիւնը շատ հարուստ եւ բազմակողմանի է եղել։

Քանի որ գրականութիւնն առաջ էր բերուած որոշ եկեղեցական նպատակի համար, բնականաբար մեր հին թարգմանական գրականութեան մէջ չպիտի որոնենք հին յունական կլասիկ գրականութեան գրուածքներ եւ ոչ էլ բիզանդական աշխարհիկ գրականութեան շատ երկեր։Թարգմանուած են շատ կրօնա-եկեղեցական գրուածքներ։ Կարելի է ասել, որ ժամանակի եկեղեցական գրական տեսակներից եւ Կոստանդնուպոլսի դպրոցում գործածած ձեռնարկներից ոչ մի նշանաւոր երկ չեն թողել, որ չթարգմանեն 5-րդ, 6-րդ եւ յաջորդ դարերում։

Ի՞նչ էր ներկայացնում ընդհանուր եկեղեցական գրականութիւնը 5րդ դարի սկիզբներում։ — Դա ծնուած էր եկեղեցու գործնական կարիքների համար. ուստի մի կողմ թողած եկեղեցու պաշտամունքի ժամանակ անհրաժեշտ նոր աղօթքներն ու նոր երգերը, որ երգում էին սաղմոսներից յետոյ, սկզբնական դրութիւններն են թուղթն ու կանոնը։ Նոր Կտակարանի մէջ արդէն կան առաքեալների անունով թղթեր. նրանցից յետոյ՝ այսպէս կոչուած առաքելական հայրերը, որ են՝ քրիստոնէութեան ականաւոր ներկայացուցիչներն 1-ին դարի վերջերում եւ 2-րդ դարի սկիզբներում, թողած ունեն նոյնպիսի թղթեր։ Այսպիսով հէնց սկզբից «թուղթ», այսինքն նամականին, դառնում է եկեղեցական գրականութեան մի կարեւոր տեսակը, որով եկեղեցու հայրերը բարոյական խրատներ ու բացատրութիւններ էին տալիս ժամանակակիցներին հետաքրքրող զանազան եկեղեցա-կրօնական խնդիրների մասին եւ յարաբերութիւն պահպանում միմեանց ու համայնքների հետ։ Հնումն շատ ծանօթ են եղել Անտիոքի եպիսկոպոս Իգնատիոս Աստուածազգեացի իրախուսական թղթերը, ինչպէս եւ Զմիւռնիայի եպիսկոպոս Պոլիկարպոսինը։ Մնում են նրանց թղթերի հին հայերէն թարգմանութիւնները։ Եկեղեցու հայրերը թղթերի մէջ նաեւ կանոններ էին տալիս քրիստոնէական պաշտամունքի, ծէսերի ու պաշտօնեաների եւ առհասարակ վարչական խնդիրների մասին։ Կանոններ էին հրատարակում նաեւ եկեղեցական ժողովները։ Ինչպէս տեսանք, թարգմանիչները հայրենիք վերադառնալիս՝ հետները բերում են Նիկիոյ եւ Եփեսոսի ժողովների կանոնները, որոնք եւ, երեւի նրանց ձեռով, թարգմանուած են հայերէն։ Ունենք հնուց թարգմանուած եւ այլ կանոններ (1)։

Միեւնոյն գործնական նպատակն է ունեցել եւ քարոզը, որ եկեղեցու պաշտամունքի ժամանակ կարեւոր տեղ է բռնել։ Դա կապուած է եղել Ս. Գրքի ընթերցուածների հետ եւ սկզբում եղել է պարզ ու հասկանալի լեզուով խրատ ըստ կարդացած հատուածի։ Բայց հետագայում, շնորհիւ ճարտասան եպիսկոպոսների, զարգացել է հռետորական արուեստով եւ դարձել ճառ։ Դա նոյնպէս գործնական նպատակ է ունեցել, այն է՝ ունկնդիրներին բացատրել քրիստոնէութեան հիմունքները՝ քարոզելով պահք, ապաշխարու-

(1) Կանոնագիրք Հայոց, Թիֆլիս, 1913, էջ 205 եւ հտն. «Առաքելականք»։ Գ. Զարբհանալեան — Մատենադարան Հայկական թարգմանութեանց նախնեաց, Վենետիկ, 1889, էջ 489 եւ հտն. «Կանոնագիրք»։

թիւն, աղօթք ու մենակեցութիւն, բարեգործութիւն եւ այլն: Ունենք հին թարգմանութեամբ բազմաթիւ ճառեր զանազան հեղինակների: Յայտնի են Բարսեղ Կեսարացու, Կիւրեղ Երուսաղեմացու, Յովհան Ոսկեբերանի եւ ուրիշների ճառերը:

Քրիստոնէական գրականութիւնը երկար չի մնացել այս սկզբնական լոկ գործնական նպատակի մէջ սահմանափակուած: 2-րդ դարի կէսերից սկսում է զարգանալ գնոստիկեան գրականութիւնը, եւ եկեղեցին ստիպւում է գնոստիկեան աղանդի դէմ մաքառելու համար առաջ բերել հակագնոստիկեան գրականութիւն, որ զբաղւում էր արդէն տեսական խնդիրներով: Միաժամանակ հարկաւոր է լինում քրիստոնէութիւնը պաշտպանել հեթանոսական յարձակումների դէմ, հերքել նրա մասին տարածուած անհեթեթ լուրերը: Այսպիսով առաջանում են ջատագովական ասուած գրականութիւնը եւ հակաճառութիւնները, ուղղուած գնոստիկեան եւ ուրիշ աղանդաւորների, ինչպէս եւ հրեաների ու հեթանոսների դէմ: Վերջապէս՝ փիլիսոփայութիւն սովորած ջատագովները հանդէս են գալիս նոյնիսկ յոյն փիլիսոփաների դէմ: Երբ քրիստոնէութիւնը 4-րդ դարում վայելում է կայսրների հովանաւորութիւնը, ջատագովներն արդէն նպատակ են դնում ոչնչացնել հեթանոսութիւնը, եւ ջատագովութիւնը պաշտպանողականից փոխւում է յարձակողականի եւ ստանում է այլ ուսմունքների «յանդիմանութեան», եղծի, «հակաճառութեան» բնաւորութիւն: Այստեղ հայերէն թարգմանութիւններից յիշենք միայն նշանաւոր փիլիսոփայ եւ ճարտասան Արիստիդէս Աթենացու ջատագովութիւնը:

Այս բոլոր գրականութեան մէջ հետզհետէ պարզւում են եկեղեցու ըսկզբունքները, որ առաջին դարերում դեռ անորոշ էին: Դրանց աղբիւրը Ս. Գիրքն էր, իսկ սրանից օգտուելու եղանակը՝ այլաբանական բացատրութիւնը կամ մեկնաբանութիւնը: Յոյն փիլիսոփաները մեր թուականութիւնից առաջ արդէն սկսել էին այդ եղանակը գործադրել իրենց հին կրօնական առասպելների վրայ եւ այն պարզ պատմուածքների մէջ տեսնել խորին մըտքեր: Նրանք միաժամանակ առասպելներից վերացնում էին կրօնական տեսակէտով կոպիտ, գայթակղեցուցիչ մասերը, որոնց այլեւս չէին հաւատում բարձր բարոյական գիտակցութեան հասած մարդիկ: Այդպիսով նրանք հին առասպելներն ու բանաստեղծութեան գլուխ-գործոց երկերը փրկում էին անխուսափելի կորստից: Քրիստոնէութիւնից առաջ արդէն Փիլոն Եբրայեցին (ծն. մոտ 30 թ. մ. թ. ա., մեռ. մոտ 45 թ. մ. թ.) նոյն այլաբանական բացատրութիւնը գործադրել էր Հին Կտակարանի վրայ: Նոյնպէս շարունակում են վարուել եւ քրիստոնեաները, Ս. Գրքի պարզ խօսքերի տակ վերացական գաղափարներ որոնելով, նրանց մէջ կանխատեսութիւններ գտնելով, կամ հէնց լոկ, — դժուարութիւններից խուսափելու համար, որպէսզի հաւատացեալների կրօնական զգացմունքները չվիրաւորուեն, — այդ գրքի բովանդակութիւնը ժամանակակից հասկացութեան ու հայեացքների համեմատ դարձնելու նպատակով: Այլաբանական մեկնութեան հետ միաժամանակ գործադրում էին նաեւ մթին, դժուար հասկանալի կտորների բառական բացատրութիւնը: Հետագայում, սակայն, շատ սիրելի է դառնում այլաբանական մեկնութիւնը, եւ այդ անհրաժեշտ է համարւում յաճախ նոյնիսկ անձնական

նրբամտութիւնը ցոյց տալու համար: Այսպիսով առաջ են գալիս եւ կուտակւում մեկնութիւնները: Մեր գրականութեան սկզբում հէնց Սահակ կաթողիկոսն ու Եզնիկ Կողբացին թարգմանել են Ս. Գրքի շատ մեկնութիւններ: Եւ այդպիսի երկերի թարգմանութիւններով էլ շատ հարուստ է մեր հին գրականութիւնը: Թարգմանուած եւ սիրուած են եղել հէնց Փիլոն Եբրայեցու բազմաթիւ աշխատութիւնները, որոնց մի քանիսի յունարէն բնագիրները կորած են:

Այդ մեկնութիւններով, ինչպէս վերեւում ասուեց, պարզւում են եկեղեցու սկզբունքները, առաջ է գալիս քրիստոնէական աստուածաբանութիւնը, որոշւում է դաւանանքը, որ հաստատւում է առաջին երեք տիեզերական ժողովներով: Բայց վէճերն ու կռիւներն այդ մասին չեն դադարում, ուստի եւ զարգանում է մի հարուստ գրականութիւն տեսական-դաւանաբանական բնաւորութեամբ՝ ժամանակի փիլիսոփայութիւնն իմացող կարող անձերի, «եկեղեցու հայրերի» ձեռով: Դա «սուրբ հարց» կամ պատրիստական, հայրաբանական գրականութիւնն է, որից նոյնպէս ունենք շատ թարգմանութիւններ:

Այս գրական տեսակների վրայ պէտք է աւելացնել փիլիսոփայական, ճարտասանական եւ քերականական գրուածքները, այլեւ պատմութիւնը, առանձնապէս Եւսեբէոս Կեսարացու «Քրոնիկոնը» եւ «Եկեղեցական պատմութիւնը», որոնք երկուսն էլ հնուց թարգմանուած են հայերէն: Երկրորդը, ըստ Մովսէս Խորենացու վկայութեան, թարգմանել է տուել Մաշտոցը, եւ պարզւում է, որ այդ գիրքը թարգմանուած է 416 — 420 թուականների մէջ (1):

Պատմական գրուածքների կարգին են պատկանում նաեւ վկայաբանութիւնները, որոնք քրիստոնէական հաւատի համար չարչարուածների եւ ըսպանուածների նահատակութեան պատմութիւններ են, ինչպէս եւ սրբախօսութիւններն ու վարքաբանութիւնները — «սրբերի» կենսագրութիւնները: Դրանք սահմանուած են եղել բոլոր հաւատացեալների ընթերցանութեան համար եւ կարդացւում էին նոյնիսկ եկեղեցում: Այսպիսի երկերի հիմնական մասն է միայն պատմական: Սրբի կեանքի իրական եղելութիւններից առնըւում էր միայն այն, ինչ որ համապատասխան էր վարքագրի նպատակին, մնացածը քերդողական ստեղծագործութիւն էր: Նպատակն էր տարածել եւ հետաքրքրութիւն առաջացնելով իւրացնել տալ եկեղեցու գաղափարները: Հեղինակներն աշխատում էին ընթերցողների մէջ բարեպաշտութիւն զարթեցնել, ձգտում էին իրենց գրուածքների իդէալականացրած հերոսներով կենդանի օրինակներ առաջ բերելու՝ ըստ քրիստոնէական աշխարհայեցութեան առաքինի կեանքի, ճգնաւորական անձնուրացութեան եւ աշխարհուրացութեան: 4-րդ դարում արդէն Բիզանդիայում կազմուել էր այս տեսակի պատմուածքի համար մի ընդհանուր շաբլոն ըստ բովանդակութեան եւ ըստ ձեւի եւ հերոսների մի ընդհանուր տիպար: Ունկնդիրների կամ ընթերցողների վրայ ազդելու համար՝ գրուածքները լցնում էին չափազանցու-

---

(1) Շողակաթ, Ս. Էջմիածնի Հայագիտական ժողովածու, Վաղարշապատ, 1913, էջ 154 եւ հտն. «Հայ մատենագրութեան հնագոյն թուականները», Գալուստ Տէր-Մկրտչեանի:

թիւններով ու հրաշալիքներով, հերոսների ներբողներով: Այս տեսակը շատ սիրուած է եղել եւ հայերի մէջ. ունենք շատ թարգմանութիւններ, որոնց մի մասը հին է, միւս մասն աւելի ուշ դարերի է: Կան եւ այնպիսիները, որոնք երկու անգամ են թարգմանուած, եւ երկու թարգմանութիւններն էլ մնում են: Հին թարգմանութիւն է, օրինակ, «Վարք Պաւղոսի Անապատականի», որով սկսւում է հին ժողովածուն. ապա երկրորդ տեղը բռնում է շատ յայտնի «Վարք երանելոյն Անտոնի Եգիպտացւոյ միայնակեցի, թուղթ Աթանասի» (2), որ է Աթանաս Մեծն Աղեքսանդրացի: Սրա երկերից մնում են ուրիշ բազմաթիւ թարգմանութիւններ եւս զանազան բովանդակութեամբ: Մենք յետոյ էլ կը վերադառնանք այս սրբախօսական տեսակին:

*Ահա վերեւում բերուած գրական տեսակներով հարուստ եկեղեցական գրականութիւնը կար 5–րդ դարի սկզբում մեր առաջին թարգմանիչների առաջ, որոնք եւ աշխատում են այն թարգմանելով փոխադրել իրենց հայրենիքը: Նրանց եւ նրանց յաջորդների թարգմանութիւնների մէջ, ինչպէս տեսանք, գտնում ենք թղթեր, կանոններ, ճառեր, ջատագովութիւններ, մեկնութիւններ, աղօթքներ ու հոգեւոր երգեր, վկայաբանութիւններ, դաւանաբանական ու պատմական գրուածքներ, ինչպէս եւ ճարտասանական, փիլիսոփայական, քերականական եւ այլ բովանդակութեամբ աշխատութիւններ զանազան հեղինակների*(1): *Կան թարգմանութիւններ, որոնց բնագիրը կորած է. ուստի եւ այդպիսիների հայերէններն ստանում են առանձին արժէք:*

4. Տարբեր գրական հոսանքներ կամ դպրոցներ ըստ լեզուի: — *Մինչեւ այժմ դեռ հնարաւոր չի եղել ոչ միայն թարգմանական, այլեւ ընդհանրապէս հայ գրական կեանքի ընթացքը ճշտութեամբ որոշել: Բայց եւ այնպէս առհասարակ վաղուց ի վեր ընդունում են, որ հնումն եղել են առանձին գրական հոսանքներ կամ դպրոցներ, որոնք իրարուց տարբերւում են իրենց մտածողութեան եղանակով եւ ոճով:*

*Օտարաբանութեան նկատմամբ պէտք է զանազանել հետեւեալ խմբերը: Մի շարք գրական յիշատակարաններ, լինեն ինքնուրոյն թէ ասորերէնից կամ յունարէնից թարգմանուած, աչքի են ընկնում բոլորովին մաքուր հայկաբանութեամբ, երբեմն շատ կանոնաւոր, պարզ ու յստակ ոճով, երբեմն էլ զարդարուն ու պերճ լեզուով, կամ անկանոն եւ լի աւելորդաբանութիւններով: Ուրիշ խումբ թարգմանութիւններ, ինչպէս Եւսեբէոսի «Եկեղեցական պատմութիւնը», գրուած են ընդհանրապէս հարթ եւ պարզ հայկաբանութեամբ, բայց յաճախ նիւթապէս թարգմանում են ասորերէնը՝ օտարանալով հայ լեզուի ոգուց* (2): *Կան եւ այնպիսի երկեր, ինքնուրոյն թէ թարգմանական, որոնք ընդհանրապէս «ընտիր» հայերէնով են, բայց ունեն սակաւաթիւ ազդեցութիւններ յունարէնից: Եւ վերջապէս՝ կան բազմաթիւ երկեր*

---

(2) «Վարք սրբոց հարանց եւ քաղաքավարութիւնք նոցին ըստ կրկին թարգմանութեան նախնեաց», հատոր առաջին եւ հատոր երկրորդ, Վենետիկ, 1855:

(1) Յովհան Ոսկեբերան, Բարսեղ Կեսարացի, Կիւրեղ Երուսաղեմացի, Եւսեբէոս Կեսարացի, Փիլոն Եբրայեցի, Աթանաս Մեծ, Արիստիդէս Աթենացի, Իգնատիոս Աստուածազգեաց, Պողիկարպոս Զմիռնիայի եպիսկոպոս: Սրանց վրայ աւելացնենք նաեւ՝ Գրիգոր Նիւ-

եւս, — ճարտասանական, փիլիսոփայական, քերականական ու դաւանաբանական բովանդակութեամբ, — որոնց բնորոշ յատկութիւնն է խիստ յունաբանութիւնը: Դրանց հեղինակները կամ թարգմանիչներն իրենց մտածողութեան եղանակով, ոճով ու լեզուով շատ հեռու են հայերէնի էական յատկութիւններից. նրանք բառացի թարգմանում են յունարէնից այս լեզուի շարահիւսութեամբ եւ նորանոր բառեր բաղադրելով յունարէնի նմանութեամբ:

Ոչ միայն առանձին երկերի, այլեւ այս գրական դպրոցների ժամանակն եւս ճիշդ որոշուած չէ: Ընդհանրապէս ընդունում են, որ առաջին երկու խմբերի գրուածքները (որ ուրիշները բաժանում են երեք կամ չորս դասի) աւելի հին են, վերաբերում են գրականութեան սկզբնական, ինչպէս կոչում են, «Ոսկեդարեան» շրջանին, այսինքն 5-րդ դարին, այն էլ, ըստ ոմանց, այդ դարի մօտաւորապէս առաջին կէսին, երբ գործել են առաջին թարգմանիչները կամ «առաջին աշակերտները»: Իսկ երրորդ եւ չորրորդ խմբերի երկերը վերագրում են «յունասէրների» կամ «յունաբանների» դպրոցին, որ կարծում են, թէ 6-րդ եւ աւելի եւս 7-րդ դարերում է զարգացել:

Այս տեսակէտն ընդունելի չէ ընդհանրապէս իր ամբողջ ծաւալով: Կարելի չէ՝ առանց արտաքին ցուցմունքի, լեզուով միայն, յունաբան ոճի վրայ միայն հիմնուելով, կոնկրէտ հետեւութիւններ անել, որոշել գրուածքների, ուրեմն եւ գրական դպրոցների ժամանակաբանութիւնը: Ուրիշ խօսքով՝ բացարձակ հաւանելի չէ այն «սովորական ընդունուած թէօրիան», ըստ որի՝ յունարէնի ազդեցութիւն կրած, ինչպէս եւ յունաբան գրուածքներն իբր «անարժան» են «Ոսկեդարին», 5-րդ դարին, այսինքն՝ 5-րդ դարում իբր միայն մաքուր հայկաբանութիւն պիտի լինի, իսկ ինչ որ այդպէս չէ, այն 6-րդ դարից պիտի լինի, ըստ ոմանց՝ նոյնիսկ 6-րդ դարի երկրորդ կէսերից ի վեր: Այսպէս դատողները մոռանում են, որ ուրիշ լեզուներից թարգմանութիւն անողները, ինչպէս եւ ուրիշ լեզուի ու գրականութեան ազդեցութեան շրջանում ինքնուրոյն գրողներն անգամ, միշտ միակերպ յստակ ոճ չեն բանեցնում: Նոյնիսկ ժամանակակից եւ միեւնոյն տեղում ապրող հեղինակներից ու թարգմանիչներից մէկը շատ ազդւում է օտար լեզուից, գործածում է օտար շարահիւսական ձեւեր, օտար լեզուի հետեւողութեամբ կազմած նոր բառեր ու դարձուածներ, միւսը գրում է ազգային բնիկ մաքուր լեզուով: Այսպէս է եւ մեր օրերում, այսպէս եղել է եւ հնումն, եւ 5-րդ դարում: Պէտք է ընդունել, ուրեմն, որ ինչպէս նոյնիսկ առաջին թարգմանիչների ո-

---

սացի, Գրիգոր Սքանչելագործ, Իրենիոս եպիսկոպոս, Եփրեմ Ասորի, Կիւրեղ Աղեքսանդրացի, Յովհաննէս Դամասկացի, Գրիգոր Նազիանզացի, Տիմոթէոս Կուզ, Սեբերիանոս Անտիոքայ, Սեւերիանոս Գաբաղու, Դիոնիս Արիսպագի, Ղերուբնա, Ապողինար, Գրիգոր Աստուածաբան, Եպիփան Կիպրացի, Եւագր Պոնտացի, Նոննոս, Պրոկղոս, Արիստոտէլ, Պորփիւր, Թէովն, Եղիաս, Դիոնիսիոս Թրակացի, Սոկրատ Սքոլաստիկոս եւ ուրիշներ: Տես նաեւ Գ. Զարբհանալեանի «Մատենադարան Հայկական թարգմանութեանց նախնեաց» (դար Դ — ԺԳ), Վենետիկ, 1889:

(2) Նորայր Բիւզանդացի — Կորիւն վարդապետ եւ նորին թարգմանութիւնք, Տփխիս, 1900, էջ 18:

րոշ թարգմանութիւնների մէջ երեւում է ասորերէնի ազդեցութիւնը, նոյնպէս եւ յունարէնը 5-րդ դարում ազդել է այդ լեզուից թարգմանողների կամ յունական ուսում ստացած որոշ գրողների երկերի ոճի վրայ: Մաքուր հայկաբանութեամբ եւ յունարէնի ազդեցութեամբ գրողներն, ուրեմն, միաժամանակ են գործել:

Ինչ վերաբերում է խիստ յունաբան դպրոցին, աւելի եւս խիստ յունաբան լեզուով թարգմանուած գրուածքներին, որոնց մէջ կիրառուած է մի արուեստական լեզու, պարզ է, որ դա լոկ սովորական ազդեցութեան արդիւնք չէ: Դա ծնունդ է որոշ ծրագրով կատարուած դիտաւորութեան:

5. Դաւանաբանական, իմաստասիրական, քերականական, ճարտասանական եւ այլ խիստ յունաբան թարգմանութիւններ: — Ունենք մի շարք թարգմանութիւններ՝ մեծ մասամբ արուեստական յունաբան լեզուով: Դըրանցից այն երկերը, որոնք ոչ-կրօնական բովանդակութիւն ունեն, կոչւում են «արտաքին գրքեր», եւ այսպէս՝ ոչ միայն մեզնում: Դրանց մեծ մասն իմաստասիրական, ճարտասանական ու քերականական գրուածքներ են: Այսպիսի գրքերի թարգմանութեան հիմքն եւս հասկանալի է: Ինչպէս որ առաջին դարերում քրիստոնեաները փիլիսոփաների յարձակումներից պաշտպանուելու համար՝ իրենք էլ սովորում էին հակառակորդների ուսումըն ու մեթոդները, նոյնպէս վարուելն անհրաժեշտ էր եւ հայ վարդապետների համար: Դաւանաբանական վէճերի հիմքը յաճախ մետաֆիզիկական կամ մտահայեցական խնդիրներ են եղել. կարելի չէր հակառակորդների դէմ ելնել պարզամիտ ձեւերով, պէտք էր այդ վէճերի իմաստի մէջ թափանցել եւ դրանց նրբութիւններն ըմբռնել: Իսկ այդ հնարաւոր չէր առանց որոշ իմաստասիրական ուսման ու որոշ հմտութեան: Ուստի եւ ձգտում են իւրացընելու նաեւ այն ուսումն ու գիտութիւնը եւ գրական ու ճարտասանական եղանակները, որոնք ընդունուած էին Բիւզանդիայում: Իսկ այնտեղ, Կոստանդնուպոլսի դպրոցում (հիմնուած 425 թ.), անհրաժեշտ էին համարում կրօնա-եկեղեցական ուսման հետ պարապել նաեւ փիլիսոփայութեամբ, սովորում էին քերականութիւն, վարժւում էին հռետորութեան ու քերդողութեան: Կ. Պոլսում սովորող հայ ուսանողները ծանօթանում են նաեւ այդ ուսմունքներին եւ դրանց վերաբերեալ գրքերը թարգմանում հայերէն:

Սակայն սխալ կը լինի կարծել, թէ այդ թարգմանութիւնները հէնց սկզբից սահմանուած են եղել դաւանաբանական վէճերի համար: Սկզբում դրանց նպատակը եղել է ժամանակի յունական եկեղեցական ուսումն ու գիտութիւնն ամբողջովին փոխադրել Հայաստան եւ այստեղ պատուաստել յունական գիտութիւնը: Եւ «յունասիրութիւն» ասածը, որի սկիզբը հէնց Սահակն ու Մաշտոցն էին դրել, գրականութեան մէջ աւելի այս մտքով պէտք է հասկանալ: Հետզհետէ այս յունասիրութիւնը, յունական գիտութեան սէրը, աւելի զարգանում է 5-րդ դարի երկրորդ կէսից, երբ առաջ են գալիս մարդիկ «լի գիտութեամբ հայոցս եւ առաւելեալ յունիւն», ինչպէս եղել է Գիւտ կաթողիկոսը:

Յունական գիտութեան սէրն անցնում է բնականաբար եւ յունական լեզուին. մարդիկ յափշտակւում են՝ նկատելով սրա մշակուած լինելը համեմատութեամբ հայերէնի հետ, որ չունէր այն մեծ առաւելութիւնները

վերացական գաղափարներ արտայայտելու համար, ինչ որ յունարէնը: Առաջին հերթին անպայման մտածում են ստեղծել յունարէնի ձեւով ճիշտ գիտական տերմիններ: Այս անհրաժեշտ էր: Բայց յունական լեզուի առաջ խոնարհումը 5-րդ դարի կէսերից տանում է դէպի չափազանցութիւն: Արիստոտէլի («Ձառք Արիստոտէլի Յաղագս տասն ստորոգութեանց» եւ «Յաղագըս մեկնութեան»), Պորփիւրի («Ներածութիւն») եւ ուրիշ մեծ ուսուցիչների թարգմանութիւնների լեզուն այնքան բառացի յունաբան է, այնքան «յունարէն է հայերէն բառերով», որ դրանք դժուար է հասկանալ առանց յունարէն բնագրի. «ոչ միայն ամէն մի բառը, այլեւ նոյնիսկ բարդ բառերի առանձին մասերն սարկական ճշտութեամբ են թարգմանուած»:

Այսպիսի «նիւթական» թարգմանութեան պատճառը սկզբում անշուշտ եղել է մասամբ նաեւ թարգմանիչների անվարժութիւնը ե՛ւ յունարէնին, ե՛ւ հայերէնին, — ինչպէս նոյնը տեսնում ենք եւ մեր օրերում այլ լեզուներից թարգմանողների վերաբերմամբ, — բայց այդ եղել է նաեւ գիտակցաբար, որոշ նպատակով: Կ. Պոլսի դպրոցում հների գրուածքները հասկանալի դարձնելու համար՝ դրանց մեկնութիւններն էին անում՝ յաճախ ձեւականօրէն, բառ առ բառ: Եւ որովհետեւ մեկնութիւններն եւս թարգմանւում էին հայերէն, պէտք է, ուրեմն, թիւրիմացութիւններից զերծ մնալու համար, մեծ հեղինակների մեկնելի երկերը բառացի թարգմանուէին հայերէն, «պահելով սկզբնագրի լեզուի բոլոր դժուարութիւնները, որոնք բացատրութիւնների առարկայ են եղել»: Այս է պատճառը, որ այդպիսի կարեւոր երկերի թարգմանութեան լեզուն աւելի յունաբան է, քան դրանց՝ համեմատաբար պակաս կարեւոր մեկնութիւնների թարգմանութիւններինը, որոնք համեմատաբար պարզ եւ հասկանալի են: Դաւանաբանական երկերն էլ սորկօրէն բառացի են թարգմանուած՝ վիճաբանութիւնների ժամանակ թիւրիմացութեան տեղիք չտալու համար:

Այսպէս խիստ յունաբան լեզուով թարգմանուած են բացի դաւանաբանական եւ փիլիսոփայական երկերից նաեւ ուրիշ գրքեր, ինչպէս՝ «Պիտոյից գիրքը», որ ճարտասանական կանոնների ու վարժութիւնների համար յօրինուած մի աշխատութիւն է, եւ Դիոնիսիոս Թրակացու (2-րդ դարում մեր թ. ա.) քերականութիւնը, որ միայն սուղաբանութիւն է, որ եւ մեծ ժողովրդականութիւն է վայելել եւ նոյնպէս շատ մեկնուել է: Հայերի մէջ այս քերականութիւնը երկար դարերի ընթացքում դարձել է առարկայ զանազան մեկնութիւնների, որոնք եւ կազմել են հայոց հին գրականութեան մէկ ճիւղը(1):

Թէ ե՛րբ են թարգմանուել Դիոնիսիոս Թրակացու քերականութիւնը, ինչպէս եւ առհասարակ փիլիսոփայական ու ճարտասանական երկերը, այդ մասին կարծիքները տարբերւում են (2):

---

(1) Արուեստ Դիոնիսեայ Քերականի եւ հայ Մեկնութիւնք նորին Դաւթի փիլիսոփայի, Անանուն մեկնչի, Մովսէսի Քերդողի, Ստեփաննոսի Սիւնեցւոյ, Համամայ Արեւելցւոյ եւ Գրիգորի Մագիստրոսի, ի լոյս էած եւ ի քննին արկ Ն. Ադոնց (Պետրոկրատ, 1915):

(2) Դաւիթ Անյաղթի անունով յայտնի փիլիսոփայական երկերի մասին տեսնել հետեւեալների մէջ.

6․ Յունական թարգմանութիւնների խմբերը։— Վաղուց նկատուած է, որ յունաբան դպրոցի որոշ յիշատակարաններ իրենց լեզուով շատ նման են միմեանց, այնպէս որ ըստ երեւոյթին այդպիսիները մի խումբ են կազմում, այսպէս, օրինակ, Փիլոն Եբրայեցու թարգմանութիւնները լեզուով մօտիկ են Դիոնիս Թրակացու քերականութեանը։ Այս վերջինիս համար կարծել են, թէ դա «գուցէ ամենավաղ» արտադրութիւնն է յունաբան դպրոցի, եւ նոյնիսկ հնարաւոր է համարուել, «որ առաջին քերականները հէնց՝ եղած լինին այդ դպրոցի հիմնադիրները» (1)։ Քիչ յետոյ փորձ է եղել լեզուական համեմատութեամբ, մանաւանդ յունաբան կազմութիւն ունեցող բառերի գործածութեան հիման վրայ, յունաբան թարգմանութիւնները վերածելու խմբերի եւ որոշելու նրանց ժամանակագրութիւնը յաջորդական կարգով։ Ըստ այդմ՝ «Յունաբան դպրոցի իմաստասիրական, ճարտասանական ու քերականական երկերը բաժանւում են երեք տարբեր խմբերի, որոնք զանազան ժամանակաշրջանների աշխատութիւններ են եւ ծագել են յաջորդաբար, մօտ երկու հարիւր տարուայ ընթացքում, սկսած վեցերորդ դարի սկիզբներից կամ հինգերորդ դարի վերջերից, ուրեմն գլխաւորապէս վեցերորդ եւ եօթներորդ դարերում» (2)։ Թրակացու քերականութեան, Փիլոնի եւ Պիտոյից Գրքի թարգմանութիւնները կազմում են յունաբան թարգմանութիւնների հնագոյն շերտը»(3)․ դրանք «կազմում են յունաբան թարգմանութիւնների յատուկ մի խումբ եւ թարգմանուած են Տիմոթէոս Կուզի Հակաճառութիւնից առաջ» (4), «Փիլոնը եւ Պիտոյից Գիրքը թարգմանուած են Թրակացու քերականութիւնից յետոյ»։ Ըստ այսմ, քանի որ «Դիոնիսիոս Թրակացու քերականութիւնը թարգմանուած է Փիլոնից եւ Պիտոյից Գրքից առաջ», ուրեմն եւ դա հնագոյն յունաբան թարգմանութիւնն է։ Աւելացնենք նաեւ այն, որ «Իրենիոսի Ցոյցք առաքելական քարոզութեանն եւ Ընդդէմ հերձուածոց երկերը թարգմանուած են յունաբան թարգմանութիւնների առաջին շրջանում» (5), դրանց «թարգմանութիւնները ժամանակակից են Փիլոնի թարգմանութիւններին» (6)։ «Տիմոթէոս Կուզի Հակաճառութիւնը, Արիստոտէլի Ցաղագս Մեկնութեան եւ Ստորոգութեանց թարգմանութիւնները Յամբղիքոսի մեկնութիւնների հետ միասին՝ խմբակից են ու ժամանակակից եւ կազմում են յունաբան թարգմանութիւնների երկրորդ շերտը» (7)։ Դրանք, ուրեմն, թարգմանուած են 552—564 թուականներին, քանի որ այս տեսութեան հեղինակն այդ թուականներին է դնում Տիմոթէոս Կուզի Հակաճառութեան թարգմանումը։ Դրանից յետոյ, ուրեմն, 6—րդ դարի վերջերում եւ 7—րդ դարում ընկնում են երրորդ խմբի թարգմանութիւնները․ «Դաւիթ—

ա) Քննութիւնք գրոց Դաւթի Անյաղթի, կամ թարգմանութիւնք Արիստոտելի, գրեց Ֆր․ Կ․ Կոնիբեր, Վիեննա, 1893, էջ 37 եւ այլուր։

բ) Յ․ Մանանդեան — Դաւիթ Անյաղթի խնդիրը նոր լուսաբանութեամբ, «Արարատ» ամսագիր, 1904, փետրուար, յունիս, յուլիս․ այլեւ առանձին արտատպութիւն։

գ) Նոյն հեղինակի՝ Յունաբան դպրոցը, էջ 1 եւ հտն․ եւ այլուր։

դ) Ն․ Ադոնց — Արուեստ Դիոնիսեայ Քերականի, էջ CLXXXIII։

(1) Ն․ Ադոնց — Արուեստ Դիոնիսեայ Քերականի, էջ IV։

(2) Յունաբան դպրոցը եւ նրա զարգացման շրջանները, քննական ուսումնասիրութիւն,

Ոլիմպիոդորոսի խմբի իմաստասիրական մեկնութիւնները թարգմանուած պիտի լինեն յունաբան երկրորդ շերտի թարգմանութիւններից յետոյ» (8):

Ինչքան էլ այս տեսութեան հեղինակը «լուսաբանուած» համարի «յունաբան դպրոցի յաջորդական ընթացքը», բայց դա լոկ բառերի վրայ հիմնուած լինելով, դեռ չի կարող վերջնական ճանաչուել: Բայց եւ այնպէս՝ յունաբան դպրոցի զարգացման լուսաբանման նկատմամբ, մի քայլ առաջ է դա, թէպէտեւ շատ ընդհանուր կերպով: Յունաբան թարգմանութիւններն այդ տեսութեամբ ծագած են համարւում՝ «սկսած վեցերորդ դարի սկիզբներից կամ հինգերորդ դարի վերջերից», կամ թէ «յունաբան դպրոցն ունեցել է յաջորդական ու յարատեւ զարգացում սկսած հինգերորդ դարի վերջերից» (1): Այս տեսակէտը ժամանակի նկատմամբ ճիշտ չէ, ուստի եւ ընդունելի չէ: Այդ թարգմանութիւնների սկիզբը եղել է ոչ թէ 5-րդ դարի վերջերին, այլ այդ դարի երրորդ քառորդին, կէսերից ի վեր:

7. Յունաբան դպրոցի սկզբնաւորութեան ժամանակը պարզւում է Տիմոթէոս Կուզի «Հակաճառութիւն» գրքի թարգմանման տարեթուով, որ ընկնում է 480—484 թուականների մէջ: Այդ թարգմանութիւնը խիստ յունաբան լեզուով է: Դրանով յեղաշրջւում է 19-րդ դարի վերջերից ընդհանրացած տեսութիւնը, որով յունաբան դպրոցի սկիզբն, առանց որեւէ հաստատուն հիմունքի, դրւում էր 6-րդ դարում կամ 5-րդի վերջերից: Քանի որ Դիոնիս Թրակացու քերականութեան, Փիլոնի գործերի, Պիտոյից գրքի եւ Իրենիոսի «Ցոյց առաքելական քարոզութեան» երկի թարգմանութիւններն, ըստ յունաբան լեզուի, կազմում են մի խումբ եւ կատարուած են, ինչպէս կարծում են, «Հակաճառութեան» թարգմանութիւնից առաջ, ապա ուրեմն դրանք թարգմանուած են ոչ թէ 6-րդ դարում կամ 5-րդ դարի վերջերին, այլ 480-484 թուականներից մօտ երկու-երեք տասնամեակ առաջ: Հետեւաբար յունաբան դպրոցի սկիզբն ընկնում է 5-րդ դարի երրորդ քառորդին՝ 450-475 թուականներին: Այդ հիմնաւորւում է եւ հետեւեալով:

Յունաբան թարգմանութիւնների սկզբնաւորութեան ժամանակը 5-րդ դարի վերջերից դնում են այս հիմունքով. «Հայոց մատենագրութեան մէջ, ինչպէս յայտնի է, յունաբան դպրոցի ականաւոր ներկայացուցիչները, մեծ մասամբ, անուանւում են փիլիսոփայ կամ իմաստասէր, ճարտասան եւ քերթող: Արդ՝ 5-րդ դարի վերջերից սկսած հայոց մատենագրութեան մէջ յիշատակուած կան մի շարք հայ մատենագիրներ, որոնք կրում են վերոյիշեալ մականունները: Հնագոյնը սրանցից՝ Ղազար Փարպեցու Թղթի մէջ յիշուած

---

գրեց Յակոբ Մանանդեան, պրոֆ. Հայաստանի Պետական Համալսարանի, Վիեննա, 1928, էջ 223:

(3) Անդ, էջ 105 եւ հտն.:

(4) Անդ, էջ 115 եւ հտն. 124:

(5) Անդ, էջ 228 եւ հտն.:

(6) Անդ, էջ 231:

(7) Անդ, էջ 124 եւ հտն.:

(8) Անդ, էջ 142 եւ հտն.:

(1) Անդ, էջ 226:

(2) Անդ, էջ 223 եւ հտն.:

«Մովսէս փիլիսոփան» է, որն ապրած պիտի լինի 5-րդ դարի վերջերում: Որ այս Մովսէսը յունաբան դպրոցի հեղինակ է, այդ կարելի է ենթադրել նրա գրուածքների մասին Փարպեցու ծանօթ վկայութիւնից, նաեւ նրա «փիլիսոփոս» մականուան յունական վերջաւորութիւնից»(2): Պէտք է աւելացնել, որ Փարպեցին այդ Մովսէս փիլիսոփայի համար գրում է, որ նա եպիսկոպոս է եղել, ուրեմն մեծ տարիքի է հասել, որ «զլուսաւորիչն եւ պտղիտահալած գրեանն նորա՝ առ անգիտութեան փաթաղ-իկէս [=աղճատ, աղաւաղուած] կոչէին»: Որ նա մեռնելիս գրաւոր անէծք է տուել եւ այդ անէծքը յայտնի է եղել եւ մարզպան Վահան Մամիկոնեանին: Նրա այս նկարագիրը ցոյց է տալիս, որ այդ Մովսէսը նշանաւոր մարդ եւ անուանի գրական գործիչ է եղել: Որ նա յայտնի է եղել իբրեւ փիլիսոփայ եւ նրա մականունը յունարէնի ձեւով «փիլիսոփոս» է եղել եւ ոչ ասորերէնի ձեւով «փիլիսոփայ», դրանից երեւում է, որ իրօք նա յունաբան դպրոցի հեղինակ է եղել, այն էլ իմաստասիրական երկերի թարգմանիչ, թէ չէ՝ նրան լրջութեամբ այդ մականունով չէր կոչիլ Փարպեցին՝ «երանելի փիլիսոփոսն Մովսէս»: Հմմտ՝ Ղ. Փարպեցու Թղթի գրութեան ժամանակը եղել է 5-րդ դարի վերջերում կամ 6-րդի սկիզբներում. իսկ այդ Թուղթը գրելու ժամանակ փիլիսոփոս Մովսէս եպիսկոպոսն արդէն վախճանուած է եղել: Հետեւաբար, եթէ այդ փիլիսոփան «ապրած պիտի լինի 5-րդ դարի վերջերում», նրա գրական գործունէութեան եռուն ժամանակը չի կարող նրա ծերութեան ժամանակ, 5-րդ դարի վերջերում եղած լինի, այլ բաւական տարիներ առաջ: Ըստ այսմ՝ յունաբան դպրոցի սկիզբը, փիլիսոփայական երկերի թարգմանութեան ժամանակը, դարձեալ 5-րդ դարի վերջերից ետ պիտի տանել մի քանի տասնեակ տարիներով, մօտաւորապէս մինչեւ 5-րդ դարի երրորդ քառորդը:

Տես՝ Դաւանաբանական պայքարի գրականութիւն, § 2. Տիմոթէոս Կուզի «Հակաճառութիւնը», այլեւ Հինգերորդ Յաւելուած՝ «Տիմոթէոս Կուզի «Հակաճառութեան» թարգմանուելու ժամանակը»:

8. Յունաբան դպրոցի լեզուական ժառանգութիւնը: — Այս դպրոցի թարգմանիչները երբեմն ոչ միայն ստրկական հետեւողութիւն են անում յունարէնի շարահիւսութեան, բառի դէմ բառ դնելով, եւ յունարէնի խնդրառութիւնը գործածելով, այլեւ նոր հոլովական ու խոնարհման ձեւեր են ստեղծում, ինչպէս՝ մարդոյր (սեռական), կոփեմ բայի համար՝ էկոփեցի, էկոփեցեր, էկոփեաց եւ շատ նմանները: Նոյնպէս եւ իգական դերանուններ՝ սէ, դէ, նէ իրենց առանձին հոլովական ձեւերով: Բացի այդ՝ ի (յ) նախդրի փոխանակ գործ են ածել՝ ըն, նը, ն, տառացի հետեւելով յունարէնի E'V նախդրին: Թէ ինչպէս են ծագել այս ոչ անհրաժեշտ նորաձեւութիւնները եւ արդեօք սրանք որեւէ բարբառի հետեւողութեամբ են գործածուած, ինչ որ մասամբ հաւանական է, այդ դեռ չի ուսումնասիրուած: Այդ ամէնը չի իւրացրել հայերէնը: Ինչքան էլ շատ կարդացուել են յունաբան կրօնական եւ այլ թարգմանութիւնները, բայց յունարէնի խորթ շարահիւսութիւնն եւս չի ընդունել մեր լեզուն: Այսու ամենայնիւ հայերէնը յունաբան դպրոցի ազդեցութեամբ աւելի ընդունակ է դարձել գիտական մտքեր, վերացական գաղափարներ արտայայտելու եւ ճոխացել է նորանոր բառերով եւ բառակազմութեան նոր ձեւերով:

Բայերի կամ բայարմատների վրայ դրուող նախդիրները կամ նախաբայերը, որ մեծ դեր են խաղում յունարէնում ու լատիներէնում, նոր լեզուներից՝ ռուսերէնում ու գերմաներէնում, — հայերէնում նախագրաբարեան շրջանում արդէն մեծ մասամբ կիրառութիւնից դուրս են ընկել: Դրանց փոխանակել են սովորաբար մակբայները, օրինակ՝ արտաքս (կամ՝ ի դուրս) բերել, ի բաց տալ, փակել ի ներքս, հայել շուրջ. նոյնպէս եւ աշխարհաբարում՝ դուրս բերել, շուրջը նայել, մօտ կանչել եւ նմանները: Լեզուի այս յատկութիւնը՝ գիտական տերմինների, մանաւանդ գոյականների նկատմամբ՝ ստեղծում է մեծ անյարմարութիւն: Այս նկատել են գիտական գրքերի առաջին թարգմանիչները հէնց հինգերորդ դարի երկրորդ կէսին եւ լեզուի այս թերին լրացնելու համար՝ իբրեւ նախաբայ գործ են ածել մի շարք փոքր բառեր կամ բառերի արմատներ եւ սրանցով բաղադրել են նոր բառեր յունարէնի նախդրաւոր բառերի համապատասխան նշանակութիւններով: Դրանց մեծ մասն այժմ շատ սովորական գործածական բառեր են նոր գրական լեզուի մէջ, ինչպէս, օրինակ՝ առագանութիւն, ապացոյց, բաղկանալ, բաղդատել, բացատրութիւն, դերանուն, ենթակայ, մականուն, նախադասել, ներգործութիւն, շարադրութիւն, պարբերութիւն, ստորադաս, ստորադրութիւն, յարաբերութիւն, տարբերութիւն, տրամադրութիւն, արտաբերութիւն, ենթադրութիւն եւ այլն:

Յունաբան դպրոցին յատուկ են համարւում հետեւեալ փոքր բառերով կամ արմատներով կազմութիւնները՝ առ, ապ, բաց, արտ, ներ, բաղ, փաղ, շաղ, շար, ջոկ, յար, տար, տրամ, պար, բակ, ենթ, ստոր, մակ, վեր, նախ, դեր, դեր, փոխ, հոմ, համ (1): Սրանց վրայ պէտք է աւելացնել եւ մի քանի ուրիշները՝ յառաջ (առաջ), շուրջ, հակ եւ այլն: Արդարեւ, մի քանի այդպիսի կազմութիւններն իսկոյն մատնում են իրենց պատկանելը յունաբան դպրոցին, բայց ընդհանրապէս սխալ է ընդունել, թէ ամէն այդպիսի կազմութիւններ, այսինքն կազմութեան ձեւեր, նշան են յունաբան դպրոցի: Ոչ–յունաբան գրուածքներում արդէն կան բառեր, որոնք նոյն կազմութեամբ են: Այսպէս, օրինակ, ունենք առլնուլ (Եզնիկ, Ղազար Փարպեցի), առկայծել (Ս. Գիրք), ըստ այսմ կազմուած են՝ առադրել, առասութիւն, առոգանութիւն, առձեռն (Դիոն. Թր.), առձայնել: Ունենք՝ վերադիր, վերակացու, վերարկու, վերբերել (Ս. Գիրք), վերաբերել (Ղազար Փարպեցի՝ «Թուղթ», «Յաճախապատում»), վերափոխել, վերաստեղծուլ («Յաճախապատում»), սրանց նմանութեամբ կազմուած են՝ վերածնել (Դ. Թր.), վերակոչել, վերադիր, վերատրութիւն: Ունենք՝ տարագիր, տարածել, տարակուսել, տարաժամել (Ս. Գիրք). դրանց նմանութեամբ՝ տարաբերել, տարբերել: Ունենք՝ առաջադրութիւն (Ս. Գիրք), յառաջգիտութիւն, յառաջադրել (Եզնիկ), յառաջատես, առաջարկութիւն (Ղ. Փարպեցի), յառաջադէմ, յառաջագէտ, յառաջագայել («Յաճախապատում»). սրանց նմանութեամբ՝ յառաջբերութիւն (Դ. Թր.): Ունենք նախակարգ, նախաբանել (Կորիւն), սրանց նմանութեամբ՝ նախագաղափար, նախադասել, նախադրութիւն (Դ. Թր.): Ունենք շրջագայութիւն («Յաճախապատում»), շրջափակել (Ղ. Փարպ.), դրանց նմանութեամբ՝ շրջաբերել: Ունենք՝ պարփակել, համազօր, շարալծել, հակամիտել, ներգործութիւն, ներգործել, բացայայտել («Յաճախապատում»), շարադրել (Ղ. Փարպ.), բացատալ (= ի բաց տալ. Եղիշէ):

Այս բառերը բոլորը բնիկ հայկական ձեւի կազմութիւններ են եւ կան ոչ-յունաբան դպրոցի գրուածքների մէջ: Եթէ յատուկ որոնումներ արուեն, շատ ուրիշ բառեր էլ երեւան կը գան: Յիշուած գրքերից «Յաճախապատումը» թերեւս հետագայ դարերում մշակուած լինի, Ղազար Փարպեցու համար էլ դուցէ կարելի լինի ասել, թէ նա, 5-րդ դարի վերջում

(1) Ն. Ադոնց — Արուեստ Դիոնիսեայ եւ այլն, էջ CLXXXIV:

*կամ 6-րդի սկիզբներում գրած լինելով, կարող էր ազդուել յունաբան դպրոցից։ Բայց ոչ մի հիմք չկայ նոյնը ենթադրելու ոչ Ս. Գրքի, ոչ էլ Եզնիկի կամ Կորիւնի վերաբերմամբ։*

*Բայց եւ այնպէս յունաբան դպրոցի ազդեցութեամբ, որ գլխաւորն է՝ ընդարձակուել է այդ փոքր բառերի կամ արմատների կիրառութիւնը, եւ դրանք ստացել են ուրիշ լեզուների նախաբայերի կամ նախդիրների ձեւական նշանակութիւնը։ Վերջերս մեր նոր գրական լեզուի մէջ էլ ազատ կերպով բաղադրել ենք եւ բաղադրում ենք նորանոր բառեր, ինչպէս՝ ներգաղթ, արտագաղթ, ներդրում, միջազգային, ներառեալ, ենթախումբ, վերամշակել, վերյիշել, տրամախաչուել, տարկէտում եւ այլն*(1)։

*Եւ վերջապէս պէտք է նկատի ունենալ մի ուրիշ յատկութիւն եւս, որ ունեն նաեւ ուրիշ լեզուները, բայց Հայերէնում այդ աւելի զգալի է յունաբան թարգմանիչներից ի վեր։ Այն է՝ Հայերէնը փոխանակ օտար բառերը գործածելու՝ փոխ է առնում օտար բառերի նշանակութիւնը եւ իր միջոցներով կազմում է համապատասխան նշանակութեամբ նոր բառեր։ Այսպէս, օրինակ, յունաբան թարգմանիչները կազմել են «քերական» բառը, «քերել» բայի արմատից համապատասխան յունարէնի գրամմատիկոս բառի, որ ծագում է գրաֆօ բայի բնից, որ նշանակում է «քերել»։ Նոյնպէս Փիլոսոփիա թարգմանել են իմաստասիրութիւն, այսինքն առանձին բառ են կազմել ըստ յունարէն բառի կազմութեան Հայերէն արմատներով։ Բազմաթիւ այսպիսի բառեր էլ յունաբան դպրոցից մնում են իբրեւ սովորական բառեր։*

## ՄԻ ՔԱՆԻ ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆՆԵՐԻ ՄԱՍԻՆ

1. «Նոննոսի մեկնութիւնք Գրիգորի Աստուածաբանի հինգ ճառից»(2)։ — *Հինգերորդ դարի հեղինակ Նոննոսին վերագրուած այս մեկնութիւնների թարգմանութեան լեզուն եւս յունաբան է, բայց ոչ այնքան շարահիւսութեամբ, որ հեշտ հասկանալի է, որքան յունարէնի հետեւողութեամբ կազմած բառերով։ Գործածուած կան եւ յունարէն բառեր։ Բովանդակութիւնը մեծ մասամբ վերաբերում է յունական առասպելներին, բայց դա գրուած է ոչ թէ յատկապէս իբրեւ առասպելաբանութիւն, այլ իբրեւ բացատրութիւն Գրիգոր Աստուածաբանի ճառերի մէջ գործածուած առասպելների եւ զանազան գրոյցների։ Այսպիսով՝ եթէ դա մի կողմից ծառայել է կրօնա-եկեղեցական նպատակի համար, միւս կողմից բաւական շատ ծանօթութիւններ է տալիս հին յունական առասպելների ու գրոյցների մասին, ուստի եւ եղել է այս նկատմամբ գիտելիքների աղբիւր մեր հին հեղինակների համար։ Իբրեւ նմուշ այստեղ դնում ենք հետեւեալները։*

---

(1) Տես՝ Մ. Աբեղեան, Հայոց լեզուի տեսութիւն, Երեւան, 1931, էջ 126—191՝ «Նախդրաւոր բայեր», էջ 211—225՝ «Առաջադիրներով բաղադրութիւններ»։

(2) Բնագիրը (Nonnos), Die Scholien zu fünf Reden des Gregor von Nazianz, herausg. von *A. Manandian.* Այս մասին՝ Ա. Ակինեանի յօդուածը, «Հանդէս Ամսօրեայ», 1904, էջ 139—146 եւ 165—173։ Այլեւ Յ. Մանանդեան — «Յունաբան դպրոցը», էջ 236 եւ հտն.։

Յաղագս եղջերուահարաց Ովրիոնի եւ Ակտէովնի: — ԶԱրտեմիս ասեն որսոյ եւ աղեղնաւորութեան վերատեսուչ գոլ: Սաի արդ աստուածս այս եւ զեղջիւն քաջ հարկանել, մինչ կոչիլ աստուածուհոյն Արտեմիս եղջերուահար: Այլ Ովրիոն եւ Ակտէոն՝ որսորդք էին եւ սոքա. իսկ Ակտէովն չամբք որսայր, եւտես զԱրտեմիս մերկ եւ քանզի անմարթ էր զաստուածուհին մերկ տեսանել, մանաւանդ զկուսանսն ի նոցունց՝ բարկացեալ արդ Արտեմիս՝ կատաղեցոյց զշունսն Ակտէոնի,որք պատեալ զնա՝ սպանին. իբրեւ ասի Ակտէովն առ ի չանց զիջանիլ: Այլ Ովրիոն ասի ի պատահման աստուածոցն առ մարթով արջառոյն, զոր եղեն Իւրեւիս՝ Թագաւոր Թեբէացւոց առ ի հիւրընկալութիւն աստուածոցն, քանզի յայնժամ էր ծնեալ եւ լեալ: Այս Ովրիոն եղեւ սպանանող գազանաց, այլեւ տափեալ Արտեմիդեայ. վասն որոյ բարկացեալ աստուածուհին՝ յարոյց կարիճ ընդդէմ նորա, ուստի ընկալեալ հարուածս՝ մեռաւ, վասն որոյ եւ յերկինս նկարեալ եղեւ առ կարճին: Զ. էջ 171:

Յաղագս հարթման լերդին եւ յաղագս Պռոմիւթեայ.— Պրոմիւթեւս այս ասի, թէ գողացաւ զհուր յաստուածոցն եւ շնորհեաց մարդկան, եւ եթէ ի միս զոհիցն պատրեաց զԱրամազդ, եւ ի բարկութիւն շարժեաց զնա կրկին: Զսա կամեցեալ պատուհասել՝ եդ արծուի ուտել զլեարդ նորա. եւ ի գիշերի դարձեալ ողջանայր, եւ միւս անգամ արծուին սկըսանէր ուտել ի վաղիւն, մինչեւ եկեալ Հերակղեայ՝ նետիւք խոցոտեաց զարծուին: Լգ. էջ 77:

2. «Բարոյախօս»: — *Բիւզանդիայում յօրինուած են եւ «Վեցօրեայք» կոչուած երկերը, որոնց մէջ պատմւում է վեցօրեայ արարչագործութիւնը՝ բնագիտական բացատրութիւններով ու տեղեկութիւններով բոյսերի ու կենդանիների մասին: Ամենայայտնին է* Բարսեղ Կեսարացու «Վեցօրեայքը», *որի հին թարգմանութիւնն ունենք: Դա եղել է բնագիտական ծանօթութիւնների աղբիւր մեր հին մատենագիրների համար:*

*Հին ժամանակ հայերէն թարգմանուած է այս նպատակով եւ մի «բնագիտական» գիրք, որ կոչւում է* «Բարոյախօս» (*Ֆիզիոլոգ*) *եւ ծագած է համարւում մեր թ.* 2—3-*րդ դարում՝ Աղեքսանդրիայում* (1): *Դրա նիւթը ժողովուած է հին գրողներից, եւ յաճախ ֆանտաստիկ տեղեկութիւններ են զլխաւորապէս կենդանիների «բարոյքի», այսինքն բարքի, բնաւորութեան մասին, լինին իրական, թէ երեւակայական: Ամէն զրոյցի վերջում զրուած է նաեւ բարոյակրթական մեկնութիւն, որով առակի բնաւորութիւն է ստանում զրոյցը: Այս գիրքը, ինչպէս երեւում է, ծանօթ է եղել հին հայ գրողներին զատական շրջանում: Դա սիրուած է եղել. ուստի եւ ձեռագիրների մէջ, որ* 15—16*րդ դարից են, մտած են կենդանիների մասին նոր զրոյցներ: Կան եւ այնպիսիները, որ երեւան են գալիս կրկին եւ աւելի անգամ մշակուած ձեւերով* (2): *Ուղղագրութիւնը պահուած է ձեռագրինը:*

Վասն առիւծու.— Բարուխաւսն ասէ զառիւծէ, որ ասէ՝ Թագաւոր է ի վերայ ամենայն անասնոց. իմաստուն, հզաւր եւ կորովամիտ: Երեք բնութիւն է առիւծուն: Այս է, յորժամ յորս ելանէ եւ ճեմի, յանկարծակի առնու զհոտ որսորդաց եւ երկուցեալ փախչի. եւ ապա իմանա զգալն եւ զհետն ագուին խաղաղէ, զի մի՛ եկեալ գտանիցեն զնա, եւ երթեալ ամրանա յորջն: Եւ երկու բարք. յորժամ ննջէ արթուն լինին աչքն՝ ի բաց եւ ի քուն: Եւ

---

(1) Ն. Մառ, Ժողովածոյք առակաց Վարդանայ, Մասն Ա., Ս. Պետերբուրգ, 1899, էջ 397 եւ հտն.: Մասն Բ., բնագիր, Ս. Պետերբուրգ 1894, Նոյնը, Մասն Գ., Ս. Պետերբուրգ, 1894, Յաւելուած Ե., Բարոյախաւս, էջ 129—175:

(2) Անդ, Բարոյախաւս, էջ 133, 144, եւ հտ., 145 եւ հտ.:

*երրորդ ընութիւն. յորժամ ծնանի մատակ ուլիծն զկորիւն մեռեալ, նստի եւ մնա զաւուրս երիս, եւ յաւուրն երրորդի գայ հայրն եւ փչէ ի վերայ մեռելոյն կորիւնացն եւ զոռա մինչեւ յարուցանէ զմեռեալ կորիւնսն։ Առաջին յաղագս մեղաւորացն, որ խաղաղեն եւ հաւատարեն զհետ մեղաց խոստովանութեամբ. յառաջ մատիք. զի մի՛ եկեսցէ որսորդն սատանա եւ գըտանիցէ եւ սպանանիցէ։ Եւ մինն այլ զի մի՛ եկեալ գտանիցէ քնով դանդաղել եւ կորուսանել, այլ արթուն կալ հոգս ակամբք եւ պատրաստ յորսորդէն ի սատանայէ։ Իսկ մեք մեղաւորքս մեռեալ յաղագս նախահաւրն մեղաց եւ մեր զոր ծնաք ի հողս. ապա յաւուր երրորդի յարեաւ Քրիստոս ի մեռելոց կամաւ հաւր եւ զմեզ յարոյց ընդ իւր. եւ ապրեցուցէ արեամբն իւրովն ի սատանայէ եւ զիս։*

Վասն թռչնոյ որ կոչի փիւնիկս.— *Է թռչուն մի, որ կոչի փիւնիկս։ Յետ երեսուն ամի դառնա ի ծառսն Լիբանանու ,եւ լնու զերկոսին թեւսն իւր խնկօք, եւ երթա ազդ առնէ քրմին յԱրեգ քաղաքի յամսեանն փաոնոսւ կամ ի պարմութի, այսինքն արեգ կամ ի քաղոց. եւ քուրմն իբրեւ իմանայ, մտանէ լնու զմադիլսն որթափայտու, եւ ելանէ (թռչունն) 'ի քաղաքն ի բագինն, իւրով լուցանէ զկրակն եւ անձամբ զանձն իւր այրէ։ Եւ վաղիւն մտանէ քուրմն եւ որոնէ զբագինն եւ գտանէ որդն 'ի մոխրին. եւ երրորդ աւուրն թեւս գործէ. Եւ գտանի ձագ թռչուն եւ յերրորդ աւուր հրաժարէ իբրեւ զառաջինն ի քրմէն, եւ թռչի երթա, բնակէ ի հին տեղին։*

*Իսկ եթէ թռչունն իշխանութիւն ունի սպանանել զանձն. անմի՛տք, ընդէ՞ր ամբաստանէք զբանէն տեառն, որ ասէր. իշխանութիւն ունիմ դնել զնա եւ իշխանութիւն ունիմ բառնալ։ Փիւնիկսս օրինակ զփրկչին բերէ. քանզի նա երկնից եկն եւ եբեր զերկոսին թեւսն լի խնկօք, անուշահոտութեամբ եւ երկնաւոր պարգեւօք լցոյց զմեզ։*

*Սրա փոխանակն է հետեւեալը.*

*Դարձեալ ասէ վասն հաւուն, որ կոչի արմաւ. ի Փիւնիկեցոց աշխարհին է. գա առ մայրին Լիբանանու՝ մտա ի խունկս անուշս եւ տարածանէ զթեւս իւր եւ առնու ի խնկոցն եւ ի փայտիցն եւ շինէ իւրն բոյն. եւ ի սկսանելոյն մինչեւ ի վերջն լինին ամք. շ.* (=500) *եւ իբրեւ կատարէ, մտանէ ի ներքս եւ ուրախանա. եւ ցայէ զիւր անձն եւ հուր վառէ յիւր անձէն. եւ անկանի ի տուն եւ այրէ զտունն հանդերձ իւրմովն զաւուրս գ.* (=3) *եւ — յաւուր երրորդի գտանի անդ որդն մի ի նեխեալ մսին. եւ գոացեալ աւր ըստ աւրէ՝ լինի գազան իբրեւ զառաջինն։*

3. Աշխարհիկ բովանդակութեամբ թարգմանութիւններ *բիզանդական գրականութիւնից՝ սակաւաթիւ են, կամ զուցէ եղել են, բայց չեն մնացել եւ կամ դեռ երեւան չեն եկել։ Յայտնիներից կարեւոր է յիշել* Սուտ-Կալլիսթենէսի «Պատմութիւն վարուց Աղեքսանդրի» (1)։ *Դա Ալեքսանդր Մակեդոնացու մասին, մեծ մասամբ գրքերից քաղած, մասամբ եւ ժողովրդական առասպելների ու զրոյցների մի պատմուածք է, հին Յունաստանի հասկացութեամբ գրուած։ Մակեդոնացի մեծ աշխարհակալն արեւմուտքից դէպի արեւելք արշաւելով՝ պատահում է ամէն տեսակ, յաճախ ֆանտաստիկ երեւոյթների ու հրէշների։ Այս գիրքը սիրուած է եղել հնումն եւ շատ լեզուներով թարգմանուած։ Մեզնում եւս սիրուած ընթերցանութեան գիրք է եղել։ Կրտսեր թարգմանիչներից մէկը 5րդ դարում այդ թարգմանել է ընդհանրապէս ընտիր հայերէնով, սակաւադէպ յունաբան լեզուով։ Թարգմանութիւնը*

---

(1) Պատմութիւն Աղեքսանդրի Մակեդոնացւոյ, Վենետիկ, 1842։

Յակովբոս Տաշեան, Ուսումնասիրութիւնք Ստոյն Կալլիսթենեայ վարուց Աղեքսանդրի, Վիեննա, 1892։ Այստեղ նաեւ բազմաթիւ աղբիւրների մասին։

հետագայում ենթարկուած է փոփոխութեան եւ նոյնիսկ վերամշակութեան ու յաւելուածների։

4. Սրախօսական եւ վկայաբանական գրուածքները կարեւոր տեղ են բռնում թարգմանական գրականութեան մէջ։ Դրանց մէջ կենդանի օրինակներ էին տրւում քրիստոնէական առաքինի կեանքի, քրիստոնէական կրօնի համար անյողդողդ համառութեան եւ նահատակուելու։ «Սրբոց վարքերի» կամ «Հարանց վարքերի», վկայաբանութիւնների թարգմանիչները մեծ մասամբ դեռ պարզուած չեն։ Դրանցից յիշենք միայն Մարութայի՝ «Պատմութիւն արեւելեան վկայից» եւ «Ճառ ի վկայսն արեւելից», որոնց մէջ պատմուած է Շապուհ Բ.ի (310—379) օրով Պարսկաստանում տեղի ունեցած հալածանքի ժամանակ (340—379) նահատակների մասին։ Թարգմանութիւնը կատարել է Աբրահամ Զենակեցին, որ եւ Խոստովանող է կոչւում։ Նա Աւարայրի ճակատամարտից յետոյ՝ Ղեւոնդեան քահանաների հետ տարուել է Պարսկաստան եւ աքսորուել է Ասորեստան, ուր եւ հաւանօրէն արել է թարգմանութիւնը։ Նա վերադարձել է Հայաստան 462 թ.։ Նրա մասին գրել են Եղիշէն եւ Ղազար Փարպեցին (1)։

Հետագայում այսպիսի երկերից կազմուել են՝ «Վարք սրբոց» կամ «Վարք հարանց» եւ «Ճառընտիրք» (2), «Յայսմաւուրք» (3) կոչուած ժողովածուները, որոնք պարունակում են սրբերի կեանքը եւ նահատակների վկայաբանութիւնները։ Վերջինները բաժանուած իւրաքանչիւր ամսի օրերի վրայ, ամբողջ տարին, ըստ ուրոյն պատշաճի, կարդացւում էին եկեղեցիներում երեկոյեան ժամերգութիւնից յետոյ՝ «ի յիշատակ սրբոցն եւ ի յօգուտ վարուց ջերմեռանդ լսողացն»։ Դրանց մէջ կան, հարկաւ, եւ հայազգի սրբերի ու հայ նահատակների մասին ինքնուրոյն գրուածքներ։ Կանգ առնենք իբրեւ օրինակ առանձնապէս հետեւեալ սրբի վարքի վրայ։

5. Ալեքսիանոսի վարքը։ — Շատ սիրուած եւ, կարելի է ասել, նոյնիսկ ժողովրդականացած մի հետաքրքիր պատմուածք է այս սրբի վարքը, «Պատմութիւն յաղագս որդւոյ թագաւորին Հռոմայեցւոց, որոյ անուն կոչի այր Աստուծոյ»։ Ունենք այդ վարքի համար երկու թարգմանութիւն (4)։ Երկրորդ թարգմանութիւնն աւելի ընդարձակ է, մանրամասն պատմուած, բայց էապէս նոյն բովանդակութիւնն ունի, ինչ որ առաջինը։ Երկրորդի մէջ Ալեքսիանոսի հայրը թագաւոր չէ, այլ Եփիմիանոս անունով մի մեծ իշխան Հռոմում Արկադիոս եւ Ոնորիոս թագաւորների ժամանակ, իսկ նրա կնոջ անունն է «Ագլայիս ըստ Յունաց եւ Աքիլա ըստ Հռոմայեցւոց եւ ըստ մերս՝ Աննա»։ Ալեքսիանոսի վարքն այս կարգի երկերի գեղեցիկ ու տիպիկ օրինակներից մէկն է, որի մէջ ցայտուն երեւան են գալիս վարքագրութիւնների էական յատկութիւնները։ Ինչպէս հին ֆէոդալական հերոսների համար մեծ

---

(1) Եղիշէ. քննական ուսումնասիրութիւն, Վիեննա, 1909, էջ 137—151. «Աբրահամ Խոստովանող եւ իր թարգմանութիւնը»։

(2) Ճառընտիր համառօտ, Բուզանդիա, 1822։

(3) Յայսմաւուրք (Գ. տպագր.), Կոստանդնուպոլիս, 1834։

(4) Վարք հարանց եւ քաղաքավարութիւնք նոցին ըստ կրկին թարգմանութեան նախնեաց, Հատոր Առաջին, Վենետիկ, 1855, էջ 138 եւ հտն.։

արժէք ունէր Փէոդալիզմի տեսակէտով նշանաւոր ծագումը, այնպէս էլ սրբերի վարքերի մէջ սովորաբար նախ փառաբանւում են նրանց ծնողները: Ալեքսիանոսի վարքի ա. թարգմանութեան մէջ նրա ծնողների մասին կարճ ասւում է, թէ նրանք «յոյժ սիրէին զաղքատասիրութիւն, եւ զօտարս եւ զպանդուխտս ժողովէին ընդ յարկօք իւրեանց, եւ կերակրէին, եւ զգեցուցանէին»: Երկրորդ թարգմանութեան մէջ ծնողների պատկերը եւ առհասարակ ամբողջ պատմուածքն աւելի ընդարձակ է ու մանրամասն նկարագրով եւ վարքերին յատուկ ճարտասանական զարդարուն ոճով, գովաբանութեամբ: Նրա հայրն արդէն մի իդէալական տիպ է քրիստոնեայ մեծանուն բարեպաշտ մարդու, ինչպիսին եկեղեցին կ'ուզէր որ լինէին աշխարհի մեծամեծները: Նա ծառայում է եկեղեցու շահերին, շինում է եկեղեցիներ, անկելանոց, հիւանդանոց, եւ իր հաշւով պահում: Նա տոգորուած է եկեղեցու քարոզով, թէ աշխարհն ունայն է:

«Երանելին Ալեքսիոս որդի էր մեծի իշխանի եւ փառաւոր պատրկի... Եւ ինքն Եփիմիանոս ունէր գաւառ բազում, եւ մեծացեալ յոյժ. ունէր ծառայ երեք հազար ոսկեկազմ երիվարօք եւ դիպակազգեստս հանդերձիւք: Եւ էր յոյժ երկիւղած յԱստուծոյ, որով ունէր եկեղեցիս իւր շինեալ, եւ ի նոցա շինեալ էր վերնատունս, եւ յորում նստեալ լինէր Եփիմիանոս՝ անդ ժողովէին աղքատք. քանզի սովոր էին եւ գիտէին, զի յորժամ պարապոյ լինէր յաւուրս տօնի սրբոց եւ տէրունականաց՝ յետ ընթրեացն գայր ի վերնատունս եկեղեցեացն եւ առ պատուհանին նստելով դիտէր զաղքատսն, զի մի՛ ոք թափուր ելցէ ի տրիցն նորա. եւ մտանէին աղքատք առ նա, եւ նա տայր ամենեցուն ձեռօք իւրովք ի գոյից իւրոց: Եւ էր շինեալ նորա անկելանոց աղքատաց եւ հիւանդանոց, եւ հոգայր զնոսա ռոճկօք իւր, զոր կարգեալ էր նոցա առատապէս ի ձեռն հոգաբարձաց իւրոց եւ ինքն էր վերակացու նոցա, եւ խնդաղատէր ի վերայ նուաղելոց ի նոցանէ: Եւ ի պալատին իւր ունէր շինեալ իւր եկեղեցի յանուն սուրբ Աստուածածնին. եւ ի դուռն եկեղեցւոյն շինեաց իւր տապանատուն, եւ յամենայն օր ի տապանատունն իւր մտեալ տեսանէր զտապանատեղն իւր եւ ասէր ինքեան. «Ո՞վ անձն, այս է օթեւան քո եւ այս բնակութիւն քո, մի՛ խաբիր եւ մի՛ ունայնանար ի սնոտի փառս յայս»: Եւ ապա խօսէր ընդ մարդ: Այսպիսի ունէր սովորութիւն»:

Նրա կինն էլ իր ամուսնու տիպարն է: Նա ամուլ է, զաւակ չունի: Այս էլ սրբոց վարքերի մի գիծ է. սուրբը պէտք է ամլորդի լինի եւ աղօթքների համար՝ Աստուծու շնորհած մի պտուղ: «Եւ կինն նորա... բարեպաշտ եւ աստուածասէր եւ ողորմած եւ գորովական էր յոյժ: Եւ էր ամուլ եւ ոչ ունէր զաւակ, եւ խնդաղատէր ի վերայ զաւակաց եւ երանէր զծնողս նոցա: Եւ զի որ ինքն ոչ ունէր, նուաղէր տրտմութեամբ, եւ յար եւ հանապազ լայր եւ ողբայր ընդդէմ Աստուծոյ, մինչ վշտանալ Եփիմիանոսի ի վերայ նեղութեան քաղցր ամուսնին իւրոյ, եւ ոչ կարէր դադարեցուցանել զնա ի լալոյ անտի. վասն որոյ յանդիմանէր զնա առաջի Թագաւորին Ոնորիոսի եւ Թագուհւոյն եւ առաջի քահանայից մեծաց: Յայնժամ բարեպաշտուհին Ագլայիս, յորժամ առանձին ինքեանք միայն էին, ասէր ցԵփիմիանոս. «Տէ՛ր իմ, ընդէ՞ր մեծաբանեալ ես ի վերայ իմ եւ արգելուս զիս ի լալոյ. եւ զիա՞րդ ոչ լացից զանզաւակութիւնս իմ, զի տեսանեմ զգազանս եւ զանասունս եւ ըզ-

թռչունս զի ծնունդ ունին եւ զաւակօք իւրեանց ցնծացեալ՝ մխիթարին ի տուրսն Աստուծոյ. եւ նոյն ինքն է օրհնութիւնն Աստուծոյ առ նախահարսն եւ առ ծնողսն Աստուածամօրն: Եւ զիս տեսանեմ զրկեալ յայնմանէ, վասն այսորիկ լամ եւ ողբամ, ընդդէմ Աստուծոյ կոծիմ, զի թէ ողորմեսցի զերե-լոյս եւ անարժանիս եւ տացէ ինձ զաւակ, բարի եւ աստուածասէր լիցի. ապա թէ ոչ՝ մի՛ տացէ, ոչ խնդրեմ զայնպիսին: Եւ դու, տէ՛ր իմ, մեծաբանեալ ես ի վերայ իմ իբրեւ անդէպ ինչ խնդրողի, եւ ոչ տաս թոյլ համարձակ ողբալ զթշուառութիւնս ընդդէմ առատ եւ ողորմած տեառն իմոյ եւ արարչի»: Զայսպիսի բան եւ որ նման սոցին ասաց առն իւրում առանձինն. քանզի յոյժ ամօթխածութեամբ զարդարեալ էր երանուհին Ագլայիս: Եւ իբրեւ լըւաւ զայսօսիկ ի քաղցր ամուսնոյն իւրոյ աստուածասէրն Եփիմիանոս, արդարացուցեալ զասացեալսն ի նմանէ՝ լցաւ եւ ինքն տրտմութեամբ, եւ արտասուօք պաղատէր առ տէր»:

Այնուհետեւ նրանք, ինչպէս մինչեւ վերջերս ամուլ հայ կանայք անում էին, ուխտ են գնում վանքերը՝ Աստուծուց զաւակ խնդրելով, առատ նուէրներ են տալիս վանքերին: Վերջապէս նրանք մի որդի են ունենում. մեծ ուրախութիւն են անում գրեթէ ամբողջ քաղաքով, եւ հանդէսով մկրտում, անունը դնում Ալեքսիանոս — այր Աստուծոյ: Կրօնական ուսում, նոյնիսկ փիլիսոփայութիւն եւ հռետորութիւն են սովորեցնում նրան. տղան ինքն էլ շատ ուսումնասէր էր «եւ օր ըստ օրէ վառէր ի սէրն Աստուծոյ»: Ծնողների ուզածն էլ այդ էր. նրանք ուրախ էին, «քանզի էր Ալեքսիանոս զարդարեալ ամենայն առաքինութեամբ, եւ ոչինչ փոյթ էր նմա մեծութիւն եւ երեւելի փառքն ծնողացն, այլ հեզ էր եւ խոնարհ եւ հանդարտ եւ իմաստուն յոյժ եւ խոհեմ եւ լի հոգւով սրբով, եւ էր հնազանդ եւ հլու ծնողացն»: Ահա ընդհանրապէս սրբերի ներքին բարեմասնութիւնները մանկական հասակում: Բայց նա օժտուած է եւ մարմնական կողմից, ինչպէս յաճախ պատմւում է վարքագրութիւնների մէջ սրբերի մասին. «Եւ էր վայելուչ հասակաւ եւ գեղեցիկ պատկերաւ արեգակնակերպ տեսակաւ, եւ ունէր ձայն զօրաւոր եւ քաղցր իբրեւ զքնարի»: Ամէնքին սիրելի է Ալեքսիանոսը, մեծ ապագայ են մարգարէանում նրա համար. երանի են տալիս նրա հօրը, որ այնպիսի զաւակ ունի. նա էլ ուրախացած՝ այդ մասին պատմում է կնոջը: Իսկ Ալեքսիանոսն ինքը վախենում է, որ մի գուցէ իր ստացած բոլոր պատիւները մոլորեցնեն իրեն եւ Աստուծուն աղաչում է՝ «փրկել զնա ի խոտորեցուցիչ փառաց եւ ի մեծութենէ անտի», որպէսզի միայն Աստուծուն ծառայի:

Երբ տասնութ տարեկան է դառնում, նրան, հակառակ իր կամքի, ամուսնացնում են Հռոմ քաղաքի թագաւորազներից մէկի դստեր հետ: Հարսանքի ժամանակ, երբ բազմութիւնը հաւաքուած է ուրախութիւն անելու, նա քաշւում է մի զատ սենեակ: Հայրը գնում, ասում է. «Որդեա՛կ, ընդէ՞ր եկիր այսր. ո՞չ ապաքէն բազմութիւն քաղաքիս թագաւորաւն հանդերձ վասն քո ժողովեալ են այսօր: Արի՛, որդեակ, առ կին քո եւ խօսեաց ընդ նմա եւ ուրախացիր»: Ձեռից բռնում, տանում է կնոջ մօտ: Ալեքսիանոսը երբ կնոջը տեսնում է, ասում է նրան. «Խաղաղութիւն ընդ քեզ, հարսն Քրիստոսի երկնաւոր փեսային»: Կինը պատասխանում է. «Ողորմութիւնն Աստուծոյ հասցէ քեզ ի թիկունս, ընտրեալդ յԱստուծոյ երկնաւոր թագաւորին»: Հարսանքի

ուրախութիւնը վերջանում է․ նրանց մտցնում են առագաստ։ Ալեքսիանոսն աղօթք է անում․ «Եւ եղեւ ձայն իմանալի յերկնից յոգւոյ նորա որ ասէր․ Ե՛լ ի տանէ քումմէ եւ եկ զկնի իմ աղքատութեան ճանապարհաւ»։ Ալեքսիանոսն արդէն գիտէ, թէ ինչ անի։ Նա մատանին հանում, տալիս է կնոջը, որ պահի․ եւ յայտնում նրան, թէ գնում է եկեղեցի աղօթելու, եւ հակառակ կնոջ կամքին դուրս է գալիս, գնում եկեղեցի, աղօթում․ դարձեալ քաջալերիչ ձայն է լսում երկնքից։ Գնում է ծովափ, նաւ է նստում, հեռանում է Հռոմից։ Երբ ցամաք է դուրս գալիս, վաճառում է իր ունեցածը, տալիս է աղքատներին, ինչպէս վարւում են սովորաբար սրբերը, եւ ինքն աղքատի հագուստով գնում է Ուռհա քաղաքը եւ եկեղեցու դռանը կամաւոր աղքատ մուրացկան դառնում։ Նա ուխտում է․ «Կենդանի է տէր, զի ոչ մտից յեկեղեցիս, մինչեւ գիտացից, եթէ եթող ինձ տէր Աստուած զմեղս իմ»։ Նա այնտեղ աղօթում, արտասուք է թափում եւ գիշերն էլ եկեղեցու գաւթում մի տեղ մնում։ Չնչին չափով հաց ուտում եւ ջուր խմում, եւ այնպէս ճգնում էր նա։

Երբ Ալեքսիանոսը հարսանքի գիշերը հեռանում է, կինը երկար սպասելուց յետոյ՝ սկսում է լալ։ Իմանալով Ալեքսիանոսի փախուստը՝ ամէն տեղ որոնել են տալիս նրան չորս հազար ծառաների ձեռով։ Մայրը ողբում է որդուն։ Որոնողները հասնում են Ուռհա (Եդեսիա) քաղաքը․ նրանք եկեղեցու դռանը ողորմութիւն են տալիս Ալեքսիանոսին, բայց չեն ճանաչում նրան։ Իսկ ինքն Ալեքսիանոսը շատ գոհ է, որ արժանացել է իր ծառաներից ողորմութիւն առնելու։

Բերենք չարունակութիւնը հին թարգմանութիւնից։

Երբ ծառաները վերադառնում են յայտնելով, թէ Ալեքսիանոսին չեն գտել, այն ժամանակ հայրը փառք է տալիս Աստուծուն, ասելով, թէ՝ «Տէր ետ, Տէր էառ, եւ եղիցի անուն տեառն օրհնեալ»։ Բայց մայրը լալիս է դառնապէս․ «Եւ մտեալ ի տուն մի, տարածեաց մոխիր եւ նստաւ ի վերայ եւ եբաց պատուհան ընդդէմ ճանապարհին եւ ասէ․ «Կենդանի է տէր, զի ոչ ելից աստի մինչեւ տեսից զորդին իմ»։ Կինն էլ մտնում է տան մի անկիւնը, մի մութը տեղ եւ ասում․ «Ոչ ելից աստի, մինչեւ գտից ողորմութիւն ի տեառնէ եւ տեսից զերեսս տեառն իմոյ եւ զուգակցի»։ Եւ յայս գործ մտեալ՝ ուխտեցին»։ — Մարդ յիշում է Դեղձուն Ծամի սուգը Մհերի մեռնելուց յետոյ, թէ ինչպէս նա փակւում է մի սենեակի մէջ «եօթ դռների ետեւ», մինչեւ Մհերի նորամանուկի մեծանալը։

Ալեքսիանոսը տասնուհինգ տարի մնում է Ուռհայում եկեղեցու դռանը, անդադար աղօթելով։ Նա իրեն մեղաւոր համարելով՝ չի մտնում եկեղեցին, մինչեւ որ քահանան տեսլի մէջ հրաման է ստանում Սուրբ Կոյս Մարիամից, որ ասում է նրան․ «Ե՛լ տես առ դուրս եկեղեցւոյդ զայրն Աստուծոյ եւ ա՛ծ զնա յեկեղեցիդ, զի լսելի եղեն աղօթք նորա առաջի տեառն եւ իբրեւ զհոտ անոյշ բուրեաց առաջի Աստուծոյ ճգնութիւն նորա»։ Քահանան չի կարողանում գտնել սրբին։ Տեսիլը կրկնւում է, եւ վերջապէս այդ ճգնաւորին մտցնում են եկեղեցին ներս։ Քիչ յետոյ այդ կամաւոր աղքատը մտածում է, որ մարդիկ քահանայի տեսլի պատճառով պիտի ժողովուեն իր մօտ, եւ ինքն այլեւս ազատ չի մնալու՝ անխափան աղօթելու համար, ուստի նա

իսկոյն հեռանում է Ուռհայից, գնում է ծովեզրը՝ նաւով Տարսոն գնալու: Հողմը նաւը հանում է Հռոմ: Նա գնում է իր հայրական պալատի դուռն իբրեւ աղքատ, հայրն ընդունում է նրան եւ թոյլ է տալիս նրան իր դռանն ապրել եւ նոյնիսկ ծառաներից մէկին յանձնարարում է հոգալ նրա մասին: Տասնուհինգ տարի էլ մնում է նա այնտեղ մի խաւար տեղում՝ իր հօր դըռանը: Ոչ ոք չի ճանաչում նրան: Ծառաները ծաղրում են նրան, փետում են նրա մօրուքը, բայց նա համբերութեամբ տանում է այդ՝ համարելով սատանայական որոգայթ: Տասնուհինգ տարին որ լրանում է, նա «կաղամար եւ քարտէզ» է ուզում իրեն պահող ծառայից եւ մի բան գրում: Այդ ժամանակ կիրակի օրը պատարագի ժամանակ երկնքից ձայն է լսւում, թէ «Յետ երից աւուրց ընկալայց զսուրբն Աստուծոյ առ իս, քանզի յոյժ ճգնեցաւ վասն անուան իմոյ· բայց դուք երթայք առ նա եւ ընկալջիք օրհնութիւն ի նմանէ, եւ օրհնեսցէ զքաղաքս ձեր»: Պատրիարքը երեք օր պահք պահել է կարգադրում, ապա նոյն երկնային ձայնից իմանում են, որ սուրբը Ոփոմիանոսի (Եփիմիանոսի) տանն է: Հարց ու փորձ անելուց եւ որոնելուց յետոյ՝ իմանում են, թէ ով է այդ «աստուածապաշտ եւ առաքինի մարդը»: Գտնում են «տառապեալի» տեղը եւ երբ ներս են մտնում, Աստուծու սրբին վախճանուած են գտնում: Եկեղեցուց գալիս են պատրիարքը, իշխաններն ու բազմութիւնը սաղմոսներով ու վառած ջահերով, ներս են մտնում եւ տեսնում են, որ սուրբը «ունէր ի ձեռին իւր հրովարտակ»: Պատրիարքը ձեռքը մեկնում է, որ սրբի ձեռից առնի թուղթը, բայց չի կարողանում: Այն ժամանակ ասում է սրբին. «Տացես ինձ զհրովարտակդ, զի կարդացից բազմութեան քաղաքիս Հռոմայ»: Այդ որ ասում է, սրբի ձեռքը բացւում է եւ թուղթը տալիս է պատրիարքին: Սարկաւագը մի բարձր տեղից կարդում է բազմութեան առաջ: Ալեքսիանոսը գրութեան մէջ մանրամասն յայտնել էր իր ով լինելը եւ իր կեանքը: Բոլոր բազմութիւնը լաց է լինում: Հայրն էլ երեսի վրայ ընկած՝ լալիս է դառնապէս եւ ասում. «Զի՞նչ գործեցեր, որդեա՛կ իմ, դու էիր յոյս անձին իմոյ եւ լոյս աչաց իմոց, եւ տեղի մեծութեան իմոյ ի քեզ հաստատեալ էր. ընդէ՞ր ոչ խանդաղատէր սիրտ քո յելս եւ ի մուտս իմ, եւ ընդէ՞ր ոչ ասէիր ինձ զքէն, եւ զիա՞րդ ընդունէիր զնախատինս ի ծառայից քոց»: Մայրն էլ երբ իր բանտում լսում է լուրը, բաց է անում դուռը, որ փակել էր որդու հարսանիքի առագաստից գնալուց ի վեր, դուրս է գալիս եւ ասում ամբոխին. «Ճանապարհ արարէք ինձ, զի անցեալ տեսից զփափաքելի ճրագն իմ, որ լուցեալ էր եւ արդ խաւարեալ գտանի: Թողէք, զի տեսից զաստղն պայծառացեալ եւ արդ շիջեալ գտանի: Աղաչեմ զձեզ, մա՛րք, որոց ծնեալ իցէ մանկունս, եւ հա՛րք, որոց իցեն որդիք, գալարին աղիք իմ ի վերայ որդեծնութեան գթոյն եւ ի վերայ վարդոյդ, որ թարշամեցաւ ի բուրաստանին եւ ոչ գոյ զօրութիւն հոտոյ· տեսէք զիս եւ ողորմեցէք ինձ»: Եւ սրբի երեսի վրայ ընկած ասում է. «Որդեա՛կ իմ, սընուցի զքեզ ի վերայ ծնգաց իմոց, եւ կաթամբ դիեցուցի զքեզ քաղցրաբուխ ստեամբ. ընդէ՞ր ոչ ողորմէիր ինձ յորժամ էի արգելեալ ի բանդ վասն քո. ո՞չ տեսանէիր զտառապելութիւն իմ, քաղցրիկ որդեակ իմ, եւ զնեղութիւն

անձին իմոյ. լո՛յս աչաց իմոց, սէր հաստատութեան տառապեալ հօր քո եւ զերեցելոյ մօր քո, զի ոչ երբեք դադարէր լեզու իմ հանապազ յիշել զքեզ եւ յուլոց հանել»:

Նոյն քնարական զեղումն է անում եւ սրբի կինը: Նա երբ իր արգելարանում լսում է, խելոյն զալիս ընկնում է դիակի ոտներն եւ ասում է. «Ես տառապեալս յերեկ մտի յառագաստ եւ այսօր գտանիմ այրի մնացեալ. ահա եղէ ես իբրեւ զտատրակ, որ մեռաւ ամուսին նորա, եւ նորա գնացեալ յանքոյթ տեղի եւ ոչ նստեալ ի վերայ դալար ոստոյ. նոյնպէս եւ ես գնացից ի քարածերպս եւ զգեցայց սեաւ զամենայն աւուրս կենաց իմոց ի մահուանդ քում»:

Ալեքսիանոսի դին պատում են պատուական հանդերձներով, դնում են տախտի վրայ, որ էր ոսկի եւ թանկագին քարեր, եւ սկսում են աղօթք անել: «Եւ ամենայն նեղեալք եւ ախտաժէտք որք մերձենային ի նշխարս սրբոյն՝ բժշկէին յամենայն ախտից, եւ կաղք եւ կոյրք եւ նեղեալք յայսոց պղծոց բժշկէին»: Գերեզման են փորում, բայց բազմութեան ձեռից չեն կարողանում երանելիի նշխարքը դնել իր հանգստարանը: Այն ժամանակ հրամայում են զանձ շաղ տալ, որպէսզի ամբոխը զբաղուած լինի: Եւ այսպէս սաղմոսներով ու օրհնութեամբ թաղում են: «Եւ բազում բժշկութիւնք լինէին ի հողոյ հանգստի սրբոյն»: Գերեզմանի վրայ եկեղեցի են շինում եւ նրա մահուան օրը, Փետրուարի 5-ին, տօն կատարում:

Ահա մի վիպական կենդանի պատմուածք, որ մեծ հետաքրքրութեամբ կարդացել կամ լսել են կրօնական ոգով տարուած ընթերցողները եւ ունկընդիրները: Նրանց վրայ զօրեղ ազդեցութիւն է թողել գործող անձերի հոգեկան վիճակը, առանձնապէս գլխաւոր հերոսի կամքի հաստատութիւնը ճըգնական կեանքի համար, թէ ինչպէս նա նորահաս տարիքում, անգամ առագաստի գիշերը, փախչում է ֆիզիկական ցանկութիւնից ու հեշտանքից եւ ապա թէ ինչպէս համբերութեամբ, կամաւոր կերպով, տանում է ամէն տառապանք նոյնիսկ իր հօր դռանը:

6. «Հարանց վարքերի» մէջ եղած պատմուածքները, ոչ միայն Ալեքսիանոսի, այլեւ ուրիշների, ինչպէս օրինակ, «Վարք երանելոյն Աբբայ Մարկոսի եւ կատարումն նորին եւ խօսք առ Սերապիոն» (1), շատ կարդացուած են մեզանում եւ հեշտութեամբ հասել են իրենց նպատակին՝ կենդանի օրինակներ ներկայացնելով քրիստոնեայ հասարակութեան համար՝ նրա մէջ անզգալի կերպով պատուաստել եկեղեցու քարոզած գաղափարները: Ճգնազգեաց անապատականների կեանքից առած հրաշապատումները, ինչպէս են դեւերի փորձութիւնների դէմ մաքառելը, հրեշտակների երեւալը, տեսիլները, նոյնիսկ անշաւիղ, անջուր անապատում ապրելն ու ճանապարհ գնալը, «կախարդների դրախտը» մտնելը հակառակ դեւերի, եւ շատ նմանները իրենց զգայացունց տեսարաններով գրգռել են հաւատացողների երե-

(1) Վարք սրբոց հարանց, հատ. Ա., էջ 188 եւ հետ.:

ւակայութիւնը եւ գարձել մարմնի ոչնչացման եւ աշխարհուրացման ամենից ուժեղ միջոցը։

«Հարանց վարքերի» մէջ հաւաքած նիւթերը երբեմն փոքր ի չափէ ընդարձակ, բանաստեղծական ոճով յօրինուած պատմուածքներ են․ դրանց մէջ կան եւ գեղեցիկ մանրապրոյցներ, ծերերի խօսքեր ու խրատներ։ Բոլորի նպատակն է, հարկաւ, կրօնական կրթութիւնն ըստ եկեղեցու հասկացութեան, ինչպէս են՝ զղջում եւ արտասուք, առանձնական «հանդարտութիւն», կատարեալ առաքինութիւն, անընչութիւն, համբերութիւն, ուղիղ դատաստան, օտարասէր լինել, հնազանդութիւն, խոնարհութիւն եւայլն։ Մեծ մասի մէջ նոյն ճգնաւորական կեանքն ու իղէալն է երեւան գալիս։ Պակաս չեն եւ զրոյցներ, որոնց մէջ պատմւում է կրօնաւորների անժուժկալութեան մասին, եւ կամ թէ ինչպէս կրօնաւորը «չի հանդարտում», «պատերազմում է» պոռնկական չար դեւի դէմ, «եւ էր պատերազմ նորա իբրեւ զհուր վառեալ, —ասւում է մի զրոյցի մէջ, — եւ այրէր զսիրտ նորա ի գիշերի եւ ի տուընջեան» (1)։

Ահա մի զրոյց, որից տեսնում ենք, թէ ինչպէս կրօնաւորն ինքն իրեն տանջում է, որպէսզի լաւ եւ արդարանայ։

Եղբայր ոմն կրօնաւոր եղեւ եւ բնակէր ի լեառն Նիտրիոյ, եւ էր սենեակ նորա մերձ այլում եղբօր. լսէր, զի ողբայր նա զմեղս իւր օր ըստ օրէ։ Իսկ յորժամ ոչ գայրին արտասուքն, ասէր ցանձն իւր. «Ընդէ՞ր ոչ լաս զքեզ, եղկելի եւ վաստթար. եւ եթէ ոչ կամիս լալ դու, ես արարից, զի լացցես»։ Եւ ունէր խարազան չուանեայ կարկամ յոյժ, եւ յարուցեալ առնոյր զխարազանն զայն եւ հարկանէր ուժգին զինքն, մինչեւ ի ցաւոց հարմանն վշտանայր եւ լայր։ Զարմանայր ընդ այն մերձաւոր եղբայրն եւ աղաչէր զԱստուած յայտնել նմա, եթէ բարւո՞ք առնէ նա, զի տանջէ զանձն իւր։ Եւ ի միում գիշերի տեսս նա ի տեսլեանն, որպէս զի կայր եղբայրն այն ի գունդս մարտիրոսաց կարգեալ, եւ պսակ պայծառ կայր ի գլուխ նորա, եւ ասէ ոմն ցնա. «Տեսանե՞ս դու զբարւոք զայս նահատակ, որ նեղէ զանձն իւր եւ հարկանէ վասն սիրոյն Քրիստոսի, թէ ո՛րպէս ընդ գունդս վկայիցն դասեալ է» (2)։

Բերենք մի մանրազրոյց եւս, թէ ինչպիսի բաները մեղք են համարում եւ ինչպէս ապաշխարում են (3)։

Եւ մինչդեռ երանելի ծերն նստէր ի խցին իւրում, մժղուկ մի ի սրունն նստաւ. իսկ երանելի ծերն չվեաց զոտսն եւ ճմլեաց զմժղուկն։ Եւ իբրեւ ետես զարիւն մժղկին, ինքն զինքն սկսաւ բամբել եւ ասէ. «Անձամբ զանձին վրէժ խնդրեցից»։ Եւ սկսաւ խորհել ընդ միտս իւր եւ ասէ. «Զի՞նչ իցէ արեանս այս ապաշխարութիւն»։ Եւ չոգաւ առ միայնակեացն Յովսէփ եւ խոստովանեցաւ զիրսն։ Իսկ երանելի ծերն Յովսէփ ասէ. «Ե՛րթ, եղբա՛յր, այդ արեան զրոյցք են, չկարեմ ինչ քեզ ասել»։ Յայնժամ ծերոյն մերկացեալ յիւրմէ զհանդերձս իւր եւ երթեալ յանապատ եւ նստեալ անդ ամիսս վեց։ Եւ տեղեացն այն

---

(1) Անդ, էջ 650։

(2) Անդ, էջ 560։

(3) Անդ, էջ 90։

այնպէս էին զառողք եւ պիծակք, զի սովոր էին զխօզս վայրենիս ուտել. եւ այնպէս արարին զմարմին նորա, որպէս զէշ գազանաց կրծեալ յոսկերաց: Եւ յետ անցանելոյ վեց ամսոյն, դարձաւ ծերն անդրէն ի խրճիթն իւր, եւ ոչ ոք ճանաչէր, եթէ տէր Մակար իցէ:

# ԱՌԱՋԻՆ ՀԵՂԻՆԱԿՆԵՐ

## ԳՐԱԿԱՆՈՒԹԵԱՆ ԸՆԴՀԱՆՈՒՐ ԲՆՈՅԹԸ ԵՐԿՐՈՐԴ ՇՐՋԱՆՈՒՄ

Մեր առաջին թարգմանիչներից սկիզբն է առնում նաեւ Հայկական ինքնուրոյն դպրութիւնը 5-րդ դարում, որ իր մեծ գրական շարժման, իր բեղմնաւոր արդիւնքների հարուստ ու բազմակողմանի բովանդակութեան համար կոչուել է հայ դպրութեան «Ոսկեդար»: Այս դարի դրուածքներն իրենց լեզուով, ոճով ու արուեստով սովորաբար նմանողութեան օրինակներ են մնացել հետագայի գրողների համար:

Որովհետեւ գիրն ու դպրութիւնը ծագել էր բաւարարութիւն տալու առաջին հերթին եկեղեցու կարիքներին, ուստի մեր ինքնուրոյն գրականութիւնն իր սկզբնական շրջանում ունի գլխաւորապէս եկեղեցա-կրօնական բնոյթ: Գրականութիւնը գտնւում էր եկեղեցականների ձեռին եւ ծաղկում էր վանքերում կամ առանձին հոգեւորականների գրչով: Աշխարհականներն անմասն էին մնում գրական աշխատանքին, եւ եթէ մի երկու գրողներ այդ դասից երեւան են եկել, նրանք էլ տոգորուած են նոյն կրօնական ոգով, քանի որ նոյն գրքերի վրայ են սովորել, նոյնպէս հմուտ են եկեղեցական ուսման եւ տարուած են դրանով, ինչպէս ընդհանրապէս միջնադարում: Այդ պատճառով եւ այդ գրականութիւնն արտայայտութիւն է գլխաւորապէս եկեղեցական դասի, որ ունէր իր դրելու յատուկ ձեւերը, իր սեփական նպատակն ու ձգտումները եւ իր գրական տեսակները:

Լինելով ծնունդ ոչ մեր բնիկ աւանդական բանահիւսութեան զարգացման՝ գրականութիւնը սկզբում չունի կատարեալ ինքնատիպ կերպարանք: Դա ձեւով մասամբ հետեւողութիւն է ընդհանուր քրիստոնէական գրականութեան, մէկ-մէկ նաեւ քաղաքական (կոմպիլատիւ) բնաւորութեամբ: Հայ գրողները իւրացնում են բոլոր գրական տեսակները, որ կային քրիստոնէական գրականութեան մէջ: Այսպիսով՝ նրանք մտաւոր հաղորդակցութեան մէջ էին մնում ասորիների եւ առանձնապէս բիզանդացիների հետ եւ գրականութեան միջոցով հնարաւորութիւն ունէին արեւմտեան մտաւոր հոսանքներն ընդունելու:

Ինչքան էլ մեր առաջին գրողները հետեւում են ուրիշներին, բայց եւ այնպէս նրանց երկերն ընդհանրապէս մշակուած են ազգային բովանդակութեամբ, կապուած են իրենց միջավայրի եւ դարաշրջանի իրական պայմանների հետ եւ բխում են ժամանակի պահանջից: Գրականութիւնն ստեղծւում էր այն շրջանում, երբ հայկական պետութիւն չկար, բայց դեռ մընում էին հայ ֆէոդալները: Եկեղեցին ինքը մեծ հողատէրերից մէկն էր: Հոգեւորականութիւնն իր շահերով սերտ կապուած չէր այլազգի իշխողնե-

րի հետ եւ յաճախ հակամարտիկ էր նրանց դէմ։ Նրա գոյութիւնը կախուած էր հայութիւնից, քանի որ եկեղեցին միայն ինքնուրոյն հայոց եկեղեցի էր, եւ նրա շահերը կապուած էին առհասարակ հայ ժողովրդի հետ։ Ուստի եւ մեր գրաւոր դպրութիւնն օտար գրականութիւնների ազդեցութիւնը կրելով հանդերձ՝ իր ներքին էութեամբ բուն ազգային է։ Դա, ինչպէս ասել ենք, եկեղեցա-քաղաքական մաքառման գրականութիւն է, որի միջուկը կազմում է իդէոլոգիական պայքար ու մաքառում այլազգի իշխողների դէմ՝ ազգային ինքնուրոյնութիւնն ու անկախութիւնը պահելու համար։

Այդ գաղափարախօսութիւնը մշակել էր եկեղեցին, բայց դա եւ ֆէոդալներինն էր։ Ուստի եւ եկեղեցական գրողն այդ կողմով հանդիսանում էր ոչ միայն հոգեւորական դասի, այլեւ միւս իշխող դասի — ֆէոդալների արտայայտիչը, առանձնապէս երբ այդ երկուսի շահերը զուգակցում էին իրար։ Ֆէոդալական հասարակակարգի աշխատող դասը, գիւղացիութիւնն իր շահերով, հասկանալի պատճառով հանդէս չի գալիս, կամ քիչ է երեւում եկեղեցականի յօրինած երկերի մէջ։

Գրաւոր դպրութիւնը, սակայն, ամբողջ հայ գրականութիւնը չէր։ Կար եւ աւանդական բանահիւսութիւնը։ Գիրն ու գրականութիւնը, ինչպէս տեսանք, մեզնում ծնուեց ազգային եկեղեցական նպատակի համար, որոնցից առաջինն ու գլխաւորն էր քրիստոնէական գրականութեան միջոցով պայքարել ընդդէմ հեթանոսութեան, ընդդէմ պարսիկների։ Եւ որովհետեւ ժողովրդական երգն ու վէպը հեթանոսական էին, ուստի սրանք բնականաբար եւ մղուեցին եկեղեցականութիւնից, քանի որ քրիստոնէութիւնն իր աշխարհայեցութեամբ եկած էր ոչ թէ հեթանոսականը զարգացնելու համար, այլ նրա փոխանակ մի նոր հոգեւոր կեանք ստեղծելու եւ իր ճգնաւորական ոգով նոյնիսկ աշխարհն ու երկրաւոր կեանքն ուրանալու յանուն մի երկնաւոր հանդերձեալ կեանքի։ Բայց որքան էլ եկեղեցականութիւնն աշխատէր դրա համար, դարձեալ հին աշխարհիկ բանաստեղծութիւնը չէր կարող բոլորովին մոռացութեան տրուել։ Աշխարհականը, ազնուական թէ ռամիկ,— որոնք այն դարերում մտաւորապէս շատ չէին տարբերւում միմեանցից եւ միշտ էլ սիրով լսել եւ պատմել են արեւելեան առասպելները, — երկար ժամանակ դեռ պահում է իր սեփական աւանդական բանահիւսութիւնը, առանձնապէս աւանդական վէպերը։ Այդ էր գլխաւորապէս բաւարարութիւն տալիս նրա ճաշակին։

Այսպիսով, մեր գրականութեան մէջ 5-րդ դարի սկզբից հէնց՝ երկուութիւն է մտնում։ Մի կողմում գրաւոր դպրութիւնն է, հակուած աւելի դէպի արեւմուտք, այն բնաւորութեամբ, որ ունի եկեղեցական գրականութիւնն ընդհանրապէս քրիստոնեայ ազգերի մէջ։ Դա առանձին սիրով մշակուել է՝ արտադրելով մեծ թուով երկեր, ուստի եւ յայտնի է իր համեմատական հարստութեամբ. բայց Հայաստանի յաճախակի աւերմունքների պատճառով դրանից շատ բան կորստի է մատնուել։ Միւս կողմում աշխարհիկ անգիր բանաստեղծութիւնն է, մեծ մասամբ գիւղացու ստեղծագործութիւն, շարունակութիւն հին բանահիւսութեան, որ ինքնուրոյն է եւ ցոլա-

ցընում է իր մէջ բուն ժողովրդի կեանքը, աւելի արեւելեան ու հեթանոսական բնաւորութեամբ, բայց ժողովրդի ընդհանրութեան հետ հետզհետէ քրիստոնէութեամբ համակուած, երկար դարեր առհասարակ ենթակայ արհամարհանքի եւ անգամ թշնամական վերաբերմունքի հոգեւորականների կողմից, ապրել է միայն բերանացի աւանդութեամբ, դրա համար էլ դրանից շատ քիչ բան է մնացած եւ հասած ապագային: Մեր այս երկու բանահիւսութիւնները, աւանդականն ու գրաւորը, միասին արտայայտել են մեր հին գրականութեան ամբողջական պրոցէսը 5-րդ դարից ի վեր: Այդ երկուսն իրենց առանձին ճանապարհով են առաջ գնացել, բայց իրարուց տարբեր լինելով հանդերձ՝ միմեանցից բոլորովին անկախ չեն: Եթէ եկեղեցին վերջ ի վերջոյ իր հոգին մտցնում է ժողովրդի մէջ, աւանդական աշխարհիկ բանաստեղծութիւնն էլ մերթ ընդ մերթ իրեն զգալի է դարձնում եւ երեւան է գալիս պատմագրութեան եւ այլ տեսակների մէջ: Բացի այդ՝ ինչ որ աւանդական բանահիւսութիւնից ունենք մեր գրականութեան երկրորդ շրջանում (մինչեւ 11-րդ դարը), դա իր բովանդակութեամբ ու միտումով, սակաւ բացառութեամբ, անանջատ կերպով մտնում է «մաքառման գրականութեան» մէջ, թերեւս մասամբ այն պատճառով, որ դրա գրողներն էլ եկեղեցական են եղել:

## ՍԱՀԱԿ ՊԱՐԹԵՒ

Կանոններ: — *Մեր գրականութեան երկու մեծ հայրերը՝ Սահակն ու Մաշտոցը եւ նրանց երկու աշակերտները՝ Եզնիկն ու Կորիւնը՝ հանդիսանում են մեր առաջին հեղինակները: Բացի այս աշակերտներից՝ ուրիշներն եւս կարող են հեղինակած լինել, բայց ժամանակն ուրիշների անունով աշխատութիւն չի հասցրել մեզ: Այդ չորսից երեւան են եկել ընդհանուր եկեղեցական գրականութեան հինգ տեսակներ — կանոն, թուղթ, ճառ, ջատագովութիւն կամ հակաճառութիւն եւ պատմութիւն կամ վարքագրութիւն:*

*Սահակ Պարթեւը, այս մեծ թարգմանիչը, որի համար մի քանի կարեւոր կենսագրական տեղեկութիւններ բերուեցին վերեւում, իբրեւ կաթողիկոս, իր ժամանակի մեծ մասը բնականաբար նուիրել է եկեղեցու վարչական գործերին եւ սրանց հսկողութեանը: Եկեղեցու բարեկարգութիւնն է եղել նրա հոգացողութեան առարկան: Այդ են վկայում եւ նրա անունով յայտնի 55 գլուխ (վեց հատուած)* կանոնները (1), *որոնց մէջ որոշւում են եկեղեցու պաշտօնեաների պարտականութիւնները, նրանց իրաւասութեան սահմանները, նրանց եւ ժողովրդի յարաբերութիւնը, նրանց հասոյթները եւ այլն: Աչքի է ընկնում, որ առանձնապէս հոգացուած է եկեղեցական դասի*

(1) Կանոնգիրք Հայոց, ձեռագրերի համեմատութեամբ խմբ· Արսէն Ղլտճեան, Թիֆլիս, 1913, էջ 15—56· «Կանոնք սրբոյն Սահակայ Հայոց կաթողիկոսի, գլ· ԾԵ»: — Ինչպէս երեւում է, այս խմբագրութիւնը թերի է· Ա· կանոնի սկզբում ասւում է՝ «որ վերագոյն ճառեցաւ ի մէնջ», իսկ վերեւում բան չկայ ասուած:

նիւթական շահերի, բազմաթիւ եւ բազմատեսակ եկամուտների համար:

Հին գրականութեան այս ճիւղը, հարկաւ, սոսկ գործնական բնոյթ ունի եւ բոլորովին հեռու է գեղարուեստական ձեւից: Սահակի այս կանոնները, սակայն, յօրինուած են երբեմն մասամբ ոչ իբրեւ սառն պատուէրներ եւ արգելքներ, այլ բացատրական, խրատական եղանակով ու ճառօրէն եւ նոյնիսկ պատմական ակնարկներով: Ինչպէս, օրինակ, հոգեւորականների հասոյթները ծագում են ձրիակեր քրմերից, որոնք ասում են. «Ոչ ունիմք արուեստ գործականութեան հնարից ինչ առ ի պատրաստել նոքօք զպարէն ռոճկաց՝ եւ մեզ եւ որդւոց մերոց» (Զ. հատուած, էջ 51 եւ հտ.): Բայց եւ այնպէս՝ այդ կանոնները հետաքրքիր են ոչ իրենց ձեւով, այլ բովանդակութեամբ: Դրանց մէջ պայծառ արտայայտւում են ժամանակի ներքին կեանքի մի քանի կողմերը, խոտելի սովորոյթները եւ նմանները: Բերենք իբրեւ օրինակ հետեւեալ կանոնը, որով արգելւում է մանկահասակներին ամուսնացնել եւ կատարելահասակներին, առանց իրենց կամքը հարցնելու, պսակել. «Պատուէր արարէք նոցա (= ժողովրդականներին), զի տղայոց (= երեխաներին) կանայս մի՛ խօսեսցին եւ մի՛ կատարեսցեն առանց զիրեարս տեսանելոյ միմեանց հաճութեամբ. եւ դուք քահանայք, տղայոց ամենեւին իսկ պսակ մի՛ օրհնէք, մինչեւ ի կատարումն հասակի. իսկ կատարելոց, որոց զմիմեանս ոչ իցէ տեսեալ ի հաճոյս իւրեանց, պսակ մի՛ իշխեսջիք դնել՝ առանց քննութեան եւ ցնոսին ինքեանս հարցանելոյ. զուցէ բռնադատութեամբ ծնողաց յակամայ հաւանեալ իցեն. եւ զայնպիսի հարսանիս մի՛ իշխէք յանձն առնուլ, զի մինչեւ ցայսօր յայդպիսի անկարգութենէ բազում վնասք գնացին յաշխարհիս՝ հոգեւոր եւ մարմնաւոր» (1):

Գրականութեան հիմնադիր կաթողիկոսը հէնց առաջին կանոնի մէջ պատուիրում է լինել «ուսումնասէր» եւ քիչ յետոյ պատուիրում է քորեպիսկոպոս չկարգել «մանաւանդ զուսումնատեացս, զի որ կամակոր յուսմանէ՝ անկանի ի չարիս... վասն որոյ անընդհատ պարտի պահել յարդարուն դդրպբոցըս ի վանս եւ յայլ արժանաւոր տեղիս, զի լուսաւորեալք լուսով պատուիրանաց Աստուծոյ՝ զամենեսեան լուսաւորեսցեն»(2): ԺԲ. կանոնի ներածութեան մէջ վչտացած գրում է քահանաների ծուլութեան, «մանաւանդ ուսումնատեցութեան» մասին. «զի ասացին, թէ ինքեանք չեն ուսեալ եւ ոչ զորդիս իւրեանց ի դպրոց ունին»: «Արդ, բարձէք այսուհետեւ ի ձէնջ զայսպիսի թշնամանս, զորդիս ի դպրոց կալարուf, զի գիտունք լիցին: Ծաներո՛ւք, զի որպէս կուրութիւն աչաց ատելի է մարմնոյ, նոյնպէս եւ տգիտութիւն ոգւոյ՝ ատելի է Աստուծոյ» (3):

Երրորդ հատուածի վերջում (էջ 38 եւ հտ.) կայ մի յիշատակարան. «Այս սահմանադրութիւն կարգաց գրեցաւ հրամանաւ երանելոյ Սահակայ մեծ հայրապետի Հայաստան աշխարհի, ընկալեալ ի քաջ նահատակէն ի

---

(1) Անդ, ԻԶ, էջ 25 եւ հտ.:

(2) Անդ, Թ, էջ 18 եւ հտ.:

(3) Անդ, ԺԲ, ԺԳ, էջ 21 եւ հտ.:

*տեառնէն Գրիգորի, թարգմանեցաւ միայն յունէ հայ»: Այս յիշատակարանն անպայման հետագայի գրութիւն է. Սահակի կանոնները վերագրուել են Ս. Գրիգորին, դրանց աւելի կարեւորութիւն տալու համար: Կան եւ առանձին «Կանոնք սրբոյն Գրիգորի առաքելոյն Հայոց»:*

*Հետագայում առաջ են եկել եւ ուրիշ կանոններ, որոնք սահմանուած են կա՛մ Հայոց եկեղեցական ժողովներում կա՛մ առանձին հայրերից: Դրանք, հեռներն առած եւ «Կանոնք Առաքելոց», ինչպէս եւ առաջին երեք տիեզերական ժողովների կանոնները, այլեւ «Կանոնք առաքելականք» կոչուածները, կազմում են Հայոց եկեղեցու կանոնագիրքը: Այս ժողովածուն, որ, ինչպէս ընդունում են, կազմուել է Յովհան Օձնեցի Իմաստասէր կաթողիկոսի ձեռով եւ յետոյ հետզհետէ լրացուել է, հայոց հին դպրութեան մի կարեւոր մասն է: Աշխարհիկ դրաւոր օրէնսդրութիւն չի եղել մեզնում հնումն. մինչեւ 12-րդ դարն առաջնորդուել են սովորոյթի գիրքով: Բայց որովհետեւ եկեղեցական ժողովներին հոգեւորականների հետ հաւասար մասնակցել են եւ իշխանները, ուստի եկեղեցական կանոնները բռնել են եւ աշխարհիկ օրէնքների տեղը:*

*Սահակ Պարթեւից մնում են եւ երկու* թղթեր: *Կոստանդնուպոլսի պատրիարք Պրոկղը 435 թ. ուղարկում է մի թուղթ Սահակին եւ Մաշտոցին, եւ դրանք երկուսը միասին պատասխանում են նրան: Մի թուղթ էլ Մելիտինէի Ակակիոս եպիսկոպոսն է ուղարկել Սահակին, եւ սա պատասխանել է նրան: Թղթերը կարեւոր են դաւանաբանական տեսակէտով* (1): *Սահակ Պարթեւի անունով յայտնի են որոշ թուով* հոգեւոր երգեր *եւս, որոնց մասին կը խօսուի յետոյ:*

## ՄԵՍՐՈՊ ՄԱՇՏՈՑ

**1. Կենսագրական** — *Մաշտոցի կենսագրութիւնը տեսանք վերեւում: Կարեւոր է հետեւեալ լրացումը բերել այստեղ: Կորիւնը պատմում է, որ երբ Մաշտոցը կարողանում է Կոստանդնուպոլսում կայսրից հրաման առնել Արեւմտեան Հայաստանում հայերէն դպրութիւն սովորեցնելու, միաժամանակ կայսրը նրան հրամայում է «եւ վասն ժանտագործ աղին բորբորիտոսաց եւ եկեղեցեաց հաստատութեան»* (2): *Երբ նա դպրոցների գործը կարգադրում է Արեւմտեան Հայաստանում, «ապա յետ այնորիկ, — գրում է Կորիւնը, — ձեռն արկանէր զժպտեհ եւ զկամակոր բորբորիտոս աղանդն քննելոյ: Եւ իբրեւ ոչինչ գտանէր հնարս յուղղութիւն ածելոյ, առեալ ի գործ արկանէր զթշուառացուցիչ զաւազանն, ծանրագոյն պատուհասիւք ի բանտս, ի տանջանս, ի գելարանս: Իսկ յորժամ այնու եւս պակասեալ ի փրկութենէն գտանէին, խոտակեալս, ապա խանձեալս, մրեալս եւ գունակ գունակ խայտառակեալս, եւ յաշխարհէն կորզէին»* (3):

*«Բարբարիանոս» (ինչպէս՝ «բորբորիտոս») աղանդը հաւանօրէն համարում են*

---

(1) Տես՝ Գիրք թղթոց, մատենագրութիւն նախնեաց, Թիֆլիս, 1901, է:

(2) Կորիւն—Վարք Մաշտոցի, Երեւան, 1941, էջ 66:

(3) Անդ, էջ 68:

նոյնը, ինչ որ մծղնէ (= մեսալեան) կոչուած աղանդը, որ 5-րդ դարում տարածուած է եղել Հայաստանում։ Այս մծղնէ աղանդի հետեւողները կոչւում են «պղծագործ»։ Նրանք «անխտիր հաղորդակցութիւն էին պահանջում տղամարդկանց եւ կանանց մէջ», Կորիւնն էլ իր յիշած «բորբորիտոսներին» բնորոշում է «ժանտագործ» բառով, որ նշանակում է «պղծագործ», «պոռնիկ»։ Թէ այդ նշանակութիւնը ճիշդ է, պարզ է. նա Ս. Գրքի մէջ յիշուած պոռնիկ Րահաբին էլ անուանում է «ժանտագործ Րահաբ» (1)։ Մեր մատենագիրներն ուրիշ դէպքերում էլ պոռնկութիւնն այդ բառով են արտայայտում, ինչպէս, օրինակ, Ագաթանգեղոսի մէջ (2) «ժանտագործ երկիրն Սոդոմացւոց»։ Եփեսոսի ժողովն ուրիշների թւում՝ բանադրել է եւ մեսալեաններին — մծղնէ աղանդի հետեւողներին։

Այդ «բորբորիտոս» աղանդաւորներին շփոթել են Նեստորականների հետ։ Բայց այդ սխալ է, քանի որ Նեստորը բնաւ ջատագով չի եղել պոռնկութեան։ Բացի այդ՝ Նեստորը Կոստանդնուպոլսի պատրիարք է դարձել 428 թ., որից յետոյ բացուել է նրա քարոզած վարդապետութիւնը, որ եւ մերժուել է Եփեսոսի ժողովում 431 թ.։ Իսկ Մաշտոցի յիշեալ հալածանքը տեղի է ունեցել Եփեսոսի ժողովից տարիներ առաջ։ Չնայելով դրան՝ Կորիւնի յիշուած կտորն այնպէս են հասկացել, թէ իբր Մաշտոցը հալածել է Նեստորականներին եւ նոյնիսկ կենդանի այրել է տուել այդ աղանդաւորներին։ Եւ այսպէս ոչ միայն այլազգիները (Ֆրիդ. Կոնիբեր), այլեւ հայերից ոմանք. իբր թէ Մաշտոցն «աղանդաւորներին կենդանի այրել է», թէ դա «մի արատ է մնում Մաշտոցի մեծ արարքի վրայ» եւ թէ «աղանդաւորների հալածանքը նրա կողմից աւելի մեղմ չի եղել, քան քրիստոնեաների հալածանքը հեթանոսների կողմից (3)։ Հալածանքը, անշուշտ, եղել է եւ հրամայուած է եղել Կոստանդնուպոլսից, թերեւս, — ինչպէս կան կարծողներ, — իբրեւ պայման Արեւմտեան Հայաստանում հայերէն դպրութիւն ուսուցանելու թոյլտուութեան։ Այն ժամանակներում այդպիսի հալածանքները — բանտ դնել, ծեծել, գելարաններով տանջել — միայն Մաշտոցի միջոցով չէ, որ կատարել են տուել, եւ Մաշտոցն էլ իր ժամանակի որդին լինելով՝ չէր կարող կայսեր հրամանն այլ կերպ կատարել, բայց «աղանդաւորներին կենդանի այրել», այսինքն խարոյկի վրայ բարձրացնել, դա Մաշտոցի վերաբերմամբ մի զրպարտութիւն է, որ ծագել է, ըստ երեւոյթին, հին հայերէնը եւ առհասարակ հայերէն լաւ չիմանալուց։ Կորիւնը գրում է. «ապա խանձեալս, մրեալս եւ գունակ գունակ խայտառակեալս, եւ յաշխարհէն կորզէին» — ապա խանձեցին, մրեցին ու պէս-պէս ձեւերով խայտառակեցին եւ աշխարհից դուրս հանեցին (= քշեցին)։ Այդ թշուառական «խանձել, մրել» բառերը բացատրել են իբրեւ «կենդանի այրել», առանց մտածելու, թէ էլ ինչպէս կարող էին «կենդանի այրուած» աղանդաւորներին զանազան ձեւերով խայտառակել եւ աշխարհից դուրս հանել։ «Խանձել» չի նշանակում մարդուն «կենդանի այրել» խարոյկի վրայ, այլ նշանակում է՝ խարել, դաղել, խարանել, կէծ երկաթով խարել։ Այսպէս վարւում էին պղծագործ, չարագործ աղանդաւորների, դիւթերի եւ ուրիշների վերաբերմամբ՝ նրանց վրայ խարան, դրոշմ դնելով, ինչպէս «աղուեսադրոշմ» կամ «աղուեսախարան» ասածը։ Իսկ «մրել» նշանակում է պարզապէս՝ մրոտել, մուր քսել երեսին, մի բան, որ ամենամեծ անարգութեան,

(1) Անդ, էջ 26։

(2) Ագաթանգեղոս — Պատմութիւն Հայոց, Տփղիս, 1909, էջ 157։

(3) A. Abeghian, Altarmenische Bibelübersetzung. Marburg i. H. 1906, էջ 31։

*խայտառակութեան նշան էր եւ եկեղեցում պահուած էր նոյնիսկ մինչեւ մեր օրերը* (1)։ *Թէ «խանձել, մրել» բառերով կարելի չէ հասկանալ «կենդանի այրել», բերենք դրա համար մի օրինակ։*

*Մաշտոցի մահից մի քանի տարի յետոյ,* 445 *կամ* 447 *թուին, կայանում է Շահապիվանի նշանաւոր եկեղեցական ժողովը, որի կանոնները* (2) *մասամբ վերաբերում են պոռնկութեան։ Դրա Ժ. կանոնի մէջ կարդում ենք. «Որք լոկ դիւթեն... ԺԲ.* (= 12) *կրկին գան արրցեն. խանձեսցեն, մրեսցեն, յօնկր արկցեն եւ յուրկանոց տացեն. Բ.* (= 2) *ամ աղասցեն գողեացն»։ (Կայ այլ ընթերցուած՝ «խանձեսցին, մրեսցին, յուրկանոց տարցին ...»)։ Կը նշանակի՝ կանոնը պատուիրում է դիւթերին լաւ ծեծել, խանձել, մրել եւ ուղարկել ուրկանոց, ուր երկու տարի պիտի երկանք աղային գողիների համար։ Շատ պարզ է, որ «խանձել, մրել» չի նշանակում՝ «կենդանի այրել», քանի որ այդպէս պատժուածներն ուղարկւում էին ուրկանոց երկանք աղալու* (3)։ *Մաշտոցն էլ նոյնպէս վարուել է տուել «բորբորիանոս» կոչուած աղանդաւորների հետ, միայն նրանց ոչ թէ ուրկանոց է ուղարկել, այլ երկրից դուրս հանել։*

2. «Յաճախապատում ճառք»։ — *Կորիւնը յայտնում է, թէ Մաշտոցը «բազում թուղթս խրատագիրս եւ զգացուցիչս ընդ ամենայն գաւառս առաքէր», բայց այդ թղթերի եւ ոչ մէկը երեւան չի եկել։ Բացի այդ՝ նա գրում է. «Այնպիսի առաւել եւ բարձրագոյն վարդապետութեամբն՝ սկսեալ երանելոյն Մաշթոցի* ճառս յաճախագոյնս, դիւրապատումս, *շնորհագիրս, բազմադիմիս ի լուսաւորութենէ եւ ի հիւթոյ գրոց մարգարէականաց կարգել եւ յօրինել, լի ամենայն ճաշակօք աւետարանական հաւատոցն ճշմարտութեան։ Յորս բազում նմանութիւնս եւ օրինակս ի յանցաւորացս աստի, առաւելագոյն վասն յարութենական յուսոյն առ ի հանդերձեալսն, յերիւրեալ կազմեալ, զի հեշտընկալք եւ դիւրահասոյցք տխմարագունիցն եւ մարմնական իրօք զբաղելոցն լինիցին, առ ի սթափել եւ զարթուցանել եւ հաստա-*

---

(1) Կարգաթող հոգեւորականներին՝ առանձին արարողութեամբ եկեղեցու մէջ կարգալոյծ անելուց յետոյ՝ երբեմն երեսներին մուր էին քսում։ — «Յիմար-իմաստուն» կոյսերի տօնի օրը երեկոյեան ժամերգութեան ժամանակ եկեղեցում տասն երեխայի ժամաշապիկ էին հագցնում եւ եկեղեցու ատեանում կանգնեցնում։ Համապատասխան Աւետարանը կարդալու ժամանակ՝ վիճակահանութեամբ որոշում էին նրանցից հինգն յիմար կոյսեր, եւ նրանց երեսին մուր էին քսում եւ զանազան ձեւերով խայտառակելով՝ եկեղեցուց դուրս էին հանում։

(2) Կանոնագիրք Հայոց, Թիֆլիզ, 1913, էջ 56 եւ հտն.։

(3) Այդ ժողովի ԺԹ (էջ 80) կանոնը. «Եթէ ոք ի մծղնէութեան գտցի կամ երէց կամ սարկաւագ կամ աբեղայ, քահանայութիւնն լուծցի, աղուէսդրոշմ ի ճակատն դիցի եւ ի տեղիս ճգնաւորաց յապաշխարութիւն տարցին։ Ապա եթէ դարձեալ ի նմին գտցի, զջիղսն երկոսին կտրեսցեն եւ ի գողենոց տացեն... Ապա եթէ արք կանամբք եւ որդւովք գտցին յաղանդին, զարանց եւ զկանանց եւ զիրազէտ մանկանց զջիղսն կտրեսցեն, աղուէսդրոշմ ի ճակատն դիցեն եւ ի գողենոց տարցին յապաշխարութիւն. եւ մանկունք, որ չիցեն գիտացեալ զպղծութիւնն՝ կալցին եւ տացին ի ձեռս ս. պաշտօնէից...»։

հիմն առ ի խոստացեալ աւետիսն քաջալերել» (1)։ Այս միեւնոյնը գրեթէ բառացի կայ եւ Ագաթանգեղոսի մէջ՝ Ս. Գրիգորի մասին պատմուած (2)։

Ունենք ճառերի մի ժողովածու «Յաճախապատում ճառք» վերնագրով (3)։ Կորիւնի յիշածը հէնց այս գիրքն է, բայց դա, որովհետեւ դաւանաբանական նշանակութիւն է ունեցել, Գրիգոր Լուսաւորչին է վերագրուել՝ այդ գրուածքին աւելի մեծ հեղինակութիւն ընծայելու համար, եւ որպէսզի որեւէ կասկած հեղինակի մասին փարատուի, ամէն մի առանձին ճառի վրայ Ս. Գրիգորի անունը կրկնուել է իբրեւ վերնագիր («Երանելւոյն սրբոյն Գրիգորի Հայոց Լուսաւորչի» եւ նմանները)։ Իսկ որ Ագաթանգեղոսի մէջ եւս, ինչպէս ասուեց, նման ձեւով պատմւում է Ս. Գրիգորի համար, թէ նա ճառեր է յօրինել, դա արժէք չունի այդ ճառերի հեղինակի նկատմամբ։ Ագաթանգեղոսի Պատմութեան խմբագրողը, այդ գիրքը ծաղկեցնելու համար, Կորիւնից, յաճախ անկապ կերպով, առել է բազմաթիւ ուրիշ կտորներ եւս, որոնք անտեղի եւ անյարմար են Ս. Գրիգորի համար։

Կորիւնը պատմում է, թէ Մաշտոցն Արեւմտեան կողմերում «բազում շնորհագիր մատեանս զհարցն եկեղեցւոյ ստացեալ, ծովացուցանէր զվարդապետութեանն զխորութիւն, եւ լցեալ զեղոյր ամենայն բարութեամբք»(4)։ Դրանից յետոյ Մաշտոցը վերադառնում է Վաղարշապատ եւ ներկայանում է Սահակ կաթողիկոսին ու Արտաշէս թագաւորին։Այդ ժամանակներում հէնց, օգտուելով յիշուած «շնորհագիր մատեաններից», նա յօրինած պիտի լինի «Յաճախապատում» ճառերը, որոնց մէջ նա գրաւոր ամփոփել է, ինչ որ տարիներ շարունակ բերանացի քարոզել է՛ւ ժողովրդին, է՛ւ վանականներին իր հիմնած վանքերում։ Այդ երեւում է «Յաճախապատում»ի հետեւեալ կտորից, որի վրայ, ինչպէս հարկն է, ուշադրութիւն չեն դարձրել. «Ոչ տոհմից փառաւորութիւն փառաւոր առնի առ Աստուծոյ, այլ առաքինութեան բարետոհմութիւն։ Զի ի Հայս ոչինչ մեծագոյն եւ ի Պարսս՝ քան զԱրշակունեաց ազգս եւ տոհմս... Այլ եթէ ոչ զգաստացին ի բարի կրօնս, աւելի պատուհաս ընկալցին ի տեառնէ։ Եւ ծառայք նոցա որ հաճոյ եղեն Աստուծոյ, թագաւորեալք փառաւորեցին ի տեառնէ. եւ նոքա պարտաւորեալք յաղագս մեղաց՝ պատժեցին յարդար իրաւանցն» (5)։ Այս հատուածի բովանդակութիւնը կարելի չի վերագրել Գրիգոր Լուսաւորչին, 4-րդ դարի առաջին երեսնամեակում։ Այն ժամանակ Պարսկաստանում շատ վաղուց ընկած էր պարթեւական հարստութիւնը, իսկ Հայաստանում թագաւոր

---

(1) Կորիւն — Վարք Մաշտոցի, էջ 78, հատ. Ի։

(2) Ագաթանգեղոս, 1909, էջ 466։

(3) Սրբոյ հօրն մերոյ երանելւոյն Գրիգորի Լուսաւորչի Յաճախապատում ճառք լուսաւորք, առաջաբանով, համեմատութեամբ եւ ծանօթութիւններով Ա. Տէր-Միքելեանի, Վաղարշապատ, 1894-96։

(4) Կորիւն — Վարք Մաշտոցի, էջ 68։

(5) Յաճախապատում, էջ 238, ճառ Ի.։

*էր առաջին քրիստոնեայ բարեպաշտ Տրդատը քառասնամեայ խաղաղութեան շրջանում, երբ Հայաստանի սահմանները շատ ընդարձակուած էին, եւ իշխող Արշակունի հարստութեան անկման մասին խօսք չէր կարող լինել: Դա յարմարւում է հայ Արշակունի տոհմի վիճակին 420-ական թուականներին, երբ թագաւոր էր Արշակունի տոհմի վերջին պայազատը, Արտաշէսը, յայտնի ոչ իր «բարեկրօն» կամ «առաքինի» վարքով, երբ եւ հասկացողները պարզ նկատում էին այդ տոհմի մօտալուտ անկումը: Վերեւի հատուածը Մաշտոցի կողմից մի ազդարարութիւն է եղել, հարկաւ, ոչ Վռամշապուհ թագաւորին, այլ նրա այդ որդի Արտաշէսին: Դրանով էլ որոշւում է եւ «Յաճախապատումի» յօրինման ժամանակը՝ մօտաւորապէս 420-ական թուականները:*

*Այդ ճառերի բնոյթն էլ այնպիսի է, որ ենթադրել է տալիս, թէ դրանք ուղղուած են մեծ մասամբ ոչ նորադարձ քրիստոնեաների: Եւ եթէ կան այնպիսի ճառեր, որոնք թերեւս, ինչպէս կարծել են, ակնարկում են նորադարձների, ապա չպիտի մոռանալ, որ հայ ժողովրդի մէջ 5-րդ դարում կային ամբողջ հատուածներ, որոնք հեթանոս էին եւ, ինչպէս Կորիւնը գրում է, Մաշտոցն «ի սիխուս հեթանոսաց» էր քարոզում* (1):

3.— Նիւթը: — *Այս ճառերի մէջ հեղինակի ձգտումն է՝ խրատել եւ ուսուցանել: Դրանք «հոգեւոր խրատներ» են, որոնց ընդհանուր խնդիրն է քրիստոնէական ուսումն ու բարոյականութիւնը: Ճառախօսը քարոզում է քրիստոնէական առաքինի կեանքի պայմանները՝ բարքերի մաքրութիւն, ժուժկալութիւն, սէր, հեզութիւն, գթութիւն: Նա յորդորում է՝ բարի անել, հեռու մնալ անառակութիւնից, չարից, եւ նմանները: Եւ այս ամէնը մի ընդհանուր վերջնական նպատակի համար, որ է «աշխարհի խաղաղութիւնն ու շինութիւնը»:*

*Կան ճառեր, որոնք նուիրուած են յատուկ խնդիրների, ինչպէս են՝ պահք (Թ.), «Վասն հոգւոց մարդկան բացայայտութիւն» (ԺԵ.), «Վասն մարտիրոսացն վարդապետութիւն ուսմանց» (ԺԶ.), «Յորդորումն ապաշխարութեան խոստովանեալ» (ԺԹ.), եւ ուրիշները: Այսպիսի ճառերի մէջ եւս պահւում է նոյն ընդհանուր խրատական բնաւորութիւնը:*

*Յատուկ խնդիրների նուիրուած ճառերից մէկն է նաեւ՝ «Խրատք ճգնութեան եւ ցոյց հանդիսից, որ յառաքինութեան յորդորմունս» (ԻԳ.): Այս ճառը վերաբերում է վանականներին ու վանքերին, որ Մաշտոցը հաստատել էր Հայաստանի զանազան կողմերում: Նա մանրամասն կանոններ է տալիս վանականների կենցաղավարութեան համար, մի առ մի խօսում է պարտականութիւնների մասին վանական պաշտօնեաների, որ են՝ վերակացու, տնտես, շաբաթաւոր, տեսուչ հիւրոց. «տեսուչք եզանց հողագործաց կամ խաշանց արօտականաց եւ հօտից կթոց եւ գրաստուց բեռնակրաց», «որոց օղն [= ոտնաման] հաւատացաւ», գործավար, գործակալ:*

(1) Կորիւն — Վարք Մաշտոցի, էջ 60:

Հասարակական խնդիրներ չի յարուցում ճառագիրը, այլ խօսում է անհատական արարքների մասին: Մէկ-մէկ, սակայն, նա ակնարկում է դասակարգային յարաբերութեան, աշխատաւորների խռովութիւնն ընդդէմ տէրերի՝ համարելով հետեւանք մարդկանց չարագործութեան. «Եւ զխաղաղութիւնն եւ զշինութիւնն... ի խռովութիւն եւ ի տարակուսանս դարձուցանէ [Աստուած] եւ յանհնարին չարիս — խռովութիւնս ընտանեաց եւ օտարաց, ծառայից եւ տերանց եւ ի պէսպէս չար համբաւս. զի այսօքիւք դարձցին ի զղջումն»: Իսկ եթէ դրանով չեն ուղղւում, չարունակում են չարիք գործել, «եւ արհամարհեն զօրէնս եւ զիրաւունս տնանկաց եւ զողորմութիւն կարօտելոց, եւ զճշմարտութիւնն անիրաւութեամբ ունին, եւ անտես առնեն զարտասուս նեղելոց, եւ ձայնի զրկելոց ոչ լսեն, եւ որ այլ եւս իցեն չարիք», դրա համար «մատնէ արդար դատաւորն ի սով եւ ի սուր եւ ի գերութիւն եւ ի կորուստ» (է. 74 եւ հտ.): Այդպիսիները, նոյնիսկ եթէ Արշակունի թագաւոր լինի, ինչպէս վերեւում տեսանք, իրենց վատ արարքների համար կը պատժուին արդար իրաւունքից: Պատժողն, ուրեմն, Աստուած է: Իսկ ինքը հեղինակը չի քարոզում տառապեալների ըմբոստացում, ընդվզում ընդդէմ կեղեքողների, այլ միայն գթութիւն, ողորմութիւն հարստահարողներից դէպի կեղեքուածները եւ «զիրաւունս առ ամենեսեան ցուցանել»: Ընդհակառակն, նա բռնում է քրիստոնէական եկեղեցու յայտնի սկզբունքի կողմը՝ «որք ընդ իշխանութեամբ են ի մտերմութեան կեալ», — իշխանութեան ներքոյ եղողները հաւատարմութեամբ պիտի կենան: — «Զի ոչ ուստեք է, ասէ, իշխանութիւն, բաց յԱստուծոյ. եւ որք են՝ յԱստուծոյ են» (Ժ. 116), — ասում է նա հետեւելով Աւետարանին եւ Պօղոս առաքեալին: «Այլ եւ զթագաւորս եւ զիշխանս եւ զդատաւորս ի խաղաղութիւն եւ ի շինութիւն աշխարհի կարգեաց Աստուած. զի զամբարիշտս, զչունս, զգողս, զկախարդս եւ զամենայն անիրաւս պէսպէս տանջանօք եւ մահուամբ զարհուրեցուսցեն. զի ամենայն չարագործք ըմբռնեալ ի յահէ արգելցին ի չարեաց»: Այդ է իշխանաւորների գոյութեան հիմքը: «Բայց է եւ ի նոսա անիրաւութիւնք նման նոցա [այսինքն՝ ինչպէս չնացողները, ամբարիշտները, գողերը...] եւ առաւել եւս, որք կաշառօք եւ կամ այլ եւս չարեօք բազմացուցանեն զանօրէնութիւնս համարձակեալ ի վնասս»: Այդպիսի անիրաւ իշխանաւորներին նա միայն Աստուծու բարկութեամբ եւ հանդերձեալ կեանքով է սպառնում. «Եւ վասն այսորիկ բանան դրունք բարկութեան սովոյ եւ սրոյ եւ գերութեան եւ պէսպէս վտանգից եւ մահուց, եւ յետ ատեացս ի հրախառն խաւարն արտաքին, ուր լալ աչաց է եւ կրճել ատամանց» (Ժ. 104 եւ հտ.): Այս միեւնոյն խնդրին, այսինքն՝ իշխանների ու դատաւորների պարտականութեանը, դառնում է նա ուրիշ անգամներ եւս, այսպէս, օրինակ, Ը. ճառի մէջ՝ «Յանդիմանութիւն դժնդակ վարուց եւ ընծայութիւն առաքինութեան հանդիսից»: Դա ուղղուած է ընդդէմ բարքերի ապականութեան՝ պոռնկութեան եւ անառակութեան, եւ այլ գարշելի ախտերի, որոնք մարդուն ստորացնում են աւելի քան անասունները:

Մաշտոցն ուրիշ ազգերի իրաւարարութեան եւ յունական գրաւոր «ի-

բանունքի» մասին խօսելիս՝ մի խօսք անգամ չի ասում հայերի համար: Դրա փոխարէն նա սկզբի ճառերի մէջ խօսում է նաեւ դաւանաբանական խնդիրների մասին, որ նա չէր կարող անուշադիր թողնել: Այս մասին նրա եւ Եզնիկ Կողբացու տեսակէտները նոյն են եւ երկուսի մէջ եւս դրանք դրեթէ նոյն ձեւով եւ նոյն բառերով են արտայայտուած: Եզնիկի ուսումնասիրութեան մէջ կը յիշատակուին համապատասխան կտորները նաեւ «Յաճախապատումից»: Առհասարակ ուրիշ դէպքերում էլ երկուսի մէջ կան նման կտորներ: Բերենք այստեղ մի հատուած, ուղղուած տարրապաշտութեան, կրակ ու ջուր եւ արեգակ պաշտելու դէմ, որի նմանը կայ եւ Եզնիկի մէջ, քանի որ դա արդիական նշանակութիւն է ունեցել այն ժամանակ:

«Եւ որք մոլորեցան ի ճշմարտութենէ անտի, բարկութիւն Աստուծոյ կայ մնայ ի վերայ նոցա: Զի զտարերս ամենայն աստուածս արարին, զջնջաւորս եւ զանշունչս, զջուր եւ զհուր: Զի ջուր[ք]ն ի պէտս կենդանեաց արարան յԱստուծոյ՝ որ արբուցանեն զերկիր. եւ զարմեալ ապականին նեխելով եւ նուազելով: Եւ հուր առ ի պէտս մեր արարաւ, որ զարմանօք վառի եւ սպասաւորէ մեզ եւ ի պակասել կերակրոյն, շիջանի եւ ապականի: Նոյնպէս եւ հողմք եւ ամպք ի պէտս եւս այլ արարածոց արարան, եւ ոչ ինքեանք եղեն. եւ ապականացուք են՝ յորդելով եւ պակասելով օգտել եւ վնասել, զիւրեանց տկարութիւնն ցուցանելով: Եւ երկինք եւ երկիր ոչ ինքեանք եղեալք եւ որ ի նոսա զեռունք իցեն եւ անշունչք, այլ յԱստուծոյ արարան, եւ ապականացուք են: Երկինք լուսաւորօք եւ երկիր կենդանեօք եւ հողմք եւ ամպք ի պէտս եւս այլ արարածոց արարան, եւ ոչ ինքեանք եղեն. եւ ապայարարածոց Աստուծոյ աստուածս, սուտ են եւ ապականին, որպէս իմաստնոց է քաջայայտ: Նա եւ ոսկի եւ արծաթ եւ ականք պատուականք եւ պղինձ եւ երկաթ ի մարդկանէ ճարտարաց ի պէտս ինչ իրաց կազմեցին, եւ կամ ի զարդ ինչ նիւթոյ հասարակաց արարչին առնելոյ իմաստութեանն Աստուծոյ նախախնամեալ: Զի երկինք եւ երկիր եւ ամենայն զարդ նոցա յԱստուծոյ արարան յոչընչէ եւ չեն աստուածք տարերքս ամենայն, այլ արարածք հասարակաց արարողին:

Արարածք են Աստուծոյ եւ լուսաւորք արեգակն եւ լուսին եւ աստեղք ամենայն, որք իւրեանց փոփոխմամբն ցուցանեն զիւրեանց սպասաւորութիւնն ըստ սահմանելոյն այլ եւս արարածոց: Եւ յայտ առնեն մեզ եթէ արարածք են օգտելով եւ վնասելով, ամարանի ջերմամբքն եւ ցրտութեամբ ձմերանոյ, մանրապատում օգտի շահիւք եւ վնասակարութեամբ, որպէս իմանալի է: Զի որպէս մարդիկ ոչ կացին ի պատուիրանապահութեան Աստուծոյ եւ ըստ հրամանի դարմանողին յօգտակարսն վայելեցին, այլ նանրացան, այնպէս եւ դարմանիչ արարածք փոփոխեցան յօգտակարացն ի վնասակարս: Որպէս ձմեռն ոչ միայն զովացուցանէ, այլ եւ սպանանէ. եւ ամառն ոչ միայն ջեռուցանէ, այլ եւ խորշակահար առնէ եւ հուր ոչ միայն ջեռուցանէ եւ զպէտսն լնու, այլ այրէ եւ ապականէ, ջուր ոչ միայն արբուցանէ զերկիր, այլ եւ ողողէ եւ վնաս առնէ: Այսպէս եւ ամենայն դարմանքն, որպէս իւղ եւ մեղր եւ գինի եւ այլն ամենայն ըստ նմին օրինակի: Եւ չափով են խնամք դարմանոցն, եւ անչափն տանջանք եւ մահ, զի սանձեսցէ զժպիրհ եւ զյանդուգն կամս ագահութեան եւ զանձնիշխան կամացն զհոսումն եւ ի վայր ջնջումն անառակութեան եւ անխնայ չարութեան՝ որ է ճանապարհ անդորր, որ տանի ի կորուստ» (1):

---

(1) Յաճախապատում, էջ 31 եւ հտ.:

4. Ձեւը: — *Այս ճառերից իւրաքանչիւրը բնականաբար նուիրուած է որեւէ թեմայի, բայց ճառագիրը երբեմն չի կենտրոնանում մի խնդրի շուրջ եւ թեթեւակի թռչում է զանազան կողմեր. ուստի եւ այդպիսի դէպքերում դժուար է լինում հետեւել մտքի զարգացմանը: Բայց մթնութիւնն առաջանում է նաեւ մտածութեան յորդութիւնից, նման վիճակների կրկնութիւնից տարբեր ձեւերով եւ առատաբանութիւնից: Կիրառուած են բազմազան ճարտասանական ձեւեր եւ որոշ եղանակներ, որոնցով հեղինակը ձգտում է հեշտացնել ճառերի ըմբռնումն ունկնդիրների եւ ընթերցողների համար: Այսպէս, օրինակ, նա նիւթը դասաւորում է մերթ թուարկութիւններով՝ նախ (կամ առաջին)... երկրորդ... երրորդ եւ այլն, երբեմն միեւնոյն ճառի մէջ երկրորդ անգամ (ԺԸ. 201 եւ հտ.), մերթ ըստ մարմնի մասերի գործունէութեան՝ գլուխ, բերան, աչք, լսելիք, հոտոտելիք, ձեռք, սիրտ, փոր, ոտք, եւայլն (Ի. 222 եւ հտ. 226 եւ հտն.). Երբեմն էլ նիւթը բացադրում է ըստ աւետարանական «երանիների» (Ժ. 106 եւ հտն.) կամ թէ բազմազան կերպով եւ ընդարձակ վերլուծում է առաքինութիւնները՝ հաւատ, յոյս, սէր, հեզութիւն, քաղցրութիւն, խոնարհութիւն եւ այլն (ԺԱ. 121 եւ հտն.): Բերենք վերջինից մի կտոր՝ կրճատումներով:*

*«Սէր սուրբ՝ մայր է առողջութեան, անարատութեան, անբծութեան, որ խնամէ եւ յորդորէ յառաքինութիւն եւ յարդարէ յամենայն բարեգործութիւնս: Սէր աղբիւր է ամենայն բարեաց, որ արբուցանէ զսուրբ անձինս, եւ է գրաւական ամենայն երանութեանցն, եւ մեծութեան պարգեւացն Աստուծոյ բաշխող: Սէր բղխումն երախտեաց Քրիստոսի, եւ վայելեցուցիչ յանապատում շնորհս նորա. լուծիչ խռովութեան եւ տուիչ խաղաղութեան. լուսաւորիչ մտաց և անդամոց: Սէր սուրբ՝ հոգւոյ և մարմնոյ անեղծ ստացուած է, որք ունին զնա միշտ... Սէր աւետեօք կենդանի յուսոյն սփոփիչ է նեղութեան եւ վշտաց, եւ լուծիչ ամենայն դժնդակութեանց ի վերայ եկելոց՝ որ զինուորին ընդդէմ առաքինութեան հանդիսից: Սէր սուրբ՝ երախտեօքն հրեշտակ է խաղաղարար, որ զցասումն մերժէ եւ զոխութիւն լուծանէ եւ զնախանձ արտաքս մղէ եւ ցածուցանէ զչար: Սէր սուրբ՝ այգի վայելուչ, որ խաղողով եւ գինեաւ զուարթացուցանէ զսիրտն եւ զզգայարանսն ի տրտմականացն եկամտից եւ ուրախ առնէ ի կամս տեառն: Սէր սուրբ՝ ձիթենի պտղալից է ի սրտի բարեխորհին, մզելով զձէթ ի լուսաւորութիւն իմանալեաց եւ յօծումն, երեւելի անդամոցն ի զուարթութիւն: Սէր սուրբ՝ հոգեւոր կարգաց յորդարիչ է եւ մարմնաւոր վարուց յանձանձիչ. որ ի միասին կապէ, եւ ոչ տայ բաժանել եւ քայքայել զհասարակաց բարին... Զի ամենայն արուեստք առաքինութեան սիրով յարդարին, սրբութիւն, արդարութիւն. եւ նովաւ ցուցանեն զհանդէս լաւութեան իւրեանց, որ է վարիչ չարի եւ յորդորիչ բարւոյ, զօրավիգն աստուածասիրաց եւ կործանիչ խորամանկաց եւ մեղասիրաց: Եւ խառնեալ սուրբ սէրն ընդ հաւատոց եւ ընդ յուսոյ՝ հանդիսանայ ի բարեպաշտութեան վարս, եւ միմեանց խաղաղութեամբն յայտնի առնէ զլուսաւոր կարգս»* (ԺԱ. 125 *եւ հտ.*):

*Յաճախ յօրինում է բովանդակութեամբ հակառակ, իսկ կազմութեամբ միանման, բազմաթիւ բաւական մեծ հատուածներ, որոնցով նկարագրում է բարի ու չար գործեր ու վիճակներ եւ նրանց վարձատրութիւնները կամ*

*պատիժներն ըստ Ս. Գրքի (Ե. 41 եւ հտն.) առհասարակ ձգտում է փոխաբերութիւններով եւ այլ բազմազան ձեւերով ու պատկերներով կենդանի դարձնել արտայայտութիւնը, օգտուելով երբեմն Ս. Գրքի խօսքերից: Այսպէս, օրինակ. «Այս են բոյսք չարութեան, զոր ժիր մշակքն քաղահան առնեն, եւ զբարի բոյսն սնուցանեն ոռոգմամբ շնորհալից արտասուօք եւ առաքինասէր վարուք» (ԺԸ. 202): «Որ յստակ խորհրդովք աղբիւրանան ի բարեգործութիւնս՝ յորդորումն առ երախտիս ամենայն հեռաւորաց եւ մերձաւորաց. ոռոգանել զանդս մտաց եւ անդամոց հոգեւոր շահիւք եւ մարմնաւոր պիտոյիւք. եւ այնպէս բազմացուցանել զպտուղս արդարութեան արմատեացն ի վայելումն անմահ կենացն» (ԺԸ. 203): «Այսպիսի խրատու լինել աշակերտ եւ խորհրդակից, եւ մերկանալ զբօսանս աշխարհիս եւ զհոգս մնոտիս, եւ զգենուլ զհոգեւոր ազատութեանն լուսաւոր զգեստն, որ յառաքինութենէ կազմի անհամեմատ լուսովն» (ԺԸ. 205): «Զանմոլար գիտութիւն սփռել ի լսելիս մարդկան, զարթուցանել ի գործ բարեաց, եւ ունել զերասանակս անձնիշխան կամաց (Ե. 41): »Ցերկրի որպէս ի ծովու ծփեցան հողմակոծեալ եւ մրրկեալ մեղօք» (Դ. 37):*

*Սիրում է բնութիւնից ու կեանքից նմանութիւններ, երբեմն եւ հակադրութիւններ բերել՝ նիւթը պարզելու համար: Օրինակ՝ «Եւ որպէս արեգակնս այս, որ լուսաւորէ զերկիր եւ որ ի սմա են արարածք՝ որ երեւելիք են ի ծովու եւ ի ցամաքի, այսպէս հաւատոյն ճշմարտութիւնն եւ սրբութիւնն լուսաւորէ զմիտս սիրողացն Աստուծոյ» (Բ. 19): «Որպէս ամպ երբեմըն կարկտիւ եւ հրով շրջի եւ երբեմն քաղցր անձրեւով, այսպէս հրաման տեառն շարժի ի վերայ անարժանիցն բարկութեամբ եւ արժանաւորացն՝ քաղցրութեամբ ըստ արդար դատաւորութեանն» (Գ. 36): «Եւ որպէս ոչ է նման խաւար արեգական լուսոյ, սոյնպէս եւ ոչ արեգական լոյս կենդանի լուսոյ փառացն համեմատ է, զոր զգենլոց են սուրբքն զանստուեր լոյսն, զմշտնջենաւորն, զանփոփոխն, որ լին է կենդանարար բարութեամբք:Զի որպէս զգալիս արեգակնս, յիմանալիսն Աստուած է՝ որ լուսաւորէ զամենայն» (ԺԲ. 155): «Եւ որպէս տղայքն, որ ոչ գիտեն բառիւք զպէտս ի մարցն խնամոցն առնուլ, այլ արտասուօք զպիտոյսն խնդրեն եւ առնուն ի խնամոց սիրոյն, զի ոչ դադարեն ի լալոյ, մինչեւ ամենայն խնամք ի մարցն կատարի՝ ապա դադարէ եւ զուարճանայ եւ հանգչի, այսպէս պարտ է մեզ լինել առ բարեգութ տէրն, որ խնամէ մեզ յաներեւոյթս արքայական սիրովն... որ է ձեռն մարգարէից եցոյց զապաշխարութեան հանդամանս...» (ԺԹ. 212): «... Որ սաստիկ ունի զվէրս մեղաց... բազում ջանք (եւ) ջերմեռանդ արտասուօք եւ բեկումն սրտի... ի ներքս բերիցէ առ ի լուծանել զդժնդակ ձըմեռն խստութեան մեղացն ·զի զարունն հոգեւոր երեւեսցի ի շնչել հարաւոյ ջերմութեան հոգւոյն: Եւ ի վերուստ սաստիկ անձրեւով... որ [պէս] երկիր զբոյսս եւ զծաղիկս բացայայտէ, եւ տունկք՝ զաղարթս եւ զպտուղս առ ի վայելս թագաւորաց եւ ռամկաց, որովք զուարճանան, — սոյնպէս եւ որ ջերմութեամբ հոգւոյն զհոսանս արտասուացն հեղու եւ լուծանէ զկապանս ձմեռնային մեղացն, արձակին բոյսք առաքինութեանն եւ պտուղք արդա-*

*րութեան անկոյն, որով ուրախանան երկնաւորք եւ երկրաւորք ի փառս Աստուծոյ»* (*ժթ.* 214 — 215):

*Համեմատութիւններն երբեմն շատ ընդարձակւում են եւ դառնում առանձին նկարագիրներ, ինչպէս, օրինակ, հետեւեալները:* «Որպէս *մանկունք, որ յորովայնի մարց լինին յապաժոյժ եւ ի խաւարի թաղեալ եւ ոչ գիտեն զերկրիս վայելչութիւն, զարեգական պայծառութիւն եւ զլուսնի եւ զաստեղաց եւ զժամուց եւ զամսոց շրջագայութիւն, եւ զբուսոց եւ զտնկոց պտղաբերութիւն ի վայելս կենդանեաց, եւ որ այլ եւս անասնոց նախիրք եւ գազանաց եւ թռչնոց որ ի կերակուր, եւ որք ի հնազանդութիւն են անկեալ, որք որդւոց մարդկան ի ցամաքի եւ որք ի ջուրս են զուգակք որ պատրաստեալ որոգայթիւք ըմբռնին յորսողաց, եւ որ այլ եւս իցեն վայելչութիւնք եւ պայծառութիւնք հանդերձից, եւ ոսկւոյ եւ արծաթոյ եւ ականց պատուականաց՝ որ ի զարդ մարդկան գործեցան եւ ի փառս թագաւորաց, յորս ուրախանան աշխարհաւորք. արդ՝* որպէս *ոչ գիտել մանկանցն զայս կեանս եւ ոչ նման է յորովայնի կենացն,* այնպէս *եւ ոչ մեզ իմանալ զհանդերձեալ կեանսն, եւ ոչ համեմատի այս լոյս եւ կեանք առ այնր կեանք եւ լուսաւորութիւն փառաց ամենազօր տէրութեանն, զոր ակն ոչ ետես եւ ունկն ոչ լուաւ եւ ի սիրտ մարդոյ ոչ անկաւ, զոր պատրաստեաց Աստուած սիրելեաց իւրոց զանմախնձան երանութիւնսն ի Քրիստոս Յիսուս»* (*ի.* 220 *եւ հտ.*):

*Հետաքրքիր է նաեւ հետեւեալ ընդարձակ համեմատութիւնը. «Որ զգարբնութիւնն ուսեալ կամ զոսկերչութիւնն կամ զայլ արուեստ՝ ի մտի ունի զհանգամանս իրացն եւ սկահուցն զկազմս, եւ խոկայ միշտ, զի կարասցէ գեղեցկագոյն յօրինել զէնս կամ զարդս կամ այլ ինչ գործուածս՝ որ ըստ աշխարհիս է իմանալ: Նոյնպէս եւ բժիշկք որ երակօքն իմանան զցաւս եւ դեղովքն զառողջութիւն շնորհեն ի շնորհացն Աստուծոյ: Այլ եւ հանդերձարարք եւ շինողք եւ հողագործք եւ խորտկարարք, եւ որ այլ եւս արուեստք ի պէտս մարդկան բնաւորեցան, ո՞չ ապաքէն յԱստուծոյ շնորհացն ունին զմտաւորութիւն, որ գովութեան եւ պատուի արժանի են եւ վարձուց, որք առնուն: Իսկ որք ծուլութեամբ եւ արհամարհանօք յանցանեն ըստ հնարագիտութեան արուեստիցն, անպիտանս առնեն. ապա եւ զուշն ի յիշատակաց արուեստիցն աստանդեցուցանեն ի ծուլութենէն եւ տգեղութիւն եւ խանգարումն երեւութանայ, որպէս անհանճարից. եւ արուեստքն անկանին ի հնարագիտութենէ իմաստից եւ գործն անարգի եւ անպիտան լինի, եւ արուեստագէտքն անպոռնին եւ ամօթալից լինին, եւ անկանին ի տոյժս, ի տուգանս եւ ի տանջանս՝ անարգեալք յամենայնէ,* — այնպէս *եւ կարգ քրիստոնէութեան եւ աստուածպաշտութեան է զգուշալի. զի ամենայն իմաստութեամբ եւ հնարագիտութեամբ ուղղեսցէ զբարսն եւ զզգայարանսն ի լաւագոյնն վարդապետութեամբ հոգեւոր օրինացն եւ ըստ հանճարից բարեբար կամաց արարչին: Զտիւ եւ զգիշեր ի կամս տեառն խորհել...»: — Եւ այնուհետեւ շատ երկար ճառում է, թէ ինչպէս պէտք է վարուի բարեպաշտ քրիստոնեան* (*Ե.* 48 *եւ հտն.*):

*Բերենք եւ հետեւեալ կտորը, որի մէջ թանձրացած ձեւով բացատրւում է միջնադարեան քրիստոնէական հայեացքը մարմնի եւ հոգու յարաբերու-*

*թեան մասին: «Պահք զծածկեալ հիւանդութիւնս որ ի մարմնի՝ արտաքս հանէ. որպէս դեղ մաղձոյ, որ ընդ ճաշակելն իւրում զմաղձն արտաքս փսխէ եւ զառողջութիւն տայ, սոյնպէս եւ զմեղսն՝ պահք. զի ի նուազել կերակրոց եւ մարմինն հանդարտանայ եւ սրբի: Զի մարմնոյ զհետ երթեալ՝ կորուստ անձին առնայ. իսկ զհոգւոյ՝ զկեանսն յաւիտենականս ի տէր: Պահք զօրացուցիչ են հոգեւոր վարուց եւ խափանիչ մարմնական շարժմանց. զի ի զօրանալ միոյն՝ միւսն տկարանայ: Զի որպէս գիշակեր թռչունք տկարանան ի թռչել յանխնայ ուտելոյն եւ դիւրաւ ըմբռնին յորսողաց ի մահ, իսկ սակաւակերքն երագաթռիչք են եւ անըմբռնելիք յորոգայթադիր որսողաց, սոյնպէս է իմանալ զորկորամոլսն եւ զպարկեշտսն ի պահս սուրբ» (Թ.* **96** ***եւ հտ.***)**:**

*Մեսրոպ Մաշտոցի անունով մնում են եւ որոշ թուով* հոգեւոր երգեր, *որոնց մասին կը խօսուի յետոյ:*

## ԵԶՆԻԿ ԿՈՂԲԱՑԻ

### ԵՒ ՄԻՋՆԱԴԱՐԵԱՆ ՔՐԻՍՏՈՆԷԱԿԱՆ ԱՇԽԱՐՀԱՅԵԱՑՔ

1. **Կեանքը**: — *Եզնիկ Կողբացու կենսագրութեան մասին շատ սակաւ տեղեկութիւն ունենք: Կորիւնը պատմում է, թէ երբ Մաշտոցը վերադառնում է երկրորդ անգամ ի Վրաստան արած այցելութիւնից, այն ժամանակ Սահակն ու Մաշտոցը «եղբարս երկուս յաշակերտացն» — աշակերտներից երկու եղբայրների, Յովսէփին եւ Եզնիկ Կողբացուն ուղարկում են Ասորիների կողմերը, Եդեսիա քաղաքը, որպէսզի ասորերէնից հայերէն թարգմանեն «նրանց սուրբ հայրերի աւանդութիւնները»: Այդ թարգմանիչները կատարում են Սահակի ու Մաշտոցի հրամանը եւ թարգմանութիւններն ուղարկում են «պատուական հայրերին», իսկ իրենք անցնում, գնում են յունաց կողմերը, Կոստանդնուպոլիս: Այստեղ նրանք «ուսեալք եւ տեղեկացեալք» — սովորելով եւ տեղում ծանօթանալով՝ կարգւում են հելլենական լեզուի թարգմանիչներ:*

*Այդ ժամանակ տեղի էր ունենում Եփեսոսի ժողովը, որով հետաքրքրւում էին բնականաբար նաեւ Հայաստանում: Ուրիշ աղբիւրից իմանում ենք, որ Եզնիկը Կոստանդնուպոլսից մի թուղթ է գրել Մաշտոցին Եփեսոսի առաջին ժողովի մասին՝ նրան հաղորդելով, թէ ինչ որոշում է արուած* (1)*: Թարգմանիչներն իրենց գործը վերջացնելուց յետոյ, — ասում է Կորիւնը, — Կ. Պոլսից վերադառնում են՝ բերելով իրենց հետ Ս. Գրքի «հաստատուն օրինակներ», եւ «շատ շնորհադիր հայրերի աւանդութիւններ», Նիկիոյ եւ Եփեսոսի ժողովի կանոնները: Այնուհետեւ պատմում է Կորիւնը, որ Սահակը Եզնիկի հետ միասին՝ բերուած ստոյգ օրինակներով հաստատում է Ս. Գրքի առաջուայ շտապով կատարած թարգմանութիւնը, եւ վերջն աւելացնում է, թէ նրանք Ս. Գրքի շատ մեկնութիւններ են թարգմանում: Այսպէս՝ տեսնում ենք, որ Եզնիկը թարգմանական մեծ գործունէութիւն է ունեցել: Սահակի հետ նա է կատարել պատասխանատու թարգմանութիւններ, անշուշտ այն պատճառով, որ նա հմուտ է եղել ոչ միայն ասորերէն եւ յունա-*

(1) Տե՛ս ներքեւում՝ «Կնիք հաւատոյ»:

րէն լեզուներին, այլեւ ժամանակի գիտութեանը, ինչ որ եւ մենք տեսնում ենք նրա մեզ հասած գրուածքից:

Արտաշատի ժողովին (449 թ.) մասնակից եպիսկոպոսների ցուցակի մէջ, որ բերել է Եղիշէ պատմագիրը, չորրորդ տեղում յիշւում է «Եզնիկ եպիսկոպոս Բագրեւանդայ»: Ընդունում են, թէ դա նոյն Եզնիկ Կողբացին է: Եւ այդ շատ հաւանական է: Այդ խիստ բազմամարդ ժողովը, որին ներկայ են եղել հոգեւորականներ եւ աշխարհականներ, տեղի է ունեցել Մաշտոցի աշակերտ Յովսէփի գլխաւորութեամբ՝ զրադաշտական կրօնը մերժելու համար: Եթէ Եզնիկը դեռ կենդանի եղած լինէր այն ժամանակ, դժուար թէ նա, մեծ գործիչը, որ լաւ ծանօթ էր զրադաշտական կրօնին, պակասէր այդ ժողովին:

Վերջերս առանց որեւէ հիմքի, ընդդէմ եղած փաստերի, այն կարծիքն առաջ քաշուեց, թէ իբր ոչ մի*ղրական հիմք չկայ, թէ Եզնիկը կրօնաւոր է եղել եւ կամ «հայոց եկեղեցու հոգեւոր գործիչ, հայր» եւ «հայոց եկեղեցու հայրերից մինը». իբր Կորիւնն այդ մասին «ոչինչ որոշ» չի յայտնում, եւ իբր ոչինչ հիմք չկայ ասելու, թէ «Եզնիկը, Ընդդիմութեանց գրքի հեղինակը, եղել է հայոց եկեղեցու հայր», եւ թէ իբր «հայկական իրականութեան այս առաջաւոր անձը գտնուել է այն դարաշրջանի այս կամ այն քրիստոնէական հերձուածի բանակում», — ուրեմն Եզնիկը հերետիկոս, — եւ իբր «շատ կասկածելի է եւ բոլորովին չի ապացուցուած Եզնիկի պատկանելը հոգեւորական միջավայրին» (1): Այսպիսի անհիմն կարծիքներ բաց թողնելը պատահում է յաճախ հին հայերէնը լաւ չիմանալուց եւ նիւթը հիմնովին չուսումնասիրելուց: Որ Կորիւնը Յովսէփ Պաղնացուն եւ Եզնիկ Կողբացուն անուանում է «եղբարս», այդ չի նշանակում, թէ այդ երկուսը բնական ծննդով արենակից եղբայրներ էին, այլ նշանակում է՝ նրանք կրօնաւոր էին: Այն շրջանում եւ յետոյ կրօնաւորները, վանականները, կոչւում էին եղբայր, իսկ վանքերը՝ եղբայրանոց: Ապա որ Եզնիկ Կողբացին եղել է հայոց եկեղեցու հայր, եւ մինչեւ 19-րդ դարի վերջերն՝ այդպէս համարուել է, այդ յայտնի է: Հնուց անտի, նոյնիսկ Արտաշատի ժողովից մի 150 տարի յետոյ, նա մեր եկեղեցու հայրերից մէկն է: Կոմիտաս կաթողիկոսի օրով կազմուած կայ մի մեծ ժողովածու «Կնիք հաւատոյ ընդհանուր սուրբ եկեղեցւոյ» վերնագրով «յուղղափառ եւ սուրբ հոգեկիր հարցն մերոց դաւանութեանց», — «մեր ուղղափառ եւ սուրբ հոգեկիր հայրերի դաւանութիւններից» (2): Այդ հայրերի մէջ է եւ Թարգմանիչ Եզնիկ Կողբացին, որի գրուածքներից բերուած են երկու դաւանական հատուածներ (3): Հէնց այն պատճառով, որ նա հայոց եկեղեցու հայր է, նրա գրուածքն ստանում է աւելի մեծ պատմական արժէք:

2. «Եղծ աղանդոց»: — Եզնիկի ինքնագիր երկերից մեզ հասել է մէկ շատ կարեւորը, դժբախտաբար միակ ձեռագիր օրինակով: Դա առաջին անգամ տպագրուել է 1763 թ. Զմիւռնիայում «Գիրք ընդդիմութեանց» վերնա-

---

(1) Վ. Կ. Չալոյեան, Հինգերորդ դարի հայ փիլիսոփայ Եզնիկ Կողբացու ուսմունքի հարցի շուրջը (ռուսերէն), Երեւան, 1940, էջ 16, 61 եւ հտ.: Այստեղ կարելի է գտնել մատենագրութիւն Եզնիկի մասին:

(2) Կնիք հաւատոյ ընդհանուր սուրբ եկեղեցւոյ, յուղղափառ եւ ս. հոգեկիր հարցն մերոց դաւանութեանց յաւուրս Կոմիտաս կաթողիկոսի համահաւաքեալ, Էջմիածին, 1914:

(3) Անդ, էջ 51, 130. Եզնիկի թուղթը Մաշտոցին:

*գրով (1)։ Վենետիկում 1826 եւ 1850 թուերին նոյնը տպագրուած է այս վերնագրով. «Եզնըկայ Կողբացւոյ Բագրեւանդայ եպիսկոպոսի Եղծ աղանդոց»։ Հետագայ տպագրութիւնների ժամանակ պահուել է սոյն «Եղծ աղանդոց» վերնագիրը (2), որով յայտնի է այդ գիրքը։ Եզնիկի այս աշխատութիւնն իսկապէս մի «հակաճառութիւն» կամ «յանդիմանութիւն» է, եւ պէտք էր կոչել այն՝ «Հակաճառութիւն (կամ յանդիմանութիւն) աղանդոց փիլիսոփայից եւ հերձուածողաց եւ քէշին պարսից» (3)։ Այդպէս անուանել են 5րդ դարում նման գրուածքները, որոնք ուղղուած են եղել «ոչ ուղիղ» մտածող հակառակորդների ուսմունքների դէմ։ Եւ Եզնիկն իր երկի մասին խօսելիս գործածում է «ճառել, ճառ, յանդիմանել» բառերը։ Բացի վերնագրից՝ այդ գրուածքի մէջ կան եւ ուրիշ պակաս մասեր, առանձնապէս Պղատոնի փիլիսոփայութեան վերաբերեալ։*

3. Հակաճառութեան նպատակն ու եղանակը։ — *Եզնիկի այս աշխատութիւնը կարելի չէ համարել արդիւնք միայն հեղինակի անհատական հարցասիրութեան եւ ասել, թէ «նա իր աշխատութեամբ լոկ, միայն փիլիսոփայել է բարու եւ չարի առեղծուածի մասին» (4)։ Դա նոյնպէս արտայայտութիւն է իր ժամանակի եւ բաւարարութիւն պիտի տար իր ժամանակի գործնական պահանջին, ինչպէս ուրիշ ամէն երկ այն շրջանում։ Հեղինակն ինքը յայտնում է իր գործի ծագման եւ նպատակի մասին՝ այսպէս. «Մեզ հարկ եղեւ ի սիրոյ բարեկամաց, եւ յոչ ուղիղ հայելոյ ընդդիմակացն, ըստ մերում տկարութեան... մխել ի խնդիր ճառիցս. մանաւանդ զի յուսացեալ եւս վըստահ լցեմք յուղղոց ունկնդրաց ի կամացն մտադիւրութիւն. ուստի եւ լինիցի նոցա* զճշմարիտն *ուսանել, եւ մեզ ոչ ի զուր ինչ զբանս ծախել։ Քանզի ոչ եթէ անիրաւութեամբ ինչ յաղթել ջանամք, այլ իրաւամբք զճշմարիտն ուս[ուց]անել» (էջ 16 եւ հտ.)։ Շատ պարզ երեւում է, որ ժամանակի մտաւորականները երկու խումբ են կազմած եղել. մէկը՝ Եզնիկի եւ իր բարեկամների պէս մտածողները, միւսը՝ ընդդիմակները, այսինքն հակառակնե-*

---

(1) «Գիրք ընդդիմութեանց, արարեալ ի սրբոյ Եզնակ Կողբացւոյ Հայոց վարդապետէ եւ յաշակերտէ մեծի թարգմանչին մերոյ սրբոյն Մեսրոպայ»։ Առաջաբանի մէջ Յակոբ պատրիարքը գրում է. «Ձերկար ճառակերպ գրեալսն՝ ըստ զանազանիցն պարբերութեանց իմացուածոյն ի գլուխս 76 բաժանեցի, զի ընթերցողացն բարձցի ձանձրութիւն, եւ **հրաման ետու տպագրեցման»**։

(2) «Եզնըկայ վարդապետի Կողբացւոյ Եղծ աղանդոց», Փարիզ 1860. **Նոյնը նաեւ** Թիֆլիզ, 1914։ Այս վերջինը մեր այստեղ գործածածն է։

(3) Եզնիկն, ինչպէս եւ ուրիշները, «աղանդ» բառը գործածում է «կրօնք» բառի նշանակութեամբ նաեւ փիլիսոփաների համար, օրինակ՝ «ի պէսպէս աղանդս փիլիսոփայից եւ հերձուածողաց» (էջ 104)։ Տե՛ս եւ էջ 159, 164. իսկ էջ 142՝ «Են բազում կրօնք փիլիսոփայից»։

(4) **Զալոյեան**, Հինգերորդ դարի հայ փիլիսոփայ Եզնիկ Կողբացու ուսմունքի հարցի շուրջը, էջ 60։

րը, որոնք, ըստ Եզնիկի, ուղիղ հայեացք չեն ունեցել: Եւ Եզնիկը ձեռնարկել է իր գործը դրդուած բարեկամների սիրուց [որոնք երեւի թախանձել են այդ անել] եւ հակառակորդների ոչ ուղիղ հայեացքից, վստահ լինելով, որ ուշադիր ունկնդիրները ճշմարիտը կը սովորեն, եւ ինքն իր խօսքերը զուր վատնած չի լինի:

Ինչքան էլ Եզնիկի այս երկով մեր գրականութիւնը դրեթէ սկզբից անցնում է տեսականին, բայց եւ այնպէս այս տեսականի միջոցով էլ դարձեալ գործնականն ունի նպատակ, այն է՝ սովորեցնել ճշմարիտը, եւ սովորեցնել ոչ թէ «անիրաւութեամբ» յաղթելով, այլ «իրաւամբք», այսինքն համոզելով:

Թէ ինչ է նշանակում «իրաւամբք» սովորեցնել, այդ էլ պարզում է ինքը հեղինակը. «Եւ արդ եկեղեցւոյ Աստուծոյ գործ այն է, զարտաքինսն իրօք ճշմարտութեան առանց գրոց յանդիմանել, եւ զկարծեալսն ներքինս եւ ոչ ճշմարտեալս՝ գրովք սրբովք յանդիմանել» (էջ 78), — արտաքիններին, այսինքն ոչ քրիստոնեաներին, առանց Ս. Գրքի, ճշմարիտ իրականութեամբ յանդիմանել, իսկ կարծեցեալ, բայց ճշմարտութեան չհասած ներքիններին, այսինքն քրիստոնեաներին, Ս. Գրքով յանդիմանել: Կը նշանակի՝ քրիստոնեաների համար, որոնք ընդունում են Ս. Գրքի հեղինակութիւնը, բաւական կը լինէր այս գրքից վկայութիւններ բերել՝ ճշմարիտը նրանց սովորեցնելու համար, իսկ հեթանոսների համար, որ չէին ընդունում Ս. Գրքի հեղինակութիւնը, նա դիմում է իրականութեանը, բնութեանը, բնականին, քրիստոնեաների համար՝ երբեմն եւ երկուսին՝ «յամենայն աստուածատուր Գրոց եւ ի բնութենէ արարածոց յայտնի է» (էջ 68. ԻԴ): Մերժում է այն, որ «ոչ ըստ բնութեան» է (էջ 69):

Ս. Գրքին դիմելիս նա սովորաբար մեկնութեան ուղին է բռնում: Իսկ ոչ քրիստոնեաների դէմ նրա զէնքն է տրամաբանական դատողութիւնը, դիալեկտիկան: Բերում է ընդդիմակների կարծիքները՝ սովորաբար «ասեն» բառով, եւ մի առ մի քննարկում է, կարծես թէ նրանց հետ, դէմ ու դէմ կանգնած, վիճելով. «զի յորժամ ճշդիւ մրցութիւնք լինիցին, — գրում է նա, — դիւրաւ պայծառութիւն ճառիցն յանդիման կացուցանիցեն» (էջ 26. Ժ): Նա բանավարութիւնն անում է յաճախ դիլեմմայով, երկու հակառակ նախադասութիւններից կազմուած արգումենտով, որ տանում են մի եզրակացութեան: Օրինակ՝ պարսից քէշի սկզբնական աստծու, Զրուանի գոյութիւնը մերժելու համար՝ նա այսպէս է բանավարում: Ինչ որ կայ, — ասում է նա, — կա՛մ արարիչ է, կա՛մ արարած: Զրուանն արարիչ չէ, որովհետեւ Որմիզդն ու Արմն են արարիչ ըստ պարսից քէշին: Զրուանն արարած էլ չէ, որովհետեւ, ըստ պարսից քէշի, Զրուանից առաջ վեհագոյն ոչինչ, եւ նոյնիսկ ոչ մի բան չեն դնում, որ նրան ստեղծէր: Ապա ուրեմն Զրուանը չի եղել եւ չկայ:

4. Յօրինելու արուեստը: — Եզնիկի այս երկն աչքի է ընկնում եւ մատենագրական արժէքով, իր գեղեցիկ ձեւով: Դա մի արձան է հեղինակի բազմակողմանի ծանօթութեան, մեծ հմտութեան, նուրբ ու ճիշդ մտածութեան, այլեւ Հայոց լեզուի, որ իր գրականութեան սկզբում ընդունակ է ե-

դել վերացականի կանոնաւոր, ճիշդ ու պարզ արտայայտութեան, յստակ ու վճիտ ոճով: Չկան դեռ գիտական որոշ տերմիններ, բայց Եզնիկը կարողանում է գտնել հարկաւոր բառերը, երբեմն նոյն նշանակութեան համար երկու-երեքը, ինչպէս են՝ չորս տարր (էջ 57), չորս հիւթ (էջ 64), չորս բնութիւն (էջ 9) (1), անձնիշխանութիւն, կամակար իշխանութիւն, կամակարութիւն (էջ 30) (2): Չկան դեռ, օրինակ, «բաղադրել», «բաղադրեալ» բառերը, որոնց փոխանակ գործածում է՝ յօդել (3), յօդուածոյ: Բայց կան արդէն այսպիսի բաղադրեալ բառեր՝ առնուլ (որի փոխանակ գործածում է եւ լնուլ), յառաջադրել (էջ 34), կանխագէտ (էջ 55):

Երբեմն տերմինների պակասը լրացնում է վերացական նշանակութեան համար ֆիզիքական նշանակութիւն ունեցող բառերի գործածութեամբ, կամ շրջաբանութեամբ, օրինակ՝ «այն յորում էն, քան զայն որ ի նմա էն՝ մեծ գտանի», որ այժմ արտայայտում ենք այսպէս՝ պարունակողը պարունակեալից մեծ է: Բայց չնայելով դրան՝ նրա դրութիւնը միշտ հեշտ հասկանալի է մնում, միաժամանակ եւ հաճելի: Նա յօրինում է բազմազան ու դաշնակաւոր, ընտիր եւ ազնիւ ոճով, որին յատուկ է պէսպիսութիւնը համանիշ բառերի գործածութեամբ: Շատ անգամ վերացական միտքը նա պարզում է համեմատութեամբ, թանձրացական, կոնկրետ պատկերով բնութիւնից: Օրինակ՝ հէնց սկզբում գտնում ենք նոյն մտքի պէս-պէս արտայայտութիւններ, այլեւ ետեւից պատկերը նմանութեամբ· «Յորժամ զաներեւութէն եւ զնորին զմշտնջենաւոր զօրութենէն ճառիցէ ոք, քանզի մարմնաւոր լեալ է, պարտի զմիտս յստակել եւ զխորհուրդս սրբել, զլոյգս շարժմանց պարզել, զի յայն զոր առաջի եդ՝ հասանել կարասցէ: Նա եւ որ ընդ ճառագայթս արեգականն հայել կամիցի, պարտի զպղտորութիւն աչացն՝ զաղտն եւ զբիժն ի բաց պարզել, զի մի՛ մթարքն՝ որ զբբօք շողայցեն, արգել հայելոյ ի յստակութիւն լուսոյն լիցին»: Յաճախ նա գործածում է բարդ նախադասութիւններ, կամ ազատ է շարժւում բառադասութեան վերաբերմամբ, իրարուց շատ հեռացնում է միմեանց վերաբերող բառերը, ինչպէս վերեւում «մի՛ — լիցին»· բայց չնայելով դրան՝ միշտ պարզ ու հասկանալի է մնում, եւ նոյնիսկ դրանով աւելի ազդեցութիւն է գործում:

Ոճի այս ընտիր յատկութիւնները նա ձեռք է բերել, անշուշտ, վարժուելով իր արած բազմաթիւ թարգմանութիւնների վրայ, բայց կան նաեւ այնպիսինները, որոնք բխում են հեղինակի անձնական խառնուածքից: Ինչքան էլ նա գործ ունի վերացական դատողութիւնների, տրամաբանական բանավարութեան հետ, բայց ամէն ինչ անում է մեծ ճաշակով, նիւթին պատշաճաւոր եւ գեղեցիկ ձեւով: Երբեմն նա չի կարողանում սառն ու հանդիստ մնալ, վարւում է իբրեւ ճարտասան, կարծես դիմացին իսկապէս կան «ունկնդիրներ», իր «ընդդիմակները», եւ նրանց է ուղղում իր խօսքը վերացական աներեւոյթ զօրութեան, մի էութեան հաւատացողի զգացումով լցուած,

---

(1) Յաճախապատում՝ չորս հիւթ (28, 174), տարր (31, 27):

(2) Յաճախապատում՝ նոյնը, այլեւ՝ ազատ կամք:

(3) Յաճախապատում՝ նոյնը, այլեւ՝ կազմել:

մերթ հիացմունքով իրար հակառակ չորս տարրերից յօրինուած բնութեան վրայ, կամ զայրացած, կամ հեղնանքով ու ծաղրով վերաբերուելով նիւթական իրերը պաշտպանողներին: Պարզ երեւում է, որ նրա գրուածքի նիւթըն իր ժամանակի համար արդիական կենդանի նշանակութիւն է ունեցել, ինչպէս, օրինակ, հետեւեալի մէջ, որ բերւում է այստեղ իբրեւ մի նմուշ նրա յօրինելուն, որ եւ պարզապէս ուղղուած է արեգակ ու լուսին պաշտողներին, տարրապաշտութեան դէմ, կրակի ու ջրի եւ այլ պաշտամունքի դէմ, ինչպիսին էր զրադաշտական կրօնը:

«Արդ բարիոք է արեգակն եւ գեղեցիկ բնութեամբ, եւ մեզ եւ ամենայն արարածոց՝ որ ի ներքոյ երկնից՝ յօգուտ եւ ի դարման, իբրեւ ճրագ մի ի մեծի տան ի մէջ ձեղուան եւ յատակի լուցեալ՝ առ ի զխաւարն եւ զստուերն զերկուց մեծացն անօթոց ի բաց ի միջոյ փարատելոյ. բայց ինքն եթէ իցէ եւ եթէ չիցէ՝ զայն ոչ գիտէ, զի չէ ի բանաւորաց եւ ի մտաւորաց. նոյնպէս եւ այլքն յանշնչոցն արարածոց: Եւ թէ ջուր թէ հուր թէ երկիր թէ օդ, թէ իցեն եւ թէ չիցեն՝ զայն ոչ գիտեն, եւ զսպասաւորութիւնն՝ յոր կարգեցան՝ անդադար մատուցանեն, վարելով այնր՝ որ կազմեացն զնոսա: Եւ մեք ոչ անարգեմք զնոսա, եւ ոչ պաշտօն մատուցանեմք նոցա. այլ հայեցեալ ընդ նոսա՝ փառաւորեմք զկարգիչն նոցա եւ զյօրինիչ, զի մեզ ի պէտս են, եւ կարգչին իւրեանց ի փառս:

Զիա՞րդ պաշտիցեմք զարեգակն, որ մերթ կոչի իբրեւ զծառայ առ ի սպասն՝ յոր կարգեցաւ՝ հասանելոյ, եւ մերթ երթայ զօղէ իբրեւ զարհուրեալ, եւ տայ տեղի խաւարին լնուլ զմիջոց ի մեծի տանս. եւ ընդ ժամանակս ժամանակս ի խաւար դառնայ՝ առ ի յանդիմանութիւն եւ յամօթ իւրոցն պաշտօնէից, յայտ արարեալ եթէ չեմ ես արժանի պաշտաման, այլ այն՝ որ զիս եւ զամենայն տիւ լուսաւոր պահէ, եւ զցայգ զօղեցուցանէ. եւ երբեք երբեք խաւարեցուցանէ՝ եւ իբրեւ խօսուն բերանով անշշունչն բողոքէ՝ եթէ չեմ արժանի պաշտօն առնլոյ, այլ պաշտօն հարկանելոյ: Կամ զլուսին՝ որ ամսոյ հիւծանի, գրեթէ եւ մեռանի, եւ ապա սկիզբն առնու կենդանանալոյ, զի քեզ զյարութեան օրինակն նկարիցէ: Կամ զօդ՝ որ մերթ կոչիցէ վարազացեալ՝ հրամանաւ, եւ մերթ սաստէ ի դոչելոյն՝ սաստիւ: Եւ կամ զհուր՝ որում եւ զքեզ իսկ երկրորդ արարիչ կազմեաց յօրինիչն, զի յորժամ կամիցիս՝ վառիցես. եւ յորժամ կամիցիս՝ խափուցանիցես: Կամ զերկիր՝ որ հանապազ բրեմք, եւ ցանկ կոխեմք եւ զաղբ զմեր եւ զանասնոց մերոց ի նա հեղումք: Կամ զջուրս՝ զոր հանապազ ըմպեմք, եւ զանուշութիւն նոցա ի ժանտահոտութիւն ի փորի մերում դարձուցանեմք, եւ զներքին եւ զարտաքին աղտեղութիւնս մեր նոքօք սրբեմք:

Եւ այսու ամենայնիւ յայտ է՝ թէ զոր առ աստուածսն ունին, անարգեն չարաչար եւ անպատուեն: Նա եւ դողումն է եւ սոսկումն ունի զարարածսն, յորժամ զպատիւ արարչին ոք նոցա մատուցանիցէ. եւ յայտ առնէ երկիր շարժելովն, եւ լուսաւորքն խաւարելովն, եւ օդքըն զժպմելովն եւ քստմնելով, եւ ծով սաստկութեամբ ալեացն սպառնալեօք: Զի թէ ոչ սաստ արարչին նահանջէր զնոսա, մի մի ի նոցանէն բաւական էր զամենեսին սատակել՝ առ ի խնդրելոյ զվրէժ անարգանաց հասարակաց արարչին: Կամ ծով ծածկելով, որ տկար աւազովն պաշարեալ՝ չիշխէ անցանել ըստ հրաման: Կամ երկիր կլանելով, որ ի վերայ ոչնչի կայ հաստատեալ, եւ յոչինչ դառնալ եւ դարձուցանել չէ պատշաճ զիւր զբնակիչսն: Կամ հողմ պարտասեցուցանելով, որ կենդանութիւնն է ամենայն շնչաւորաց, եւ չիշխէ արգելուլ զկենդանութիւնն՝ առանց հրամանի կենդանապահին: Կամ օդք երբեմն զսառնամանիսն շընչելով, եւ երբեմն զխորշակն բերելով. եւ լինէր ամենայն ինչ ոչ ինչ:

Այլ նա ասասիկ իբրեւ զկառս իմն լծեալ ի չորից երիվարաց զաշխարհս տեսանեմք, ի ջերմութենէ, ի ցրտութենէ, ի ցամաքութենէ եւ ի խոնաւութենէ. եւ զօրութիւն իմն ծածուկ կառավար, որ զչորս կապեցոյն ընդ միմեանս ի հաշտութեան եւ ի հաւանութեան պահեալ նուաճէր: Ամենայն կառք ի համազգեաց երիվարաց լծին, բայց միայն այսց կառաց՝ որ ի չհամազգեաց լծեալ են. եւ որ ի համազգեացն լծեալ են՝ երբեմն սայթաքին, երբեմն օձանեն եւ ի տագնապի զկառավարն եւ զանձինս կացուցանեն. եւ երբեմն խորտակումն իսկ կառացն գործեն. եւ յորժամ ողջ կառքն իցեն, եւ ողջ կառավարն, եւ վարժ երիվարքն, ուշ եդեալ ի հանդէպ երեսացն եւեթ արշաւին. եւ այս կառք զարմանալիք ի հակառակ եւ յաննման երիվարաց լծեալ եւ ծածուկ ձեռամբ ուղղեալք, ոչ ի միմիայն կողմն ի հանդէպ երեսացն եւեթ արշաւին, այլ յամենայն կողմանս վարգին, եւ ընդ հանուր արշաւին, եւ ընդ բնաւս ոլորտս, եւ ամենայնի բաւական են: Յորժամ ընդ արեւելս ընթանան, չէ ինչ արգել՝ թէ ընդ արեւմուտս ոչ արշաւիցին, եւ յորժամ ընդ հիւսիսի վարգին, չէ ինչ արգել՝ թէ ընդ հարաւ ոչ սուրայցեն, զի ձեռն կառավարին բաւական է յամենայն կողմանս դիմեցուցանել, եւ ընդ չորս անկիւնս տիեզերաց արշաւեցուցանել» (էջ 11 եւ հմն.):

Այսպիսի հատուածներով Եզնիկի երկը դառնում է արդէն մի յիշատակարան պերճ գեղեցիկ գրականութեան: Բայց եւ այնպէս աւելի կարեւորը եւ հետաքրքիրն այն չէ, թէ ինչպէս է նա յօրինում, որքան այն, թէ ինչ է նա հերքում և ինչ հաստատում: Արդարեւ, նրա քարոզած տեսութիւնն և հերքելու ու մեկնելու եղանակներն ինքնուրոյն չեն, այլ մինչեւ 5րդ դարն ընդհանուր եկեղեցու մէջ ընդհանրացած էին, բայց նա այդ բերում է այնպիսի մի յստակ ու պայծառ ձեւով, նիւթի լիակատար ուսումնասիրութեամբ, որ նրա գործն ապագայի համար մատենագրական մեծ նշանակութիւն է ունեցել եւ կարելի է ասել, թէ նրա երկով արդէն քրիստոնէական աստուածաբանութիւնը, միջնադարեան քրիստոնէական աշխարհայեացքը, հաստատուած է մեր գրականութեան մէջ ամբողջական տեսութեամբ եւ հակառակորդներին տրուած ուժեղ հարուածներով:

5. «Ճշմարիտը»: — Ի՞նչ է «ճշմարտութիւնը», որ ջանում է սովորեցնել Եզնիկը, կամ ի՞նչ է նրա հակաճառութեան նիւթը: — Այդ շատ պարզ եւ որոշ զնում է նա իր գրքի հէնց սկզբում: Դա գոյի, էութեան կամ է-ի խնդիրն է, որ հետաքրքրում էր ժամանակի մտաւորականներին, կրօնի հետ կապուած կամ կրօնական պարունակով փաթաթուած, իբրեւ աստուածութեան խնդիր: Դա քրիստոնէական կրօնի էական սկզբունքն էր՝ մէկ բարի էութիւն կամ աստուածութիւն, որ փոխանակ բազմաստուածութեան արդէն քարոզուած էր Հայաստանում եւ պաշտօնապէս ընդունուած, որ եւ Եզնիկը ձեռնարկում է համոզիչ տրամաբանութեամբ հաստատել: Նա ամենից առաջ ձեռնարկելով ճառել «զանեղութէն եւ զնորին զմշանջենաւոր զօրութենէն»՝ բերում է այդ մասին իր դաւանանքը, որ եւ եկեղեցունն է, ինչ որ բնականաբար գտնում ենք եւ «Յաճախապատումի» մէջ: Նա թւում է գոյի, էութեան ստորոգելիները:

Այդ էութիւնը մէկ է. անքնին եւ անհաս է, միայն դաւանութեամբ

իմանալի· մշտնջենաւոր է, անսկիզբն (1) «ոչ ունի զոք ի վեր քան զինքն, զոր պարտ իցէ նմա պատճառ կարծել»· «նա ինքն է պատճառ ամենայնի»· «ոչ ոք է առաջին քան զնա, եւ ոչ ոք է յետոյ նման նմա, եւ ոչ ընկեր հաւասար նորին, եւ ոչ էութիւն հակառակ նմա, եւ ոչ գոյութիւն ընդդիմակաց» (2)։ Այդ էութիւնն է, որ «ածն ի չգոյէ ի գոյ զչգոյսն, եւ եցոյց յոչնչէ զչէսն»։ «Նա աննախանձ ետ զկենդանութիւն առ ի յայտնելոյ զիւրոյ զբարերարութեանն հանդէս»· «զօրացուցանէ զանզօրս մեծազօր զօրութեամբ», «աղբիւր կենդանութեան»· «տայ ամենայնի կենդանութիւն»··· «բղխէ յամենայնի զանպակաս իմաստութիւն», «աղբիւրն է բարութեան»· «զամենայն զոր արար՝ գեղեցիկս արար··· եւ բանաւորաց եւ մտաւորաց··· կարգեաց տանել զբարութիւն··· բարութեանն՝ զանձնիշխանութիւն արար պատճառ» (3)։

6· Ընդդիմակները։— Եզնիկն իր ընդդիմակներին, այսինքն քրիստոնէական սկզբունքների հակառակորդներին, առանձնապէս չարիքի ծագման խնդրի նկատմամբ, բաժանում է երեք խմբի։ Առաջին տեղը դնում է նա յունական փիլիսոփաներին։ «Բայց թէպէտ եւ պէսպէս զինուք վառեցաւ թըշնամին ճշմարտութեան, Յունաց իմաստնոցն կարծեցուցանելով՝ թէ նիւթ ինչ միշտ առընթերակաց կայր Աստուծոյ, ուստի զարարածսն արար։ Եւ քանզի նիւթոյ անուն ի նոցա լեզու ի մրուր մերձ է, վասն այնորիկ զչարեաց սկիզբն անտի կարծեցին» (էջ 77)։ Նրանք կարծում են, թէ «էր ինչ ընդ նմա [Աստուծոյ], որում հիւղն անուն էր՝ որ է նիւթ, ուստի զամենայն արարածըս արար··· որ ինչ մրրախառն էր ի նմանէ, եւ չէր պատշաճ արարչու—

(1) Ցանախապատում· «Մի է ինքնութիւն գոյութեան». «Էութիւնն անսկիզբն· մըշտընջենաւորութիւն անսահման» (Ա· 1)։ «Մի անսկիզբն էութիւն» (Գ· 25, 27 եւ այլն)· «Որ անբաւն է եւ անքնին, եւ ոչ կարեն կարծել միտք, եւ ոչ քննել խորհուրդք» (Ա· 3)· «Խոստովանողք եւ դաւանողք առ ի մերոց հաւատոցն ճշմարտութիւն» (Բ· 6)· «Լռեսցուք ի դատարկ եւ ի վայրապար քննութենէ» (Բ· 6)· «Մի՛ անկանել ի բազմախոյզ խնդիրս որ վրիպեցուցանեն ի սուրբ հաւատոց» (Դ· 32)։

(2) Ցանախապատում· «Անպատճառն, որ ամենեցուն պատճառ է»· «Արարչութեամբ լեալ պատճառ երկնից եւ երկնաւորաց» (Ա· 1)· «Աննման եւ անհամեմատ է» (Գ· 12)· «Ոչ ոք էր ընդ անսկզբանն» (Բ· 14)։

(3) Ցանախապատում· «Կոչեաց զնոսա յոչնչէն ի յինչսն եւ ի չգոյէն ի գոյ» (Բ· 5· Դ· 27, այլեւ 29, 39, 244 եւ այլն)։ «Վասն բարերար կամաց իւրոց արարիչ արարածոց անուանի» (Բ· 14)· «Բարերար արարչութիւն» (Ա· 3, այլեւ շատ տեղ)։ «Նորա առաջգիտութիւն եւ հանճար եւ իմաստութիւն եւ զօրութիւն» (ԻԲ· 244)։ «Աղբիւրն է ամենայն բարեաց եւ կենդանութիւն» (Ե· 39)։ «Ելից իմաստութեամբ եւ գիտութեամբ» (Դ· 28)։ «Ինքն կեանք է եւ կեցուցիչ» (13)։ «Այն որ բարի է բնութեամբ··· կայ մնայ միշտ բարի··· ոչ ի նմանէ բուսանի, եւ ոչ եկամուտ ուստեք լինի ի նմա չար· զի որ նորայն է՝ իսկութեամբ բարի է· եւ չիք ի նմա բնաւ չարութիւն» (Բ· 13)։ «Ետ անձնիշխան եւ ազատ կամս» (Բ· 5, 10, 19, 20, 26, 28, 34, 39 եւ այլն)։

Ի$

*թեան, զայն եթող. եւ յայնմ մըրոյ են չարիք մարդկան»* (*էջ* 16)։ *Ուրեմն աշխարհը ոչնչից չի առեղծուած, այլ նիւթից, որ եւ չարի պատճառն է։*

*Որ նա փիլիսոփաների կարծիքները, որ անուանում է «աղանդք փիլիսոփայից» կամ «կրօնք փիլիսոփայից», առաջին տեղում է դնում եւ ամենից առաջ զբաղւում է ճառելով ընդդէմ նրանց, այդ ցոյց է տալիս, որ նրանց տեսութիւնները մեծ վտանգ են ներկայացրել խոհուն մտքերի համար Հայաստանում։ Քրիստոնէութեան առաջին դարերում յունա-հռոմէական աշխարհում առաջ էր եկել ձգտում հեթանոսական բազմաստուածեան կրօնն ազնուացնելու եւ բարձրացնելու. քարոզւում էր նոյնիսկ մի բարի բարձրագոյն աստուածութիւն, մինչեւ անգամ միաստուածութիւն, ամէն բանի ըստեղծող եւ կառավարող։ «Դնեն եւ նոքա [Յունաց իմաստունքն] մի ինչ ինքնակաց պատճառ ամենայնի, որոյ ոչ յումեքէ եղեալ, այլ ինքն անձամբ ինքնակաց առաջին գտեալ»* (*էջ* 141)։ *Քրիստոնեայ ջատագովներն ինչքան էլ այս փիլիսոփայական միաստուածութեան մէջ տեսնում էին որոշ ճշմարտութիւններ, բայց եւ այնպէս նրանք եկեղեցու սկզբունքները պաշտպանում էին նաեւ այս փիլիսոփայական ուսմունքների դէմ, որովհետեւ նրանց մէջ տեսնում էին երբեմն նաեւ բազմաստուածութեան խառնուրդներ, քանի որ կային «բազում կրօնք փիլիսոփայից» զանազան ուսմունքներով* (*էջ* 142)։ *Ուստի Եզնիկը գրում է նրանց մասին. «Խնդրելն զԱստուած զովութեան արժանի էր. եւ ոչ զմին եւեթ՝ այլ զբազումս մուծանել, անհնարին ամպարշտութիւն է»* (*էջ* 141, 145)։

*Այդ տեսութիւնների վրայ առաջ էին գալիս քրիստոնէական աղանդները, որոնք Եզնիկի օրով խառնակշփոթ դրութեան մէջ էին դնում աշխարհը, եւ որոնց քարոզիչներն իրենց գրքերով մտնում էին Հայաստան, կամ հայ երիտասարդները գնալով յունական եւ ասորական ուսման կենտրոններն ուսանելու կամ թարգմանութիւններ անելու, ծանօթանում էին փիլիսոփաների ուսմանը։ Բնականաբար մեր հեղինակն էլ հարկ էր տեսնում գրել այդ «փիլիսոփայական կրօնների» կամ «աղանդների» դէմ։ («Կրօնք փիլիսոփայից», էջ* 143. *«աղանդքն՝ որ ի նոցանէ առին պատճառս զհիւղեայն աստուածացուցանել», էջ* 164, *նաեւ* 158 *եւ հտ.*)։

*Եզնիկի գրուածքն այդ մասին քաղագրութեամբ է։ Նա օգտուել է, երբեմն բառացի, յունական աղբիւրներից, յատկապէս Պիթագորեան, Պերիպատիկեան, Պղատոնեան, Ստոյիկեան եւ Էպիկուրեան ուսմունքների մասին՝ տիեզերքի ծագման եւ նրանց բարոյական սկզբունքների վերաբերեալ։ Այդ աղբիւրները, որ չի յիշում նա, այժմ արդէն բաւական պարզուած են մի քանի բանասէրներից* (1)։ *Այդ քաղուածքներով չի պակասում Եզնիկի աշ-*

---

(1) Այդպիսիներից են՝ Արիստիդէս Աթենացի, «Ջատագովութիւն». Մեթոդիոս Ողիմպիացի, «Վասն անձնիշխանութեան». Եպիփան Կիպրացի, «Ընդդէմ հերձուածոց»։ Տես՝ «Բազմավէպ», Վենետիկ, 1889, յօդուած Յովհ. Թորոսեանի։ «Հանդէս Ամսօրեայ», Վիեննա, 1901, էջ 102, գերմաներէն թարգմանութեան ներածութիւնը։ «Հանդէս Ամսօրեայ», 1893, 1894, 1896, Գր. Գալեմքեարեան, «Նորագոյն աղբերք Եզնկայ Կողբացւոյ»։ Այլեւ առանձին գրքով։ Յ. Տաշեան, «Մատենագրական մանր ուսումնասիրութիւնք», Վիեննա, 1895,

խատութեան արժէքը, որովհետեւ նա իր մտածողութեամբ եւ բանավարութեամբ ինքնուրոյն է:

Ընդդիմակների երկրորդ խմբի մէջ դնում է նա Զրադաշտական կրօնի վարդապետներին. «Եւ Պարսից քէշին գտիչք առ ի տարակուսելոյ՝ թէ ուստի՛ չարիքն լինիցին, ընդ նոյն արահետս վրիպեալք ի ճշմարտութենէն՝ զնոյն բաջաղանս այլովք պատմութեամբք կարկատեցին, որպէս թէ ի միոջէ ի հօրէ երկու որդիք ծնան. մին բարի եւ բարեաց արարիչ, եւ մին չար եւ չարեաց գործօն»: Ապա նա բերում է բաւական տեղեկութիւններ այդ կրօնի հաւատալիքներից եւ առասպելներից: Պարսից կրօնը շատ հնուցն ազդել էր հայկական դիցաբանական եւ ժողովրդական հաւատալիքների վրայ, բայց Եզնիկի օրով, ինչպէս տեսանք, այդ քէշն աւելի քաղաքական ազդեցութեամբ սպառնում էր քրիստոնէութեանը Հայաստանում: Հայ մտաւորականները, որոնց համար է յօրինուած Եզնիկի Հակաճառութիւնը, դժուար թէ ենթակայ լինէին այդ կրօնի իդէոլոգիային եւ առասպելներին: Եզնիկի գիրքը նրանց ձեռին իբրեւ մի պատրաստ զէնք պիտի ծառայէր աջողութեամբ մաքառելու ընդդէմ մոգական ոտնձգութիւնների եւ նրանց կրօնի դուալիզմի:

Եզնիկը պարսից կրօնի համար հաւանօրէն օգտուել է ե՛ւ բերանացի աւանդութիւններից, ե՛ւ մի գրաւոր աղբիւրից, որ դեռ չի բացայայտուած: Ուստի նրա Հակաճառութիւնը մի թանկագին աղբիւր է Զրադաշտական կրօնի համար:

Ընդդիմակների ուսմունքի մէջ երրորդ տեղում դնում է նա քրիստոնէական աղանդները. «Ի նոյն խարափ անկեալ եւ աղանդոյն, զոր թշնամին իբրեւ զորոմն ի մէջ ցորենոյ, սերմանեաց, զի կէսքն երիս արմատս դնէին՝ բարւոյ եւ արդարոյ եւ չարի. եւ այլք երկուս՝ բարւոյ եւ չարի. եւ ոմանք եւթն»: Նա խսկապէս մանրամասնօրէն ժխտում է Մարկիոնի աղանդը, նրա հետ մէկ-մէկ դնելով եւ ուրիշներին. «Մարկիոնն եւ Մանի եւ Մծղնեայք» (էջ 199), «Մարկիոնի եւ Մանեայ եւ այլոցն նոյնպիսեաց» (էջ 202), «Մարկիոնի եւ Մանեայ» (էջ 203 ,այլեւ էջ 81, 82):

Մարկիոնը (ծն. 140-ական թուականների սկիզբներին) իր աղանդով առանձին տեղ է բռնում գնոստիկականութեան մէջ: Նա համարուել է քրիստոնէական եկեղեցու ամենանշանաւոր եւ վտանգաւոր հակառակորդներից մէկը. շատ եկեղեցական հայրեր գրել են նրա դէմ: Նրա կազմած եկեղեցիները, որոնք կազմակերպուած էին քրիստոնէական եկեղեցու օրինակով, Արեւմուտքից, Հռոմից, դուրս էին քշուել, բայց երկար ժամանակ իրենց գոյութիւնը պահել էին Արեւելքում: Այդ «գնոստիկեանների վերջին մնացորդները սերտ յարաբերութեան մէջ են մտնում Մանիքեցիների հետ» (1), որոնց աղանդի հիմնադիրն է եղել Մանի պարսիկը: Մարկիոնեան աղանդը Եզնիկի օրով դեռ զօրեղ է եղել Արեւելքում եւ, անշուշտ, ազդեցութիւն է ունեցել նաեւ հայերի վրայ, քանի որ Եզնիկն իր Հակաճառութեան նիւթ դարձնում

(1) Երուանդ Տէր-Մինասեանց, Ընդհանուր եկեղեցական պատմութիւն, հատոր առաջին, Էջմիածին, 1908, էջ 78 եւ հտն.:

է եւ այդ: Գնոստիկեան վարդապետութեան մէջ առաջ էր եկել դուալիստական ուսումը՝ չարի եւ բարու ծագման մասին: Մարկիոնը զարգացնելով այդ՝ գնում է, ըստ Եզնիկի, երեք էութիւն (առաջք), սկզբունք. ա) բարին — մի օտար, գերազոյն եւ անտեսանելի էութիւն. բ) արդարը — մի գերազոյն, բայց տեսանելի էութիւն. եւ գ) չարը — հիւղն երկրում իբրեւ մի իգական սկզբունք: Ուրեմն երեք արմատ՝ բարու, արդարի եւ չարի: Այդ ուսումն էլ հակառակ էր եկեղեցու դաւանած սկզբունքին, եւ Եզնիկն այդ էլ հերքում է մանրամասն: Այդ առթիւ նրա տուած տեղեկութիւններն էլ մասամբ ծառայում են Մարկիոնի աղանդի մասին իբրեւ ուսումնասիրութեան աղբիւր:

7. Մէկ էութիւն.— Ընդդէմ տարրապաշտութեան: — Եզնիկի առաջնակարգ խնդիրներից մէկն է մերժել նաեւ տարրապաշտութիւնը եւ տեղը դնել մի աներեւոյթ զօրութեան — մէկ էութեան պաշտամունքը: Աշխարհս, — ասում է նա, — կազմուած է չորս տարրներից («չորեքին բնութիւնք») — հուր, օդ, ջուր, հող (Բ. 8 եւ հտ.), կամ «ի չորից հիւթոցն յօդեալ են՝ յերկրէ եւ ի ջրոյ, յօդոյ եւ ի հրոյ... ամենայն մարմնաւորք... Զի այնպէս կազմեաց Աստուած զաշխարհ՝ նախ զչորս հիւթսն մեկնեալս արարեալ, ապա նոքօք յօդեաց զամենայն» (էջ 153 եւ հտ.) (1):

Աշխարհի տարրները շարժւում եւ փոփոխւում են: Շարժւում են ե՛ւ արեգակը, ե՛ւ լուսինը, ե՛ւ բոլոր արարածները, ամէն մէկն ըստ իր բնութեան: «Որ շարժին եւ փոփոխի՝ չէ էական, այլ կամ լեալ յումեքէ եւ յիմեքէ, եւ կամ հաստեալ ի չգոյէ» (էջ 9): Չորս տարրներն, ուրեմն, էական չեն: Բայց դրանք իրար խառնուելովը, իրենց շարժուելովն ու փոփոխուելովը՝ ցոյց են տալիս, թէ «է՛ ոմն, որ փոփոխէ զնոսա», «եւ որ էն եւ շարժէ զամենայն, ինքն ոչ շարժի եւ ոչ փոփոխի, քանզի էական է եւ անշարժական է» (էջ 9): Առողջ միտք ունեցողները՝ շարժուններն ու փոփոխելիները չպիտի պաշտեն, — ասում է Եզնիկը, — այլ «շարժիչն ու փոփոխիչը», որ է էականը, էութիւնը, գոյը: Ապա՝ որ էութիւնը մշտնջենական է եւ «պատճառ ամենեցուն լինելոյ», այդ ընդունում են եւ ընդդիմակները, — ասում է նա. «մի է պատճառ ամենեցուն, եւ նոյն էական եւ մշտնջենաւոր» (էջ 10): Մնացած ամէն բան՝ արեգակ ու լուսին եւ աստղեր եւ չորս տարրներն էական ու մշտնջենաւոր չեն: Դրանք բոլորը, «թէ ջուր, թէ հուր, թէ երկիր, թէ օդ թէ իցեն եւ թէ չիցեն՝ զայն ոչ գիտեն, եւ զսպասաւորութիւնն՝ յոր կարգեցան՝ անդադար մատուցանեն, վարելով այնր՝ որ կազմեացն զնոսա»: Դրանք շարժւում եւ փոփոխւում են եւ շարունակ, բացի բնաւորներից ու մտաւորներից, անգիտակցաբար կատարում են իրենց սպասաւորութիւ-

(1) Հմմտ. Յճխպտմ. «Ի չորից նիւթոց արար զարարածս՝ յերկնէ եւ յերկրէ եւ ի ջրոյ եւ յօդոյ զկենաւս ամենեցուն յօրինեաց» (ԺԴ. 174):

նը (1)։ Այդ ամէնը, ուրեմն, որ էական, անփոփոխ եւ անշարժ ու մշտընննաւոր չեն՝ պաշտելի չեն, այլ պաշտելի է դրանց «կարգիչ եւ յօրինիչն», «շարժիչն ու փոփոխիչն»։

Այսպէս՝ Եզնիկը, հին աստուածաբանների արգումենտացիայով՝ աշխարհի — բնութեան գոյութեամբ ու փոփոխմամբ ապացուցում է աներեւոյթ շարժիչ ու յօրինիչ մի էութեան, մէկ Աստծու գոյութիւնը, եւ մերժում է տարրապաշտութիւնը։

Մերժելով տարրապաշտութիւնն ու բազմաստուածութիւնը, նա իբրեւ ելակէտ ընդունում է միայն մէկ սկիզբ, մէկ էութիւն եւ հետեւողականօրէն այդ մոնիստական հայեացքն անց է կացնում մինչեւ վերջ։ Այդ էութիւնը, որ եւ հոգի է կոչւում (էջ 65), գոյութիւն ունի բնութիւնից առաջ եւ աշխարհի ու ամէն բանի արարիչն է։ Հետեւաբար Եզնիկը հետեւող է իդէալիստական փիլիսոփայութեան, ինչպէս առհասարակ քրիստոնէական ուսմունքը։

8. Մէկ բարի էութիւն.— «Չիք ինչ չար, որ բնութեամբ չար իցէ»։— Հիմնական խնդիրը, որ հարցաւէր քրիստոնեաներն եւ ընդդիմակները դընում էին ընդդէմ մէկ էութեան, այս էր։ Եթէ մէկ աստուած կամ մէկ էութիւն կայ եւ նա բարի է, «բարեաց արարիչ է եւ ոչ չարաց իրաց, ուստի՞ է խաւար, ուստի՞ են չարիք»։ Եւ Եզնիկը թւում է մի շարք չար, վատ բաներ։ Ընդդիմակները երկու էութիւն դնելով՝ բացատրում էին հէնց չարի ծագումը, որ եւ Եզնիկը հերքում է, փոխանակ դնելով իր տեսակէտը, որ եւ եկեղեցունն է։ Այն է՝ մէկ էութիւնը, մէկ Աստուածը բարի է. նա չար բան չի ստեղծել։

Բարի ու չար բան չկայ, — ասում է նա։ Աշխարհս կազմուած է չորս տարրերից — հուր, օդ, ջուր, հող, որոնք ե՛ւ բարի, ե՛ւ չար են։ Դրանք «առանձինն՝ ապականիչք են միմեանց, եւ խառնեալ ընդ ընկերին՝ օգտակարք եւ չահաւորք» (էջ 9)։ «Բազում անգամ զոր բարին կարծիցեն, միայն առանձինն՝ առանց ընկերին խառնութեան՝ վնասակար լինի» (էջ 8)։ Թէ այդպէս է, այդ «յամենեցունց առ հասարակ վկայեալ», «ամենեցուն յայտ-

---

(1) Ցնխպտմ· «Ոչ փոխի··· զի կեանք է եւ լոյս անփոփոխելի, որ ոչ անցանէ··· որպէս էրն եւ է՛ եւ կայ յաւիտեան» (Բ· 13 եւ հտ·)։ «Անփոփոխելի է Աստուած, եւ փոփոխումն ունին արարածք· որպէս տղայն յերիտասարդութիւն, եւ երիտասարդ ի ծերութիւն, եւ ծերն յապականութիւն· եւ որպէս գարուն յամառն, եւ ամառն յաշուն, եւ աշուն ի ձմեռն, որ խափուցանէ զամենայն կենդանեաց յորդորումն եւ զտնկոց եւ զբուսոց։ Եւ արեգակն փոփոխումն ունի ըստ ժամանակաց ըստ սահմանելոյն Աստուծոյ զերկայնութիւն աւուրց եւ զպակասութիւն··· եւ այսպէս կայ ի սպասաւորութիւն ըստ հրամանի արարչին յարարածս։ Նմանապէս եւ լուսին զիւրն ունի սպասաւորութիւն զժամանակացն զփոփոխումն ի մաշելն եւ ի լնուլն, զի նովաւ ծանիցուք զմաշումն երկրաւորացս եւ զնորոգումն յարութեան։ Այլեւ աստեղք սպասաւորեն ի գիշերի նաւագնացաց, եւ ըստ այլ եւս շարժմանց առ ի պէտս մարմնաւորաց· այլ ոչ ըստ հեթանոսական բարբաջմանցն, որ բախտս եւ ծնունդս ասեն» (ԻԲ· 244)։

*նի է», այսինքն ճշմարիտ իրականութիւն է։ Հետեւաբար «ի բարեաց արարչէն չար ինչ չիք լեալ. եւ չիք ինչ չար որ բնութեամբ չար իցէ»* (էջ 8)։

*Ինչպէս կարելի է տեսնել, բնութեան տարրերի չար ու բարի լինելը չափւում է մարդկանց համար օգտակար կամ վնասակար լինելով։ Չար կարծուած գազաններն էլ, — ասում է նա, — մէկ-մէկ օգտակար են լինում. «Զի՞նչ չար քան զօձ կայցէ, եւ ի նմանէ թերիակէ. եւ ի սպանող դեղոց... չեւ հասուցեալ եւ անդէն բուժէ։ Եթէ բնութեամբ չար ինչ էր օձ, կամ չարի իրիք արարած, ապա չգտանէր ինչ ամենեւին ի նմա օգտակար, եւ ոչ զգօնանայր երբեք ի գազանութենէ անտի իւրմէ»* (էջ 45)։ *Բոլոր գազանների մէջ մի օգտակար բան կայ, կամ մորթը, կամ ճրագուն եւ այլն։ Նոյնպէս եւ բոյսերը որոշ դէպքերում օգտակար են, որոշ դէպքերում վնասակար* (Դ. էջ 46—49)։ *Բնութեան մէջ, ուրեմն, ըստինքեան չար ու բարի չկայ, բայց չարիք լինում է։ Չարիքի պատճառը մարդիկ են, — ասում է նա։ Նրանք են «արարիչք չարեաց, զի ինքեանք են պատճառք առնելոյ եւ չառնելոյ». որովհետեւ չարիքն ուրիշ բան չէ, բայց եթէ անձերի «արդասիք», այսինքն գործողութիւն* (էջ 21, *Է*)*; եւ մարդն իր կամքով է չար գործում* (էջ 26, *Թ*)։ *Չարիքը «կամածին» է եւ ոչ «բնութեամբ»։Բայց բացարձակ չար գործողութիւն էլ չկայ. այստեղ էլ չարիքի հասկացութիւնը յարաբերական է։ Միեւնոյն գործողութիւնը կարող է եւ չար համարուել եւ չհամարուել, նայելով պարագային։ Առն եւ կնոջ սեռական մերձաւորութիւնը օրինակ, «բարիոք» է, եթէ մարդ «յիւր կին որ օրինօք ամուսնացեալ՝ մերձենայցէ» որդեծնութեան համար, «ապա եթէ ուրուք թողեալ զիւր կին, զայլոյ ամուսնութիւն թշնամանիցէ, գործ չարութեան գործէ»։ Նոյնպէս եւ սպանութեան վերաբերմամբ։ «Յորժամ զըմբռնեալն ի չնութեան ոք սպանանիցէ, պատուհաս ի վերայ ածեալ վասն յանդգնութեանն, չառնէ չար ինչ։ Ապա եթէ զանմեղն ոք... սպանանիցէ, կամ վասն ինչս զերծանելոյ, կամ վասն ստացուածս հատանելոյ, չարութիւն գործէ. եւ գործն նոյն է երկոցունց, բայց օրինակն ոչ նոյնպիսի»։ Այսպէս եւ շատ ուրիշ դէպքերում։ Գործողութիւնն ըստինքեան չար չէ, այլ «իրքն չարք յայնժամ լինին, յորժամ պէտքն* օրինօք *ոչ վճարեսցին»* (էջ 27, *Ժ*)։ *Գործողութեան չար ու բարի լինելն, ուրեմն, որոշւում է գործողութեան օրինականութեամբ. օրինականը բարի է, օրէնքի հակառակը՝ չար է։ Դրա համար եւ չարագործները պատժւում են օրէնքով։ Եթէ չարիքը բնական լինէր, չարագործին պէտք էր արդահատել եւ ոչ թէ պատժել։ «Մարդոյ բնութիւն բարեաց ցանկացող է եւ ոչ չարեաց», այնպէս որ նոյնիսկ չարագործը երբեք յանձն չի առնում չարագործութեան անունը* (էջ 42–44) (1)։

---

(1) Յաճախապատում. «Զի արարածոց կամք հաղորդեալ իցեն ընդ նորա բարի կամացն ի ձեռն օրինաց եղելոց» (Ե. 40)։ Օրէնքով պատժուելու մասին տե՛ս եւ Ը ճառը, այլեւ հետեւեալը. «Առանձինն բնութեամբ՝ չարն չար ոչ է, եւ ոչ բարին՝ բարի, այլ ի միտս ունի բարի եւ չար լինել. զի սիրովն Աստուծոյ սիրել զբարին եւ ատել զչարն՝ բարի է, եւ ատել զբարին եւ սիրել զչարն՝ չար է. նախանձել ընդ բարիսն եւ լինել բարի՝ բարի

9. Պայքար դուալիստական աշխարհայեցքի դէմ։ — Որովհետեւ կարելի չէ ընդունել, թէ «բարի արարիչը» չար բան ստեղծած լինի, ուստի հեթանոս յոյները, մոգերն ու հերձուածողները «չար իմն էութիւն հակառակ բարւոյ դնեն» (էջ 8)։ Ասում են՝ կայ «ինչ չար գոյութիւն, որ զայն ամենայն անհարթութիւնս տայցէ գործել, եւ ինքն իսկ արարիչ իցէ նոցա» (Դ. էջ 15)։ Ինչպէս վերեւում էլ ասուեց, յոյն փիլիսոփաները կարծում էին, թէ «էր ինչ ընդ նմա, որում հիւղն անուն էր՝ որ է նիւթ, ուստի զամենայն արարածս արար, եւ զատոյց ամենարուեստն իմաստութեամբ եւ զարդարեաց վայելչութեամբ. եւ յայնմ նիւթոյ պարտ է կարծել զչարիս»։ Բայց «որ ինչ մրրախառն էր ի նմանէ եւ չէր պատշաճ արարչութեան, զայն եթող։ Եւ յայնմ մրրոյ են չարիք մարդկան» (Դ. 16. տե՛ս էջ 167)։ Ըստ այսմ ուրեմն՝ երկու սկիզբ, երկու անարար են ընդունում։ Դա հակառակ էր Եզնիկի մոնիստական հայեցքին եւ այն տեսութեանը, թէ աշխարհս ոչընչից է արարուած։ Ուստի նա մանրամասնօրէն ժխտում է հիւղի-նիւթի ինքնակայ գոյութիւնը եւ հասնում այս ընդհանուր եզրակացութեանը. «Յայտ է, թէ երկուց անարարաց ի միասին չէ մարթ լինել»։

Նա հիւղի գոյութիւնը հերքելու համար բանեցնում է մի շարք արգումենտացիաներ — փաստարկումներ։ Բերենք հետեւեալները։ Պա՞րզ տարր էր հիւղը, — հարցնում է նա, — թէ՞ բաղադրուած (բարդ)։ Եթէ պարզ ու մենակերպ տարր էր հիւղը, ապա կարելի չէ ասել, թէ հիւղից է ստեղծուել աշխարհը, որովհետեւ աշխարհս բարդ ու պէս-պէս տարրներից է կազմուած, իսկ բաղադրեալը, բարդը, չի կարող մէկ պարզ տարրից կազմուել, քանի որ բաղադրեալները պարզ տարրներից են բաղադրւում։ Իսկ եթէ ասեն, թէ հիւղը պարզ տարրներից էր բաղադրուած, ապա ուրեմն կար ժամանակ, երբ հիւղը գոյութիւն չի ունեցել, որովհետեւ նա առաջ է եկել պարզ տարրների բաղադրուելուց. ուստի հիւղը ստեղծուած է լինում եւ ոչ անարար։ Որովհետեւ եթէ հիւղը բաղադրեալ էր, իսկ բաղադրեալները պարզերից են կազմւում, ապա ուրեմն կար ժամանակ, երբ հիւղն չկար, քանի դեռ պարզերը չէին միացել միմեանց հետ։ Եւ եթէ կար ժամանակ, երբ հիւղը չկար, ապա ուրեմն ոչ մի ժամանակ էլ նա անարար չէր։ Միւս կողմից՝ եթէ Աստուած անարար էր, անարար էին եւ պարզ տարրները, որոնցից բաղադրուել է հիւղը, հետեւաբար երկուսը միայն չէին անարար, այլ հինգը։ Դրանք են՝ մէկն Աստուած, միւսները՝ չորս տարրները (էջ 23 եւ հտ.)։

Մի ուրիշ օրինակ։ — Եթէ հիւղը, որից Աստուած աշխարհս ստեղծել է, ասում էք՝ «անկերպարան եւ անզարդ էր», եւ Աստուած դրանից ստեղ-

---

է, ընդ չարսն՝ չար է. եւ նախանձն նոյն է։ Բարւոյ ցանկալ բարի է, եւ չարին՝ չար. եւ ցանկութիւն նոյն է։ ... Զի ամենատեսն բարերարի զբարին սերմանեալ ի մարդիկ եւ յիշխանական կամսն թողեալ՝ որք կամիցին վարել ի բարի կամ ի չար» (Ե. 52)։ «Զի ամենայն արարածք ի բարերարէն բարի ստեղծան և ի կամակար մտացն եղեն չարք»(Ի. 228)։

ծել է աշխարհը «ի պէսպէս կերպարանս եւ ի զարդս եւ ի յարդս, — ապա ուրեմն կերպարանաց եւ զարդուց եւ արդուց արարիչ է Աստուած, եւ ոչ բնութեանց [=տարրերի]: Իսկ եթէ արարչի այն գործ է՝ զբնութիւնս առնել, եւ ոչ միայն արդս եւ զարդս եւ կերպարանս, յայտ է եթէ աւելորդ է կարծել՝ թէ ի նիւթոյ ինչ իմեքէ յընթերակացէ արար Աստուած զաշխարհս, այլ յոչնչէ եւ ի չգոյէ» (էջ 19): Որովհետեւ մարդիկ էլ ստեղծում են ձեւ ու կերպարանք, որ չգոյ են, այն է՝ եղած նիւթերից արուեստով ստեղծում են բաներ, որ չկան բնութեան մէջ, ինչպէս տաճարներ, քաղաքներ: Մարդիկ միայն չգոյ ձեւ ու կերպարանք են ստեղծում, իսկ Աստուած արարիչ է, ուստի նա թէ՛ դրանց ստեղծող է եւ թէ՛ կարող է ստեղծել տարրները (էջ 20):

Եզնիկը միեւնոյն եղանակով ամենայն մանրամասնութիւններով հերքում է եւ Զրադաշտական կրօնի հաւատալիքները, ինչպէս այդ կրօնի առասպելները, եւ հակասութիւններ ու անհեթեթութիւններ ցոյց տալով՝ ծիծաղելի է դարձնում դրանք իբրեւ անմտութեամբ լի բաջաղանքներ եւ կարկատուն բաներ: Նոյնն անում է նա եւ Մարկիոնի աղանդի նկատմամբ, միայն այս դէպքում նա դիմում է եւ Ս. Գրքին:

10. Պայքար ընդդէմ հայկական ժողովրդական հաւատալիքների: — Քրիստոնէութեան հաստատման համար անհրաժեշտ էր ժողովրդի միջից արմատախիլ անել նաեւ հեթանոսական կրօնական հաւատալիքները: Եզնիկը կարիք չի տեսնում առանձնապէս հերքելու հայկական բազմաստուածութիւնը. այդ հերքումը նա կատարում է ընդհանրապէս, երբ խօսում է ընդդիմակաց ուսմունքների դէմ: Աստուածների մասին նա այն տեսակէտն ունի, ինչ որ առհասարակ քրիստոնեայ վարդապետները, այն է, թէ՝ աստուածները եղել են մարդիկ, «եւ զմարդկան ուրուականս ի պաշտօն առեալ՝ դիս անուանէին» (էջ 70):

Բացի աստուածներից՝ եղել է եւ բազմաթիւ բարի ու չար դեմոնների հաւատքը, որ շատ երկար յարատեւել է եւ մեծ մասամբ հասել է մինչեւ մեր օրերը: Եզնիկը սուր կերպով դիտում է այդ եւ իր ոչնչացնող խօսքն է ասում սնոտիապաշտական ոգիների մասին, ինչպէս են՝ մարմնաւոր դեւ, պայ, համբարու, յուշկապարիկ, պարիկ, ծովացուլ, առլէզ, նհանգ, չահապետ վայրաց, վիշապ: Սրանցից առանձնապէս վիշապները շատ մեծ տեղ են բռնել հայկական հաւատալիքների մէջ ե՛ւ հնումն, ե՛ւ նորումս (1): Դրանք, — ասում է Եզնիկը, — «ոչ եթէ անձինք ինչ են, այլ անուանք ըղբանգտանաց, եւ բաջաղանք մոլորելոց մտաց ի դիւաց». «անուանք առանց անձանց են», «ամենայն՝ առասպելք են, եւ պառաւաց դրդջիւնք» (էջ 69 եւ հտ.): Սակայն ինչքան էլ նա ուժեղ բանավարութեամբ հերքում է այդպիսի ոգիների գոյութիւնը եւ մանաւանդ նրանց կերպարանքների փոխուելը, կամ զանազան կերպարանքներ ընդունելը, բայց եւ այնպէս նա բոլոր հին

---

(1) Այդ հաւատալիքներն ի մի ամփոփուած, մասամբ՝ թէրի, «Ազգագրական Հանդէս», գիրք ԻԶ, 1916, «Ազգագրական նիւթեր Եզնիկի Եղծ Աղանդոց գրքի մէջ»:

*քրիստոնեաների հետ հաւատում է, թէ «հրեշտակք եւ դեւք [անմարմին դեւերը] կարող են զօրս գնդել եւ պարգել, և ազգի ազգի կերպարանս երեւեցուցանել» (էջ 72), եւ թէ սատանան է, որ «կարծեցուցանէ թէ նհանգք ինչ իցեն գետոց, եւ չահապետք վայրաց․ եւ յետ կարծեցուցանելոյ՝ ինքն կերպարանի կա՛մ ի վիշապի կերպարանս կա՛մ ի նհանգի իմն եւ ի չահապետի, զի այնու զմարդն յիւրմէ արարչէն թիւրեսցէ» (էջ 74)։ Այդ բոլորը «դիւաց կերպարանք են», — ասում է նա, — «կեղծիք դիւաց են եւ ոչ ճշմարտութիւն ինչ իրաց» (էջ 75)։*

*Երազի մասին էլ նա այն հասկացութիւնն ունի, թէ կայ երազ, որ՝ ինչ որ ցերեկն ասում է մարդ, քնած ժամանակ էլ դրանով զբաղւում է նրա միտքը․ բայց կայ երազ, որով, Աստուծու շնորհիւ, յայտնւում է մարդուն ապագայում լինելիքը․ կամ թէ հակառակորդը, այսինքն սատանան, զանազան կերպարանքներով երեւում է մարդուն՝ նրան զարհուրեցնելու համար։ Հետաքրքիր է հին գրուածքի մասին ժողովրդական հաւատքը, «սատանախտութիւն» ասածը, որին նոյնպէս հաւատում է Եզնիկը, թէ չար ոգին «բազում անգամ ի կանանց կերպս եղեալ՝ զարս խաբէ յերազի․ եւ է՛ երբեք՝ յարանց կերպս դարձեալ զկանայս յանցուցանէ» (էջ 124)։ Նա հաւատում է նոյնպէս, թէ դեւերը կարող են մտնել մարդու մէջ եւ հիւանդութիւն պատճառել նրան։ Բայց կան ցաւեր, որոնք առաջանում են «ի չկշռելոյ խառնուածոյն։ Քանզի մարդոյ մարմին ի չորից տարերց խառնեալ է, ի խոնաւութենէ, ի ցամաքութենէ, ի ցրտութենէ եւ ի ջերմութենէ (1)․ եւ թէ մի ինչ պակասիցէ կամ յոլովիցէ, ցաւս գործէ ի մարմնին» (էջ 57)։ Ուրեմն ոչ ամէն հիւանդութիւն դեւերից է․ կան որ բնական պատճառներից են ծագում․ «Ուստի բժիշկք յամառին, թէ՝ բնաւ չիք դեւ, որ ի մարդ մտանիցէ․ այլ ցաւք են այն, եւ մեք դարմանովքն կարեմք բժշկել»։ Կան ոմանք էլ, — ասում է նա, — «որ վիճին, եթէ բնաւ իսկ սատանայ ոչ փորձէ զմարդ» (էջ 125)։ Բայց Եզնիկը հետեւում է Աւետարանին, ըստ որի դեւերը կարող են փորձել մարդուն եւ մտնել մարդու մէջ։ Յօրանջելն ու ձգտելն էլ, — ասում է նա, — ոմանք կարծում են, թէ դեւից է լինում․ բայց այդ առաջանում է «ի մեղկութենէ եւ թուլութենէ մարմնոյն։ Ուստի զատէպ յօրանջելն եւ ձգտելն՝ հմուտ բժիշկք ի մթերելոյ մաղասոյ ասեն, զոր եւ փորձն իսկ յայտ առնէ»։ Այսպէս եւ փնչելը հրեշտակից չի լինում, այլ ցրտից, կամ «վասն այլ իրիք բնական ազդեցութեան», նոյնպէս եւ հոգոց հանելը (էջ 122 եւ հա․)։ Այսպէս ուրեմն, Եզնիկն այսպիսի ժողովրդական նախապաշարմունքները բնական պատճառներից է համարում, եթէ միայն այդ չի հակասում Ս. Գրքին։ Նա խօսում է նաեւ կախարդների ու կախարդութեան դէմ, որոնց շատ հաւատացել է եւ դեռ հաւատում է մեր ժողովուրդը (էջ 60-63), այլեւ «տարրների» պաշտամունքի դէմ, ինչպէս են՝ «արեգակն եւ լուսին եւ աստեղք եւ հուր եւ ջուր եւ երկիր, որ ի մոգուց եւ՛ ի հեթանոսաց պաշտին» (էջ 10), մի սնահաւատք, որ յարատեւել է մինչեւ մեր օրերը։*

11․ Ընդդէմ ճակատագրի հաւատքի։ — *Աստղապաշտութեան հետ կապուած է եղել եւ «հրամանքի» կամ ճակատագրի հաւատքը։ «Քաղդեայքն աստեղանշմարք… զծննդոց պատճառս եւ զմահուանց՝ յաստեղաց իբրեւ ի կենդանեաց դնեն։ Որպէս թէ յորժամ ծնանիցին, անդէն եւ մահուանքն*

(1) Յաճախապատում․ «ի չորից նիւթոց արար զարարածս… եւ անձի զմարմինս կազմեաց՝ ի ցամաքէ, ի խոնաւոյ, ի ջերմոյ եւ ի ցրտոյ» (Ժ Դ․ 174)։

իւրաքանչիւր ուրուք անվրէպ սահմանիցին. եւ ըստ այն ոչ յառաջել ումեք մեռանել հնար իցէ, եւ ոչ յամենալ» (էջ 107)։ «Դարձեալ բախտաւորութեանց եւ չուառութեանց՝ զաստեղսն դնեն պատճառս. որպէս թէ աստեղաւունք ինչ իցեն, եւ ըստ դիպելոյ պատճառաւորաց աստեղացն յաստեղատունսն՝ նոյնպիսիք եւ ծնունդքն լինիցին» (էջ 108)։«Որ ինչ ի ճակատագրին գրեալ է հրամանացն, այնմ չէ հնար վրիպել. այլ որ փառաւորն գրեցաւ՝ փառաւոր է, եւ որ չուառն՝ չուառ. եւ ուր հրամանքն իցեն եւ յումմէ հրամանքն, ըստ այնմ եւ մեռանին. եւ վրիպել չէ հնար ի սահմանելոյ հրամանէն» (112)։ «Եղծի» հեղինակը մանրամասն հերքելով այս հաւատալիքը, որ մինչեւ օրս դեռ մնում է մեր յետամնաց սնոտիապաշտ խաւերի մէջ, սաստիկ հեգնանք ու ծաղրի է ենթարկում այն, ելնելով աստեղատներէ անուններից՝ առիւծ, եղն, խոյ, կարիճ (էջ 107—112)։

**12. Տիեզերագրական հայեացքը եւ մեկնաբանական մեթոդը։ —** Եզնիկն ի միջի այլոց խօսում է նաեւ տիեզերագրական մի քանի խնդիրների, երկնային լուսաւորների եւ օդերեւոյթների մասին։ Նա օդերեւոյթները մերթ բացատրում է բնական պայմաններով, ինչպէս՝ արշալոյսի շառագունումը, լուսնի եւ նոյնիսկ ճրագի շուրջն առաջ եկած բակը (էջ 129, ԻԴ), այլեւ ցօղի առաջացումը (էջ 132, ԻԵ). յաճախ, սակայն, պարզապէս հետեւում է Ս. Գրքին, ինչպէս՝ եղանակի փոփոխման եւ անձրեւի վերաբերմամբ (էջ 148)։ Նա իր տեսութիւնը կազմում է սովորաբար Ս. Գրքի խօսքերի մեկնութեամբ, ընդդէմ «արտաքին իմաստունների»։ Այստեղ մանրամասն չենք գրի այդ մասին։ Տիեզերքը նրա համար չունի, հարկաւ, այն անհուն ընդարձակութիւնը, ինչ որ այժմ մեզ համար։ Դա մի մեծ տուն է, երկինքն՝ առաստաղը, երկիրը՝ յատակը։ Երկինքն էլ երկուսն է. «Երկինք վերինք եւ որ ինչ յերկինս, եւ երկինք երեւելիք որ ի ջուրց» (էջ 6)։ «Նա եւ զերեւելի հաստատութիւնս, որ ի ջուրց մեկնեցաւ, երկին թարգմանեցին եւթանասունքն. ուստի յայտ է՝ թէ վերին երկինն եւ ներքին՝ երկու երկինք են, ոչ երեք կամ բազումք» (էջ 181)։ Արտաքին իմաստուններն ասում են, թէ ամէն օր «երկինք շրջին... մերթ ի շրջելն ծածկեն զլուսաւորսն եւ մերթ յայտնեն» (էջ 129)։ Եզնիկն այդ հերքում է պնդելով, թէ արեգակը, լուսինն ու աստղերը՝ «նոքա գնան եւ երկինք կան անշարժ տեղակալք։ Որպէս եւ աստուածատուր իսկ Գիրք հաստատութիւն կոչեն զերկինս։ Եւ որ ինչ հաստատուն է, չէ շարժուն»։ Ուրիշները, սակայն, նոյն Ս. Գրքի վրայ հիմնուելով՝ ասում են, թէ լուսաւորների համար գրուած է. «Եդ զնոսա ի հաստատութեան երկնից. ուստի յայտ է թէ բեւեռեալք են եւ ոչ գնայունք»։ Եզնիկն այդ էլ Ս. Գրքով բացատրում է, եւ ուրիշ օրինակներով ցոյց է տալիս, թէ «երկինք տեղակալ են եւ լուսաւորքն գնայունք»։ «Եւ ոչ միայն եւթն աստեղքն գնայունք են եւ այլքն առանց գնացից, այլ ամենեքեան գնայունք՝ կէսքն յամրագնացք, եւ կէսքն արագագնացք. եւ ոչ յերկինս բեւեռեալ են» (էջ 148 եւ հտ.)։

Նրան ծանօթ են ժամանակի գիտական տեսութիւնները լուսնի, արեգակի եւ մոլորակների շարժման մասին, բայց նա չի ընդունում դրանք։ Նա

*մերժում է, օրինակ, այն, որ լուսաւորներն արեւմուտքից արեւելք են գնում, թէ երկինքը երկրի շուրջը կայ բոլոր կողմերից։ «Եւ երկինք, ասեն, որչափ ի վեր են՝ դոյնչափ ի խոնարհ են, եւ դոյնչափ յամենայն կողմանց շուրջ զերկրաւ, եւ զերկիրս շուրջ ջուր պատէ, եւ զջուրն եւ զերկիր՝ օդ, եւ զօդն եւ զջուր եւ զերկիր՝ հուր»* (էջ 140)։ *Նա չի ընդունում եւ այն տեսութիւնը, թէ «երկիրն ի միջոցի կայ... օդս՝ որ է ի մէջ գնդին երկնից՝ փակեալ կայ, եւ ունի դաշխարհս ի հաստարակածի, ոչ ի վեր տայ վերանալ եւ ոչ ի խոնարհ հակել»* (էջ 132 *եւ հտ.*)։ *Մերժում է նաեւ այն տեսութիւնը, թէ «լուսնի չիք իւր լոյս առանձինն, այլ յարեգակնէ գայ ի նա լոյսն», նոյնպէս եւ այն, որ ասում են, թէ լուսինը «ի ներքոյ է քան զարեգակն եւ քան զամենայն աստեղս. եւ քանզի ի ներքոյ է, յորժամ կչիռ դէպ արեգական պատահիցէ՝ յայնժամ խաւարի արեգակն»* (էջ 140). *կամ այն, որ ասում են, թէ «ոչ ուրեք մտանէ արեգակն. եւ զի ոչ մտանէ՝ անտի յայտ է, զի ցայգ ի նորա լուսոյն ի լուսնի ամանն լոյս ծագէ», եւ նմանները* (էջ 149–151)։

*Այսպէս ուրեմն, ինչքան էլ Եզնիկին ծանօթ են իր ժամանակի այս տեսութիւնները, բայց նա մերժում է դրանք։ Շատ պարզ երեւում է, որ նա աստուածաբանա–մեկնաբանական դպրոցի ուսում է ստացել, ուստի եւ նրա դատողութիւնները տիեզերքի մասին ելնում են իր դպրոցից։*

13. Հոգի եւ մարմին։ — *Կանգ առնենք միջնադարեան գրականութեան համար կարեւոր այս խնդիրների մասին։ Կան երեք արարածներ, որոնք* մտաւոր *եւ* բանաւոր *են, ստեղծուած են, «սկզբնաւոր» են, բայց անմահ են. Աստուած նրանց «պարգեւեաց աննախանձ զանմահութիւն»։ Նրանք են հրեշտակները, դեւերը եւ մարդկանց հոգիները։ Հրեշտակներն ու դեւերն անմարմին են* (էջ 68)։ *«Նա [=սատանան] անմարմին է, որպէս շունչ մարդոյն անմարմին»* (էջ 124)։ *Նրանք, հրեշտակներն ու դեւերը, «ոչ յաւելուած ծննդեամբ առնուն, եւ ոչ պակասութիւն մահուամբ. այլ որպէս հաստատեցանն, նոյնպէս եւ նովին թուով կան, առանց յաւելուածոյ եւ նուազութեան»։*

*Իսկ «մարդիկ, քանզի յերկուց բնութեանց են՝ ի մարմնաւորաց եւ յանմարմնոց, յիրաւի սերին ծննդեամբ, եւ գան յաճումն ամուսնութեամբ, եւ մեռանին մարմնովք եւ ոչ ոգւովք, վասն պատուիրանազանցութեանն»* (էջ 71)։ *Մարմնաւորը մարդու մարմինն է, անմարմինը՝ հոգին, որ եւ «շունչ» է անուանում. «շունչ մարդոյն անմարմին»* (էջ 124) (1)։ *Ի՞նչ է այս երկուսի, հոգու եւ մարմնի, տարբերութիւնը։ «Որ ինչ երեւի՝ մարմնաւոր է, եւ որ ինչ ոչ երեւի՝ անմարմին»* (էջ 67)։ *Այս սահմանումը նա քիչ յետոյ աւելի պարզում է եւ մարմնաւորը, որ միեւնոյն է՝ նիւթականը,*

---

(1) Հոգի, ոգի բառն էլ սկզբնապէս, ինչպէս եւ յետոյ, շունչ է նշանակում. այս գիտէ եւ Եզնիկը (էջ 64)։ Դա ծագում է մարդկային հոգու նախնական հասկացութիւնից։ Տե՛ս M. Abeghian, Der Armenische Volksglaube, Leipzig 1889, էջ 8 եւ հտ. 14։

շատ ճիշտ որոշում է գրելով. «Եւ միանգամայն իսկ ասացեալ, թէ որ ինչ ի զգայնոցս շօշափի կամ զննի կամ ազդի՝ այն մարմնաւոր է, եւ որ զգայնոց ոչ ազդի՝ անմարմին: Նուրբ է տարր լուսոյ, այլ զի ակամբ զննի՝ մարմնաւոր է. նուրբ է տարր օդոյ, այլ զի ցրտութեամբն ազդի մարմնոյ՝ մարմնաւոր է. Նուրբ է տարր հրոյ, այլ զի ջերմութեամբն ազդի մարմնոյ՝ մարմնաւոր է. Նոյնպէս եւ ջրոյ, որ քան զծանունսն նրբագոյն է, եւ քան զթեթեւսն ծանրագոյն»(էջ 68): Ուրիշ տեղ այսպէս է տարբերում. «որ մարմնաւոր է՝ ի չորից հիւթից յօդեալ է, որպէս մարմինք մարդկան եւ բնաւ անասնոց. եւ որ ինչ անմարմին է՝ նա պարզ բնութիւն է, որպէս հրեշտակաց եւ դիւաց եւ ոգւոց մարդկան» (էջ 64):

Ինչպէս բոլոր արարածները, նոյնպէս եւ մարդու հոգին ստեղծուած է ոչնչից: Նա «որ յոչնչէն կարող եղեւ զշունչ մարդոյն առնել, եւ պահէ միշտ կենդանի եւ անմահ, նոյն եւ զմարմինն՝ զոր յերկրէ ստեղծ՝ կարող էր պահել կենդանի» (էջ 51): «Եւ որ զհրեշտակս եւ զհոգիս մարդկան յոչընչէ արարեալ՝ կենդանիս եւ անմահս պահէ, նոյն եւ զմարմինս կարող էր կենդանի պահել՝ թէ չէր առաջնոյ մարդոյն զԱստուծոյ հրամանն զընկեցեալ» (էջ 53): Կը նշանակի՝ Եզնիկն Ադամի յանցագործութեան հետեւանքն է համարում մարդու մահուան ճակատագիրը:

Նա դէմ է ելնում այն փիլիսոփաներին, «որք զշունչն [=հոգին] անարար, անմահ եւ աստուածեղէն յԱստուծոյ բնութենէ անտի ասեն» (էջ 146), որոնք Աստուծու «զմիտսն եւ զշունչ» տեսնում են բոլոր արարածների մէջ, ե՛ւ շնչաւորների, ե՛ւ անշունչների: Նա ասում է, թէ ամպարշտութիւն է «զԱստուծոյ զիւրոյ էութեանն կենդանութիւն՝ հոգեւորաց եւ շնչաւորաց եւ անշնչից առ հասարակ համարել» եւ տարբերութիւն չդնել հրեշտակների ու դեւերի եւ մարդկանց, որոնք բանաւոր եւ մտաւոր են, եւ ուրիշ շնչաւորների միջեւ, որոնց «բնական կենդանութիւն ի չորից հիւթոց խառնեալ եւ յօդեալ, որք յորժամ քակտիցին, եւ կենդանութիւն ի նոյն չորեսին հիւթսըն լուծանի» (էջ 146): Բոլոր արարածների մէջ Աստուծու շունչը դնելով, միաժամանակ եւ «տանջանս եւ պատիժս շնչոցն յանցուցելոց» դնելով, նրանք Աստուծու էութիւնը մասերի են բաժանում եւ շատ շնչերի են կտորում, «եւ դարձեալ զիւրոյ զկէս բնութիւնն միւս կէսն տանջիցէ, եւ կէսն ի փառս եւ կէսն յանարգանս, եւ մի թերին յանոյշս եւ միւս թերին ի դժոխս» (էջ 146 եւ հտ.): Դա յետին հայհոյութիւն է, — ասում է նա: Աստուած էլ հոգի է, բայց կայ զանազանութիւն. «Կոչի Աստուած հոգի, այլ կայ ընտրութիւն ի միջի. ասէ՝ Աստուած հոգի կենդանի է, որ է կենարար» (էջ 65): Մինչդեռ մարդու հոգին «կենարար» չէ, այլ միայն կենդանութիւն է:

Եզնիկն ընդունում է, որ ամէն բանի մէջ կենդանութիւն կայ. «սերմանք եւ տունկք արկեալք յերկիր՝ բուսանին. եւ յէգս մարդկան եւ յանասնոց անկեալ սերմանք՝ գան ի ծնունդս եւ յաճումն»: «Այլ խնդիր այն է, թէ այն կենդանութիւն ոչ Աստուծոյ էութեանն կենդանութիւն է, այլ արարած կենդանութիւն այլազգ ի բանաւորսն եւ ի մտաւորս, եւ այլազգ յանասունսն եւ յամենայն շնչաւորսն, եւ այլազգ ի բնականսն, որպէս ի սերմանս եւ որ յէգս մարդկան եւ անասնոց անկանին»: Դրանցից՝ մարդկանց կենդանու-

թիւնն «առաւել եւ պատուականագոյն է. յորում եւ բնական կենդանութիւն է ըստ մարմնոյն, եւ բանաւորն սքանչելի ըստ շնչոյն (1): Զի մարմինն եւ նոցա ի չորից հիւթոցն կայ. եւ ոգին ոչ ի չորիցն հիւթոց յօդելոց, այլ ի պարզական եւ ի սուղական բնութենէ. եւ այլոց անասնոց ոչ նոյնպիսի, այլ ի բնական եւ յաղէգական բնութենէ [=բնազդից]. եւ սերմանց ոչ նոյնպիսի, այլ ի բնական եւ յանշնչական խաղացից: Նոյնպէս եւ ոչ ի լուսաւորսն շնչաւորութիւն ինչ բանաւոր է, այլ բնական եւ խաղացական շարժմունք» (էջ 147):

Այսպէս՝ Եզնիկը խիստ հետեւողական է իր տեսութեան մէջ. անմար միայն աստուածային մէկ էութիւնն է, որ արարիչ է, կենդանաբար, մնացածը, այլեւ մարդուս հոգին, արարած է: Բայց այդ պէտք էր հաստատել եւ Ս. Գրքով: Թէպէտ եւ այդ յայտնի է, «այլ եւ զմիոյ միոյ խակ ի նոցանէ զարարած մարթի ի Գրոց ցուցանել», ասում է նա, եւ շարունակում է. «Նախ զհրեշտակացն, որպէս ասէ Դաւիթ, թէ արար զհրեշտակս իւր հոգիս»: Ուրեմն հրեշտակները ստեղծուած հոգիներ են: Իսկ մարդո՞ւ հոգին: Այս նկատմամբ այնքան պարզ չէ մեկնաբանի գործը, քանի որ Ս. Գրքի մէջ կան անորոշ, երբեմն եւ հակասական արտայայտութիւններ: Մեկնաբանի գործը, սակայն, հէնց այն է, որ այդ անորոշութիւնները պարզի եւ հակասութիւնները վերացնի: Դրա համար նա հետեւում է մի սկզբունքի, թէ Ս. Գրքի մէջ հակասական բան չկայ, բոլորը մէ՛կ Հոգուց, այսինքն Աստծուց են թելադրուած, միայն պէտք է հասկանալ. որովհետեւ «զոր միոյ մարգարէի թողեալ իցէ՝ միւսոյն լնու Հոգին» (էջ 136): Դարձեալ՝ «ոչ եթէ հակառակ ինչ միմեանց են Գիրք, այլ զոր միոյն թողեալ է, միւսն արլնու նովին Հոգւով: Որպէս տեսանեմք իսկ՝ զի որ ինչ Մովսէսի չէ ասացեալ, այլ մարգարէք լցին նովին Հոգւով: Մովսէս ասէ. եստեղծ Աստուած զմարդն հող յերկրէ, եւ փչեաց ի նա շունչ կենդանի: Եւ փչելն դեռ եւս ի միջի կայ կարծելոյ՝ թէ իցէ՛ արարած շունչն թէ չիցէ: Արդ գայ Զաքարիա մարգարէ նովին Հոգւով վարեալ եւ ցուցանէ զարարած շնչոյն: Ասէ. որ հաստատէ զհոգի մարդոյն ի նմա. եւ Եսայիաս ասէ, թէ զամենայն շունչ [=հոգի] ես արարի» (էջ 134): Այսպէս ուրեմն, մարդուս հոգին արարած է, եւ ըստ Ս. Գրքի. դա «սկզբնաւոր» է:

Ե՞րբ է լինում մարդկանց հոգիների սկիզբը: Այս էլ պարզում է Եզնիկը՝ գրելով այսպէս. «Թէպէտ եւ կանխաւ գիտէ Աստուած՝ թէ ոմն կատարիչ լինելոց է, ոմն կախարդ եւ ոմն սպանող, ոչ արդելու զնկարել սաղմիցն նոցա, եւ զփչումն հոգւոցն նոցա, զի նորա բարերարութիւնն երեւեսցի, եւ նոքա յիւրաքանչիւր անձնիշխանութեանն պարտաւորեսցին» (էջ 62): Կը նշանակի՝ իւրաքանչիւր մարդու «փչումն հոգւոյ» լինում է ար-

---

(1) Յաճախապատում. «Հոգի, միտք եւ բան մի՛ հոգի ասի եւ ոչ երբեք հոգիք, այլ հոգի ասի կենդանութիւնս, եւ միտք ասի իմաստութիւնս եւ բան ասի խօսողութիւնս՝ միոյ հոգւոյն» (Ա. 3):

*գանգում «սաղմի նկարուելիս»* (1)։

14. Մարդակենտրոն աշխարհայեացք (*անթրոպոցենտրիզմ*)։ — *Աստուծու արարչութեան կենտրոնը կազմում է մարդը, որին նա իր պատկերով ու նմանութեամբ է ստեղծել եւ աւելի է սիրում* (*էջ* 66)։ *Բոլոր արարածները — գազանները, անասուններն ու թռչունները, երկիր, ջուր, հուր եւ օդ, բոյսերը, եւ առհասարակ բոլոր տիեզերքը (նոյնիսկ հրեշտակներն ու սատանան իր դեւերի հետ) — մարդու համար են ստեղծուած։ Բոլորի ժառանգը մարդն է։ Աստուած նախ ժառանգութիւնն է արարել, յետոյ ժառանգին. «Նախ զտունն, եւ ապա զտնակալն. Նախ զստացուածսն, եւ ապա զստացողն. Նախ զծառայսն, եւ ապա զտէրն»։ Մարդն իշխան է բոլորի* (*էջ* 162)։ *«Զահ եւ զերկիւղ մարդոյն՝ արկեալ է արարչին ի վերայ գազանացն եւ սողնոցն եւ անասնոցն եւ թռչնոց, վասն առաւել զնա պատուելոյն. զորրոյ եւ զարարածն նորանշան իմն ընծայեցուցանէ, թէ ստեղծ որպէս ձեռօք եւ փչեաց շունչ կենդանի որպէս թէ բերանով. եւ այնու, զի առաւել պատուական ցուցանիցէ զնա, յայտ առնէ»* (*էջ* 109)։ *Նա արարել է մարդու համար «զկէսսն ի պէտս, եւ զկէսսն ի կարգ, եւ զկէսսն զարհուրեցուցիչս՝ վասն զտարապարտ հպարտութիւն մարդոյն ցածուցանելոյ»* (*էջ* 102) (2)։

15. Անձնիշխանութիւն։ Չարիքի սկիզբ։ Միջնադարեան քրիստոնէական աշխարհայեցութիւնը եւ մարդուս եղերական վիճակը։ — *Եզնիկը հակառակ է ֆատալիզմին, ճակատագրի հաւատքին, նախասահմանութեանը, մարդուս կանխորոշուած վիճակին։ Աստուած, ըստ նրա, կանխագէտ է, առաջուց գիտէ, թէ ի՛նչ պիտի լինի ամէն մարդու բախտը, վիճակը, բայց մարդուն ազատ է թողնում ընտրութիւն անելու։ Մարդս անձնիշխան է, ազատ կամք ունի։ Անձնիշխանութիւնն է ամենամեծ պատիւն ու շնորհքը, որ*

---

(1) Յաճախապատում. «Ի սաղմնառութենէ անտի յառաջագայի եւ լինի մանուկ յօրինուածովք ըստ կերպարանին մարդ, եւ անունն առնու տղայն ի ծնունդ եւ ի սնունդ տղայութեան՝ աճմանն մարմնոյ եւ մտաց յորովայնին, եւ յետ ծննդեան նախախնամութեամբքն Աստուծոյ, որպէս ինքն գիտէ կապողն հոգւոյ եւ մարմնոյ ի միասին, եւ գայ ի կատարելութիւն մարմնոյ եւ մտաց» (ԺԵ. 183)։

(2) Յաճախապատում. «Կացոյց եւ զլուսաւորս յերկինս յառաջնորդութիւն եւ ի փոփոխումն աւուրց եւ ժամանակաց, ի սնունդ մարդկան եւ ամենայն կենդանեաց եւ բուսոյ եւ տնկոց։ Նաեւ զհուր եւ զջուր, զամպս եւ զհողմս յարդարեաց ի պէտս ազգի ազգի բուսոց եւ տնկոց, որ ի պէտս մարմնականս արարան իւրաքանչիւր պտղովք եւ սերմամբք, եւ որ ի ջուրս են ղուղակք եւ ձկունք. ազգ զազանաց պէսպէս բնութեամբ եւ զանազան կերպարանօք ի ծովու եւ ի ցամաքի, մեծամեծք եւ փոքունք, քաղցրունք եւ դառինք, շահեկանք եւ անշահք։ Նմանապէս ի տունկս եւ ի բոյսս որ ի պէտս երեւին մարդկան ,եւ ոչ արարչին արարան։ Ոսկի եւ արծաթ եւ պղինձ եւ երկաթ, եւ պատուականք քարինք եւ անարգք ի պէտս մարդկան... հաստատեցան։ Եւ ի չորից նիւթոց զերեւելիս եցոյց, խոնաւ եւ ցամաք, ցուրտ եւ ջերմ յԱստուծոյ կազմեցան։ Եւ ի նոյն նիւթոյ արարեալ զմարդն, եւ շնչեաց ի նա հոգի կենդանի եւ անմահ, մտաւոր եւ բանաւոր։ Եւ խառնեաց զհոգեւորն ընդ մարմնաւորն ... զի լիցի տեսուչ արարչին արարածոց» (Դ. 27 հտ.)։

տրուած է մարդուն. որովհետեւ Աստուած «ոչ կամէր թէ որպէս զանասունս ի հարկէ վարիցին» (էջ 54)։ Բոլոր արարածներն անում են այն միայն, ինչի համար կարգուած են. իսկ մարդս «առեալ զանձնիշխանութիւնն ո՛ւմ կամի՝ ծառայանայ, որ մեծ շնորհն պարգեւեալ է նմա յԱստուծոյ. քանզի այլն ամենայն ի հարկէ ծառայէ աստուածական հրամանին» (էջ 29)։ Աստուած չի ուզում «ընդ հարկաւ վարել զբանաւորսն» (էջ 113)։ Եթէ այդպէս չլինէր, մարդս կը դառնար ինչպէս մի գործիք, «զոր թէպէտ ի չար վարէր եւ թէպէտ ի բարի, ոչ պարսաւանք ինչ էին նմա եւ ոչ գովութիւնք... Նա եւ ոչ զլաւ ինչ գիտէր այնուհետեւ մարդն... Այլ Աստուած այնպէս պատուել զմարդն կամեցաւ, զի առ լաւութեանցն խելամուտ լինելոյ՝ զանձնիշխանութիւնն պարգեւեաց նմա, որով կարող իցէ առնել զինչ եւ կամեսցի, եւ զանձնիշխանութիւնն նորա ի լաւն խրատէ դարձուցանել» (էջ 30)։

Եզնիկը (ինչպէս եւ Յաճախապատումը) յաճախ դառնում է անձնիշխանութեան խնդրին։ Նրա կարծիքով անձնիշխանութիւնը բնածին է մարդուս մէջ. մի անգամ որ այդ շնորհքը պարգեւուած է առաջին մարդուն, նրանից ժառանգաբար անցնում է նրա սերունդներին. «Ունել անձնիշխանութիւն եւ ազատութիւն առաջնոյ մարդոյն... եւ ի նմանէն զնոյն իւրոց պայազատացն ժառանգել» (էջ 29)։ Ի՞նչ է հասկանում նա անձնիշխանութիւն ասելով։ Նա կողմնակից չէ կատարեալ ազատութեան, կամքի բացարձակ անկախութեան որեւէ պայմանից։ Իւրաքանչիւր մարդու, անհատի առաջ դրուած են բարոյական օրէնքներ, եւ մարդը կախում ունի դրանցից։ Դրանք աստուածային հրամաններն են, որ պիտի ճանաչի մարդը եւ իր արարքները դրանց համեմատ կատարի։ Աստուած կանխագէտ է, բայց չի կանխորոշած մարդու վիճակը։ Նա միայն «յօժարեցուցանէ զմարդն անսալ հրամանաց նորա. բայց զկամակար իշխանութիւնն ոչ հանէ ի նմանէ, որով կարողն է անսալ եւ չանսալ հրամանացն. այլ խրատէ եւ յօժարեցուցանէ զմարդն, զի լաւութեանցն ցանկացող լիցի». «զանձնիշխանութիւն նորա ի լաւն խրատէ դարձուցանել» (էջ 30)։ Ինչպէս հայրը որդուն խրատում է մի բան անելու կամ չանելու, բայց որդին իր ազատ ընտրութեամբ է գործում։

Արդեօք երջանի՞կ է մարդս իր այս վիճակով։ Մարդու այս անձնիշխանութիւնից, ահա՛, ծագում է չարը, չարիքը։ «Անձնիշխան եղեւ մարդն՝ առնել զբարի եւ ժտել ի չար. իբր ոչ եթէ չար ինչ առաջի կայր՝ յոր ժտիցի, այլ ա՛յն եւեթ առաջի կայր՝ կա՛մ անսալ Աստուծոյ, կա՛մ չանսալ, եւ զնոյն եւեթ պատճառ չարին իմանալ։ Քանզի լեալ մարդն առաջին՝ առնոյր պատուէր յԱստուծոյ, եւ չհնազանդեալ աստուածական հրամանին՝ մտաբերէր ի չարիս, եւ անտի լինէր սկիզբն չարեաց» (էջ 31)։ «Անսաստութիւնն եւեթ՝ որ արտաքոյ Աստուծոյ կամացն գործիցի՝ պատճառ չարեաց իմանալի է» (էջ 32)։ Ուրեմն, ինչպէս վերեւում տեսանք, գործողութիւնը չար է, երբ այդ կատարւում է օրէնքի, որ միեւնոյն է, Աստուծոյ պատուիրանների հակառակ։ Եւ մարդս շատ անգամ այդպէս է վարւում։

Բայց այդ առաջ է գալիս «յուրուք վարդապետութենէ դրդեալ». եւ պէտք է «նմին զայլ ոք վարդապետ ծածուկ հաչուել, դրդիչ եւ ոչ բռնադա-

տիչ, որ զմարդն ի լաւութեանցն մերկանալ կամեցաւ» (էջ 32)։ Այդ դըրդիչը սատանան է։ Սատանան ինքն էլ ի բնէ չար չի ստեղծուել, ինչպէս կարծում են «թէ Աստուած իսկ զնա չար արար» (էջ 104)։ Նա «յԱստուծոյ բարւոք եղեւ, եւ անձամբ յանձնէ դարձոյց զկամս ի չար» (էջ 37)։ Նա «ոչ է բնութեամբ չար, այլ կամօք» (էջ 128)։ Նա էլ անձնիշխան է եւ իր կամքով «ի չարութիւնն կործանեցաւ» (էջ 126), «իւրն կամօք եղեւ բանսարկու. թողեալ զԱստուծոյ հպատակութիւն՝ սկսաւ անսաստել, եւ հակառակ կալ Աստուծոյ հրամանացն ուսուցանել մարդկան, եւ իբրեւ զապստամբ յետս կացեալ թիւրեցաւ յԱստուծոյ» (էջ 38)։

Սատանան նախանձում է մարդուն եւ դրդում է նրան չանսալ Աստուծուն, եւ երբ նա չի անսում՝ դրանից առաջանում է չարիքը. «Սկիզբն չարեաց զնախանձն ասեմք, եւ զնախանձն յառաւել զմարդն պատուելոյ, եւ զչարիսն յանհնազանդութենէն։ Զի Աստուած այսպէս առաւել զմարդն պատուեաց, եւ նորա անսաստեալ՝ զընկէց զպատուիրանն։ Ուստի զամենայն ինչ որ լինի չար՝ ոչ բնութեամբ չար գիտեմք, այլ զի առանց կամացն Աստուծոյ գործին իրք ինչ՝ լինին չար» (էջ 35 եւ հտ.)։ «Չար է հակառակ կալ Աստուծոյ հրամանին» (էջ 36)։ Որ սատանան դրդում է մարդուն չանսալ Աստուծուն՝ դրա պատճառը նրա նախանձն է. իսկ որ սատանան նախանձում է մարդուն, դրա պատճառն այն է, որ Աստուած մարդուն աւելի է պատուել. «Ապա եթէ զպատճառն եւս կամիցին խնդրել, զնախանձն՝ որ առ մարդն եղեւ՝ իմասցին զպատճառն։ Եւ եթէ զնախանձուէն եւս ճշդիւք քննիցեն՝ թէ ուստի եղեւ, ասասցուք՝ եթէ յառաւելութենէ զմարդն պատուելոյ. քանզի միայն մարդ ըստ պատկերի եւ ըստ նմանութեան Աստուծոյ եղեւ» (էջ 32)։

Այսպիսով, ամէն չարիքի սկզբնապատճառը մարդու առաւելութիւնն է բոլոր արարածների մէջ եւ ամէն չար բանի դրդիչը, բայց ոչ բռնադատիչը (որովհետեւ մարդս անձնիշխան է) սատանան եւ իր դեւերն են։ Սատանան սուտ է, չար, թշնամի, փորձիչ, բանսարկու, չարիքի արբանեակ, մարդասպան։ «Ի կռապաշտութիւնս ձգէ, եւ դիւթութեամբք եւ հմայիւք եւ քաղդէութեամբ վրիպեցուցանէ զմարդիկ» (էջ 128)։ «Դեւք ... զմարդիկ ի կռապաշտութիւն յօժարեցուցանէին եւ... ի պէսպէս աղանդս փիլիսոփայից եւ հերձուածողաց... ի բաշխս բախտից եւ... ճակատագրաց եւ... կապելոց հրամանաց... ընդ ստուերս պչուցանել՝ թէ նոքա ինչ իցեն պատճառք բախտաւորութեան եւ չուառութեան... ամենայն աստուածք հեթանոսաց դեւք են» (էջ 104 եւ հտ.)։

Որ այդպէս է, — հարցնում են, — ինչո՞ւ Աստուած չի ոչնչացրել ապստամբ սատանային եւ նոյնիսկ ստեղծել է նրան։ — Այդ այդպէս եղել է, սատանան ստեղծուել է դարձեալ միայն մարդու համար. «վասն անձնիշխանութեան մարդոյն երեւելոյ արար զնա» (էջ 39), որպէսզի մարդը «պատերազմեալ յաղթիցէ սատանայի» (էջ 40)։ Աստուած թողել է «զսատանայ իբրեւ ի հրահանգս կռուանոցաց աշխարհի» եւ «իւրովք պատուիրանօք վառէ գեղեցիկ զմարդիկ՝ առ ի պսակելոյ զյաղթողն» (էջ 41)։

«Քանզի ոչ եթէ վայրապար ինչ կամէր Աստուած զայնպիսի պարգեւս տալ, որ յաւիտենական անեղծութիւնն է. զի վայրապար իսկ էր այնպիսոյն տալ՝ որ ոչ ունէր իշխանութիւն երկոցունց, անսալոյ այնմ՝ զոր Աստուածն կամէր, եւ չանսալոյ այնմ՝ զոր նայն չախորժէր: Բայց իրաւամբք այն է, յորժամ արժանի ըստ որոյ գործեացն ոք ինչ առնուցու» (էջ 31): Այսպէս ուրեմն, մարդս յաղթելով սատանայի փորձութիւններին՝ իր արժանի վարձատրութիւնը կը ստանայ յաւիտենականութեան մէջ: Դրանով կ'երեւայ Աստուծու բարութիւնը:

Բայց մարդ կարող է չդիմանալ դեւերի փորձութիւններին եւ պարտուել սատանայի դէմ պատերազմի մէջ: Դրան ալ ճար կայ: Աստուած թողել է սատանային, որպէսզի «յորժամ զսատանայ ամպարշտացեալ տեսանիցեն եւ չբարձեալ ի միջոյ, եւ վասն իւրեանց մեղացն իմանայցեն՝ թէ գոյ հնար թողութեան ապաշխարութեամբ. զի Աստուծոյ բարերարութիւնն ցուցանիցի, եւ մարդիկ զշնորհն նորա գիտասցեն. զի եթէ այն այնպէս չէր լեալ, եւ ոչ բարերարութեանն նորա ոք խելամուտ լինէր» (էջ 39): Եթէ այնպէս չլինէր, «անծանօթ եւս լինէր առ յապայ մարդկան՝ Աստուծոյ բարերարութիւնն» (էջ 40): Սատանայի փորձութիւններին չդիմացող եւ չարիք գործող մարդն էլ, ուրեմն, ապաշխարելով կ'արժանանայ Աստուծու շնորհքին, եւ դրանով նոյնպէս կ'երեւայ Աստծու բարերարութիւնը:

Այսպէս ուրեմն, թէպէտ մարդս աշխարհարարման կենտրոնն է, բայց վերջին հաշուով ամէնը ստեղծուել է եւ լինում է միայն արարչի բարերարութիւնը, բարութիւնը ցոյց տալու նպատակով, «զի առաւելութիւն բարերարութեան նորա յայտնի լիցի մարդկան», «քանզի բարերար էութիւն է Աստուած, ոչ կամեցաւ զագնուականութիւնն իւր ծածկել» (էջ 39): Դրա համար եւ նա ստեղծել է աշխարհը, եւ ամէն ինչ արարել է իր բարութեամբ. «աննախանձ ետ զկենդանութիւնն, առ ի յայտնելոյ զիւրոյ զբարերարութեանն հանդէս» (էջ 7):

Իսկ մարդուս ի՞նչ օգուտ դրանից, բայց եթէ այն, որ հաւատացող մարդու, հաւատացեալի համար դրանով, այդպիսի արարչութեամբ հէնց սկսւում է մի դառն, եղերական վիճակ, մարդկանց կեանքի ողբերգութիւնն ըստ միջնադարեան կրօնական աշխարհայեացքի: Աստուած ուզում է, որ մարդս բարի անի: Մարդս անձնիշխան է, սատանան նրան չարունակ դէպի չարն է դրդում: Պէտք է յաղթել սատանային: Բայց սատանան ոչ մի բանից չի վախենում. նա միայն Աստուծու անունը լսելուց քաշւում է (էջ 104), եւ միայն պահքով եւ աղօթքով է ելնում. «Այս ազգ ոչ ելանէ՝ եթէ ոչ պահովք եւ աղօթիւք», ասել է Յիսուս (էջ 124): Արդարեւ, կան և հրեշտակները, որոնք արբանեակներ են մարդկանց օգնելու համար, եւ «իւրաքանչիւր մարդոյ հրեշտակ առանձինն պահապան կայցէ»: Բայց այդ էլ մեկնաբանները, — ասում է Եզնիկը, — բացատրում են, թէ հրեշտակ կոչւում են մարդկանց աղօթքները. «որպէս թէ աղօթք նոցա՝ որ հանապազ մատնեն առաջի Աստուծոյ՝ կոչին հրեշտակք» (էջ 76): Հետեւաբար մարդը, սատանային յաղթելու համար, էլ ուրիշ միջոց չունի, բայց եթէ այն, որ

պէտք է չարունակ պահքով եւ աղօթքով պայքարի: Մեղանչած մարդն էլ պիտի նոյն կերպ պայքարի, որպէսզի թողութիւն ստանայ եւ փրկուի, և Աստուծոյ բարութիւնը երեւայ: Պէտք է, ուրեմն, մարմինը ճնշել, ճգնել, կրօնաւոր վանական դառնալ:

Ահա միջնադարեան քրիստոնէական աշխարհայեցութիւնը, որի տեսաբանն է հանդիսանում մեզնում Եզնիկ Կողբացին: Հայաստանում 5-րդ դարում, հարկաւ, դեռ միայն որոշ դասի մարդկանց մէջ կար այդ: Դրա կատարեալ զարգացումը կեանքի մէջ երեւան է գալիս Գրիգոր Նարեկացու ժամանակ եւ արտայայտւում է նրա «Ողբերգութեան մատեանի» մէջ:

16· Խրատք:— Եզնիկի անունով մնում են եւ բաւական թւով «Խրատք», որ տպագրուած են «Եղծ աղանդոց» գրքի վերջում (էջ 209—219): Դրանք ամենամեծ մասով ուղղուած են կրօնաւորներին եւ վանքերի առաջնորդներին: Բովանդակութիւնը կրօնական է, մաքուր կրօնաւորական կեանքի յորդոր, պայքար ընդդէմ մարմնասիրութեան, օրինակ՝ «Կրօնաւոր մարմնասէր՝ խոզի նման է, ի ծովացեալ մեղացն հեղձնու»· կամ հետեւեալը· «Որ սաստ զմարմինն պարարէ՝ ի յաւիտենական հանգիստն ոչ մտանէ»: Քարոզում է կարօտեալներին օգնել, լալ, արտասուել· խօսում է ընդդէմ կեղծ կրօնաւորների· «Զմիս անասնոյ ոչ ուտեն, եւ զեղբայրն անյագաբար ուտեն· գինի ոչ ըմպեն, եւ զհոգին արեամբ չաղախեն· զամուսնացեալսն ատեն, եւ պիղծ խորհրդով հանապազ պոռնկին· զգեստ զյոռին զգենուն, եւ ագահութեամբ այրին· յանպիտեացն արժան է փախչել, եւ ոչ հաղորդութիւն ունել»:

Կան եւ ընդհանուր կենցաղական բովանդակութեամբ բարոյական խրատներ եւս, իսկապէս կարճ ու հակիրճ իմաստալից ասացուածներ, ինչպէս են՝

Որ զարուն ի հանդստեան կայ, ձմեռն ի սովոյ եւ ի սառնամանեաց սատակի:

Մի՛ բարկանար աշակերտի մեղուցելոյ, զի հիւանդ ոչ թէ յիւր կամաց հիւանդանայ:

Աշխատելոցն հրամայեաց զհանգիստն, եւ ոչ որդնապարար մարմնասիրացն:

Նեղեա՛ զմարմինդ զխտութեամբ գրոց վկայութեամբ:

Զփափկութիւն եւ զհանգիստ ատեա:

Այս կեանքս պատերազմ է:

Մի քանի այսպիսի իմաստալից ասացուածներ կան եւ «Եղծի» մէջ, ինչպէս՝ «Եւ պատերազմաց սկիզբն յագահութենէ մարդկան եղեւ, ուստի յափշտակութիւնք սահմանաց են եւ գիւղից եւ օտար քաղաքաց, ընչից եւ ստացուածոց» (էջ 57): Այս իմաստով հազար տարի յետոյ երգում է մեր մի բանաստեղծը:

# ԱՌԱՋԻՆ ՊԱՏՄԱԳԻՐՆԵՐ

## ԿՈՐԻՒՆ ՎԱՐԴԱՊԵՏ

1· Հայ պատմագրութիւնը։— *Հայոց հին գրականութեան կարեւոր ճիւղերից մէկն է պատմագրութիւնը, որ սկսւում է գրականութեան առաջին շրջանում եւ շարունակւում մինչեւ 18-րդ դարի վերջը։Պատմագիրների երկերն իրենց մէջ ունեն շատ պատմական նիւթ եւ թանկագին աղբիւրներ են հայոց, եւ ոչ միայն հայոց, պատմութեան հետազօտութեան համար։ Դրանց ուսումնասիրութիւնը շատ կարեւոր է նաեւ մեր գրականութեան պատմութեան տեսակէտով։ Գրականութեան պատմական պրոցէսը կապուած է պատմութեան հետ, լինի սա քաղաքական թէ եկեղեցական. ուստի առանց պատմութեան պարզաբանման հնարաւոր չէ գրականութեան զարգացման ընթացքը որոշել։ Պատմագիրների ուսումնասիրութիւնը հէնց՝ մասամբ տալիս է մեզ հայոց պատմական կեանքի պատկերը, որքան հարկաւոր է գրականութեան պատմութեան համար։*

*Հայ պատմագրութեան ուսումնասիրութիւնը պահանջւում է նաեւ գրական տեսակէտով. նրա մէջ կան իսկական գրական երկեր, որոնք յօրինուած են գեղեցիկ ձեւով, հարուստ են գեղարուեստական տարրերով, պատկերաւոր արտայայտութիւններով։ Կան այնպիսիները, որոնց մէջ խառն են գրական եւ ոչ-գրական տարրերը, բայց կան ամբողջ հատուածներ, որոնք գրական արժէք ունեն։ Այսպէս են մանաւանդ այն կտորները, որոնք ծագում են կամ ազդուած են ժողովրդական վիպական բանահիւսութիւնից, կամ լի են հեղինակի քնարական զեղումներով, կամ որոնց հեղինակները ձգտում են գեղեցիկ յօրինել, ճարտասանական ձեւերով ու բանաստեղծական պատկերներով։ Եւ վերջապէս՝ պէտք է նկատի ունենալ այն եւս, որ հայ պատմագիրներից շատերը մեծ ազդեցութիւն են ունեցել հայ ժողովրդի կուլտուրայի եւ հէնց հայ գրականութեան հետագայ զարգացման համար. ուստի կարելի չէ վերջինս լաւ ըմբռնել առանց նախկին պատմագիրների ուսումնասիրութեան։*

2· Կենսագրական տեղեկութիւններ Կորիւնի մասին։— *Հայ պատմագրութեան մէջ ժամանակով առաջին տեղը բռնում է Կորիւնի «Վարք Մաշթոցի» աշխատութիւնը, որ է Մեսրոպ Մաշտոցի կենսագրութիւնը*(1)*։ Կորիւնը Մաշտոցի աշակերտն է։ Նա իր ուսուցչի մահից յետոյ մտածում է գրել հայոց գրի ծագման մասին եւ դրա յօրինողի կենսագրութիւնը։ Այդ գործը դեռ չսկսած՝ նա, ինչպէս իր գրքի առաջաբանից իմանում ենք,*

---

(1) Պատմութիւն վարուց եւ մահուան առն երանելւոյ սրբոյն Մաշթոցի վարդապետի մերոյ թարգմանչի, ի Կորիւն վարդապետէ յաշակերտէ նորին.— Կորիւն, Վարք Մաշտոցի, բնագիրը ձեռագրական այլ ընթերցուածներով, թարգմանութեամբ, առաջաբանով եւ ծանօթութիւններով, ի ձեռն պրոֆ. դոկտ. Մանուկ Աբեղեանի, Երեւան, 1941 թ.։

այդ անելու համար հրաման է ստանում Մաշտոցի աշակերտ Յովսէփից, որ կաթողիկոսական տեղապահն էր, այլեւ այդ մասին քաջալերութիւն՝ Մաշտոցի ուրիշ աշակերտներից: Ինչպէս երեւում է, նրանցից շատերը միաժամանակ մտածել են գրով անմահացնել իրենց «վարդապետի», այսինքն ուսուցչի կատարած մեծ գործի պատմութիւնը եւ իրենց ուսուցչին: Եւ Կորիւնը գրում է մի գովարանական կենսագրութիւն, որի մէջ չի մոռանում եւ ուրիշներին, որոնք աշխատել են հայերէն դպրութեան համար: Նրա գրուածքը հայկական տառերով յօրինուած առաջին ինքնուրոյն պատմական երկն է, որ իրաւամբ նուիրուած է հէնց այդ տառերի գիւտին եւ դրանց սկզբնահօրը:

Կորիւնի այդ երկի գրութեան ճիշտ տարեթիւը մեզ յայտնի չէ: Դա յօրինուած է 443—451 թուականների մէջ: Կաթողիկոսական տեղապահ Յովսէփը, որ հրամայել է Կորիւնին գրել Մաշտոցի կենսագրութիւնը, Աւարայրի ճակատամարտից (451 թ.) քիչ յետոյ բռնուել, տարուել է Պարսկաստան եւ այնտեղ նահատակուել, այսինքն քրիստոնէութեան համար ըսպանուել: Դարձեալ՝ եթէ 451 թուականից յետոյ գրուած լինէր, դժուար թէ Կորիւնն այնքան մեծ գովեստներ տար Վասակ Սիւնի իշխանին, որ Վարդանանց պատերազմի ժամանակ անցել էր պարսիկների կողմը: Նա չէր անուանիլ նրան «քաջն Սիւնականն Վասակ. այր խորհրդական եւ հանճարեղ եւ յառաջիմաց, չնորհատուր իմաստութեամբն Աստուծոյ» (Հատ. ԺԴ): Միւս կողմից՝ այդ երկը գրուած է Մաշտոցի մահից ոչ անմիջապէս յետոյ, քանի որ Սահակի համար ասում է. «Ամի ամի զումարելովք ի նոյն ամսեան՝ զնոյն յիշատակն տօնախմբեն» (Հատ. ԻԴ): Մի երեք-չորս տարի պէտք է այդ յիշատակը կատարուած լինէր Սահակի մահից (439 թ.) յետոյ, որպէսզի այդպէս գրել կարելի լինէր, ուրեմն 439+4=443 թ.: Այս՝ նա գրում է, թէ Մաշտոցի մահից երեք տարի յետոյ, ուրեմն 440+3=443 թ., Վահան Ամատունին տաճար է կանգնել տուել Մաշտոցի գերեզմանի վրայ: Հետեւաբար, եթէ Կորիւնն առաջ էլ սկսած լինէր իր աշխատութիւնը, նա այդ վերջացրել է ոչ վաղ քան 443 թուականը:

Այս է Կորիւնի երկի գրութեան ստոյգ ժամանակը: Հարկ է յիշել, որ 19-րդ դարի վերջերից ի վեր եղան բանասէրներ, որոնք մի ընդհանուր մարմաջով բռնուած՝ սկսեցին մեր մատենագիրների ժամանակն իջեցընել դէպի մեզ, յաճախ առանց որեւէ հիմքի, լոկ խօսքով: Այդպիսիների գրչից զերծ չի մնացել եւ Կորիւնի այդ երկը՝ աղճատուած բնագիրը չհասկանալուց:

Կորիւնի մասին մի քանի ուրիշ կենսագրական տեղեկութիւններ էլ ունենք՝ դարձեալ հէնց իր գրքոյկից: Նա, ինչպէս ինքը գրում է առաջաբանի մէջ, բախտ է ունեցել լինելու Մաշտոցի մասնաւոր աշակերտը, իր աշակերտակիցների մէջ եղել է կրտսերագոյնը: Գրքի վերջաբանի մէջ (Հատ. ԻԸ) նա յայտնում է, թէ ինքն ականատես է եղել իր պատմածին, ընթերակայ է եղել Մաշտոցի ու Սահակի գործերին, այլեւ եղել է «ար-

բանեակ», այսինքն փոքրաւոր գործակից: Անուանում է Մաշտոցին իր «հայր», հասկանալի է՝ հոգեւոր հայր: Գրել է ոչ միայն իր իմացածները, այլեւ նշանաւոր դիտակ անձերից քաղելով:

Նա պատմուածքի ընթացքում էլ երկու անգամ յիշում է իրեն: Երբ Հայաստանի զանազան կողմերից Վաղարշապատում հաւաքած աշակերտներն ուսման մէջ կատարեալ են դառնում, այն ժամանակ նրանց խումբ-խումբ ուղարկում են գաւառները սովորեցնելու: Կորիւնն իրեն էլ մէկն է ասում այդ ուղարկուածներից՝ այսպէս գրելով. «Սկսան... գումարել ի կողմանս, ի գաւառս... զհաստուցելոցս ի կատարումն գիտութեան [զզասս], բաւականս եւ առ ի զայլսն զեկուցանելոյ» (Հատ. ԺԲ):

Մի ուրիշ տեղ (Հատ. ԺԹ) նա պատմում է, թէ մի քանի «եղբայրներ» Հայաստանից գնում են Կոստանդնուպոլիս: Նրանցից առաջինն էր Ղեւոնդէս, երկրորդն ինքը Կորիւնը («եւ երկրորդն Կորիւնս»), որոնք մտնենում, յարում են Եզնիկին, իբրեւ բնտանեգոյն սննդակցի, — «մատուցեալ յարէին յԵզնիկն, իբրեւ առ ընտանեգոյն սննդակից»:«Եղբայր» բառից երեւում է, որ Կորիւնը կրօնաւոր է եղել: Նրանք Կոստանդնուպոլսում հոգեւոր պիտոյքի խնդիրը կատարելուց, այսինքն թարգմանութիւններ անելուց յետոյ՝ վերադառնում են՝ հետները բերելով ձեռագրեր, որոնց թւում եւ Եփեսոսի ժողովի կանոնները: Այդ ժողովը տեղի է ունեցել 431 թ.: Ուրեմն Կորիւնն իր ընկերների հետ վերադարձել է ոչ վաղ քան 431 թ.:

Եզնիկը, ինչպէս ինքը Կորիւնը գրում է, Այրարատեան գաւառի Կողբ գիւղից էր, նա յայտնի Եզնիկ Կողբացին է: Որ նա եղել է Կորիւնի «ընտանեգոյն սննդակիցը», պէտք է ընդունել, որ Կորիւնը մանկութեան ժամանակ սնուած, մեծացած է եղել Եզնիկի հետ: Այսպէս եւ Ղազար Փարպեցին իրեն անուանում է Վահան Մամիկոնեանի «սննդակից», որովհետեւ վերջինիս մայրը նրան իր որդու հետ «սնուցել» է, այսինքն մեծացրել, կրթել է: Էլ ուրիշ կենսագրական տեղեկութիւններ չունենք մեր այս հեղինակի մասին (1): Հետագայում նրան միայն գովում են անուանելով՝ «այրն ցանկալի Կորիւն», «այրն հոգեւոր Կորիւն», «երանելի այրն Կորիւն», «երանելին Կորիւն», «սքանչելի այրն Կորիւն» եւ նոյնիսկ «սուրբն Կորիւն»: Այս գովեստները ցոյց են տալիս, որ նա բարի համբաւ է թողել իր մասին:

Կորիւնը իբրեւ «վարդապետ»՝ անշուշտ պարապել է ուսուցչութեամբ ու քարոզչութեամբ, ինչպէս իր ուսուցիչ Մաշտոցը. նա պարապել է նաեւ թարգմանութիւններ անելով: Գուցէ նա գրքեր էլ է գրել, բայց ոչ մի ուրիշ երկ յայտնի չէ նրա անունով, բացի Մաշտոցի «Վարքի եւ մահուան պատմութիւնից»: Ձեռագրերի մէջ կայ հետեւեալը. «Ապաշխարող կարգել եւ արձակել ի մեծի հինգշաբաթին՝ երանելւոյն Կիւրղի Երուսաղեմացւոյ գրեալ... եւ Արձան եւ Կորիւն թարգմանիչք բերին ի Հայս»: Այս երկի թարգ-

---

(1) Կորիւնն իբր եպիսկոպոս է եղել Վրաստանում: Մի կարծիք, որ առաջ է եկել բնագրի աղճատման հետեւանքով եւ գրուածքն իր ամբողջութեամբ լաւ չուսումնասիրելուց: — Տե՛ս վերեւում յիշուած հրատարակութեան էջ 115, ծան. 102:

*մանութիւնը վերագրում են Կորիւնին: Գործածուած բառերի ու դարձուածների վրայ հիմնուելով՝ նրանն են համարում եւ ուրիշ թարգմանութիւններ (1), բայց այդ երկբայելի է, մասամբ եւ բոլորովին մերժելի:*

3. Գրութեան եւ իր ժամանակի պարագաները: — *Այս տիպի որեւէ գրուածք գնահատելիս՝ ամենից առաջ պէտք է նկատի ունենալ հեղինակի ծրագիրը, այսինքն՝ թէ ի՛նչ է ուզեցել գրել, եւ գրելու ժամանակը, դարը: Արդ, Կորիւնը հէնց սկզբից յայտնում է, թէ ինքը մտածել է գրել հայկական «գրի մասին՝ թէ ե՛րբ եւ ո՛ր ժամանակ բաշխուեց եւ ի՛նչպիսի մարդու ձեռով տրուեց այդ աստուածային նոր շնորհքը, այլեւ այդ մարդու լուսաւոր վարդապետութեան (ուսման) եւ հրեշտականման առաքինի կրօնաւորութեան մասին»: Մի անգամ որ այս է եղել նրա ծրագիրը եւ որ նա հայոց պատմութիւն չի գրել, բնական է, որ այժմ մենք նրանից ուրիշ բաներ պահանջել չենք կարող: Նա շատ լաւ գործադրել է այն, ինչ որ ծրագրել է:*

*Ծիծաղելի է, երբ 19րդ դարի վերջում Եւրոպայում նստող մէկը ծաղրում է մեր այս հեղինակին, գրելով, թէ Կորիւնը «առաւել քան զկար իւր կը համարի պատմել զվարս Մաշտոցի եւ կը փութայ խնդրել ի ստորութիւն զաղօթս ուսումնակցացն, որպէս թէ քանի մի էջ բան գրելն առուգիւ մարդկային կարողութենէ վեր ըլլար եւ աստուածեղէն շնորհաց օգնականութեան կարօտ»(2): Հնումն այդպէս մտածում եւ վարւում էին և ուրիշները, ինչպէս, օրինակ, Ղազար Փարպեցին: Դա ժամանակի կրօնական ոգու արտայայտութիւններից մէկն էր: Միւս կողմից՝ դա նաեւ մի համեստութեան խօսք է Մաշտոցի աւագ եւ մեծ դիրք ունեցող աշակերտի, կաթողիկոսական տեղակալ Յովսէփի նկատմամբ: Բայց որ նա իրեն դիմող ընկերների աղօթքն էլ խնդրում է՝ ասելով «զի կամակարագոյնս եւ* ուղղագոյնս *նաւիցեմք զհամատարած ալեօքն վարդապետական ծովուն», դա լոկ մի քաղաքավարական խօսք չէ, կամ լոկ մի արտայայտութիւն այն ժամանակի կրօնական ոգու, ըստ որի ամէն բան կատարւում էր աստուածային շնորհքով: Կայ եւ մի ուրիշ կողմ: Պէտք է իմանալ, որ Կորիւնն իր ընկերների հետ սովորել եւ աշխատել է Կ. Պոլսում այն ժամանակ, երբ յուզւում էին աստուածաբանական մեծ վէճերը եւ տեղի էր ունենում Եփեսոսի ժողովը Նեստորականութեան դէմ: Նա իր ընկերների հետ՝ Հայաստան բերել է այդ եւ Նիկիոյ ժողովների կանոնները. նա ինքը պատմում է, որ Սահակն ու Մաշտոցն էլ մաքառել են Հայաստան թափանցած աղանդների դէմ, ինչպէս բորբորիանոս կոչուած աղանդի, այլեւ Նեստորի ուսուցիչ Թէոդորոս Մոպ-*

---

(1) Տես՝ Նորայր Բիւզանդացի, «Կորիւն վարդապետ եւ նորին թարգմանութիւնք, գիրք Մակաբայեցւոց, Եւթաղ Աղեքսանդրացի, Ագաթանգեղոս եւ Փաւստոս Բիւզանդ», Տփխիս, 1900, էջ 6 եւ հտ.:

Մկրտիչ Աւգերեան, Նոր Բառգիրք Հայկազեան լեզուի, 1836, առաջաբանի մէջ, մատեանների ցուցակում Բուզ[անդ] անուան տակ, որի թարգմանիչն է Կորիւնը: Այլեւ Գարագաշեան, Քննական Հայ. Պատմութիւն, Տփխիս, Գ., 381:

(2) Նորայր Բիւզանդացի, «Կոր. վարդ.», էջ 7:

սուտատացու ուսման դէմ: Այսպիսի դրութեան ժամանակ նա՝ իբրեւ մի բարեպաշտ մարդ՝ աստուածային շնորհքին պիտի դիմէր՝ «վարդապետական ծովի համատարած ալիքների վրայով ուղիղ նաւելու» համար, այսինքն դաւանաբանական սայթաքում չանելու:

Առաջին կարճ ու անհրաժեշտ առաջաբանից յետոյ՝ Մաշտոցի վարքագիրը գրում է մի երկրորդ ձիգ ու երկայն նախաբան էլ (Հատ. Բ)՝ պատասխանելու համար այս հարցին, թէ արդեօք թոյլատրելի՞ է «կատարեալ» մարդկանց վարքը գրել, թէ՝ ոչ, — «Իցէ՞ համարձակութիւն գրով նշանակել զվարս արանց կատարելոց»: Աստուածաշնչից չափազանց շատ ցիտատներ բերելով՝ նա ցոյց է տալիս, որ այդ ոչ միայն թոյլատրելի է, այլեւ հարկաւոր է՝ ուրիշներին իբրեւ օրինակ ծառայելու համար: Եւ վերջը եզրակացնում է, թէ ինքն եւս կարող է համարձակուել գրի առնելու «արդար մարդու», այսինքն Մաշտոցի վարքը: Երկրորդ անգամ մեր այս հեղինակն Աստուածաշնչից շատ ցիտատներ է բերում այն ժամանակ, երբ պատմում է, թէ սկսում են «թարգմանել, գրել եւ ուսուցանել»: Նա իր բերած օրինակներով ցոյց է տալիս, որ մեր երանելի հայրերն այդ անելու համարձակութիւն, թոյլտուութիւն են առել ոչ միայն մարգարէներից, այլեւ նոյնիսկ Յիսուսից (Հատ. ԺԱ): Եւ վերջապէս՝ երրորդ անգամ նա վկայութիւններ է բերում Սուրբ Գրքից, երբ վերջում նորից խօսում է Մաշտոցի կրօնաւորական, միայնակեցական կեանքի եւ քարոզչութեան մասին: Նա այդ անում է իր ուսուցչին մեծացնելու համար եւ ցոյց տալու, որ նա մեծ հետեւող է եղել ոչ միայն առաքեալներին եւ ուրիշներին, այլեւ նոյնիսկ Յիսուսին (Հատ. ԻԲ): Ինչի՞ համար էր այդ ամէնը:

Քննադատել, թէ յիշուած երկրորդ առաջաբանը շատ երկայն է եւ թէ դա իբր աւելորդ է, կամ եղել է «զարմանալի երկիւղածութեամբ», եւ թէ զուր են Աստուածաշնչից բերուած բազմաթիւ ցիտատները, այդ նշանակում է չհասկանալ Կորիւնին եւ նրա ժամանակը: Նա, ինչպէս եւ Մաշտոցի միւս աշակերտները, որոնք մտածում էին իրենց ուսուցչի վարքը գրելու մասին, շատ լաւ գիտէին, որ թոյլատրուած է այդ անել: Նրանք, որ վաղուց թարգմանութիւններով էին զբաղուած, շատ լաւ եւ այն գիտէին, որ թոյլատրուած է Ս. Գիրքը թարգմանել եւ գրել հայերէն: Նրանք ծանօթ էին եւ Մաշտոցի կրօնաւորական կեանքին, գիտէին այն ցիտատները, որ Կորիւնը բերել է: Այդ ամէնը նրանց համար չէր, ոչ էլ մեզ համար է, մեր ժամանակի մարդկանց: Այլ այդ ուղղուած է Մաշտոցի եւ նրա աշակերտների հակառակորդներին:

Մաշտոցն իր ճգնաւորական եւ «առաքելական» մեծ հեղինակութեամբ կարող էր հակառակորդներին զսպել եւ զսպել է. «Իւրով իսկ աւետարանական եւ ողջապատում գնացիւքն՝ առաջի թագաւորաց եւ իշխանաց եւ ամենայն հեթանոսաց եւ անընդդիմակաց ի հակառակորդաց՝ զամենափրկչին Յիսուսի անուն կրեալ յանձին» (Հատ. ԻԱ): Բայց այդ հակառակորդներն արդէն գլուխ էին բարձրացրել եւ նրանց կռիւն ընդդէմ Սահակի եւ Մաշտոցի ջանքերով առաջ եկած նոր սերնդի՝ շատ զգալի էր եղել 440ական թը-

ւականներին, — եւ այդպէս նոյնիսկ մինչեւ 5րդ դարի վերջերում:

Այս տեսակէտով մօտենալով խնդրին՝ Կորիւնի երկրորդ առաջաբանը եւ նրա մէջբերած բազմաթիւ ցիտատներ մեզ համար էլ կարեւորութիւն են ստանում այն ժամանակի ոգին ու դրութիւնը պատկերացնելու համար: Ժամանակն էր այդ պահանջել: Այդ բոլորովին նոր գործը, Մաշտոցի կենսագրութիւնը, ըստ ինքնեան էլ կարող էր բամբասանքի դուռ բանալ ոչ միայն հակառակորդների, այլեւ ընդհանրապէս ոգէտների համար, քանի որ ամէն նորութիւն անընդունելի է անհասկացողների համար, ո՞ւր մնաց Մաշտոցի կենսագրութիւնը հայերի մէջ 440ական թուականներին: Այդ ժամանակներում չկար այլեւս Հայոց թագաւորութիւնը: Պարսկական իշխանութեան հովանաւորութեամբ չափազանց զօրացած էր ասորի հոգեւորականութեան ազդեցութիւնը Հայաստանում: 430–ական թուականներին աթոռից զրկուած էր Սահակ կաթողիկոսը եւ նոյնիսկ ասորի կաթողիկոսներ էին իշխում: Սահակի ու Մաշտոցի եւ նրանց աշակերտների թարգմանչական գործունէութիւնն ուղղուած էր հէնց այդ ասորական ազդեցութեան, ասորերէն լեզուի դէմ: Այս պարագաներում հասկանալի է, թէ ինչո՛ւ Կորիւնն այնքան երկայն եւ Ս. Գրքից ցիտատներով լի առաջաբան է գրում՝ ցոյց տալու համար, որ թոյլատրելի է գրել Մաշտոցի վարքը, եւ կամ աւելի ուշադրութիւն է դարձնում Մաշտոցի միայնակեցութեանն եւ առաքելական գործունէութեանը, որ ճանաչուած էր նաեւ ասորոց եպիսկոպոսներից, ինչպէս նաեւ բիզանդացոց կողմից, որ եւ ուրանալ չէին կարող հակառակորդները: Այսպէս ուրեմն, որ նա Մաշտոցին իբրեւ կրօնաւորի բարձրացնում է, այդ միայն իրականութիւնից եւ աշակերտական ակնածութիւնից չի բխում: Նա դրանով ջանացել է լռեցնել հակառակորդներին:

Այս վերջիններին չզայրացնելու համար՝ նա չի շօշափում ժամանակի քաղաքական, եկեղեցական գործերը. նա մի խօսք անգամ չի ասում այն մասին, որ Հայոց եկեղեցում լեզուն եղել է ասորերէն, եւ դպրոցներում սովորում էին ասորերէն, եւ որ շնորհիւ Սահակի ու Մաշտոցի՝ այդ ասորերէնին փոխարինում է հայերէնը: Առհասարակ զգուշութեամբ «ասորի» անունն էլ նա չի գործածում, բացի երկու դէպքից: Մէկն այն է, թէ ասորի Դանիէլ եպիսկոպոսի մօտ գտնուել են հայերէն լեզուի համար ալփաբետներ, — կարծես Հայաստանի ասորի հոգեւորականներին ցոյց տալու համար, թէ Մաշտոցից առաջ մի ասորի եպիսկոպոս է մտածել հայերէն դպրութեան մասին: Միւս դէպքն էլ այն է, թէ Եդեսիայի եւ Ամիդի ասորի եպիսկոպոսները մեծ պատուով ընդունում են Մաշտոցին ու նրա մարդկանց եւ հոգում նրանց համար, եւ թէ՝ նրանք ուրախանում են հայերէն նշանագրերի եւ դպրութեան համար: Այս էլ կարծես ասելու համար, որ եթէ ասորոց հռչակաւոր եպիսկոպոսները, Ռաբուլասն եւ Ակակիոսը, այդ վերաբերմունքն են ցոյց տուել հայ դպրութեան նկատմամբ, Հայաստանի ասորի հոգեւորականներն էլ պիտի նոյնպէս վարուեն: Եւ վերջապէս, ժամանակի պարագաներով է բացատրւում եւ այն, թէ ինչո՛ւ Կորիւնը՝ 440–ական թուականներին, ուրեմն Աստուածաշնչի հայերէն թարգմանութիւնից տա-

*նուազն երեսունհինգ տարի յետոյ, այդ գրքից բերած ցիտատներով ապացուցում է, որ Մաշտոցն ու Սահակն իրաւունք են ունեցել Ս. Գիրքը թարգմանելու եւ թէ նրանք այդ արել են՝ «հայեցեալ ի տեառնաբարբառ հրամանացն բարձրութիւն», — աչքի առաջ ունենալով Տիրոջ (Աստուծու) տուած բարձր հրամանները: — Կորիւնն ստիպուած է եղել այդ անելու:*

*Թէ այս տեսակէտը ճիշտ է, այդ երեւում է նոյնիսկ Կորիւնի հետեւեալ խօսքերից, որոնց վրայ ուշադրութիւն չեն դարձրել: Նա իր գրքի վերջաբանի մէջ (Հատ. ԻԸ) յայտնում է, թէ Մաշտոցի կենսագրութիւնը համառօտ է գրել. «զյաճախագոյնն թողեալ՝ ... զհամառօտս կարգեցաք», — շատը թողնելով՝ այս համառօտը գրեցինք: Եւ իսկոյն նա իր վարմունքը պատճառաբանում է այսպէս. «Քանզի չէաք իսկ հանդուրժօղք՝ զամենայն արարեալսն կատակաւ նշանակել զիւրաքանչիւրոյ (Սուտ Կորիւն՝ «քանզի եւ ոչ իսկ հանդուրժէաք բաւել կարել զամենայն արարեալս սորցն գրով նշանակել զիւրաքանչիւրսն»), այլ ի դիւրագոյնս եւ ի հեշտագոյնս — յառաքելական անդր զանձինս պատսպարեցաք»: Ի՞նչ է ասում Կորիւնն այս խօսքով: — «Հանդուրժել» բառը նշանակում է «դիմանալ»: Բերենք երկու օրինակ դրա համար: Ղազար Փարպեցին պատմում է, թէ Սիւնիքի հզօր իշխան Վասակը թշնամանալով իր փեսայ Վարազվաղանի հետ՝ ուզում էր նրան սպանել: Այդ իմանում է Վարազվաղանը, — «եւ դի ոչ կարէր հանդուրժել սաստիկ բռնութեան աներոյն... փախուցեալ յերկիրն Պարսից», — եւ որովհետեւ չէր կարող դիմանալ իր աների սաստիկ բռնութեանը՝ ուստի փախաւ Պարսից երկիրը: Բերենք մի ուրիշ բոլորովին համապատասխան կազմութեամբ օրինակ: Մովսէս Խորենացին (Բ. 35) պատմում է, թէ Արդար Թագաւորի կին Հեղինէն, որ քրիստոնեայ էր, «ոչ հանդուրժեաց բնակել ի մէջ կռապաշտիցն. այլ չոգաւ յԵրուսաղէմ», — չդիմացաւ կռապաշտների մէջ բնակուելուն, [ուստի նրանց մէջ չբնակուեց], այլ գնաց Երուսաղէմ: Այսպէս եւ Կորիւնը վերեւում բերուած խօսքի մէջ ասում է. «Որովհետեւ իսկապէս չէինք դիմանալ նրանց իւրաքանչիւրի բոլոր արածները գրելուն, [ուստի գրեցինք ոչ բոլորը], այլ ապաւինեցինք այս աւելի հեշտ ու դիւրինին — առաքելականին» [բառացի թարգմանութեամբ՝ «մեզ պատըսպարեցինք = պատսպարուեցինք այս աւելի հեշտ ու դիւրինով — առաքելականով»]: Հիմա հարց: Ինչո՞ւ Հեղինէն չդիմացաւ կռապաշտների մէջ բնակուելուն: — Անշուշտ նրա համար, որ նրանց մէջ բնակուելը որեւէ նեղութիւն էր պատճառում նրան: Այսպէս եւ երբ Կորիւնն ասում է, թէ «չէինք դիմանալ նրանց [Սահակի եւ Մաշտոցի] բոլոր արածները գրելուն», անշուշտ նրա համար, որ այդ բոլորը գրելը նրան որեւէ նեղութիւն կը պատճառէր: Կը նշանակի՝ Կորիւնն զգուշացել է, չասենք թէ վախեցել է, Սահակի ու Մաշտոցի բոլոր արածները գրելու: Եւ ոչ միայն այդ: Նա պաշտպանուելու համար դիմել է «առաքելականին», այսինքն Մաշտոցի «առաքելական» գործունէութեանը, քրիստոնէութիւն քարոզելուն: Այդ շատ պարզ երեւում է նաեւ նրա գործածած «պատսպարուել» բառից, որ նշանակում է՝* ապաւինել, ապաստանել, պաշտպանուել *մի բանից մի բանով: Կորիւնը,*

ուրեմն, պատսպարուել է իր բերած բազմաթիւ ցիտատների ետեւում:

Մի անգամ որ նա թողնում է շատ բան, ինչպէս ինքն ասում է, սրբերի «բազմախուռն արդասիքները» — վաստակները, բնականաբար նպատակ է դնում իր գրած «կարեւորագոյն հանգամանքները» («զկարեւորագոյնս պատմելոյ զհանգամանս») մանրամասն, «մանրակրկիտ» պատմել:

4. Արժէքը: — Կորիւնն, անշուշտ, պատրաստուած չի եղել պատմութիւն կամ կենսագրութիւն գրելու: Նրա ուսումը լոկ կրօնական է եղել: Մի մարդ, որ պարապել է զանազան կրօնական գրքերի թարգմանութեամբ, ունի լաւ ծանօթութիւն Ս. Գրքի, որից դէնը չի անցնում իր հայեացքով, բայց չնայելով դրան, չնայելով նրա լռումներին՝ կարելի չէ ասել, թէ նրա այդ փոքր գրքոյկը, ինչպէս գրում են, «իբրեւ պատմական գրուածք չունի մեծ արժէք»: Ընդհակառակն, դա հայ պատմական կեանքի նոր դարաշրջանի սկզբնաւորութեանը ծանօթանալու նկատմամբ՝ ունեցել է եւ ունի շատ մեծ կարեւորութիւն: Դա հայոց գրականութեան սկզբնաւորութեան միակ ժամանակակից եւ վաւերական յիշատակարանն է: Բաւական է միայն ասել, որ եթէ չլինէր այդ գրքոյկը, մենք չափազանց քիչ բան, այն էլ կասկածելի, կ՚իմանայինք այնպիսի նշանաւոր եղելութեան մասին, ինչպիսին է հայ գրի ու գրականութեան սկզբնաւորութիւնը, որ մենք արդէն տեսել ենք ըստ Կորիւնի: Հետագայ գրողներն այդ մասին Կորիւնից են օգտւում:

Նա բաւարար չափով տեղեկութիւններ է տալիս իր առաջադրած խնդրի վերաբերմամբ եւ սովորաբար շատ որոշ կերպով: Նրա գրածով մենք պատկերացնում ենք մի խելօք կերպով ծրագրուած ու կատարուած գործունէութիւն, իսկ գլխաւոր գործիչը, Մաշտոցը, հանդէս է գալիս իբրեւ **անսպառ եռանդի տէր**, շնորհալի եւ ազդեցիկ տղամարդ, որ մտածում եւ հոգում է ամբողջ հայութեան, այլեւ հարեւան ժողովուրդների համար, որ շարունակ շրջում է եւ իր տեսչական այցելութիւններով հաստատուն հիմքերի վրայ դնում իր սկսած գործը:

Անշուշտ, ոչ **միայն Կորիւնը**, այլեւ ամէն մի հին հեղինակ չի կարող բաւարարել հետագայի հարցասէր մարդկանց պահանջներին, որոնք յաճախ ծագել են կա՛մ Կորիւնի գրածը չհասկանալուց, կա՛մ որեւէ ուրիշ թիւրիմացութիւններից: Այսպէս են հետեւեալները. Մաշտոցը քանի՞ նշանագիր է յօրինել, երեսունվե՞ց, թէ՞ տասնուչորս, թէ՞ եօթն: Արդեօք հայերը քրիստոնէութիւնից առաջ չե՞ն ունեցել գրի գործածութիւն: Արդեօք «Դանիէլեան ալփաբետը» չի՞ եղել «հայոց հին այբուբենը», որ «մոռացուել էր՝ տեղի տալով այլոց դրութեանց, այսինքն այլոց գրերին, եւ ապա կրկին յայտնուել»: Ի՞նչ են եղել «Դանիէլեան նշանագրերը, եւ Մաշտոցն ինչո՞վ է լրացրել դրանք»: — Կարծես Կորիւնը պարտաւոր էր գուշակել, թէ դարեր յետոյ ինչե՞ր կը հարցնեն, եւ դրանց պատասխանը պիտի տար առաջուց:

Կորիւնն առանձին ուշադրութիւն է դարձրել նաեւ ժամանակագրութեանը. նա յիշել է ուրիշ աղբիւրներից ստուգուող ճիշտ թուականներ, հարկաւ, թագաւորների տարիներով, քանի որ այն ժամանակ չկար թուականութեան կիրառութիւն: Նրա յիշած, երբեմն երկրորդ եւ երրորդ անգամ

մի ուրիշ ձեռով կրկնած թուականները վերաբերում են Հայերէն Նշանագրերին, Մաշտոցի կրօնաւորութեանը եւ Սահակի ու Մաշտոցի մահուանը: Այստեղ էլ, ուրեմն, նա հետեւում է իր առաջադրած ծրագրին: Լաւ կը լինէր, որ նա յայտնած լինէր Մաշտոցի գործունէութեան մի քանի ուրիշ թուականներ եւս, եթէ միայն գիտէր: Նրա յիշած թուականներից մի երկուսը, ցաւօք, աղճատուած են: Պէտք է ասել, որ Նրա աշխատութիւնն ընդհանրապէս, մանաւանդ վերջին մասում, շատ աղաւաղուած է արտագրողների ձեռով: Դրան յաճախ ուշադրութիւն չեն դարձրել այդ գրքոյկից օգտուողները:

Վերջիններիս համար մի դժուարութեան հանգամանք էլ եղել է նաեւ Կորիւնի գրութեան ոճը, որ միակերպ չէ. մերթ կարճ ու հակիրճ է, մերթ երկարաբան ու խրթին: Նա յօրինում է շատ ճոռոմ պատկերաւորութեամբ, աւելորդ զարդերով ու պաճուճանքներով խճողած, ինչպէս ինքն ասում է, «ծաղկեցրած»: Նրա գրածը յաճախ մութն է նաեւ անկանոն լեզուի կամ բարդ պարբերոյթների պատճառով: Երբեմն պակասում են անհրաժեշտ բառեր, կամ շատ կան ամբողջ նախադասութիւնների փոխարինող իւրայատուկ նորահնար բարդ բառեր, այլեւ բառերի կիրառութիւն ոչ մեզ ծանօթ սովորական նշանակութեամբ: Դրան աւելացրէք եւ բնագրի մասամբ աղճատուած լինելը, եւ պարզ կը լինի, թէ ինչո՛ւ այդ փոքրիկ գիրքը շատերի համար դժուար հասկանալի է եղել:

Հեշտ մատչելի չի եղել այդ գրուածքը նաեւ միջին դարերում. ուստի առաջ է եկել մի նոր խմբագրութիւն, Կորիւնի գրքից քաղուածօրէն կազմուած, հետը միացրած նաեւ Մովսէս Խորենացու «Հայոց Պատմութիւնից» տեղեկութիւններ, նոյնիսկ փոխանակ Կորիւնի հաղորդումներին: Դա յայտնի է Սուտ Կորիւն անունով: Դրա վերնագիրն է՝ «Ի յիշատակի պատմութեան Վարուց երանելոյ սուրբ վարդապետին Մեսրոպայ, զոր ասացեալ է Նորին աշակերտի Կորեան». գտնուել է «ի ստուար եւ հնագիր (ԺԲ. դարու) ճառընտրի»: Շատ պարզ է, որ այդ խմբագրութիւնը եղել է՝ Մաշտոցի տօնի օրը եկեղեցիներում կարդալու համար:

## ԱԳԱԹԱՆԳԵՂՈՍ

1. Բովանդակութիւնը: — Առաջին երկն է սա, որ կրում է «Պատմութիւն Հայոց» վերնագիրը (1): Կարճառօտ բովանդակութիւնը հետեւեալն է: Սասանեան Արտաշրի ձեռով իշխանութիւնից զրկւում եւ սպանւում է պարթեւական տոհմի Արտաւան թագաւորը Պարսկաստանում: Հայոց թագաւորը, Արշակունի Խոսրովը, տասը տարի պատերազմում է Արտաշրի դէմ. սա

---

(1) Ագաթանգեղայ Պատմութիւն Հայոց, աշխատութեամբ Գ. Տէր-Մկրտչեան եւ Ստ. Կանայեանց, Տփղիս 1909. հրատարակուած է բազմաթիւ ձեռագիրների բաղդատութեամբ: էջ ԿԴ, Մատենագրութիւն, տպագրութիւններ, թարգմանութիւններ եւ ուսումնասիրութիւններ: «Պատմագիրք Հայոց» հրատարակութիւն:

*պարթեւ Անակի ձեռով դաւաճանութեամբ սպանել է տալիս Խոսրովին: Կոտորում են Անակի սերունդը. ազատւում է միայն մի երեխայ, Գրիգորը, որին փախցնում են Կեսարիա: Նա այնտեղ մեծանում է իբրեւ քրիստոնեայ: Արտաշիրը տիրում է Հայաստանին. կոտորել է տալիս Խոսրովի սերունդը: Սրա որդիներից ազատւում է միայն մանկիկ Տրդատը, որին փախցնում են Հռոմայեցոց կողմը: Տրդատն այնտեղ մեծանալով՝ դառնում է մի ուժեղ այր, մեծ քաջագործութիւններ է անում եւ վերջը հռոմայեցիների օգնութեամբ գալիս պատերազմում է պարսիկների դէմ եւ տիրում իր հայրենիքին: Այդ ժամանակ Գրիգորը գալիս, ծառայութեան է մտնում Տրդատի մօտ. սա իմանալով, որ նա քրիստոնեայ է՝ ստիպում է նրան թողնել քրիստոնէութիւնը. յետոյ նրան չարչարել եւ Արտաշատի Խոր Վիրապն է ձգել տալիս: Ապա պատմւում է Հռիփսիմեան կոյսերի նահատակութիւնը, Տրդատի խելագարուելը եւ Գրիգորին Խոր Վիրապից հանելը, որպէսզի Տրդատին բժշկի: Երկրորդ մասի վերնագիրն է՝ «Վարդապետութիւն սրբոյն Գրիգորի». սա ընդարձակ քարոզ է: Երրորդ մասն է՝ «Դարձ փրկութեան աշխարհիս Հայաստան»: Այստեղ պատմւում է Գրիգորի տեսիլը, ապա կոյսերի համար վկայարաններ շինելը, Գրիգորի ձեռնադրուելը Կեսարիայում, հայերի քրիստոնէութեան դարձը, մեհեանների կործանումը եւ այլն: Գրիգորի եւ Տրդատի մահուան մասին յիշատակութիւն չկայ:*

2. Հեղինակն ու գրութեան ժամանակը: — *Թէ ո՛վ է եղել այս մեծ երկի հեղինակը, այդ չի պարզուած: Պատմութիւնն ունի մի ընդարձակ «Յառաջաբան Ագաթանգեղայ պատմութեան», մթին, աւելորդաբան կրկնութիւններով ու ճոռոմ լեզուով յօրինուած: Դրա մէջ խօսւում է նաեւ հեղինակի մասին. «Հրաման հասեալ առ իս ումն Ագաթանգեղոս, որ ի քաղաքէ ի մեծն Հռովմայ, եւ վարժեալ հայրենի արուեստիւ, Հռոմայերէն եւ Յունարէն ուսեալ դպրութիւն, եւ ոչ կարի ինչ անտեղեակ լեալ ձեռնարկութեան նշանագրաց. եւ ի վերայ այսոցիկ հասեալ ի դուռն Արշակունեաց, յամբս քաջի եւ առաքինւոյն, ուժեղ եւ պատերազմողն Տրդատայ, որ քան զամենայն նախնիսն քաջ եղեալ... հրամայեաց մեզ վիպասանել... Արդ՝ հասեալ առ իս հրաման ի մեծ արքայէն Տրդատայ՝ կարգել ինձ ի ձեռնարկութենէ նշանագիր ժամանակագրացն՝ պատմել նախ զհայրենեացն գործս քաջութեան քաջին Խոսրովու... եւ կամ վասն հօրամոյն քաջութեանն Տրդատայ»: Վերջաբանի մէջ եւս կարդում ենք. «Իսկ մեք որպէս ընկալաք ըզ հրամանս քոյոյ թագաւորութեանդ, քա՛ջդ արանց Տրդատ, գրել զայս ամենայն՝ որպէս օրէն է ժամանակագիր մատենից՝ ըստ այնմ ձեւոյ դրոշմեցաք, ըստ օրինակի յունական ճարտարութեանն արկեալ ի շար զամենայն»: Ապա հեղինակն Առաջաբանի մէջ յայտնում է, թէ ինքն «ականատես» է եղել իր պատմածներին:*

*Այս հատուածներից իմացւում է, որ հեղինակը կոչւում է Ագաթանգեղոս. նա եղել է Հռոմ քաղաքից, վարժուած հռոմայերէն եւ յունարէն դպրութեան, եղել է Հայաստանի Արշակունի Տրդատ թագաւորի պալատում եւ այս թագաւորի հրամանով գրել է նրա հայր Խոսրովի եւ իրեն՝ Տրդատի*

պատմութիւնը: Ըստ այսմ, ուրեմն, դա պէտք է լինէր ժամանակակցի եւ եղելութիւններին մօտիկ ծանօթ հեղինակի գործ: Եւ այդպէս էլ ընդունել էին այդ Պատմութիւնը 5-րդ դարից ի վեր: Մովսէս Խորենացին (Բ. 67) անուանում է նրան «աջող քարտուղարն Տրդատայ Ագաթանգեղոս», Ղազար Փարպեցին՝ «այրն երանելի Ագաթանգեղոս», «երանելին Ագաթանգեղոս», «Զայս ամենայն... յիրում անսխալ կարգադրութեան պատմեաց մեզ երանելի այրն Աստուծոյ սուրբն Ագաթանգեղոս»:

Պատմութեան մէջ հեղինակը յիշում է, թէ Ս. Գրիգորը չարչարանքի ժամանակ, երբ գլխիվայր կախուած էր, մի շատ երկար աղօթք է անում: Ապա՝ ասում է, թէ այդ «գրեցին առենակալ դպիրքն նշանագրացն ...եւ մատուցին զայն առաջի թագաւորին» (Հատ. 99, էջ 60): Նոյնպէս եւ Հռիփսիմէ կոյսի աղօթքի մասին պատմելիս՝ ասում է՝ «կալեցան անդ նշանագիրք, որ գրեցին զամենայն բանս, եւ ընթերցան առաջի թագաւորին» (Հատ. 176, էջ 97): Ըստ այսմ, ուրեմն, այդ Պատմութեան մէջ գրուած երկար աղօթքներն անգամ պէտք է համարուեն պաշտօնական աղբիւրներից հանուած, եւ ոչ մի կասկած չպիտի լինէր այդ գրուածքի ստուգապատում լինելու մասին:

Սակայն բանասէր քննադատները 19-րդ դարից ի վեր այլեւս հաւաստի չեն ընդունում այդ գրքի առաջաբանի մէջ յայտնածն Ագաթանգեղոս հեղինակի մասին: Գրուածքը ոչ թէ 4-րդ դարու եւ ժամանակակցի գործ է, այլ 5-րդ դարի: Այդ երեւում է հէնց գրքի բովանդակութիւնից: Տրդատի մասին պատմուած են այնպիսի ժողովրդական առասպելներ, ինչպէս, օրինակ՝ նրա խոզ դառնալը, որ չէր կարող մէջ բերել Տրդատի հրամանով գրողը: Ս. Գրիգորի «Տեսիլի» մէջ աղօտ ակնարկւում են 5-րդ դարի կրօնական հալածանքներն ու հաւատուրացութիւնները, որ չէին կարող լինել 4-րդ դարի գրուածքի մէջ: Այս եւ մի քանի ուրիշ հիմունքներից եզրակացնում են, որ այդ պատմութեան հեղինակը 5-րդ դարի գրող է:

Ագաթանգեղոսի մէջ կան բազմաթիւ բառացի հատուածներ Կորիւնի «Վարք Մաշտոցի» գրքից: Դրանից որոշ բանասէրներ հետեւցրել են, թէ Կորիւն եւ Ագաթանգեղոս միեւնոյն անձնաւորութիւնն են» (1): Կան բանասէրներ էլ, որոնք Ագաթանգեղոսի Պատմութիւնը համարել են թարգմանութիւն յունարէնից եւ թարգմանիչը՝ Կորիւնին (2): Այս տեսակէտներն այլեւս ընդունելի չեն: Մի ժամանակ կարծում էին, թէ Կորիւնն է Ագաթանգեղոսի գրքից օգտուել, բայց այժմ հաւաստի է, որ օգտուողը Կորիւնը չէ, այլ Ագաթանգեղոսի խմբագրողը: Կորիւնի գրուածքի մէջ այդպիսի հատուածներն իրենց բնական տեղումն են, իմաստային կապակցութեամբ, իսկական պատմութեանը յարմար, մինչդեռ Ագաթանգեղոսի մէջ դրանք դըր-

(1) Նորայր Բիւզանդացի, Կորիւն վարդապետ եւ նորին թարգմանութիւնք, Տփղիս 1900, էջ Ե եւ հտն.: Այստեղ յիշուած են՝ Միքայէլ Չամչեան, Պատմութիւն Հայոց, 17, 84. Ա. էջ 10. Յովս. Գաթրճեան, Տիեզերական Պատմութիւն, 1849. Ա. էջ 94:

(2) Անդ, էջ 17:

ուած են յաճախ անյարմար տեղերում եւ ընդհանրապէս անկապ են յաջորդ ու նախորդ մասերի նկատմամբ եւ հակասող ուրիշ տեղ ասածներին: Բացի այդ՝ Կորիւնի եւ Ագաթանգեղոսի գրութեան ոճերը հիմնովին տարբեր են: Եթէ կան էլ սակաւաթիւ նոյն բառերի կիրառութիւն, կամ երկու–երեք նոյն բառերի կապակցութիւններ, դրանք մեծ մասամբ ընդհանուր տեղիներ են, առաւելապէս կրօնական լեզուի մէջ, կամ թէ բանաքաղը Կորիւնից առած հատուածների հետ՝ սակաւաթիւ այդպիսի բառերից եւ արտայայտութեան ձեւերից էլ օգտուել է Ագաթանգեղոսի մէջ:

Հեղինակի մասին մի ուրիշ տեսակէտ էլ է մէջ բերուած (1): Հաւանօրէն 7–րդ դարում Եզնիկ անունով մի քահանայի թարգմանած՝ հայ կաթողիկոսների եւ թագաւորների ցուցակի մէջ ասուած է. «կարգք գործոցն Գրիգորի նորոգեալ արամբ միով երանելեաւ Տարաւնացւոյ, որում անուն Մասրովպ ճանաչէր»: Ակադ. Ն. Մառը «կարգք գործոց» հասկանալով իբրեւ «գործերի պատմութիւն», յայտնում է, թէ 5–րդ դարից առաջ եղել է Ս. Գրիգորի մասին աւանդութիւն եւ թէ «հայկական աւանդութեամբ Մեսրոպին է վերագրւում յունական միխիտներ Ս. Գրիգորի մասին եղած լեգենդայի մշակումը («Նորոգումը»): «Այսպիսով... Ս. Գրիգոր Լուսաւորչի գործերի առաջին ընդարձակ խմբագրութիւնը պատկանում է, ակնյայտ է, հելլենասէր մատենագիրներին, յատկապէս, ըստ աւանդութեան, Մեսրոպի եւ նրա աշխատակիցների շրջանին Սահակի գլխաւորութեամբ»:— Վերեւում բերուած ցիտատի «կարգք գործոց» բառերը, սակայն, կարող են վերաբերել ոչ թէ Գրիգորի գործերի «լեգենդային», «լեգենդար պատմութեանը», այլ աւելի շուտ նրա կատարած գործերին, քրիստոնէական քարոզչութեանը, որ իսկապէս «նորոգել է» Մաշտոցը: Բայց որ 5–րդ դարու ամբողջ եկեղեցական–գրական շարժումը մեծ մասամբ յունասէրների գործունէութեան արդիւնք էր եւ որ Մաշտոցն ու Սահակն իրենց աշակերտներով յունասէրների պարագլուխներն էին, այդ յայտնի է: Պարզ է եւ այն, որ «Ագաթանգեղայ Պատմութիւնը» յունասէրների գործն է, Մաշտոցի կամ Սահակի աշակերտներից մէկի, թերեւս հէնց Մաշտոցի եւ աւելի եւս Սահակի կարգադրութեամբ առաջ եկած:

3. Ագաթանգեղոսի աղբիւրները: — Այժմ արդէն բաւական պարզուած են մեր այս պատմական երկի աղբիւրները: Ինչքան էլ Առաջաբանի մէջ այնպէս է ձեւացրած, թէ Ագաթանգեղոսը սկզբնական հեղինակն է, բայց եւ այնպէս այնտեղ կայ հետեւեալը. «Ընթերցեալ զԹորգոմայ ազգիս, զՀայաստան աշխարհիս զաստուածապարգեւ աւետեացն աւետարանին քարոզելոյ բանին կենաց, թէ ո՛րպէս, կամ զի՛արդ ընկալան, եւ ո՛րպիսի արամբ, կամ ո՛ ոք ուստեք»... (Հատ. 15, էջ 12 եւ հտ.): Կը նշանակի՝ եղել է մի գրուածք Հայաստանում Աւետարանը քարոզելու մասին, որ եւ ծառայել է իբրեւ աղբիւր անյայտ հեղինակի համար: Անմիջապէս բերուած է այդ

(1) Ն. Մառ, «Մկրտութիւն Հայոց, Վրաց, Ափխազաց եւ Ալանաց Ս. Գրիգորի ըստ արաբական վերսիայի» (ռուսերէն), Ս. Պետերբուրգ, 1905, էջ 174–182:

դրուածքի բովանդակութիւնը, որից երեւում է, որ դրա մէջ պատմուած է եղել Աւետարանը քարոզողի մասին, թէ նա ո՛վ եւ ո՛րտեղից է, նրա վարքը, քարոզչութիւնը, Քրիստոսի խոստովանող կամ վկայ լինելը, նրա աղօթքներով բժշկութիւնը, մեհեանների կործանումը, եկեղեցիներ շինելը եւ քրիստոնէութեան դարձը: Դա արդէն Ս. Գրիգորի վարքն է: Որոշ թուով ձեռագիրների մէջ Պատմութեան սկզբում վերնագիրն այսպէս է. «Ագաթանգեղայ Պատմութիւն, վարք եւ պատմութիւն սրբոյն Գրիգորի» (էջ 15): Ղազար Փարպեցին էլ ասում է, թէ Ագաթանգեղոսի Պատմութիւնը նահատակ Գրիգորիսի անունով «զգիրսն անուանեալ կոչեն Գրիգորիսի»: Դա եղել է Ս. Գրիգորի մի վարք, հաւանօրէն 4-րդ դարու մի գործ, մի համառօտ պատմութիւն Ս. Գրիգորի, պատմական արժէք ունեցող մի երկ, որից օգտուել է հեղինակն իր գործը խմբագրելիս:

Այդ գիրքը կոչուել է «Ագաթանգեղայ Պատմութիւն»: Յունարէն «ագաթանգեղոս» բառը (կազմուած է՝ αγαθος եւ αγγελος բառերից) իբրեւ համանիշ նոյն լեզուի «եւանգելոս» բառի (կազմուած է՝ ευ եւ αγγελος բառերից) նշանակում է՝ լաւ, ուրախ լուր տուող, ուրախ լուր բերող (αγαθος, ευ = լաւ. αγγελος = լրաբեր, լրատու), հայերէն՝ աւետող, աւետաբեր, աւետարանիչ, աւետիք տուող (1): Հետեւաբար «Ագաթանգեղայ Պատմութիւն» նշանակում է՝ աւետաբերի, աւետարանչի, աւետարան քարոզողի Պատմութիւն: Արդ՝ այդ «ագաթանգեղոսը» — աւետարանիչը, «աւետեացն աւետարանին» քարոզիչը եղել է Ս. Գրիգորը, ուրեմն «Ագաթանգեղայ Պատմութիւնն» է Ս. Գրիգորի պատմութիւնը: «Ագաթանգեղոս» (= աւետարանիչ) եղել է մի ժամանակ Ս. Գրիգորի մականունը, որ եւ յետոյ փոխանակուել է «Լուսաւորիչ» բառով: Ինչպէս հիմա ասենք «Լուսաւորչի պատմութիւն», կը հասկանանք «Ս. Գրիգորի պատմութիւն», նոյնպէս երբեմն հասկացել են «Ագաթանգեղայ պատմութիւնը»: Բայց «ագաթանգեղոս» բառը սխալ հասկանալով, կամ դիտմամբ, առնուած է իբրեւ յատուկ անուն (Ագաթանգեղոս յատուկ անուն կա՛յ էլ), եւ դարձրած է Տրդատի քարտուղար, գրքի հեղինակը, որպէսզի այդ գրքի բովանդակութեան արժէքը բարձրացուի(2): Եւ այս կատարուած է հէնց 5-րդ դարում, քանի որ Մ. Խորենացին եւ Ղ. Փարպեցին «Ագաթանգեղոս» իբրեւ յատուկ անուն գիտեն: Թէ սկզբնապէս այդպէս չի հասկացուել, այդ երեւում է գրքի կըր-

(1) Griechisch-deutsches Schul - Wörterbuch von G. E. Benseler, Leipzig, 1886, «ευαγγελος» բառը բացատրուած է՝ Gutes verkündend, frohe Kunde bringend = ուրախ լուր բերող, աւետող, գրաբար նաեւ՝ աւետարանող, աւետարանիչ:

(2) Բ. Սարգիսեան, Ագաթանգեղոս եւ իւր բազմադարեան գաղտնիքը, Վենետիկ, 1890, էջ 1 եւ հտն.: Այստեղ «Ագաթանգեղոս» բառը բացատրուած է ոչ թէ իբրեւ աւետող, աւետարանիչ. «Ոչ թէ բարի աւետաբեր, այլ բարի աւետիս կամ աւետիք», իսկ «Ագաթանգեղայ պատմութիւնը» ոչ թէ իբրեւ աւետաբերի, աւետարանչի, այսինքն Ս. Գրիգորի պատմութիւն, այլ «Պատմութիւն բարի աւետեաց. կամ լաւ եւս՝ Աւետարանին»: — Այս բացատրութիւնն ընդունելի չէ:

կին վերնագիրներից, որ դեռ պահուած են. այլազգի բառով ասուած «Ագաթանգեղայ պատմութիւն» վերնագրից յետոյ անմիջապէս աւելացրած է՝ «Վարք եւ պատմութիւն սրբոյն Գրիգորի»:

Երկրորդ աղբիւրն եղել է մի վկայաբանութիւն Գրիգոր Լուսաւորչի, երրորդը՝ մի ուրիշ գեղեցիկ վկայաբանութիւն Հռիփսիմեան կոյսերի. չորրորդը՝ Լուսաւորչի տեսիլն է, որ բոլորովին անկախ ծագում ունի: Ս. Գրիգորի վարդապետութիւնն ամբողջապէս թարգմանուած կամ քաղուած է յունարէն կամ աւելի ասորերէն աղբիւրից: Վերջապէս կան երկրորդական աղբիւրներ՝ «Գուրիա եւ Շմոն» վկաների մասին գրուածքը(1), Կորիւնի «Վարք Մաշտոցի», նաեւ ժողովրդական զրոյցներ, իսկ քաղաքական մասի՝ Խոսրովի ու Տրդատի՝ պատմութեան համար մեր երկրորդ ժողովրդական վէպը՝ «Պարսից պատերազմը», որի մասին ներքեւում կը խօսուի: Դրանք բոլորն եղել են իրարուց անկախ գործեր, որ կիրառուած են «Ագաթանգեղայ պատմութիւնը» յօրինելու, կամ, ինչպէս գրում են, խմբագրելու համար:

4. Խմբագրութիւնն այնպէս ճարտար չի կատարուած, որ զանազան աղբիւրներից քաղած պատմութիւնները դառնան իբրեւ մի գրչից դուրս եկած, մի ոճով գրուած միապաղաղ գործ: Շատ տեղ կապակցութիւնը խիստ արուեստական է, կամ չարունակութիւնն այնպէս է յաջորդում, որ իսկոյն երեւում է ուրիշ աղբիւրից ծագումը. նոյն դէպքերի մասին պատմութիւնը երբեմն այլ եւ այլ ձեւերով կրկնւում է տարբեր տեղերում եւ այնպէս, որ կարծես նոր բան է ասւում: Այդ ցոյց է տալիս, որ խմբագրողը նոյնը քաղել է տարբեր աղբիւրներից, եւ չի կարողացել այնպէս ի մի ձուլել, որ կրկնութիւն չլինի եւ առաջ չգան նոյնիսկ հակասական մասեր ու աւելորդաբանութիւններ, խօսքի ու պարբերութեան ընդհատումներ, որոնցով լի է այս պատմութիւնը(2): Բերենք մի օրինակ:

Ինչպէս վերեւում յիշուեց, Կորիւնից էլ բազմաթիւ հատուածներ բառացի մտցրած է մէջը: Կորիւնը Սահակի համար գրում է. «Առաւել երանելոյն Սահակայ զՄամիկոնեան որեարն ի վարժս վարդապետութեանն պարապեցուցեալ, որոց առաջնոյն Վարդան անուն էր, որ եւ Վարդկան կոչէր: Նոյնպէս եւ զամենայն ոգի ջանայր յերիւրել հաստուցանել ի գիտութիւն ճշմարտութեան»: Իսկ Ագաթանգեղոսի մէջ (Հատ. 783, էջ 407) կարդում ենք. «Առնոյր այնուհետեւ զԱրշակունեաց տոհմի որեարն ի վարժս վարդապետութեան պարապեցուցեալ. որոց առաջնոյն Տրդատ անուն, որ եւ թագաւորն իսկ էր, ամենայն տամբ իւրով: Նոյնպէս եւ զամենայն ոգի ջանայր յերիւրել հաստուցանել ի գիտութիւն ճշմարտութեան»: Կորիւնի խօսքը՝ «որոց առաջնոյն Վարդան անուն էր, որ եւ Վարդկան կոչէր»՝ դար-

---

(1) Գ. Տ.-Մկրտչեան, Ագաթանգեղոսի աղբիւրներից: «Յիշատակ դատակնքաց Գորիա եւ Շմոնի վկայից որ վկայեցան յՈւռհա», Վաղարշապատ, 1896:

(2) Ագաթանգեղոս առ Գէորգայ Ասորի եպիսկոպոսի եւ ուսումնասիրութիւն Ագաթանգեղայ գրոց, գրեց Յակովբոս Տաշեան, Վիեննա, 1891. էջ 20, 22, 25, 28 եւ ուրիշներ:

ձրած է. «որոց առաջնոյն Տրդատ անուն, որ եւ Թագաւորն իսկ էր»: Արտագրութիւնն այնպէս մեխանիկօրէն է կատարուած, որ կարծես Տրդատն իբրեւ նոր անձնաւորութիւն առաջին անգամն է յիշւում, եւ հարկաւոր էր նրա մասին ծանօթութիւն տալ, թէ նա Թագաւորն է, Արշակունիների մէջ առաջինն է:

Ագաթանգեղոսի խմբագրութիւնն այժմեան ձեւով որ կայ, ինչպէս տեսուեց, կատարուած է զանազան աղբիւրներից, մասամբ թարգմանական, մասամբ ինքնագիր, հայերէն լեզուով: Դրա սկզբնականը յօրինուած է 5-րդ դարի առաջին կէսին, բայց անփոփոխ չի մնացել, հետագայում վերախմբագրուած է: Այդ երեւում է Ագաթանգեղոսի արաբական վերսիայից, որի մէջ կան հատուածներ, որ այժմեան Ագաթանգեղոսի մէջ չկան: Նոյնպէս եւ Մ. Խորենացին յիշում է, թէ Ագաթանգեղոսի մէջ կայ Նունէ կոյսի պատմութիւնը, որ այժմ այդ գրքի մէջ չկայ: Այսպէս՝ հին դարերում հայերէնից կատարուած յունարէն թարգմանութեան սկզբում կայ մի հատուած Արտաւանի եւ Արտաշրի մասին, որ չկայ այժմեան Ագաթանգեղոսի մէջ, բայց սկզբնապէս եղել է հայերէնում նաեւ ըստ մեր մի պատմիչի տուած տեղեկութեան(1):

5. Պատմական եւ գրական արժէքը:— Մի անգամ որ Ագաթանգեղոսի գիրքը ծագում է զանազան աղբիւրներից, բնականաբար, նայելով աղբիւրներին, տարբեր է եւ նրա մասերի պատմական արժէքը: Կայ շատ բան իսկական պատմական, շատ բան էլ առասպելական: Ինչ որ ծագում է վերեւում յիշուած առաջին աղբիւրից, որ է՝ Վարք Ս. Գրիգորի (Ագաթանգեղոսի վերջին մասը), դրա պատմական արժէքը մեծ է՝ նկատմամբ հայոց դարձի պատմութեան, հին Հայաստանի տեղագրութեան, նախարարական կարգի, հայկական դիցաբանութեան ու պաշտամունքի վայրերի և առհասարակ ներքին կեանքի: Պակաս պատմական արժէք ունեն Ս. Գրիգորի եւ Հռիփսիմեան կոյսերի վկայաբանութիւնները, որոնք յօրինուած են ընդհանուր վկայաբանական շաբլոնների համեմատ: Դրանցից առաջինի մէջ կան դարձեալ հայոց հեթանոսական աստուածների մասին կարեւոր տեղեկութիւններ: Իսկ Հռիփսիմեանց վկայաբանութեան մէջ դժուար թէ որեւէ իրական պատմական բան լինի, բայց եթէ այն, որ իրօք Վաղարշապատում նահատակուած են եղել կոյսեր, քանի որ 5-րդ դարում արդէն եղել են այնտեղ նրանց վկայարանները: Դա էապէս մի զրոյց է վկայաբանութեան ձեւով գրուած: Առանձին արժէք ունեն եւ Խոսրովի ու Տրդատի մասին պատմուածքները:

«Ագաթանգեղայ Պատմութեան» նշանակութիւնը, սակայն, միայն նրա մէջ չէ, որ դա աղբիւր է հայոց պատմութեան համար, դա նաեւ մի կարեւոր գրական երկ է: Արդարեւ, դրա խմբագրութիւնը կատարուած է միամիտ ձեւով, բայց առաջ է եկել մի ամբողջութիւն կազմող, պարզամիտ

(1) Մովսեսի Կաղանկատուացւոյ Պատմութիւն Աղուանից աշխարհի, Թիֆլիս, 1912, էջ 120:

ընթերցողների համար բաւական հետաքրքիր վիպական մի պատմուածք, իսկապէս մի վէպ: Դա իր տրամախօսութիւններով, իր ճոխ ու կենդանի ոճով, յաջորդաբար իրար հետ կապակցուած զանազան պատմուածքներով ու զրոյցներով, հրաշապատումներով, թէկուզ մանրապատում աւելորդաբանութիւններով, նպատակաւոր տեսլով եւ նոյնիսկ իր երկար ու բարակ աղօթքներով ու վարդապետութեամբ շատ սիրուած է եղել եւ շատ կարդացուած, միանգամայն եւ շատ ազդած մեր գրականութեան եւ առհասարակ մտայնութեան վրայ, մինչեւ 19-րդ դարի կէսերը, նոյնիսկ յետոյ: Այդ երկը լաւ ծառայել է այն նպատակին, որ դրա համար գրել են սկզբնական խմբագրողն ու վերախմբագրողները:

6. Կրօնական նպատակը:— Այդ գրքի մէջ շատ զգալի կերպով արւում է քրիստոնէութեան գովքն ու ջատագովութիւնը հեթանոսութեան դէմ: Ս. Գրիգորի ու Հռիփսիմեանց վկայաբանութիւնների, ինչպէս եւ վարդապետութեան մէջ մեծ ծաւալով ցոյց է տրուած հեթանոսական աստուածների, կուռքերի ոչնչութիւնը: Յատկապէս անունով յիշւում են աստուածները եւ եւհեմերաբար մարդ համարւում. «Զոր դուք կոչէք մեծ Անահիտ տիկին՝ լեալ իցեն արդեօք մարդիկ ոք յայնժամ երբեմն ժամանակի: Քանզի դիցապաշտ կախարդութեամբ զմարդիկն որ յայնժամն էին, ցնորիւք կերպս ի կերպս լինելով դիւացն՝ հաւանեցուցին մեհեանս շինել եւ պատկերս կանգնել եւ երկիր պագանել»: Ստեղծուած են յանձինս Ս. Գրիգորի եւ Ս. Հռիփսիմէի ու Գայանէի շատ ուժեղ պատկերներ նահատակների: Ս. Գրիգորը համարձակ անարգում է աստուածներին. «զմեծն Անահիտ, որով կեայ եւ զկենդանութիւն կրէ երկիրս Հայոց», ասում է Տրդատը, «ընդ նմին եւ զմեծն եւ զարին Արամազդ, զարարիչն երկնի եւ երկրի. ընդ նմին եւ զայլ աստուածսն կոչեցեր անշունչս եւ անմռունչս»: Պարզ երեւում է, որ այդ գիրքը յօրինուած է իբրեւ մի օրինակ անվեհեր մաքառման ընդդէմ հեթանոսական կրօնի եւ սրա ոչնչացման իր պաշտօնական պաշտամունքի տեղերով: Միւս կողմից՝ Ս. Գրիգորի վարդապետութեամբ, քարոզով, նրա եւ Հռիփսիմեան կոյսերի աղօթքներով, ձգտել են քրիստոնէական կրօնի սկզբունքները սովորեցնելու ընթերցողներին: Այս է եղել 5-րդ դարում հայ հոգեւորական դասի ձգտումն ամենից առաջ:

7. Ազգային կերպարանքը:— Ագաթանգեղոսի նպատակը եղել է նաեւ ստեղծել Հայոց եկեղեցու սկզբնաւորութեան պատմութիւնն այնպիսի ձեւով, որ վեհաշուք եւ հիահրաշ լինի եւ խոր ազդեցիկ: Սկզբում հոգը միայն Հայոց եկեղեցու համար չի եղել, այլեւ վրաց, աղուանից եւ ափխազների, ինչպէս է արաբական թարգմանութեան մէջ. բայց հետագայ խմբագրութիւնների ժամանակ այդ ազգերը դուրս են ձգուել. այժմ Ագաթանգեղոսի մէջ ոչ մի խօսք չկայ այդ ժողովուրդների քրիստոնէական դարձի մասին: Դուրս է ձգուած եւ սկզբի մասը, ինչ որ Սասանեան հարստութեան սկզբնաւորութեանն է վերաբերում: Այսպիսով մնացել է միայն, կարելի է ասել, Հայոց եկեղեցու սկզբնաւորութեան պատմութիւնը, իբրեւ մի առանձին ազգային եկեղեցու, որ իր սկիզբն առել է Կեսարիայից եկած

մի քարոզչից, եւ առաջին ձեռնադրութիւնն ստացել այնտեղի եպիսկոպոսից: Ուրեմն Հայոց եկեղեցու սերտ յարաբերութիւն յոյների հետ: Ոչ մի յիշատակութիւն չկայ ասորի քարոզիչների եւ ասորիների մասին. միայն մի տեղ ասում է, թէ Տրդատը հրամայել է իր իշխանութեան զանազան կողմերից մանուկներ ժողովել դպրութիւն սովորեցնելու. «Եւ զնոսա յերկուս բաժանեալ, զոմանս յասորի դպրութիւն կարգեալ, եւ զոմանս ի հելլէն»: Բայց այս հատուածը բառացի քաղուած է Կորիւնից եւ քաղուած է մեխանիկօրէն:

Ագաթանգեղոսի այսպիսի, կարելի է ասել, ազգայնացումը, կամ, աւելի ճիշտ, ազգայնացական վերամշակութիւնը, կատարուել է անշուշտ ոչ վաղ, քան 7-րդ դարը, Հայոց եւ վրաց եկեղեցիների բաժանումը: Այդ ժամանակ եւ, պէտք է կարծել, մէջը մտցրել են Կորիւնից ընդարձակ հատուածներ, այդ պատմութիւնն ականատեսի գործ ցոյց տալու համար(1), աւելի ընդարձակելու, գեղեցկացնելու եւ Ս. Գրիգորի կերպարն իբրեւ մենակեացի աւելի բարձրացնելու համար: Եւ իսկապէս, Ս. Գրիգորը, որ անպայման իրական պատմական անձ է, Ագաթանգեղոսի Պատմութեան մէջ դարձած է արդէն մի լեգենդար հոյակապ անձնաւորութիւն, «այր հրաշալի» (էջ 430). վեհական իր պարթեւական Արշակունի ծագումով, սքանչելի իր վկայաբանութեամբ, կրած չարչարանքներով եւ Խոր Վիրապում տարիներ ապրելով, իր քարոզութեամբ, վարդապետութեամբ, որ կանոնական նշանակութիւն է ստացել, հայերին քրիստոնեայ դարձնելով եւ իր ճգնութեամբ, իր տեսլով: Այս վերջինը, տեսիլը, իր սիմբոլիզմով անհրաժեշտ է եղել Հայոց եկեղեցու սկզբնաւորութեանը խորհրդաւորութիւն տալու համար: Երբ հայ եկեղեցին իրեն անկախ էր զգում ե՛ւ յոյներից, ե՛ւ ասորիներից, պէտք էր ցոյց տալ, որ մեր եկեղեցին հիմնուած է ոչ թէ 3-րդ դարի վերջում կամ 4-րդ դարի սկզբում, ոչ Ս. Գրիգորի, ոչ նոյնիսկ առաքեալների ձեռով, այլ հէնց՝ երկնքից յատկապէս իջած Քրիստոսի իրեն ձեռով:

Այսպէս ուրեմն, Ագաթանգեղոսի Հայոց Պատմութիւնն եղել է հայ եկեղեցական դասի ձգտումն արտայայտող առաջին գրական երկերից մէկը

---

(1) Տե՛ս, ի միջի այլոց, Վերջաբանի մէջ (Հատ. 897, էջ 470), Կորիւնից մեխանիկօրէն քաղած հետեւեալ կտորը: «Եւ արդ՝ քանզի ըստ օրինակի գրելոցս առ ի մէնջ՝ ի կատարումն դարձուցաք, ոչ եթէ ի հին համբաւուց տեղեկացեալ եւ մատենագրեալ զայս կարգեցաք, այլ որոց մեզէն իսկ ականատեսք եղեալ կերպարանացն եւ առընթերակաց հոգեւորական գործոցն եւ լսողք շնորհապատում վարդապետութեանն, եւ նոցին արքանեակք ըստ աւետարանական հրամանացն: Ոչ սուտապատում ճարտարախօս եղեալ առ ի մերոց բանից, այլ զյանախագոյնսն թողեալ եւ ի նշանաւոր գիտակաց քաղելով՝ զհամառօտսն կարգեցաք. որք ոչ մեզ միայն, ո՛վ թագաւոր, այլ յորժամ քո առաջի զմատեանդ ընթեռնուն՝ յայտնի է»:— Բանաքաղն Ագաթանգեղոս հեղինակին նոյնիսկ դարձրել է «նոցին արքանեակ ըստ աւետարանական հրամանացն», ինչ որ Կորիւնն իր համար գրում է իբրեւ «նոցին», այսինքն Սահակի եւ Մաշտոցի փոքր գործակից:

*եթէ ոչ առաջինը: Դրա մէջ փառաբանուած է ե՛ւ քրիստոնէութիւնը, ե՛ւ Հայոց եկեղեցին, ե՛ւ Հայ կաթողիկոսական աթոռը Վաղարշապատում, նրա ժառանգական աթոռակալներն իրենց ծագումով: Ամէն ինչ այդ գրքի մէջ դիմում է գլխաւորապէս այդ նպատակին: Նոյնիսկ այն, որ դրա մէջ ուժեղ կերպով գծագրուած է Հսկայազօր Տրդատ թագաւորի պատկերը, այդ էլ ծառայում է նոյն նպատակին, եկեղեցականը փառաւորելուն: Քրիստոնէութեան դիրքը բարձրացւում է այնու, որ Տրդատի, ինչպէս եւ Կոստանդիանոսի նման թագաւորները խոնարհւում են նրա եւ նրա ներկայացուցիչ կաթողիկոսի առաջ:*

8· Վիպական տարրը:— *Ագաթանգեղոսի սկզբի մասի պատմութիւնը համեմատելով օտար աղբիւրների հաղորդածների հետ՝ այն եզրակացութեան են եկել, որ դա «այլակերպեալ պատմութիւն» է: Այդ պատմուածքները «ճիշտ պատմական են, բայց մթին եւ հարեւանցի, շատ դէպքեր ի մի ձուլուած. մի խօսքով՝ պատմութիւն, բայց ոչ ականատեսի եւ ոչ ժամանակակցի, այլ ի լրոյ պատմագրող հեղինակի»*(1)*: Այդ «լուրը» միայն ժողովրդական վէպ եւ զրոյց կարող էր լինել: Ժողովրդական վէպը կամ զրոյցը միայն կարող էր այնքան եւ այնպէս «այլակերպեալ» ձեւով պահել իր մէջ պատմական յիշողութիւններ մօտաւորապէս* 225—160 *տարի առաջ կատարուած եղելութիւնների մասին, քանի որ Ագաթանգեղոսի պատմած դէպքերն ընկնում են* 225 *թուից մինչեւ* 3*-րդ դարի վերջին տասնամեակը, իսկ Ագաթանգեղոսը* 5*-րդ դարու կէսերին է գրուած:*

*Անշուշտ, Ագաթանգեղոսի հեղինակն աւանդական վէպից օգտուելիս՝ ազատ էր վէպի մասերը ցրուելու Պատմութեան մէջ այս ու այն տեղերում, այլեւ Պատմութեան մէջ պիտի չառնէր այնպիսի մանրամասնութիւններ, որ նրա աչքին պատմական չէին, ինչպէս են՝ առասպելական հատուածներ, եթէ կային այդպիսիք, ընտանեկան յարաբերութիւններ, ամուսնութիւն, խնջոյք, այլ միայն պատերազմները եւ քաջագործութիւնները պիտի առնէր, եւ այս ամէնն իր լեզուով պիտի պատմէր, — բայց եւ այնպէս վիպական հետքերը շատ տեղ պարզ երեւում են: Եւ մեր այս կիսապատմական եւ կիսաբանաստեղծական վէպն իր կենդանութիւնը նրանով է ստանում գրքի առաջին մասում, որ ամբողջապէս ծագում է բուն ժողովրդական բանաստեղծութիւնից: Վաղուց նկատուած է, որ Տրդատի քաջագործութիւնների մասին պատմուածքները քաղուած են աւանդական զրոյցներից, որոնց մէջ նա ներկայանում է իբրեւ հսկական դիցազն* (2)*: Ըստ երեւոյթին հեղինակն*

---

(1) Յակովբոս Տաշեան, Ագաթանգեղոս առ Գէորգայ Ասորի եպիսկոպոսին եւ պատմական ուսումնասիրութիւն Ագաթանգեղայ, Վիեննա, 1891, էջ 60, 92:

(2) Alfred von Gutschmid, **Agathangelos**, Zeitschrift der Deutschen Morgenländischen Gesellschaft,1877,.s. 1-60,Leipzig. Նոյնը նաեւ առանձին գրքով· «**Agathangelos**», Kleine Schriften, III B.

Տե՛ս եւ Մ· Աբեղեան, Հայ ժողովրդական վէպը, Թիֆլիս, 1908, էջ 109—111· արտատպուած «Ազգագրական Հանդէսից», Թիֆլիս, 1907 թ· յունուար, էջ 49—51:

*էլ նոյնը յայտնում է, երբ Տրդատի գովասանական նկարագիրն անելուց յետոյ՝ գրում է. «Վասն այսորիկ պատշաճեցան բանքս այս ի բանս կարգի առակաց, թէ իբրեւ զմէգն Տրդատ»... Վիպական տարր կայ նաեւ Հռիփսիմեանց վկայաբանութեան մէջ. «Բաղրատունի Տրդատի եւ Նազինիկ Հարճի վրայ պատմածը հիմն է Հռիփսիմեանց պատմութեան»: Բայց ժողովրդական վիպական ծագում ունեն ոչ միայն դրանք, այլեւ Խոսրովի պատմութիւնը, Տրդատի փախուստը, պարսիկների դէմ վարած պատերազմները եւ այլն* (1)*: Դրանց վրայ պիտի աւելացնել նաեւ յունարէն թարգմանութեան սկզբի մասը Արտաւանի եւ Արտադուխտի վերաբերեալ:*

*Թէ ո՛րչափով իրական պատմական դէպքեր են անդրադարձուած Ագաթանգեղոսի Պատմութեան առաջին մասի մէջ, ո՛ր պատմական դէպքերի եւ անձերի յիշողութիւններ են պահուած եւ ի՛նչ դէպքեր են ի մի ձուլուած, այդ մասին այստեղ հետեւեալը միայն պէտք է ասել: Խոսրով եւ Տրդատ անունների հետ այդ մասի մէջ կապուած են Հայոց Վաղարշ թագաւորի եւ սրա որդի Տրդատ Բ.ի* (215—252) *ժամանակ եւ հետագայում մինչեւ* 297 *թ. կատարուած պատմական իրականութիւնների յիշողութիւններ: Ազդած է նաեւ Տրդատ Ա.ի շրջանը: Մեծն Խոսրով անունով թագաւորի պատմական գոյութիւնը չի հաստատւում, չնայելով նոր պատմաբանների եւ բանասէրների ջանքերին: Դա ըստ երեւոյթին վիպական ստեղծական անձ է, որի վրայ պատմուել են Վաղարշի եւ Տրդատ Բ.ի գործերից: Հռոմէական կողմը փախչողը Տրդատ Բ.ն է մեծ հասակում. վէպի մէջ նա փախչելիս յիշւում է իբրեւ մանկիկ ըստ վիպական ոգու, ինչպէս եւ Վիպասանքի մէջ Պարսից կողմը փախչող Արտաշէսը պատկերացւում է իբրեւ փոքր երեխայ: Տրդատ Բ. թագաւորի վէպը եկեղեցականների ձեռով դարձած է քրիստոնեայ Տրդատի վէպ:*

*Տե՛ս «Պարսից պատերազմ» հատուածը:*

*Տե՛ս նաեւ Չորրորդ յաւելուածը՝ «Պարսից պատերազմ վէպի պատմականութեան խնդիրը»:*

## ՓԱՒՍՏՈՍ ԲՈՒԶԱՆԴ

1. Հեղինակն ու գրութեան ժամանակը: — *Այս հեղինակի աշխատութիւնը՝ ըստ Ղազար Փարպեցու՝ երկրորդ Հայոց Պատմութիւնն* (2) *է: Դրա հեղինակի մասին եւս ոչ մի բան չգիտենք, ինչպէս եւ Ագաթանգեղոսի Հայոց Պատմութեան: Գիրքը բաժանուած է «դպրութիւնների». մեզ հասել են միայն Գ—Զ դպրութիւնները: Հեղինակը գրած է եղել նաեւ Ա եւ Բ դպ-*

---

(1) Վերեւում յիշուած «Պատմագիրք Հայոց» հրատարակութեան 18—47 հատուածները (էջ 15—29), միջից հանած 38-րդ հատուածը: Ապա նաեւ 123 հատուածը (էջ 71 եւ հտ.), որ 47-ի բնական շարունակութիւնն է. եւ վերջապէս 181, 202 եւ 203 հատուածների մէջ պատմածները:

(2) Փաւստոսի Բուզանդացւոյ Պատմութիւն Հայոց, Ս. Պետերբուրգ, 1883: — Այս պատմութիւնը ձեռագիրների բաղդատութեամբ դեռ չկայ հրատարակուած, իսկ այդ շատ անհրաժեշտ է, որովհետեւ ձեռագիրների մէջ կան բազմաթիւ այլ ընթերցուածներ:

րութիւնները, բայց դրանք դուրս են ձգուած, եւ որպէսզի զուր չորոնեն դրանք, Գ դպրութեան սկզբում աւելացրել են «խսկիզբն» բառը:

Վեցերորդ դպրութեան գլխակարգութեան վերջում կայ հետեւեալը. «Ստորոտ ամենայն պատմութեանց յաղագս իմ տեղեկութեան, որք միանգամ զմատեանս ընթեռնույք, տուեք տասն՝ համարական թուօք»: Այստեղ հեղինակը խոստանում է իր մասին տեղեկութիւն տալ, բայց այդ չկայ գըրքի վերջում: Նոյնը չի եղել նաեւ 5-րդ դարում, որովհետեւ այս հեղինակի կենսագրութեան մասին ոչինչ յայտնի չէ եւ 5-րդ դարի երկրորդ կէսին ապրող Ղ. Փարպեցուն: Մինչդեռ սա Ագաթանգեղոսին չափազանց գովում է, անուանելով նրան «այր բանիբուն գիտութեամբ եւ լի ամենայն հրահանգիւ, ստուգարան ի կարգադրութիւն ճառից եւ յարմարագիր ի պատմութիւնս ստացուածի իւրոյ», նրա գիրքը համարում է «հաստատուն եւ անսըխալ կարգադրութիւնք», «ճշգրտաբանութիւն», — Բուզանդացու մասին յարգանքով չի խօսում, գրելով՝ «Փաւստոս ոմն Բուզանդացի». «զոմն պատմագիր, կոչեցեալ Փաւստոս Բուզանդացի», եւ թէ «անուանեալ կոչէն զանուն գրոցն Հայոց Պատմութիւն»: Նա նոյնիսկ կասկածում է, թէ այդ Պատմութիւնը մի բիզանդացի մարդու գործ լինի. «Եւ վասն զի կարդելոցն առ ի նմանէ ի տեղիս ուրեք կարծեցին ոմանք բանք ինչ որ յարմարք եւ դիպողք ... յերկուացեալ հարկաւորին չասել զայնպիսի անպատշաճ կարգումն Բիւզանդացւոյ ուսելոյ»: Ապա նա երկար ու բարակ խօսելով Բիւզանդիոնի մասին, ասում է, թէ «վտակք գիտութեան, որպէս ի թագաւորանիստ վայրի, յորդեալ բղխեն ի քաղաքէն. որպէս եւ յամենայն կողմանց յաշխարհէն Յունաց քաջ ուսեալքն անդ փութան հանդիպանել, եւ մինչեւ ցայսօր առաւելեալ տարածին յամենայն կողմանս նորա իմաստութեան վտակք: Արդ՝ յայնպիսումն քաղաքի եւ ի մէջ այնչափ բազմութեանն ուսելոյ վարժեալ այրն Փաւստոս այնպիսի ինչ արդեօք անհաճոյս լսողաց բանս կարգէ՞ր ի պատմութեան իւրում: Քա՛ւ եւ մի՛ լիցի»: — Փարպեցին կարծում է, թէ Փաւըստոսը, որ Բուզանդացի է, պէտք է «ուսեալ», «վարժեալ» լինի: Եւ քանի որ ինքը նրա անունով եղած Պատմութիւնն ուսեալ մարդու գործ չի համարում, «Ուստի եւ, — աւելացնում է, — անհաւատալի իմում տկարամտութեանս կարծեցեալ գործն՝ ասեմ, թէ դուցէ այլ ոք յանդուգն եւ անհրահանգ բանիւ լրբաբար ձեռն արկեալ յիւրն՝ գրեաց զինչ պէտս բան կամի, եւ կամ զի ուրուք անկարեալ դիպողս՝ այլաբանեալ մնասեաց, եւ անուամբ Փաւստոսին զիւրոյ յանդգնութեանն սխալանս համարեցաւ ծածկել»: Եւ վերջն ասում է, թէ յոյների, աւելի ասորիների մէջ կան տղէտ եւ յանդուգն մարդիկ, որոնք «գրեցին յինքեանց ճառս ընդունայնս եւ անպիտանաբանս եւ խառնեալ եդին ի գիրս գիտուն լսողաց. այլ ընտրող մտաց ճանաչի յայտնապէս գիտնոցն բանք եւ անմտացն շաղփաղփութիւնք»: Ղ. Փարպեցու գրածից չի իմացւում, թէ արդեօք իրօք եղե՞լ է «ուսեալ» եւ «վարժեալ» մի մատենագիր Բուզանդացի Փաւստոս անունով, թէ՞, ինչպէս երեւում է, նրա եւ ոմանց համար բաւական է եղել, որ Փաւստոսը Բուզանդացի է, ուրեմն եւ «ուսեալ» եւ «վարժեալ» մարդ պիտի լինէր նա:

Փաւստոսի Հայոց Պատմութեան երրորդ դպրութեան վերջում կայ հետեւեալը. «Կատարեցաւ երրորդ դարք [=գիրք?], քսան եւ մի պատմու-

թեանց դպրութիւնք, ժամանակագիր կանոնք փախստեայք [=Փաւստեայ] Բիւզանդեայ ժամանակագիր մեծի պատմագրի, որ Էր ժամանակագիր Յունաց»: Այս շատ աղճատուած «յիշատակարանից» եզրակացնում են, թէ եղել է «Փաւստոս Բուզանդ» անունով մի «ժամանակագիր Յունաց»: Բայց ուրիշներն այդ յիշատակարանն իրաւամբ համարում են հետագայում աւելացրած: Եթէ Ղ. Փարպեցու օրինակի մէջ այն լինէր, նա անպայման այդ նկատի կ'ունենար եւ ոչ թէ այնպէս ընդհանուր եւ անորոշ ձեւով կը խօսէր Փ. Բուզանդացու մասին:

Փարպեցու ժամանակից ի վեր Փ. Բուզանդացու Հայոց Պատմութիւնը չի գնահատուել արժանապէս: Միայն 19-րդ դարի վերջին քառորդից ըսկըսեց բարձրանալ նրա արժէքը: Այդ ժամանակից ի վեր աւելի եւս ծաւալուեց նաեւ նրա հեղինակի մասին հետաքրքրութիւնը. եղել էին եւ եղան զանազան կարծիքներ, որոնք մեծ մասամբ անարժէք են: Այսպէս, օրինակ, հարց է եղել, թէ հեղինակն արդեօք յո՞յն է եղել, թէ՞ հայ. մէկը հայ է համարել նրան, մի ուրիշը՝ յոյն: Եղել են եւ բանասէրներ, որոնք այդ Հայոց Պատմութեան համար իբրեւ հեղինակ դրել են երկու անձ. իբր դրա մի մասի հեղինակը եղել է յոյն, միւս մասինը՝ ասորի: Եթէ հեղինակը հայ է եղել՝ արդեօք Սահառունեա՞ց տոհմից է եղել նա, իսկ եթէ յոյն է եղել, արդեօք նա այդ Հայոց Պատմութեան մէջ յիշուած ծերունի հռոմ եպիսկոպոս Փաւստո՞սն է, որ ապրել է 4-րդ դարում: Ապա դարձեալ՝ հարց է եղել, թէ այդ գիրքն արդեօք յունարէ՞ն է գրուած եղել, այն էլ 4-րդ դարում, եւ 5-րդ դարում թարգմանուել հայերէն, թէ՞ հայերէն է գրուել 5-րդ դարում մի հայից եւ վերագրուել Փաւստոս Բուզանդ անունով մեզ անյայտ յոյն ժամանակագրի: Ասողներ էլ եղել են, թէ հեղինակը 4-րդ դարում ապրող մի հայ է եղել, որ գրել է յունարէն լեզուով մի համառօտ պատմութիւն. բայց 5-րդ դարում թարգմանելիս՝ մէջը շատ բաներ են աւելացրել եւ ընդարձակել: Եւ վերջապէս՝ մի ուրիշ հարց էլ այն է եղել, թէ ի՞նչ յարաբերութիւն կայ Փաւստոսի Հայոց Պատմութեան եւ յոյն պատմագիր Պրոկոպիոսի (6-րդ դարում) յիշած Հայոց Պատմութեան միջեւ, որից այդ հեղինակը բերել է մի կտոր, որ կայ նաեւ Փաւստոսի մէջ: Այս եւ ուրիշ նման հարցերի պատասխանները, որոնց մասին գրուել են ոչ միայն յօդուածներ, այլեւ գրքեր, այժմ մեծ մասամբ արժէք չունեն Փաւստոսի Հայոց Պատմութեան տեսակէտով: Մի փոքր կանգ առնենք դրանց վերջինի վրայ:

Որ յոյն պատմագիր Պրոկոպիոսը «Հայոց Պատմութիւնից» Արշակի մասին բերել է մի կտոր, որ նման է Փաւստոսի համապատասխան հատուածին, այդ ապացոյց չի կարող լինել, թէ Փաւստոսի Հայոց Պատմութիւնը յունարէն է գրուած եղել: Պրոկոպիոսը, լինելով Կեսարիայից, կարող էր հայերէն իմանալ եւ Փաւստոսից անձամբ օգտուել, կամ թէ կարող էր Փաւստոսի Պատմութեան յիշուած կտորը մէկը թարգմանած լինել նրա համար: Հէնց այժմ ո՛րքան ռուսերէն թարգմանութիւններ են լինում հայոց գրականութիւնից այնպիսի ռուս մարդկանց ձեռով, որոնք բնաւ չգիտեն հայերէն: Այդ կատարւում է միջնորդների օգնութեամբ: Նոյնը կարելի է ընդունել եւ Պրոկոպիոսի համար, եթէ միայն նա հայերէն չգիտէր:

*Այժմ հաւաստի կարելի է ասել, որ Փաւստոսի Հայոց Պատմութիւնը գրուած է 5–րդ դարի երկրորդ կէսին եւ հայերէն լեզուով, մի իւրատեսակ հայ հայրենասիրութեամբ տոգորուած հայից: Նրա հեղինակին ծանօթ է Ագաթանգեղոսի գրեթէ ամբողջ բովանդակութիւնը, որից յիշատակութիւններ է անում նա իր Պատմութեան զանազան տեղերում: Նա օգտուած է Ս. Գրքի հայերէն թարգմանութիւնից եւ ուրիշ թարգմանութիւններից: Նրա լեզուն հարազատ, մաքուր հայերէն է, առանց խորթ օտարաբանութիւնների, մեծ մասամբ բնիկ ժողովրդական ձեւով, նոյնիսկ ռամկական դարձուածներով եւ յատկութիւններով այն աստիճանի, որ բնաւ կարելի չէ թարգմանութիւն համարել այդ երկը* (1):

*Ապա՝ միջին կան տեսլի, անէծքի, գուշակութեան ձեւով ակնարկութիւններ 5–րդ դարի եղելութիւնների, եւ վերջապէս՝ հատուածներ Կորիւնի գրքից, թէպէտ ոչ այնքան մեծ թւով, որքան Ագաթանգեղոսի մէջ: Ուրիշները մի քանի այդպիսին ցոյց են տուել. բերենք այստեղ մէկը, որ Կորիւնից առնուած է նաեւ Ագաթանգեղոսի մէջ: Ուրիշները, որքան յայտնի է, այդ համարում են Ագաթանգեղոսից առնուած Բուզանդի մէջ. Նրանք չեն նկատած, որ ե՛ւ Ագաթանգեղոսի, ե՛ւ Փաւստոսի մէջ, միմեանցից անկախ, այդ հատուածը ծագում է Կորիւնից:*

*Զաւետարանական ընթացսն եւ զվերակացութիւն եկեղեցւոյ սրբոյ շնորհօքն Աստուծոյ առանց պակասութեան տանէր, առաւել եւս փութայր, զուն եդեալ յորդորելով զամենեսեան առ ի բարեացն քաջայերութիւն. զցայգ եւ զցերեկ պահօք եւ աղօթիւք եւ ուժգին խնդրուածովք եւ բարձրակալ կատարման հաւատովքն՝ մերձաւորաց եւ հեռաւորաց զհոգեւոր եռանդն ածէր:*

*Բուզանդ, Գ.* 6

*Զաւետարանական ընթացսն եւ զվերակացութիւնն սրբոյ եկեղեցւոյ շնորհօքն Աստուծոյ առանց պակասութեան տանէր, եւ առաւել փութայր զուն եդեալ՝ զամենեսեան յորդորելով առ բարեացն քաջութիւն: Եւ զցայգ եւ զցերեկ պահօք եւ աղօթիւք եւ ուժգին խնդրուածովք եւ բարձրագոյն բարբառովք զաստուածադիր պատուիրանացն հրամանս ուշ առնելով... Եւ մինչդեռ այնպէս մերձաւորացն առ իւր եւ զհոգեւոր եռանդն ածէր...*

*Կորիւն, Հատ. ԻԵ., էջ* 90

*Բացի ամբողջ կտորներից՝ կան նաեւ արտայայտութեան ձեւեր, դարձուածներ եւ ուրիշ նմանութիւններ Փաւստոսի, ինչպէս եւ Ագաթանգեղոսի մէջ, որոնք ըստ երեւոյթին Կորիւնի հետեւողութեամբ են գրուած, կամ Կորիւնից՝ վերամշակումով՝ մտել են այդ երկուսի երկերի մէջ: Եւ այս բնական է: Կորիւնի գրքոյկը լինելով առաջին ինքնագիր երկը, այն էլ գրերի գիւտի եւ Մաշտոցի ու Սահակի մասին, անշուշտ շատ կարդացուել է նրանց աշակերտներից եւ ուրիշներից, որոնք եւ ապրել են նրանից: Ղ. Փարպեցին անգամ, որ աւելի ուշ ժամանակ է ապրել, գրում է իր համար, թէ շատ անգամ կարդացել է այդ գիրքը. «մեր բազում անգամ կարդալով տեղեկացեալ»:*

---

(1) Ուսումնասիրութիւն Փաւստոս Բիւզանդի Պատմութեան, գրեց Ստեփան Մալխասեանց, Վիեննա, 1896. այլեւ «Մուրճ» ամսագիր, 1901. No. 3:

2. Պատմութիւնը :— *Բուզանդի գիրքն առաջին փորձն է գրելու ամբողջական Հայոց Պատմութիւն, որ իր մէջ պարունակէր նաեւ հինը: Այդպիսի մի երկ անհրաժեշտ է եղել 5-րդ դարում, երբ պէտք էր ոչ միայն եկեղեցին ուժեղացնել, այլեւ ազգային աշխարհիկ քաղաքական ինքնագիտակցութիւն զարգացնել: Այս երկու ձգտման համար եւս իբրեւ ագիտացիայի միջոց պիտի ծառայէր Հայոց Պատմութիւնը: Այս պատճառով եւ հէնց սկզբից մեր պատմագրութեան մէջ մտնում է երկու գիծ՝ աշխարհիկ քաղաքական եւ եկեղեցական, որոնք, երկուսն եւս միեւնոյն երկի մէջ զոյգ ընթանում են, երբեմն զուգահեռ, երբեմն մէկը միւսի մէջ մտնելով ու բազմահիւսուելով, երբեմն էլ մէկն աւելի մեծ չափով, քան միւսը:*

*Մեզ հասած Բուզանդի գիրքը բովանդակում է հայոց պատմութիւնը Տրդատի որդի Խոսրովից սկսած մինչեւ Հայաստանի բաժանումը պարսկական եւ հռոմէական ազդեցութեան մասերի 387 թ., մօտ յիսուն տարուայ պատմութիւն — Խոսրով, Տիրան, Արշակ, Պապ, Վարազդատ եւ Արշակ թագաւորների օրով:*

*Եկեղեցական պատմութիւնն սկսւում է Ս. Գրիգորի եւ նրա որդի Արիստակէսի մահով, ապա խօսւում է Վրթանէսի եւ յաջորդ կաթողիկոսների մասին. առանձնապէս ուշադրութեան են առնուած Մեծն Ներսէսի կեանքն ու գործունէութիւնը: Բերուած են բազմաթիւ տեղեկութիւններ եւ առանձին կրօնաւորների վերաբերեալ: Որ Բուզանդը խօսում է նաեւ մի քանի ասորի եպիսկոպոսների կամ կրօնաւորների մասին, այդ բնաւ նշան չէ նրա ասորական կողմնորոշման, ինչպէս եղել են այդպէս կարծողներ: Նա իբրեւ պատմութեան հեղինակ՝ գրում է ե՛ւ Հայոց կաթողիկոսների, ե՛ւ ասորի, ե՛ւ յոյն կրօնաւորների մասին անխտիր, եւ գովելով եւ պարսաւելով ըստ կրօնական հայեացքի եւ նայելով թէ ինչպիսի՛ զրոյցներ է դրտել նա նրանց վերաբերմամբ: Այս տեսակէտով հէնց՝ նրա երկը, թէպէտ յաճախ հրաշապատում, թանկագին աղբիւր է Հայոց եկեղեցական պատմութեան համար: Այնտեղ գտնում ենք եկեղեցական եւ աշխարհական դասերի հակամարտութիւնը, կաթողիկոսների դերն ընդհանուր կեանքի մէջ, մեծ եկեղեցական հօր՝ Ներսէս կաթողիկոսի նշանաւոր գործունէութիւնը, ձգտում ազգային ինքնագլուխ եկեղեցի կազմելու, այլեւ եկեղեցական կեանքի վերաբերեալ ուրիշ շատ նիւթեր:*

3. Վիպական եւ զրուցային տարրերը: Վիպասան Փաւստոս Բուզանդ :— *Ձեռնարկելով գրել մի պատմութիւն, որ իրենից առաջ ուրիշներ գրով չէին դրոշմել, մեր այս մատենագիրը բնականաբար պիտի դիմէր բերանացի աւանդութիւններին եւ օգտուէր նրանցից իբրեւ պատմութեան աղբիւրներից: Եւ իսկապէս, Փաւստոս Բուզանդի «Հայոց Պատմութեան» մէջ ամէն ընթերցող էլ, որ ըմբռնում է աւանդական պատմուածքի ոգին, միայն աւան-*

դական վիպական ոճ եւ եղանակ կը գտնէ(1)։ Այժմ այլեւս կասկած չկայ, որ այդ գրքի գլխաւոր աղբիւրները եղել են աւանդական զրոյցներ, լեգենդաներ, վէպեր եւ նոյնիսկ երգեր։ Հինգերորդ դարի երկրորդ կէսին գրող մի Հայ հեղինակ, ինչպիսին է Փաւստոսը, հարկաւ, կարող էր շատ յիշողութիւններ ժողովել 4-րդ դարի քահանայապետների, թագաւորների եւ զօրավարների մասին, բայց աւելի շատ օգտուել է նա աւանդական վէպից ու զրոյցներից, որ այդ շրջանում, նոյն Բուզանդի վկայութեամբ, ինչպէս կը տեսնենք, մեծ թեթեւութեամբ եւ արագութեամբ կազմւում ու տարածւում էին։

Բացի այդ՝ նրա գրքից պարզ երեւում է, որ ինքը Բուզանդն էլ, այդ գրքի հեղինակը, օժտուած է եղել վիպասանական շնորհքով, եղել է իսկապէս մի գրագէտ վիպասան, որ սովորած է եղել շատ զրոյցներ եւ իմացել է բերանացի վիպել շատ պատումներ «Պարսից պատերազմից» (ինչպէս մի Նախոյ Բեռի կամ Մոկացի Յովան պատմել են «Սասնայ Ծռերից»), եւ ապա իր այդ իմացածների եւ բերանացի պատմածների ու լսածների հիման վրայ նա յօրինել է իր գիրքը՝ անխտիր գրելով ինչ որ գիտէր, լինի առասպել, թէ իրական պատմական եղելութիւն, առանց որեւէ քննադատութեան, տարբերութիւն չդնելով այդ երկուսի մէջ։ Գրաւոր աղբիւր, ինչ որ զրոյցների ու վէպի բուն նիւթին է վերաբերում, դժուար թէ գործածած լինի նա. ուստի եւ ոչ մի թուական չի յիշում, այլ, ինչպէս աւանդական վէպի մէջ, միայն դէպքերի յաջորդութիւնն է պահում, այն էլ ոչ լիովին ստոյգ պատմական։ Նա անցքերը պատմում է, ինչպէս ժողովրդական վէպի մէջ է, «ապա, յայնժամ ժամանակի, յետ այնորիկ» եւ նման բառերով կապակցելով դրանք։ Չկայ դէպքերի ներքին կապակցութիւն, իբրեւ պատճառ եւ հետեւանք ժամանակագրական յաջորդութեամբ։ Կան բաւական մեծ անաքրոնիզմներ, որոնցից պարզ երեւում է, որ հեղինակը պատմած դէպքերից շատ ուշ ապրած մի անձ է եղել։ Պահուած է թագաւորների եւ կաթողիկոսների յաջորդութիւնը, եւ նրանց ժամանակի համար պատմուած են առանձին եղելութիւններ, երբեմն իրարուց անկախ առանձին էպիզոդներ։

Գրուածքի բովանդակութիւնն ուշադրութեամբ դիտելով՝ գալիս ենք հետեւեալ եզրակացութեան. այս Պատմութեան մէջ կան երկու խումբ պատմուածքներ՝ եկեղեցական եւ աշխարհական. առաջինը քահանայապետների եւ ուրիշ եկեղեցականների մասին, իսկ երկրորդը՝ թագաւորների ու զօրավարների։ Թագաւորները, իբրեւ երկրի պետեր, հարկաւ, երեւան են գալիս երբեմն նաեւ եկեղեցական զրոյցների մէջ. իսկ կաթողիկոսներից Ներսէսը գործող անձ է եւ վէպի մէջ։

---

(1) Հ. Գելցեր, Փ. Բուզանդ, թարգմ. Թորոսեան, Վենետիկ, 1896, էջ 34—36, էջ 111 եւ հտն., 38 եւ այլն։

Ուսումնասիրութիւն Ստ. Մալխասեանցի, Փ. Բուզանդի Պատմութիւն, Վիեննա, 1895։

Մ. Աբեղեան, Հայ ժողովրդական վէպը, արտատպուած «Ազգագրական Հանդէս»ի 1906–1908 թ. գրքերից, էջ 111 եւ հտն.։ «Ազգ. Հանդ.», 1907 թ., յունուար, էջ 51 և հտ.։

Աշխարհական պատմուածքները կազմում են մի ամբողջութիւն, մի մեծ աւանդական վէպ, որի մասին ներքեւում առանձին կը խօսուի մանրամասնօրէն. իսկ եկեղեցական պատմուածքներն անկախ աւանդական զրոյցներ եւ յիշողութիւններ են, որոնք հեղինակի ձեռով մասամբ հագցրած են վէպից առած նիւթերի մէջ: Այստեղ, այդ եկեղեցական զրոյցների մէջ է երեւում գլխաւորապէս Փաւստոս հեղինակը, որ պատմում է հրաշքներ, տեսիլներ, գրում է աղօթքներ, քարոզներ, խրատներ եւ օգտւում է Ս. Գրքից, պատմելով սրա խօսքերով կամ բառացի կտորներ բերելով: Այստեղ է, որ նա հանդէս է գալիս իր գայրոյթով ու յանդիմանութեամբ, իր յարձակումներով թագաւորների վրայ եւ իր ընդհանրապէս քրիստոնէական վարդապետութեան ոգով ու բարեպաշտական զգացմունքով: Ասել չի ուզիլ, աշխարհական զրոյցների մէջ եւս, թէպէտ քիչ, կան հեղինակի գրչի արդիւնքներ եւ հայեացքներ, մեծ մասամբ կաթողիկոսների համար եւ նրանց բերանին դրած խօսքեր, ինչպէս են Վրթանէսի խօսքը (Գ. 11), Ներսէսի խօսքը եւ ուղղափառներին աքսորելը, Խադի մասին պատմածները (Դ. 5. 12), Զոնակի ընտրութիւնը (Դ. 15) եւ այլն, որոնք, սակայն, դարձեալ մասամբ եկեղեցական զրոյցներ եւ յիշողութիւններ են: Այդ եկեղեցական զրոյցները նոյնպէս ծագում են աւանդութիւնից եւ պատմուած են ժողովրդական ձեւով: Դրանց զետեղումը մեր երկրորդ վէպից առած նիւթի մէջ այնպէս պարզամիտ է արած, որ գրեթէ միշտ երեւում է կարկատանի տեղը(1), ուստի եւ շատ հեշտութեամբ աշխարհիկ Փէոդալական վէպից անջատւում են դրանք: Եկեղեցական զրոյցներ են՝ Գ. 2—6, 10, 12—17, 19 գլուխները, Դ. 4, 6—10, 44, 56—57 գլուխները, Ե. 21—31, Զ. 2—16 գլուխները:

Պէտք է նկատի ունենալ նաեւ, որ Բուզանդը վէպից օգտուելիս էլ երբեմն ձգտում է իր դրած պատմութեանը տալ քրիստոնէական բնաւորութիւն ու գոյն, յօրինել Աստուածաշնչի ոճով, դարձուածքներով ու պատկերներով, նոյնիսկ փոքրիկ հատուածներից օգտուելով եւ, որ գլխաւորն է, կրօնական գաղափարախօսութեամբ: Բայց այդ եւս շատ զգալի է, եւ հնարաւոր է այդ եւս անջատել, առանց վէպի ամբողջական բովանդակութեանն առանձնապէս վնասելու: Մի Բուզանդի կամ մի ուրիշ միջնադարեան պատմագրի համար, որ վկայաբանական գրականութեան համար աչքի եւ հակում ունի, «նահատակութիւնը» մարտիրոսութիւն էր, կատարւում էր

(1) Օրինակ՝ Դ. դպր. 5-րդ գլխի մէջ պատմում է, թէ Արշակը Ներսէսին տասն մեծ նախարարների հետ ուղարկում է կայսեր մօտ, որը Ներսէսին աքսորում է, իսկ միւսներին Արշակունի պատանդների հետ արձակում է Հայաստան: Ետեւից դնում է ամբողջ հինգ գլուխ (6—10) Ներսէսի աքսորի եւ զանազան եկեղեցականների մասին, եւ ապա 11-րդ գլխում նորից դառնում է դեսպանութեան պատմութեանը եւ կրկնութեան մէջ ընկնում: Շատ պարզ է, որ այս 11-րդ գլուխն անմիջական շարունակութիւն է 5-րդ գլխի, եւ որ կրկնութիւնները առաջացած են մէջտեղում հագցրած զրոյցների պատճառով, որ եկեղեցականներին են վերաբերում:

Աստուծու, եկեղեցու եւ նրա քարոզած գաղափարների համար. մինչդեռ ըստ աշխարհիկ վէպի, «նահատակութիւնը» քաջագործութիւն, կտրճութիւն է պատերազմի մէջ երկրի եւ նրա թագաւորի համար:

4. Իբրեւ պատմութեան աղբիւր:— Մի անգամ որ Փաւստոսի «Հայոց Պատմութիւնը» ծագում է գլխաւորապէս աւանդական զրոյցներից ու վէպից, դա ստանում է ե՛ւ պատմական, ե՛ւ գրական արժէք: Նա մեր միակ հնագոյն մատենագիրն է, որի գրուածքի մէջ, որովհետեւ սա ծագում է ֆոլկլորից, ընդարձակ չափերով անդրադարձած է մեր ժողովրդի, առանձնապէս ազնուականութեան ներքին կեանքի իրական պատկերը, նրա բարոյական, կրօնական ու քաղաքական հայեացքը իրերի վրայ, նրա բնաւորութեան որոշ գծեր, հայրենասիրութիւնը, սոցիալական վիճակը, նոյնիսկ սովորոյթները, կենցաղը, հաւատալիքները եւ այլն: Փաւստոսի պատմած ամէն մի միջադէպ ներկայացնում է այդ կեանքի շատ կողմերը միաժամանակ: Այնտեղ տեսնում ենք աշխարհական ու եկեղեցական իշխանութիւնների, ազնուականների ու թագաւորի յարաբերութիւնները, ընտանեկան յարաբերութիւններ մօտիկ ազգականների միջեւ, թագաւորի անսահմանափակ իշխանութիւնն ամէն բան անելու, նոյնիսկ իր անմեղ մերձաւորին կոտորել տալու առանց որեւէ դատի, ամէն տեսակ քսութիւններ եւ նմաններ, որոնք մանրամասնօրէն ուսումնասիրուած են ներքեւում, յաջորդ «Պարսից պատերազմ» հատուածի մէջ: Միւս կողմից՝ բերուած են, ըստ ժամանակի հասկացութեան, իսկական բարեպաշտական տեսարաններ, սրբակեացների մասին հրաշապատումներ, այլեւ անունով լոկ քրիստոնեայ, խաբեբայ, աւազակ ու խեղկատակ եպիսկոպոսների մասին պատկերներ, այն էլ չափազանց ուժեղ գծերով, որոնք անդրադարձրել են իրական կեանքը (Զ. 8, 9, 10):

Մինչդեռ ներքին կեանքի ուսումնասիրութեան համար կարելի է ազատ կերպով օգտուել Փաւստոսի ընձայած բազմակողմանի հարուստ նիւթերից, նոյնը կարելի չէ ասել անձերի ու դէպքերի, եղելութիւնների վերաբերմամբ: Անտարակոյս, այդ երկի մէջ կան շատ պատմական անցքերի նկարագիրներ, բայց այնքան եւ այնպէս, որքան եւ որպէս մի պատմական երգի ու վէպի մէջ: Դա մեծ մասամբ պատմութիւն չէ, այլ բանաստեղծութիւն, ուստի բանաստեղծութիւնը մեծ տեղ ունի դրա մէջ. պատմուած դիպուածների հիմքը միայն, այն էլ ոչ միշտ, պատմական կարող է լինել: Հետեւաբար կարելի չէ անվերապահօրէն օգտուել նրանից, իբրեւ մի պատմական ստոյգ աղբիւրից, ինչ որ պատմական անձերին ու եղելութիւններին է վերաբերում, ինչպէս երբեմն վարւում են վերջերս, երբ Փաւստոսի արժէքը մեծացած է:

Տեսնել այս գրքի վերջում դրուած Երրորդ յաւելուածը՝ «Փ. Բուզանդի Հայոց Պատմութեան առաջին եւ երկրորդ դպրութիւնների խնդիրը»:

Այլեւ Չորրորդ յաւելուածը՝ «Պարսից պատերազմ վէպի պատմականութեան խնդիրը»:

# ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՎԷՊ

## «ՊԱՐՍԻՑ ՊԱՏԵՐԱԶՄ»

1. «Պարսից պատերազմը»։ — *Հին հայ ժողովրդական վէպ անուան տակ սովորաբար յայտնի է Մ. Խորենացու Հայոց Պատմութեան մէջ եղած Վիպասանութիւնը հնագոյն ժամանակի հերոսների մասին։ Այդ, ինչպէս տեսանք, մասամբ առասպելներ են, մասամբ եւ առասպելախառն վէպ, որի մէջ պատմական յիշողութիւնները հասնում են մինչեւ մեր Թ. 2-րդ դարը։ Հայ ժողովուրդն ունեցել է իր աւանդական վէպը եւ հետագայ դարերի մասին եւս։ Դա «Պարսից պատերազմն» է։ Այսպէս կոչում ենք մեր երկրորդ հին վէպը, որովհետեւ դրա մէջ բանաստեղծօրէն պատմուած է եղել այն մեծ ու երկարատեւ պատերազմը, որ դարեր շարունակ մղել են հայերը պարսիկների դէմ իրենց անկախութեան համար։ Այդ վէպի հատուածները մնում են Ագաթանգեղոսի, Փ. Բուզանդի, Խորենացու եւ Սեբէոսի պատմութիւնների մէջ։ Ագաթանգեղոսի եւ Բուզանդի մէջ գտնում ենք մեր այդ վէպի ամբողջութիւնը, ի հարկէ ուրուագծով միայն եւ ոչ անպատճառ այն կարգով, որով պատմուել է ժողովրդի մէջ։ Խորենացին ու Սեբէոսը լրացուցիչ հատուածներ կամ պատմուածներ միայն ունին։*

2. Պատմական դարաշրջանը եւ պատմականութիւնը։ — *Մեր այս վէպն եւս ֆէոդալիզմի բանաստեղծութիւն է։ Դա ծագել է 3—5-րդ դարերի քաղաքական ու սոցիալական պայմաններում։ Դրա հիմնական մասը 3-րդ եւ 4-րդ դարերի պատմական իրականութիւնն է։ Պատմական են գործող անձերը մասամբ, որոշ եղելութիւններ եւ ընդհանրապէս հասարակական կեանքի ձեւը։ Այն դարերում տնտեսական-հասարակական կազմակերպութիւնը, արտադրական յարաբերութիւնները Հայաստանում առհասարակ նոյնն էին մնում, ինչ որ նախորդ շրջանում։ Իշխում էր համեմատաբար աւելի զարգացած աւատականութիւնը, որի հիմքը, ինչպէս ուրիշ տեղերում, կազմում էին բնական տնտեսութիւնն ու խոշոր հողատիրութիւնը։ Երկիրը բաժանուած էր մեծ ու փոքր ազնուականների միջեւ, որոնք իրենց կալուածներում տէր ու տնօրէն էին, բայց եւ ենթարկւում էին իրենցից բարձր իշխաններին։ Թագաւորող հարստութիւնն էր Արշակունին, նոյն տոհմը, որ Պարսկաստանում եւս իշխում էր մինչեւ 226 Թ.։ Ուժեղ հողատէրերը, սակայն, յաճախ ընդվզում էին թոյլ կենտրոնական իշխանութեան դէմ։ Թագաւորներն էլ իրենց կողմից մաքառում էին նրանց դէմ՝ ուժեղ կենտրոնական իշխանութիւն կազմելու համար։ Բայց այդ դժուար էր գլուխ բերել Հայաստանի պէս մի երկրում, որ աշխարհագրօրէն կազմուած էր տարբեր ու փակ մասերից եւ ունէր բնական տնտեսութիւն։ Երկրի եզերային մասերը միշտ հակուած էին դէպի դուրս եւ հեշտութեամբ ենթակայ հարեւան տէրութիւններին։*

*Երբ Պարսկաստանում 226 Թ. տեղի է ունենում թագաւորող հարստութեան փոփոխութիւն, երկու իշխող տները, Արշակունին Հայաստանում*

եւ Սասանեանը Պարսկաստանում, անհաշտ կերպով իրար դէմ են ելնում դարաւոր թշնամութեամբ եւ պատերազմներով: Բացի այդ՝ Հայաստանն իրենց ազդեցութեան կամ գերիշխանութեան տակ առնելու համար՝ երկարատեւ պատերազմներ են անում երկու հարեւան մեծ տէրութիւնները՝ պարսկական ու հռոմէական:

Սասանեանների օրով հայ թագաւորական տան կողմնորոշումն Արեւելքից շուռ է գալիս դէպի Արեւմուտք, իսկ երբ հայերը քրիստոնէութիւն են ընդունում, առաջ է գալիս մի նոր ուժեղ հողատէր — Եկեղեցին իր վանքերի կրօնաւորներով ու գիւղական քահանաներով, իր եպիսկոպոսներով ու կաթողիկոսով: Եւ այսպէս կազմուած են Հայաստանում միջնադարեան ֆէոդալիզմի երեք դասերը՝ ազնուականութիւն, եկեղեցականութիւն ու շինականութիւն: Դրանցից եկեղեցականութիւնը հետզհետէ աւելի զօրանում է եւ քրիստոնեայ Արեւմուտքի հետ բարեկամութիւն պահում:

Այս ընդհանուր դրութեան հետեւանքով երկրի ներսում մի կողմից՝ կռիւներ էին տեղի ունենում կենտրոնական իշխանութեան եւ մասամբ նախարարների միջեւ, միւս կողմից՝ յաճախ նախարարներն էլ միմեանց դէմ կռւում էին ոչ միայն խարդաւանքներով, այլեւ երբեմն իսկական պատերազմներով: Մի երրորդ կողմից էլ իրար դէմ էին կանգնում պարսկասէրների եւ յունասէրների կուսակցութիւնները:Այս ամէնով եւ վերջապէս հայ-պարսկական եւ հռոմ-պարսկական անվերջ պատերազմներով, — որոնք յաճախ Հայաստանում էին տեղի ունենում եւ մեծ նշանակութիւն են ունեցել բոլոր սոցիալական խաւերի համար,— այլեւ հիւսիսային ազգերի կրկնուող ասպատակութիւններով, աշխարհը ենթարկւում էր յաճախակի ցնցումների ու վայրիվերումների: Եւ այս ամէնը, այս ընդհանուր դրութիւնն առաջ է բերում պատմական աւանդութիւններ՝ երգեր ու զրոյցներ կատարուած դէպքերի ու եղելութիւնների շուրջը, եւ կազմւում է երկրորդ հայկական վէպը, իսկապէս՝ երկրորդ աւանդական վէպի պատումների մի ցիկլ, որի էական խնդիրն է քաղաքական անկախութեան համար պայքար ընդդէմ պարսիկների: Դրա մէջ, հարկաւ, ինչպէս վէպերի մէջ սովորաբար լինում է, նշանաւոր պատմական անձերի վրայ ասւում են նաեւ ստեղծական արարքներ եւ ընդհանուր վիպական բնաւորութիւն ունեցող մոտիւներ, բայց բոլորը պատմական իրականութեան ֆոնի վրայ: Եւ ահա, ինչպէս վերեւում էլ նշուեցին մի քանի գծեր, մեր առաջ պարզւում է ֆէոդալական դրութիւնն իր շատ կողմերով· արտաքին յարձակումներ, ներքին խռովութիւններ, թագաւորից ապստամբութիւն, նախարարների եւ նոյնիսկ թագաւորի եղբայրների, ապստամբ տոհմերի կոտորած խորամանկ ու խաբէական միջոցներով եւ երդմնազանցութեամբ, արեան վրէժխնդրութիւն, նոր ազնուականութեան կարգում թագաւորական հրովարտակով՝ գիւղեր և այլ կալուածներ տալով նրան ի ժառանգութիւն, աւարառութիւն և այլն:Բոլորը ֆէոդալական դարաշրջանին յատուկ իրականութիւն:

Մի յատկանիշ, որով այս երկրորդ հին վէպը տարբերւում է առաջինից, դա այն է, որ այստեղ պակասում է հրաշալին, գերբնականը: Գործող

անձերը, թէպէտ հերոսական բնաւորութեամբ, բայց մարդիկ են: Ջկան հին առասպելները վիշապների մասին: Նիւթն ընդհանրապէս շատ աւելի պատմական գոյն ունի, մօտիկ է իրական պատմութեանը, քան Վիպասանքի մէջ: Դրա պատճառն այն է, որ պատմագիր Բուզանդը, որից գիտենք այս Վէպը մեծ մասամբ, կատարելապէս արհամարհում է հեթանոսական առասպելականը: Ուստի եթէ եղել են հրաշալի պատմուածքներ, նա դրանք չի առել իր Պատմութեանը մէջ: Բայց որ գլխաւորն է՝ այս պատմական Վէպի երգերն ու զրոյցները իրենց գրուելու ժամանակ՝ երկար դարեր չեն ապրած եղել այն դէպքերից ու անձերից յետոյ, որոնց վրայ յօրինուած են դրանք: Որքան Վէպի մէջ յիշուած դէպքերն ու անձերը ժամանակով աւելի մօտենում են 5-րդ դարին, այնքան աւելի իրական, պատմական են նրանք: Եւ այս հասկանալի է, թէ ինչու: Վէպի այդ մասերը պակաս ժամանակ ապրած լինելով, պակաս էլ ենթարկուած են աւանդական վէպի համար սովորական փոփոխութիւնների, աճումների ու յարակցութիւնների եւ, այսպէս ասած, առասպելականացմանը: Բայց եւ այնպէս այդպիսի վերջին մասերն անգամ ոչ թէ իրական պատմութիւն են, այլ վիպական բանահիւսութիւն:

## ԸՆԴՀԱՆՈՒՐ ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

1. Խոսրով եւ Տրդատ: — «Պարսից պատերազմի», ինչպէս մեր «Սասնայ Ծռերի», սկիզբը կապուած է նոր տոհմերի ծագման հետ, մի կողմից՝ Հայոց Մամիկոնեան սպարապետութեան, միւս կողմից՝ Պարսից Սասանեան հարստութեան: Հայ Արշակունիների եւ Սասանեանների մէջ ըսկըսւում է մի մեծ կռիւ, որ տեւում է մի քանի սերունդներ՝ Խոսրով Մեծ, Տրդատ, Խոսրով Կոտակ կամ Փոքր, Տիրան, Արշակ, Պապ, Վարազդատ եւ Արշակ: Կռուի ոգին եղել են սպարապետները, որոնց մի քանի սերունդներ երեւան են գալիս սկսած Մամիկոնեանների ծագումից, — Մամիկ-Կոնակ, Արտաւազդ, Վաչէ, (Արտաւազդ եւ) Վասակ, Մուշեղ եւ Մանուէլ: Վէպը վերջանում է Մամիկոնեանների յաղթանակով եւ փառքով: Տեսնենք այս Վէպի սերունդները կամ, մեր այժմեան վէպի բառով, «ճիւղերն» առանձին-առանձին, որով եւ մօտաւորապէս կը վերականգնուի Վէպի ընդհանուր բովանդակութիւնը: Ամէն մի ճիւղը յօրինուած է մի շարք գեղեցիկ դրուագներով, որոնք պատմուած են վիպական մանրամասնութեամբ:

Սկզբնական դրութիւնն այն է, որ միեւնոյն պարթեւական տոհմը թագաւորում է և՛ Պարսկաստանում, և՛ Հայաստանում, եւ այդ երկուսի մէջ իշխում է բարեկամութիւնը: Այն ժամանակ տեղի է ունենում Մամիկ-Կոնակի դիպուածը: Երկու եղբայրները ճենական նշանաւոր տոհմից, թագաւորի երկրորդի որդիք, Մամիկ եւ Կոնակ, գժտուելով ապստամբում են Ճենաց թագաւորից, որ իրենց համամայր եղբայրն էր, բայց յաղթուելով՝ ապաստանում են Պարթեւաց Վաղարշի որդի Արտաւան թագաւորի մօտ, որ Հայոց Վաղարշի որդի Մեծն Խոսրով թագաւորի ազգականն էր: Արտաւանը, որպէսզի իր եւ Ճենաց թագաւորի մէջ խաղաղութիւնը չվրդովուի եւ

*միանգամայն իր երդումը պահած լինի, նրանց իրենց աղխով ուղարկում է Խոսրովի մօտ՝ Հայաստան:*

*Մինչ Հայոց Թագաւորը (Տրդատ՝ ըստ Խորենացու պատումի)՝ պատերազմում էր հիւսիսական ազգերի դէմ, այդ ժամանակ նրանից ապստամբում են Տարօնի Ողական ամրոցի տէրը, Սլկունիների Սլուկ նահապետը, եւ Սիմ լեռան բնակիչները: Թագաւորը խոստանում է նրան տալ Սլկունիների իշխանութիւնը, ով իր մօտ կը բերէ Սլկունիների նահապետին: Մամ-Կոնը (ըստ Խորենացու պատումի) խաբեբայութեամբ սպանում է Սլուկին, եւ Թագաւորը նրան է տալիս Սլկունիների կալուածները եւ նախարար կարգում նրանց: Այսպէս երկու եղբայրները հաստատւում են Տարօնում եւ Սիմ լեռան վրայ· նրանց ամրոցն է Ողական:Նրանց սերունդը, Մամիկոնեանները «դառնում են մեծ ազգ, այն է՝ Հայոց սպարապետներ»:*

*Վէպը՝ այնուհետեւ անցնում է սպարապետների վարած «Պարսից պատերազմի» ծագման պատճառին, մի իսկական վիպական պատմուածքով: Վաղարշակի որդի Արտաւանը գիշերն անկողնում աստղերին նայելով իմանում է, որ ով ապստամբի իր տիրոջից՝ կը Թագաւորի, եւ այն մասին նա յայտնում է իր Թագուհուն: Արտադուխտը, Սասանեան Արտաշրի սիրելին, որ իբրեւ նաժիշտ նոյն ննջարանումն էր պառկում, լսելով Թագաւորի ասածը՝ իմացնում է Արտաշրին, եւ սա ապստամբում է Արտաւանից, կռուելով յաղթում, սպանում է նրան, եւ տեղը Թագաւորում ինքը՝ Սասանեան հարստութեան հիմնադիրը: Դրանով փոխւում է սկզբնական կացութիւնը: Սկսւում է վէպի շարժումը, իրադարձութիւնները, մի կացութիւնից անցումը միւսին:*

*Ի՞նչպէս պիտի վերաբերուի այդ փոփոխութեանը եւ ի՞նչ պիտի անի Հայաստանի Արշակունի Թագաւորը: — Ահա մի հարց, որ արդիական մեծ նշանակութիւն է ունեցել Փէոդալական դարաշրջանում, երբ իշխող տների ազգակցութեանն առանձին կարեւորութիւն է տրուելիս եղել:— Այդ փոփոխութեան անմիջական հետեւանքը լինում է այն, որ հայոց Խոսրովն իր ազգականին օգնել է ուզում, բայց չի կարողանում· եւ ապա երբ Արտաւանը սպանւում է, նա սկսում է իր վրէժխնդրութեան տասնամեայ կռիւները: Նա Արտաւանի մահուան վրէժն առնելու համար՝ արշաւում, հասնում է մինչեւ Տիզբոնի դռները·*

Աւար առեալ զերկիրն ամենայն՝
Յապականութիւն դարձուցանէր
Զշինանիստ քաղաքացն,
Եւ աւանացն ցանկալեաց·
Զշէն երկիրն ամենայն՝
Թափուր եւ աւերակ թողոյր:

*Պարսից Թագաւորը չի կարողանում նրան դիմադրել եւ պարտուելով փախչում է·*

Փախստեայ լինէր առաջի նոցա·
Զհետ մտեալ կոտորէին

Զամենայն զօրսն Պարսից,
Եւ դաշտացն եւ ճանապարհացն՝
Ցիր դիաթաւալ կացուցանէին,
Եւ չարախտավար վատնէին,
Եւ անհնարին հարուածս
Ի վերայ հասուցանէին:
Եւ թագաւորն Հայոց դառնայր ի մեծ կոտորածէն,
Մեծաւ յաղթութեամբ
Եւ բազո՛ւմ աւարաւ
Եւ ցնծալից ուրախութեամբ,
Ի կողմանսն Հայոց յԱյրարատ գաւառ,
Ի Վաղարշապատ քաղաք,
Մեծաւ ուրախութեամբ
Եւ բարի անուամբ
Եւ բազո՛ւմ աւարաւ:

*Ագաթ., էջ 13 եւ հտն.*

*Եւ այսպէս տասը տարի առէպ «աւար առեալ աւերէին զամենայն երկիր տանհմանացն, որ ընդ պարսից թագաւորութեամբ եւ իշխանութեամբ էր»:*

*Պարսից թագաւորը նեղն է ընկնում եւ, կռուի մէջ չկարողանալով բան անել հայերին, խորհրդի է կանչում իր մեծամեծներին: Պարթեւ Անակը գալիս է Հայաստան, դաւաճանութեամբ սպանում է Խոսրովին, բայց ինքն էլ իր բոլոր ընտանիքով սպանւում է: Պարսից թագաւորը որ լսում է Խոսրովի մահը, «զուարճանայր, զուարթանայր, տօն մեծ ուրախութեան առնէր զօրն զայն. եւ բազում ուխտ ատրուշանացն առնէր»: Նա զօրք է ժողովում, գալիս Հայաստան, տիրում, գերում: Կոտորում է հայոց թագաւորական տունը:*

*Բայց դրանով ամէն բան չի վերջանում: Խոսրովի որդիներից Տրդատին, «մանկիկ մի փոքրիկ», յունական կողմերն է փախցնում Արտաւազդ Մամիկոնեանը, իսկ Օտա Ամատունին Տրդատի քրոջը, Խոսրովիդխտին, պահում է Անի ամրոցում: Այս մի խոսկական վիպական դրուագի մէջ պատմւում է, որ Արտաւազդը դայեակ լինելով մեծացնում է մանուկ Տրդատին, որը յաղթանդամ հսկայ դառնալով՝ ծառայում է Լիկիանոսի մօտ, չատ քաջագործութիւններ է անում եւ աջողութիւններ ունենում: Վերջը նա կայսրի փոխանակ մենամարտելով Գոթաց թագաւորի հետ՝ յաղթում է նրան եւ հռոմայեցիների օգնութեամբ գալիս, թագաւորում է Հայաստանում, կռւում է պարսիկների դէմ, եւ «խնդրէր զքէն վրիժուց հայրենեացն»:*

Խաղաց գնաց թագաւորն ի կողմանս Հայոց.
Եւ եկն, եգիտ անդ զօրս բազումս Պարսից,
Զի զաշխարհն յինքեանս գրաւեալ էին ի ծառայութիւն:
Զբազումս կոտորէր,
Եւ զբազումս փախստականս արարեալ՝

Ի կողմանս Պարսից արկանէր,
Եւ զհայրենեաց տէրութիւն յինքն նուաճեաց,
Եւ զօրացաւ ի վերայ սահմանաց նորա:

*Ագաթ., էջ 29*

*Հայաստանին տիրելուց յետոյ էլ նա միշտ պատերազմում է եւ միշտ յաղթում պարսիկներին: Այս վէպի մէջ պատմուած է եղել Տրդատի ամուսնութիւնը եւ յետոյ՝ նրա ու գեղեցիկ Հռիփսիմէի դէպքը եւ վերջապէս՝ Տրդատի պատերազմը հիւսիսականների ու պարսիկների դէմ եւ նրա գովաբանութեան երգը (Ագաթ., Հատ. 123, էջ 71 եւ հտ.).*

Իսկ թագաւորն Տրդատ՝
Զամենայն ժամանակս իւրոյ թագաւորութեանն՝
Աւերէր, քանդէր զերկիրն Պարսից թագաւորութեանն
Եւ զաշխարհն Ասորեստանի,
Աւերէր եւ հարկանէր ի հարուածս անհնարինս:
Վասն այսորիկ պատշանեցան բանքս այս
Ի բանս կարգի առակաց,
Թէ՝ «Իբրեւ զՄէգն Տրդատ,
Որ սիգալովն աւերեաց զթումբս գետոց,
Եւ ցամաքեցոյց իսկ ի սիգալն իւրում զյորձանս ծովուց»:
Վասն զի սէգ իսկ էր առ հանդերձս,
Եւ այլ ուժով պնդութեան, հաստութեամբ,
Բուռն ոսկերօք եւ յաղթ մարմնով,
Քաջ եւ պատերազմող անհնարին,
Բարձր եւ լայն հասակաւ:
Որ զամենայն ժամանակս կենաց իւրոց պատերազմեալ,
Եւ առնէր մարտիցն յաղթութիւն:
Մեծ անուն պարծանաց քաջութեան անձին ստանայր,
Եւ զհռչակապ շքեղութիւն յաղթութեան
Ընդ ամենայն աշխարհ կացուցանէր:
Հարկանէր ի հարուածս զթշնամիսն,
Եւ խնդրէր զքէնս վրիժուց իւրոց հայրենեացն:
Առնոյր աւար բազում ի կողմանցն Ասորւոց,
Եւ թափէր կապուտ սաստիկ անհնարին ի նոցանէն:
Արկանէր ի սուր զզօրս Պարսից,
Եւ թափէր կողոպուտ անհնարին:
Լինէր առաջնորդ առն եւ ձիոյ զօրացն Յունաց,
Եւ մատնէր նոցա զբանակս նոցա:
Հանէր զզօրս Հոնաց սաստիկ յոյժ,
Եւ գերէր զկողմանս Պարսից:

*Այստեղ վերջանում է վէպի առաջին մասը: Հայրն ընկաւ, բայց որդին յաղթեց եւ վրէժն առաւ: Հերոսական պատերազմը վճռուեց յօգուտ Արշակունի տոհմին:*

2· *Խոսրով Կոտակի եւ Վաչէի ճիւղը Նախորդի հետ կապւում է միայն հօր եւ որդու յաջորդութեամբ: Խոսրով Կոտակի օրով պարսիկները երեք անգամ յարձակւում են Հայաստանի վրայ եւ ամէն անգամ սոսկալի պարտութիւն կրում: Հայերը կոտորում են բոլորին:*

Եւ տեսին զօրսն Պարսից,
Ձի ոչ գոյր թիւ բազմութեանն·
Ձի էին իբրեւ զաստեղս երկնից,
Եւ իբրեւ զաւազ առ ափն ծովու·
Ձի եկեալ էին անթիւ փղօք եւ անչափ զօրօք:
Եւ սոքա [Հայք] հասին անկան ի վերայ բանակին···
Հարին, սատակեցին, կոտորեցին,
Եւ ոչ թողին ի նոցանէ եւ ոչ մի:
Եւ թափէին աւար բազում, զփիղսն,
Եւ զամենայն ոյժ զօրութեան նոցա:

*Բուզ․, Գ․ 8*

*Թագաւորը Վաչէի ձեռով տնկել է տալիս Խոսրովակերտի անտառը, կոտորել է տալիս միմեանց հետ պատերազմող եւ երկիրը խռովող Նախարարներին: Պարսիկները չեն դադարում Հայոց Թագաւորի դէմ պատերազմելուց: Հայոց արքայի զօրքն էլ միշտ դիմադրում է նրանց հէնց սահմանի վրայ:*

Եւ հանապազ կային ի քաջութեան,
Ի մարտ պատերազմի ի սահմանս Պարսից·
Եւ ոչ տային անխտիր արշաւել,
Աւերել զերկիրն Հայոց, եւ ոչ նայել:
Եւ կայր արքայ ի հանգստի,
Եւ աշխարհ ի շինութեան եւ ի խաղաղութեան
Զամենայն աւուրս կենաց նոցա:

*Բուզ․, Գ․ 8*

*Վէպի մէջ դաւաճանում են Դատարէն Բզնունին եւ Աղձնիքի բդեշխը, որոնք անցնում են պարսիկների կողմը եւ վնասում հայերին: Բայց վերջը յաղթում է Թագաւորն իր հաւատարիմների ձեռով, առանձնապէս Մամիկոնեան Վաչէի, եւ պատժել տալիս դաւաճաններին: Նոյնպէս մազքութների արշաւանքի սկզբում անյաջողութիւն է լինում, զի զօրքերը ժողովուած չէին, եւ Վաչէ զօրավարը Հայաստանում չէր: Բայց երբ նա գալիս է եւ հաւաքում քաջ Նախարարներին, այն ժամանակ մազքութներին բոլորին կոտորում են, նախ Ցլու գլուխ լեռան վրայ, յետոյ Այրարատեան գաւառում, Օշականի մօտ.*

Եւ հասանէր անկանէր ի վերայ բանակին···
Եւ առ հասարակ ընդ սուր հանին զամենեսեան,
Եւ ոչ մի ոչ ապրեցուցանէր,
Եւ դարձուցանէր զբազմութիւն գերեացն:
Եւ յետ այսորիկ առնոյր զաւարսն,

խաղայր, գնայր, երթայր իջանէր
Ի դաշտն Այրարատեան գաւառին...
Հասանէին, հարկանէին, սատակէին
Զօրսն Ալանացն եւ Մազքթացն
Եւ Հոնացն եւ գայլոց ազգացն·
Եւ լնուին զդաշտն առապարացն
Առ հասարակ դիակամբք մեռելոց,
Մինչ զի իբրեւ զգետ յարուցեալ՝
Երթայր արիւնն անհնարին,
Եւ ոչ լինէր թիւ զօրացն մեռելոց:

Բուզ., Գ. 7

Վերջը մարտի մէջ ընկնում է ծերունի Վաչէն· զօրավարութեան գործը յանձնւում է Մամիկոնեան տան փեսաներին՝ Արշաւիր Կամսարականին եւ Անդովկ Սիւնուն, որոնք եւ պիտի կրթէին ապագայ սպարապետ Մանուէլ Արտաւազդին: Իր մահով մեռնում է Խոսրովը, եւ թագաւորում է որդին՝ Տիրանը: ռ:

Այս ճիւղի առանձին սիւժետների մէջ կայ գլխաւորապէս ժամանակական կապ· ուստի դրանք յաջորդում են այսպիսի բանաձեւերով՝ «Եւ զայնու ժամանակաւ», «յայնմ ժամանակի», «եւ մինչդեռ նա», «բայց յետ այսորիկ», «ապա» եւ նմանները: Բայց եւ այնպէս այս ամբողջի մէջ կայ մի ընդհանուր խնդիր: Դա ոչ թէ վրէժխնդրութեան պատերազմն է, այլ այս ճիւղի մէջ հայերն արդէն իրենց երկրի պաշտպանութեան եւ անկախութեան վրայ են մտածում: Աչքի է ընկնում իշխանների ապստամբութիւնն ու դաւաճանութիւնը: Բայց Մամիկոնեան Վաչէն քաջ կռւում է թշնամիների դէմ եւ թագաւորի հաւատարիմ ծառան է:

3. Տիրանի վէպն ինքն առանձին կազմում է մի վիպական ամբողջութիւն: Հայր Մարդպետը, յայտնի չէ թէ ինչու, կոտորել էր տալիս շատ նախարարների, մանաւանդ Ռշտունի եւ Արծրունի տոհմերը: Մեհենդակ Ռշտունու Տաճատ որդուն եւ Վաչէ Արծրունու Շաւասպ որդուն, երկուսն եւս ստնդեայ երեխաներ, բերում են թագաւորի առաջ, որ հրամայում է նրանց սպանել: Բայց Տիրանի որդի Արշակի դայեակները, Արտաւազդն եւ Վասակը, «որք էին զօրավարք ամենայն զօրացն Հայոց», վրայ հասնելով՝ ուժով ազատում են այդ երեխաներին, եւ թողնելով իրենց սան Արշակին, նրանց առնում գնում են իրենց աշխարհը՝ Տայոց ամուրները, ուր եւ մեծացնելով նրանց պսակում են իրենց դուստրների հետ: «Եւ նստան անդ ամս բազումս ընտանեօք իւրեանց, եւ թողին զայլ տուն իւրեանց», այսինքն Տարօն, «եւ ոչ խառնէին նոքա ի խորհուրդս Հայոց մինչեւ ի բազում ամս» (Բուզ., Գ. 18):

Այսպէս երկպառակութիւն է ընկնում թագաւորի եւ իր զօրավարների միջեւ: Շատ գեղեցիկ վիպական դրուագ է Տիրանի եւ Վարազ Շապուհի յարաբերութիւնը: Տիրան թագաւորը մի շատ մեծ ու գեղեցիկ ձի ունի· Փիսակ սենեկապետը, երբ դեսպան է գնում Ատրպատական, այդ ձիու մասին

*յայտնում է այնտեղ նստող Վարազ Շապուհին։ Սա խնդրում է՝ ձին տան իրեն։ Թագաւորը խնայում է եւ բոլորովին նման մի ուրիշ ձի ճարելով՝ այդ է ուղարկում։ Փիսակն այդ մասին յայտնում է Վարազ Շապուհին եւ նրան գրգռում է Տիրանի դէմ։ Վարազ Շապուհը թշնամանում է եւ խաղաղութեան ժամանակ Հայաստան գալով իբրեւ բարեկամ, հիւրասիրում է թագաւորին. եւ նրան, որ անպաշտպան էր, սաստիկ հարբած ժամանակ, դաւադրութեամբ բռնում են, կուրացնում ու գերի են տանում Պարսկաստան։ Այդ տեղի է ունենում այն պատճառով, որ թագաւորի մօտ չէին զօրավարները, նախարարներն ու զօրքերը։*

Եւ ի ժամանակին յայնմիկ,
Այնպէս դիպեցաւ յայնմ ժամանակի,
Զօրավարքն չէին անդ,
Այլ սարտուցեալ էին·
Եւ այլ մեծամեծք նախարարացն,
Եւ աւագ տանուտէրք, ազատանին,
Սոյնպէս եւ զօրքն արքունին,
Յիւրաքանչիւր տունս, յիւրաքանչիւր կայեանս,
Յիւրաքանչիւր դադարս դադարեալ էին։
Եւ ոչ ոք էր՝ որ մնացեալ էր առ թագաւորին,
Եւ ոչ զունդ եւ այրեւձի·
Բայց միայն սակաւ սպասաւորօք հանդերձ,
Եւ որոցն պառակմանօք,
Եւ ռահվիրայ մարդկաւն,
Եւ խառնաղանջ խորանապահ զօրուն,
Եւ ռամիկսպաս զօրօքն,
Եւ Տիկնաւն հանդերձ,
Եւ արքայորդին մանուկն Արշակ։

**Բուզ., Գ. 20**

*Երբ նախարարները, իշխանները եւ գործակալներն իմանում են թագաւորի գերուելու եղելութիւնը, ժողովւում են, պատրաստւում, ընկնում են թշնամու ետեւից։ Թէպէտ չեն հասնում նրան,*

Սակայն հասանէին, առնուին
Զկողմ ի Պարսից աշխարհէն,
Առ հասարակ մարդակոտոր առնէին,
Եւ զաշխարհն յայրեաց եւ յաւար դարձուցանէին։

*Ապա Տիրանի գերութեան վրէժն առնում են պարսիկներից։ Մամիկոնեանների փոխանակ գործում են նրանց փեսաները, Անդոկ Սիւնին եւ Արշաւիր Կամսարականը, որոնք հռոմայեցոց կայսրին օգնութեան են բերում, սակայն պարտութիւն հասցնում պարսիկներին.*

Ապա հասեալ ի տուընջէն ժամուն,
Անկանէին ի վերայ թագաւորին Պարսից,
Ընդ սուր զամենայն բանակն հանէին,

Եւ ոչ զմի ոչ ապրեցուցանէին:
Եւ առին զկապուտ զաւար բանակին,
Եւ զկանայս թագաւորին եւ զբամբիշն,
Եւ զբանսկան ընդ նոսին,
Եւ զինչս եւ զստացուածս նոցին,
Ընդ նմին ի գերութիւն վարէին
Զկանայս նոցա եւ զզանձս,
Եւ զկեանս եւ զկազմած նոցա:
Բայց միայն թագաւորն պրծեալ մազապուր,
Պէշասպիկ մի սուրհանդակ առաջի,
Պրծեալ եղանէր փախստական.
Հազիւ ուրեմն կարէր
Անկանել, հասանել յաշխարհ իւր:

*Բուզ., Գ. 21*

*Վարազ Շապուհը պատժւում է, Տիրանն ազատւում է, եւ թագաւորում է Արշակը: Պատերազմը վճռւում է դարձեալ յօգուտ Արշակունիների:*

4. Արշակի ու Պապի եւ Վասակի ու Մուշեղի *ճիւղերը կազմուած են նոյն ցիկլին պատկանող, իրենց մէջ փոքր ամբողջութիւններ կազմող մի քանի վէպերից: Դրանցից առաջինը կարելի է կոչել* «Արշակ ու Ներսէս», *որի մէջ զօրեղ կերպով է երեւում կրօնական ազդեցութիւնը: Արշակի առաջին գործը լինում է հաշտուել Մամիկոնեանների հետ: Սրանով նրա վէպը կապւում է Տիրանի վէպի հետ, որի սկզբում, ինչպէս տեսանք, պատմւում է, թէ Մամիկոնեանները խռովում, հեռանում են արքունի բանակից: Կարգաւորւում են եւ միւս նախարարութիւնները, եւ կաթողիկոս է ընտրւում Ներսէսը:*

*Ապա Արշակը Ներսէսի գլխաւորութեամբ դեսպանութիւն է ուղարկում Վաղէս կայսրի մօտ: Սա Ներսէսին արգելում, աքսորում է եւ նրա փոխանակ սպանում է Արշակի եղբօրորդիներին՝ Գնէլին եւ Տիրիթին: Դրա վըրայ բարկանում է Արշակը: Նա Վասակ զօրավարի ձեռով մօտ* 260,000 *զօրքով վեց տարի շարունակ աւերել եւ աւարել է տալիս հռոմէական կողմերն առանց որեւէ դիմադրութեան.*

Հարկանէր, աւար առնոյր զկողմանս Գամրաց,
Մինչեւ ի քաղաքն յԱնկուրացւոց,
Զվեց ամ զմիմեանց զհետ՝
Աւերէր զաշխարհ սահմանացն Յունաց:
Լցան աւարաւ բազմաւ եւ պէսպէս մեծութեամբ:

*Բուզ., Դ. 11*

*Նոյն միջոցներին, Ներսէսի բացակայութեան ժամանակ, թագաւորը շինում է Արշակաւանը, Հայր Մարդպետի դրդմամբ կոտորել է տալիս նախարարներին, որոնց մէջ եւ Կամսարականներին: Ապա պատմւում է, թէ ինչպէս Ներսէսի անէծքով աւերւում է Արշակաւանը, եւ Շաւասպ Արծրունին սպանում է Հայր Մարդպետին: Այս վերջին դրուագով եւս այս պատու-*

մը կապւում է Տիրանի ճիւղի հետ, որ սկսւում է Բուզանդ Գ. 18 գլխով. «Յաղագս Հայր Մարդպետի, որ տայր կոտորել զազգս նախարարացն», որոց թւում եւ Արծրունիներին:

Մի առանձին պատում է «Արշակ եւ Փառանձեմ», որի մէջ պատմուել է Գնէլի սպանումն, Արշակի ամուսնանալը Փառանձեմի հետ եւ Փառանձեմի ու իր հայր Անդովկի կատարած դերը Շապուհի ու Արշակի յարաբերութիւնների ժամանակ:

Ապա մի առանձին վէպ է, բազմաթիւ միջադէպերով, նաեւ Երեսնամեայ պատերազմը, որի հետեւանքը լինում է Արշակի, Վասակի եւ Փառանձեմի եղերական վախճանը եւ Հայաստանի աւերումը: Յետոյ գալիս է վրէժխնդրութեան պատերազմը:

Հայոց թագաւորութեան ժառանգը, Պապը, որ յոյների մօտ պատանդ էր, Վասակի որդի Մուշեղի ջանքով գալիս է իր հօր երկրին թագաւորելու յոյների օգնութեամբ: Երկու յոյն զօրավար նրա հետ են՝ 600 բիւր, որ է վեց միլիոն զօրքով: Մուշեղ սպարապետն եւս ժողովում է Հայոց զօրքը եւ ինքը մենակ սպանում պարսից երկու զօրավարներին, իրենց զօրքերով, եւ «մինչեւ ի բուն ի սահմանսն ի Գանձակ Ատրպատականի զերկիրն յիւր վըտարեալ ունէր»: Շապուհ թագաւորն անձամբ գալիս է հայերի վրայ եւ բանակ դնում Թաւրիզում: Մուշեղն ընկնում է նրա բանակի վրայ եւ կոտորում: Շապուհը միաձի փախչում է իր բանակն ու գանձերը եւ կանանց թողնելով Մուշեղի ձեռին, որ մեծ ազնուութեամբ է վարւում գերուած կանանց հետ: Մուշեղին ամբաստանում են Հայոց թագաւորի մօտ, թէ արձակեց թշնամի թագաւորի կանանց: Պապի սրտի մէջ կասկած է ընկնում դէպի Մուշեղը:

Կրկին անգամ կռուի է գալիս Շապուհ արքան: Այս անգամ Պապը չի ուզում, որ Մուշեղը կռիւ մտնի, ասելով.— Բարեկամ է Մուշեղն թագաւորին Պարսից եւ այժմ էլ «ի պարսիկս խօսի»: Նա կասկածում է Մուշեղի վրայ, որովհետեւ կռուի նախընթաց գիշերը Մեհրուժանից, պարսից բանակից, պատգամաւորներ էին եկել Մուշեղին: Բայց միջնորդում է Ներսէսը, եւ Մուշեղը երդուելով՝ գնում է կռիւ, յաղթում պարսիկներին, միայն Աղուանից Ուռնայր թագաւորին, թէպէտ եւ կարող էր նրան սպանել, չի սպանում, այլ արձակում է: Դարձեալ ամբաստանում են Մուշեղին, թէ նա թշնամի թագաւորին արձակում է եւ թէ Հայոց թագաւորին սպանել է ուզում: Մուշեղն արդարանում է: Նորից յարձակւում է Շապուհը. բայց Մուշեղը եւ յոյները դարձեալ յաղթում են, եւ պատերազմը դադարում է:

Այնուհետեւ գալիս է ապստամբ իշխանների պատիժը, որոնք Արշակի ժամանակ պարսից կողմն էին անցել: Ամենից առաջ պատժւում է, նոյն իսկ կռիւների ընթացքում, Հայր Մարդպետը, որ Փառանձեմ թագուհուն անպատուել էր. տեղը նշանակւում է Դղակ անունով մէկը: Սա Հայոց թագաւորին դաւաճանել է ուզում, բայց բռնւում, նոյնպէս պատժւում է: Ապա կարգով պատժւում են եւ միւս ապստամբները, որոնց թւում եւ Աղձնիքի բդեշխը, որ իշխանների մէջ ամենից առաջ ապստամբողն է եղել: Եւ այս-

պէս Մուշեղը փառաւորուած՝ վարում է իր սպարապետութիւնը: Սակայն երկար չի տեւում Մուշեղի փառքը: Պապ թագաւորը դաւաճանութեամբ սպանւում է յոյներից. իշխանները ոչինչ չեն անում. թագաւորում է Վարազդատը, որ «մանուկ բանսերթուկ» է: Բատ Սահառունին, Վարազդատի դայեակը, ամբաստանում է Մուշեղին նրա չգործած հին մեղքով, եւ դաւաճանութեամբ ընթրիքի ժամանակ սպանել տալով Մուշեղին եւ ինքն առնում սպարապետութիւնը: Այսպէս չար հատուցումն է լինում Մուշեղին «ի վերայ բազում վաստակոց»:

5. Մանուէլի ճիւղը: — *Մանուէլն իր եղբօր հետ ազատւում է պարսից գերութիւնից. Բատից խլում է սպարապետութիւնը. կռւով հալածում Վարազդատին, սպանում է Բատին՝ իր եղբօր վրէժն առնելով: Որովհետեւ իր արարքները յոյներին հակառակ էին, ուստի նա սկզբում բարեկամանում է պարսիկների հետ, բայց յետոյ Մեհրուժանի քսութեամբ կռւում է պարսիկ Սուրէնի զօրքերին, որով եւ կռիւ է սկսւում հայերի ու պարսիկների մէջ: Երեք անգամ յարձակւում են պարսիկները, բայց միշտ յաղթըւում են: Սպանւում է վերջապէս դաւաճան Մեհրուժանը եւ վերջ է դրւում Պարսից պատերազմին: Մանուէլը՝ թագաւորեցնելով Պապի որդի Արշակին՝ եօթ տարի փառքով իշխում է եւ խաղաղութեամբ մեռնում:*

## ՁԱՅՆԱՐԿՈՒՆԵՐ, ԳՈՒՍԱՆՆԵՐ ԵՒ ՎԻՊԱՍԱՆՆԵՐ

1. Լացի ու կոծի երգեր: — *Տեսնենք նախ, թէ որո՛նք են այն սկզբնական տարրերը, որոնցից օգտուել են վիպասանները մեծ վէպերի համար, ինչպէս են՝ «Վիպասանք», «Պարսից պատերազմ»: Առաջին կարեւոր տարրը, որ ծագել է կոնկրէտ դէպքերի ազդեցութեան տակ, դա «լալեաց բանաստեղծութիւնն» է, որ յօրինում եւ ասում էին մեռելների յուղարկաւորութեան կոծն անելիս ողբասաց կանայք: Սրանք կոչւում էին* ձայնարկու, *անշուշտ, մեռելների վրայ ճչալու համար: Հնումն նշանաւոր մարդկանց, թագաւորների ու զօրավարների, թաղումը կատարւում էր մեծ բազմութեամբ եւ մեծ հանդէսով: Այդ ժամանակ առանձնապէս սաստիկ էին ողբում մեռելին: Կանայք ու տղամարդիկ յուղարկաւորութեանը մասնակցում էին լալով, երգելով ու նուագելով եւ ծափ տալով, դէմ ու դէմ պարելով ու կաքաւելով: Նրանք երեսներն ու բազուկները ցտում, պատառում էին (Բուզ., Ե. 31), ինչպէս մի 20 – 25 տարի առաջ մեզնում մահմեդականներն անում էին իրենց յայտնի կրօնական տօնի օրը հանդէսը կատարելիս: Վիպական Արտաշէս թագաւորի թաղման ժամանակ «շուրջ զգերեզմանաւն լինէին կամաւոր մահունք». «ամբոխութիւնք մեռան ի մահուանն Արտաշիսի, սիրելի կանայք եւ հարճք եւ մտերիմ ծառայք» (Խոր., Բ. 4): Այդ մահերը, հարկաւ, «կամաւոր» չեն եղել: Մեծն Ներսէսի օրով, 4-րդ դարում, Աշտիշատի եկեղեցական ժողովով արգելւում է մեռելի կոծը. «Մի՛... անյուսութեամբ ի վերայ գնացելոցն ոճիրս գործիցեն լալեացն կոծոյն, դառնակութիւնս աշխարին դնելոյ» (Բուզ., Դ. 4): Եւ իբր այս կաթողիկոսի օրով «Ոչ*

*որ խիթէր անյուսութեամբ... լալ զմեռեալն. եւ ոչ կոծ որ դնէր կամ աշխարանս մեռելոյն եւ ոչ ձայնս որ արկանէր ի վերայ մեռելոյն» (Բուզ., Ե. 31)։ Յետոյ, սակայն, կոծը միշտ էլ կատարուել է։*

*Կոծի մասին շատ տեղեկութիւններ ունենք «Պարսից պատերազմ» վէպից, որ ընդարձակ չափերով անդրադարձրել է ֆէոդալական կեանքը 3—5-րդ դարերում։ Նոյն կեանքի երեւոյթներից մէկն է եղել նաեւ մեռելների կոծն ու լալիքը, որ գալիս է շատ աւելի հին դարերից։ Մեր այդ հերոսական վէպի բովանդակութիւնից իմանում ենք, որ կոծեր են կատարել նշանաւոր վիպական անձերի համար։ Այսպէս՝ մեծ կոծ է լինում մարտի մէջ ընկած Վաչէ զօրավարի համար։ Ինքը Խոսրով թագաւորը եւ բոլոր զօրքը («ազատախումբ բանակ նախարարակոյտ զօրացն») «բազում անձկայրեաց տրտմութեամբ եւ արտասուական ողբովք եւ ծանրաթախիծ հեծով, մեծաւ կոծովք եւ անհնարին աշխարանօք պաշարեալք, զգնացելոցն կարիս մնացելոցն համարեալ՝ սգային». «լինէր ամենայն աշխարհին սուգ անհնարին»։ Նոյնպէս՝ երբ մեռնում է «քաջարանցն, աշխարհաշէնն Խոսրով, թագաւորն Հայոց Մեծաց, ժողովեալ, աշխար եղեալ, լացին ամենայն սահմանք աշխարհաց գաւառաց Հայոց Մեծաց. եւ տարան առ իւր նախնիսն յԱնին յԵկեղեաց գաւառն Դարանաղեաց» (Բուզ., Գ. 11)։ Հասկանալի է, որ ամբողջ երկրով անցնող եւ օրեր տեւող այսպիսի յուղարկաւորութիւնների ժամանակ՝ բնահիւս ձայնարկուները պիտի երգէին ու վիպէին քաջարանց թագաւորի կեանքից ոչ թէ անպատրաստից, այլ առաջուց պատրաստուած։ Տիրան թագաւորի գերուելու վրէժն առնելուց յետոյ՝ ժողվւում են նախարարներն ու իշխանները, «գործակալք եւ զօրագլուխք, պետք եւ ամենայն աշխարհաժողովք բազմութեանն եկելոց կուտելոցն», թէպէտ եւ թագաւորը չէր մեռած, բայց «կոծ եղեալ աշխարանօք լային զիւրեանց բնակ(ան) տէրն զարքայն Հայոց» (Բուզ., Գ. 20)։ Այսպէս կոծեր յիշւում են եւ ուրիշ հերոսների համար։*

*Որովհետեւ լաց ու կոծը երգով ու նուագով էին անում, հետեւաբար կոծի համար երգեր են յօրինուել եւ տարածուել։ Դրանք ժամանակի միակ պատմական յիշատակարաններն են եղել կամ, ճիշտ ասած, նոյն դերն են կատարել, ինչ որ մեր ժամանակ լրագիրները կատարում են՝ լուր տալով եղած դէպքերի համար եւ մահարան (նեկրոլոգ) գրելով նշանաւոր անձերի մահուան առիթով։ Եւ ուրիշ կերպ էլ մտածել կարելի չէ մի ժողովրդի համար, որ գիր ու գրականութիւնից զուրկ էր։ Այդ ձայնարկուների երգը եւ նրա հետ կապուած զրոյցը եղել են վէպի սկզբնական աղբիւրները, վէպի տարերքը, որոնցից հետագայում օգտուել են վիպասաններն իրենց ստեղծագործութեան ժամանակ։*

*Թէ ի՛նչպէս էին պատահած դէպքերի անմիջական ազդեցութեան տակ կոծի միջոցին յօրինում եւ տարածում այդ պատմական երկերը, այդ էլ իմանում ենք «Պարսից պատերազմ» վէպից։ Այստեղ մանրամասն նկարագրուած է Գնէլի կոծը և նրա մասին «լալեաց բանաստեղծութիւնը» (Բուզ., Դ. 15)։ Գնէլը, Արշակ թագաւորի եղբօրորդին, ամուսնանում է Սիւնիքի*

*իշխանի դուստրի, գեղեցկուհի Փառանձեմի հետ: Սրան սիրահարւում է Թագաւորի միւս եղբօրորդի Տիրիթն եւս: Նա, որպէսզի Փառանձեմին ինքն առնի, քսութեամբ գրգռում է Արշակին Գնէլի դէմ, մինչեւ որ Արշակը սպանել է տալիս Գնէլին: Ապա վէպի մէջ նկարագրուած է, թէ ինչպէս Արշակ Թագաւորի հրամանով կատարւում է Գնէլի կոծը.*

Ապա հրամաՑ եղեւ յարքայէՑ.
«ԱմեՑայՑ մարդիկՑ որ իցեՑ ի բաՑակիՑ,
Մեծ եւ փոքր առ հասարակ,
Մի՛ ոք իշխեսցէ չերթալ.
Այլ ամեՑայՑ ոք առ հասարակ
ԵրթիցեՑ դիցեՑ աշխար կոծոց,
Եւ լացցեՑ զԳՑէլ մեծ սեպուհՑ ԱրշակուՑի,
ՁսպաՑեալՑ»:
Իսկ իՑքՑ թագաւորՑ զՑացեալ ի լալիսՑ,
Նստեալ լայր զեղբօրորդիՑ իւր,
Զոր իՑքՑ եսպաՑ:
Երթեալ Ցստէր մօտ առ դիՑ,
Լայր իՑքՑ, եւ տայր հրամաՑ՝
Կոծ մեծ եւ աշխար դՑել
Շուրջ զսպաՑեալով դիակամբՑ:
Իսկ կիՑՑ սպաՑելոյՑ ՓառաՑձեմՑ,
ՁհաՑդերձՑ պատառեալ, զգէս արձակեալ,
Մերկատիտ ի մէջ աշխարաՑիՑ կոծէր.
ՁայՑ արկաՑելով ՑչէՑ,
Ողբս արտասուաց յադիողորմ զուժի
Առ հասարակ զամեՑեսեաՑ լացուցաՑէր:

*Տիրիթը, որ սիրահարուած լինելով Փառանձեմին, սպանել էր տուել Գնէլին, հէնց այդ սաստիկ կոծի ժամանակ չի համբերում եւ Փառանձեմին յայտնում է իր սէրը:*

Պատգամ յղէր առ կիՑ մեռելոյՑ, ասէ՝
Զի «Մի՛ կարի զաՑձՑ քո աշխատ առՑեր այդչափ,
Զի այր բարի եմ ես քաՑ զՑա.
Ես սիրեցի զքեզ,
ՎասՑ այսորիկ մատՑեցի զՑա ի մահ,
Զի զքեզ առից իՑձ կՑութեաՑ»:
Արդ միՑչդեռ կոծ մոլութեաՑ զդիակամբՑ ջայլէիՑ,
Զայսպիսի պատգամս առաքէր ՏիրիթՑ:
Բողոք բառՑայր, թէ՝ «Լուարուք ամեՑեքեաՑ,
Զի մահ առՑ իմոյ վասՑ իմ եղեւ.

Զի որ ինձ ակն եդ՝ վասն իմ զայրն իմ ետ սպանանել»:
Ձիերն փետէր, ճչէր ընդ կոծելն:
Այս իբրեւ մեծ իրքն համարձակ յայտնեցան
Ի լսելիս ամենեցուն,
Եւ ի ձայնարկուքն ամենայն,
Եղեւ նա մայր ողբոցն,
Եւ ձայնարկուքն ամենայն
Ի ձայն ողբոցն սկսան նուագել՝
*Զիրսն տրփանացն Տիրիթայ,*
*Զակն դնելն, զքսութիւնն,*
*Զհնարս մահու նիւթել, զսպանումն.*
Զայնիւքն մրմնջոցն ի վերայ սպանելոյն
Ի մէջ կոծոյն բարբառէին
Գեղգեղեալ խանդաղատութեամբ:
Ի նուանել իւրեանց ձայնիցն՝
Իրքն յայտնեալ հռչակ հարկանէր:

*Բուզ.*, Դ. 16

*Հետաքրքիրն այն է, որ այս հատուածից իմանում ենք, թէ ինչպէս* Գնէլի սպանման վէպը *հէնց նրա յուղարկաւորութեան կոծի ժամանակ է յօրինւում, երգւում եւ տարածւում: Այդ այնպիսի ժամանակ էր, որ մի սերունդ էլ պէտք չէր որ անցնէր՝ պատմական երգեր ու զրոյցներ յօրինելու եւ տարածելու համար: Վիպական պատմական երգերն, ուրեմն, մասամբ ծագած են հէնց կոծի երգերից, «լալեաց բանաստեղծութիւնից», այն էլ վիպուած եղելութիւններից անմիջապէս կամ քիչ յետոյ: Դրանք, այդ երգերն անմիջական բանաստեղծական յիշողութիւններ են կատարուած դէպքերի: Դրանց հետ միաժամանակ եւ պատմուել են եղելութիւնները, և* երգ ու զրոյց *միասին են ծագել:*

*Կոծի համար, անշուշտ, եղել են նաեւ հնաւանդ երգեր, ընդհանուր բնաւորութեամբ, որոնք կրկնւում էին կոծերի ժամանակ: Այս ընդունելն անհրաժեշտ է, քանի որ եղել են արհեստով ողբասաց կանայք: Նրանք, ինչպէս վերեւում յիշուեց, կոչւում էին «ձայնարկուք», այլեւ «ձայնարկու կուսանք սեւազգեստք եւ աշխարող կանայք», որոնցից մէկը լինում էր «եղերամայր» կամ «մայր ողբոց» (տե՛ս նաեւ Խոր. Բ. 60): Գրիգոր Նարեկացին 10-րդ դարում այդ ողբասացներին կոչում է «բանահիւս [=բանաստեղծ] կանայք լալականք»(1): Մեռելի լացն ու կոծը («լալիք կոծոյ»), մեռելի կենսագրութիւնից առնուած բանահիւսութեամբ, այնքան մեծ դեր է կատարել հնումը, որ յարատեւել է մինչև մեր օրերը: Մեր ժամանակներում անգամ «լալկան կանայք», յաճախ առանձին վարձատրութեամբ, հրաւիրուել են մեռելատուն եւ մեռելի ողբն արել բայաթիներ ասելով: Նոյնիսկ*

(1) Մ. Աբեղեան, Հին գուսանական ժողովրդային երգեր, Երեւան, 1931, էջ 160 և հտ.:

*վարձկան գուսանները շատ տեղերում կատարել են եւ դեռ կատարում են ողբասացների այդ հին դերը*(1)։ *Նրանք ասում էին աւանդական երգեր, յարմարեցնելով դրանք նոր մեռելի վրայ, կամ թէ նոր երգեր էին յօրինում մեռելի կեանքից՝ անելու համար նրա «գովքն», ինչպէս եւ կոչւում է այդ երգը։*

*Պէտք չէ կարծել, թէ մեռելի կեանքից առած բոլոր երգերը ձայնարկուներն անպատրաստից էին ասել։ Այլ ինչպէս կոծի հանդէսի համար առաջուց պատրաստութիւն էին տեսնում, նոյնպէս եւ նրանք կարող էին նախապատրաստել իրենց «լալեաց բանաստեղծութիւնը», մանաւանդ նշանաւոր մեռելների համար, ինչպէս են թագաւորներն ու զօրավարները։ Այդպիսի բանաստեղծութեան մէջ արդէն՝ իրական պատմութիւնն առնւում էր ոչ միշտ ճշգրիտ հարազատութեամբ, այլ դա յօրինւում էր որոշ լուսաբանութեամբ, քանի որ մեռելի «գովքն» էին անում, ուստի պէտք է ամէն ինչ ծաղկեցնէին։*

*Թէ ի՞նչպէս են եղել այդ երգերը, մենք այդ չգիտենք։ Դրանցից ոչ մէկը չի հասել մեզ։ Գրիգոր Նարեկացու վկայութեամբ՝ այդ երգերը յօրինուելիս են եղել հայրենի չափով։ Դրանք անպայման փոքր երգեր են եղել, կէս քնարական ու կէս վիպական, նման մեր ժամանակի լացի երգերին, ինչպէս են 19-րդ դարի լացի անտունիները*(2), *որոնք նոյն հայրենի չափով են եւ գալիս են մեծ մասամբ հին ժամանակներից ի վեր։ Երկատող տներով կամ բէյթերով յօրինուածքն այնքան յատուկ է եղել այդ կարգի երգերին, որ «բայաթի» (=բէյթէր, տներ) բառը ստացել է նաեւ «մեռելի ողբի երգ» նշանակութիւնը, մինչդեռ այդ բառով անուանւում են առհասարակ երկտող տներից — բէյթերից կազմուած փոքր երգերը, ինչպէս են մեր արդի ժողովրդական քառեակները։*

2. Գուսանների սկզբնական պատմական երգեր։— *Երկրորդ եւ աւելի կարեւոր տարրը, աղբիւրները վէպի համար եղել են գուսանների վիպական երգերը, պատմական երգերը, որ ասուել են ամենահին ժամանակներից ի վեր ազնուականութեան խնճոյքների, ուրախութեան ժողովքների, գինարբուքների ժամանակ։ Հայ ազնուականութեան գլխաւոր պարապմունքը, երբ նա պատերազմ չի ունեցել, եղել է որսի հետ եւ խնճոյքը։ Գուսանների երգով ու նուագով կատարուած ուրախութիւնները նոյնպէս մտնում են վէպի մէջ։ Պապ թագաւորին սպանում են խնճոյքի ժամանակ, երբ նա «նայէր ընդ պէս պէս ամբոխ գուսանացն» (Բուզ., Ե. 32)։ Խնճոյքի ժամանակ են սպանում եւ Մուշեղ սպարապետին (Բուզ., Ե. 35)։ Եւ վերջապէս Արշակ թագաւորն ինքնասպան է լինում, երբ Դրաստամատն «ուրախ առնէր զնա գուսանօք» (Բուզ. Ե. 7)։*

*Բացի ուրախութեան, որ է՝ գինու եւ սիրու երգերից, գուսանները*

---

(1) Բիւրակն, 1899, էջ 803, «Երգը», յօդուած Մուշեղ վարդ.ի։

(2) Տես՝ Մ. Աբեղեան, Գուսանական ժողովրդական տաղեր, Երեւան, 1940, էջ 251 եւ հտն.։ Այլեւ էջ 19։

*խնջոյքների ժամանակ երգել են նաեւ հին վիպական երգերը, հին «երգք առասպելաց»(1)․ Նրանք միաժամանակ ե՛ւ յօրինել, ե՛ւ ասել են ոչ միայն ուրախութեան, այլ նաեւ պատմական երգեր, ինչպէս եւ ուրիշ վիպական երգեր ու վէպեր։ Մեր պատմական յիշատակարանների մէջ շատ քիչ վկայութիւններ ենք գտնում այն մասին, որ գուսանները պատմական երգեր յօրինած լինեն կատարուած դէպքերի անմիջական ազդեցութեամբ, ինչպէս եղել են ձայնարկուների կոծի երգերը։ Այս նկատմամբ մի շատ կարեւոր վկայութիւն ունենք Մ․ Խորենացուց «Պարսից պատերազմի» գլխաւոր հերոսներից մէկի, Արշակի մասին։ Նա պատմելով թէ այս թագաւորը չի պատասխանում Հռոմայեցոց կայսրի թղթին, աւելացնում է․ «Նշկահեալ արհամարհեաց զնոսա [=հռոմայեցիներին]․ Նա եւ ոչ զհետ Տիգրանայ միտեցաւ ամենայն սրտիւ, այլ անձնահաճ եղեալ՝ պարծելով հանապազ ի գինարբուս, եւ յերգս վարձակաց քաջ եւ արի երեւեալ քան զԱքիլլեւս, իսկ արդեամբք Թերսիտեայ նմանեալ կաղի եւ սրագլխոյ» (Խոր․ Գ․ 19)(2)։ «Ինքնահաճ դարձած Արշակը միշտ պարծենկոտութիւն էր անում գինարբուքների ժամանակ, եւ վարձակների (կին գուսանների) երգերի մէջ նա քաջ եւ արի էր հանդիսանում Աքիլլէսից աւելի, բայց իր գործերով նմանում էր կաղ եւ սրագլուխ Թերսիտէսին»։ Կը նշանակէ՝ գուսաններն Արշակի վրայ յօրինած են եղել երգեր, որոնց մէջ թագաւորը գովւում էր իբրեւ քաջ եւ արի, որ եւ երգում էին գինարբուքների ժամանակ թագաւորի իրեն ներկայութեամբ։ Այդ գուսանները եղել են պալատական երգիչներ, որոնք անպայման յաճախ եւ թագաւորի պատուէրով են բանահիւսել։ Երգիչներ ունեցել են նաեւ նախարարները։ Տրդատ Բագրատունու վէպի մէջ (Խոր․ Բ․ 63) յիշւում է Սիւնիքի Բակուր Նահապետի Նազինիկ վարձակը, որ «երգէր ձեռամբ» ի պատիւ Տրդատին տրուած ընթրիքի ժամանակ։ Այդ պրոֆեսիոնալ պալատական գուսանները երգել ու պատմել են ոչ միայն իրենց մեկենասների համար, այլեւ երգել են հէնց նրանց իրենց, նրանց գործերը, փառաբանելով նրանց իբրեւ քաջարի հերոսների։ Դրա համար գուսանները ծաղկեցնում, մեծացնում էին հովանաւորողների արարքները, հարկաւ, հիմնուելով գլխաւորապէս իրենց տեսածների ու լսածների վրայ։ Այդպիսի գուսանական երգերից, իբրեւ սկզբնական աղբիւրից, ծագում է «Պարսից պատերազմ» վէպի մի որոշ մասը, ըստ երեւոյթին, առանձնապէս Փ․ Բուզանդի «Հայոց Պատմութեան» այն բազմաթիւ մանր գլուխները, որոնց մէջ միանման կերպով պատմւում են Արշակի ու Վասակի յաղթութիւնները։ Թէ ինչպիսի ձեւով են յօրինուած եղել այդ սկզբնական պատմական երգերը, մենք այդ չգիտենք։ Այդ տարրական երգերից էլ բացի*

---

(1) Մանրամասնութիւնները տես՝ Մ․ Աբեղեան, Հին գուսանական ժողովրդական երգեր, Երեւան, 1931, էջ 173 եւ հտն․։ (Արտատպ․ Պետ․ Համալսարանի «Տեղեկագիր», No No 2 — 3, 4, 6)։

(2) Տպագրուածի մէջ «վարձակաց» բառից յետոյ դրուած է միջակէտ, որ չպիտի լինի․ իսկ «գինարբուս» բառից յետոյ չի դրուած ստորակէտ, որ պիտի լինի։ Տե՛ս Մ․ Աբեղեանի նեոֆեւում յիշուած «Վիպ․ երգեր» յօդուածի մէջ՝ էջ 51 եւ հտ․։

ոչինչ չի մնացել: Դրանց ձեւի մասին գաղափար կարելի է կազմել նոյն տեսակի մի քանի ուրիշ պատմական երգերից, որոնք մնացել են հետագայ դարերից, որոնց եւ կը դառնանք յետոյ:

Գուսանները, ինչպէս վէպից տեսնում ենք, իրենց երգերի մէջ, հիմնուելով աւանդութեան ու զրոյցների վրայ, ներշնչուելով անպայման եւ հին կոծերի ու վիպական երգերից, փառաբանում էին նաեւ իրենց հերոսների նախնիքներին, նրանց տոհմի հին մարդկանց: Այդպէս է եղել ֆէոդալական շրջանում ամէնուր: Ակնուականի պարծանքի համար մեծ նշանակութիւն է ունեցել իր տոհմի ազնուական ծագումը: Նախնիքների գովեստով փառաւորւում էր գուսաններին հովանաւորող իշխանը: «Պարսից պատերազմ» վէպի մէջ Արշակն ու Մամիկոնեանները պարծենում են իրենց ծագումով: Բացի այդ՝ իրենց տրուած պատուէրը լաւ կատարելու համար՝ երգիչները ոչ միայն բանաստեղծօրէն մշակում էին նոր եղելութիւնները, այլեւ շարունակ վերամշակում եւ յարակցելով աճեցնում էին նախորդ գուսանների երգերը եւ հին աւանդութիւններն ու պատմական զրոյցները, եւ այս ամէնը մի նիւժետիկայով, որ որոշւում էր իշխանների կենցաղով եւ նրանց միտումներով ու շահերով: Այսպիսի վերամշակումը յարակցութեամբ երեւում է մեր վիպական երգերից, որոնց կը դառնանք յետոյ (1): Այսպիսով յօրինուել են աւանդական վէպերը, — լինի «Վիպասանք», թէ «Պարսից պատերազմը», իրենց բազմաթիւ պատումներով ու բազմազան դրուագներով:

Այսպիսի վէպեր յօրինող, ասող ու երգող գուսաններն արդէն կոչւում էին վիպասան: Հին վիպասաններն, ուրեմն, նոյն գուսաններն են, միայն վէպ ասող: Կը նշանակէ՝ գուսանը ե՛ւ ուրախութեան ու սիրու, ե՛ւ կոծի երգիչ է, ե՛ւ վիպասան է, այսինքն պատմութիւն անող, որով վիպասանը դառնում է պատմիչ, միայն ոչ գրաւոր, այլ բերանացի, ինչ որ սկզբնապէս եղել է այդ բառի նշանակութիւնը: Հին վիպասանը ֆէոդալական միջավայրի երգիչ-պատմիչն էր: Դրա համար եւ վիպասանների բանահիւսութեան մէջ լայն չափերով անդրադարձած ենք գտնում մեր ֆէոդալիզմը:

## ՖԷՈԴԱԼԱԿԱՆ ՄԻՋԱՎԱՅՐԸ

1· Երեք դասերը· դասակարգային պայքար: — Պատմական յիշատակարանները շատ սակաւ տեղեկութիւններ են տալիս մեզ հայոց պատմութեան այն դարաշրջանի ներքին կեանքի մասին, երբ ստեղծուել եւ ապրել է մեր այս հերոսական վէպը մինչեւ նրա օգտագործումը պատմութեան համար: Բայց վէպն ինքն իբրեւ բանաստեղծութիւն, իբրեւ մի այդպիսի պատմական յիշատակարան, իր մէջ պահում է բազմաթիւ գծեր այդ մասին:

---

(1) Տես՝ Մ· Աբեղեան, «Վիպական երգեր», ՍՍՌՄ Գիտութիւնների Ակադեմիայի Հայկական Ֆիլիալի «Տեղեկագիր», No. No 4-5 , Երեւան, 1940, էջ 45 եւ հտն·:

*Նրա մէջ բեմ է հանուած Փէոդալական հասարակութեան գլխաւորապէս մէկ դասը, ռամիկ ազնուականութիւնն իր պարապմունքներով, որ է որսորդութիւն, խնջոյք, քսութիւններ, խարդաւանքներ, պատերազմ, աւարառութիւն եւ նմանները։ Ազնուականութեան հետ սակաւադէպ հանդէս են գալիս եկեղեցական դասից կաթողիկոսները։ Նրանք հէնց սկզբից, իբրեւ հոգեւորականութեան բարձրագոյն ներկայացուցիչներ, կարեւոր դեր են խաղացել, ուստի եւ մէկ-մէկ մտել են Փէոդալական վէպի մէջ։ Չպէտք է մոռանալ, որ կաթողիկոսներն իրենք ազնուական մեծ տոհմից էին։ Մեծն Ներսէսի մայրը, Բամբիշ անունով, Տիրան թագաւորի քոյրն է եղել, եւ Ներսէսն ինքը, կաթողիկոս ընտրուելուց առաջ, «էր ի վարս զինուորութեան ի գործակալութեան, սիրելի սենեկապետ արքային Արշակայ, հաւատարիմ ի վերայ ամենայն կարգաց կենաց թագաւորութեանն ի ներքոյ եւ արտաքոյ»։ Եւ հոգեւորականներից այդ Ներսէսն է իսկապէս, որ երեւում է վէպի մէջ իբրեւ գործող անձ։*

*Փէոդալական հասարակութեան երրորդ դասը, աշխատաւոր ռամիկը, տնտեսապէս, քաղաքականապէս եւ իրաւապէս կախուած է եղել կալուածատէրերի այս երկու անաշխատ վայելող դասերից։ Նա միշտ մնացած է եղել անուշադիր։ Մեր հին պատմագիրներն էլ մոռացութեան են տուել նրան, գրի առնելով միայն ազնուականների պատերազմներն ու հոգեւորականների գործերը։ Վէպի մէջ շինականները յիշւում են միայն մեծ կռիւների ժամանակ, ինչպէս եւ երկրի ընդհանուր վիճակը տնօրինելու համար հաւաքուած ժողովներում։ Այսպէս, Տիրանի գերուելուց յետոյ, շինականներ կան այն ժողովի մէջ, որով որոշում են պատգամաւորութիւն ուղարկել «առ թագաւորն Յունաց, զի ի նա ձեռս տուեալ՝ ծառայեսցեն նմա հնազանդութեամբ»։ Շինականները, իսկապէս «դասապետք շինականաց», մասնակցում են նաեւ Ներսէսի մօտ հաւաքուած այն ժողովին, որի մէջ ուզում են դադարեցնել երեսնամեայ պատերազմը (Բուզ., Գ. 21, Դ. 51)։ Ազնուականն էլ, որ հողատէր էր, մասնակցութիւն չունէր հողագործական աշխատանքներին։ Նա շինականից միայն տուրք էր առնում։ Նա չէր աշխատում եւ չէր արտադրում եւ չէր էլ կազմակերպում գիւղատնտեսական աշխատանքը։ Ամենաշատը նա շրջում էր գիւղերը, իր կալուածները տեսնելու։*

*Այստեղ չենք տեսնում եւ դասակարգային պայքար, աշխատաւորութեան կռիւն ընդդէմ վերին երկու դասերի։ Վէպն ազնուականութեան բանաստեղծութիւնն է, եւ բնականաբար նրա բանաստեղծները չպիտի հանէին այդ։ Բայց եւ այնպէս Արշակաւանի դրուագի մէջ երեւում է այդ կռուի հետքը։ Բուզանդի բերած փոփոխակի մէջ, սակայն, պատմուածքն ունի ուժեղ կրօնական բնոյթ, փառաւորւում են Խադն ու Ներսէսը։*

Շինեաց իւր արքայն դաստակերտ մի
Ի հովիտն անուանեալ ի Կոգ գաւառի…
Եւ հրամայեաց կարգել քարոզ
Ընդ ամենայն տեղիս աշխարհացն հրապարակին իւրոյ՝

Եւ ամենայն կողմանս գաւառաց իւրոց
Լի առնէր հրամանաւն արքունի,
Զի «Եթէ ոք ումեք ինչ պարտիցի,
Եթէ ոք ուրուք ուստեք ինչ վնասեալ իցէ,
Կամ ոք ումեք ինչ դատ պարտիցի,
Ամենեքեան եկեսցե՛ն ի Դաստակերտն, չինեսցի՛ն:
Եթէ արհւնահան ոք իցէ,
Կամ վնաս ուրուք ումեք արարեալ իցէ,
Կամ զկին ուրուք տարեալ իցէ,
Կամ պարտապան իցէ,
Կամ ոք զուրուք կարասի ունիցի,
Կամ ոք յումեքէ երկիւղած ինչ իցէ,
Եւ եկեսցէ յայն տեղի,
Դատ եւ իրաւունք մի՛ լիցին:
Իսկ եթէ ոք ումեք ինչ պարտիցի,
Եւ որում պարտիցին՝ եկեալ յայն տեղին,
Առանց դատի եւ իրաւանց կալցի՛ն եւ ի դուրս տարցին»:

Իբրեւ ել հրաման յարքայէն,
Ժողովեցան այնուհետեւ յայտնի տեղի՝
Ամենայն զօրք եւ աւազակք,
Արիւնահանք, սպանողք, սուտք եւ մարդելոյզք,
Վնասակարք, գանձահատք, զրկողք, ստադատք,
Զրախօսք, գերփողք, յափշտակողք, ժլատք:

Բազում վնասս վնասս առնէին,
Եւ անդր անկանէին·
Բազում կանայք զարս թողուին,
Եւ անդր անկանէին·
Բազում արք զիւրեանց կանայս թողուին
Եւ զայլոց կանայս առեալ՝ անդր անկանէին·
Բազում ծառայք զիւրեանց տերանց զգանձս ըմբռնեալ,
Փախուցեալ անդր անկանէին.
Բազում աւանդառուք զաւանդս լի,
Զպահեստս բարձեալ՝ անդր անկանէին:
Գերփէի՛ն, աւերէի՛ն զերկիրն ամենայն:
Զի թէպէտ եւ կարի յոյժ բազմացաւ աղաղակն, դատ չկա՛յր·
Եւ իրաւունք ումեք յարքունուստ ոչ ելանէին:
Վասն այսորիկ ամենայն մարդ հառաչելով վայէին,
Եւ ասէին ի հաւանել բանիցն իւրեանց·
Այս բանք քստ այսմ օրինակի պաշտէին,
Առ հասարակ ամենեցուն ասելով
Թէ՝ «Իրաւունք մեռա՛ն,
Եւ վասն այսորիկ ոչ գտանէին.

Այլ բէ է՛ր եւ կորուսեալ էին,
Ուր եւ էր՝ ջանայաք, խնդրէաք, գտանէա՛ք»։
Իսկ տեղին աւանանա՛յր, քաղաքանա՛յր.
Մեծացա՜ւ, բազմացա՜ւ եւ եղից գիովիտն ամենայն։
Ապա տայր հրաման արքայն Արշակ
Դնել զանուն դաստակերտին,
Ցիւրակից անունն Արշակաւան։
Եւ շինեցին եւս անդ ապարանս արքունի։

*Բուզ., Դ. 12*

*Խաղը ոչ մի պայմանով եկեղեցի եւ սեղան չի շինում Արշակաւանում, իսկ Ներսէսը հեռադրայում անիծում է այդ քաղաքը, եւ նրա անէծքից երեք օրուայ մէջ կոտորւում են բոլոր բնակիչները։*

*Խորենացու պատումով, սակայն, Արշակաւանի շինութիւնն ուղղուած է պարզապէս նախարարների շահերի դէմ. «Եւ բազում անգամ բողոքեալ նախարարացն՝ եւ ոչ ինչ լուաւ նոցա Արշակ. մինչեւ առ Շապուհ եւս ու-նել նոցա բողոք»։ Երբ Շապուհի զօրքերը մտնում են Հայաստան, եւ Արշա-կը փախչում է Կովկասի կողմերը, «Նախարարացն Հայոց ժողովեալ՝ դիմե-ցին ի վերայ արքունական ձեռակերտին Արշակաւանի եւ հարին զնա սրով սուսերի յառնէ մինչեւ ցկին, բայց ի տղայոց առնդիացաց. քանզի պառնա-ցեալք էին իւրաքանչիւր ի վերայ ծառայից իւրեանց յանցաւորաց» (Խոր. Գ. 27)։*

*Որ վէպի մէջ Արշակաւանի շինութիւնը բնորոշուած է իբրեւ գողե-րի, աւազակների, մարդասպանների ժողովարան, «ժողով մարդկան մե-ղաւորաց», այդ վերաբերմունքն ու լուսաբանութիւնը միայն բաւական են ցոյց տալու, որ այդ գրոյցը ծագել եւ այդ ձոյնով պատմուել է ընդդիմա-դիր հոգեւորական եւ նախարարական շրջաններում, բայց ունեցել է իր ու-րոյն սոցիալական իմաստը։ Դա զրկուածների, նեղուածների, տառապեալ-ների մասսայական ըմբոստացումն է ճնշողների դէմ։ Թագաւորն իր կռուի մէջ ընդդէմ նախարարների՝ յենուել է ճնշուածների վրայ։ «Բազում ծա-ռայք զիւրեանց տերանց զզանձս ըմբռնեալ, անդր անկանէին». «ծառաներն» այստեղ վասալները չեն, այլ աշխատաւորները։ Սրանց գինուորական ծա-ռայութեան մասին կը տեսնենք քիչ յետոյ։ Ռամիկների մասին էլ ուրիշ յիշատակութիւն չկայ վէպի մէջ։ Գործող անձերը միայն թագաւորներն եւ իշխաններն են, եւ ամէն ինչ, կարծես, միայն թագաւորն է։ Երկիր, հա-սարակ ժողովուրդ, մասսա չկայ։ Մասսան միայն հայ եւ աւելի եւս պար-սիկ զօրքի անթիւ անհամար բազմութիւնն է։*

*Այս բանաստեղծութիւնը եղել է արտադրութիւն ռազմիկ ազնուակա-նութեան, բնականաբար եւ լիովին բաւարարութիւն է տուել միայն այդ դասի, գլխաւորապէս նրա վերին խաւի պահանջներին, անդրադարձնելով իր մէջ նրա կենցաղն ու իդէալները, նրա գաղափարախօսութիւնն ու շահե-րը։ Վիպասաններն արտայայտիչ են դարձել այն դասին, որին ծառայում էին, որից եւ վարձատրւում էին իրենց ասած վէպի համար։ Տեսնենք այդ։*

2. Ազնուականութիւն։ — *Մեր այս վէպի մէջ բաւական ուժեղ կեր-*

պով գծագրուած է փէոդալների կենցաղն ու պատկերը: Այնտեղ ամենից առաջ աչքի է ընկնում այն, որ Թագաւորի հետ կան բազմաթիւ ազնուական տոհմեր, որոնք ունեն հողեր, երբեմն նոյնիսկ «գաւառատէր», «աշխարհատէր», «գաւառակալ» են: Նրանց վրայ է յենուած Թագաւորի իշխանութիւնը, եւ նրանցից շատ բան է կախուած: Պետական եւ հասարակական կարգը հէնց այդ տոհմերով է:

Կարեւոր դէպքում լինում է ժողով, խորհուրդ կա՛մ Թագաւորի մօտ կա՛մ առանց նրան: Բայց դրանով չի սահմանափակւում Թագաւորի իշխանութիւնը: Այլ ընդհակառակն բոլոր տոհմերը ենթարկւում են Թագաւորին: Տոհմի «նահապետ» լինում էր տոհմի մէջ աւագը, տարիքով մեծը· բայց, ինչպէս երեւում է, այդ էլ Թագաւորի կամքով էր լինում:

Եւ կացոյց արքայն զՎարդան զերէց եղբայրն
ի նահապետութեանն ազգին իւրեանց,
Եւ զՎասակ, զմիջին եղբայրն ,զիւր դայեակն,
ի սպարապետութիւնն զօրավարութեան, յիւրս պատերազմացն·
Սոյնպէս եւ զկրտսերն ի պէտս զօրացն կացուցանէր:
Սոյնպէս եւ զամենայն ազգսն զօրացն,
Մեծամեծացն նահապետացն···
Մեծամեծն յիւրաքանչիւր գահու,
Եւ գործակալքն յիւրաքանչիւր չափու···
Եւ այլ յայսմ ազգաց եւ ի խոնարհ,
Որ գործակալս անուն,
Բարձիւք առաջի արքային,
Պատիւ ի գլուխ բազմէին· —
Թող զնահապետս մեծամեծս եւ զտանուտէրս,
Որք գործակալք միայն էին՝ ինն հարիւր բարձ,
Որ մտանէր ի ժամ տանարին ուրախութեանն,
Բազմակալացն կարգելոց·
Թող զոտնկայս գործակալութեանն սպասու:

Բուզ., Դ. 2

Այս ինն հարիւր թիւն, անշուշտ, վիպական չափազանցութիւն է, ազնուականների թուի մեծութեամբ փառաւոր ցոյց տալու համար «տէրութիւնն Թագաւորութեանն Հայաստան երկրին»:

Վերեւում տեսանք, որ Արշակը Մամիկոնեան տոհմի նահապետ կարգում է Վարդանին: Այսպէս եւ Վարազդատ Թագաւորը, Մուշեղի մահից յետոյ, այդ տոհմի նահապետ է կարգում Վաչէին:

Եւ ազգին Մամիկոնեան տոհմին
Տանուտէր նահապետ կացոյց թագաւորն՝
Վաչէ անուն ի նմին տոհմէ:

Բուզ., Ե. 37

Բայց երբ Վաչէի եղբայրը Մանուէլը գերութիւնից վերադառնում է, նահապետ դառնում է նա:

Քանզի նա էր երէց յազգին…
Եւ վաչէն լինէր երկրորդ:

*Մանուէլն «առանց հրամանի թագաւորին Վարազդատայ յինքն յափշտակեաց զզօրավարութեանն զսպարապետութիւնն. զի այն ինչ որ իւրոց նախնեացն ի բնէն կալեալ էր ի սկզբանէ, զոր արքայն Վարազդատ շնորհ առնէր իւրում դայեկին Բատայ»:*

*Ազնուական տոհմերի նշանաւորութիւնը, «մեծազգեաց» լինելը, ամենակարեւոր բանն էր համարւում: Գահն ու բարձը կապուած էր դրա հետ: Թագաւորի հետ սեղանի նստելիս՝ «նահապետք մեծազգեացք» աւելի բարձր էին նստում: Դրանց պատիւն աւելի մեծ էր: Այդ պատճառով վէպի մէջ շեշտւում է գահի աստիճանը: Դրաստամատի համար ասւում է.*

Եւ բարձ նորա ի վեր քան զամենայն նախարարացն:

*Բուզ., Ե. 7*

*Իսկ Աղձնիքի բդեշխի համար ասւում է.*

Որ էր մի ի չորից, գահերէց,
Բարձերէց տաճարին արքունի:

*Բուզ., Գ. 9*

*Պատուի գաղափարն այս ֆէոդալական շրջանում կապուած էր տոհմի հնութեան, նշանաւոր ծագման հետ: Մանուէլ Մամիկոնեանն ասում է Արշակունի Վարազդատ թագաւորին.*

Նա՛ մեք չեմք իսկ լեալ ձեր ծառայք,
Այլ ընկերք ձեր եւ ի վերոյ քան զձեզ.
Զի մեր նախնիքն լեալ էին
Թագաւորք աշխարհին ճենաց:

*Բուզ., Ե. 37*

*Արշակունի հայ թագաւորն իրեն բարձր էր դասում, քան Սասանեանները: Գերի Արշակ թագաւորը Հայաստանից բերել տուած հող ու ջրի վրայ՝ ասում է Շապուհին.*

«Ի բաց կաց յինէն, ծառա՛յ չարագործ,
Տիրացեալ տերանցն քոց.
Այլ ոչ թողից քեզ եւ որդւոց քոց
Զվրէժ նախնեաց իմոց,
Եւ զմահն Արտեւանայ արքային:
Զի այժմիկ ձեր, ծառայից,
Զմեր, տերանց ձերոց, զբարձ կալեալ է»:

*Բուզ., Դ. 54*

*Ամենամեծ անպատուութիւն էր ծաղումով բարձրին ցած գահի վրայ նստեցնելը: Այդպէս վարւում է Շապուհը գերի Արշակի հետ:*

3. Ամուսնութիւն: — *Ազնուականի կեանքում կարեւոր տեղ է բռնում նրա ամուսնանալը: Այս խնդրում եւս պահւում էր «պատիւը»: Անպատուութիւն էր համարւում աւելի ցած ազնուականի հետ ամուսնանալը, բայց ազնուականները միաժամանակ պահում էին եւ հարճեր: Դրա համար*

*Վիպասանքի ցիկլից մի տիպիկ դրուագ է Տրդատ Բագրատունու ամուսնութիւնը Տիրան Թագաւորի Երանեակ դստեր հետ: Սա ասում է իր մարդուն, որ սրտոտ եւ ուժեղ տղամարդ էր, բայց կարճ հասակով եւ գծուծ տեսքով: «Պչրանօք եւ պռստելով կայր զօրհանապազ (Երանեակ), ասացելով զինքն, իբր թէ չքնաղակերպ ընդ վատակերպոյ եւ քաջատոհմիկ ընդ վատթարազգւոյ բնակէ»: Տրդատը մի օր բարկանալով նրա վրայ՝ սաստիկ ծեծում է նրան, դեղձան մազերը կտրում է եւ սենեակից դուրս ձգել տալիս նրան: Այս զրոյցին միացել է մի ուրիշը: Տրդատը Թագաւորից ապստամբելով գը-նում է ամուր կողմեր: Հասնում է Սիւնիք: Այստեղ Բակուր իշխանը նրան ընթրիքի է հրաւիրում: «Եւ յուրախանալն գինւոյ, տեսեալ Տրդատայ զկին մի, զի յոյժ գեղեցիկ էր եւ երգէր ձեռամբ, որում անուն էր Նազինիկ՝ տըր-փացաւ եւ ասէ ցԲակուր. «Տո՛ւր ինձ զվարձակս զայս»: Եւ նա ասէ. «Ոչ տամ, զի հարճ իմ է»: Իսկ Տրդատայ բուռն հարեալ ի կինն՝ յինքն քարշեալ ի բազմականն, չամբչեալ վաւաշէր ըստ օրինակի երիտասարդի անարգել տարփաւորի: Ընդ որ խանդացեալ Բակրոյ՝ յարեաւ հանել զնա ի նմանէ: Բայց յառն կացեալ Տրդատայ, ծաղկակալ սկտեղն իբրեւ զինու վարեցաւ, նա եւ զբարձակիցսն ի բազմականացն ի բաց պուղեաց... Եւ այնպէս յիւր վանսն եկեալ, իսկոյն ի ձի ելեալ՝ հանդերձ հարճիւն ի Սպեր գնաց» (Խոր. Բ. 63):*

*Վէպի դարաշրջանում եղել է բազմակնութիւն: Ֆէոդալներն, ինչպէս ասուեց, ունեցել են հարճեր: Բացի այդ՝ վէպի մէջ գտնում ենք հին իշ-խողների իրենց կանանոցը գեղեցիկ «աղջիկ քաշելու» սովորութիւնն եւս, որ մինչեւ մօտ մի դար առաջ բանեցնում էին Երեւանի խաները: Ինչպէս երեւում է, եղել է այդ մասին մի զրոյց ,որ տարբեր փոփոխակներով պատ-մուել է մի Տրդատի վրայ: Խորենացու պատումով դա կցուած է Վիպա-սանքի ցիկլին եւ պատմուել է Տիրան Թագաւորի փեսայ Տրդատ Բագրա-տունու վրայ, որ կռուով ուրիշից խլում է գեղեցիկ Նազինիկին: Իսկ «Պար-սից պատերազմի» պատումով այս զրոյցը վերագրուել է Տիրան Թագա-ւորի պապ Տրդատին (Ագաթ., էջ 78—112): Թագաւորի համար գեղեցիկ աղջիկ են որոնում նրա մարդիկն ամէն կողմ ման գալով: Եւ ահա Վաղար-շապատի հնձաններում գտնում են աղքատ կանայք եւ նրանց մէջ սքանչելի գեղեցիկ Հռիփսիմէին: Նրա գեղեցկութեան համբաւը շուտով հռչակւում է բազմամբոխ հրապարակներում:*

Իսկ ի տեսիլ գեղոյ նորա կուտեալ,
Ցեղեալ զեղեալ խուռն կանանացն կուտակէր.
Նաեւ նախարարք եւ մեծամեծ աւագանւոյն
Ընթացեալք ի տեսանել՝ զմիմեամբք եղանէին:
Նաեւ ազատակոյտն՝ խառնանաղանն ամբոխիւն հանդերձ՝
Զմիմեամբք դիզանէին ի միմեանց վերայ:

*Թագաւորը լսելով կոյսի գեղեցկութեան մասին՝ հրամայում է նրան*

*արքունիք բերել: Իսկոյն սպասաւորները ոսկեպատ գահաւորակներ, ազնիւ ու գեղեցիկ հանդերձներ եւ զարդարանքներ են տանում նրան, որ զարդարուի եւ չքով ու պատուով մտնի քաղաքը եւ ներկայանայ Թագաւորին: Ծըքաղիր լինելու համար գնում են նրան բերելու նաեւ նախարարներն ու աւագանին: Բայց նա չի ուզում գալ: Այն ժամանակ Թագաւորն ասում է.*

Փոխանակ զի ոչ կամեցաւ
Գալ պատուով, շքեղութեամբ, կամօք,
Բռնաբար ածցեն մինչեւ յապարանս.
Եւ մուծցեն զնա ի սենեակ արքունի:

*Սպասաւորները կատարում են Թագաւորի հրամանը: Տրդատն էլ գալիս է նոյն սենեակը:*

Արդ՝ իբրեւ եկն եմուտ նա [=Տրդատ] ի ներքս,
Առ հասարակ մարդիկն,
Ոմանք արտաքոյ ապարանիցն,
Կէսքն ի փողոցս ի ներքսագոյնսն,
Առ հասարակ երգս առեալ բարբառեցան,
Կայթիւք վազելով՝ ցուց բարձեալ մարդկանն:
Կէսքն ի բերդամիջին,
Եւ կէսք զքաղաքամէջն լցին խնճոյիւք.
Առ հասարակ համարէին
Հարսանեացն զպարսն պարել
Եւ զկաքաւսն յորդորել:

*Մինչդեռ Տրդատի ու Նազինիկի զրոյցին սկզբից միացել է Երանեակի մասը, Տրդատի ու Հռիփսիմէի զրոյցին յարակցուել է տղայի եւ աղջկայ մենամարտը: Դա մի հին վիպական գիծ է, անդրադարձումն հին բարքի, որ մինչեւ 19-րդ դարի վերջերը դեռ իբրեւ վերապրուկ մնում էր Արեւմըտեան Հայաստանի եւ Փոքր Ասիայի լեռնաբնակ այլազգիների մէջ: Կտրճուհին ամուսնանում էր միայն այն կտրճի հետ, որից կը յաղթուէր ինքը մենամարտի մէջ: Այս միեւնոյն մենամարտը գտնում ենք Մուշ[եղ]ի ու «Աղջիկ Տարունի» եւ Դաւթի ու Խանդութի համար պատմուած: Նոյնն է նաեւ Տրդատի ու Հռիփսիմէի մենամարտը: Երբ Հռիփսիմէին մտցնում են արքունի սենեակը, Թագաւորն էլ մտնում է այնտեղ. «Բուռն հարկանէր ընդմանէն կատարել զկամս ցանկութեանն»: Իսկ աղջիկը զօրացած՝*

Գազանաբար ոգորեալ, առնաբար մարտնչէր:
Իբրեւ յերեք ժամուց սկսեալ
Մարտնչել մինչեւ ի տասն ժամն,
Պարտեալ լինէր թագաւորն:

*Մի անգամ որ մենամարտի մէջ յաղթում է աղջիկը, ամուսնութիւնն էլ գլուխ չի գալիս, եւ նա թողնում է ասպարանքը: Նրան սպանում են իբրեւ թագաւորի հրամանը չկատարողի:*

Իսկ թագաւորն թողեալ
Զիւր ամօթն կորանաց···
Եւ զայն ոչ էր եղեալ ի մտի,
Զամօթն նախատանացն,
Այլ ի տեսիլ սիրոյ նորա ջեռեալ,
Տրտմեալ ընդ մահ աղջկանն,
Տխրացեալ սգանայր···
Վասն սճանչելոյն Հռիփսիմեայ,
Որոյ ոչ գոյր համեմատ յերկրի ի ծնունդս կանանց:
«Վասն զի սիրտ հարեալ զինէ անհնարին,
Եւ անմոռաց ի մտացս չանկանի,
Մինչ կենդանի եմ ես Տրդատ արքայ»···
Եւ իջեալ նստէր ի վերայ գետնոյ,
Եւ լայր եւ ի սուգ մտանէր:

*Այս վիպական պատմուածքին տրուած է չափազանց կրօնական բնաւորութիւն եւ առաջ է բերուած մի քրիստոնէական վկայաբանութիւն: Հռիփսիմէն իբր իր կուսութիւնը պահելու համար՝ չի ուզում ամուսնանալ ոչ Հռոմի կայսրի եւ ոչ Հայոց թագաւորի հետ, եւ դրա համար նահատակւում են նաեւ իր ընկերները: Վաղարշապատում նստած հռոմէական կայազօրի հետ, անշուշտ, եղել են հռոմայեցի կանայք, որոնց մէջ եւ կարող էին քրիստոնեաներ լինել: Այդ կանանցից մէկը կամ միւսը կարող էր 3-րդ դարում նահատակուած լինել քրիստոնէութեան համար: Այդ պէտք է ընդունել, քանի որ 5-րդ դարի սկզբներից արդէն Վաղարշապատում յայտնի են եղել նրանց վկայարանները: Այդ քրիստոնէական աւանդութիւնը յարակցուել է Տրդատի համար սաստող զրոյցին եւ զարդարուած է վկայաբանական ձեւերով: Բայց երբ կրօնական միտումները դուրս են ձգւում, մնում է միայն մի վիպական բանահիւսութիւն՝ ամուսնութեան կամ «աղջիկ քաշելու» մասին:*

*Վէպի մէջ առհասարակ սիրուած վիպական սիւժետներից մէկն է ամուսնութիւնը, ուստի դա մի քանի ուրիշ փոփոխակներով եւս պատմուած է եւ «Պարսից պատերազմի» մէջ: Այսպէս մի առանձին պատում է եղել Գնէլի սպանուելը իր կին Փառանձեմի պատճառով, եւ ապա Արշակի ամուսնանալն այդ կնոջ հետ: Այս Փառանձեմի վէպի մէջ իսկական վիպական մանրամասնութեամբ երեւան են գալիս ներքին պալատական քսութիւններն ու խարդաւանքները կանանց եւ ազգականների մէջ. յիշւում են եւ, այսպէս ասած, քաղաքական ամուսնութիւններ, որոնք կատարւում են որեւէ քաղաքական հաշւով: Շապուհն ուզում է իր դուստրը տալ Արշակին կնութեան, եւ այդ առիթ է դառնում պալատական խնդիրներին. Փառան-*

*ձեմի Հայր Անդովկն, Փառանձեմի պատճառով, այնպէս է անում, որ Արշակն իր բանակով փախչում է Շապուհի մօտից: Իսկական քաղաքական ամուսնութիւն է եղել Արշակի առնելն Ոլիմպիային. բայց վէպի մէջ դրան տրուած է ներքին կանանոցային բնոյթ Փառանձեմի խարդաւանքով: Կանանց մասը խառն է եւ ուրիշ դէպքերում: Վասակի եղբայր Վարդանի սպանման պատճառն է նաեւ միեւնոյն Փառանձեմը, որ Գնէլի մահուան վրէժն է առնում նրանից:*

4. Որսորդութիւն եւ ձի:— *Մեծ տեղ է բռնել ազնուականի կենցաղի մէջ որսորդութիւնը, որի մասին եւ յաճախ պատմւում է վէպի մէջ հէնց սկզբից: Մամգոնը որսի ժամանակ սպանում է Սլկունիների նահապետին եւ տիրանում նրա ամրոցին: Վիպասանքի մէջ Սանատրուկն սպանւում է որսի ժամանակ: Տրդատը Հոփսիմէի սպանուելուց յետոյ որսի է ելնում: Սիրուած մոտիւ է որսի անտառ տնկելը: Վիպասանքի մէջ Երուանդը տնկել է տալիս Ծննդոց անտառը (Խոր., Բ. 41), «Պարսից պատերազմի» մէջ Խոսրով Կոտակը՝ Խոսրովակերտ անտառը (Բուզ., Գ. 8), եւ վերջապէս նոյնը գտնում ենք եւ «Սասնայ Ծռերի» մէջ: Նման անտառ եղել է նաեւ Շահապիվանի եւ Բագաւանի մօտ. Գնէլին Արշակի հրամանով գլխատում են այնտեղ, «մօտ յորմածս արգելոցացն որսոյն էրէոցն» (Բուզ., Դ. 15): Խորենացու մէջ (Գ. 23) մի տարբեր փոփոխակ է պատմուած Գնէլի սպանման մասին, որ կապուած է դարձեալ որսի սարի եւ որսորդութեան հետ:*

*Հիւրերին որսով եւ խնջոյքով («բազմականք») պատուելն ազնուականի կենցաղային գծերից մէկն է: Տիրան Թագաւորն այդպէս պատւում է իր մօտ եկող պարսիկ Վարազ Շապուհին:*

Եւ մինչ չեւ նա եկեալ էր,
Խորհէր արքայն ընդ իւր ծառայսն ներքինիսն,
Սպասաւորսն իւրում սենեկի, ասէ.
«Արժան է մեզ, այր որ գայ առ մեզ՝
Զբօսուցանել եւ ուրախ առնել որսովք եւ բազմականօք,
Եւ ամենայն պէս պէս վայելչութեամբք:
Այլ ոչ եթէ այնչափ ինչ արժան է
Զմեծ ինչ որսոյ տեղիս
Ի մերում երկրի աստ նմա տեսանել՝
Վասն չարակնութեան, յաչաղանաց, չարաբարութեան,
Նենգութեանն ազգին պարսկաց:
Այլ նմանեցուցէք տեղիս դոյզնագիւտ որսոց ինչ,
Որով լոկ զբօսուցուք զնա,
Եւ մի՛ որսացուք զառատ ինչ որսոց զտեղիս,
Եւ զի մի՛ մեծ ինչ նախճիրս որսոց
Կոտորեալ առ ի ցոյցս առնելոյ»:

*Բուզ.*, Գ. 20

*Որսի եւ պատերազմի հետ կապուած էր լաւ ձի եւ լաւ զէնքեր ունենալու փափագը: «Պարսից պատերազմի» մէջ առանձնապէս երեւում է ձին իբրեւ պարգեւի առարկայ: Գովւում են Տիրան Թագաւորի ձիերը, որ Խորենացին ըստ իր պատումի (Բ. 62) դնում է Վիպասանքի ցիկլի մէջ, համարելով Տիրանին վիպական Արտաշէսի որդին. «Որսոց եւ զբօսանաց պարապեալ, որպէս ասեն: Եւ ձիոց երկուց լեալ՝ թեթեւ առաւել քան զՊիգասոս, երագութեամբ անբաւ. զորս ոչ երկրակոխս, այլ օդագնացս համարէին. յոր խնդրեալ հեծանել Դատաքէի ուրումն իշխանի Բզնունեաց՝ պարծէր ընչեղագոյն գոլ քան զարքայ»: «Պարսից պատերազմի» մէջ Տիրան Թագաւորի ձին այսպէս է գովւում.*

Զայնու ժամանակաւ ձի մի էր,
Երիվար արքային Տիրանայ,
Զորմէ կարի զարմանային:
Եւ էր ձին գունով ճարտուկ ճանճկէն:
Սա լի էր քաջութեամբ,
Անուանի եւ հոյակապ,
Մեծ եւ բարձր, երկայն քան զամենայն ձիս,
Եւ տեսանելով քան զայլս գեղեցիկ, զանազան,
Որ համեմատ նմա այլ ոչ գտանէր:
Զորմէ յերթալն իւրոյ դեսպանութեանն՝
Սենեկապետն արքային Փիսակ մատնեաց զձին Վարազայ,
Վասն զի բարեկամացեալ էր ընդ նմա:
Եւ ի նմանէն ինքն թուղթ առեալ,
Բերեալ մատուցանէր արքային Հայոց:
Զորմէ չհաւանեալ, տալ ոչ առնոյր յանձն:
Այլ վասն զի կասկածէր յառնէն,
Զի զոյժ խռովութիւն ինչ
Ի մէջ թագաւորացն երկոցունց արասցէ,
Ի խնդիր անկանէր՝ զնոյն գոյն ձի,
Զնոյն նշան, զնոյն պատկեր, բաց ի մեծութենէ,—
Զի այնչափ ուրեք ոչ գտանէր,—
Զնոյն նման, զնոյն կերպարանս ճարտուկ ճանճկէն գտեալ,
Եւ հանդերձ հրովարտակօք եւ պատարագօք
Ի ձեռն մոլեկան Փիսակայն
Առ իշխանն յԱտրպատական, առ Վարազն արձակէր:
Եւ միտս դնելով խորհուրդ առնէր,
Զի «Ասասցես, ասէ,
Եթէ այս ինքն է զոր խնդրեցերն.
Զի առ սէր ոչ խնայեաց ի քէն»:

*Բուզ.*, *Գ.* 20

5․ Զինուորական ծառայութիւն:— *Զին կարեւոր տեղ էր բռնում, որովհետեւ զօրքը ձիաւոր էր, հեծելազօր․*

Հանդէս առնէր Վասակ,
Սպարապետն ամենայն զօրաց Հայոց,
Եւ գտան հեծելազօր, սպառազէնք,
Կուռ վառեալք, նիզակաւորք,
Համակ վաթսուն բիւր,
Միահիւրք, միաքան, միամիտք:

*Բուզ․*, *Դ․* 21

Ապա Մուշեղ, որդի Վասակայ,
Ստրատելատն Հայոց Մեծաց,
Ընդրեաց իւր արս ընտիրս միամիտս, ազատս,
Ազգայինս քառասուն հազար, միաքանս, միականս,
Եւ կազմեաց զնոսա ձիով եւ թոշակաւ եւ զինու:

*Բուզ․*, *Ե․* 2

*Բոլոր ազնուականներն անխտիր կատարում էին զինուորական ծառայութիւն եւ կազմում էին երկրի զօրքը: Ուստի, «Մեծամեծք, նահապետք ազգաց ազգաց, տոհմաց տոհմաց, գնդից եւ դրօշուց տեարք, ամենայն սատրապք, նախարարք եւ ազատք, պետք եւ իշխանք, զօրավարք եւ սահմանապահք», որոնք Թագաւորի մօտ ժողովուած են խորհրդի համար, բոլորը միասին մի բառով կոչւում են «զօրք» (Բուզ․, Դ․ 3): Վէպի զարգացման դարաշրջանում Հայաստանում մնում էին եւ այլազգի զօրքեր, հռոմէական կայազօր, օղնական գնդեր, ուստի եւ վերեւում բերած կտորի մէջ ասուած է «ազգայինս»: Խոսրով Մեծի վէպի մէջ եւս ասւում է «նախարարք հայակոյտ զօրացն», որ է հայերից հաւաքուած զօրքը: Յիշւում է «ազատախումբ բանակ նախարարակոյտ զօրացն» (Բուզ․, Գ․ 11), որ չպիտի հասկանալ «նախարարներից ժողովուած», այլ «նախարարների ժողոված ազատախումբ բանակը»: Ռամիկներն եւս կատարել են զինուորական ծառայութիւն: Տիրանի պերուելու դրուագի մէջ ասւում է, թէ նրա մօտ չեն եղել՝ «զօրավարքն… մեծամեծք նախարարացն, եւ աւագ տանուտէրք ազատանին․ սոյնպէս եւ զօրքն արքունի… եւ ոչ գունդ եւ այրեւձի»: Թագաւորը մնացել է եղել «սակաւ սպասաւորօք հանդերձ… եւ* խառնաղանջ խոռանապահ զօրուն, եւ ռամիկսպաս զօրօքն» (*Գ․* 20): *Դրանք՝ այդ «խառնաղանջ», այսինքն՝ ռամկական, «ռամիկսպաս զօրքն», ռամիկներից, շինականներից են կազմուած եղել:*

6․ Աւարառութիւն:— *«Զօրքն», այսինքն զինուած ազնուականութիւնը, իր զէնքը գործադրում էր պատերազմի մէջ արտաքին թշնամիների դէմ: Իսկ այդ պատերազմը լինում է կա՛մ երկրի պաշտպանութեան համար, կա՛մ աւարառութեան: Ամէն յաղթական արշաւանքից յետոյ եւս յիշ–*

*ւում է աւարի շատութիւնը. բայց կան յատուկ ասպատակութեան դրուագներ եւս: Աւարառութեան սկզբունքը, ըստ ժամանակի աշխարհայեացքի, բացատրւում է մի դրուագի մէջ, որ ուժեղ նկարագիր է հիւսիսային ազգերի յաճախակի ասպատակութիւնների Հայաստանում: Այդ բացատրութիւնն, արդարեւ, կապուած է Վրթանէսի որդի Գրիգորի զրոյցի հետ եւ Բուզանդի կողմից եւս թանձրացրած կրօնական գոյնով է բերուած, բայց դրա էութիւնն ամբողջապէս այն ժամանակի ֆէոդալական «ազատախումբ» զօրքի կեանքի իղձային է եղել — կողոպտել ուրիշներին եւ դրանով հարստանալ, յղփանալ: Յիշեալ Գրիգորը քարոզչութիւն է անում հիւսիսային կողմերում:*

Եհաս նա մինչեւ ի ճամբար բանակին
Արշակունւոյ արքային Մազքթաց,
Որոյ անուն իւր Սանեսան կոչէր:
Քանզի եւ նոցա եւ Հայոց թագաւորացն
Մի ազգաւորութիւն էր տոհմին բնութեան:
Եւ երթեալ յանդիման լինէր թագաւորին Մազքթաց,
Իշխանին բազմութեան զօրացն Հոնաց:

*Նրանք սկզբում ընդունում են Գրիգորի քարոզները, բայց յետոյ մերժում են նրան, երբ իմանում են, որ նոր կրօնի Աստուծու համար «ատելի է՝ աւարառութիւն եւ յափշտակութիւն, սպանութիւն, ագահութիւն, այլազրկութիւն, զայլոցկերութիւն, ցանկութիւն այլոց ստացուածոց»:*

Ապա այսպիսի իմն իրօք իբրեւ լուան,
Զայրացան ընդ բանս նորա եւ ասեն.
«Զի ոչ յափշտակեսցուք,
Զի ոչ աւարեսցուք,
Զի ոչ առցուք զայլոց,
Ի՞ւ կեցցուք այսչափ անչափ զօրաց բազմութիւնք»:
Եւ թէպէտ բիւրաւոր բանիւք բարեօք
Կամէր հանել զմիտս նոցա,
Ոչինչ կամէին ունկնդիր լինել,
Այլ ասէին զմիմեանս.
«Եկեալ այսպիսի բանիւք կամի
Ի քաջութենէ որսոյն կենաց մերոց խափանել զմեզ:
Իսկ եթէ սմա լուիցուք... ի՞ւ կեցցուք,
Զի ոչ յերիվար հեծցուք
Ըստ բնութեան օրինաց սովորութեանց մերոց:
Այլ, ասէին, այս խորհուրդ Հայոց թագաւորին է,
Զսա յղել առ մեզ, զի այսու ուսմամբ խափանեսցէ
Զմեր արշաւանս ասպատակութեան հինի յաշխարհէն իւրմէ:
Այլ եկա՛յք զսա պակասեցուսցուք ի միջոյ,

Եւ մեք ի Հայս արշաւեսցուք,
Աւարաւ զմեր աշխարհս լցցուք»:

*Բուզ., Գ. 6*

*Եւ ապա պատմում է նրանց ահաւոր ապստամբութիւնը Հայաստանում եւ չարաչար ջարդուելը* (Գ. 7):

## ՏԷՐ ԵՒ ԾԱՌԱՅ

1. Հաւատարմութիւն եւ դաւաճանութիւն: — *Մեր երկրորդ հին վէպը իր վրայ կրում է ֆէոդալական միջավայրի մի քանի ուրիշ կողմերի դրոշմն եւս: Նրա մէջ զօրեղ կերպով շեշտուած է իշխող դասակարգի վերին խաւի գաղափարախօսութիւնը: Ֆէոդալական շրջանում, ինչպէս յայտնի է, թագաւորը «տէր» էր, իսկ ազնուականները՝ «ծառայ»: Վերջինները պարտաւոր էին թագաւորի համար զանազան պարտքեր կատարել, առանձնապէս զինուորական ծառայութիւն: Ամենամեծ առաքինութիւնն էր ծառաների հաւատարմութիւնն իրենց տիրոջը: Դաւաճանութիւնը ենթակայ էր անարգանքի ու պատժի: Թագաւորներն ամէն կերպ աշխատում էին այդ գաղափարը զարգացնել իրենց վասալների մէջ: Եւ հէնց նրանք իրենք էլ շահագրգռուած էին դրանով. զի ազնուականութեան հիերարխիայի մէջ նրանցից էլ կախուած կային ուրիշները: Քրիստոնէական եկեղեցին էլ սրբագործել էր այդ դրութիւնն իբրեւ աստուածային պատուիրան. «ծառայից հնազանդ կալ տերանց իւրեանց». զի եկեղեցականներն էլ, նոյնիսկ գիւղական քահանաները, մի-մի «տէրեր» էին: Նրանք օգտւում էին դաւաճանների պատժուելուց: Այդպիսիների հողերը, եթէ արքունիք չէին գրաււում, տրւում էին հաւատարիմներին, որոնց թւում եւ եկեղեցուն (Բուզ., Գ. 4): Վէպի մէջ հէնց սկզբից կան հաւատարիմ ու դաւաճան ծառաների տիպիկ արտայայտութեան շատ դրուագներ, որոնց մէջ պատմւում են տուեալ ֆէոդալական շրջանի համար յատուկ յարաբերութիւններ: Ազնուականները հաւատարմութեամբ եւ քաջութեամբ ծառայում են թագաւորներին, որովհետեւ սրանք իրենց համար աշխատողներին վարձատրում են հողերով: Այսպէս, օրինակ, վերեւում յիշուած Մաղքութիւններին ջարդող եւ երկիրն այդ ապստամբներից մաքրող իշխաններին թագաւորը տալիս է կալուածներ:*

Ապա ետ հրաման թագաւորն Հայոց խոսրով,
Տալ պարգեւս արանցն քաջացն որ վաստակեցին նմա,
Եւ փոխանակեցին զանձինս իւրեանց
Փոխանակ աշխարհին Հայոց Մեծաց,
Յամենայն ի մարտ ճակատուցն պատերազմաց:
Եւ ետ Վաչէի զօրավարի զականս Զանջանակին,

Եւ զՋրաբաշխիս, զՑլու գլուխ,
Ամենայն զաւառակօքն հանդերձ:
Նոյնպէս եւ այլոց նախարարացն մեծամեծ պարգեւս:

*Բուզ., Գ. 8*

*Պապ Թագաւորն էլ Մուշեղին է նույնպես վարձատրում իր ռազմական քաջագործությունների համար.*

Բազում պարգեւս, եւ պատիւս, եւ բազում գիւղեան
Զօրավարին Մուշեղի Պապն շնորհէր:

*Բուզ., Ե. 4*

*Երբ երեսնամյա պատերազմից յոգնած նախարարները լքում են Արշակին, խորհրդի ժամանակ Ներսէսն ասում է նրանց, որ նրանք իբրեւ ծառաներ հնազանդ մնան Թագավորին.*

Զի ամենեքեան դուք աւադիկ կայք եւ վկայէք,
Մանաւանդ զի ամենեքեան դուք
Կեցեալ էք յազգէդ Արշակունոյ.
Ոմանք ի ձեռնէ պատուասեալք լեալք ի նոցանէն,
Եւ ոմանք մեծամեծք աշխարհաց,
Ոմանք աւագ աւագ աւանաց,
Գեղից եւ զանձուց տեարք լեալ էք,
Եւ պէսպէս դաստակերտացն:

*Բուզ., Դ. 51*

*Մամիկոնեան հերոսները վէպի իդէալական անձերն են, Թագաւորի եւ առհասարակ Արշակունիների հաւատարիմ ծառաները: Բայց նրանց մէջ եւս վիպասաններն անդրադարձրել են իրական կեանքի պատկերը: Նրանք էլ Թագաւորին ծառայում են իրենց շահերի համար: Թագաւորները պարտական են նրանց «կեանս առնել ընդ վաստակոցն» (Բուզ., Ե. 37): Բնական է, որ հակառակն լինի, Թագաւորը նրանց շահերի դէմ գնայ, այն ժամանակ հզօր Մամիկոնեանը պատրաստ է հեռանալու Թագաւորից եւ նոյնիսկ Թոյլ Արշակունի Թագաւորին պատերազմով դուրս քշելու երկրից: Բայց քանի որ սպարապետները վէպի իդէալական անձերն են հաւատարմութեան նկատմամբ, այդպիսի արարքն արդարացւում է այսպէս.*

Նա՛ դու չես իսկ Արշակունի,
Այլ ի պոռնկութենէ եղեալ ես որդի.
Վասն այդորիկ ոչ ծանեար զվաստակաւորսն Արշակունեաց...
Այլ զի դու քանզի չես Արշակունի,
Գնա յաշխարհէս, եւ մի՛ մեռանիր ի ձեռաց իմոց:

*Բուզ., Ե. 37*

*Այսպիսի պատգամ է ուղարկում Մանուէլ սպարապետը Վարազդատ Թագաւորին, որ սպանել էր տալ Մանուէլի եղբայր Մուշեղին: Բայց նոյնիսկ այսպիսի դէպքում էլ, երբ Մամիկոնեանի շահն ընդհարւում է Թագա-*

*ւորի չահի հետ, նա անարգում է միայն այն անձին, որի հետ պատերազմում է, եւ ոչ ընդհանրապէս Արշակունիներին, որոնց նա հաւատարիմ ծառայ է:*

*Եթէ մի կողմից տեսնում ենք, որ Թագաւորները վարձատրում են իրենց հաւատարիմ վասալներին, միւս կողմից՝ կան դրուագներ, որոնց մէջ պարզ երեւում է Արշակունի Թագաւորների աբսոլուտիստական միտումը եւ ընդհանրապէս ձգտումն իրենց ապահովելու: Վախենալով դաւաճանութիւնից՝ Խոսրով Կոտակն օրէնք է դնում, որ «մեծամեծ աւագանին, նախարարքն աշխարհակալքն, աշխարհատեարքն, որ էին բիւրաւորքն եւ հազարաւորքն, կայցեն առ արքային, եւ ընդ նմա շրջեսցին, եւ մի ոք երթիցէ ի նոցանէ ընդ զօրս արքունի» (Բուզ., Գ. 8): Թագաւորները գործադրում են եւ կտրուկ միջոցներ: Նրանք ապստամբներին եւ առհասարակ մեծերին, ամէն առթից օգտուելով, անխնայ կոտորել են տալիս եւ նոյնիսկ նրանց տոհմերը բնաջինջ անում: Եւ այդ երեւում է վէպի բոլոր ճիւղերում եւս: Այսպէս՝ վիպական Տրդատը Ճենացի Մամիկոնի ձեռով կոտորել է տալիս իրենից ապստամբած Սլկունիներին եւ նրանց կալուածը տալիս է իր հաւատարիմ Մամիկոնին: Նոյնը մի քանի փոփոխակներով յարակցուած է եւ Խոսրով Կոտակի վէպին:*

Ապստամբեաց յարքայէն Հայոց
Մի ի ծառայից նորա,
Մեծ իշխանն Աղձնեաց,
Որ անուանեալ կոչէր բդեշխն,
Որ էր մի ի չորից,
Գահերէց, բարձերէց տաճարին արքունի:
Ետ ձեռս յարքայն Պարսից,
Եւ մատնեաց զարքունին տունն, որ յեց յինքն էր:
Եւ էած զօրս արքային Պարսից ի թիկունս իւր,
Եւ հատաւ յերկրէն յիշխանութենէն Հայոց,
Եւ տայր պատերազմ ընդ արքային Հայոց՝
Ուժով Պարսից թագաւորութեանն,
Եւ սաստկանայր մարտ պատերազմին:

*Թագաւորն ուղարկում է նրանց դէմ մի քանի իշխանների, իր հաւատարիմ, վէպի բառերով՝ «բարեկիր ծառաներին»; որոնք յաղթում եւ կոտորում են բոլոր պարսիկներին: Նրանք սպանում են եւ ապստամբին իր եղբայրներով ու որդիներով հանդերձ, բացի մի նորածին աղջկանից, որին Թագաւորը կնութեան է տալիս իր սիրելի Վաղինակ Սիւնի իշխանին, սրան տալով եւ Աղձնեաց տունը:*

Եւ արար զնա բդեաշխ
Եւ պսակազատ տան նորուն:
Ժառանգն բազմացաւ:
Եւ հանդերձ աշխարհաւն,

Եւ ամենայն ուժովն,
Կայր բդեաշխն Վաղինակ
Ի ծառայութեան արքային հանապազ:

*Բուզ., Գ. 9*

*Մի ուրիշ դրուագի մէջ (Բուզ., Գ. 8) Բզնունի իշխանը, որին Թագաւորը զօրքով ուղարկել էր պարսիկների յարձակման դէմն առնելու, դաւաճանում, անցնում է թշնամու կողմը: Նա իր զօրքերը կոտորել է տալիս եւ պատրաստւում յարձակուելու Թագաւորի վրայ: Բայց սրա հաւատարիմները յաղթում են նրան եւ բռնում, բերում են Թագաւորի առաջ քարկոծում «իբրեւ զայր, որ աշխարհի եւ գնդի եւ զօրաց տեառն իւրոյ դաւաճան լեալ իցէ»: Կոտորում, բնաջինջ են անում եւ նրա տոհմը:*

*Երկու տոհմեր, մեծ նախարարներ, պատերազմում են միմեանց հետ «առանց իրաւանց»: Թագաւորը նրանց հաշտեցնել է ուզում, բայց նրանք անարգում են Թագաւորին.*

Եւ առնուին աւերէին զտունն արքունի:
Եւ զայրացեալք խստութեամբ,
Հալածեալ տային ընդ միմեանս մարտ պատերազմի:
Այս մեծ ցասմամբք եւ բազում սրտմտութեամբ,
Արձակեաց թագաւորն ի վերայ նոցա
Զվաչէ որդի Արտաւազդայ,
Զնահապետ Մամիկոնեան տոհմին,
Ցազգէ սպարապետութեան Հայոց,
Զմեծ զօրավար զօրաց իւրոց,
Սատակել, կորուսանել զազգն երկոսեան:

*Բուզ., Գ. 4*

*Վաչէն երկու տոհմն էլ կոտորում է.*

Եւ ոչ թողոյր զերկոցունց տոհմացն
Զորձ կորիւն եւ ոչ զմի:

*Այս միեւնոյն ձգտումը Թագաւորների կողմից՝ գտնում ենք եւ Տիրանի ու Արշակի վէպերի մէջ: Տիրանը Հայր Մարդպետի գրգռելով, քսութեամբ, կոտորել է տալիս Ռշտունի եւ Արծրունի տոհմերը. Արշակը նոյնն անում է Կամսարականների վերաբերմամբ: Պապ Թագաւորն էլ սպանել է տալիս Հայր Մարդպետներին:*

*Այդ բազմաթիւ դրուագները միեւնոյն պատմական սիւժետի բանաստեղծական զարգացումն են: Դրանց մէջ կայ այն ընդհանուրը, որ Փէոդալը որեւէ պատճառով ոչնչացնում է իր վասալին եւ նրա կալուածների համար այս կամ այն կարգադրութիւնն է անում: Որ այդպիսի դրուագներ շատ կան, դրա պատճառն այն է, որ կեանքի մէջ յաճախ կատարուած են եղել, մանաւանդ Խոսրով Փոքր կոչուած Թագաւորի օրով, նման եղելութիւններ, որոնց մասին եւ յօրինուած են եղել զանազան երգեր ու զրոյցներ: Դրանք եւ օգտագործուել են վէպի մէջ: Այդ փոփոխակներից մի քա-*

*նիսը լոկ վիպական բեկորներ են մեզ հասած. բայց այդպիսիների մէջ անգամ պարզւում է ֆէոդալիզմին յատուկ որեւէ բնորոշ գիծ: Դրանք յօրինուած են Արշակունիների կամ այն ազնուական տոհմերի շրջանում, որոնք հաւատարիմ կուսակից էին Արշակունի թագաւորներին: Դրանով պրոպագանդա էր մղւում յօգուտ թագաւորների: Այդ պատճառով եւ վէպի մէջ սկզբից մինչեւ վերջը կարեւոր տեղ է բռնում թագաւորի եւ իր հպատակ նախարարների, կամ տիրոջ եւ ծառայի յարաբերութիւնը: Վէպն սկսւում է հէնց Մամիկ-Կոնակի ապստամբութեամբ իրենց թագաւորից: Ապա ապստամբում է Սլկունի Սզուկը: Նոյն կարգին պատկանում է եւ Արտաշրի ապստամբութիւնն Արտաւանից: Յիշենք նաեւ Մեհրուժանին Արշակի ժամանակ եւ ուրիշներին: Առաջին հին վէպի մէջ եւս, ինչպէս տեսանք, հաւատարիմ ծառայի տիպը զօրեղ կերպով պատկերացրած է յանձին Արտաշէսի դայեակ Սմբատ Բագրատունու:*

2· Բնակ (բնիկ) տէր եւ աշխարհ:— *Արշակունիներին բաւական չէր տիրոջ ու ծառայի եւ տիրոջը հաւատարիմ մնալու գաղափարախօսութիւնը միայն: Այդ վիպական շարաշրջանում կար «արքայն Պարսից» եւ «թագաւորն Յունաց», այսինքն հռոմայեցոց կայսրը: Վէպի մէջ, Տիրանի գերութեան յետոյ, հայ աւագանին պատգամաւորութիւն են ուղարկում կայսրին:*

Զի ի նա ձեռս տուեալ՝
Ծառայեսցեն նմա հնազանդութեամբ,
Եւ լինիցի նա նոցա թիկունք օգնականութեան՝
խնդրել վրէժս ի թշնամեաց նոցա:

*Բուզ.*, Գ. 21

*Թշնամիները պարսիկներն էին, որոնց հետ եւ կռուի մէջ էին հայերը: Պարսից թագաւորն էլ իր կողմից ամէն կերպ, ե՛ւ խոստումներով, ե՛ւ կաշառով, ջանում էր հայոց նախարարներին իր կողմը գրաւել եւ դարձնել իր ծառաները: Եւ կային այնպիսիները, որոնք ենթարկւում էին նրա հրապոյրներին:*

Յայնմ ժամանակի ապստամբեաց յարքայէն Հայոց
Մի ոմն ի նախարարաց մեծամեծացն,
Մեհրուժան անուն Արծրունին:
Եւ չոգաւ եկաց առաջի թագաւորին Պարսից Շապհոյ,
Եւ դնէր ընդ նմա ուխտ երդմամբ,
Զի յաւիտեան ծառայ լիցի նմա:

*Բուզ.*, Դ. 23

*Այսպիսի իշխաններն էլ աշխատում էին, որ Հայոց թագաւորն էլ ենթարկուի Պարսից թագաւորին, այսինքն՝ ընդունի նրա «ծառայութիւնը»: Այսպէս, օրինակ, Պապ թագաւորը դաւաճան Մարդպետ Գղակին իր մօտ քաշելու համար՝ նրան ասել է տալիս, որ չուտ գայ իր մօտ, որովհետեւ նրան պէտք է ուղարկի Պարսից թագաւորի մօտ,*

Զի ես մտից նմա ի ծառայութիւն:

*Բուզ.*, Ե. 6

Այսպիսի դրութեան ժամանակ բաւական չէր հաւատարիմ ծառայի գաղափարը, այլ հարկաւոր էր եւ այն, որ ծառան հաւատարիմ լինէր իր բնիկ տիրոջը, «բնակ տերանց, Արշակունեաց քաջ արանց եւ տան եւ կենաց» (Բուզ., Գ. 11)։

Այս գաղափարն են ահա զարգացրել գուսանները։ Դա թագաւորող հարստութեան հայեացքն է եղել։ Բայց դա միանգամայն եւ հոգեւորականի կարծիքն էր, որ երեւում է վէպի մէջ։ Նոյնը հոգեւորականների ձեռով քարոզել է եւ եկեղեցին, որի շահերն այս դէպքում համապատասխան են եղել թագաւորների շահերին։ Եթէ չլինէր բնիկ տէրը, այն ժամանակ պարսիկները պիտի տիրէին իրենց մոգական կրօնով։ Այդ հանգամանքը շատ լաւ գիտակցել են կաթողիկոսները ոչ միայն 5-րդ, այլ նաեւ 4-րդ դարում։ Եւ այդ հայեացքն եւս մտել է վէպի մէջ, միայն Բուզանդի գրչի տակ չափազանց ընդարձակուած եւ թանձրացած գոյնով։ «Մերժել զբնակ տեարսն ձեր... եւ օտար տերանց ծառայել», — ասում է Ներսէսը նախարարներին, — այդ նոյն է, թէ «եւ նոցին անաստուած կրօնիցն ցանկալ... ծառայել անաստուածն մոգութեան անօրինացն եւ նոցուն պաշտօնէիցն» (Բուզ., Դ. 51, այլեւ Գ. 11)։ Ուստի աշխարհի եւ աշխարհի բնիկ տիրոջ համար մեռնելը՝ նոյն է եւ եկեղեցու համար մեռնել։ Հակառակ վարուողները դաւաճան են եւ ամէն անարգանքի արժանի։ Ահա՛ վիպասանն ինչպիսի լեզուով է բնորոշում իր թագաւորին դաւաճանող Փիսակին.

Արդ մինչ դեռ եւս յոյժ խաղաղութիւն էր
Ի մէջ թագաւորացն երկոցունց,
Անկաւ ի տեառնէ խռովութիւն
Ոչինչ բանիւք, արամբ միով անարգաւ,
Որ ոչինչ պակաս քան զդեւ էր մոլորութեամբ...
Ի ձեռն մոլեկան Փիսակայն...
Եւ այսչափ եւ այսպիսի բանիւք
Գրգռէր զնա Փիսակն անօրէն
Ի վերայ տեառն իւրոյ բնակի...
Ի կատաղախօս, ի շնաբերանն Փիսակայ...
Ի բերանոյ շրիկն շոգմոգն,
Տիրանենգն եւ տիրադրուժն,
Տիրասպանուն, տիրամատնիչն Փիսակայ,
Յայն աշխարհակործոյս յառնէ անտի։

Բուզ., Գ. 20

Չպիտի կարծել, թէ իր տիրոջը՝ Տիրան թագաւորին մատնող սենեկապետին տրուած այդ պարսաւանքը վէպից չի ծագում, այլ Բուզանդ հեղինակից։ Վերջինս բնաւ չի սիրում Տիրանին եւ հէնց նոյն դրուագի մէջ իրենից աւելացրած մասում գրում է... «յանօրէնն Տիրանայ», մինչդեռ վիպասանի համար Տիրանը մի «բնակ տէր», մի սիրելի անձ է. Նախարարները եւ «ամենայն աշխարհաժողովք բազմութեանն»։

Կոծ եղեալ աշխարանօք լային
Զիւրեանց բնակ(ան) տէրն, զարքայն Հայոց.
Սոյնպէս եւ զկորուստ աշխարհին,
Եւ զանձանց անտէրնչութիւն կործանմանն,
Վարանացն, աղիողորմ գործէին:

*Բուզ.*, *Դ.* 20

Անձանց եւ աշխարհի պահ կալցուք,
Եւ զտեառն բնակի վրէժ խնդրեսցուք:

*Բուզ.*, *Դ.* 21

*«Բնակ տիրոջ» հետ յիշւում է եւ «աշխարհը», որ է Հայոց աշխարհը, բայց հայրենասիրութեան գաղափարը բնականաբար դեռ զարգացած չէ: Երեւում են դրա սաղմերը միայն: Սեփական երկրի գաղափարը, սակայն, որի հետ կապուած է հայրենասիրութիւնը, բաւական ուժեղ կերպով չեշտուած է վէպի մէջ անշուշտ այն պատճառով, որ «բնակ տէրերի» տէրութիւնը, ինչպէս միշտ, պայմանաւորուած էր որոշ երկրով, որոշ «տեբիտորիայով»: Չէր կարող լինել «տէրութիւն» — իշխանութիւն առանց «տէրութեան» — իշխանութեան երկրի: «Հայրենիք» բառն եւս մի երկու անգամ գործածուած է: Տրդատ Թագաւորի համար ասուած է.*

Եւ զհայրենեացն տէրութիւնն յինքն նուաճեաց:
Եւ խնդրէր զքէն վրիժուց իւրոց հայրենեացն:

*Ագաթ.*, *էջ* 29, 72

*Այդ «հայրենիք» բառը, սակայն, երկդիմի է. նա կարող է նշանակել նաեւ «հայրեր», «պապեր», «նախնիք»: «Հայրենեաց տէրութիւն», ուրեմն «հայրենական», «հօրենական» տէրութիւն: Իսկ վրէժ «իւրոց հայրենեաց» կարելի է հասկանալ եւ «իր հայրերի» վրէժը, եւ իր «հայրենիքի» վրէժը, այսինքն՝ «հայրենի երկրի», «հայրենեաց տէրութեան»: Այս իմաստով՝ Հայաստանը դառնում է Արշակունիների «հայրենիքը», այսինքն՝ ժառանգաբար ստացած երկիրը, ինչպէս որ նախարարներն էլ ունէին «հայրենի երկիրներ», որ նրանց ժառանգական, տոհմային կալուածներն էին:*

*Հետաքրքիր է Հայաստանի «հայրենի հող ու ջրի» մասին ունեցած հաւատը, որ երեւում է «Պարսից պատերազմի» գեղեցիկ դրուագներից մէկում (Բուզ., Դ. 54): Իր բնիկ երկրի հող ու ջրի վրայ՝ մարդ իրեն զգում է ազատ ու զօրեղ եւ հպարտ: Այսպէս՝ գերի Արշակն անընկճելի է Պարսկաստանում հայ հող ու ջրի վրայ, որով Շապուհը փորձում է նրան: Բերենք այդ բանաստեղծօրէն գրաւիչ դրուագը գրեթէ ամբողջ:*

*«Յաղագս թէ ո՛րպէս զգիւթան եւ զքաւդեայսն հարցեալ Շապհոյ՝ փորձէր զմիտս Արշակայ, եւ տայր զնա յԱնուշ բերդն, եւ կամ զՎասակ սպարապետն Հայոց չարամահ հրամայէր առնել»:*

*Շապուհ արքան Արշակին փորձելու համար աստղագէտների խորհրդով Հայաստանից հող ու ջուր է բերել տալիս.—*

Ապա հրաման տայր թագաւորն Շապուհ
Զկէս յատակին իւրոյ խորանին
Հարկանել ի բերել հողոյն Հայոց,
Եւ զջուրն ցանել ի վերայ նորա․
Եւ զկէսն ի նոյն հողն զիւրոյ բնակութեան երկրին թողուլ:
Եւ ետ ածել զԱրշակ արքայ Հայոց զառաջեւ իւրով,
Եւ զայլ մարդիկն ի բաց հրամայեաց կացուցանել:
Եւ զձեռանէ առեալ՝ շրջէր նեմելով:
Եւ երբեւեկս առեալ ընդ խորանն, ասէ ցնա,
Յորժամ ի պարսիկ ի հողոյն ի վերայ նեմէին՝
Թէ «Ընդէ՞ր եղեր իմ թշնամի, Արշակ արքայ Հայոց․
Զի ես որպէս զորդի սիրեցի զքեզ,
Եւ կամեցայ տալ քեզ զդուստր իմ ի կնութիւն,
Եւ որդի ինձ առնել զքեզ․
Իսկ դու խստացար ընդ իս:
Եւ քովք կամօք, առանց իմոց կամաց,
Եղեր ընդ իս թշնամի․
Եւ այս լի երեսուն ամ է,
Զի պատերազմեցար ընդ իս»:
Ասէ Արշակ արքայ,
Թէ՝ «Մեղայ քեզ եւ յանցեայ․
Զի ես եկի եւ կոտորեցի,
Եւ յաղթեցի թշնամեաց քոց․
Եւ ակն ունէի ի քէն պարգեւ կենաց,
Եւ թշնամիք իմ հրապուրեցին զիս,
Եւ արկին երկիւղուկս ի քէն,
Եւ փախուցին ի քէն:
Եւ երդումն իմ, զոր երդուայ քեզ,
Յառաջ ածին զիս, եւ եկի աւասիկ առաջի քո:
Եւ աւասիկ ծառայ քո ի ձեռս քո կամ,
Զինչ եւ պէտք է քեզ, արա զիս․
Զինչ եւ կամ իցէ, սպան զիս,
Զի ես ծառայ քո առ քեզ
Կարի յանցաւոր եմ, մահապարտ եմ»:
Իսկ Շապուհ արքայ առեալ զձեռանէ նորա,
Շրջէր նեմելով, ի չքմեղս առեալ զնա,
Ածէր ի հայակողմն ի հողն հարեալ յատակն:
Իսկ իբրեւ յայն տեղի հասանէր,
Եւ զհայ զհողն կոխէր,
Մեծամեծս ըմբոստացեալ, հպարտացեալ՝
Այլ ձայն շրջէր, սկսանէր խօսել եւ ասել․
«Ի բա՛ց կաց յինէն,

Ծառա՛յ չարագործ, տիրացեալ տերանցն քոց:
Այլ ոչ թողից (զ)քեզ եւ որդւոց քոց
Զվրէժ նախնեաց իմոց,
Եւ զմահն Արտեւանայ արքայի:
Զի այժմիկ ձե՛ր՝ ծառայից
Զմեր՝ տերանց ձերոց զբարձ կալեալ է.
Բայց ո՛չ թողից,
Եթէ ոչ տեղիդ մեր առ մեզ եկեսցէ»:
    Իսկ դարձեալ առնոյր զձեռանէ,
Դարձեալ տանէր յայն հող Պարսից.
Ապա աշխարէր զաստացեալսն
Խռնարհէր, բուռն հարկանէր զոտից նորա,
Մեծապէս ապաշխարելով զդշմամբ զաստացեալ բանսն:
Իսկ յորժամ առեալ զձեռանէ՝
Զնա տանել ի հայ հողն,
Եւս խստագոյն քան զառաջինսն բարբառէր:
Իսկ դարձեալ միւս անգամ հանէր յայնմ հողոյն,
Բանիւք յապաշխարութիւն դառնայր:
Ցայգուէ եւ երեկոյն այնպէս շատ փորձ փորձեաց զնա.
Զի իբրեւ ի վերայ հարեալ հողոյն տանէր,
Խստացեալ ամբարտաւանէր.
Իսկ ի վերայ բուն գետնոյն յատակին՝
Եւ կայր, ի զղջումն դառնայր:
    Իսկ իբրեւ երեկոյ եղեւ,
Ժամ ընթրեաց թագաւորին Պարսից,
Քանզի սովորութիւն էր Հայոց թագաւորին,
Բազմականն անդէն, ընդ նմին, առ նմա,
Ի նորին տախտին արկանել բազմական,
Օրէնք էին, զի թագաւորն Պարսից եւ թագաւորն Հայոց
Ի միում տախտի բազմէին, ի միում գահոյս:
Իսկ այն օր նախ զտող բազմականացն,
Թագաւորացն, որ անդն էին, զամենեցունց կարգեցին.
Հուսկ յետոյ զկնի ամենեցունց, ի ներքոյ բոլորին,
ԶԱրշակայ բազմականն առնէին,
Ուր զհայ հողն յատակն հարեալ էր:
Նախ ամենեքեան իբրեւ բազմեցան յիւրաքանչիւր չափու,
Ցետոյ ածէին, բազմեցուցանէին զարքայն Արշակ:
Արդ եկաց բազմեալ ուռուցեալ վայր մի,
Իսկ յոտն եկաց, ասէ ցթագաւորն Շապուհ.
«Ի՛մ այդ տեղի, ուր դուդ ես բազմեալ.
Ցոտն կա՛ց այդի, թող ե՛ս այդր բազմեցայց,
Զի տեղի ազգի մերոյ այդ լեալ է:

Ապա եթէ յաշխարհն իմ հասից,
Մեծամեծ վրէժս խնդրեցից ի քէն»։

Ապա տայր հրաման Շապուհ արքայ Պարսից,
Բերել շղթայս եւ արկանել ի պարանոցն Արշակայ,
Եւ յոտս եւ ի ձեռս նորա երկաթս,
Եւ խաղացուցանել զնա ի յԱնդմըշն,
Զոր Անուշ բերդն կոչեն,
Եւ պնդել զնա, մինչեւ անդէն մեռցի։

Եւ եղեւ ի վաղիւ անդր ետ հրաման Շապուհ արքայ,
Ածել զառաջեաւ իւր զՎասակ Մամիկոնեան,
Զզօրավարն, սպարապետն Հայոց Մեծաց։
Սկսաւ պատուհասել զնա։
Քանզի էր Վասակ անձամբ փոքրիկ,
Ասէ ցնա արքայն Պարսից Շապուհ.
«Աղուէս, դո՞ւ էիր խանգարիչ,
Որ այնչափ աշխատ արարեր զմեզ,
Դո՞ւ ես այն, որ կոտորեցեր զԱրիս այնչափ ամս։
Եւ այժմ զիա՞րդ կարես ապրել ի ձեռաց իմոց,
Զմահ աղուեսու սպանից զքեզ»։
Իսկ Վասակ տուեալ պատասխանի, ասէ.
«Այժմ քո տեսեալ զիս անձամբս փոքրիկ,
Եւ սուրն իմ ոչ է ընդ իս,
Ոչ առեր զչափ մեծութեան իմոյ.
Զի ցայժմ ես քեզ առիւծ էի եւ արդ աղուէս։
Բայց մինչ ես Վասակն էի, ես ձեզ սկայ էի.
Մի ոտն ի միոյ լերին կայր,
Եւ միւս ոտն իմ ի միւսոյ լերին կայր.
Յորժամ յաջ ոտն յենուի,
Զաջ լեառն ընդ գետին տանէի.
Յորժամ ի ձախ ոտն յենուի,
Զձախ լեառն ընդ գետին տանէի»։
Ապա հարցանէր թագաւորն Պարսից Շապուհ եւ ասէ.
«Ադէ՛, տուր ինձ գիտել,
Ո՞վ են լերինքն այնոքիկ,
Զորս դու ընդ ունջ տանէիր»։
Եւ ասէ Վասակ.
«Լերինքն երկուք, մի դո՛ւ էիր,
Եւ մի՝ թագաւորն Յունաց։
Այն մինչ տուեալ էր ինձ Աստուծոյ,
Զքե՛զ ընդ գետին տանէի եւ զթագաւորն Յունաց...
Գիտացաք տալ քեզ խրատ,
Մինչեւ մեզէն աչօք բացօք անկաք ի խորխորատ։

Արդ զինչ եւ կամիս՝ արա՛»։
Ապա ետ հրաման թագաւորն Պարսից
Մորթել զզօրավարն Հայոց Վասակ,
Եւ զմորթն հանել եւ լնուլ խոտով,
Եւ տանել ընդ նոյն բերդ յԸնդմըշն որ Անյուշն կոչեն,
Ուր արգելին իսկ զթագաւորն Արշակ։

*Բուզ., Դ. 54*

## ՀԵՐՈՍԱԿԱՆ ԲԱՆԱՍՏԵՂԾՈՒԹԻՒՆ

1· Հերոսների տիրասիրութիւնը։ — *Վէպի կենտրոնական գաղափարն է երկրի պաշտպանութիւնն ի դէմս բնիկ թագաւորական տոհմի։ Այս է վէպի սոցիալական իմաստը։ Իրենց այս քաղաքական գաղափարը տարածելու եւ կուսակիցներ գրաւելու համար՝ Արշակունիներին բաւական չէին բնիկ տիրոջը դրժող դաւաճաններին պարսաւելու եւ պատժելու դրուագները։ Դա բացասական կողմն էր։ Դրա հետ պէտք էր զարգացնել նաեւ դրական կողմը։ Եւ վէպի մէջ տիրադրուժների դրուագներից աւելի շատ կան տիրասիրութեան դրուագներ եւ Փէոդալական տեսակէտով իդէալական հերոսների ուժեղ գծագրուած դէմքեր, որոնք չափազանց նախանձախնդիր են իրենց տիրոջ պատուի ու շահի համար։*

*Արշակ թագաւորը հրաւիրուած է Շապուհի մօտ եւ նրանից մեծ պատիւներ է ստանում, բայց Պարսից թագաւորի ախոռապետը չի մեծարում Արշակին եւ նոյնիսկ անարգում է նրան։ Վասակ զօրավարն այդ չի տանում եւ տեղն ու տեղը սպանում է Պարսից արքայի ախոռապետին։*

Ապա եղեւ դէպ օր մի յաւուրց,
Եկն-եմուտ թագաւորն Հայոց Արշակ՝
Շրջել զասպաստանաւ միով զարքային Պարսից·
Իսկ ախոռապետն արքային Պարսից
Նստէր ի ներքս ի տան ասպաստանին։
Իբրեւ տեսանէր զթագաւորն,
Ոչ ինչ առ լուս կալեալ մեծարեաց զնա,
Եւ ոչ ինչ շուքս դնէր նմա·
Այլ եւ անարգանս եւս դնէր թշնամանաց,
Ասելով ի պարսկերէն լեզու,
Թէ՝ «Այծից Հայոց արքայ,
Եկ նի՛ստ ի խրձան խոտոյ ի վերայ»։
Զոր բանս իբրեւ լսէր սպարապետն,
Զօրավարն Հայոց Մեծաց,
Որում Վասակն կոչէր, ի Մամիկոնեան տոհմէն,
Մեծաւ բարկութեամբ եւ բազում սրտմտութեամբ բարկանայր
Ի վեր առեալ զսուսերն, զոր ընդ մէջն ունէր,

Հարեալ անդէն ի տեղւոջն զախոռապետն արքայն Պարսից՝
Գլխատէր ի ներքս յապարանին անդ:
Զի ոչ կարաց լսել եւ ժոյժ ունել
Զիւրոյ թագաւորին զանարգանս.
Զիւր մահն առաջի եղեալ լաւ հաշուէր բազում անգամ,
Քան զտեսանն իւրոյ լսել զվատթարութեան թշնամանս:
Իբրեւ ի Պարսից աշխարհի էին,
Ցայլոց ի տեղի եւ ի նոցուն հրապարակի,
Աներկիւղ եւ անկասկած յանկարծօրէն
Զայսպիսի զգործ կարաց գործել:
Իսկ թագաւորն Պարսից յորժամ զայս լսէր,
Բազում շնորհ ունէր զօրավարին Վասակայ,
Ընդ քաջասրտութեանն զարմացեալ,
Եւ ընդ բազում աներկիւղութիւնն:
Եւ բազում պարգեւաց եւ պատույ արժանի առնէր,
Զքաջութիւն եւ զտիրասիրութիւնն գովեալ:
Վասն այնր իրաց մեծաւ սիրով սիրէր զնա,
Եւ ըստ արժանի իւրում պատուէր զնա·
Մեծարէր զամենայն աւուրս հաշտութեան
Եւ խաղաղութեանն, որ ի մէջ նոցա էր:
*Բուզ.*, Դ. 16

*Այսպիսի տիրասիրութեան մի յուզիչ պատմուածք է Արշակի ինքնապանութեան դրուագը: Դրաստամատը, Հայոց թագաւորի «ներքինին», «ոստիկան Հաւատարիմ», — որ Անգեղ տան իշխանն է, «եւ բարձ նորա ի վեր քան զամենայն նախարարացն», — Արշակի անկումից յետոյ գերի է Պարսկաստանում: Նա Քուշանների դէմ պատերազմի մէջ մեծ քաջութիւններ գործելով՝ մահից ազատում է թագաւոր Շապուհին:Երբ սա վերադառնում է պատերազմից, մեծ շնորհակալութիւն է անում Դրաստամատին եւ ասում է նրան.*

Եւ ասէր ցնա Շապուհ թագաւորն Պարսից·
«Խնդրեա դու ինչ յինէն·
Զինչ եւ խնդրեսցես, տաց քեզ եւ ոչ արգելից»:
Եւ ասէ Դրաստամատ ցթագաւորն·
«Ինձ ի քէն այլ ինչ ոչ պիտի,
Բայց տուր ինձ հրաման,
Զի երթայց տեսից զբնակ տէրն իմ,
ԶԱրշակ արքայ Հայոց:
Եւ առ մի՛ օր, —
Իբրեւ ես երթայց առ նա, —
Հրաման տուր արձակել զնա ի կապանացն,
Եւ ես իշխեցից լուանալ զգլուխ նորա եւ օծանել,

Եւ ազուցանել նմա պատմութեան,
Եւ արկանել նմա բազմականս,
Եւ դնել առաջի նորա խորտիկս․
Եւ տալ նմա գինի,
Եւ ուրախ առնել զնա արուեստականօքն,
Մի՛ օր նիշդ»։
Եւ ասէ թագաւորն Շապուհ․
«Խիստ են խնդրուածքդ, զոր խնդրեցերդ․
Զի յաւուրց ժամանակաց,
Յորմէ թագաւորութիւնս Պարսից կանգնեալ է,
Եւ բերդն այն Անյուշ բերդ կոչեալ է,
Չիք ոք մարդ եղեալ ի մարդկանէ,
Որ իշխեցեալ է յիշեցուցանել թագաւորաց՝
Զոր յայնմ բերդի եղեալ զոք է թագաւորաց,
Յիշելով զայն մարդ՝ որ յայնմ բերդի զոք եղեալ է,
Թող թէ զնա, զայր թագաւոր եւ զիմ ընկեր,
Կապեալ եղեալ յայնմ բերդի զհակառակորդն։
Քան մինչ աշխատ արարեր զմեզ,
Եւ դու աւադիկ զանձն ի մահ եդիր
Եւ յիշեցուցեր զԱնյուշն,
Որ ոչ էին լեալ երբեք օրէնք
Թագաւորութեանս Արեաց ի սկզբանէ,
Բայց զի վասն՝ քո մեծ վաստակք են առ իս,
Զոր ինչ խնդրեցերն,
Ե՛րթ, տուեալ լիցի քեզ։
Բայց քեզ արժան էր զօգուտ քո անձինդ խնդրել,
Կամ աշխարհս, կամ գաւառս, կամ գանձս։
Բայց յորժամ դու զայդ խնդրեցեր,
Անցեալ լիցիս զօրինօք Արեաց թագաւորութեանս․
Ե՛րթ, տուեալ լիցի քեզ՝
Որ ինչ յինէնս խնդրեցեր փոխանակաց քոց»։
Եւ ետ նմա փուշտիպան մի հաւատարիմ,
Եւ հրովարտակ՝ արքունի մատանեաւն,
Զի գնացեալ երթիցէ նա ի բերդն յԱնդմըշն,
Եւ զիարդ եւ կամք իցէ նորա,
Զոր օրինակ եւ խնդրեացն՝
Արասցէ կապելոյն Արշակայ,
Որ յառաջ թագաւորեալն էր ի Հայս։
Եւ չոգաւ Դրաստամատն հանդերձ փշտիպանաւն
Եւ հրովարտակաւն արքունի յԱնուշ բերդն,
Եւ ետես զտէրն բնակ։
Եւ արձակեաց զԱրշակ ի կապանացն երկաթեաց,

Ի ձեռակապացն եւ յոտիցն երկաթոց
Եւ յանրոց պարանոցէն շղթայիցն սարեացն·
Եւ լուաց զգլուխ նորա,
Եւ լոգացոյց զանձն նորա,
Եւ ագոյց նմա պատմուճան ազնիւ·
Եւ էարկ նմա բազմականս, եւ բազմեցոյց զնա·
Եւ եդ առաջի նորա ընթրիս
Ըստ օրինաց թագաւորաց·
Եւ եդ առաջի նորա գինի,
Որպէս օրէն էր թագաւորացն·
Սթափեաց զնա եւ մխիթարեաց,
Եւ ուրախ առնէր զնա զուսանօք:
Եւ ի ժամ աղանդեր մատուցանելոյ՝
Եդին առաջի նորա միրգ,
Խնձոր եւ վարունգ եւ ամին, զի կերիցէ.
Եւ եդին դանակ նմա,
Որպէս զի հատցէ եւ կերիցէ զիարդ եւ կամեսցի:
Եւ Դրաստամատ մեծապէս ուրախ առնէր զնա·
Կայր յոտն եւ մխիթարէր զնա:
Իսկ յորժամ արբեցաւ,
Եւ գինին եկն զակամբ նորա,
Արբեցաւ, հպարտացաւ եւ ասէ·
«Վա՜յ ինձ, Արշակայ·
Այս ես եւ այս եւ յայսմ չափու,
Եւ այս անցք անցին ընդ իս»:
Եւ զայս ասացեալ՝ զդանակն, զոր ունէր ի ձեռինն,
Որով զմիրգն կամ զամինն կամէր ուտել,
Եհար ի սրտի իւրում·
Եւ անդէն սատակեցաւ,
Եւ մեռաւ անդէն ի նմին ժամուն,
Մինչ դեռ կայր ի բազմականին:
Իսկ յորժամ զայն ետես Դրաստամատն,
Յարձակեցաւ, եհան ի նմանէ զնոյն դանակ,
Եւ եհար յիւրում կշտին·
Եւ անդէն մեռաւ եւ նա՛ ի նմին ժամուն յայնմ:

*Բուզ., Ե. 7*

*Բերենք մի հատուած եւս մի գեղեցիկ դրուագից* (Ե. 5), *որի մէջ փառաբանւում է բոլոր հայ «զօրքի» քաջութիւնն ու տիրասիրութիւնը: Արշակը շղթայուած, բանտարկուած է Անուշ բերդում: Պապը հռոմայեցիների օգնութեամբ մտել է Հայաստան, եւ այնտեղից քշել են պարսիկներին: Բայց Շապուհը նորից յարձակւում է Հայաստանի վրայ: Հռոմէական եւ հայկական զօրքերը պատրաստ են մարտի համար:*

Եւ լինէին խառնուրդք ճակատուն․
Ի պարտութիւն մատնեցան զօրքն Պարսից։
Մանաւանդ գունդք նիզակաւորացն
Ցարձակեալք մոլեգնեալք քաջութեամբ,
Զախոյեանս ի վերուստ յերիվարացն յերկիր կործանէին
Ցանդիման թագաւորին Պարսից Շապհոյ․
Եւ ընդ ընկենուլն խրախոյս բառնային,
Աղաղակելով ամենայն զօրքն,
Պատերազմիկք Հայոց հաւանակ,
Զայս բանս ասելով, եթէ՝ «Ա՛ռ, Արշակ քա՛ջ»։
Զի զամենայն ախոյեանսն,
Զոր ի ճակատուն յայն սպանանէին,
Նմա՛ նուիրէին,
Իւրեանց առաջի թագաւորին Արշակայ․
Զի զամենայն, զոր սպանանէին, ասէին․
«Արշակայ թագաւորին մերոյ զոհ լիջիր»։
Եւ յորժամ Հայոց ազատանոյն ախոյենացն,
Նիզակաւորացն ռազմ արարեալ յարձակեալ,
Զզօրսն Պարսից նիզակաւորքն առեալ ընկենուին,
Ասէին ի խրախուսելն․ «Ա՛ռ, Արշակ քա՛ջ»։
Իսկ յորժամ զենեալ զգլխատէին զախոյեանսն,
Ասէին․ «Արշակայ զոհ լիջիր»։

*Շապուհը պարտում է և փախչում։ Երբ նա հասնում է իր աշխարհը, ասում է․*

«Զարմացեալ եմ ես զոր ինչ տեսի․
Զի իմ ի մանկութենէ իմմէ,
Համակ ի ճակատու եւ ի կռիւ մտեալ եմ,
Եւ բազում ամք են, զի հասնի ի թագաւորութիւն,
Եւ առանց կռուոյ ամ չեմ լեալ․
Բայց իմ ջերմ կռիւ զայս էր տեսեալ,
Որ այս անգամս դիպեցաւ ինձ։
Զի յորժամ Հայոց նիզակաւորքն առաջի կարգէին,
Այսպէս յարձակէին որպէս զլեառն մի բարձր
Եւ կամ որպէս զաշտարակ մի հաստաբեստ, հզօր եւ անշարժ։
Եւ յորժամ մեք զնոսա սակաւ մի շարժէաք,
Նոքա ի լեզէոն Հոռոմոց ապաստան լինէին․
Եւ նոցա զվահանափակսն բացեալ,
Զնոսա իբրեւ ի քաղաքորմ,
Պարսպաւոր, ամրացեալ, ընդունէին։
Եւ անտի սակաւիկ մի ոգի առեալ,
Դարձեալ ելեալք մարտնչէին,
Մինչեւ անմի զզօրսն Արանց առնէին։

Եւ միւս եւս՝ որ ընդ այս եմ զարմացեալ ես,
Ընդ մտերմութիւն միամտութեանն Հայաստան զնդին,
Ընդ տիրասիրութեանն:
Զի այնչափ ամք են՝ զի տէրն նոցա Արշակ
Կորուսեալ է ի նոցանէն,
Եւ նոքա ի պատերազմին ի նա խրախուսէին:
Եւ յորժամ զախոյեանսն ընկենուին,
Համակ ասէին, թէ՝ «Ա՛ռ, Արշակ»,
Եւ նա չէր ի մէջ նոցա:
Եւ նոքա առ զուք տիրասիրութեանն,
Զոր առ բնակ տէրն իւրեանց ունէին,
Զամենայն ախոյեանսն, զոր սպանանէին՝
Նմա՛ նուիրէին:
Եւ կամ մոլեկան զունդն Մուշեղեան,
Զի ինձ այսպէս թուէր, եթէ հուր, բոց
Ի զնդէն ելանիցէր եւ ի նշանացն,
Իբրեւ ի հուր հրդեհի
Այնպէս անցանէր ընդ զունդն,
Որպէս բոց ընդ եղէգն:
Եւ այսչափ ժամանակք են,
Զի Արշակ տէրն նոցա ի նոցանէն կորուսեալ է,
Զի յԱնդմըշն բերդի կայ յերկիրն Խուժաստանի,
Եւ նոքա առ զութն համարէին,
Թէ ի գլուխ նոցա նա իբրեւ թագաւոր կայցէ,
Եւ կամ ընդ նոսա արդեւք ի մէջ զնդին կայցէ,
Ի գլուխ ճակատուն պատերազմին,
Եւ նոքա առ նմա առնիցեն պաշտօն յանդիման նորա:
Այլ, ասէր, երանի՛ որ Հայոց զնդին տէր իցէ,
Այնպիսի տիրասէր եւ միաբան, միամիտ զօրացն:

*Բուզ., Ե. 5*

*Բոլոր «զօրքի» գաղափարական հերոսութեան ու տիրասիրութեան այսպիսի դրուագները յօրինուած են, անշուշտ, Արշակունիների եւ Մամիկոնեանների շրջաններում: Դրանցով նրանք պրոպագանդա են արել ազնուականութեան մէջ՝ զօրացնելու համար նրանց հաւատարմութիւնն առ Արշակունի թագաւորները:*

2. Թագաւորի անձի անձեռնմխելիութիւն եւ ազգային պատուասիրութիւն.— *Այդ դարաշրջանում ոչ միայն Հայաստանի թագաւորները, այլեւ Հռոմայեցոց կայսրները շարունակ ենթակայ էին բռնի մահացման իրենցայինների ձեռով, Հայոց թագաւորներն աւելի հաբեւան իշխողների կողմից: Ուստի մի ուրիշ գաղափար էլ, որ անհրաժեշտօրէն զարգացրել են, է՛ թագաւորի անձի անձեռնմխելիութիւնը, եւ բացի այդ՝ նաեւ թագաւորի ան–*

*վտանգութեան համար հոգալը: Այս երկու մոտիվները, ինչպէս եւ միւսնե-րը, յատուկ են ընդհանրապէս ուրիշ հերոսական վէպերի եւս: Բագաւանի ճակատամարտի գեղեցիկ դրուագը (Բուզ., Ե. 4) յօրինուած է, ի միջի այլոց, այդ գաղափարների ծաւալման համար: Թագաւորին չեն թողնում, որ ճակատ մտնի, որպէսզի նա վտանգի չենթարկուի: Նա նստում է Նպատ լերան գլխին եւ այնտեղից դիտում է ճակատամարտը:*

*Այդ դրուագի մէջ մի առանձին կերպով երեւան է գալիս նաեւ* ազգային պատուասիրութեան *գաղափարը, որով նոյն ազգին պատկանողները նախանձախնդիր են իրենց «ազգային» պատուին, հարկաւ, ըստ ազնուական հասկացողութեան: Պարսից բանակը մի կողմից, եւ հռոմէական ու հայկական զօրքերը միւս կողմից՝ պատրաստւում են ճակատամարտելու: Աղուանից թագաւոր Ուռնայրն ասում է Շապուհին.*

«Կա՛մ լիցի քեզ, արանց քա՛ջ,
Զի եւ ինձ պարգեւ հրաման տացես,
Զի Հայոց գնդին Պապայ արքային
Ես ինձէն եկից իմով գնդովս նախատակ:
Զի Արեաց գնդին պատեհ է
Դիպյան ելանել զօրացն Յունաց,
Իսկ ես իմով գնդաւս՝ Հայոց իշխանացն եկից»:
Եւ Շապուհ թագաւորն հաճեցաւ,
Եւ շնորհ կալաւ, եւ հրամայեաց:
Բայց Մերուժանայ Արծրունւոյ
Պատասխանի տուեալ Ուռնայրի, ասաց.
«Աստ արկեր զգազիւ գիրկս.
Բայց թէ ժողովել կարիցես, մեծ զարմանք իցեն»:

*Նոյնիսկ Մերուժան «վատանշանը», «չարագործը», իր հայ ազնուականի պատիւը վիրաւորուած է համարում, որ այդ թագաւորը Հայոց գնդին հաւասարեցնում է աղուանական գունդը: Դա նուաստացում էր հայ զօրականութեան համար: Ուստի Մերուժանը ծածուկ մարդ է ուղարկում, Մուշեղին իմաց տալիս այդ մասին, աւելացնելով՝*

«Արդ գիտես՝ զինչ գործիցես»:

*Մուշեղը յաղթում է ճակատամարտի մէջ եւ վրայ է հասնում Ուռնայրին: Պատմուածքն այնպէս է առաջ տարուած, որ սպասում ենք, թէ նա պիտի սպանէր այդ թագաւորին այն վիրաւորանքի համար, որ անգամ Մերուժանը չէր արել: Բայց վիպասանի վերջնական նպատակն այդ չէ, այլ ցոյց տալ Մուշեղի տիրասիրութիւնը: Նա պատժում է յանդուգն թագաւորին իր ասած խօսքի համար, բայց ահա թէ ինչպէս.*

Եւ Մուշեղ սպարապետն Հայոց…
Սպաս արարեալ եւ դիպէր գնդին Աղուանից,
Եւ առ հասարակ զամենայն զզօրսն սատակէր:

Եւ հասանէր Ուռնայրի արքային Աղուանից ի փախստեանն
Եւ նիզակաբնաւն ի կառափն մատուցեալ ծեծէր բազում,
Ասելով, թէ՝ «Այժմ շնորհս կալ,
Զի այր թագաւոր ես, եւ թագ ունիս.
Ես ոչ սպանից զայր թագաւոր,
Թէ կարի նեղ հասցէ ինձ»:
Եւ ութ հեծելով թոյլ ետ նմա փախչել,
Երթալ գնալ յաշխարհն Աղուանից:

*Ճակատամարտի յաղթութիւնից յետոյ՝ քսուները Պապի մոտ ամբաստանում են Մուշեղին, որ նա թշնամուն չի սպանել եւ իբր նոյնիսկ Հայոց Թագաւորին էլ նա սպանել է ուզում: Թագաւորը Մուշեղին յանդիմանում է, եւ նա պատասխանում է.*

«Զիմ զընկերսն զամենեսեան ես կոտորեցի՛.
Իսկ որ թագս ունէին, նոքա իմ ընկերք չէին, այլ քո՛.
Եկեսցես, որպէս ես զիմսն սպանի, դու զքոյսն.
Այլ իմ յայր թագաւոր՝
Ոչ ձգեալ ձեռն երբեք որ թագ ունի,
Եւ ոչ ձգեմ, եւ մի՛ այլ ձգել լիցի:
Եթէ կամիս սպանանել զիս, սպա՛ն:
Այլ ես, եթէ գայ ինձ ի ձեռն երբեք այր թագաւոր,
Որպէս եկն բազում անգամ,
Ես ոչ սպանանեմ զայր թագաւոր,
Որ զամ մի թագ ունի,
Եթէ ոք իսկ զիս սպանցէ»:

**Բուզ., Ե. 4**

*Ահա թէ ինչ գաղափարախօսութիւն քարոզում է վիպասանը:*

*Թագաւորների անձի անձեռնմխելիութեան գաղափարը զարգացրած է եւ ուրիշ դրուագների մէջ: Մանուէլ Մամիկոնեանն իր եղբայր Մուշեղի սպանուելու վրէժն առնում է Վարազդատ Թագաւորից: Նրանց զնդերը մարտընչում են միմեանց հետ: Իրար վրայ են յարձակւում եւ մենամարտում նաեւ Վարազդատն ու Մանուէլ սպարապետը: Թագաւորը պարտւում է եւ փախչում:*

Եւ անդէն Մանուէլ,
Զուգ նիզակին ի ձեռին կալեալ,
Եւ նիզակաւն ի կառափն մատուցեալ,
Ծեծէր զարքայն Վարազդատ.
Այնպէս տանէր իբրեւ ասպարէզս չորս:
Եւ անդէն որդիքն Մանուէլի
Յարձակեցան մէն մի նիզակ ի ձեռին,

Հմայեակն եւ Արտաշէսն, սպանանել զարքայն:
Ինքն իսկ Մանուէլ աղաղակէր զկնի որդւոցն իւրեանց,
Եւ ասէր. «Ա՛յ, մի՛ լինիք տիրասպանունք»:
Եւ նոցա լուեալ զձայն հօրն,
Վաղվաղակի արագ արագ դառնային ի նմանէ:

*Բուզ., Ե. 37*

*Այսպէս ուրեմն, կեանքի ու մահուան կռւի մէջ անգամ Մամիկոնեան սպարապետը քարոզում է «տիրասպան չլինել»:*

3. Հերոսը:— *Հաւատարմութիւն ու տիրասիրութիւն եւ տիրասպան չլինել, դրանք դեռ ի հերոսութիւն չեն տանում մարտիկներին: Թագաւորները նրանցից պահանջում են աւելին: Ահա թէ ինչպէս է Պապ թագաւորի ձեռը բռնելով՝ երդւում Մուշեղ սպարապետը.*

«Կեցից եւ մեռայց ի վերայ քո՛,
Որպէս նախնիքն իմ ի վերայ նախնեաց քո՛ց,
Որպէս եւ հայրն իմ ի վերայ հօրն քո Արշակայ,
Նոյնպէս եւ ես ի վերայ քո»:

*Բուզ., Ե. 4*

*Պարսիկները Մերուժանի առաջնորդութեամբ յարձակւում, աւերում են Հայաստանը:*

Ապա իբրեւ զայս լսէին,
Թագաւորն Հայոց Արշակ
Եւ զօրավարն նորին Վասակ,
Հանդէս առնէին զօրացն իւրեանց:
Եւ գտան ի ժամանակին անդ,
Ընդ ձեռամբն զօրավարին Վասակայ,
Արք գործոց իբրեւ վաթսուն հազար,
Ընտիրք եւ պատերազմողք,
Որ միամիտք եւ միասիրտք էին,
Միաբանութեան գործոցն պատերազմին,
Հասանել մարտնչել
Ի վերայ որդւոց եւ կանանց իւրեանց,
Եւ ի վերայ աշխարհին,
Դնել զանձինս իւրեանց մինչեւ ի մահ
Եւ ի վերայ աշխարհին զաւառացն բնակութեան...
Փոխանակ բնակ տէրանց իւրեանց Արշակունւոց:

*Բուզ., Դ. 24*

*Մանուէլ Մամիկոնեանն այսպիսի պատգամ է յղում Վարազդատ թագաւորին.*

«Փոխանակ ամենայն ազգին մերոյ վաստակոցն,
Զոր ի նախնեացն ի հնոց ժամանակաց հետէ
Միամտութեամբ առ ձեզ Արշակունիս վաստակեալ եմք.
Եւ եդեալ զանձինս մեր ի վերայ ձե՛ր,
Կեցեալ եւ մեռեալ եմք ի վերայ ձե՛ր,
Ամենայն նախնիքն մեր առաջինքն
Անկան ի պատերազմունս ի վերայ ձե՛ր,
Վասակ հայր Մուշեղի կորեաւ
Ի վերայ Արշակայ արքայի,
Եւ մեք համապազ վաստակեալ եւ աշխատեալ եմք
Ի վերայ թագաւորութեան ազգիդ ձերոյ,
Եւ փոխանակ կեանս առնելոյ ընդ վաստակոցն,
Արդ որք ի թշնամեացն մեռան,
Որք մնացին՝ զայն դուք Արշակունիքդ կոտորեցիք»:

*Բուզ., Ե.* 17

*Մանուէլը հիւանդանում է եւ, զգալով որ պիտի մեռնի, իր տէրութիւնն ու սպարապետութիւնն իր որդուն տալով՝ պատուիրում է նրան.*

Եւ պատուիրէր նմա՝ «Հնազանդ, հպատակ կալ
Արքային Արշակայ, եւ լինել միամիտ.
Զանալ եւ վաստակել եւ տալ պատերազմ
Փոխանակ աշխարհին Հայոց.
Զանձն քո տալ, որպէս քաջ նախնիքն,
Ի վերայ աշխարհին մտադիւր մեռանել...
Անուն քաջութեան յերկրի թողցուք...
Եւ ամենեւին ի մահուանէ մի՛ երկնչիք...
Եւ ի վերայ... աշխարհի համարձակութեամբ մեռարո՛ւք...
Եւ ի վերայ բնակ տերանց աշխարհիս Արշակունոյ»:

*Բուզ., Ե.* 44

*Նա հիւանդ պառկած է մահճում, նրա չուրջը ժողովուած են Հայաստանի բոլոր մեծամեծները եւ ինքը Թագաւորն ու Թագուհին: Այդ ժամանակ նա իր մարմինը բաց է անում եւ ամէնքի առաջ ցոյց տալիս: Բայց բերենք բառացի.*

Ապա եբաց Մանուէլ զամենայն զանդամս իւր
Առ հասարակ առաջի ամենեցուն,
Մերկացաւ եւ եցոյց, զի քան զդրամ խայծ՝
Ոչ գտանէր ողջ ի մարմնի նորա,
Զոր խոցեալ էր ի պատերազմի...
Սկսաւ լալ եւ ասէ,
Թէ՝ «Ես ի մանկութենէ

Համակ սնայ ի պատերազմունս,
Եւ մեծաւ քաջութեամբ զամենայն վէրս յանձն իմ առի·
Եւ ընդէ՞ր ոչ եհաս ինձ մեռանել ի պատերազմի,
Քան զօրէն անասնոյ մեռելոյ եղէ:
Զի լաւ էր ինձ, եթէ ի պատերազմի
Մեռեալ էի ի վերայ աշխարհի···
Եւ ի վերայ Արշակունեաց,
Բնակ տերանց աշխարհիս,
Եւ ի վերայ կանանց,
Եւ ի վերայ որդւոց մերոց,
Եւ ի վերայ աստուածապաշտ մարդկանս,
Եւ ի վերայ եղբայրութեան, ընկերութեան,
Եւ մտերիմ բարեկամութեանն,
Զի՛ էր թէ հասեալ էր ինձ մեռանել:
Թէպէտ շատ զանձնս յանդուգն վարեցի,
Զվատթար մահս մահճացս եհաս ինձ մեռանել»:

*Բուզ., Ե. 44*

*Ահա ֆէոդալական ժամանակի հերոսը, Վէպի հերոսական իդէալական տիպարը, վիպական արժանիքներով: Յիշենք նոյնպիսի հերոսի, բայց խնջոյքի ժամանակ դաւադրութեամբ սպանուած Մուշեղի վերջին խօսքը·*

«Բայց իբրեւ եհաս ինձ մահս,
Թէ՛ ի վերայ ձիոյ դիպեալ էր»···

*Բուզ., Ե. 35*

*Հերոսն, ուրեմն, դարձեալ մեռնելու համար չի ցաւում, այլ որ նա ձիու վրայ ճակատամարտի մէջ չի մեռնում մի մահով, որ ֆէոդալական ժամանակի մարտիկի համար տիպիկ եւ պատուաւոր էր: Թշնամիներից մարտի մէջ չվախենալ մինչեւ վերջը, մինչեւ անգամ դաժան մահն աչքի առաջ ունենալով՝ ինչպէս Վասակը Շապուհի դիմաց,— ահա անվեհեր հերոսը: Մարտնչել եւ մեռնել աշխարհի եւ ընիկ տէրերի համար, ահա թէ ինչ է մեր այս մեծ Վէպի կենտրոնական գաղափարը: Աշխարհի եւ ընիկ տիրոջ համար մեռնելը տալիս է ռազմիկ հերոսների գաղափարականացմանը սոցիալական իմաստը, հարկաւ, աւատական ժամանակի հասկացութեամբ: Դրանով Սամիկոնեան սպարապետները դառնում են վէպի գլխաւոր հերոսները: Թէ իրօք մի ժամանակ ապրել են Վաչէ, Վասակ, Մուշեղ ու Մանուէլ զօրավարները, եւ կեանքի մէջ ինչպիսի մարդիկ են եղել նրանք, մենք այդ չգիտենք: Թերեւս այդ վիպական անձերը պատմական են: Բայց վէպի մէջ պահւում է պատմական անձի այս կամ այն իրական գիծը միայն, և չի տրւում ամբողջական պատկերացում նրա մասին:Ինչպէս Արշակը, մի պատմական անձ, Վէպի մէջ կորցրել է իր իրական գծերը եւ կեանքի իրական*

եղելութիւնները, նոյնպէս եւ սպարապետները: Վէպի մէջ նրանց անձերից եւս,— եթէ նրանք պատմական են,— անշուշտ շատ քիչ բան է մնացել: Նրանք նկարուած են ընդհանուր հերոսական գծերով, ընդհանուր ֆէոդալական առաքինութիւններով, մեծազգի նախնիք եւ քաջարի ոգի եւ այլ բարեմասնութիւններ ըստ դարի վիպական պահանջի: Այդպիսով այդ հերոսները մեր Վէպի, այսպէս ասած, սոցիալական անձերն են եւ իբրեւ այդպիսիներ, պատմական են: Նրանք իրականութեան իդէալական պատկերացումներն են եւ ստեղծուած են 3—5-րդ դարերի սոցիալական պայմաններում, որոնք հերոսական բանաստեղծութիւն էին պահանջում պարսիկների դէմ պատերազմները վարելու համար: Հարկաւոր էր պաշտպանել «ընիկ տէրոջը», որի մէջ, ըստ այն ժամանակի հասկացութեան, մարմնացած էր երկրի անկախութեան գաղափարը եւ նոյնիսկ աշխարհն ինքը: Ցիշենք Տիրանին մատնող եւ կուրցնել տուող Փիսակին տրուած «տիրանենգ» եւ այլ մականունների հետ նաեւ «աշխարհակործոյս» մակդիրը: Այդ էր այն դարերի գաղափարը:

Կարդանք եւ այն դրուագը (Բուզ., Ե. 20), որի մէջ,— ինչպէս յաճախ լինում է հերոսական վէպերի մէջ հերոսների սխրագործութիւնների պատմուածքի վերջում,— բերուած է Մուշեղի գովաբանութիւնը.

Այլ քաջն զօրավարն, սպարապետն Հայոց
Լի էր քինիւ մեծաւ եւ բազում նախանձու
Զամենայն աւուրս կենաց իւրոց,
Եւ միամտութեամբ եւ արդար վաստակով
Զանայր հանապազ եւ վաստակէր
Ի վերայ թագաւորութեանն Հայոց աշխարհին:
Զտիւ եւ զգիշեր կայր յաշխատութեանն.
Զանայր եւ ճգնէր կալ ի ճակատու պատերազմին,
Եւ ոչ թողոյր բնաւ, ամենեւին,
Եւ ոչ քան զկորի մի գետին
Ի սահմանաց երկրին Հայոց ուրեք վտարել,
Ի վերայ աշխարհին կեալ եւ մեռանել,
Ի վերայ անուանն քաջութեան,
Ի վերայ բնակ տերանց,
Եւ ի վերայ բնակչաց աշխարհին...
Եւ ի Քրիստոս մկրտեալ ժողովրդոց...
Ի վերայ քերց եւ եղբարց,
Ի վերայ մերձաւորաց տոհմին,
Ի վերայ բարեկաց բարեկիր բարեկամաց,
Հանապազ կայր զօրավարն Մուշեղ
Ի նահատակութեան պատերազմին,
Զանձն փոխանակ առնել աշխարհին.
Եւ յանձն իւր անխայէր ի մեռանել,

Զամենայն աւուրս կենաց իւրոց
Առաջի իւրոց բնակ տերանցն,
Արշակունեաց վաստակէր:

*Ահա իդէալական հերոսը, որ ապրում է իր տիրոջ եւ աշխարհի համար, եւ չի թողնում* անգամ մի կորու չափ գետին Հայոց երկրից վտարել, *այսինքն օտարացնել: Դա արդէն Փէոդալական ժամանակի հայրենասիրութիւնն է, վիպական հերոսի ոգեւորութեան աղբիւրը: Այդ եւ Վէպի գաղափարականացումն է ըստ բովանդակութեան:*

4. — Վիպական գաղափարականացումը չափազանցումով եւ պարտութիւնների արդարացումը:— *«Պարսից պատերազմի» մէջ հայ թագաւորներն ու սպարապետները վարում են շատ ու շատ ճակատամարտեր, չարունակ մարտ ու մարտ եւ միշտ յաղթութիւն: Նրանք միշտ կոտորում են թշնամու երբեմն միլիոնների հասնող բանակները: Պատերազմական յաջողութիւնների այսպիսի վիպական չափազանցումով եւս առաջ է բերւում իդէալականացում: Այդ պատերազմներն արդէն տեսել ենք Մեծն Խոսրովի եւ Տիրանի ճիւղերի մէջ: Առնենք Արշակի ճիւղը, որ Վէպի կենտրոնական մասն է:*

*Երեսնամեայ պատերազմի ընթացքում քանի՛ քանի անգամ հայերը Վասակ սպարապետի զօրավարութեամբ ջարդում են պարսիկներին: Հէնց սկզբից Շապուհն անձամբ զօրքով գալիս է Արշակի վրայ: Վասա՜կն Արշակի հրամանով վաթսուն բիւր (=600,000) հեծելազօրով դուրս է գալիս նրա դէմ:*

Առ հասարակ զօրսն զամենայն
Հարկանէին ի սուր սուսերի իւրեանց.
Եւ միածի նողողրեալ
Արքայն Պարսից Շապուհ փախչէր:
Սոքա հասանէին, գերէին,
Այրացուեր առնէին առ հասարակ զերկիրն Պարսից.
Եւ ինքեանք կային ունէին զճակատուն տեղի,
Այս ինքն զսահմանս Պարսից պահէին:

*Բուզ.*, Դ. 21

*Այս առաջին յարձակումն է: Երկրորդ անգամ աւելի մեծ ուժով է գալիս Շապուհը:*

Յայնմ ժամանակի թագաւորն Պարսից Շապուհ
Ժողովեաց զզօրս իւր անթիւ եւ անհամար:
Իբրեւ զաւազ առ ափն ծովու,
Եւ փիղս բազումս, զի ոչ գոյր նոցա թիւ:

*Ինչքան էլ հայերն շտապում են իրենց զօրքը ժողովելու, սակայն պարսիկներն իրենց զօրքը երեք մասի բաժանելով՝ երեք տեղով մտնում են*

*Հայոց երկիրն եւ ասպատակում: Հայերն էլ ժողովում են իրենց զորքը, այնքան շատ,*

Զի ոչ գոյր համար բազմութեանն:

*Միեւնոյն տարում միեւնոյն ամսի միեւնոյն օրը ճակատամարտ է լինում երեք տարբեր տեղերում՝ Վասակի, իր եղբայր Բագոսի եւ Արշակի զորավարութեամբ: Երեք տեղում էլ հայերը յաղթում, կոտորում են պարսիկներին:*

Ի պարտութիւն մատնեցան զօրքն Պարսից,
Դարձան ի փախուստ, ցրուեցան, սփռեցան:
Հասանէր զօրավարն Վասակ,
Արկանէր զզօրսն ամենայն փախստէիցն Պարսից.
Ոչ ապրեցուցանէին եւ ոչ զմի,
Եւ թափեցին աւար բազում եւ զփիղսն:

*Շապուհի բանակի դէմ դուրս է գալիս Արշակ Թագաւորը:*

Ապա անկանէր գիշերի արքայն Արշակ
Ի վերայ բանակին Պարսից,
Եւ անդէն ընդ սուր հանէր զամենեսեան.
Բայց միայն միածի մազապուր՝
Ճողոպրէր թագաւորն Շապուհ,
Փախուցեալ անկանէր յաշխարհն Պարսից...
Եւ առքա [Հայք] ի կողմանս Պարսից ասպատակէին.
Եւ լցան գանձիւք բազմօք, եւ զինու, եւ զարդու,
Եւ բազում աւարաւ, եւ անչափ մեծութեամբ,
Եւ հարստացան, անցին ըստ չափ:

*Բուզ., Դ. 22*

*Այսպէս՝ պարսիկներն իրենք ոչինչ չեն կարողանում անել: Բայց ահա գալիս է դաւաճանութիւնը: Հայոց Թագաւորից ապստամբում է նախարարներից մէկը — Մերուժան Արծրունին: Նա առաջնորդ է դառնում պարսիկների առաջուանից աւելի շատ զօրքերին, եւ մինչեւ Հայոց Թագաւորն երկրի արեւմուտքումն էր գտնւում, հայերի չսպասած կողմից պարսիկները մտնում են Միջնաշխարհը:*

Եւ զզօրսն Պարսից պատրաստէին
Առնել եւս քան զառաջինն,
Եւ առաջնորդ ունէին
Զչարագործն Մերուժանն,
Ասպատակել աշխարհն Հայոց:
Յանկարծօրէն այրացուեր
Զերկիրն Հայոց առնէին
Առաջնորդ Մերուժանաւ.

Զօրս տային ի կոխումն փղաց,
Եւ զկանայս ընդ ցից սայլից հանէին.
Առնուին, կոտորէին
Զամենայն բնակիչսն վերնագաւառացն Հայոց:

*Բայց երբ պարսիկ զորքերն իմանում են, որ Վասակ զորավարը գալիս է իրենց վրա, նրանք շտապով փախչում են դեպի իրենց աշխարհը:*

Ապա զհետ կրթէր Վասակ Մամիկոնեան,
Եւ երթայր հասանէր նոցա.
Զուէին ի սահմանս Ատրպատականին:
Իսկ զօրքն թագաւորին Պարսից թողին զգերին,
Եւ փախստական լինէին հանդերձ Մերուժանաւն:
Եւ թափէր անչափ եւ անթիւ
Զամենայն զառեալ գերութիւնն:

*Բուզ., Գ. 23*

*Նորից Մերուժանն առաջնորդ է դառնում, եւ այս անգամ Շապուհ թագավորն անձամբ՝ իր զորքին գլուխ անցած՝ Հայաստանի արեւմտեան կողմից յարձակւում է եւ աւերում երկիրն այն ժամանակ, երբ Արշակն իր զորքով Ատրպատականի սահմանների վրայ զգուշութեամբ սպասում էր պարսիկներին:*

Այրացաւեր առնէին, եւ զանթիւ մարդիկ
Արկանէին ի սուր սուսերի իւրեանց.
Եւ զկանայս եւ զմանկտի հանէին ընդ ցից սայլից:
Զկէսս զոր ի ներքոյ կամացն արկեալ կասուին.
Եւ զարանց բազմութիւնս տային ի կոխումն փղաց.
Եւ զառանց թուոյ զմատաղ մանկտոյն,
Զայն ի գերութիւն վարէին:
Եւ զբազում ամուրս քանդէին,
Եւ զբերդս աւերէին զամուրս:

*Բայց դարձեալ Վասակը վրայ է հասնում, կոտորում բոլորին, եւ միայն Շապուհն ու Մերուժանն են ազատւում.*

Բայց միայն թագաւորն միածի
Ճողոպրեալ մազապուր փախչէր....
Բայց յայնմ նուագի եւս
Ապրէր Մերուժանն չարագործն,
Փախուցեալ ընդ արքային Պարսից:

*Բուզ., Դ. 24*

*Այնուհետեւ հայերն իրենց երկիրը պահպանում են «յերկոսին դուրս սահմանացն»: Այս անգամ Արշակն է յարձակման դիմում հոների օգնու-*

*թեամբ: Շապուհն էլ իր կողմից գալիս բանակ է դնում Թաւրիզում: Յաղթում են հայերը եւ կոտորում ամէնքին: Միայն պարսից թագաւորը դարձեալ «միաձի ճողոպրեալ» փախչում է:*

*Յաջորդ յարձակումներն այլեւս Շապուհն անձամբ չի կատարում, այլ զանազան իշխանների ձեռով 23 անգամ մեծամեծ բանակներ է ուղարկում Հայաստան Արշակ թագաւորի վրայ: Բայց ամէն անգամ էլ Վասակ սպարապետը համեմատաբար սակաւաձեռն ուժերով ջարդում, կոտորում է, նրանց բոլորին «անմի» անում: Հայոց բանակների համար յիշւում են 120 հազար, 11 հազար, 40 հազար, 70 հազար եւ 30 հազար թուով զորքեր, իսկ պարսիկները երեք անգամ յարձակւում են «անթիւ» կամ շատ զորքերով, իսկ մնացած յարձակումները նրանք կատարում են երկու անգամ 180 հազար զորքով, մէկ անգամ 350 հազար, հինգ անգամ 400 հազար, երկու անգամ 600 հազար, մէկ անգամ 800 հազար, հինգ անգամ 900 հազար, երկու անգամ 4 միլիոն, մէկ անգամ 5 միլիոն զորքերով: Ընդամէնը 26 միլիոն 210 հազար զորքերով, չհաշուած երեք անգամի անորոշ բազմութիւնը, ինչպէս եւ առաջին հինգ յարձակումները: Ի հարկէ, այդ թուերը՝ «վաթսուն բիւր», «չորեքհարիւր հազար», «քառասուն բիւր», «իննսուն բիւր», «չորեքհարիւր բիւր», «իննհարիւր հազար» եւ այլն՝ ճիշտ իմաստով չեն գործածուած: Վիպասանը դրանով ուզեցել է միայն Պարսից բանակի մեծութիւնը ցոյց տալ չափազանցութեամբ, առանց, դուցէ, կարողանալու հաշուել, թէ ո՛րքան է անում, օրինակ, «իննսուն բիւր» թիւը: Այդպէս ասուել է իբրեւ՝ անչափ, անհամար, կամ ինչպէս՝ «գումարէր գումարտակ բազում իբրեւ զաւազ ծովուն բազմութեամբ»: Այս բոլոր 28 յարձակումների ժամանակ ահա, ըստ Վէպի, հայերը կոտորում են միլիոնաւոր պարսիկներին, մեծ մասամբ եւ նրանց զորավարներին, եւ փախչում, ազատւում է Շապուհը, եթէ նա գալիս է, ինչպէս եւ Մերուժանը: Եւ հետեւանքն ի՛նչ է լինում.*

Զերեսուն եւ զչորս ամս եառուն պատերազմ
Երկիրս Հայոց ընդ թագաւորին Պարսից,
Եւ յետ ա՛յնորիկ ձանձրացան, պարտեցան,
Լքան, աշխատեցան երկոքին կողմանքն:
Եւ սկսան սորսորել, գնալ
ի բանակէն Հայոց թագաւորին.
Թողին զիւրեանց արքայն Արշակ:

*Բուզ.*, Դ. 50

*Եւ Վէպը մի առ մի թւում է, թէ ո՛վքեր, ո՛ր իշխանները դաւաճանութեամբ անցնում են պարսիկների կողմը, մի երկուսը հեռանում են յունական երկիրը: Դրանք բոլորը Հայաստանի եզերային նահանգների իշխաններն են: Մնում է միայն Միջնաշխարհը. բայց դա էլ անհնազանդ է դառնում:*

Միջնաշխարհն, մնացեալքն յերկուացան արքայէն,
Եւ ոչ կամէին լսել թագաւորին իւրեանց,
Ոչ մի ինչ իրս՝ զոր նա կամէր:
Եւ զձանձրացաւ թագաւորութիւնն մեծապէս:

*Հայոց թագավորից ապստամբում և Շապուհի կողմն է անցնում նույնիսկ Վասակ սպարապետի եղբայրը՝ Վահան Մամիկոնեանը: «Իսկ թէւն Հայոց պակասեաց, յայժմ հետէ եւ յապա», — ասում է Պատմագիրը: Արշակը չի պարտուած: Բայց նախարարները չեն ուզում պատերազմել: Ահա թէ ի՛նչ են ասում նրանք Ներսէսին.*

«Դու, տէր, քեզէն գիտես,
Զի այս երեսուն ամ է թագաւորին մերոյ Արշակայ,
Զի ոչ մի ամ մեզ հանգիստ ոչ եղեւ ի պատերազմէ.
Եւ համակ սրով եւ սուսերօք,
Եւ ի սլաքս եւ ի տէգս նեզակաց
Զքրտունս երեսաց մերոց ջնջեցաք:
Եւ արդ ոչ կարեմք այամ զձոյժ ունել,
Եւ ոչ այլ կարեմք տալ ճակատս.
Զի լաւ է մեզ, թէ ծառայեսցուք մեք թագաւորին Պարսից
Որպէս ընկերքն մեր արարին,
Զի թողին զնա եւ գնացին առ թագաւորն Պարսից:
Եւ մեք սոյնպէս առնելոց եմք,
Զի ոչ այլ եւս կարեմք կռուել:
Թէ պէտ իցէ թագաւորին Արշակայ կռուել ընդ Շապհոյ,
Վասակաւ եւ Անդուկաւ անեբաւ իւրով տացէ պատերազմ.
Այլ յայսմիկ Հայոց աշխարհէն
Եւ ոչ մի այր ոչ ոք է երթալոց
Ի թիկունս օգնականութեան նորա:
Նմա թէ պէտ իցէ, տացէ պատերազմ, թէ պէտ՝ մի՛, —
Մեր թողեալ զնա, մեզ չէ փոյթ»:

*Բուզ., Դ. 51*

*Նրանք չեն լսում Ներսէսի խրատին եւ ազմկելով ցրւում են իրենց տները:*

Զաղաղակ հարկանէին,
Քարոզ կարդացեալ՝ միմեանց ձայն առնէին,
Շփոթէին, ամբոխէին եւ ասէին.
«Հա՛պա, գնացո՛ւք, ասեն,
Սփռեցարո՛ւք յիւրաքանչիւր տեղիս,
Զի այդմ բանից մեք ինչ ՛ոչ կամիմք լսել»:
Սփռեցան յիւրաքանչիւր տունս իւրեանց:

*Շատ էլ հերոս Արշակը, «Արշակ Քաջը», ցանկանում է պատերազմը շարունակել, բայց «զօրքը», ինչպէս կոչւում էր ազնուականութիւնը, համաձայն չէ դրան: Միւս կողմից Շապուհը նենգութեամբ նուէրներ ուղարկելով՝ թուղթ է գրում եւ սիրով խնդրում Արշակին, որ գնայ նրա մօտ,*

Զի յայնմ հետէ արասցեն ի մէջ իւրեանց
Սէր եւ խաղաղութիւն եւ բարեկամութիւն մեծ:

*Արշակն ստիպուած համաձայնում է հաշտուելու: Շապուհը դարձեալ կանչում է նրան իր մօտ, ասելով.*

«Իսկ եթէ հաճ եմք ես եւ դու ընդ միմեանս,
Ե՛կ տեսցուք զմիմեանս.
Եւ յայսմ հետէ իբրեւ զհայր եւ զորդի լիցուք ընդ միմեանս,
Ապա թէ ոչ տեսանես դու զիս,
Խնդրես զպատերազմ ի մէջ իմ եւ ի մէջ քո»:

*Արշակը պահանջում է նրանից հաւատարիմ երդում, եւ Շապուհն ուղարկում է «ըստ օրինացն հաւատարիմ երդմանց թագաւորութեանն Պարսից՝ աղ, կնքել վարազ նկարագիր մատանեաւ»: Այդ էլ որ տեսնում են, Հայոց երկրի բոլոր մարդիկն ստիպում են թագաւորին գնալ Շապուհի մօտ.*

Յայնմ հետէ թէ կամաւ՝ եւ թէ ոչ կամաւ,
Յարեաւ թագաւորն Հայոց Արշակ,
Ա՛ռ ընդ իւր զզօրավարն,
Սպարապետն Հայոց, զդայեակն իւր,
Խաղաց գնաց յերկրէն Հայոց յերկիրն Պարսից:

*Բուզ.*, Դ. 53

*Գնում են Շապուհի մօտ եւ այլեւս չեն վերադառնում, իսկ երկիրն անգլուխ մնալով՝ աւերւում է ե՛ւ պարսիկների, ե՛ւ դաւաճանների ձեռով:*

*Հերոսներին դաւաճանում են: Նրանք մենակ են մնում, խաբւում են եւ այնպէս կործանւում: Բայց եւ այնպէս գերութեան մէջ անգամ նրանք իրենց պահում են հերոսական հպարտութեամբ: Արշակը Հայաստանից բերել տուած հողի վրայ, ինչպէս տեսանք, Շապուհի հետ խօսում է իբրեւ իր մի ծառայի հետ, իսկ Վասակ սպարապետը՝ ինչպէս մի անվեհեր առիւծ:*

*Այն միեւնոյն հերոսական գաղափարականացումը Մամիկոնեան զօրավարի համար տեսնում ենք եւ Պապի ժամանակ: Թէպէտ հռոմայեցոց կայսրը պարսիկների դէմ ուղարկում է վեց հարիւր բիւր (= վեց միլիոն) զօրք, բայց կռուողը միայն Մուշեղ սպարապետն է իր տասն հազար զօրքով: Նա իբրեւ առաջապահ մտնում է Հայաստան եւ կոտորում բոլոր պարսիկներին իրենց զօրագլուխների հետ:*

Եւ ոչ մի զոք ապրեցուցանէր...
Եւ զբազում պատուաւոր տեարս,
Որ պատուականք էին առաջի թագաւորին Պարսից,

Ունէր ձերբակալս Մուշեղ,
Եւ տայր մորթել եւ լնուլ խոտով,
Եւ կանգնել ի վերայ պարսպացն:
Ընդ բազում տեղիս զայս առնէր
Ի վրէժս հօրն իւրոյ Վասակայ:

*Բուզ., Ե. 1*

*Տապուհը, Մերուժանի առաջնորդութեամբ, գալիս է Հայաստանի վրայ: Նրա բանակը Թուրփլում է: Մուշեղը յարձակւում է, կոտորում է ամէնքին: Տապուհը դարձեալ «միաձի մազապուր...ճողոպրեալ փախչէր»: Նրա կանայքը, «տիկնանց տիկինն հանդերձ այլովք կանամբքն» գերի են ընկնում Մուշեղի ձեռքը: Նորից յարձակւում են պարսիկները: Այս անգամ յունական եւ հայկական զօրքերը միասին մարտնչում են նրանց դէմ, բայց գլխաւոր գործը Մուշեղն է կատարում իր 90 հազարից աւելի զօրքերով: Պարսիկները ջախջախւում են: Մի վերջին անգամ էլ Տապուհը յարձակւում է գործում: Կռւում են յունական զօրքերն էլ, բայց դարձեալ գլխաւոր դերը Մուշեղն է կատարում: Այնուհետեւ դադարում է յարձակումը պարսիկների կողմից Պապի ժամանակ, եւ Մուշեղն աջողութեամբ կոտորում, զըսպում է բոլոր ապստամբներին ու դաւաճաններին (Ե. 8—19): Եւ վերջը, բոլոր յաղթութիւններից յետոյ, իբրեւ մի տարածուած վիպական մոտիւ, լինում է Մուշեղի գովաբանութիւնը, որ տեսանք:*

*Պարսից պատերազմը, սակայն, դեռ չի վերջանում: Մուշեղի եղբայր Մանուէլը Հայաստան գալով՝ դառնում է սպարապետ, կոտորում է Սուրէն մարզպանի 10 հազար զօրքը: Ապա Տապուհը չորս անգամ նրա վրայ մեծամեծ բանակներ է ուղարկում, եւ Մանուէլը բոլորին կոտորում է.*

Եւ ճեպեաց Մանուէլ եւ եհաս ընդդէմ գնդին.
Եւ արկանէր ի սուր զզօրսն Պարսից.
Եւ զԳումանդ Տապուհին սպանանէր:
Եւ դարձեալ եղանէր մեծաւ յաղթութեամբ:

*Բուզ., Ե. 39*

Հարկանէր եւ սատակէր,
Ջնջէր զնոսա ի միջոյ.
Եւ զգլխովին զՎարազն սպանանէր.
Թափէր զկապուտ սաստիկ,
Զզարդ եւ զզէն զօրացն,
Եւ դառնայր մեծաւ խաղաղութեամբ:

*Բուզ., Ե. 40*

Եւ անդէն առ հասարակ
Ընդ սուր հանէր զամենեսեան ի դակիչն...,
Եւ թափէր աւար բազում,
Եւ ոչ զմի ոչ ապրեցուցանէր ի նոցանէն:

*Բուզ., Ե. 41*

Վերջին անգամ Պարսից թագաւորը դաւաճան Մերուժանի գլխաւորութեամբ զօրք է ուղարկում Հայերի վրայ: Մերուժանն սպանւում է մարտի ժամանակ, նրա զօրագունդն ամբողջ կոտորւում է.

Հարկանէին, սատակէին զնոսա,
Եւ զմի ի նոցանէն ոչ ապրեցուցանէին...
Այլ իբրեւ լուան զօրքն Պարսից,
Զոր թողեալ էր Մերուժանայ ի գաւառն Կորճէից,
Թէ սատակեցաւ Մերուժանն,
Եւ կորաւ գունդն որ ընդ նմա,
Եւ ինքեանք ի Պարսից երկիրն փախստական գնացին:
Եւ Հայոց երկրին լինէր խաղաղութիւն բազում:

Բուզ., Ե. 43

Եւ Հայերի այս յաղթութեամբ վերջանում է «Պարսից պատերազմը»: Ապա իբրեւ վերջաբան, ինչպէս շատ հերոսական սխրագործութիւններից յետոյ լինում է, ամուսնանում են Արշակունի եղբայրներն՝ Արշակն ու Վաղարշակը, եւ հարսանիքի ուրախութիւնն են անում.

Եւ մեծապէս արարեալ զհարսանիսն
Ամենայն երկիրն Հայոց,
Ցնծացեալք, խնդացեալք էին
Ընդ այն մեծ խնդութիւն ուրախութեանն:

Բուզ., Ե. 44

Այսպէս՝ տեսնում ենք, որ այս հերոսական բանաստեղծութեան մէջ Հայ մարտիկները ճակատ առ ճակատ կռուելիս ոչ մի անգամ չեն պարտւում: Նոյնիսկ Քուշանների դէմ պատերազմելիս գերի Հայերը քաջութեան հրաշքներ են գործում, ինչպէս օրինակ, Դրաստամատը, որ մահից ազատում է Շապուհին: Քուշանները կոտորում են Պարսից բոլոր զօրքերին, բայց ազատւում են Մանուէլն ու իր եղբայրը՝ մեծ քաջութիւններ անելով: Հայերը միշտ ջարդում են իրենցից տասնապատիկ եւ նոյնիսկ հարիւրապատիկ աւելի մեծ թուով թշնամիներին, նրանց երբեմն միլիոնների հասնող մարդկանց բոլորին: Դա յատկանիշ է հերոսական վէպի, որի մէջ մարտը վերջանում է միշտ հերոսների յաղթութեամբ: Դրանով, այդ չափազանցումով, լինում է հերոսի վիպական գաղափարականացումը, եւ արտայայտւում հայրենասիրական ոգին, մոլեռանդ, անձնուրաց, ինքնապարծ: Հայը միշտ եւ ամէնուրեք քաջ է եւ անյաղթ: Վէպի այդ նկարագիրը, հարկաւ, համապատասխան չէ իրական պատմական դրութեանը: Թշնամիները յաճախ արշաւել, մտել են Հայաստան, կոտորածներ արել, առ ու աւար տարել: Նոյնիսկ հիւսիսականները ոչ սակաւ անգամ ծայրէ ծայր ողողել, ասպատակել են Հայոց երկիրը: Վէպի մէջ էլ գտնում ենք այդպիսի դրութիւնների ցնցող պատկերներ ու պատմուածքներ: Բայց այդպիսի դէպքերը վիպական յատկութեամբ, միշտ արդարացւում են որեւէ պատճառով. կա՛մ

թագաւոր ու զօրավար չկայ, կա՛մ դաւաճանութիւն ու դաւադրութիւն կայ մէջտեղում, կա՛մ զօրավարը բացակայ է, կա՛մ դեռ զօրք չկայ ժողոված, կա՛մ սահմանապահները զեղծ են, կա՛մ թագաւորն ու իր սպարապետը երկրի ուրիշ կողմում են, իսկ թշնամին դաւաճանի առաջնորդութեամբ հակառակ կողմից է մտնում Հայաստան: Բայց վերջ ի վերջոյ ճակատամարտի մէջ յաղթողը հայ թագաւորն ու սպարապետն են: Եւ եթէ հերոսները՝ Արշակն ու Վասակը պարտւում են, այդ լինում է միայն այն պատճառով, որ, ինչպէս տեսանք, ամէնքը յոգնում են կռուից եւ լքում են նրանց: Եւ եթէ հերոսներն ընկնում են, նրանք ընկնում են միայն նենգութեան ու խաբէութեան զոհ դառնալով: Այդպէս կործանւում են Խոսրով Մեծը, Տիրանն ու Արշակը, այլեւ Պապն ու Մուշեղը, որոնց սպանում են դաւադրութեամբ, ուրախութեան խնջոյքի ժամանակ: Այլապէս նրանք անպարտելի են:

Դա վիպական գաղափարականացումն է:

Շատ հերոսական վէպերի մէջ կը գտնենք ոչ միայն այդպիսի չափազանց կտորածներ, այլեւ անյաղթ հերոսի հետ նաեւ մի դաւաճան: Դրանով բացատրւում է հերոսի պարտութիւնը, եւ հերոսն աւելի բարձրանում է, թողնելով այն տպաւորութիւնը, թէ նա չէր յաղթուիլ, եթէ չլինէր դաւաճանութիւնը: Իսկ երբ դաւաճանութեան պատճառով սկզբում միայն անյաջողութիւն է լինում, դրանով յետոյ աւելի եւս տպաւորիչ է դառնում հերոսի հետագայ յաղթութիւնը, եւ նա աւելի եւս գաղափարական է դառնում: Եւ վերջապէս երբ հերոսը թշնամու խաբէութեան ու նենգութեան զոհ դառնալով խորտակւում է, թշնամին իր բացասական կողմով, իբրեւ խաբեբայ ու նենգաւոր, աւելի եւս նսեմացւում է, իսկ հերոսը, նրա հետ համեմատուելով, աւելի եւս բարձրանում է բարոյապէս, որով եւ նա դարձեալ աւելի գաղափարական է դառնում:

Կարեւոր չէ այստեղ ինչպէս ուրիշ վիպական մոտիւների, նոյնպէս եւ դաւաճանութեան համար զուգանմանութիւններ բերել ուրիշ ազգերի հերոսական վէպերից: Այդ նենգաւոր ու խաբէական վարմունքը հակառակորդի կողմից, դա շատ տարածուած մի վիպական մոտիւ է: Անշուշտ, Արշակի ու Պապի անկման վէպերը հիմնուած են իրական եղելութիւնների վրայ. Թերեւս պատմական հիմք կարող է ունենալ եւ միւսներից սրա կամ նրա անկման պատմուածքը: Բայց այդ դէպքերը, ինչպէս եւ առհասարակ պատմականօրէն ամօթալի իրակութիւնները, տրուած են այնպիսի բազմաթիւ հերոսական յաջողութիւններից յետոյ, կամ թէ դրանցից յետոյ գալիս են այնպիսի վրէժխնդրութիւններ, այն էլ այնպիսի մշակումով, որ յանձինս — վիպական իդէալական հերոսների երեւան չի գալիս պատմական անձերի — թագաւորների ու զօրավարների եւ նոյնիսկ տէրութեան իրապէս գոյութիւն ունեցած թուլութիւնը:

5. **Գաղափարականացման նպատակը:** — «Պարսից պատերազմ» վէպը ծագել ու զարգացել է Ֆէոդալական շրջանի վերին հասարակական խաւի մէջ, գլխաւորապէս Արշակունի թագաւորների ու Մամիկոնեան զօրա-

վարների միջավայրում: Դրա անմիջական հետեւանքով՝ մեր այս էպոսը դարձել է իսկապէս այն երկու տոհմերի վէպը, այս բառի իր հին նշանակութեամբ առած՝ իբրեւ պատմութիւն, իբրեւ բանաստեղծական պատմութիւն կամ պատմական բանաստեղծութիւն: Արդ՝ պատերազմը պարսիկների դէմ աջողութեամբ վարելու համար անհրաժեշտ էր ռազմիկներին ոգեւորել: Իսկ դրա համար հարկաւոր էր հերոսական բանաստեղծութիւն, պէտք էին անպարտելի քաջութեան ու յաղթութեան երգեր, իդէալական հերոսութեան օրինակներ: Նոյնպէս պէտք էր եւ պարտութեան արդարացումը՝ զօրքին լքում եւ յուսաբեկութիւն չպատճառելու համար: Ահա թէ ի՛նչ է եղել գուսանի նպատակը՝ պատմական երգն ու վէպը յօրինելիս, եւ թէ ինչո՛ւ նա այնպէս չափազանցել ու գունաւորել է իրական պատմական եղելութիւնները: Վիպասանի այս միտումը քաջալերուել, անպայման եւ թելադրուել է ֆէոդալական շրջանի ռազմիկ ազնուականութեան վերին խաւերից, գլխաւորապէս Արշակունիներից եւ Մամիկոնեաններից: Սրանք իրենց նպատակների համար ստեղծել են տուել իրենց պատմութիւնը, իրենց գովաբանական վէպը ե՛ւ չափազանցումներով, ե՛ւ միտումնաւոր գունաւորումներով, ե՛ւ իդէալական մտացածին քաջագործութիւններով:

Հոգեւորական պատմագիր Մովսէս Խորենացին, պատմական հայեացքով նայելով իրերին եւ Արշակի վախճանը նկատի ունենալով, կարող էր հոգեւորականներին չսիրող Արշակին «ինքնահաճ» եւ «ամբարտաւան» համարել, ծաղրել նրան, գրելով, թէ նա միայն «վարձակների» երգերի մէջ էր քաջ եւ արի երեւում: Բայց այդ երգերի մասին այդպէս չէր կարող մտածել ինքն Արշակը: Նա, ըստ Ամմիանոսի, իրօք լքուած էր հռոմայեցիներից (եւ ոչ թէ, ինչպէս Խորենացին գրում է, իբր Արշակն ինքը «նըշկահեալ արհամարհեաց զնոսա»). Նա միաժամանակ եւ ստիպուած էր մենակ երկարամեայ ծանր պատերազմ վարել իրենից շատ ու շատ զօրեղ Շապուհի դէմ, որ ձգտում էր ոչնչացնելու նրան եւ նրա տէրութիւնը: Արշակին եւ նրա նախորդներին ու յաջորդներին հէնց այդպիսի քաջութեան եւ արիութեան մասին երգեր ու վէպեր էին պէտք, հերոսական բանաստեղծութիւն եւ հերոսների գաղափարականացում էր հարկաւոր իբրեւ պրոպագանդայի միջոց: Վիպասանի եւ առհասարակ ֆէոդալի հայեացքը վէպի եւ պատմութեան վրայ՝ այնպիսի էր, որ նրանց համար միեւնոյն էր, թէ երգ ու վէպի մէջ իրական, այսինքն, իսկապէս կատարուած եղելութիւններ եւ իրօք ապրած անձե՛ր են հանդէս գալիս, թէ՛ չէ: Բաւական էր, որ դրանք կարող էին ունկնդիրներին երազել տալ նոյնպիսի սխրագործութիւնների մասին: Թագաւորին ու իր սպասաւորներին անհրաժեշտ էր ծանր պատերազմի ժամանակ ամրացնել իրենց դիրքը: Դրա համար նրանց պէտք էր պարծենալ իրենց գործերով, իրենց ծագումով փառաւոր նախնիքներից: Նրանց հարկաւոր չէր եղելութիւնների իսկական պատմութիւնը, եւ «վէպի նպատակը չի եղել վերարտադրել պատմութիւնը»: Գուսանը վիպում է այնպիսի պատմութիւններ եւ պատմական իրողութիւններն այնպէս փոփոխում է եւ այնպէս է պատմում, որ իր պատուէր տուողին հնարաւոր լինի պատմութիւնն

օգտագործել իր նպատակների համար: Իսկ այդ նպատակը եղել է ազդել ունկնդիրների վրայ հերոսականով, անպարտելի մարտիկների սխրագործութիւններով, որպէսզի ունկնդիրներն իրենք էլ ցանկանան նոյնն անել: Այդտեղ, դրա մէջ է հերոսական բանաստեղծութեան սոցիալական նպատակը: Այդ բանը շատ լաւ գիտեն իրենք գուսանները:

Ուսեալ Ղազար Փարպեցին, անշուշտ, «ճշգրտաբանութիւն» չէր համարում եւ չէր էլ կարող համարել Բուզանդի բոլոր չափազանցումները: Նա, Վահան Մամիկոնեանից քաշուելով, մեղմօրէն նկատում է, թէ Մամիկոնեանների այդ պատմութեան մէջ կան «ի տեղիս ուրեք… բանք ինչ ոչ յարմարք եւ դիպողք», «անպատշաճ կարգումն»: Նա այդ պատմութիւնն անուանում է նոյնիսկ ոչ «գիտնոց բանք», այլ «անմտացն շաղփաղփանք»: Այդպէս չեն մտածել, սակայն, Ղազարի ժամանակակից մարտիկներն իրենք, ինչպէս, օրինակ, ըստ Փարպեցու, «Մտաւոր եւ քաջ այրն Վահան, տէրն Մամիկոնէից, զօրավարն Հայոց», որ շատ մարտեր էր վարել պարսիկների դէմ: Նա «արթնամիտ խորհրդականութեամբ ուշադրեալ այսմ ամենայնի», — այսինքն Բուզանդի մասին եղած կարծիքներին, — հրամայում է Փարպեցուն՝ պատմութիւնը շարունակել Բուզանդի թողած տեղից: Նրան պէտք էր ոգեւորել ռազմիկներին քաջերի ու արիների օրինակով, թէկուզ նրանց մտացածին գործերով, եւ զգուշացնել անարիներին եւ վատերին դաւաճանների օրինակով՝ պարսաւելով նրանց արարքները եւ պատժել տալով նրանց: Այս նպատակն է դնում Վահանը պատմութեան համար(1), նոյնպէս եւ ինքը Ղ. Փարպեցին եւ ընդհանրապէս հին պատմագիրները: Չպէտք է կարծել, թէ այն, ինչ որ պատմագիր Ղազարն ու զօրավար Վահանը մտածել ու գործադրել են գրաւոր կերպով, նոյնը չեն արել առաջ, գիր չեղած ժամանակ, ուրիշ զօրավարներ ու թագաւորներ եւ գուսանները: «Տարեգրութիւնների եւ էպոսի սոցիալական միտումը միեւնոյնն է: Տարեգրութիւնները, ինչպէս եւ վէպը, գովաբանական են»: Նրանց բովանդակութիւնն էլ ընդհանրապէս նոյն է. թագաւորների եւ իշխանների պատերազմներ, յաղթութիւններ, ազգաբանութիւններ, մահեր եւ այլն, միայն վէպի մէջ այդ ամէնն առանց որեւէ ժամանակաբանութեան եւ աւելի չափազանցրած եւ ընդհանուր վիպական մոտիւների հետ աւելի խառն:

## ՎԷՊԻ ՅՕՐԻՆՈՒԱԾՔԸ

1. Սիւժետները:— *Մեր այս վէպը բաւական հարուստ է զանազան սիւժետներով: Կան նաեւ նոյն սիւժետների փոփոխակներ, որոնք վկայում են, որ վէպը բերանացի ապրել եւ զարգացել է մինչեւ 5-րդ դարի կէսերը: Դրանից է առաջացել այն, որ մեր այս Վէպի մէջ պատմագիր Բուզանդը կամ հէնց վիպասանները մտցրել են* կրկին պատմուածքներ, *այսին-*

(1) Ղազարայ փարպեցւոյ Պատմութիւն Հայոց, Թիֆլիս, 1907, էջ 12:

քըն՝ միեւնոյն դէպքը, փոքր ինչ փոփոխուած ձեւով, պատմւում է երկրորդ անգամ: Այսպիսի կրկին պատմուածքներ են անպայման հիւսիսային ազգերի արշաւանքները Խոսրով Կոտակի, սրա հօր՝ Տրդատի, սրա հօր՝ Մեծն Խոսրովի օրով, եւ եթէ աւելի բարձր գնանք ըստ Խորենացու, Մեծն Խոսրովի հօր՝ Վաղարշի օրով եւս, որ թոռն է վիպական Արտաշէսի, որի օրով նոյնպէս արշաւում են հիւսիսականները: Դա մասամբ, անշուշտ, անդրադարձում է կեանքի մէջ իրօք կրկնուած եղելութիւնների: Կրկին պատմուածքներ են Արշակի երկու անգամ փախչելը Պարսից Շապուհի մօտից (Բուզ., Դ. 16, 20), եւ պարսիկների բազմաթիւ յարձակումները միեւնոյն թագաւորի կամ զօրավարի օրով, ինչպէս Խոսրով Կոտակի, մանաւանդ Արշակի, Վասակի ու Մուշեղի: Խորենացին, օրինակ, մի Ջիրաւի ճակատամարտով վերջացնում է պարսիկների դէմ կռիւը Պապի ժամանակ, իսկ Բուզանդը, որ հաւատարիմ է մնում ժողովրդական պատմուածքին, երեք անգամ Շապուհին յարձակուել է տալիս հայերի վրայ. իսկ Արշակի ժամանակ շատ աւելի անգամ: Յիշենք նաեւ Աղձնեաց բդեշխի ապստամբութիւնը եւ պատժուելը մէկ՝ Խոսրովի օրով, երբ Բակուր բդեշխի որդիներից մէկն ազատւում է, մէկ էլ՝ Արշակ թագաւորի օրով, երբ ամենից առաջ Աղձնեաց բդեշխն է անցնում Շապուհի կողմը, «եւ պարիսպ ածէին ի Հայոց կուսէ, որ Զորայն կոչեն, դրունս դնէին եւ զատուցին զիւրեանց աշխարհն ի Հայոց»: Պապի ժամանակ Մուշեղը բոլոր ապստամբ իշխանների հետ, ինչպէս վերեւում գրեցինք, պատժում է եւ Աղձնեաց իշխաններին. «Զերբակալ արարեալ զբդեաշխն Աղձնեաց, առ նմին կոտորեցին զկանայս եւ զորդիս նոցա ի գերութիւն վարեցին»: Կրկին պատմուածքներ կարելի է համարել իսկապէս նաեւ այն էպիզոդները, որոնք կազմուած են միեւնոյն թեմայով, որ է՝ անհաւատարիմ եւ անհլու իշխաններին պատժելը: Դրանք եւս միեւնոյն սիւժետի վարիանտներ են:

Շատ վիպական երգերի ու վէպերի մէջ տարածուած մի սիւժետ է նաեւ տիրոջ ու հաւատարիմ ծառայի ընդհարումը: Տէրը կասկածում է իր վասալի հաւատարմութեան մասին, թշնամանում է նրան. բայց յետոյ բացւում է ծառայի անմեղութիւնը: Անարդար ամբաստանութեան պատճառով՝ ունկնդրի համակրութիւնն ուղղւում է հերոսի կողմը. եւ աւելի եւս զգալի է դառնում նրա հաւատարմութիւնն ու իդէալացումը, որովհետեւ հերոսն իր անմեղութիւնը ցոյց տալու համար աւելի մեծ քաջագործութիւններ է անում: Այսպէս եւ մեր Վէպի մէջ Մուշեղը Պապի օրով: Սիրուած սիւժետներ ու մոտիւներ են, ինչպէս տեսել ենք, ամուսնութիւն, որսորդութիւն, աւարառութիւն, տիրասիրութիւն եւ թագաւորի անձի անձեռնմխելիութեան համար յօրինուած պատմուածքները, հերոսի մահը, մահուան վրէժխնդրութիւնը եւ ուրիշները:

Առաջին մեծ ու կարեւոր պատմական սիւժետը, որ նոյնպէս մի քանի անգամ կրկնուած է, դա, ինչպէս ասել ենք, թշնամիների ժամանակաւոր աջողութիւնն է: Հայ թագաւորը, կամ հերոսը, խաբէական նենգութեան զոհ դառնալով՝ ընկնում է դաւաճանի ձեռով: Թշնամին կամ Պարսից թա-

դաւորը տիրում է Հայաստանին, ապստամբում է եւ աւերում։ Ապա Հայերը յոյների օգնութեամբ վրէժ առնելով, կոտորում, քշում են պարսիկներին, եւ թագաւորում է ընկած թագաւորի որդին։ Այս է Խոսրով Մեծի ու Տրդատի, Տիրանի ու Արշակի, Արշակի ու Պապի վէպերի փարուլան սքեմատիկ ձեւով։ Նոյնն է եւ Մուշեղի ու Մանուէլի վէպը։ Մուշեղն սպանւում է դաւադրութեամբ։ Մանուէլն առնում է իր եղբօր վրէժը, Թշնամուն քշում է երկրից եւ ինքն իշխում։ Այդ վէպերից իւրաքանչիւրն ընդհանուր տիպական կողմով, կարծես, մի փոփոխակ է միայն։ Դրանց հետ սքեմապէս նոյնանում է նաեւ Երուանդի եւ Արտաշէսի վէպը։

Համեմատելու համար դնենք այստեղ հետեւեալը․

1․ Արտաշէսի հօրը սպանում են․ նոյնպէս եւ Տրդատի հօրը։

2․ Թշնամին, Երուանդը, տիրում է Հայաստանին։ Թշնամի Արտաշիրը տիրում է Հայաստանին։

3․ Սմբատն՝ Երուանդի ձեռից ազատում է Սանատրուկի որդիներից մի երեխայ, Արտաշէսին։ Դայեակը նրան տանում է Պարսից կողմը, Պարսից թագաւորի մօտ։ Նոյնը պատմւում է նաեւ մանկիկ Տրդատի համար, որին փախցնում են հռոմայեցոց կողմերը, «ի դուռն կայսեր»։

4․ Արտաշէսն այնտեղ սնւում, մեծանում է։ Նրա դայեակը շատ քաջութիւններ է անում․ դրա համար Պարսից թագաւորն օգնական զօրքեր է տալիս եւ Արտաշէսին ուղարկում է Հայաստան իր հայրենի գահին տիրանալու։ Նա յաղթում է Երուանդին եւ ինքը թագաւոր դառնում։ Նոյնը պատմւում է եւ Տրդատի համար։ Նա քաջագործութիւններ է անում և հռոմէական զօրքերով գալիս, յաղթում է պարսիկներին ու թագաւորում։

5․ Վիշապ Երուանդից յետոյ՝ վիշապազն Մարերի դէմ կռիւը շարունակւում է Արտաւազդի ձեռով եւ հէնց իրեն Արտաշէսի համար ասւում է «շնոսս (=զզարմս Աժդահակայ, զՄարս) բազում չարչարեաց Արտաշէս» (Խոր․, Բ․ 61)։ Տրդատն էլ շարունակ կռւում է պարսիկների դէմ։

6․ Արտաշէսի կռիւը հիւսիսական ալանների եւ ուրիշ լեռնականների դէմ։ Նոյնը նաեւ Տրդատի համար է պատմւում։

7․ Հռիփսիմէի դէպքի փոխանակ՝ առեւանգումն Սաթինիկի և ամուսնութիւն։

8․ Արտաշէսի օրով Ամատունիներ եւ ուրիշներ գալիս են Հայաստան։ Տրդատի օրով Մամիկոնն է գալիս Հայաստան։

Ինչի՞ց է առաջանում այդ նմանութիւնը։— Հին վիպական սիւժետները բոլորը հիմնուած են որոշ ֆէոդալական դարաշրջանի պատմութեան ու կենցաղի վրայ։ Կեանքի մէջ յաճախ նման բաներ կրկնուել են․ ուստի վիպական սիւժետները նորոգուել են նոր նման եղելութիւնների ազդեցութեամբ։ Այդ դէպքում հին սիւժետների գործողութիւնն ընդհանրապէս աւելի կայուն է լինում, քան անունները։ Ուստի հին սիւժետներին վերակցւում են նոր հերոսներ, նոր անուններ հների փոխանակ, բայց մարդկանց յարաբերութիւններն ու եղելութիւններն էապէս մնում են նոյն հները։ Այսպիսով առաջ են գալիս նոր պատումներ նոյնանման նիւթով, բայց տարբեր անուններով,

բնականաբար նաեւ մանրամասնութիւնների եւ պատմուածքի մէջ մտած էպիզոդների եւ երկրորդական սիւժետների կամ մոտիւների տարբերութեամբ: Ապա դարձեալ՝ վիպական երգերն ու զրոյցներն իրենց զարգացման ընթացքում հետզհետէ հեռանալով իրենց հիմքի պատմական իրականութիւններից՝ ստանում են ընդհանուր բնաւորութիւն եւ նմանում են իրար: Այդպիսով կազմւում են վիպական սիւժետների որոշ տիպեր, սքեմաներ, որոնց եւ հետեւում են վիպասաններն իրենց ստեղծագործութեան ժամանակ: Ուստի միեւնոյն սքեմաներով նման սիւժետներ պատմւում են տարբեր վիպական անձերի վրայ:

Քանի որ մեր այս վէպի իսկական բնագիրը չունենք, դժուար է կատարելապէս ճիշտ գաղափար կազմել սիւժետների յաջորդութեան մասին: Բայց եւ այնպէս Ագաթանգեղոսի եւ Բուզանդի պատմածներից բաւականաչափ երեւում է, որ «Պարսից պատերազմ» վէպի մէջ եւս առանձին մեծ սիւժետներն, ինչպէս եւ սիւժետների տարրերը, մոտիւները, միեւնոյն սիւժետի մէջ դասաւորուած են գլխաւորապէս ժամանակի յաջորդութեամբ, բայց սովորաբար ոչ առանց պատճառական կապակցութեան: Այդ է այս Վէպի, ինչպէս եւ մեր միւս աւանդական վէպերի մէջ, եղելութիւնների զարգացման էական սկզբունքը: Կան, հարկաւ, նաեւ առանձին էպիզոդներ, որոնք միմեանցից անկախ են եւ որոնց կապակցութիւնն ամբողջի նկատմամբ՝ կա՛մ անորոշ է մնում, կա՛մ լինում է գործող անձերի նոյնութեամբ: Բացի այդ՝ ներքին պատճառական կապը տարբեր սիւժետների մէջ՝ երբեմն թոյլ է, կամ պատմուածքի մէջ ուշ է զգացւում: Այդպիսի դէպքերում սիւժետների յաջորդութիւնը լինում է սովորական բանաձեւերով՝ «յայնմ ժամանակի», «ապա», «զայնու ժամանակաւ» եւ այլն: Երբ պահուած է եղելութիւնների բնական պատճառա-ժամանակական յաջորդութիւնը, այն ժամանակ առաջ են գալիս ամբողջի մէջ նորանոր կացութիւններ, սովորաբար գործող անձերի հակադիր միտումներով: Դրանով գործողութեան պատմըւածքի մէջ շարժում է առաջ գալիս, որ եւ գրաւում է ունկնդիրների ուշադրութիւնը:

Վիպասանները վիպական «լարում» ասածն առաջ են բերում մի սովորական եղանակով: Նրանք գործողութիւնը հասցնում են մի կէտի, երբ, կարծես, ամէն ինչ վերջանում է, եւ երբ ունկնդրի կարեկցական համակրութիւնն ուղղւում է Հայաստանի թագաւորի կամ հերոսի կողմը, որ բաց սրտով, «միամտութեամբ», հիւրընկալում է դաւադիր մարդասպանին (Խոսրով Մեծ, Տիրան), կամ «միամտութեամբ հաւատում է» թշնամուն (Արշակ) եւ հէնց դրա համար զոհ է գնում: Յետո՞յ, — հարց է տալիս ունկնդիրն այդ միջոցին՝ գործողութեան ընթացքով հետաքրքրուած: Մի՞թէ ամէն բան վերջացաւ: Բայց ահա հէնց այդ ժամանակ գործողութեան մէջ բերւում է մի նոր հանգամանք (Տրդատի ազատուելը. նախարարների կողմից Անդովկի եւ Արշակի դիմելը յունական կայսրին. նոյնպէս եւ Մուշեղի դիմումը): Դրանով գործողութիւնը նոր ընթացք է ստանում, եւ ունկնդիրները սպասում են վրէժխնդրութեան, որ եւ վրայ է հասնում մի նոր

*պատումի մէջ: Վէպի գործողութեան այսպիսի զարգացումը, հարկաւ, անդրադարձնում է այն, ինչ որ իրականութեան մէջ տեղի է ունեցել: Ինչպէս կեանքի եղելութիւնների, նոյնպէս եւ Վէպի եղելութիւնների զարգացումն, ուրեմն, այս դէպքում նոյնն է. դրանց երկուսի էլ ամէն մի յաջորդ փուլը հետեւանք է նախորդին: Եւ այս է հէնց, որ Վէպի պատմուածքի մէջ բնականութիւն եւ հետաքրքրութիւն է ծնեցնում:*

2. Վէպի միութիւնը: — *Ինչպէս ասուեց, մեր երկրորդ հին Վէպն էլ կազմուած է մի շարք նոյն ցիկլին պատկանող փոքրիկ վէպերից կամ առանձին պատումներից, որոնց կապակցութիւնը կատարուած է շատ նախնական ու պարզ ձեւով: Թէ «Պարսից պատերազմը» վէպն իրօք կազմուած է եղել տարբեր եւ անջատ պատումներից, ինչպէս է մեր նոր ժողովրդական վէպը, այդ շատ պարզ երեւում է Բուզանդի պատմուածքների մէջ: Բերենք դրանցից երկուսը:*

*Թէ Տիրանի եւ Արշակի վէպերն առանձին-առանձին պատումներ են եղել, այդ տեսնում ենք այն տարբերութիւնից, որ կայ Տիրանի վէպի վերջի եւ Արշակի վէպի սկզբի մէջ (Բուզ., Գ. 21. Դ. 1): Տիրանի վէպի մէջ պատմըւում է, թէ Պարսից Թագաւոր Ներսեհը խնդրում է, որ Վաղէս կայսրն իր, Ներսեհի, գերի կանանցն արձակի, բայց կայսրը Թուղթ է դրում Պարսից Թագաւորին, թէ «Նախ դու, ասէ, դարձուսցես զպետութիւն առեալ յերկրէն Հայոց, եւ զԹագաւորն Տիրան ինքնին զկնովքն, եւ զամենայն ինչ զոր առեալ իցէ անտի. ապա յորժամ զայդ արասցես, եւ ես զկնս դարձուցից զոր առեալ եմ. զի եթէ ոչ՝ նախ դու զնոցա զաւարն դարձուսցես, եւ (ոչ) ես ապա զքոյդ դարձուցից»: Պարսից Թագաւորը կատարում է կայսրի պայմանը: Տիրանը կուրութեան պատճառով հրաժարւում է Թագաւորութիւնից. Ներսեհը նրա փոխանակ Թագաւորեցնում է Արշակին եւ իր հօր ու կանանց հետ մեծ պատրաստութեամբ ուղարկում է Հայաստան: Ապա նա կայսրի դեսպաններին էլ ետ է ուղարկում, որ գնան կայսրին պատմեն, թէ ինչպէս ինքը նրա պայմանը կատարել է: Այդ ժամանակ կայսրն էլ Ներսեհի գերի կանանց է արձակում: Արշակի վէպի սկզբում, սակայն, այս պատմութիւնը տարբեր ձեւով է: Նախ կայսրն է Պարսից գերիներին արձակում, ապա Պարսից Թագաւորն արձակում է Արշակին եւ նրա հօրը. «Եւ դարձուցանէր կայսրն Յունաց զգերութիւն արքային Պարսից: Ապա եւ Թագաւորն Պարսից Ներսեհ Թագաւորեցոյց զԱրշակ որդի Տիրանայ եւ հարբ նորին եւ հանդերձ կանամբք իւրեանց եւ ամենայն գերութեամբք հանդերձ...Խաղաց գնաց Արշակ արքայ Հայոց Մեծաց. Թագաւորեաց յերկրին Աստրեստանեայց հանդերձ հարբն իւրով եւ ամենայն ընտանեօքն իւրովք. եկն եհաս յերկիրն Հայոց եւ ժողովեաց զցրուեալս երկրին, եւ Թագաւորեաց ի վերայ նոցա» (Բուզ., Դ. 1): Այս տարբերութիւնը ցոյց է տալիս, որ Տիրանի եւ Արշակի վէպերն իրարուց անկախ պատումներ են եղել:*

*Երբ Խօսրով Կոտակի օրով Վաչէ Մամիկոնեանն ընկնում է մարտի*

մէջ, նրա որդին «փոքրիկ մանկիկ» Արտաւազդին բարձրացնում են իր հօր իշխանութիւնն ու գահը.

Եւ զզօրավարութեան զգործ
Յանձն առնէին Արշաւրայ Կամսարականի,
Իշխանին Շիրակայ եւ Արշարունեաց գաւառին,
Եւ Անդովկայ իշխանին Սիւնեաց.
Զի նոքա փեսայք էին տանն Մամիկոնեան տոհմին:

Բուզ., Գ. 11

Հետագայում, Տիրանի գերութեան վրէժն առնելու համար, Հայոց աւագանին հէնց այդ երկուսին, Անդովկին, «նահապետն Սիւնեաց», եւ Արշաւրին, «նահապետն Արշարունեաց», պատգամաւոր են ուղարկում Յունաց թագաւորի մօտ, եւ սա հէնց այդ երկուսի հետ լրտեսում է պարսկական բանակը, եւ յաղթութիւնից յետոյ նրանց վերակացու է կարգում Հայաստանի վրայ (Բուզ., Գ. 21): Ուրեմն, Անդովկն առաջուց արդէն լաւ յայտնի է: Բայց եւ այնպէս Արշակի վէպի մէջ «Գնէլ եւ Փառանձեմ» մասն սկըսւում է այնպէս, որ Անդովկը նոր է հանդէս գալիս իբրեւ մի նոր անձ.

Զայնու ժամանակաւ էր դուստր մի գեղեցիկ՝
Անդովկայ ուրումն,
Մի ի նախարարացն, նահապետին Սիւնեաց,
Որում անուն Փառանձեմ կոչէր:

Բուզ., Դ. 15

Այստեղ «ուրումն», «մի ի նախարարաց» որոշումները հէնց ցոյց են տալիս, որ մի առանձին պատում է սկսւում: Վիպասանը նկատի չունի նախորդ մասը, որ նա կարող էր նոյնիսկ իմացած չլինել, ինչպէս նոյնը տեսնում ենք նաեւ «Սասնոյ Ծռերի» պատումների վերաբերմամբ: Բուզանդն ինչպէս լսել է այդ Փառանձեմի պատումը, այնպէս եւ սկսել է պատմել:

Մի ընդհանուր գործողութեան կապ տեսնել «Պարսից պատերազմի» բոլոր տարբեր պատումների միջեւ՝ իբրեւ միութեան կենտրոն, ի հարկէ կարելի չէ: Բայց եւ այնպէս այդ տարբեր պատումներն իրար հետ միացած մի մեծ ամբողջութիւն են առաջ բերել, թէպէտ ոչ գեղարուեստական եւ ոչ այն մտքով, թէ այդ ամբողջը ծայրէ ծայր մի վիպասանից պատմուած լինի: Դա մի վէպ է եղել եւ ունի իր միութեան կենտրոնն այն ձեւով, ինչ ձեւով որ Ֆիրդուսու Շահնամէն ունի: Այստեղ միութիւնը կազմում է Իրանի եւ Թուրանի կռիւը, որ իրար հետ կապում է բազմաթիւ իրար յաջորդող սերունդների մասին պատմուած տարբեր վէպերը. իսկ մեր այս մեծ Վէպի միութիւնն է Հայոց եւ Պարսից պատերազմը: Առաջին ճիւղի մէջ հէնց ըսկըզբից, ինչպէս պէտք էր, դրւում է այդ ընդհանուր դրոյթը, թեման, որից, իբրեւ հիմնական պատճառից, ծագում է գործողութիւնը, որով եւ ամբողջ Վէպը միական երկ է դառնում: Դա երկու երկրի հարստութիւնների հակամարտութիւնն է, Հայաստանում՝ Արշակունի տոհմի, որի կողքին կայ

պատերազմ վարող սպարապետութիւնը, իսկ Պարսկաստանում՝ Սասանեան տոհմի, այդ տոհմի թագաւորն իր մեծամեծների խորհրդով: Այս երկուսն իրար հետ բախւում են իրենց տոհմային շահերով, մի բախում, որ ժամանակակից ֆէոդալների աչքին կարեւոր արդիական իրականութիւն, քաղաքական խնդիր է եղել, իսկ Հայաստանի համար ոչ միայն ներկայի, այլեւ ապագայի նկատմամբ: «Ոչ թողից (զ)քեզ եւ ոչ որդւոց քոց [չեմ ներիլ քեզ եւ քո որդիներին] զվրէժ նախնեաց իմոց եւ զմահն Արտեւանայ արքայի»: (Բուզ., Դ. 54): — Արշակ թագաւորի այս խօսքը, որ նա ասում է Շապուհին, առաջնորդող գաղափար է եղել հայերի համար պատերազմի սկզբում միայն, երբ նրանք վրէժ առնել են ուզում: Բայց շատ շուտով դրութիւնն փոխւում է. հայերը կռւում են իրենց անկախութեան համար: Ինչպէս վերեւում ասւեց, Վէպի կենտրոնական գաղափարն է երկրի պաշտպանութիւնն ի դէմս Արշակունի բնիկ թագաւորական տոհմի: Այս է հիմնական ընդհանուր գաղափարը եւ ընդհանուր դրութիւնը, որ անցնում է ամբողջ Վէպի միջով, որի մէջ եւ կատարւում են սերունդների յաջորդութեամբ բազմաթիւ իրողութիւններ: Դրանով եւ միանում են Վէպի առանձին մասերը: Դա եղել է եւ իրականութեան, իրական պատմական կեանքի էական խնդիրը. Վէպն օբեկտիւ իրականութեան ցոլացումն է: Այս ընդհանուր դրութիւնը, ընդհանուր շահն ու խնդիրը, միեւնոյն ժողովուրդների, պարսից եւ հայոց դարաւոր ձգտումներն իրար վերաբերմամբ, դա է Վէպի միութեան գլխաւոր կապը, իբրեւ մի ընդհանուր ֆոն, որի մէջ զետեղուած են առանձին հերոսների արարքները:«Սասնայ Ծռերի» ճիւղերից իւրաքանչիւրը նոյնպէս մի քանի անկախ վէպերից ու զրոյցներից է կազմուած, բայց եւ այնպէս դրանք բոլորը միասին մի վէպ են, որովհետեւ մի մարդու գլխի եկած բաներ են, եւ բոլոր սերունդների ճիւղերն եւս միասին մի ընդհանուր մեծ վէպ են, որովհետեւ հերոսները հայր ու որդի են, եւ պայքար մղում են արտաքին թշնամիների դէմ: Մեր նոր ժողովրդական վէպի այս կենդանի օրինակը բացատրում է մեզ մեր հին Վէպի ընդհանուր յատկութիւնը. այն է՝ Մամ-Կոնից մինչեւ Մանուէլ պատմուածները, առանձին ճիւղերը, նոյնպէս մէկ վէպ են կազմել եւ աւելի եւս հեշտութեամբ, քանի որ կայ ոչ միայն սերունդների յաջորդութիւն, այլեւ սկզբից մինչեւ վերջը իշխել է մի ընդհանուր դրութիւն, կայ մի հիմնական գաղափար, մի ընդհանուր թեմա, որով յօրինուել է առանձին դիպուածների մի շղթայ, որի օղակները թէպէտ եւ մէկը միւսից անկախ, բայց եւ իրար հետ կապուած են եղել: Այդ շղթայի ամէն մի առանձին օղակը, սակայն, — որ մի անկախ վէպ կամ պատում է եւ միւսներից անջատ եւս կարող է պատմուած լինել, — ունեցել է իր ուրոյն ընդհանուր դրութիւնը, իր թեման, որից ծագում եւ լուծում է ստանում իր գործողութիւնը, որ եւ շատ անգամ ազդում է նաեւ յաջորդ պատումի վրայ: Ուստի եւ այդպիսի դէպքերում այս կամ այն մասի մէջ անկախ զրոյցները կամ պատումները համեմատաբար աւելի սերտ են կապւում իրար հետ: Ճիշտ այս վիճակն ունի նաեւ «Սասնայ Ծռերի» ամբողջութիւնն իր բոլոր մասերով ու զրոյցներով:

*Մի առ մի վերլուծել այս մեծ հին Վէպի ամէն մի առանձին օղակը եւ ցոյց տալ, թէ ի՛նչ է կազմում սրա գործողութեան հիմունքը, այդ մեզ շատ հեռուն կը տանէր: Միայն նկատենք, որ մի քանի անկախ մասերի մէջ միութիւն չի երեւում, կա՛մ այն պատճառով, որ պատմագիրների մէջ չի պահուած, կա՛մ որ աւանդականի մէջ եւս չի եղած, ինչպէս նոյնը տեսնում ենք եւ մեր Նոր Վէպի մէջ:*

3. Բացադրութեան (շարադրութեան) եղանակները: — *Վէպն ասելու գլխաւոր եղանակը բնականաբար է վիպելը, թուելը, պատմելը, վիպասումը, որով ծաւալւում եւ առաջ է ընթանում գործողութիւնը: Բայց ինչպէս ամէն աւանդական վէպերի մէջ, այստեղ էլ նիւթի բացադրութեան համար տեղ ունեն նաեւ նկարագիրն ու տրամախօսութիւնը: Այս վերջին երկուսից նկարագիրն անմշակ վիպական բանահիւսութիւնների մէջ առհասարակ, ինչպէս եւ մեր Նոր Վէպի մէջ, փոքր տեղ է բռնում. «Պարսից պատերազմի» մէջ, անշուշտ, նաեւ այն պատճառով, որ պատմագիրները կարեւորութիւն չեն տուել դրան: Տրամախօսութիւնը եւ աւելի եւս ուղղակի խօսքըն ընդհանրապէս մեծ տեղ են բռնում աւանդական վէպերի մէջ, եւ բաւականին պահուած են մեր այս հին Վէպի նոյնիսկ այն ձեւի մէջ, որ տուել են մեզ Ագաթանգեղոսն ու Բուզանդը: Այդ մէջ է բերւում սովորական կարճ «ասէ» եւ նման բառերով: Դրա համար օրինակներ կարելի է տեսնել վերեւում բերուած հատուածների մէջ, այլեւ Տիրանի դրուագի (Բուզ.,Գ. 20), Արշակի երկրորդ փախուստի դրուագի (Դ. 20), Մուշեղի (Ե. 4), Մանուէլի (Ե. 37, 43) եւ շատ ուրիշ դրուագների մէջ, ինչպէս եւ վերեւում բերուած Դրաստամատի դրուագի մէջ:*

*Արտաքինի՝ հագուստի, մարմնի, դէմքի, շարժուածքի, կռուի եւ այլ նկարագիրներ ընդհանրապէս սակաւ են. բայց եւ այնպէս մեր այս հին Վէպի մէջ այդպիսի նկարագիրները համեմատաբար շատ աւելի են, քան «Սասնայ Ծռերի» այս կամ այն պատումի մէջ: Բերենք մի երկու օրինակներ.*

Վասն զի սէգ իսկ էր [Տրդատ] առ հանդերձս,
Եւ այլ ուժով պնդութեան, հաստատութեամբ,
Բուռն ոսկերօք եւ յաղթ մարմնով,
Քաջ եւ պատերազմող անհնարին,
Բարձր եւ լայն հասակաւ:

*Ագաթ.*, *էջ* 71

*Ահա եւ Մանուէլի ու իր եղբայր Կոնի (Կոմսի) նկարագիրը, երբ նրանք Պարսկաստանից Հայաստան են գալիս.*

Եւ էին հետիոտք երկոքին եղբարքն.
Եւ էին երկոքեան մեծք, անհեդեդք.
Երկոքեան անձնեայք որպէս սկայազունք:
Մինչ դեռ գային ի ճանապարհի,
Ոչ կարէր Մանուէլն գնալ,

Զի ոտիւքն ցուած էր․
Այս կոմս եղբայր իւր բստանձնեալ, առեալ բառնայր,
Եւ տասն տասն խրասախ բերէր ըստ անձին
Զայնչափ այրն զանհեդեդ, զանարի»։

*Բուզ․, Ե․ 37*

*Վարազդատի եւ Մանուէլի մարտից․*

Իբրեւ զաչս ի վեր ամբառնայր արքայն Վարազդատ
Եւ նայէր ընդ գալն իւր,
Եւ տեսանէր զսպարապետն Մանուէլն,
Ի մեծութենէն հասակին,
Եւ ի չքեղութենէ անձինն,
Եւ յամրակուռ, երկաթապատ,
Ցոտիցն մինչեւ ցգլուխն,
Առ հասարակ յանվթար զինէն,
Ի հաստամեստ յանձնէն,
Եւ ի հաստատուն երիվարէն,
Եւ յապազէն վառելոյն,
Ցանչարժ սպառազինէն՝
Համարեցաւ, կշռեաց զնա ի միտս իւր
Իբրեւ զլեառն մի բարձր զանմատոյց։

*Բուզ․, Ե․ 37*

*Բերենք մի հատուած եւս Մարդպետ Դղակի սպանութեան դրուագից։ Պատմ թագաւորը հրամայում է ընթրիքի ժամին պատմուճան հագցնել նրան։*

Եւ ազուցին նմա զրասս եւ վարտիս։
Եւ էր հանդերձն անհեդեդ մեծութեամբն․
Զի խորշ զխորշիւ իջանէր,
Մինչ զի ոչ կարէր հանդերձել զանձն իւր,
Զի պատեաց զնա մեծութիւն հանդերձոյն։
Եւ ազուցեալ զպատմուճանն մեծ,
Եած զգօտին ընդ մէջ իւր՝ զորմէ թուրն կախէր․
Եւ սուսեր ընդ մէջ ածեալ,
Եւ խորշ ի գօտւոյ զրատիցն իջեալ,
Զթուրն եւ զսուսերն ծածկէր։
Իսկ զվարտիսն զգեցեալ, եւ մոյկս ազուցեալ,
Եւ զնրանն յազդեր կապեալ,
Եւ ի վերայ նրանին՝
Խորշն ի վարտեացն իջեալ,
Անկեալ ի վերայ նրանին,
Ծածկեալ մինչեւ ի սրունսն։

Եւ ոչ ինչ իմացաւ Գդակ,
Թէ այն մեծութիւն հանդերձոյն՝
Զարոյ նորա իցէ ա՛յն:
Իսկ յինն ժամ աւուրն կոչեցին զԳդակն, եւ ասեն.
«Կոչեն զքեզ յընթրիս ի ներքս յարքունիս»:
Իսկ յորժամ մուծին ի փոք տանցն՝ յորում արքայն էր,
Եւ էր փողն ընդ երկար,
Բազում երդս լոյսիչոյցս էր թողեալ,
Եւ տանէին զնա ընդ ա՛յն.
Կայր շուրջ սպարակիրն փակեալ սակրաւորքն,
Եւ զերդս ամենայն լուսոյն ծածկէին:
Ապա մտեալ շուրջ զնովաւ ի տեղւոջն՝
Զգձգէին զնա սպարակիրքն:
Իսկ նա թէպէտ տանէր ձեռն ի զէն,
Ի խորշխորշան հանդերձիցն,
Պատատեալ՚ցն՝ զոր էր զգեցեալ,
Ոչ զմի զէն ոչ կարաց գտանել:
Ապա զի էր ինքն Գդակն
Այր մեծ եւ անձնեայ, քաջ հարուստ ոսկերօք,
Սակայն ասպարակիր մարդկանն պատեցին զնովաւ,
Եւ բարձին զնա վերըմբարձ.
Եւ տանէին զնա մինչեւ ի դուրս տաճարին արքունի:
Իսկ իբրեւ ետես թագաւորն թէ անդր տանին,
Ասէ. «Մի՛ այսր, մի՛ այսր.
Այլ մուծէք զդա ի տուն պատմուճակացն»:
Քանզի ի փողին զօրք սպարակրացն մուծին զնա ի ներքս,
Ի տունն պատմուճակացն՝ կապեալ ձեռս յետս,
Այսինքն՝ ուր թագ արքունի դնէին:
Եւ անդէն խօսել սկսաւ Գդակն եւ ասէ.
«Ասացէ՛ք ցարքայ, զգէ՛ք,
Ես այս մահու արժանի էի.
Բայց քեզ արժան էր զիս ի հրապարակի սպանանել,
Եւ ոչ ի տան թագաց սպանանել,
Եւ զքո թագդ արեամբ շաղախել»:
Եւ զայս միայն ժամանեաց ասել:
Եւ անդէն ի վանսն պատմուճակացն փողոտեցին զնա:
Եւ հատին զգլուխ նորա,
Եւ հանին, հարին ի նիզակի,
Եւ կանգնեցին ի հրապարակին արքունի:

*Բուզ., Ե. 6*

*Տիրանի Հարտուն Համճկէն ձիու Նկարագիրը բերուած է վերեւում:*

4. Բնաւորութիւնները: — *Գործող անձերի ներքին յատկութիւնների նկարագիրը լինում է սովորաբար մակդիրներով: Դրանցով միաժամանակ երեւում է նաեւ վիպասանի վերաբերմունքը դէպի գործող անձը եւ նրա արարքը: Այսպէս՝ «չարապարծն Մերուժան», «Մերուժան վատանշան», կամ Տիրանին մատնող Փիսակին տրուած մակդիրները՝ «մոլեկան, անօրէն, կատաղախօս, չնաբերան, չորիկ, չոգմող, տիրանենգ, տիրադրուժ, տիրասպանու, տիրամատնիչ». կամ՝ «Մեծն Տրդատ», «քաջ արանցն, աշխարհաշէնն Խոսրով», «Արշակ քաջ». «մանուկ քանսերթուկ»:*

Եւ էր նա [Վարազդատ] մանուկ յաւուրց,
Լի արութեամբ, կորովի ձեռօք,
Քաջ սրտիւ, ի մտաց թեթեւ,
Մանկաբարոյ, տղայահանճար, մանկամիտ:

*Բուզ., Ե. 34*

*Գործող անձերի բնաւորութիւնն եւ նրանց հոգեկան վիճակը պարզւում է գլխաւորապէս նրանց արարքներով եւ խօսքերով: Այս նկատմամբ նրանք, — ինչպէս վէպերի մէջ սովորաբար եւ ինչպէս նիւթից իրենից բխում է, — բաժանւում են երկու խմբի — հայեր եւ պարսիկներ, ինչպէս հայ եւ պարսիկ ազնուականներն, որոնք իրար հակառակ են: Պարսիկները բնորոշւում են իբրեւ չարակն, յաչաղկոտ, չարաբարոյ, նենգ, դառնացող, չար ազգ.*

... Վասն չարակնութեան, յաչաղանաց,
Չարաբարութեան, նենգութեանն ազգին Պարսկաց...
Վասն դառնացող չար ազգին,
Չարութեանն դառնացող ազգին:

*Բուզ., Գ. 20*

*Նրանց զօրավարները, որ յարձակւում են Հայաստանի վրայ կոտորելու համար, բոլորն անկամ մարդիկ են: Երեւում են միայն թագաւորները՝ Արշաւիր, Ներսեհ, Շապուհ, իսկ իշխաններից՝ Անակ, Շապուհ-Վարազ: Այդ մարդիկը բոլորը դաւաղիր են. սէր ու բարեկամութեան պատրուակի տակ աշխատում են.*

Հնար գտանել, մարթել ճանապարհս,
Մեքենայիւք գայթակղութիւնս դնել՝
Որսալ, ըմբռնել զարքայն Հայոց:

*Եւ այդպէս էլ վարւում են. Արտաշիրն Անակի ձեռով դաւադրութեամբ սպանել է տալիս Խոսրովին. Ներսեհը Վարազ-Շապուհի ձեռով գերում է Տիրանին, եւ Շապուհն Արշակին է խաբէութեամբ բռնում: Նրանք միշտ աչք են տնկել Հայաստանին, աւերելու եւ կողոպտելու Հայոց աշխարհը:*

*Հայերն, ընդհակառակն, — եթէ դաւաճաններ չեն եւ պարսիկների*

*կողմն անցնող, — միամիտ են, պարզամիտ, նոյնիսկ թեթեւամիտ, սրտաբաց ու հիւրընկալող են, պարսիկներից կասկածոտ, բայց եւ խաբուող ու վնասուող: Նրանք օտար երկրի աչք դնող չեն, բայց եւ իրենց երկրի քաջ պաշտպան են: Հայ զօրքը դժուարանում է նոյնիսկ մի փոքր երկար մնալ օտար աշխարհում.*

Զի լաւ հաշուէին զմեռանելն
Առաւել քան զկամելն յօտար աշխարհին...
Իսկ Արշակ եւ ամենայն զօրք իւր
Տաղտապէին երթալ զհետ ճանապարհին.
Զի ամենայն ոք յանձնիւր տուն,
Յիւրաքանչիւր տեղի,
Զօրէն բարուց Հայաստան մարդկան անձկացեալ էին:

*Բուզ.*, *Դ.* 20

*Հայերի կողմից որոշ գծագրուած դէմքեր են Տրդատը, Արշակը, Վասակը, Մուշեղն ու Մանուէլը, Փառանձեմն եւ ուրիշները: Ցեշտենք միայն մի գիծ, որի մէջ վիպասանն ուժեղ կերպով հակադրում է հայ եւ պարսիկ հերոսներին: Մինչ Շապուհը կամենալով «թշնամանս առնել (= անարգանք հասցնել) ազգին աշխարհին Հայոց եւ թագաւորութեանն»՝ անասելի կերպով անպատւում է Հայաստանի թագուհի Փառանձեմին եւ չափազանց անարգ կերպով է վարւում հայ ազատների կանանց հետ (Բուզ.*, *Դ.* 55, 58), *Մուշեղն, ընդհակառակն, գերելով Պարսից տիկնանց տիկնոջը եւ Շապուհի բոլոր կանանց, պատուաւոր կերպով ետ է ուղարկում նրանց իրենց ամուսնուն (Բուզ.*, *Ե.* 2), *ինչ որ եւ հետագայում առիթ է դառնում նրա սպանութեան:*

5. Ոճը:— *Մեր երկրորդ հին Վէպի ոճի մասին լիովին ճիշտ գաղափար չենք կարող կազմել, քանի որ ամբողջական իսկական բնագիրը չունենք եւ չենք էլ կարող ասել, թէ Ագաթանգեղոսն ու Բուզանդը որչափով բառացի են օգտուած իրենց իմացած եւ ուրիշներից լսած գուսանական երգերից ու պատմուածքներից: Բայց եւ այնպէս, ինչպէս երեւում է, Բուզանդի «Հայոց Պատմութեան» մէջ շատ բան բառացի բերուած կայ այնպէս, ինչպէս բերանացի կը պատմէր ինքը գուսան—վիպասան Բուզանդը: Այս պատճառով բանահիւսական տարրերը, ինչ որ ոճին եւ ոտանաւորին է վերաբերում, բաւական տեղ ունեն նրա գրքի մէջ: Նոյնը պակաս չափով նաեւ Ագաթանգեղոսի վիպական մասի մէջ: Հէնց սրանցից է առաջանում Բուզանդի գրքի ոչ միայն բովանդակութեան, այլեւ* ոճի առանձնայատկութիւնը *մեր հին մատենագրութեան մէջ:*

*Ամէն քիչ ու շատ հմուտ ընթերցողի համար զգալի է, որ Բուզանդի լեզուն սովորական հին գրական հայերէնը, գրաբարը չէ: Դա ունի «ժողովրդական ոգի». թէպէտ «բաղմաբառ» է, լի կուտակումներով եւ յաճախ անկանոն եւ աւելորդաբան ու անկապ նախադասութիւններով, բայց բնական է, հեշտ հասկանալի, ընտանի եւ հարազատ, լի արդի աշխարհաբարի դարձուածներով. «Ամենայն ինչ բնական է, առանց արուեստի եւ արուեստ—*

*տականութեան եւ հարկ է ըսել՝ հոն լոկ բնութիւնն է խօսողը: Վերջապէս լեզուովը խորին հայկաբան, քերականական տրամաբանութեամբ՝ ճշտիւ ռամիկ, ոճովն՝ արեւելեան»* (1): *Ոճի այս յատկութիւնը ծագում է, բնականաբար, աւանդական բանահիւսութիւնից, որ Բուզանդի համար ծառայել է իբրեւ աղբիւր:*

***Փաւստոս Բուզանդ*** *հեղինակի կարծեցեալ օտարազգիութեան մի նըշան համարել են այն, որ նա իր գրած Պատմութեան մէջ իբր երբեք չի գըրում «աշխարհս Հայոց»: Նախ սխալ է այդ. Բիւզանդի գրքի մէջ թէպէտ սակաւադէպ, բայց կան Պատմագրի կողմից գործածուած՝ «աշխարհս Հայոց», «երկիրս Հայոց»: Ապա յայտնի է, որ աւանդական վէպը հէնց՝ համարւում է ամենից աւելի օբեկտիւ կամ, ինչպէս ասում են, անանձն, անդէմ երկ, այսինքն՝ դրա մէջ հանդէս չի գալիս կամ հազուադէպ է երեւում վիպասանի դէմքը: Պատմուածքը չի արւում առաջին դէմքով: Ուստի եթէ Բուզանդի «Հայոց Պատմութեան» մէջ առաջին դէմքով գործածութիւնները սակաւաթիւ են եւ որ այդ գրուածքի մէջ չի երեւում հեղինակի դէմքը կամ շատ քիչ է երեւում, այդ հէնց ցոյց է տալիս, որ նրա գրքի մէջ բաւական հարազատութեամբ օգտագործուած են վիպական աղբիւրները, լինին սրանք հերոսական վէպը, թէ եկեղեցական զրոյցները:*

*Վիպական ոճի նշական յատկութիւններից մէկն էլ այն է, որ վիպասանները պատմում են ինչպէս ականատեսներ, յիշելով տեղերի ու մարդկանց անունները: Նրանք յաջորդաբար ստեղծում են եւ սիրով ու դանդաղ պատմում են մանրամասնութիւններ եւ այնպիսի հանգամանքներ, որ մեզ համար երկար ու ձիգ են, բայց վիպական ժամանակի պարզամիտ ունկընդիրների համար գրաւիչ են եղել: Այդպիսի վիպական կենդանի պատկերներով զարդարուած են այս Վէպի գրեթէ բոլոր դրուագները: Այդ մանրամասնութիւնների մէջ մէկ մէկ նկատւում են, ինչպէս ասել են, «խիստ անպարկեշտ տեսարաններ», որ նոյնիսկ «լկտիութիւն» են համարել: Այսպէս է, օրինակ՝ Մերուժանի խօսքը.*

Եւ խնդալից եղեալ՝ ասէր,
Պարծելով առաջի իւրոց զօրացն,
Թէ՝ «Վաղիւ յայսմ ժամ
Իմ կալեալ կապեալ ընկեցեալ զՄանուէլն,
Եւ յանդիման նմին
Զկին նորա Վարդանոյշ խայտառակեալ իցէ»:

*Բուզ., Ե. 43*

*Այսպէս են նաեւ այն տեսարանները, որոնցով Շապուհն անպատւում է Փառանձեմին եւ ազնուականների կանանց: Այն դարաշրջանում, երբ ապրել են վիպասանները, ամէն մի՝ այժմ անպարկեշտ համարուած բան ասում պատմում էին առանց դրա մէջ որեւէ անթոյլատրելի բան տեսնելու, ինչպէս որ այժմ էլ մեր պարզամիտ գիւղացիների մէջ, նոյնիսկ կանանց մօտ,*

(1) Ա. Այտնեան, Քննական քերականութիւն, Ներածութիւն, էջ 59, այլեւ էջ 63—118՝ ժողովրդական ձեւերի ու դարձուածների մասին:

*ամէն ինչ պատմւում է իր անունով: Այսպէս եւ Մանուէլը բազմութեան առաջ, Թագուհու ներկայութեամբ մերկանում է եւ իր մարմնի ալիները ցոյց տալիս.«չի յանի յանդամսն աւելի քան գլխուն սպի կայր վերաց, եւ զայն անդամ բացեալ՝ առաջի ամենեցուն ցուցանէր» (Բուզ., Ե. 44): Այսպիսի մի քանի հատուածներ կան նաեւ «Սասնայ Ծռերի» մէջ:*

*Այս վիպական ոճին յատուկ են կրկնութիւնն ու չափազանցութիւնը: Վիպական կրկնութիւնը կամ «կրկնութեան ոճ» ասածն առաջ է գալիս ոչ միայն նոյնաբանութեամբ, նոյն կամ համանիշ բառերի կրկնութեամբ, որ երբեմն առանձին ճոռոմաբան հեղինակներն էլ սիրում են կիրառել, այլ նաեւ նոյն եւ նման հատուածների ու բանաձեւերի, մակդիրների, կամ արտայայտութեան ձեւերի կուտակումով, կամ թէ միեւնոյն միտքը կրկնւում է զանազան խօսքերով: «Պարսից պատերազմը», մանաւանդ Բուզանդի մէջ, լի է այսպիսի ոճական յատկութիւններով, որ կարելի է տեսնել վերեւում դրուած կտորների մէջ: Բերենք այստեղ մի քանիսը միայն:*

Եւ չգոյր թիւ բազմութեանն հեծելազօր գնդացն,
Եւ ոչ համար շերտաւոր հետեւակ զօրուն·
Զի եւ ինքեանք զինքեանս,
Զիւրեանց զօրսն թուել ոչ կարէին···
Եւ եկին, լցին, ծածկեցին զամենայն երկիրն Հայոց·
Քանդեցին, գերեցին, առ հասարակ աւերեցին·
Սփռեցան, տարածեցան զսահմանօք···
Հասանէին, հարկանէին, սատակէին···
Եւ լնուին զդաշտն առապարացն
Առ հասարակ դիակամբք մեռելոց·
Մինչ զի իբրեւ զգետ յարուցեալ
Երթայր արիւնն անհնարին:

*Բուզ., Գ. 7*

*Վերջին տողը հմմտ. «Սասնայ Ծռեր».*

Արնէ խեղեղ ելաւ, էնոնց լեշեր տարաւ:

Եւ տեսին զօրսն Պարսից,
Զի ոչ գոյր թիւ բազմութեանն·
Զի էին իբրեւ զաստեղս երկնից,
Եւ իբրեւ զաւազ առ ափն ծովու·
Զի եկեալ էին անթիւ փղօք եւ անչափ զօրօք:

*Բուզ., Գ. 8*

*Հմմտ. «Սասնայ Ծռեր».*

Քանի մ'աստղ երկինք կա՛յ
Մարամելիք ընկցուն չաղըր — խեվաթ ածի մընչ դաշտին:

*Այս յատկութիւններով վիպական ոճը համապատասխան է ֆէոդալական ժամանակի կենցաղին ու սոցիալական յարաբերութիւններին, գաղափարախօսութեանն ու ճաշակին: Ինչպէս տեսանք, ֆէոդալիզմի ռազմական*

բանաստեղծութեան մէջ հերոսների գաղափարականացումը կատարւում է նրանց արարքների չափազանցումով եւ նոյնի, նոյն սիւժետների ու մոտիւների կրկնութեամբ։ Ոճի նկատմամբ՝ դրան համապատասխան են չափազանցութիւնն ու կրկնութիւնը։ Վէպն արտայայտութիւնն է իշխող դասի։ Իսկ այս դասը, անաշխատ վայելող մարդիկ, պատերազմից ու որսից ազատ օրերը, ձմեռնային երկար գիշերները, շատ ժամանակ ունէին սիրով եւ անձանձրոյթ ունկնդիր լինելու իրենց նախնիքների եւ հէնց իրենց մանրամասն վէպին, թէկուզ դա լինէր կրկնութիւններով, թէկուզ միակերպ պատմէին, թէ ինչպէս Վասակը կոտորում է չարունակ բոլոր պարսկական զօրքերը, «բայց միայն ճողոպրում պրծնում է Մերուժանը վատանչան», մինչեւ վերջապէս նա էլ սպանւում է, ինչպէս եւ բոլոր դաւաճանները։ Այդ մարդիկն իրենց պրիմիտիւ մտածութեամբ չէին խորշում թէ՛ բովանդակութեան եւ թէ՛ ոճական կրկնութիւնից ու միակերպութիւնից, այլ, ընդհակառակն, ինչպէս երեխաները, նոյնիսկ սիրում էին այն։ Ուստի եւ վերեւում յիշուած ոճական յատկութիւնները գտնում ենք ընդհանրապէս նաեւ ուրիշ ազգերի ֆէոդալական վէպերի մէջ իբրեւ մնայուն ձեւեր։

6. **Ոտանաւորը։** — Թէպէտ պատմագիրները (Բուզանդ եւ Ագաթանգեղոս) մեր երկրորդ հին Վէպի իսկական բնագիրը ճշտութեամբ չեն բերել, բայց, ինչպէս վերեւում ասուեց, կան մօտաւորապէս բառացի կտորներ, ուստի եւ ոտանաւորը դեռ տեղ ունի նրանց գրքերի մէջ, կամ ճիշտ ասած, Վէպի ոտանաւորներն ամբողջութեամբ չեն վերածուած արձակի։ Չափածոյութիւնը պարզ երեւում է նրանց շատ տողերի մէջ։ Ոտանաւորի չափը նոյնն է, ինչ որ նաեւ մեր բազմաթիւ հոգեւոր երգերի եւ Վիպասանքի մէջ, այլեւ «Սասնայ Ծռերի» ու վիպական երգերի(1)։ Այստեղ պէտք է նկատել միայն, որ, ինչպէս մեր հին բանաստեղծութեան մէջ ընդհանրապէս, նոյնպէս եւ հին վէպերի մէջ «Զ» նախդիրը բաղաձայնից առաջ եւ «Ն» յօդը բաղաձայնից յետոյ ու յաջորդ բաղաձայնից առաջ, եւ «Բ», «Ս» յոգնակի վերջաւորութիւնները կարող են եւ վանկ համարուել եւ չհամարուել։ Բացի այդ՝ Բուզանդի ձեռագիրների մէջ կան բազմաթիւ այլ ընթերցուածներ, որոնց մէջ ոտանաւորն աւելի ռիթմիկ է։ Պէտք է ասել նաեւ, որ այս վէպի չափածոյութիւնն առաջին անգամն է նկատւում եւ գրուածքն առաջին անգամ տողատւում այս աշխատութեան մէջ։ Ապագայում, երբ ձեռագիրների այլ ընթերցուածները համեմատուած եւ տպագրուած կը լինեն, բանաստեղծական կտորների տողատումն աւելի աջողութեամբ գլուխ կը գայ։

---

(1) Մ. Աբեղեան, Հայոց լեզուի տաղաչափութիւն, Երեւան, 1933, էջ 365–380։

# ԴԱՍԱԿԱՆ ՊԱՏՄԱԳԻՐՆԵՐ

## ՄՈՎՍԷՍ ԽՈՐԵՆԱՑԻ

1. Կենսագրական: — Հայոց գրականութեան առաջին հռչակաւոր մատենագիրն է Մովսէս Խորենացին, շատ կարդացուած, սիրուած ու փառաբանուած, շատ էլ դատափետուած: Նրա անունով մնում են մի շարք երկեր (1), որոնցից ամենայայտնին է նրա «Հայոց Պատմութիւնը» (2): Կենսագրական տեղեկութիւններ նրա մասին ունենք միայն նրա այս աշխատութիւնից:

Սրա Գ. գրքի 61–րդ գլխի վերջում նա պատմում է, թէ Եփեսոսի ժողովից (431 թ.) յետոյ թարգմանիչները Կոստանդնուպոլսից վերադառնալիս՝ բերում են «ճշմարիտ օրինակս Գրոց»: Սահակն ու Մեսրոպը, — ասում է նա, — այդ որ ստացան, «դարձեալ թարգմանեցին զմի անգամ թարգմանեալն փութանակի, հանդերձ նոքօք [=աշակերտներով] վերստին յօրինեալ նորոգմամբ»: Ապա աւելացնում է. «Բայց քանզի անգէտք էին մերումս արուեստի՝ ի բազում մասանց թերացեալ գործն գտանէր. վասն որոյ առեալ մեծին Սահակայ եւ Մեսրոպայ զմեզ առաքեցին յԱղեքսանդրիայ, ի լեզու պանծալի, ի ստոյգ յօդանալ ճեմարանին վերարանութեան»: Յաջորդ 62րդ գլխի մէջ, որի վերնագիրն է «Ի վարդապետսն, յինքն եւ ի ճանապարհորդութիւն ուսմանն, օրինակաւ երկնային զարդու», դրում է. «... Մեք յառաջախաղաց շնորհիւ ցոլացեալ յիմանալի ճառագայթից հոգեւոր հարցն [այսինքն՝ Սահակի եւ Մեսրոպի], ըստ հարաւային մասանցն պարայածեալք՝ յԵդեսացւոցն հասանէաք քաղաք. թեթեւակի ընդ խորս դիւանին նաւեալ՝ անցաք ի սուրբ տեղիսն երկրպագել, եւ մնալ փայրկեան ի Պաղեստինացւոց հրահանգս: Եւ այնպիսեաւ սաղապաճեմիւ մտաք յԵգիպտոս, յաշխարհն համբաւաւոր»: Ապա նկարագրում է Եգիպտոսն եւ Ալեքսանդրիա քաղաքը, ուր ասում է վերջում, — «ոչ խնդրել հրաման պատասխանւոյ ի սանդարամետէն Պրոդէիադայ, այլ ուսանել զզօրութիւնս պէսպէս իմաստից ի Նորն Պղատոնէ, յիմն ասեմ վարդապետէ, որում ոչ անարժան գտայ աշակերտ, եւ ոչ անկատար վարժմամբ ի յանդ ելեալ արուեստից՝ ինքնայ»: Վերադարձի համար գրում է. «Նաւել յԵլլադայ կամելով՝ յԻտալիա բռնութեամբ անկաք հողմոց. եւ ողջունեալ ի հանդիստ սրբոցն Պետրոսի եւ Պաւղոսի, եւ ոչ բազում ի Հռովմայեցւոցն կացեալ քաղաքի, անցանելով ընդ

(1) Մովսիսի Խորենացւոյ մատենագրութիւնք, Վենետիկ, 1843. Պատմութիւն Հայոց (էջ 1—277), Թուղթ առ Սահակ Արծրունի (էջ 283—296), Պատմութիւն Հռիփսիմեանց (էջ 297—325), Յաղագս Վարդավառին (էջ 326—338), Յաղագս Պիտոյից (էջ 339—581), Աշխարհացոյց (էջ 583—616):

(2) Մովսիսի Խորենացւոյ Պատմութիւն Հայոց, բազմաթիւ ձեռագիրների բաղդատութեամբ, աշխատութեամբ Մ. Աբեղեան եւ Ս. Յարութիւնեան, քննական հրատարակութիւն ընդարձակ «Յառաջաբանով»: Տփղիս, 1913. էջ ԾԳ—ԿԲ Մատենագրութիւն—տպագրութիւններ, թարգմանութիւններ, քննութիւններ եւ ուսումնասիրութիւններ:

*Եղլադայ յԱտտիկէ, սակաւ ինչ մնացաք յԱթէնս: Եւ ի կատարել ձմերայնոյն՝ դէմ եղեալ ի Բիւզանդիոն եկանել, փափագելով մերոց հայրենեացն»:*

*Թէ ե՛րբ է Մ. Խորենացին գնացել ուսանելու եւ ե՛րբ է վերադարձել հայրենիք, այդ մասին նա տեղեկութիւն չի տալիս: Վերջին 68-րդ գլխի բովանդակութիւնից իմացւում է, որ նա վերադարձել է Սահակի ու Մեսրոպի մահից յետոյ. Սահակը վախճանուել է 439 թ. սեպտեմբերի 7ին, իսկ Մեսրոպը՝ 440 թ. փետրուարի 17-ին: Ուրեմն այս թուականից յետոյ է նա վերադարձել: Իսկ ուսման գնացել է նախ քան նրանց մահը, ուրեմն 439 թ. սեպտեմբերի 7-ից առաջ: Եւ որովհետեւ Եփեսոսի ժողովից յետոյ թարգմանիչների ի Հայաստան վերադարձը եւ Ս. Գրքի երկրորդ անգամ թարգմանումը կը տեւէր մի երեք-չորս տարի, ուրեմն Մ. Խորենացին ուսման պիտի գնար մօտաւորապէս 435 թուականին* (1): *Ենթադրելով որ նա արտասահման ուսման գնալիս պիտի լինէր մօտ 20-25 տարեկան, ուրեմն ծնուած պիտի լինէր մօտաւորապէս 410—415 թուականների մէջ:*

*Մինչ այդ՝ Սահակի ու Մաշտոցի աշակերտները գնացել էին ուսման եւ թարգմանութիւն անելու Եդեսիա եւ Կոստանդնուպոլիս քաղաքները: Որ այժմ նրանք իրենց աշակերտներին Ալեքսանդրիա են ուղարկում, դրա պատճառը հասկանալի է: Վաղուց արդէն Ալեքսանդրիա քաղաքը դարձած էր ուսման կենտրոն: Պտղոմէոս Ա.ի* (323—285 *մ. թ. ա.*) *ժամանակից ի վեր՝ այնտեղ կենտրոնացած էր յունական գրութիւնը՝ Սերապիոնի յայտնի մատենադարանով, հովանաւորւում էին գիտութիւնները եւ ծաղկում: Հռոմէական պետութեան մէջ էլ արդէն դա համարւում էր երկրորդ մայրաքաղաք եւ գիտութեան, փիլիսոփայական ուսման եւ ընդհանրապէս մտաւոր առաջադիմութեան նկատմամբ առաջին տեղն էր բռնում: Քրիստոնէական ուսման նկատմամբ էլ Ալեքսանդրիան ունէր մեծ անցեալ: Այնտեղից դուրս էին եկել նշանաւոր քրիստոնեայ գիտնականներ: Ալեքսանդրիան «Արիոսական վէճերի ժամանակ երկար կռիւներից յետոյ՝ կարողացել էր իր վարդապետութիւնն ընդունելի դարձնել ամբողջ քրիստոնէական եկեղեցու մէջ»: Դրանով այս քաղաքի եպիսկոպոսական աթոռն առաջնակարգ դիրք էր գրաւել Արեւելքում հակառակ Կոստանդնուպոլսի եպիսկոպոսների* (2): *Կիւ-*

---

(1) Ֆրիդ. Կ. Կոնիբիրը բերելով Ալեքսանդրիայի նկարագրից հետեւեալ հատուածն՝ «ի մետասաներորդի նորին Տուբի՝ յայտնութեան Տեառն կատարի տօն... եւ ոչ զոհել չար դիւին Սարապեայ, այլ զՔրիստոսի զարիւնն մատուցանել պատարագ» (Գ. 62), գրում է. «Ասի, ուրեմն, կտոր մըն է, որ կրնար գրուիլ այնպիսի ժամանակ մը, երբ Աղեքսանդրիոյ մէջ կը յիշուէր տակաւին Սերապիսի պաշտօնը, եւ երբ Յայտնութեան տօնը տակաւին նոր տարւոյ սկզբան ամենամեծ տօնն էր: Արդ Սերապեայ մեհեանը կործանեցաւ 416-ին Յ. Ք., իսկ 440-ին հաստատուեցաւ ծնունդն իբրեւ տօն՝ դեկտ. 25-ին, եւ քիչ մ՚ետքն աւելի մեծագոյն տօն մ՚եղաւ եկեղեցւոյ քան Յունուար 6-ի տօնը: Եւ 450-էն ետքն՝ ամենէն ուշ՝ արեւմուտք ճամբորդող մը չէր կրնար այնուհետեւ Յայտնութեանն տօնն իբրեւ նոյն եկեղեցւոյ նորոյ տարւոյ ամենէն մեծ տօնը նշանակել: Ուրեմն կը մնայ հետեւցնել, թէ այն մատենագիրն որ Խոր. Գ. ԿԲ գլուխը գրած է՝ Աղեքսանդրիա այցելած է 416 եւ 440 Յ. Ք. տարիներու միջոցին»: «Հանդէս Ամսօրեայ», Վիեննա, 1893, էջ 330:

(2) Երուանդ վ. Տէր-Մինասեանց, Ընդհանուր եկեղեցական պատմութիւն, Էջմիածին, 1908, էջ 295:

րեղ Աղեքսանդրացու (412—444 թ.) օրով Ալեքսանդրիայի եպիսկոպոսութիւնն իր ուժի գագաթնակէտին էր հասել և մեծ դեր էր խաղում նաև հենց Սահակի ու Մաշտոցի կեանքի վերջին տասնամեակում, երբ Մ. Խորենացուն և իր ընկերներին ուղարկում են այնտեղ: Այդ քաղաքի եպիսկոպոս Կիւրեղ Աղեքսանդրացին էր կռիւ սկսել Կ. Պոլսի պատրիարք Նեստորի դէմ և վերջը գլուխ բերել Եփեսոսի ժողովը: Սահակն ու Մաշտոցը լաւ տեղեակ էին Եփեսոսի ժողովի առթիւ տեղի ունեցած անցուդարձին: Յայտնի է, որ Ե. Կողբացին այդ մասին Կ. Պոլսից նամակ է գրել Մաշտոցին: Կորիւնը հաղորդում է, թէ «սինհոդոսական հայրապետները» գրում են Սահակին ու Մաշտոցին Թէոդիոսի [=Թէոդորոս Մոպսուեստացի] ի Հայաստան մուտք գործած գրքերի մասին: Մ. Խորենացին ինքը (Գ. 61) Եփեսոսի ժողովի մասին գրելուց յետոյ՝ աւելացնում է, թէ այդ ժողովից յետոյ Սահակին և Մեսրոպին գրում են «Կիւրեղ Աղեքսանդրացի և Պրոկղոս Կոստանդնուպոլսի և Ակակ Մելիտինեայ եպիսկոպոսք, զգուշացուցանելով զնոսա. քանզի լուան, եթէ ոմանք ի չարափառացն աշակերտաց առեալ զգիրսն Թէոդորոսի Մամուեստացւոյ [Մոպսուեստացի], զվարդապետին Նեստորի և զաշակերտին Թէոդորի՝ գնացին յաշխարհն Հայոց»: Մ. Խորենացու գրածը ստուգւում է դրանով, որ Պրոկղի և Ակակի թղթերը և նրանց պատասխանները Սահակից և Մաշտոցից՝ մնացել են (1): Նմանապէս հաւաստի է անշուշտ և Կիւրեղ Աղեքսանդրացու մասին գրածը: Այսպիսի պարագաներում շատ բնական է, որ Սահակն ու Մեսրոպն աչքերը դարձնէին դէպի Ալեքսանդրիա և վճռէին իրենց աշակերտներին ուսման համար ուղարկել նաև այն քաղաքը, ուր այդ միջոցին եպիսկոպոսական աթոռն ունէր Կիւրեղ Աղեքսանդրացին:

Ի՞նչ ուսում է ստացել Մ. Խորենացին: Նրա առաջին ուսուցիչները եղել են Սահակն ու Մաշտոցը. սրանք են լուսաւորել նրան իրենց «իմանալի ճառագայթներից», այսինքն իրենց մտաւոր լուսաւորութիւնից: Այդ ուսումը եղել է, անշուշտ, Ս. Գրքի և որոշ կրօնական գիտելիքների ծանօթութիւն, հայերէն ու յունարէն, անպայման և ասորերէն լեզուներ, հաւանօրէն և պարսկերէն ըստ ժամանակի պահանջի: Բայց որ գլխաւորն է՝ նրանք իրենց աշակերտի մէջ զարթեցրած են եղել ուսման մէջ կատարելագործուելու մեծ սէր ու ձգտում: Թէ ի՛նչ են արել Մովսէսն ու իր ընկերները Եդեսիայի դիւանում և ի՛նչ են եղել Պաղեստինական «հրահանգները», այդ յայտնի չէ: Բայց որոշ կարող ենք ասել, որ Ալեքսանդրիայում նա հմտացել է յունարէն լեզուին, սովորել է «արուեստները», որ են՝ քերթողական, ճարտասանական և քերականական արուեստները: Մ. Խորենացին կոչւում է սովորաբար «քերդող» և «քերդողահայր»: Ուրեմն նա ոչ միայն լրիւ իւրացրած պիտի լինէր այդ արուեստը, և քերդողութեամբ յայտնի դարձած, այլ և այդ արուեստն առաջին անգամ Հայաստան մտցրած, դրա համար և «քերդողահայր» մականունն արժանացած: Նա սովորել է նաև «զզօրութիւնս պէսպէս իմաստից»: Այս «իմաստ» բառը թարգմանութիւն է յունարէն սոփիա՛ բառի, որ նշանակում է՝ իմաստութիւն, գիտութիւն, բարձրա-

(1) Գիրք Թղթոց, Թիֆլիս, 1901, էջ 1—21:

գոյն գիտութիւն, որ ձգտում էին ստանալ փիլիսոփաները — իմաստասէրները: Պէսպէս «իմաստների» — գիտութիւնների մէջ առաջին տեղը բռնում էր, հարկաւ, յունական իմաստասիրութիւնը, փիլիսոփայութիւնը, դրա համար եւ նա իր ուսուցչին գովելով անուանում է «Նոր Պղատոն»: Նա, ինչպէս իր Հայոց Պատմութիւնից երեւում է, ծանօթացած է եղել նաեւ յունական գրականութեանը, առասպելաբանութեանը, կարդացած յոյն բանաստեղծների, պատմագիրների գրուածքները: Նա շատ անգամ յիշատակում է յոյն նշանաւոր հեղինակներ, որոնց գրուածքները, սակայն, ոչ բոլորը կարդացած պիտի լինէր Ալեքսանդրիայում, այլեւ մասամբ նաեւ Հայաստանում, եւ նոյնիսկ նրանց թարգմանութիւնները: Բայց յաճախ տեղեկութիւններն առնում է ոչ բուն աղբիւրներից: Արտաքին ուսման հետեւելով հանդերձ՝ նա միաժամանակ շարունակել է կատարելագործուել նաեւ եկեղեցական ուսման եւ գրականութեան մէջ: Լաւ ծանօթացել է, անշուշտ, նաեւ երկերին Կիւրեղ Աղեքսանդրացու, որ, ինչպէս ասուեց, ժամանակի նշանաւոր հեղինակն էր, ուղղափառութեան ներկայացուցիչ: Նրա բազմաթիւ երկերից շատերը թարգմանուած են եւ հայերէն, մասամբ հետագայ դարերում· բայց կան եւ հնագոյն թարգմանութիւններ, որոնց ձեռնարկած պիտի լինեն հէնց Խորենացու օրով, գուցէ նրա եւ իր ընկերների ձեռով Ալեքսանդրիայում: Այսպէս այս քաղաքում նա ձեռք է բերել գիտութիւնների մեծ հմտութիւն եւ բազմակողմանի գիտական պատրաստութիւն, կամ, ինչպէս ինքն իսկ այդ մասին յայտնում է, «ամէնիմաստ արուեստ եւ կատարելագոյն յարմարութիւն» (Գ. 68), եւ «ոչ անկատար վարժութեամբ» աւարտելով արուեստները՝ «ինքնացել է», ասում է նա, այսինքն՝ անկախացել է ուսուցչից՝ հանդիսանալով նրա՝ «ոչ անարժան աշակերտը»:

«Երկայն ճանապարհներ» կտրելուց յետոյ՝ մեծ ոգեւորութեամբ շտապում են Բիզանդիոնով վերադառնալ հայրենիք եւ իրենց «արուեստը» գործադրել, բայց հասնում են այն ժամանակ, երբ վախճանուած էին իրենց հովանաւորող եւ առաջ քաշող Սահակն ու Մեսրոպը: Նրանց ընդունող, քաջալերող եւ նիւթական օգնութիւն տուող չի լինում: Պարզ երեւում է, որ Մ. Խորենացին եւ իր ընկերները եղել են ժողովրդի աղքատ դասի մարդկանցից, «որոնց վտանգ եւ աղքատութիւն սեպհական է», — գրում է ինքն իր եւ իր ընկերների մասին (Բ. 92): Դրա համար եւ նա բողոքում է՝ գրելով. «Ո՞վ ոք ի ձէնջ թոշակս յաղագս մեր... ո՞վ ոք ի գալն մերում հանդիստ, ո՞վ ոք տուն կամ օթանոց մեզ պատրաստեաց» (Բ. 92): Ոչ միայն չեն օգնում նրանց, այլ, ընդհակառակն, նրանց ուսումը չեն յարգում, նրանց վրայ ծիծաղում են, նրանց ծաղրում են: Ոչ ոք չի սանձահարում, լռեցնում տգէտների, ուսումնատեացների չար լեզուները: Եւ այդ չափազանց շատ վրդովւում է Մ. Խորենացու հպարտ սիրտը: Նա անսփոփ ողբալով կանչում է. «Ո՞վ այսուհետեւ զմերս յարգեսցէ զուսումն. ո՞վ ուրախասցի ընդ յառաջադիմութիւն աշակերտիս, մասամբ յաղթահարեալ յորդւոյս» (Գ. 68):

Այս վիճակը միայն Մ. Խորենացունը չի եղել, այլ 5-րդ դարի երկրորդ կէսին բոլոր այն մարդկանցը, որոնք յունական ուսում էին ստացած, աշխատում էին թարգմանութիւններ անելով՝ յունական գիտութիւնը պատ-

ուսատել հայերի մէջ։ Սխալ է նրանց «յունասէր» անուանել իբրեւ յունական, այսինքն հռոմէական պետական քաղաքականութեան կողմնորոշում ունեցողներ։ Նրանք «յունասէր» էին միայն իբրեւ յունական գիտութեան սիրողներ. թէ չէ՝ նրանք հետեւում էին ազգային հայկական կողմնորոշման, սկսած Մաշտոցից եւ սրա ժամանակից։ Բայց եւ այնպէս՝ նրանք արհամարհւում եւ նոյնիսկ հալածւում էին պարսկական կողմնորոշում ունեցողներից։ Ղ. Փարպեցին իր «Թղթի» մէջ այդպիսի հալածուածներից մի քանիսի անունը տալիս է, նրանց թւում եւ փիլիսոփոս Մովսէսի։ Նրա յունարէնի ձեւով «փիլիսոփոս» մականունից երեւում է, որ նա եղել է յունաբան դպրոցի հեղինակ։ «Փիլիսոփայ» բառն այս ձեւով՝ ասորերէնից է անցել հայերէնին։ Նրա մասին Փարպեցին գրում է Վահան Մամիկոնեանին (էջ 436). «Երանելի փիլիսոփոսն Մովսէս, որ արդարեւ մինչդեռ էր ի մարմընի՝ ցանկ երկնային զօրացն էր քաղաքակից. ո՞չ ապաքէն ի տեղւոջէ ի տեղի աբեղեանդ Հայոց հալածական արարին։ Ո՞չ զլուսաւորիչն եւ զոգիտահալած զգրեանն նորա՝ առ անգիտութեան փաթաղ-իկէս կոչէին. եւ այլ բազում ինչ իրօք թշնամանեալ՝ յետոյ ապա յաղագս այլոց ամօթոյ՝ զխաբէական զեպիսկոպոսութիւնս նման դեղոց մահու արբուցեալ սորոյն՝ հեղձուցին։ Որոյ ի ժամ վախճանին զի՛նչպիսի ահաւոր նզովս գրով ի վերայ գլխաւորաց քահանայութեանդ ասացեալ է՝ ձեզէն իսկ գիտէք տեղեկացեալք»։

«Փաթաղ-իկէս» ասորերէն բառը բացատրում են «աղճատ, աղաւաղուած, ապականուած, թիւր» նշանակութեամբ։ Այդպէս անուանել են փիլիսոփոս Մովսէսի գրքերն անպայման դրանց յունաբան լեզուի համար. տգէտ աբեղաները ոչ միայն դրանց նորաձեւ լեզուն, այլեւ բովանդակութիւնից էլ բան չէին հասկանալ։ Ուստի եւ նրանք հակառակ, դէմ էին ելնում նրանց «առողջ ուսման», որ բերում էին դրսից, նրանք ծաղրում էին Մովսէս Խորենացուն, արհամարհում նրան իբրեւ այնպիսի մէկի, «որ ոչինչ պիտանացու ունիցի արուեստ»։ Դա տգէտ պարսկասէրների պայքարն էր ընդդէմ յունական ուսումն ու լուսաւորութիւնը սիրողների, որոնք իրենց թարգմանութիւններով աշխատում էին իրենց հայրենիքից հալածել տգիտութիւնը եւ, յափշտակուած յունարէն «պանծալի լեզուով», աշխատում էին այդ լեզուի հարստութիւնը եւ գիտութիւններ արտայայտելու ընդունակութիւնը տալ հայերէնին։ Եթէ մեր օրերում խիստ օտարաբանութիւնների պատճառով դրանց գործածողները ծիծաղի ու արհամարհանքի առարկայ են դարձած, որչա՛փ եւս աւելի պիտի նոյնպիսի վիճակի ենթակայ լինէին մեր գրականութեան սկզբում անծանօթ բովանդակութեամբ գրքերն այնպիսի անհասկանալի օտարաբան լեզուով թարգմանողները։ Բայց Մովսէսը չի յուսահատւում։ Չնայելով այդ ամենին, նա շարունակ, մինչեւ ծերութեան հասակը պարապում է գրականութեամբ եւ թարգմանութիւններ անում։

Կանգ առնենք եւ հետեւեալի վրայ։ Պատմագիր Մովսէս Խորենացին կոչւում է Քերդողահայր։ «Գիրք Թղթոց» ժողովածուի մէջ կայ «Քերդողահօրն Մովսէս Խորենացի եպիսկոպոսի» յունաբան լեզուով մի դաւանա-

*բանական Թուղթը, որից ազդուել է Յովհան Մանդակունի կաթողիկոսն իր մի գրութեան մէջ: Կը նշանակի՝ 5-րդ դարի վերջին տասնամեակներում դեռ կենդանի Քերթողահայր Մովսէս Խորենացին եղել է մի նշանաւոր եպիսկոպոս: Նրա «Քերթողահայր» մականունը ցոյց է տալիս, որ նա եղել է ականաւոր գրական գործիչ եւ Թարգմանիչ, նաեւ քերականութեան. յունաբան դպրոցի շրջանից կան յիշատակարաններ, որոնք «քերական» բառի փոխանակ կամ իբրեւ սրա համանիշ գործածում են «քերթող» բառը, որ սովորաբար նշանակում է «պոէտ», «արարող»: Քերթողահայր Մովսէս Խորենացի եպիսկոպոսը եղել է եւ փիլիսոփայ: Այդ երեւում է Նրա վերոյիշեալ դաւանական Թղթից, որ մասամբ յօրինուած է փիլիսոփայօրէն: Արդ՝ դժուար է ընդունել, Թէ եղել են միաժամանակ երկու նշանաւոր գրող Մովսէս անունով, երկուսն էլ յունաբան դպրոցի առաջին գործիչներից, երկուսն էլ 5-րդ դարի վերջերին եպիսկոպոս, միայն մէկը «փիլիսոփոս» մականունով, միւսը՝ «քերթողահայր», բայց այս երկրորդը նաեւ փիլիսոփայ է եղել, եւ վերջապէս դէպի երկուսի գրական գործունէութիւնն էլ նոյն վերաբերմունքըն են ցոյց տուել ազէտ հակառակորդները: Ոչ մի համոզիչ հիմք չկայ փիլիսոփոս Մովսէսին եւ Քերթողահայր Մովսէս Խորենացուն, որ եւ պատմագիրն է, նոյն անձը չճանաչելու, այլ, ընդհակառակն, ամէն ակնյայտ տուեալները կան այդ երկուսին տարբեր անձեր չհամարելու: Որովհետեւ այդ շրջանում քերականութիւն, ճարտասանութիւն եւ փիլիսոփայութիւն կազմում էին գիտութիւնների մի ցիկլ, ուստի պէտք է ընդունել, որ այդ նշանաւոր գրական գործիչը Թարգմանած պիտի լինի նաեւ ճարտասանական ուսման համար անհրաժեշտ «Պիտոյից գիրքը»: Անպայման պատմական հիմք ունի Ստեփանոս Տարօնեցու (Ասողիկի) հաղորդումը, Թէ Գիւտ կաթողիկոսի ժամանակ «էր մեծ փիլիսոփոսն (վար. փիլիսոփայն) Հայոց Մովսէս, որ զճարտասանականն արուեստ ի գործ առնու ի Հայս»:*

**2. Ժամանակի խնդիրը** — *Հայ պատմագիրներից ոչ մէկն այնքան հրատարակութիւններ, Թարգմանութիւններ, քննութիւններ եւ ուսումնասիրութիւններ չի ունեցել, որքան Մ. Խորենացու Հայոց Պատմութիւնը* (1)*: Առաջին հրատարակութիւնը եղած է* 1695 *Թ. Ամստերդամում Էջմիածնի Թոմաս Վանանդեցի եպիսկոպոսի ձեռով: Դա հին հայ պատմագիրների անդրանիկ տպագրութիւնն է: Ուսումնասիրութիւններն ու քննութիւնները վերաբերում են մեծ մասամբ Խորենացու գործածած աղբիւրներին եւ ապրած ժամանակին: Դրանք բանասիրական աշխատութիւններ են, զբաղւում են հեղինակի եւ նրա աղբիւրների արժանահաւատութեան, նրա գրուածքի պատմական արժէքի խնդրով, ինչպէս եւ այն մասին, Թէ ե՛րբ է ապրել եւ գրել Մ. Խորենացին: Բուն գրական ուսումնասիրութիւն չկայ: Այդ նկատմամբ մէկ մէկ լոկ ակնարկներ միայն եղել են բանասիրական ուսումնասիրութիւնների մէջ:*

---

(1) Դրանք ըստ կարեւորին լիակատար կերպով տողերիս գրողի, Մ. Աբեղեանի ձեռով ամփոփուած են վերեւում յիշուած 1913 թուականի հրատարակութեան «Յառաջաբանի» վերջում՝ «Մատենագրութիւն» վերնագրի տակ, էջ ԾԳ—ԿԲ: 1913-ից յետոյ քիչ բան է կատարուած: Արտասահմանում եղածները յայտնի չեն:

Առաջին բացասական քննադատական արտայայտութիւնը Մ. Խորենացու Պատմութեան մասին եղել է դեռ 18-րդ դարի կէսերին (1)։ Հետագայում 19-րդ դարի կէսերից սկսած շատերն զբաղուել են դրանով ե՛ւ դրական, ե՛ւ բացասական վերաբերմունք ցոյց տալով։ Նախ 1876 թ. Ա. Գուտշմիդը կասկածելի է համարել Խորենացու Պատմութեան մի մասը։ Հետագայում 1890 թուականից Ա. Կարիէրը սկսեց զբաղուել Մ. Խորենացու խնդրով։ Նա Խորենացու (Բ. 83) պատմածը Կոստանդիանոսի դարձի մասին՝ 1892 թուին նոյն գտաւ Սեղբեստրոսի վարքի համապատասխան կտորի հետ։ Եւ որովհետեւ նա կարծում էր, թէ Սեղբեստրոսի վարքի «լատինական խմբագրութիւնը 5-րդ դարի վերջին տարիներից առաջ չի կարող լինել, — ուստի եւ յունարէն թարգմանութիւնը, որից օգտուել է Խորենացին, ամենից վաղ 6-րդ դարի առաջին տարիներին եղած պիտի լինի»։ Նա դրանից եզրակացրեց, թէ «պէտք է թողնել Խորենացու Հայոց Պատմութեան յօրինման նկատմամբ աւանդական տարեթիւը, եւ նոյն գրքի յօրինումն մինչեւ 6-րդ դար իջեցնել»(2)։ Յետոյ նա իմանալով, որ Վենետիկի Մխիթարեանների Մատենադարանում կան Սոկրատի Եկեղեցական Պատմութեան եւ Սեղբեստրոսի վարքի հայ թարգմանութեան ձեռագիրներ, նա դրանք բաղդատելով Մ. Խորենացու Պատմութեան հետ, եկաւ այն եզրակացութեան, թէ Խորենացին օգտուել է Սոկրատի այն թարգմանութիւնից, որ յայտնի է Փոքր Սոկրատ անունով։ Ապա իմանալով, որ ըստ Ստեփանոս Ասողիկի այդ թարգմանութիւնն արել է Փիլոն Տիրակացին, մօտ 690 թ., նա դրանից եզրակացրեց, թէ Խորենացու Հայոց Պատմութիւնը գրուած է ամենավաղը 8-րդ դարում։ Այսպէս՝ 1893 թ., յետոյ 1894 թ. Կարիէրն ուրիշ նոր աղբիւրներ էլ ցոյց տուաւ, որոնցից, ըստ նրա կարծիքի, պէտք է օգտուած լինէր Խորենացին, եւ որոնց հիման վրայ նա Հայոց Պատմութիւնն աւելի ուշ ժամանակի գործ համարեց, քան 5-րդ դարը։ Այսպէս՝ Մ. Խորենացին օգտուած է «Զատկական ժամանակագրութիւնից», որ «Հերակլիոսի (610—641 թ.) վերջին տարիներից է», «Յովհաննէս Մաղաղասի ժամանակագրութիւնից», «որ մինչեւ Յուստինիանոսի թագաւորութեան վերջը (565 թ.) կը հասնի, բայց թերեւս աւելի ուշ յօրինուած է»(3)։

Կարիէրի այս գրութիւնները պատճառ դարձան, որ Էջմիածնում տպագրուեցին Մատենադարանի ձեռագիրներից՝ Սոկրատի հայերէն թարգմանութիւնը(4)՝ «Մեծ Սոկրատ» (Եկեղեցական Պատմութիւն), որ յունարէնից, ըստ հրատարակչին, թարգմանուած է 696

---

(1) Լա-կրոզ, M. V. La-Crose, Thesaurus epistolici Lacroziani, *Լայպցիգ*, 1742-1746, հատ. 1, էջ 358 եւ հմն., հատ. 3, էջ 184 եւ այլն։

(2) «Հանդէս Ամսօրեայ», Վիեննա 1892, էջ 250, Ա. Կարիէր, «Մ. Խորենացւոյ մէկ նոր աղբիւրը». 1893, էջ 134, 178, «Նորագոյն աղբերք Մ. Խորենացւոյ». 1893, էջ 309, «Թղթակցութիւն»։ «Նորագոյն աղբերք Մովսիսի Խորենացւոյ» եւ «Յաւելուած», թարգմ. Յ. Տաշեանի, Վիեննա, 1893, 1894։

(3) «Հանդէս Ամսօրեայ», 1893, էջ 309, «Նամակ առ Հ. Յ. Տ.»։ 1894, էջ 53, 120, «Նորագոյն աղբերք Խորենացւոյ»։

(4) Սոկրատայ Սքոլաստիկոսի Եկեղեցական Պատմութիւն, թարգմանեաց Փիլոն Տիրակացի։ Եւ Պատմութիւն վարուց սրբոյն Սեղբեստրոսի եպիսկոպոսի Հռովմայ, թարգմանեալ Աբրահամ Գրիգորի Զորափորեցւոյ։ Հատոր Ա., աշխատասիրութեամբ Մեսրոպ վ. Տէր-Մովսիսեան, Վաղարշապատ, 1897, Յառաջաբան Մեսրոպ վ.ի, էջ Ա—ՃԱ. Պատմ. վարուց սրբոյն Սեղբեստրոսի, տեսնել էջ 691—798։

թ. Փիլոն Տիրակացու ձեռով. Սեղբեստրոսի վարքը, որ, ըստ հրատարակչին, այդ թուականից 18 տարի առաջ, ուրեմն 678 թ. թարգմանուած է Աբբաս Գրիգոր Ջորափորեցու ձեռով եւ «Փոքր Սոկրատ»: Հրատարակիչ Մեսրոպ վ. Տէր-Մովսիսեանը, ընդդէմ Կարիէրի, այն եզրակացութեան եկաւ, որ Փոքր Սոկրատը մի համառօտ խմբագրութիւն է Մեծ Սոկրատից եւ Մ. Խորենացուց, որ Խորենացին չի օգտուել Մեծ Սոկրատից, «բայց օգտուել է Սեղբեստրոսի վարքից, թէեւ ոչ մեր ձեռքը հասած հայերէն թարգմանութիւնից»: Բայց յետոյ Միաբանը (Գալուստ Տէր-Մկրտչեանը) ցոյց տուաւ, որ Խորենացին մի կտոր առել է Սեղբեստրոսի վարքի հայ թարգմանութիւնից եւ յարմարեցրել Մեսրոպի վրայ (Գ. 67) սրան գովաբանելու համար(1): Դրանով նա այն եզրակացութեան եկաւ, որ Խորենացու Պատմութիւնը գրուած է 678 թուականից յետոյ, քանի որ Սեղբեստրոսի վարքի թարգմանութիւնը, ինչպէս ընդունում էին, կատարուել է այդ թուականին: Սակայն այդ բացարձակ ապացուցուած կարելի չէ համարել, որովհետեւ, — նոյն հեղինակի բառերով ասենք, — այն «ոչ բոլորովին անհնարին ենթադրութիւնն էլ» կարելի է անել, «թէ Խորենացին... առաջ բերուած հատուածն ուղղակի յոյն բնագրից է թարգմանել, իսկ Ջորափորեցին՝ ծանօթ լինելով Խորենացուն... այդ պարբերութիւնը թարգմանելիս օգտուել է Խորենացու արդէն պատրաստ բանաքաղութեամբ», աչքի առաջ ունենալով եւ յոյն բնագիրը, եւ հետեւելով բնագրին ըստ իր յունաբան լեզուին եւ ըստ բովանդակութեան:

Եւ այսպէս 19-րդ դարի վերջին տասնամեակին երեւան բերին մի շարք գրուածքներ — Սեղբոստրոսի վարք, Սոկրատ, Մաղաղաս, Զատկական ժամանակագրութիւն, Շիրակացու Աշխարհացոյց եւ այլն, որոնցից, ըստ յօդուածագիրների, օգտուել է Մ. Խորենացին: Նրանք այդ հիման վրայ, ինչպէս եւ նկատի ունենալով Խորենացու Պատմութեան մէջ յիշուած մի քանի անուններ եւ կտորներ, այն եզրակացութեան եկան, թէ Հայոց Պատմութիւնը գրել է ուշ դարերում եւ նոյնիսկ 9-րդ դարում ապրող մի հեղինակ եւ իր երկը վերագրել է 5-րդ դարում ապրող մի ուրիշ հեղինակի: Դրանով նա կեղծել է իր գրած Պատմութիւնը: Եղան նոյնիսկ Սուտ Մովսէս Խորենացի յորջորջողներ մեր Պատմագրին: Խորենացին մի տեղ Հայոց Պատմութեան մէջ գրում է. «Այր զարամբ ելանէին տիրել աշխարհիս Հայոց»: Այս խօսքը կարելի է շուռ տալ նրա քննադատների վրայ: Նրանք, կարծես, ձգտում էին միմեանցից գերազանցելու մեր Քերդողահօր Հայոց Պատմութիւնը եւ նոյնիսկ դրա հեղինակի անձը վարկաբեկելու մէջ: Եղան, հարկաւ, այդ քննադատողների դէմ բաւական թուով գրողներ, որոնք հերքում էին նրանց կարծիքները: Եւ ահա առաջացաւ թեր ու դէմ յօդուածների, գրքերի ու գրքոյկների մի մեծ քանակութիւն, որոնց հեղինակները տարբեր տեսակէտներով են մօտեցել խնդրին, եւ որոնցից դժուար էր գլուխ հանել առանց յատուկ ուսումնասիրութեան(2): Այստեղ այդ անելու հնարաւորութիւն եւ կարիք էլ չկայ:

Նոյն խնդրով 1901, 1902 եւ 1903 թուերին հանդէս եկաւ եւ անգլիացի հայագէտ Ֆրիդ. Կոնիբերը մի շարք յօդուածներով(3): Նա առաւ Կարիէրի բերած գլխաւոր կէտերը,

---

(1) «Արարատ», Վաղարշապատ, 1897, էջ 422 եւ հտն. «Խորենացու ժամանակը որոշելու նոր փորձ»:

(2) Դրանց մանրամասն ցուցակը, մինչեւ 1913 թ., Մ. Աբեղեանի կազմած, կարելի է գտնել Մ. Խոր. Հայոց Պատմ. վերեւում յիշուած 1913 թ. տպագրութեան մէջ:

(3) ա) «Մովսէս Խորենացու ժամանակի մասին», Byz. Zeitschrift, 1901, 3-4, Heft

ինչպէս եւ կարծիքը Գրիգոր Խալաթեանի (որ Խորենացու Պատմութիւնը դնում էր մօտ. 750 Թ.), մանրամասն քննելով դրանք՝ հերքեց։ Նրա եզրակացութիւնը հետեւեալն է դրեթէ բառացի.

1. Փոքր Սոկրատը խմբագրուած է Փիլոն Տիրակացու եւ Գրիգոր Ջորափորեցու ձեռով Մեծ Սոկրատի եւ Սեղբեստրոսի վարքի թարգմանութիւններից մօտաւորապէս 685-ին նոյն իսկ խմբագրողների վկայութեամբ։ Հետեւաբար Մեծ Սոկրատի թարգմանութիւնը 685 թուականից շատ առաջ է եղել։ Խորենացին ծանօթ չէ ոչ Սեղբեստրոսի վարքին եւ ոչ Փոքր Սոկրատին եւ չի օգտուել նրանցից։ Ընդհակառակն՝ Փոքր Սոկրատի խմբագրողն օգտուել է Խորենացուց, իսկ Խորենացին նմանելով՝ օգտուել է Մեծ Սոկրատից։

2. Սեղբեստրոսի վարքի, ինչպէս եւ Մեծ Սոկրատի թարգմանութիւնները դասական են, այսինքն 5-րդ դարի։ Այդ երկու թարգմանութիւններն էլ անանուն են, ինչպէս եւ ընդհանրապէս «առաջին թարգմանիչներն իրենց անձնաւորութիւնը ծածկած են. թարգմանում էին՝ անձնապէս անծանօթ մնալով»։

3. Նկատի առնելով ոճն եւ կապակցութիւնները, որ կան դրանց եւ Խորենացու Պատմութեան մէջ, կարող են դրանք էլ նոյն ձեռքից լինել, որ գրել է յիշեալ Պատմութիւնը։

4. Մարաբասը ոչ Խորենացու եւ ոչ Զատկական ժամանակագրութեան հնագոյն աղբիւրն է, թէեւ ինքն էլ նոյն աղբիւրներից է քաղել։

5. Խորենացին չի քաղել ոչ Զատկական ժամանակագրութիւնից, ոչ Մարաբասից, այլ ընդհանուր աղբիւրներից։

6. Այդ ընդհանուր աղբիւրները, գոնէ 354 տարեթուից առաջ եղած տեղեկութիւնների համար — որ տարին վերջնակէտ ( terminus ) է մի ընդարձակ ժամանակաշրջանի համար — հանրածանօթ էին, եւ նոյն տարեթուին՝ 354-ին՝ Զատկական ժամանակագրութիւնից գործածուած։

7. Եթէ ընդունենք Խորենացու գրելու աւանդական ժամանակը 480 տարին, Խորենացին մինչեւ 354 թուականը քաղել է մի աղբիւրից, որ արդէն այն ժամանակ 130 տարուայ հնութիւն ունէր։

8. Թէոդոս կայսրի ժամանակի դէպքերը կշռելով Խորենացու եւ Մարաբասի համեմատ՝ տեսնում ենք, որ Խորենացին ինչպէս 354-ից առաջ, նոյնպէս նոյն թուականից յետոյ՝ շարունակում է քաղել նոյն ընդհանուր աղբիւրից, որ ոչ Մարաբասն է եւ ոչ Զատկական ժամանակագրութիւնը։

Ապա Ֆրեդ. Կոնիբերը, ընդդէմ Գր. Խալաթեանցի, ցոյց է տալիս, որ (Բ. 86) վըրացիների դարձի պատմութիւնը ծագում է մի հին յիշատակարանից։ Բացի այդ ամենից՝ նա կանգ է առնում այն մասին, որ 7-րդ դարի վերջերում Անանիա Շիրակացին իր ժամանակագրութեան մէջ յիշում է Մովսէս Խորենացուն եւ օգտւում է նրանից։ Յետոյ նա էջ-

---

Հայ. թարգմանութիւնը «Մ. Խորենացւոյ ժամանակի խնդիրն ըստ հայագէտ Կոնիբերի», Յ. Տաշեանի առաջաբանով՝ «Հանդէս Ամսօրեայ», 1902, յունուար, էջ 1 եւ մարտ, էջ 85։

բ) «Մ. Խորենացու Պատմութեան աղբերաց խնդիրը», «Հանդէս Ամսօրեայ», 1902, էջ 129, 193, 236։

գ) «Մ. Խորենացու Պատմութեան ժամանակին մասին» (թղթակցութիւն հայագէտ Ֆ. Կոնիբերի), «Հանդէս Ամսօրեայ», 1903, էջ 30, 33, 152, 215, 317, 325։

միածնի Մատենադարանի ձեռագիրներից, այն գրքից, որ կոչւում է «Հարցմունք Մովսիսի» կամ «Գիրք Էակք», ամբողջապէս բերում է մի ընդարձակ հատուած, մի կեղծ յիշատակարան՝ «Սրբոց վարդապետացն հայոց Մովսէսի եւ Դաւթի հարցմունք ընդ երկարեան չարափառսն»: Դրա վերջում կայ հետեւեալը. «Եւ արդ՝ յետ բազում ժամանակաց գրեաց զգիրս զայս, իբրեւ Աստուած հասոյց զմեզ (վարիանտ՝ մեզ) ի ժամանակս յայս, յորում հ. եւ զ. էր թիվն. հայոց [=76+551=627]: Ես Գուրգէն՝ քարտուղարս Հայոց Մեծաց, եւ սուրբ Թագաւորացն պատոյ սպաթար. ստացող եղէ՝ գրոց այսմ: Բայց զարմանալի է, ի նախնի յիշատակի գրոցս այսմիկ. եթէ՝ գրեցաւ գիրքս այս էակքս՝ հրամանաւ՝ թարգմանեալ ի յունաց ի հայս, տեառն Յովաննիսի հայոց կաթողիկոսի՝ գաբեղենացւոյ ի իե. (վարիանտ՝ ի իէ) [=25+551=576] թուականութեան հայոց: Վկայէ այսմիկ սարկիս արաքացի եպիսկոպոս ճշմարիտ վկայութեամբ»: Ֆրիդ. Կոնիբերը բերելով ամբողջը եւ այս յիշատակարանը՝ գրում է. «Այս անվաւերականը բաւական ապացոյց է ցոյց տալու, որ 576-ին Մովսէսն արդէն մեծ համբաւ ունէր Հայոց աշխարհի մէջ, եւ իրեն ընծայւում էր այնտեղ արդէն մի Հայոց Պատմութիւն: Այլապէս անվաւերականիս մէջ չէին կարող գըրուել հետեւեալ խօսքերը. «Խնդրեցին ի Մովսէսէ գրով տալ նոցա զՊատմութիւն Հայոց: Իսկ նա սկսեալ գրէր զՊատմութիւն Հայոց, եւ այլ բազում արար քննութիւն պէսպէս ճառեալ ի տնօրէնութիւն փրկչին՝ եւ բազում ինչ արար եւ զքերականին մեկնութիւնն»:

Ֆրիդ. Կոնիբերի, մասամբ եւ ուրիշների յօդուածները շատերին համոզեցին, որ Ա. Կարիէրի եւ ուրիշների կարծիքները թիւրիմացութեան արդիւնք են եւ արդէն հերքուած են: Բայց եւ այնպէս Մ. Խորենացին նմանւում է մի զրպարտուած մարդու, որ ինչքան էլ արդարանում է դատարանով, դարձեալ անիրաւօրէն մի բիծ կրում է. գի լինում են, որ զրպարտութեան մասին լսել են, իսկ արդարացման մասին՝ ոչ, կամ թէ մտածում են, թէ ո՛վ գիտէ՝ ինչպէս է եղել արդարացումը: Եւ այս կարծիքին սիրով մնացին եւ մնում են նրանք, որ «ծայրայեղ կասկածոտութիւն» են ցոյց տալիս դէպի Մ. Խորենացին եւ դեռ շարունակում են մի այլանդակ մեթոդով դատել նրա մասին: Նրանք մտածում են այսպէս: Ինչ որ Մ. Խորենացին յիշում է, իսկ այդ իրենք չեն կարողացել ուրիշների մօտ գտնել, այդ նա, Խորենացին, կեղծած է: Իսկ ինչ որ Խորենացու յիշածներից գտել են հետագայ դարերի յիշատակարանների մէջ, այդ էլ ապացոյց է, որ Խորենացու Պատմութիւնն ուշ դարերի գործ է: Խորենացին, օրինակ (Բ. 86), գրելով վրացիների դարձի մասին, վերջում աւելացնում է. «որպէս ուսուցանէ քեզ Ագաթանգեղոս»: Այդ չկայ մեր այժմեան ունեցած Ագաթանգեղոսի մէջ. ուրեմն Խորենացին կեղծել է, ասում են Քերդողահօր քննադատողները: Նրանք չեն մտածում, որ հին պատմագիրների գրքերը, ինչպիսին են Ագաթանգեղոսի եւ Խորենացու Պատմութիւնները, դարերի ընթացքում փոփոխութեան են ենթարկուել. հանուել են դրանց միջից բաներ, կամ, ընդհակառակն, ընդմիջարկուել են նոր բաներ: Շատ բան այդպիսի «կասկածելի» համարուածներից Խորենացու Հայոց պատմութեան մէջ՝ հետագայում ստուգուեց եւ ստոյգ երեւան եկաւ: Եւ առհասարակ այդպիսի չափազանցութիւններն առիթ եղան, որ աւելի խորն ուսումնասիրութիւններ կատարուեն Խորենացու Պատմութեան մասին: Այդպիսիներից, բացի վերեւում բերուածից, իբրեւ օրինակ այստեղ յիշելի են երկուսը, մէկ՝ մեր Պատմագրի մէջ բերած ժողովրդական առասպելների մասին(1), որ Խորենացու յօրինած կեղծիք էին համարում. մէկ էլ՝ որ աւելի կա-

(1) Մ. Աբեղեան, Հայ ժողովրդական առասպելները Մ. Խորենացու Հայոց Պատմութեան մէջ, Վաղարշապատ, 1899:

րեւորն է՝ Մ. Խորենացու Հայոց Պատմութեան քննական հրատարակութիւնն աւելի քան 37 ձեռագրների բաղդատութեամբ(1)։

Այսպիսի դրական գործերի հետ, սակայն, դեռ չարունակւում է բացասական վերաբերմունքը դէպի մեր Պատմագիրը վերջին երեսուն տարիներում։ Բացասաբար վերաբերողները պէտք է նախ մի բան արած լինէին, որ չեն արել, այն է՝ մի լիակատար ուսումնասիրութիւն այն քննութիւնների, որոնց հեղինակները Մ. Խորենացու ժամանակը 5-րդ դարից յետոյ են դնում։ Նրանք պէտք է ցոյց տային, թէ նախորդ բացասական կարծիքներից ո՛րն արդէն հերքուած է եւ անպէտք պիտի համարել, ո՛րը դեռ չի հերքուած կամ թոյլ է հերքուած, ուստի եւ մնում է իր ուժի մէջ։ Բայց նրանք առանց այդ անելու՝ արդէն ապացուցուած են համարում, թէ Խորենացին 5-րդ դարի հեղինակ չէ, եւ ջանում են որոշել, թէ նրան ո՛ր դարում պէտք է դնել։

Եւ ահա մէկը նրան 7-րդ դարում է դնում, մէկը՝ 8-րդ դարում կամ 9-րդի սկզբում, մէկն էլ՝ 9-րդ դարի երկրորդ կէսի սկզբում, եւ աշխատում են Հայոց Պատմութեան հեղինակ ցոյց տալ այս կամ այն անձին։ Այսպէս՝ մէկը (2) գտել է Վարազ Սահակ Բագրատունի անունով մի իշխան եւ Մովսէս Քերթող անունով մի եպիսկոպոս 7-րդ դարում, եւ առանց որեւէ հիմքի, հաւանական է համարում նոյնացնել այդ անձերի հետ Մ. Խորենացուն եւ պատմութիւնը խնդրող Սահակ Բագրատունուն։ Մէկը ուրիշը (3) Մովսէս Խորենացուն, մի շարք անընդունելի փաստարկումներով, նոյնացնում է 8-րդ դարի յայտնի պատմիչ Ղեւոնդ Երէցի հետ եւ Պատմութիւնը գրուած է դնում 9-րդ դարի սկզբում։ Մի երրորդն էլ, Յ. Մանանդեանը, մի առանձին գրքով հրատարակուած իր հետազօտութեամբ արդէն «լուծուած» է համարում «Խորենացու առեղծուածը» (4)։ Նա Խորենացու Պատմութիւնը դնում է 9-րդ դարի երկրորդ կէսի սկզբում եւ նրան նոյնացնում է այդ դարում ապրող Մովսէս անունով մէկի հետ։ Հասկանալի է, որ Մ. Խորենացուն 8-րդ դարում կամ 9-րդ դարի սկզբում դնողը չի ընդունում, ջրում կամ եղծում է նրան 7-րդ դարում դնողի ենթադրութիւնը. նոյնպէս 9-րդ դարի երկրորդ կէսի սկզբում դնողը մերժում է նրան 8-րդ դարում կամ 9-րդի սկզբում տեղաւորողի կարծիքը։ Այսպէս՝ բացասական վերաբերմունք ունեցողները ժխտում, բացասում են իրար։

Եւ ահա դոկտ. Ստ. Մալխասեանցը (5) վերստին հանդէս գալով մի ամբողջ գրքով՝ իրաւացի կերպով հեգնում, ծաղրում է Մովսէս Խորենացուն Ղեւոնդ Երէցի հետ նոյնացնողի ե՛ւ մեթոդը, ե՛ւ ասածները, եւ հիմնովին կէտ առ կէտ հերքում, ժխտում է Յ. Մանանդեանի փաստարկումները։ Այդ բոլոր փոխադարձ հերքումներից, ժխտումներից ու բացասումներից յետոյ՝ մեր պատմահայր ու քերդողահայր Մ. Խորենացուն էլ ուրիշ բան չի մնում անել, բայց եթէ ետ քաշուել ու նստել իր հին ու բնական տեղում — 5-րդ դա-

---

(1) Մ. Խորենացու Հայոց Պատմ., Տփղիս, 1913, Մ. Աբեղեանի եւ Ս. Յարութիւնեանի աշխատութեամբ։

(2) Աբր. Զամինեան, Հայ գրականութեան պատմութեան, Նոր-Նախիջեւան, 1914, էջ 110։

(3) Ն. Ակինեան, Ղեւոնդ Երէց եւ Մովսէս Խորենացի, Վիեննա, 1930։

(4) Պրոֆ. Յ. Մանանդեան, Խորենացու առեղծուածի լուծումը, Երեւան, 1934։

(5) Ստ. Մալխասեանց, Խորենացու առեղծուածի շուրջը, Երեւան, 1940։

րում(1)։

**3. Մ. Խորենացին եւ Սահակ Բագրատունին։** — «Հայոց պատմութիւն յերից հատուածս, ասացեալ Մովսիսի Խորենացւոյ ի խնդրոյ Սահակայ Բագրատունւոյ», այսպիսի վերնագիր ունի Մ. Խորենացու մեծ աշխատութիւնը։ Բացի գրքի ընդհանուր վերնագրից, Սահակ Բագրատունին յիշւում է աշխատութեան սկզբում եւս երկու անգամ։ Մենք իմանում ենք, որ այդ իշխանը, որ անձամբ ծանօթ չի եղել Մ. Խորենացուն, սրանից նամակով խնդրել է գրել հայոց պատմութիւն։ Մ. Խորենացին նամակով պատասխանել է նրան։ Այդ նամակն է հէնց, որ դրուած է Խորենացու աշխատութեան սկզբում իբրեւ առաջին գլուխ։ Հայոց Պատմութեան մի խումբ ձեռագիրներ Գ. գրքի ցանկի վերջում ունին այսպիսի վերնագրով մի գլուխ եւս. «Տաղք չափաւ յինքն եւ ի Սահակ Բագրատունի», բայց Պատմութեան վերջում այդ չկայ։ Եթէ այդ մնացած լինէր, մենք ծանօթութիւն կ'ունենայինք ե′ւ Խորենացու, ե′ւ Սահակ Բագրատունու մասին։ Մեր այս Պատմագիրը, սակայն, այնպիսի գրողներից է, որ ամէն մի յարմար րոպէի յայտնում է իր կարծիքները։ Ուստի եւ մենք նրա Հայոց Պատմութիւնից լաւ ճանաչում ենք նրա բնաւորութեան շատ կողմերը, եւ մեր ոչ մի պատմագրի հայեացքի, համոզումների ու դրական ճաշակի մասին այնքան ըստոյգ ծանօթութիւն չունենք, որքան Մ. Խորենացու։ Նա մի երկու տեղեկութիւններ տալիս է նաեւ իր մեկենասի մասին։Հետեւենք Պատմագրի մըտքի ընթացքին իր գրքի առաջին երեք գլուխների մէջ էական գծերով։

Հէնց սկզբի նամակից, բացի վերեւում գրածից, իմանում ենք, նաեւ, որ այդ իշխանն «անհատ ցանկութիւն» է ունեցել, այսինքն չարունակ ցանկացել է հայոց պատմութեան ,ուստի եւ խնդրել է Պատմագրին կատարել այդ աշխատանքը, որ միաժամանակ եւ Պատմագրի իրեն ուզածն է եղել։ Ուստի նա ուրախացած շատ գովում, բարձրացնում է այդ իշխանին իր

---

(1) Այստեղ կարեւոր եւ հնարաւոր էլ չէ քննել վերջին երկու բացասական վերաբերմունք ունեցողների երկերը եւ կամ մէջ բերել Ստ. Մալխասեանցի հերքումները։ Դրա համար հարկաւոր կը լինէր մի ամբողջ հատոր լցնել։ Յ. Մանանդեանի փաստարկումները ընդհանրապէս համոզիչ չերեւացին ունկնդիրներին, երբ նա այդ մասին զեկուցեց Կուլտուրայի Պատմութեան Ինստիտուտի մի գիտական ժողովում։ Յետոյ, երբ նրա գիրքը տպուեց, նրա իբրեւ ապացոյց բերած բառերի մասին նոյն Ինստիտուտի մի ժողովում մի գիտական զեկուցում կարդացուեց, որով ցոյց էր տրւում, որ նրա բերած բառերը, բացառութեամբ մի 10-15-ի, զեկուցողը գտել է 7-րդ դարում եւ առաջ եղած գրականութեան մէջ։ Ինչ վերաբերում է Ստ. Մալխասեանցի աշխատութեանը, պէտք է ասել, որ նա ապացոյցներ է բերում այդ մասին, թէ Մ. Խորենացու Պատմութիւնը յայտնի է եղել 7-րդ դարի պատմիչ Սեբէոսին, եւ թէ Մ. Խորենացին նոյն անձն է Փարպեցու յիշած փիլիսոփոս Մովսէսի հետ, բայց անհասկանալի է, թէ նա ինչո′ւ չի յիշում, որ Փարպեցու Պատմութեան մէջ կան շատ նոյնութիւններ Խորենացու Պատմութեան հետ։ Եւ կամ ինչո′ւ նա լռում է այն մասին, որ Խորենացին օգտուել է այնպիսի գրքերի թարգմանութիւններից, որոնց թարգմանման ժամանակը դնում են ոչ վաղ քան 6-րդ դարը։

«գեղեցիկ խնդրի», «գեղեցիկ մտածութեան» համար: Բայց գովեստը նա լոկ խօսքով չի անում, այլ անմիջապէս հիմնաւորում է պատմականօրէն, ասելով, որ եթէ Հայաստանի ե՛ւ հին, ե՛ւ ժամանակակից իշխաններն այդ բանն անել չեն տուել, եւ Սահակ Բագրատունին առաջինը մտածում է այդ մասին, ապա ուրեմն նա աւելի մեծ է քան առաջինները եւ արժանի է բարձրր գովեստների եւ իր Պատմութեան սկզբում գրուելու: Դրա համար,— ասում է Պատմագիրը, — «ոչ միայն գովել արժան է զքեզ, այլ եւ ի վերայ քո աղօթել՝ առ ի լինել քեզ միշտ այսպիսի»: Նա ուրախութեամբ ընդունում է և խոստանում կատարել նրա խնդիրը՝ անմահ յիշատակ թողնելու այդ նրան եւ նրա սերունդներին, ինչպէս եւ հայոց նախնական ազգին, որ քաջ եւ արգասաւոր է «ոչ միայն ի բանս եւ ի պիտանաւոր խոհականութիւնս, այլ եւ ի մեծամեծս եւ ի բազում գործս արժանափառս»: Եւ իսկոյն նա դնում է իր գրելիքի ծրագիրը, որ է՝ Հայաստանի իշխող տան պատմութիւնն անել հօրից որդի ծննդաբանելով, իսկ հայոց նախարարութիւնների միայն որտեղից եւ ինչպէս ծագելը յայտնելով համառօտ եւ հաւաստի: Աղբիւրը՝ մի քանի յունական պատմութիւններ:

Եւ ահա նրա մտքում, պատմութեան աղբիւրների առթիւ, ծնւում է մի համեմատութիւն յոյների եւ հայերի միջեւ, յոյն թագաւորների եւ հայ թագաւորների միջեւ: Յունաց թագաւորները հոգ են տարել «իմաստութեան», այսինքն գիտութեան համար: Իբրեւ Ալեքսանդրիայում ուսած մէկը՝ նա յիշատակում է Պտղոմէոս Եղբայրասէրին, Եգիպտոսի այն նշանաւոր թագաւորին, որ նուաճելով «եւ զյոյնս ընդ իւրով ձեռամբ՝ անուանեցաւ Աղեքսանդրի եւ Յունաց թագաւոր... որ եւ վասն առաւել յունասէր բարս ունելոյ՝ ի յոյն լեզու զաշխատութիւն իւր ժողովեաց»: Նա «պէտ արարեալ զամենայն ազգաց զմատեանս եւ զվէպս ի յոյն լեզու փոխարկեաց»: Այսպէս եւ շատ յոյն գիտնականներ ոչ միայն իրենցն են գրել, այլեւ ուրիշ շատ ազգերի պատմութիւններն ու արուեստները ժողովել, թարգմանել են յունարէն: «Վասն որոյ եւ զբոլոր իսկ զՅոյնս ոչ դանդաղիմ մայր կամ դայեակ ասել իմաստից» (Ա. 2): Ահա Խորենացու «յունասիրութիւնը»: Նա խանդավառ երկրպագու է յունական դպրութեան եւ գիտութեան:

Ի՞նչ կայ այն կողմում հայերի մէջ: Մեր նախնիքն, — ասում է նա (Ա. 3), — անիմաստասէր բարք են ունեցել. մեր թագաւորներն եւ ուրիշ առաջիններն ունեցել են «առ ի յիմաստն տխմարութիւն, եւ անկատարութիւն ոգւոյն բանականի»: Նրանք բան չեն գրել տուել թէ՛ իրենց եւ թէ՛ ուրիշների յիշատակի համար: «Զի թէպէտ եւ եմք ածու փոքր, եւ թուով յոյժ ընդ փոքու սահմանեալ, եւ զօրութեամբ տկար, եւ ընդ այլով յոլով անգամ նուաճեալ թագաւորութեամբ՝ սակայն բազում գործք արութեան գտանին գործեալ եւ ի մերում աշխարհիս, եւ արժանի գրոյ յիշատակի, զոր եւ ոչ մի ոք ի նոցանէ պէտ յանձին կալաւ մատենագրել»: Նրանց արդարացնելու ոչ մի պարագայ չկայ: «Այլ ինձ թուի, որպէս այժմ՝ եւ առ հինսն Հայաստանեայցս լեալ անսիրելութիւն իմաստութեան եւ երգարանաց բանաւորաց: Վասն որոյ աւելորդ է մեզ եւ այլ յաղագս արանց անբանից, թուլամտաց,

վայրենեաց ճառել», — այլ ինձ թւում է, որ ինչպէս այժմ, հին հայերն էլ չեն սիրել գիտութիւն եւ իմաստալից երգարաններ [=երգերի գրքեր]: Դրա համար եւ աւելորդ է այլեւս, որ խօսենք անբան, թուլամիտ, վայրենի տը-ղամարդկանց մասին:

Ահա թէ ինչպէս է հէնց սկզբից Պատմագիրը բնորոշում ե՛ւ Հայաստանի վիճակը, ե՛ւ հին հայ իշխաններին: Եւ այդ բնութագիրը թէպէտ շատ խիստ, բայց ճիշտ է եղել: Եւ բնականօրէն նա նոյն խնդրի առթիւ կրկին դառնում է Սահակ Բագրատունուն, գրելով.«Բայց ընդ քո յոյժ զարմացեալ եմ ընդ մտացդ ծննդականութիւն, որ ի սկզբանցն մերոց ազգաց մինչեւ ցայժմուս միայն գտար զայսպիսւոյ մեծէ իրէ բուռն հարկանել, եւ մեզ խոյզ խնդրոյ առաջի արկանել — երկար եւ շահաւոր գործով զազգիս մերոյ կարգել զպատմութիւնն ճշդիւ զթագաւորացն եւ զնախարարականաց ազգաց եւ տոհմից, թէ ո՛վ յումմէ եւ զի՛նչ իւրաքանչիւր ոք ի նոցանէ գործեաց... ի ժամանակէ անկարգ ամբարտակին շինուածոյ մինչեւ ցայժմ. — գեղեցի՛կ զայս քեզ համարեալ ի փառս եւ անջան հեշտութիւն»:

Վերջին խօսքով ուզում է ասել, թէ նեղութիւնն ինքը կը քաշի, իսկ մեկենասն առանց նեղութեան փառք ու անուն կը վաստակի: Եւ անմիջապէս դարձեալ դիմելով Սահակ Բագրատունուն՝ աւելացնում է, թէ ինչով գրի. մի՞թէ մատեան ունի ձեռքի տակ, կամ «քո հայրենական գրականութիւնը»: «Բայց սակայն սկսայց, թէպէտ եւ ջանիւ. միայն թէ շնորհակալ ոք մերոցըս գտանիցի աշխատութեանցս»:

Այսպէս Հայոց Պատմութեան առաջին երեք գլուխների մէջ արդէն մենք տեսնում ենք, որ Մ. Խորենացու յունասիրութեան հիմքը յունական գիտութիւնն է, որի համար առանձնապէս հոգացել են Եգիպտոսի Պտղոմեան թագաւորները: Ըստ այնմ էլ նա խիստ քննադատում է հին եւ նոյնիսկ իր ժամանակի հայերին նրանց տգիտութեան, անուսումնասիրութեան եւ գրականութիւն չունենալու համար: Նա բնականաբար ուրախացած եւ զարմացած է, որ գոնէ մէկն իր ժամանակ գտնուել է, որ առաջարկել է իրեն Հայոց պատմութիւն գրել եւ նոյնիսկ պատմութեան ծրագիրն էլ տուել է: Թէպէտ եւ նամակը միայն առաջին գլուխն է, բայց Պատմութեան շարունակութեան մէջ եւս, իր աղբիւրների մասին մտածելիս, ինչպէս եւ ուրիշ դէպքերում, իր աչքի առաջ ունի այդ իշխանին, խօսում է նրա հետ, իր մտքերը նրան է բացատրում, կամ ասում. «Եթէ շնորհակալ եւ մերոցս տքնութեանց եւ ջանից լինիցիս, ո՛վ ուսումնասէր դու և յայտնիկ զմեզ աշխատեցուցանող, անցից սակաւ բանիւք յիշատակաց» (Ա. 6): Կամ գրում է նրան. «Եթէ զամենայն եղեալսն յաշտարակագործութենէն մինչեւ առ մեզ ի հասողութիւն քեզ ի մերումս ածել ջանացուք պատմութեան, ե՞րբ ապա յըղձալին քո հասանիցեմք զրուցաց պատմութիւնն. մանաւանդ զի եւ առաջիկայս մեր երկար է գործ, եւ ժամանակ մահկանացուաց սուղ եւ անյայտ» (Ա. 7): Ուրիշ անգամ նըրան դիմելով ասում է. «Երկրորդեմք այժմ քում հարցասիրութեանդ», կամ յայտնում է նրան. «Յայժմհետէ մինչեւ ցթագաւորութիւնն Վաղարշակայ ի

Հայս՝ ոչինչ ճշմարտագոյն ունիմ պատմել քեզ» (Ա․ 31)։

Պարզ երեւում է, որ այդ իշխանն էլ անտարբեր չի մնացել։ Նա ոչ միայն սկզբում ծրագիր է տուել Պատմագրին, այլեւ յետոյ թելադրել է նրան, թէ ինչ գրի, ինչպէս գրի, չտապով գրի։ «Երկուք այսոքիկ են, որք աշխատութիւն տագնապաւ մեզ ի վերայ ի քումմէդ հասուցանեն հարցասիրութենէ, — համառօտասիրութիւն, արագաբանութիւն․ եւ այսոքիկ՝ պերճք եւ պայծառք, պղատոնականք իբր եղանել բանք․ հեռի ի սուտ թենէ, եւ լի որ ինչ ընդդէմ սուտ թեան․ եւ զայսոսիկ յառաջին մարդոյն մինչեւ ցքեզ առ ժամայն պատմել։ Եւ այսոցիկ ի միասին պատահել անհնարին է… Իսկ զքո փափագ արտաքոյ այսպիսւոյ աստուածայնոյ տեսանեմք սահմանի, զի արդար եւ բնաւ եւ առ ժամայն ամենայնք քեզ եղիցին ասացեալ։ Այլ առ ի մէնջ այսոքիկ կա՛մ յերկար, եւ քեզ ըստ կամաց, կա՛մ փոյթ, եւ քեզ ոչ հաճելիք։ Զի այսպէս ի քոյ հապճեպելոյ ահա ոչ ինչ յաղագս Մակեդոնացւոյն, եւ ոչ վասն Եղիականին ի կարգին նշանակեցաք» (Ա․ 32)։ Ուրիշ անգամ այդ իշխանը խնդրել է նրան՝ գրել պարսկական առասպելների մասին։ «Բայց արդարեւ այդ ի՞նչ տարփանք է, որ դու ունիս Բիւրասպ Աժդահակի փծուն եւ անճոռնի առասպելների համար, — գրում է նա դիմելով իշխանին, — եւ կամ ինչո՞ւ մեզ նեղութիւն ես տալիս պարսից անյարմար եւ անոճ բաների, մանաւանդ թէ անբանութեան համար… ի՞նչ կարօտութիւն ունես դու այդ սուտ առասպելներին, կամ ի՞նչ պէտք են քեզ այդ անմիտ եւ անհանճար կցկցուած զրոյցները…Բայց ասում ես մեզ, որ իմաստ տանք նրանց անիմաստութեանը եւ զարդարենք անզարդները։ Ես նոյն խօսքն եմ ասում քեզ․ այդ ի՞նչ կարօտութիւն է եւ այդ ի՞նչ փափագ է անբաղձալի բանին բաղձալ եւ մեր նեղութիւնն աւելացնել։ Բայց այդ կը վերագրենք քո մանկական [=երիտասարդական] (1) տարիքին եւ կը համարենք տհաս խակութեանդ ցանկութիւն։ Ուստի այստեղ էլ թող կատարած լինենք քո կամքն ու փափագը» («Յաւելուած Ա․»)։

Ծերունի Պատմագիրը, զգալով, որ վերջին խօսքով վիրաւորում է իր երիտասարդ իշխանին ,անմիջապէս, նրա սիրտն առնելու համար, յաջորդ գլուխն սկսում է նորից դառնալով նոյն խնդրին․ «Պլատոնի խօսքն այժմ համարձակ կ՚ասեմ․ «Իսկ արդ սիրելիի համար արդեօք կա՞յ մի ուրիշ ես։ Որովհետեւ իսկապէս չկայ մի ուրիշ ես»․ ուստի բացի ուրիշ անհնարին բաներից, որ մենք քեզ համար հնարաւոր դարձրինք, այդ էլ կը կատարենք, որովհետեւ որոնց զրոյցներն ու գործերն ատում ենք, եւ մանաւանդ թէ նրանց լսելն էլ մեզ զզուեցնում էր, այսօր իմ ձեռքով շարադրում եմ դրանց անմտութեանը միտք տալով, եւ նրանց շատ վաղուցուայ, նրանց համար էլ անհասկանալի բաներն ահա բացատրում եմ, միայն թէ դրանք քեզ էլ ուրախութիւն եւ կամ մի օգուտ տան։ Բայց իմացիր մեր ատելութիւնը այսպիսի բանի վերաբերմամբ, որ արժան չհամարեցինք մեր արդէն գրած

---

(1) «Մանուկ» նշանակում է՝ նաեւ «կորիճ», «երիտասարդ»։

առաջին գրքի մէջ դնել այդ, ոչ էլ վերջին պատմութիւնների մէջ, այլ զատ եւ ջոկ դրինք»:

Շատ հետաքրքիր է Բ. 64-րդ գլխի վերջի մասի բովանդակութիւնը: Պատմագիրը յիշում է, որ վերջին Տիգրանն ազնուական տոհմեր է հաստատել, բայց անուններով չի յիշում դրանք, որովհետեւ հաստատ չգիտի: «Եւ այս պատճառով ոչինչ չենք գրիլ այն տոհմերի մասին, որոնք վերջին Տիգրանից կարգուեցին, թէեւ շատ անգամ էլ խնդրես այդ մեզնից... Որովհետեւ որքան հնար էր՝ փախանք աւելորդ ու պաճուճուած խօսքերից... Եւ քեզ, ինչպէս շատ անգամ, այժմ էլ աղաչում եմ. մեզ մի՛ ստիպիր աւելորդ բաներ գրելու, եւ քիչ կամ շատ պատմութիւններով՝ մեր այս մեծ եւ հաւաստի ամբողջ աշխատութիւնը դատարկ եւ աւելորդ գործ դարձնիր. որովհետեւ այդ ինչպէս ինձ, նմանապէս եւ քեզ համար վտանգաւոր կը լինի» (Բ. 64):

Բերենք մի հատուած եւս, որով լաւ պարզւում է հեղինակի հայեացքը պատմութեան մասին եւ նրա վերաբերմունքը դէպի Սահակ Բագրատունին: Խօսելով Սահակ կաթողիկոսի ճառի մասին, որ նա ասել էր Պարսից թագաւորի առաջ, Խորենացին աւելացնում է. «Բայց թէ ասիցէ ոք, պարտ է մեզ դասացեալսն մեծին Սահակայ ի Պարսից հրապարակախօսութեանն գրել՝ գիտասցէ, զի ոչ յումեքէ ի լսելիսս մեր հասեալ է բովանդակն ճըշմարտութեամբ, եւ ոչ մեք ի Պատմութեանս հիւսել հաւանիմք: Զի եւ ես այր եմ ծերացեալ եւ հիւանդոտ եւ անպարապ ի թարգմանութեանց, եւ զեբաղելն միայն խոկացի, ոչինչ մաքրագունից պարապեալ բանից, զի եւ քո կամքդ կատարեսցին, եւ ես ճողոպրեցայց ի քոց հարկեցուցանող բանից եւ աղաչանաց. մարդ զքեզ վարկանելով, կարեկցութեամբ մեզ հաւասարեալ, եւ ոչ, որպէս քերթողքն ասեն, մերձազաւակք եւ մօտասերք գոլ եւ նոյնասերմանք աստուածոց՝ իշխանք» (Գ. 65):

Ո՞վ է եղել այդ երիտասարդ իշխանը, որ այնքան հետաքրքիր է եղել դէպի Հայոց պատմութիւնը եւ շարունակ հարկադրել Խորենացուն գրել այն: — Հաւանական է համարւում, որ նա այն Սահակ Բագրատունին է, որին 480-ական թուականներին ապստամբող հայերը մարզպան են կարգում եւ կանչում: «Ազդ եղեւ, — գրում է Ղ. Փարպեցին, — առ տէրն Բագրատունեաց Սահակ, զոր Հայք եւ զօրավարն Հայոց Վահան ի ժամանակին յայնմ մարզպան կարգէին Հայոց» (Ղ. Փ., էջ 267): Ժամանակակից պատմագիրն այս իշխանին գովելով է յիշում, ասելով՝ «սքանչելի ասպետն Սահակ մարզպան», «լաւի առն Սահակայ մարզպանին ասպետի» (էջ 283, 284): Նա եռանդուն մասնակցութիւն է ունեցել պարսիկների դէմ կռուին եւ սպանուել է մի մարտի մէջ, ինչպէս հաշւում են, 482 թ.: Շատ պարզ է, որ նա եղել է ազգային կուսակցութեան պատկանող մի արժանաւոր անձ, եւ բնական է, որ այդպիսի մէկը ցանկանար գրել տալ Հայոց պատմութիւն, ինչպէս տարիներ յետոյ նոյնն անել է տուել նրա մարտակիցը, մարզպան Վահան Մամիկոնեանը:

Խորենացին իր Պատմութիւնը վերջացրել է այդ իշխանի կենդանու-

թեան օրով, քանի որ նրա գիրքը վերեւում յիշուած Գ. 65 գլխից յետոյ ունի միայն երկու գլուխ եւս եւ վերջին ողբը: Այսպիսի դէպքում նա Պատմութիւնը վերջացրած կը լինի մօտ 480 թուականին, երբ մօտաւորապէս 65–70 տարեկան կը լինէր նա եւ կարող էր ասել՝ «ես այր եմ ծերացեալ»:

Պատմութեան վրայ նա անշուշտ աշխատել է մի շարք տարիներ:

4. Աղբիւրները:— Պատմագրի առաջին գործը բնականաբար եղել է հոգալ աղբիւրների համար, որոնց նա առանձին ուշադրութիւն է դարձնում: Նա սովորաբար յիշում է իր աղբիւրները: Չգտնելով ազգային հայկական գրականութիւն, նա դիմում է օտար հեղինակների, առանձնապէս յունականներին, կամ յունարէն լեզուով թարգմանուածներին: Բայց նրանցից էլ նրան անծանօթ են մնացել կարեւորները, ինչպէս՝ Քսենեփոն, Ստրաբոն, Ամմիանոս եւ ուրիշները, որոնցից նա խսկապէս կարող էր օգտուել հայոց պատմութեան համար:

Նա չատերի պէս իր Առաջին գրքի պատմութիւնը՝ «Ծննդաբանութիւն Հայոց Մեծաց», սկսում է սկզբից՝ Ադամից: Առաջին չորս գլուխները (4 – 7), Ադամից մինչեւ Նոյ, հայոց պատմութեանը չեն վերաբերում, այլ այդտեղ նա խօսում է նախաջրհեղեղեան եւ ետջրհեղեղեան շրջանի մասին ըստ Ս. Գրքի: Բայց յիշատակում է նաեւ «այլ պատմագիրներ». Բերոսոս, Աբիւդենոս, Բազմավէպ, Կեփաղիոն: Սակայն այդ հին նշանաւոր պատմագիրների գրուածքներն, ինչպէս երեւում է, Խորենացին ձեռի տակ չի ունեցել, այլ օգտուել է Եւսեբիոս Կեսարացու «Քրոնիկոնից». որովհետեւ ինչ որ նա բերում է՝ կայ այս գրքի մէջ: Բացի նրանցից՝ նա յիշատակում է՝ Եպիփանոս եպիսկոպոսի Կիպրացւոց Կոստանդեայ «Հերձուածոց յանդիմանութիւն», եւ անորոշ կերպով՝ «հին պատմագիրք», «ժամանակագիրք», «ուշիմնագոյն ոմն եւ ընթերցասէր ասորի», «հին պատմութիւնք», Ոլիմպիոդորոս փիլիսոփայի անգիր զրոյցներ. օգտւում է, ինչպէս ասում է, «ի սիրելւոյն իմմէ եւ քան զշատս արդարախօսողէ, ի Բերոսեանն Սիբիլլայ»:

Այս մասում նա զնում է Նոյի երեք որդիների՝ Սեմի, Քամի եւ Յաբեթի ազգաբանութիւնը: Հայերի ծագումը հանում է Յաբեթեան տոհմից այսպէս՝ Յաբեթ, Գամեր, Թիրաս, Թորգոմ, Հայկ, որ հայոց նախնին է, եւ այնուհետեւ՝ Արամանեակ (Արմենակ), Արամայիս, Ամասիա, Գեղամ, Հարմա, Արամ, Արա Գեղեցիկ: Ինչպէս երեւում է, 5–րդ դարում մեր գրողների մէջ ընդունուած է եղել հայ ազգի ծագումը կապել աստուածաշընչեան անունների հետ. Կորիւնը հայերին անուանում է «Աշքանազեան ազգ», իսկ Ագաթանգեղոսի Պատմութեան մէջ՝ հայերը կոչւում են «Թորգոմայ ազգ», «Թորգոմայ տուն»: Խորենացին էլ Հայկի հայր զնում է Թորգոմին:

Յետոյ անցնում է Պատմագիրը հայոց պատմութեանը, որի գլխաւոր աղբիւրներից մէկը հին շրջանի համար՝ է' «ասորի Մար Աբաս Կատինայ, այր ուշիմ եւ վարժ քաղդէացի եւ յոյն գրով»:

Երկրորդ գրքի համար եւս նա մի շարք անուններ է յիշում իբրեւ աղբիւրներ՝ Ագաթանգեղոս, Արիստոն, Փեղղացի, Բարդածան, Բարսումա,

*Պաղեփատոս, Ափրիկանոս, Յովսեպոս, Ղերուբնա, Մանեթոս, Պոլիկրատէս, Սկամադրոս, Եւագարոս, «Ողիմպ քուրմ», Փղեգոնիոս եւ այլն: Յիշում է յաճախ Վիպասանք, երգեր, Երգիչք Գողթան, կամ անորոշ ձեւով «հինքն Արամազնեայց, հինքն մեր ասեն, ասի, պատմի, պատմեն, կոչեն, լսեմք, գրեալ յայլոց, ոմն» եւ այլն: Բայց այս բոլոր աղբիւրները նրան շատ նիւթ չեն տուել. ուստի նա Երրորդ գրքի սկզբում գանգատւում է աղբիւրներ չունենալու համար: «Ո՛չ հնախօսութիւնք եղեալ մերոյ աշխարհիս, եւ ոչ ընդ ամենայն յունականսն անցանել ատակեալ սակս կարճութեան ժամանակին. նա եւ ոչ մատենագրութիւնք Դիոդորի հուպ առ մեզ են, զի ի նմա պահելով զակն՝ անմոռաց անցանէաք ընդ բնաւն, զի մի՛ ինչ ի մէնջ մնասցէ ի գլխաւորացն եւ ի պիտանեացն, եւ արժանի յիշատակի մերոց շարագրութեանց: Այլ որչափ ջան եւ յիշողութիւնք բաւեցին՝ պատմեցաք ստուգապէս ի մեծէն Աղեքսանդրէ մինչեւ ի վախճան սրբոյն Տրդատայ, յոյժ կանուխ եւ հեռի ժամանակօք: Վասն որոյ մի՛ զմեզ այպանեալ պարսաւեսցես» (Գ. 1): Տեսնենք աղբիւրներից մի քանիսն առանձնապէս:*

5. Մար Աբաս:— *Ըստ Մ. Խորենացու՝ Հայոց առաջին Արշակունի թագաւորը՝ Վաղարշակ՝ ասորի Մար Աբասին ուղարկում է իր եղբայր Արշակի մօտ, նամակով խնդրելով, որ թոյլ տայ Մար Աբասին՝ Հայոց պատմութիւնը հանի Նինուէի դիւանից: Այդտեղ Մար Աբասն իբր գտնում է մի գիրք, որի վերնագիրն է եղել. «Այս մատեան հրամանաւ Աղեքսանդրի ի քաղդէացւոց բարբառոյ փոխեալ ի յոյն, որ ունի զբուն հնոցն եւ զնախնեացն բանս»: Մար Աբասը դրանից հանել է հայոց «հաւաստի» պատմութիւնը, բերել Վաղարշակին, որ սա զգուշութեամբ պահել է տուել արքունիքում, մի մասն էլ հրամայել է փորագրել քարի վրայ:*

*Այս ամբողջ պատմութիւնը Վաղարշակի նամակի եւ Նինուէի դիւանի մասին՝ անվաւեր է: Պարթեւական հարստութեան սկզբում Նինուէ քաղաքը վաղուց կործանուած է եղել. եւ այդ քաղաքում, ինչպէս 19-րդ դարի պեղումներից պարզուել է, եղել են միայն աղիւսների վրայ սեպագիրներով գրոշմուած պատմութիւններ Նինուէի իշխողների եւ նրանց աստուածների մասին: Եւ ինչպէս ինքը Մ. Խորենացին գրում է (Ա. 14), «Ոչ հարկ ինչ եւ ոչ պէտք կարեւորք էին նոցա՝ զազգաց օտարաց եւ զաշխարհաց ի բացեայ եւ զհամբաւս հինս եւ զգրոյցս նախնականս յիւրեանց թագաւորաց կամ մեհենից մատեանս գրել. մանաւանդ զի եւ ոչ պարծանք ինչ նոցա եւ ոչ բարգաւաճանք՝ օտար ազգաց քաջութիւն եւ գործք արութեան»: Վաղարշակի նամակի կեղծիքը կատարուած է պատմութիւնն արժանահաւատ դարձնելու համար: Դա սովորական երեւոյթ է եղել առանձնապէս ասորիների մէջ, ինչպէս գրում է Ղ. Փարպեցին: Մի ժամանակ կասկածում էին Մար-Աբասեան աղբիւրի գոյութիւն ունեցած լինելու մասին. բայց այժմ պարզուած են համարում, որ եղել է Մար Աբասի անունով մի գրուածք, որից, ըստ երեւոյթին, օգտուել է Մ. Խորենացին, ինչպէս եւ ինքն իսկ գրում է. «Յորմէ մեր հաւաստի ի վերայ հասեալ կարգի զրուցացս՝ երկրորդեմք այժմ քում*

հարցասիրութեանդ, ձգելով զմեր բնիկ նախարարութիւնս(1) մինչև զԲազդէացւոց Սարդանապաղոս, եւ եւս մօտադոյն» (Ա. 9)։

Մար-Աբասեան գրուածքի ծագման կեդծիքն արդեօք սկզբնական աղբիւրի հեղինակի՞նն է, թէ՞ Մ. Խորենացունը, այդ դժուար է որոշել։ Ցամենայն դէպս, եթէ Խորենացու աղբիւրի մէջ էլ եղել է այդ կեղծիքը, մեր Պատմագիրը վերամշակել է այդ եւ յարմարեցրել իր նպատակին։ Երբ Վաղարշակն ուզում է իմանալ, «թէ ո՛յք արդեօք եւ ո՛րպիսի արք տիրեալ իցեն ի վերայ աշխարհիս Հայոց մինչեւ ցնա. դքաջա՞ց արդեօք, եթէ զվատաց անցեալ ունիցի զտեղի» (Ա. 8). կամ երբ նա իր եղբորը գրում է, թէ մտադրրուել է «գիտել, թէ ո՛յք ոմանք յառաջ քան զիս իցեն տիրեալ աշխարհիս Հայոց, եւ ուստի՛ նախարարութիւնքս որ աստ կան» (Ա. 9), այդ ուրիշ բան չէ, բայց եթէ Խորենացու իր ծրագիրը, այն է՝ Հայոց իշխող տոհմի մասին գրել, «զորդի ի հօրէ ծննդաբանելով... իսկ զՀայաստանեայցս նախարարութիւնս, զամենեցուն զոուստն եւ զզխարդն յայտնելով համառօտ» (Ա. 1)։ Նամակից քիչ առաջ էլ (Ա. 7) Պատմագիրը դիմելով Սահակ Բագրատունուն՝ ասում է հայոց պատմութեան համար՝ «Ըղձալին քո հաստնիցեմք գրուցաց պատմութիւնն», իսկ նամակի մէջ (Ա. 9) նոյն պատմութեան համար երբ Վաղարշակը գրել է իր եղբորը՝ «ըղձալին եղբօր քոյ»։

Մ. Խորենացին Մար Աբասից օգտւում է Ա. գրքի 9-րդ գլխից մինչեւ Բ. գրքի 9-րդ գլխի վերջը, ուր գրում է՝ «Աստանօր սպառին բանք ծերունւոյն Մար Աբայ Կատինայ»։ Այս հեղինակից օգտուելիս կա՛մ նրա անունն է տալի, կա՛մ նրան կոչում է՝ «պատմագիրն, նոյն պատմագիրն, ժամանակագիրն կամ բազմահմուտ Ասորին». չի խորշւում նոյնիսկ միեւնոյն գլխի մէջ մի քանի տող յետոյ նրա անունը կրկնելուց։ Մար Աբասի համար, առանց անունը յիշելու, միայն «ասէ» բայը գործ է ածում Ա. 10, 11 եւ 12 գլուխների մէջ, բայց միշտ այն դէպքում, երբ վերեւում մի երկու անգամ յիշել է նրա անունը եւ յայտնել, որ նրանից է քաղում։ Կան բաներ, որ մեր պատմագիրն ուրիշ աղբիւրներից է առնում։ Այդպիսի դէպքերում եթէ նա այդ այլ աղբիւրների անունները չի յայտնում, գրում է անորոշ ձեւերով՝ «ասեն», «ասի», «որպէս լսեմք», «որպէս ասեն», կամ (Ա. 19) գրում է. «որ ինչ ի գրոց», «որ ինչ ի բանից արանց իմաստնոց եւ յայսոսիկ քաջախօհաց»։ Ինչ որ Մ. Խորենացին Մար Աբասից քաղած է դնում, գրեթէ բոլորը, երբեմն համառօտ ձեւով, կայ Սեբէոսի Պատմութեան (2) առաջին գլխի մէջ, որի աղբիւրն է «Մառեանն Մարաբայ փիլիսոփայի Մծուրնացւոյ»։ Իսկ որտեղ նա Մար Աբասի անունը չի տալի, քաղած է ուրիշ աղբիւրներից,

(1) Մեր բնիկ նախարարութիւնն, այսինքն՝ Հայկազնեան իշխող տոհմը, եւ ոչ թէ «մեր բնիկ նախարարութիւնները», ինչպէս սխալ թարգմանում են։ «Նախարարութիւնս» բառի վերջին «ս» տառը յօդ է։

(2) Սեբէոսի եպիսկոպոսի Պատմութիւն, ի ձեռն Ստ. Մալխասեանց, Երեւան, 1939 թ.։

*այդ չկայ Սեբէոսի Պատմութեան սկզբում* (1)։ *Այստեղ կարեւոր չէ յիշել, թէ Մ. Խորենացին ինչեր է առել Մար Աբասից իր Հայոց Պատմութեան մէջ։*

*Ի՞նչ ծագում ունի այդ Մար–Աբասեան պատմութեան բովանդակութիւնը։ — Ինչքան էլ յիշուած նամակի եւ Նինուէի պատմութիւնը կեղծիք լինի, պատմութիւնները լոկ մտացածին ստեղծագործութիւններ չեն։ Մենք արդէն տեսել ենք, որ Հայկի, Արամի եւ Արա Գեղեցկի մասին պատմուածքները հին առասպելներ են։ Դրանց աղբիւրը Մ. Խորենացու Պատմութեան մէջ՝ է Մար Աբասը։ Ինքը Խորենացին մի քանի անգամ յիշելով հանդերձ, թէ այդ պատմութիւններն առնում է Մար Աբասից, մի տեղ* (Ա. 14) *պարզապէս գրում է. «Որպէս Մար Աբաս Կատինայ պատմէ՝ ի փոքունց ոմանց եւ յաննշանից արանց, ի գուսանկանէն այս գտանի ժողովեալ ի դիւանի արքունեաց»։«Փոքր և աննշան մարդիկը» ոչ թէ ժողովողներն են, ինչպէս սխալ հասկացել են, այլ գուսանները, որոնց բերանից, որ է՝ գուսանական երգերից ժողովուած են այդ պատմութիւնները, եւ պահւում են «արքունի դիւանում»։ Այս վերջինը հասկացւում է ոչ թէ Նինուէի, այլ Հայոց Թագաւորների արքունի դիւանը Մծբինում։ Այս վկայութիւնը, որ վերաբերում է Հայկի եւ Արամի մասին պատմուածքներին, Խորենացին կարծես պատահաբար, այսպէս ասած, գրչից փախցնելով, ակամայից է հաղորդում, եւ վերջը դրա համար, ի միջի այլոց, ապաշաւում է գրելով. «Այլ զայս աւելորդ եղեւ մեզ երկրորդել»* (2)։

6. **Աղբիւրների գնահատութիւն։**— *Մ. Խորենացին պատմութիւն է գրում, եւ իբրեւ պատմիչ իր հասկացած կերպով մտածում է իր աղբիւրների հաւաստիութեան մասին։ Այս հոգսը նա շատ ունի։ Այլ խնդիր է, թէ որքան յաջողուել է նրան ստուգութեանը հասնել։ Նա միայն «հաւաստին», «ճշմարիտն» եւ «անսուտն» է ուզում գրել։ Նա* առասպել *է անուանում ամէն պատմութիւն, որ ճշմարիտ չէ, լինի ժողովրդական բանահիւսութիւն՝ երգ, զրոյց, վէպ, Վիպասանք, առակաւոր ասացուածք, թէ իսկական* առասպել *— միթոս, թէ ըստ կամս յերիւրած շինծու պատմուածք։ Նրա կարծիքով՝ հաւաստի պատմութիւնն առասպել է դառնում, երբ պատմագիրներն իրենց ուզած ձեւով փոփոխում են դէպքերի դասաւորութիւնը, անունները, ժամանակը։ «Ըստ ախորժելոյ որպէս կամեցան իւրաքանչիւրքն (=առաջինքն ի վիպասանաց) փոփոխել զանուանս եւ զդրոյցս եւ զժամանակս»։«Զհաւաստին որչափ կարացեալ ի բազմացն ընտրեալ բանից՝ կարգեցաք զծնունդս... որում ոչ զոք ընդդիմանալ կարծեմ ի միտս ունողացն. բայց եթէ զճշմարտութեանն ոք խորհելով քակել զոճ՝ յառասպելս զճշմարիտ բանս ախորժելով փոփոխել փութասցէ»* (Ա. 6)։

*Խորենացին իր դարի զաւակն է. Նրա համար եւս ճշմարիտ է ամենից առաջ Աստուածաշնչի պատմութիւնը եւ ապա սուրբ հայրերի գրու-*

---

(1) Մ. Աբեղեան, Հայ ժողովրդական առասպելները Մ. Խորենացու Հայոց Պատմութեան մէջ, Վաղարշապատ, 1899, էջ 389—408։

(2) Տես՝ Մ. Աբեղեան, Հայ ժողովրդական առասպելները, էջ 581—590։

թիւնները: Իսկ արտաքին պատմագիրների մէջ կայ բան՝ որ սուտ է, կայ բան՝ որ ճշմարիտ է. «Երբեմն ճշմարտեն, երբեմն ստեն» (Ա. 6): Կրիտերիումը Ս. Գիրքն է: Ինչ որ Ս. Գրքի համեմատ է՝ ճշմարիտ է, իսկ ինչ որ համեմատ չէ՝ սուտ է, առասպել է: «Եւ սկսայց՝ յորոց եւ այլքն, որք յեկեղեցւոյ եւ այք ըստ Քրիստոսի, աւելորդ համարելով զարտաքնոյն երկրորդել յաղագս սկզբանն առասպելս, բայց եթէ ղկնիսն՝ ժամանակս ինչ արդեօք եւ զարս յայտնիս, որում եւ աստուածայինքն ի նոյն գայցեն պատմութիւնք բանից» (Ա. 3): Այսպէս, օրինակ, նրա համար առասպել չէ իր «սիրելի» եւ «քան զշատս արդարախօս Բերոսեան Սիբիլլայ» պատմածը, թէ՝ «Զկնի նաւարկութեանն Քսիսութրեայ ի Հայս՝ Զրուանն եւ Տիտանն եւ Յապետոսթէ լինէին իշխանք երկրի». որովհետեւ այդ պատմութիւնը, թէպէտ եւ տարբեր անուններով, Ս. Գրքի [Նոյի] պատմութեան նման է: Իսկ նոյն տեղում Զրադաշտի անուանելը Զրուանին (Սեմին) «սկիզբն եւ հայր աստուածոցն»՝ առասպել է, որովհետեւ Ս. Գրքի համեմատ չէ: Այսպէս եւ Տիտանի եւ Յապետոսթէի կռուի մասին ընդդէմ Զրուանի՝ գրում է. «Զայսոսիկ այլ ոք թէպէտ առասպելս, թէպէտ ճշմարտութիւն հաշուեալ համարեսցի, բայց որպէս ես հաւանեալ եմ, բազում ինչ ճշմարիտ է»: Եւ նա իր համոզմունքը հաստատում է դարձեալ Ս. Գրքով եւ Կիպրոսի Եպիփանոս եպիսկոպոսի «Հերձուածոցն յանդիմանութիւն» գրքով:

Մեր պատմագիրը նման պատմութիւններից ճշմարիտ է համարում ոչ միայն այն, որ Ս. Գրքի համեմատ է, այլեւ այն, որ «ոճով» է գրուած: «Այլ հաւաստի մեզ թուեցաւ որ ի Մար Աբայն Կատինայն է քննութիւն քաղդէական մատենից քան զայսոսիկ. քանզի ոճով իմն ասէ եւ զպատճառս պատերազմին յայտնէ» (Ա. 18): Իսկ Հայկից Բագրատունեաց սերուած լինելու մասին առասպելն անհաւատալի է համարում, «զի ի բաց բանից եւ անոճ իմն յաղագս Հայկայ եւ նմանեացն կակազէ» (Ա. 22): «Ոճով պատմել» նշանակում է՝ յայտնել տեղը, ժամանակը, պատճառը, գործող անձերը եւ «պերճ եւ ողորկ» ձեւով մանրամասն յօրինել: «Բայց զի ոչ ճըշմարտութեամբ եւ ոճով պատմէ, եւ ոչ զանուանսն նշանակէ կամ զտեղիս կատարմանցն՝ ոչ ինչ կարեւորագոյն համարեցաք երկրորդել» (Բ. 75)(1):

7. Ժողովրդական բանահիւսութիւն եւ Մ. Խորենացու հայեացքն առասպելի վրայ եւ առասպելների մեկնութիւն:— Զգտնելով պատմական աղբիւրներ Հայոց անցեալի մասին, Մ. Խորենացին դիմում է ժողովրդական բանահիւսութեանը, որոնցով հայ ժողովուրդն եղել է հարուստ կամ, Պատմագրի բառերով, «արգասաւոր ի բանս» (Ա. 2): Նա օգտւում է դրանցից, հարկաւ, իր հասկացած եղանակով եւ ըստ իր հայեացքի աւանդական երգերի ու զրոյցների վրայ:

Ամենից առաջ նա, ինչպէս եւ 5-րդ դարի միւս գրողները՝ Եզնիկ, Ագաթանգեղոս, հետեւող է Եւհեմերոս փիլիսոփային (Մակեդոնիայում

(1) Մ. Աբեղեան, Հայ ժողովրդական առասպելները, էջ 71–75:

*4-րդ դարի վերջերում մ. թ. ա.), որ այն տեսակէտն է պաշտպանել, թէ աստուածները սկզբնապէս եղել են մարդիկ.նրանք իրենց մահից յետոյ ըստացել են աստուածային պատիւ,եւ նրանց գերեզմանները դարձել են պաշտամունքի տեղ: Այսպէս, օրինակ, Խորենացին բերելով Վահագնի մասին առասպելը՝ եւհեմերական բացատրութեամբ աւելացնում է. «Այլ ասեն զսա եւ աստուածացեալ» (Ա. 31):Ապա նա ժողովրդական բանահիւսութեան երկերի համար նոյն մեթոդն է գործադրել, ինչ որ ընդհանրապէս արտաքին գրաւոր պատմութիւնների նկատմամբ — համեմատելով նոյնացնել Ս. Գրքի բովանդակութեան հետ: Այսպէս, օրինակ, նա հայկական բանահիւսութեան Բէլին, Հայկի ոսոխին, նոյնացրել է Ս. Գրքի Նեբրովթի հետ. «Յայտարարութիւն սակաւուք, թէ ըստ արտաքնոցն ասացեալ Բէլդ՝ ըստ աստուածային բանից ճշմարտութեամբ է Նեբրովթ» (Ա. 7):*

*Եւ վերջապէս՝ ժողովրդական բանահիւսութեան համար Մ. Խորենացին ընդարձակ չափերով կիրառել է այլաբանական բացատրութիւնը, որ հները գործադրել էին իրենց առասպելների—միթոսների համար, իսկ հին քրիստոնեայ մեկնիչները՝ Ս. Գրքի համար: Նրա հայեացքով՝ ժողովրդական բանահիւսութեան երկերն առասպել են, իսկ առասպելները մեծ մասամբ այլաբանութիւններ են, ուստի պէտք է մեկնել կամ, իր բառով ասած, «յայտնել», այսինքն յայտնի դարձնել դրանց մէջ բովանդակուած խոկութիւնը, ճշմարտութիւնը, կամ առասպելները «ճշմարտել», այսինքն ճշմարտանման դարձնել (2): Այսպէս այլաբանութիւն են յունական առասպելները: Թէեւ դրանք «պերճ եւ ողորկ» են, «հանդերձ պատճառաւ», ուրիշ խօսքով, «ոճով» են, բայց եւ այնպէս դրանք էլ «զճշմարտութիւն իրաց այլաբանաբար յինքեանս ունին թաքուցեալ»:Այսպիսի «այլաբանութիւն» է նրա համար,օրինակ,Պրոմեթէոսի առասպելը.«Եւ ընդէ՞ր...Պրոմեթէոս զողացեալ առ ի յաստուածոցն զհուր եւ շնորհակալ մարդկան,— որ է այլաբանութիւն, — ոչ բերէ ասել կարգ բանիս» (Ա. 7): Այլաբանութիւն են եւ պահլաւիկների առասպելները (Բ. 70), ինչպէս եւ (պարսից առասպելները), օրինակ՝ Բիւրասպ Աժդահակի առասպելը, որ համարում է նա «փծուն եւ անճոռնի», «անյարմար եւ անոճ բանք», այլեւ «անբանութիւն»: Նրանց հեթոսները «սուտ» են եւ հէնց առասպելներն էլ են «առասպելք սուտք», «անմիտ եւ անհանճար բանից յարմարանք», որոնցով զբաղուելու պէտք չկայ: Բայց եւ այնպէս նա Բիւրասպ Աժդահակի առասպելներն եւս այլաբանութիւն ընդունելով՝ կարելի է համարում, թէպէտ մեծ դժուարութեամբ, մեկնել, կամ «պատճառս տալ անբանութեան նոցա, եւ զարդարել զանզարդսն». ուրիշ խօսքով, նորից «չարադրել» յունաց առասպելների պէս «ոճով», «հանդերձ պատճառաւ», «միտս անմտութեան նոցա տալով», եւ «զկարի վաղուց նոցա իրս եւ նոցա անհասանելիս յայտնելով», այսինքն մեկնելով «անոճ» առասպելներից հանել այն, ինչ որ «հաւատի» է (2):*

---

(1) Անդ, էջ 77–95:

(2) «Ստորագրութիւն, որ ինչ սակս Բիւրասպեայ հաւատոյն»: Հմմտ. «Ի նոցանէ զոր ինչ հաւատոյն կարծեմք առնուլ» (Ա. 3):

Խորենացին այդ անհասկանալի առասպելները մեկնում, կամ «անհասանելին յայտնում» է նախ Բիւրասպին կապելով աստղաբաշխութեան ժամանակի եւ Ներրովթի հետ՝ իբրեւ պարսից «նախնի», Ներրովթի իշխանութեան տակ, եւ այնուհետեւ ամենայն ինչ ժամանակի հասկացութեանը յարմարեցնելով, դերբնականը բնականի վերածելով: Բերենք առասպելի վերջին կտորը միայն իբրեւ օրինակ: Առասպելի մէջ ասուած է համառօտ, թէ մանուկ սատանան Աժդահակի ուսերը համբուրում է եւ «անդուստ» վիշապներ են ծնւում կամ բուսնում. եւ այնուհետեւ Աժդահակի չարութիւնը շատանում է («չարութեան յաճախութիւն») եւ նա «ի պէտս որովայնի» մարդիկ է սպանում («ծախել»): Իսկ յետոյ Հրուդէն անունով մէկը նրան կապում է պղնձի շղթաներով եւ տանում դէպի Դըմբաւընդ լեռը: Ճանապարհին Հրուդէնը ննջում է եւ Բիւրասպը քշում է նրան դէպի բլուրը, բայց Հրուդէնը զարթնում է եւ տանում նրան լեռան այրերն ու կապում եւ իր արձանը կանգնում նրա դիմաց («զինքն — անդրի ընդդէմ նորա հաստատել»), որից սարսափելով, Աժդահակը՝ «հնազանդեալ կայ շղթայիցն» եւ չէ կարողանում ելնել եւ ապականել երկիրը: — Այս առասպելը Խորենացին մեկնում է այսպէս. «Իսկ վիշապացն բուսումն, կամ կատարելապէս վիշապանալն Բիւրասպեայ, որ ասի, է այս», թէ նա սկսեց անբաւ մարդիկ զոհել դեւերին, [առասպելի մէջ՝ «ծախել զմարդիկ ի պէտս որովայնի»], մինչեւ որ ժողովուրդը (բազմութիւն) տաղտկացաւ նրանից եւ հալածեց նրան, եւ նա փախաւ Դըմբաւընդ լեռան կողմերը: Նրան սաստիկ քշելուց՝ նրա մարդիկը [ամբոխ] ցրիւ եկան նրանից: [Առասպելի մէջ՝ Հրուդէնը Աժդահակին կապած տանում է սարը]: Այս բանին վստահացած՝ նրան քշողները մի քանի օր հանգստացան այն տեղերում: [Առասպելի մէջ՝ Հրուդէնը ճանապարհին ննջում է]: Իսկ Բիւրասպը ժողովելով իր ցրուած մարդիկը, յանկարծ վրայ է հասնում եւ սաստիկ վնաս է տալիս նրանց: [Առասպելի մէջ՝ Բիւրասպը ննջող Հրուդէնին դէպի բլուրն է քաշում]: Բայց բազմութիւնը յաղթում է Բիւրասպին եւ նա փախստական է լինում. ետեւից հասնում, սպանում են նրան եւ ձգում մի ծծմբի մեծ վիհ: [Առասպելի մէջ՝ Հրուդէնը զարթնում է եւ տանում Բիւրասպին լեռան այրերն ու կապում եւ այլն]:

Ինչպէս կարելի է տեսնել, Խորենացին իր մեկնութեան մէջ, թէպէտ եւ էականը պահելով, բոլորովին նոր բան է պատմում իրենից: Նրա պատմածն այլեւս առասպելի գոյն չունի, այլ բնական իրողութեան: Դուրս են ձգուած կամ բնական, խելքի մօտիկ են դարձրած գերբնական եւ վիպական գծերը, ինչպէս են՝ «վիշապաց բուսումն» կամ Բիւրասպի կատարելապէս վիշապանալը, Հրուդէնի «զինքն անդրի ընդդէմ նրա հաստատելը», Աժդահակի սարսափահար ու շղթայուած մնալն այրումը եւ չկարողանալը դուրս գալ աշխարհն աւերելու. Հրուդէնի ննջելը ճանապարհին, Աժդահակի նրան դէպի սարը քաշելը, փորի համար մարդիկ կոտորելը եւ այլն: Բերած օրինակից շատ պարզ է, թէ Խորենացին ինչպէս է ըմբռնում առասպելները եւ ինչպէս է մեկնում դրանք:

Նոյնպէս վարւում է նա եւ հայկական առասպելների վերաբերմամբ: Հայոց Վիպասանքի բովանդակութեան մասին գրելիս (Բ. 49) նա յիշում է՝ «Եւ իբր տրփանէ Սաթինկան ընդ վիշապազունսն առասպելաբար, այս ինքն ընդ զարմս Աժդահակայ, որ ունին զամենայն զառ ստորոտովն Մասեաց»: Պատմագիրն այստեղ շատ որոշ գրում է, որ իբրեւ առասպել պատմւում է Վիպասանքի մէջ, թէ Սաթինիկը վիշապաղներ է սիրել: Բայց նա ինքը, ինչպէս բացատրական «այս ինքն» բառը ցոյց է տալի, «Վիշապազունք» հասկանում է իբրեւ «զարմք Աժդահակայ»:

Սաթինիկի այդ արփանքը կամ սէրն ուրիշ տեղ (Ա. 30) գրուած է Արգաւանի համար: Ուստի եւ Արգաւանը ներկայանում է իբրեւ վիշապազն: Թէ Արգաւանը Վիպասանքի մէջ հանդէս է եկել իբրեւ վիշապազն կամ նոյնիսկ իբրեւ վիշապ, այդ երեւում է նաեւ նոյն տեղում բերած հետեւեալ կըտորից. «Այլ եւ ճաշ առնէ գործեալ Արգաւանայ ի պատիւ Արտաշիսի եւ խարդաւանակ լեալ նմին ի տաճարին վիշապաց»: Քանի որ Արգաւանի այդ տաճարը, այսինքն ապարանքը, ուր ճաշն ու խարդաւանքն է լինում, կոչւում է «տաճար վիշապաց», ապա եւ ինքն Արգաւանն իբրեւ վիշապ է ներկայանում: Նոյն տեղում «Թուելեաց» երգերի, որ նոյնն է Վիպասանքի, բովանդակութիւնը բերելուց յետոյ՝ Խորենացին աւելացնում է. «Եւ արդ՝ ո՞չ արդեօք առաւել առատնօր զարմացիս ի վերայ մերոյ ճշմարտապատմութեանս, թէ ո՛րպէս յայտնեցաք զանյայտ իրս վիշապաց, որք են յԱզատն ի վեր ի Մասիս» (Ա. 30): Պատմագիրն, ուրեմն, ասում է, թէ վերեւում բերուած պատմութիւններն իսկապէս «անյայտ իրք վիշապաց» են, որ ինքը յայտնում է(1), այսինքն հասկանալի է դարձնում: Դրա համար նա երգերի մէջ յիշուած վիշապներն ու վիշապազները դարձնում է «զարմք Աժդահակայ», կամ, աւելի ճիշտ, երգերի մէջ յիշուած անուններից, «ճշմարտապատմութեան» համար, նախընտրում է Աժդահակի զարմեր կոչումը: Եւ հասկանալի է, թէ ինչու: Վիշապները կամ վիշապազներն առասպելական էակներ լինելով՝ անհաւատալի բաներ են: Քրիստոնեայ Պատմագիրը, որ նոյնիսկ աստուածներն իբրեւ մարդ եղած է մեկնում, չէր կարող հաւատալ, որ Սաթինիկ թագուհին մի վիշապ կամ վիշապազներ սիրած լինի, եւ կամ Արտաշէս թագաւորը նրանց հետ յարաբերութիւն ունեցած լինի: Բայց մի անգամ որ նրանք մտնում են Արտաշէսի պատմութեան մէջ, պէտք էր այդ «ճշմարտել» (2): Իսկ ճշմարիտն այն է, որ դրանք Մարաց Աժդահակ թագաւորի զարմերն են, միայն հայերէն բառով ասած. «զի Աժդահակդ ի մեր լեզուս է վիշապ», ուրեմն եւ «Վիշապազն» նոյն է, ինչ որ «Աժդահակի զարմ»:

Բերենք եւ հետեւեալը: Խորենացին (Բ. 8) Մուրացան նախարարութեան համար գիտէ. «Ոչ առնէ նահապետաց ազգին՝ Մուրացեան տէր, այլ Մարացւոցն տէր»: Այստեղից եզրակացնում է նա Մուրացանների մարացի լինելը: Եւ երբ միանգամ նրանք մարացի են, մարական ծագում ունեն, անշուշտ հասարակ ծագում պիտի չունենային, այլ մի իշխանից կամ թագաւորից սերուած պիտի համարուէին, ինչպէս շատ նախարարական տներ: Եւ ումնի՞ց յատկապէս, եթէ ոչ «ի զաւակէ Աժդահակայ մարաց եղելոյ թագաւորի», որի սերունդները բերուած են Հայաստան: Այսպէս՝ մի կողմից Վիպասանքի մէջ յիշուած վիշապները կամ վիշապազները նոյն են, ինչ որ Աժդահակի զարմերը կամ մարերը. իսկ միւս

---

(1) Հմմտ. Ա. գրքի Բ. յաւելուածի մէջ «Բիւրասպի» առասպելի մեկնութիւնը. «... միտս անմտութեան նոցա տալով, եւ զկարի վաղուց նոցա իրս եւ նոցա անհասանելիս աւասիկ յայտնեմ»:

(2) «Բայց յիշատակեսցուք եւ մեք կարճառօտիւք, եւ զայլաբանութիւնն ճշմարտեսցուք» (Բ. 49):

կողմից Մուրացանները կամ «մարացւոցն տեարք» ունին մարական ծագում եւ են Մարաց Աժդահակ Թագաւորի սերնդից։ Ուստի բանավարութիւնը հեշտութեամբ պիտի տանէր այն եզրակացութեան, թէ Մուրացաններն են վիշապազներ, կամ, ընդհակառակն, երգերի մէջ յիշուած վիշապազները մուրացաններ են, եւ վիշապ Արգաւանը նոյնն է Մուրացան Արգամի հետ։

Պատմագիրն իր այս եզրակացութեան համար իբրեւ հաստատութիւն գտնում է նրանց բնակութեան տեղի նոյնութիւնը կամ մօտիկութիւնը։ Նա (Ա. 30), յայտնում է, որ ըստ «Թուելեաց երգերի», վիշապազները բնակւում են «յԱզատն ի վեր ի Մասիս»։ Իսկ Բ. 49. յայտնում է, որ զարմք Աժդահակայ (=Մարք=վիշապազունք) «ունին զամենայն զառ ընտորոտովն Մասեաց», ինչպէս եւ երգի մէջ նոյնն ասուել է (Ա. 30)։ Իսկ Բ. 5. գլխի մէջ այդ կողմերը նա դնում է կալուած Մուրացանների եւ յատկապէս Մուրացան Արգամի, «որ ի ծննդոցն Աժդահակայ» (Բ. 48), եւ յիշում է Նախճաւանը եւ «ըստ հիւսիսոյ Երասխայ զամենայն գիւղս», որ է՝ Մասիսի դիմացի գիւղերը, Շարուրի դաշտը։ Նոյնպէս Բ. 8. գրում է. «Երկրորդ թագաւորութեանն լինէր ի զաւակէ Աժդահակայ, Մարաց եղելոյ թագաւորի, որ այժմ Մուրացանդ կոչեն... Եւ թողու ի վերայ նորա զամենայն շէնս, որք ի գերութենէն Մարաց»։ Այսպէս մի կողմից՝ առասպելի մէջ վիշապների կամ վիշապազների բնակութեան տեղերը կապուած են Մասիսի հետ, իսկ միւս կողմից՝ մարերի (կամ Աժդահակի զարմի) բնակութեան տեղերը, — նոյն եւ Մարացոց տէրերի՝ Մուրացաններինը, — նոյն Մասիսի ստորոտներում են եւ նրանից դէպի արեւելք։ Դրանով Պատմագիրը հաստատած է համարում իր բացատրութիւնները։

Նա Արտաւազդի մահը պատմելիս ասում է, որ Գողթան երգիչներն առասպելաբանում են, թէ Արտաւազդը նախանձել է հօր փառքին, ուստի եւ հայրն անիծել է որդուն, որ որսի գնալիս քաջքերը բռնեն նրան եւ տանեն «յԱզատն ի վեր ի Մասիս», այնտեղ մնայ եւ լոյս չտեսնէ։ Այնուհետեւ ըստ առասպելին՝ Արտաւազդը երկաթէ շղթաներով կապուած է մի այրի մէջ, երկու շուն կրծում են շղթաները, Արտաւազդն աշխատում է ելնել եւ վերջ տալ աշխարհին, բայց դարբինների կռանահարութեան ձայնից կապանքը զօրանում է։ Արտաւազդի մահուան մասին այս առասպելը, գերբնական բան ունենալով իր մէջ, խելքի մօտիկ ու ճշմարիտ չէ։ Բայց Խորենացին այլաբանութիւն է համարում այդ. «Արտաւազդայ ... մահ հանդերձ այլաբանելով», ուստի եւ աւելացնում է մեկնելով. «բայց է ճշմարտութեամբ այսպէս, որպէս ասացաքս վերագոյն»։ Իսկ վերեւում պատմել է բնական իրողութեան գոյնով, թէ Արտաւազդը «անցեալ զկամրջաւն Արտաշատ քաղաքի, որսալ կինճս եւ իշավայրիս զակամբք Գինայ, եւ աղմկեալ ի ցնորից իմն խելագարանաց, ընդ վայր յածելով երիվարաւն, անկանի ի խոր իմն մեծ, եւ խորասոյզ լեալ անհետի»։

Առասպելն ասում է. «Վիշապազունք գողացան զմանուկն Արտաւազդ եւ դեւ փոխանակ եդին»։ Բայց այդ գերբնական է, խելքի մօտիկ չէ. ուստի եւ «ոմանք», անշուշտ, առասպելը մեկնելով, «համարեցան կախարդել զսա (զԱրտաւազդ) կանանց զարմիցն Աժդահակայ», քանի որ ժամանակի հասկացութեամբ կախարդելուն կարելի էր հաւատալ, իսկ որ մարդիկ երեխայ գողանան եւ տեղը դեւ դնեն՝ ոչ։ Սակայն Խորենացին Արտաւազդի կախարդուած լինելուն էլ չի հաւատում եւ գրում է. «Բայց ինձ արդարացեալ թուի լուրն այն, թէ ի ծննդենէն եւ եթ մոլութեամբ լեալ, մինչ նովիմբ եւ վախճանեցաւ»։ Ուրեմն բոլոր «հաւաստին», ինչ որ իբրեւ պատմական բերում է Խորենացին Արտաւազդի մասին,

*այն է՝ թէ նա խենթ ու խելառ (մոլի) ծնուել է եւ որսի ժամանակ խելագարուած ընկել է Մասիսի վհերից մէկն ու անհետացել: Մնացածն առասպելներ են, որոնք, սակայն, «ճշմարտութիւնն իրաց այլաբանաբար յինքեանս ունին թաքուցեալ»: Եւ երբ մի անգամ գիտենք, թէ ինչ եղանակով Խորենացին առասպելների մէջ այդ «թաքուցեալ ճշմարտութիւնը» կամ հաւաստին մեկնելով հանում է առասպելից, եւ այն, որ նա իր Պատմութիւնը «ոճով» է գրում, — սխալուած չենք լինի, եթէ ասենք, որ Արտաւազդի մասին բոլոր հաւաստին էլ մի մեկնութիւն է միայն, որ «ոմանք» տուել են առասպելի մէջ պատմուածին:*

*Սանատրուկի ձիւնի տակ մնալու մասին «առասպելաբանեն, եթէ կենդանի իմն նորահրաշ սպիտակ յաստուածոցն առաքեալ՝ պահէր զմանուկն» (Բ. 36): Բայց քրիստոնեայ Խորենացին այսպիսի բանին չի հաւատում, ուստի եւ անմիջապէս մեկնում է. «Բայց որչափ մեք եղաք վերահասու՝ այսպէս է. շուն սպիտակ ընդ խնդրական լեալ, պատահեաց մանկանն եւ դայեկին»:*

*Երուանդի մասին ասում են. «Ըստ հմայից դժնեայ գոլ ական հայեցուածով, վասն որոյ ընդ այգանալ աչալրջացն սովորութիւն ունել սպասաւորացն արքունի՝ վէմս որձաքարեայս ունել ընդդէմ Երուանդայ, եւ ի հայեցուածոցն դժնութենէ ասեն պայթել որձաքար վիմացն»: Պատմագիրն այս բանը սուտ եւ առասպել է անուանում, իբրեւ մի անհաւատալի բան. բայց եւ անմիջապէս, հաւատալի կացուցանելու համար, փոխում է այդ, մեկնելով իր ժամանակի հասկացութեամբ եւ հաւատալիքով. «Բայց այս կա՛մ եղիցի սուտ եւ առասպել, եւ կա՛մ դիւական ինչ առ իւր ունել զօրութիւնս, զի այսպէս հայեցուածոցն անուամբ վնասեսցէ զորս կամի» (Բ. 42):*

*Բերուած օրինակներից երեւում է Պատմագրի հայեացքն առասպելների վրայ, եւ թէ ինչպէս նա ամէն մի առասպելական պատմուածք, սուտ համարելով հանդերձ, այլաբանութիւն է համարում եւ մեկնելով միջից «այլաբանօրէն թաքուցեալ ճշմարտութիւնը» հանում իբրեւ հաւաստի, ըստոյգ պատմութիւն: Սակայն այդ «հաւաստին» մի բոլորովին նոր շարադրած, իսկապէս յերիւրած պատմութիւն է, որ շատ անգամ բուն առասպելի հետ նմանութիւն իսկ չունի: Այսպիսի յերիւրած, «այլաբանութիւնը ճշմարտած» առասպելներն այլեւս անշուշտ ժողովրդական կամ աւանդական առասպել կոչել կարելի չէ, այլ միմիայն Պատմագրի կամ նրա նման մտածողների մի յօրինուածք, որ թէպէտ եւ առասպելի հիման վրայ շինուած, բայց բուն առասպելի մասին ճիշտ գաղափար տալ չի կարող:*

*Մի երրորդ ձեւով էլ օգտւում է Խորենացին առասպելներից, բերելով նրանց կարճառօտ բովանդակութիւնն առանց «մեկնութեան», կամ այն պատճառով, որ արհամարհում է այդ առասպելները, ինչպէս՝ Հաղամակերտում պատմուածը եւ Տուրքի առասպելը, կամ բաւականանում է միայն այնու, որ իր՝ որեւէ գրաւոր աղբիւրից առած պատմութեանն իբրեւ վկայութիւն է կոչում, ինչպէս Շամիրամի մահուան առասպելը:*

*Խորենացին ինչքան էլ առասպելներ յիշում է, չենք կարող ասել, թէ շատ է օգտւում առասպելներից, այսինքն՝ նրա օգտագործած առասպելները բազմաթիւ չեն, թէպէտ լայն, ընդարձակ չափերով, մանրամասն պատմում է նրանցից մի քանիսը, ինչպէս՝ Հայկի, Արայի ու Շամիրամի, Տիգրանի*

ու Աժդահակի, Վիպասանքի առասպելները: Որ նա սակաւաթիւ (ընդամէնը ոչ աւելի, քան տասնուհինգ) առասպել է մէջ բերել, դրա պատճառը հէնց նրա հայեացքն է առասպելների վրայ: Նրա աչքին, ըստ ժամանակի հասկացութեան, ամէն մի գրաւոր յիշատակարան, թէկուզ մի անվաւեր գրուածք, որովհետեւ իր մէջ հաւատալու բան ունի, աւելի մեծ արժէք ունի, քան թէ առասպելը, որը, եթէ չէ մեկնուած եւ միջի «հաւաստին» առնուած, նոյնիսկ սուտ պատմութիւն է համարւում: Եւ որովհետեւ Խորենացին պատմութիւն է գրում եւ ոչ թէ առասպելաբանութիւն, ուստի եւ որքան կարելի է քիչ, այն էլ երբեմն «մեկնելով» է օգտւում սակաւաթիւ առասպելներից: Նա խուսափում է «առասպելներից»,այսինքն՝ սուտ ու մութ բաներից ընդհանրապէս, որպէսզի մի գուցէ իր գրած պատմութեան արժէքն ընկնի առասպելներով: Այսպէս, օրինակ, Բ. 64. որոշ կերպով գրում է նա. «Որչափ էր հնար՝ փախեաք յաւելորդ եւ ի պաճուճեալ բանից,եւ որ ինչ յանհաւաստին հայէր բանն եւ մտածութիւնն. միայն զհետ երթալով ըստ կարողութեան՝ որ ինչ այլուստ Ե՛ւ կամ ի մէնջ՝ զարդարոյն եւ զճշմարտի: Զնոյն եւ աստանօր պատրաստելով՝ արգելում զընթացս բանիցս յոչ պատշաճէն եւ որ զանհաւաստութեանն ի ներքս ածել ակնարկէ կարծիս: Եւ զքեզ, որպէս բազում անգամ, եւ այժմ աղաչեմ, մի՛ յաւելորդսն հարկաւորել զմեզ. եւ սակաւ կամ յոլով բանիւք՝ զմեծ եւ զհաւաստի բովանդակ աշխատութիւնս մեր ընդ վայր եւ աւելորդ ցուցանել գործ, զի նմանագոյնս որպէս ինձ՝ եւ քեզ գործէ վտանգս»:

8. «Հիւսումն Պիտոյից», Պիտոյից գիրք: Ներբողեան Մեծն Տիգրանի: — Մեր Պատմագիրը Տիգրանի գովեստն անելիս բերում է իբրեւ աղբիւր աւանդական երգերը. «Զորմէ ասէին ի հինսն մեր, որք փանդռամբն երգէին» (Ա. 24): Բացի այդ՝ նա Հայկազանց եւ Տիգրանի պատմութեան համար յիշում է մի ուրիշ աղբիւր՝ ասելով, թէ պիտի պատմէ «ի Հիւսման պատմութենէ Պիտոյից» (Ա. 19) — «Պիտոյից Հիւսման պատմութիւնից»: Գիրքն ուրեմն է «Հիւսումն Պիտոյից»: Նա դրա հեղինակի անունը չի տալիս, այլ քիչ յետոյ այսպէս է բնորոշում նրան ,ասելով, թէ՝ «Զհիմունս այսպիսեաց բանից [Տիգրանի մասին պատմութեան] ընթեռնուլ արժանաւորեցաք ի չորս հազներգութիւնս, զարդասաւորին ի բանս եւ զիմաստնոյն իսկ եւ ի մէջ իմաստնոց իմաստնագունին» (Ա. 21): Այդ «արդասաւորն ի բանս» մեր Պատմագրի ժամանակ շատ յայտնի մի հեղինակ պիտի եղած լինի եւ հանրածանօթ, եւ ծանօթ նոյնիսկ Սահակ Բագրատունուն, որ Պատմագիրը նրա անունը չի տալիս: «Հազներգութիւն» բառը, որ սովորաբար նշանակում է քերդուած, վիպասանութիւն եւ քերդուածի մասերը, ցոյց է տալիս, որ այդ գրուածքը եղել է մի «բանահիւսութիւն», որի համար իբրեւ նիւթ ծառայած էր Տիգրանի պատմութիւնը: Այդ հաւաստւում է հետեւեալով: Միջնադարեան դպրոցներում «պիտոյք», յունական χρεία բառով կոչւում էին այն ճարտասանական կամ բանահիւսական վարժութիւնը, որով մի իմաստալից ասացուած ու խօսք, կամ որեւէ անձի պատմու-

*թիւն ու արարք ընդարձակում, անեցնում էին այս կամ այն եղանակով ու կանոններով եւ կազմում էին մի ընդարձակ ճառ կամ «բան»: Այդ ճարտասանական վարժութիւններն իրենց կանոններով նոյնիսկ մեր գրականութեան սկիզբներում աշխատել են մտցնել մեր մէջ թարգմանիչները: Յայտնի է Խորենացուն վերագրուած «Պիտոյից գիրքը», որի մէջ բացի կանոնների բացատրութիւններից կան նաեւ օրինակներ «Հրահանգիցն աղագաւ առ մանկունս»: Այդ գրքում* (1) *ի միջի այլոց գտնում ենք «Սահման ներբողինի», որի ետեւում իբրեւ օրինակ գրուած է «Ներբողեան Մովսեսի»: «Ներբողեան է* բան արտադրական եղելոյ բարեաց···*՝Ներբողելի է զգէմս [անձնաւորութիւն] եւ գիրս եւ ժամանակս եւ տեղիս··· Զգէմս որպէս զԴեմոսթենէս, կամ զՊղատոն: Զիրս որպէս զարդարութիւն, կամ զողջախոհութիւն»···: Այնուհետեւ բերուած է* եղած, *այսինքն պատմական անձնաւորութիւններ գովելու կանոնները, մասերի բաժանելով ներբողեանը:*

*Եթէ փոքր ինչ ուշադրութիւն դարձնենք Խորենացու Հայկազանց թագաւորների պատմութեանը, կը տեսնենք, որ* Տիգրանի վրայ գրուած այսպիսի մի ներբողեանի *բնաւորութիւն ունի այդ ամբողջ պատմութիւնը մինչեւ Վահագն: Դրան համոզուելու համար՝ բաւական է միայն, որ այդ պատմութիւնը բաղդատենք Պիտոյից գրքի ներբողեանի կանոնների հետ: Ահա այդ կանոններն իրենց կարգով ու բաղդատութիւնը·*

1· *«Եւ ի գովելն պարտ եւ արժան է նախաչաւիղ առնել ըստ տեղւոյ պատճառին»: Այսինքն նախ նիւթը, եթէ որեւէ անձ է, ուրեմն անձը գովել ընդհանրապէս: Եւ Խորենացին իր Հայկազանց եւ Տիգրանի պատմութիւնն սկսում է ընդհանուր գովեստով* (Ա· 21–24):

2· *«Ապա դնել* զազգն, *եւ զնոյն բաժանել* ի գաւառս *եւ* ի նախածննդըս *եւ* ի հարս»: *Տիգրանի ներբողեանից Խորենացին կարիք չունէր «գաւառի», այսինքն Տիգրանի հայրենիքի, Հայաստանի գովքը մտցնելու իր Պատմութեան մէջ: Իսկ Տիգրանի նախածնող Հայկին եւ նրա մերձաւոր հայրերին՝ Պարոյրից սկսած՝ գովելով յիշատակում է Տիգրանի պատմութիւնից առաջ:*

3· *«Ապա զսնունդն, եւ բաժանել յուսումն եւ ի վարժս եւ յօրէնս»: Այս մասի մէջ պիտի պատմուէր ներբողելի անձի ծնունդը, սնուելը, կրթութիւնը, մանկական կեանքն ու վարմունքը (Համմտ· «Մովսեսի ներբողեանի» մէջ համապատասխան հատուածները՝ Ե· Թ· էջ* 415—417): *Ըստ ինքեան հասկանալի է, որ այս մասն, իբրեւ պատմութեան համար «ոչ կարեւոր» բան, պիտի կրճատէր Խորենացին: Սակայն եւ այնպէս ծննդեան, ինչպէս եւ նախընթացում յիշուած «գաւառի», հայրենիքի մասին գտնում ենք Աժդահակի երազի մէջ:*

4· *Եւ ապա* զմեծ գլուխ ներբողինին դնել զգործսն· *եւ զնոյն բաժանել* յանձն *եւ ի* մարմին *եւ ի* դիպուածս:

(1) Մատենագրութիւնք Մովսեսի Խորենացւոյ, Վենետիկ, էջ 413:

ա. «Զանձն յիմաստութիւն եւ յողջախոհութիւն, յարութիւն եւ յարդարութիւն»: Տեսնենք, ինչպէս է գովում Խորենացին Տիգրանի «անձը» (հոգին, ներքինը)․ «Արանց կացեալ գլուխ եւ արութիւն ցուցեալ», «պարկեշտըն, օրինաւոր, ... ի ցանկութիւնս մարմնոյն չափաւոր ,մեծիմաստն· արդարադատ եւ հաւասարասէր կշիռս ունելով» եւ այլն: Ուրեմն ոչ մի գիծ պակաս չէ:

բ. «Զմարմին՝ ի գեղեցկութիւն եւ ի զօրութիւն եւ յերագութիւն»: Խորենացի․ «Խարտեաչս այս եւ աղեբեկ ծայրիւ հերաց», «երեսօք գունեան եւ մեղուակն, անձնեայն եւ թիկնաւէտն, առոգարարձն եւ դեղեցկոտն»: «Կատարեալս ի դիւցազանց հասակաւ եւ բնութեամբ»: «Արծուոյ իմն սլացեալ թեւովք... ըքանչելի դիւցազն»: «Բայց գովեմ զքաջ նահատակն իմ եւ զնիզակաւորն եւ զամենեւին բոլոր անդամովք համեմատն եւ ի գեղեցկութիւն հասակի աւարտեալ, քանզի առոյգ, ամենայնիւ, ըստ իրեարս պատշաճեալ, եւ ուժով ոչ զոք ունելով իւր զոյգ»: — Ուրեմն դարձեալ ոչ մի գիծ պակաս չէ:

գ. «Զդիպուածս՝ ի ճոխութիւն եւ յընչեղութիւն եւ ի սիրելիս»: Այսինքն գոված անձի կատարած մեծ դէպքը պէտք է ճոխութիւն եւ ընչեղութիւն պատճառէ եւ սիրելի դարձնէ նրան: Տիգրանի մեծ «դիպուածն» է Աժդահակի հետ կռուելն ու նրան յաղթելը, որ այսպէս է վերջացնում Խորենացին․ «Եւ այսպիսի դիպուածս ի բարեբախտութիւն յաւելեալ, փառս յաճախէր Տիգրանայ»: Աւելորդ է արտագրել այստեղ մեր թագաւորի «ճոխութեան» եւ «ընչեղութեան» մանրամասն նկարագիրը (Ա. 24): Իսկ «սիրելի» լինելու համար բերենք միայն․ «Ամենեցունց որ առ իւրովքն էին ժամանակօք՝ նախանձելի, եւ զկնեացս ըղձալի ինքն եւ ժամանակ իւր»: Ուրեմն դարձեալ ոչ մի գիծ պակաս չէ:

5. «Եւ ի վերայ այսոցիկ դնել զբաղդատութիւնն յարադրութեամբ ներբողեցելումն զմեծագոյնսն ընդունել»: Այսինքն ուրիշ նշանաւոր անձերի հետ բաղդատել գոված անձին եւ նրան աւելի մեծ համարել: Այդ բաղդատութիւնն եւս գտնում ենք Խորենացու մէջ Տիգրանի պատմութեան վերջում (Ա. 31):

6. «Եւ ապա զ'ի վերայ բանին ի կատարման ըստ պատճառի»: Այսինքն՝ ինչպէս ընդհանուր գովեստով սկսած էր, այդպէս եւ ներբողելի անձի վրայ արած գովեստն ամփոփել եւ վերջացնել: Այսպէս էլ անում է Խորենացին: ԼԱ. գլուխը, որ Տիգրանի պատմութեան վերջաբանն է, սկսում է Տիգրանին գովելով եւ, ինչպէս «Պիտոյից» կանոնները պահանջում են, վերջում բաղդատութիւն է անում շատ Տիգրանների մէջ եւ գտնում, որ «Մի՛ է եւ միայնակ սա է Հայկազանցս»:

Տիգրանի պատմութեան մէջ պահուած են «Պիտոյից գրքի» ներբողեանի ճարտասանական կանոնները, այն էլ մեծ մասամբ նոյն կարգով, որ «Պիտոյից գիրքն» է պահանջում: Եւ այսպէս էլ պէտք է լինէր, քանի որ մեր Պատմագիրը Ա. 19. գլխի մէջ պարզապէս յայտնում է, թէ Հայկազանց եւ Տիգրանի պատմութիւնը պիտի առնէ «ի Հիւսման պատմութենէ Պիտո-

*յից»։ Կը նշանակէ, եղել է մի Պիտոյից գիրք, որի մէջ հիւսուած են եղել զանազան բանահիւսական կամ ճարտասանական օրինակներ, որոնց թւում եւ մի ընդարձակ ներբողեան Հայոց Թագաւոր Տիգրանի մասին* (1)։

*Նկատենք եւ հետեւեալը։ Թէ Տիգրանի մասին երգեր եղել են «ի հին-սըն մեր», այդ պարզապէս յայտնում է Խորենացին։ Արդ՝ մեր հին ժողո-վրրդական երգերը Խորենացու ճաշակով «անոճ» ու «փծուն» են եղել։ Բա-ցառութիւն չեն կազմել նոյնիսկ «Թուելեաց» կամ «վիպասանաց» երգերը, քանի որ մեր Պատմագիրն այս վերջիններն եւս ստիպուած է եղել «ճշմար-տելու», «ճշմարտութիւն» դարձնելու։ Դրանք բոլորն առասպել են։ Մեր աւանդական բանահիւսութեան բոլոր նիւթերից՝ Տիգրանի մասին եղածնե-րին առասպել կոչումը չի տալիս Խորենացին։ Այս բացառութիւնը հասկա-նալի է։ Ըստ Խորենացու՝ Տիգրանի մասին եղածներն առասպել չեն, որով-հետեւ Տիգրանի մասին նա ձեռի տակ ունեցել է աւանդական երգերի, ըստ իրեն Խորենացու ճաշակի, գրական մշակութիւն կրածը, մի «զարդարեալ» եւ «ոճով եւ հանդերձ պատճառաւ չարադրած» պատմութիւն, որ նա այլ-եւս առասպել կոչել չէր կարող։ Այդ մի պատմութիւն էր, որ ոչ թէ առաս-պելի պէս «զճշմարտութիւն իրացն այլաբանաբար յինքեան ունէր թագուց-եալ», այլ ամբողջն արդէն «ճշմարտուած», «ոճով» պատմուած, առասպե-լական մասը դուրս ձգուած եւ «ճշմարտութիւն» դարձրած։ Ուրիշ խօսքով, դա «երգարան բանաւոր» էր, մի ճարտասանական բնաւորութիւն ունեցող պատմական դրսւոր բանահիւսութիւն։ Եւ այդ է պատճառը, որ երբ մեր Պատմագիրը, որ ոչ փծուն աղբիւրների մեծ պակասութիւն ունէր, երբ իր ձեռքի տակ ունենում է Տիգրանի պատմութեան համար՝ ճաշակով գրուած մի պատմական աղբիւր, այն ժամանակ բառ չի գտնում դրա յայտնի հեղի-նակին գովելու համար. Խորենացին ինքն էլ անշուշտ վերամշակել է նոյնը, իր կողմից էլ օգտուելով երգերից եւ յօրինել է մի գեղեցիկ վէպ* (2)։

*Վերջում պէտք է ասել եւ այս։ Ցիշատակուած կայ Դաւթի վերա-գրուած մի հին վիպասանութիւն՝ «Պատերազմն Հայոց եւ Մարաց»* (3)։ *Հաւաստեաւ Մեծն Տիգրանի վրայ է եղած այդ վիպասանութիւնը, որի տա-ղերից են.*

---

(1) Խորենացու Ա. խմբի ձեռագրերի մէջ փոխանակ «ի Հիւսման պատմութենէ Պիտոյից» գտնում ենք «ի Հիւսման պատմութենէ բանից», որ է՝ «ի պատմութենէ Հիւսման բանից»։ Արդ՝ «Հիւսումն բանից» մի բառով է՝ «բանահիւսութիւն»—«բանաստեղծութիւն»։ Որ «հիւսում պիտոյից» թարգմանուած է «հիւսումն բանից» (=«*պլետենիյէ սլով*», ինչպէս ասւում է ռուսաց հին գրականութեան մէջ), կը նշանակի՝ թարգմանողը գիտէ Խորենա-ցու գրածի բուն իմաստը, որ այնպէս է թարգմանել, որ «ճարտասանական» աղբիւրը դար-ձած է մի «բանահիւսութիւն», «բանաստեղծական» աղբիւր։

(2) Մանրամասները տես՝ Մ. Աբեղեանի «Հայ ժողովրդական առասպելները», էջ 410—445. «Հիւսումն Պիտոյից». «Զորս հազներգութիւնք»։

(3) «Բազմավէպ». 1850, դեկտ., էջ 315։ Տե՛ս եւ Մ. Աբեղեան, «Հայ ժողովրդա-կան առասպելները», էջ 597։

«Եւ արդ ներգործող ի միտս երեւիւր առ խորհուրդս փողարին
«Մեծոգւոյ Տիգրանայ գեղանին Տիգրանուհի,
«Իւր ներգործեալ զկողաքաղն, նաեւ ողջամիտ աշխարհածուհի»:

9. Խորենացու հայեացքը հայոց պատմութեան շրջանների վրայ (1):— *Մեր նախնական պատմութեան մասին շատ տեղեկութիւններ չունենք: Մարաց տիրապետութեան ժամանակաշրջանում հաւանօրէն հայերն առանձին թագաւորներ պիտի ունեցած լինէին: Կիւրոսի ժամանակակից մի Տիգրան թագաւորի մասին յիշում է Քսենոփոնը, եւ կարելի է կարծել, որ պատմական անձ լինի նա: Պարսից Դարեհ թագաւորն, ըստ սեպագրութեան, մեծ կռիւներ է մղում հայերի դէմ, եւ այնուհետեւ մեր ժողովուրդը ենթարկւում է Պարսից, ապա Մակեդոնացոց եւ Սելեւկիացոց իշխանութիւններին: Վերջիններիս, Սելեւկիացիների, ժամանակ, ինչպէս հաղորդում են, երկիրը կառավարել են երբեմն բնիկ իշխաններ: Նրանք ձգտել են անկախութեան, մինչեւ որ 189 թ. մ. թ. ա., ինչպէս ասել ենք, Արտաշէս Ա. եւ Զարեհ, թերեւս հին հայ թագաւորների ցեղից, հիմնում են երկու անկախ տէրութիւն: Արտաշէսի բնիկ ցեղը զօրանում է եւ տիրում է երկրին մինչեւ մեր թուականութեան սկիզբները: Այդ միջոցից սկսած՝ մի առժամանակ իշխում են զանազան ազգերի խառն թագաւորներ, եւ երկիրը մէկի ձեռից միւսին է անցնում, մինչեւ վերջապէս 66 թ. մ. թ. Պարթեւների Վաղարշ Ա. թագաւորի եղբայր Տրդատ Ա. բարձրանում է հայոց գահը, եւ պարթեւական Արշակունի ցեղը հաստատւում է Հայաստանում եւ, այսպէս կամ այնպէս, յարատեւում մինչեւ 428 թ. մ. թ.:*

*Այս է Հայաստանում իշխող տոհմերի ընդհանուր համառօտ տեսութիւնն ըստ օտար աղբիւրների.*

*1. Հին բնիկ հայ իշխանութիւն կամ թագաւորութիւն.*

*2. Օտարների, Պարսից եւ Սելեւկիացոց տիրապետութիւն, բայց կան հայ իշխաններ իբրեւ կուսակալներ, գոնէ Սելեւկիացիների ժամանակ.*

*3. Դարձեալ բնիկների հայ թագաւորութիւն Արտաշէս Ա.ից սկսած.*

*4. Սրանց անկումից յետոյ՝ իշխանների սոէպ փոփոխութիւն.*

*5. Օտար Արշակունի ցեղի թագաւորութիւն:*

*Մ. Խորենացին Հայաստանի տիրապետողների մասին գիտէ նոյնպէս հինգ շրջան.*

*1. Հին բնիկ իշխանութիւն Հայկի սերնդից.*

*2. Օտարների (Ասորեստանցոց) տիրապետութիւն, որի ժամանակ սակայն շարունակւում է հին ցեղն իբրեւ կուսակալութիւն.*

*3. Բնիկների այդ ցեղը թագաւորութիւն է հաստատում.*

*4. Սրա անկումից յետոյ՝ «չփոթ իմն ամբոխից լեալ՝ այր զայրամբ ելանէին տիրել աշխարհիս».*

(1) Մ. Աբեղեան, Հայ ժողովրդական առասպելներ, էջ 482 եւ հտն.:

5. Օտար Արշակունի ցեղի թագաւորութիւն։

Համեմատութիւնից պարզ երեւում է, որ Խորենացու գրած իշխանական տոհմերի կարգը նոյնն է, ինչ որ օտար աղբիւրներից գիտենք։ Նրա Պատմութեան մէջ պահուած է Հայաստանի հին քաղաքական պատմութեան, իշխող տոհմերի յիշողութիւն, բայց մի խոշոր ժամանակագրական սխալով։ Այն միջոցին, երբ, ըստ օտար աղբիւրների, Հայաստանում թագաւորում էր Արտաշէսից սերուած բնիկ հարստութիւնը, Խորենացին դրել է Արշակունի հարստութեան սկիզբը (2-րդ դարում մ. թ. ա.)։ Բնականաբար ըստ այնմ եւ միւս իշխանական տոհմերի յիշողութիւններն էլ իրենց կողմից մէկը միւսից աւելի առաջ են ընկել։ Այս սխալ ժամանակաբանութիւնը ծագել է նրանից, որ Մ. Խորենացին հայ ազգի ծագումը, ըստ ժամանակի հասկացութեան, կապել է Աստուածաշնչի մէջ պատմուած Բաբելոնի աշտարակաշինութեան հետ, երբ, ըստ Ս. Գրքի, եղել է լեզուների խառնակումն եւ ազգերի ու լեզուների ծագումը։ Նա հայ ազգի նախնի Հայկին դրել է այն ժամանակ, եւ նրա հակառակորդ Բէլին, մեկնութեամբ, նոյնացրել Ս. Գրքի Նեբրովթի հետ, որ Նոյի Քամ որդու թոռն է, Քուշի որդին. «Եւ եղեւ սկիզբն թագաւորութեան նորա Բաբելովն» (Ծնունդք, Ժ. ԺԱ.)։ Խորենացին այդպէս է վարուել իր մեկնութեան մէջ նաեւ պարսից ազգի սկզբնաւորութեան եւ Բիւրասպի մասին խօսելիս. «Ասացեալն ի նոցանէ Բիւրասպի Աժդահակ՝ առ Նեբրովթաւ նախնի նոցա։ Քանզի ի բաժանել լեզուացն ընդ ամենայն երկիր... գլխաւորք եւ ցեղապետք որոշեալք գիւրաքանչիւր սահմանս ժառանգեցին... Սա [Բիւրասպ]... զցեղապետութիւն ազգին իւրոյ ունէր հնազանդեալ Նեբրովթայ» (Ա. գրքի Բ. յաւելուած)։

10. Պատմութեան առաջին գրքի նիւթը։— Պատմութեան առաջին գիրքը, որ կոչել է «Ծննդաբանութիւն Հայոց Մեծաց», — Մեծ Հայաստանի [իշխողների] ծննդաբանութիւնը, բովանդակում է վերեւում յիշուած չորս շրջանը։

1. Հայկի եւ Արամի ժողովրդական առասպելները նա հանճարեղ կերպով մտածելով դրել է Պատմութեան սկզբում. այդ հերոսների անունով կոչուել են հայերը։ Դա բնիկ Հայկազանց իշխանութիւնն է։

2. Օտար տիրապետութեան սկզբում դրել է Շամիրամի եւ Արա Գեղեցկի ժողովրդական առասպելը եւ ապա Ասորեստանի իշխանութիւնը եւ մի շարք Հայկազն կուսակալների անուններ։

3. Երրորդ շրջանում դրել է Հայկազանց բնիկ տոհմի մի շարք թագաւորների անուններ, ապա Մեծն Տիգրանի վէպը եւ յետոյ Վահագնի մասին ժողովրդական երգից մի հատուած, եւ վերջը մի քանի անուններ։

4. Չորրորդ շրջանի մասին գրում է. «ոչ ինչ ճշմարտագոյն ունիմ պատմել քեզ. քանզի չփոյթ իմն ամբոխից լեալ՝ այր զարամբ ելանէին տիրել աշխարհիս» (Ա. 31)։

Այս բոլոր ընդարձակ ժամանակի պատմութիւնն ուրիշ բան չէ, բայց

ևթէ Հայկի, Արամի, Արա Գեղեցկի, Տիգրանի ու Վահագնի հին առասպելները, որ նա պատմել է իբրեւ իրական եղելութիւններ, իսկ նրանց պարապ միջոցները լցրել է սոսկ անունների շարքերով: Այս նկատմամբ հետաքրքրիր է Ա. 19. գլուխը, որի մէջ հեղինակը յայտնում է, թէ ինքը յարմարեցնելով կարգել է ամէնը («Յարմարեալ զամենայն կարգեցից»), առնելով գրքերից եւ տեղական անձերից, որոնցից ինքը հաւաքել է հնադրութիւններ, ինքը ոչ մի կամամտածական, ինքնահնար բան չի յօրինել, իսկ ինչ որ աղբիւրներին է վերաբերում, դրանց ստուգութիւնն Աստծուն է յայտնի. «Մեք այնոցիկ օտար եւ ի բաց կացեալ», — ասում է Պատմագիրը:

Եւ այսպէս առասպելները զասաւորելով՝ նա յօրինել է հնագոյն ժամանակի Հայոց պատմութիւնը, այն, որ անհնարին էր, բայց ինքը, ինչպէս ասում է, հնարաւոր է դարձրել Սահակ Բագրատունու սիրուն. կամ, ինչպէս ինքն ասում է իր առաջին գրքի համար, «ի վերայ այլոց անհնարիցն, հնարաւոր վասն քո արարեալ մեր, կատարեմք եւ զայս» (Ա. գրքի Բ. յաւելուած):

11. Արշակունի հարստութեան դարաշրջան:— Երկրորդ գիրքը, որ կոչել է «Բան միջակ պատմութեան մերոց նախնեաց», սկսում է Աղեքսանդր Մակեդոնացուց, անցնում է Պարթեւների տիրապետութեանը եւ ապա պատմում է Հայաստանի Արշակունի տոհմի առաջին երկու թագաւորների՝ Վաղարշակի ու Արշակի մասին: Իբրեւ աղբիւր յիշում է Մար Աբաս, այլեւ անորոշ ձեւով՝ ասեն, ասի: Վաղարշակի մասին գրել է առաջին գրքի մէջ: Այստեղ նա Հայաստանի գրութիւնն այսպէս է նկարագրում. «Ո՛չ կարգք ինչ աստ լեալ յայտնի, եւ ոչ մեհենից պաշտամունք. եւ ո՛չ գլխաւորաց աշխարհիս առաջինն յայտնի է, եւ ոչ վերջինն, եւ ոչ այլ ինչ օրինաւոր, այլ խառն ի խուռն ամենայն եւ վայրենի» (Ա. 9): Եւ ահա առաջին Արշակունի թագաւորին վերագրում է «Յօրինուած թագաւորութեանն», նախարարական տոհմերի կարգումն ու պաշտօնները, եւ ազնուապետական ոճրութեան կազմակերպութիւնը:

Զի պարզուած, թէ Վաղարշակ թագաւոր ո՛ր պատմական անձի յիշողութիւն է. նրա յաջորդ Արշակն, անշուշտ, պատմական յիշողութիւն է: Իսկ յաջորդ Արտաշէս, Տիգրան եւ Արտաւազդ թագաւորները՝ դրանք են Մեծն Տիգրանը, իր նախնի Արտաշէսը, թագաւորութեան հիմնադիրը, եւ իր որդի Արտաւազդը, որոնք մտել են Արշակունի հարստութեան մէջ: Ինչպէս երեւում է, 5-րդ դարում պատմական աւանդութիւնը Մեծն Տիգրանին, հետեւաբար եւ միւսներին, կապած է եղել Արշակունի տոհմի հետ: Փ. Բուզանդը (Դ. 55) «Հայոց մեծ թագաւոր Տիգրանին» անուանում է Արշակունի. «...Զոր ածեալն էր վերի Տիգրանայ արքայի Արշակունւոյ»: Խորենացին այս պատմութիւնների համար իբրեւ աղբիւրներ յիշում է (Բ. 10) «Ափրիկանոս ժամանակագիր, որում վկայէ Յովսեպոս եւ Հիպողիտոս. եւ այլք բազումք ի Յունաց» եւ այլն: Յետոյ մի շարք գլուխների մէջ (Բ. 23—33) գրուած են ասորական Աբգարի մասին պատմութիւններ, աղբիւրը Ղերուբնա: Ապա (Բ. 34) համառօտ բովանդակութեամբ բերում է Թադէոս

տաճարայի եւ Սանդուխտ կոյսի վկայաբանութիւնը եւ աւելացնում. «Այս ամենայն... յայլոց պատմեալ յառաջագոյն քան զմեզ՝ ոչ ինչ կարեւորագոյն համարեցաք անով երկրորդել»: Դրանից յետոյ պատմում է Սանատրուկի, Երուանդի, Արտաշէսի, Արտաւազդի, Տիրանի ու Տիգրանի եւ Վաղարշի մասին: Այդ բոլոր պատմութիւնները ժողովրդական վիպական ծագում ունեն, որ եւ Պատմագիրը յիշում է յաճախ: Դա եղել է «Վիպասանք», «Հայոց երգք վիպասանաց», «Երգք Առասպելաց»: Բ. 48. գրում է. «Եւ գայս մեզ ստուգապէս պատմէ Ողիմպ քուրմ Հանւոյ, գրող մեհենական պատմութեանց, եւ այլ բազում գործս՝ զոր ասել կայ մեզ առաջի, որում եւ Պարսից մատեանքն վկայեն եւ Հայոց երգք վիպասանաց»: Վերջում (Բ. 66) յիշում է Բարդածանի գրած պատմութիւնը: Ապա գալիս է Ագաթանգեղոսի պատմութիւնը Խոսրովի ու Տրդատի եւ Ս. Գրիգորի մասին, միջին նաեւ երբեմն ուրիշ աղբիւրներից եւ ժողովրդական վէպի հատուածներից: Յիշում է աղբիւրներ՝ Ագաթանգեղոս, «Պահլաւիկների առասպելների» համար՝ Խոռոհբուտ (Բ. 70), Խոսրովի մահից յետոյ մինչեւ Տրդատ՝ անիշխանութեան ժամանակի համար՝ Փերմելիանոս եպիսկոպոս (Բ. 75): Տրդատի թագաւորութեան ժամանակի եւ հետագայի պատմութեան համար, բացի Ագաթանգեղոսից, յիշում է աղբիւրների համար այսպէս. «Որ ինչ ի թագաւորութեանն Տրդատայ եւ յետ նորա, ոչ հեզգութեամբ եւ անզգուշաբար վրիպեալ, եւ ոչ կամաւոր սխալանօք ի սմա յարմարեալ բան, այլ որ ինչ ի յիշատակաց գիւանագիր մատենիցն Յունաց: Իսկ ըստ նմանեացն ապա եւ որ ինչ ի համբաւուց արանց իմաստնոց եւ հնախօս սիրաբանից ստուգապէս տեղեկացեալ, արդարաբար քեզ գրուցեցաք» (Բ. 75): Այս վերաբերում է յաջորդ գրքին:

Երրորդ գիրքը՝ «Աւարտաբանութիւն մերոց հայրենեաց»՝ բովանդակում է Տրդատի մահից մինչեւ Մեսրոպի մահը: Քննութիւնը ցոյց է տուել, որ օգտուել է Փ. Բուզանդից, առանց նրա անունը տալու. բայց նաեւ ուրիշ աղբիւրներից:

Հայաստանի երկուսի բաժանուելուց յետոյ կատարուած քաղաքական դէպքերի պատմութեան համար Մ. Խորենացու Պատմութիւնն առաջին աղբիւրն է: Մեսրոպ Մաշտոցի եւ գրերի գիւտի պատմութիւնն ընդհանրապէս նոյն է Կորիւնի պատմածի հետ: Կորիւնի անունն եւս չի յիշւում: Երեւում է, որ Խորենացին այդ պատմութիւնը լսել է նաեւ երկրորդ, երրորդ բերանից. ուստի մասամբ տարբերւում է Կորիւնից, առանձնապէս 53 գլխի պատմութիւնը՝ «Յաղագս Մեսրոպեան նշանագրացն, ի վերնոյն տուելոց շնորհաց»: Այստեղ գրերի գիւտը մի տեսակ կիսահրաշ եղանակով է լինում: Ժողովրդական համբաւը 5-րդ դարում էլ արդէն կարող էր գործած լինել:

Սամոսատ քաղաքի անունը, ինչպէս է Կորիւնի մէջ, դարձած է «Սամոս», որ հասկցւում է Սամոս կղզին Փոքր Ասիայի արեւմտեան կողմում: Բայց Սամոս անունը պարզապէս աղճատումն է Սամոսատ անուան: Քանի որ ծովով այնտեղ գնալու համար՝ Եդեսիայից Փիւնիկէ են գնում, դրա համար եւ սկզբնական բնագիրը՝ «Եւ անցեալ ընդ Եփրատ՝ ի Սամոսատ դիմէ»՝ դարձել է՝ «Եւ անցեալ ընդ Փիւնիկէ՝ ի Սամոս դիմէ»: Թէ

այստեղ աղճատում եւ փոփոխում կայ, այդ երեւում է նրանից, որ 57-րդ գլխում Սահակի Թղթի մէջ գրում է, թէ Մեսրոպը բերել է մեր նշանագիրները «բազում անգամ ճըգնեալ զօրա յԱսորւոց աշխարհին». նոյնպէս Թէոդոսի Թղթի մէջ գրում է. «Եւ առաւել յայժմ մեղադիր եմք, զի արհամարհեալ զճարտարօքս, որ ի մերում քաղաքիս՝ յԱսորեաց ոմանց խնդրեցեր զիմաստից գիւտս... բայց զի յետոյ պատմեաց մեզ Մեսրոպ, եթէ կատարումն արուեստիդ ի շնորհաց վերնոյն եգեւ...»: Դարձեալ Ատտիկոսի Թղթի մէջ. «Զիա՞րդ Թողեր զաղբիւրն եկեղեցւոյ, զհայրն մեր սուրբ Յովհաննէս... Ոսկեբերան... կամեցայք ի սահմանական ջրոց զփափաղ ծարաւոյն յագեցուցանել, մինչեւ ամենակալին տեսեալ զկնոտի աշխատութիւն՝ բղխեաց ի ձեզ զշնորհս Հոգւոյն»: Պարզ է, որ, ըստ Խորենացու, գրերու գիւտն եղել է Ասորիքում: Եթէ Մ. Խորենացին գրած լինէր, թէ գրերի գիւտն եղել է յունական Սամոս կղզում, նա իր չարադրած նամակների մէջ այդպէս չէր գրիլ: Յայտնի է՝ Մ. Խորենացու Պատմութիւնն ուրիշ մասերում էլ աղճատուել է յաւելումներով, փոփոխութիւններով եւ ընդմիջարկութիւններով: Սրանցից մէկն է եւ այս «Սամոս» անունն ու «Փիւնիկէ»:

**12. Պատմական արժէքը հնում եւ նորում**:— *Մ. Խորենացին, ինչպէս ինքն ասում է, անհնարինը հնարաւոր է դարձրել: Զեղած տեղից ստեղծել է մի Հայոց Պատմութիւն, որ 1400 տարի, մինչեւ 1890-ական Թուականներն, իշխել է իբրեւ հին իրականութեան անդրադարձում: Սուտ անուններն անգամ նրա ծննդաբանական ցանկերի մէջ՝ համարուել են իբրեւ մի ժամանակ ապրած հայ նախնի իշխողների՝ նահապետների ու Թագաւորների անուններ: Հայոց պատմութիւնն ուսանում էին ըստ Մ. Խորենացու եւ նոյնիսկ այն սուտ անուններն անգիր անում շարքով: Ինչի՞ մէջ է եղել նրա ազդեցութեան հիմքը:*

*Նրանից առաջ Կորիւնը գրել է «Մաշտոցի վարքը», մի «հաւաստի» եւ «ճշմարիտ պատմութիւն», որ շատ սիրելի է եղել յաջորդ սերունդներին, բայց դա մի կարճ շրջանի որոշ եղելութեան պատմութիւնն է: Կար եւ «Ագաթանգեղայ Պատմութիւնը», նոյնպէս սիրուած եւ ազդեցութիւն Թողած, բայց քրիստոնէական դարձի պատմութիւնն է միայն: Վերջապէս յայտնի է եղել եւ Փ. Բուզանդի Հայոց Պատմութիւնը, բայց դա էլ հաւանօրէն 5-րդ դարում արդէն չունէր առաջին եւ երկրորդ դպրութիւնները եւ միայն մի քառասուն տարուայ պատմութիւն էր, այն էլ մի այնպիսի պատմութիւն, որ բնաւ բաւարարութիւն չէր կարող տալ ոչ հայ ազնուականութեանն ընդհանրապէս, — քանի որ դրա մէջ փառաբանուած էին Թագաւորների հետ Մամիկոնեանները, — եւ ոչ էլ մանաւանդ յունական ուսում ըստացած մարդկանց շրջանին: Այդ պատմութիւնը խիստ ռամկական էր, առանց ժամանակաբանութեան, հնկայական չափազանցութիւններով եւ չէր ըստ ճաշակի յունական ուսում ստացածների: Կար եւ չորս հազներգութեամբ բանահիւսութիւնը («Հիւսումն Պիտոյից» — «Բանից»), որ իր ձեւով եւ բովանդակութեամբ կատարելապէս համապատասխան էր ժամանակի ոգուն, բայց դա էլ միայն Մեծն Տիգրանի վէպն էր իր մէջ ամփոփում: Ժամանակի ազգային ինքնուրոյնական ձգտումի հետեւանքով պահանջ կար մի ամբողջական մշակուած հայոց պատմութեան: Այդ պահանջին բաւարա-*

րութիւն տալու համար ահա երեւան է եկել Խորենացու Հայոց Պատմութիւնը։

Այստեղ հայոց պատմութիւնն սկսուած էր հայ ազգի ծագման ժամանակից, կապուած Ս. Գրքի աւանդութիւնների հետ, եւ առաջ էր ընթանում ժամանակին յայտնի հին պատմական ազգերի պատմութեան հետ — Բաբելոնի, Ասորեստանի, Մարաց ու Պարսից, Մակեդոնացոց ու Պարթեւների, Հռոմայեցոց ու Սասանեանների։ Երբեմն հայ իշխանները ոչ միայն ժամանակակից էին այլազգի իշխաններին, այլեւ իբր մասնակից էին նրանց կատարած գործերին, նոյնիսկ Իլիական պատերազմին. «Մեր Զարմայր ի ծառայութեան Ասորեստանեայց սակաւուք ընդ Եթովպացի զօրուն օգնական Պռիամու, եւ անդ ի քաջացն Հելլենացւոց վիրաւորեալ մեռանի. այլ կամիմ յԱքիլլեայ, եւ մի՛ յայլմէ ումեքէ ի քաջացն» (Ա. 32), բացագանչում է Խորենացին այս սին պատմութեան վերջում սին պարծանքով։ Այդ Պատմութիւնը, սակայն, մի վկայական էր հայ ազգի հնութեան եւ հազարաւոր տարիների պատմական կեանքի, որով շոյուած էր ազգային զգացումն ընդհանրապէս։ Մինչեւ անգամ դեռ 19-րդ դարի վերջին քառորդին՝ Հայկ Նահապետին համարում էին իրապէս ապրած մի անձ եւ պարծենում էին հայ ազգի խորին հնութեամբ։

Դա բաւարարութիւն էր տալիս նաեւ եկեղեցականներին եւ ականաւոր ազնուական տոհմերին։ Այդտեղ պատմուած էր նախարարութիւնների ծագման մասին, Հայկազն եւ Արշակունի իշխող տոհմերի համար «զորդի ի հօրէ ծննդաբանելով... զրովանդակն. իսկ զՀայաստանեայցս նախարարութիւնս, զամենեցուն զուստն եւ զգիարդն յայտնելով համառօտ եւ հաւաստի» (Ա. 1)։ Պատմուած էր եւ եկեղեցու մասին եւ բերուած էր կաթողիկոսների յաջորդութիւնը Ս. Գրիգորից մինչեւ Սահակի մահը։ Ուրեմն դոհ էին «հարուստք եւ իշխանք», քանի որ գրուած էր ազնուականութեան, իշխող դասերի պատմութիւնը, եւ յօրինուած էր «Հայոց աշխարհի բարձրագոյն աւագանու մեծագոյն մասի ազնուականութեան վկայագիրը»։ Եւ այդ կատարուած էր ըստ տոհմային աւանդութիւնների ու զրոյցների, նրանց ծագումը մեծ մասամբ հնացրած էր կապելով որեւէ հին իշխող տոհմերի հետ, կամ բացատրելով որեւէ ժողովրդական ստուգաբանութեամբ, որ ժամանակի համար հասկանալի եւ ընդունելի կը լինէր։ Բացի նախարարական տոհմերի ծագումից՝ Պատմութեան մէջ մերթ-մերթ յիշատակուած էին նաեւ այս կամ այն տոհմի նախնիների գործերը, առանձնապէս 5-րդ դարում նշանաւոր Մամիկոնեան, Բագրատունի, Արծրունի եւ Կամսարական նախարարութիւնների։

Սխալ կարծիք է, թէ Խորենացու գրքի մէջ իբր «սկզբից մինչեւ վերջը հեղինակի դիտաւորութիւնն է Բագրատունիների համբաւն հռչակել», եւ իբր Պատմութեան «այս նպատակը, որով գիրքը միտումնաւոր քաղաքական գրութեան կերպարանք է ստանում, կարող էր առաջուց անվստահութիւն ծնեցնել նրա արժանահաւատութեան նկատմամբ»։ Դա մի կոպիտ թիւրի-

*մացութիւն է, արդիւնք մասամբ բնագրի սխալ հասկացման* (1)։ *Բագրատունիների մասին յիշուած պատմութիւններն այնքան եւ այնպիսի չեն, որ այդ կարծիքին իբրեւ ապացոյց ծառայեն՝ Հայոց Պատմութիւնն այս իմաստով «միտումնաւոր» համարելու։ Ոչ մի այդպիսի միտում կարելի չէ, օրինակ, տեսնել այն պատմութիւնների մէջ, ըստ որոնց Բագրատունիներն իբր երկար ժամանակ պահել են հրէութիւնը եւ դրա համար չարչարուել։ Խորենացին կարող էր նրանց մասին, նրանց տոհմային զրոյցներից առնելով, աւելի եւս ուշադրութիւն դարձնել, քանի որ Պատմութիւնը գրել է մի Բագրատունի իշխանի խնդիրքով։ Յիշենք միայն, թէ Ղ. Փարպեցու «Հայոց Պատմութեան» մէջ որքան շատ տեղ է տրուած Մամիկոնեաններին։*

*Խորենացու գիրքը հնումն, ընդհակառակն,* վստահութիւն է ներշնչել *հէնց «արժանահաւատութեան» նկատմամբ նաեւ այնու, որ Պատմագիրը ոչինչ չի թաքցնում իր ընթերցողներից։Ի դէմս Սահակ Բագրատունու՝ միշտ սկզբից խօսում է եւ շարունակ կրկնում իր աղբիւրների մասին. ասում է, թէ «յարմարելով» կարգում է շատ բան, բայց ոչ կամամտածական, այլ քաղելով ուրիշներից։ «Ճառեսցուք՝ որքան է կարողութիւն, որպէս գտաք զհաւաստին ի հնոց պատմութեանց, մերոց մասամբ ամենեւին անսուտ»։ Արդարեւ, նա բաւարար աղբիւրներ չի ունեցել, դիմել է ամէն մի վաւերական եւ անվաւեր աղբիւրի՝ մի բան գտնելու հայոց պատմութեան համար, շատ անգամ ինքը եզրակացութիւններ է արել. բայց եւ այնպէս նա յաճախ քննադատում էլ է իր աղբիւրները, եւ նոր ընդունում կամ մերժում, կամ*

---

(1) Սխալ հասկացել եւ թարգմանել են մինչեւ վերջերս այս հատուածը. «Յանմահ յիշատակ թողուլ զայս քեզ եւ որ զկնի քո գալոց են ազգք, *զի եւ ազգի եւս նախնականի, եւ քաջ եւ արգասաւոր՝ ոչ միայն ի բանս եւ ի պիտանաւոր խոհականութիւնս, այլ եւ ի մեծամեծս եւ ի բազում գործս արժանափառս, զորս յիշատակեսցուք ի կարգի պատմութեանս*, յորժամ զարդի ի հօրէ ծննդաբանելով ազգաբանիցեմք զրովանդակն. իսկ զՀայաստանեայցս նախարարութիւնս, զամենեցուն զուստն եւ զգիարդն յայտնելով համառօտ» (Ա. 1)։ Ընդգծուած տողերը վերագրել են Բագրատունիներին, մինչդեռ դրանք հայ ազգին են վերաբերում. «Անմահ յիշատակ թողնել այս քեզ եւ քեզնից յետոյ եկող սերունդներին [= Բագրատունեաց,] ինչպէս եւ մի նախնական եւ քաջ ազգի եւս [= հայ ազգին], որ արգասաւոր է ոչ միայն բանահիւսութեամբ եւ պիտանի խոհականութեամբ, այլեւ մեծամեծ եւ բազմաթիւ արժանափառ գործերով, որ կը յիշատակենք այս պատմութեան ընթացքում, երբ ամբողջը [=իշխող տան վերաբերեալ] կ'ազգաբանենք որդէցորդի ծննդաբանելով, իսկ Հայաստանի նախարարութիւնների ամէնքի որտեղացի եւ ինչպէս լինելը համառօտ յայտնելով...»։ — Այս տողերի գրողս դեռ 1890 թ. («Նոր-Դար» լրագիր No. No. 11—13, Վարսամ ստորագրութեամբ). ուղղել եմ յիշուած սխալ հասկացումը, մանրամասն վերլուծելով Ա. 1. գլուխը: Խորէն Ստեփանէն իր աշխարհաբար թարգմանութեան երկրորդ հրատարակութեան մէջ օգտուել է դրանից, առաջ բերելով, սակայն, մի ուրիշ սխալ, այն է վերացրել է «զրովանդակն» եւ «իսկ» բառերի միջի կետադրութեան նշանը: Անհասկանալի է, թէ ինչպէս 1913 թ. տպագրութեան մէջ, որի բնագիրը ես եմ կազմել, «եւս» բառի փոխանակ՝ յիշուած տողերի մէջ՝ «ազգի» բառից յետոյ մտցուած է մի այլ ընթերցուած՝ «եօս»։

թէ իր ընթերցողին է թողնում ստոյգ կամ անստոյգ համարելը եւ պնդում է, թէ ճշմարտութիւնն է միայն ուզում գրել: Եւ այս հանգամանքը բնականաբար ազդել է ոչ շատ խստապահանջ յաջորդների վրայ, որոնք Նրա Պատմութիւնն ընդունել են հաւատով: Նրանք, եւ նոյնիսկ ինքը Խորենացին, ստուգութեան մի ապացոյց են համարել միամտաբար անգամ այն, որ յարմարեցրած ճիւղագրութեան մէջ Սեմի, Քամի ու Յաբեթի իրար յաջորդող սերունդների թիւը հաւասար է. «իսկ դու, ո՛վ ուշիմ ընթերցասէրդ, հայեա՛ց աստանօր ընդ հաւասարութիւն կարգի երից ազգացդ մինչեւ ցԱբրահամ, ցՆինոս եւ ցԱրամ, եւ զարմացի՛ր» (Ա. 5):

Պատմութեան արժանահաւատութեան մի մեծ ապացոյց համարուել է եւ այն, որ Խորենացին սկզբից մինչեւ վերջը դնում է հայ իշխողների ժամանակաքանութիւնը Պարսից կամ Հռոմայեցոց թագաւորների իշխանութեան տարիներով: Նա իբրեւ պատմագիր շատ լաւ գիտէ եւ յայտնում էլ է. «Ոչ է պատմութիւն ճշմարիտ առանց ժամանակագրութեան» (Բ. 82): Հայոց թագաւորների ժամանակը որոշելու համար՝ նա բաւական շատ աշխատանք է թափել կամ, ինչպէս ինքն ասում է, «մանրախուզիւ» քննութիւն է արել Տրդատի թագաւորելու տարին գտնելու համար: Այսպէս եւ միւսները: Բայց, հարկաւ, յաճախ չի կարողացել ճիշտ ժամանակագրութիւն տանել, կամ իր պատմած իրողութիւնների ստուգութեան հասնել, եւ այդպէս էլ չէր կարող լինել այն ժամանակ եւ նրա բանեցրած աղբիւրներով: Նա կատարել է այն, ինչ որ հնարաւոր է եղել իր համար:

Եւ վերջապէս, յետնորդների վրայ ազդել է այն հանգամանքը, որ նա ժողովրդական բանահիւսութիւնն այլաբանութիւն համարելով՝ մեկնել է: Այդպիսի մեկնութիւնը միջնադարեան գրագէտների սիրած բանն էր, եւ դրա արդիւնքները համարւում էին ստոյգ իրականութիւն: Ազդել է, հարկաւ, ե՛ւ Նրա մեծ գրական արժանիքը, ե՛ւ իդէոլոգիան, որ կը տեսնենք քիչ յետոյ:

Նրա երկի այս եւ ուրիշ յատկութիւնները պատճառ են դարձած, որ Նրա Հայոց Պատմութիւնը եղել է միակ աղբիւրը սկզբից մինչեւ 440 թուականը ժամանակաշրջանի համար: Յաջորդ պատմիչները հետեւել են Նրան եւ Նրանից քաղուածներ արել հին պատմութեան համար, կատարեալ վստահութիւն տածելով առ Նա:

Նրա Հայոց Պատմութիւնը շատ կարդացուած եւ սիրուած է եղել, աւելի քան մեր միւս բոլոր պատմագիրներինը: Դա շատ էլ արտագրուած է, բայց եւ այնպէս այդ գրքի օրինակները բաւարարութիւն չեն տուել պահանջին, գրքի պակասութիւն է զգացուել, եւ այդ համարուել է «աղէտ անբերելի» (=անտանելի աղէտ) 17-րդ դարում: Եւ ահա Թոմաս Նուրիջանեան եպիսկոպոսը, «ի վայելուչ քաղաքէ Վանանդու Գողթնեաց», իր քեռու որդի Մատթէոսին ուղարկել է Ամստերդամ «առ ի յօրինել եւ հոգալ զբուն գործիսն տպագրութեան», յետոյ ինքն էլ գնացել է այնտեղ եւ 1695 թ. տպագրել է իր աշխատութեամբ ու ծախքով «զԿիպագրութիւն բազմերախտի առն Մովսէսի Քերթողահօրն»: Դա Հայոց Պատմութեան անդրանիկ տպագրու-

թիւնն է, որ եւ մեր հին, 17-րդ դարից առաջ ապրած, պատմագիրների տըպագրութեան անդրանիկն է։

Այս ամէնն էր պատճառը, որ երբ կասկածելի համարուեցին Նրա Պատմութեան աղբիւրները եւ Պատմութիւնն ինքը, մանաւանդ երբ սրա հեղինակին տեղահան անելով՝ սկսեցին դնել 6րդ, 7րդ, 8րդ կամ 9րդ դարերում, այդ մի տեսակ ցաւ պատճառեց նրանց, ովքեր կատարեալ վստահութեամբ էին նայում մեր այս Պատմագրին։ Ժամանակի տեղափոխութեան համար բերուած փաստերն ընդհանրապէս համոզիչ չեն։ Ինչ վերաբերում է Պատմութեան բովանդակութեանը, բնականաբար այժմ դա քաղաքական դէպքերի նկատմամբ այլեւս ոչ ոք չի կարող միամտաբար ընդունել, թէ Մ. Խորենացու Պատմութեան մէջ յիշուած անձերը բոլորն իրապէս գոյութիւն են ունեցել, եւ կամ նա իր գրուածքի մէջ միշտ պատմել է իրօք կատարուած դէպքերի մասին։ Կան բաներ, որ մտացածին ու անստոյգ են, հետեւանք սխալ քննադատութեան, կամ անվաւեր աղբիւրների։ Այսպէս, օրինակ, Արգարի մասը Հայոց պատմութեան հետ կապ չունի։ Մի թիւրիմացութեան արդիւնք է Արտաշէսի «տիեզերակալութեան» մասին պատմածները (Բ. 11-13), եւ ուրիշները։ Բայց այսու ամենայնիւ Հայոց Պատմութիւնը չի կորցնում իր նշանակութիւնը, այլ վերագնահատուելով՝ նայելով մասերին տարբեր կերպով է արժէքաւորւում։ Որ պատմուածքների աղբիւրներն արդէն յայտնի են, բնականաբար այժմ դիմում ենք այն աղբիւրներին, որ գործածել է Պատմագիրը։ Բայց այդպիսի դէպքերում էլ նա յաճախ տարբերւում է իր աղբիւրներից, եւ կարելի չէ նկատի չառնել այդպիսի տարբերութիւնները, քանի որ, ինչպէս ասած է, ժամանակագիրներն իրենց պատմած զրոյցներն օդից չեն առնում, առաւել եւս Մ. Խորենացու նման մի պատմագիր։ Շատ այնպիսի բան, որ կասկածելի է համարուած եղել, հետագայում իբրեւ ստոյգ է երեւան եկել։ Կան պատմուածքներ էլ, որոնց համար Խորենացին առաջնակարգ աղբիւր է, ինչպէս 4-րդ դարի վերջերի եւ 5-րդ դարի համար։ Իսկ հնագոյն աւանդական բանահիւսութեան համար Խորենացին միակ աղբիւրն է։ Անշուշտ, Նրա մեկնաբանութիւններն այդ մասին արժէք չունեն, կամ այնքանով միայն պիտանի են, որ դրանցով կարելի է լրիւ վերականգնել առասպելը, կամ տեսնել հեղինակի իրեն սրամտութիւնը։ Շատ պատմուածքների համար այժմ արդէն դիմում ենք արտաքին աղբիւրներին, որոնք աւելի շատ եւ համեմատաբար աւելի ստոյգ տեղեկութիւններ են պահել Հայաստանի քաղաքական պատմութեան համար։ Ցամենայն դէպս՝ ամբողջ հայոց պատմութիւնը մինչեւ 5-րդ դարը՝ այժմ պիտի նոր յօրինուի, ինչ որ քաղաքական դէպքերին է վերաբերում, արտաքին աղբիւրների հիման վրայ, իսկ Խորենացու Պատմութիւնը մեզ կարող է դալ իբր երկրորդական, երրորդակարգ աղբիւր, այն էլ այն ժամանակ, երբ համապատասխան է արտաքին աղբիւրներին։

Այս ամէնը, սակայն, վերաբերում է անձերին ու կատարուած դէպքերին։ Բայց բացի դրանցից՝ կայ նաեւ ներքին կեանքը։ Եթէ այս կամ այն եղելութեան նկատմամբ սխալաշատ է Խորենացու Պատմութիւնը, դա հա-

բուստ է այնպիսի տեղեկութիւններով, որ կազմում են բուն պատմութիւնը եւ ինչպիսի ուսումնասիրութիւններ էլ որ անելու լինեն Հայաստանի Ներքին կեանքի պատմութեան վերաբերեալ, միշտ դիմում են եւ պիտի դիմեն Նրա Պատմութեանը։

13. Քերդողահայրը եւ նրա «Հայոց Պատմութիւնն» իբրեւ գրական երկ։ — Մ. Խորենացու «Հայոց Պատմութիւնը չատ բարդ, իր բոլոր ապացուցուած անվաւեր մասերով հանդերձ՝ չատ ճարտար, իր ժամանակի համեմատ՝ վարպետօրէն կազմած մի երկասիրութիւն է»։ Դա «մեզ համար ամենից առաջ մի գրական յիշատակարան է» (1)։ Իբրեւ այնպիսին դա ամենից առաջ իր գաղափարախօսութեամբ բազմակողմանի արտայայտութիւն է իր ժամանակի։ Ինչպէս վերեւում ասուեց, այս Պատմութիւնը ծագած է դարի պահանջից, այն քաղաքական դրութիւնից, որով առաջ էր եկել 5-րդ դարի մտաւոր չարժումը, որ եւ աւելի վառացած կերպով իչխում էր դեռ այդ դարի 2-րդ կէսին։ Քաղաքական անկումն առաջացրել էր բնականաբար վհատութիւն, միաժամանակ եւ ձգտում Նորից հին անկախութիւնը ձեռք բերելու։ Պէտք էր այս գաղափարը զարգացնել, յուսադրել։ Ահա հիմնական խնդիրը, որ զբաղեցնում էր հասկացող մտքերին։ Դա ազգային չահերի պաչտպանութիւնն էր։ Դրա համար հարկաւոր էր անցեալից ստեղծել օրինակելի քաղաքական տիպարներ, գովերգել անցեալի հերոսներին։ Այդ Նպատակից էին Թելադրուած Փ. Բուզանդի, մասամբ եւ Ագաթանգեղոսի հերոսական պատկերները ժողովրդական բանահիւսութեան հիման վրայ։ Նոյն Նպատակի համար «Արդասաւորն ի բանս», դարձեալ ժողովրդական երգերից ազդուած, անցեալի խաւարից առաջ է կոչել եւ կենդանացրել հայոց ամենամեծ արքայի կերպարն իր «չորս հազներգութիւններ» մէջ, որով հիացած էր մեր Պատմագիրը։ Նոյնն անում է եւ ինքը Մ. Խորենացին։ Նրա ժամանակ դեռ կենդանի էր հին յունական արուեստն ու գպրութիւնը, դեռ կար հեթանոսութիւնը, ուստի Նրան, այդ կրօնաւորին, չէր տատամսեցնում այն, որ իր փառաբանած հերոսները քրիստոնեայ չեն եղել, որ Նա հայրենասիրական հպարտութեամբ յիչում է հին հեթանոս վիպական հերոսներին, արի ու քաջ տղամարդկանց, որ Նա արտայայտիչ էր դառնում աչխարհիկ իդէոլոգիայի։

Ոչ թէ Բագրատունիներին հաչակելու, այլ այս քաղաքական միտումըն է, յուսադրութիւնը, ջերմ հայրենասիրութիւնը, որ սկզբից մինչեւ վերջն անց է կացրած Խորենացու Պատմութեան մէջ։ Սէր ծնեցնել դէպի հայրենիքը, սէր դէպի ազատութիւն, դէպի հայրենիքի բարգաւաճումն արուեստներով, գիտութեամբ, չինարարութեամբ։ Այս Նպատակին են ծառա-

---

(1) Մ. Խորենացի ըստ պրոֆ. Ն. Մառի, «Հանդէս Ամսօրեայ», 1895 թ., էջ 18, 51, 108, 195, 297. թարգ. Ե. Լալայեանի։ Ն. Մառ, Անանունի Հայոց Պատմութեան սկզբնաւորութեան մասին։ Մովսէս Խորենացու Պատմութեան աղբիւրների մասին։ Փրոֆ. A. Carrière-ի քննական յօդուածների առթիւ»։ Տպուած՝ «ԲԻՒԶԱՆԴԱԿԱՆ ՏԱՐԵԳՐՈՒԹԻՒՆ» հանդէսում, 1894, Բ։

յում նրա մշակած կերպարները, և՛ Հայկը, և՛ Արամը, և՛ Տիգրանը, և՛ միւսները: Մէկն հիմնում է Հայաստան երկիրը. միւսին վերագրում է «ընդարձակել զսահմանս Հայոց յամենայն կողմանց», նա ջախջախում է այն սահմանակից ցեղերին, որոնք «քուշանարար հինիւ սմբակակոխ արարեալ զսահմանս Հայոց» (Ա. 13): «Սա այր աշխատասէր եւ հայրենասէր եղեալ, — գրում է Քերթողն Արամի համար, — լաւ համարէր զմեռանելն ի վերայ հայրենեացն, քան թէ տեսանել զորդիս օտարածնաց կոխելով զսահմանս հայրենեացն եւ հարազատաց արեան նորա տիրել արանց օտարաց»: Ահա՛ թէ ինչ գաղափարով է ոգեւորուած մեր Քերթողի հերոսը, որ նաեւ «հրաման տայ բնակչաց աշխարհին՝ ուսանել զխօսս եւ զլեզուս հայկական»: Այդ, թէպէտ ուրիշ պարագաների համար ասուած, բայց եղել է ցաւերից մէկը նրա ժամանակի, երբ օտարամոլները նոյնիսկ իրենց լեզուն էին թողնում:

Ահա՛ թէ ինչ է գրում նա, երբ պատմում է Հայկազանց տոհմի թագաւորների մասին. «Ինձ ա՛յսօրիկ արք ի մերոց թագաւորաց են սիրելիք, որպէս բնիկք եւ իմոյ արեան առուք եւ հաւաստի հարազատք: Եւ սիրելի էր ինձ՝ յայնժամ գալ Փրկչին եւ զիս գնել, եւ առ նոքօք յաշխարհ գմուտն իմ լինել, եւ նոցա տէրութեամբն խրախճանալ, եւ յարդեացս ապրել վտանգիցս: Այլ վաղ ուրեմն փախեաւ ի մէնջ պատահումնն այն, թէ արդեօք եւ վիճակ: Բայց արդ ես առ օտարաց թագաւորութեամբն կացեալ...» (Ա. 22): Ո՛րքան ճնշում է նրան, այդ հայրենասէրի վշտահար հոգուն, օտարների իշխանութիւնը. «Թագաւորք տիրեալք խիստք եւ չարաչարք, բեռինս բառնալով ծանունս եւ դժուարակիրս. հրամանս տալով անտանելիս», — գրում է նա իր վերջին Ողբի մէջ եւ մեծ դառնութեամբ շարունակում գծել իր ժամանակի ամբողջ երկրի ողբալի դրութիւնն իր օրով օտարների թագաւորութեան ժամանակ, — վտանգներով լի մի դրութիւն, որից կարելի էր ազատուել ըստ Պատմագրին, եթէ լինէր Հայկազանց թագաւորների նըման սիրելի բնիկ թագաւորների իշխանութիւնը, մի բնիկ արքայ վիպական Մեծն Տիգրանի նման, որի դէմքն այնպիսի վառ գոյներով երփնագրել է նա Պատմութեան մէջ: «Սիրելի, որպէս ինձ պատմողիս ի մէջ իմոց բանից որ ինչ յաղագս Երուանդեանս Տիգրանայ բանք՝ եղիցի եւ քեզ ընթերցողիդ, որպէս այրն եւ գործք, այսպէս եւ զնմանէ բանք: Վասն որոյ սիրեմ կոչել այսպէս ըստ քաջութեան — Հայկ, Արամ, Տիգրան. քանզի ըստ քաջացն՝ ազգք քաջք» (Ա. 31): Եւ քաջ ու երկրի շինարարութեան համար մտածող են նրա պատմական անձերեց շատերը, ոչ միայն վիպականները, այլեւ միւսները: Նրանք պիտի սիրելի լինէին ընթերցողին հայրենիքի թշուառութեան ժամանակում: Նրանց պատմութեամբ պիտի ոգեւորուէին: Երրորդ գրքի սկզբում գրում է, թէ Պատմութիւնը յօրինում է «հասարակաց խօսիւք», «որպէս զի մի՛ ոք երեւեսցի ի պերճաբանութիւնս դրաւեալ առ փափագ, այլ ճշմարտութեան բանից մերոց կարօտեալ՝ ստէպ ստէպ եւ անյագ առնիցեն զընթերցումն պատմութեանց մերոց հայրենեաց».

Այս է եղել Մ. Խորենացու միտումն ու նպատակը, գաղափարն ու ձգտումը: Եւ նա հասել է իր նպատակին: Դարեր շարունակ կարդացել են

նրա գիրքը, ոգեւորուել նրա անկեղծ հայրենասիրութեամբ:

Այս նպատակին հասնելու համար՝ պէտք էր ոչ լոկ պատմութիւն յօրինել, այլ բանաստեղծօրէն գրել, կամ յօրինել բանաստեղծական պատմութիւն, ստեղծել հայրենասիրական կերպարներ: Եւ իրօք, Մ. Խորենացու Պատմութեան մէջ կան մի շարք հատուածներ, որոնք իսկական փոքրիկ բանաստեղծական պատումներ են, եւ ամբողջ երկն էլ ընդհանրապէս գեղարուեստօրէն է յօրինուած:

Առնենք այստեղ սկզբի զրոյցը Հայկի մասին: Ինչպէս որ այս հերոսի անուան հետ կապուած է հայ ազգի կոչումը, նոյնպէս եւ նրա զրոյցի մէջ գեղարուեստօրէն բիւրեղացած է Հայ ժողովրդի պատմութեան էական կողմը, նրա ինքնապաշտպանական դարաւոր մաքառումն ընդդէմ դրսից յարձակուող թշնամիների: Հայկի պատումը, դա նախատիպն է մեր ուրիշ ժողովրդական վէպերի եւ շատ բանաստեղծութիւնների մինչեւ այսօրուան օրս. դրանց թեման բուն գաղափարն է՝ օտար բռնակալին դիմադրել, պաշտպանել հայրենի երկիրը: Եւ Մ. Խորենացին մեծ ճարտարութեամբ այս է դրել Հայոց պատմութեան եւ ազգի սկիզբը, մի շատ յարմար նիւթ ոչ միայն նրա համար, որ այդ առասպելի մէջ, ինչպէս տեսել ենք, երեւում է մեր պատմութեան հնագոյն շրջանի յիշողութիւնը, այլեւ հէնց իր այս իդէայի տեսակէտով:

Թէ ինչպիսի՛ է եղել Խորենացու աղբիւրի մէջ այս առասպելը, մենք այդ չգիտենք: Հաւանօրէն մի փոքրիկ, պարզ պատմուածք, ինչպէս սովորաբար են ժողովրդական զրոյցներն եւ առասպելները: Խորենացու գրչի տակ դա դարձած է ճոխ ու գեղարուեստական ձեւով մի բանաստեղծութիւն, մի զարդարուն «ոճով» հօյակապ պատմուածք, պարզ, բայց ուժեղ գործողութեամբ, ամբողջը հեթանոսաբար ստեղծագործուած: Գործող անձերը պատկերացուած են կամ վատ կամ լաւ կողմից. բնականաբար թշնամի հսկան, Բէլը, նկարագրուած է վատ կողմից: Նա մի ամբարտաւան բռնակալ է, անհեթեթ վիթխարի մի հսկայ, որին յաջողուել է բռնութեամբ տիրել երկրին եւ սարկացնել իրեն բազմաթիւ անհուն խօլ եւ ուժաւոր հսկաներ, երկայնադեղ հասակ ունեցող կռուողներ: Նա չի կարողանում տանել, որ մէկն իր իշխանութեանը չհնազանդուի: Թէպէտ եւ իր հետ ունի ընտիր եւ զինուած հսկայ կռուողներ, բայց եւ այնպէս նա վախկոտ է եւ մարտի դաշտից փախչում է, չուզելով դէմ առ դէմ հանդիպել թշնամուն, այլ յոյսը դնում է միայն իր զօրքերի բազմութեան վրայ: Հայկն, ընդհակառակն, մի անուանի եւ կորովաձիգ դիւցազն է, գեղապատշաճ եւ անձնեայ, պատկերացւում է իբրեւ քաջութեան եւ ազատասիրութեան մի կատարելատիպ: Նա դիմադրում է այն ամէնքին, «որք ամբառնային զձեռն՝ միապետել ի վերայ ամենայն սկայիցն եւ դիւցազանց». դէմ է կանգնում բռնակալ Բէլին: Վերջը չկամենալով ենթարկուել նրան՝ աւելի լաւ է համարում հեռանալ եւ ցուրտ կողմերում ապրել, քան ուրիշների պէս սարկանալ նրան: Նա չնայելով իր մարդկանց սակաւութեանը՝ անվախ դուրս է գալի Բէլի դէմ, զի լաւ է համարում մեռնել, քան հպատակուել բռնակալին: «Կա՛մ մեռցուք, — ա-

*սում է նա, — եւ աղխ մեր ի ծառայութիւն Բելայ կացցէ, կա՛մ զաջողութիւն մատանց մերոց ի նա ցուցեալ՝ ցրուեսցի ամբոխն, եւ մեք եղիցուք յաղթութիւն ստացեալք»* (Ա. 11): *Այսպէս մի կողմում յարձակուող, բայց վախկոտ բռնակալն է իր «անկարգ հրոսակի, ամբոխի բազմութեամբ», միւս կողմում պաշտպանուող անվեհեր Հայր դիցազնը՝ իր սակաւաթիւ որդիներով: Եւ աղեղնաւոր Հայկը «յառաջ վարէ զինքն, մօտ հասանէ յարքայն, լի քարշէ զլայնալիճն, դիպեցուցանէ զերեքթեւեանն կրծից տախտակին, եւ չեշտ ընդ մէջ թիկանցն թափանցիկ լեալ՝ յերկիր հարստի սլաքն. եւ այսպէս ճոխացեալն Տիտանեան կործանի յերկիր զարկուցեալ, եւ փչէ զոգին: Իսկ ամբոխն տեսեալ զայսպիսի ահագին գործ քաջութեան՝ փախեան իւրաքանչիւր դէպ երեսաց իւրեանց»: Յիշենք մեր նոր վէպից՝ յարձակուող Մըսրամելիքին իր զօրքի բազմութեամբ ու պաշտպանուող մենամարտիկ Դաւթին:*

*Հայկի վէպը, ծագած լինելով գուսանականից, բնականաբար այս կամ այն տարրերն ունի աւանդական բանահիւսութիւնից: Այսպէս՝ դրա սիւժետն իր էական կողմով մի այնպիսի պատմուածք է, որ, ինչպէս տեսել ենք, շատ տարածուած է: Դրա ընդհանուր վիպական գոյնն եւս, անշուշտ, մասամբ ծագում է սկզբնական աղբիւրից. բայց շատ բան պարզապէս Խորենացու մշակածն է, եւ այդ մշակումը կատարուած է մեծ հմտութեամբ եւ արուեստով թէ՛ գործողութեան ընդհանուր զարգացման եւ թէ՛ մասերի մէջ: Սկզբից մինչեւ վերջը պատմուածքը տարուած է աւանդական բանահիւսութեանը յատուկ, մասամբ եւ սրանից ծագող վիպական մանրամասնութիւններով, մանրապատում հանգամանքներով ու ձեւերով, ինչպէս են՝ Բէլի դեսպան ուղարկելը Հայկին, որ սա իրեն հնազանդի, Հայկի խիստ պատասխանը, հսկաների կռուի ժամանակ երկրի դղրդալը, յատուկ անունների ժողովրդական ստուգաբանութիւնները, հերոսների նկարագիրները, Բէլի զինավառութիւնը, բազմաթիւ մակդիրները, որոնք մեծ մասամբ վերաբերում են, ինչպէս սովորաբար վէպերի մէջ, հերոսների արտաքինին, նրանց մարմնական յատկութիւններին, ինչպէս են՝ կորովաձիգ, հաստաղեղըն, անձնեայ, հաստաբազուկ, խայտակն, գեղապատշաճ, քաջագանգուր, անարի (նիզակ), երեքթեւեան (նետ), լայնալիճ (աղեղ), անհուն, խօլ, յաւերժ քաջ, երկայնադէզ հասակ, բազմակոյտ (հսկայք): Կան եւ հոգեկան կողմի համար մակդիրներ, ինչպէս են՝ ուշիմ եւ խոհեմ (հսկայ)* (1):

*Հայկի առասպելի այս գեղարուեստական մշակումը միայն, որ կատարուած է մեզնից դարեր առաջ, բաւական էր նրա հեղինակին փառաբանելու իբրեւ առաջին քերդող, քերդողահայր: Բայց այսպիսի գեղեցիկ պատմուածքներ եւ նկարագիրներ շատ շատ են Խորենացու Հայոց Պատմութեան մէջ: Առանձնապէս աչքի են ընկնում հայկական առասպելներից ու Վիպասանքից առած պատումների մշակումները, ինչպէս են՝ Արա Գեղեցկի, Մեծըն Տիգրանի, Երուանդի, Արտաշէսի վէպերը, որ արդէն տեսել ենք: Բո-*

(1) Մ. Աբեղեան, Հայ ժողովրդական առասպելները, էջ 191—247. «Հայկի առասպելի վիպականութեան խնդիրը», եւ այլն:

լորի մէջ էլ իշխում է նոյն Խորենացեան ոգին եւ ազնիւ արուեստը, նոյն շնորհքը աւանդական բանահիւսութեան պարզ նիւթը գեղեցիկ ու ճոխ պատմելու, կենդանացնելու եւ հետաքրքիր դարձնելու, հարկաւ, ազդուելով ժողովրդական պատումներից:

Բացի իդէոլոգիական եւ առանձին գեղեցիկ պատումներ ստեղծելուց՝ կարեւոր է ուշադրութեան առնել Քերթողահօր յօրինելու մի ուրիշ յատկութիւնն եւս, որ նկատւում է նրա արուեստի մէջ: Նա վարպետ է արտայայտութեան ձեւի: Նրա գրուածքի մէջ բովանդակութիւն եւ ձեւ պատշաճում են իրար, կամ ձեւը հետեւում է բովանդակութեանը: Այդ է հէնց կլասիկ հեղինակներից ամենից առաջ պահանջւում: Պատմութեան բովանդակութիւնը միանման չէ, միանման չէ եւ համապատասխան ոճը: Սովորաբար ասում են, թէ Մ. Խորենացու ոճը սեղմ է, բայց այդ ճիշտ չէ. Նրա ոճը բազմազան է:

Կան կտորներ, ինչպէս Առաջին գրքի սկզբի երեք գլուխները, որոնք ունեն քննադատական բնոյթ, երբ բանավիճական դատողութիւններով ապացուցւում է մի միտք: Այս դէպքում կիրառուած են բարդ խօսքեր — բարդ, նոյնիսկ բազմաբարդ պարբերութիւններ: Խօսքը ձգւում, ընդարձակւում է, բայց միշտ կանոնաւոր, այնպէս որ երբեք մտածութեան ընթացքը չի մըթնում կամ, ինչպէս ասում են, մտքի թելը — կապը չի կտրւում: Համբակների համար, այդպիսի կտորները դժուար հասկանալի են եղել, ոչ միայն խօսքի բարդութեան, այլեւ բովանդակութեան ու վերացական դատողութիւնների շարքի համար: Եւ որովհետեւ հին ուսուցիչներն իրենց աշակերտներին Խորենացու Պատմութիւնը հէնց սկզբից էին կարդալ տալիս, դրանից առաջացել էր այն թիւր կարծիքը, թէ Խորենացու լեզուն խրթին է: Հասուն ընթերցողներն այդ կարդալիս՝ ամենայն հեշտութեամբ կարողանում են հետեւել հեղինակի մտածութեանը, մանաւանդ որ նա անհրաժեշտ շաղկապների ճիշտ գործածութեամբ դիւրացնում է գրուածքի ըմբռնումը:

Խրթնութիւնը մասամբ առաջանում է նրանից, որ այս հեղինակը, յունական ուսում ստացած լինելով եւ յունարէնից շարունակ թարգմանութիւններ արած, երբեմն բնականօրէն ենթարկւում է յունարէնին եւ գործածում է օտարաբան շարահիւսական ձեւեր: Ոճի այս անյստակութիւնը, սակայն, երեւում է միայն սակաւաթիւ որոշ տեղերում: Նա անպայման եղել է յունաբան դպրոցի հիմնադիրներից մէկը, բայց Պատմութեան մէջ գիտակցաբար զգուշութեամբ է վարւում այդ նկատմամբ: Այդ էր պահանջում Հայոց Պատմութեան նիւթն ու նպատակը: Պէտք էր բնական, «հասարակաց խօսիւք» գրել պատմութիւնը, որպէսզի ամէն ընթերցողի հասկանալի լինէր: Եւ նրա ոճը, ինչքան էլ յաճախ զարդարուն ու պերճ է, բայց ընդհանուր առմամբ շատ պարզ, մեկին է, թեթեւ, շատ կանոնաւոր ու դիւրին, միանգամայն եւ ախորժելի, երբեք չոր ու ցամաք: Երբեմն, երբ հարկաւոր է ըստ նիւթի պահանջելուն՝ զօրեղ տպաւորութիւն թողնել, կիրառում է շրջումներ ու զեղչումներ: Եւ այս անում է նա ոչ արուեստակու-

թեամբ, այլ բնականօրէն: Առհասարակ նրա ոճի մէջ չկայ չինծութիւն եւ սեթեւեթանք, այլ ամէն ինչ նրա գրչի տակից բխում է բնականօրէն: Զգացւում է, որ նա ապրում է իր գրածը, եւ այդ է հէնց ազդում ու գրաւում եւ նոյնիսկ հմայում. ընթերցողը համակւում է նրա զգացումով: Ահա նրա «ողբերգական մեղադրութիւնը» եւ «Ողբը» (Բ. 92, Գ. 68): Ո՛րքան դառնակըսկիծ ցաւ կայ նրա հուժկու ճարտասանական հարցումների մէջ, ո՛րքան քընարական զեղումներ նրա կուռ խօսքերի մէջ, վշտահար սրտից զեղումներ ե՛ւ ժողովրդի, ե՛ւ իր անձնական վիճակի համար: Նա իր հետ յուզում է եւ ընթերցողին, երբ նա առանց նախադասութիւններ կազմելու՝ լոկ թուարկում է իր ժամանակի դասերի խմբերն իրենց յատկանիշներով. «Վարդապետք տխմարք եւ ինքնահաճք... ոսկեսէրք, նախանձոտք... կրօնաւորք կեղծաւորք, սնափառք, պատուասէրք քան թէ աստուածասէրք: Վիճակաւորք հպարտք, դատարկակացք, զրաբանք, ծոյլք, ատեցողք արուեստից եւ վարդապետական բանից, սիրողք վաճառաց եւ կատակերգութեանց»: Այսպէս եւ միւսները՝ աշակերտներ, ժողովրդականներ, զօրականներ, իշխաններ, դատաւորներ: «Իշխանք ապստամբք, գողակիցք գողոց, կծիք, ժլատք, ագահք, յափշտակողք, աշխարհաւերք, աղտեղասէրք, ծառայիցն համամիտք» եւ այլն: Նոյն ձեւով թուարկում է ե՛ւ պատիժները, ե՛ւ երկրի վիճակը: Այդ լոկ թուարկութիւններով, առանց խօսքերի, նա ինչպէս քարով քարակոծում է ամէնքին եւ քարերը մէկ մէկ ընկնում են կորովի սաստկութեամբ: Ծանր տպաւորութիւն է գործում այդ եւ իր ծանրութեամբ ճնշում է ընթերցողին:

Բայց մեր Քերդողը միշտ այդպէս թախծալից չէ: Կան եւ խանդավառ ոգեւորութեամբ յօրինուած պերճաբան կտորներ, որոնց մէջ սքանչացմամբ ներբողում է իր սիրած անձերին, հայրենիքի համար աշխատողներին, միշտ գտնելով ընտիր ձեւեր ու բառեր, զուարթ ոճ եւ կամ վսեմ գեղեցկութիւն: Իսկ ընդհակառակն՝ այն պատմական անձերին, որոնք իրենց անձնական զուարճութիւններով զբաղուելով՝ Հայոց երկրի բարդաւաճման տեսակէտից ապարդիւն իշխանութիւն են վարել, կծու հեգնութեամբ եւ պարսաւով ու ծաղրով է վերաբերւում, դարձեալ միշտ կիրառելով յարմարաւոր ուժեղ դարձուածներ եւ արտայայտութեան ձեւեր, հակիրճ, բայց կտրուկ հարուածող ոճով:

Նրա յօրինելու հիմնական տեսակն է, բնականաբար, վիպումը, վիպական ձեւը: Պատմութիւնն անում է սովորաբար վայելուչ թափով, արագ առաջ տանելով գործողութիւնը, հարկաւոր դէպքերում նաեւ դանդաղ ու ծաւալուն, մանաւանդ ժողովրդական վիպական ծագում ունեցող մասերում, բայց առանց ճապաղելու: Շեղումները կազմում են գործող անձերի եւ գործողութեան տեղերի անհրաժեշտ նկարագիրները, ամէն դէպքում կենդանի ու հրապուրիչ եւ ոչ այնքան ընդարձակ, որ վնասի պատմըւածքի ընթացքին:

Նա մեծ վարպետ է նաեւ բանաստեղծական նկարագիրներ անելու. դրանցով պատմուածքի մէջ, մի վայրկեան միայն ընդհատելով պատմու-

թիւնը, մեծ սիրով եւ սիրուն գծագրում է մեր երկրի պատկերը: Ահա մեր Այրարատեան դաշտը ժամանակի մայրաքաղաք Վաղարշապատից նկարագրուած. «Եւ երթեալ իջանէ ի խորին դաշտավայր մի, ի բարձրագագաթանց պարսպեալ լերանց, գետոյ կարկաջասահի յարեւմտից ընդ մէջ անցանելով: Եւ զդաշտն արեւելից գոգցես իմն իբրեւ որսայսեալ, ձիգ յարեգակն կոյս զերկայնութիւն պարզեալ. եւ առ ստորոտովք լերանցն բազումք ակնակիտ բղխեալ աղբիւրք, որք ի գետոց եկեալ հաւաքումն հեզաբար: Առ սահմանօք նորա, ծնիւք լերամբք եւ եզերօք դաշտին՝ պատանիք ոմանք իբր առ երիտասարդուհեօք ճեմիցին. այլ հարաւայինն արեգակնաճեմ լեառն, սպիտակափառ ունելով գագաթն, ուղղորդ յերկրէ բուսեալ, երեքօրէից, որպէս ասաց ոմն ի մերոցն, քաջազօտւոյ առն շրջապատեալ ճանապարհաւ, եւ առ փոքր փոքր ի շեշտումն անկեալ, ծեր ոմն արդարեւ լեառն ի մէջ երիտասարդացեալ լերանցն» (Ա. 12):

Գեղեցիկ ու նկարէն է եւ Երուանդակերտի պատկերը: «Քաղցր է ինձ ասել եւ յաղագս գեղեցիկ դաստակերտին, զոր յօրինեաց նոյն ինքն Երուանդ գեղեցիկ եւ չքնաղ յօրինուածովք:Քանզի զմիջոց հովտին մեծի լնու մարդկութեամբ եւ պայծառ շինուածովք, լուսաւոր որպէս ական բիբ: Իսկ շուրջ զմարդկութեամբն՝ ծաղկոցաց եւ հոտարանաց կազմութիւն, որպէս շուրջ՝ զբբովն զայլ բոլորակութիւն ական: Իսկ զբազմութիւն այգեստանոյ՝ իբր զարտեւանանց խիտ եւ գեղեցիկ ծիր. որոյ հիւսիսային կողմանն դիր կառակնաձեւ՝ արդարեւ գեղաւոր կուսից յօնից դարաւանդաց համեմատ: Իսկ ի հարաւոյ հարթութիւն դաշտաց՝ ծնօտից պարզութեան գեղեցկութիւն: Իսկ գետն բերանացեալ դարաւանդօք ափանցն՝ զերկթերթիւն նշանակէ շրթունս:Եւ այսպիսի գեղեցկութեան դիր՝ անքթթելի իմն գոգցես ի բարձրաւանդակ թագաւորանիստն [= Երուանդաշատ] զհայեցուածսն ունի. եւ արդարեւ բերրի եւ թագաւորական դաստակերտն» (Բ. 42):

Այսպիսի ընդարձակ նկարագիրներ ուրիշներն էլ կան, ինչպէս Շամիրամակերտի (Ա. 16): Կան եւ մարտերի ուժեղ նկարագիրներ, ինչպէս Ձիրաւի ճակատամարտը (Գ. 37): Աւելի շատ են փոքր, կարճ նկարագիրներն եւ պատկերաւոր արտայայտութեան ձեւերը. «Իսկ Բէլն, յանդուգն եւ անճոռնի զօրութեամբ ամբոխին, որպէս յորձան ինչ սաստիկ ընդ զառ ի վայր հեղեղեալ՝ փութայր հասանել ի սահմանս բնակութեանն Հայկայ»: «Հասանէ [Հայկ] յեզր ծովակի միոյ, որոյ աղի են ջուրքն, մանունս ունելով յինքեան ձկունս» (Ա. 11): Բերենք մի կտոր էլ Աժդահակի երազից. «Էր ինձ, ասէ, ո՛վ սիրելիք, լինել այսօր յերկրի անծանօթում, մերձ ի լեառն մի երկար յերկրէ բարձրութեամբ, որոյ գագաթնն սաստկութեամբ սառնամանեաց թուէր պատեալ. եւ ասէին գոգցես յերկրին Հայկազանց զայս լինել:Եւ ի նայել իմ յերկարագոյնս ի լեառնն՝ կին ոմն ծիրանազգեստ, երկնագոյն ունելով զիւրեաւ տեռ,նստեալ երեւեցաւ ի ծայրի այնպիսւոյ բարձրութեան, աչեղ, բարձրահասակ եւ կարմրայտ, երկանց ըմբռնեալ ցաւովք ...» (Ա. 26):

*Խորենացու Պատմութեան մէջ բաւական տեղ է բռնում նաեւ նամակային տեսակը կամ նամակային ոճ ատածը* ( genre épistolaire, style épistolaire ), *որ գրելու, յօրինելու մի առանձին եղանակ, կերպ է։ Փոխանակ պատմելու իրողութեան մասին կամ ասելու որեւէ թղթի-նամակի, հրամանի բովանդակութիւնը, նոյնն ասւում է իսկական նամակի գրութեան, հրամանագրի ձեւով։ Դա պատմուածքին բազմազանութիւն տալու մի ոճ է միայն իրեն յատուկ արտայայտութեան ձեւերով։ Եւ ի զուր պատմաբանները այդպիսի գրութիւնների մէջ ուզում են տեսնել վաւերագրեր, եւ երբ այդ չեն գտնում, մեղադրում են Քերթողին։*

*Ոճի առանձին տեսակներից է եւ տրամախօսական եղանակը, որից նոյնպէս երբեմն օգտւում են պատմագիրները՝ հետեւելով ժողովրդական վէպին, որ շատ սիրում է այդ։ Խորենացու Պատմութեան մէջ չկան տրամախօսութիւններ, բայց կան բազմաթիւ բերանացի հաղորդումներ — պատգամներ եւ նրանց պատասխանները, լուրեր՝ մէջ բերուած իբրեւ ուղղակի խօսքեր։*

*Վերջապէս պէտք է դիտել եւ հետեւեալը։ Հռետորական կամ պատկերաւոր արտայայտութեան ձեւերի նկատմամբ՝ Խորենացին սակաւաթիւ դէպքերում ինքնուրոյն չէ։ Նա երբեմն նմանում է ուրիշներին՝ նրանցից առնելով գեղեցիկ գրութեան դարձուածներ, ինչպէս որ մեր հետագայ դարերի գրողները Խորենացուն իրեն են նմանում իրենց ոճով։ Բայց մեր Քերթողահայրն այդ փոխառութիւնները մեքենայաբար չի անում, այլ փոփոխելով, յապաւելով եւ աւելացնելով այնպիսի բաներ, որ անհրաժեշտ են, կամ չեն, իր պատմածի համար։ Քերթողն, ուրեմն, իւրացնում է եւ վերստեղծում է այնպէս, որ թւում է թէ իր մտածած գիւտերն են խօսքի։ Մի երկու դէպքում ուրիշից օգտուել է եւ ամբողջ նկարագրի համար։ Վաղուց նկատուած է, որ Սուտ Կալիսթենէսի «Աղեքսանդրի վարքի» (որի հաւանական թարգմանիչն է ինքը Մ. Խորենացին) մի կտորի նմանութեամբ գրած է Տիգրանակերտի կործանումը (Գ. 26, 28), որ մեր Պատմահօր գեղեցիկ կտորներից մէկն է։ Բայց «Խորենացին փոխ առնելով նոյն կտորները Սուտ-Կալիսթենէսի գրքից, պատմական ճշտութիւնը չէ տուժած. վասն զի կարեւոր փոփոխութիւններն ըրած է նաեւ փոխառեալ խօսքերուն մէջ. իսկ իր ըրած փոփոխութիւնները միաբան են Պատմութեան եւ ի մասնաւորի Ամմիանու հետ»* (1)։ *Այս փոխառութիւնն, ուրեմն, լոկ ձեւական է։ Այսպէս վարուել են նաեւ ուրիշ թէ՛ հայ եւ թէ՛ այլազգի գրողներ։ Դարձուածների ու պատկերաւոր խօսքերի սակաւաթիւ փոքրիկ նմանութիւններով կամ փոխառութիւններով բնաւ չի տուժում մեր Քերթողահօր ոճի ինքնուրոյնութիւնը, որովհետեւ նա ամէն ինչ վերամշակելով յարմարեցնում է իր ճաշակին եւ իր ընդհանուր ոճական բնաւորութեանը։ Այսպիսի դէպքերում էլ նա մնում է վարպետ գրող։*

---

(1) Ուսումնասիրութիւնք Ստոյն-Կալիսթենեայ վարուց Աղեքսանդրի, գրեց Յակովբոս Վ. Տաշեան, Վիեննա, 1892, էջ 59 եւ հտն.։

«Քերդողահայր Մովսէս Խորենացու դաւանաբանական գրութիւնը» տեսնել «Դաւանաբանական պայքարի գրականութիւն» հատուածի առաջին գլխի մէջ։

Տե՛ս եւ Վեցերորդ յաւելուած՝ «Քերդողահայր Մովսէս Խորենացի եպիսկոպոսի թղթի վաւերականութիւնը»։

# ԵՂԻՇԷ

1․ Կենսագրական։ — *Մաշտոցի մահից յետոյ՝* 451 *թուականին տեղի է ունենում Աւարայրի ճակատամարտը հայկական ներքին ինքնուրոյնութեան, կրօնա-քաղաքական իրաւունքների պաշտպանութեան համար։ Այդ արդէն գաղափարական խաղաղ պայքար չէր քարոզչութեամբ եւ գրականութեամբ ընդդէմ պարսիկների, այլ հին ռազմական դիմադրութեան զարթօնքըն էր մասամբ ի հետեւանք Սահակի եւ Մաշտոցի կուլտուրական պայքարի։ Այդ դէպքը, որ արտայայտութիւնն էր իր դարի սոցիալ-քաղաքական վիճակի Հայաստանում, իր կողմից խորին դրոշմ է թողել հետագայ հայկական կեանքի վրայ մինչեւ առ ի* 20-*րդ դարը։ Հէնց սկզբից այդ զինեալ կռիւը դարձել է նիւթ գովք ու երգի։ Դրա առաջին քերդողն է Եղիշէն,* 5-*րդ դարի նշանաւոր գրողներից մէկը, որ իր «Վասն Հայոց պատերազմին» գըրքով* (1) *անմահացրել է ե՛ւ իրեն, ե՛ւ իր գովերգած եղելութիւնը։ Նրա գըրուածքն ամենալաւ անդրադարձումն է այն ժամանակի իրականութեան։*

*Ինչպէս մեր հին մատենագիրներից շատերի, նոյնպէս եւ Եղիշէի մասին, ցաւօք, չունենք կենսագրական տեղեկութիւններ։ Ըստ հին աւանդութեան* (2)*՝ նա եղել է Վարդան զօրավարի զինուոր եւ դպրապետ, այսինքն քարտուղար․ սպասաւորել է նրան, ականատես է եղել «ամենայն անցիցն որ անցին ընդ զօրսն Հայոց ի Յազկերտէ Պարսից արքայէ»։ Պատերազմից յետոյ նա թողել է զինուորութիւնը, դարձել է կրօնաւոր մենակեաց Մոկաց աշխարհում եւ այնտեղ գրել Պատմութիւնը եւ ուրիշ աշխատութիւններ։ Ըստ աւանդութեան՝ նա վախճանուած է Ռշտունիքում, ուր մինչեւ վերջերըս ցոյց էր տրւում նրա գերեզմանն իբրեւ ուխտատեղի։*

*Այս աւանդութիւնն անշուշտ հիմնուած է իրականութեան վրայ, բայց թէ ո՛ր չափով, այդ որոշ չէ* (3)*։ Միակ հաւաստի աղբիւրը կենսա-*

---

(1) Եղիշէի Պատմութիւն Վարդանանց ըստ Անձեւացեաց օրինակի, Տփխիս, 1904։

(2) «Ճառընտիրք»․ սրա հատուածը տե՛ս Գար․ Զարբ․, Հայկական հին դպրութեան պատմութիւն, Վենետիկ, 1886, էջ 312 ծան․։

Պատմութիւն սրբոյն Եղիշէի վարդապետի, Սոփերք Հայկականք, ԺԱ․, էջ 39–45։

(3) Եղիշէ, քննական ուսումնասիրութիւն, գրեց Բարգէն ծ․ վ․ Կիւլէսէրեան, Վիեննա, 1909, էջ 54 եւ հտ․։ Այստեղ հեշտութեամբ անընդունելի է համարւում այս աւանդութիւնն այն հիմամբ, թէ իբր «դպրապետ» եւ «սպասաւորել» բացատրութիւններն իբար «հակասական» են։ Մէկի քարտուղարը, սակայն, ուրիշ բան չէ, բայց եթէ ծառայող։ Մաշ-

գրութեան համար՝ է՛ Եղիշէի իրեն տուած տեղեկութիւնն իր մասին իր աշխատութիւնների մէջ: Նա իր գրած Պատմութեան սկզբից հէնց մեր առաջ պարզում է իր զղջուն սիրտը, իր վշտաբեկ վերաբերմունքը դէպի իր ազգի թշուառութիւնն ու կրած հարուածները, որոնց մէջ եղել է եւ ինքը: «Սկսցուք ուստի արժան է սկսանել, — գրում է նա, — թէպէտ եւ ոչ յօժարեցեմք զթշուառութիւն մերոյ ազգիս ողբալ: Ահա ոչ ըստ կամաց արտօսրալից ողբովք ճառագրեմք զբազում հարուածսն՝ յորում պատահեցաք եւ մեք իսկ ականատեսք լինելով» (էջ 11):

Երկրորդ անգամ էլ նա շատ որոշ գրում է իր ականատես լինելու մասին: «Բայց մեք թէպէտ եւ ոչ ունիմք հրաման բամբասել զիշխանն, բայց եւ ոչ գովողք կարեմք լինել այնմիկ, որ աստուածամարտն լինիցի: Այլ զանցս իրացն պատմեմք որ ի նմանէ ընդ սուրբ եկեղեցիսն էանց, եւ ոչ զանգաղիմ· ոչ բամբասասէր մտօք, այլ ճշմարտութեամբ զելս իրացն ասելով ոչ լռեցից: Ոչ ի կարծ ընդօստուցեալ, եւ ոչ ի լուր զարթուցեալ· այլ ե՛ս ինքնին անձամբ անդէն ի տեղւոջն պատահեցի եւ տեսի եւ լուայ զձայն բարբառոյ յանդգնաբար խօսելով· իբրեւ զհողմ սաստիկ՝ զի բախիցէ զծով մեծ, ա՛յնպէս շարժէր եւ տատանէր զամենայն բազմութիւն զօրացն իւրոց» (էջ 24 եւ հտ.): Այս հատուածի մէջ Եղիշէն պարզապէս ասում է, որ ինքն անձամբ տեսել ու լսել է Յազկերտ թագաւորին, երբ նա հրաման է տալիս եղել իր զօրքին: Այդ եղել է Ապար աշխարհում Քուշանների դէմ կռուի միջոցին, ուրեմն եւ Քուշանաց սահմանների վրայ, ուր տանում էին նաեւ հայկական գունդը «սկսեալ ի չորրորդ ամէ տէրութեանն իւրոյ [=Յազկերտ Բ·ի] մինչեւ յամն մետասաներորդ թագաւորութեանն» (էջ 19, այլեւ 27): Իսկ այդ լինում էր 442–449 թ·: Եղիշէն, ուրեմն, այդ թուականներին եղել է հայկական գնդի հետ Ապար աշխարհում: Բայց չպիտի կարծել, թէ հէնց սկզբից մինչեւ վերջը, որովհետեւ երկու տարուց յետոյ Յազկերտն, — ասում է մեր Պատմագիրը, — «արձակեաց զմարզիկսն յիւրաքանչիւր տեղիս, եւ զայլսն ի նոցա տեղիս փոխանակ առ իւր կոչեաց նովին պատրաստութեամբ: Եւ այսպէս ամ յամէ սովորութիւն կարգեաց» (19): Եղիշէն եղել է այն խմբերից մէկի մէջ եւ Յազկերտի 12–րդ տարուց առաջ վերադարձել Հայաստան:

Հիմա հարց է, թէ իբրեւ ի՞նչ է գտնուել մեր Պատմագիրը հայ գընդի մէջ Ապար աշխարհում: Պատասխանը պարզ է: Նա Ապար աշխարհ գնացել է հայ գնդի մէջ կամ իբրեւ զինուորական, կամ իբրեւ հոգեւորական, որովհետեւ գնացող գնդի համար նա գրում է, թէ «բարձին եւս ընդ իւրեանս

---

տոցն, ըստ Ղ· Փարպեցու, էր «զինուորեալ ի դուռն Հայոց արքային խոսրովայ, կարգեալ յերամ մատենագիր արքունի դպրացն» (էջ 27), իսկ ըստ Կորիւնի՝ էր «սպասաւոր արքայատուր հրամանին», էր «զինուորական», «հարկանէր զիշխանացն սպասաւորութիւնսն» (էջ 14): Նոյնը եղել է Վարդանի համար Եղիշէն — ե՛ւ զինուոր, ե՛ւ դպրապետ, ե՛ւ սպասաւոր (=ծառայող):

*սուրբ կտակարանս բազում պաշտօնէիւք եւ բազմազոյն քահանայիւք»։ Արդ, քանի որ ըստ աւանդութեան նա զինուոր է եղել եւ նրա կրօնաւորութիւնը պատերազմից յետոյ է եղել, ամենայն հաւանականութեամբ նա Ապար աշխարհում ծառայել է մի երկու տարի իբրեւ զինուոր 442—448/449 թուականների մէջ։ Ենթադրելով, որ նա զինուորական ծառայութիւնը («սպաս զինուորութեան») կատարել է 20—25 տարեկան երիտասարդ հասակից, նա ծնուած պիտի լինի, ուրեմն, մօտ 420 թուականին* **(1)**։

*Եղիշէն, Աւարայրի ճակատամարտից առաջ, եղել է Հայաստանում. զի այդ ճակատամարտի մասին պատմելուց քիչ առաջ գրում է. «Որպէս յայսմ ժամանակի տեսաք աչօք մերովք, զի զնոյն նահատակութիւն նահատակեցաւ եւ աշխարհս Հայոց» (142)։ Եւ վերջապէս՝ պատերազմի մէջ ընկած եւ կապուած նախարարների կանանց մասին գրելիս՝ ասում է. նրանց «ընդ ամենայն աշխարհն Հայոց համօրէն համարել ես ոչ կարեմ. զի բազում այն են զոր ոչ գիտեմ, քան թէ գիտիցեմ։ Զի հինգ հարիւրով չափ յականէ յանուանէ ճանաչեմ. ոչ միայն որ աւագագոյնքն էին, այլ զբազումս ի կրտսերագունաց անտի» (291)։ Կան ուրիշ կտորներ էլ, որոնցից երեւում է հեղինակի ժամանակակից եւ մասնակից լինելն իր պատմած դէպքերին։ Դրանից են հետեւեալները. «Թէպէտ եւ ոչ իցեմք բաւական ասել զամենայն չարիսն որ անցին անդէն ի կարաւանին ընդ գունդն Հայոց, սակայն եւ ոչ լռել կամիմք ծածկելով զվիշտս նեղութեանն. այլ ասասցուք փոքր ի շատէ, զի ձայնակիցք լիցուք այնոցիկ որք դառնապէս* զմեզն ողբային. *զի եւ դու իբրեւ լուիցես՝ ոչ սակաւ արտասուս հեղուցուս ի վերայ ազգին թշուառութեան»* **(էջ 77. Գ. յեղ. սկիզբը)**։

*Այսպէս ուրեմն, Եղիշէն, իր վկայութեամբ, ապրել է իր պատմած եղելութիւնների ժամանակ եւ շատ բան իր աչքով տեսել է։ Մենք ոչ մի աներկրայ հիմք չունինք այդ վկայութեան չհաւատալու* **(2)**։

---

(1) Շահապիվանի առաջին ժողովի (շուրջ 446/447 թ.) մասնակիցների մէջ յիշւում է «Եղիշէ դրան երէց»։ Առանց որեւէ հիման կարծում են, թէ նա Մամիկոնեան դրան, յատկապէս՝ Վարդանի դրան երէցն է եղել եւ ինքը պատմագիր Եղիշէն։ Դարձեալ՝ Արտաշատի ժողովի (450 թ.) մասնակիցների թւի մէջ յիշւում է «Եղիշա եպիսկոպոս Ամատունեաց»։ Սրան էլ նոյնացրել են Պատմագրի հետ։

(2) Որ Եղիշէի Պատմութեան անթուական, բայց հնագոյն ընդունուած «Անձեւացեաց օրինակը», այսինքն ձեռագիրը, չունի սկզբում «Եղիշէ» անունը, դրանից կարելի չէ եզրակացնել ինչպէս վարուել են հեշտութեամբ (Եղիշէ, Քնն. ուսումն., էջ 68 եւ հտն. Կիւլէսէրեանի), թէ իբր Եղիշէ անունը «կեղծանուն» է եւ այդ Պատմութիւնը սկզբնապէս «անանուն» է եղել, և իբր «երկար ժամանակ անանուն մնացել»։ Ամէն ձեռագրի վերնագրից էլ կարող է, արտագրողի անփութութեամբ, դուրս ընկնել սկզբի անունը, բացի այդ՝ «Եղիշէ» անունն ունեցող ձեռագրերի մայր ձեռագիրը կարող է աւելի հին լինել, քան «Անձեւացեաց օրինակը»։

**2. Ժամանակի խնդիր.** — *Երբ բանասէրները 19-րդ դարի վերջին տասնամեակից սկսեցին ելեւելել հին հայ գրողներին իրենց ժամանակից ու տեղից խախտելու համար, Եղիշէն եւս ենթարկուեց յարձակումների* (1)*: Գրուեցին ու տպուեցին բաւական բաներ, որոնցով «կեղծիք» համարեցին այն, որ Եղիշէն իրեն ականատես է համարում: Պնդեցին, թէ Եղիշէի գրած «Վարդանանց պատմութիւնը Փարպեցու Պատմութեան վրայէն չինուած՝ յատկապէս հանապազ ընթերցումի համար դիցազներգութիւն մ'է պատմական: Գրութեան ժամանակամիջոցն է Փարպեցիէն գրեթէ անմիջապէս յետոյ* 510-520» (2)*: Փաստարկումները, սակայն, այնքան վերիվերոյ, վարկպարագի են, որ դրանց մասին չարժէ խօսել այստեղ, բացի հետեւեալ երկուսից:*

*Վաղուց նկատուած էր, որ Եղիշէն իր «Պատմութեան», ինչպէս եւ «Միանձանց ճառի» նկարագրական մասերի մէջ օգտուած է Փիլոնի թարգմանութիւններից: Եւ որովհետեւ Փիլոնի թարգմանութիւններն էլ տեղահան անելով դրել էին 6-րդ դարի մէջ, հետեւաբար Եղիշէն էլ, ոճական նմանութիւնների պատճառով, տարւում էր 6-րդ դար: Բայց Տիմոթէոս Կուզի «Հակաճառութեան» թարգմանութեան երեւան գալով՝ Փիլոնի եւ նրա խմբի այլ յունաբան թարգմանութիւնները մնում են 5-րդ դարի երկրորդ կէսում* 480—484 *թուականից առաջ: Արդ՝ Եղիշէն «Վասն Հայոց Պատերազմին» աշխատութեան վերջում, խօսելով բանտարկուած հայ նախարարների մասին, գրում է, թէ Պերոզ արքան «ի նմին հինգերորդ ամին զբազմաց նոցա անդրէն զկեանս շնորհեաց, եւ այլոցն առ յոյսն խոստացաւ՝ յամն վեցերորդ միանգամայն արձակել կենօք եւ պատուով»: Եւ անմիջապէս կցում է. «Բայց ի տեղի այսր ինձ դարձեալ գալ պիտի» (էջ* 290 *եւ հտ.): Այդ վերաբերում է նախարարների արձակմանը, որի մասին Պատմագիրը խոստացել է, բայց չի գրել: Պերոզի վեցերորդ տարին համապատասխան է* 464/465 *թուականին, երբ արձակւում եւ Հայաստան են վերադառնում նախարարները, ինչպէս հաղորդում է նաեւ Ղազար Փարպեցին, գրելով, թէ նրանք «եկեալ ի տունս իւրաքանչիւր յամի վեցերորդի թագաւորութեանն Պերոզի» (էջ* 240)*: Եղիշէին, ուրեմն, ծանօթ է* 464/465 *թ. կատարուած եղելութիւնը: Կը նշանակի՝ նա Պատմութեան այդ գլուխը գրել վերջացրել է այդ թուականից յետոյ, գուցէ եւ մի երկու տասնեակ տարի յետոյ, երբ Փիլոնը թարգմանուած պիտի լինէր:*

*Երկրորդ հիմքը հետեւեալն է: Եղիշէն պատմում է, թէ մարզպան Վասակը «գրեաց հրովարտակ եւ աշխարհին Յունաց, ցուցանելով նոցա այլ ընդ այլոյ ստութեամբ, առ այր մի, որոյ Վասակ անուն էր, յայնց Մամիկոնենից՝ որ կան ի ծառայութեան Յունաց: Եւ...* այրն այն սպարապետ էր ստորին Հայոց, եւ հաւատարիմ զօրացն Հոռոմոց ի սահմանին

---

(1) Գր. Տէր-Պօղոսեան, «Եղիշէի Պատմութեան աղբիւրը», «Հանդէս Ամսօրեայ», 1895, էջ 20, 58, 110. նոյն հեղինակի «Նկատողութիւններ Եղիշէի Պատմութեան վերաբերեալ», «Հանդէս Ամսօրեայ», 1896, էջ 120, 168, 197, 302, 1902, էջ 319 եւ հտն.: Գր. Խալաթեան, «Նամակ առ խմբագրութիւն Եղիշէի աղբիւրների առթիւ», «Հանդէս Ամսօրեայ», 1895, էջ 113:

Վերոյիշեալ յօդուածների հերքում՝ Վարդան Հացունի, «Խորհրդածութիւնք Եղիշէի Պատմութեան վերայ», Վենետիկ, 1896:

(2) Եղիշէ, Քննական ուսումնասիրութիւն, գրեց Բարգէն ծ. վ. Կիւլէսէրեան, Վիեննա, 1909, էջ 212:

*Պարսից… Գրէր նա եւ ցուցանէր հանապազորդ, իբր թէ ամենայն Հայք զկնի իւր միաբանեցին: Եւ զնոյն գիր մեծաւ զգուշութեամբ Ներքին Վասակն տայր տանել ի Թագաւորանիստ քաղաքն կայսեր»* (էջ 135): *Բերելով Եղիշէից վերեւում ընդգծուած տողերը, մի բանասէր գրում է. «Ստորին Հայաստան անուան տակ, ակներեւ է, հասկացւում են Սատրապութիւնները* (1), *դուրս է գալիս, որ Վասակը եղել է սատրապներից մէկը: … Յայտնի է, որ ոչ Սատրապութիւններում եւ ոչ Ներքին Հայաստանում կայսրները զօրք չէին պահում եւ սահմանների, ինչպէս եւ երկրի պահպանութիւնը դրուած էր տեղական ուժերի վրայ, մինչեւ առ ի 529 թուականը, երբ առաջին անգամ Յուստինիանը նշանակեց Հայաստանի ստրատեգ եւ սրա իշխանութեանը ենթակայ երեք դուքսեր: Քանի որ պատմիչը [=Եղիշէն, Մ. Ա.] խօսում է հռոմէական զօրքերի սպարապետի մասին Հայաստանում, այդ անուան տակ ստրատեգ հասկանանք թէ դուքսերից մէկը, նրա աշխատութիւնը չի կարող յիշուած 529 թուականից առաջ ընկնել»* (2):

*Նախ՝ հասկանալի չէ, թէ ինչից է «ակներեւ», որ «Ստորին Հայաստան» ասելով հասկացւում են «Սատրապութիւնները» եւ ոչ Երկրորդ Հայաստանը* (3): *Ապա Յուստինիանի հրովարտակից բնաւ չի երեւում, թէ նա «առաջին անգամ նշանակել է Հայաստանի ստրատեգի իշխանութեանը ենթակայ երեք դուքսեր»: Ահա հրովարտակից հարկաւոր կտորը. «…Գտանք, որ հարկաւոր է նաեւ Հայաստանի մասերի, Պոլեմոնական Պոնտոսի եւ Ազգութիւնների [=Սատրապութիւնք, Մ. Ա.] համար այս հրովարտակով հիմնել յատուկ զօրապետի (պաշտօն)* (4)*… Յայտնի պրովինցիաները, որ են՝ Մեծ Հայաստանը, որ կոչւում է Ներքին, եւ Ազգութիւնները — այսինքն Հանձիթ, Անգեղ, Հաշտեանք, Սոփենա [=Ծոփք], որի մէջ է Մարտիրոսաց քաղաքը, Բալահովիտը — այլեւ Առաջին եւ Երկրորդ Հայաստանը եւ Պոլեմոնական Պոնտոսը նրանց դուքսերի հետ միասին հաւատում ենք քո*

---

(1) Տուեալ ժամանակաշրջանում՝ Հռոմայեցոց իշխանութեան տակ գտնուած Հայաստանը կամ Արեւմտեան Հայաստանը բաժանուած էր հետեւեալ չորս մասերին՝ Առաջին Հայաստան, Երկրորդ Հայաստան, Սատրապութիւններ, որ կոչւում էր նաեւ Gentes — Ազգութիւններ, Ժողովուրդներ (Մեծ Հայաստանի Հանձիթ, Անգեղ, Հաշտեանք եւ Ծոփք գաւառները) եւ սրանից հիւսիս՝ Մեծ Հայաստան կամ Ներքին Հայաստան:

(2) Ն. Ադոնց, Հայաստան Յուստինիանոսի դարաշրջանում, Ս. Պետերբ. 1908, էջ 126, ծան.:

(3) Մեր միջնադարեան հեղինակները՝ Ներսէս Շնորհալին («Ողբ Եդեսիոյ») եւ Ստեփանոս Օրբելեանը («Ողբ ի ս. Կաթուղիկէն») «Ստորին կողմն աշխարհի», «Աշխարհի Ստորին», «Կողմ Ստորին» անուանում են հին Կոմմագենէն (Եփրատի աջ կողմում, մայրաքաղաքը՝ Սամոսատ) եւ նրանից հարաւ ընկած երկրամասը Եփրատից արեւմուտք, աջ կողմից: Կոմմագենէն սահմանակից է Երկրորդ Հայքին. թերեւս կարելի է կարծել, թէ վերջինիս **«Ստորին»** յորջորջումն է տարածուել իր սահմանակից հարաւային երկրամասի վրայ: Օրբելեանը (իր Պատմ. մէջ) այդ «Ստորին աշխարհի» նկատմամբ՝ Մեծ Հայքը կոչում է «Վերին **աշխարհ Արեւելից»**:

(3) Proprium magistrium militium... constituere. ռուսերէն թարգմ. **«Հաստատել (պաշտօն) զինուորական յատուկ կառավարչի»** (ռուսերէն):— Հրովարտակի կտորն եւ այս ռուսերէն թարգմանութիւնն առնում է Ն. Ադոնցի յիշուած գրքից:

հոգացողութեանը, ընդ որում բոլորովին վերացւում է կոմէսի պաշտօնը» (1):

Այս հրովարտակից պարզ երեւում է, որ նոր հիմնւում է ստրատեգի — զօրապետի պաշտօնը, իսկ դուքսերի մասին չի ասւում, թէ նրանց պաշտօնը նոր է հիմնւում, եւ ոչ էլ այն, թէ «Յուստինիանն առաջին անգամ նշանակում է երեք դուքսեր», այլ այն, որ յիշուած մարզերն իրենց դուքսերի հետ միասին հաստատւում են նշանակուած ստրատեգին, այսինքն դուքսերը ենթադասւում են ստրատեգին: Հրովարտակի մէջ այդ մարզերի դուքսերի մասին խօսւում է իբրեւ արդէն գոյութիւն ունեցող պաշտօնատարների մասին, ճիշտ ինչպէս կոմէսի մասին: Պատմաբան Հ. Գելցերն այս նկատմամբ գրում է. «Պարզապէս կոմս կամ դուքս տիտղոսը կրող՝ Հայաստանի վարիչները Յուստինիանոսի կայսրութեան ժամանակ ստրատեղատի աստիճանին էին բարձրացրած»: «Յուստինիանոսը... 528-ին Հայաստանի սահմանագլուխների վրայի փոքրիկ հրամանատարութիւնները վերացրեց եւ Ծիտաս անունով մարտիկ զօրավարին իբրեւ ստրատեղատ Հայաստան ուղարկելով՝ վերջ տուեց մինչեւ նոյն ժամանակ ի գոյութեան եղող դուքսերի եւ կոմսերի դրութեանը» (2):

Այսպէս՝ Յուստինիանի վերակազմութիւնից առաջ էլ Հռոմէական Հայաստանն ունեցել է իր դուքսը, dux Armeniæ: Նա նստում էր Փոքր Հայաստանի (Փոքր Հայքի) մայրաքաղաք Մելիտինէում (այժմեան Մալաթիա, Երկրորդ Հայաստանում), որ «ռազմական կենտրոնն էր» (3): Դուքսը զօրքերի հրամանատարն էր, զօրավարը: Նա կատարում էր «սահմանների պահպանութեան ծառայութիւնը» (4), որ «դրուած էր Հայաստանի դուքսի եւ տեղական իշխանների ուժերի վրայ... Ներքին Հայաստանի եւ Սատրապութիւնների զօրքերը... չէին յարմարւում խիստ կարգապահութեան պահանջներին: Նրանց դժուար կը լինէր գործել դուքսի կանոնաւոր զօրքերի հետ միատեղ» (5), եւ այլն: Այս ամէնը, որ վերաբերում է Յուստինիանից առաջ ընկած ժամանակին, քաղում եմ հէնց այն գրքից, որի մէջ հեղինակը պատմագիր Եղիշէին 5-րդ դարից 6-րդի կէսերը քշելու եռանդից մղուած, գրում է, թէ քանի որ «առաջին անգամ Յուստինիանը նշանակեց Հայաստանի ստրատեգ եւ սրա իշխանութեանը ենթակայ երեք դուքսեր», ապա Եղիշէի յիշած «սպարապետ» «անուան տակ ստրատեգ հասկանանք, թէ դուքսերից մէկը, նրա աշխատութիւնը չի կարող 529 թուականից առաջ ընկնել»: Անշուշտ, «ստրատեգ» չի կարող հասկացուել, քանի որ այդ պաշտօնը Յուստինիանն է հիմնել. բայց ապաքէն կարելի է եւ պէտք է հասկանալ դուքս, քանի որ «Հայաստանի դուքսը» իբրեւ հռոմէական զօրավար, Յուստինիանից շատ առաջ գոյութիւն է ունեցել:

Մեր պատմագիրներից միայն Եղիշէն չէ, որ յիշում է հռոմէական իշխանութեան ենթակայ հայկական մարզերի զօրավարին իբրեւ «սպարապետ Հայոց», այսինքն Հայաստանի: Կորիւնը պատմում է, որ երբ Մաշտոցն անցնում է Արեւմտեան Հայաստան «վասն կէս

---

(1) Ն. Ադոնց, Հայաստան Յուստինիանոսի դարաշրջանում, էջ 132 եւ հտ.:

(2) H. Gelzer, Die Genesis der Byzantinischen Themenverfassung. Leipzig, 1899. հայ. թարգմ. «Սկզբնաւորութիւն Բիւզանդական բանակաթեմերու դրութեան», «Հանդէս Ամսօրեայ», 1902, էջ 24, 91, 163 եւ այլն: Բերուած ցիտատը՝ էջ 91, 92:

(3) Ն. Ադոնց, Հայաստան Յուստինիանոսի դարաշրջանում, էջ 139:

(4) Անդ, էջ 118:

(5) Անդ, էջ 131:

ազգին Հայոց (1), որ էր ընդ իշխանութեամբ Թագաւորին Հոռմոց», նա պատիւներ է ըստանում ի Թիւս ուրիշների «ի սպայապետէն աշխարհին»: Սա Մաշտոցի մտադրութիւնը գրով իմաց է տալիս կայսրին: Ապա Մաշտոցն իր աշակերտների բազմութիւնը Թողնում է Մելիտինէ քաղաքում եւ Դերջանի եպիսկոպոսին հետն առնելով՝ գնում է Կոստանդնուպոլիս: Երբ նա կայսերական հրովարտակով վերադառնում է, ներկայանում է «սպարապետին Հայոց» — Հայաստանի սպարապետին: Սա էլ կայսրի հրամանն ստանալով՝ մարդիկ է ուղարկում «ի գաւառս կէս ազգին Հայոց՝ յիշխանութեանն կայսեր», մանուկներ ժողովում սովորեցնելու եւ այլն: Որ Մաշտոցն իր աշակերտներին Թողնում է Մելիտինէ քաղաքում, ուր նստում էր Հայաստանի դուքսը, դրանից երեւում է, որ Կորիւնը «Հայաստանի սպարապետ» անունով կոչում է Մելիտինէում նստող Հայաստանի Դուքսը: Ապա՝ որ «Հայաստանի սպարապետն» է Մաշտոցի մտադրութիւնը գրով իմացնում կայսրին, եւ կայսրը հրովարտակը նրան է ուղղում «վասն մանկտոյն յաշակերտութիւնն առ ի կէս ազգին Հայոց ժողովելոյ», եւ նա, սպարապետն է մարդիկ ուղարկում «ի գաւառս կէս ազգին Հայոց», այդ ցոյց է տալիս, որ Հայաստանի սպարապետն առանձին իրաւունքների տէր է եղել ոչ միայն Երկրորդ Հայաստանի վրայ, այլեւ միւս հայկական մարզերի վրայ, եւ մինչեւ որ նա կայսրից հրաման չի ստացել, չի Թոյլ տուել հայկական դպրութիւն սովորեցնել Արեւմտեան Հայաստանում ընդհանրապէս:

Եղիշէի յիշած Ստորին Հայոց սպարապետը, որ Արեւելեան Հայաստանի մարզպան Վասակի իրեն ուղղած գրութիւնը նոյնպէս ուղարկում է Կոստանդնուպոլիս, ուրիշ պաշտօնեայ չէ, բայց եթէ Կորիւնի յիշած «սպարապետն Հայոց», հարկաւ, պաշտօնատար անձը, ոչ նոյնը: Այսպէս ուրեմն, Յուստինիանից շատ առաջ եղել է «Հայաստանի դուքս», որ մեր մատենագիրները՝ Կորիւն եւ Եղիշէ հայերէն «սպարապետ» բառով են Թարգմանում: Վարդանանց պատերազմի ժամանակ 450 Թ. այդ պաշտօնը, ըստ Եղիշէի, վարել է Վասակ Մամիկոնեան անունով մի իշխան: Հայերը, որ Թուղթ էին ուղարկել ուրիշների Թւում եւ «առ մեծ սպարապետն Անտիոքայ»(2), նոյն խնդրի համար գրաւոր յարաբերութեան մէջ են մտել բնականաբար նաեւ Մելիտինէում նստող «Հայաստանի դուքսի» — Հայաստանի սպարապետի հետ:

3. «Վասն Հայոց պատերազմին»: — Եղիշէի անունով մեզ հասել են մի շարք աշխատութիւններ (3): Նրա հռչակաւոր մեծ երկն է այն գրական

(1) Նկատել «կէս ազգին Հայոց» ասութիւնը, որ կրկնում է Կորիւնը· Ներքին Հայաստանը եւ Սատրապութիւնները միայն մի փոքր մասն էին հայերի, իսկ Փոքր Հայաստանի հետ՝ հայերի կէսը:

(2) Եղիշէ, էջ 193· Ղ. Փարպեցի, էջ 134, 180:

(3) Եղիշէ վարդապետի մատենագրութիւնք, Վենետիկ, 1859· «Բան խրատու յաղագս միանձանց», «Մեկնութիւն Յեսուայ եւ դատաւորաց», «Աղօթք որ ասէ Հայր մեր որ յերկինս», «Ի մկրտութիւն Քրիստոսի», «Ի Թափոր լերին յայտնութիւն տեառն», «Ի չարչարանսն Քրիստոսի», եւ ուրիշները: Այս աշխատութիւնները մեծ մասամբ մեկնողական ճառեր են, որոնց մէջ փայլում է դրանց հեղինակի ճարտասանական արուեստը: Ոճական կողմից ազդուած է Փիլոն Եբրայեցուց: Աչքի է ընկնում «Միանձանց» խրատը, որի մէջ ներբողւում է աշխարհից փախուած ճգնութիւնը եւ մէջը կան նաեւ ակնարկներ հեղինակի կենսագրութեան մասին, ինչպէս հետեւեալը· «Ամենայն չարիք եկին հասին յաւուրս մեր· կենդանեաւ մերով տեսաք զդիակունս անձանց մերոց: Քաջ նահատակքն մեր անկան ի պատերազմի եւ սուրբ քահանայք մեր խողխողեցան ի ձեռաց անօրինաց· գեղեցիկ երիտասարդքն զենան ի սպանումն» եւ այլն:

յիշատակարանը, որի մէջ գրուած է մի 35 տարուայ պատմութիւն Հայ Արշակունի հարստութեան անկումից յետոյ մինչեւ 464/465 թուականը, երբ կատարւում է այսպէս կոչուած «առաջին կրօնական պատերազմը» Պարսից տէրութեան դէմ։ Այդ երկի վերնագիրն է ըստ տպագրութիւնների՝ «Վասն Վարդանայ եւ Հայոց պատերազմին, Դաւթի երիցու Մամիկոնի հայցեալ»։ «Մամիկոնի» անունը պարզապէս աղճատուած է եւ պիտի լինի «Մամիկոնեանի»։ Վերնագրի մէջ հետագայում է աւելացրած «Վարդանայ» բառը, անշուշտ Վարդան սպարապետի անուան բարձրացման համար։ Աւելի եւս ուշ ժամանակում, ինչպէս եւ այժմ, պատերազմը կոչուել է նաեւ «Վարդանանց պատերազմ»։ Ինքը հեղինակը, սակայն, սկզբի ընծայականի մէջ իր գրքի վերնագրի մասին յիշում է առանց «Վարդան» անուան. «Բանն զոր պատուիրեցեր՝ արարի, ո՛վ քաջ. վասն Հայոց պատերազմին հրամայեցեր, յորում բազումք առաքինացան քան զսակաւս»։

Թէ ո՛վ է եղել Մամիկոնեան Դաւիթ Երէցը՝ այդ յայտնի չէ։ Ընծայականի մէջ Եղիշէն շատ գովում է նրան, համարելով նրան տէր «երկրաւոր առատ գիտութեան», «մեծ ի գիտութեանն Աստուծոյ». մի մարդ որ, — ասում է նա, — ոչ թէ պիտի հրամայէր Եղիշէին գրել, այլ ուրիշ լաւագոյնները նրան պիտի հրամայէին այդ անել։Այստեղից իմացւում է,որ Դաւիթ Երէցը ժամանակի գիտուններից է, գուցէ եւ թարգմանիչներից մէկը։ Թւում է, թէ Եղիշէն իր մասին էլ տեղեկութիւն է տալիս հետեւեալ խօսքով. «Որպէս երեւի ինձ եւ այնոցիկ որ դեգերեցին յիմաստասիրութիւն՝ երկնաւոր սիրոյ է ի քեզ այս նշանակ, եւ ոչ երկրաւոր փառասիրութեան»։ Նա էլ պարապել է իմաստասիրութեամբ, գիտութիւններով, եւ ժամանակի գիտուններից մէկն է, եւ ի զուր չէ, որ նրան կոչել են «վարդապետ»։ Այդ երեւում է եւ նրա գրական աշխատութիւններից։ Լոկ մի համեմատութեան խօսք է, որ նա դիմելով Դաւիթ Երէցին՝ գրում է. «Եւ մեր խակ հայեցեալ ի սուրբ սէր քոյոյ հրամանիդ՝ ոչինչ դանդաղեալ վեհերեցաք հայելով ի մեր տկարութիւնս... յօժարութեամբ ձեռնարկեցաք զայս ինչ»։

Եղիշէն Պատմութինը վերջացնելուց յետոյ է գրել այս հետաքրքիր ընծայականը։ Այստեղ նա թւում է իր երկի եօթն «գլուխների» կամ «յեղանակների» վերնագրերը. բայց վերջից կայ նաեւ «Արտաքոյ եւթն յեղանակին ութերորդ», որ անշուշտ յետոյ է աւելացրել։ Դրա մէջ պատմւում է. «Վասն չարչարանաց սուրբ քահանայիցն եւ նահատակութեան», «Վասն խոստովանողացն Հայոց Խորենայ եւ Աբրահամու», «Անուանք նախարարացն որք կամօք յօժարութեամբ վասն սիրոյն Քրիստոսի ետուն զանձինս ի կապանս արքունի»։ Վերջինս իսկապէս այդ նախարարների մասին պատմութիւնն է, որի վերջից նկարագրել է նրանց եւ պատերազմի մէջ ընկածների կանանց վիճակը։

4. Պատմիչը։ — Եղիշէի մեծ երկի գեղեցիկ ձեւից տարուելով՝ մէկըն այդ անուանել է բանաստեղծութիւն, մի ուրիշը՝ վիպասանութիւն, մի երրորդն էլ՝ ներբողեան։ Բայց դա ամենից առաջ պատմութիւն է, 5-րդ դարի մեծ ռազմական գործի — «Հայոց պատերազմի» պատմութիւնը, եւ

*Եղիշէն ինքը պատմիչ է: Իբրեւ այնպիսին՝ նա մեծ վարպետ է եւ իր գործին լուրջ վերաբերուող: Ընծայականի մէջ նա այսպէս է բնորոշում իր արդէն վերջացրած աշխատութիւնը. «Կարգադրեալ եւ եդեալ ծայրալիր պարապմամբ զսկիզբն եւ զմիջոցն եւ զկատարածն»: Այդ նշանակում է, որ նա լիակատար ուսումնասիրութիւն է արել «Հայոց պատերազմի» մասին՝ պարզելով այդ մեծ եղելութեան պատճառները, զարգացումն ու հետեւանքները: Եւ նա ամէն պատմիչի համար անհրաժեշտ այդ առաջադրանքը գլուխ է բերել հմտութեամբ եւ գործի մեծ ծանօթութեամբ: Տեսնենք այդ:*

Սկիզբը, *այսինքն եղելութեան պատճառները նա որոշում է ճիշտ եւ բազմակողմանի: Ինչպէս յայտնի է, Սասանեան հարստութեան հիմնադիր Արտաշիր արքան յղացել է պետական կրօնի գաղափարը: Նա հին զրադաշտական կրօնը, մազդէականութիւնը դարձրել է պետական կրօն, իբրեւ խարիսխ իր եւ իր յաջորդների թագաւորութեան: Այդ կրօնի պաշտօնեաները, մոգերը դարձել են պետական գործակալներ եւ ազդեցութիւն են ձեռք բերել պետական գործերի մէջ: Մի անգամ որ առաջ է եկել պետական կրօնը, բնականաբար Պարսից արքաները ձգտել են, — ինչպէս նման դէպքերում եւ ուրիշ բռնակալներ, — իրենց կրօնը մտցնելու նաեւ իրենց բազմազգի տէրութեան բոլոր ժողովուրդների մէջ՝ կրօնով միաձոյլ պետութիւն կազմելու համար: Դրա հետեւանքով եւ տեղի է ունեցել աղանդների ու քրիստոնէութեան հալածանք, ինչպէս Շապուհ Բ.ի օրով* (310–379 *թ.*) *նրա թագաւորութեան երկրորդ շրջանում* (342—379 *թ.*)*: Հայաստանում Արշակի անկումից յետոյ կարճատեւ հալածանք է եղել* (*Բուզանդ, Դ.* 56, 59)*: Ահա «Հայոց պատերազմի» հիմնական պատճառը: Եւ Եղիշէն լաւ հասկացել է այդ, նա հէնց այդտեղից էլ սկսում է, ասելով թէ՝ երբ Հայաստանում վերացուեց Արշակունիների իշխանութիւնը, մեր աշխարհին տիրեց «ազգն Սասանայ պարսկի, որ վարէր զիւր իշխանութիւնն օրինօք մոգուցն. եւ բազում անգամ մարտնչէր ընդ այնոսիկ՝ որ ոչ ընդ նովին օրինօքն մտանէին»: Հայերի դէմ կռիւն, — ասում է Եղիշէն, — սկսուած էր Տիրանի որդի Արշակի տարիներից: Երբ Վռամշապուհի որդի Արտաշէս արքային ձգում են թագաւորութիւնից, իշխանութիւնն անցնում է Հայոց նախարարներին. «Վասն որոյ եւ աստուածպաշտութիւնն բարձրագլուխ կամակարութեամբ երեւելի լինէր յաշխարհին Հայոց ի սկզբանց տէրութեանն Շապհոյ արքայից արքայի* [=*Շապուհ Գ.* 384 *թ.*] *մինչեւ ցամն երկրորդ Յազկերտի»* [439 *թ.*]*: Ուրեմն, ինչպէս ուրիշ աղբիւրներից էլ յայտնի է, կրօնի հալածանք չկար մինչեւ Յազկերտ Բ.ի տարիները:*

*Հիմնական պատճառից յետոյ՝ Պատմագիրն անցնում է մասնաւոր պատճառին: Դա Յազկերտ Բ.ի մոլեռանդ, «անխաղաղասէր» ու չար բնաւորութիւնն է, որ խիստ գոյներով նկարագրում է նա: Այդ թագաւորը նորոգում է քրիստոնէութեան հալածանքը, բայց սկզբի տարիներում միայն պարսիկ քրիստոնեաների վերաբերմամբ, իսկ հայերի եւ այլ հպատակ ազգերի համար՝ դեռ խորհուրդ են անում, թէ ինչպէս վարուեն: Մոգերը բնականաբար ուրիշ խորհուրդ չէին տալ թագաւորին, «բայց եթէ ի մի օրէ-*

նըս դարձուցանես զամենայն ազգս եւ ազինս՝ որ են ի տէրութեան քում», «բայց միայն զազանդ քրիստոնէից բարձ ի միջոյ»: Այդ էր պահանջում նրանց դասակարգային շահը, բայց կար եւ պետական շահը: Երբ ներքուստ միաձոյլ մի կրօն ունենան տէրութեան բոլոր ժողովուրդներն ու ցեղերը, այն ժամանակ «եւ Յոյնք իսկ ոչ ելանեն ընդ քո իշխանութիւնդ», — յոյներն անգամ չեն յարձակուիլ քո տէրութեան վրայ, — ասում է Եղիշէն մոգերի բերանով: Ուրեմն երկիրն ուժեղացնելու եւ քրիստոնեայ հռոմայեցիների դէմ կանգնելու համար՝ հարկաւոր էր հայերին եւ ուրիշներին մոգական կրօնին դարձնել: Այս խորհուրդը Պատմագիրը դնում է մոգերի բերանին, բայց եւ մեծամեծներն ու ինքը Յազկերտը նոյն կարծիքին են եղել — «էին ի նմին բանի»: Քրիստոնեաներին կրօնափոխ անելը, դա հին քաղաքականութեան արծարծումն էր, որ նորոգւում էր մոգերի ու պարսիկ մեծամեծների կողմից, վերջիններիս մէջ էր նաեւ հազարապետ Միհրներսեհը, «հին վիշապն չարաթոյն», որ «էր իշխան եւ հրամանատար ամենայն տէրութեանն Պարսից», գրում է Եղիշէն, — «եւ չէր ոք ամենեւին՝ որ իշխէր ըստ ձեռն նորա ելանել: Եւ ոչ միայն մեծամեծք եւ փոքունք, այլ եւ ինքն թագաւորն. հրամանի բերանոյ նորա անսայր. որոյ եւ ձախող իրացն իսկ բուռն հարեալ էր նորա» (էջ 127 եւ հտ.):

Այս ամէնը պարսկական կողմից եւ պարսկական շահերի տեսակէտով: Այս սկզբնական նախապատճառներից ելնում է գործողութիւնը: Առաջին բանը լինում է այն, որ, ինչպէս ասուեց, հայկական զօրքը հանում են Հայաստանից եւ տանում են Ապար աշխարհ՝ Քուշանների դէմ կռուելու: Այսպէս վարւում են պարսիկներն առաջին անգամ. «ոչ էին օրէնք երթալ զայն ճանապարհ յառաջ ժամանակաւ» (էջ 17), — գրում է Եղիշէն: Այդ դառնում էր մի զօրաւոր պատճառ հայ ազատանու համար՝ գրգռուելու ընդդէմ պարսկական իշխանութեան. որովհետեւ նրանք ոչ միայն հեռաւոր երկիր պիտի գնային ծառայելու, այլեւ այրուձի պահելու պարտականութիւնն աւելի եւս ծանրանում էր: Շօշափուած էին նրանց սեփական շահերը: Դժգոհութիւնն աւելի մեծանում է, երբ այնտեղ, հեռաստանում, վատ են վարւում նրանց հետ եւ զանազան միջոցներով նեղելով փորձում են նրանց մոգական կրօնին դարձնել: Բայց դեռ բուն երկրից չեն պահանջում հաւատափոխութիւն:

Եւ ահա գալիս է մի նոր պատճառ, որ բոլոր հայ ժողովրդին գրգռում է ընդդէմ պարսից իշխանութեան: Աշխարհագիր են անում, աշխարհի հարկն աւելի ծանրացնում: Հարկեր են դնում նաեւ միայնակեացների ու վանականների, եկեղեցու եւ եկեղեցականների վրայ, որոնք առաջ հարկից ազատ էին, եւ նախարարներին բանսարկութեամբ գժտեցնում միմեանց հետ: Հայ հազարապետին, որ «իբրեւ զհայր վերակացու համարեալ էր աշխարհականաց քրիստոնէից», գործից հանում են, փոխանակ մի պարսիկ են կարգում, եւ վերջապէս, որ կարեւորն է՝ դատաւորութիւնն եկեղեցուց առնում, յանձնում են մի մոգպետի: Հարկերը ծանր էին, գրում է Եղիշէն. «Քանզի ուստի արժան էր առնուլ հարիւր դահեկան, նոյնչափ կրկնէին եւ

*առնուլին․ սոյնպէս եւ եպիսկոպոսաց եւ երիցանց դնէին, ոչ միայն չինաց, այլ եւ աւերակաց: Նա բնաւ ո՞վ իսկ կարէ պատմել վասն ծանրութեան մըտից եւ սակից, բաժից եւ հասից, լերանց եւ դաշտաց եւ մայրեաց: Ոչ ըստ արքունի արժանաւորութեանն առնուլին, այլ հինաբար յափշտակելով, մինչեւ ինքեանք իսկ մեծապէս զարմանային, թէ՝ ուստի այս ամենայն գանձ ելանէ՝ զի՞րդ չէն կայցէ աշխարհն Հայաստանեայց» (էջ 35 եւ հտ․):*

*Որ Եղիշէն այսքան կանգ է առնում ներքին ինքնավարական եւ տընտեսական կողմերի վրայ, այդ ցոյց է տալիս, որ նա լաւ ըմբռնել է ժամանակի քաղաքական վիճակը: Եւ իսկապէս նա գրում է․ «Եւ զայս ամենայն առնէր՝ զի թերեւս զմիաբանութիւնն քակտեսցէ, եւ զուխտն եկեղեցւոյն ցրուեսցէ, եւ զմիայնակեացսն փախուսցէ, եւ զշինականսն վատնեսցէ․ եւ առ յոյժ աղքատութեանն՝ ակամայ դիմեսցեն յօրէնս մոգուց»: Դրանից յետոյ արդէն գրում են Հայերին հաւատափոխութեան մասին նամակը: Ահա այն շարք պատճառները ե՛ւ պարսիկների, ե՛ւ Հայերի կողմից՝ Հայերի ապըստամբական շարժման համար: Եթէ մի յիսուն տարի առաջ ապագայ վտանգի զգացումն ու նախատեսութիւնը միայն կար, եւ մարդիկ իդէոլոգիապէս զինւում էին վտանգին դիմադրելու համար, այժմ այդ խաղաղ պայքարի բնաւորութիւնը փոխւում էր: Արքայից արքան նորոգել էր ուզում իր նախնիների քաղաքականութիւնը: Նա դիպել էր հայ Ֆէոդալների տընտեսական շահերին, հայկական հեծելազօրի գործը ծանրացնելով․ նա ոտնահարել էր ե՛ւ Ֆէոդալների, ե՛ւ եկեղեցականների իրաւունքները եւ հարկերի ծանրացումով՝ դիպել էր նրանց տնտեսական շահերին: Եւ դրա անմիջական հետեւանքն այն էր լինում, որ երկու իշխող դասերը կռուի մէջ սերտ միանում են միմեանց հետ: Շինականները, ռամիկներն եւս նրանց հետ են ընթանում, քանի որ վերջին հաշուով տնտեսապէս ճնշւում էր այդ հարկատու դասը: Առաջ է գալիս կրօնական գաղափարախօսութեան տակ մասսաների միացում, պարսից տէրութեան դէմ մասսայական կռիւ, որ սխալ կերպով կոչել են «կրօնական պատերազմ»: Դա զուտ կրօնական չէ, այլ մի եկեղեցա-քաղաքական զինեալ պայքար է պարսիկների դէմ: Եղիշէն շատ ճիշտ բնորոշել է այդ՝ անուանելով «Հայոց պատերազմ» եւ շատ լաւ հանգամանօրէն պարզել է դրա պատճառները թէ՛ պարսկական եւ թէ՛ հայկական կողմերի վերաբերմամբ: Դրանով հէնց մեր այս հեղինակը մի հըմուտ պատմագիր է, որ լայն քաղաքական-տնտեսական հայեացք ունի իր պատմած ժամանակի դէպքերի վրայ:*

Միջոցը, *այսինքն եղելութեան զարգացումը, պատճառները պարզելուց յետոյ մանրամասն պատմել է Եղիշէն: Այստեղ դնում ենք միայն մի քանի կէտերը: Հայերը, նախագահութեամբ Սահակի ու Մեսրոպի աշակերտ Յովսէփի «միահամուռ ժողովեալք ի Թագաւորանիստ քաղաքն յԱրտաշատ, հաւանութեամբ մեծամեծ նախարարացն եւ ամենայն բազմութեամբ աշխարհին», համարձակ պատասխանում են Միհրներսեհի գրութեանը: Նախարարները կանչւում են արքունի դուռը, ակամայ ուրանում են քրիստոնէութիւնը եւ բազմաթիւ մոգերի հետ վերադառնում: Շարժւում*

է ժողովուրդը, մասնավորապես. «Ժողովեցին զբազմութիւն արանց եւ կանանց, չինականաց եւ ազատաց, զքահանայից եւ զմենակեցաց», «երեւեցան ամենեքեան զինեալք եւ սաղաւարտեալք, սուր ընդ մէջ եւ վահան ի ձեռին՝ ոչ միայն արանց քաջաց, այլ եւ կանանց առնականաց» (էջ 82 եւ հտ.)։ Պասիւ ընդդիմադրութիւնը վերջանում է։ Յարձակւում են մոգերի եւ պարսկական բանակի վրայ, բերդերի եւ աւանների վրայ, որ պարսիկների ձեռին էին. առնում են Արտաշատ, Գառնի, Անի, Արտագեստ, Վան, Ողական, Որոտն եւ ուրիշները։ Նոյնն անում են եւ Ատրպատականում։ Հաւաքւում են նախարարներն իրենց զօրքով։ Զօրքը բաժանում են երեք գնդի. առաջին խումբըն ուղարկում են Ատրպատականի սահմանները, երկրորդը սպարապետ Վարդան Մամիկոնեանի ձեռով ուղարկում են Աղուանք, նրանց օգնելու, երրորդը տալիս են Վասակ մարզպանին։Մինչ ուրիշներն աշխատում են պատերազմը դարձնել համազգային, Վասակը դաւաճանում է, աւերմունքներ է գործում երկրի կենտրոնում եւ երկպառակութիւն է ձգում։ Վարդանը վերադառնում է. Վասակն Այրարատից փախչում է Սիւնիք։

Վարդանը կազմակերպում է հաւատարիմ մնացած իշխաններին իրենց զօրքերով, վաթսունվեց հազար տղամարդ, հեծեալ եւ հետեւակ, 451 թ. գարնանը ելնում են պարսկական բանակի դէմ։ Ճակատամարտը տեղի է ունենում Աւարայրի դաշտում։ Մարտի մէջ ընկնում են սպարապետ Վարդանը, նրա հետ նաեւ ութ մեծ նախարարներ եւ այլ տղամարդիկ, ընդամէնը 1036 հոգի, իսկ թշնամիների կողմից 3544 մարդ, ինը հոգի մեծ պատուաւորներից։ Հայերը չեն յաղթուած. «Քանզի ոչ եթէ կողմ էր որ յաղթեաց, եւ կողմ էր որ պարտեցաւ, այլ քաջք ընդ քաջս ելեալ՝ երկոքին կողմանքն ի պարտութիւն մատնեցան»։ Բայց հայերի դժբախտութիւնն այն էր, որ չկարողացան հետեւեալ օրերը պատերազմը միասնական ուժերով շարունակել։ «Քանզի անկեալ էր մեծ սպարապետն Հայոց ի պատերազմին, ոչ ոք գոյր այնուհետեւ ի մէջ գլխաւոր՝ յոր յեցեալ ժողովէին զունդն մնացելոցն» (էջ 173)։ Մարտիկները ցրւում, ամրանում են երկրի զանազան կողմերում եւ պատերազմը շարունակում են անջատ անջատ՝ Այրարատում, Խաղտիքում, Տմորիքում, Արցախում։ Տայքում մարտնչողների մէջ էր եւ Վարդան սպարապետի եղբայրը՝ Հմայեակ, որ «յանխնայ քաջութեամբ մարտուցեալ՝ կատարեցաւ նահատակութեամբ»։ Հայերի դիմադրութիւնը երկարում է. պարսիկները չեն կարողանում զսպել ապստամբութիւնը։ Եւ վերջ ի վերջոյ յաղթող են հանդիսանում հայերը։ Այդ տեսնում ենք պատերազմի վերջի մասից՝ «կատարածից», այսինքն հետեւանքներից, որին անցնում է Եղիշէն։

Յազկերտ թագաւորը տեսնելով իրերի այնպիսի ելքը, ստիպուած է լինում փոխել քաղաքականութիւնը։ Նա Վասակի փոխանակ մի պարսիկ մարզպան է ուղարկում.

1. Տրւում է իրաւունք ազատ պաշտելու քրիստոնէութիւնը։ Եպիսկոպոսներին հրամայում են յայտնի ու համարձակ վարել իրենց իշխանութիւնը. նոյնպէս եւ միայնակեացներին՝ վերադառնալ իրենց տեղերը։ «Զա–

մենայն կարգս աստուածպաշտութեանն, որպէս զիարդ եւ ունէին յառաջ ժամանակաւ առ նախնեօքն, նոյնպէս եւ այժմ, առէ, կալցին»: «Նա եւ որ մեծն է քան զամենայն, որ ի բռնութենէ ոք ակամայ կալեալ էր զմոլորութիւնն, հրովարտակս առաքէր յարքունուստ՝ անդրէն ունել զքրիստոնէութիւնն» (էջ 190 եւ հտ.): Ուրեմն կրօնի կատարեալ ազատութիւն:

2. «Քանզի բազում գաւառս առեալ եւ աւերեալ էր զօրականին, թողուլ հրամայէր զհարկս աշխարհին»:

3. «Զայրուձին եւս զարքունի թեթեւացոյց առ ժամանակ մի»:

4. «Եթէ ոք ի հեռի աշխարհ ուրեք գնացեալ իցեն, ... եթէ յազատաց իցեն, եթէ ի շինականաց իցեն, եթէ յեկեղեցւոյ, զինչ կեանս [=ստացուածք] եւ թողեալ իցէ, եկեսցեն եւ կալցեն զիւրաքանչիւր զարարս» [= գոյք] (էջ 190 եւ հտ.):

Այսպէս տնտեսական կողմից էլ բաւարարութիւն էր տրւում հայերին: Վերացւում է ամէն ինչ, որ պատճառ էր եղել հայերի ապստամբութեան: Հայերի նպատակը չէր եղել անկախութիւն ձեռք բերել, մի բան, որի համար նրանք չէին կարող մտածել, քանի որ երկպառակուած է ազնուականութիւնը, եւ չկար, — ինչպէս պատմում է Եղիշէն, — հռոմայեցիների կողմից որեւէ օգնութիւն. Յազկերտն այդ մասին առաջուց ապահովել էր իրեն: Բայց եւ այնպէս վերջնական հաշուով յաղթութիւնը հայերն էին տարել, քանի որ ե՛ւ եկեղեցին, ե՛ւ հայ ազնուականութիւնը վերստանում էին իրենց տնտեսական եւ այլ իրաւունքները:

Այս էր պատերազմի առաջին եւ էական հետեւանքը — հայերի յաջողութիւն եւ պարսիկների անյաջողութիւն: Պէտք էր որոնել անյաջողութեան պատճառը: Պարսից զօրավարը գիտէր, որ ինքը պիտի լինէր յանցաւոր ու պատասխանատու: Եւ ահա նա իրեն ազատելու համար՝ առաջուց դրա առաջն առնում է, յանցանքը գցելով մարզպան Վասակի վրայ: «Մեծաւ բարկութեամբ կուտէր զվնասն ի վերայ անօրինին Վասակայ. իբր թէ նա իցէ սկիզբն եւ առաջնորդ ամենայն չարեացն որ գործեցան... Գրէր եւ ցուցանէր յարքունիս զամենայն ստուգութեամբ, եւ զվնաս [=յանցանքը] գործոյն արկանէր զուրացելոյն» (էջ 186): Ամէն կողմից, ե՛ւ պարսիկներից, ե՛ւ հայերից ամբաստանւում է Վասակը եւ պատժւում:

Դրանով կարծես վերջացած պիտի լինէր «Հայոց պատերազմը». բայց Յովսէփ կաթողիկոսին ու Ղեւոնդ Երէցին, մի քանի ուրիշ եկեղեցականների հետ կապած տարել էին Պարսկաստան. այնտեղ նրանց բանտարկած պահում են եւ յետոյ նահատակում: Որոշ թուով հայ նախարարներ էլ, հաւատալով թագաւորի տուած խօսքին՝ իրենց կամքով գնում են արքունիք, բայց նրանք էլ տարիներ բանտարկուած պահւում են, մինչեւ որ 464/465 թ. արձակւում, գալիս են Հայաստան: «Ութերորդ յեղանակի» նիւթն է այդ, եւ դա մի անհրաժեշտ յաւելուած լրացում է Պատմութեան համար: Դրանով, այդ վերջին գլխով, ինչքան էլ դա վկայաբանութիւն է մեծ մասամբ, աւարտւում է «Հայոց պատերազմն» իր հետեւանքներով:

Ահա՛ պատմիչ Եղիշէի գործի կմախքը, ստուերագիծ բովանդակու-

թիւնը — սկիզբը, միջոցն ու կատարածը (վերջը) — եղելութեան պատճառները, զարգացումն ու հետեւանքները:

5. **Ճառագրութիւն եւ իր նպատակը:** — Այս յիշատակարանն առաջին գլխի սկզբում ունի մի փոքր հատուած, որ ըստ երեւոյթին վերջին մասն է մի գրութեան, որ հեղինակն ուղղել է Դաւիթ Երէցին նախ քան իր աշխատութեանը ձեռնարկելը: Այդտեղ Եղիշէն, ինչպէս վերեւում բերուած է, իր գործի համար գործածում է «ճառագրել» բառը: Հեղինակի այս բնորոշումը շատ ճիշդ է: Նրա գործը ճառագրութիւն է, մի ճարտասանական պատմութիւն, որ այնչափ լի է քնարական զեղումներով, այնպէս որ զուր չէ, որ ասել են, թէ դա «բանաստեղծական պատմութիւն» է: Դա իր ձեւով իսկապէս մի ամբողջութիւն կազմող քնարական վիպասանութիւն է, որ պտտում է մի իրի շուրջ՝ կենտրոնն ունենալով Աւարայրի ճակատամարտը: Հին քրիստոնէական գրականութիւնը, — եւ ոչ միայն մեր մէջ, — ընդհանրապէս հրապարակախօսական եւ միտումնաւոր է: Դրա ձգտումն է եղել սովորեցնել, լինել օգտակար դաս ընթերցողների համար, կրօնա-բարոյակրթական մի խրատ: Ուսուցանելու այս միտումը պահւում էր ոչ միայն բուն եկեղեցական երկերի մէջ, այլեւ աշխարհիկ թեմատիկայի ժամանակ եւ պատմութեան մէջ: Ուստի այդ առաւել երեւան պիտի գար մանաւանդ այնպիսի պատմութեան մէջ, ինչպիսին է Եղիշէի երկը: Սրա հեղինակն, ինչպէս ամէն ճարտասան ճառագիր, իր պերճախօսական արուեստով առանձին ուշադրութիւն է դարձրել դէպքերն այնպէս շարադրելու, որ ոչ միայն համոզի, այլեւ ազդի եւ ամենալաւ կերպով հասնի իր գործնական նպատակին: Իսկ նպատակը նա շատ որոշ պարզում է ընծայականի մէջ: Դա գրուած է այն մտքով, որ լինի քրիստոնէական կրօնի, խղճի ազատութեան մի արձան, որ միշտ քարոզի յաջորդներին՝ հետեւող լինել ուխտապահներին, լինել քաջ նահատակ, այսինքն մարտիկ, եւ չլինել ցանկացող ուխտադրուժների գործերին (էջ 204). «զի հանապազորդ ընթեռնուցուս, — ասում է նա դիմելով իր հրամայողին, — լսելով զառաքինեացն զքաջութիւն, եւ զյետս կացելոցն զվատթարութիւն»: Նա իր գրուածքն անուանում է «մխիթարութիւն սիրելեաց եւ յոյս յուսացելոց, քաջալերութիւն քաջաց, կամակարութեամբ յարձակեալ ի վերայ մահուան» (էջ 8 եւ հտ.):Ահա նրա գրած պատմութեան նպատակը — ներշնչել ազատութեան, քաջութեան ոգին, տոգորել հերոսութեամբ, ընդհակառակն՝ ատելի դարձնել դաւաճանութիւնը, բռնութիւնը:

Մի անգամ որ այս է հեղինակի նպատակը, բնականաբար նրա գրուածքը ենթակայական է. նա չի կարողանում սառն, հանդիստ շարադրել, կռւում է գրչով. շահագրգռուած է իր պատմած դէպքերով, ինքը յուզւում է իր ազգի նեղեալ դրութեամբ, ցաւում է, տանջւում է դրա գիտակցութեամբ, հիանում, յափշտակւում է նրա հերոսների սխրագործութիւններով. բարկանում, ատում է իր ժողովրդի տառապանքների դրդիչներին, ոգեւորւում եւ աշխատում է նոյն զգացումները յարուցանել ընթերցողի մէջ, որպէսզի նրանք էլ իր հետ գովեն կամ պարսաւեն: Աւելացրէք վրան, որ նա

խորհրդածություններ է անում, պատմած դէպքերից խրատներ է հանում, որով պատմությունը դառնում է բարոյական ուսում։ Այդ նա իմաստալից ասացուածների ձեւով դնում է «յեղանակների» սկզբում, իբրեւ ամբողջ գլխի ընդհանուր իմաստ, եզրակացությունը, յաճախ նաեւ պատմուածքի ընթացքում։ Այդ դէպքերում խօսում է ոչ միայն կրօնասէրն ու հայրենասէրը, այլ աւելի բարոյագէտը։ Այսպէս, օրինակ, Երկրորդ «յեղանակի» սկզբում. «Որոց ոգիքն թուլացեալ են յերկնաւոր առաքինութենէն՝ յոյժ ընդ ահիւ անկեալ է բնութիւն մարմնոյ. յամենայն հողմոյ շարժի եւ յամենայն բանէ խռովի, եւ յամենայն իրաց դողայ. երազագէտ է այնպիսին ի կեանս իւրում, եւ յանդիւտ կորուստն յուղարկի ի մահուան իւրում։ Որպէս եւ ասաց ոմն ի հնոցն, մահ ոչ իմացեալ՝ մահ է, մահ իմացեալ՝ անմահութիւն է։ Որ զմահ ոչ գիտէ՝ երկնչի ի մահուանէ. իսկ որ գիտէ զմահ՝ ոչ երկնչի ի նմանէ։ Եւ այս ամենայն չարիք մտանեն ի միտս մարդոյ յանուսումնութենէ։ Կոյր զրկի ի ճառագայթից արեգական, եւ տգիտութիւն զըրկի ի կատարեալ կենաց։ Լաւ է կոյր աչօք քան կոյր մտօք։ Որպէս մեծ է հոգի քան զմարմին՝ այնպէս մեծ է տեսաւորութիւն մտաց քան զմարմնոց։ Եթէ ոք կարի առաւելեալ իցէ աշխարհական մեծութեամբ, եւ մտօքն աղքատագոյն, այնպիսին ողորմելի է քան զբազումս. որպէս եւ տեսանեմք իսկ՝ ոչ միայն ի չափաւոր մարդիկ, այլ եւ յոր մեծն է քան զամենայն։ Թագաւոր եթէ ոչ ունի զիմաստութիւն աթոռակից իւր, ոչ կարէ ի վիճակին իւրում վայելուչ կալ։ Իսկ եթէ առ մարմնաւորս այսպէս, ո՛րչափ եւս առաւել առ հոգեւորսն։ Բոլոր մարմնոյս հոգի է կենդանութիւն, իսկ մարմնոյ եւ հոգւոյ միտք են կառավար. եւ որպէս առ մի մարդ՝ այնպէս առ բոլոր աշխարհս։ Թագաւոր ոչ զիւր միայն տացէ պարտիս, այլ եւ որոց եղեւ պատճառք ի կորուստ» (էջ 23 եւ հտ.)։

Պատմաբանների տեսակէտով, անշուշտ, կարեւոր է հարց դնել, թէ Եղիշէի բերած նամակներն արդեօք իսկական պատճէննե՞ր են. գրական տեսակէտով այդ առանձին արժէք չունի։ Հայերի գրած նամակն օրինակ, — լինի իսկական թէ Եղիշէի մշակած, — դա ինքը մի ուրոյն գրական երկ է, որի մէջ ճարտարութեամբ ամփոփուած են նոյն գաղափարները, մասամբ գրեթէ նոյն ձեւով, ինչ որ Եզնիկ Կողբացու Հակաճառութեան մէջ, ինչ որ ինքը Եղիշէն սովորեցնել է կամենում քրիստոնէութեան եւ մազդէականութեան վերաբերմամբ։ Դրանով նա քրիստոնէական կրօնի ջատագովութիւնն է անում սիրով եւ պարզում սրա գերազանցութիւնը մոգական կրօնից։ Այդ էլ հէնց հարկաւոր է եղել նրան, քանի որ նա սոսկ լրատու չէ, անտարբեր եւ անկողմնակալ, ինչպէս որ այդպէս չեն եղել եւ չեն բոլոր ազգերի պատմագիրները։ Նրա նպատակն է եղել, ըստ իր ժամանակի պահանջի, ուսուցանել ժամանակի մարդկանց, որ պատրաստ լինեն քրիստոնէական կրօնի համար համոզմունքով նահատակուելու. «Յայսմ հաւատոյ զմեզ ոչ ոք կարէ խախտել, ոչ հրեշտակք եւ ոչ մարդիկ, ոչ սուր եւ ոչ հուր, ոչ ջուր, ոչ ամենայն զինչ եւ են դառն հարուածք... Ի քէն տանջանք եւ ի մէնջ յանձնառութիւնք. սուր քո՝ եւ պարանոցք մեր։ Զեմք ինչ լաւ մեք քան զառա—

ջինսն, որ յայսր վկայութեան վերայ եդին զինչս եւ զստացուածս եւ զմարմինս իւրեանց» (էջ 57 եւ հտ.)։ Ահա մի նշանաբան, որ, չաղախուած այդ նամակի առաջին ստորագրող Յովսէփի, Մաշտոցի առաջին աշակերտի, այլեւ նրա մի քանի ընկերների արիւնով, մեծ արժէք է ունեցել հետագայում։

Դա կորովի անվեհեր դիմադրութեան է մահուան յանուն գաղափարի, յանուն խորին համոզումի, մանաւանդ երբ այդ կապուած է «հայրենի աշխարհի» ու ժողովրդի շահերի հետ։ Արի անձեր էին հարկաւոր քաջալերելու համար։ «Քաջութեա՛մբ միայն մեռցուք, զանուն եւ զոգիս եւ եթ ժառանգեսցուք» (էջ 97),— ահա՛ թէ ինչ էր աղաղակում դիմադրութեան համար ոգեւորուած բազմութիւնը։ Աղուանքի հազարապետը պատգամաւոր է գալիս ու յայտնում իրենց երկրի դժբախտութեան մասին. «Իսկ գունդն Հայոց իբրեւ լուաւ զայս գոյժ գանութեան, ոչ ինչ թուլացեալ լքան ի քաջութենէն» (էջ 101), ասում է Եղիշէն։ Թէպէտ եւ դրսից օգնութիւն ստանալու յոյսը կտրուեց եւ տեսնում էին, որ իրենք սակաւաթիւ են, դարձեալ «ոչ ինչ վատասրտեալ դողային, այլ ըստ առաջին ուխտին խիզախէին եւ ասէին. «Պատրաստ եմք ի սպանանել եւ ի մեռանել» (էջ 105)։ «Իսկ քաջն Վարդան եւ ամենայն զօրքն որ ընդ նմա էին... ոչ ինչ զանգիտեցին առ ի յոյժ բազմութենէն... խումբ արարեալ յարձակէին» (էջ 108 եւ հտն.)։ «Յայնմ տեղւոջ դէտ ակն ի վեր ամբառնայր Արշաւիր Արշարունի, գոչէր առիւծաբար եւ յարձակէր վարազաբար, հարկանէր եւ սատակէր զՎուրկն քաջ զեղբայր Թագաւորին Լփնաց, եւ զբազում համհարզս նորին ընդ նմին սատակէր։ Եւ այնպէս ամենեքեան առ հասարակ այր զախոյեան իւր յերկիր կործանէր...» (էջ 110)։ «Դարձեալ յարձակէին ոչ սակաւ քաջութեամբ ի վերայ բերդլին եւ քաղաքացն զոր ունէին Պարսիկքն» էջ (111)։ «Իբրեւ ետես մեծն Վարդան զերկպառակութիւն աշխարհին իւրոյ, ոչ ինչ թերահաւատութեամբ զանգիտեաց... քաջալերեցաւ յանձն իւր, եւ քաջալերեաց զզօրսն իւր» (էջ 142)։ Ամբողջապէս քաջութեան եւ արութեան ներբող է սպարապետի գեղեցիկ ճառը, որ ճակատամարտից առաջ ասում է նա իր «քաջ նիզակակիցներին», որոնք սպարապետի հետ մտել էին շատ պատերազմների մէջ եւ «քաջապէս յաղթել թշնամիներին»։ «Երկիւղ՝ թերահաւատութեան է նշանակ, զթերահաւատութիւն մեք ի մէնջ վաղ մերժեցաք, ընդ նմին եւ երկիւղն փախիցէ ի մտաց ի խորհրդոց մերոց» (էջ 150)։ Այսպէս է իր ճառը վերջացնում «առաքինի զօրավարն» («առաքինի» հին իմաստով, իբրեւ կտրիճ, արի հոգով ու մարմնով), մի ճառ, որ արժանի էր ոչ միայն քաջամարտիկ զօրավարին, այլեւ Սահակի թոռան ու կրօնական ուսումն ստացած աշակերտին։ Քաջութեամբ մարտնչելու մի խրախոյս է եւ Ղեւոնդ Երէցի ճառը։ «Մեծ սպարապետն Հայոց» կազմակերպում է իր գնդերը եւ անձամբ մարտնչում. «Իսկ կորովին Վարդան իւրովք քաջ նիզակակցօքն ոչ սակաւ նախճիրս ի տեղւոջն գործեաց, յորում տեղւոջ եւ ինքն իսկ արժանի եղեւ առնուլ զկատարեալ նահատակութեանն պսակ» (էջ 171 եւ հտ.), «նահատակութիւն» հին իմաստով իբրեւ կտրճութիւն, քաջամարտկութիւն։

Այս իղձալն է ահա քարոզում Եղիշէն Վարդան սպարապետի եւ նրա ընկերների օրինակով: Գաղափարի համար նա նոյն անյողդողդ անդրդուելիութիւնն է օրինակ դնում նաեւ ամբողջ ութերորդ «յեղանակով», ուր նըկարագրում է Ղեւոնդեան քահանաների նահատակութիւնը, Խորէնի եւ Աբրահամի վկայաբանութիւնը, բանտարկուած նախարարների եւ նրանց ու պատերազմի մէջ ընկածների կանանց տոկուն համբերութիւնը: Այսպիսի օրինակներ էին հարկաւոր, որովհետեւ թէպէտ եւ պատերազմը վերջացել էր, բայց չէր դադարել իդէոլոգիական խաղաղ պայքարը պարսից թագաւորութեան դէմ: «Եւ եղեւ ապականեցաւ հրաման թագաւորին... աղաղակէին եւ ասէին գոհանալով արք եւ կանայք եւ ամենայն ռամիկ բազմութիւնն՝ Պատրաստ եմք ի հալածանս եւ ի մահ» (էջ 96): «Ոչ երեւէր այնուհետեւ առաւել տէրն քան զծառայ, եւ ոչ ազատ փափկացեալ քան զգեղջուկ վշտացեալ, եւ ոչ ոք քան զոք նուաղեալ յարութենէ: Մի սիրտ յօժարութեան ամենեցուն արանց եւ կանանց, ծերոց եւ տղայոց»: Այսպէս ուրեմն, ազգովին դիմագրաւումն արտաքուստ սպառնացող վտանգներին:

6. Յօրինուածքը: — Եղիշէն ունի գեղեցկի զգացումը եւ աշխատում է, որ իր երկը կրի գեղեցկի դրոշմը: Նրա գրուածքի մէջ սկզբից մինչեւ վերջն իշխող է գեղարուեստը: Գործողութիւնն առաջ է տարւում մասերի ներդաշնակ բաժանումով, երկրորդական, բայց կենդանի, բնական մանրամասնութիւններով, զարդարուն ու ծաղկուն ոճով, նկարէն պատկերներով ու հանդիսաւորութեամբ: Շարադրում է մերթ արագ թափով, կորովի, եռանդուն ու աշխուժ. մերթ դանդաղ ու քաղցրաբան: Թէպէտ եւ երբեմն փոքր ինչ ճապաղ է, բայց նրա երկն իր ամբողջութեամբ վայելուչ է ու գըրաւիչ, յաճախ նոյնիսկ յափշտակիչ: Դրա պատճառն այն է, որ այնտեղ ամէն ինչ բխում է անկեղծ ու խորին զգացումից, չկայ շինծու արուեստակութիւն: Բնականօրէն առաջացած են եւ բանաստեղծական պատկերներն իրենց բազմազան երանգներով, եւ հարուստ ճարտասանական ձեւերն ուժեղ ու դիպուկ խօսքերով: Մի բան, որ սկզբից զգալի է նրա գրուածքի մէջ, այն է, որ նա փայլուն ոճի հետ ունի աչքի զարնող մշակուած պարզ ու յստակ խօսք. կատարելապէս իշխում է լեզուին եւ յօրինում է մեծ ճաշակով, միշտ յարմարուելով ներքին բովանդակութեանը: Այսպիսով մեր այս հեղինակը ստեղծել է իր երկի շատ հատուածներով մի այնպիսի բանաստեղծական պըրոզա, որ շատ բնորոշ է, երբեմն շքեղ, լի քնարերգութեամբ, եւ որի նմանը դեռ չի առաջ բերել մեր նոր գրականութիւնը:

Գեղեցիկ ոճական ձեւի հետ՝ այս հեղինակը ցոյց է տալիս մեծ արուեստ նաեւ յօրինուածքի ուրիշ կողմերով: Նա, գործողութիւնը կենտրոնացնելու եւ շարժում առաջ բերելու համար, գիտէ դէպքերը պատմել ուրիշի բերանով, ինչպէս, օրինակ, Վասակի արարքները Վարդանի բացակայութեան ժամանակ, երբ նա Աղուանքում էր, նրան պատմում է պուժկանը: «Հայոց պատերազմը» մերթ դրամատիկ ձեւ է ստանում գործող անձերի արտասանած ճառերով: Իսկ երբ նա ինքը վիպում է, նրա պատմուածքը մերթ «մեղուաշուրթն» է, լցուած համակրութեամբ ու սիրով առ գործող

անձերը, մերթ ատելութեան եւ զայրոյթի բուռն պոռթկում է, որով նա կրակ է թափում իր հակակրած անձերի գլխին: Ամէն դէպքում էլ այս ճարտասան բանաստեղծն իր զգայուն սիրտը, իր խոկերն է բաց անում ընթերցողի առաջ նոյնիսկ սիրած հերոսների ճառերով ու խօսքերով:

Եղիշէն վարպետ է նաեւ բնութագրութեան: Բայց նա անձերի արտաքինը չի նկարագրում, կամ շատ քիչ է այդ անում: Դա բարոյագէտի եւ ուսուցողի աչքին սակաւ արժէք ունի, եւ առհասարակ միջնադարեան քրիստոնեայի համար կարեւորը մարմինը չէր, այլ հոգին: Եւ մեր այս Պատմագիրը մանրամասն ուսումնասիրում է գործող անձերի ներքինը, բայց ոչ ընդարձակ չափով իր սիրելի հերոսների, ինչպէս են՝ Վարդանը եւ միւսները: Այս նկատմամբ նա բաւականանում է սովորաբար բնորոշ մակդիրներով, ինչպէս՝ արին Վարդան, Մեծն Վարդան, քաջն Վարդան, առաքինի զօրավարն [Վարդան], կորովին Վարդան: Եղիշէի համար աւելի կարեւորը մասսան է, եւ նա ուժեղ գրչով շարժման մէջ է դնում, հանդէս է բերում ոգեւորուած ու մարտնչող բազմութիւնը թէ՛ ժողովրդի, թէ՛ եկեղեցականութեան: Շատ աւելի նա կանգ է առնում թշնամիների բնութագրի վրայ — Յազկերտի, Միհրներսեհի, մոգպետի ու մոգերի եւ Վասակի: «Հայոց պատերազմի» անմիջական նախաձեռն պատճառ համարում է նա, ինչպէս տեսանք, Յազկերտին ու Միհրներսեհին. ուստի նա շատ խիստ գոյներով նկարում է այդ թագաւորի բնաւորութիւնը եւ շարունակ չի մոռանում նրան: «Սատանան նրան իր համար գործակից գտաւ եւ բոլոր մթերած թոյները դուրս թափեց, ու դեղած (թունաւորուած) նետերով լցրեց նրան ինչպէս մի կապարճ թունաւորուած նետերով: Եւ սկսեց նա եղջերցել (պոզահարել) անօրէնութեամբ, դոռոգանում ու գոռալով հող էր հանում երկրի չորս կողմը, եւ մեզ, Քրիստոսին հաւատացողներիս, իրեն թշնամի ու հակառակորդ էր ցոյց տալիս, եւ նեղում, տագնապում էր անխաղաղասէր կեանքով: Որովհետեւ շատ սիրելի էր նրան խռովութիւն, արինահեղութիւն, այդ պատճառով նա իր մէջ տարուբերում էր, թէ ո՛ւմ վրայ թափեմ դառն թոյները, կամ ո՛ւր արձակեմ շատ նետերը: Եւ մեծ յիմարութիւնից ինչպէս մի կատաղի գազան յարձակուեց Յունաց աշխարհի վրայ...» (էջ 12 եւ հտ.):

Յետոյ էլ ուրիշ անգամներ մեր Պատմագիրը դառնում է այս թագաւորի բնութագրին, որովհետեւ նա, իբրեւ գեղարուեստական գրող, ամէնը չի կուտակում մի տեղ՝ ծանրաբեռնելով իր գործը: Այսպէս, օրինակ, քիչ յետոյ գրում է. «Եւ այսպէս հպարտացաւ, բարձրամտեց, մարդկային բնութիւնից վեր ընդվզելով սանձակոտոր էր լինում ոչ միայն մարմնական պատերազմի գործերի մէջ, այլ իրեն մեծ ոմն էր կարծում, քան իր հայրենի կարգի բնութիւնը: Այս պատճառով կեղծաւորութեամբ նա թաքցնում էր իրեն, իր կարծիքով, — եւ ինչպէս երեւում էր իմաստուններին, — անմահների կարգի մէջ էր դնում իրեն: Եւ սաստիկ բարկացած էր Քրիստոսի անուան վրայ»: Նա, այդ թագաւորը, խաբեբայ է, երկդիմի մտքով է վարւում (էջ 17), թաքցնում է իր մտադրութիւնը (էջ 19), հէնց որ արտաքուստ մի

փոքր ապահովւում է, հալածանք է սկսում (էջ 20–22)․ կեղծաւոր է (էջ 25), աշխատում է քրիստոնեաներին խորամանկութեամբ մոգական կրօնին դարձնել։ «Իսկ անօրէն իշխանն իբրեւ գիտաց եթէ յայտնեցաւ խորամանկութիւն խորհրդոյն... սկսաւ ծածուկ նետիւք խոցոտել զմիտս իւրոյ չարութեանն... Մերթ չանթէր գալարէր իբրեւ զօձ թունաւոր, մերթ պարզէր գոչէր իբրեւ զառիւծ գայրացեալ․ գելոյր եւ տապալէր երկդիմի մտօք, զխորհուրդս կամացն կամէր կատարել» (էջ 26)։ Առհասարակ սկզբից մինչեւ վերջը Եղիշէն բաց չի թողնում Յազկերտի, իբրեւ գլխաւոր գործող անձի, հոգեկան վիճակի փոփոխութիւնները պարզելը։ Եւ այդ անում է նա մեծ վարպետութեամբ եւ ուժեղ, թանձր գոյներով։

Դառնութեամբ լի է նա մոգերի ու մոգպետի վերաբերմամբ եւս նրանց ունեցած ազդեցութեան համար․ «Իսկ չարասէր մոգպետն հանդերձ մեծ հազարապետաւն չնչեաց զչարախօսութիւն, եւ բորբոքեաց զթագաւորն իբրեւ զհուր անշիջանելի»։ Նրանք, — ասում է, — «անլուծելի հանգոյցներով կապուած էին կռապաշտութեան մէջ, վառուած ու տաքացած ինչպէս մի հնոց՝ եկեղեցու սուրբ ուխտն այրելու համար, որովհետեւ այնպիսիներըըն իսկապէս իրենց կեանքում բնակւում էին ինչպէս թանձրամած խաւարի մէջ, եւ նրանց հոգիներն արգելուած էին մարմնի մէջ, ինչպէս կենդանին գերեզմանի մէջ, որոնց վրայ ամենեւին չի ծագում Քրիստոսի սուրբ լոյսի նշոյլը։ Նաեւ օրհասական արջերը վերջի շունչը փչելիս՝ աւելի մեծ ուժով են կռւում, եւ իմաստունները տեղի տալով փախչում են նրանցից։ Այսպիսի մի ձեւով եկել հասել է աւերութեան վախճանը․ եթէ խփւում են՝ չեն ըզգում, եւ եթէ արտաքին թշնամի չի գտնւում, իրենք իրենց հետ են մարտնչում, կռւում։ Իսկապէս յարմար է գալիս նրանց վրայ մարգարէի խօսքը, որ ասում է․ «Մարդ իր քաղցից շուռ կը գայ եւ կ'ուտի իր մարմնի կէսը»։ Սրա նման եւ Տէրն ինքն ասում է․ «Ամէն տուն ու թագաւորութիւն որ ինքն իր մէջ բաժանուի, չի կարող հաստատ մնալ»։ Արդ, ի՞նչ ես ծեծկւում, — շարունակում է Եղիշէն դիմելով Յազկերտին եւ չկարողանալով իր ցասումը զսպել նոյնիսկ այդ մասին գրելիս․ — ի՞նչ ես կռւում, ի՞նչ ես այրւում, ի՞նչ ես բորբոքւում, ինչի՞ չես հանգչում․ ինչո՞ւ ես խորհրդի կանչում այնպիսիններին, որոնք ձեր հոգիները քաշել հանել են ձեզնից եւ այդ անապականն ապականութիւն դարձրել, իսկ ձեր ապականելի մարմինը գէշաքարշ անելով՝ ինչպէս մի զզուելի մեռելոտի դէն են գցել։ Ապաքէն ա'յդ ես կամենում, որ ծածկուի ամբարիշտ խորհուրդը։ Կը տեսնե'ս, երբ կը յայտնուի, ապա կ'իմանաս դրա ելքն ու վերջը» (էջ 14 եւ հտ․)։

Ոչ պակաս եւ նոյնիսկ աւելի մեծ ատելութեամբ ու մանրամասնօրէն նա գծագրում է Վասակի դէմքը, մի մարդ, որ ամէն միջոցներ գործադրելով երկփեղկում է հայոց բանակը եւ պատճառ դառնում դրա թուլացման։ Մի մարդ, — ասում է նա, — որ «ոչ ինչ եթող չարիս՝ զոր ոչ գործեաց ի կեանս իւր, եւ ոչ ինչ մնաց ի մեծամեծ չարեաց՝ որ ոչ անցին ընդ նա ի մահուան նորա»։ Սոսկալի դառն է պատկերուած այդ թշուառականի անկումըն ու վախճանը․ Եղիշէի նկարագիրը (էջ 197–204) քստմնեցնող ազդեցու-

թիւն է թողնում։ Եւ այդ բաւական չէ, հեղինակը վերջացնում է այսպէս. «Գրեցաւ յիշատակարանս այս վասն նորա, առ ի կշտամբումն յանդիմանութեան մեղաց նորա. զի ամենայն՝ որ զայս լուեալ գիտասցէ, նզովս ի հետ արկցէ, եւ մի՛ լիցի ցանկացող գործոց նորա»։ Եւ Եղիշէն հասել է իր նպատակին. դարեր շարունակ նրա այս գիրքն ազդել է հետագայ սերունդների վրայ եւ մեծ ժողովրդականութիւն է վայելել, իսկ «Վասակ» անունը ստացել էր մի ժամանակ «դաւաճան» բառի նշանակութիւնը։

Ունի գեղեցիկ նկարագիրներ մարտի. այստեղ բերենք միայն Աւարայրի ճակատամարտը (էջ 169 եւ հտն.)։

«Կարգէր եւ կազմէր [Վարդան] զճակատն յօրդորելով ընդ ամենայն երեսս դաշտին դէմ յանդիման Արեաց գնդին, առ ափն Տղմուտ գետոյն։ Եւ իբրեւ այս այսպէս պատրաստեցան, երկոքեան կողմանքն լի ոսոխութեամբ եւ մեծաւ բարկութեամբ զայրանային, եւ զազանացեալ զօրութեամբ յիրեարս յարձակէին երկոքեան. եւ ամբոխ աղաղակին երկոցունց կողմանց իբրեւ ի մէջ ամպոց շփոթելոց՝ ճայթմունս գործէր, եւ հնչումն ձայնից զքարանձաւս լերանցն շարժէր։ Ի բազմութենէ սաղաւարտից եւ ի փայլիւն պատենազէն վառելոցն իբրեւ նշոյլք ճառագայթից արեգական հատանէին։ Նա եւ ի բազում սուսերացն շողալ, եւ ի ճօճել բազմախուռն նիզակացն իբրեւ յերկնուստ ահագին հրաձգութիւնք եռային։ Քանզի ո՞վ իսկ է բաւական ասել զմեծամեծ տագնապ ահաւոր ձայնիցն, ո՛րպէս կոփինք վահանաւորացն եւ ճայթմունք լարից աղեղացն զլսելիս ամենեցուն առ հասարակ խլացուցանէին։

«Անդ էր տեսանել շատ մեծի տագնապին եւ զաղէտս անդրաւ տարակուսանացն երկոցունց կողմանցն, առ ի յանդուգն յարձակմանէն զմիմեանս բախելով. քանզի թանձրամիտքն յիմարէին եւ վատասիրտքն լքանէին, քաջքն խիզախէին եւ նահատակքն գոչէին։ Եւ խումբ արարեալ ամենայն բազմութեանն՝ գլեալ ի մէջ փակէին, եւ զանգիտեալ գունդն Պարսից ի դժուարութենէ գետոյն՝ զառեղեան գեռալ սկսան։ Իսկ գունդն Հայոց հասեալ անցանէին, ձի ի վերայ առեալ յարձակէին մեծաւ զօրութեամբ։ Սաստկապէս բախեալք ընդ միմեանս, յերկոցունց կողմանց բազում վիրաւորք յերկիր անկեալ դիաթաւալ խաղային։

«Յայնմ մեծ տագնապի ի վեր հայեցաւ քաջն Վարդան, եւ տեսանէր զընտիր ընտիր քաջ նահատակաց Պարսից զօրուն՝ զի զձախակողմն շարժեցին զՀայոց գնդին, մեծաւ ուժով յարձակէր ի տեղին, եւ զաջ թեւն Պարսից գնդին բեկեալ՝ արկանէր զզազանօքն, եւ շրջան առեալ կոտորէր մինչեւ ի նոյն տեղի։ Եւ այնպէս շատ տագնապի ի վերայ հասուցանէր, մինչեւ գունդն Մատեան ջահեալ բաժանեցան ի մեծամուր պատրաստութենէն, դեռ եւս քաջ քաջ ի փախուստ դառնային։

«Ապա դէտ ակն ի վեր համբառնայր Մուշկան Նիւսալաւուրտ, քակեալ զօմանս տեսանէր ի գնդէն Հայոց, եւ զկնի մնացեալ ի հովիտս լերանցն։ Վասն որոյ զաղաղակ բարձեալ՝ քաջալերէր շուրջ զիւրեաւ զզօրս Արեաց, որք զտեղի առեալ կային ընդդէմ գնդին Վարդանայ։ Եւ անդէն ի տեղւոջն երկոքին կողմանքն զպարտութիւն խոստովանէին, եւ առ յոյժ թանձր անկեալ դիականց իբրեւ զքարակոյտ դերբկաց երեւէին։ Զայն իբրեւ ետես Մուշկան Նիւսալաւուրտ, մնայր դազանացն Արտաշրի, որ ի վերայ նոցա նստէր ի բարձր դիտանոցին իբրեւ յամուր քաղաքի. եւ ի ձայն մեծ գալարափողոցն զիւր գունդսն ստիպէր, եւ յառաջամարտիկ զօրօքն գնա ի մէջ փակէր։

«Իսկ կորովին Վարդան բերովք քաջ նիզակակցօքն ոչ սակաւ նախճիրս ի տեղւոջն

գործեաց, յորում տեղւոջ եւ ինքն իսկ արժանի եղեւ առնուլ զկատարեալ նահատակութեանն պսակ։

«Եւ յերկարեալ գործոյ պատերազմին՝ օրն տարաժամէր, եւ մօտ առ երեկս կարճանէր. բազմաց օրահասք մահու հասանէին, մանաւանդ ի թանձրութենէ զիականց մօտ առ մօտ խառնեալ իբրեւ զփայտահարս մայրաւորաց։ Անդ էր տեսանել զբեկումն նիզակաց եւ զխորտակումն աղեղանց. վասն այնորիկ եւ ոչ կարէին կալ ճշմարտիւ ի վերայ սուրբ մարմնոյ երանելեացն. եւ սաստիկ խուճապ տագնապի էր կողմանցն երկոցունց անկելոց։ Եւ որք մնացեալքն էին՝ վառեալք եւ ցրուեալք լինէին ի լեռնադաշտս ամուր ձորոցն. եւ յորժամ պատահէին միմեանց՝ դարձեալ միւսանգամ զմիմեանս սատակէին։ Եւ մինչեւ ի մուտս արեգականն անդադար լինէր գործ դառնութեանն։

«Եւ քանզի գարնանային էր ժամանակն, ծաղկալից դաշտքն դառնային յորդահոսանս արեանց բազմաց։ Մանաւանդ յորժամ տեսանէր ոք զբազմակոյտ զիականցն անկելոց, սիրտն բեկանէր եւ աղիքն գալարէին՝ լսել զմնչիւն խոցելոցն եւ զմռնչիւնս բեկելոցն, զթաւալգլոր խաղալ սողալ վիրաւորացն, զփախուստ վատացն, զթաքուստ լքելոցն, զսրտաթափումն զգանարի արանցն, զճչիւն կանացեացն, զողբս սիրելեաց, զաշխարումն մերձաւորաց, զվայ եւ զաւաղ բարեկամացն։ Քանզի ոչ եթէ կողմ էր որ յաղթեաց, եւ կողմ էր որ պարտեցաւ, այլ քաջք ընդ քաջս ելեալ՝ երկոքին կողմանքն ի պարտութիւն մատնեցան»։

Խօսել Եղիշէի «Հայոց պատերազմի» մասին, կարելի չէ մէջ չբերելով նրա գովքը պատերազմի ժամանակ ընկած եւ բանտարկուած նախարարների կանանց մասին։ Դա մեր Պատմագրի երկի վերջին հատուածն է, միաժամանակ եւ նրա բանաստեղծական ընտրելագոյն կտորներից մէկը, որի նմանները իր ժամանակի համաշխարհային գրականութեան մէջ անգամ քիչ կան։ Բերենք դրանից մի հատուած.

«Ցնծայք փափկասունք Հայոց աշխարհին, որ զրկեալք եւ զգուեալք էին յիւրաքանչիւր բնատեղւոջս եւ ի գահաւորակս, հանապազ բոկ եւ հետի երթային ի տուն աղօթից, անձանձրոյթ խնդրեալ ուխտիւք՝ զի համբերել կարասցեն մեծի նեղութեանն։ Որ ի մանկութենէ իւրեանց սնեալ էին ուղղովք զուարակաց եւ ամճովք էրէոց, խոտաբուտ կենօք իբրեւ զվայրենիս ընդունէին զկերակուրն մեծաւ խնդութեամբ, եւ ոչ յիշէին ամենեւին զառօրական փափկութիւնն։ Սեւացեալ ներկան մորթք մարմնոյ նոցա. վասն զի ցերեկ արեւակէզք էին եւ զամենայն գիշերն գետնաբեկք։ Սաղմոսք էին մշտնջենաւորք՝ մրմունջք ի բերանս նոցա, եւ մխիթարութիւնք կատարեալք ընթերցուածք մարգարէիցն։ Միաբանեցին երկու երկու իբրեւ ամոլք հաւանք եւ հաւասարք՝ ուղիղ տանելով զակօսն արքայութեան, զի առանց վրիպելոյ հասցեն ի նաւահանգիստն խաղաղութեան։

«Մոռացան զկանացի տկարութիւն, եւ եղեն արուք առաքինիք ի հոգեւոր պատերազմին. մարտ եդեալ կռուեցան ընդ մեղսն կարեւորս, հատին կտրեցին եւ ընկեցին զմահաբեր արմատս նորա։ Միամտութեամբ յաղթեցին խորամանկութեան, եւ սուրբ սիրով լուացին զկապուտակ ներկուածս նախանձուն. հատին զարմատս ագահութեան, եւ չորացան մահաբեր պտուղք ոստոց նոցա։ Խոնարհութեամբ կոփեցին զամբարտաւանութիւն, եւ նովին խոնարհութեամբ հասին երկնաւոր բարձրութեանն։ Աղօթիւք բացին զփակեալ դրունս երկնից, եւ սուրբ խնդրուածովք իջուցին զհրեշտակս ի փրկութիւն. լուան աւետիս ի հեռաստանէ, եւ փառաւորեցին զԱստուած ի բարձունս։

«Այրք որ ի նոսա էին՝ եղեն վերստին հարսունք առաքինութեան, եւ բարձին յանձանց զնախատինս այրութեանն: Իսկ կանայք կապելոցն կամօք կապեցին զմարմնաւոր ցանկութիւնս, եւ եղեն կցորդ չարչարանաց սուրբ կապելոցն. ի կեանս իւրեանց նմանեցին քաջ նահատակացն մահուամբ, եւ ի հեռաստանէ եղեն վարդապետք մխիթարիչք բանտարգելեացն: Մատամբք իւրեանց վաստակեցին եւ կերակրեցան, եւ զկարգեալ ռոճիկ նոցա յարքունուստ՝ ամ յամէ թոշակ առնէին եւ տային տանել նոցա ի մխիթարութիւն: Անարիւն ճիպռանց նմանեցին որ երգոյն քաղցրութեամբ առանց կերակրանաց կեան, եւ կենդանի են միայն զօդն ծծելով, զանմարմնոցն բերեն զնմանութիւն:

«Բազում ձմերաց հալեցան սառնամանիք, եհաս գարուն եւ եկին նորեկ ծիծեռունք. տեսին եւ խնդացին կենցաղասէր մարդիկ, եւ նոքա ոչ երբէք կարացին տեսանել զանձկալին իւրեանց: Ծաղիկք գարնանայինք յիշատակեցին զգսակասէր ամուսինս նոցա, եւ աչք իւրեանց կարօտացան տեսանել զցանկալի զեղ երեսաց նոցա: Սպառեցան բարակք որսականք, եւ խցեալ կուրացան արշաւանք որսորդաց: Բնագրօք յիշատակեցան նոքա, եւ ոչ մի տօնք տարեկանաց ոչ ածին զնոսա ի հեռաստանէ. ի ճաշակատեղս նոցա հայեցան եւ արտասուեցին, եւ յամենայն յատեանս յիշեցին զանուանս նոցա: Բազում արձանք կանգնեալ էին յանուն նոցա, եւ անուանք իւրաքանչիւր նշանակեալ ի նոսա: Եւ իբրեւ այնպէս յամենայն կողմանց ալէկոծ լինէին միտք նոցա, ոչ ինչ կասեալ թուլացան յերկնաւոր առաքինութենէն: Արտաքնոցն երեւէին իբրեւ այրիք սգաւորք եւ չարչարեալք, եւ յոգիս իւրեանց զարդարեալք եւ մխիթարեալք երկնաւոր սիրով:

«Ոչ եւս սովորեցին հարցանել զեկեալ ոք ի հեռաստանէ, եթէ ե՞րբ լինիցի մեզ տեսանել զսիրելիսն մեր. այլ այն էին խնձք աղօթից նոցա առ Աստուած եթէ որպէս սկսանն՝ քաջութեամբ ի նմին կատարեսցին լի երկնաւոր սիրովն»:

Եղիշէի երկի այս հատուածը, որից միայն մի մասը բերուեց այստեղ՝ գորովալից քնքշութեամբ ոգուած մի աջանչելի հիմն է առաքինի կանանց, «փափկասուն տիկինների» մասին, որոնք տոկունութեամբ տանում են կեանքի ամէն նեղութիւն եւ սրի տղամարդիկ են դառնում, որպէսզի արժանաւոր լինեն հայրենիքի համար ընկած իրենց ամուսին դիցազներին եւ աքժանապէս քաջալերական կոչ ուղղեն հեռաստանում բանտարկուած իրենց հարազատներին:

## ՂԱԶԱՐ ՓԱՐՊԵՑԻ

1. **Կենսագրութիւնը**: — Այս պատմագրի մասին կենսագրական տեղեկութիւններ ունենք շնորհիւ այն հանգամանքի, որ նրանից մնացել է մի «Թուղթ» (1), այսինքն՝ մի գրութիւն, որ ուղղուած է մարզպան Վահան Մամիկոնեանին: Նա ծնուած էր մօտաւորապէս 443 թուականին, գուցէ, մէկ կամ երկու տարի առաջ, Արագածոտն գաւառի Փարպի գիւղում, ինքն իրեն

(1) Ղազարայ Փարպեցւոյ Պատմութիւն Հայոց եւ Թուղթ, աշխատութեամբ Գ. Տէր-Մկրտչեան եւ Ստ. Մալխասեանց, Տփղիս 1904: Այստեղ նաեւ մատենագրութիւն Փարպեցւոյ մասին: Նոյնը Թիֆլիս 1907: Էջերը ցոյց են տրուած այս տպագրութիւնից:

կոչում է «Փարպեցի» (1)։ Հաւանօրէն նա որեւէ ազգակցութիւն կամ մերձաւոր կապ է ունեցել Մամիկոնեան կամ Արծրունի տոհմի հետ, քանի որ Հմայեակ Մամիկոնեանի այրին՝ Ձուիկ, Վարդան Մամիկոնեանի եղբօր կինը, Ազատ Արծրունու քոյրը, իր չորս երեխաների հետ հաստատ մնացել է Վրաստանում և Ղազարին իր քոյր Անուշ Վռամի մօտ, որ կինն էր Վրաց Աշուշա բդեշխի։ Նա «Թղթի» մէջ գրում է Վահանին. «Երանելի մայրն քո յորժամ առ բդեշխն ած զձեզ, յորում դրան և զմեզ ուսուցանէին, սակայն թէպէտ եւ ըստ տիոց աւագագոյնք քան զձեզ էաք, այլ սննդակիցք էաք ձեզ եւ խաղակիցք, կրելով ի խաղու զարկանելիս ձեր զկնի ձեր. սնուցանէ մայրն ձեր օրհնեալ եւ Անուշ—Վռամ ըստ իւրեանց հոգեսիրութեանն եւ զմեզ ընդ ձեզ՝ որպէս եւ զձեզ» (2)։

Առաջին կրթութիւնը Ղազարը ստացել է Աշուշա բդեշխի տանը։ Ինչպէս երեւում է, ուսումն արդէն թափանցած էր ոչ միայն Մամիկոնեանների, այլեւ Կամսարականների եւ Արծրունիների ընտանիքները։ Վահանի մօր համար, որ Ազատ Արծրունու քոյրն էր, Ղազարը գրում է Հայոց Պատմութեան մէջ, թէ «եղեւ կին անուանի եւ առաւելեալ ամենայն լաւ եւ մտաւոր մասամբք» (3)։ Իսկ «Թղթի» մէջ (4) վկայութեան կոչելով Վահանի եղբօրորդիներին, ազգականներին՝ ասում է. «Եւ ունին երեքեան արքդ զամենայն սննդեան եւ խրատու մասն եւ զհրահանգ հոգեպէս եւ մարմնապէս, եւ զծանօթութիւնս ուղղափառ հաւատոյ՝ յօրհնելոյ ի մօրէն քումմէ եւ ի քէն ի տեառնէ»։

Յետոյ նա ուսում է առել Վահան Մամիկոնեանի քեռու, Ազատ Արծրունու մօտ, որ պատանեկան հասակից կրօնաւորել էր։ «Մնեալ եւ ուսեալ առ ոտս առաքինակրօն երանելւոյն Ազատայ, որ էր ազգաւ ի հոյակապ եւ յականաւոր տոհմէն Արծրունեաց, որդի Վասակայ, եղբօր Տաճատայ եւ Գոտորզի» (5)։ Ազատի ձեռով էլ Ղազարը դարձել է կրօնաւոր (6)։

Թէ ի՛նչ է սովորել նա իր ուսուցիչների մօտ՝ այդ չգիտենք. միայն երբ Ղազարին բամբասում են, թէ «գիր ոչ կարդայ, եւ զընթերցուածն այնպէս ասէ անսայթաք՝ որպէս թէ գրոցն», Ղազարը բացատրում է, թէ «մեր երանելի վարդապետքն զամենայն զկտակարանս եկեղեցւոյ երիցս եւ չորիցս ուսուցեալ մեզ ի սկզբանէ մինչեւ ի կատարած գրոցն՝ համարս պահանջէին ի մէնջ զնոյնս, եւ իբրեւ զԴաւթի Սաղմոսն պաշտեալ մեզ հարկաւորէին», այսինքն ստիպում էին անգիր ասել։ «Իսկ այժմ յոլովք ի լերբ մախողաց, — աւելացնում է նա, — եւ զանուանս անգամ եւ կամ զքանօնութիւնս կանոնեալ եկեղեցական գրենոյ հազիւ կարեն գիտել, եւ գրգռութեամբ նա–

(1) Անդ, էջ 13։

(2) «Թուղթ», էջ 411։ Տե՛ս եւ Պատմութիւն Հայոց, էջ 242։

(3) Պատմութիւն Հայոց, էջ 242։

(4) «Թուղթ», էջ 422 եւ հտ.։

(5) Պատմութիւն Հայոց, էջ 13։

(6) «Թուղթ», էջ 411։

*խանձարկու գիւին, նստեալք առ միմեանս լու ի լու այլոցն զինչպէս խօսին»* (էջ 435)։

*Ուսումը կատարելագործելու համար նրան տանում են Բիւզանդիոն. «Տարեալ զիս ըստ վարդապետաց իմոց հրամանի ի Հոռոմս՝ ժամանակեցի անդ ամս»։ Այս «վարդապետներից» մէկն Աղան Արծրունին էր, միւսները յայտնի չեն։ Թէ ի՛նչ է ուսել նա հոռոմներից, այդ մասին չի խօսում։ Նա հիացած է յունական գիտութեամբ։ Հայոց Պատմութեան առաջաբանի մէջ նկարագրելով Կ. Պոլիսը՝ վերջն աւելացնում է. «Վտակք գիտութեան, որպէս ի Թագաւորանիստ վայրի, յորդեալ բղխեն ի քաղաքէն. որպէս եւ յամենայն կողմանց յաշխարհէն Յունաց քաջ ուսեալքն անդ փութան հանդիսանալ, եւ մինչեւ ցայսօր առաւելեալ տարածին յամենայն կողմանս նորա իմաստութեան վտակք»* (էջ 11)։ *Եւ ինքը Ղազարն էլ պարծենում է իր «առաւելեալ շնորհով»։ «Իմ ըստ կարի պարապեալ յունական ուսմանցն, եւ ըստ զօրելոյ տկարամտութեանս իմոյ կարդացեալ զգիրս արանց սրբոց», ինչպէս են Աթանաս Աղեքսանդրացի, Կիւրեղ Աղեքսանդրացի, Կիւրեղ Երուսաղեմացի, Բարսեղ Կեսարացի, Գրիգոր Նազիազանցի, «եւ զմերոյին առաքելանման նահատակին Գրիգորի, զվարդապետէն Հայոց»։ Դրանք ուղղափառ գրողներն են* (էջ 418 *եւ հտ.*)։ *Վերադառնալուց յետոյ, գրում է նա, «կեցի առ Կամսարականսդ յամենայն ամբոխն, մինչեւ յամս նուաճման ձերոյ», ուրեմն մինչեւ* 484 *թ., երբ Վահանը ենթարկւում է պարսից թագաւորին։ Ինչպէս երեւում է, Ղազարն էլ մասնակից է եղել Վահանի ու Կամսարականների պայքարին ընդդէմ պարսիկների։ «Եւ զհետ այնորիկ, — շարունակում է նա, — որպէս թէ ձանձրացեալ յաշխատութենէ չիոթիցն՝ կամեցայ պարապել աղօթից եւ հանգչել։ Եւ երթեալ ի Սիւնիս՝ կեցի անդ ամս երկուս, զձմեռն ի քարայրի, առ առն միում հռչակելոյ ի բնակչաց գաւառին յամենայն կրօնաւորութիւնս, որում անուն էր Մովսէս, եւ տեղին անձուկ, եւ զամառն, յաղագս տօթոյ տեղւոյն, քահանայապետ աշխարհին տէր Մուշէ տանէր զիս առ ինքն՝ ո՛ւր եւ լինէր ի հովու»։*

*Երբ* 486 *թ. Վահան Մամիկոնեանը դառնում է Հայաստանի մարզպան, սկսում է բարեկարգութիւններ անել երկրում. Նա նորոգել է տալիս Վաղարշապատի կաթողիկէ եկեղեցին, վանք ու միաբանութիւն է հաստատում այնտեղ. «Հիմնարկեալ նորոգեաց մեծապայծառ շքեղութեամբ զհնացեալ գործ նախնեացն իւրոց»* (էջ 346)։ *Նա Սիւնիքից իր մօտ է բերում եւ իր մտերիմ Ղազարին եւ վանահայր կարգում այնտեղ. «Եւ դու յայց ելեալ խնդրել զիս, եւ զտեալ յաշխարհին յայնմ՝ ածեր ի տուն, ոչ իբրեւ զաղքատ զոք ի կազմածէն եւ ի մանկտւոյն, եւ ոչ իբրեւ օտար զոք ի քէն և կամ զծառայ ուրուք. քանզի պարեգօտաւորք ազատեալ են ի Քրիստոս։ Իսկ որ զատոյցն զիս պարեգօտիւք ի ծառայութենէ աշխարհիս եւ ազատութեան եղեւ մեզ առիթ, տէր Աղան՝ քո տեառն քեռի էր»* (էջ 410 *եւ հտ.*)։

*Հետաքրքիր է, որ շատերն են ձգտել ստանալու այդ, ըստ երեւոյթին, արդիւնաւէտ վանահայրութեան պաշտօնը։ Ղազարը գրում է այդ առթիւ,*

թէ դու կը յիշես «զոռւեալ պատգամն երանելւոյն Յովհաննու, Գիւտայ կաթողիկոսի եղբօրորդւոյն, քեզ տեառն ի Սեւկոյ դրախտին՝ յարանց ոմանց, որք խոստանալով քեզ տեառն կարասի՝ խնդրէին զտեղիդ։ Եւ քո տեառն կոչեցեալ զտէր Վարդ, զքո եղբայր, եւ զՀայրիկ եւ զիմ անարժանութիւնս՝ հրամայեցեր միւսանգամ երկրորդել տեառն Յովհաննու զպատգամսն․ յոր ասացեալ քո տեառն եւ այլ բազում ինչ բանս՝ գլուխ պատգամի պատասխանւոյն արարեալ, եթէ «Պարտ էր նոցա՛ իսկ ածել զմտաւ, եւ զայդպիսի ինչ չյղեալ առ իս․ բայց որովհետեւ նոքա անզգամեցան՝ սակայն ես զայսպիսի քրտամբ մեծ զվաստակս եւ բազում աշխատութեամբ զծախս՝ վասն վաճառականութեամբ ընդ թեթեւ ընչի տալ ոչ կարեմ, եւ ոչ զհոգեւոր եւ զյաւիտենական զանձ՝ անպիտոյ եւ անցաւոր կարասւոյ փոխանակել»։ Եւ ընդ տեառն Յովհաննու զայրացար, թէ «Բնաւ իբրեւ քեզ առն լսել իսկ է՞ր արժան զայսպիսի բանս, թող թէ առ իս բերել» (էջ 427 եւ հտ․)։

Վահանը Ղազարին յանձնարարում է իր ընտանիքին («յանձնեցեր զիս քո ընտանեաց»)՝ եւ նրա եղբայրներն ու եղբօրորդիները, ինչպէս եւ Կամսարական իշխանները, սիրով լսում են նրան եւ օգնում են Ղազարին վանքը բարեկարգ պահելու եւ պայծառացնելու։ «Կահիւ եւ կազմածով» ոչ «նուազեալ քան զայնոսիկ, որք յերկերիւր ամէ չինեալ»․ «Թէպէտ եւ մի անգամ եւ երկիցս ջարդեցաւ բոլոր կահն յանհաստատութենէ շինուածոյն», — գրում է նա, — բայց նա կարողանում է նորոգել (էջ 426)։

Նա յայտնի է դառնում իր քարոզներով․ ժողովուրդը սիրով լսում է նրան ու գովում։ Նա վայելում է իշխանների հովանաւորութիւնն ու բարեկամութիւնը, որոնք հոգում են ե՛ւ վանքի, ե՛ւ Ղազարի անձնական պիտոյքները։ Ղազարը բոլոր եկամուտների հաշիւներն առանձին-առանձին գրով պահում է, ամէն մէկի տուածը գրի անցնելով։ Թէ քանի՛ տարի է տեւում Ղազարի վանահայրութիւնը, այդ յայտնի չէ, բայց երեւում է, որ ոչ կարճ ժամանակ է կատարել նա այդ գործը։

Ղազարին նախանձողների եւ հակառակորդների թիւը շատ էր հէնց սկզբից, երբ դեռ նա վանահայր չէր կարգուած։ Նրանք հանգիստ չեն մնում․ արգելքներ են հանում Ղազարի դիմաց՝ նրա ընթացքը խափանելու համար։ «Թղթի» առաջաբանը գրողն, որ երեւի Ղազարին յարգող բարեկամներից մէկն էր, ասում է․ «Պատահեաց նմա կրել տրտմութիւն ի վայրապար մարդկան, զի ի հրոյ վնասեալ փայտակերտն եկեղեցւոյն»։ Այս դէպքը զէնք է դառնում Ղազարի թշնամիների ձեռին, եւ նրանք ամէն տեսակի զրպարտութիւններ անում են չարունակ Ղազարի վրայ, մինչեւ որ վերջապէս նա ոչ մի պաշտպանութիւն չի գտնում նրանց դէմ — ոչ Վահանի եւ ոչ կաթողիկոսի կողմից։ Հակառակորդները սիրտ են առնում, «տեսեալ զիս՝ եթէ մերժեցայ յաչաց քոց», գրում է նա Վահանին։ Այն ժամանակ նրանք համարձակւում են հալածել Ղազարին վանքից, ամէն ինչ խլում են նրա ձեռքից, «եւ զիս հանին մերկ եւ թշնամանօք յամենայն արարելոց իմոց, զոր ի մանկութենէ արարեալ էի», — գրում է Ղազարը։ «Զի անգամ եւ զհոռում գըրեանդ ոչ եառն զկնի իմ․ որք կան այդր ընկեցեալ ի կերակուր ցեցոյ․ բայց

արդեօք կարդացեալ լուսաւորիցի՞ն ի զգանէ բնակեալքդ տեղւոջդ, եւ կամ զայս լուսաւորիցե՞ն»: «Եւ արդ խմով ընչիւք չրջին պճնեալք, ծաղր առնելով զիս» (էջ 425 եւ հտ.):

Նա փախչում գնում է յունական կողմերը, Ամիթ քաղաքը: «Տեսանելով զայս չարանախանձ մարդկան՝ յաւելուին բանս սուտս զանեղւոյն եւ զուամանէն եւս զնոսա, զի զբարձր անունն խոնարհեցուցանել կարասցեն», գրում է առաջաբանի հեղինակը, եւ աւելացնում. «լուեալ զայս ամենայն Ղազարու՝ իբրեւ զքաջ պատերազմող զինեալ զինքն», գրում է իր Թուղթը եւ ուղարկում է «ի ձեռն բարեսէր մեծի եւ պատուական նախարարին Մամիկոնենին Համազասպայ, որ եւ պատճառ իսկ եղեւ նմա այսրէն դարձին»: Դա երեւի նոյն Համազասպն է, որի մասին յիչում է Թղթի մէջ,ասելով թէ «բազում անգամ հանդոյց զիս եւ ի հալածմանն կերակրիչ իմ եղեւ» (էջ 424):

2. «Թուղթը» — «Մեղադրութիւն ստախօս աբեղայից»: — Ղազար Փարպեցու Թուղթը մի հոյակապ գրական արձան է իր համար եւ մի զօրեղ ամբաստանագիր իր ժամանակակից հոգեւորականութեան մի դասի, միաժամանակ եւ մի չատ կարեւոր պատմական յիչատակարան: Պաչտպանուելով իր հակառակորդների դէմ, նա իսկապէս «իբրեւ քաջ պատերազմող» յարձակւում է նրանց վրայ, եւ ցոյց տալով նրանց տգիտութիւնն ու բարոյական թերութիւնները, ստիպուած է լինում իրեն գովելու: Բայց հին քրիստոնեայ ընթերցողը մտքի մէջ չի սրդողում նրա անձնագովութեան համար. որովհետեւ նա իր գրութեան առաջին տողերով հէնց դրա առաջն առնում է, բերելով Պօղոս առաքեալի օրինակը, թէ ինչպէս սա իր մեծ չնորհքին նախանձողների արարքների վրայ զառնացած՝ պարծանքով մի առ մի յիչում է իր գործերը եւ չի մեղադրւում: «Եւ եթէ ընդէ՛ր այս այսպէս լինէր՝ ծանիցէ քննողն, թէ կարասցէ, ապա թէ ոչ՝ լռեսցէ»: Այստեղ հէնց սկզբից ըմբռնում է նա ամէնքին, որ իրեն կը բամբասէին իր Թղթի բովանդակութեան համար:

Ապա դառնալով Վահան Մամիկոնեանին, դրում է. «Արդ՝ դու, տէր, այր քաղցր ես եւ խոնարհամիտ եւ արդարահայեաց եւ կչռաքնին, եւ հաւատոց Աստուծոյ առաւել ընտանի, որպէս եւ ամենայն նախնիքն քո: Եւ ես անպիտանս եւ ամենեցուն կղկղանք եւ թէպէտ եւ երեւիցիմ առաջի տեառն, առն եղեալ որդի, իբրեւ զանզգամ, որպէս մեծ առաքեալն Պօղոս՝ այլ քո տեառն քրիստոսանմանութեամբ տարեալ, ներելով անզգամութեանս իմում՝ ընկա՛լ զիս իբրեւ զանզգամ» (էջ 409 եւ հտ.):

Նա իբրեւ ճարտասան լաւ գիտէ ունկնդիրների, այս դէպքում կարդացողի, հոգեբանութիւնը. չողոմ բառերով մեծացնելով նրան, Վահանի, եւ չափազանց նուաստացնելով իրեն՝ նա միայն թելադրում է նրան ուչադիր լինել: Բայց դրանով նա չի դառնում արհամարհելի, որովհետեւ իսկոյն ուղղում է իրեն: Մենք չգիտենք, թէ ի՛նչ ծագում ունէր նա, յամենայն դէպըս խոնարհ, քան Մամիկոնեան տոհմը, քան Վահան Մամիկոնեանը, մանաւանդ որ սա արդէն երկրի ամենաբարձր իչխանաւորն էր: Բայց եւ այնպէս, նրան գովելով հանդերձ, Ղազարը բնաւ չի կորցնում իր արժանա-

պատուութիւնը նրա առաջ · ընդհակառակն, նա անմիջապէս խօսելով իր մասին` իրեն չի համարում որեւէ մէկի «ծառայ» · իբրեւ հոգեւորական նա իրեն անուանում է նոյնիսկ «ազատեալ··· ի ծառայութենէ աշխարհիս»: Դրանով, ինչպէս եւ իր ուսումով ու կեանքով, նա իրեն մինչեւ անգամ հաւասար է դասում Վահան Մամիկոնեանին · «Ըստ այդմ մասին ի Հայս քեզ տեառն անկ էր», — գրում է նա դիմելով Վահանին: Նա նրան յիշեցնում է, որ սննդակից է եղել նրան · իր մանկական կեանքով ու կրթութեամբ էլ իրեն դարձեալ հաւասար է համարում Վահանին · «Ըստ այնմ ամենայնի քեզ տեառն անկ էր»: «Իսկ ըստ առաւելեալ շնորհիս··· արդարեւ քեզ իսկ եւ արժանի», գրում է նա երրորդ անգամ: Որովհետեւ, — ասում է նա, — եթէ այս ժամանակներում դու քո քաջութեամբ պայծառացել ես ամէնքից, ես էլ իմ շնորհքով բարձր եմ շատ պարեգօտաւորներից: «Ահա անզգամեցայ եւ ճառեմ · ներեա՛, աղաչեմ, փոքր մի անզգամութեանս իմոյ», ասում է նա · բայց եւ դրանով «ստոյգ առաւել քեզ իսկ էր արժանի», աւելացնում է նա չորրորդ անգամ: «Եւ ե՛մ ես այն Ղազար, ըստ առ ի քէն տեառնէ եւ այլոց բազմաց ստացածի, որում ոչ ոք գոյ փոխանակ: Իսկ այժմ, առ նախանձու աղետի, բազումք նկրտէին լինել իմ փոխանակ · բայց եթէ իցեն», — բացականչում է նա մեծ հպարտութեամբ եւ վիրաւորուած զգացմունքի անկեղծ արտայայտութեամբ: Եւ ամէնը նա ասում է այնպիսի նրբամտութեամբ ու կորովաբանութեամբ, այնպիսի տրամաբանութեամբ ու փաստարկումով, նիւթի մասերի այնպիսի դասաւորութեամբ, որ իսկապէս իմացւում է նրա «ճարտասանութիւնը», եւ ընթերցողը համոզւում է նրա անմեղութեանը եւ տեսնում նրա թշնամիների ոչնչութիւնը:

Իր հալածանքի պատճառը Ղազարը համարում է «ստախօս աբեղաների» նախանձը: Ինչպէս որ Եզնիկ Կողբացին սատանայի յարուցած չարիքների համար իբրեւ պատճառ դնում է նախանձը, նոյնպէս եւ Ղազարը, եւ մէկ-մէկ թւում է, թէ որքան «ի սկզբանէ արարածոց բազում ոճիրս գործեաց նախանձ յաշխարհի», եւ վերջը կցում է, թէ այսպէս «առ նախանձու` կուտէին եւ ի վերայ իմ բազում բանսարկութիւնս»: Նա կարգով մէջ է բերում իր թշնամիների զրպարտութիւններն եւ մանրամասնօրէն հերքում է դրանք:

1· «Ղազար ասէ, թէ պոռնկութիւն մեղք չեն · զսոյն եւ մարդասպանին սադրէ»·

2· Ղազարն «աղանդաւոր է»·

3· «Գամ մի պիղծ ոք է եւ չարագործ` Ղազարայ վանք անդ են, եւ սիրէ զնոսա»·

4· «Մանուկ մի` հոգաբարձ տեղւոյն չկարէ առնել»·

5· «Ի նախնումն գիտնաբար խօսէր Ղազար, եւ այժմ անգիտաբար»:

6· «Այդ գիր ոչ կարդայ, եւ զընթերցուածսն այնպէս ասէ անսայթաք, որպէս թէ գրոցն»:

Այս են եղել բանսարկուների չարախօսութիւնները: Ճարտասանները երբ ճառ ասելիս ուզում են ազդել, թոյլ փաստարկումներից անցնում են

դէպի զօրեղները, որպէսզի վերջին վայրկեանին զօրեղ տպաւորութիւն գործեն։ Ղազարը հակառակ ձեւով է վարուել։ Ինչպէս կարելի է նկատել, նա առաջ բերել է ուժեղ մեղադրանքները, յետոյ՝ հետզհետէ թոյլերը։ Դա էլ նուրբ ճարտասանական եղած է, դարձեալ ունկնդիրների, այս դէպքում՝ կարդացողի վրայ ազդելու համար՝ թուլացնելով մեղադրանքների ազդեցութիւնը։ Այստեղից հէնց երեւում է, որ ի զուր չէ եղել Ղազարին տրուած «Ճարտասան» մականունը։

Բայց նրա ճարտասանութիւնը միայն դրա մէջ չէ. նա հմուտ արուեստ եւ ուժեղ ոճ է բանեցնում նաեւ բանսարկութիւնները ժխտելիս եւ իր անմեղութիւնն ապացուցելիս. կծու սրամտութեամբ մէկ՝ հեգնում ու ծաղրում է իր հակառակորդներին, մէկ՝ վկաներ բերում իր գործունէութեան համար. մերթ արհամարհանքի ու անարգանքի մատնում հակառակորդների տգիտութիւնը, իբրեւ վարդապետ սովորեցնելով, որպէսզի «լռեսցին լիրբքն եւ անամօթքն», կամ բնութագրում է նրանց իբրեւ «հէգք եւ թշուառականք»։ «Ցաղագս որոյ արուեստի դու, տէ՛ր, զիս սպասաւորեալ մեծարէիր՝ այժմ ինչ դոքա չէին տենչողք... Խոհակերութիւն ուսեալ իսկ չէի, եթէ ձըկան աղիս ըստ ուրուք ճաշակելեացն մարթէի յօրինել, եւ կամ զհաւուց փորոտիս, որովք թերեւս կարէի ումեք հաճոյ լինել» (էջ 424)։

Հակառակորդների բամբասանքներն ընդհանրապէս խիստ վրդովում են Ղազարին, մինչեւ անգամ այսպիսի խօսքը որ ասել են. «Արդարեւ յառաջնում քաջ համեղս ասէր եւ զօրաւորս, բայց ապա յարդի ժամս բնաւ վատ ասէր»։ Նա բերում է այս բամբասանքն եւ իսկոյն բացականչում է. «Եւ զա՛յս ոչ կարացին գիտել, թէ ի յանդիմանութիւն եւ յամօթ անձանց իւրեանց խօսէին զայնպիսի բանս» (431)։ Եւ ապա նա մանրամասն բացատրում է, թէ լաւ ճառերը միայն ճառողից չի կախուած, այլեւ ունկնդիրներից։ Նա իբրեւ ճառախօս շատ լաւ գիտէ, որ լաւ խօսելու գլխաւոր պայմաններից մէկն է եւ լաւ ունկնդրութիւնը։ Եւ նա նկարագրում է, թէ ինչպէս յոյն ժողովուրդը սիրով է վերաբերւում դէպի ճառախօսը եւ բնական է, որ այդպիսի դէպքում խօսողի միտքը զարթնում է ու նա ոգեւորւում է։ «Իսկ Հայոց աբեղէնքս առ դանաչունչ նախանձու, որ մխացեալ է ի սիրտս նոցա՝ զնոցունց հակառակս երկնեն... եւ եթէ յանկարծ շնորհի բան ի մարդասիրէն՝ հեղձնուն ի նախանձուէ։ Եթէ զոք տեսանեն ի ժողովրդենէն եթէ զովէ՝ ծաղըր առնելով ամաչեցուցանեն. «Արդ լռել ինչ, ասեն, չգիտէ, եւ ընդ վայր աղաղակէ եւ քրքջի»։ Իսկ Յունաց ժողովուրդսն եւ տղայքն անգամ ի վերայ ուսոց ծնողացն, շարժեալ զձեռներն ի գովութիւն այլոցն՝ ձայնս անյօդակապս արձակեալ յայթեն»։ Իսկ Ղազարի հակառակորդներն ի՞նչպէս են վարւում։ «Եւ դոքա նստին գլխարկեալք, պատառեալք երեսօք, որպէս առ հոտեալ դիական, պապանծեալք որպէս համր դեւ։ Եւ եթէ գթացեալ մարդասիրին, կամիցի տալ բան խրատու ի ժողովրդոցն փրկութիւն, հայեցեալ ի դասն խորհրդոցն նոցա որոճմունս՝ յինքն ամփոփեալ արգելու զշնորհն» (էջ 432—433)։ Ուրեմն ճառախօսը տեսնելով ունկնդիրների վատ

վերաբերմունքը՝ բնականաբար կորցնում է եւ իր տրամադրութիւնը խօսելու։

Հակառակորդների զրպարտութիւններից առանձնապէս աչքի են ընկնում առաջին երկուսը։ Շատ պարզ երեւում է, որ նրան խորտակելու համար՝ նրան գրել են մծղնէ (մեսալեան) կոչուած աղանդաւորների մէջ, որոնք ի միջի այլոց քարոզում էին «անխտիր հաղորդակցութիւն տղամարդոց եւ կանանց մէջ։» Հայոց Շահապիւանի եկեղեցական ժողովը, որ տեղի է ունեցել շուրջ 446/447 թ., առանձնապէս զբաղուել է այդ աղանդով եւ մեծամեծ պատիժներ է սահմանել դրա հետեւողների համար, լինին ռամիկ թէ ազնուական։ Դրանից երեւում է, որ այդ աղանդն ընդարձակ ծաւալ է ստացած եղել։ Շահապիւանի ժողովից յետոյ չի վերջացել այդ աղանդը Հայաստանում։ Որ աբեղաները Ղազարին մեղադրել են իբրեւ աղանդաւորի եւ մի մարդու, որ պոռնկութիւնը մեղք չի համարում, այդ ցոյց է տալիս, որ 5րդ դարի ընթացքում յարատեւել է եւ աճել է այդ աղանդը։

Տե՛ս Եօթներորդ Յաւելուած՝ «Հայոց եկեղեցու դիրքը քաղկեդոնականութեան վերաբերմամբ 5-րդ դարի երկրորդ կէսին»։

3. Պարսկական եւ ազգային հայկական կողմնորոշումներ։— Ղազարն իր անձնական հալածանքի պատճառ դնում է, ինչպէս տեսանք, աբեղաների նախանձն իր առաջադիմութեան համար։ Անշուշտ, առանձնապէս, գործել են եւ նրանք, որ ցանկացել են նրա տեղն ունենալ։ Բայց եւ այնպէս Թղթից հէնց պարզ է, որ այդ եղել է գլխաւորապէս քաղաքական-հասարակական երեւոյթների արտայայտութիւններից մէկը, եղել է մի կռիւ ոչ թէ կրօնադաւանաբանական հիմքի վրայ, այլ պարսկական եւ ազգային-հայկական կողմնորոշումների։ Այդտեղ գործել են նոյն ազդակները, ինչ որ Գիւտ կաթողիկոսի վերաբերմամբ։ Այս կաթողիկոսը մենակ չի եղել հալածուած։ Ղազարն իր «Թղթի» վերջում գրում է, թէ դիցուք ինքն արժանի է այդպիսի պատուհասի, «իսկ այլ առաքելանման մարդիկն ընդէ՞ր այսպիսումն եւ ե՛ւս առաւել քան զայնս դիպեալք ի յաշխարհիս ի յայսմ՝ խստագոյն վշտիւ վախճանեցան» (էջ 436)։ Եւ նա յիշում է մէկ քանի անձեր, որոնց հալածել են, այսպէս՝ «երանելի փիլիսոփոսն Մովսէս, որ արդարեւ մինչդեռ էր ի մարմնի՝ ցանկ երկնային զօրացն էր քաղաքակից, ո՞չ ապաքէն ի տեղւոջէ ի տեղի աբեղեանդ Հայոց հալածական արարին»։ Մէկ ուրիշին, որ գիշեր ցերեկ աշխատել է «ի լուսաւորութիւն աշխարհիս Հայոց», «զոսկերսն ի գերեզմանէն հանել տային եւ ի գետ արկանել»։ «Զհրեշտականման այրն զՏէր՝ նոյն անհանգիստ հալածանօք վախճանեցուցին, որք եւ այժմ դեռ եւս անդադարութեամբ քինով ընդ մեռելոյն կադին»։ «Անարատ եւ յամենեցունց յարգելի յոյսն տէր Խօսրովիկ, չեւ եւս հասեալ ի սահմանս մեր, մինչդեռ գայր ի ճանապարհի, եւ լուան՝ որպէս ի վերայ թշնամւոյ ընդդէմ զինեցան, ասելով. «Ահա ո՞ւր գայ միւս եւս թարգմանն»։ Եւ սա ճանապարհին մեռնում է։ Նա յիշում է նոյնպէս եւ տէր Աբրահամ եպիսկոպոսին եւ ուրիշներին, եւ աւելացնում է վերջը, թէ «առ մեօք իսկ եւ ի մերում ժամանակի եղեալ տեսաք զայս ամենայն», եւ ապա յիշում է նաեւ

սուրբ Ներսէսին եւ Սահակին: Թուղթը վերջացնում է ասելով, թէ Թէպէտ Վահանից շատերը բարիքներ են տեսել, բայց տեսնելով նրա օրըստօրէ փառաւորութիւնը, շատերը կը լինէին, որ եթէ հնար գտնէին, «առ նախանձու չհատուցանէին զբարի փոխարէնն՝ փոխանակ քո տեառնդ բարւոյն, այլ զնոցուն հակառակն»:

Ցաւօք, Թղթի այս մասից պակասում է մի կտորը, իսկ մի քանի տող եւս աղճատուած է երեւում եւ մութն է, բայց եւ այնպէս մնացածից պարզւում է, որ այն պայքարը, որ Սահակի եւ Մաշտոցի օրով կար յունասէրների եւ նրանց հակառակորդների մէջ, նրանց մահից յետոյ, 5-րդ դարի երկրորդ կէսին, աւելի եւս սաստկացած է եղել, դառնալով յունական գիտութիւն սիրող ազգայինների ու պարսկասէրների կռիւ: Հակառակորդ տարգէտ աբեղաները չեն ըմբռնել յունական ուսում ստացած թարգմանիչների կուլտուրական դերը: Կուլտուրական պայքարը դրանց կողմից վերածուել է թշնամական կռուի, հալածանքի, որի ժամանակ, անձնական շահերի համար, անգամ անթոյլատրելի միջոցների են դիմել՝ կաշառք, դրպարտութիւն, անուանարկութիւն, յափշտակութիւն: Նրանց զոհերից մէկն եղել է եւ Ղազար Փարպեցին, բայց նա կարողացել է պաշտպանել իրեն:

Ղազարը չի յիշում, թէ իրեն հալածող աբեղաներն ինչ կուսակցութեան մարդիկ են եղել: Ոչ մի հիմք չկայ նրանց համարելու ասորական հոսանքի մարդիկ, ինչպէս ընդունում են: Ասորական «ուղղափառ» եկեղեցին 5-րդ դարի վերջերին արդէն չափազանց թուլացած էր ամբողջ Պարսկաստանում. նա ինքն ձգտում էր հովանաւորութիւն գտնելու Հայոց եկեղեցու կողմից ընդդէմ նեստորականների, որոնց պաշտպանում էր Պարսից կառավարութիւնը: Այս դէպքում էլ, ինչպէս առաջ, գործել է պարսից պետական քաղաքականութիւնն ընդդէմ յոյների եւ յունասէր հայերի, բայց այժմ ոչ ասորիների ձեռով, ինչպէս առաջ էր: Նրանց դերն արդէն վերջացած էր Հայաստանում, ինչպէս եւ նրանց լեզուի կիրառութիւնը Հայոց եկեղեցիներում: Այժմ պարսիկները յենւում էին մի նոր մեծ հոսանքի վրայ, որ նրանք առաջ էին բերել հայերի մէջ. դա պարսկասէրների «յոգնախումբ» բազմութիւնն էր, որին պատկանող անհատներից շատերը, նոյնիսկ երեւելի տոհմերից, ընդունում էին մոգական կրօնը՝ պարսկական կառավարութեանը հաճոյանալու համար:

Թէպէտ Նուարսակի դաշնագրութեամբ Վահանի պահանջն եղել էր «իրաւաբար գիտել զլաւն եւ զվատթարն, ընտրել զպիտանին եւ զանպիտանն», եւ պարսիկներն ընդունել էին այդ, բայց արքայից արքաները, առանձնապէս 5-րդ դարի վերջին տասնամեակում Կաւատ արքայի օրով, սրա թագաւորութեան առաջին շրջանում, շարունակել են պաշտպանել պարսկասէրներին եւ թեւ տալ յունասէրների հակառակորդներին: Սրա հետեւանքով է, որ նրանք նոյնիսկ Վահանի մարզպանութեան օրով այնքան զօրանում և համարձակ են դառնում, որ կաթողիկոսն անգամ վախենում է նրանցից:

Երբ Ղազարի թշնամիները, երես առած, սկսում են ծաղրել եւ նեղել Նրան, այն ժամանակ, — ասում է Ղազարը, — «Զերեւելի սեպուհ մի յականաւոր տոհմէ առաքեցի առ գլխաւորդ Հայոց քահանայութեան, առ հիւանդատեղ հօգւոց, ասեմ. «Աւ ի բժշկութիւն վիրաւորաց փութա՛, հա՛ս յօգնել. խոցոտեցայ ի թշնամւոյն անթիւ նետիւք. կարեվէր եմ մերձ ի մահ. քեզ է այսուհետեւ հարկ՝ գնել դեղ եւ բժշկել. կամ թէ մեռանել՝ տանել ի շիրիմ եւ թաղել»: Իսկ նա պատասխանում է. «Ես եւ տեսանել իսկ չիշխեմ զքեզ առ երկիւղի. դու ասես, եթէ գամ բժշկեմ, եւ կամ թաղեա. մի՛ գուցէ ըդդացեալ ուրուք՝ եւ զիս ընդ քեզ թաղիցէ» (էջ 429 եւ հտ.): «Եւ պատգամաբերն շնորհելով Քրիստոսի ողջ է, եւ այրն ոչ ինչ թեթեւ», աւելացնում է Ղազարն իր գրածի ստոյգ լինելը ցոյց տալու համար: Եւ նա սաստիկ անարգելով պախարակում է եռանդուն եղանակով այն կաթողիկոսին. «Ո՞ւր աներկիւղութիւն քաջ հովուի է. ո՞ւր հոգողութիւն արդար ուսուցչի. ո՞ւր քրիստոսանմանութիւն առողջ հայրապետի», որ «առեալ լիաբուռն զդահեկանս ի Շամարտայի դթածէն, զգինս դարմանոց հիւանդաց՝ ի սապատս համբարէ... Աղաղակէ, թէ «Յո՞ պաս. չկամիմ, չիշխեմ տեսանել»:

Ո՞վ էր այն կաթողիկոսը:— Սխալ է կարծել, թէ նա կարող էր լինել Յոհան Մանդակունին, որ մեր գրողներից մէկն է: Նրա մասին յետոյ իր Հայոց Պատմութեան մէջ շարունակ մեծ սիրով եւ յարգանքով ու պատկառանքով է խօսում Ղազարը, անուանելով նրան «հայրապետն սուրբ Յոհան», «երանելի կաթողիկոսն Հայոց Յոհան», «սուրբ կաթողիկոսն Յոհան», «պատուական կաթողիկոսն Հայոց Յոհան», «սուրբն», «ըստ կամաց հայրապետին սրբոյն Յոհաննու», «սուրբ այրն Աստուծոյ կաթողիկոսն Հայոց Յոհան» (էջ 388): Նա մեծ յարգանք է վայելում եւ զօրականներից. ճակատամարտ գնալիս նրա օրհնութեանն եւ աղօթքին են դիմում. իրենց հետ տանում են «եւ զսուրբ հայրապետն Հայոց զտէր Յոհան, յուսալով յաղօթս առնն, թէ ամենայն ինչ ըստ նորա կամելոյ կատարի յԱստուծոյ» (էջ 282): Եւ վերջապէս հէնց սկզբում, երբ կռուի են գնում, եկեղեցում աղօթելուց յետոյ, գրում է Ղազարը. «Երկիր պագանէին նախարարքն եւ ամենայն արք զօրուն որք ընդ նոսայն էին՝ եւ հրեշտակակրօն սրբոյ կաթողիկոսին Յոհանու, որոյ նպարակեալ յուղարկեաց զնոսա իւր ստոյգ եւ արդար ոգւոյն օրհնութեամբ ի գործ պատերազմին» (էջ 269): Ալեզարդ Յոհան կաթողիկոսը Ղազարի Պատմութեան մէջ պատկերացւում է իբրեւ մի աներկիւղ այր, որ եռանդուն մասնակցութիւն ունի պարսիկների դէմ ապստամբութեանը, մինչդեռ Թղթի մէջ յիշուած հայրապետը վախից չի համարձակւում տեսնել անգամ Ղազարին: Նա անպայման Յոհան Մանդակունու յաջորդն էր՝ Բաբգէն կաթողիկոսը:

Այս կաթողիկոսին վերագրում են 5—7 տարուայ կաթողիկոսութիւն ըստ մեր պատմիչների: Նրա օրով 506 թ. գումարուել է Դուինի Առաջին Նշանաւոր Ժողովը, ուրեմն նա կաթողիկոս է դարձել ամենավաղը 5-րդ դարի վերջում կամ 6-րդի սկզբում: Եւ որովհետեւ նրա օրով Ղազարը դեռ Վաղարշապատում է եղել, որտեղից եւ դիմել է կաթողիկոսին, ապա ուրեմն նրա Թուղթը գրուած է 5-րդ դարի վերջին կամ 6-րդի սկիզբներին:

Տե՛ս Եօթնեցորդ Յաւելուած՝ «Հայոց եկեղեցու դիրքը քաղկեդոնականութեան վերաբերմամբ 5-րդ դարի երկրորդ կէսին»:

4. Պատմութիւն Հայոց:— Ինչպէս երեւում է, Թուղթն ազդել է Վահանի վրայ եւ նա ետ է կանչել Ղազարին եւ պատուիրել է նրան գրել Հա-

յոց պատմութիւն: Մենք արդէն տեսել ենք, որ Ղ. Փարպեցին իր այս երկի սկզբում յիշում է իբրև առաջին և երկրորդ պատմութիւններ Ագաթանգեղոսի և Բուզանդի գրքերը, և որ նա Բուզանդի Պատմութեան մասին շատ էլ լաւ կարծիք չունի: Բայց այդպէս չէ մտածել «մտաւոր և քաջ այրն Վահան», — գրում է Ղազարը Պատմութեան առաջաբանի մէջ: Վահանը «արթնամիտ խորհրդականութեամբ ուշադրեալ այսմ ամենայնի», այսինքն Բուզանդի Հայոց Պատմութեան մասին եղած ոչ նպաստաւոր կարծիքներին, «առաւել եւս զայս ի դէպ և պատշաճ համարեցաւ. ի մնացեալ տեղւոյ պատմութեան Երկրորդ գրոցն [=Բուզանդի] աճեցուցանել յառաջ և գրել յայնմհետէ զեղեալս յաշխարհիս Հայոց: Բազում զգուշութեամբ գրել և կարգել մի ըստ միոջէ զամենայն զհոգեւորացն զառաքինութիւնս և զարանց քաջաց զլաւութիւնն: Որպէսզի զհոգեւորացն զբարի վարսն լուեալ բազմութեան ժողովրդոցն՝ նմանողք լինել ցանկասցին մարդիկ ճգնութեան նոցա, եւ քաջքն լսելով զայլոց զգործսն յառաջագոյն քաջացելոցն՝ յաւելեալ յանձանց քաջութիւն՝ անուանի յիշատակ թողցեն զկնի իւրեանց՝ անձանց եւ ազգի: Իսկ ծոյլքն եւ վատքն հայելով յանձինս եւ լսելով զայլոց զպարսաւանս՝ ի բարի նախանձն կրթեալք ջանասցին լաւանալ: Ըստ այսմ օրինակի զգուշացեալ ստիպեցուցանէ զմեզ տէրն Մամիկոնէից վահան, զօրավարն Հայոց եւ մարզպան, որոյ հասեալ հրաման առ իս Ղազար Փարպեցի» (էջ 12 եւ հտ.): Ուրեմն Վահանն է Պատմութեան ծրագիրն ու նպատակը նշել. նա հրամայել է գրել ե՛ւ եկեղեցական, ե՛ւ աշխարհիկ պատմութիւն, ուսուցանելու եւ խրատելու նպատակով, ինչպիսի ծրագիր ու նպատակ ունեցել են եւ մեր բոլոր հին պատմագիրները, հարկաւ եւ ինքը Ղազարը:

Որ Վահան Մամիկոնեանը ցանկացել է Բուզանդի թողած տեղից շարունակել պատմութիւնը, այդ հասկանալի է, թէ ինչո՛ւ: Բուզանդի Պատմութեան մէջ փառաբանուած էր Մամիկոնեան տոհմը. Վահանը մտածել է, որ դրա շարունակութիւնը լինի Ղազարի գործը, եւ միջին նոյն կերպ հանդէս գան Մամիկոնեանները: Եթէ յունական ուսում ստացածները, ինչպէս Ղազար Փարպեցին, այլեւ Մ. Խորենացին, հետեւում էին յունական զուսպ դպրութեանը, բնականի սահմաններից դուրս չեկող արուեստին, միւսների համար, որոնցից էր եւ Վահանը, սիրելի էին, անշուշտ, ուրիշ տիպի երկերը, հին հայկական ժողովրդական զրոյցներն ու վիպասանութիւնը եւ Բուզանդի Պատմութիւնն իր հերոսական զրոյցներով ու քաջագործութիւնների վէպերով, թէկուզ խիստ չափազանցրած: Բայց Ղազարը չէր կարող այդպիսի երկ արտադրել: Նախ՝ նրա առաջ չկար վիպական բանահիւսութիւն. ապա նա ընդունակ չէր այդպէս պատմագրելու: Եւ լոկ համեստութեան համար չէ, որ նա գրում է, թէ Վահանը «բռնադատեաց զտկարութիւնս մեր... զձեռն արկանել ի գործ, որ ի վեր քան զկար գիտութեան մերոյ էր»: Բացի այդ՝ նա ուրիշ կերպ էր ըմբռնում գործը. թէ պէտք է, ինչպէս վարուել են լաւ հեղինակները, պատմագրել «զյօրինուածս բանից ստուգապատում կարգեալ... չառնել մարդահաճութեան բանից յաւելուածս», «ունելով... զհիմն ուղղափառ հաւատոյ»: «Պիտոյ են յարմարութիւնք բանից, որոշեալ կարգադրութիւնք ըստ հրամանի կանոնեալ գիտութեանն, բերել պատ-

*կարելով սուղագրութիւն անպարսաւ յականջս իմաստասէր լսողաց. չյաւելուլ զանեղեալսն՝ յընդունայն ամմունս բանից. չնուազեցուցանել զեղեալսն եւ կարճակտուր պատմել բանիւք՝ անփութութեամբ. այլ զընթացս ուղղախոհ զգուշութեամբ բերել ի յայտնութիւն»։ Չնայելով իր այս հասկացութեանը՝ նա գրել է մի պատմութիւն, որ թէպէտ ոչ Բուզանդի վիպական ոճով, բայց մի խրատեսակ վիպական պատմուածք է, մի ուրիշ տեսակի հերոսական գովաբանական երգ Մամիկոնեանների համար, առանձնապէս Պատմութեան երկրորդ եւ երրորդ դրուագները, եւ այդ բաւարարութիւն կը տար Վահանին։*

5. Աղբիւրները։ — *Այսպիսի մի գործի համար, որ սկսւում է հեղինակի ծննդից կէս դար առաջ, հարկաւոր էին աղբիւրներ, եւ սրան է ակնարկում Ղազարը գրելով. «Եւ զի նուազն տախտակք առանց բազմաց սատարելոյ չհնարին լինել յանօթ պիտանացու, քանի՞ եւս առաւել այսպիսի մեծ եւ հոգեւոր գործոյ ձեռնարկութիւն, ուր բազում կարեւոր պէտք էին առաքինի արանց օգնականութեան»։ Ագաթանգեղոսի եւ Բուզանդի Պատմութիւնները նրա համար պատմութեան աղբիւրներ չէին կարող լինել. նրանցից, առանձնապէս Ագաթանգեղոսից, նա գլխաւորապէս արտայայտութեան ձեւեր, դարձուածներ ու պատկերներ եւ հին պատմութեան յիշողութիւններ, ակնարկներ է փոխ առել։ Առանձնապէս յիշում է Կորիւնի երկը։ Նա Պատմութեան մեծ մասն, անշուշտ, բերանացի պատմածներից է գրել, թէպէտ մի քանի տեղ միայն յիշում է այդպիսի աղբիւրներ* (1)*։ Կարելի չէ ասել, թէ բացի յիշուած երեք հեղինակներից՝ ուրիշ պատմական երկեր ձեռի տակ ունեցած չլինի Ղազարը։ Նա գրում է իր Առաջաբանի կրկնութեան մէջ (էջ 7). «Ընդ* բազում ճառս *մատենից առաջնոցն պատմագրացըն Հայոց անցի»։ Այստեղ «ճառք» բառը չպիտի հասկանալ գրքի «գլուխներ», ինչպիսի նշանակութեամբ եւս դա գործ է ածւում, այլ այդ բառն այստեղ հասկացւում է «պատմութիւն», ինչպէս քիչ ներքեւում, — երբ Ագաթանգեղոսի համար գրում է, «սուղաբան ի կարգագրութիւն* ճառից *եւ յարմարագիր ի պատմութիւնս ասացուածի իւրոյ», — «ճառք» հասկացւում է ոչ թէ «գլուխներ», այլ «պատմութիւններ», քանի որ Ագաթանգեղոսի Պատմութիւնը գլուխներ չունի։ Պատմութեան ընթացքում էլ Ղազարը գրում է՝ «լիով ի գրոց ճանաչէին» (էջ 105), «գիտէք ստուգութեամբ ի պատմութենէ գրոց» (էջ 124)։ Այս գրքերը վերաբերում են Մամիկոնեանների պատմութեանը, եւ յիշատակւում է հաւանօրէն Բուզանդի Պատմութիւնը։ Բայց թէ որո՞նք են Առաջաբանի «*բազում *ճառք մատենից», նա այդ չի յիշում, բացի երեքից. իսկ երեքը «բազում» չեն։*

---

(1) «Ի ստոյգ գիտողաց» (էջ 76), Արշաւիր Կամսարական (էջ 228), Խուժիկ (էջ 208. 222, 226 եւ այլ.), Վասակի սպասաւորներ (էջ 184), անորոշ ձեւով «ասէին» (198), «իմ լսեալ» (էջ 237), ականատես է եղել նախարարներից ոմանց (էջ 238), ինքը հարց ու փորձ է արել (էջ 238) եւ նմաններ։

Բանասիրութիւնը ցոյց է տուել, որ նրա Հայոց Պատմութեան առաջին «դրուագի», այսինքն առաջին մասի մէջ նմանութիւններ կան Մ․ Խորենացու Պատմութեան հետ, իսկ երկրորդ «դրուագի» պատմութիւնը շատ նման է Եղիշէի Պատմութեանը։ Մի ժամանակ կարծում էին, թէ Մ․ Խորենացու եւ Եղիշէի Պատմութիւնները ծառայել են Ղ․ Փարպեցու համար իբրեւ աղբիւրներ (1), յետոյ հակառակ ենթադրութիւնն առաջ եկաւ, երբ Եղիշէի, աւելի եւս Մ․ Խորենացու Պատմութիւններն աւելի ուշ ժամանակի գործեր համարուեցին։ Այժմ, դարձեալ պէտք է հին տեսակէտի վրայ կանգնել, այն, որ Մ․ Խորենացին եւ Եղիշէն ծառայել են իբրեւ աղբիւր Ղ․ Փարպեցուն։

6․ Առաջին դրուագի պատմութիւնն սկսւում է Հայոց Թագաւորութեան երկուսի բաժանուելուց եւ հասնում է մինչեւ Արշակունի տոհմի անկումը՝ «ի սպառ ի սպուռ կործանումն աշխարհիս Հայոց», «ընդհանուր կորուստ աշխարհիս Հայոց», եւ Սահակի ու Մաշտոցի մահը։ Այստեղ տրուած է Պարսից թագաւորների յաջորդութեան կարգը, անշուշտ նաեւ Հայոց թագաւորներինն ու կաթողիկոսներինը․ բայց պատմուածները մեծ մասամբ «ի յրոյ» են եւ չափոթ։ Առնենք հետեւեալը։

Ըստ Ղազարի հաղորդած տեղեկութիւնների՝ հայոց թագաւոր Խոսրովը, ապա նրա եղբայր Վռամշապուհը թագաւորել են Շապուհ Գ․ի օրով (384—389 թ․)․ գրերի գիւտն ու Ս․ Գրքի յունարէնից թարգմանութիւնը Սահակի ձեռով՝ եղել է Վռամշապուհի օրով․ սա վախճանուել է Շապուհ Գ․ից առաջ․ «Յետ այսորիկ [Վռամշապուհի մահից յետոյ] մեռաւ եւ Շապուհ արքայն Պարսից, եւ թագաւորեաց Վռամ որդի նորա, որ էր Կրման արքայ» (էջ 37)․ ուրեմն ամենաուշը 389 թ․, որովհետեւ այս Շապուհն իշխել է 384—389 թ․ (ուրիշները դնում են նրան նոյնիսկ 385—388 թ․)։ Այս ամէնն, ուրեմն, կատարուել է շատ կարճ ժամանակում։ Այդ հակասում է, սակայն, նոյնիսկ Ղազարի պատմածին, թէ Մաշտոցը տարիներ («ամս») ծառայել է Խոսրովի օրով, յետոյ վանական է դարձել, ապա՝ անապատական՝ մինչեւ Վռամշապուհի 5-րդ տարին, եւ յետոյ նշանագրերի գիւտն է եղել, եւ այլն․ յետոյ Վռամշապուհն ապրել է «ամս բազումս» եւ մեռել է ամենաուշը 389 թ․։ Հետեւաբար եւ նշանագրերի գիւտն ու թարգմանութիւնները, ըստ Ղազարի, եղել են 389 թուականից առաջ, քանի որ այդ ամէնը կատարուել է Վռամշապուհի օրով։ Այսպէս ուրեմն, Փարպեցին անում է մի խառնակ պատմութիւն, որ բնաւ նման չէ ոչ Խորենացու եւ ոչ Կորիւնի պատմածներին, եւ ինքն իր մէջ էլ խիստ հակասական է։

Ղ․ Փարպեցին ասելով, թէ Մաշտոցն անապատական է մնում մինչեւ Վռամշապուհի 5րդ տարին՝ անմիջապէս շարունակում է․ «Եւ այս թէ կամիցի ոք գիտել հաստատեաւ՝ ի պատմութենէ գրոց առն ցանկալի Կորեան, աշակերտի նորին երանելւոյն Մաշտոցի, կարդացեալ տեղեկասցի զվարս կենաց նորա եւ զիւր հայերէն նշանագրացն, թէ ե՛րբ կամ ո՛ւր

---

(1) Գրիգոր Խալաթեան, Ղազար Փարպեցի եւ գործք նորին, պատմական եւ գրական քննութիւն, Մոսկուա, 1883, էջ 51—91։

եւ կամ յո՛յր ուրուք ձեռն գտանէ, *Թագաւորին Հայոց* Վռամշապհոյ *ջերմեռանդն խնդրելով. զոր կարգեաց գրելով ճշմարտապէս յառաջագրեալ այրն հոգեւոր Կորիւն. ուստի եւ մեր բազում անգամ կարդալով տեղեկացեալ հաւաստեաւ»* (էջ 28)։ *Այս ցիտատի ընդգծած տեղերից երեւում է, որ Փարպեցուն լաւ ծանօթ է Կորիւնի պատմածը, թէ Մաշտոցը Վռամշապուհի հրամանով ե՛րբ, ո՛ւր եւ ո՛ւմ օգնութեամբ գտել է «իւր» նշանագրերը* (1)։ *Նա այդ «ճշմարիտ» եւ «հաւաստի» է համարում, ուրեմն, հայերէն նշանագրերը որ գործ են ածում, ըստ Փարպեցու՝ Մաշտոցի գտածն է։ Բայց նրա Հայոց Պատմութեան մէջ չկայ Մաշտոցի ե՛ւ Միջագետք գնալն, ե՛ւ «իւր» հայերէն նշանագրերը գտնելը։ Այդ պիտի լինէր Դանիէլեան նշանագրերի մասին պատմելուց յետոյ՝ «ուրախ լինէին» եւ «Եւ այսպէս դիպեալ գիւտի նշանագրացն» բառերի միջեւ* (2), *անշուշտ ոչ մանրամասն պատմուած, քանի որ նա գրում է, որ եթէ մէկը կամենայ հաւաստի իմանալ այդ, թող կարդայ, տեղեկանայ Կորիւնի գրքից, եւ վերջն աւելացնում է, թէ ինքն էլ շատ անգամ կարդալով Կորիւնի «ճշմարտապէս» գրածը՝ հաւաստի տեղեկացել է գրերի գիւտի մասին։ Բացի այդ՝ Փարպեցին գրում է հայերէն գրերի գիւտի պատմութիւնը ոչ թէ լիովին, այլ այն եւ այնքան միայն, որքան հարկաւոր է ցոյց տալու համար Սահակ կաթողիկոսի կատարած դերն այն գործի մէջ։ Այսպէս վարուել է նա, որովհետեւ նրա նպատակը եղել է բարձրացնել Սահակին, եւ իսկապէս՝ ըստ նրա գրածների՝ Մաշտոցը գրերի գիւտի վերաբերմամբ անգամ՝ նսեմանում է Սահակի առաջ, մանաւանդ «ի կարգել զհեղենայսն». Սահակն է, որ օգնել է Մաշտոցին «դիւրահնար ճանապարհ ցուցանելով կարգադրութեան գրենոյս եւ հեղենային ուղղաձայնութեան. տալով նմա օգնականս եւ այլ արս բանիբունս եւ մտացիս ի քահանայից Հայոց, որք էին սակաւ մի եւ նոքա, որպէս երանելին Մաշտոց, մերձաւորեալք ի յունարէն հեղենայինսն... Որոց օգնելով զօրէր երանելին Մաշտոց, հանդիպեցուցանէր զհայերէն աթութոյն ըստ կարգման սիլովբայիցն Յունաց, ստէպ հարցմամբ եւ ուսանելով ի սուրբ կաթողիկոսէն Սահակայ զաթութայիցն գաղափար, ըստ անսայթաքութեան յունին։ Վասն զի ոչ լինէին բաւական ի վճարել անսխալ ուղղակի, առանց առաջնորդելոյ նոցա սրբոյ Հայրապետին Սահակայ, որ յոյժ առլցեալ անցուցանէր վարժիւք զբազում գիտովքն Յունաց... Կարգեալ այնուհետեւ... զգիր գրենոյն հայերէնի եւ հեղենային* (3) *ուղղեալ յօրինուածս՝ ցանկային կարգել դպրոցս եւ ուսուցանել բազմութիւն մանկտւոյ»։ Խօսքն այստեղ տառերից յունարէնի ձեւով վանկեր (հեղենայ, սիլովբա) յօրինելու մասին է, վանկերով հեգելու համար «ըստ անսայթաքութեան յունին», կամ «գիրկապ» կարդալու դասագրքի մասին։ «Հեղենան». կազմելուց յետոյ՝ ուզում են դպրոցներ բանալ, «բայց տարակուսեալք կասէին*

---

(1) Կորիւն, Վարք Մաշտոցի, Երեւան 1941. Հատուածներ Է. Ը. էջ 46 եւ հետ.։

(2) Ղ. Փարպեցու Հայոց Պատմութեան երկու ձեռագիրներից մէկի մէջ, որ գրուած է 1774 թ., այնտեղ, ուր սպասում ենք, թէ պէտք է պատմուած լինէր գրերի գիւտի պատմութիւնն ըստ Կորիւնի, մտցրած է նոյն պատմութեան մասին մի ամբողջ հատուած Մ. Խորենացու Հայոց Պատմութիւնից։ Այդ ընդմիջարկութիւնը համարում ենք, թէ կատարուել է ձեռագիրն արտագրողի ձեռով Խորենացու 1695 թուականի տպագրից։ Տես՝ Ղազարայ Փարպեցւոյ՝ Պատմութիւն եւ Թուղթ, Տփխիս 1904. «Յառաջաբան», էջ Զ—Է. այլեւ էջ 15, ծան. 3։

(3) Տպուած է ըստ ձեռագրին՝ «հելլենացին». պէտք է ուղղել «հեգենային» ըստ խօսքի իմաստին։

յանչքութենէ Գրոց Սրբոց, — գրում է Փարպեցին, — քանզի ոչ գոյին դեռ եւս հայերէն լսողութեամբ սուրբ կտակարանք եկեղեցւոյ: Եւ երանելին Մաշտոց եւ որ ընդ նմա պաշտուական քահանայքն էին՝ ոչ զօրէին համարձակել յայսպիսի սաստիկ եւ կարեւոր գործ, թարգմանել գիրս ի յոյն լեզուոյն ի հայ բարբառս. վասն զի ոչ ինչ էին այնպէս տեղեակ գիտնապէս հրահանգի յունարէն ուսմանն»: Եւ ահա խնդրում են Սահակին, եւ նա թարգմանում է Ս. Գիրքը, — գրում է Փարպեցին, — եւ «կարգեցան վաղվաղակի յայնմհետէ դպրոցք հօտին ուսմանց. բազմազան դասք գրչաց», եւ այլն:

Այս երկրորդ դրուագի մէջ, որ ամենամեծ մասով Սահակին է վերաբերում, կան բանաքաղութիւններ Մ. Խորենացու Պատմութիւնից: Այստեղ բերենք այնպիսիները, որ կան գրերի գիւտի պատմութեան մէջ, ինչպէս՝ «փոխատրելով [Մեսրոպ] զհայերէն աթութայն ըստ անայթաքութեան սիւղոբայից Հելլենացւոց» (Խոր. Գ. 53), «Մաշտոց հանդիպեցուցանէր զհայերէն աթութայն ըստ կարգման սիղովբայիցն Յունաց... ըստ անայթաքութեան յունին» (Փարպ. էջ 32): Կանգ առնենք հետեւեալի վրայ:

Մ. Խորենացին (Գ. 52) գրում է Դանիէլեան նշանագրերի մասին, թէ Վահրիճն ու Հաբէլը «կարգեալ ըստ ձեւոյ օրինակի յունականին զվաղնջուցն գրեալ չարագիր տառից՝ եկեալ եւտուն ցմեծն Սահակ եւ Մեսրոպ»: Իսկ Ղ. Փարպեցին (էջ 33 եւ հտ.) գրում է, թէ հայերէն տառերով հեգենայ կազմելուց յետոյ, Ս. Գիրքը թարգմանելու համար, Սահակին խնդրում են քահանաները «հանդերձ երանելեաւն Մաշտոցիւ, զոր զարթոյց աստուածայինն շնորհ ի ցանկութիւնս այս՝ կարգել զվաղնջուցն գրեալ չարագիրս տառիցն, զորս ոչ ուրուք էր հոգացեալ արկանել ի կիր, այլ ասորի մեծաջան եւ անօգուտ ուսմամբք աշխատեալք... մինչեւ գտաւ գիր եւ աջողելով Քրիստոսի եկեալ յաճումն տակաւին զօրանայ»: Նախ՝ նկատենք, որ Խորենացու ձեռագրերի երկրորդ մեծ խմբի մէջ է «կարգեալ... ըզվաղնջուց գտեալ նշանագիր տառից»(1), եւ այս ընթերցուածն ուղիղն է, քանի որ այդտեղ խօսքը Դանիէլեան նշանագրերի մասին է, որոնք վաղուց [=վաղնջուց] գտնուած են եղել նախ քան Մեսրոպեան նշանագրերը: «Գրեալ չարագիր» այլ ընթերցուածը պարզապէս ձեռագրական աղճատում է Տ եւ Ր տառերի սովորական չփոթութեամբ եւ «նշանագիր» բառի դառնալով «չարագիր», որ ոչ մի իմաստ չունի այստեղ: Այն հանգամանքը, որ Խորենացու մի խումբ ձեռագրերի մէջ կայ ուղիղ ձեւը՝ «գտեալ նշանագիր», միւս խմբի մէջ՝ աղճատուածը, իսկ Փարպեցու մէջ աղճատուածն է՝ «գրեալ չարագիրս», այդ ցոյց է տալիս, որ բանաքաղը հաւանօրէն Փարպեցին է: Թէ չէ՝ պէտք է կարծել, թէ սկզբնապէս ե՛ւ Խորենացին, ե՛ւ Փարպեցին ունեցել են ուղիղ ձեւը՝ «գտեալ նշանագիրս», հետագայում ե՛ւ Խորենացու այս եւ այն ձեռագրերի կամ ձեռագրի մէջ, ե՛ւ Փարպեցու մէջ այդ երկու բառերը միակերպ աղճատուելով դարձել են՝ «գրեալ չարագիր», մի բան, որ անհնարին չէ, բայց դժուար ընդունելի է: Աւելի շուտ «գտեալ նշանագիր» բառերը Խորենացու որեւէ ձեռագրի մէջ դարձել են կամ կարդացուել են «գրեալ չարագիր», եւ այսպէս մտել Փարպեցու Պատմութեան մէջ: Այդ աւելի հաւանական է դառնում եւ հետեւեալով: Բանաքաղները յաճախ մեքենայաբար են կատարում իրենց գործը: «Զվաղնջուցն գտեալ նշանագիր տառից» կապակցութիւնը Խորենացու մէջ իմաստալից ու տեղին է, քանի որ այդ, ինչպէս ասուեց, վերաբերում է Դանիէլեան նշանագրերին. մինչդեռ նոյնը «զվաղնջուցն գրեալ չարագիրս տառից» ձեւով, թէկուզ «գտեալ նշանագիրս» ձեւով, Մաշտոցի վերաբերմամբ

(1) Տես՝ Մովսեսի Խորենացւոյ Պատմութիւն Հայոց Տփղիս, 1913, էջ 325, տող 5 եւ ծան. 5:

*անտեղի եւ անիմաստ է* (1):

7. Երկրորդ դրուագը *եւ Եղիշէի Պատմութիւնը նոյն նիւթն ունին, նոյն կարգով, յաճախ նման ձեւով զարգացրած: Երբեմն նոյնիսկ բառացի նման են միմեանց: Դնենք այստեղ այդպիսի մի կտոր:*

| *Եղիշէ, էջ* 205· | *Ղազ. Փարպ., էջ* 185 *եւ հտ.* |
|---|---|
| *Արդ ի վեշտասաներորդի ամի տէրութեան նորին Թագաւորի ... խաղայր գնայր յաշխարհն Քուշանաց... ի գործ պատերազմի: Եւ գնացեալ ի Վրկանէ եւ եկեալ յԱպար աշխարհ, նովին կապանօք զնախարարսն եւ զքահանայսն հրամայեաց պահել ի դղեակ քաղաքի ի Նիւշապուհ. եւ զերկուս յերանելի կապելոցն ընդ իւր խաղացոյց: Ահ արկանէր ամենայն քրիստոնէութեան ընդ որ անցանէր:* | *Եւ յամի վեշտասաներորդի թագաւորութեանն իւրոյ Յազկերտ... խաղայր ի պատերազմ ի վերայ Քուշանաց... ի Վրկանէ: Եւ եկեալ յԱպար աշխարհ, ... հրամայէր պահել անդ զկապեալսն Հայոց, զքահանայսն եւ զնախարարսն, ի դղեակ շահաստանին Նիւշապուհ: Բայց զերանելի զերկու քահանայսն... հրամայէր ընդ իւր խաղացուցանել... Ահ եւ երկիւղ արկանել ի վերայ քրիստոնէիցն:* |

*Այսպիսի նմանութիւններ կան քահանաների նահատակութեան շարունակութեան մէջ եւս: Քանի չէ յայտնաբերուած մի երրորդ աղբիւր, որից օգտուէին երկուսն էլ իրարուց անկախ, պէտք է ընդունել, որ Ղազարն օգտագործել է իր նախորդի — Եղիշէի երկը: Այդ հաստատելու համար, բացի ուրիշների բերած հիմքերից* (2), *որ կարեւոր չենք համարում կրկնել այստեղ, պիտի նկատի ունենալ նաեւ նրանց Պատմութիւնների ծագումն ու բովանդակութիւնը, որ էական է: Եթէ մէջտեղում եղած լինէր արդէն Փարպեցու Պատմութիւնը, ապա այլեւս կարիք չէր ունենալ Դաւիթ երէց Մամիկոնեանը Եղիշէից խնդրելու գրել «վասն Հայոց պատերազմին», [թէկուզ հետը նաեւ «վասն Վարդանայ»]: Ղազարի Պատմութիւնը բաւարարութիւն կը տար նրան ե՛ւ պատմական, ե՛ւ կրօնական տեսակէտներով, այլեւ Մամիկոնեան Վարդանի յաւարանութեան նկատմամբ: Իսկ երբ մէջտեղում կար Եղիշէի Պատմութիւնը, այդ չէր կարող բաւարարել Վահան Մամիկոնեանին եւ չի բաւարարել· որովհետեւ նա, ինչպէս տեսանք, ցանկացել է Փ. Բու-*

(1) Երբ այստեղ ասւում է, թէ «բանաքաղը հաւանօրէն Փարպեցին է», այդ չպէտք է անպատճառ այն մտքով հասկանալ, թէ բանաքաղութիւնը Ղազար Փարպեցի հեղինակի ձեռով է կատարուած· որովհետեւ բանաքաղութիւնները Խորենացու Պատմութիւնից Փարպեցու Պատմութեան մէջ կարող են հետագայում ուրիշների ձեռով եւս կատարուած լինել: Բայց հնարաւոր է նաեւ, որ 5րդ դարում արդէն Խորենացու այս կամ այն ձեռագրի մէջ կատարուած լինի վերեւում յիշուած աղճատումը, եւ Փարպեցի հեղինակն անձամբ օգտուած լինի այդպիսի մի օրինակից եւ գրած լինի «գրեալ շարագիրս»: Պէտք է այս էլ ասել, որ Փարպեցու Պատմութեան գրերի գիւտին վերաբերեալ հատուածն իր ամբողջութեամբ դեռ ուսումնասիրելի է բնագրական տեսակէտով, քանի որ դա, ինչպէս պարզ երեւում է, անաղարտ չի մնացել:

(2) Խորհրդածութիւնք Եղիշէի Պատմութեան վերայ, ի Վարդանայ Հացունեաց, Վենետիկ, 1896, էջ 109–147, նաեւ այլուր:

*գանդի թողած տեղից շարունակուի պատմութիւնը: Եղիշէի Պատմութիւնն այդ շրջանի միջին մասին էր միայն վերաբերում: Որպէսզի Պատմութեան մէջ ընդհատում չլինէր, Ղ. Փարպեցին պիտի գրէր եւ գրել է նաեւ այդ միջին մասը, ինչպէս կ'ուզէր Վ. Մամիկոնեանը: Բացի այդ՝ Եղիշէի Պատմութեան մէջ էլ սպարապետը մի Մամիկոնեան է, Վարդանը, բայց Մամիկոնեանների տոհմի գովաբանութիւն չկայ, եւ հէնց Վարդանն էլ այնպէս չի գովուած, ինչպէս կը ցանկար Վահանը. մինչդեռ Ղազարի երկն ամբողջապէս մի ներբողական է այդ տոհմի եւ Վարդանի:*

8. Մամիկոնեանների բարձրացում:— *Վահանի բաւարարութիւն տալու համար՝ Ղ. Փարպեցին անչափ բարձրացնում է Մամիկոնեաններին: Բայց նրանք Առաջին դրուագի մէջ դեր չունեն. հանդէս են գալիս միայն իբրեւ թոռներ եւ ժառանգներ Սահակ կաթողիկոսի* (էջ 76) *սրա մահուան ժամանակ: Նրանց փոխանակ հէնց սկզբից Առաջաբանի մէջ* (էջ 13) *նա ներբողում է իր ուսուցչին՝ Վահան Մամիկոնեանի քեռի Աղան Արծրունուն, առանձնապէս բարձրացնում է Սահակ կաթողիկոսին, որի դստեր եւ Համազասպ Մամիկոնեանի զաւակներն էին «սուրբն Վարդան եւ սուրբն Հմայեակ», Վահանի հայրը, եւ երանելին «Համազասպեան»: Սահակի ներբողը նա անում է Առաջին դրուագի մեծագոյն մասի մէջ եւ նոյնիսկ ի հաշիւ Մաշտոցի: Նրան մեծացնելու համար մէջ է բերուած եւ նրա տեսիլը, որը, սակայն, համարւում է հետագայ դարերի գործ, Փարպեցու երկի մէջ մուծուած* (1)*: Իբրեւ Վահանի նախնիներից մէկին է անշուշտ այնքան չափազանց շատ յիշում նաեւ Ս. Գրիգորին, Սահակի «նախնուն», մինչդեռ Եղիշէի Պատմութեան մէջ չկայ նրա յիշատակութիւնը: Նոյն մտքով բաւական յիշատակւում է եւ Ներսէս կաթողիկոսը:*

*Երկրորդ դրուագի մէջ լինում է Մամիկոնեանների փառաբանութիւնը: Կարելի է ասել, որ քաղաքական-կրօնական պայքարի ֆոնի վրայ շարունակ գովւում է Մամիկոնեան տոհմը եւ առանձնապէս Վարդանը: Եղիշէն էլ գրում է մի Մամիկոնեանի խնդրով, բայց նրա Պատմութեան մէջ, ինչպէս ասուեց, Մամիկոնեաններն առանձին դեր չունին եւ այնքան չի փառաբանուած Վարդանը, որքան Փարպեցու Պատմութեան մէջ: Այստեղ իշխում է տոհմային ձգտումը, տոհմի գովեստը: Վարդանը պատկերացւում է իբրեւ մի անվեհեր մարտիկ կրօնի համար: Յազկերտ թագաւորը սպառնալով պահանջում է երեք աշխարհի ազատանուց կատարել իր կամքը — դառնալ մոգական կրօնին: Ամէնքը լռում են, «բայց յառաջ կացեալ աներկիւղ եւ քաջասիրտ մտօք Վարդանայ Մամիկոնէից տեառն եւ Հայոց սպարապետի՝ պատասխանի ետ թագաւորին Յազկերտի առաջի ամենայն բազմութեանն»* (էջ 101 *եւ հտ.*)*: Հեղինակը նրա բերանը դնում է մի կարճ, կտրուկ, ուժեղ եւ գեղեցիկ կազմուած ճառ, որով հերոսը համարձակ կերպով յայտնում է, թէ չի կարող հաւատքը «վաճառել ընդ երկիւղի մարդոյ եւ սնոտի փառաց. «քա՛ւ լիցի: Իմ*

---

(1) Գրիգոր Խալաթեան, Ղազար Փարպեցի ու գործք նորին, պատմական եւ գրական քննութիւն, Մոսկուա, 1883, էջ 120 եւ հտն.:

*պատասխանիք այդ են, յորում ցանկամ մեռանել, քան թէ կալ ուրացութեամբ առանց Աստուծոյ»: Այս առաջին ելոյթն է Վարդանի, որին Ղազարը գրեթէ ամէն անգամ իր բոլոր տիտղոսներով է յիշում նոյնիսկ գրեթէ միևնոյն էջի վրայ* (1):

*Երբեք աշխարհի ազատանիները խորհուրդ անելով՝ վճռում են առերես ուրանալ քրիստոնէութիւնը. «սակայն ոչ իշխէին յայտնել զօրավարին Հայոց Վարդանայ տեառն Մամիկոնէից զմտածութիւն միաբանութեան իւրեանց. ճանաչելով ի միտս իւրեանց, թէ նմա ոչ է հնար յանձն առնուլ եւ հաւանել այսպիսի խորհրդոյ, ունելով անշարժ զհաւատ հոգւոյն իւրոյ...»: Բայց չյայտնել էլ չէին կարող. «քանզի գիտէին, եթէ առանց նորա ամենայն խորհեալքն ի նոցանէ եւ պատճառագրութիւնք եւ արարուածք՝ թերիք են եւ անկատարք»:*

*Գովեստը տրւում է ոչ միայն Վարդանին, այլեւ նրա տոհմին, առանց որի, — ասում է Ղազարը, — «գիտէին թէ թերակատար եւ ոչ լիապէս լինի նոցա գործ խորհրդոյն եւ իրացն առաջարկութիւն: Վասն զի տեսեալ էր ամենեցուն եւ լուեալ* ի գրոց *ճանաչէին, եթէ ամենայն իրք այնպիսի գործոյ ի բնէ յոլով Մամիկոնէիցն ազգաւ եւ նոցա միաբանութեամբ ելեալ էին ի գլուխ»* (*էջ* 104 *եւ հտ.*)*: Աշխատում են Վարդանին համոզել, բայց նա «ամենեւին ոչ առնու յանձն լսել այսպիսի խորհրդոյ. այլ յոյժ խռովեալ մեծաձայն գոչմամբ ասէր ցամենեսեան, թէ «Մի՛ լիցի ինձ ստել Արարչին իմում», եւ այլն: Վերջապէս մեծ դժուարութեամբ եւ շատ օրեր աղաչելով, թախանձելով՝ կարողանում են համոզել նրան, այն էլ բերելով «ի սուրբ Գրոց առակս դիպողս... յիշեցուցանելով նմա, որպէս առն ուսելոյ եւ տեղեկի, — քանզի յոյժ հմուտ էր եւ ընդել գրոց վարդապետութեան, ուսեալ եւ խրատեալ ի սուրբ հայրապետէն Սահակայ ի հաւոյն իւրմէ, — զգրեալսն սրբոյն Պօղոսի»* (*էջ* 109):

*Երեսանց ուրացութիւնից յետոյ՝ Պատմագիրը Վարդանին Յազկերտի առաջ երկրորդ անգամ հանդէս է բերում մի ճառով, որ վերջացնում է այսպէս. «Յայսմհետէ հնարիմ ամենայն զօրութեամբ եւ ուժով... գործել գործ այնպիսի, զոր ոչ միայն առաջի ձեր Արեաց, այլ եւ ի կայսեր դրանն եւ յայլ ազգս պատմեսցի համբաւն այն մինչեւ ցյաւիտեան»* (*էջ* 115)*: Դրանով Վարդանը, — գրում է Փարպեցին, — յայտնում է «զիւրն զառանց պատճառանաց զանսուտ բանս եւ զլինելոց իրս, որպէս ի դէմս զովութեան թագաւորին եւ ամենայն բազմութեան աւագանւոյն Արեաց»: «Եւ զայս որպէս ի շնորհէ Աստուծոյ-սպարապետին Հայոց Վարդանայ տեառն Մամիկոնէից ասացեալ, զոր հռչակելոց էր զնահատակութիւնն որ առ Աստուած ի դարս յաւիտենից»:*

(1) «Երանելի զօրապետն Հայոց տէրն Մամիկոնէից վարդան» (137), «սուրբ սպարապետն Հայոց Վարդան» (137), «Երանելի զօրավարն Հայոց Վարդան տէրն Մամիկոնէից» (137), «զօրավարն Հայոց սուրբն Վարդան տէրն Մամիկոնէից» (138), «Երանելի զօրավարն Հայոց Վարդան» (138), «սուրբ զօրավարն Հայոց Վարդան» (138) եւ այլն:

Դա «մեծ անուան համբաւն էր», «անուն նահատակութեան յազգս յաւիտենից» (էջ 115)։ Այսպէս Պատմագիրն իր հերոսին առաջուց գովում է իբրեւ նահատակի։

Վարդանն իր ընտանիքով եւ եղբայրներով «դրամբ եւ ամենայն աղխիւ» ճանապարհ է ընկնում Յունական կողմն անցնելու, լաւ համարելով օտարութեան մէջ «մուրողութեամբ» ապրել, քան թէ ուրացութեամբ։ Այս որ իմանում են Հայոց տանուտէրերը, ասում են. «Արդ դիտեմք, զի կորեաք ի սպառ...»։ Պէտք է նրան ետ դարձնել. «զի առանց նորա մեր այս ամենայն կամք եւ խորհուրդք եւ ոչ մի ինչ վճարին»։ Եւ Ղազարն աւելացնում է. «Քանզի տեղեկացեալ ճանաչէին ամենեքեան, թէ առանց առաջնորդութեան ազգին այնորիկ եւ ոչ մի ինչ իրք եւ գործք աշխարհիս Հայոց երթեալ էին ի գլուխ» (էջ 121)։ Մարդիկ են ուղարկում նրանց ետեւից, ասում են. «Ոչ է հնար մեզ առանց ձեր, եւ ոչ զաւակի մերում՝ երբեք պատահել փրկութեան եւ կեալ... պսակեցարո՛ւք եւ ընդ մեզ ի Քրիստոսէ, որպէս ցանկացեալ ջանայք ընդ ձեր միայն պսակիլն» (123)։

Վարդանն իր եւ իր եղբայրների կողմից պատասխանում է մի ճառով, որի մէջ յայտնում է, թէ «ոչ զմեր եւ եթ զոգւոց խնդրեմք զօգուտն, այլ եւ ընդ այլոցն խնդամք ընդ փրկութիւն։ Եւ ոչ՝ որ փախուցեալս եմք՝ յերկիւղէ ոք ինչ սրոյ կարծիցէ զայս զմէնջ, յորմէ ոչ ոք երբեք զանգիտեալ յազգիս մերում, եւ ոչ երբեք. եւ թէ ո՛րպէս ի վերայ ընկերի բարւոյ առաւել քան յանձին միշտ հոգալով զանձն եղեալ է այժմ տոհմի՝ զայն եւ ամենայն դուք, Հայք, գիտէք ստուգութեամբ ի պատմութենէ գրոց եւ ի լսելոյ ձեր յաւագաց։ Բայց ի նենգաւոր խաբէութենէ ձերմէ, զոր արարեալ է ձեր ընդ նախնիսն մեր հանապազ՝ զայն ամենայն յիշելով զնացեալ եմք լինել անձնապուրծք. որպէս ցանկ ձեր մղեալ է զմեզ ի նեղս, եւ զձեր անձինս ի բաց ունելով՝ մեր միայն ազգս պատահեալ է վշտաց մեծաց եւ մահուց» (124)։ Վերջապէս վճռում են սուտ ուրացութեան դիմակը դէն ձգել։ Այն ժամանակ իսկոյն «ռամիկ զօրացն բազմութիւնն դիմեցին ի տուն մոխրանոցին, չմնալով բնաւ աւագացն հրամանի, եւ առեալ զկրակարանն՝ վարեցին ի ջուրսն զկրականն, որպէս ի գիրկս եղբօր, ըստ ասելոյ սուտ վարդապետացն Պարսից. զոր ըմբռնեալ ջրոցն թշնամաբար եւ ոչ եղբայրաբար՝ ծախեցին» (էջ 132)։

Եւ այնուհետեւ էլ այս Պատմագիրը միշտ իբրեւ պատմուածքի կենտրոն ունի Վարդանին, որ հոգում է պատանդների համար, Վրաց բդեշխ Աշուշայի, այլեւ Վասակի որդիների։ Բայց նա իսկոյն աւելացնում է. «Եւ զայս խորհէր սուրբն Վարդան, իբրեւ ոչ առ ի պէտս ինչ օգնականութեան իւրում առաջադրեալ գործոյն, քանզի չխորհէր զյաղթութեան ինչ անուն պտանել, այլ զհեղումն արեան անձինն ի վերայ շինութեան ուխտի եկեղեցւոյ տենչէր ըմբռնել. բայց հոգայր իբրեւ զբարերար, թէ մի՛ գուցէ դժուար ինչ արանցն ի թագաւորէն դիպիցի, եւ վնասիցին»։ Եւ քիչ յետոյ. «զհոգ ընկերացն հոգայր եւ ի նահատակութիւնն ցանկացեալ ընթանայր» (125 եւ հտ.)։ Նա, որ սկզբից դժուարութեամբ էր ընդունել սուտ ուրացութիւնը, չարունակ տան-

ջրում է եւ ցանկանում է ղէն ձգել այդ անունը. «Մինչեւ ցե՞րբ հանդուրժեմք թագուցանել զճշմարտութիւնն եւ կորնչիմք. եւ այս համբաւ ելեալ տարածեալ ելից զամենայն տեղիս. այլ յայտնի լուսով գնասցուք իբրեւ ի տուընջեան եւ որդիս լուսոյ կոչեսցուք» (128)։ Եւ այսպէս, միշտ Վարդանն է մէջտեղում, միշտ էլ քրիստոնէական հաւատքի ջերմեռանդը, միշտ ցանկացողը կրօնի համար նահատակուելու։ «Ցանկութեամբ սպասեսցուք աւուր նահատակութեան մերոյ», ասում են նրա հետ եւ իր ընկերները, եւ ամէնքը։ «Ճեպեալ ընթանային զօրքն Հայոց զհետ երանելւոյն Վարդանայ սպարապետին Հայոց, երթալ յընթրիսն Քրիստոսի եւ ուտել զհաց հրեշտակաց» (էջ 145)։ Վարդանի մահը ողբում է նոյնիսկ Յազկերտը. «Լուեալ արքային Յազկերտի զկոտորումն լաւ արանց ի գնդէն Պարսից եւ զմահ առն Վարդանայ՝ յահաւոր սուգ ընկղմեալ խռովէր, յիշելով զքաջութիւն առնն եւ զլաւութիւնն՝ զոր արարեալ ընդ թշնամիս բազում անգամ ի վերայ աշխարհին Արեաց եցոյց»(155)։ Իսկ Ատրորմիզդ մարզպանն «յորժամ լսէր զվախճան... Վարդանայ եւ Հմայեկի՝ մխիթարեալ ուրախանայր մեծապէս, ճանաչելով զբարձումն սպառ սպուռ քաջ զօրավարացն»։ Այսպէս Վարդանին եւ Հմայեակին չի մոռանում Ղազարը նոյնիսկ նրանց մահից յետոյ, Միհրներսեհին անգամ ասել է տալիս գովեստի խօսքեր քահանաներին հարցաքննելու ժամանակ. «Կորուսէք ձերով կախարդութեամբ զայնպիսի քաջ այր զՎարդան, զի յօգտակարութիւն էր Արեաց տեառն. եւ զմեծամեծ գործոց նորա յիշումն առ Արեաց աշխարհին, զոր բազում զօրագլուխք եւ այլ Արիք յիշեն, ընդ որս նորա կռիւ եղեալ էր, այլ եւ զոր իւր իսկ աստուածանման տեառն իւրովք աչօք տեսեալ էր ի Մարվիռոտ՝ զնորա քաջասրտութիւնն՝ սակաւ մարդիկ են յԱրեաց աշխարհիս, որ կարեն ասել ըստ արժանի գովութեան յայրն եւ ի նորա արարած. եւ դուք ձերով անպիտան եւ վնասակար ուսմամբ թշուառացուցեալ կորուսէք զայնպիսի այր» (էջ 169)։

Վասակի դատաստանի ժամանակ Յազկերտն ինքն իր դատապարտական ճառի մէջ Վարդանին անուանում է՝ «Վաստակաւոր եւ այնպիսի պիտանի ծառայն մեր քաջն Վարդան», «այնպիսի քաջ եւ պիտանի վաստակաւորն մեր Վարդան»։ Կորցրիր, ասում է, «զայնպիսի ծառայ մի զմեր, որպէս զՎարդան, եւ կայր եւ կամ Հոնաց արքայ բռնութեամբ յինէն հանել կամէին՝ ամենայն Արեաց ուժովս կռուէի, եւ չտայի հանդչել՝ մինչեւ այրքն յիս հանէի. եւ արդ՝ դու ընդ քո ձեռն զայնպիսի օգտակար ծառայն սպաներ, եւ զմեծ եւ զպիտանի աշխարհ մի կորուսեր» (181 եւ հտ.)։ Եւ այսպէս Ղազարն ամէն ճառի մէջ մտցնում է «արթուն եւ քաջ նահատակ», «պիտանի այր քաջն Վարդանին», որ իր ընկերների հետ «ժառանգեալ զյաւիտենից կեանսն՝ ընկալան բարի յերկրի եւ անանց ազգաց յազգս իւրեանց»։ Աշխարհը եւ Վարդանի ընկերները կարեւորութիւն չունին, նրանք մի քանի անգամ յիշւում են կողմնակի կերպով լոկ։ Միայն Վարդանի եղբայր Հմայեակ Մամիկոնեանը, որ Վահանի հայրն էր, նոյնպէս եւ Արշաւիր Կամսարականը, որ Վարդանի փեսան էր, համեմատաբար աւելի մեծ տեղ ունին (էջ 119, 156—160, 177)։ Վերեւում, Եղիշէի «Հայոց պատերազմ» երկի ուսումնասիրու-

*թեան մէջ բերուած է գրեթէ ամէնը, ինչ որ այնտեղ ասուած է Վարդանի եւ Հմայեակի համար: Համեմատութիւնից պարզ երեւում է, թէ ինչո՛ւ Ղազարը երկրորդել է իր նախորդի — Եղիշէի պատմութիւնը: Պէտք էր Վարդանի եւ Մամիկոնեան տոհմի գովեստ գրել:*

*Երկրորդ դրուագի վերջում Ղազարը շատ մանրամասն եւ շատ սըրտառուչ պատմել է Ղեւոնդեան քահանաների նահատակութիւնը: Դա արդէն մի վկայաբանութիւն է, վկայաբանութիւնների շատ յատկութիւններով: Եղիշէն էլ նոյնը պատմել է, ինչպէս ինքն անձամբ լսել է Խուժիկից: Ղազարի համար իբրեւ սկզբնական աղբիւր ծառայել է մի Խուժիկ (էջ* 208, 221, 226 *եւ հտն.), բայց ինքն այդ եղելութեան մասին լսել է Արշաւիր Կամսարականից: Եւ որովհետեւ նա աւելի կարեւորութիւն տուել է իր բարեկամ Արշաւրի պատմածին, որ բաւական տարբերւում է Եղիշէի գրածից, ուստի եւ այդ էլ նա երկրորդել է, հարկաւ, իր կողմից եւս աւելի ծաղկեցնելով այն:*

9. Երկրորդ դրուագի պատմական արժէքը: — *Անշուշտ, Ղազարի «Հայոց Պատմութեան» այս դրուագի մէջ շատ արժեքաւոր լրացումներ կան Եղիշէի Պատմութեան վերաբերեալ, բայց սխալ է կարծել, թէ երբ Ղազարի տեղեկութիւնները տարբերւում են Եղիշէի հաղորդածից, գերադասութիւն պէտք է տալ Ղազարին կամ երբ Ղազարը պատմում է մի բան, իսկ Եղիշէն չունի այդ, սա դիտմամբ լռել է այդ մասին: Պատմագիրներն ոչ ամէն դէպքեր կարող են իմանալ եւ կամ գրելիս յիշել ամէն բան: Այդ կախուած է յաճախ պատմագրի ապրած կեանքից. օրինակ՝ Ղազարը մեծացել է Աշուշա բդեշխի տանը եւ ապրել է Սիւնիքում. ուստի նա գրելիս հեշտութեամբ մըտաբերել է լսած դէպքեր Աշուշայի եւ Սիւնիքի իշխանների ու Վասակի որդիների մասին եւ առել իր Պատմութեան մէջ դրանք, ինչ որ չունի Եղիշէն: Չպիտի մոռանալ, որ Ղազարն իր պատանեկան կամ վաղ երիտասարդական հասակում միայն կարող էր հանդիպել սակաւաթիւ մարդկանց Երկրորդ դրուագի մէջ պատմուած եղելութիւնների գործող անձերից: Նա իր այդ Պատմութիւնը գրել է լսելով մեծ մասամբ երկրորդ կարգի անձերից եւ այն ժամանակ, երբ ժողովրդական եւ տոհմային աւանդութիւնն արդէն գործել է յիշողութիւնների վրայ եւ դէպքերի մասին պատմուածքներն արդէն ժողովրդական զրոյցի կերպարանք են ստացած եղել, — ինչ որ երբեմն երեւում է նրա Պատմութիւնից: Ուստի ինչքան էլ նա ցանկանար «ստուգապատում», «ստուգագրութիւն» անել, «չյաւելուլ զանեղեալսն», «չնուազեցուցանել զեեալսն», երբեմն ակամայ հակառակը պիտի անէր՝ հետեւելով իր բերանացի աղբիւրներին. այլեւ այն պատճառով, որ նա պիտի Մամիկոնեանների տոհմասիրութեանը բաւարարութիւն տար: Որ Ղազարը, օրինակ, մէջ է բերում Վարդանի ի Յունական կողմերն անցնելու պատմութիւնը, որ չունի Եղիշէն, այդ նա անում է դարձեալ Մամիկոնեան տոհմի փառաբանութեան համար. մինչդեռ Եղիշէն զերծ է այդպիսի ձգտումից: Նոյն նպատակով Ղազարը յիշում է, թէ Վարդանը հոգում է «յաղագս Աշուշայի Վրաց բդեշխի եւ որդւոց իշխանին Սիւնեաց Վասակայ, զորս արգելեալ պահեաց անդրէն ի դրան Թագաւորն Պարսից Յազկերտ» (էջ* 125)*: Եղիշէն էլ, անշուշտ, ամէն բանի որ*

պատմում է՝ ականատես չի եղել: Նա էլ, ինչպես ամէն ժամանակակից պատմիչ, շատ բան ուրիշներից լսելով պէտք է գրի առնէր: Բայց նրա բանաւոր աղբիւրներն իրենք կարող էին ականատես եղած լինել եւ նոյնիսկ գործող անձերից լինել:

Բացի այդ՝ կայ հետեւեալ հանգամանքը. ինչքան էլ Եղիշէն բանաստեղծ-պատմիչ է, նա իբրեւ պատմիչ աւելի հմուտ է եւ աւելի պատրաստութիւն ունի, քան ճարտասան պատմիչ Ղազարը: Առնենք հետեւեալը: Մենք տեսանք, թէ ինչպէս Եղիշէն ճիշտ ըմբռնում է «Հայոց պատերազմի» պատճառները, որ են՝ Սասանեանների քաղաքականութիւնը պետական կրօնի վերաբերեալ, Յազկերտ Բ.ի անխաղաղասէր բնաւորութիւնը եւ մոգերին ենթարկուելը, Միհրներսեհի ձգտումը տէրութիւնն ապահովելու հռոմայեցիներից Հայաստանի կողմերում, եւ վերջապէս՝ որ գլխաւորն է՝ Հայոց այրուձիու պարտիքի ծանրացումը, հարկերի չափազանց մեծացումը, եկեղեցու եւ եկեղեցականների վրայ հարկ դնելը, պարսիկ հազարապետ կարգելը, եկեղեցին զրկելը դատաւորութեան իրաւունքներից, — հանգամանքներ, որոնցով արքայից արքայի դէմ գրգռւում եւ միանում են երեք դասերը — ֆէոդալ, եկեղեցական եւ ռամիկ, եւ երբ Յազկերտը պահանջում է ընդունել մոգութիւնը, եկեղեցականները կարողանում են մասսաներին ոտքի հանել ընդդէմ բռնակալութեան: Իսկ դրա դիմաց նա, Ղազարը, ի՞նչ է դընում: — Մի զրոյց, որ նա լսել է անշուշտ Սիւնեաց աշխարհում կրօնաւոր Մովսէսի եւ տեղի եպիսկոպոս Մուշէի մօտ եղած ժամանակ:

Սիւնեաց սեպուհ Վարազվաղանը, Վասակի փեսան, վատ է վարւում իր կնոջ հետ: Վասակը մտադրւում է՝ իր դստերի վրէժն առնելու համար՝ սպանել իր փեսային: Վարազվաղանը փախչում է Պարսկաստան հազարապետ Միհրներսեհի մօտ. «Եւ վաղվաղակի խորհուրդ դիւական ի միտս արկեալ՝ առաջնորդ կորստեան աշխարհիս լինէր, ճանաչելով ի նոյն խորհուրդ չարութեան յորդոր եւ զկամսն Միհրներսեհի» (էջ 80): Նա ուրացաւ, ասում է, հաւատը, երկրպագեց կրակին, «եղեւ դեգաւործ մահու եւ մատռուակ կորստեան ոգւոց, անօրինաւն Միհրներսեհիւ, ամենայն ակարամիտ անձանց»: Միհրներսեհն ուսուցիչ դառնալով՝ գիշեր ցերեկ սովորեցնում է նրան մոգական կրօնը. Վարազվաղանը չի կարողանում հակառակը պատասխանել (բայց ինքը Ղազարն այդ պատմելիս՝ քրիստոնէութիւնը պաշտպանում է իր կողմից): Վարազվաղանը մտածում է. «Իմաստս այս իմ եւ ջանս եւ աբարուած՝ երկուց իրաց առիթ է ինձ բարւոյ. կա՛մ հաւանի աշխարհն Հայոց եւ ուրանայ՝ մեծաց պարգեւաց եւ պատուոյ արժանի լինիմ յԱրեաց, որպէս հաւատարիմ նախագիտ եւ օգտացոյց այսպիսի կարեւոր եւ մեծ իրաց. եւ կա՛մ չհաւանին յանձն առնուլ եւ ընդդիմանան, (եւ) չկարացեալ կալ առաջի այսպիսի մեծի ուժոյ՝ կորնչին ամենեւիմբ ամբք եւ կարասեաւ. կորնչի թերեւս եւ իմ թշնամին յիւիս յայսմիկ» (էջ 84): Եւ նա իր այս չար մտածմունքը գլուխ տարաւ, ասում է Պատմագիրը: Ըստ նախատակ Գրիգորի տեղւին «ի դառնութենէ ի դայլութիւն» փոխուած «այն այր ի տոհմէն Սիւնեաց եղեւ պատճառ կործանեան բազմաց եւ կոտորածի աշխարհիս Հայոց» (85 եւ հտ.): Յազկերտի հազարապետ Միհըրներսեհը, «այր չարահնար եւ դժնամիտ զորոյ արկեալ ի միտս ի չատ ամաց զխորհուրդըս անօրէնութեան, ի կործանումն եւ ի կորուստ թուլամիտ ոգւոց», — այդ Սիւնեաց սեպուհին գտնում է «օժանդակ չար եւ սադրիչ անօրէն թիւնաւոր մտածութեան իւրում»,

«ատար մահաթոյն եւ գրգռիչ անօրէն խրում չար մտածութեանն»: Նա լսելով Վարազվաղանի բոլոր խօսքերն՝ ուրախացած՝ մտնում է Թագաւորի մօտ առանձինն, խրատում է նրան, թէ պէտք է հոգալ նաեւ հպատակների, առանձնապէս Հայոց աշխարհի մարդկանց հոգու մասին. որովհետեւ աստուածներն այդ են ուզում, եւ այլն: Ապա նա մանրամասն բացատրում է, որ Հայոց աշխարհը «մօտ եւ սահմանակից է կայսեր իշխանութեանն, եւ զօրէնս եւ պաշտօն զնոյն ունի», եթէ հայերը մոգութեան դառնան, «այնուհետեւ զձեզ սիրեն եւ զԱրեաց աշխարհս»: Վերջն աւելացնում է. «Իմ թէպէտ եւ էր յառաջագոյն հոգացեալ զայսպիսի մեծ իրս եւ զմտաւ ածեալ ցուցանել ձեզ՝ առաւել եւս հաստատեալ յանէն, որ ի Սիւնեաց տոհմէն... ի նմանէ աւելագոյն ծանեայ եւ հաստատեցի զօգուտ զհոգեւոր եւ զմարմնաւոր, որ յիրացս յայսցանէ լինելոց է ձերում թագաւորութեանդ» (87 եւ հտ.): Յազկերտը հաւանութիւն է տալիս նրա մտածին, նրա խօսքերը յայտնում է մոգերին եւ Արեաց աւագանուն. ամէնքը հիանում ու գովում են նրա խրատը: Յետոյ Թագաւորը շուտով կանչում է մոգերին, գրել տալով մոգութեան օրէնքը՝ ուղարկում է Հայաստան մի հրովարտակով, որին պատասխանում են հայերը: — Ապա Ղազարը պատմում է, թէ Վասակի անկումից յետոյ, հէնց նոյն օրը նրա թշնամի ուրացեալ Վարազվաղանին կարգում են «տէր ի վերայ աշխարհին». նա շատ անիրաւութիւններ է անում, շատ «մոխրանոցներ» շինում «ի գայթակղութիւն տանն իւրոյ» (էջ 183): Ապա՝ թէ նա «տեսիլ նշաւակի եղեւ ամենայն տոհմին իւրոյ եւ գաւառին մարդկան», որովհետեւ դիւահարելով «տանջեալ ամս բազումս առաջի ամենեցուն հանապազօր նշաւակօք, զգետնեալ փրփրէր անզգայութեամբ», մինչեւ որ խեղդւում, մեռնում է (էջ 84 եւ հտ.):

Ահա այս ժողովրդական զրոյցը, որ շատ մանրամասն (ամբողջ 12 էջ) պատմում է Ղազարը Երկրորդ դրուագի սկզբում, նա դնում է իբրեւ «Հայոց պատերազմի» պատճառ, միամիտ կերպով Վարազվաղանին համարելով «նախադիտ եւ օգտացոյց», եւ այլն, թէպէտ Միհրներսեհն էլ այդ մասին մտածած է եղել վաղուց, բայց նրան ի գործ դրդել է Վարազվաղանը:

10· Երրորդ դրուագի պատմութիւնը, սակաւ բացառութեամբ, Մամիկոնեան տոհմի եւ առանձնապէս Վահան Մամիկոնեանի եւ եղբայրների գովաբանութիւնն է սկսած նրանց ազատուելուց՝ նրանց ուսումը, ամէն տեսակի յաջողութիւնները եւ քաջագործութիւնները եւ իրենց դասային շահերի ու եկեղեցու համար խիզախ կռիւն ընդդէմ պարսիկների: Մամիկոնեանների հետ մէջ են գալիս նաեւ Կամսարականները, որոնք ազգակից էին Մամիկոնեաններին:

Մամիկոնեան Վահանը դարձել է նրա գրչի տակ մի հերոսական տիպար, առաքինի, քաջարի ըստ մարմնի եւ ըստ հոգու, ինչպիսին կը ցանկար եկեղեցին ունենալ իր քաջամարտիկին: Նա եւ նրա եղբայրները մանկութիւնից արդէն «յառաջադէմք էին յամենայնի եւ հռչակաւորք. որք մինչ դեռեւս ի տիս մանկութեան էին՝ ամենայն տեսանող մտաց երեւէին աջողակք եւ զարմանալիք» (էջ 242): «Լաւագոյնք էին եւ երեւէին յամենայնի, եւ ականաւորք ի խորհրդի, մտաւորք եւ իմաստնագիւտք. ի նետաձգութեանն գեղեցկաձիգք եւ դիպեցուցողք, յորս՝ թեթեւաշարժք եւ նախասպանք, յերկոցունց ձեռաց աջողակք, եւ յամենայն կողմանս ուղղակիք եւ չնորհալիցք. զորոց ձանձրացուցանէին բազմածառայքն զանծառայիցն զդուրսն, խնդրե-

լով հանապազ զմիս այլ եւ այլ որսոց, եւ կամ այլ պատուական եւ մեծագին գինւոյ խնդրովք ըստ իւրաքանչիւր աշխարհաց: Նոքօք չքեղանային ընթրիք ամենայն տանուտերանց Հայոց. նոքօք զարդարէին յամենայն տունս օտարք եւ ընտանիք: Նմանեցուցեալ ինքեանց ի յառաջանալ փութալին եւ զորդիս երանելւոյ Կամսարականին Արշաւրայ տեառնն Արշարունեաց, որք եւ ազգախառն իւրեանց էին ծնունդք դստեր մարտիրոսին Վարդանայ. խրատել եւ հրահանգել ըստ իւրեանց իմաստութեան եւ արուեստի ջանային» (էջ 244 եւ հտ.):

Եւ այնուհետեւ առանձնապէս գովաբանելով պատմում է Վահանի մասին եւ նրա արարքները, յիշելով եւ նրա նախնիքներին: Վահանն օժտուած է շատ բարեմասնութիւններով. «էր այր մտացի, առողջախորհուրդ եւ բարեսէր. յոր գործ եւ ձեռն արկանէր գործել՝ Տէր յաջողէր ի ձեռս նորա, եւ զօրանայր»: Նոյնիսկ պարսիկ գործակալները սիրում էին նրան եւ գովում, Պերոզ թագաւորն անգամ անձամբ ճանաչում էր նրան եւ ամէնքի առաջ գովում (էջ 245): Նրա նախանձորդները շատ են, եւ նա ստիպուած՝ «երթեալ ի դուռն՝ ուխտրանայր ի հաւատն», — ասում է Պատմագիրը: Բայց «ոչ էր խաղաղութիւն մտաց նորա զամենայն օր վասն վատ անուան ուրացութեանց, զոր նման նահատակեալ հարցն իւրոց պատճառանօք եւ ոչ ճշմարտութեամբ կրէր յինքեան»: Նա տրտմած տարակուսած՝ մաշւում է իր մէջ եւ մի հնարք է փնտրում ուրացութիւնը թօթափելու: Եւ ահա գալիս է յարմար ժամը: Վրաստանում ապստամբութիւն է ծագում: Հայ ազնուականներն էլ կամենում են ապստամբել. իրենց միտքը յայտնում են Վահանին: Վահանն զգոյշ է: Նա իր հոգեկան վիճակն ուրացութեան համար եւ ապստամբութեան դժուարութիւնը պարզում է նրանց առաջ խորհրդի ժամանակ մի ճառով: Բայց երբ ասում են, թէ «լաւ համարիմք մի ժամ մեռանել, քան թէ զամենայն օր զեկեղեցւոյ եւ զքրիստոնէութեան զարհամարհանս տեսանել եւ զքակտումն», այն ժամանակ Վահանը համաձայնում է ապստամբութեան խորհրդին, եւ ապստամբում են (էջ 261—263): Վահանին կարգում են Մամիկոնէից տէր եւ հայոց սպարապետ, իսկ Բագրատունեաց տէր ասպետ Սահակին կարգում են Հայաստանի մարզպան եւ կանչում են իրենց մօտ:

Եւ սկսւում են Վահանի հերոսական մարտերն ու մաքառումը սակաւաթիւ անձնազոհ տղամարդկանցով ընդդէմ թուով գերազանց պարսիկների, որոնց հետ էին եւ ուրացողների խմբերը: Ամէնքը քաջութեամբ եւ անձնուիրութեամբ մարտնչում են. ե՛ւ Վահանի եղբայր Վասակը, ե՛ւ Կամսարականները, ե՛ւ ասպետ Սահակը՝ տէրն Բագրատունեաց, ե՛ւ ուրիշները, բայց ամէնքի պարագլուխը, ոգին ու կարգադրողն է Վահանը: Շատ ընտիր տղամարդիկ, որոնց թւում Սահակ ասպետը, Վասակ Մամիկոնեանը, ընկնում են անհաւասար մարտերի մէջ: Բայց վերջ ի վերջոյ պարսիկները ստիպւում են տեղի տալ հայ ապստամբների առաջ, ընդունել Վահանի պայմանները, եւ քիչ յետոյ նոյնիսկ մարզպան կարգել նրան: Ամբողջ դրուագը

մի գովաբանական յիշատակարան է, գովք և՛ հեղինակի, և՛ նոյնիսկ թըշնամիների կողմից:

Բերենք իբրեւ օրինակ մի հատուած: Վահանի խմբի ետեւից ընկած հալածում են պարսից բազմաթիւ զօրքերը, հետները ուրացեալ հայ մարդիկը: Վահանի մարդկանց մեծ մասը փախչում են: «Եւ մնաց ինքն եւ յուխտապահացն Մուշեղ ի տոհմէն Մամիկոնէից եւ երեքեան Կամսարականքն, որդիք երանելւոյն Արշաւրայ, ինքեանց երկուք կամ երեք դայեկօք, եւ այլ թուով արք, որք ի յազատաց եւ որ իւր իսկ ի Մամիկոնէից տանէն, ընդ բնաւ որպէս թէ քառասնիւք կամ նուազիւք եւս: Որոց եւս տեսեալ զփախուստ ամենայն գնդին Հայոց առհասարակ եւ զարհուրեալք՝ ասէր ումն ցզօրավարն Հայոց ցՎահան Մամիկոնեան, թէ «Ցո՛ւշ, տէր, յո՛ւշ». այսինքն թէ հնար ինչ է ի ժամուս տեղի տալ եւ անձին զգուշանալ: Եւ զօրավարին Հայոց Վահանայ Մամիկոնէի տեառնագրեալ զինքն՝ բարձր ձայնիւ ասէր, թէ «Ցիս արդ ոք յուշ մի՛ ասէք. զի ինձ յուսալ ի մարդ եւ կամ պարծել մարդով՝ քա՛ւ լիցի, բայց միայն ի խաչն տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի»:

«Եւ քաջարար ի մէջ ամենայն զօրացն Պարսից յարձակէր հանդերձ լաւ ուխտապահ արամբքն սակաւուք, որ մնային առ նմա: Եւ ապշեալ ընդ ահաւոր աներկիւղ ուժին զօրավարին Հայոց Վահանայ եւ ընդ այլ սակաւ այնքան արանցն որ ընդ նմա, զօրագլխին Պարսից Շապհոյ՝ ճեպով ցիշխանն Սիւնեաց առ Գդիհոն յղէր, ասէ. «Ձե՛ռն տուր յիս կողմն, վասն զի իրս անպատումն իմն եւ նորոգս ցուցաւ. զի թէ արդարեւ զօրութիւն իմն աներեւոյթ այլ է, որ օգնէ նոցա եւ մեզ չերեւի՝ զայն ես ոչ գիտեմ. բայց եթէ անմտութեամբ ցանկան անձնամահք լինել՝ ապա ի մէջ արարեալ զամենեսեան զնոսա այսօր ձերբակալս առնեմք»: Եւ իշխանն Սիւնեաց Գդիհոնն խնդալից եղեալ ընդ կոչն Շապհոյ՝ նշկահելով փութանակի ի տեղին արշաւէր: Եւ զօրավարն Հայոց Վահան Մամիկոնեան, հանդերձ ընդ իւր միաւորս սակաւ արամբք, օգնութեամբ աջոյ հզօրին յարձակեալ՝ հերձանէր զբովանդակ գունդն Պարսից, որպէս յորդահոսանք բազմութիւնք ջրոց, որ հեղեղատեն զերկիր եւ անցանեն: Եւ ինքն հզօրարար քաջ ուխտակցօքն նման առիւծու ընդ մէջ ամենեցուն յայնկոյս ելանէր. եւ սպանեալ իւր եւ արանցն որ ընդ նմա բազում արս հզօրս պատերազմողս ի զօրացն Պարսից՝ հարեալ խոցէին նիզակաւ ընդ անութ կարեվէր եւ զհպարտ իշխանն Սիւնեաց զԳդիհոն, եւ զահաւորալուր ամրութիւնն զինուն, յոր պանծացեալ յուսայր անօրէնն՝ ցելեալ վեր ի վայր թափ ընդ լեարդն զնիզակատէգն հասուցանէին: Որոյ դառնակոռոչ չարալլուկ հեծմամբ յաւուրս սակաւս վճարեալ զոգին՝ սատակէր անխոստովան. որ պարծէրն ամբարտաւանութեամբ եւ ասէր, թէ «Ես ընդ Վահանայ եւ ընդ այլ Հայերդ ոչ եթէ նետիւ կռուիմ, այլ գդդկով սուղեալ զբոլորս ցնդեմ, ո՛ն եւ անդր ցիր եւ ցան արկից ձորոցդ եւ դաշտացդ»: Եւ եղեւ բան հպարտութեան նորա բեկումն նմին. զոր մատնեալ Աստուծոյ ի ձեռս արանց զօրուն Վահանայ Մամիկոնէի մի անգամ եւ երկիցս զիշխանն Սիւնեաց զԳդիհոն, եւ դարձեալ երկայնամտեալ ի նա Աստուծոյ իբրեւ զմարդասէր՝ ներէր խնայելով, զի թերեւս զղջացեալ գտցէ ժամ դարձի եւ ապաշխարութեան, եւ կեցցէ: Եւ իբրեւ ոչ զգաստացաւ, այլ բնաւ ամենեւիմբ արհամարհեաց զճշմարտութիւն եւ եղեալ անպատասխանի յաստուածային հարցմանն՝ ընկալաւ զսատակումն ամօթոյ իւրոյ զատոխ եւ զհանդերձելոցն: Եւ զօրքն Պարսից զկնի փախստէիցն Հայոց անցեալ երթային, յորոց եւ արս բազումս սպանին ի թուլացեալ մեղկացելոցն:

«Բայց զօրավարին Հայոց Վահանայ Մամիկոնենի հանդերձ իւրովք գործակցօքն զգործ քաջութեանն վճարեալ Աստուծոյ զօրութեամբն՝ երթայր այնուհետեւ յանհոգս, որպէս

թեւակից զօրուն Պարսից. եւ ղունդք ամենայն զօրացն Տաճկոյ եւ հայեալ ի նոսա լոկ ոչ իշխէին: Քանզի այնպէս արկեալ էր Աստուծոյ զահ եւ զերկիւղ զօրավարին Հայոց Վահանայ Մամիկոնէի ի վերայ զօրացն Պարսից, զի կարծէին, թէ ի հայեցուածէ լոկ առն Մամիկոնենին եւ յարանցն որ ընդ նմայն էին՝ չզերծանիցին առանց վտանգի: Բայց ուխտապահ զօրացելոց արանցն, որք ընդ զօրավարին Հայոց Վահանայ յարձակեալք նահատակեցան ի ժամուն՝ երանելին Քոնթ Առաւենեան, եւ երանելին Ներս Ցոլսեպեան, եւ երանելին Ատգէն սեպուհն Վանանդացի, եւ երանելին Ղերպարգոս որ է ազգաւ յոյն:

«Իսկ Սիւնեաց զօրուն թափեալ զփորոտ իշխանին իւրեանց յերկիր, վասն կարի ղազրապէս հոտելոյն, եւ պատեալ եղեգամբ՝ առեալ գնացին ազգականք իւր եւ ծառայք յաշխարհն Սիւնեաց: Եւ զայն տեսեալ Սիւնեաց այրուձիոյն բովանդակի, քամակակոտոր խորտակմամբ ցրուեալք եւ քայքայեալք՝ ընդ այլ եւ այլ ճանապարհս գնացին յիւրաքանչիւր տեղիս:

«Եւ Շապուհ Պարսիկ գնդին զօրագլուխն իբրեւ տեսանէր զքակտումն Սիւնի գնդին եւ զահաւոր զօրութիւն հակառակորդին Վահանայ Մամիկոնենի՝ զմտաւ ածեալ յիշէր զանընդդիմակայ զօրութիւնն, արամտեալ զարհուրէր, եւ թէ զի՞նչ առնիցէ՝ չիմանայր. զի ասէր. «Թէ ի կենդանութեանն այնպիսւոյ առն, որպէս Գդիհոն էր, եւ այրընտիր գնդաւ յաղթեալ զտաւ նա եւ որ ընդ նմայն էին, յաւելուածով եւ այսոցիկ եւս որ աստ են առ իս, եւ համարեալ առ ոչինչ Վահանայ, երեսուն միայն արամբք ի վերայ երից եւ չորից հազարաց յարձակեալ՝ խորտակեաց զամենեցունց զփիղս, եւ պատառեալ վեր եւ ի վայր զայնչափ զօրաց բազմութիւն՝ զայնպիսի մեծամեծ գործեաց վնաս. իսկ այժմ ո՞րպիսի վստահութեամբ կարասցուք զայնպիսի քաջորերոյ ունել զդէմ սակաւացեալքս: Այլ եւ զայս զմտաւ ածեալ երկնչիմ, մի՛ գուցէ ըստ բազմահնար իւրոյ իմաստութեանն ,առաքեալ ի մերձակայ սահմանակից տեղեացս առ հայ մարդիկդ գաւառին Անձաւաց եւ կամ Ծոփաց եւ Հաշտենից, եւ առեալ ի նոցանէ օգնականս, որպէս յիւրոց ազգականաց՝ չկարիցեմք եւ զապրուստն անձանց, որ մնացեալքս եմք՝ գտանել այնուհետեւ: Այլ եկա՛յք փո՛ւթացուք երթալ յատեանին Հայոց ի տեղիս, եւ ճեպաւ դեսպանօք զգացուցցո՛ւք արքայից արքայի» (էջ 334 եւ հտն.):

Պարսից թագաւորը պարտւում է Հեփթաղներից ու սպանւում: Պարսկաստանից դեսպան է գալիս Հայաստան պարսից զօրավար Շապուհին. սա ասում է նրան. «Իմ եւ զգունդս զոր այժմ դու ընդ իս տեսանես, թէպէտ եւ այդ լուր չարեաց չէր հասեալ, խնդրէաք պատճառս զերծանելոյ ի գործոյս յորում եմքս: Վասն զի այնպէս զարհուրեցուցեալ ապշեցոյց եւ վատնեցեալ աշխատեաց զմեզ ապստամբն Վահան, որոյ իւր իրք եւ արարածք՝ չեն որպէս զայլոց ժամանակի մարդկան, զոր մեր տեսեալ եւ գիտեմք, այլ իբրեւ զառաջին քաջացն, զոր ի վէպսն պատմեն եւ լսեմք: Քանզի թո՛ղ զայս ժամանակաց զնորա եւ զարանցն որ ընդ նմա են յիշել զգործս եւ զանէրկիւղութիւն, զոր իմ եւ կամ այլ աւագորերոյ որ տեսեալ է, այլ յառաջ քան զաւուրս տասն՝ թուով երեսուն արամբ ոչ միայն ի վերայ այսր բազմութեան, որ այժմ աստ են եւ տեսանես, յարձակեալ կոտորեաց, այլ աւելի եւս գնդաւ իշխանն Սիւնեաց Գդիհոյն իւր գաւառին այրընտիր ձիով աստ էր. եւ Վահան դէմ յանդիման այն երեսուն արամբ յարձակեալ ի վերայ, եւ նման արծուոյ, յորում ժամու ի կաքաւուց երամ սլանայցէ, իջէ զոր սպանանիցէ եւ

զայլ զամենեսեան ընդ ծերպս եւ ընդ սորս վիմաց տեղեաց ցրուեցէ՝ ըստ նմին օրինակի այսր անդր զայնչափ բազմութիւն զօրացն արկեալ վեր ի վայր ցըրուեցին․ սպանին եւ զսկայանման զայրն զԳդիհոնն, եւ այլ բազումս կոտորեալ ի գնդէն՝ գնային ինքեանք անվնասք, չերկուցեալք բնաւ յումեքէ» (էջ 343 եւ հտ․)։

11․ **Մաքառման եկեղեցա-ֆէոդալական հիմքը։** — Բնականաբար ոչ ռամիկների շահերի պաշտպանութեան համար էին տեղի ունենում այդ մարտերը։ Ռամիկների վրայ Ղազարն եւս ուշադրութիւն չի դարձնում։ Մի տեղ միայն գարնան գալու մասին գրում է․ «Եւ եկեալ ժամանակ ծաղկոցաց գարնանւոյն օդոյն շնչմանց, աւետաւոր ջերմութեանց մերկոցն չքաւորաց» (էջ 316)։ Յիշում է, սակայն, «ռամիկ զօրացն բազմութիւն» (էջ 132)։ Մի տեղ էլ յաղթող ուխտապահ նախարարներին եւ ռամիկներին հրամայում են ներս մտնել պարսիկ իշխանի մօտ (էջ 273), ինչ որ մեծ պատիւ էր ռամիկների համար։ Պարզ է, որ ռամիկներն աջակից են եղել Վահանին նրա գործունէութեան ժամանակ։ Վահանեանների մաքառումը մղւում էր, սակայն, եկեղեցա-ֆէոդալական շահերի համար, եւ դրանից օգտուողները եղել են գլխաւորապէս եկեղեցին ու ազնուականութիւնը։

Աւարայրի ճակատամարտից յետոյ ձեւականօրէն կար կրօնի ազատութիւն․ Յազկերտն ապաշաւելով՝ հրամայել էր «զպաշտօն քրիստոնէութեանն համարձակապէս ունել ամենեցուն» (էջ 156)։ Պատժում էին միայն ապստամբութեան համար՝ բանտարկած պահելով նախարարներին եւ նահատակելով քահանաներին։ Բայց հէնց այդ մեծ ապստամբութիւնը պատճառ էր դարձել, որ արքայից արքաներն աւելի զգոյշ քաղաքականութիւն վարեն, դիմելով մի փորձուած միջոցի, ներքուստ քայքայելու Հայոց եկեղեցու եւ նախարարական կազմակերպութիւնը, որպէսզի այլեւս չկարողանան ապստամբութիւն առաջ բերել։ Այդ միջոցն էր՝ պաշտպանելով անարժան հաւատուրացներին եւ պաշտօններ տալով նրանց՝ անբարոյացում եւ ներքին երկպառակութիւն առաջ բերել։ Եւ այդ յաջողւում է պարսիկներին,— որովհետեւ, ինչպէս Ղազարն Արտաշէս Թագաւորի բերանով բնորոշում է հայ իշխաններին, սրանք «սովոր են ի բնէ թշնամանել զտեարս իւրեանց… մինչ իշխանափոխք լեալ են եւ տիրատեացք» (էջ 48) ,ուրիշ խօսքով՝ հեշտութեամբ ենթարկուել են օտարների ինտրիգներին։

Ղազարը լաւ ըմբռնում է իր ժամանակի այդ քաղաքականութիւնը եւ վարպետութեամբ պարզում է ընթերցողի առաջ այն բարոյական աւերումն եւ ընկած վիճակը, որ իշխել է պարսկական Հայաստանում 5-րդ դարի երկրորդ կէսից ի վեր։ Նա ինքն իր պատանի եւ երիտասարդ հասակում ապրել եւ անձամբ զգացել էր այդ ողբալի դրութիւնը, եւ դրանից բխում է նրա դառն ու կծու նկարագիրը, որ անում է պաշտօնի համար ուրացող ազնուականների վերաբերմամբ, «Արք անմիտք եւ վնասակարք, անպիտանք եւ ոչ պիտանիք, վատք եւ ոչ քաջք, յորոց ոմանք ի լեռնախոյս աւազակաց ի մէջ անցեալ ուրացութեամբ վերտէին, եւ ոմանք կատակութեամբ աստուածս գնէին եւ զաստուածս եւ զանմիտ վաճառականսն ի միասին թշնամանէին․ ան-

մարդք ի սառյգ մարդկանէ, եւ անարժանք եւ անծանօթք յազգէ տոհմկաց»: Եւ այնպիսի մարդիկն, ասում է Ղազարը, «իւրաքանչիւր ի տունս որպէս գաղտագողի հարանօք իբրեւ անպիտանս դտանէին, ի Պարսկաց դտանուտէրութիւնն գնեալ ուրացութեամբ ըստ անարժանութեանն, եւ ոչ տիրացեալք ատոուածպաշտութեամբ իբրեւ զարժանաւորս» (էջ 243): Ահա թէ ինչպիսի մարդիկ էին գլուխ անցել հին ազնուական տոհմերին, իբրեւ տանուտէրներ: Տանուտէր դառնում էին տոհմերի մէջ աւագները, բայց Արշակունիների ժամանակ արդէն թագաւորները ձգտում էին իրենց ձեռքը ձգել տանուտէրների հաստատումը: Զօրեղ ազնուականները, սակայն, դրան ուշ չէին դարձնում, կամ թագաւորից հաստատումը ձեւական էր: Պարսից արքայից արքաները տանուտէր կարգելու իրաւունքն արդէն վերապահել էին իրենց եւ ապարապետ ու տանուտէր նշանակում էին իրենք, այն էլ ոչ արժանաւորութեան համար, այլ ուրացութեան: «Արք անպիտանք, — ասում է Վահանը Նիխորին, — առեցեալք յամենայն որբասէր մարդկանէ, փախստականք յաշխարհէն ըստ աղտեղի գործոց իւրեանց, լեառնախոյսք, աւազակապետք, արիւնապարտք, հացկատակք, բանսարկուք, խաբեբայք, չաղակրատք, անյարուչք, վատաոհմակք, ճանաչելով զանձինս թէ ոչինչ են, եւ կալ իւիք չկարեն, կասեալք յիրէ, լքեալք յորսոյ՝ գային անկանէին ի մախիրն. եւ ձեր տուեալ զխնդիրն՝ խնդալով յուղարկէիք, պարգեւելով զահ եւ պատիւ եւ գայլոց զտունս եւ զկեանս եւ զմեծութիւնս» (էջ 368 եւ հտ.):

Հետեւանքը լինում էր ազնուական տոհմերի «սասաուտի», ընտանեկան կարգերի քայքայում եւ ազնուականութեան թուլացումն ու վատացումը եւ վերջ ի վերջոյ անկումը: «Եւ էր այնուհետեւ տեսանել յաշխարհիս Հայոց զլաւութիւն հեռացեալ, զիմաստութիւն կորուսեալ, զքաջութիւն հեռացեալ եւ մեռեալ, զքրիստոնէութիւն թաքուցեալ. եւ որ երբեմն քաջանուն զօրքն Հայոց ի մէջ այլ զօրացն ամենայնի երեւէին, եւ զօրագլուխք անուանիք եւ յաղթողք՝ ապա ծաղր էին ամենեցուն եւ կատականք. մինչեւ ինքն իսկ թագաւորն Պերոզ յայտնապէս նախատելով երբեմն առաջի ամենայն առենին ասէր, թէ «Այր անպիտան եւ զունդ յետին, որ զամ մի յիմ իշխանութիւնն է՝ Ասորւոց է. բայց քան զԱսորի՝ Հայն է այր յետին եւ անպիտան»: «Եւ էր լուրն այն արժանի լալոյ եւ ողբալոյ», — աւելացնում է Ղազարը դառնացած (էջ 243): Իսկ Վահան Մամիկոնեանն այդ անարգական խօսքի առթիւ ասում է Նիխորին. «Որ ձեր խարող հացկատակաց ջոկն էր՝ եւ ոչ կորացեալ մտանէր ընդ դետին. վասն նոցա եւ խնդութիւն ես թուէր այնպիսի լուրն: Այլ որ մարդ էր, եւ ամօթ կայր ի սրտի, եւ զայնպիսի բանս յԱրեաց տեառնէն լսէր՝ ոչ միայն միանգամ եւ երկիցս եւեթ ի դէպ էր մեռանել, այլ թէ եւ տասն անգամ կեայր, եւ հանապազ զնոյն լսէր՝ տասն անգամ արժանի էր մեռանել» (էջ 369 եւ հտ.): «Այդպիսի ճաղանքի խօսքերը» եւ «վատութեան անունը» վերացնելու համար, — հէնց ասում է Վահանը, — լաւ են համարել քաջութեամբ կռուել եւ մեռնել:

Այդ «անուանեալ իշխանքն Հայոց» (էջ 244) նախանձում էին ե՛ւ ուրացողներին, ե՛ւ քրիստոնեաների աջողութիւններին, բանսարկութիւններ եւ

գրպարտութիւններ էին անում: Կային այնպիսիները, որոնք երկիւղից առերեսս ուրանում էին քրիստոնէութիւնը· կային նաեւ լաւ մարդիկ էլ, որոնք «ի հոգեսպանութենէ մոլեկան թագաւորին եւ ի կատաղութենէ ամբարշտեալ ժամանակին իշխանացն, որպէս նապաստակք ի ոլացմանէ գիշակեր արծուեաց, ի ծերպս վիմաց եւ կամ ի մացառուտ տեղիս մայրեաց զօղեալք թաքչէին· կարեւոր համարէին համբերութեամբ ի քրիստոնէութեան կարգի վախճանել, քան թէ փառախնդիր յածմամբ պատահել ուրացութեան եւ կորնչել» (էջ 246): Այսպիսիներին քաջալերողն էր Գիւտ կաթողիկոսը, Հոռոմների աշխարհում յունական դպրութիւն եւ ուսում ստացած մի անձ, որին ուրացեալ Գադիշոյ Մախազն ամբաստանում է Պերոզ արքայի մօտ, ասելով· «Զմարդիկ, որ զկամաց քոց զհրաման կամին կատարել եւ զքո օրէնս խորհին յանձն առնուլ եւ սիրել՝ կոչէ առ ինքն, եւ է՛ որ ինչ տալով, եւ է՛ զորս քաղցր բանիւք պատրէ,և յիրացն ի բաց դարձուցանէ... Այլ և զմեզ,որ զքեզ սիրեմք եւ արեգական եւ կրակի երկիր պագանեմք եւ կամաց քոց ծառայեմք՝ ատեայ եւ թշնամանէ: Եւ ինքն ընդ կայսեր խօսի եւ պատուական ընծայիւք հպատակէ նման եւ մեծամեծացն որ ի դրան նորա են» (247 եւ հտ.): Գիւտը զրկւում է կաթողիկոսական իշխանութիւնից:

Երբ Վահանը վերջնական աջողութեան է հասնում, նախ քան պարսկական իշխանութեան ենթարկուելը, երեք պայման է դնում :Առաջին՝ չդիպչել հայերի կրօնին, կրակարանները Հայաստանից դուրս հանել, հայ մարդկանց մոգական կրօնին չդարձնել: Երկրորդ՝ «իմանալ զառհմիկն եւ զանառհմիկն», մարդկանց պահ ու պատիւ չտալ ուրացութեան համար, այլ ըստ իրենց վաստակի եւ արժանաւորութեան: Եւ երրորդ՝ թագաւորն ինքն անձամբ քննի, իմանայ ամէնքի արարքները: Այս երեք պայմաններն էլ նպատակ են ունեցել վերջ տալ ազնուականութեան քայքայմանն անբարոյացման միջոցով: Դրան է ուղղուած եւ առաջին պայմանը, որով հիմնովին ոչնչացւում էր անբարոյացման գլխաւոր միջոցը: Ղազարի իդէոլոգիայի կենտրոնը, սակայն, բնականաբար այդ երեքից առաջինն էր, որի արտայայտութեանն է ծառայել նրա ամբողջ ճարտասանական արուեստը: Ուստի նա մարտերի պատմութիւնը միշտ այն ուղղութեամբ է առաջ տարել, թէ եկեղեցու համար նահատակութեան գործ, քաջագործութիւն է կատարւում: Մարտերի մէջ ընկողները եկեղեցու մարտիրոսներն են: Նա չի խորշում մինչեւ անգամ մեղքն ու անէծքը համարել պատմական եղելութիւնների պատճառ:

Նուարսակի դաշնագրութեան երեք պայմանները հայերի համար ապագայում դառնում են իբրեւ հաւատարիմ հպատակութեան հրահանգ-ծրագիր, բայց պարսից թագաւորները ոչ չարունակ անխախտ են պահում այդ պայմանները, ոչ անգամ Վահանի եւ Ղազարի օրով:

12· Գրական արուեստը: — Ղազար Փարպեցու այս մեծ երկն ունի պատմական կարեւոր արժէք, մանաւանդ Երրորդ դրուագը, որ ամենահարուստ եւ հաւաստի աղբիւրն է մի երեսուն-երեսունհինգ տարուայ պատմութեան Վարդանանց պատերազմից յետոյ:Բայց դա սոսկ աղբիւր չէ պատմութեան համար, այլեւ աչքի ընկնող մի գրական երկ է, որ գեղեցիկ ձեւով անդրադարձրած է իր ժամանակի իրականութիւնը:

Երկրորդ եւ Երրորդ դրուագները մի մի կենդանի եւ հետաքրքիր պատմուածքներ են մէկ ընդհանուր իրի՝ քրիստոնէական կրօնի գովերգի: Սկզբից հէնց աչքի է ընկնում հեղինակի պատմելու շնորհքը, ոչ միայն մանրամասնութիւնների, այլեւ ամբողջութեան մէջ: Այստեղ գտնում ենք նիւթի յարմար բաշխում եւ դէպքերի մանրամասն նկարագրութիւն: Հետզհետէ հանդէս են գալիս գործող անձերը, որոնց պատկերը հանւում է երբեմն մի քանի գծերով, բայց շատ որոշ կերպով: Մենք տեսնում ենք նրանց հոգին, նրանց մտածմունքները, այն էլ հէնց իրենց խօսքերով: Ղ. Փարպեցին խօսել է տալիս իր գործող անձերին թէ՛ միմեանց հետ կարծիքների փոխանակութեամբ խորհրդակցութիւնների միջոցին, եւ թէ՛ առանձին մենախօսութեամբ իրենց մտածմունքը յայտնելով: Բայց նրանք ոչ թէ խօսակցում են, այլ ճառում են: Հեղինակն իր Պատմութիւնը լի ու լի յագեցրել է ոչ միայն բազմաթիւ ղեղեցիկ յօրինուած պատմուածքներով, որոնք առանձին զրոյցների բնաւորութիւն ունին, այլեւ, աւելի քան Եղիշէն, մեծ եւ փոքր ճառերով: Ճառում են ե՛ւ հայերը, ե՛ւ պարսիկները, ե՛ւ գլխաւոր գործող անձերը, ե՛ւ երկրորդականները, նոյնիսկ լրաբերները: Այն, ինչ որ ուրիշ հեղինակներ իրենց կողմից կը պատմէին, մեր այս պատմագիրն իբրեւ ճարտասան՝ յաճախ գործող անձերի միջոցով է յայտնում: Առաջին դրուագի սկզբում հէնց՝ նա մենախօսել է տալիս Արշակ Թագաւորին,— որ իր խորին վիշտն է յայտնում Հայաստանի բաժանման եւ օտարների ենթարկուելու համար եւ լաւ է համարում թողնել իր նախնիքների բնիկ ու սեփական տեղերը, Արարատեան երկրի անձկալի ու ամենատենչ վայրերը եւ անցնել Հռոմների բաժինը, քան թէ «զանուն ծառայութեան ստացեալ», «բնակել անարգանօք ի մէջ անօրինաց», այսինքն պարսիկների,— եւ ամբողջ պատմութիւնը վերջացնում է Յովհան Մանդակունու ճառով, որ նա խօսում է Վահան Մամիկոնեանի մարզպան կարգուելու առթիւ: Ճառերի միջոցով հեղինակը սովորաբար յայտնում է իր սեփական մտածմունքները: Նա գործող անձերին ասել է տալիս պարսից հազարապետ Միհրներսեհի եւ անգամ արքայից արքայի առաջ այնպիսի խօսքեր, որ նրանք տուեալ վիճակի մէջ չէին կարող ասել: Դրանցով Ղ. Փարպեցին գաղափարական պայքար է մղում պարսից կրօնի կամ քաղաքականութեան դէմ եւ քրիստոնէական կրօնի գովքն ու պաշտպանութիւնն է անում: Այսպէս, օրինակ, երբ պարսիկները գերում են Կամսարականների կանանց եւ աշխատում են սրանց պատճառով իրենց կողմը գրաւել նրանց ամուսիններին, վերջիններս պատասխանում են մի ճառով, թէ «մեր գործ եւ աշխատութիւն չէ վասն երկրաւոր ինչ վայելից, եւ ոչ վասն կնոջ եւ որդւոյ» եւ այլն (էջ 325)· Նրանք կռւում են իրենց կրօնի համար, նրանք եւ իրենց ընկերները պատրաստ են ամէն ինչ զոհելու դրա համար: Ղազարը հերոսների բերանին դրած խօսքերով չբաւականանալով՝ ինքն էլ երբեմն իր կողմից յօրինում է ճառեր: Երբ «դառն իշխանն Միհրներսեհ» հազարապետը գովում է իրենց կրօնը Սիւնիքի «պիղծ ռեպուհ» Վարազվաղանի առաջ, Պատմագիրը վերջում գրում է, թէ «խորամանկ ուսուցչի վարդապետութիւնը լսելով նրա խելացնոր աշակերտը»՝

չկարողացաւ իսկոյն պատասխանել: Եւ ապա ինքը Ղազարը բերում է իր պատասխանը մի ճառով, որի մէջ պախարակում է արեգակ ու կրակ պաշտելը (էջ 82 եւ հտ.): Ճառերի չափազանցութիւնը, բնականաբար, երբեմն դանդաղեցնում է գործողութիւնը եւ յոգնեցնում ընթերցողին, բայց եւ այնպէս ճառերն իրենք յաճախ մի մի գեղեցիկ յօրինուածքներ են:

Ղ. Փարպեցու գրուածքը գրաւիչ է եւ այնու, որ նա յաջորդաբար փոխէփոխ պատմում է լաւերի եւ վատերի մասին, կամ գովքն է անում իր սիրած հերոսների՝ Մամիկոնեանների, Կամսարականների եւ ուրիշների, եւ ապա կա՛մ ինքը, կա՛մ հերոսների բերանով, հակադրութեամբ պարսաւում է վատերին եւ ուրացողներին, երբեմն էլ ընդհանրապէս հայ իշխաններին: «Չարեաց ոյժն եւ ստամբակութիւնն քաջ գիտեմ,— ասում է Վահանն իր մի ճառի մէջ դիմելով այն իշխաններին, որոնք առաջարկում էին նրան միանալ իրենց հետ եւ ապստամբել,— եւ զՀոռոմոց զթուլութիւնն եւ զխաբէութիւնն, եւ զձեր ծանուցեալ է փորձիւ իմ, թէ որպէս հարանց մերոց ուխտեցին երդմամբ, եւ ստեցին... Բայց քան զամենայն՝ եւս առաւել յանձանց երկերուք, վասն զի մարդիկ սուտք էք եւ անվստահք» (էջ 262): Պատմիչը կարողանում է մասսաների միջից առանձնացրած ստեղծել երկու հակադիր տիպի կերպարներ — լաւերի, կրօնի համար քաջութեամբ կռուողների՝ Վարդան, Վահան, Գիւտ կաթողիկոս եւ ուրիշները, եւ ուրացողների կամ պարսիկների: Վերջիններիս կարգին պատկանում են առանձնապէս Միհրներսեհը, Սիւնեաց իշխաններից Վարազվաղանը, յայտնի Վասակը, «քաջազոյն սնապարծ իշխանն Սիւնեաց Գդիհոն»: Սրանց մասին զրոյցներ Ղ. Փարպեցին լսել է, անշուշտ, Սիւնիքում ապրած ժամանակ: Նա ատում է նրանց, որ ուրանալով իրենց հաւատը՝ պարսիկների խորհրդատու եւ առաջնորդ են դառնում եւ նոյնիսկ իրենց զօրքով օգնում նրանց կամ գրգռում ուխտապահների դէմ:

Նա «նենգաւոր Վասակին» պատկերացնում է իր «չար մտածութեամբ», իբրեւ դաւաճան հէնց այն ժամանակից, երբ Վարդանն իր գնդով գնում է Աղուանք: Բա՛յց Եղիշէի պէս չափազանց խիստ չի վերաբերում «ողորմելի ուխտազրուժ Վասակին», որ զղջում է իր արարքները՝ ինքն իրեն կոծելով: Ղազարն ուրախութեամբ եւ յաճախ ժողովրդական կենդանի լեզուով նկարագրում է ոչ միայն հաւատքի մարտիկների աջողութիւնները, այլեւ ուրացողների անյաջողութիւնները: Նա բերում է տեսարաններ ու մանր դէպքեր, որոնց մասին, երեւի նա լսել է գործող անձերից եւ հէնց նրանց լեզուով էլ շարադրում է: Ուստի նրա ոճը երբեմն ունի կենդանի բնական խօսակցական եւ նոյնիսկ ընտանեկան, ռամկաբանական բնոյթ: Այդ պատճառով նրա լեզուի մէջ պատահում են ձեւեր, որոնք մօտ են մեր արդի հայերէնին: Կան եւ սրախօսութիւններ ու կծու ծաղրներ: Այդպիսի դէպքերում նա ցոյց է տալիս ոճի անկանոնութիւն, որը, սակայն, երեւան է գալիս եւ ուրիշ կտորների մէջ: Կան նաեւ աւելորդաբան կրկնութիւններ եւ խրթնութիւններ, բայց ընդհանուր առմամբ Ղազարի ոճը վայելուչ է, երբեմն կորովի: Բերենք մի երկու հատուածներ:

Վահանի ուղարկած պատգամաւորներին պատուով ընդունում եւ ճանապարհ է դնում Նիխորը, Պարսից Թագաւորի ներկայացուցիչը: «Եւ տեսեալ զայն աստուածուրաց խաբեբայիցն, որք ի միաբանութեան Պարսկացն էին, թէ ո՛րպէս յապստամբացն եկեալ Հայք ի Նիխորայ պատուեալք եւ մեծարեցան ի Պարսկացն, եւ ինքեանք արհամարհեալք են իբրեւ զանպիտանս՝ դարձեալք լի ամօթով յերկիր կործանէին: Եւ տեսեալ զայն ուխտապահ նախարարացն Հայոց եւ այլոցն, որ ընդ նոսա էին՝ ակն արկեալ ցուցանէին միմեանց զկորանս նոցա: Իսկ մի ումն ի յուխտապահացն ասէ ցնոսա. «Զի եթէ լոկ ի բանիցն խօսելոյ ընդ մեզ սիրով Նիխորայ զձեօք այդպէս ամպ մթագին եւ չափառուկ անկաւ, եւ չերեւիք ի գետնոյդ, իսկ յորժամ... տեսանիցէք փառաւորեալ զՄամիկոնեանն Վահան եւ զայլ ուխտապահսն... խորտակիցիք իսկ արդեօք եւ հեղձանիցիք...» (էջ 359 եւ հտ.):

Հայոց սպարապետը Նիխորից պատանդներ առնելով՝ իր գնդով ու պատրաստութեամբ գնում է նրա մօտ: «Մերձեալք ի գիւղն ուր Նիխոր էր՝ հրամայէր զօրուն որ ընդ նմա էին՝ վառել ըստ օրինի պատրաստութեան պատերազմի. որք ընդ լսել ի Մամիկոնենէն Վահանայ զհրամանն՝ պատրաստեալք յամենայնի կազմ ցուցանէին նմա զանձինս: Տայր հրաման Մամիկոնեանն Վահան հնչեցուցանել զփողսն պատերազմականս. եւ ի սաստկութենէ փողոցն ձայնից հնչեալ երկիրն թնդէր. յորմանէ զարհուրեալք արք զօրուն Նիխորայ՝ կարծեցին, թէ խաբէութեամբ ի վնասել զնոսա եկն Մամիկոնեանն Վահան, եւ ոչ սիրով ի նուաճումն խաղաղութեան:

«Եւ Նիխոր առաքեալ ընդ առաջ նորա արս ուագս՝ տայր ասել ցՄամիկոնեանն Վահան, եթէ «Ոչ ըստ կարգի Արեաց առնես դու զայդ, այլ նորոգ իրօք այլ իմն ձեւանաս. յորում յայժմ հետէ քեզ կարի զԱրեաց զկարգն պարտ է ունել եւ հաւանել. քանզի ի չուի՝ փողով յԱրեաց բանակ սպարապետն միայն Արեաց իշխէ մտանել, եւ այլ ոք զայդ համարձակութիւն ի Պարսիկս ոչ ոք իշխէ առնել»: Եւ Մամիկոնենին Վահանայ պատասխանի տուեալ Նիխորայ՝ ասէր. «Նախ արա՛ զիս Արեաց տեառն ծառայ, ապա եւ առանց ի քէն իսկ ուսանելոյ՝ թուի թէ եւ ես իսկ գիտեմ զԱրեաց աշխարհի զկարգ եւ զարժանն. մի՛ թուեսցի քեզ հաշուել զիս կարի մոռացկոտ. քանզի եւ ոչ բազում ինչ ամօք գնացեալ եմ ի ձէնջ» (էջ 362 եւ հտ.): Վահանը մի ընդարձակ ճառով բացատրում է Նիխորին, որ իրենց ապստամբութեան պատճառը պարսից քաղաքականութիւնն է եղել: Նիխորն ընդունում է նրա ասածները եւ պատուում է նրան:

Երբ Աւարայրի ճակատամարտից յետոյ կրօնի ազատութիւն է տրւում, հայ իշխանները խաբուած գնում են ի դուռն Ցազկերտ Թագաւորի: «Կամեցեալ չու առնել գնալ ի դուռնն եւ ինքն նենգաւոր իշխանն Սիւնեաց Վասակ, բայց նախ տայր խաղացուցանել յառաջագոյն քան զինքն» Հայոց քահանաներին, «զորս կալեալ էր նախագոյն եւ եդեալ ի տեղիս տեղիս յամուրս բերդիցն Սիւնեաց... Տայր խաղացուցանել եւ զտղայսն, զոր կալեալ էր իւր ի տոհմէն Մամիկոնէից եւ Կամսարականաց եւ ի յայլ տոհմէ իշխանացն Հայոց. կարծեցեալ առնել մեծապէս սպաս Թագաւորին Ցազկերտի եւ ամենայն աշխարհին Արեաց, եւ առնուլ զպատիւ Թագաւորութեան եւ զպարգեւս: Որ եւս առաւելապէս եղեւ նմա յԱստուծոյ աճումն ձաղանաց յաւուր թշնամանաց իւրոց, յորժամ նշաւակեալ խայտառակեաց զնա Ցազկերտ՝ ամենայն աւագանւով դրանն, ըստ աներեւոյթ սադրելոյ նոցա ի վերուստ ազդեցութենէն արդարադատին Աստուծոյ:

«Արդ խաղացուցեալ զամենեսեան զնոսա առաջի իւր յերկիրն Պարսից նենգաւորն Վասակ, յերեքտասաներորդում ամի Ցազկերտի արքային Պարսից, եւ ինքն չու արարեալ սաս-

տիկ կազմութեամբ եւ ուժգին ախիւք, մերձ ի հասանելն առ թագաւորն Պարսից, եւ զկարծեցեալ զխարէական զիւր զմիամտութիւնն ծանուցեալ թագաւորին եւ աւագանւոյն Արեաց՝ եւ առնուլ վարձս ըստ մոլեկան խորհելոյն իւրոյ զթագաւորութիւնն իսկ Հայոց։ «Ապա թէ յայնմանէ վրիպեալ ինչ, ասէ, գտանիմ՝ համայն զայլն ամենայն, զպատիւ եւ զգահս, առանց ամենայն երկբայութեան եւ յերկուանալոյ գտանեմ, եւ իմ են»։ Եւ զտէր Աստուած ոչ հարցեալ, որ ասէ մարգարէիւն, թէ «Թագաւորեցին, եւ ոչ ինեւ, եւ դաչինս կռեցին, եւ ոչ իմով կամաւ»։ Որում ի ժամ պատահելոյ նենգաւորին, ըստ իւրում կարծեաց, այսպիսի մեծամեծ պատուոյ, յառաջեալ արդարախնդիր բանն Աստուծոյ, եւ զգիմակս նենգաւոր խորհրդոց նորա մերկացեալ ցրուեալ՝ վեր ի վայր տապալեաց զամենայն դառն մտածութիւնս առն, որպէս զվայրաթոյն խորհուրդն Աքիտոփելայ։

«Եւ արդ եկեալ սա զմիջօրեաւ ճանապարհին, ուր զսուրբ քահանայսն Աստուծոյ տանէին կապեալս, նստուցեալս ի վերայ ջորւոց, եւ բազմութիւնք չուելոցն, որ էինն ընդ անօրինին Վասակայ՝ հասին նահատակացն Քրիստոսի։ Եւ նոցա հարցեալ, եթէ «Ո՞յր է բազմութիւնս այս»՝ լուան ի մարդկանէ, թէ «Սիւնեաց տեառնն է»․ եւ նոքա ասեն․ «Աւադիկ մօտ առ մեզ գայ»։ Լուեալք ի հարցանելոյ սուրբքն՝ ճանապարհին ուշադրէին․ եւ սուրբն Յովսէփ հարցանէր ցայրն Աստուծոյ Ղեւոնդ, թէ «Գիտեմ թէ հասեալ գայ ի մեզ Վասակ՝ լրբի անամօթութեամբ սրտիւ գալ առ մեզ յողջոյն․ եւ քոյ զմտաւ ածեալ՝ ո՛րպէս պարտ է առնել մեզ, հրամայեա՛, եւ՛ այնպէս առնեմք մեք»։ Եւ սրբոյն Ղեւոնդի պատասխանի տուեալ ասէ․ «Զվարդապետութիւն Փրկչին մի՛ խնդրեր ուսանել ի մարդոյ․ «Յոր քաղաք կամ ի գեօղ մտանիցէք՝ ողջոյն ասացէք․ եւ ուր գտցի որդի ողջունի՝ հանգիցէ ողջոյնն ձեր ի վերայ նորա, ապա թէ ոչ իցէ արժանի՝ առ ձեզ դարձցի ողջոյնն»։ Եւ այն ինչ կատարեալ նոցա զհարցուածոն առ միմեանս՝ եկեալ հասանէր առ նոսա նենգաւորն Վասակ Սիւնեաց տէր․ եւ տեղեկացեալ ի նոցանէ՝ վաղվաղակի իջանէր յերիվարէն եւ ողջունէր զսուրբսն․ որոց ոչ ինչ ընաւ կարծեցուցեալ թշնամութիւն ընդ նմա՝ յոյժ խնդալից սիրով տեսանէին զնա։ Եւ մանաւանդ սուրբն Ղեւոնդ, որոյ անտրտում եւ զուարթերես միշտ տեսակ իւր, եւ ախորժակ բանիւ լռջմտութեամբ խօսէր երկարս ընդ Վասակայ Սիւնեաց իշխանին։ Որ իբրեւ լսէր զքաղցրաբանութիւնն եւ զշնորհալից բանս երանելւոյն՝ խելացնորեալ ի դիւէն՝ կարծեաց՝ թէ նոքա ոչ գիտեն իսկ զիմ արարեալ ի սոսա զչարիս․ յաղագս որոյ եւ առաւելագոյն մխիթարեալ ի բանից առն Աստուծոյ Ղեւոնդի՝ երթայր ընդ նոսա երկարագոյնս։

«Եւ յետ կատարման խօսիցն՝ կամեցեալ կոչել զնոսա Սիւնեաց տէրն, զորս եւ յաւուրն յայնմիկ աղաչեաց զսուրբսն՝ ճաշել ընդ նմա յօթեւանին։ Եւ յառաջեալ սակաւ մի նենգաւորին Վասակայ ի նոցանէ՝ ձայն զկնի եդեալ սրբոյն Ղեւոնդի՝ կոչէր զնա պատուոյն անուամբ մեծաձայն․ «Սիւնեա՛ց տէր, Սիւնեա՛ց տէր»։ Եւ նորա յօժարապէս պատասխանի արարեալ․ «Տեա՛րք, զի՞նչ ասէք»։ Եւ սրբոյն ասացեալ․ «Զամենայն ինչ մեր ասացեալ ընդ քեզ՝ զպիտոյն եւ զառաւել օգտակարսն մոռացաք հարցանել, թէ ո՞ւր երթաս»։ Եւ նենգաւորին Վասակայ լուեալ զայս եւ ի մեծ տրտմութիւն ընկղմեալ՝ ասէր զարմացմամբ․ «Առ տէրն իմ երթամ, գտանել ի նմանէ ըստ արժանի մեծ վաստակոցն զհատուցումն մեծ»։ Եւ սրբոյն Ղեւոնդի պատասխանի տուեալ ասէ․ «Կարծեցուցանէ զքեզ դեւդ, որ պատրեալ սադրեաց զքեզ նենգել սուրբ Աւետարանին ուխտի, թէ արդ միայն թագաւորութեամբ աշխարհին Հայոց կարեն Արիք տալ քեզ ըստ արժանի վաստակոց քոց զհատուցումն․ այլ եւ ոչ մի ինչ է որ կարեն տալ քեզ փոխարէնս․ բայց թէ արդարեւ դու կենդանութեամբ զգլու-

կան աթոռների գերպատուութեան, նրանց հնութեան կամ ծագման վերաբերեալ փառասիրական վէճերը: Բնականաբար հայ աթոռականներն էլ, կամ հայ եկեղեցականները, ձգտել են Հայոց եկեղեցու ծագումն աւելի հնացնել եւ կապել որեւէ առաքեալի կամ առաքեալների անուան հետ: Ասորիների մէջ արդէն 3-րդ դարում առաջ էր եկել Եդեսիայի Աբգար թագաւորի աւանդութիւնը, որ գրուած կայ Լաբուբնա հեղինակի անունով: Դա ծանօթ է եղել Եւսեբիոս Կեսարացուն: Ըստ այդ աւանդութեան՝ Եդեսիայի եկեղեցու հնութիւնը հասցրած է մինչեւ առաջին դարի կէսերը, եւ նրա հիմնադիրն է Քրիստոսի աշակերտներից մէկը՝ Ադդէ անունով, ըստ Եւսեբիոսի՝ Թադէոսը: Լաբուբնայի գիրքը թարգմանուել է հայերէն, դա յայտնի է «Ղերուբնայի Պատմութիւն» անունով, փոխանակ «Ղեբուբնայի» [«Բ» տառի փոխանակ ձեռագրական շփոթութեամբ անցել է «Ր» (1)]: Թարգմանութեան մէջ կատարուած է մի կարեւոր փոփոխութիւն· այն է՝ մինչդեռ ասորական բնագրի մէջ Ադդէ առաքեալը, Եդեսիայի բնակիչներին քրիստոնեայ դարձնելուց եւ եկեղեցիներ շինելուց յետոյ՝ իրեն յաջորդ եպիսկոպոս է ձեռնադրում Ագգէոս անունով մէկին եւ այնտեղ էլ մեռնում է, հայերէնի մէջ նա եպիսկոպոս ձեռնադրելով Ադդէին [փոխանակ Ագգէոսի, «գ» եւ «դ» տառերի շփոթութիւն], ինքը գնում է «ընդ արեւելս քարոզել զաւետարանն Քրրիստոսի»: Թարգմանիչն արել է այս փոփոխութիւնը, զի նրան ծանօթ է եղել բուն հայկական աւանդութիւնը Թադէոս առաքեալի մասին: Այս առաքեալը, հայկական վկայաբանութեամբ, գալիս է Հայաստան, քարոզում է Սանատրուկ թագաւորին· քրիստոնեայ են դառնում շատերը, նաեւ թագաւորի դուստրը, Սանդուխտ, «որ էր ի տիոց տղայ, գեղեցիկ տեսլեամբ եւ փայլելուչ երեսօք, որ ոչ գտանէր համեմատ նմա ի վերայ երկրի»: Սանատրուկի հրամանով նահատակում են քրիստոնեաներին, Թադէոս առաքեալին եւ Սանդուխտ կոյսին: Բայց քրիստոնէութիւնը չի վերջանում Հայաստանում: Հին ժամանակներից արդէն կազմուել է այս աւանդութիւնը, որ գրաւոր մնում է մի քանի խմբագրութիւններով, այլեւ մի պատմութիւն Թադէոս առաքեալի եւ Սանդուխտ կոյսի նշխարների գիւտի (2): Փ. Բուզանդն

---

(1) Ղերուբնա Եդեսացի, Թուղթ Աբգարու թագաւորի Հայոց եւ քարոզութիւն սրբոյն Թադէի առաքելոյն, Երուսաղէմ, 1868:

Լաբուբնիա, դիւանագիր դպիր Եդեսիոյ, Թուղթ Աբգարու, յղեալ յասորւոյն, լուսաբանեալ, Վենետիկ, 1868:

(2) Սոփերք Հայկականք, Ը· վկայաբանութիւն եւ գիւտ նշխարաց ս· Թադէի առաքելոյ եւ Սանդխտոյ կուսի, Վենետիկ, 1853·

ա) Վկայաբանութիւն Թադէոսի առաքելոյն քարոզութեանն եւ գալստեանն ի Հայս եւ կատարմանն որ ի Քրիստոս, էջ 9 – 58·

բ) Պատմութիւն Թադէոսի առաքելոյն եւ Սանդխտոյ կուսին· էջ 59 – 75·

գ) Վկայաբանութիւն սրբոյն Սանդխտոյ դստերն Սանատրկոյ արքայի, էջ 77 – 83·

դ) Գիւտ նշխարաց, էջ 85 – 97:

*կան աթոռների վերապատւութեան, նրանց հնութեան կամ ծագման վերաբերեալ փառասիրական վէճերը: Բնականաբար հայ աթոռակալներն էլ, կամ հայ եկեղեցականները, ձգտել են Հայոց եկեղեցու ծագումն աւելի հնացնել եւ կապել որեւէ առաքեալի կամ առաքեալների անուան հետ: Ասորիների մէջ արդէն 3-րդ դարում առաջ էր եկել Եդեսիայի Աբգար թագաւորի աւանդութիւնը, որ գրուած կայ Լաբուբնա հեղինակի անունով: Դա ծանօթ է եղել Եւսեբիոս Կեսարացուն: Ըստ այդ աւանդութեան՝ Եդեսիայի եկեղեցու հնութիւնը հասցրած է մինչեւ առաջին դարի կէսերը, եւ նրա հիմնադիրն է Քրիստոսի աշակերտներից մէկը՝ Ադդէ անունով, ըստ Եւսեբիոսի՝ Թադէոսը: Լաբուբնայի գիրքը թարգմանուել է հայերէն, դա յայտնի է «Ղերուբնայի Պատմութիւն» անունով, փոխանակ «Ղեբուբնայի» [«Բ» տառի փոխանակ ձեռագրական չփոթութեամբ անցել է «Ր» (1)]: Թարգմանութեան մէջ կատարուած է մի կարեւոր փոփոխութիւն· այն է՝ մինչդեռ ասորական բնագրի մէջ Ադդէ առաքեալը, Եդեսիայի բնակիչներին քրիստոնեայ դարձնելուց եւ եկեղեցիներ շինելուց յետոյ՝ իրեն յաջորդ եպիսկոպոս է ձեռնադրում Ագգէոս անունով մէկին եւ այնտեղ էլ մեռնում է, հայերէնի մէջ նա եպիսկոպոս ձեռնադրելով Ադդէին [փոխանակ Ագգէոսի, «գ» եւ «դ» տառերի չփոթութիւն], ինքը գնում է «ընդ արեւելս քարոզել զաւետարանն Քրիստոսի»: Թարգմանիչն արել է այս փոփոխութիւնը, զի նրան ծանօթ է եղել բուն հայկական աւանդութիւնը Թադէոս առաքեալի մասին: Այս առաքեալը, հայկական վկայաբանութեամբ, գալիս է Հայաստան, քարոզում է Սանատրուկ թագաւորին· քրիստոնեայ են դառնում շատերը, նաեւ թագաւորի դուստրը, Սանդուխտ, «որ էր ի տիոց տղայ, գեղեցիկ տեսլեամբ եւ վայելուչ երեսօք, որ ոչ գտանէր համեմատ նմա ի վերայ երկրի»: Սանատրուկի հրամանով նահատակում են քրիստոնեաներին, Թադէոս առաքեալին եւ Սանդուխտ կոյսին: Բայց քրիստոնէութիւնը չի վերջանում Հայաստանում: Հին ժամանակներից արդէն կազմուել է այս աւանդութիւնը, որ գրաւոր մնում է մի քանի խմբագրութիւններով, այլեւ մի պատմութիւն Թադէոս առաքեալի եւ Սանդուխտ կոյսի նշխարների գիւտի (2): Փ· Բուզանդն*

---

(1) Ղերուբնա Եդեսացի, Թուղթ Աբգարու թագաւորի Հայոց եւ քարոզութիւն սրբոյն Թադէի առաքելոյն, Երուսաղէմ, 1868:

Լաբուբնիա, դիւանագիր դպիր Եդեսիոյ, Թուղթ Աբգարու, յղեալ յասորւոյն, լուսաբանեալ, Վենետիկ, 1868:

(2) Սոփերք Հայկականք, Ը· վկայաբանութիւն եւ գիւտ նշխարաց ս· Թադէի առաքելոյ եւ Սանդխտոյ կուսի, Վենետիկ, 1853·

ա) Վկայաբանութիւն Թադէոսի առաքելոյն քարոզութեանն եւ գալստեան ի Հայս եւ կատարման որ ի Քրիստոս, էջ 9 – 58·

բ) Պատմութիւն Թադէոսի առաքելոյն եւ Սանդխտոյ կուսին· էջ 59 – 75·

գ) Վկայաբանութիւն սրբոյն Սանդխտոյ դստերն Սանատրկոյ արքայի, էջ 77 – 83·

դ) Գիւտ նշխարաց, էջ 85 – 97:

ու Մ. Խորենացին յիշում են դրանք:

Որ Փաւստոսը գրում է, թէ ուրիշները գրել են Հայոց միջին պատմութիւնը, — «ի քարոզութենէն Թադէոսի առաքելոյ եւ նորուն յելից եւ ի մարտիրոսութենէն մինչեւ ի կատարումն վարդապետութեանն Գրիգորի եւ իւրոյ հանգստեանն եւ յառաքելապան Սանատրկոյ արքային եւ մինչեւ յակամայ հնազանդելն հաւատոցն եւ ի նորուն հանգստեան արքային Տրդատայ», — այդ վերաբերում է պարզապէս նախ՝ Թադէոս առաքեալի քարոզութեանն ու նահատակութեանը Հայաստանում, ապա՝ Ագաթանգեղոսի Պատմութեանը: Կը նշանակի՝ այդ ժամանակ արդէն եղել է Թադէոսի վկայաբանութեան յիշատակարանը, ըստ որի Հայոց եկեղեցու հիմնադիր է Թադէոս առաքեալը:

Առաջ է եկել եւ Բարդուղիմէոս առաքեալի աւանդութիւնն ու վկայաբանութիւնը, ինչպէս նաեւ Թադէոս առաքեալի հետ կապուած Ոսկեանց եւ Սուքիասեանց աւանդութիւնն ու նահատակութիւնը: Դրանք, այդ վկայաբանութիւնները բոլորը մի նպատակ են ունեցել — հնացնել Հայոց եկեղեցու սկզբնաւորութիւնը, հասցնելով այն մինչեւ առաջին դարը եւ կապելով առաքեալների անուան հետ: Բուզանդն արդէն Հայոց կաթողիկոսական աթոռն անուանում է «աթոռն Թադէոսի առաքելոյ» (Դ. 3), Մեծն Ներսէսի համար գրում է. «Արժանի եղեւ սա աթոռոյն հայրապետաց եւ տեղւոյ հարցրն իւրոց առաջնոց, զաթոռն Թադէոսի առաքելոյ, եւ ժառանգութիւն հօրն մարմնապէս ի նոյն հողեւորին Գրիգորի»:

Սխալ է այս աւանդութիւնների ծագումը կապել 5-րդ դարում ասորական կողմնորոշման հետ իբրեւ մի ասորական հակազդեցութիւն յունասէրների, «իբրեւ գրական իդէական մրցութեան» հետեւանք, միայն նրա համար, որ Թադէոս առաքեալը նախ Եդեսիայում է քարոզել եւ որ Լաբուբնայի գիրքը թարգմանել են հայերէն: Ոչ ոք չի կարող Մ. Խորենացուն համարել ոչ թէ յունական, այլ ասորական կողմնորոշման մարդ, բայց նա էլ Հայոց հայրապետական աթոռն անուանում է «աթոռ սրբոյ առաքելոյն Թադէոսի» (Գ. 91) եւ այդ աւանդութիւններն, ինչպէս վկայաբանութիւնների բովանդակութիւնը, մեծ սիրով բերում է հէնց նա (Բ. 34): Ապա՝ Բարդուղիմէոսը, ըստ իր վկայաբանութեան, Հայաստան գալիս է ոչ Եդեսիայից, այլ Հնդկաց, Պարթեւաց, Մարաց, Եղիմացոց կողմերում քարոզելուց յետոյ: Ուստի եւ անհիմն է գրել, թէ նրա եւ Թադէոսի վկայաբանութիւնները, «որոնք սկիզբն են առնում Ասորիքից՝ նպատակ ունէին նսեմացնելու Կեսարացի քարոզիչ Գրիգորին, նրա տեղը դնելով երկու նահատակուած առաքեալ»: Անգամ Փաւստոս Բուզանդը, որ Հայոց կաթողիկոսական աթոռն անուանում է «աթոռն Թադէոսի առաքելոյ», երբեք չի նսեմացնում Ս. Գրիգորին եւ Կեսարիայի աթոռը, որի աթոռակալի համար նա գրում է «կաթողիկոսաց կաթողիկոսն Եւսեբիոս», «կաթողիկոսն կաթողիկոսաց» (Դ. 4):Այդ վկայաբանութիւնների նպատակն եղել է լոկ Հայոց եկեղեցու սկզբնաւորութեան հնացումը, իսկ պատմական հիմքն այն է, որ Գրիգորի քա-

ըողութիւնից առաջ, ինչպէս յայտնի է, քրիստոնէութիւնը որոշ չափով տարածուած է եղել Հայաստանում:

## ՇՈՒՇԱՆԻԿ ՎԱՐԴԵՆԻ

1· Էական կողմը: — Ունենք երեք հայկական վկայուհիների պատումներ, որոնք երեքն էլ քրիստոնէական գաղափարներն են քարոզում ընդհանրապէս, բայց զանազանւում են իրենց արծարծած խնդիրներով եւ նահատակուհիների վիճակներով: Սանդուխտը մի մատաղահաս գեղեցիկ աղջիկ է, որ հեշտութեամբ տարւում, թովւում է Թադէոս առաքեալի «հոգեւոր» սիրով եւ ճակատագրօրէն մղւում է դէպի նահատակութիւն: Ի դէմս Հռիփսիմէի հանդէս է բերուած մի գեղեցիկ ուխտեալ կոյս, թէպէտ եւ երիտասարդ, բայց սկզբից արդէն աշխարհն ուրացած մի միանձնուհի, որ մերժում է կայսրի, յետոյ եւ թագաւորի առաջարկն ամուսնութեան համար, նրան չի հրապուրում ոչ մի աշխարհային մեծութիւն:

Շուշանիկի բնաւորութիւնն աւելի բարդ ու հարուստ է: Նա ամուսնաւոր կին է, երեք որդու եւ մի դստեր մայր· սկզբում նա կապուած է աշխարհային կեանքի հետ: Վկայաբանական հերոսներն առհասարակ զօրեղ կամքի տէր են· իբրեւ այդպիսին պատկերացուած է եւ Շուշանիկը: Այդ կամքը յաճախ ուրիշ բան չէ, բայց եթէ ֆանատիզմ–մոլեռանդութիւն, կատարեալ ենթարկումն կրօնական գաղափարին, որի համար հերոսները, ինչպէս Հռիփսիմէն, պատրաստ են ամէն չարչարանքներ կրելու եւ մեռնելու: Շուշանիկի մէջ, սակայն, չկայ այդպիսի ֆանատիզմ: Արդարեւ նա մանկութիւնից մեծացած է քրիստոնէական կրօնով եւ սիրում է այն, բայց ոչ այն աստիճանի, որ տարուի նրանով եւ հոգեպէս տրամադիր լինի նահատակութեան: Նա միայն կրօնասէր է: Նրա կրօնասիրութիւնը, սակայն, զօրանում է մի ուրիշ պարագայով: Ինչպէս հին ազնուական տոհմերի սերունդները պարծենում էին իրենց ծագումով եւ ձգտում իրենց հայրերի արժանի զաւակը լինելու եւ պահելու իրենց տան պատիւը, նոյնպիսի զգացում ու ձգտում ունի եւ Շուշանիկը: Նրա հայրն է Վարդան Մամիկոնեանը, նա թոռն է Սահակ Պարթեւի դստեր, սերուած է քրիստոնէական կրօնի նահատակներից եւ «Հայոց լուսաւորիչներից»: Նա չարունակ մտածում է արժանի լինել իր նախնիներին եւ յիշում է, որ ինքը նրանց զարմն է· դրանով զօրանում է իր ներքին համոզումը — չդաւաճանել իր հայրերին: Կայ եւ մի երրորդ պարագայ — զաւակների մասին հոգացողութիւնը, որով ընդարձակւում է այս վկայուհու հոգեկան վիճակը: Բայց դրանից աւելի կարեւոր է այն, որ նա առնակին է: Նրա դէմ կռւողը ոչ թէ մի անծանօթ օտար թագաւոր է, ինչպէս Հռիփսիմէի վկայաբանութեան մէջ, այլ իր ամուսինը, որի հետ ապրել է երկար տարիներ: Եւ վիպագիրն իր երկի մէջ զարգացրել է գլխաւորապէս յարաբերութիւնը երկու ամուսինների, որոնք բնաւորութեամբ, հակումներով ու գաղափարներով զանազանւում են միմեանցից:

*Առն (մարդու) եւ կնոջ միջեւ տեղի է ունենում մի զօրեղ ընտանեկան ընդհարում կրօնական հողի վրայ. այրը պարսկական կրօնն է ընդունում կամաւոր կերպով եւ ոչ ստիպմամբ («ի՛ կամաց եւ ոչ ի հարկէ եւ ի բռնութենէ») իր դստերի հետ իբրեւ ամուսին կենակցելու համար. առնում է նաեւ մի պարսիկ կին: Թագաւորին խոստանում է, որ իր առաջին կնոջը, Շուշանիկին էլ դարձնի մոգական կրօնին, ուստի գլխաւորապէս այդ պատճառով նա ամէն կերպ աշխատում է, որ Շուշանիկը մնայ իր կինը, եւ կարծում է, թէ նրան տանջելով կը հասնի իր նպատակին: Բայց կինը սկսում է ատել ամուսնուն, զզւում նրանից իբրեւ պոռնիկից, մնում է անյողդողդ, կտրւում է նոյնիսկ որդիներից, չի կամենում այլեւս կենակցել իր մարդու հետ եւ չարչարուելով բաժանւում է նրանից: Այս է ահա Շուշանիկի վկայաբանութեան էական կողմը:*

2. **Պատմական հիմքը**: — *Այս պատմուածքի նիւթն երեւակայական բան չէ, այլ առնուած է իրական կեանքից: Դրա պատմական հիմքը վերաբերում է 5-րդ դարի երկրորդ կէսին, պարսկական տիրապետութեան այն շրջանին, երբ Սասանեան արքաների անբարոյացնող քաղաքականութեամբ բազմացել էին հաւատուրացները Հայաստանում, եւ կային այնպիսիները, որ ամէն անկարգութիւններ անում էին Պարսից արքային հաճոյանալու համար, ինչպէս ուրացող Մախազ Գադիշոյ իշխանը, «որ զօրագլուխն եւ քաջալերիչն էր ամենայն ամբարշտելոցն դասու» (Ղ. Փարպ. 247): Նոյն դրութիւնն այդ ժամանակ իշխել է եւ Վրաստանում: Այնտեղ կար ուրացեալ բդեշխ Վազգէնը, որին 484 թ. սպանում է Վախթանգը: Նա որդին էր յայտնի Աշուշա բդեշխի, որ Վարդան Մամիկոնեանի եղբայր Հմայեակի քենեկալն էր: Նրա տանը մեծացել էին Վահան Մամիկոնեանն իր եղբայրների հետ, որոնց հետ եւ Ղ. Փարպեցին: Այդ Վազգէնի կինն էր Շուշանիկը, որ Վարդան Մամիկոնեանի դուստրն էր, եւ մեծացել էր այն առաքինի այրիների շրջանում, որոնց պատկերն այնպէս ցայտուն կերպով հանել են Եղիշէն եւ Փարպեցին: Հանդէս է գալիս եւ Սամուէլ եպիսկոպոսը, որին յիշում է Կորիւնն իբրեւ Մաշտոցի աշակերտներից մէկը Վրաստանում: Շուշանիկի վկայաբանութեան նիւթը պատկանում է ահա այս սոցիալական եւ ընտանեկան միջավայրին:*

*Թէ ե՛րբ է գրուել այդ պատումը եւ ո՛վ է դրա հեղինակը, այդ յայտնի չէ: Յօրինուած է Ագաթանգեղոսի Պատմութիւնից յետոյ. որովհետեւ կրում է սրա ազդեցութիւնը ոչ միայն Հռիփսիմէի յիշատակութեամբ, այլեւ ոճական եւ այլ նմանողութեամբ: Այստեղ այս ժամանակաշրջանում է գրւում այս վկայաբանութիւնը պայմանօրէն ըստ իր բովանդակութեան պատմականութեան: Կայ այդ վկայաբանութեան եւ համառօտը*(1)*, որի մէջ օգտուած է նաեւ Մ. Խորենացուց:*

---

(1) Սոփերք Հայկականք, Թ., Շուշանիկ. վկայաբանութիւն սրբոյն Շուշանկան դստեր մեծին Վարդանայ, Վենետիկ, 1853: Համառօտը, «Վկայաբանութիւն սրբոյն Շուշանկայ», անդ, էջ 49-55:

3. Գործողութիւնը: — *Այս վիպակի գործողութիւնը շատ փոքր է, պատմուածքն էլ շատ հասարակ եւ անպաճոյճ է յօրինուած, բայց դա իր բովանդակութեամբ շատ դրամատիկ-ողբերգական յուզիչ է: Իբրեւ նախաբան յայտնում է մի պատմական տեղեկութիւն, թէ Աշուշա բդեշխի որդին էր ուրացեալ Վազգէնը: Նրա կինն էր Սահակ Պարթեւի թոռան, Հայոց սպարապետ Վարդան Մամիկոնեանի դուստրը, որին ծնողներն անուանում էին Վարդենի [համառօտի մէջ՝ Վարդանի], բայց յետոյ նա անուանուեց Շուշանիկ:*

*Վազգէնը «լկտի եւ անառակ վարքի» տէր էր, ասւում է պատմուածքի սկզբում, իսկ Շուշանիկն իր մանկութիւնից սկսած՝ մի բարեպաշտ եւ աստուածավախ կին: Նա աղաչում էր հաւատացեալներին, որ աղօթեն Աստծուն իր մարդու համար, թերեւս մարդը նրանց աղօթքով զգաստանար:*

*Այսպէս հէնց սկզբից մի հակադրութիւն է դրուած առն եւ կնոջ, մարդ ու կնկայ, բնաւորութիւնների մէջ, եւ մենք զգում ենք, որ կինը բախտաւոր չէ իր ընտանեկան կեանքով: Եւ այդ վիճակն է, որ զարգացրած է պատմուածքի ընթացքում: Բայց այդ կինը սկզբում դեռ մի կերպ հաշտուած է իր վիճակի հետ եւ յոյս ունի, թէ իր ամուսինը մի օր կը զգաստանայ: Ինչպէս պատմուածքի ընթացքից երեւում է, նա դեռ միայն իր չորս զաւակների կրթութեամբ է զբաղուած, որպէսզի նրանք ապրեն «ի հաւատս ուղիղս եւ ի գործս բարիս, զգաստութեամբ եւ արդարութեամբ եւ աստուածպաշտութեամբ»: Նրա կեանքի մէջ, «անառակ» ամուսնու պատճառով կայ արդէն դառնութիւն, բայց ընտանեկան խաղաղութիւնը դեռ չի վրդովուած: Ահա գալիս է պատճառն ընտանիքի քայքայման: Վազգէնը գնում է արքունի դուռը: Այդքանը բաւական էր, որ Շուշանիկը մտահոգութեան եւ կասկածի մէջ ընկնէր՝ վախենալով, թէ նա կ՚ուրանայ քրիստոնէութիւնը. Նա ճանաչում էր իր մարդուն:*

*«Եւ հոգայր եւ կասկածէր [Շուշանիկ], յորժամ ի դուռն արքունի չոգաւ [Վազգէն], թէ ուրանայ զՔրիստոս»: Այդ էլ իսկապէս արեց այն ամպարիշտը, — շարունակում է վիպագիրը, — ուրացաւ ճշմարիտ Աստուծուն, երկրպագեց կրակին, եւ պարսիկ կին ուզեց թագաւորից. սա էլ նրան կին տուաւ իր կնոջ մօրը: Բացի այդ՝ նա յանձն առաւ, որ իր առաջին կնոջը՝ Շուշանիկին՝ իր զաւակների հետ դարձնի մոգութեան հաւատին: `ւ «ամպարշտութեամբ վերադառնում էր իր աշխարհը, եւ առաջուց մարդ ուղարկեց իր աշխարհը՝ յայտնելու իր վերադառնալը»: Եկաւ լրաբերը, կանգնեց տիկին Շուշանիկի առաջ եւ ողջունեց նրան իր ամուսնու կողմից:*

*Գրողը մի խնդիր է դրած, թէ իր ամուսնու ուրացութիւնից յետոյ՝ ինչ հոգեկան վիճակ պիտի ունենայ, ինչպէս պիտի վարուի այդ ջերմեռանդ կինը, այդ «սուրբ, մաքուր, անարատ, մեղսատեաց» կինը, որ «իր մանկութիւնից ատել եւ անարգել է մեղքը», որ իր բարեպաշտ հայրերի յիշատակը շարունակ իր մտքում ունի եւ ուրախ է, որ ինքը նրանց զարմն է. Նա որ «իր նախնի սուրբ Սահակի մի փոքրիկ Աւետարանն ունէր, այն իր հետ էր պահում եւ նրանով աղօթում»: Առաջին հարցը, որ նա տալիս է լրաբերին՝ այս է.*

— Արդարեւ ո՞ղջ կեց հոգւով, — արդեօք նա, ամուսինը, ո՞ղջ է հոգով: — Եւ երդուեցրեց նա լրատուին, որ ամէն բան յայտնի իրեն: Լրաբերըն էլ ասաց արտասուելով.

— Այրն քո ուրացաւ զճշմարտութիւնն եւ երկիր եպագ ատրուշանացն եւ եղեւ ընդ պարսկական օրինօքն:

«Եւ տիկինն յերկիր կործանեցաւ, — շարունակում է վիպագիրը, — լայր դառնապէս եւ եղուկ զայրն կուրացեալ յԱստուծոյ ասէր, եւ աւաղ զորդիսն վարկանէր», — եւ տիկինը գետին կործանուեց· լալիս էր դառնապէս, վայ էր տալիս ուրացող ամուսնուն եւ իր որդիներին աւաղում, խղճում:

Այս անարգուած կնոջ առաջին հոգսն, ուրեմն, դեռ իր համար չէ, այլ միտն ընկնում է իսկոյն ամուսինը, որ եղկելի, ողորմելի է դարձել իր ուրացութեամբ, եւ իր զաւակները, որոնց ստիպմամբ պէտք է ուրանալ տային իրենց հաւատը, մանաւանդ իր դուստրը, որ բռնի ամուսնութեամբ պիտի կենակցէր իր հօր հետ: Սկսւում է նրա տառապանքը:

Երկար ողբում եւ արտասւում է: Նա ուրիշ հնար չունի որդիներին ուրացութիւնից փրկելու, բայց եթէ, իբրեւ հաւատացող կին, զաւակների հետ գնալ եկեղեցի եւ աղօթել: Նրա հոգսն այժմ միայն իր զաւակներն են, որոնց ինքն «արդարութեամբ սնուցել է իր բազուկների վրայ»· Նրանց յանձնում է Աստուծու խնամքին, որ «ամպարշտութեամբ լի ուրացեալը» չկարողանայ որսալ նրանց «ի վիհս կորստեան»: Իսկ իր վերաբերմամբ աղօթելիս արդէն պարզ որոշում է անում այդ անարգուած կինը· «պատրաստ եմ ես, — ասում է նա, — չարչարել եւ մեռանել... եւ ոչ հաւասարել կամաց ուրացողին եւ պիղծ անկողնակցին»: — Նրա վիճակը վճռուած է արդէն· Նա այլեւս «պիղծ անկողնակցի» կինը չի ուզում լինել: Դրանով կը լուծուի իր անարգանքը:

Երեկոյեան ժամերգութիւնը կատարում են· ամէնքը սգակից են նրան, բայց չեն համարձակւում բան խօսել նրա հետ: Նա դուրս է գալիս, մտնում եկեղեցու մօտ մի փոքրիկ տնիկ եւ դարձեալ ամբողջ գիշերը լալով ողբալով աղօթում է անդադար. սրտի դառնութիւնից ոչինչ չի ճաշակում: Մերձաւորներից ոչ ոք չի համարձակւում մի բան խօսել նրա հետ: Եպիսկոպոսն այն ժամանակ բացակայ էր Բդեշխի տնից: Տիկնոջ դռան երէցը միայն համարձակւում է մխիթարել նրան այս անասելի վտանգի համար եւ շատ խօսքերով քաջալերել եւ յուսադրել: Մերձաւորները վերջապէս ասում են, որ մի փոքր կերակուր եւ ըմպելի ընդունի նա: Տիկինը լսում է նրանց եւ փոքր ինչ կերակուր եւ ըմպելի ընդունում, եւ ապա ամբողջ գիշերը դարձեալ անց է կացնում աղօթքով, սաղմոսերգութեամբ եւ գիրք (Ս. Գիրք) կարդալով: «Եւ փոքր ինչ մրրկեալ սիրտն եւ տարակուսեալ եւ խռովեալ՝ կազդուրէր յուսովն Աստուծոյ»:

Առաւօտեան ժամն ասում են, պրծնում: Այդ ժամանակ դռան քահանան դարձեալ մօտենում է, տիկնոջ ասում.

— Զի՞նչ եդիր ի մտի եւ զի՞նչ ունիս առնել, որ յարուցեալ ի վերայ

քո պատերազմ յուրացողէն, յաղագս միաւորութեան իւրոյ վասն դստերն, որ ըստ Պարսկաց օրինին հանդերձեալ էր առնուլ իւր ի կնութիւն...» — Ի՞նչ ես մտածում, ի՞նչ պիտի անես. ուրացողը քո դէմ պատերազմելու է, որպէսզի միաւորուի իր դստերի հետ, որին պատրաստուել էր կնութեան առնելու ըստ պարսկական օրէնքին...

Այսպէս՝ քահանան յիշեցնում է Շուշանիկին, ինչ որ ամենից սոսկալին էր. հայրը պատրաստւում էր կնութեան առնել իր հարազատ դուստրը, եւ ինչպէս համառօտ վկայաբանութեան մէջ ասուած է, այդ անառակը «վասն դստերն իւրոյ եմուտ ընդ զրադաշտական օրինօք մոգութեան»: Եւ տիկինը պատասխանում է քահանային.

— Այդ է հէնց նեղութիւն ու վիշտ պատճառում ինձ, իմ որդիների եւ դստերի հոգին ու ցաւը. որովհետեւ գիտեմ իմ մարդու ամպարշտութիւնը, դրա համար էլ այսքան երկար սուգ եմ անում եւ արտասուք թափում:

Եւ սկսում է նա ողբալ.— «Ո՞վ կը տայ իմ գլխին ջուր եւ իմ աչքերին արտասուքի աղբիւրներ եւ օթեւան անապատում, որպէսզի լայի ճշմարիտ Աստուծուն ուրացող իմ ամպարիշտ ամուսնուս անբժշկելի վէրքերի համար եւ իմ ծնունդների տարակուսանքի համար... Ո՞վ այսքան կորստի համբաւը լսի եւ չողբայ. ո՞ր լսելիքը կը դիմանայ այս կորստի լուրին, որ ոչ մի մխիթարութեան նշոյլ չունի. ո՞ր տեսանելիքը կը տանի ամբարիշտ եւ ուրացող մարդու տեսքը... Ո՞վ է այն հանճարեղն եւ իմաստունը, որ կարողանայ այս դէպքի լուծումը գտնել, ասացէ՛ք, ո՛վ մարդիկ... Կորա՛ւ հաւատս, յոյս կտրուեց երկրից եւ մարդկանցից. յոյս մնաց միայն ամենակալ Աստուծու վրայ, որ փրկի ինձ: Եւ երանի տա՛ր նա ինձ աղաւնու թեւեր, որ թռչեմ, հասնեմ, դադարեմ անապատում եւ մի փոքր սթափուեմ իմ այս մրրկած սրտնեղութիւնից ու վհատութիւնից... Ես պատրաստ եմ ինձ բանտի ու կապանքի եւ ամէն տեսակ կտտանքի մատնելու, որով կը նեղի ինձ ուրացողը. որպէսզի Աստուծով ապրեմ եւ չթողնեմ իմ հայրերի, Հայոց լուսաւորիչների աւանդութիւնը... Անշարժ եւ անդրդուելի հաստատ կը մնամ տիրոջ զօրութեամբ եւ շնորհիւ, եւ ուրացողի հետ չեմ միաւորուիլ եւ պղծուիլ...»:

Ընթերցողը կամ ունկնդիրը,— որովհետեւ վկայաբանութիւնները կարդացւում էին եկեղեցում ժամաւորի համար,— հետաքրքրւում է արդէն, թէ ի՛նչ ելք պիտի ունենայ երկու ամուսինների վերաբերմունքը դէպի միմեանց—մէկն ուժեղ, բդեշխ, յենուած պարսկական թագաւորի իշխանութեան վրայ, միւսը թոյլ եւ անօգ մի կին, որին տանջում է ոչ միայն իր անարգուած վիճակը, այլ աւելի եւս իր զաւակների եւ ամենից շատ իր դստերի:

Այն ժամանակ ուրացած Բդեշխը վերադարձաւ, եկաւ Վրաստան իր տունը,— պատմում է վիպագիրը:— Նա կանչեց իր եպիսկոպոսին եւ քահա-

*նաներին, խոսեց նրանց հետ ողոքանքով, խոստացաւ պարգեւներ տալ նրանց եւ աւելի լաւ վարուել նրանց հետ, «Միայն թէ,— ասում էր,— մի՛ խորշէք իմ ակէրութիւնից»: Նրանց միջոցով լուր ուղարկեց Շուշանիկին, որ ետ դառնայ իր մոլքից եւ համաձայնի իր ամուսնու կամքը կատարելու եւ աշխարհի փառքն աւելի վայելելու, քան առաջ: Նրանք, հետները եւ Բդեշխի եղբայրը՝ Ջոջիկ, գնացին տիկնոջ մօտ, ամէնքն էլ արտասուելով դժուարանում էին ասել նրան ուրացողի պատգամները: Վերջապէս շատ ողբալուց եւ հառաչելուց յետոյ՝ եպիսկոպոսն ու Ջոջիկը յայտնեցին նրան Բդեշխի ասածները:*

*Շուշանիկը խիստ խօսքերով պատասխանեց եպիսկոպոսին.*

*— Դո՞ւ էլ այդ ես հրամայում ինձ, որ միաբանեմ ամբարիշտ եւ աստուածուրաց մարդու հետ. դո՞ւ էլ ես այդպիսի բան թելադրում ինձ եւ ուզում ես խաբել ինձ: Աւա՛ղ իմ թշուառութեանս, որ ոչ մի յորդորիչ չեղաւ ինձ: Իմացէ՛ք այն ամբարշտի նենգութիւնը, որ ձեր միջոցով ուզում է կորստի վիհը ձգել ինձ... «Հեռացէ՛ք, եւ պիղծերին մի՛ մօտենաք, ասում է տէրը. գի ով որ պոռնիկին մօտենայ, նա մի մարմին է պոռնիկի հետ. իսկ ով որ տիրոջը մերձենայ՝ մի հոգի է նրա հետ, եւ ուր որ տիրոջ հոգին է՝ ազատութիւն է մեղքից»:Եւ որովհետեւ մենք այս ազատութիւնն ունենք,իմ վերակացունե՛ր եւ սիրելիներ, ո՞վ կարող է ինձ բաժանել նրանից, որ փրկելու է ինձ յաւիտենական հրից եւ ուրացողի հետ հաղորդութիւնից [=ամուսնական կենակցութիւնից]:*

*Եպիսկոպոսն ասաց.*

*— Ճշմարիտ են ասածներդ, բայց այս էլ պիտի մտածել՝ որ եթէ չդաս, կարող է աւելի բարկանալ, տաքանալ, գրգռուել եւ չարիք չարիքի վրայ կը հասցնի վերակացուներին [=եկեղեցու պաշտօնեաներին] եւ ժողովուրդներին: Բայց եթէ վեր կենաս գաս, թերեւս մի փոքր իջնի անօրէնի բարկութիւնը:*

*Այսպէս ուրեմն, եպիսկոպոսը ենթարկւում է իշխանին եւ այդ պատճառաբանում է ընդհանուր շահով: Միշտ այդպէս է եղել: Այդպէս է դատում եւ «Սասնայ Ծռերի» մէջ Վարդպատրկայ եպիսկոպոսը, որ աւելի լաւ է համարում մի կին զոհաբերուի, քան ժողովուրդը վնասուի: Էլ ուրիշ դեր չունի այդ եպիսկոպոսը վկայաբանութեան մէջ, բայց եթէ այն, որ հանդիսադիր լինի Շուշանիկի թաղմանը: Բայց մենք դառնանք բովանդակութեանը:*

*Նոյնպէս եւ Բդեշխի եղբայրն աղաչում էր,— շարունակում է վիպագիրը,— ամէնքն էլ ստիպում, թախանձում էին նրան, Շուշանիկին, որ Բդեշխի կամքը կատարի:Վերջը տիկինն ընդունեց նրանց ասածը կատարել:*

*— Ձեր կամքը կը կատարեմ,— ասաց նա,— բայց ես գիտեմ, որ չարչարելու է ինձ: Դուք կը գնաք իւրաքանչիւրդ ձեր տեղը եւ ինձ մենակ կը թողնէք: Բայց ես մենակ չեմ. գի ինձ հետ է տէրը, որի վրայ եմ դրել*

յոյս· տէրն է իմ օգնականը, եւ ես չեմ վախենալ։ Ինձ ի՞նչ պիտի անի այն չարը։

Շուշանիկը վեր կացաւ, գնաց նրանց հետ։ Բայց ապարանքը մտնելուց յետոյ՝ չուզեց գնալ իր սենեակը, այլ փակուեց մի խցիկի մէջ եւ աղօթում էր՝ խնդրելով Աստուծուց, որ համբերութիւն տայ իրեն, որպէս զի երբ ուրացողն իր վրայ կը բարկանայ, ինքն իրեն պահի սրբութեամբ, անարատութեամբ. «Դու ինքդ գիտես, տէ՛ր իմ, — ասում է նա դիմելով Աստուծուն, — որ իմ մանկութիւնից սկսած ատել եմ մեղքը… Յիշիր քո ծառաներին, իմ հայրերին, որոնց զարմն եմ ես, որոնք սիրեցին քեզ, ո՛վ ճշմարիտ Աստուած, եւ նրանց բարեխօսութեամբ օգնի՛ր ինձ այս առաջիկայ պատերազմի մէջ։ Ես ոչ մի օգնական չունեմ, ոչ հայր եւ ոչ եղբայր, եւ ոչ ուրիշ մէկը մերձաւորներից, որ ընտանեբար հոգար ինձ համար։ Դո՛ւ, տէր Աստուած, … զօրութիւն տուր ինձ… նմանելու իմ հայրերին… Յոյս քեզ վրայ եմ դրել· դու, որ սուրբ Հռիփսիմէին փրկեցիր Թագաւորի բարկութիւնից, ինձ, անարժան աղախնիս էլ փրկիր ուրացողի բարկութիւնից»։

Նա երեք օր մնաց խցիկի մէջ առանց ուտելու եւ խմելու։ Երրորդ օրը, երբ ընթրիքի նստեցին, Բդեշխն իր եղբայր Ջոջիկին ուղարկեց տիկնոջն ընթրիքի կանչելու։ Նա, Շուշանիկը, չէր ուզում գնալ, բայց երբ շատ խնդրեց, աղաչեց տէգրը, գնաց լալով եւ տրտմութեամբ, բայց ոչինչ չկերաւ· այլ լուռ նստած էր արտասուելով։ Վերջը վեր կացաւ, գնաց իր խցիկը։ Բդեշխը սաստիկ յուզուեց, բարկացաւ, եւ երբ ամէնքը անցան իրենց տեղերը, մարդ ուղարկեց՝ կանչեն նրան։ Բայց նա չուզեց գալ։ Այն ժամանակ «Բդեշխն ինքը վեր կացաւ, գնաց նրա մօտ զազանացած, եւ ծառաների հետ քարշ էր տալիս նրան իր տեղը։Իսկ նա աղաղակում եւ ասում էր. «Տէ՛ր Յիսուս, օգնիր ինձ»։ Եւ խիստ սաստիկ բրածեծ էր անում նրան· ոչ ոք չէր կարողանում նրա բարկութիւնն իջեցնել։ Այն ժամանակ իմաց տուին եղբօրը՝ Ջոջիկին· եկաւ, բայց նա էլ չկարողացաւ նրա բարկութիւնն իջեցնել· նրան էլ արհամարհանքով քշեց դուրս։ Եւ խիստ ու անողորմ կերպով սաստկացրեց հարուածները, մինչեւ որ նրա վրայ ոչ մի ողջ տեղ չմնաց բրածեծ անելուց։ Եւ ընկած մնացել էր ինչպէս մեռել· իսկ Բդեշխն աւելի եւս զայրացած՝ հայհոյում էր Աստուծուն եւ նրա հայրերին։ Եւ երբ շատ հարուածներից յետոյ՝ Թուլացած ուշագնաց եղաւ երանելին, հրամայեց, որ նրան ետ քաշեն իր տեղը։ Կարծում էր թէ մեռել է»։

Միւս առաւօտեան Բդեշխը վեր կացաւ գնաց Շուշանիկին տեսնելու։ Երբ տեսաւ, որ դեռ կենդանի է, պահապաններ կարգեց, որ ոչ ոքի չթողնեն՝ նրա մօտ մտնի, ոչ տղամարդու, ոչ կին մարդու, որպէսզի նոյն չարչարանքով մեռնի։ Հրամայեց, որ միայն գարի հաց ու ջուր տան, եւ ինքը գնաց աշխարհի գործին։Իսկ երանելին ամենեւին չվախեցաւ, այլ գոհ էր, որ չարչարանքի արժանացաւ իր հաւատքի համար եւ «իր ուզածը եղաւ՝ ազատուեց ուրացողի հետ հաղորդութիւն (=ամուսնական յարաբերութիւն) ունենալուց»։

Այսպէս ուրեմն, ամէն ինչ վերջացած էր այդ երկուսի մէջ: Յաղթեց թոյլ եւ անօգնական կինը, որ ոչ ոք չունէր իր մօտ հայրական ընտանիքի մեծաւորներից, որ պաշտպանէր, գոնէ մխիթարէր նրան: Միայն նրա տէգրը, Ջոջիկը կար բարի սրտով, բայց նա էլ անզօր էր իր «դազանացած» եղբօրը առաջ: Այսպիսի պարագաներում հին երկերի մէջ քահանան է հանդէս գալիս իբրեւ սփոփիչ:

Եկաւ դարձեալ Բդեշխի դրան քահանան, — շարունակում է վիպագիրը, — աղաչում էր պահապաններին, որ թողնեն իրեն տեսնել տիկնոջը: Եւ ի՞նչ տեսաւ նա: Կնոջ ամբողջ մարմինն ուռած էր, արիւնը կպած նրա շուրջը, եւ դրանից նա չէր կարողանում կանգնել: Քահանան լալիս էր դառնապէս: Շուշանիկն ասաց.

— Մի՛ լար իմ վրայ, որովհետեւ... այս չարչարանքով սրբուեցի ամպարիշտ մարդու պիղծ անկողնից. եւ ես ուրախ եմ իմ այս չարչարանքի համար, որովհետեւ սրանով կը հանդիպեմ իմ հայրերի բարի ժառանգութեանը...

Քահանան աղաչում էր նրան, որ մի բան ուտի. նա թէպէտ ուզում էր ուտել, բայց սաստիկ ցաւերից չէր կարողանում: Ապա մի քիչ ճաշակեց գարի հացից ու ջրից, եւ դարձեալ գիշեր ցերեկ անդադար աղօթք էր անում այնտեղ, ուր փակել էին նրան:

Այն ժամանակներում ահ եղաւ մի տեղից: Շուշանիկի որդիներին տանում էին մի ամրոց. Կուր գետից անցնելու ժամանակ որդիներից մէկը խեղդուեց: Բդեշխն ու ամբողջ աշխարհը սուգ էին անում նրա համար, իսկ երանելի տիկինը գոհանում էր Աստուծուց՝ ասելով «թէպէտ եւ մարմնով մեռաւ, բայց հոգով ազատուեց իր ուրացող հօր որոգայթներից»: Մարզպանն ու վրաց նախարարները եկան Բդեշխի մօտ՝ նրան մխիթարելու եւ սգահան անելու: Նա մարդ ուղարկեց Շուշանիկին պատուիրելու, որ վեր կենայ, բանտից գնայ եպիսկոպոսի ապարանքը, որ եկեղեցու մօտ էր, եւ մի խցիկի մէջ մնայ պահապաններով, մինչեւ որ մարզպանն ու նախարարները վերադառնան իրենց տեղերը: Շուշանիկն ուրախութեամբ կատարեց նրա հրամանը: Գնաց պատուիրած տեղը, հագաւ կրօնաւորական զգեստ, եւ պահքով ու աղօթքով, տքնութեամբ եւ արտասուքով ճգնում էր այնպիսի եռանդով, որ ամէնքը զարմանում էին:

Երբ մեծամեծները ետ դարձան իրենց տեղերը, այն ժամանակ Բդեշխը մարդ ուղարկեց ողոքական խօսքերով ասելու Շուշանիկին, որ ետ կանգնի իր այնպիսի մտքից եւ իրեն՝ Բդեշխի կամքը կատարի: Նա խոստանում էր առաջուանից աւելի մեծ պարգեւներ եւ պատիւներ տալ նրան, եթէ այդպէս վարուի: Բայց տիկինը յանձն չառաւ նորից ապրել աստուածուրացի հետ: Նա իր զարդերն ու պատուական հանդերձները տանել տուաւ Բդեշխին եւ այսպիսի պատասխան ուղարկեց նրան. «Ի՞նչ գործ ունի հաւատացեալն անհաւատի հետ, ի՞նչ հաղորդութիւն ունի լոյսը խաւարի հետ. եւ ի՞նչ միաբանութիւն կարող են ունենալ Աստուծու տաճարն ու պոռնիկը: Ես այն չար-

չարանքներով, որ իմ գլխու բերիր քո բարկութեամբ, սրբուեցի նաեւ առաջուայ միաւորութիւններից: Ես ինձ ընծայել եմ Քրիստոսին. այլեւս ինձ պէտք չեն ո՛չ փառք, ո՛չ պատիւ, ո՛չ հարստութիւն, ո՛չ մարդկային որեւէ բան, փափկութիւն ու հեշտութիւն...Այսպէս պիտի կենամ մնամ... Ինչ որ անելու ես՝ արա՛, պատրաստ եմ մեռնելու, քան թէ իմ հայրերի աւանդութիւնները թողնելու»:

Շուշանիկի զարդերն ու հանդերձները որ տարան Բդեշխին եւ նրա ասածները յայտնեցին նրան, նա սաստիկ բարկացաւ եւ սպառնաց նոր չարչարանքներ տալ տիկնոջը: Բարկութիւնից էլ չհամբերեց, վեր կացաւ, հետը շատ ծառաներ առած գնաց, գտաւ նրան եկեղեցում: Էլ չսպասեց, մտաւ ներս, գաւազանով ծեծեց նրան եւ մազերից բռնած՝ քարշ տուաւ եկեղեցուց դուրս: Ոչ ոք չհամարձակուեց մօտենալ եւ խեղճ գառն ազատել գայլի ձեռից: Միայն քահանաներից մէկն ասաց. «Ի՞նչ ես այդպէս անողորմ չարչարում»: Այն ժամանակ բարկութիւնը թափեց քահանայի գլխին եւ խիստ հարուածեց նրան: Բոլոր ժողովուրդը բարձրաձայն ճչալով լաց էին լինում առհասարակ այր ու կին. եւ նրա վրայ ընկաւ, սկսեց հարուածել ամէնքին, ինչպէս մի չար եւ վայրենի գազան: Եւ երանելիին քարշ էր տալիս գետնի երեսին փշերի ու քարերի վրայով: Ապա հրամայեց ապարանքը տանել նրան: Նրա ամբողջ մարմինը պատառ պատառ եղաւ, որովհետեւ գետինը փշոտ էր. արիւնը հոսում էր նրանից եւ գետինը կարմիր ներկում:

Ապարանք որ հասան, դարձեալ առաջուանից աւելի շատ ծեծեց նրան: Բայց Շուշանիկը ոչ մի ձայն չէր հանում, դիմանում էր մեծ ուժով. բանի տեղ չէր դնում քարշելն ու բրածեծը: Նրա վրայի ու գլխի հանդերձիկը քարշ տալուց պոկուել, պատռուել էր, եւ նա մերկ գլխով էր, եւ պատառոտուած ըզգեստով ծածկում էր իր մարմինը... Իսկ ամպարիշտը չէր ամաչում եւ չէր խղճում. այլ չարի ազդումից ինչպէս սաստիկ հեղեղատ վարարած՝ կարծում էր, թէ կարող է ողողել, գերել-գերփել երանելիի լուսաւոր վարքն ու սրբութիւնը, եւ ասում էր. «Թող օգնի քեզ Քրիստոսը եւ քո հայրերի աղօթքը, որի վրայ դրել ես յոյսդ»:

Նա Շուշանիկի ոտներն ու ձեռները երկաթի կապանքներով կապել եւ բանտ ձգել տուաւ նրան. վզին էլ շղթաներ անց կացնել տուաւ, հրամայեց երկաթի ցից խփեն պատին եւ շղթաները ցցից կապեն, ապա կապանքներն ու շղթաները կնքեց: Պահապաններ կարգեց, հրամայեց որ մեծ ահով եւ զգուշութեամբ պահեն, ոչ ոքի ամենեւին ներս չթողնեն եւ միայն գարի հաց ու ջուր տան: Եւ ապա դարձաւ, ասաց նրան.

— Դէ՛ հիմա ուրախացիր այդ չարչարանքի ու կապանքի համար, որով քեզ պիտի տանջեմ մինչեւ ի մահ: — Տիկինը պատասխանեց.

— Ուրախ եմ այս չարչարանքի համար, որովհետեւ դրանով արժանացայ իմ սուրբ հայրերի ժառանգութեանը, որոնց դու հայհոյում ես...

Ամպարիշտը ոչինչ չպատասխանեց, այլ միայն զարմանում էր նրա համբերութեան վրայ, եւ այնպէս կապած թողնելով նրան՝ դուրս եկաւ, գնաց աշխարհը: Տիկինը մնաց մենակ:

*Երեք օրից յետոյ եկաւ դարձեալ քահանան: Այս անգամ նա պահապաններին մի բան տալուց յետոյ միայն մտաւ ներս: Նրան տեսաւ կապանքներով, բայց ուրախ զուարթ եւ անդադար սաղմոս երգելիս: Քահանան համբուրում էր նրա կապանքները, եւ ասաց.*

*— Երանելի ես դու կանանց մէջ. արդարեւ բարի արմատի բարի շառաւիղ հանդիսացար... եւ Ս. Հռիփսիմէի նման արժանի պիտի լինես պսակի: Տիկինը պատասխանեց.*

*— Ես արժանի չեմ երանութեան եւ ոչ էլ այն սրբերի պսակներին եւ ուրախութեանը, որոնք մերձաւորութիւն չեն ունեցել ամպարիշտ մարդու հետ. իսկ ես ապրել եմ ամպարիշտի հետ եւ որդիներ եմ ծնել՝ ի կորուստ եւ ապականութիւն ամպարիշտի ձեռով: Թէպէտ և աւազանի շնորհքով վերածնուել են եւ արդարութեամբ սնուցել եմ նրանց... բայց արժանի չեն. ժանդի սերմը բարի բոյս չի լինիլ: Միայն մի բան կայ, որ չարչարանքներով ու երկաթի կապանքներով ես սրբուեցի ուրացողի հետ մերձաւորութիւնից...*

*Եւ քահանան շատ ուրախանալով տիկնոջ համբերութեան վրայ՝ ետ դարձաւ իր օթեւանը: Եւ այնուհետեւ նա ամէն օր ծածուկ ծառայում էր նրա կապանքներին:*

*Բդեշխի եղբայրը՝ Ջոջիկն այնտեղ չէր Շուշանիկի երկրորդ չարչարանքի եւ դժնդակ կապանքի ժամանակ: Այդ որ լսեց՝ շատ տրտմեց: Երբ եկաւ, գնաց եղբօր մօտ, աղաչում էր նրան, որ Շուշանիկի կապանքներն արձակի. շատ օրեր անցան, մինչեւ որ նա կարողացաւ Վազգէնին համոզել՝ այն էլ միայն վզի շղթաներն արձակելու, իսկ ոտների համար ամպարիշտը երդուեց, թէ չի արձակիլ մինչեւ իր մահուան օրը:*

*Դրանից յետոյ Բդեշխը հեռացաւ Ճորայ կողմերը: Իսկ Շուշանիկը նոյն կապանքներով եւ տառապանքով, քաղցած ծարաւ եւ նեղութեամբ վեց տարի մնում էր բանտում. շարունակ ճգնում էր պահքով եւ աղօթքով, տքնութեամբ եւ արտասուք թափելով, գիշեր ցերեկ սաղմոսելով, գարի հացով ու ջրով բաւականանալով... Նրա առաքինի համբաւի վրայ՝ շատ արք եւ կանայք եւ աշխարհական ուխտաւորներ գալիս էին տեսնելու նրան: Նա խրատում էր ամէնքին, իր աղօթքներով օգնում շատերին, բժշկութիւններ անում... (Մանրամասն պատմւում է, թէ ինչպէս մի պարսիկ կին՝ անուանի մոգերից՝ նրա շնորհիւ բժշկւում է բորոտութիւնից եւ քրիստոնեայ դառնում):*

*Այս ամէնը կատարւում էր Բդեշխի բացակայութեան ժամանակ. երբ նա այդ լսում էր, զարմանում էր: Չորս տարի յետոյ նա վերադարձաւ հեռաւոր ճանապարհից, եւ իսկոյն սկսեց մեծ հարուածներով ու տանջանքով նեղել սրբին: Սաստիկ բարկացաւ պահապանների վրայ. «Չէ՞ որ ձեզ պատուիրեցի զգոյշ լինել, — ասում էր, — եւ մարդ ներս չթողնել»: Եւ նրանց այնքան ծեծեց, որ ծեծից մեռան: Հրամայեց՝ Շուշանիկին աւելի եւս նեղել բանտի կապանքներով:*

*Այս բոլորից յետոյ այդ ամպարիշտը դարձեալ չկարողացաւ հանել իր նպատակին: Այն ժամանակ նա մի ուրիշ հնարք մտածեց. գտաւ մի կա-*

խարդ կին եւ ջանաց այժմ նրա միջոցով Շուշանիկին հանել իր գեղեցիկ կրօնաւորական կեանքից: Կախարդ կինը յանձն առաւ այդ գլուխ բերել: Բդեշխը մի տարի էլ այսպիսի դիւական ցնորքներով էր կռւում նրա դէմ, բայց դարձեալ չկարողացաւ մի բան անել: Դրա մէջ էլ նա ամօթով մնաց, բայց եւ այնպէս եա չկանգնեց իր զուր մտադրութիւնից, թէպէտ եւ ինչպէս մեքենան ամուր պարսպից՝ նա եա էր դառնում առաքինի կնոջից: Բայց նա իր որդիներին արդէն ուրացրել էր, որպէսզի հաճոյանայ պարսից թագաւորին եւ աւելի պատիւ ընդունի նրանից: Իսկ տիկնոջ մասին իմաց տուաւ արքային, թէ «նա դուստրն է այն Վարդանի, որ ընդդիմացաւ Պարսից թագաւորին: Դրա համար էլ, — ասում էր, — մինչեւ մահը պիտի չարչարեմ ու տանջեմ նրան, որ չուզեց պաշտել արքայի աստուածներին, ինչպէս իր աշխարհաւեր հայրը»:

Բայց էլ ի՞նչ պէտք է ասել նրա չար բարքի մասին, — շարունակում է վիպագիրը, — նա ամէն բանի մէջ էլ մեղք էր գործում. որովհետեւ թէպէտ եւ վեց տարի շատ աշխատեց, բայց բնաւ չկարողացաւ յաղթել նրան...

Եւ Շուշանիկի հանդերձն էր մերկ մարմնի վրայ քուրձ, վրայից պարեգօտ, եւ մի փոքրիկ մաշկէ բարձիկ սնարքին, եւ մի փոքրիկ աղօթանոց առաջին, ոտներն էլ բոբիկ, ուտելիքը գարի հաց, խմելիքը ջուր: Եւ ամէն բարի կարգերի մէջ առաջադէմ:

Եօթներորդ տարուայ սկզբում երանելին հիւանդացաւ իր կրած սաստիկ նեղութիւններից ու տանջանքից: Բդեշխի եղբայր Ջօջիկը եկաւ, երկրպագեց տիկնոջ առաջ եղած սուրբ նշանին, իր կնոջ հետ ընկաւ Քրիստոսի սուրբ աղախնի առաջ, որպէսզի օրհնութիւն ստանայ նրանից. ողբալով եւ արտասուելով խոստովանեց իր շատ մեղքերը: Շուշանիկն էլ շատ յորդորական խօսքերով խրատում էր նրան՝ հեռանալ չար գործերից, ատել չարը եւ սիրել բարին ու արդարութիւնը: Եկան եւ Սամուէլ եպիսկոպոսապետն ու Յովհան եպիսկոպոսը քահանաների ու սարկաւագների հետ, որոնք երանելիի քաջալերիչներն ու նեղութեան ընկերներն էին, որպէսզի յուղարկեն նրան իր մեծ նեղութիւնից դէպի նաւահանգիստ Քրիստոսը: Եկան նոյնպէս եւ Վրաց աշխարհի նախարարները, ազատներն ու տիկինները, այլեւ սեպուհները, որպէսզի մասնակից լինեն նրա յուղարկման օրհնութեանը: Ամէնքն էլ նրա երկաթի կապանքներից մի կտոր ուզում էին ի յիշատակ, իսկ նա ասում էր.

— Ես արժանի չեմ դրան. բայց Աստուծու կամքը թող լինի. արէք, ինչպէս կամենում էք: Ապա նա օրհնեց ամէնքին, շնորհակալութիւն յայտնեց եպիսկոպոսին, իբրեւ իր դայեակին կամ հօրը: «Եւ այսպէս ամէնքին հրաժեշտ տալով եւ օրհնելով՝ աղաչում էր, որ իրեն, եթէ արժանի կը համարեն, դնեն այն տեղում, որտեղից առաջին անգամ քարշ տուին իրեն»:

Եւ աղօթելով աւանդեց հոգին: Ամէնքն էլ լալիս էին: Եպիսկոպոսն ու բոլոր ժողովուրդը ամփոփեցին նրա մարմինը. պարկեշտ կանանց ձեռով անուշահոտ իւղերով ու խնկերով լուանալ տուին այն եւ ինչ որ պէտք էր

անելով ու մաքուր կտաւներով պատելով՝ դրին իր պատուիրած տեղում։ Ամբողջ գիշերը ժամ ասացին, յետոյ պատարագ արին, եւ սրբի Հանգստեան օրը, քաղոց ամսի 17ին, մեծ տօն արին, տարէց-տարի կատարելով այն ի փառս Աստուծու։ Եւ Աստուած ոչ սակաւ բժշկութիւն էր անում սուրբ տիկնոջ բարեխօսութեամբ։

Այստեղ բերուեց Շուշանիկի վկայաբանութեան բովանդակութիւնը դրեթէ ամբողջ, սակաւ կրճատումներով, մեծ մասամբ բառացի, որովհետեւ այդ տիպի երկերն ընդհանրապէս անծանօթ են մնում մեր գրագէտներին, իսկ դրանք մեր հին դրականութեան մէջերն են, գեղեցիկ արուեստով յօրինուած։ Շուշանիկի պատումի մէջ էլ կան, հարկաւ, վկայաբանական ընդհանուր մոտիւներ, ինչպէս են՝ աղօթքներ, հերոսի նշանաւոր ծագում, մանկական ուսում եւ բարեկրթութիւն, չարչարանք, բժշկութիւններ, հանդիսաւոր թաղում եւ այլն։ Բայց դրանց մէջ չէ այս պատումի բուն արժէքը, այլ իր թեմայի եւ արուեստի մէջ։

Կարիք չկայ այստեղ մանրամասն բնորոշելու Վազգէնին, Շուշանիկի այդ հակատիպին, — անառակ, ամպարիշտ մի մարդ, որ փառքի եւ իշխանութեան համար ուրացած էր Պարսից թագաւորին եւ դաւանաբար ատրկացնում էր ամէնքին, որի իշխանութիւնը, սակայն, ոչ մի հնար չգտաւ Շուշանիկին վերադարձնելու իր գիրկը։ Նրա այլանդակ բնաւորութեան գծերն այնքան պարզ են վիպակի պատմուածքի մէջ, որ էլ հարկաւոր չէ դրանց վրայ կանգ առնել։ Կարիք չկայ նաեւ վերլուծութիւնն անելու գործողութեան, որ այնպէս ճիշտ եւ մեկին զարգացրած է հոգեբանօրէն։ Դառնանք դարձեալ այս պատումի գլխաւոր իդէային։

Շուշանիկն, այդ համեստ կինը, մեռնելիս միայն մի խղճ է ունենում — այն, որ իրեն թաղեն այն տեղում, ուր իրեն քարշ տուին եկեղեցում բազմութեան առաջ։ Նրա իղձը կատարում են։ Ի՞նչ է նշանակում այդ, որ խիկայէս վիպակի վերջաբանն է։ — Այդ նշանակում է, որ աղօթողներն ամէն անգամ, երբ կը տեսնեն նրա գերեզմանը, պիտի ասեն՝ Այստեղ հանգչում է այն առաքինի կինը, որին իր գազան մարդն այնքան տանջելով տանջեց, որպէսզի իր կամքը կատարի. բայց նա, կինը, հաստատ մնաց իր որոշմանը, անվերջ չարչարուեց եւ բաժանուեց իր պիղծ մարդուց։

Այսպէս ուրեմն, այս պատումն էապէս մի ընտանեկան դրամա է, սրտաճմլիկ, միանգամայն եւ սարսռալի նկարագիր այն զաժանութիւնների, որոնց ենթակայ են եղել թոյլ եւ անօգնական կանայքն իրենց բռնակալ ամուսինների ձեռին, որոնք կատաղում, գազանանում էին նրա համար, որ իրենց կանայքը չէին լսում իրենց եւ անկախ էին մտածում, հաստատ մնալով իրենց համոզմունքին, իրենց իդէալին։ Բայց դա միաժամանակ եւ զօրեղ բողոք է այն սարկական զառն վիճակի դէմ, որ կանայք ունեցել են նոյնիսկ բարձր ազնուական տներում։ Այս վկայաբանութիւնն իսկապէս առաջին եւ գեղեցիկ վիպակն է կնոջ ազատագրման մասին Հայոց դրականութեան մէջ։

# ԴԱՒԱՆԱԲԱՆԱԿԱՆ ՊԱՅՔԱՐԻ ԳՐԱԿԱՆՈՒԹԻՒՆ

## ՊԱՅՔԱՐԻ ՍԿԻԶԲԸ

1· **Մաքառում քաղկեդոնականութեան դէմ: —** *Արդէն 5-րդ դարի կէսին բորբոքւում են միաբնակութեան եւ երկաբնակութեան վէճերը, որոնք սուր կերպարանք են ստանում Քաղկեդոնի ժողովի ժամանակ* (451 *Թ·*) *եւ յետոյ: Արդարեւ այդ շրջանում արեւելեան Հայերն զբաղուած էին քրիստոնէութիւնն ընդդէմ մոգութեան եւ պարսից թագաւորների պաշտպանելով, բայց սխալ է ասել, թէ մինչեւ «5րդ դարի 80ական թուականները Հայերը չէին կարող ամենեւին դաւանանքի տարբերութիւնների մասին մտածել»: Չէ՞ որ այդ շրջանում գործել են եւ մտաւոր ու գրական աշխատանքով պարապողները, որոնք թարգմանութիւններ են արել: Կար ապաքէն նաեւ արեւմրտեան հայութիւնը, «կէս ազգին հայոց» թէ՛ Մեծ Հայաստանի արեւմըտեան մասում եւ թէ՛ Փոքր Հայքում, ուր ոչ թէ քրիստոնեայ մնալու համար պիտի հոգային, այլ նոյնչափ պիտի հետաքրքրուէին դաւանաբանական վէճերով, որչափ եւ կայսրութեան մէջ յոյներն եւ այլ ազգերը: Զենոն կայսրի «Հենոտիկոն» կոչուած հրովարտակի ժամանակ* (482 *Թ·*) *այդ վէճերը չափազանց սրուած էին եւ Զենոնի հրովարտակով նրա եւ յաջորդ Անաստաս կայսրի* (491–518 *Թ·*) *օրով մի առժամանակ լռեցուել էին՝ յետոյ աւելի եւս բորբոքուելու համար: Այդ հրովարտակով՝ «բնութիւնների մասին վիճելն արգելւում էր, առաջին երեք տիեզերական ժողովների ուսուցած դաւանութիւնը միայն ուղղափառ ճանաչւում»: «Հենոտիկոնը խուսափում էր այնպիսի նախադասութիւններից, որոնք վէճի առարկայ էին, չէզոքում էր առանձնապէս Կիւրեղի քրիստոսաբանական վարդապետութիւնը եւ լռելեայն մերժում Քաղկեդոնի որոշումները»* (1):

*Զենոն կայսրը* 484 *Թ· փակել է տալիս Եդեսիայի դպրոցը, հալածում այնտեղ եղած նեստորականներին, որոնք անցնում են Պարսից տէրութեան կողմը եւ հաստատւում Մծբինում: Պերոզ թագաւորը* (459–484 *Թ·*) *քաղաքական նպատակներով «պաշտպանութիւն է ցոյց տալիս նեստորական վարդապետութեան հետեւողներին, որոնք հալածւում էին հռոմէական տէրութիւնից իբրեւ հերետիկոսներ, եւ նպաստում է, որ իր քրիստոնեայ հպատակները յարեն այդ աղանդին: Պարսից տէրութեան հին քրիստոնէական եկեղեցին* 483*-ին կամ* 484*-ին Բեթ Լապատի ժողովում ընդունում է նեստորական հաւատամքը եւ դրանով բաժանւում հռոմէական քրիստոնեաներից մի մեծ անդունդով, ուստի եւ տէրութեան համար սակաւ վտանգաւոր դառնում»* (2)*: Դրանով այդ եկեղեցին անջատւում է եւ հայոց եկեղեցուց, որ*

(1) Եր· Տէր-Մինասեանց, Ընդհանուր եկեղեցական պատմութիւն, Էջմիածին, 1908, էջ 334:

(2) Թ· Նէօլդեքէ, Պատմութիւն Սասանեան տէրութեան, թարգմ· Ն· Քարամեան, Վաղարշապատ, 1896, էջ 41:

մերժում է նեստորականութիւնը:

Այդ ժամանակներում հէնց (484 թ.) Պարսից բաժնի Հայաստանում ապստամբում եւ յետոյ մարզպան է կարգւում Վահան Մամիկոնեանը, եւ ժամանակի կաթողիկոս Յովհան Մանդակունին շատ որոշ դիրք է բռնում ժամանակակից դաւանաբանական վէճերի վերաբերմամբ. նա հանդէս է գալիս ընդդէմ երկաբնակութեան (1): Ընդհանուր եկեղեցու մէջ դաւանաբանական պառակտում էր ընկած եւ հայոց եկեղեցին չէր կարող անուշադիր թողնել այդ: Սկսւում է պայքար երկաբնակութեան եւ քաղկեդոնականութեան դէմ եւ այդ պայքարի գրականութիւնը:

2. Տիմոթէոս Կուզի «Հակաճառութիւնը»: — Այդ գրականութեան սկիզբն է դրւում մի խիստ յունաբան թարգմանական գործով, որ է՝ «Տիմոթէոսի եպիսկոպոսի Աղեքսանդրեայ Հակաճառութիւն առ սահմանեալսն ի ժողովոյն Քաղկեդոնի» (2): Այս գրքի հեղինակը, Տիմոթէոս Էլուրոս կամ Կուզ, եղել է եգիպտական միաբնակութեան պարագլուխ, մեծ դեր է կատարել ընդդէմ երկաբնակների եւ Քաղկեդոնի ժողովին ընդունողների, դասուել է ամենանշանաւոր միաբնակ հայրերի մէջ թէ՛ իր գործունէութեամբ եւ թէ՛ իր գրուածքներով, աքսորուել է Գանգրա, ապա Խերսոն, 476 թ. վերադարձել է աքսորից եւ վախճանուել 477 թ. յուլիսի 31-ին (3): Տիմոթէոս Կուզը մեծ յարգանք է վայելել նաեւ հայ վարդապետներից եւ գրողներից, որովհետեւ նրա այդ գիրքը «ամենայաւ զէնքերն էր մատակարարում հայ եկեղեցականներին նեստորականութեան եւ քաղկեդոնականութեան դէմ մաքառելու համար»:

Դա մեծ նշանակութիւն է ունեցել ոչ միայն իր բովանդակութեան տեսակէտով, այլեւ իր ոճի ու լեզուի: «Հակաճառութիւնը» սահմանուած լինելով քաղկեդոնականների դէմ վէճերի համար՝ թարգմանիչն աշխատել է ըստ ամենայնի բառացի ճշտութեամբ եւ բնագրին մօտ թարգմանել, որպէսզի վիճաբանութիւնների ժամանակ ոչ մի տեղիք չլինի թիւրիմացութեան: Այդպիսով ստեղծուել է մի խիստ յունաբան հայերէն, եւ դաւանաբանական խնդիրների համար մի նոր, առանձին տեսակի ոճի, արտայայտութեան յատուկ ձեւեր ու բանաձեւեր, որոնցից յետոյ օգտւում են ուրիշները դաւանական եւ այլ երկերի մէջ:

Թէ ո՛ւմ ձեռով եւ ո՛ւր է թարգմանուել Տիմոթէոս Կուզի «Հակաճառութիւնը», այդ յայտնի չէ: Բայց թարգմանուած է դաւանաբանական վէ-

(1) Տե՛ս «Շողակաթ», Գ. Տէր Մկրտչեանի յօդուածը, էջ 158. «Հայ մատենագրութեան հնագոյն թուականները». եւ առանձնապէս Կարապետ եպիսկոպոսի յօդուածը՝ նոյն տեղում, էջ 89–94. «Յովհան Մանդակունի եւ Յովհան Մայրագոմեցի»:

(2) Ի լոյս ընծայեալ աշխատութեամբ Կարապետ Ծ. եպիսկոպոսի եւ Երուանդ վարդապետի, Ս. Էջմիածին, 1908:

(3) Տե՛ս «Հակաճառութեան» հրատարակիչների Առաջաբանը, էջ VI եւ հտն. այլեւ Երուանդ Վ. Տէր-Մինասեանի «Ընդհանուր եկեղեցական պատմութիւն», հատոր Ա., Էջմիածին, էջ 333 եւ հտ.:

*ների սաստկացած միջոցին, երբ Քաղկեդոնի ժողովի որոշումները զօրեղ ընդդիմութեան էին հանդիպում արեւելեան քրիստոնեաների կողմից, եւ «կայսերական կառավարութիւնը ստիպուած էր դրանք գործադրել տալու համար՝ զէնքի դիմել եւ մեծ արիւնահեղութիւններ անել», մինչեւ որ, ինչպէս ասուեց, հրատարակուեց Զենոնի «Հենոտիկոն» հրովարտակը 482–ին: Հայ եպիսկոպոսներն այդ բոլոր յուզումների կողքով չեն անցել անտարբեր: Ահա հէնց այդ ժամանակներում, 480–484 քառամեակի միջոցին, երբ Պարսկաստանի քրիստոնեաները բաժանւում են հռոմէական քրիստոնեաներից, թարգմանուել է Տիմոթէոս Կուզի «Հակաճառութիւնը», որով ընդդէմ քաղկեդոնականութեան պաշտպանւում էր արեւելքում ընդունուած դաւանութիւնը:*

*«Հակաճառութեան» թարգմանութեան թուականը հիմնուած է տոմարագիտական հաշիւների վրայ: Այդ գրքի մէջ յիշուած է Դիոսկորոս Աղեքսանդրացու մահուան ամսաթիւն (առանց տարեթիւը յիշելու) եգիպտական եւ հռոմէական ամիսներով՝ «Թովթ Ե. սեպտեմբեր Բ.»: Թարգմանիչը (կամ գուցէ հայերէն թարգմանութեան արտագրողը) աւելացրել է իր ժամանակի համապատասխան հայկական ամսաթիւը՝ «Հոռի Զ.»: Արդ՝ «Թովթ 5=սեպտեմբեր 2=Հոռի 6 զուգաւորութիւնը (այսինքն՝ զուգադրութիւնը) հնարաւոր է միմիայն 480 Փետր. 29–484 փետր. 28 քառամեակում: Ուրեմն եւ Տիմոթէոս Կուզի հայ թարգմանութիւնը չէ կարող այս քառամեակից ուշ լինել» (1):*

*Տես՝ Հինգերորդ յաւելուած՝ «Տիմոթէոս Կուզի Հակաճառութեան թարգմանուելու ժամանակը»:*

3. Քերդողահայր Մովսէս Խորենացու դաւանաբանական գրութիւնը:— *«Գիրք Թղթոց» ժողովածուի մէջ Սահակի ու Մաշտոցի եւ Մելիտինէի Ակակ եպիսկոպոսի թղթերից յետոյ, Յովհան Մանդակունու գրութիւնից առաջ կայ մի թուղթ այսպիսի վերնագրով՝ «Երանելի մեծի քերդողահաւրն Մովսէսի Խորենացի (2) եպիսկոպոսի»: Գրութիւնը վերաբերում է միաբնակութեան եւ երկաբնակութեան խնդրին: Այդ գրութեան յունաբան լեզուն քիչ մութն է, մասամբ աղճատման պատճառով, բայց ընդհանրապէս հասկանալի է: Քերդողահայրն առանց Քաղկեդոնի անունը յիշելու՝ գրում է երկաբնակութեան դէմ եւ պաշտպանում է միաբնակութիւնը փիլիսոփայօրէն, պարզ*

---

(1) «Շողակաթ», Վաղարշապատ, 1913, էջ 157 եւ հտն. Գ. Տ. Մկրտչեանի վերեւում յիշուած յօդուածը. այլեւ «Արարատ», 1908, էջ 564–589. Գ. Տէր–Մկրտչեանի յօդուածը՝ «Տիմոթէոս Կուզի Հակաճառութեան հայ թարգմանութեան ժամանակը»:

(2) Սովորական ձեւով պէտք է լինէր՝ «Մովսէսի Խորենացւոյ եպիսկոպոսի»: ԽՈՐԵՆԱՑԻՈՅ ձեւի վերջաւորութիւնն աղճատման հետեւանքով դուրս ընկած պիտի լինի, մնացածի մէջ վերջի Ի տառը բնականաբար Ի պիտի համարէին եւ այդպէս գրէին: Նոյնը տպագրուած է նաեւ Արշակ Տէր–Միքելեանի ձեռով «Սամուէլի Անեցւոյ Հաւաքումն ի գրոց պատմագրաց» գրքի մէջ, Վաղարշապատ, 1893, էջ 255 եւ հտն.: Այստեղ վերնագրի մէջ չկայ «Խորենացի» անունը:

*տրամաբանութեամբ: Թուղթն սկսւում է այսպէս. «Յաղագս [թէ] ի յոլովից կատարեալ կենդանի ընդէ՞ր մի՛ բնութիւն»,— այն մասին, թէ ինչու շատերից կազմուած կենդանին մէկ բնութիւն ունի: Եւ անմիջապէս կցում է. «Այլ միո՛յ կենդանոյն՝ հարկ է եւ բնութիւն մի՛ լինել»,— որովհետեւ մէ՛կ կենդանին պէտք է եւ մէ՛կ բնութիւն ունենայ: Նա այդ ապացուցում է նաեւ յունական իմաստասիրութեամբ մարդու օրինակով. «Զմարդ ի չորից նիւթոց բնաւորեցին, ի հողոյ, եւ ի ջրոյ, եւ յաւդոյ, եւ ի հրոյ. յաղագս ջերմութիւն եւ ցրտութիւն եւ խոնաւութիւն եւ ցամաքութիւն ի նմա համեմատելով. եւ* զանձն եռամասն (1)···: *Զի այսքանեացս կատարելութիւն մարդոյն, ընդէ՞ր ասի մի՛ բնութիւն··· Քանզի մարմին իսկ չէ հոգի, եւ ոչ անձն մարմին. եւ կիրք այլ եւ այլ երկաքանչիւրոցն, եւ անզանդ եւ անչփոթ է կցորդութիւնն··· Այսպիսի ուրեմն զաղափարաւ եւ արարչական Բանին իմանի տնաւրէնութիւնն··· զծառային ընդունելով պատկեր՝ ոչ յեղլով կամ սպառելով ի բաց բարձութեամբ միոյն զմիւսն, այլ անմեկնելի հաղորդութեամբն: Վասն որոյ եւ ի դէպ եւ յոյժ ճահողագոյն թուի խոստովանողաց մի բնութիւն ասելով···Ապա եթէ հակառակս ինչ վարկանիցին ոմանք՝ զպատասխանեալդ անկարելի համարելով, որպէս թէ երկուս բնութիւնս պատշաճիցէ ասել, գիտասցե՛ն, զի զնոյն զանհնարութիւն եւ ի մարդումն գոյ՝ նկատելով ճանաչի ոչ միայն ի փիլիսոփայական ստորագութիւնսն, այլ եւ սուրբ գիրք աստուածաշունչք», — Մարդս չորս նիւթից է կազմուած՝ հողից, ջրից, օդից եւ հրից, հաւասարապէս ունենալով իր մէջ ջերմութիւն ու ցրտութիւն եւ խոնաւութիւն ու ցամաքամութիւն, նաեւ* հոգին եռամասն է···: *Որ այսքան բանից է յօրինուած մարդը, հապա ինչո՞ւ մէ՛կ բնութիւն է ասւում··· Որովհետեւ ինչպէս մարմինը հոգի չէ, եւ ոչ հոգին՝ մարմին, եւ երկուսի էլ կրքերը զանազան են, եւ կցորդութիւնը՝ անզանդ եւ անչփոթ: Այսպիսի մի կերպ էլ հասկացւում է արարչական Բանի տնօրէնութիւնը··· Ծառայի [այսինքն՝ մարդու, Մ. Ա.] պատկերն ընդունել է Նա ոչ փոխուելով կամ մէկը միւսին սպառելով, վերացնելով, այլ անմեկնելի հաղորդակցութեամբ: Ուստի ի դէպ եւ պատշաճ է թւում, որ խոստովանողները [=ճըշմարտութիւնը դաւանողները] մի՛ բնութիւն են ասում, իսկ եթէ ոմանք հակառակը կարծեն՝ մեր այդ պատասխանն անկարելի համարելով, որպէս թէ պատշաճ է երկու բնութիւն ասել, թող այդպիսիներն իմանան, որ նոյն անհնարութիւնը [=երկու բնութիւն ընդունելու] եւ մարդու համար կայ, եւ*

(1) «Անձն» բառն այստեղ նշանակում է «հոգի», ինչպէս որ քիչ ներքեւում նոյնը գործածուած է իբրեւ հոմանիշ «հոգի» բառի: «Անձն եռամասն» նշանակում է երեք մասից կազմուած հոգի: Այս հասկանալու համար հմմտ. «Յաճախապատումի» (էջ 2) հետեւեալ կտորը. «Որպէս մէ՛ է արեւ եւ լոյս եւ ջերմութիւն իւր եւ մի արեւ ասի եւ ոչ երբէք արեւք··· եւ որպէս հոգի, միտք եւ բան՝ մի հոգի ասի եւ ոչ երբէք հոգիք. այլ հոգի ասի կենդանութիւնս, եւ միտք ասի իմաստութիւնս, եւ բան ասի խօսողութիւնս՝ միոյ հոգւոյն»: Ուրեմն հոգին ունի կենդանութիւն, միտք եւ բանականութիւն, բայց դրանցով մի անձը, մի հոգին երեք չի դառնում, այլ մնում է մէկ:

այս նկատում, խմացւում է ոչ միայն փիլիսոփայական ստորոգութիւններով, այլեւ աստուածաչունչ սուրբ գրքով:

Այստեղ, հարկաւ, կարեւոր չէ բերել Քերդողահօր այդ գրութեան ամբողջ բովանդակութիւնը, որով ընդունում է մի բնութիւնը եւ հերքում երկու բնութիւնը: Միայն այս նկատենք, որ հեղինակը վերջաբանի մէջ գըրում է. «Զայս fեզ փոքր ի շատէ պատճառ յանդիմանութեան յաղագս բաժանեալ ուսման այլանդակացն, զի ծանիցես, ո՛վ աստուածասէր, յոմանց փախչել եւ բաղձալ անսասանելի եւ անշուշտ հաւատոյ դաւանութեան...»,— Այս քեզ [գրեցի] իբրեւ մի փոքր ի շատէ հիմք՝ այլանդակների բաժանած ուսումը հերքելու, որպէս զի գիտենաս, ո՛վ աստուածասէր, մի քանիսից փախչել եւ բաղձալ հաւատքի անսասան եւ ստոյգ դաւանութիւնը: — «Բաժանած ուսումն» կոչւում էր երկաբնակների դաւանութիւնը, որով Քրիստոսի մէկ բնութիւնը «բաժանում էին» երկուսի:

Վերջաբանից կարծում են, թէ Քերդողահայր Մովսէսն իր թուղթն ուղղել է Յովհան Մանդակունուն:

Տե՛ս Վեցերորդ Յաւելուած՝ «Քերդողահայր Մովսէս Խորենացի եպիսկոպոսի թղթի վաւերականութիւնը»:

4. Յովհան Մանդակունի:— Այս անունի անձը Սահակ-Մեսրոպեան դպրոցի վերջին ներկայացուցիչներից է: Վահան Մամիկոնեանի ապստամբութեան ժամանակ հայոց կաթողիկոս է եղել եւ եռանդուն մասնակից ապըստամբութեան գործին, նոյնիսկ մարտի դաշտ գնալով: Ղազար Փարպեցին, ինչպէս տեսանք, միշտ առանձին յարգանքով է յիշատակում նրան: Նա իբրեւ կաթողիկոս հոգ է տարել եկեղեցու բարեկարգութեան. նրա անունով մնում են կանոններ: Նա սահմանել է եկեղեցու ծիսական կարգերը, կարգաւորել է ծիսարանը, որ կոչւում է «Մաշտոց», անշուշտ, Մեսրոպ Մաշտոցի անունով, որ, երեւի, սկզբնական կազմողն է այդ գրքի :Յովհան Մանդակունին ընդարձակել է եւ «Ժամագիրքը», որի, ինչպէս եւ ծիսարանի, երգերից եւ աղօթքներից շատերի հեղինակն է նա: Դրանցից է, օրինակ, գիշերային ժամերգութեան «Զարթուցեալքս» նշանաւոր քարոզը: Նա գործել է եւ իբրեւ թարգմանիչ. յունարէնից թարգմանել է, օրինակ, երեկոյեան ժամերգութեան հռչակաւոր «Լոյս զուարթ» օրհներգութիւնը: Նա յօրինել է նաեւ մեկնութիւն, ճառեր: Նրան մի ժամանակ վերագրում էին նաեւ «Խրատ վարուց» գրուածքին պատկանող ճառերը(1), որի հեղինակ այժմ Յովհան Մայրագոմեցուն են ընդունում(2):

«Գիրք թղթոց» ժողովածուի մէջ Քերդողահայր Մովսէս Խորենացի եպիսկոպոսի գրութիւնից յետոյ գրուած է՝ «Երանելոյն Յովհաննու Հայոց եպիսկոպոսապետի Ապացոյց յերկուց բնութեանց ասել զփրկիչն եւ կամ մի

(1) Տեառն Յովհաննու Մանդակունւոյ ճառք, Վենետիկ, 1836. երկրորդ տպագր. Վենետիկ, 1860:

(2) «Շողակաթ», էջ 100 եւ հտն. յօդուած Կարապետ եպիսկ. Տէր-Մկրտչեանի. «Յովհան Մանդակունի եւ Յովհան Մայրագոմեցի»:

բնութիւն»: Դա Յովհան Մանդակունին է: «Կնիք հաւատոյ» ժողովածուի մէջ նոյնի մասին կայ այսպէս· «Երանելոյն Յովհաննու Մանդակունւոյ Հայոց կաթողիկոսի՝ ի Հակաճառութենէն Քաղկեդոնի ժողովոյն, որ ասի Ապացոյց»(1): Մանդակունին եւս օգտուել է Տիմոթէոս Կուզի Հակաճառութիւնից, բայց նա ազդուել է նաեւ Քերդողահայր Մովսէսի վերոյիշեալ գրութիւնից: Այդ գրութիւնից շատ պարզ երեւում է, որ Հայոց կաթողիկոս Յովհան Մանդակունին արդէն որոշ դիրք է բռնել «միաբնակութեան եւ երկաբնակութեան» վէճի վերաբերմամբ: Նա ընդունում է «մի բնութիւն» կամ «յերկուց բնութեանց մի» դաւանութիւնն ըստ Կիւրեղ Աղեքսանդրացու: Եւ այլապէս էլ չէր կարող լինել, քանի որ այդ ժամանակներում, ինչպէս ասուեց վերեւում,«մի բնութեան» վարդապետութիւնն իշխող դաւանութիւնն էր ոչ միայն Արեւելքում, այլեւ բիւզանդական կայսրութեան բոլոր սահմաններում:

Տես՝ Եօթներորդ Յաւելուած՝ «Հայոց եկեղեցու դիրքը քաղկեդոնութեան վերաբերմամբ 5-րդ դարի երկրորդ կէսին»:

## ԿՈՒԼՏՈՒՐԱԿԱՆ ՎԵՐԵԼՔ

**1· Դաւանաբանական պայքարի սաստկացում եւ կուլտուրական վերելք:—** Բիւզանդական կայսրութեան մէջ քաղաքական շրջաններում դաւանաբանական նրբութիւնները հետզհետէ արդէն կորցնում են իրենց կարեւորութիւնը կրօնական տեսակէտից: Դրանք ծառայում են ազգային պետական շահերի համար: Անաստաս կայսրի (491—518 թ·) մահից յետոյ քաղկեդոնականութիւնը պաշտօնապէս ընդունւում է եւ պարտադիր է դառնում բիւզանդական կայսրութեան մէջ· կայսրերն ու պատրիարքները ձգտում էին մի ընդհանուր պետական դաւանութեամբ կայսրութեան միութիւնը պաշտպանելուն: Հայերի համար էլ դաւանութեան խնդիրն ստանում էր ազգային քաղաքական նշանակութիւն: Հռոմների ազդեցութիւնից զերծ մնալու եւ ազգային միութիւնը պաշտպանելու համար՝ պէտք էր դաւանապէս զատուել նրանցից: Այդ էր պահանջում հայերի, ինչպէս նաեւ պարսից պետական քաղաքականութիւնը: Այսպիսով հակաքաղկեդոնիկ պայքարը հետզհետէ աւելի եւս սրւում է: Դա, իսկապէս ասած, միայն մի փոխակերպումն էր այն մաքառման, որ 5-րդ դարի սկզբից ի վեր հայերը վարում էին ընդդէմ յոյների՝ իրենց ազգային ինքնուրոյնութիւնն Արեւմուտքում պահելու համար: Արեւելեան եւ արեւմտեան հայութեան միջեւ արդէն գլուխ էր եկել եկեղեցական միութիւնն ընդհանուր եկեղեցական լեզուով, այժմ հոգում էին ազգային ինքնագլուխ եկեղեցու մասին: Շահերի այսպիսի հակասութեան պատ–

(1) Կնիք Հաւատոյ, Էջմիածին, 1914, էջ 130· տե՛ս նոյն տեղում եւ Կարապետ եպիսկոպոսի Նախաբանը, էջ LIX: Այլեւ «Շողակաթ», էջ 92 եւ հտ· նոյն հեղինակի յիշուած յօդուածը «Յովհ· Մանդ· եւ Յով· Մայր·»: Այլեւ էջ 158 եւ հտն· Գալուստ Տէր-Մկրտչեանի յօդուածը՝ «Հայ մատենագրութեան հնագոյն թուականները»:

*ճառով քաղկեդոնականութեան վերաբերեալ վէճերը, կռիւները եւ նոյնիսկ հալածանքները քաղկեդոնականների կողմից, — որովհետեւ նրանք աւելի զօրեղ են եղել քաղաքականապէս, — իրար յաջորդում են անհատնում շարքով, քանի դոյութիւն է ունեցել բիզանդական կայսրութիւնը: Դա առաջ է բերել* ընդարձակ դաւանաբանական գրականութիւն *Հայերի մէջ:*

*Կոստանդնուպոլսում* 553 *թ. գումարւում է հինգերորդ տիեզերական համաժողովը: Հաւանօրէն գրա որոշումների կապակցութեամբ յաջորդ* 554 *թ. Ներսէս Բ. կաթողիկոսի օրով գումարւում է Դուինում Հայոց եկեղեցական ժողովը, որի որոշումով Հայոց եկեղեցին բացարձակ կերպով բաժանւում է քաղկեդոնականից*(1)*: Դրա հետեւանքով հետզհետէ պակասում է յունական կուլտուրայի ազդեցութիւնը Հայերի վրայ: Արդարեւ արեւելեան Հայերը* 6*-րդ եւ* 7*-րդ դարերում չէին կարող բոլորովին կտրուել յոյներից, քանի որ կային դրացիական յարաբերութիւնները, մանաւանդ որ երբեմն էլ բիզանդական կայսերին աշխատում էին տիրել նաեւ Արեւելեան Հայաստանին: Բայց եւ այնպէս Հայոց գրականութեան վրայ յունական ազդեցութիւնն այլեւս մեծ չափով չի լինում: Հայերը դաւանութեան, ինչպէս եւ յունական կողմից գործ դրուած բռնութիւնների պատճառով ոչ միայն սառն էին վերաբերւում դէպի յոյները, այլեւ խորշում էին նրանցից: Եթէ այդպէս չլինէր էլ, Հայերը յոյների մօտ այլեւս չէին գտնի յունական հին կուլտուրան եւ արուեստը: Յուստինիանոս կայսրը* 529 *թ. արդէն փակել էր տուել Աթէնքի դպրոցը, մնում էր միայն Կ. Պոլսի դպրոցը, որը ղեկավարում էին եկեղեցականները: Իսկ սրանք հետաքրքրւում էին գլխաւորապէս դաւանաբանական եւ այլ կրօնական խնդիրներով: Հին յունական գրականութիւնն եւ արուեստը մոռացութեան էին տրւում, սկսւում էր միջնադարը:*

*Բայց չպիտի կարծել, թէ կանգ է առնում հայկական մտաւոր շարժումը: Պարսիկների կողմից, հակառակ յոյների, տակաւ առ տակաւ թուլանում էր կրօնական ճնշումը. կրօնի պատճառով յարուցած նեղութիւններն այդ շրջանում մեղմացել ու պակասել էին: Պարսից վերին իշխանութիւնը նոյնիսկ հովանաւորել է Հայոց եկեղեցուն հակառակ բիզանդական քաղաքականութեան: Խոսրով Անուշիրուան թագաւորի* (531—579 *թ.*) *օրով, Վարդան Մամիկոնեանի ապստամբութիւնը* (571 *թ.*)*, ինչպէս եւ յունա-պարսկական պատերազմները եւ արաբական արշաւանքները դանդաղացրել են, բայց չեն դադարեցրել հայ կուլտուրայի առաջադիմական ընթացքը: Արաբացիների տիրապետութեան առաջին շրջանում, մինչեւ* 8*-րդ դարի սկիզբները, նըրանց վերաբերմունքը դէպի հայերը եղել է համեմատաբար մեղմ. հայերն ունեցել են որոշ ինքնավարական արտօնութիւններ եւ խաղաղ կեանք: Պարսկական եւ արաբական այսպիսի քաղաքականութեան հետեւանքով հայկական ազգային կուլտուրական եւ գրական գործը շարունակելով զարգանալ՝* 6*-րդ*

---

(1) Ե. Տէր-Մինասեանց, Հայոց եկեղեցու յարաբերութիւնները Ասորոց եկեղեցիների հետ, Էջմիածին, 1908, էջ 122 եւ հտն. Տիմոթէոս Կուզի Հակաճառութիւն, Էջմիածին, 1908, Առաջաբան, էջ XIV եւ հտն. Կնիք Հաւատոյ, Նախաբան, էջ LXXII եւ հտ.:

դարի երկրորդ կէսին եւ 7-րդ դարում ունեցել է նոյնիսկ վերելք, իբրեւ հետեւանք, հարկաւ, նաեւ երկրի տնտեսական բարգաւաճման:

Արդարեւ եղել են յոյն լեզուն իմացողներ, որոնք թարգմանութիւններ էլ են արել. բայց այդպիսիների թիւը հետզհետէ պակասել է: Ուսումը կատարելագործելու համար այլեւս ուսանողներ չէին ուղարկում Բիզանդիոն. սակաւաթիւ անհատներ միայն իրենց ներքին դրդումով եւ անձնական հանգամանքներով կամ նախաձեռնութեամբ դիմում էին երկրից դուրս գիտութիւններ ձեռք բերելու: Ուսումն ամփոփւում էր գլխաւորապէս հայկական դպրոցներում կամ, ինչպէս այն ժամանակ անուանում էին, վարդապետարաններում: Յայտնի են դառնում մի քանի դպրոցներ, ինչպէս Սիւնեաց վարդապետարանը, Արշարունեաց վարդապետարանը Երասխաձորում, ուր կրթւում էին «ճարտարք եւ գիտունք Հայոց»: Այդտեղ ուսումնասիրում էին Ս. Գիրքը եւ եկեղեցական հայրերի գործերի, ինչպէս եւ փիլիսոփայական եւ այլ երկերի թարգմանութիւնները: Սովորում էին հռետորութիւն, քերթողութիւն ու փիլիսոփայութիւն: Հռչակւում են իրենց գիտութեամբ Հայաստանում ուսած վարդապետներ, որոնք քերթող կամ փիլիսոփայ մականունն են կրում: Կային նաեւ տոմարագէտներ, ծնւում է նաեւ ձգտում թուաբանութիւն ու տիեզերագրութիւն սովորելու: Խիստ սիրուած է եղել հոգեւոր պերճախօսութիւնը, որի նպատակն է եղել քրիստոնէական բարոյախօսութիւն քարոզել, այլեւ սովորեցնել կրօնի սկզբունքները: Այս տեսակի վրայ առանձին ուշադրութիւն էին դարձնում վանական դպրոցներում, ուր առանձին վարժութիւններով սովորեցնում էին աշակերտներին ճառեր յօրինել եւ արտասանել:

Բարձր կրօնական ոգին ստեղծել է նաեւ իր գեղարուեստը, առանձնապէս փայլուն ճարտարապետական արուեստը: Կառուցւում էին հոյակապ տաճարներ, որոնք իբրեւ խօսուն վկաներ այն ժամանակների տնտեսական ու կուլտուրական վերելքի՝ աւերակ, կիսաւեր կամ կանգուն դրութեամբ դեռ մնում են 6րդ եւ աւելի 7րդ դարերից մինչեւ օրս, ինչպէս են Հռիփսիմէի, Գայանէի, Աւանի, Մրէնի, Խորվիրապի, Զուարթնոցի, Արուճի (Թալիշի) եւ այլ պանծալի ճարտարապետական յուշարձանները: Երկիրը զարդարում էին գեղաքանդակ խաչքարերով:

Եկեղեցական ճարտարապետութեան ու քանդակագործութեան հետ միաժամանակ ծաղկում էր նաեւ նկարչութիւնն ու երաժշտութիւնը, բայց հասկանալի պատճառով այժմ չունենք դրանց մնացորդները: Կրօնական բանաստեղծութիւնից, սակայն, որ շատ զարգացած է եղել առանձնապէս 7րդ դարում, — պահուած են բազմաթիւ հոգեւոր երգեր, որոնք անհրաժեշտ էին փառաւոր ու շքեղ պաշտամունքի համար մեծաշէն եկեղեցիների մէջ: Յարատեւել են նաեւ պատմագրութիւնը, ժողովրդական վէպն ու գուսանական երգը: Այդ վերելքի ծնունդն է նաեւ Անանիա Շիրակացին իր երկերով:

2. «Գիրք Թղթոց»: — Քանի որ գրականութիւնը եկեղեցականների ձեռին էր, եւ նրանք մեծ ուշադրութիւն էին դարձնում դաւանաբանական վէճերին, բնականաբար յօրինւում են մեծ թուով գրութիւններ քաղկեդոնականութեան ու նեստորականութեան դէմ, կամ այլ կրօնական խնդիրների վե-

բաբերեալ: Կազմւում են ժողովածուներ՝ վիճաբանութիւնների համար պատրաստի ձեռնարկներ ունենալու նպատակով: Այդպիսիներից է «Գիրք Թղթոց» (1) կոչուած նշանաւոր ժողովածուն, որը յիշատակելու առիթ եղաւ մի քանի անգամ: Թէ ե՛րբ եւ ո՛ւմ ձեռով է կազմուել այդ գիրքը՝ յայտնի չէ: Հաւանօրէն դա մի պաշտօնական խմբագրութիւն է, 7րդ դարի մէջ կազմուած, քանի որ 5–7րդ դարերի թղթակցութիւնները դասաւորուած են առանձին խըմբով եւ միմեանց յաջորդում են ժամանակագրական կարգով. իսկ շարունակութեան մէջ գրութիւնները պատահականօրէն ժողովուած եւ խառնիխուռն մէջ բերուած (2): Բովանդակութիւնը հասնում է մինչեւ 13րդ դարը: Ընդամէնը 98 թուղթ կայ: Պրոկղ ու Ակակ եպիսկոպոսների եւ Սահակի ու Մաշտոցի միջեւ փոխանակուած հինգ թղթերից յետոյ՝ վեցերորդն է Բերդողահայր Մովսէսի վերեւում յիշուած գրութիւնը, ապա Յովհան Մանդակունունը, յետոյ Բաբգէն կաթողիկոսի եւ ուրիշների: Այդ թղթերը գրական տեսակէտով ընդհանրապէս անկարեւոր են. դի դրանց մէջ սովորաբար պակասում է գեղեցիկ արուեստը. բայց մեծ արժէք ունեն իբրեւ պատմութեան առաջնակարգ աղբիւրներ, քանի որ գրուած են իրական եղելութիւնների առթիւ: Դրանց մէջ տեսնում ենք հեղինակների հմտութիւնը դաւանաբանական եւ այլ խնդիրների նկատմամբ, նրանց ձգտումն ամէն եռանդով պաշտպանելու հայոց եկեղեցու դաւանութիւնը, անկախութիւնն ու միութիւնը. ջանքերը, որ վրաց եւ աղուանից եկեղեցիները չանջատուեն հայոց եկեղեցուց, եւ այլն:

3. «Կնիք հաւատոյ», Յովհան Մայրագոմեցի, Վրթանէս Քերթող եւ Թէոդորոս Քռթենաւոր: — Երկրորդ կարեւոր ժողովածուն է «Կնիք հաւատոյ» կոչուած գիրքը (3): Սրա մէջ Կոմիտաս կաթողիկոսի (615 – 628 թ.) օրով համահաւաքուած են եկեղեցու ուղղափառ հայրերի գրուածքներից կըտորներ, իբրեւ առձեռն պատրաստ նիւթեր՝ վիճաբանութիւնների ժամանակ սուրբ հայրերի խօսքերով հայոց եկեղեցու դաւանութիւնը հիմնաւորելու եւ պաշտպանելու համար: Այս ժողովածուն, որ կազմուած է Տիմոթէոս Կուզի «Հակաճառութեան» հետեւողութեամբ, «նոյն դրութեամբ չի մնացել, ինչպէս խմբագրուած պիտի լինէր Կոմիտաս կաթողիկոսի ժամանակ, այլ փոփոխութեան է ենթարկուել, եւ նոր նիւթեր են աւելացել վրան»:

Յովհան Մայրագոմեցի նշանաւոր վարդապետին են համարում այդ ժողովածուի կազմող: Ստեփանոս Տարօնեցի Ասողիկ պատմագիրը նրա մա–

---

(1) «Գիրք Թղթոց», Թիֆլիս, 1901. Պետ. Մատենադարանում կան մի քանի թղթոց գրքեր տարբեր բովանդակութեամբ: Տե՛ս «Կնիք հաւատոյ», էջ XXV:

(2) Ն. Ակինեան, Կիւրիոն կաթողիկոս Վրաց, Վիեննա, 1910, էջ 39. «Շողակաթ», էջ 92:

(3) «Կնիք հաւատոյ ընդհանուր սուրբ եկեղեցւոյ ուղղափառ եւ ս. հոգեկիր հարցն մերոց դաւանութեանց, յաւուրս Կոմիտաս կաթողիկոսի համահաւաքեալ», հրատարակութիւն Կարապետ եպիսկոպոսի, ընդարձակ նախաբանով, Էջմիածին, 1914:

սին գրում է. «Եւ ի սորա [Կոմիտաս կաթողիկոսի] ժամանակս փայլէր վարդապետութեամբ Յովհան Մայրագոմեցի, որում զկաթողիկոսութիւնն հաւատացեալ էր Կոմիտաս: Սա [Յովհան Մայրագոմեցի] գրեաց երիս գիրս, եւ զանուն իւր ոչ վերադրեաց ի նոսա, վասն չընդունելոյ ժողովրդեանն. անուն միոյն՝ Խրատ վարուց, եւ անուն միւսոյն՝ Հաւատարմատ, եւ անուն միւսոյն՝ Նոյեմակ»: Նրա «Խրատ վարուց» գիրքը Յովհան Մանդակունու անունով հրատարակուած ճառերն են. իսկ յիշուած «Հաւատարմատ» աշխատութիւնը, որ կոչուել է նաեւ «Արմատ հաւատոյ», նոյնացւում է «Կնիք հաւատոյ» ժողովածուի հետ: Սրա մէջ նա բերած է եղել հատուածներ նաեւ իր գրուածներից՝ առանց իր անունը յիշելու. արտագրողներն աւելացրել են նրա անունը: Հետագայում Յովհան Մայրագոմեցու այդ աշխատութեան հետեւողութեամբ կազմել են եւ ուրիշ ժողովածու «Արմատ հաւատոյ» անունով:

Այդ ականաւոր վարդապետը, որ պաշտպանել էր հայոց եկեղեցու պաշտօնական դաւանութիւնը, եղել է ժամանակի անկախ մտածողներից մէկը. «մեծի հեղինակութեանը ենթարկուելու եւ ընդհանուրի տրամադրութեանը համակերպուելու ոգով տոգորուած մի միջավայրում... իր ինքնուրոյնութեամբ է հանդէս եկել» եւ առանց քաշուելու արտայայտել իր համոզմունքը: Ջանալով հաստատել «անապական մարդեղութեան» ուսումը՝ մերժել է Ղուկասի աւետարանի ԻԲ. 43 – 44 տների վաւերականութիւնը: Դրա համար եւ նա հալածանքի է ենթարկուել: Նա մինչեւ վերջը մնացել է հակաքաղկեդոնական տեսակէտին:

Երբ Եզր կաթողիկոսը, Հերակլ կայսրի ճնշումով եւ շատ յայտնի Մաթուսաղա վարդապետի աշակերտ Թէոդորոսի բացատրութիւններից ազդուելով, քաղկեդոնականների հետ միաբանելուց յետոյ վերադառնում է Դուին, Մայրագոմեցին, որ Դուինի Ս. Գրիգոր եկեղեցու փակակալն էր, չի ներկայանում նրան: Երբ այդ վարդապետին ստիպմամբ տանում են կաթողիկոսի մօտ, նա ասում է. «Դու յիրաւի կոչեցար Եզր, զի յեզր հանեալ տրոհեցիր զհայաստանեայս, քակեալ զսահման հաւատոյ հարցն»: Այս բառախաղն այնուհետեւ երկար ապրում է կրկնուելով իբրեւ նշան անարգանքի: Ահա թէ մինչեւ ո՛ւր էր հասնում քաղկեդոնականութեան ատելութիւնը հին հայ գրողների մէջ:

Մովսէս կաթողիկոսը (574—604 թ.) նոյնիսկ հրաման է հանում՝ «ամենեւին ոչ հաղորդել ընդ հոռոմս հնազանդեալս Քաղկեդոնական ժողովոյն ...մի՛ գիրս, մի՛ պատկերս եւ մի՛ նշխարս ի նոցանէ ընդունել»: Այդ հրամանը առիթ է դառնում, որ աղուանների մէջ քարոզեն սրբոց պատկերները խոտել: Առաջ է գալիս պատկերամարտութիւն: Յովհան Մայրագոմեցին պատկերամարտների մասին գրած մի գրութեան մէջ սխալ է համարում պատկերներ խոտելը:

Վրթանէս Քերթողը, հմուտ յունարէնի եւ եկեղեցական գրականութեան խնդիրների, ուսեալ մի անձ, որ Մովսէսից յետոյ եղել է կաթողիկոսական տեղապահ (604 — 607 թ.), գրել է «Ընդդէմ պատկերամարտից» մի գիրք: Կը նշանակէ՝ «8րդ եւ 9րդ դարերում ամբողջ Բիւզանդական կայսրութիւնը տակնուվրայ անող պատկերամարտութեան շարժումն իր առաջընթացըն է ունեցել հայերի մէջ դեռ 7րդ դարի սկիզբներին», եւ Յովհան Մայրա-

*գոմեցու եւ Վրթանէս Քերդողի գրութիւններն առաջիններն են պատկերամարտութեան պատմութեան մէջ* (1)։

*Յովհան Մայրագոմեցին իր կեանքի վերջում քաշուել է իր առաջուայ վանքը՝ Մայրագոմ՝ Բջնիի մօտ, այնտեղից ալ Գարդմանի գաւառը։ Յովհանն իբր առաջ կոչուելիս է եղել «Մայրավանեցի», եւ իբր Եզր կաթողիկոսը, նրան անարգելու համար նրան անուանել է «Մայրագոմեցի»։ Բայց «Մայրագոմեցի» անունն աւելի հին է, եւ հետագայում այդ նշանաւոր վարդապետին յարգողները «Մայրագոմեցին» փոխել են ի «Մայրավանեցի»։ «Մայրագոմեցուց յետոյ երկար ժամանակ հայոց վարդապետների մէջ եղել են երկու կուսակցութիւններ՝ հետեւող նրան եւ ախոյեան»։*

*Յովհան Մայրագոմեցու առաջին հակառակորդն է հանդիսացել վերեւում յիշուած* Թէոդորոսը, Քռթենաւոր կամ Ճգնաւոր *մականունով, Արագածոտնի Ս. Աստուածածին վանքի վանահայրը, մի խարազնազգեստ «սրբակրօն», առաքինի մարդ, յայտնի իր հայկական եւ յունական ուսումով։ Նա պահում էր դպրոց, որի աշակերտներից նշանաւոր հանդիսացան իբրեւ հեղինակ եւ կաթողիկոս Յովհան Իմաստասէր Օձնեցին եւ Սահակ Ձորափորեցին։ Թէոդորոսը Կոմիտաս կաթողիկոսի եղբօրորդին էր։ Կաթողիկոսն իր տոհմիկի դաստիարակութիւնը յանձնած էր* Մաթուսաղա վարդապետին, *որ Սիւնեաց վարդապետարանից էր, յետոյ Սիւնեաց եպիսկոպոս։ Ըստ Ստեփանոս Օրբելեանի՝ Մաթուսաղան եղել է «մեծ քերթող եւ անյաղթ փիլիսոփայ... ուսեալ զքերթողութիւն եւ վարժեալ ճարտասանականաւն, հմտացեալ փիլիսոփայական արուեստից, լի ամենայն իմաստութեամբ եւ կատարեալ գիտութեամբ»։ Այս Մաթուսաղա քերթողի աշակերտ Թէոդորոսն ահա գրում է ընդդէմ Մայրագոմեցուն։ Նա ունի նաեւ ուրիշ գրուածքներ* (2), *որոնց մէջ կան գեղեցիկ լեզուով ու ազդու արուեստով յօրինուած մասեր, բայց կան նաեւ այնպիսի կտորներ, որոնք իր ժամանակի յունական ճառախօսների հետեւողութեամբ, վերամբարձ ոճով են, ճոռոմ եւ խրթնաբան են, մեծ մեծ, յաճախ ինքնաստեղծ բարդ բառերով ու երկար խօսքերով։ Բերենք իբրեւ օրինակ՝ «Ընդդէմ Մայրագոմացոյն» ճառի ըսկիզբը։ «Ահա այժմ նորահրատ տոչորեցաւ բոց, եւ զբեղմնաբեր տունկս բանական դրախտին, ճշմարտորդ աւետարանին համբակս համբացուցանել ճարակի, եւ զքաջուղէշ եւ զլիապատար հաւատոյն խայրիս թառամեցուցանել նկրտի։ Զե՛ղ ասեմ, որդիք լուսոյ, մի՛ տարփայք խաւարի, եւ մի՛ պարտուղիք յարքայական պողոտայէն. եւ մի՛ սուսնդանէք չորեքտառեան աւետարանականաւանդ փողոցն՝ որք յերկնակառոյցն վերակոչէն քաղաք զձեզ, եւ վատամիտ յուլութեամբ վերջանայք ի քաջամարտիկ նախահարցն արդա-*

---

(1) «Շողակաթ», էջ 109 եւ «Հանդէս Ամսօրեայ», Վիեննա, 1910։

(2) «Թէոդորոսի Քռթենաւորի երեք ճառք», տպագրուած է՝ «Յովհաննու Իմաստասիրի Աւձնեցւոյ մատենագրութիւնք, Վենետիկ, 1833» գրքի ետեւում էջ 147 – 158՝ «Ընդդէմ Մայրագումացոյն», էջ 159 – 171՝ «Ներբողեան ի սուրբ խաչն», էջ 172 – 182՝ «Գովեստ ի

բահրահանգ հետեւանաց: Քանզի ահա վերայայտեցան այժմ ի տանս Թորգոմայ նորածին դառնութեան զարմք, օյտողք ճշմարտութեանն. որք կաթարոսք արտաքուստ երեւին դուարենին զգեստօք, եւ խաչակիր մարմնակրութեամբ, եւ ներկերպին կազանաւէմք, խոթնազգեստք, խուճապողք, տգիտախողխողք, քծնաբանք դաղտապատիրք, գողտրաբարբառք, ապաժուժախորհք, դժապանք»:

## ԲԱՆԱՍՏԵՂԾՈՒԹԻՒՆ
## ԿՈՄԻՏԱՍ ԿԱԹՈՂԻԿՈՍ

1. Կենսագրական:— Ինչպէս վերեւում ասուեց, 6–րդ եւ 7–րդ դարերում հայկական կուլտուրական վերելքի ժամանակ ծաղկում է եւ ճարտարապետութիւնը: Սեբէոս եպիսկոպոսը (1) պատմում է, որ Կոմիտաս կաթողիկոսը Խոսրով Ապրուեզ թագաւորի (590–628 թ.) 28–րդ տարում, ուրեմն 618 թուին, քանդում է Հռիփսիմէի մատուռը Վաղարշապատ քաղաքում, «զի կարի ցած եւ մթին էր շինուածն, որ շինեալ էր սրբոյն Սահակայ… որդւոյ սրբոյն Ներսիսի»: Այդ ժամանակ բացւում է «արքունական մարգարիտն, այսինքն… մարմին սրբոյ տիկնոջն Հռիփսիմէի», հաւանօրէն դագաղը, որ կնքուած էր Ս. Գրիգորի եւ Սահակի մատանիներով, «զոր նա ոչ համարձակեցաւ բանալ: Եւ կնքեալ իւրով եւս մատանեաւ, որ արժանի իսկ էր կնքել պայծառ մարգարիտ երից հաւատարմաց երրորդ մատանեաւք»: Այս անմիջապէս զգացուած բացագանչում է Պատմիչը. «Ո՜վ մարգարիտ. որ ոչ ծովածին, այլ մարգարիտ, որ ծնեալ ի թագաւորական ազգէ, եւ սնեալ ի գիրկս սրբութեան եւ նուիրեալ Աստուծոյ, որում ցանկացեալ էին տեսանել զքեզ արդարք, եւ խանդակաթ էր ի սէր քոյ երանելին Կումիտաս»: Կաթողիկոսը, շարունակում է Սեբէոսը,— «շինեաց զեկեղեցին» (որ մնում է մինչեւ այժմ, պատի վրայ ունենալով իրեն՝ Կոմիտասի արձանագրութիւնը): «Եւ դդրդեալ ամենայն կողմն հիւսիսոյ գայր յերկրպագութիւն»:— Այս իրականութեան արդասիքն է Հռիփսիմեանց «Անձինք նուիրեալք» օրհներգութիւնը, որ առանց որեւէ տատանման Կոմիտասինն են գնում յիշատակարանները: Թէպէտ Սեբէոսն այդ չի հաղորդում, բայց նրա գրածից պարզ երեւում է, որ նրան ծանօթ է եղել Կոմիտասի քերթուածը, որից եւ այդ Պատմագիրն ազդուել է իր գրուածքի մէջ: Այդ ցոյց են տալիս վերեւի ընդգծումները. Կոմիտասի երգի մէջ եւս Հռիփսիմէն անուանւում է «պատուական մարգարիտ», «ի գիրկս սրբութեան» աճած, «նուիրեալ» սիրոյն Քրիստոսի: Եւ վերջապէս՝ երբ Պատմիչը գրում է՝ «խանդակաթ էր ի սէր քոյ երանելին Կումիտաս», նա դրանով ակնարկում է Կոմիտասի բանաստեղծական ոգեւորութեանը Հռիփսիմէով:

2. Քերթուածը:— Մեր հոգեւոր երգերի մէջ, որոնց մասին առանձին կը խօսուի, Կոմիտասի այս գործն ընտիրներից մէկն է թէ՛ իր իմաստով եւ թէ՛ ձեւի գեղեցկութեամբ: Այստեղ հնչում է քնարերգութիւնը, նոյնիսկ Հռիփսիմեանց երկնաւոր նահատակութեան, այսինքն քաջամարտութեան պատմութեան մէջ, որի աղբիւրն է Ագաթանգեղոսը: Բայց Կոմիտասը

---

(1) Սեբէոս եպիսկ. Պատմ., Երեւան, 1939, էջ 89:

*յարասութիւն չի անում, ոչ էլ ամբողջական պատմութիւն, այլ նոր ստեղծագործում է, այն էլ կազմելով հատ հատ գեղեցիկ պատկերների մի շղթայ, որի բոլորի օղակների վրայ իշխում է մի տօնական ցնծագին հանդիսաւորութիւն: Եւ կոյսերի շքեղ տօնակատարութեան համար էլ յօրինուած է այս ներբողական երգը, որի մէջ մի քանի անգամ ասւում է՝ «Տօնեցէ՛ք բատուլութեամբ ի հնձանըս նոցունց»: «Ցնծութեամբ տօնեցուք զյիշատակս նոցունց»: Այսպէս եւ առաջին տան մէջ.*

Անձի՛նք նուիրեա՛լք սիրո՛յն Քրիստոսի՛,
Երկնաւո՛ր նահատա՛կք եւ կուսա՛նք իմաստո՛ւնք,
Ի պարծա՛նս ձե՛ր բարձրացեա՛լ տօնէ՛
Մա՛յր Սիո՛վն դստերօ՛քն իւրո՛վք:

*Ինչպէս այս առաջին տնից հէնց կարելի է տեսնել, բանաստեղծը Հռիփսիմեաններին առնում է երկու կողմից, իբրեւ Քրիստոսի սիրուն նուիրուած իմաստուն կոյսեր եւ իբրեւ երկնաւոր զինուորներ, որոնք քաջութեամբ կռւում են իրենց հաւատի համար: Այդ երկու կողմի միացումով առաջ է բերուած գործողութիւնը մի ընդհանուր ընդարձակ տեսարանի մէջ: Ելակէտն է քրիստոնէական յառետեսութիւնը, որից ծագում է եւ որի շուրջը պտտում է ամբողջը:*

Մերժեցին ըզկարիս մարմնական կենցաղոյս,
Զի ծանեան՝ եթէ երազ է եւ սուտ պանունանք·
Ո՛չ հեշտացան ի զրգա՛նս փափկութեան.
Իմացան՝ եթէ սնոտի է անցաւոր մեծութիւնս:

*Մի անգամ որ կոյսերն ըմբռնել են աշխարհի ունայնութիւնը, այնուհետեւ նրանք այլեւս փափագող չեն երկրաւոր հարսանեկան պսակի, այլ միայն երկնաւոր պսակի:*

Յանդաստանս հոգեւորս աղօթից եւ պահոց
Վաստակեալք յուսով զամենայն ժամանակս,
Ժուժկալեալք փորձութեանց եւ պէսպէս լլկանաց,
Եւ եղեալք ժառանգորդք անթառամ պսակին:

*Սակայն նրանց տրուած չի եղել կուսաստանի միայնութեան մէջ ճգնելով հասնել իրենց նպատակին: Աշխարհն իր բռնութեամբ ստիպում է նրանց ընդունել երկրաւոր փառքի ամուսնութիւնը: Նրանց, մանաւանդ Հռիփսիմէի մարմնական գեղեցկութիւնն այնքան մեծ է, որ հրապուրում է ամէնքին:*

Գեղեցկութիւնք մարմնաւոր պայծառութեան ձերո՛յ
Յիմարեցոյց զթագաւորն եւ պակեան հեթանոսք·
Ի գեղ սքանչելի աստուածատուր՝ կուսանացն՝
Տարփացեալ զուարթունք ընդ մարդկան տօնեցին:

*Այստեղ Քերթողը բանեցնում է գեղեցկութեան նկարագրի համար ամենալաւ եղանակը — գեղեցկութեան մեծութիւնը ցոյց տալ՝ թողած ազդեցութեան հետեւանքով: Եթէ ուրիշ բանաստեղծներ երիտասարդների հետ*

*ծերերին էլ ազդուած են դնում գեղեցկութիւնից, Կոմիտասը 7-րդ դարի համար անսպասելի կերպով, մարդկանց հետ հրեշտակներին էլ սիրահարեցընում է մարմնաւոր գեղեցկութեանը: Բայց չմոռանակենք տեսնել, թէ գեղեցկութեան գովքն է՛լ ինչպէս է յօրինում մեր այս քերթողը:*

Ի վերայ միոյ պատուական մարգարտի՛
խաղացի՛ն ցնծալով ամենա՛յն հեթանոսք.
Արեւմուտք յարեւե՛լս ընթացեալք հասի՛ն,
Քարոզե՛լ յայտնապէս զչքնա՛ղ տեսութիւն:
Լուա՛ն թագաւորք եւ լցա՛ն խնդութեամբ,
Որսա՛լ յանձն առին զգաղտնի՛ մեծութիւն.
Պարգեւել իրերա՛ց խոստանային բանի՛ւք,
Եւ ծածո՛ւկ հնարիւք գողանա՛լ ի միմեանց:

*Եւ ահա այդ գեղեցկութեան համար սկսւում է կռիւը կոյսի եւ թագաւորի միջեւ, կռիւը երկնքի ու երկրի: Դա մի նոր տեսակի կռուի տեսարան է: Կոյսերը միասին, իբրեւ քաջամարտիկներ, միասին դիմում են ռազմաճակատ եւ կանգնում թշնամու դիմաց: Նրանց զէնքն է միայն հաւատը: Դա մի կողմն է, դեռատի կոյսեր, տկար կանայք: Միւս կողմում են զօրեղ ու մատիկ տղամարդիկ, մեծ բազմութիւն: Մի չտեսնուած չլսուած ճակատամարտ, որի վրայ զարմանում են ոչ միայն մարդիկ ու հրեշտակները, այլեւ ինքն Աստուած, որ խոնարհում է վերեւից մտիկ տալու այդ կռուին: Եւ ո՛րքան գեղեցիկ է արտայայտում Կոմիտասն այդ ամէնը:*

Է՛ զարմացումն եւ ի վեր քան զիրաշս
խորհրդոց եւ բանից հրեշտակաց եւ մարդկան.
Քանզի է՛նն Աստուած ամենազօր զօրութեամբն
Խոնարհեալ տեսանէր ըզհանդէս կուսանացն:
Ընկերք միամիտք մարմնական կենցաղոյս,
Նախատակք հաւասարք եւ հոգւով միացեալք,
Միաբան ընթացեալք ի տեղի ճակատուն,
Զինեցան հաւատով եւ կացին յանդիման:

*Եւ այդ անհաւասար ճակատամարտի մէջ յաղթում են տկար կանայքը:*

Թուլացան կորովիք հաստահիզ աղեղանց,
Եւ տկար կանա՛յքն վառեցան զինո՛ւ.
Թագաւորն պերճացեալ զօրութեամբ եւ փառօք՝
Ի մանո՛ւկ ի կուսէն պարտեա՛լ ամաչէր:
Ժողովեա՛լ բազմութեան ազգա՛ց եւ ազանց
Ո՛չ զօրէին առ մի՛ նահատակ...

*Այս յաղթութեան հետեւանքն այն է լինում, որ կոյսերն արժանանում են երկնաւոր պսակին: Սակայն Քերթողի համար աւելի կարեւորն այն է, որ նրանք դառնում են «գոհք փրկութեան», «բառնալով զխաւար դիւապաշտ մոլորութեանց յաշխարհէ», որ նրանք «փարատեցին զխաւար դիւապաշտ մոլորութեանց», «եւ եղեն փրկանք անծանօթ աշխարհին» Հայոց, այսինքն՝ դարձան պատճառ քրիստոնէութեան մուտքին ի Հայաստան, կամ, ինչպէս ասում է բանաստեղծը.*

Ծնան կուսա՛նք ա՛զգըս բազո՛ւմս
Եւ մարըք մանկո՛ւնք զիրապարակս ծերո՛ց·
Ի գիրկս սրբութեան աղօթից եւ պահոց
Անեցին հաւատով զարդարեալք ի Քրիստոս:

*Եւ այդ ծնունդն է քրիստոնեայ հայ ժողովուրդը: Բանաստեղծը դրա համար լցուած է երախտապիտութեան զգացմունքով առ կոյսերն եւ հըր- ճուանքով յօրինում է նրանց գովաբանութեան երգը, նորանոր բազմազան գեղեցիկ պատկերներով ու նմանութիւններով զարդարելով այն, ինչպէս՝*

Բարբառք երկնաւո՛րք լցին զերկի՛ր,
Քանզի հո՛տ անուշից բուրեցա՛ք ի Քրիստոս,
Ողջակէ՛զք բանաւորք եւ զո՛հք փրկութեան,
Եւ որո՛չք անարատք ընծայեա՛լք Աստուծոյ:

*Հրեշտակները նրանց ողջակիզման հոտի վրայ ցած են իջնում, մար- դիկ էլ խառնւում հրեշտակներին·*

Վասն ձե՛ր, երանեալ նահատակք,
Զօրք հրեշտակաց անմարմին զուարթնոց ի յերկնից
Ի յերկիր հեղան, եւ մարդիկք խառնեցան
Ի գունդըս զինուորաց Քրիստոսի Աստուծոյ:

*Կամ հետեւեալ տունը իր պատկերով եւ բովանդակութեամբ·*

Ղեկավարք ճարտարք հոգեւոր հմտութեամբ,
Թեթեւաբեռըն մարմնով եւ մտօք սլացեալ՝
Ընդ երկայն ասպարէզս ծովածուփ կենցաղոյս
Անվնաս նաւեցիք եւ հասիք առ Քրիստոս:

*Բերենք եւ հետեւեալները·*

Ճշմարիտ որթոյն Քրիստոսի շառաւիղք,
Եւ ողկոյզըք ճըմլեալք երկնաւոր մըշակին,
Կոխեցայք ճըգնութեամբ ի հնձանըս ձե՛ր,
Զի ուրախ լինիջիք անմահական բաժակաւն:
Ծնուածք երկնաւորք ի յերկրի հաստատեալք,
Եւ արձանք լուսեղէնք ի յերկինս կանգնեալք...

*Այսպէս եւ ուրիշները: Գուցէ այդ նմանութիւնները մասամբ ազ- դուած են այլ գրողներից, օրինակ՝ թերեւս վերեւում դրուած տան առա- ջին տողերի մէջ («Թուլացան կորովիք համաձիգ աղեղանց, Եւ տկար կա- նա՛յքն վառեցան զինո՛ւ») մի նմանութիւն տեսնուի հետեւեալի՝ «Աղեղունք հզօրաց տկարացան, եւ տկարք զգեցան զօրութեամբ» (Աղօթք Աննայի՝ մօրն Սամուէլի: Ա. Թագ. Բ. 4): Բայց այդ արժէք չունի: Բանաստեղծն ամէն ինչ ինքը նորից ստեղծում է սրտագին զգացումով: Այդ քերթուածը նման չէ մեր միւս հոգեւոր երգերին: Չնայելով այբբենական կարգով սկսուած բազմաթիւ քառատող տներին՝ Քերթողը կարողացել է հմտութեամբ լցնել այդ մեծ ծաւալը, անելով սակաւաթիւ կրկնութիւններ միայն, որոնք շատ զգալի չեն, որովհետեւ ցրուած են ամբողջ մեծ երգի մէջ:*

*«Շարակնոցի» սկզբում Կոմիտասին ընծայուած են «Սրբոց Հռիփսիմ-*

*եանց կանոնի» ուրիշ շարականներ եւս․ բայց դրանք Կոմիտասի գործը չեն ստուգիւ։ Թէ այս քերթողն ուրիշ երգեր էլ յօրինած է եղել, թէ չէ՝ այդ յայտնի չէ․ բայց նա իրաւացի պիտի դասուի ի շարս մեր լաւագոյն հին բանաստեղծների, այնքան նրա այդ մէկ երկը, «Հռիփսիմեանց Անձինքը», աչքի է ընկնում ուրիշների մէջ իր արուեստով ընդհանրապէս, նաեւ մասնաւորապէս իր ոտանաւորների չափով։ Դա անապեստեան ազատ քառոտանի (քառատակտ) ոտանաւոր է․ իւրաքանչիւր տողի մէջ կան չորս շեշտեր (կամ չորս ոտքեր», որոնցից երկուսը (առաջինը եւ երրորդը, կամ երկրորդը եւ չորրորդը) աւելի ուժեղ են։ Մեր այս չափը, որ յայտնի է 7-րդ դարի սկզբից, համապատասխան է հնագոյն գերմանական ոտանաւորի չափին, որ գործածուած է եղել մինչեւ 9-րդ դարի վերջը* (1)։

*Այս շրջանում յօրինուած մեր հոգեւոր երգերը միայն Կոմիտասի այս մէկ քերթուածով չեն սպառւում․ ունենք բազմաթիւ ուրիշ երգեր էլ։ Բայց նրանց հեղինակները ստոյգ յայտնի չեն, եւ նրանց մասին խօսուած է յետոյ՝ «Հոգեւոր երգ» հատուածի մէջ։*

## ԴԱՒԹԱԿ ՔԵՐԹՈՂ

1․ Կենսագրական։— *Կոմիտասից ժամանակով շատ հեռու չէ այս Դաւթակ քերթողը, որ ժամանակակից է Սահակ Ձորափորեցուն եւ Անանիա Շիրակացուն։ Նա էլ ծնունդ է 7րդ դարի այն կուլտուրական վերելքի, որի ներկայացուցիչներն են այդ հեղինակներն եւ ուրիշները։ Նրանից մնում է միայն մի «Ողբք ի մահն Ջեւանշէրի մեծի իշխանին», որ կայ Մովսէս Կաղանկատուացու Աղուանից Պատմութեան մէջ*(2)։ *Աղուանից իշխան Ջեւանշէրը, որ, ըստ Կաղանկատուացու, մեծ փառքով իշխել է* 637—670 *թ․, դաւադրութեամբ սպանւում է իր բարերարեալներից մէկի ձեռով իր իսկ պարտէզում։ Ամէնքը սաստիկ ողբում են նրա մահը, ասում է Պատմիչը։ «Յայնժամ ճարտասան ոմն ի մէջ անցեալ, որ տեղեակ էր արհեստական իմաստից, Դաւթակ անուն կոչեցեալ, հնարագիւտական վարժիւք յաջողակ, եւ վերծանական քերթողութեամբ յառաջադէմ։ Որ եւ առատաբեր ի բանիցն պաճուճանս ճարտարութեամբ էր քաջապէս հրատարակող՝ լեզու ունելով նման երագագիր դրչի։ Սա յոլովուք աւուրբք ժամանեալ յամէր ի դրան արքունի։ Արդ՝ իբրեւ հասանէր օրհասական շշուկն ի վերայ արեւելից աշխարհիս սակս յանկարծահաս սպանման մեծի զօրավարին, յայնժամ սկսաւ նա երգել ըստ ալփափետաց գլխակարգութեանց զողբս զայս ի վերայ բարեպաշտին Ջեւանշէրի, եւ ասէ այսպէս...»։Բերուած է յետոյ «Ողբը»։*

*Մովսէս Կաղանկատուացու աղբիւրը Ջեւանշէրին ժամանակակից է, եւ, ըստ այդ վկայութեան, Դաւթակ քաջ ճարտասանն ու քերթողն ուրիշ*

---

(1) Մանրամասնութիւններր տեսնել Մ․ Աբեղեանի «Հայոց լեզուի տաղաչափութիւն (մետրիկա)», Երեւան, 1933, էջ 320—340։

(2) Ամբողջը տպուած է միայն այդ գրքի առաջին հրատարակութեան մէջ․ «Պատմութիւն Աղուանից աշխարհի Մովսիսի Կաղանկատուացւոյ, ի լոյս ընծայեաց Կ․ վ․ Շահնազարեան», Փարիզ, 1860, Ա․ հատոր, էջ 354 եւ հտն․։

*տեղից եկած է եղել Պարտաւ քաղաքը եւ շատ օրեր ժամանակաւորապէս մընալիս է եղել մեծ իշխանի պալատում*(1)*: Պատմիչը մեծ գովեստներ տալով Հանդերձ՝ ցաւօք չի յայտնել ուրիշ մանրամասնութիւններ այդ քերթողի վերաբերեալ: Բայց որ նա երկար օրեր Հիւրասիրուել է մեծ իշխանի մօտ, դրանից պէտք է Հետեւցնել, որ նա յայտնի ոմն է եղել:*

2. «Ողբը»:— *Նրա այս դամբանական «Ողբն» արժանի է առանձին ուշադրութեան: Դա մի ապացոյց է, որ կարելի չէ ասել, թէ մեր բոլոր Հին քերթողներն իրենց արուեստը գործ դրած լինեին միմիայն կրօնական բովանդակութեամբ ոտանաւորներ — Հոգեւոր երգեր յօրինելու: Արդարեւ եկեղեցական խնդիրներն առաջնակարգ կարեւորութիւն են ունեցել նրանց Համար, բայց կենդանի մարդիկ չէին կարող անտարբեր մնալ դէպի կեանքի այլ կողմերն ու դէպքերը: Նրանցից մէկը կամ միւսն իր գրիչը նուիրել է, Հարկաւ, նաեւ ժամանակակից աշխարՀիկ նիւթերի: Բայց որովՀետեւ արտադրողներն եղել են կրօնաւոր եւ իշխողն եղել է կրօնական ոգին, ուստի նման բովանդակութեամբ քերթուածները չեն պահուել: Դաւթակի «Ողբը» միակ այդպիսի Հնագոյն* չափածոյ *բանաստեղծութիւնն է, որ Հասել է մեզ, — մի կողմ թողած ժողովրդական աւանդական վէպերի մնացորդները: Իր դարի Համար շատ բնական է, որ մեր այս բանաստեղծի քերթուածը նոյնպէս տոգորուած լինի կրօնական իդէոլոգիայով ու Ս. Գրքով եւ յօրինուած լինի Հոգեւոր երգի ձեւով: Բայց ինչպէս էլ լինի, դա կրօնական երգ չէ:*

*«Ողբից» երեւում է նրա Հեղինակի, Դաւթակի Հմտութիւնը: Նա ծանօթ է յունական արուեստին, գուցէ իմացել է նաեւ յունարէն լեզուն: Այդ դարում դեռ չէին պակասում յունարէն գիտցողները: Նա «մեծ զօրավար» Ջեւանշէրի Համար գրում է.*

Նիրհէր ի մարմին, այլ հոգւոյն արթնութեամբ
Վարէր զկա՛ռս զԱրէսի ի մէջ ատեղացն՝
Քաջութեամբ բերելով զուշիմութեան ծաղիկն:

*Արէսը (Մարս) պատերազմի աստուածն էր. նա պատկերացւում էր ոտքից գլուխ զինուած. ոտքի տակ ունենալով մի աքաղաղ իբրեւ սիմբոլ* արթնութեան *եւ կռուի եռանդի: Անշուշտ, Դաւթակին ծանօթ է եղել այդ պատկերացումը. բայց նա այդ դիցաբանական տեղեկութիւնը կարող էր եւ*

---

(3) «Ժամանեալ» բառը ցոյց է տալիս ուրիշ տեղից եկած լինելը: Իսկ «յամել» բառը, որ նշանակում է «ուշանալ», յաճախ գործածւում է «երկար մնալու» իմաստով, առանձնապէս երբ մէկը գնում է մի տեղ վերադառնալու մտքով, բայց երկար մնում է այնտեղ. օրինակ՝ Վարք Հարանց, Ա. 202, 205, 691. Աբբա Մարկոսն ասում է Սերապիոնին, որ եկել էր նրա մօտ. «փութով երթիցես ի խաղաղութիւն եւ մի՛ յամեսցես աստ»: «Գնաց եղբայրն եւ յամեաց անդ»: Այս գրքից է օրինակներ բերւում, որովհետեւ այժմ այդ ունիմ ձեռի տակ: Բայց նոյնը կարելի է գտնել եւ շատ տեղ. օրինակ՝ Փ. Բուզանդ, Դ. 20. Արշակ թագաւորը հայ զօրքով գնում է Հայաստանից դուրս օգնելու պարսիկներին. հայերը կամենում են շուտով վերադառնալ հայրենիք. «Զի լաւ հաշուէին զմեռանելն առաւել քան զյամելն յօտար աշխարհին»:

*հայ թարգմանութիւններից առնել: Յունական արուեստն իրեն զգալ է տալիս քերթուածի ամբողջ ընթացքում: Այստեղ գտնում ենք նիւթի բաշխումն, մասերի դասաւորութիւն ու մշակում ըստ ճարտասանական արուեստի: Բաւական է միայն այդ համեմատել Թէկուզ Ագոնցի «Ճարտասանութեան» մէջ բերուած կանոնների հետ(1), եւ կ'երեւայ Դաւթակ ճարտասանի արուեստը, եւ կ'իմացուի, որ ինչպէս նա «տեղեակ է արհեստական իմաստից» եւ «հնարագիտակ վարժիւք յաջողակ»: Հին յունական դիւցազներգութիւնների սկզբում բանաստեղծները դիմում էին մուսային, որ երգի. «ԶԱքիլլեայ Պելեանծնին, աստուածուհի՛ զքէնն երգեա...», նոյնպէս վարւում է եւ մեր այս քերթողը, բայց ոչ մեքենայաբար դիմելով մուսային.*

Աստուածային բանին արուեստաւոր հոգի,
Յօրինեա՛ իմաստիւ զտխրական երգմունս,
Զի սգալի ձայնիւ անդադար ողբասցուք
Ի վերայ դժնդակ կորստեանս մերում:

*Յունական մուսային փոխանակել է, ուրեմն, «աստուածային բանին արուեստաւոր հոգին». յունական ձեւն առնուած է քրիստոնէական բովանդակութեամբ: Շարունակութեան մէջ անմիջապէս բերում է տխուր երգի պատճառը.*

Բեկումն մեծ, որ եղեւ արեւելից աշխարհիս,
Եւ աղաղակ կործանման հնչեաց ընդ երկիր.
Ազգք եւ ազինք լուիցեն զբարբառս իմ,
Եւ երկրածինքս ամենայն ողբասցեն ընդ իս:
Գլորեցաւ վէմն կենդանի եւ հզօր,
Եւ պարիսպն ամրութեան խորտա՛կեցաւ:
Աշտարակն բանաւոր տապա՛լեցաւ,
Եւ ցանկն շինութեան խրամատեալ քակեցաւ.
Դարձաւ ի դառնութի՛ւն խաղաղութիւն մե՛ր,
Եւ դրունք հինից տեղացին ի մեզ.
Զի մեծասքանչ տէրութիւնն կործա՛նեցաւ,
Եւ հրաշալի պետութեանն շիջաւ ճառագայթ:

*Հետաքրքիր է այն, որ Ջեւանշէրի մահուան հետեւանքը պիտի լինէր աշխարհի խաղաղութեան վերացում եւ հէների յարձակումը. մի ակնարկ հոների ապստամբութեան, որ նոյն դարում յաճախ տեղի էր ունենում Աղուանից աշխարհի վրայ: Վերջում եւս յիշատակում է նոյնը. «առ ոչ երեւելդ տապարաւ Հոնաց զկոտորումն նռնենեաց առնեն»: Որպէսզի իր ողբն ազդի, ինչպէս դամբանական յօրինելու արուեստը պահանջում է, նա ըսպանուածի գովքն է անում եւ ապա պատմում եղերական եղելութիւնը:*

Էր նստեալ որպէս առիւծ ի մորւոջ,
Եւ լռեալ՝ ի նմանէն սարսէին թշնամիք.

---

(1) Ճարտասանութիւն բովանդակեալ ի հինգ գիրս, ի Հ. Ստեփանոս վարժապետ վարդապետէ Ագոնց, Վենետիկ, 1775:

Տեա՛րք տոհմից եւ իշխանք ամենայն
Երկիւղիւ եւ սիրով հնազանդէին նմա:

*Նա զօրեղ է եւ իմաստուն, նրա համբաւը տարածուել է ամբողջ աշխարհը... Առանձնապէս աչքի է ընկնում քերթուածի այն մասը, որ ճարտասանները կոչում են «կրից տեղի», որով ձգտում են «կիրք», այսինքն զգացմունքն առաջացնել ունկնդիրների մէջ: Այդ «կիրքն» է բարկութիւն և ատելութիւն չարիք գործողի համար: Քերթողը լցուած է վրէժխնդրութեան յուզումով. ցանկանում է մարդասպանին հատուցանել իր արժանին, բայց նա փախել է: Եւ ահա նա անէծք է որ թափում է այդ եղեռնագործի գլխին: Այդ անէծքն, աստուածաշնչեան եղանակով ոգուած, մի զօրեղ հատուած է, որի նմանը մեր հին բանաստեղծութեան մէջ ունի միայն Ներսէս Շնորհալին.*

Ծնո՛ւնդ չա՛ր որ մեղաւ նմա,
Որդի՛ անօրէնութեան որ չարչարեաց զնա,
Անիծիւք պարուրեալ գնասցէ՛ ընդ երկիր,
Եւ Կայենի երերմամբն վարանեալ շրջեսցի:
Կարկեսցին շաւիղք փախստեան նորա,
Եւ թռչունք երկնից ճախրեսցե՛ն ի վերայ նորա.
Ազգաւք ձորոց սլասցին ի նմա.
Եւ գազանք վայրի ապասեսցե՛ն նմա:
Հո՛ւրն Հերովդէի առաքեսցի՛ նմա,
Եւ ծնցի՛ն ի նմա որդո՛ւնք եւ մկունք.
Աղեկէզ տոչորմունք բորբոքեալ ի նմա՝
Կերիցե՛ն առ ժամայն զտիրասպան մարմին նորա:
Ջե՛ռն որ ձգեցաւ ի սպանանել զտէրն,
Եւ ո՛տք որ կոխեցին զհրաշալի պատկերն,
Ուրկածին ախտիւն եռացմամբ զօսացեալ՝
Յարեսցի՛ն ի նա ցեցք չարակեղ խնցոտմամբ:
Ղօղեալ հանգիցէ՛ ընդ հովանեաւ դժնկի,
Եւ կորիւնք իժից մեղիցեն նմա՝
Թո՛յնք քարբից հեղցի՛ն զնովաւ,
Եւ սատկազոյն ուռուցմամբ հերձցեն զնա:

*Բանաստեղծն իրաւունք է համարում այսպիսի անէծքներ տալու. զի ոճրագործը մի սոսկ իշխան չի սպանել, այլեւ մի առաքինի մարդ: Եւ նա դադելով իր բռնկումը՝ սկսում է մեղմ ցաւով գովերգել Ջեւանշէրի բարեմասնութիւնները, ապա նկարագրում է մեռելից յետոյ մնացողների — ժողովրդի անմխիթար վիճակը.*

Սիրով քո այրին սիրելիք քոյին,
Եւ զսէ՛ր քո անմոռաց ի մտի ունին.
Ո՛հ թէ խունկ անո՛ւշութեան
Բուրեալ լինէաք քո գերեզմանին:

Վերացաւ մեր թագ, վերացաւ աթոռ,
Եւ փառք վայելչութեան ընդ քեզ թաղեցաւ:

*Ամբողջ Ողբի եզրակացութիւնն է, թէ աշխարհիս փառքը ունայն է.*

Քեւ զանոտութիւն նորին [=փառքի] նոր ուսեալ,
Թէ չունի երբեք ումեք աստ մնալ
Քա՛ղցր էր զայլս ասել, եւս եւ միշտ հեծել,
Բայց քաղցրագոյն եւս ընդ քեզ մեռանել:

*Դաւթակի այս «Ողբքն» իբրեւ բանաստեղծութիւն ազդում է իր խոր եւ անկեղծ զգացմունքով, իր մաքի գիւտերով եւ քնարական տխուր, անէծ-քի մէջ՝ բուռն զեղումով: Բանաստեղծն ուշադրութիւն է դարձրել ոչ միայն բովանդակութեանն, այլեւ ձեւին, թէ՛ պատկերաւոր կենդանի ոճի ու պարզ կորուկ դարձուածների եւ թէ՛ վերջին տողերի մէջ յանգեր երեւան բերող ստանաւորի նկատմամբ: Վերջինս նոյն տեսակի է, ինչ որ Կոմիտասի «Անձինքնը». միայն Դաւթակի «Ողբքի» մէջ վերջում բոլոր տները քառատող չեն եւ ռիթմն արապացրած է: Բացի ստանաւորից՝ այս «Ողբն» իր ներքին յատկութիւններով էլ կրում է նոյնպիսի դրոշմ, որ ունի Կոմիտասի քեր-թուածը: Ինչպէս ժամանակի ոգին պահանջում էր, ճարտասան Քերթողը, որ անշուշտ ուսած ու վարժուած է եղել եկեղեցական դպրոցում, աշխար-հիկ նիւթի մասին երգել է քրիստոնէական հայեացքով ու Ս. Գրքի ազդե-ցութեամբ եւ նոյնիսկ մարգարէական դուշակութեամբ բացատրելով ժամա-նակակից եղելութիւնը: Եւ ինչ որ էականն է՝ Կոմիտասը երգում է, թէ «սնոտի է անցաւոր մեծութիւն», նոյնպէս եւ Դաւթակի «Ողբքի» մէջ եզրա-կացւում է «սնոտիութիւնն» այս աշխարհի փառքի, որ երբեք չի մնալու ոչ ոքի: Այդպէս էլ պէտք է լինէր, քանի որ այդ ժամանակ քրիստոնէական յառեռեսութեամբ տոգորուած էին առհասարակ:*

## ԱՆԱՆԻԱ ՇԻՐԱԿԱՑԻ

1. Ինքնակենսագրութիւն եւ կենսագրութիւնը:— *Դաւանաբանական խնդիրների բորբոք շրջանում իբրեւ մի բացառութիւն բոլորովին ուրոյն կերպարանքով հանդէս է եկել Անանիա Շիրակացին: Նրա բազմաթիւ երկերն առանձին գրական արժէք չունին, բայց շատ նշանակալից են կուլտուր-պատմական տեսակէտով: Նա առաջին հայ «համարողն» է, այսինքն՝ թուա-բանը, առաջին տիեզերագէտն ու յայտնի տոմարագէտը: Շնորհիւ այն հան-գամանքի, որ նա հետեւելով, անշուշտ, Մ. Խորենացուն, թողել է մի փոքր ինքնակենսագրութիւն*(1) *իր ուսանելու մասին, մենք ծանօթ ենք նրա կեան-*

---

(1) Անանիա Շիրակունւոյ Մնացորդք բանից, ի լոյս էած Ք. Պ., Ս. Պետերբուրգ, 1877, էջ 1. «Ա. Անանիայի Շիրակվանցոյ, երիցս երանեալ վարդապետի, վասն որպիսու-թեան կենացն»: Ուրիշ ձեռագրի մէջ՝ «Անանիայի Շիրակունւոյ երիցս երանեալ վարդապե-տի, վասն որպիսութեան կենացն իւրոց: Ես Անանիա Շիրակացի ի յԱնանիայ գեղջէ որ բա-ւանդակեցի զդպրութիւն մերոյ ազգիս Հայաստանեայց...»: Տես՝ Գ. Տ.—Մկրտչեան — Ա-

քի առաջին շրջանին։ Նա իրեն կոչում է իր ինքնակենսագրութեան մէջ «Անանիա Շիրակվանցի» կամ «Շիրակացի»․ իսկ «Ի Զատիկն» ասացուածքի վերջում անուանում է իրեն «Անանիա որդի Յովհաննիսի Շիրակայնւոյ»։ Այսպէս է եւ մի քանի ուրիշ աշխատութիւնների վերնագրերի մէջ(1)։ Ուրիշ երկերի վերնագրերի մէջ է․ «Անանիայի Շիրակունւոյ», «Անանիայի Շիրակունոյ»(2)։ Սովորաբար, սակայն, նա յայտնի է «Շիրակացի» անունով։

Նա ծնուել է Շիրակի՝ կա՛մ Շիրակաւան կա՛մ Անէից գիւղում, հաւանօրէն 7-րդ դարի երկրորդ տասնամեակի մէջ։ Աւարտելով «զդպրութիւն մերոյ ազգիս Հայաստանեայց» եւ հմտանալով Աստուածաշնչին, նա ցանկացել է աւելի մեծ գիտութիւն ձեռք բերել։ Մտածելով, թէ թիւն է «մայր ամենայն իմաստից» — թիւն է բոլոր գիտութիւնների մայրը, թէ՝ «ոչինչ յարմարի բան իմաստութեան առանց թուոյ», առանձնապէս շատ փափագել է նա «համարողական արուեստին», (որ է յունարէն՝ արիթմետիկէ՛ տե՛խնէ, — համարելու արուեստ, թուերի ուսում, այժմ ասում ենք՝ թուաբանութիւն)։ «Եւ ի Հայս ոչ գտի մարդ որ գիտակ էր իմաստասիրութեան եւ ոչ գիրք արուեստից գտի յաշխարհիս», — ասում է նա։ Ուստի նա դիմում է Յունաց աշխարհը։ Թէոդուպոլսում (Կարին քաղաքում) եկեղեցական գրականութեանը հմուտ մի մարդ, անունը Եղիազար, յայտնում է նրան, թէ Չորրորդ Հայքում կայ Քրիստոսատուր անունով մի «համարող», այսինքն՝ արիթմետիկոս։ Անանիան գնում, նրա մօտ մնում է վեց ամիս, բայց տեսնում է, որ նա «ոչ ունէր զբովանդակ արուեստն, այլ աստի եւ անտի ծայրաքաղ»։ Նա դիմում է Կոստանդնուպոլիս։ Այստեղ պատահում են նրան իր ծանօթներից մի քանիսը եւ ասում են, թէ ինչո՛ւ է նա այնքան ճանապարհի նեղութիւնը կրել, քանի որ, — ասում են, — «մեզ մօտիկ Պոնտոսի ծովեզերքում, Տրապիզոնում է Բիզանդիայի ուսուցիչ Տիւքիկոսը, որ լի է իմաստութեամբ եւ գիտակ է հայերէն դպրութեան»։ Երբ Շիրակացին նրանց հարցնում է, թէ ո՛րտեղից գիտեն այդ, նրանք պատասխանում են․ «Շատ ճանապարհորդներ տեսանք, որ նրա մօտ էին եկել նրա մեծ գիտութեան համար։ Այժմ էլ մեզ նաւակից եղաւ Կոստանդնուպոլսի Հայրապետի սարկաւագ Փիլադրը, նա շատ մանուկներ էր տանում նրա մօտ՝ ի աշակերտութիւն»։

Անանիան գնում է Տրապիզոն եւ գտնում այդ ուսուցչին սուրբ Եւգինէի վկայարանում, ու պատմում է նրան իր նրա մօտ գնալու նպատակը։ Նա սիրով ընդունում է Անանիային եւ ուրախանում է, որ իր միջոցով այն

---

Անանիա Շիրակացի, Վաղարշապատ, 1896, էջ 11․ Արտատպ․ նոյն թուի «Արարատից»։ Կայ այս կենսագրութեան մի ուրիշ վերսիա եւս, փոքր ինչ աւելի ընդարձակ։ Տե՛ս Հ․ Տաշեան, Վիեննայի Մխիթ․ Ձեռ․ ցուցակ։

(1) Անդ, էջ 26․ 4․ 15․ 1։

(2) Անանիա Շիրակացի, Տիեզերագիտութիւն եւ տոմար, աշխատութեամբ Աշ․ Աբրահամեանի, Երեւան, 1940, էջ XI, 1։

*արուեստը պիտի տրուի սուրբ Գրիգորի վիճակին, Հայոց աշխարհին. «որովհետեւ, — ասում է նա, — ես իմ երիտասարդութեան ժամանակ շատ եմ կացել Հայաստանում, եւ ազխուութիւն էր այնտեղ»:*

*Տիւքիկոսը սիրում է Անանիային, ինչպէս իր որդուն, սովորեցնում է նրան իր բոլոր իմացածները: «Եւ ուսայ լիով զարուեստ համարողութեան»: Ութ տարի Անանիան մնում է նրա մօտ, սովորում, հմտանում է՝ կարդալով շատ գրքեր, «որք չէին թարգմանեալ ի մեր լեզուս, — ասում է նա: — Չի կայր առ նա անչափ գրեանք, գաղտնիք եւ յայտնիք, (եկեղեցականք) եւ արտաքինք, արուեստականք եւ պատմագիրք, բժշկականք եւ ժամանակագիրք»: «Եւ ի՞նչ մէկ մէկ անուանեմ, — աւելացնում է նա, — որովհետեւ ոչ մի գիրք չկար, որ նրա մօտ չգտնուէր: Եւ նա թարգմանութեան այսպիսի շնորհք ունէր: Երբ կամենում էր յունարէն գրուածները հայերէն թարգմանել, կանգ չէր առնում, ինչպէս ուրիշ թարգմանիչները, այլ հայերէն լեզուով կարդում էր ինչպէս հայերէն գրուածները: Եւ նա պատմեց ինձ, թէ ինչպէս է հմտացել հայ լեզուին եւ այս գիտութեանը: Ասաց թէ՝ Ես երիտասարդ ժամանակ Տրապիզոն քաղաքում կենում էի Յովհաննէս զ·օրավարի դառնը, գինուոր էի դարձել Հայաստանում եւ երկար ժամանակ, մինչեւ Մօրիկ թագաւորը, մնալով այնտեղ՝ սովորել եմ հայ լեզուն եւ դպրութիւնը: Իսկ երբ պարսիկները յարձակուեցին յոյների վրայ, վիրաւորուեցի պատերազմում, փախայ Անտիոք, եւ բոլոր ստացուածքներս աւարի առնուեցին: Այն ժամանակ ես Աստուծուց խնդրեցի վէրքերիս բժշկութիւն եւ ուխտեցի ասելով. Եթէ ինձ կեանք շնորհես, անցաւոր դանձեր չեմ ժողովիլ, այլ կը հետեւեմ գիտութեան գանձերին... Ողջանալով՝ գնացի Երուսաղէմ քաղաքը, այնտեղից Աղեքսանդրիա, եւ այնտեղից Հռոմ. եւ մի ժամանակ մնալով այնտեղ, դարձայ Կոստանդնուպոլիս եւ գտայ իմաստասէրների քաղաքի ուսուցիչ Աթենասին, մի երեւելի մարդու, եւ նրա մօտ ուսման մնացի ոչ սակաւ տարիներ: Եւ կատարեալ իմաստութեամբ դարձայ այս տեղս: Եւ սկսեցի վարդապետել եւ սովորեցնել»:*

*«Սակաւ տարիներից յետոյ, — շարունակում է Անանիան, — վախճանուեց վարդապետը. եւ նրա աշակերտներից ոչ ոքի նմանը չգտնելով՝ թագաւորի ու իշխանների հրամանով հրաւիրակներ ուղարկուեցին, որպէսզի նա (Տիւքիկոսը) գնա նստի իր ուսուցչի աթոռին, բայց նա յանձն չառաւ ասելով թէ՝ Ես ուխտել եմ երկնաւոր թագաւորին, որ չհեռանամ այս տեղից: Եւ այնուհետեւ այնտեղից (= Կոստանդնուպոլսից) ու բոլոր աշխարհներից, նրա ծովածաւալ գիտութեան համար, նրա մօտ էին գալիս ուսման»:*

*«Եւ ես տրուպս հայերից, — շարունակում է Անանիան, — նրանից ուսայ այս զօրաւոր արուեստը, որ թագաւորներին է ցանկալի, եւ մեր աշխարհը բերեցի առանց որեւէ մէկի օգնութեան, միայն իմ ջանքով, Աստուծու օգնութեամբ եւ սուրբ Լուսաւորչի աղօթքով, թէպէտ եւ ոչ ոք շնորհակալ չեղաւ իմ աշխատութեանս համար, եւ մեր հայերը չեն սիրում ի-*

մաստութիւն կամ գիտութիւն, այլ ծոյլ ու ձանձրացող են։ Որովհետեւ երբ Հայաստան եկայ, շատերն եկան ինձ մօտ ուսանելու, բայց մի քիչ գլխի ընկնելուց յետոյ՝ չմնացին, որ այս արուեստն աւարտեն, այլ ինձ թողին ու մի կողմ քաշուեցին, եւ սկսեցին սովորեցնել՝ ինչ որ չգիտէին եւ չէին հասկացել։ Կեղծաւորներն ու սնափառներն սկսեցին գիտնական ձեւանալ [գիտութիւն ձեւացնել] եւ մարդկանցից ռաբբի (=վարդապետ, ուսուցիչ) կոչուել։ Իմ վրայ էլ իրենց սարքած պարսաւանքներ են ասում։ Իսկ ես նրանց պէս չարութիւն չունէի սովորեցնելու եւ ուսուցանելու վերաբերմամբ, այլ մտաբերում եմ տէրունական խօսքը, որ ասում է՝ Իմն է վրէժխնդրութիւնը, եւ ես կը հատուցանեմ։ Եւ դարձեալ թէ՝ Իմ ոսկին սեղանավաճառներին տուր, եւ ես կը գամ տոկոսներով կը պահանջեմ։ Ապա ուրեմն ես չեմ արգելի ոչ ոքի, որ սովորել է ուզում։ Եւ ես այս՝ անմահ յիշատակ եմ թողնում ձեզ, վարդապետներ, մի՛ արգելէք ուսումնասէրներին եւ փափագողներին, եւ հատուցում կ՚առնէք Քրիստոսից, որ ձրի շնորհատու է»։

Գրեթէ ամբողջ բերուեց այստեղ Անանիայի ինքնակենսագրութիւնը, զի դա մի հետաքրքիր գրական յիշատակարան է ոչ միայն այդ լուսաւորիչ Անանիայի իրեն համար, այլեւ այնու, որ պարզ ու հասարակ, բայց անկեղծ լեզուով բաց է անում մեր առաջ Հայաստանի մտաւոր վիճակն այն ժամանակին։ «Տգիտութիւն էր ի նմա», այսինքն Հայաստանում, ասում է Տիւքիկոսը Մօրիկ կայսրի (582 – 602 թ.) ժամանակի համար։ Դա իր ամբողջ ծաւալով վերաբերում է միայն «համարողական արուեստին», որի մասին է խօսքը, եւ որի համար Անանիան ոչ մի գիրք չի գտել Հայաստանում այդ ժամանակ։ Անշուշտ, տոմարագիտութեանը բոլորովին անծանօթ չեն եղել. 584 թուականին Դուինում հայ տոմարագէտները կարգաւորել են հայկական տոմարը, եւ հաստատել Հայոց թուականը 552 թուականից սկսած։ Բայց «համարողութեան» ուսում չի աւանդուել վարդապետարաններում։ Անանիան 7րդ դարի առաջին երեսնամեակին առել է միայն ուսումն Ս. Գրքի եւ հայկական դպրութեան, վերջինիս մէջ նաեւ հայերէն թարգմանուած գրքերի։ Նա չի գտել Հայաստանում նաեւ իմաստասիրութեանը մեծ հմտութիւն ունեցող գիտակ անձեր։ Եւ հասկանալի է այդ։ Թէպէտեւ եղել են թարգմանութիւններ, բայց այնպիսի յունաբան լեզուով, որ մեր փիլիսոփաներին հեշտ չէր միշտ դրանց վրայ իմաստասիրութեանը գիտակ, հմուտ դառնալ։ Բայց Շիրակացու երեւան գալն ինքը մի ապացոյց է այն կուլտուրական շարժման, որ հայ կեանքն ունեցել է 6րդ դարի վերջին քառորդից ի վեր։ Դրան ապացոյց է եւ այն, որ եղել է ձգտում սովորելու նոյնիսկ «համարողութիւն»։ Այդ պարզ երեւում է Անանիայի խօսքից, որ ասում է. «Իբրեւ եկի ի Հայս, բազումք եկին առ իս յուսումն»։ Նա նեղանում է, որ իր աշակերտները երկար չեն մնացել իր մօտ, որպէսզի իր արուեստն աւարտեն, այլ հեռացել են եւ թերուս կերպով սկսել են իրենք էլ սովորեցնել։ Որ Հայաստանում չի եղել «համարողական արուեստի» ուսում, այդ զարմանալի չէ։ Յոյների մէջ անգամ այդ ժամանակ դժուար է ե-

դել գտնել այդ գիտութեանը եւ ընդհանրապէս գիտութիւնների հմուտ անձեր: Այդ շատ պարզ տեսնում ենք հէնց Անանիայի ինքնակենսագրութիւնից. նա երկար որոնումներից յետոյ՝ միայն մէկին, Տիւքիկոսին գտնում է Տրապիզոնում: Նոյնը շատ լաւ երեւում է այդ Տիւքիկոսի կեանքից. ուսանելու համար նա գնում է Երուսաղէմ, այնտեղից՝ Աղեքսանդրիա, այնտեղից՝ Հռոմ, ապա Կոստանդնուպոլիս, ուր գտնում է վերջապէս իր ցանկացած ուսուցիչը: Սրա վախճանուելուց յետոյ՝ Կոստանդնուպոլսում ուրիշ հմուտը չի գտնում:

Անանիան, ցաւօք, թուականներ չի յայտնում իր մասին: Հետագայ դարերի պատմագիրները հաղորդում են, որ Անաստաս կաթողիկոսը (662 – 668 թ.) (1) յանձնարարել է Անանիա Շիրակացուն (որին անուանում են նաեւ՝ Անեցի կամ «յԱնէից գեղջէ») կարգաւորել Հայոց տոմարը: Հայոց քաղաքական տարեհաշիւը շարժական էր, այսինքն՝ բոլոր տարիները բաղկանում էին հաւասարապէս 365 օրերից, Նահանջ տարի չկար: Կաթողիկոսը կամեցել է Անանիայի ձեռով այնպէս կարգաւորել հայոց քաղաքական տոմարը, որ անշարժ տոմար կազմուի, ըստ հռոմէականի: Անանիան այդ աշխատանքը կատարել է: Կաթողիկոսը կամեցել է այդ փոփոխութիւնը ժողովով ընդունել եւ հաստատել տալ. բայց նա, դեռ ժողովը չգումարած, վախճանուել է, եւ Անանիայի աշխատանքը մնացել է առանց գործադրութեան:

Երկրորդ թուականը, որ իմացւում է Անանիայի մասին, հետեւեալն է: Նրա անունով մնում է մի ժամանակագրութիւն, որ Ադամից սկսած՝ հասնում է մինչեւ ՃԼԴ=134+551=685 թուականը: Դրանից պէտք է եզրակացնել, որ այդ թուականին դեռ կենդանի է եղել Շիրակացին: Այդ աշխատութեան վերնագիրն է՝ «Մովսէսի Խորենացւոյ եւ Անդրէասի», բայց ճառընտրի ծայրին, ցանկի մէջ նշանակած է այսպէս. «Նորին Անանիայի պատմագրականք»: Մ. Խորենացին եւ Անդրէասը յիշուած են իբրեւ աղբիւրներ: Եւ իսկապէս սկզբի մասը բառացի առնուած է Մովսէս Խորենացուց, երկրորդ մասը, Նոյի որդիներից սկսած մինչեւ Աքեմենեան հարստութիւնը, բերուած է Անդրէասից, իսկ շարունակութիւնը Շիրակացու գործն է (2):

Մ. Խորենացու «Հայոց Պատմութիւնը», ինչպէս երեւում է, Անանիայի սիրած գիրքն է եղել: Թւում է, թէ Խորենացու ազդեցութիւնն է երեւում նրա գանգատների մէջ. Թուաբանութեան արուեստը սովորեցի եւ

(1) «Տեղեկագիր ՍՍՌՄ Գիտութիւնների Ակադեմիայի Հայկական Ֆիլիալի», 1941, No.1 (6) էջ 71՝ «Ժամանակագրական դիտողութիւններ», Բ. Առաքելեանի: Այս եւ մի քանի ուրիշ տարեթուեր էլ բերում ենք ըստ այս աշխատութեան:

(2) «Հանդէս Ամսօրեայ», 1903, էջ 30, 34. Ֆրեդ. Կոնիբերի յօդուածը՝ «Մ. Խորենացու Պատմութեան ժամանակին մասին»: Անանիայի այս աշխատութիւնը Կոնիբերն արդէն համարել է Աստղիկի աղբիւրը: Տե՛ս նաեւ Ստ. Մալխասեանց, «Խորենացու առեղծուածի շուրջը», Երեւան, 1940, էջ 106 եւ հտ.:

բերի յաշխարհս մեր... միայն ջանիւ... թէպէտեւ ոչ ոք եղեւ շնորհակալ իմոց աշխատութեանս»(Համա. Մ. Խոր. Ա. 3. «սկսայց, թէպէտ եւ ջանիւ, միայն թէ շնորհակալ ոք մերոցս գտանիցի լեալ աշխատութեանցս»). «Ոչ սիրեն Հայքս իմաստ կամ գիտութիւն» (Համա. Մ. Խոր. Ա. 3. «Որպէս այժմ՝ եւ առ հինսն Հայաստանեայցս լեալ անսիրելութիւն իմաստութեան»): Անանիա Շիրակացու գանգատն իր «ծոյլ եւ ձանձրացող», թերուս աշակերտներից, որոնք ուսումը շարունակելու փոխանակ՝ իրենք են սկսում ուսուցանել, յիշեցնում է Մ. Խորենացու խօսքը՝ «Աշակերտք հեղգք առ ուսումն եւ փոյթք առ ի վարդապետել» (Գ. 68): Իսկ պարսաւանքի ու ծաղրի նկատմամբ՝ բախտակից են եղել ոչ միայն Մ. Խորենացին եւ Ա. Շիրակացին, այլ սրանց հետ նաեւ ուրիշները:

Իր աշխատութիւններից երեւում է, որ Անանիան եղել է մի բեղմնաւոր լուսամիտ հեղինակ, սիրող ճշմարտութեան, ատեցող բռնութեան, ձգտող բնութիւնն ուսումնասիրելու, եւ սնոտիապաշտութիւնների հակառակ: Ընդունելով հանդերձ մեծ մտածողների եւ Ս. Գրքի հեղինակութիւնը՝ նա կուրօրէն չի հետեւում հեղինակաւորներին: Նա խոհական դէմք է. ունի իր համոզումները: Բերելով ուրիշների կարծիքները, երբեմն նոյն խնդրի մասին մի քանիսինը, ինքը քննադատելով մերժում կամ ընդունում է մէկը կամ միւսը: Այսպէս, օրինակ, նա չի ընդունում ուրիշների կարծիքը, թէ բարի փիլիսոփաները Երրորդութեան խորհուրդն էլ իմացել են, նա այդ հերքում է: Երբեմն նոյնիսկ Աստուածաշնչի ասածն էլ չի ընդունում նա: Այսպիսի դէպքերում, ինչպէս միշտ, օգնութեան է հասնում մեկնութիւնը: Այսպէս, օրինակ, վերաբերմամբ «երրորդ երկնքի», որ յիշում է առաքեալ Պօղոսը: «Եւ վասն երրորդ երկնի արտաքինքն ոչ հաւանին, եւ ոչ բնագիր ինչ մեզ յայտնեաց: Բայց վասն ի Պօղոսէ կոչելոյ՝ ես այսպէս հաւանիմ, եթէ զերկրէս ասիցէ, զի ուր Աստուած է՝ նա երկին կոչի: Եւ փրկչին մերոյ Քրիստոսի Աստուծոյ ի վերայ երկրի շրջելով՝ երկին ասեմ կոչիլ ի Պօղոսէ...» (1): Բերելով մի շարք կարծիքներ արտաքիններից, թէ ինչպէս կամ ինչի վրայ երկիրը տեղում մնում է, յիշում է եւ Սաղմոսի խօսքը, թէ՝ «ի վերայ ծովու հիմունս արկ նմա [երկրի]», — Աստուած ծովի վրայ է ձգել երկրի հիմքը: Անանիան այդ չի ընդունում, բացատրելով այսպէս. «Կարծեմ թէ վասն զի խառն ընդ սանդարամետս է ջուրն՝ զայնմէ ասիցէ. զի ջրոց ի վեր ունել զերկիր՝ տարակուսին միտքս, թէ զիա՞րդ ի վերայ այնչափ բնութեան ջուրցն կայցէ անչափ ծանրութիւն երկրիս եւ ո՛չ ընկղմի, եւ ո՛չ զերծեալ փրծանի յամենայն կողմանց սորեալ եւ ընկղմեալ ի ջուրս» (2): Կը նշանակի՝ Անանիան որոշ չափով ազատախոհ է. նա բոլորովին չի կաշկանդուած Ս. Գրքով:

Նա հետեւում է եկեղեցու առաջին հայրերին ու վարդապետներին, որոնք հին իմաստասէրներից շատ բան առել են եկեղեցու մէջ («ընկալեալ

---

(1) Ան. Շիր. Տիեզ. եւ տոմար, էջ 8 եւ հտ. «Մնացորդք բանից», էջ 37:

(2) Անդ, էջ 11 եւ հտ. եւ Անդ, 38 եւ հտ. :

յեկեղեցի առին»), «մեր հոգեւոր հարանցն առաջնոցն ընկալեալ ի նոցանէ դորամագիր ասացեալսն», եւ այդ «վարդապետք եկեղեցւոյ, ուսումնասիրութեան զանձինս իւրեանց տուեալ՝ անցին ընդ ամենայն ճգնութիւնս, պահելով զաստուածային հաւատս՝ մկրտեցան ի խորս գիտութեան. քանզի եւ գրիւ օրէնքս ոչ ընդդէմ են բնական իմաստութեան» (վարիանտ՝ «քանզի գրաւոր օրէնք ոչ ընդդիմանան բնական գիտութեանն») (1): «Այս եթէ միաբանութիւն է, դատարկ եղեն մեզ առաջին իմաստասէրքն», — եկեղեցու վարդապետներն իրենց նուիրելով ուսումնասիրութեան՝ ամէն ջանք թափեցին, եւ Աստուծու հաւատքը պահելով հանդերձ՝ միջամուխ եղան գիտութեան խորքը. որովհետեւ գրաւոր օրէնքը դէմ չէ բնական գիտութեան: Այս ուրեմն եթէ այդ երկուսն այդպէս միաբան են միմեանց հետ, մեզ համար դատարկ են դարձել առաջին իմաստասէրները,— եզրակացնում է Անանիան եւ աւելացնում է. «Պահելով զաստուածային հաւատսն, պտղով ծայրին առլցեալք եւ հաստատուն արմատովն միշտ դալարաբերք պտղաբերք գտցուք ի գիտութեանս», — աստուածային հաւատը պահելով՝ ծայրի պտղով [իմաստասէրների ուսումով] առլցուած եւ արմատովը [=հաւատքով] հաստատուն մնալով՝ միշտ դալարելով պտղաբեր կը լինենք գիտութեան մէջ: — Ահա բնական գիտութեամբ պարապող գիտնականի սկզբունքը, որ ապա կերպով արտայայտել է Անանիա Շիրակացին՝ սրուած դաւանաբանական վէճերի դարում: Այսու հանդերձ՝ նա բնականաբար իր դարի որդին է, հաւատարիմ ժամանակակից քրիստոնէական հայեացքներին եւ մանաւանդ Հայոց եկեղեցուն: Բերենք այստեղ նրա երկերից մի կտոր:

«Ասեն արտաքինքն զբնակութիւնս կենդանեաց յերկրի աստի եւ անտի, եւ թէ գոն ի ներքոյ երկրի մարդիկ եւ այլ կենդանիք, որք ընդդիմոտունք են մեզ: Որպէս ճանճք զխնձորով պատեալք, նոյնպէս եւ մարդիկ զերկրաւ, եւ յամառեալ պնդին ասելով՝ եթէ ոչ էին մեզ ընդդիմոտունք ներքոյաբնակք, ո՞ւմ արդեօք արեգակնդ տայր լոյս զկէս աւուրն, յորժամ ստուերաւն զմեզ գիշերացուցանէ. զի յանօգուտ արեգական ծախել զընթացս անհնար է ասել: Անմտութիւն մեծ եւ առաւել սխալանք թուին ինձ առ ի նոցանէ ասացեալքս. զի թողում ասել զյանդիմանութիւն որ յաստուածային գրոց: Բայց յորժամ մարդկային իմաստիւք հայեցիս, յայտնապէս երեւի անմտութիւն ճառից նոցա: Զի թէ ասէին իսկ յաշխարհի բագում այն է՝ որ անբնակաց եւ անկենդանեաց տայ արեգակն լոյս քան որ բնաւորքս են տեղիք եւ յորում գոն կենդանիք: Որպէս հիւսիսայինն ի սառնամանեացն է անկենդանի: Եւ կամ հարաւային երկիրն ի յաւելորդ ջերմութենէն՝ զոր այրեցական գօտին կոչեն: Կամ անապատն արեւելից յորում եւ ի գեռնոց անգամ ոչ երեւին: Բայց պարտ է մեզ զերկրայանալ խորհրդոցըս իմոց պատմել ձեզ, որ ինչ յաղագս այսր եղեւ:

«Թէպէտ եւ լսէի ի մարգարէից եւ յամենայն աստուածային գրոց,

(1) Անդ, էջ 30, 43:

ի վարդապետաց եկեղեցւոյ, եթէ ոչ գոն այլ ներքոյարնակք կենդանիք, սակայն ես հաւանեալ էի ընդդիմոտունս մեզ լինել: Եւ ըստ իմոց խորհրդոցըս զաստուածային բանսն ձեւանալ համարէի: Եւ արդ մի՛ զիս եպերէք, սիրելիք, գիտէ ծածկագէտն, զի ոչ ստեմ: Մինչդեռ էի յաղօթս առ առաւօտուն ի վկայարանի սրբոյն Եւգինեայ, և միտք իմ յա՛յս խորհուրդս ծփէին, քուն էառ զիս: Եւ տեսանէի որպէս թէ արեգակն ի ծագելն խոնարհեալ յերկիր իջանէր: Եւ ես յառաջն ընթանայի եւ ի գիրկս ընդունէի զնա. եւ նա էր պատանի անմուրուս, ոսկէգիսակ, եւ շրթունք բերանոյ նորա որպէս թէ ոսկով լինէր օծեալ. եւ ինքն սպիտակս եւ փայլունս զգեցեալ հանդերձս. եւ լոյս սաստիկ ելանէր ի բերանոյն: Եւ ես ասացի զնա, եթէ՝ Ի վաղնջուց ցանկացեալ էի ի քէն լսել բան. արդ՝ աղէ՛ պատմեա ինձ, եթէ յորժամ ի մէնջ ծածկիս ո՞ւմ տաս լոյս. գո՞ն այլ կենդանիք ի ներքոյ երկրի՝ եթէ ոչ: Եւ նա ասէ՝ Ոչ, այլ լերանց եւ ափափայից ձորոց եւ անձաւաց անկենդանեաց տամ լոյս: Եւ իմ պատմեալ զայս վարդապետին իմում. եւ նա ասէ զիս՝ Ընդէ՞ր ոչ հարցանէիր զայդ: Եւ նա եցոյց ինձ զճառս երանելոյն Ամփիլոքիոսի, որ մեկնէր զգիրս Յովբայ, եւ ի խօսսն տեառն որ ասէ այսպէս. «Զի՞նչ վայրք իցեն ուր ծածկեմ ես զարեգակն ի գիշերի յերեսաց ամենայն կենդանեաց»: Արդ՝ պարտիմք հաւատալ մեծի վարդապետին եւ նորուն նմանեաց արանցն աստուածայնոց. եւ ոչ արտաքնոցն»:

Այս հատուածը մի գեղեցիկ օրինակ է Անանիայի մտածելու եղանակի, միաժամանակ եւ նրա գրական ոճի, թէ ինչպէս է նա շարադրում: Միամիտ է, բայց այդ միամտութիւնն իր դարինն է. թէ չէ՝ Անանիան երկար խորհող է նոյն նիւթի մասին, այնպէս որ մինչեւ անգամ երազ է տեսնում: Չպիտի մոռանալ, որ այն ժամանակ երկրագնդի մասին ծանօթութիւնը շատ նեղ ու սահմանափակ էր. մարդիկ Հնդկաստանի անունը լսել էին, սակաւներն էին մուտք գործել այնտեղ, եւ Միջերկրական ծովից շատ դէնը չէին համարձակւում անցնել:

2. Երկերը: — Անանիա Շիրակացուց՝ բացի վերեւում յիշուած ժամանակագրութիւնը՝ մնացել են մի շարք ուրիշ աշխատութիւններ եւս, որոնք որեւէ առնչութիւն ունին համարողութեան, կամ տոմարագիտութեան եւ տիեզերագիտութեան հետ: Նրա երկերը, սակայն, մինչեւ այժմ դեռ բոլորը չեն երեւան հանուած եւ կարգի բերուած: Դրանք յաճախ փոքր մասերով են մնացել եւ ոչ ամբողջական ձեւով: Պարզուած չէ, թէ արդեօք Շիրակացին ի՞նքն է այդպէս մաս-մաս յօրինել, թէ՞ հետագայում քաղուածօրէն արտագրութիւններ են արուած: Նրա երկերից այստեղ յիշենք արդէն տպագրուածները:

Ա) «Անանիայի Շիրակայնւոյ Համարողի ասացեալ ի յայտնութիւն տեառն եւ փրկչին մերոյ» (1): Սա մի ասացուած կամ ճառ է, որի մէջ հաշիւներով եւ պատմական տեղեկութիւններով ապացուցւում է, որ Ծննդեան տօնը պէտք է կատարել ոչ թէ դեկտեմբերի 25-ին, ինչպէս վարւում են

(1) Ան. Շիրակ., «Մնացորդք բանից», էջ 4:

յոյները, այլ յունուարի 6-ին, մկրտութեան տօնի հետ միաժամանակ, ինչպէս անում են հայերը, պահելով հին սովորութիւնը: Այս ճառը ծագել է ժամանակի գործնական պահանջից: Հայերի վրայ իշխող յոյները ոչ միայն դաւանաբանական խնդիրներ էին հանում, այլեւ տօնակատարութեան օրերի համար նեղութիւններ էին պատճառում հայերին: Դա մի պատասխան է ուղղուած այդպիսի յոյներին: «Յայժմ կայցուք հաստատուն անխախտելի, — բացականչում է Անանիան, — եւ քա՛ւ եւ մի՛ լիցի մեզ յերկուս բաժանել. այլ ի միում աւուր արասցուք զծնունդն եւ զմկրտութիւնն. հետեւեսցուք սրբոց առաքելոցն եւ երանելեաց հարցն, որ ի Նիկիա, եւ մերոց վարդապետացն... Յունաց զայս արասցուք պատասխանի... Առ ձեզ այլ ոչինչ ունիմք պատասխանիս, զի ոչ հրամայէք գործ ճշմարտութեան, այլ միշտ իշխանութեան, բռնութեան եւ ճարտարութեան»:

Բ) Անանիայի Շիրակայնւոյ Համարողի ասացեալ ի զատիկն տեառն(1): Պակաս դժուարութիւն չէր պատճառում այս զատկի տօնը, որ կապուած էր գարնանամտի գիշերահաւասարի, որանից յետոյ եկող առաջին լուսնալրի ու սրան յաջորդող կիրակի օրուայ հետ, կախուած էր, ուրեմն, թէ՛ լուսնական եւ թէ՛ արեգակնային շրջաններից: Իսկ դրանց հաշիւներն անել հեշտ չէր: Անանիան այս ճառի մէջ անում է Զատկի տօնի պատմութիւնը, թէ «ուստի՛ կամ յումմէ՛», խօսելով եւ տոմարի մասին, ինչպէս եւ Ալեքսանդրիայում Լաս Ալեքսանդրացու նախագահութեամբ կազմուած 532 տարիների «Խաւեան» կոչուած շրջանի, այլեւ Բիւզանդիայում Իրիոն Բիւզանդացու նախագահութեամբ՝ Խաւեան շրջանի մէջ մտցրած փոփոխութիւնների մասին: Հայերը 584 թուի ժողովով ընդունել են ոչ թէ յունական «Իրիոնեան զատիկը», այլ Ալեքսանդրիայի «Խաւեանը», որոնք որոշ թուով տարիներից յետոյ միաժամանակ չէին ընկնում [եւ առաջանում էր «ծուռզատիկ» ասածը, որ պատճառ էր դառնում մեծ աղմուկների հայերի եւ յոյների միջեւ]: Անանիան այս հաշիւների ու խնդիրների մասին խօսելուց յետոյ՝ ասում է. «Եւ զի՞նչ պարտ է մեզ զԻրիոնին պատմել եւ կամ ընդդիմանալ նմա. այլ զնորայն ի նորայսն թողցուք աշակերտս եւ հաւանեալս, եւ մեք տօնեսցուք... զճշմարիտն»: Մինչդեռ յոյները բռնութիւն էին գործադրում. Անանիան, սխալ համարելով հանդերձ Իրիոնի գործը, չի հակառակում, որ յոյները դրան հետեւեն:

Անանիա Շիրակացու այս երկու աշխատութիւնները, թէպէտ ոչ դաւանաբանական բովանդակութեամբ, բայց հակաքաղկեդոնական, իսկապէս հակաբիւզանդական պայքարի գրականութեան մի կարեւոր օղակն են կազմում: Այդ տօնակատարութիւնների խնդիրը մինչեւ վերջը յուզումներ է առաջ բերել հայերի եւ յունադաւանների միջեւ:

Գ) «Անանիայի Շիրակայնւոյ Համարողի յաղագս կշռոց եւ չափուց»(2): Այս գրուածքի մէջ հեղինակը յիշում է զանազան ազգերի մէջ գործածուած

(1) Անդ, էջ 15:

(2) Անդ, էջ 27:

կշիռներն ու չափերն իրենց անուններով ու միմեանց համապատասխանութեամբ:

Դ) «Յաղագս հարցման եւ լուծման», թուաբանական խնդիրների մի ժողովածու է սա: Ուրիշ ձեռագիրների մէջ վերնագիրն է. «Անանիայի Շիրակունւոյ՝ յաղագս կատարման համարողութեան եւ կերպից հարցման»: Այս վերնագրից յետոյ գալիս է մի առաջաբան: Դրանից երեւում է, որ, ինչպէս ճիշտ կռահել են(1), Շիրակացին խնդիրներից առաջ գրել է թուաբանական չորս գործողութիւնների մասին, որ նա անուանում է՝ ընդունելութիւն (=գումարում), բացադրութիւն (=հանում), բազմապատիկք եւ բաժանմունք: Վերջերս յայտաբերուած է եւ նրա այդ դասագիրքը, տեսական մասը, միայն առաջին երեք գործողութիւնները(2), գործնական վարժութեան համար գրուած օրինակների շարքերով: Բազմապատկութեան օրինակը հասցրած է մինչեւ 90·000·000: Շիրակացու այս խնդիրների ժողովածուն, որ, ինչպէս երեւում է, ամբողջութեամբ չէ, շատ հետաքրքիր մի գործ է թէ՛ իբրեւ առաջինն այդ տիպի աշխատութիւնը մեր գրականութեան մէջ եւ թէ՛ իր բովանդակութեամբ: Շիրակացին խնդիրների նիւթն առել է իր ժամանակի կեանքից. ուստի եւ այդ ժողովածուի մէջ կան բաւականաչափ տեղեկութիւններ պատմութեան, սովորութիւնների եւ տեղագրութեան վերաբերեալ, ինչպէս են՝ որսորդութիւն, վաճառականութիւն, զինուորական կեանք, այլեւ եկեղեցու մասին: Շատ բան պատում է Կամսարականների եւ Կամսարական պատմական անձերի շուրջ. 24 խնդիրներից 6-ի մէջ յիշատակւում են այդ տոհմի մարդիկը: Բերենք այստեղ իբրեւ օրինակ առաջին խնդիրը:

«Ա. Հարցումն. Այսպէս լուայ ի հարքն իմմէ, եթէ ի ժամանակի պատերազմացն հայոց ընդ Պարսս սաստիկ քաջութիւնք լինէին ի Կամսարականէն Զաւրակայ. որպէս թէ ամսաւրեայ աւուրբք երիցս յարձակեալ ի վերայ զաւրացն Պարսից՝ եւ հարկանէր յառաջնումն զկէս զաւրուն. եւ յերրորդումն զմետասաներորդն: Եւ մնացեալքն անկանէին փախստեայ ն Նախճաւան, թուով. ՄՁ. [=280]:

«Արդ պարտիմք եւ մեք իմանալ մնացելովքս, եթէ յառաջ քան զկոտորումն ո՞րչափ էին»:

Խնդիրների վերջում դրուած են պատասխանները: Առաջին խնդրի պատասխանն է. «Լուծումն Ա. հարցմանն. Յառաջ քան զկոտորածն էին ՌՉԿ [= 1760] հեծեալ»:

Կան եւ աւելի բարդ խնդիրներ: Հետաքրքիր է այն, որ, ըստ երեւոյ-

---

(1) Գալուստ Տէր-Մկրտչեան, Անանիա Շիրակացի, Վաղարշապատ, 1896, էջ 11: Արտատպ. նոյն թուի «Արարատից»:

(2) Տպուած Երեւանի Պետ. Համալսարանի «Գիտական աշխատութիւնների» մէջ, XI հատոր, 1939 թ., էջ 245 եւ հտն. Աշ. Աբրահամեան, «7-րդ դարի հայ գիտնական Անանիա Շիրակացու թուաբանութեան դասագիրքը», վերջից դրուած են նաեւ թուաբ. խնդիրները եւ վեց «խրախճանք», որ խնդիրների առանձին տեսակ է:

*թին, «Անանիայի ժամանակ չէին ըմբռնում եւ չէին կարող գրել այնպիսի... կոտորակ, որի համարիչը մէկից աւելի է: Պէտք է անպատճառ կոտորակն ունենար միաւոր համարիչ: Այսպէս ուրեմն՝ նրանք ասում էին՝ հասարակ, երեւոր, չորեւոր, այսինքն է՝ կէս, մի երրորդ, մի չորրորդ, բայց չէին ասում՝ երեք քառորդ* (3/4)*: Երեք քառորդի գաղափարը տալու համար ստիպուած էին դիմել միաւոր համարիչ ունեցող կոտորակների եւ ասել՝ կէս եւ մի քառորդ եւ այս երկու թիւը չէին կարող գումարել»: Այսպէս եւ, օրինակ, ինը տասնեւմէկերորդ* (9/11) *կոտորակը պիտի արտայայտէին մի շարք կոտորակներով, որոնց համարիչը լինէր մէկից ոչ աւելի եւ գումարը հաւասար ինը տասնեւմէկերորդի* (1):

Ե) «Ա. Անանիայի Շիրակաւնոյ Համարողի առ խոստացեալն»(2): *Այս աշխատութիւնը, որ բաժնուած է Ա—ՁԴ մեծ ու փոքրիկ գլուխների, իսկապէս կազմուած է երկու մասից. ԺԱ—ՁԴ գլուխները կամ գլխիկները տոմար են, կամ տոմարի վերաբերեալ գիտելիքներ, առանց այդպիսի վերնագրի: Շիրակացին, անշուշտ, «տոմար» էլ անուանել է այդ: «Յայտնութեան» ճառի մէջ (Ան. Շիր. Մնաց. բանից, էջ* 14) *գրում է. «Յայտնութիւն ըստ Հայոց փոփոխմամբ է՝ ըստ չորից չորից ամաց, եւ եթէ գիա՞րդ գիտելի է, եւ կամ ընդէ՞ր որ առկայացեալ ըստ այլոց ազգաց, յիւրում տեղւոջ պատմեցից ըստ կարգի* տոմարին»: *Իսկ Ա—Ժ գլուխները՝* տիեզերագրութիւն *է, տիեզերքի նկարագիր ըստ ժամանակի հասկացութեան — կարճառօտ տեղեկութիւններ աստղաբաշխութեան, օդերեւութաբանութեան (մետէորոլոգիա) եւ Ֆիզիքական աշխարհագրութեան մասին: Այդ մասն եւս չունի վերնագիր. «Առ խոստացեալսն» վերաբերում է Ա. գլխին: Դա մի առաջաբան է, որի սկզբում ասում է, թէ կատարում է իր խոստացածը, ապա խօսում է իր աղբիւրների մասին, որոնք են՝ եկեղեցական եւ արտաքին: Շարադրութեան ընթացքում յիշում է՝ «Հայաստանեայց վարդապետ Սուրբն Գրիգորիոս», երանելին Բարսեղի «Վեցօրեայք» (այլեւ Բասեղիոս), եւ Փիլոն:*

*Արտաքին աղբիւրները նա բաժանում է երկու խմբի: Առաջին խմբին պատկանում են «հեթանոսական խելագարութեամբն բանդագուշեալ իմաստունք, որք զԱստուած ոչ կամեցան ճանաչել. եւ պատճառս լինելութեան զհիւղէ ասացին եւ նիւթ գոյից եղելոց»: Անանիան չի ուզում նրանց ասածները կրկնել եւ հերքել, բաւական համարելով սուրբ հայրերի «կշտամբութիւնը», այսինքն «յանդիմանութիւնը»: Հայոց եկեղեցու համար այդ սուրբ հայրերից մէկն էր արդէն Եզնիկ Կողբացին, որ, ինչպէս ասել ենք, մանրամասն գրել է ընդդէմ «հիւղէ» ընդունողների: Բայց եւ այնպէս Անանիան բոլորովին չի արհամարհում այդ «զանազանուածիցն բարբաջանս», այլ նրանց կարծիքներն էլ մէկ մէկ մէջ է բերում, որպէսզի դրանով «քաջալա-*

---

(1) Գալուստ Տէր-Մկրտչեան, Անանիա Շիրակացի: Արտատպ. 1896 թ. «Արարատի» փետրուար եւ ապրիլ համարներից. Վաղարշապատ, 1896, էջ 10—29:

(2) Անանիա Շիրակացի, «Տիեզերագիտութիւն եւ տոմար», Երեւան, 1940 թ.:

*ութիւն մեհապանից առաւել գեղեցկապէս երեւեցի», կամ «վասն ճոխացուցանելոյ զլաւացն՝ մատթարացն յիշատակաւ»: «Վատթարներին» նա չարագրութեան ընթացքում կոչում է «չար փիլիսոփայք», իսկ «լաւերին»՝ «բարի փիլիսոփայք»: Այս վերջիններն «աստուածածան իմաստուններն» են, որոնք քրիստոնեայ չլինելով հանդերձ՝ «զմի աստուածութիւն խոստովանեցին՝ անեղ եւ ամենակատար, պատճառ ամենայն եղելոց՝ երեւելեաց եւ իմանալեաց», «արարիչն ամենայնի»: Նրանք քարոզել են «գործով մաքուր լինել յախտից եւ յամենայն ցանկութեանց, եւ ի զբաղմանց աշխարհականաց ազատեալ առանց ամուսնութեան միանձունք, զմիայնաւորութեան կալեալ զվարս· որք զորովայնս զաստիարակեցին պարկեշտութեամբ: Քանզի ոչ միս եւ ոչ ձուկ ուտէին· Մի՛ արասցուք զորովայնս մեր գերեզման այլոց կենդանեաց: Այլ միայն բանջարաւ եւ պտղաւ ծառոց կերակրէին· նոքա մինչ պհեա բարեաց գործոց երթային· պարապէին զանազան իմաստից՝ քննել եւ ճառել»:*

*Այսպէս ուրեմն, Անանիա Շիրակացու համար էլ սովորաբար առաջին անառարկելի տեղը բռնում է Ս. Գիրքը. ապա կարեւորութիւն ունեն եկեղեցու հայրերը եւ ապա՝ «բարի փիլիսոփաները»: Վերջիններս նրա համար, որ իրենց ընդունած Ե՛ւ աստուածութեան, Ե՛ւ կենցաղավարութեան վերաբերեալ սկզբունքներով՝ հանդունակ են եղել քրիստոնեաներին: «Յորոց (այսինքն՝ «բարի փիլիսոփաներից») եւ մեր առեալ նիւթ ի մերումս շարադրեսցուք բարի, — գրում է Անանիան Առաջարանի վերջում, — սկսեալ յերկնէ եւ եկեալ յերկիր. եւ դարձեալ անդրէն ի յերկին համբարձեալ՝ խորհրդով* զարդուն *հրճուեցայց, յառաջ խաղացուցեալ զբանս՝ ճառ ճառից լիեւել արարից»: Առաջարանի այս ասացուածի մէջ ճշտութեամբ բերուած է Ա—Ժ ճառերի բովանդակութիւնը, որից պարզ երեւում է, որ Առաջարանը վերաբերում է միայն տիեզերագրական մասին, Անանիայի բառով՝ «զարդին»*(1), *եւ որ տոմարը յետոյ է կցուած նրան:*

Զ) «Աշխարհացոյց»: *Այս անունով մնում է հնուց մի աշխարհագրութիւն, մի շատ կարեւոր գործ, որի երկու խմբագրութիւններ կան — ընդարձակ եւ համառօտ: Այս երկուսն էլ, ինչպէս կարծում են, մէկը միւսից անկախ համառօտուած են մի նախնական բնագրից*(2): *Կան հեղինակներ,*

---

(1). «Զարդ» բառը բառացի թարգմանութիւն է յունարէն «կոսմոս» բառի, որ նշանակում է նախ՝ «զարդ», ապա՝ եւ կարգաւորութիւն, կարգ, տիեզերքի կարգաւորութիւնը կամ կարգաւորեալ համաշխարհ, տիեզերք, առանձնապէս աստեղազարդ երկինքը, «երկնային զարդը»: Այս երկրորդ նշանակութեամբ այդ բառը գործածել է, ինչպէս կարծում են, առաջին անգամ Պիթագորաս փիլիսոփան, եւ դրա այդ իմաստով կազմուած են կոսմոգրաֆիա — տիեզերագրութիւն, եւ կոսմոլոգիան — տիեզերաբանութիւն:

(2) Տպագրուած է 1) «Մովսէսի Խորենացւոյ մատենագրութիւնք, Վենետիկ, 1843» (այլեւ 1865 թ.) հրատարակութեան վերջում, էջ 585 եւ հտն. 2) ընդարձակը՝ ֆրանսերէն թարգմանութեամբ հանդերձ Արսէն Սուքրիի. «Աշխարհացոյց Մովսէսի Խորենացւոյ, յաւելուածովք նախնեաց», Վենետիկ, 1881:

*որոնք «Աշխարհացոյցը» վերագրում են Մովսէս Խորենացուն, ինչպէս է եւ այդ երկի նորագոյն ձեռագրերի մէջ. մինչդեռ հնագոյն ձեռագրերն անանուն ունեն այդ գործը: Բայց քննադատ բանասէրների մի մասն այն կարծիքին է, թէ «Աշխարհացոյցը» 7-րդ դարի երկ է, եւ հեղինակն է Անանիա Շիրակացին:*

3. Անանիայի տիեզերագրական տեսութիւնը:— *Անանիան սովորաբար ուրիշների զանազան կարծիքներ է բերում նոյն նիւթի մասին, բայց քանի որ նա դրանցից մէկն ու մէկն է ընդունում, կամ իր սեփական կարծիքը յայտնում, կամ վերջն «անգիւտելի» համարում, ուստի նրա աշխատութեան մէջ երեւան է գալիս նրա աշխարհայեացքը, որ բոլորովին ինքնուրոյն չէ: Նա հետեւում է Բարսեղ Կեսարացուն, Փիլոնին, Արիստոտէլին եւ ուրիշներին, տեղ տեղ նոյնիսկ թարգմանաբար: Նրա աշխարհայեացքին չպիտի մօտենալ, հարկաւ, մեր ժամանակի տեսակէտով, եւ կամ նշել, թէ նրա աշխատութիւններից ի՞նչ օգուտ կայ մեր հասարակութեան համար. այլ թէ նա ի՞նչ առաջադիմական քայլ է արել իր ժամանակին մի ամբողջական տեսութեամբ մանրամասն եւ ընդարձակ խօսելով տիեզերքի կազմութեան եւ բնական երեւոյթների մասին, թէ ինչպէս նրա երկերի մէջ իրենց գիտական բացատրութիւնը գտնում են՝ երկինք, երկիր, աստղեր, արեգակ ու լուսին եւ նրանց շարժումները, ապա՝ ձիւն, անձրեւ, կարկուտ, որոտմունք և այլն:*

*Այստեղ կարեւոր չէ նրա տեսութիւնը բացատրել: Այսքան միայն ասենք, որ նա խօսում է՝ երկնքի կազմութեան, երկրի, երկրաշարժի, ծովի, երկնային գօտի (այսինքն՝ արեգակի ու լուսնի եւ աստղերի), լուսատուների համակարգութեան, նրանց շարժումների, դարմանագողի ճանապարհի, բեւեռային աստղերի, լուսնի լոյսի, լուսնի եւ արեգակի խաւարման, լոյսի ու խաւարի մասին եւ այլն: Այստեղ կանգ չենք առնիլ Անանիայի օդերեւութաբանական տեսութեան մասին եւս, որով նա բացատրում է բնական երեւոյթները*(1)*: Այս ասենք միայն, որ նա առանձնապէս խօսում է նաեւ ընդդէմ աստղագիտութեան, որ ըստ Անանիայի է «բանք բաջաղանաց», «անհամ պատմութիւն»: Նա զօրեղ լեզուով քննադատելով այդ խաբէական սուտ գիտութիւնը՝ իր ոչնչացնող խօսքն է ասում այդ մասին, ինչպէս երբեմն Եզնիկ Կողբացին: Դրա փոխանակ նա գրում է իր տեսութիւնը, այն՝ որ չորս տարրերով — արեգակնային ջերմութեան (հրի) ու լոյսի, այդ նուրբ եւ անօսր տարրերի ֆիզիկական ազդեցութեամբ, ինչպէս եւ օդի ու ջրի օգնութեամբ կենդանածնւում է երկիրը — բոյսեր, կենդանիներ եւ այլն: Դրանով է ամէն կեանքի, նմանապէս ամէն երեւոյթի «լինելութիւնն եւ ապականութիւնը», այսինքն դառնալութիւնն*(2) *ու մահացումը եւ այնպէս «Զի լինելութիւնն իցէ սկիզբն ապականութեան, եւ ապակա-*

---

(1) Գ. Տ.-Մկրտչեան. «Անանիա Շիրակացի», Վաղարշապատ. 1896. էջ 5 եւ հտն., 30 եւ հտն., 39 եւ հտն., այլեւ «Անան. Շիր. Մնաց. բանից», էջ 43, 65 եւ հտն. «Անան. Շիր. Տիեզ. եւ տոմար», էջ 30:

(2) «Լինելութիւն=դառնալութիւն («*ստանովլենիե*» [ռուսերէն], das Werden):

նութիւն դարձեալ անդրէն իջէ սկիզբն լինելութեան։ Զի այսմ անվնաս հակառակութենէ՝ աշխարհ առցէ զտեւողութիւն» (էջ 31)։ Ահա թէ ի՛նչպէս է աշխարհս յարատեւ շարժման մէջ փոփոխւում եւ կենդանի մնում ըստ Շիրակացու։

4. Անանիայի երկերի գրական եւ կուլտուրական արժէքը։— Դժուար է խօսել գեղարուեստական տեսակէտից գրական արժէքի մասին այնպիսի երկերի, որոնց բովանդակութիւնը թուաբանութիւն է, տոմարական սառն գիտելիքներ կամ աստղաբաշխական ու օդերեւութաբանական տեղեկութիւններ։ Բայց եւ այնպէս պէտք է ասել, որ Անանիան զուրկ չէ շարադրելու արուեստից։ Նա, կարծես, իբրեւ մի ուսուցիչ, ձգտում է այնպիսի եղանակով յօրինել, որ այդ նոր նիւթերը պարզ հասկանալի լինին անվարժներին։ Դրա համար նա երբեմն կրկնութիւններ է անում եւ նիւթը բացատրելիս սովորաբար գեղեցիկ ու յարմար օրինակներ է բերում, նոյնիսկ երկու-երեքը։ Այդ նրա շարադրութեան առաւելութիւնն է։ Եթէ մէկ մէկ դըժւար է հասկացւում, այդ առաջանում է աւելի բնագրի աղճատումից, կամ նիւթի նորութիւնից եւ անծանօթութիւնից, այլեւ մեզ անծանօթ նոր բառերից ու ասացուածներից, կամ բառերի այլիմաստ կիրառութիւնից։ Երբեմն նոյնիսկ թուաբանական խնդիրների չոր ու ցամաք լեզուն նրա գրչի տակ հաճելի է դառնում իր բովանդակութեան մանրամասնութեամբ։ Նա գիտէ գեղեցիկ ու գրաւիչ պատմել։ Այդպիսի կտորներից մէկն արդէն մենք տեսանք սկզբում. դա նրա երազն է «ընդդիմոտունքի» կամ հակոտնեայքի մասին։ «Տիեզերագրութեան» մէջ էլ կան մի քանի այնպիսի կտորներ, որոնց մէջ Անանիայի գրուածքն իր կենդանութեամբ ստանում է գրական արժէք։ Այսպէս է, օրինակ, նրա նկարագիրը, թէ ինչպէս արեգակի ընթացքի հետ առաջանում են տարուայ չորս եղանակները (էջ 51, տող 9 եւ հտն.), այլեւ արեգակի մեծութիւնը ցոյց տալու համար գրուած հատուածը (էջ 55 եւ հտն.)։

Այսպիսի կտորների մէջ Անանիան մէջ բերած օրինակներով ոչ միայն համոզել է ձգտում, այլեւ աշխատում է իբրեւ ճարտասան ազդել։ Բայց նրա վաստակի մեծ արժէքը դրա մէջ չէ, այլ աւելի նրա բազմաթիւ ճիշտ բացատրութիւնների մէջ հետագայի համար։

Ինչքան էլ Անանիայից առաջ եղել է հայերի մէջ տոմարի ծանօթութիւն, բայց եւ այնպէս մեր այս «համարողն» իր բազմաթիւ գրուածքներով ռահվիրայ է հանդիսացել տոմարագիտութեան, տիեզերագրական եւ օդերեւութաբանական գիտելիքների համար։ Հետագայ տոմարագէտները՝ Յովհաննէս Սարկաւագ, Վանական, Կոզեռն եւ ուրիշները՝ օգտուել են Անանիայից։ Նրա գրուածքներն ուրիշներին ծառայել են նոյն նիւթերի համար իբրեւ հեղինակաւոր աղբիւրներ, որոնցից փոխառութիւններ են արել, երբեմն նոր ձեւով, ըստ իրենց հասկացութեան խմբագրելով այն (1)։ Այդ պատճա–

(1) Այսպէս, օրինակ, «Վերջին նշանաւոր տոմարագէտներից մէկի՝ Յակոբ Ղրիմեցու մի ամբողջ հատուածը, որ կարելի է ասել, «Յաղագս շրջագայութեան երկնից» երկասիրութեան մի նոր խմբագրութիւնն է»։ Գ. Տ.–Մկրտչեան, «Անանիա Շիրակացի», էջ 36։

ռով եւ սկսել են նրա երկերից քաղուածքներ անել եւ հատուածներ մտցնել ժողովածուների մէջ: Դրա հետեւանքն եղել է այն, որ Շիրակացու գրուածքները ենթարկել են փոփոխութիւնների — կրճատել են, իրենց կարծիքի հակառակ կտորները դուրս ձգելով, մասերի տեղերը խառնել են, նոր բաներ են աւելացրել մէջը, նիւթի նոր դասաւորութիւն են առաջ բերել: Մինչև այժմ երևան չեն եկել Շիրակացու երկերն իրենց հարազատ ու հաստատուն ամբողջութեամբ: Ըստ երեւոյթին նոյնիսկ «Տիեզերագիտութիւն եւ Տոմար» վերտառութեամբ տպագրուած աշխատութիւնը զերծ չէ այդ վիճակից: Անանիայի երկերն աւելի մեծ արժէք են ստացել հայկական վերածնութեան շրջանում: Գրիգոր Մագիստրոսի մի նամակից(1), որ նա գրել է Պետրոս կաթողիկոսին, երեւում է, որ դրանք աւելի բազմազան բովանդակութիւն են ունեցել, քան մինչեւ այժմ յայտնի են:

Ինչքան էլ նրա տեսակէտները յաճախ այժմ այլեւս ընդունելի չեն, բայց այդ չի պակասեցնում նրա կուլտուրական գործի մեծ նշանակութիւնը, այն՝ որ նա նոր գիտութիւններ է մտցրել հայերի մէջ, եւ եղել է պայքարող ընդդէմ ամէն տեսակ տգիտութեան եւ մանաւանդ նախնական ժամանակների խաւար գարերում ստեղծուած այն առասպելների դէմ, որոնցով ձգտել են բացատրել բնութեան երեւոյթները: Նա այդ առասպելները քիչ անգամ բերում է, կամ մի նախադասութեամբ միայն ակնարկում է դրանց: Օրինակ՝ արեգակի խաւարումը բնական ձեւով եւ ճիշտ բացատրելուց յետոյ՝ ասում է.«Եւ զայս տեսանելով և բազումք յանուսումնութենէն արեգական կորուստ կարծեն»: Յայտնի է, որ մինչեւ մեր օրերը տգէտ ամբոխը հաւատում էր, թէ արեգակի խաւարման ժամանակ մեծ վիշապը բարձրանում է արեգակին կուլ տալու, ուստի եւ ամէն սնապաշտական ծէսեր էին կատարում այդ վիշապին փախցնելու համար: Եթէ Անանիան չի էլ յիշում բնութեան երեւոյթների առասպելական բացատրութիւնները, նա դրանք նկատի ունի յաճախ իր բացատրութիւնների ժամանակ: Օրինակ՝ նա (էջ 54) մանրամասն, օրինակներով բացատրում է ստուերն ու մութը, որպէսզի հասկացնի այս թեզիսը, թէ «ստուերք երկրի՝ պատճառ է գիշերոյ»: Մինչդեռ դեռ մեր օրերում անգամ գիշերի պատճառը սնահաւատ մարդիկ համարում էին, գուցէ եւ դեռ համարում են, բերանի չունչն ինչ որ պառաւ չար ոգիների, «գիշերուան մայրերի», որոնք իբր պտտում են արեգակի ետեւից, հալածելով նրան, բայց չեն հասնում նրան. եւ երբ երեկոյեան մէկ բերան փչում են, մութն արարած աշխարհ բռնում է: Այսպէս եւ գրեթէ բոլոր դէպքերում Անանիան իրական, բնական ձեւով, ըստ ժամանակի հայեացքի, բացատրում է տիեզերագրական եւ օդերեւութաբանական երեւոյթները: Նա դրանով արդէն միաժամանակ մաքառում է սնոտիապաշտութիւնների դէմ:

---

(1) Նամակի հատուածը, տե՛ս եւ Գ. Տ.-Մկրտչ., Ան. Շիր., էջ 12: Ամբողջ նամակը՝ «Գրիգոր Մագիստրոսի թղթերը», ի լոյս ընծայեց Կ. Կոստանեանց, Աղեքսանդրոպոլ, 1910, երկրորդ (Բ.) թուղթը, էջ 4 – 10. Շիրակացու մասին՝ էջ 4, 8, 9:

Անահաւատքի դէմ արդէն զօրեղ կռիւ էր մղել, ինչպէս տեսանք, եւ Եզնիկ Կողբացին: Նա ի միջի այլոց տուել էր եւ բացատրութիւն մի քանի օդերեւոյթների, ինչպէս՝ արշալոյսի կարմրութեան, ցօղի, լուսնի բակի: Նա փորձել էր նոյնիսկ աստղաբաշխական տեսութիւն կազմել, թէ երկինքն անշարժ է, չի շրջում, այլ երկնքի լուսաւորներն — արեգակն, լուսին ու աստղերն են շրջում: Եզնիկին ծանօթ են մի քանի արտաքին տիեզերագրական տեսութիւններն ու բացատրութիւնները, որ բերում է Անանիան. սակայն նա, իբրեւ մեկնաբան, աւելի է կաշկանդուած Ս. Գրքի խօսքերով, քան Անանիան, եւ մեծ մասամբ հերքում է արտաքին տեսութիւնները(1): Բայց եւ այնպէս, Եզնիկի եւ Անանիայի երկերով արդէն հաստատւում է մեր գրականութեան մէջ միջնադարեան քրիստոնէական աշխարհայեցութիւնը Աստուծու եւ տիեզերքի մասին:

# ՊԱՏՄԱԳՐՈՒԹԻՒՆ
# ՍԵԲԷՈՍ ԵՊԻՍԿՈՊՈՍ

1. Կենսագրական: — Ղազար Փարպեցուց յետոյ երեւան չեն գալիս պատմիչներ. դրա համար եւ 6-րդ դարը մէկն անուանել է «ամուլ», միւսը՝ «մթին եւ անորոշ»: Հայ պատմագրութիւնը միշտ կախում է ունեցել դըլխաւորապէս ռազմական գործերից: Այդ շրջանում Հայաստանում չեն կատարուել ըստ ժամանակի հայեացքի այնպիսի իրողութիւններ, որ իշխողներն արժանի համարէին մատենագրել տալու, եւ չեն էլ եղել Հայաստանում յայտնի հայ իշխողներ: Երկիրը կառավարել են միանման միմեանց յաջորդող պարսիկ մարզպաններ: Պարսկա-բիզանդական պատերազմները տեղի են ունեցել մեծ մասամբ Հայաստանից դուրս, Միջագետքում, եւ հայ ազնուականները միայն զօրքով կողմնակի մասնակցութիւն են ունեցել դըրանց: Թերեւս այս պատճառով չունինք 6րդ դարի պատմիչ, — եթէ միայն եղել է եւ չի պահուել: Կարծում են, թէ 6րդ դարի առաջին կէսին ապրող Պետրոս Սիւնեցին գրած է եղել պատմութիւն, որ չի մնացել: Նա ունեցել է ուրիշ գրուածքներ, որոնց մենք կը դառնանք, բայց շատ կասկածելի է նրա պատմագրութիւնը: Միակ պատմագիրն է 7րդ դարի հեղինակ Սեբէոս եպիսկոպոսը (2):

Իր գրքից (գլուխ Գ.) իմանում ենք, որ Սեբէոսն եղել է Պարսից արքայ Խոսրովի (անշուշտ՝ Խոսրով Ապրուէզ, 590—628 թ.) արքունի դռանը, ուր եւ Չինաստանից եկած դեսպանից լսել է, ինչ որ գուսանները պատմում են նրանց աշխարհում Մամիկի ու Կոնակի մասին: Նա եղել է եւ Միջագետ-

---

(1) Եզնիկ Կողբացի, Եղծ աղանդոց, Գիրք Երրորդ. Եղծ կրօնից յունաց իմաստնոցն, հատուածներ Ա, Է. Ը, Թ, Ժ:

(2) Սեբէոսի եպիսկոպոսի Պատմութիւն, բաղդատութեամբ ձեռագրաց, հանդերձ առաջաբանիւ եւ ծանօթութեամբք, ի ձեռն Ստ. Մալխասեանց, Երեւան, 1939. աւելի ճիշտ կը լինէր վերնագիրը դնել «Պատմութիւն Հայոց», եւ ոչ թէ լոկ «Պատմութիւն»: Հին տպագրութիւններին վերնագիր դրել են «Պատմութիւն ի Հերակլն»:

քում: Յիշում է «Մարաբաս փիլիսոփայ Մծուրնացու մատեանն» իբրեւ աղբիւր եւ Տրդատ Թագաւորի հրամանով գրուած ինչ որ արձանագրութիւն, որ բացուել է Մծբինում: «Զոր իմ գտեալ ի Միջագետս ի նորին աշակերտացն՝ կամեցայ ձեզ գրուցակարգել», գրում է նա: Հայոց Կանոնագրքից իմացւում է, որ Ներսէս Գ. Կաթողիկոսի օրով, 646 թ., Դուինի ժողովին մասնակցել է եւ իբրեւ ութերորդ անգամ ստորագրել է «Տէր Սեբէոս եպիսկոպոս Բագրատունեաց»: Ընդունում են, որ դա Սեբէոս պատմագիրն է: Վերջին դէպքը, որ յիշւում է նրա գրած Պատմութեան մէջ, է արաբացի Մաւիասի (661—680 թ.) միահեծան գահակալութիւնը: Հաւանօրէն նա իր Պատմութիւնն էլ գրած վերջացրած կը լինի այդ 661 թուականից ոչ շատ ուշ: Պատմութեան սկզբի Նախաբանից, որ աղճատուած է, իմացւում է, որ նա իր Պատմութիւնն ինքնաբերաբար չի գրել («ոչ ի կամայական պիտոյից վարժ խուզակի»), բայց յայտնի չէ, թէ ո՛ւմ պատուէրով: Իբրեւ Հայոց եպիսկոպոս՝ նա պատկանում է այն կուսակցութեանը, որ հաւատարիմ է «Ս. Գրիգորի ճշմարիտ հաւատքին», հակառակ է Քաղկեդոնի ժողովին եւ Լեւոնի տումարին: Բայց եւ այնպէս նա իր քաղաքական հայեացքով կողմնակից եւ համակրող է քրիստոնեայ յոյներին, քան սասանեաններին եւ արաբներին, որոնց ատում է նա, մանաւանդ «Սասանական հէն Ապրուէզ Խոսրովին», «կործանիչ եւ աւերող Խոսրովին, Աստուծուց անիծուածին»:

**2. Պատմութիւնը**:— Սեբէոսի աշխատութիւնը մի տեսակ ամբողջական հայոց պատմութիւն է սկզբից մինչեւ 661 թուականը: Սկզբում նա պատմում է Հայկի ու Բէլի առասպելը եւ Հայկի սերնդի մասին: Այդ պատմութիւնը՝ Մ. Խորենացու Մարաբասեան պատմուածքին նման լինելով հանդերձ՝ բաւական տարբերւում է նրանից: Ապա նա գրում է Պարթեւների ապստամբութիւնը Սելեւկիացիներից, Հայաստանի առաջին Արշակունի թագաւորի՝ Արշակի մասին. վերջը դնում է Պարթեւաց եւ Հայոց թագաւորների ցուցակն իրենց տարիներով, Հայոց Արշակ Փոքրից սկսած մինչեւ Արշակի որդի Պապ թագաւորը, յաջորդ գլխի մէջ նոյնը երկրորդում է «ի պատմագրացն Մովսիսի Խորենացւոյ եւ Ստեփանոսի Տարաւնացւոյ, հաւատի եւ ճշմարիտ մատենագրաց»: Ստեփանոս Տարօնացին, դա 11-րդ դարի պատմագիր Ասողիկը չէ, այլ մի հին հեղինակ: Համաժամանակեան ցանկը հասցնում է մինչեւ Հայոց Արշակունի թագաւորութեան բարձումը: Վերջը դնում է մի նոյնպիսի համաժամանակեան ցանկ Պարսից եւ Յունաց թագաւորների մինչեւ Պարսից Սասանեան թագաւորութեան բարձումը: Այդ ցանկերի մէջ Սեբէոսը մէկ մէկ գրում է եւ իրողութիւնների մասին:

Յաջորդ Ե. գլխի մէջ համառօտ խօսում է Հայոց Արշակունի թագաւորութիւնից յետոյ եղած դէպքերի, «Կարմիրն Վարդանի» պատերազմի մասին, իսկապէս Եղիշէի Պատմութեան բովանդակութիւնը, վերջն աւելացնելով, թէ «այն ամենայն ի ձեռն այլոց գրեցաւ, որպէս ցուցանէ նոյն իսկ Պատմութիւնն»: Ապա բերում է իր գրելիքի մանրամասն բովանդակութիւնը — Պերոզի ժամանակից մինչեւ արաբացիների տիրապետութիւնը. «զայս ամենայն կամեցայ ի ձեռն գրոյս այսորիկ կարճառօտ ձեզ վիպասանել», — յարում է նա: Պատմելով Վահան Մամիկոնեանի ապստամբութեան մասին Պերոզից՝ Սեբէոսը գրում է Գերանայ դաշտում Վահանի տուած մի ճակատամարտի մասին, որ չունի Ղազար Փարպեցին: Երեւում է, որ նա ժողովրդական զրոյցներից առնելով է հաղորդում այդ: Նրան

ծանօթ չէ Ղ. Փարպեցու Պատմութիւնը. Պերոզի (458—484) յաջորդ դնում է նա Կաւատին (488—531) եւ ոչ թէ Վաղարշին (484—488): Վահանից յետոյ կարճատեւ իշխում է նրա եղբայրը՝ Վարդ Պատրիկ, որի մահից յետոյ գալիս են, ասում է, մարզպան պարսիկներ: Խոսրով Անուշ-ըռուան (531—579) թագաւորի 41րդ տարում (571—572 թ.) հայերը, Վարդան Մամիկոնեանի առաջնորդութեամբ, ապստամբում են պարսիկներից: Պարսից թագաւորն անձամբ գալիս է Վարդանի վրայ, բայց չարաչար պարտւում է: Ապա մի առ մի յիշատակում է Հայաստան եկող մարզպաններին:

Պատմութեան երկրորդ մասը, որ շատ ընդարձակ եւ մանրամասն է, նա համարում է ժամանակակից պատմութիւն: Այդ սկսում է այսպիսի բանաստեղծական նախաբանով. «Մատեան ժամանակեան, պատմութիւն թագաւորական, վէպ արիական, վանումն տիեզերական, հէն Սասանական՝ յԱպրուէզն Խոսրովեան, որ հրդեհեալ բոցացոյց զառ ի ներքոյ ամենայն, դղորդեալ զծով եւ զցամաք, զարթուցանել զկործանումն ի վերայ ամենայն երկրի», եւ այլն: Այդ ժամանակակից պատմութիւնն սկսւում է Որմիզդ թագաւորից (579—591): Նախարարներն սպանում են նրան եւ թագաւորեցնում նրա որդի մանուկ Խոսրովին, որին ապստամբ իշխան Վահրամի ձեռից փախցնում են Յունաց կողմերը: Նա Մօրիկ կայսրից (582—602 թ.) օգնութիւն գտնելով՝ յաղթում է ապստամբներին: Հայաստանի մեծ մասն անցնում է Բիզանդիային. Խոսրովը յոյներին է տալիս իրեն արած օգնութեանը համար՝ «զերկիրն Հայոց, որ ընդ իւրով իշխանութեամբն էր, զտունըն Տանուտերական մինչեւ ցգետն Հուրազդան, եւ զգաւառն Կոտէից մինչեւ ցաւանն Գառնի եւ ցեզր ծովուն Բզնունեաց եւ ցԱռեստաւան եւ զԳոգովիտ գաւառ մինչեւ ցՀացիւն եւ ցՄակու»: Պատմագիրը մանրամասն պատմում է առանձնապէս եւ այն երկարամեայ պատերազմը, որ Մօրիկ կայսրի սպանուելուց յետոյ՝ Խոսրով Ապրուէզը յաղթանակներով վարում է յոյների դէմ: Պարսից զօրքերը հասնում են Կոստանդնուպոլսի մօտ, մինչեւ որ թագաւորում է Հերակլը (610—641 թ.) եւ կռուին արեւելք տեղափոխելով՝ յաղթում է պարսիկներին, առնում է նրանց մայրաքաղաքը՝ Տիզբոնն, ապա հաշտութեան դաշն են հաստատում:

Պատմութեան վերջին մասի մէջ Սեբէոսը պատմում է, թէ ինչպէս արաբներն ասպարէզ են ելնում, կարճ ժամանակում յաղթում են երկու մեծ տէրութիւններին, կործանում են Սասանեան իշխանութիւնը, տիրում են Պարսկաստանին, Միջագետքին, Պաղեստինին, Ասորիքին ու Հայաստանին: Նրանց զօրքերը հասնում են մինչեւ Քաղկեդոն, բայց յաղթւում են յոյներից, եւ վերջապէս՝ թէ արաբական բանակի մէջ երկպառակութիւն է ընկնում, վերջը յաղթում է ամէնքին Մաւիասը եւ թագաւորում խաղաղութեամբ:

3. Պատմագրելու եղանակը:— Սեբէոսը յօրինում է հասարակ ու թեթեւ ոճով, երբեմն աշխոյժ ու եռանդուն: Իր պատմելու եղանակով նա ընդհանրապէս ցած է նախորդ պատմագիրներից: Ս. Գիրքն, ինչպէս առհասարակ միջնադարեան պատմագիրների համար, — եւ ոչ միայն մեր, — նոյնպէս եւ Սեբէոսի համար կարեւոր տեղ է բռնում: Աստուածաշնչի պատմե-

լու եղանակը, բառերը, դարձուածներն ու ոճն օրինակւում են ամէնքից: Սեբէոսի երկի մէջ արդէն բաւական զգալի երեւան են գալիս հայ պատմագրութեան եւ ուրիշ էական յատկութիւնները: Մեր պատմիչները գրում են միակողմանի կերպով հայոց պատմութիւն: Բայց որովհետեւ հայերն անջատուած չեն եղել ուրիշներից, ընդհակառակն, յաճախ ենթարկուած են եղել այլազգիներին, ուստի մեր պատմութեան մասին գրելիս՝ նրանք բնականաբար խօսում են եւ պարսիկների, բիզանդացիների ու արաբների մասին, — այսպէս Սեբէոսը,— հետագայում եւ ուրիշները— նաեւ սելջուկեան թուրքերի, թաթարների, խաչակիրների, այլեւ նոր պարսիկների, օսմանեան թուրքերի եւ ուրիշների մասին: Այդպիսով հայ պատմագիրները, որոնց թւում եւ Սեբէոսը, մեծ արժէք են ստանում եւ ընդհանուր պատմութեան տեսակէտով:

Սեբէոսը, ինչպէս եւ մեր միւս պատմագիրները, ուշադրութիւն է դարձնում գլխաւորապէս քաղաքական դիպուածներին — նկարագրում է պատերազմներ, արշաւանքներ: Բայց նա, իբրեւ հոգեւորական, հետաքրքրւում է նաեւ եկեղեցական խնդիրներով:Այսպէս՝ պատերազմների պատմութեան մէջ չի մոռանում յիշատակելու կաթողիկոսներին եւ նրանց գործերն ու շինարարութիւնները, ինչպէս՝ 6րդ դարի վերջում Աւան գիւղում Յովհան կաթողիկոսի շինած եկեղեցին (որ վերջերս վերանորոգուեց, եւ բացուեց կաթողիկոսի արձանագրութիւնը), 7րդ դարում Հռիփսիմէի տաճարի, Դուինի Ս. Գրիգոր եկեղեցու, Վաղարշապատի Զուարթնոց տաճարի շինութիւնը: Նա մէջ է բերում նաեւ Քաղկեդոնի ժողովի պատճառով յարուցուած վէճերը, կրօնական հալածանքները, մի քանի կարեւոր թղթերի պատճէններ: Այսպէս վարւում են սովորաբար եւ մեր ուրիշ պատմագիրները: Դրանով մասամբ վերանում է նրանց գրուածքների բովանդակութեան միակողմանութիւնը:

Դէպքերի ուսումնասիրութիւն Սեբէոսը չի անում եւ բացատրութիւններ չի տալիս: Նա չի քննադատում պատմական երեւոյթները՝ նրանց մէջ եղած բնական կապը գտնելու եւ պատճառներով բացատրելու համար դըրանք, այլ սովորաբար պարզապէս պատմում է անցքերը, մէկ մէկ էլ հրաշալի դէպքեր մէջ բերելով (Գլ. ԺԲ., էջ 48): Նա, ինչպէս եւ յաջորդ պատմագիրները, սահմանափակուած է կրօնական աշխարհայեացքով այն աստիճանի, որ արդէն Աստուծու բարկութեամբ կամ նոյնիսկ հրէական մարգարէութեամբ է բացատրում իր ժամանակի դէպքերը, ինչպէս, օրինակ, արաբների յարձակումը յոյների ու պարսիկների վրայ: Երբեմն նա նոյնիսկ մեղքն է համարում պատճառ ժամանակակից իրողութիւնների: Այդ նշան է, որ արդէն սկսել է իշխել միջնադարեան աշխարհայեցողութիւնը:

Եօթներորդ դարից առաջ կատարուած դէպքերի համար՝ Սեբէոսը սովորաբար թուականներ չի յիշատակում. բայց 6րդ դարի վերջերից սկըսած նշանակում է թուականներ, երբեմն յայտնում է նոյնիսկ ամսաթուերն ու օրերը կամ տարուայ եղանակը: Այս հանգամանքն ապացոյց է, որ նա ժամանակակից պատմութեան համար իբրեւ աղբիւր ունեցել է մեծ մասամբ ականատեսների պատմածները. մի տեղ, օրինակ, նա գրում է. «Զայս լուաք

յարանց գերելոց ի Խուժաստան Տաճկաստանէ, որոց ինքեանք իսկ ականատես եղեալ պատմեցին մեզ զայս բան» (Գլ. Խ., էջ 111)։ Շատ բան, հարկաւ, անձամբ տեսել է։Այս պատճառով և Սեբէոսի գիրքն իր ժամանակի պատմութեան համար առաջնակարգ աղբիւր է իր ստուգութեամբ։

4. Հայաստանի վիճակը։ — *Սեբէոսի երկն առանձնապէս կարևոր է Հայոց պատմութեան համար։ Երկու մեծ պետութիւնների աշխարհաւեր պատերազմների և յարաբերութիւնների հետ՝ մենք նրա պատմութեան մէջ տեսնում ենք Հայաստանի վիճակը, հայ իշխանների ու զօրքի խաղացած դերը Պարսից և Յունաց, վերջում Յունաց և Արաբացոց տէրութիւնների մէջ, և սրանց վերաբերմունքը դէպի հայերը։ Յունաց Մօրիկ կայսրը* (582—602 *թ.*) *ուղարկել է Պարսից թագաւորին «գիր ամբաստան վասն իշխանացն ամենայն Հայաստանեայց եւ զաւրաց իւրեանց։ «Ազգ մի խոտոր եւ անհնազանդ են, ասէ, կան ի միջի մերում եւ պղտորեն։ Բայց ե՛կ, ասէ, ես զիմս ժողովեմ եւ ի Թրակէ գումարեմ. եւ դու զքոյդ ժողովէ՛ եւ հրամայէ՛ յԱրեւելս տանել։ Զի եթէ մեռանին՝ թշնամիք մեռանին. եւ եթէ սպանանեն՝ զթշնամիս սպանանեն և մեք կեցցուք խաղաղութեամբ։Զի եթէ դոքա յերկրի իւրեանց լինիցին՝ մեզ հանգչել ոչ լինի»* (*ԺԳ., էջ* 49)։ *Եւ ահա այս նենգ քաղաքականութեան հետևանքով սկսւում է հայ ազնուականների և զօրքերի եղերական վիճակը։ Նրանց չարունակ հեռացնում են իրենց հայրենի երկրից։ Հայ իշխանները մնում են անել դրութեան մէջ։ Նրանք երբեմն մի կողմից միւս կողմն են անցնում, և կամ երբեմն էլ փորձում են ապստամբել և կամ անկախ հայ իշխանութիւն հաստատել, բայց անյաջող։ Հայաստանից հայ զօրքի հեռացումը երկուստեք կրկնւում է և երեքկնւում է, մինչև սպառւում է հայկական ռազմական զօրութիւնը, և յետոյ երկարամեայ պատերազմներից քայքայւում, աւերւում է երկիրը, և անբարոյացւում են երկրի իշխողները։ Յաճախում են միմեանց դէմ նենգութիւն, դաւութիւն։ Իշխում է երկպառակութիւնն ու մարդադաւութիւնը։Պակասում է հայկական դիմադրական ուժը, որ անհրաժեշտ պիտի լինէր մի քանի տասնեակ տարի յետոյ։*

*Այդ բաւական չէր։ Յունական կայսրները, կրօնական խնդրի նկատմամբ օրինակ չեն առնում մազդայական Խոսրով թագաւորից, որ որոշ չափով կրօնի ազատութիւն էր տալիս* (*ԺԱ., էջ* 47), *և նոյնիսկ հովանաւորում Հայոց եկեղեցուն* (*ԽԳ., էջ* 122 *և հտն.*)։ *Նրանք կայսրները, Կոստանդնուպոլսի հոգևորականների ձեռին խաղալիք դարձած, չարունակ խնդիր են յարուցում Քաղկեդոնի ժողովն ստիպմամբ ընդունել տալու հայերին։ Մօրիկը յունաց բաժնի համար նշանակում է առանձին հակաթոռ կաթողիկոս՝ Յոհան անունով՝ որ նստում է պարսից սահմանին մօտիկ Աւան գիւղում, ոչ հեռու Դուինից, ուր նստում էին Հայոց կաթողիկոսները։ Անգամ այն ժամանակ, երբ արաբական զօրքերն աւերել էին Այրարատեան աշխարհը, հասել մինչև Տայք, Վիրք և Աղուանք, կանգնել էին Կ. Պոլսի դիմաց, ետ դարձել, և սպառնում էին նորից արշաւել, անգամ այն ժամանակ Յունաց իշխողները փոխանակ երկրի դիմադրական ուժը զօրացնելու, նոր ի նորոյ Քաղկեդոնի ժողովի խնդիրն էին յարուցում։ Կոստանդ կայսրը* (642

—668) մեծ բանակով մտնում է Հայաստան, եւ կարծես ուրիշ բան չի գտնում անելու, բայց եթէ դարձեալ Քաղկեդոնի խնդիրը հանել: Ներսէս կաթողիկոսն ու եպիսկոպոսները, որոնք առաջ թղթով մերժել էին կայսրի առաջարկը, ստիպուած ընդունում են Քաղկեդոնի ժողովը: Դուինի մայր եկեղեցում քարոզւում է այդ ժողովը: «Եւ մատեաւ պատարագ Հոռոմերէն ի Հոռոմ երիցուէ, եւ հաղորդեցաւ թագաւորն եւ կաթուղիկոսն եւ ամէն եպիսկոպոսունքն, ո՛ր կամաւ եւ ո՛ր ակամայ: Եւ այսպէս շարժեաց կաթուղիկոսն զճշմարիտ հաւատս սրբոյն Գրիգորի, զի կալեալ էր ամենայն կաթողուկոսացն հաստատուն հիմնադրութեամբ ի սրբոյ յեկեղեցւոջն ի սրբոյն Գրիգորի մինչեւ ցայսաւր» (ԽԷ., էջ 144): Վերջին «մինչեւ ցայսաւր» բառից երեւում է, որ Սեբէոսն այդ պատմութիւնը գրել է հէնց այդ իրողութեան կատարուած օրը: Եւ այնուհետեւ մանրամասն պատմում է, թէ մի եպիսկոպոս չի հաղորդւում կաթողիկոսի հետ. բայց յետոյ թագաւորից ստիպուած՝ կատարում է նրա կամքը: Այդ եպիսկոպոսը, որի անունը չի տալիս, ամենայն հաւանականութեամբ Սեբէոսը ինքն է:

5. Թէոդորոս Ռշտունի:— Գեղեցիկ է այս իշխանի պատկերը: Երկրի աւերումն ու քայքայումը մեծ էր: Մի կողմից արաբները, միւս կողմից յոյները, մի երրորդ կողմից հէնց միմեանց հետ կռուող իշխանները կողոպտում, կոտորում, աւերում էին: Ցուրտ ձիւն–ձմեռ է: Արաբները չեն դիմանում ցրտին, քաշւում են Ասորեստանի կողմերը: «Իսկ իշխանքն Հայոց որ ի Յունաց եւ որ ի Տաճկաց կողմանէ, Համազասպ եւ Մուշեղ, եւ այլն ամենայն եկեալ ի մի վայր միաբանեցան եւ արարին ընդ միմեանս հաշտութիւն, զի մի՛ եղիցի ի մէջ նոցա սուր եւ արիւնհեղութիւն, եւ անցուցին [=անցուցին] խաղաղութեամբ զաւուրս ձմերայնոյն, զի եւ զշինականսն ապրեցուցանեն»: Հայ իշխանները հոգում են շինականների մասին, եւ ի՛նչպէս: «Քանզի Ռշտունեաց տէրն անկաւ յախտս հիւանդութեան, եւ չոգաւ, անկաւ յԱղթամար կղզի: Եւ ոչ գոյր նմա լինել կարողութիւն ելանել արտաքս կամ խորհել ինչ: Եւ բաժանեցին զերկիրն ըստ թուոյ իւրաքանչիւր հեծելոց, եւ կարգեցին հարկապահանջս ոսկւոյ եւ արծաթոյ»: Ահա թէ ինչպէս էին ուզում նրանք, շինականներն էլ ապրեն: Թշուառութիւնը չափ չունէր: «Եւ սաստ էր տեսանել զաղէտս տարակուսի, — շարունակում է Պատմագիրը, — զաւրէն հիւանդաց, յորժամ տագնապեսցի ցաւն, եւ հատանիցի ի խաւսից՝ այնպիսի ինչ եղեն. զի ոչ գոյր մարդկան տեղի փախստի եւ թաքստեան, եւ ոչ խնայել ի ներքուստ, այլ որպէս ոք զի անկցի ի ծով՝ եւ ելս ոչ կարիցէ գտանել»: Աւա՛ղ ռամկին. ո՞վ պիտի փրկէր նրան: «Իսկ իբրեւ զայն ետես Ռշտունեաց տէրն՝ խնդրեաց իւր զաւրս յԻսմայելացւոցն, զի հարցէ զՀայսն եւ հալածական արասցէ, եւ զՎիրս սատակեսցէ ի սուր սուսերի» (ԽԸ., էջ 149 եւ հտ.):

Դա Թէոդորոս Ռշտունին էր, ժամանակի ամենանշանաւոր, քաջ եւ իմաստուն իշխանը, սննդակից Սմբատ Բագրատունու որդի Վարազտիրոցին, որ եւ Ասպետ, որի հետ եւ մեծացել էր նա «ի դրանն Խոսրովայ արքային Պարսից» (ԽԲ., էջ 116): Վարազտիրոցի մարզպանութեան օրով արդէն նա

ազդեցիկ մարդ էր ամբողջ երկրում: Արաբացիների Հայաստան մտնելուց քիչ առաջ՝ հայերը հալածում են իրենց զորավար Դաւիթ Սահառունուն եւ «անմխարան լեալ ամենայն ազատացն, — գրում է Սեբէոս (ԼԹ., էջ 104),— կորուսին զերկիրս Հայոց: Բայց միայն աստուածասէր եւ քաջ իշխանն Ռըշտունեաց գաւառին Թէոդորոս կազմէր զգունդս իւրոյ կողմանն հանապազ եւ զգուշանայր զտիւ եւ զգիշեր ըստ իւրոյ քաջ իմաստութեանն, ոչ սակաւ ուճիրս գործէր ի թշնամեացն: Եւ շինեալ զԱղթամար կղզի՝ անդ ապրեցուցանէր զբազում գաւառս»: Այս պատրաստութեան հետեւանքն այն է լինում, որ երբ արաբացիները յունաց կողմից անպաշտպան երկիրն աւերում ու գերում են, Թէոդորոսն է միայն կարողանում ասպատակութիւնների առաջն առնել: Ուստի եւ նա յունաց կայսրից Հայոց զորավար է կարգւում եւ պատրկութիւն ստանում, ապա եւ Հայոց աշխարհի իշխան դառնում: Արնուհետեւ, չնայելով տեղական յոյների հանած ամէն տեսակ արգելքներին, նա Հայաստանում ժամանակի միակ կառավարիչն է մնում եւ յաղթութիւններ տանելով արաբացիների վրայ՝ շատ գերիներ եւ աւարներ է ազատում:

Բայց վերջ ի վերջոյ Թէոդորոսը տեսնում է, որ Կ. Պոլսում ներքին խռովութիւնները չեն պակասում, որ յոյներն մեր երկիրն անպաշտպան են թողնում եւ միայն կրօնական հալածանքներ հանում հայերի ու հայ եկեղեցու դէմ, եւ որ, վերջապէս, Սասանեան պետութիւնն ընկնում է արաբացիների անճող զօրութեան առաջ. այդ ժամանակ նա, երբ արաբացիները նորից յարձակւում են հայերի վրայ, իր հետ միաբանեցնում է բոլոր հայ իշխաններին ու ենթարկւում արաբներին՝ շատ ձեռնտու պայմաններով դաշինք կռելով Մաւիաւի հետ 652 թ.: Հայաստան այդ դաշինքով պահում է իր ինքնուրոյնութիւնը, եւ նախարարներն ստանում են մեծ արտօնութիւններ (էջ 140 եւ հտ.): Բերենք այդ դաշինքը:

«Արդ՝ խաւսէր ընդ նոսա իշխանն Իսմայելի եւ ասէր. «Այս լիցի ուխտ հաշտութեան իմոյ ընդ իս եւ ընդ ձեզ՝ որչափ ամաց եւ դուք կամիջիք. եւ ոչ առնում ի ձէնջ սակ զերեամ մի. ապա յայնժամ տաջիք երդմամբ, որչափ եւ դուք կամիջիք: Եւ հեծեալ կալէք յաշխարհիդ ԺԵ [= 15] հազար, եւ հաց յաշխարհէն տուք, եւ ես ի սակն արքունի անդարեմ. եւ զհեծեալսն յԱսորիս ոչ խնդրեմ. բայց այլ ուր եւ հրամայեմ՝ պատրաստ լիցին ի գործ. եւ ոչ արձակեմ ի բերդորայն ամիրայս, եւ ոչ տաճիկ սպայ՝ ի բազմաց մինչեւ ցմի հեծեալ: Թշնամի մի՛ մտցէ ի Հայս. եւ եթէ գայ Հոռոմ ի վերայ ձեր՝ արձակեմ ձեզ զաւրս յաւգնականութիւն՝ որչափ եւ դուք կամիջիք: Եւ երդնում ի մեծն Աստուած՝ եթէ ոչ ստեմ»:

Յոյները զայրանում են, եւ անձամբ գալիս է Կոստանդ կայսրը հարիւր հազարանոց բանակով՝ պատժելու Թէոդորոսին եւ հայ իշխաններին: Վերջիններս բոլորը հպատակւում են նրան. զորավար կամ «իշխան հեծելոց» կարգւում է Մուշեղ Մամիկոնեան: Ներսէս կաթողիկոսն ու եպիսկոպոսները, ինչպէս վերեւում ասուեց, ստիպուած ընդունում են Քաղկեդոնի ժողովը: Բայց Թէոդորոսն իր փեսաների հետ հաստատ է մնում իր որոշմանը. նա իր մի փեսայ՝ Մամիկոնէից տէր Համազասպի հետ ամրանում է իր կըղ-

ղում ու գաւառում. իսկ նրա միւս փեսայ Գրիգորը՝ իր հայր Թէոդորոս Վահեւունու հետ ամրանում է Արխա բերդում: Կայսրը բան անել չի կարողանում եւ միայն կրօնական վէճ ու խնդիր հանելով եւ Թէոդորոս Ռշտունուն նզովք կարդալով՝ ետ է դառնում: Իսկ Թէոդորոսն արաբացիների օգնութեամբ երկրից հալածում է յոյներին եւ ապա գնալով Դամասկոս՝ Մաւիասի մօտ, իշխան է կարգւում Հայաստանի, Վրաստանի, Աղուանքի եւ Սիւնիքի վրայ մինչեւ Կաւկաս լեռն ու Ճորայ պահակը, եւ ստանալով մեծ ընծաներ «հանդերձս ոսկեղէնս եւ ոսկեթելս եւ վառ մի նորին օրինակաւ», վերադառնում է:

Այս ժողովրդասէր եւ ժողովրդի պաշտպան, քաջ եւ իմաստուն անձը բնականաբար վայելում է մեծ ժողովրդականութիւն, այն աստիճանի, որ նրա յիշատակն ապրում է զրոյցների մէջ, որոնք եւ մտնում են մեր «Սասնայ Ծռեր» վէպի մէջ եւ յարատեւում մինչեւ մեր օրերը իբրեւ Քեռի Թորոս եւ Թեւաթորոս:

6. Սմբատ Բագրատունի:— Սեբէոսի Պատմութիւնը, ինչպէս նման յիշատակարաններն ընդհանրապէս, չունի սպեցիֆիկ գրական նշանակութիւն, որովհետեւ դա չի յօրինուած գեղարուեստօրէն: Բայց դրա մէջ կան վիպակներ, զրոյցներ, որոնք ծագում են բերանացի բանաստեղծական աւանդութիւններից, դրա համար եւ պատմուած են մասամբ կենդանի ձեւով: Այսպիսի հատուածների մէջ Սեբէոսի աշխատութիւնը գրական նշանակութիւն էլ է ստանում. դրանից մէկն է Մանուէլի որդի Սմբատ Բագրատունու զրոյցը (ԺԲ., էջ 55 եւ հտ.):

Մօրիկ կայսրը կրկին անգամ զօրք է ուզում Հայաստանից Թրակիա ուղարկելու: Զօրավարն է Սմբատը. ճանապարհին զօրքը չի ուզում գնալ այնտեղ: Մեծ խոստումներով եւ երդումներով, սակայն, կարողանում են զօրքը տանել եւ ուղարկել Թրակիա, իսկ Սմբատը վերադառնում է Հայաստան:

«Ապա դարձեալ սկսան միաբանել մնացեալ Նախարարքն Հայոց, եւ խնդրէին ի բաց կալ ի ծառայութենէն Յունաց թագաւորին եւ նստուցանել իւրեանց թագաւոր, զի մի՛ եւ նոցա հասցէ մեռանել ի կողմանս Թրակացւոց, այլ կեալ եւ մեռանել ի վերայ աշխարհին իւրեանց: Եւ բանք խորհրդոց նոցա ոչ ունէր զմիաբանութիւն իրին յինքեանս հաստատեալ, այլ ոմանք ի նոցանէ չոգմոգութեամբ հասուցին զբանս խորհրդեանն յունկն թագաւորին, եւ ինքեանք այսր եւ անդր սարսրեալ խուսափէին:

«Յայնմ ժամանակի հասանէին դեսպանք արքունականք հրովարտակաւք, եւ կալեալ զՍմբատ հանդերձ այլովք ոմամբք եւթն արամբք եւ տարան յանդիման թագաւորին: Եւ քննեալ զնոսա ի մէջ բազմամբոխ հրապարակին՝ հատաւ վճիռ ի վերայ նոցա՝ մերկացուցանել եւ ընկենուլ ի կինինկն:

«Եւ էր սա այր անհեթեթ անձամբ եւ գեղեցիկ տեսլեամբ, եւ բարձր եւ լայն հասակաւ, եւ բուռն եւ ցամաք մարմնով: Յայնժամ հզաւր եւ պատերազմող, որ ի բազում պատերազմունս ցուցեալ էր զիւր քաջութիւնն եւ

գրանուԹիւն։ Այս է զաւրուԹիւն նորա․ քանզի անցեալ սա ի ներքոյ անտառախիտ մայրեաց եւ զաւրաւոր ծառոց, ի վերայ յաղԹանդամ եւ հզաւր երիվարին, եւ յարձակեալ զսատով ծառոյն՝ բուռն հարկանէր, եւ կծկեալ ուժգին երանաւքն եւ ոտիւք զմէջ երիվարին՝ վերացուցանէր երանաւքն ի գետնոյն․ մինչ զի ամենայն զաւրացն տեսեալ ահաբեկ լինէին ի զարմացմանէ։

«Եւ արդ՝ մերկացուցեալ զնա եւ աղուցեալ անդրավարտիս եւ ընկեցեալ ի կիւնիկն, զի կուր լիցի գազանաց։

«Եւ արձակեալ է վերայ նորա արջ։ Եւ եղեւ՝ իբրեւ դիմեաց ի վերայ նորա արջն՝ նա աղաղակեաց մեծաձայն եւ ընԹացաւ ի վերայ արջոյն, եւ զարկեալ բռամբ իւրով զճակատն, եւ անդէն սատակէր զնա ի տեղւոջն։

«Երկրորդ անգամ արձակեցին ի վերայ նորա ցուլ։ Իսկ նորա բուռն հարեալ զեղջերացն ցլուն․․․ եւ զաղաղակ հզաւրին․․․ եւ յաւդնեալ ցուլն ի մարտին՝ զեւոյր զպարանոցն եւ խորտակէր զերկուսին եղջիւրսն ի վերայ գլխոյն․ Թուլանար ցուլն եւ յեսս դնալով ի փախուստ դառնայր։ Իսկ նորա զհետ ընԹացեալ՝ բուռն հարկանէր յաղին եւ ի կճղակն ազդեր միոյ ոտին նորա, եւ Թափեալ զկճղակսն՝ մնայր ի ձեռին նորա։ Եւ ցուլն գնայր ի նմանէ փախստական, միով ոտամբն բոկ։

«Դարձեալ երրորդ անգամ արձակեցին ի վերայ նորա առիւծ։ Եւ եղեւ՝ ի վերայ նորա յարձակել առիւծուն՝ այնպէս իմն յաջողեալ նմա ի տեառնէ, բուռն հարեալ յականջ առիւծուն՝ հեծաւ ի վերայ նորա։ Եւ անդէն բուռն հարեալ զխռչափողիցն՝ խեղդէր զառիւծն եւ սպանանէր։ Անդ աղաղակ բազում ամբոխին զերկիրն լնուին, եւ խնդրէին ի վերայ նորա ողորմուԹիւն ի Թագաւորէն։

«Եւ նա վաստակեալ ի մարտին՝ նստէր ի վերայ առիւծուն մեռելոյ, զի փոքր մի հանգիցէ։ Անդ եւ կին Թագաւորին անկեալ առ ոտս նորա՝ խնդէր ի վերայ նորա առնել ողորմուԹիւն․ վասն զի սիրելի էր յառաջն այրն այն Թագաւորին եւ կնոջ նորա, եւ անուանեալ էր զնա իւր յորդեգիրս։ Եւ նա զարմացեալ ընդ զաւրուԹիւն եւ ընդ պնդուԹիւնն առնն եւ լուեալ պաղատանաց կնոջն եւ ամենայն պաղատոյն՝ հրամայեաց առնել ի վերայ նորա ողորմուԹիւն։

«Յայնժամ տարան զնա ի լուացումն ի բաղանիս․ լուացին զնա եւ զգեցուցին, եւ կոչեցին զնա յընԹրիս արքունի, զարմանեցին զնա կերակրովք։ Եւ զկնի սուղ ինչ անցելոց, մանաւանդ եԹէ ոչ ի չար ինչ կամաց Թագաւորին, այլ ի նախանձորդաց չարախօսուԹենէ, հրամայէ հանել զնոսա ի նաւ եւ աքսորել ի կղզիս հեռաւորս․ եւ ապա անտի հրամայէ անցուցանել յԱփրիկէ, եւ առնել նոցա անդ ի զաւրացն, որ էին անդ՝ տրիբուն»։

Շատ չուտով դրանից յետոյ, ինչպէս պատմում է Սեբէոսը, 600 Թ․, ուրեմն Մորիկի մահից երկու տարի առաջ, Պարսից Խոսրով Թագաւորը Սմբատ Բագրատունուն, մեծամեծ պատիւներ տալով, կարգում է Վրկանի մարզպան։ Ամենայն հաւանականուԹեամբ այս նշանաւոր անձը վերեւում յիշուած Սմբատ Բագրատունին է, որ Յունաց կողմից անցել է Պարսից կողմը։ Նա մեծ գործեր է կատարում Վրկանում․ 608 Թ․ վերադառնում է Հա-

յատան, ուր հողում է եկեղեցու համար, շինել է տալիս Դուինում ս. Գրիգորի եկեղեցին: Սեբէոսը մանրամասն պատմում է նրա վարած մարտերը: Բերենք հետեւեալը (էջ 67 եւ հտ.):

«Յայնժամ Սմբատ ժողովէ զզաւրն եւ զվերատին սպառազինէ, գումարէ եւ զաւրս բազումս յաւգնութիւն իւր, եւ դիմեալ գնայր ի վերայ արքային Քուշանաց եւ արքային Հեփթաղեայ: Եւ նա անտի մեծաւ կազմութեամբ ընդդէմ ելանէ նորա եկին հասին ի տեղի մարտին եւ ճակատեցան դէմ յանդիման միմեանց: Արդ՝ պատգամ յղէ առ Սմբատ արքայն Քուշանաց եւ ասէ. «Զի՞նչ աւգուտ է այսպէս խառնամբոխ մտանել ի պատերազմ՝ սպառել զաւրս մեր: Եւ կամ ի՞ւ ծանիցի իմ եւ քո քաջութիւնդ: Բայց ե՛կ, ես եւ դու միայն մարտիցուք, ելեալ ես աստի ախոյեան, եւ դու՝ այտի. զի այսաւր ծանիցի քեզ քաջութիւն իմ»: Իսկ նորա ձեռն յանձին հարեալ՝ ասէ. «Ահաւասիկ պատրաստ եմ ի մեռանել»: Եւ յարձակեալք աստի եւ անտի մեծաւ տագնապաւ ի միմեանս հասանէին. եւ ի մէջ երկուց ճակատուցն մարտ եղեալ ընդ միմեանս կռուէին. եւ ոչ կարէին վաղվաղակի զմիմեանս յաղթահարել, զի արք սկայազաւրք էին երկոքինն եւ կուռ սպառազինեալք: Ապա ի վերուստ իմն հասեալ աւգնութիւն՝ պատառի վերտ եւ ամուր բահլիկ եւ կուռ զրահին ամրութիւն արքային Քուշանաց ի նիզակէն Սմբատայ. զի հարեալ զնա զաւրութեամբ դիաթաւալ յերկիր կործանէր: Եւ զաւրքն նորա իբրեւ տեսին զարքայն իւրեանց՝ զարհուրեցան եւ դարձան գնացին փախստական. եւ սոքա զհետ արշաւեալ հասին սատակաւ մինչեւ ի Բահլ շամի մեծ եւ ածել ի դահլիճն. հրամայէ եւս հանել ի վեր զորդի նոր զՎատագէս, զՏոխորստան ամենայն եւ զՏաղական. առնոյր եւ զբերդս բազումս եւ զնոյնս քանդեալ աւերէր, եւ դառնայր յաղթութեամբ մեծաւ եւ բազում աւարաւ, եւ երթեալ բնակէր ի Մարգ եւ ի Մարգռոտ գաւառի:

«Յայնժամ հրեշտակք աւետաւորք փութով հասանէին առ արքայն Խոսրով, լիով զեղեալսն պատմէին քաջութիւն: Իսկ արքայն Խոսրով զուարճանայր զուարթանայր մեծաւ խնդութեամբ, եւ հրամայէր զարդարել փիղ մի մեծ եւ ածել ի դահլիճն. հրամայէ եւս հանել ի վեր զորդի նորա զՎարազտիրոց, որ անուանեալ կոչէր յարքայէ Ջաւիտեան Խոսրով: Եւ հրամայէ գանձս ցանել ամբոխին. եւ գրէր առ նա հրովարտակ մեծապէս գոհութեամբ. եւ կոչէր զնա ի դուռն մեծաւ պատուով եւ շքեղութեամբ»:

Այս զրոյցն իր բովանդակութեամբ եւ էական գծերով շատ նման է Հայկի ու Բէլի, աւելի Տրդատի ու Գօթաց թագաւորի մենամարտին: Այդ նմանութիւնը հետեւանք է այն բանի, որ նոր կատարուած իրողութիւնների եւ անցքերի պատմութիւնը ժողովրդի մարդկանց բերանին առնում է հին զրոյցների կերպարանքը (1):

7. Մուշեղի վէպը:— Ժողովրդական զրոյցի ձեւով աւելի եւս կենդանի պատմուած է Սեբէոսի մէջ Խոսրովի եւ Մուշեղի պատումը, որ առատօրէն յագեցուած է ժողովրդական վէպին յատուկ տարրերով: Այստեղ կան

(1) Մ. Աբեղեան, Հայ ժողովրդական առասպելները, էջ 217 եւ հտ., 226 եւ հտ.:

վիպական մանրամասներ, նկարագրիններ, միմեանց ուղարկած նամակ ու պատգամներ, տրամախօսութիւններ, խորհրդակցութիւններ: Իսկական մի վիպական պատմուած է դա, որ ընդարձակ լինելով՝ հնարաւոր չէ բառացի բերել այստեղ (գլուխ Ը, Թ, Ժ, էջ 33–46): Վահրամ Մերհեվանդակ (=Վահրամ Չոբին) ապստամբում է Սասանեան Որմիզդ թագաւորից (579–590 թ.), աշխատելով վերացնել Սասանեան տունը: Որմիզդն սպանւում է, եւ տեղը թագաւորեցնում են որդուն, «մանուկ տղայ» Խոսրովին (590 — 628 թ.), որին քեռիները փախցնում են Յոյների մօտ: Վահրամը թագաւորում է ամբողջ Պարսկաստանում: Խոսրովը Յունաց Մօրիկ կայսրի կողմից օգնութիւն է գտնում. երկու յոյն զօրավարներ գալիս են զօրքով կռուելու Վահրամի դէմ եւ Խոսրովին իր հօր գահի վրայ նստեցնելու (1): Խոսրովին օգնելու գալիս են եւ Հայոց զօրքերը, որոնց գլուխն է Մուշեղ Մամիկոնեանը: «Եւ զզաւրս աշխարհին Հայոց ընդունէին գումարել, որք ի ժամուն առ ձեռն գտեալ. եւ անցեալք ի հանդիսի իբրեւ հազարք հնգետասանք, իւրաքանչիւր գունդք նախարարաց՝ ըստ հարիւրաւորաց, ըստ հազարաւորաց, ըստ գնդից, ըստ դրաւշուց իւրեանց: Ամենեքեան նոքա սպառազէնք, ընտիրք պատերազմողք, վառեալք քաջութեամբ՝ իբրեւ զհուր, որ ո՛չ զանգիտեն եւ ոչ զթիկունս դարձուցանէին: Դէմք առիւծու դէմք նոցա, թեթեւութիւն ոտից իբրեւ զթեթեւութիւն այծեմանց երագութեամբ ի վերայ դաշտաց: Մտադրութեամբ եւ ամենայն հնազանդութեամբ չու յաղթ անկեալ գնացին» (Թ. էջ 38):

Պատերազմը խմբւում է Ատրպատականում: Վահրամը կռուից առաջ բանագնացութեամբ փորձում է Մուշեղին իր կողմը գրաւել խոստումներով, բայց չի յաջողւում, եւ սաստիկ պարտութիւն կրելով փախչում է:

Խոսրովն ուրախ է, բայց նրա ուրախութիւնը թերի է. «զի ապրեցաւ տիրատեացն այն [Վահրամ] եւ գնաց»: Մօտի մարդիկը պատասխանում են. «Զտիրատեացն զայն նոքա [հայք] զերծուցին, քանզի մերով աչաւք իսկ տեսաք, զի կալաւ զնա Մուշեղն այն Մամիկոնեան, եւ ետ նմա երիվար եւ զէն, եւ արձակեաց»: Խոսրովը հաւատում է եւ ուզում է Մուշեղին նենգութեամբ իր մօտ հրաւիրել եւ սպանել. բայց չի յաջողւում: Այս Խոսրովի բարեկամ Մօրիկը Մուշեղին կանչում է պալատը, «եւ այլ ոչ եւտես զերկիրն», աւելացնում է Պատմագիրը: Նրան ուղարկում են Թրակիա, ուր թշնամիները բըռ–

(1) Ֆիրդուսու «Շահնամէի» մէջ այս պատմուած է «բանաստեղծական զարդարանքներով եւ բուն պարսկական չափազանցութիւններով», ինչպէս մի վէպ, թէ ինչպէս բանակցութիւններ են եղել կայսրի ու թագաւորի միջեւ, թէ կայսրն աստղերին է նայել: Մանրամասն նկարագրուած են նաեւ արշաւանքներն ու ճակատամարտերը, եւ «թէ կայսրը Խոսրովի հետ կռած դաշինքը հաստատուն դարձնելու համար՝ իր Մարիամ դուստրը կնութեան է տուել նրան»: Աղջկան հարուստ օժիտով հռոմէական օժանդակ բանակի հետ թագաւորին են բերում: Կայսեր դուստրն այնուհետեւ թագաւորին ընկերանում է նրա արշաւանքների ժամանակ, եւ այլն: Այս պատմութիւնը սոսկ առասպել է համարւում: — «Բիւզանդիոն եւ Պարսկաստան», գրեց Կ. Գիւդերբոֆ, գերմ. թարգմ. Հ. Համբարեան, Վիեննա, 1911, էջ 45 եւ հտ.:

նում են նրան եւ մի բարձր ծառից կապելով սպանում (ԺԶ․, էջ 53 եւ հտ․)։

Այս խսկ վիպական պատմուածքը, որ Սեբէոսի մէջ շատ տեղ բուն ժողովրդական գոյն ունի, որի հիմքը, սակայն, անպայման պատմական է, իր ձեւով Բուզանդի Մուշեղի վէպի մի նորոգուած պատմուածք է։ Նոյնութիւնն ակնյայտնի է։ Այդ երկուսի միակ էական տարբերութիւնն այն է, որ Յունաստանից յունաց զօրքերով իր սպանուած հօր գահը ժառանգելու համար եկող թագաւորը ոչ թէ Հայոց Պապն է, այլ Սասանեան Խոսրովը։ Նմանութեան մէջ առանձնապէս աչքի է ընկնում այն, որ երկուսի մէջ եւս Մուշեղը թշնամի բանակի հետ հաղորդակցութիւն ունի եւ մեղադրւում է, թէ կարող էր թշնամի թագաւորին սպանել, բայց չի սպանում. եւ հօր գահը ժառանգող թագաւորը թշնամանում է Մուշեղին եւ սպանել ուզում նրան։ Բուզանդի մէջ Մուշեղի վէպը, իբրեւ 5րդ դարու, ունի իր ժամանակի դրոշմը․ իսկ Սեբէոսի մէջ՝ իր դարինը։ 7րդ դարում հայ թագաւոր չկար․ արարներից առաջ հայ զօրքը ծառայում էր Պարսից եւ Յունաց թագաւորներին, եւ այսպէս երկու հարիւր տարուց ի վեր։ Բնականաբար Մուշեղի վէպն եւս իր նոր ձեւի մէջ, հնի էութիւնը պահելով, կրել է ժամանակի կնիքը։ Մուշեղը դարձել հայ զօրքի գլուխն անցած կռւում է յունական զօրքի հետ միասին պարսիկների դէմ, բայց ոչ Հայոց թագաւորի որդուն իր հօր գահի վրայ հաստատելու համար եւ ոչ ապստամբ հայ իշխանների դէմ, այլ Պարսից։ Եւ նա իր վախճանը գտնում է ոչ թէ ընթրիքի ժամանակ, այլ Թրակիայում, ինչպէս ժամանակի շատ հայ իշխաններ։

## ՎԻՊԱԿԱՆ ԲԱՆԱՀԻՒՍՈՒԹԻՒՆ
## ՋՐՈՅՑՆԵՐ «ՊԱՐՍԻՑ ՊԱՏԵՐԱԶՄԻ» ՑԻԿԼԻՑ (1)

1․ Պետրոս Քերթող։ — Հին երգերն ու զրոյցները հեշտութեամբ չեն մոռացւում։ Մի վէպ, ինչպիսին է «Պարսից պատերազմը», բոլորովին անհետ կորչել չէր կարող։ Դրանից այս կամ այն միջադէպը, այս եւ այն հերոսի անունն ու արարքը երկար դարեր ապրել են գուսանների եւ նոյնիսկ ժողովրդի բերանին, ի հարկէ կրելով դարերի ազդեցութիւնը եւ կերպարանափոխ լինելով։ Անել չի ուզիլ, այդ հին վէպի միջադէպերից մէկը կամ միւսը յարատեւել են աւելի այն կողմերում, որոնց վերաբերում են․ օրինակ՝ Սիւնիքում պահուել են Սիւնեաց իշխանների մասին զրոյցները, Տարօնի եւ Սասնոյ կողմերում՝ Մամիկոնեանների վերաբերեալ։ Բայց մեր գրականութեան մէջ գտնում ենք մեր այդ հին վէպից ոչ շատ հատուածներ 5րդ դարուց յետոյ։ Եթէ քիչ է, պատճառն այն չէ, որ շատ բան մնացած չի եղել, այլ մենք շատ մատենագիրներ չենք ունեցել, որ հին վէպի մնացորդների վրայ ուշադրութիւն դարձնէին։ Այդ նկատմամբ՝ Մովսէս Խորենացուց յետոյ, առաջինն է Պետրոս Քերթողը։

---

(1) Մ․ Աբեղեան, Հայ ժողովրդական վէպը, «Ազգագրական Հանդէս», XVI գիրք, էջ 80 — 96․ այլեւ առանձին գրքով, էջ 124 — 130։

Այս հեղինակի մասին կենսագրական տեղեկութիւններ հաղորդում է Ստեփաննոս Օրբելեան պատմագիրը: Բայց սա չփոթ ու խառն պատմութիւններ է անում, հակասական թուականներով, այնպէս որ նրա տուած տեղեկութիւնները ոչ բոլորը կարելի է վաւերական համարել: Բայց հաւաստի է, որ նա, Պետրոսը, եղել է Սիւնիքի եպիսկոպոս, յօրինել է ճառեր: Աշտարակցի Ներսէս Բ. կաթողիկոսի ժամանակ մասնակցել է Դուինի ժողովին 554 թ.: Նրա ստորագրութիւնն էլ կայ այդ կաթողիկոսի երեք թղթերի մէջ: Նա կենդանի է եղել 555—556 թուականներին եւ մեռել է հաւանօրէն 558 թուականին (1): Նա համարւում է աշակերտ Մովսէս Քերթողահօր (2): Եթէ ստոյգ է այս վերջին տեղեկութիւնը, — որի մասին կասկածելու ոչ մի հիմք չկայ, — ապա Քերթող Պետրոսը պատանի հասակում է աշակերտել Մովսէսին, որ վախճանուած է 5րդ դարի վերջերին:

«Բազմերջանիկն եւ անհամեմատն ի մարդկանէ Պետրոս՝ աշակերտ Քերթողահօրն, քաջ հռետորն եւ անյաղթ փիլիսոփայն, լի իմաստութեամբ եւ կատարեալ առաքինութեամբ, նախաթոռ վարդապետաց Հայոց, Քերթող եւ Թարգմանիչ. որ արար բազում թարգմանութիւնս. եւ խօսեաց ճառս իմաստալեղց ի ծնունդն Քրիստոսի եւ ընդդէմ քաղկեդոնականացն եւ այլս յոլովս. եւ մեկնեաց զկրթին եւ զդժուարիմաց բանս հին եւ նոր կտակարանաց... Սա հարցեալ ի Վաչագանայ՝ Աղուանից թագաւորէ, բանս բազումս ուժեղս եւ զօրաւորս, եւ ընկալեալ զպատասխանին յոյժ ի ճահ եւ ուղիղ լուծմամբ» (3): Շատ պարզ է, որ Պետրոս Քերթողը մեծ գրական գործունէութիւն է ունեցել 6րդ դարի առաջին կէսին եւ մեծ համբաւ է վայելել թէ՛ ժամանակակիցների մէջ եւ թէ՛ հետագայում: Նրա «Գովեստ ի սուրբ Աստուածածինն» (4) ճառն իր տեսակների մէջ գեղեցիկներից մէկն է եւ ազդել է մեր հոգեւոր երգերի վրայ:Այս հեղինակի երկերը մեծ մասամբ,ցաւօք, դեռ չեն երեւան բերուած եւ հրատարակուած: Այստեղ կանգ կ'առնենք այդպիսիներից մէկի վրայ:

Ստ. Օրբելեանն իր Պատմութեան մէջ (էջ 10) խօսելով իր աղբիւրների մասին՝ ասում է, թէ առել է «նաեւ սակաւ ինչ ի Պետրոսի՝ Սիւնեաց ե-

---

(1) Տես՝ 1) «Գիրք թղթոց», Թիֆլիս, 1901, էջ 72, 76: 2) «Արարատ», 1902, էջ 80 – 87՝ «Պետրոս Սիւնեաց եպիսկոպոս», Գալուստ Տէր–Մկրտչեանի: 3) Նոյնն առանձին գրքով: 4) «Հանդէս ամսօրեայ», 1903, էջ 250 եւ հտն., 1904, էջ 20 եւ հտ. Ն. Ա. «Պետրոս եպիսկոպոս Սիւնեաց»:

(2) Պատմութիւն նահանգին Սիսական, արարեալ Ստեփաննոսի Օրբելեան արքեպիսկոպոսի Սիւնեաց, Թիֆլիս, 1910, էջ 56, 89, 454. նոյնը Մոսկուա, 1861:

(3) Անդ, էջ 89:

(4) Տպուած է «Արարատ», 1902, էջ 88 եւ հտն. այլեւ առանձին գրքով. «Երանելւոյն Պետրոսի Սիւնեաց եպիսկոպոսի Գովեստ ի սուրբ Աստուածածինն եւ ի միշտ կոյսն Մարիամ ըստ յորջորջման նորին. եւ ի սուրբ գրոց լուծմունք նոցին, հոգեւոր իմաստիւք»: Նոյն տեղում, էջ 183 եւ հտն. «Հարցմունք յաղագս մարմնաւորութեանն տեառն զանազանք՝ Վաչագանի Աղուանից իշխանի ընդ Պետրոսի Սիւնեաց եպիսկոպոսի եւ իմաստասիրի»:

պիսկոպոսի ճառին, որ վասն Բաբկայ՝ Սիւնեաց տեառն»: Յետոյ Թ. գլխի վերնագրի մէջ գրելով գլխի բովանդակութեան մասին՝ յիշում է դարձեալ Պետրոսին. «Վասն Անդոկայ՝ Սիւնեաց իշխանի... յասացուածոց սրբոյն Պետրոսի՝ Սիւնեաց եպիսկոպոսի» (1):

Պետրոս Քերթողի այս ճառից, որ եւ ասացուած կամ ներբող է կոչւում, օգտուել է Ստ. Օրբէլեանից առաջ եւ մեր մի ուրիշ պատմագիրը՝ Մովսէս Կաղանկատուացին (2): Սա Պետրոսի անունը չի տալիս, այլ միայն գրում է սկզբում. «Որքան պայծառ է երկինք աստեղօք եւ երկիրս՝ բուսով, այնպէս է եւ ջանք աշխարհալիր պատմողի՝ յայլոց նիւթոց պարապարել»: Իր նշանակի՝ Մ. Կաղանկատուացին, ինչպէս ինքն ասում է, զրոյցն առել է ուրիշ հեղինակից, իսկ այդ ուրիշն է Պետրոս Քերթողը, քանի որ նրա, Մ. Կաղանկատուացու, եւ Ստ. Օրբէլեանի պատմուածքները գրեթէ բառացի նոյն են, ինչ որ նշան է, որ նրանք երկուսն էլ գրեթէ բառացի քաղել են Պետրոսի ներբողից, սակաւաթիւ փոփոխութիւններով:

Կաղանկատուացին իր վերեւում բերուած առաջաբանից յետոյ՝ այսպէս է գրում. «Գտանին զրոյցք արեւելից կողմանց [հասկանալի է՝ Հայոց աշխարհի], որք ոչ են անկեալ ի գիրս հնագիր պատմագրաց, զորս պատշաճ վարկաք մակագրել ի սոսս տողաչափութեան մերում»: Այս երկրորդ առաջաբանից երեւում է, որ զրոյցը ժողովրդական ծագում ունի եւ առաջին անգամ է գրի առնուած: Բայց գրի առնողը ոչ թէ Մ. Կաղանկատուացին է, այլ Պետրոս Քերթողը, որից առել է նա: Երկրորդ առաջաբանը եւ դրա դէմքը Պետրոսինն են: Կաղանկատուացին ուրիշ դէպքերումն էլ մեքենայօրէն արտագրում է իր աղբիւրներից, պահելով աղբիւրների դէմքը: Պետրոս Քերթողն, ուրեմն, գրի է առել Հայաստանի արեւելեան կողմերում, Սիւնիքում, մի ժողովրդական զրոյց եւ դարձրել իր մի ներբողի կամ տողաչափութեան (ասացուածի, ճառի) նիւթ: Ուրիշ խօսքով՝ նա այդ զրոյցը մշակել է քերթողաբար. այսինքն՝ նա հետեւել է իր ուսուցիչ Մովսէս Քերթողահօրը, այլեւ Մեծն Տիգրանի վէպը մշակողին («արգասաւորին ի բանս»), ինչպէս եւ Ագաթանգեղոսին ու Բուզանդին: Նրա այդ գրական երկը, ցաւօք չի յայտաբերուել, եւ մենք պիտի բաւականանանք Մ. Կաղանկատուացու եւ Ստ. Օրբէլեանի քաղուածքներով:

2. Անդոկի եւ Բաբիկի զրոյցը(3): — Սիւնեաց Անդոկը, Փառանձեմ

---

(1) Նոյնպէս եւ յաջորդ Ժ. գլխի վերնագրի մէջ. «Վասն գալոյ Բաբկայ... ի նոյն ճառիցն տեառն Պետրոսի». իսկ պատմուածքի ընթացքում (էջ 238) գրում է. «Որպէս զեկոյց մեզ ի ներբողմանն իւրում երանելին Պետրոս՝ Սիւնեաց եպիսկոպոս, Քերթողահօրն Մովսէսի աշակերտ»: Դարձեալ քիչ յետոյ՝ «Որպէս վերագոյնն ասացաք, երանելւոյն Պետրոսի՝ Սիւնեաց եպիսկոպոսի ի ներբողմանէն առաք, զոր արարն ի վեհն Բաբիկ»:

(2) Մովսէս Կաղանկատուացւոյ Պատմութիւն Աղուանից աշխարհի, Թիֆլիս, 1912, էջ 119 – 125. Բ. հատոր, Գլ. Ա.: Նոյնը Մոսկուա, 1860:

(3) Մ. Աբեղեան, Հայ ժողովրդական վէպը, «Ազգագրական Հանդէս», ԺԶ. գիրք, էջ 80 եւ հտ.: Այլեւ առանձին գրքով, էջ 124 եւ հտ.:

Թագուհու հայրը, որ Մամիկոնեան տան փեսան էր, Տիրանի եւ Արշակի վէպի մէջ դուրս է գալիս իբրեւ կարեւոր գործող անձ։ Արշակի գերութիւնից յետոյ Պարսից Շապուհն առանձնապէս աւերում է Սիւնեաց աշխարհը. «Եւ զայլ Սիւնեաց տոհմին զամենայն զայր ի չափ հասեալ կոտորեցին, եւ զկանայս սպանին եւ զամենայն մանր մանկտին ներքինիս հրամայէր առնել, եւ խաղացուցանել յերկիրն Պարսից։ Եւ առնէր զայս ամենայն վասն վրիժուցն Անդովկայ, որ եղեւ պատերազմ ընդ Ներսեհ արքայ Պարսից» (Բուզ. Գ. 58)։ Մանուէլի ժամանակ Սիւնեաց տան մնացորդներից առաջ են գալիս Բաբիկ, Սամ եւ Վաղինակ. Բաբիկը դառնում է Սիւնեաց նահապետ եւ Մանուէլի նիզակակիցն է կռիւների մէջ։ Սիւնեաց աշխարհի այս աւերման զրոյցն ահա ուրիշ ձեւով պատմուել է Սիւնիքում եւ մշակուել Պետրոս Քերթողից։

Հայոց ուրիշ նախարարների հետ միշտ Պարսից արքունի դռանն էր լինում նաեւ Անդոկը, որ ճոխ եւ փառաւոր էր հայ իշխանների մէջ։ Մի օր Շապուհ Թագաւորն ուրախութիւն անել է ուզում։ Ճաշին հրաւիրուած են պարսից բոլոր տոհմերի ազնուականները, որոնց ըստ իրենց գահի պատուում է արքան։ Եւ նա խորհրդակցելով իր մեծամեծների հետ՝ ասում հայ նախարարներին. «զՊարսից և զՊարթևաց զբնական Պահլաւիկս և զազատագունդս զազատ արանց զԱրեաց աշխարհի նախամեծար դասապատիւ քաջ գիտեմք զորպիսութիւն. բայց զԱրմենու զազատատոհմ և զնոցին նախապատիւ, զնախաղաս նախապահութիւնս ոչ կարացաք գիտել ո՛չ ի նախնեացդ մերոց հարցն հարանց Թագաւորաց և ո՛չ այլ ուստեք յամէնիմաստ մատենագրաց։ Եւ արդ՝ մի յերկուց առաջի կայ ձեզ նախարարացն Հայոց ազատ արանց կատարել զխնդիրս մերոց Արեաց աշխարհաժողով ազատազարմ կուսակալաց. ցուցանել ձեզ զնախնական դիր ըստ իւրաքանչիւրումն ըստ տանց ազատազարմ եկացն ձերոց զնախատոհմանն եւ զնախախնամ պատիւն. եւ դարձեալ մեծագոյնն ունել չքեղաշուք մեծարանս եւս քան զեւս։ Եւ եթէ ոչ կարէք ակն ի յայս Արեաց գնդի ժողովոյ ցուցանել զգիր նախագահութեան՝ զպատիւ եւ զտուն, զհող եւ զջուր եւ զստացուածս ձեր Արեաց աշխարհի ազատ արանցս շնորհեսցուք. եւ զձեզ ապաշնորհ եւ ունայնս արձակեսցուք։ Եւ ըստացուածք գիւղից եւ ագարանից ձերոց Արեաց ազատ արանցս ի ծառայութիւն լիցին»։

Հայ իշխանները խորհուրդ անելով՝ ներկայացնում են Թագաւորին Ագաթանգեղոսի գիրքը։ Նա կարդալ եւ պարսկերէն Թարգմանել է տալիս. շատ ուրախանում է, որ դրա մէջ պատմութիւնն սկսւում է իր նախնի Արտաշրից, եւ հրամայում է հայ իշխանների բարձերն յարդարել, ինչպէս այդ գրքի մէջ էր։ Տասնեւչորսերորդ բարձն է հասնում Սիւնեաց տէր Անդոկին։ «Եւ նա հպարտութեամբ խրոխտացեալ՝ ոչինչ ճաշակեաց յայնմ ուրախարար արքունական ընդունելութենէն։ Եւ զգացուցեալ սպասաւորացն արքունի՝ Թագաւորին՝ զարհնոչտութիւն խռովութեան երեւացն Անդոկայ՝ Սիւնեաց տեառն։ Եւ Շապհո Պարսից արքային ոչ ինչ փոյթ զայնմանէ լինէր»։

Այդ ժամանակ հէնց լուր է հասնում, թէ խազիրները բազմամբոխ

գնդերով անցել են Զողա դռնով, յարձակուել են Պարսից աշխարհի վրայ: «Եւ ժողով՝ անթիւ արարեալ Ճապհոյ՝ Ասորոց, Խորասանի, Խորազմոյ, եւս առեալ քաջացն Պարսից Ատրպատական նահանգին, Հայոց, Վրաց, Աղուանից եւ երկոտասան լեզուաց խուժադուժ ազգաց լերինն Կաւկասու», գնում է խազիրների դէմ: Անդոկը, սակայն, իր 1700 ձիաւորներով դաւաճանաբար մի կողմ է մնում. ապա գնում է Տիզբոն, սակաւաթիւ մարդկանցով մտնում է քաղաք, խաբէութեամբ յայտնում է, թէ իբր Ճապուհին օգնելու համար է եկել: Քաղաքացիները մեծ պատիւներ են տալիս նրան: Առաւօտեան, երբ քաղաքի դռները բացւում են, նա իր զօրքերը քաղաք է մտցնում, կողոպտում են բոլոր մեծամեծների տները, այլեւ թագաւորական տունը, առնում են բոլոր թանկագին բաները եւ բերում են Սիւնիք, Բաղաբերդ: Ապա բոլոր գաւառներից ամէն պաշարեղէն մեծ քանակութեամբ հաւաքում են այդ բերդը. մնացածը հրամայում են այրել: Եկեղեցական թանկագին անօթներն էլ ժողովում են Շաղատի եկեղեցին, որ եւ թաղում են հողով եւ կազմում մի հողաբլուր: Ժողովուրդը փախչում է զանազան կողմեր:

Ճապուհը խազիրների պատերազմը վերջացնելուց յետոյ՝ հրամայում է «եղանել ի Սիւնիս եւ գերել զխօսուն եւ զանասունն»: Գալիս են Սիւնիք, բան չեն գտնում, եկեղեցիները քանդում, այրում են: Կռւում են Բաղաբերդի դէմ, բայց բան անել չեն կարողանում: Ճապուհը մի քանի անգամ նորանոր գնդեր է ուղարկում Անդոկի վրայ, բայց պարսիկները ամէն անգամ էլ պարտւում են: Վերջապէս թագաւորն իր իշխանների խնդրով դադարեցնում է կռիւը: Նա մոխրով լիքը մի պղնձի սանդ է դնել տալիս իր պալատի դռանը, որ ով գայ՝ կոխի եւ ասի. «Սիւնեաց տէրութիւն ընդ այս մոխիր ի վայր լիցի»: Անդոկը յարմար ժամանակ գտնելով՝ անցնում է Հռոմայեցիների կողմը: Սիւնեաց երկիրը քսան եւ հինգ տարի աւեր է մնում:

Անդոկի մահից յետոյ նրա որդի Բաբիկը կարօտում է իր բնիկ աշխարհին եւ որպէսզի իր հայրենական տէրութիւնը ձեռք բերի՝ անցնում է Պարսից աշխարհը, ծառայում է բանակում, մեծ քաջութիւններ է անում: Ոչ ոք չէր ճանաչում նրան, թէ ով է: Այդ ժամանակներում, «ելեալ Հոնն ի Հոնաց Հոնադուր անուն»՝ աւարում է Պարսից աշխարհը, մարդ է ուղարկում Ճապուհ թագաւորին, թէ՝ «Զի՞ է հեղումն արեան եւ վատնումն զօրաց բազմութեան. եկ եւ մենամարտեսցուք ես եւ դու միով միակաւ»:

«Եւ վառեալ Հոնին... յիմանիւթեայ զրահին զանհնարին բարձր եւ զլայն հասակն եւ երկաթագամ եւ բեւեռապինդ սաղաւարտին զահեղակերպ գլուխն եւ զճակատն պղնձեայ եւ տախտակամած յօրինուածով ամրացուցանէր, եւ զանհեդեդ գեղարդան զբունն ի բարձրամայր փայտից, եւ զսուսերն բոցանշան եւ զարիւնահեղ յօրինէր ի յինքեան՝ ահաբեկեալ զամենայն զզօրս Մարաց եւ Պարսից եւ Արեաց աշխարհին, — որպէս զեկոյց մեզ ի ներբողմանն իւրում երանելին Պետրոս՝ Սիւնեաց եպիսկոպոս, քերթողահօրն Մովսիսի աշակերտ: — Եւ դարձեալ՝ զեկուցանեն արքայից արքային Պարսից վասն Բաբկայ թէ՝ «Գոյ այր մի ի դրան քում, որ գործ պատերազմիդ նովաւ վճարի»: Եւ արքայիցն արքայի կոչեցեալ զԲաբիկն, եւ թագաւորութեան պատուի վճիռ կնքեալ վարազագիր մատանեաւ եւ ասէ. «Եթէ վրիժուց նախանձու քինուս այսօրիկ յանգումն արասցես՝ մեծամեծ խոստմանցս առացելոցս

հասցէս»: Եւ նորա ձեռն յանձին հարեալ առ արքային առ ի կատարել զհրամանն արքունի:

«Եւ նոյն ժամայն ապաւինեալ ի վերին օգնութիւն եւ առեալ զիւրոյ զօրութեան զզէնն յօրինէր ինքեան: Եւ ճաճանչաւոր եւ մարգարտակապ զրահիւն արքունական զվայելուչն հասակ (զարդարէր), եւ վագրակերպեան սաղաւարտաւն՝ զգեղեցիկն գլուխ եւ զուսերն սեաւ պողովատիկ զէջն միջով. եւ զվահանն ոսկիակապ եւ զականակապ ի յահեակն ի յուսն ընկեցեալ: Եւ զգեղարդն՝ զսուրն քաջամուխ ի յաջ բազուկն առեալ՝ հաստաբեստեալ աշտանակէր ի սեաւն քաջ երիվար: Ախոյանայր ընդդէմ թշնամւոյն: Ցարձակէին ի միմեանս: Ի սուր եւ յառ գեղարդացն ճայթիւն որոտման ելանէր յառաւօտէ մինչեւ ցինն ժամ: Անդ զատապարտեալ լինէր անհնարին հսկայն Հոնագուր, յաղթողանայր քաջն Բաբիկ. աճապարէր ի սուրն միասայրի, որով անդէն սատակէր զմարդախոշոշ եւ զվիշապազօր գազանն»: Թագաւորը կանչում է յաղթող Բաբիկին, մեծ ուրախութեամբ ցանկանում է իր խոստումը կատարել:

Շարունակութիւնը բերենք Մ. Կաղանկատուացուց:

«Եւ նորա բան խնդրեալ ասէ. «Բարձցի սանդն պղնձի ի դիւանէ քումմէ»: Եւ սանդն էր լի մոխրով հնոցի. եւ որք գային ի տեղին յայն, կոփէին ի նմա եւ ասէին. «Սիւնեաց տէրութիւն ընդ այս մոխիր ի վայր լիցի, եւ նոցա կեանքն եւ խորհուրդն»: Եւ արքայն մեծաւ զարմացմամբ հրամայեաց բառնալ զսանդն ի տեղւոջէն: Եւ ապա խնդրէր Բաբիկ զբնական աշխարհն իւր ի նա դարձուցանել: Եւ շնորհեալ նմա արքային՝ մեծաւ պատուով առաքէ զնա յիւր աշխարհն եւ աւանդէ նմա պատիւ ընդ Բագրատունիս եւ ընդ Մամիկոնեանս համապատուիլ»:

Բաբիկը գալիս է Սիւնիք: Նա Երասխ գետի ափին, որտեղից անցել էր, շինում է մի գիւղ՝ Նակորզ (Ստ. Օրբելեան՝ Նախկորզան) անունով, «այսինքն է՝ առաջին կորզեալ ի հայրենեացն»: Իր տէրութեան առաջին տարում որսի ելնելով շրջում է իր երկիրը: Հասնելով Շաղատ, ելնում է մի բլուր, որտեղով փախչում է մի եղջերու. բարձրանում է եկեղեցարլուրը. ձիու ոտները խրւում են բլրի մէջ: Ապա փորում ու բանում են եկեղեցին:

Այս զրոյցն իր բոլոր կողմերով ունի ժողովրդական վէպի բնաւորութիւն: Կասկածելի է միայն Ագաթանգեղոսի գրքի մէջ գալը: Ժողովրդական աղբիւրի մէջ կը լինէր, անշուշտ, անորոշ կերպով մի գիրք, որ Պետրոս Քերթողը դարձրել է Ագաթանգեղոս: Եւ այս գրքի ազդեցութիւնն էլ երեւում է Բաբիկի զրոյցի մէջ (1):

Բաբիկի եւ Հոնագուրի մենամարտը, ինչպէս տեսել ենք, ունի իր բազմաթիւ նմանները: Բայց նա նման է աւելի Տրդատի եւ Գոթաց թագաւորի մենամարտին: Ինչպէս Տրդատ իր յաղթութեամբ ձեռք է բերում իր հայրենական երկիրը — Հայաստանի թագաւորութիւնը, նոյնպէս Բաբիկը՝ իր հայրենական Սիւնեաց տէրութիւնը: Բայց վէպի ընդհանուր գաղափարը դրա մէջ չէ: Դա միայն երկրորդ մասի գաղափարն է —ցանկալ բնիկ աշխարհը, «ոչ հանդուրժել արտաքոյ բնիկ տէրութեան իւրոյ փափագեալ սաստիկ կարօտութեամբ յաշխարհ իւր», որովհետեւ «չիք ումեք քաղցրագոյն

---

(1) Հմմտ. «Գոյ այր մի ի դրան քում, որ գործ պատերազմիդ նովաւ վճարի» (Ստ. Օրբել.): «Գործդ այդ նովաւ վճարի» (Մ. Կաղանկ.): «Գոյ աստ այր մի ի դրան քում, զի իրքդ այդ նովաւ վճարին» (Ագաթանգեղոս):

քան զծնողս, եւ ոչ քան զզաւակ իւր»: Ամբողջ վէպի մէջ իշխում է նախարարական տոհմերի «նախադահութեան» խնդիրը, որ շատ մեծ տեղ է բռնել Փէոդալական կենցաղի մէջ: Հպարտ սիւնի իշխանը, վիրաւորուելով, որ իր բարձը ցած աստիճանում է դրուել, ապստամբում է նոյնիսկ հզօր Շապուհ արքայից, որ իր յարձակումներով բան անել չի կարողանում նրան, մինչեւ որ վերջն անարգանքի սանդն է դնել տալիս: Ապա ապստամբի որդին իր քաջութեամբ ապացուցում է, որ Սիւնեաց տոհմն արժանի է աւելի բարձր գահի, եւ դառնում է «նախագահ» եւ «ընդ Բագրատունեաց եւ ընդ Մամիկոնէի համապատիւ»: Այս է ահա գաղափարն այդ Փէոդալական զրոյցի, որի մէջ ազնուական տէրն իր փառասիրութեան համար միայն աւերում է իր երկիրը:

Այդ գեղեցիկ զրոյցը քերթողաբար մշակել է Սիւնեաց եպիսկոպոս Պետրոսը: Ճիշտ է, բնագիրը չունենք, բայց Ստ. Օրբելեանի եւ Մ. Կաղանկատուացու քաղուածքներից բաւարար հասկացութիւն ենք կազմում նրա արուեստի մասին: Երեւում է, որ զրոյցի պատմուածքի ընթացքը նոյն ժողովրդականն է պահուած, մշակումը կատարուել է գլխաւորապէս արտայայտութեան ձեւերի նկատմամբ: Պատմուածքին տրուած է քերթողական ճոխ ոճ, ինչպէս կարելի է տեսնել բերուած հատուածներից:

3. Զենոբ Գլակ եւ Յովհան Մամիկոնեան (1):— Այս երկու անուններով կայ մի երկ՝ «Պատմութիւն Տարօնոյ»: Ըստ երեւոյթին դրանց տակ ծածկուած է միեւնոյն անձը, որ իր գրած «Պատմութեան» հին մասը վերագրել է Զենոբ Գլակ անունով մէկին, իսկ վերջին մասը՝ մի Յովհան Մամիկոնեան եպիսկոպոսի: Այդպէս վարուելու նպատակն եղել է իր յօրինած «Պատմութիւնն» ընծայել իբրեւ ժամանակակիցների գործ, ուստի եւ վաւերական ու հաւաստի:

Ասորի Զենոբ Գլակ եպիսկոպոսին, ըստ այդ «Պատմութեան», Ս. Գրիգորը Կեսարիայից վերադառնալիս հետը բերել է Հայաստան եւ Տարօնում իր հաստատած Իննակնեան կամ ս. Կարապետի վանքում առաջնորդ եւ վանահայր կարգել: Նա Ս. Գրիգորի հրամանով գրել է «Տարօնի պատմութիւնը», որի սկզբում դրել է չորս թղթերի պատճեններ, ապա երկու թղթի մէջ յօրինել Ս. Գրիգորի պատմութիւնը, սկզբից մինչեւ մեհեանների կործանումը Տարօնում, քրմերի պատերազմն ընդդէմ քրիստոնեաների, Տրդատի քաջագործութիւնները եւ այլն: Զենոբ Գլակի այս գործն առանձին պատմական արժէք չունի. որովհետեւ՝ 8-րդ դարից ոչ վաղ զանազան աղբիւրներից քաղած սարքած մի պատմութիւն է: Աղբիւրների մէջ աւելի տեղ պիտի տալ ազգային եկեղեցական յետին աւանդութիւնների եւ, որ գլխաւորն է՝ այդ աղբիւրների մէջ պիտի մտցնել նաեւ ժողովրդական աւանդութիւնները: Այսպիսի աւանդութիւններից ենք համարում Գիսանէ եւ Դեմետր

---

(1) Պատմութիւն Տարօնոյ, զոր թարգմանեաց Զենոբ Գլակ Ասորի (Զենոբայ Գլակայ Ասորւոյ եպիսկոպոսի Պատմութիւն Տարօնոյ), Վենետիկ, 1832:

Յովհաննու Մամիկոնենի եպիսկոպոսի Պատմութիւն Տարօնոյ, Վենետիկ, 1832:

*ատուածների մասին պատմածները եւ Տրդատի կռիւը Տարօնում։ Կարծում ենք, ժողովրդական ծագում ունի եւ քրմերի պատերազմը, որ անում են Գիսանէի եւ Դեմետրի ծառայողները՝ մասնակցութեամբ Աշտիշատի քրմերի։*

*Ոչ մի հիմք չկայ կարծելու, թէ Զենոբի ամբողջ պատմութիւնը Դեմետրի եւ Գիսանէի մասին սարքած է «մշակելով» եւ «կերպարանափոխելով» Ագաթանգեղոսի պատմածը Աշտիշատի Վահեվահեան մեհեանի մասին* (1) *եւ իբր թէ Զենոբը «նկարագրելով հռչակաւոր Աշտիշատը», «դիտմամբ յանդէտս է ձեւանում» Աշտիշատի աստուածների մասին եւ իբր թէ յայոնի աստուածների փոխարէն Աշտիշատում դնում է Գիսանէի եւ Դեմետրի կուռքերը։— Զենոբն Աշտիշատի մեհեանների մասին երկրորդաբար յիշատակելով՝ խօսում է միայն Դեմետրի եւ Գիսանէի մեհեանի մասին, որ կործանելով Ս. Գրիգորը՝ տեղը եկեղեցի է շինում, ս. Կարապետի նշխարքի մի մասն այստեղ դնելով* (*էջ* 33, 36 *եւ հտ.*)։ *Դա ս. Կարապետի վանքն է, Իննակեան տեղիք։ Զենոբի համար Աշտիշատի կուռքեր եւ Դեմետրի ու Գիսանէի կուռքեր շատ որոշ եւ տարբեր են, եւ երկուսն էլ յիշում է նա* (2)։

*«Պատմութեան» շարայարութիւնը վերագրուած է մի Յովհան Մամիկոնեանի, որ ապրել է իբր* 7*-րդ դարում։ Բայց դա կեղծիք է։ Այդ երեւում է գրքի «Յիշատակարանից», որի մէջ հեղինակն անում է կեղծած գրքերի համար մի սովորական գիւտի պատմութիւն։ Ապա նա ասում է, թէ իր գիրքը գրել է «ի ժամանակս թագաւորութեանն Հերակլեայ* (610–641 *թ.*)*, եւ ի մահուն Խոսրովու* (590–628 *թ.*)*, հրամանաւ Ներսէսի Հայոց կաթողիկոսի* (*կաթողիկոսացած ոչ վաղ քան* 641 *թ., վախճանած* 662 *թ.*) *եւ յիշխանութեան Մամիկոնեան Վահանայ, զոր մայրենեօք Կամսարական կոչէն»։ Այս Մամիկոնեան Վահան Կամսարականը, սակայն, մի տեղ* (*էջ* 56 *եւ հտ.*) *արդէն մեռած է եւ իր որդի Տիրանն է իշխում «յառաջ քան զգնալն Հերակլի ի պարսիկս» եւ երբ «եկանէ Հերակլ եւ սպանանէ զԽոսրով»* (590–628 *թ.*)։ *Ութ տարի յետոյ, ուրեմն* 636 *թուին, սպանւում է նոյն իսկ Վահանի որդի Տիրանը՝ Մահմեդի քեռորդի Աբդռահիմի դէմ կռուելիս։ Մի ուրիշ տեղ, սակայն* (*էջ* 56)*, «ի թուականութեանն հայոց հարիւր եւ երեսուն»* (130+551=681 *թուին*) *դեռ իշխում է նոյն Վահան Կամսարականը՝ Ներսէս կաթողիկոսի հետ, որն այդ ժամանակ մեռած էր։ Այսպէս «իր ապրած» ժամանակի համար չփոթ տեղեկութիւն ունի գրողը, եւ շատ պարզ է, որ նա կարող է ապրած լինել ամենավաղը,* 8*-րդ դարի սկիզբներում։ Այդ երեւում է եւ նրա գրքի նիւթից։*

*Դա իր գեղջուկ լեզուով, պարզ ու հասարակ ոճով եւ բովանդակութեամբ իսկապէս ժողովրդական զրոյցների մի ժողովածու է, որ իրական պատմութեան հետ գործ չունի. եւ ընդհակառակն՝ ունի ժողովրդական զրոյցների ամենայն յատկութիւն։ Միամիտ ընթերցողն էլ դժուար թէ հա-*

---

(1) Գր. Խալաթեանց, Զենոբ Գլակ, Վիեննա, 1893, էջ 55 եւ հտն.։

(2) Մանրամասնութիւններ տես՝ Մ. Աբեղեանի «Հայ ժողովրդական վէպը», «Ազգագրական Հանդէս», ԺԶ. գիրք, 1907, էջ 84 եւ հտն. «Յովհան Մամիկոնեան»։ Այլեւ առանձին գրքով, էջ 128 եւ հտն.։

ւատայ այդ պատմուածքների եղելութեանը․ Նոյն ինքն հեղինակն այդ զգացել է, որ վերջի «Ցիշատակարանի» մէջ գրել է․ «Աղաչեմ զմանկունս եկեղեցւոյ Աստուծոյ, զի յորժամ դշարադրութիւնս զայս ընդօրինակէք, մի ինչ թուեսցի ծաղր ումեք, այլ եւ զիմ պատճեանն անպակաս եւ լի գրով դրօշմեսջիք դհետ գրելեացդ»։

Յովհան Մամիկոնեանի «Պատմութեան» մէջ սկզբում գրուած է ս. Կարապետի վանքի վանահայրերի շարակարգութիւնը՝ սկսած Զենոբից՝ սակաւաթիւ տեղեկութիւններով։ Այս պատմուած է մի եկեղեցական գեղեցիկ զրոյց, թէ կանանց արգելուած է եղել մտնել ս. Կարապետի վանքի եկեղեցին եւ համբուրել այդ սրբի գերեզմանը․ որովհետեւ ս. Կարապետի դըլխատման պատճառը մի կին է եղել։ Բայց Արծրունի Մարիամ տիկինը վարւում է հակառակ այդ արգելքին եւ վերադարձի ճանապարհին պատժւում է սպանուելով յանկարծ։ Վերջը մանրամասն վիպած է «Պատերազմ Տարօնոյ»։ Այս ամբողջ երկը, ե՛ւ Զենոբ Գլակի, ե՛ւ Յովհան Մամիկոնեանի մասերը, յօրինուած է Տարօնն ու Մամիկոնեաններին գովերգելու եւ առանձնապէս ս. Կարապետի վանքի փառքը բարձրացնելու համար։

Տեսնենք Զենոբ Գլակի «Պատմութեան» մէջ եղած ժողովրդական զըրոյցները։

4․ Դեմետր եւ Գիսանէ=Մամիկ եւ Կոնակ։— Դեմետրն եւ Գիսանէն ցեղով հնդիկ իշխաններ էին եւ եղբայրներ։ Նրանք դաւադրութիւն են սարքում իրենց արքայի դէմ, որն իմանալով այդ՝ զօրք է ուղարկում նրանց սպանելու կամ երկրից հալածելու։ Նրանք փախչում, ապաստանում են Հայոց Վաղարշ թագաւորի մօտ, որ եւ նրանց տալիս է «զերկիրն Տարօնոյ իշխանութեամբ»։ Այստեղ նրանք շինում են Վիշապ քաղաքը, Աշտիշատում էլ կանգնում են այնտեղի կուռքերը։ Տասնուհինգ տարի յետոյ թագաւորը սպանում է այդ երկու եղբօրը, բայց իշխանութիւնը տալիս է նրանց երեք որդիներին, որոնք շինում են Կուառս, Մեղտի եւ Հոռեան աւաններն իրենց անուններով կոչելով դրանք։— Այս պատմութեան մէջ պարզ երեւում է Մամիկոնեան նախնիքների՝ Մամ-Կոնի (Մամիկ-Կոնակի) զրոյցի մի մթնացած արձագանգ յետին դարերի։

Ճիշտ է, այստեղ անունները տարբեր են, բայց այդ նշանակութիւնն չունի։ Վիպական զրոյցների մէջ «կապն անունի եւ մոտիւի միջեւ շատ թոյլ է. անունները յաճախ փոխւում են, մոտիւներն աւելի կայուն են»։ Անունների այդպիսի փոփոխութիւն տեսնում ենք եւ մեր նոր վէպի մէջ։ Մամիկոնեանների ծագումն ըստ Բուզանդի, Խորենացու եւ Սեբէոսի՝ չինական է, բայց այստեղ երկու եղբայրները Հնդկաստանից են։ Երկու դէպքում էլ այդ պէտք է առնուի ոչ իսկական իմաստով։ Հնդկաստանն ու Չինաստանն իբրեւ արեւելեան հեռաւոր երկրներ միշտ իրար տեղ դուրս են գալիս մեր հեքիաթների մէջ։ Մեր նոր վէպի մէջ հէնց, օրինակ, երկու եղբայրները՝ Սանասար եւ Բաղդասար (այլեւ Աբամելիք, Ասլիմելիք) կա՛մ մի կռապաշտ թագաւորի որդիքն են, կա՛մ Բաղդադու խալիֆայի, կա՛մ Հնդկաց Մելիքի որդիքը եւ կոչւում են նաեւ Ապըրլ Քերիմ եւ Սինամ-Քերիմ։ Թէ Զենոբի պատմածը Մամիկոնեան նախնիների մասին է, երեւում է նրանից, որ նա Տարօնոյ երկիրն այս երկու եղբօր սերունդների կալուած է դնում իշխանութեամբ,

միաժամանակ եւ կոչում է «երկիրն Մամիկոնէից», «Մամիկոնէից տուն» (էջ 8, 9, 13, 15, 37)։

Կուառ, Մեղտէս եւ Հոռեան եղբայրները, — շարունակում է այնուհետեւ Զենոբը, — ելնում են Քարքէ լեռը եւ այնտեղ երկու կուռք են կանգնում, մէկը Գիսանէի անունով, միւսը՝ Դեմետրի, եւ նրանց սպասաւորութեան են տալիս իրենց ազգը։ «Գիսանէս զի գիսաւոր էր, եւ վասն այնորիկ նորա պաշտօնեայքն գէսս էին թողեալ»։ «Այլ յոյժ զարմանալի էր տեսիլ նոցա. քանզի սեւք էին եւ գիսաւորք եւ զազրատեսակք, զի ցեղով ի Հնդկաց էին»։ Քրիստոնեայ դառնալուց յետոյ էլ, — աւելացնում է Զենոբ, — որպէսզի իրենց հին հաւատը յիշեն՝ «հնարեցան ծամ միայն թողուլ ի գլուխ մանկանցն»։ Դեմետրի ու Գիսանէի այդ հեթանոսական սրբավայրում շինուած է քրիստոնէութեան ժամանակ ս. Կարապետի վանքը։ «Գիսանէ» սկզբնապէս հաւանօրէն եղել է հին Դեմետր կամ Սանտարամետ աստուածուհու մականունը, որ առասպելաբանութեան մթնած դարերում ըմբռնուած է իբրեւ ջոկ անձ եւ աստուածութիւն։

Ի՞նչ են այս անունները։

Գիսանէ, Գիսանէս, անպայման «գէս», «գիսան» բառերից է, միայն յունական վերջաւորութիւն տուած, որպէսզի անձի անուն երեւան։ Նոյն ինքը Զենոբն այդ անունը կապում է «գէս» բառի հետ։ «Գիսանեայ տեղիք», «յիննակնեան տեղիքն Գիսանեայ կռոցն» (էջ 15 եւ հտ. 32, 36) Քարքէ սարի վրայ է, ուր եւ ս. Կարապետն է։ Արդ, մինչեւ մեր օրերն եւս այդ լեռը, որի վրայ շինուած է ս. Կարապետը, կոչւում է Մշոյ ծամ, որ նոյն է «գէս»։ Պարզ է, որ «տեղիք Գիսանեայ» լեռան անունն է, թերեւս պաշտելի լեռան։ Իսկ Դեմետր անունը պարզաբար յունական դիցուհու, մայր երկիր Դեմետրի անունն է, որ երկրագործութեան, մշակութեան աստուածուհի է, եւ վիշապ լծած կառք է նստում։ Սրա դուստր Պերսեփոնէն, որի պաշտամունքը նոյնն է, ինչ որ իր մօրը, կին է Հադէսի, որ ստորերկրայքի կամ Սանդարամետքի աստուածն է, միանգամայն նշանակում է եւ մահ։ Ինքը Դեմետր աստուածուհին հայերի մէջ թարգմանուած է Սանդարապետ, Սանդարամետապետ կամ Սանդարամետ (1)։ Խորենացու մէջ կայ «խնդրել հրաման պատասխանւոյ ի սանդարամետապետէն (կամ Սանդարամետէն) Պրոզէփաղայ», ուր այս բառը գործածուած է Եգիպտացոց Սերապիս աստուծու համար, որ դժոխքի, ստորերկրեայքի աստուածն էր, եւ որին պատկերացնում էին օձերով շրջապատուած։ «Սանդարամետ» բառը բաւական գործածական է եւ նշանակում է՝ երկիր, խորք երկրի, դժոխք. գործ է ածւում եւ «սանդարամետք անդնդոց»։ Արդ Իննակնեան տեղիքը, ուր Գեսանէ-Դեմետրի կուռքերն են եղել, կոչւում է «դրունք դժոխոց», «դուռք մահու»։ «Զոր օրինակ ընդ դրունս քաղաքի զօրք բազում մտանեն, նոյնպէս եւ այս տեղիս դուռն էր դիւաց. զի այնչափ էին դեւքն ի տեղւոջն Գիսանէ, որչափ ի սանդարամետս անդնդոց» (էջ 8, 32)։ Այս ի նկատի ունենալով, ինչպէս եւ այն, որ մեր Դեմետրի հետ եւս կապուած գտնում ենք օձ ու վիշապ, այն, որ նա շինում է Օձ կամ Վիշապ քաղաքը, — կարծում ենք, որ Իննակնեան տեղերում եղել է Սանդարամետ-Դեմետր աստուածութեան պաշտամունքը, եւ որ այդ տեղը համարուել է

(1) Տես՝ Նոր Բառգիրք Հայկազեան լեզուի, ուր բերած է վկայութիւն ճառէ «Կոչումն ընծայութեան սրբոյն Կիւրղի Երուսաղեմացւոյ» թարգմանութիւնից։

Սանդարամետի դուռ։ Չպէտք է մոռանալ, որ մեր հին աստուածները, ոչ միայն մատենագիրների, այլեւ հէնց ժողովրդի մէջ յունական նոյն կամ մօտիկ աստուածների անուններով են կոչուել։ Այսպէս եւ Սանդարամետապետ կամ Սանդարապետ անուան տեղ գործ է ածուել եւ Դեմետր։ Իսկ Գիսանէ, Գիսանեայ անունը, կարծում ենք, Դեմետրի մի մակդիր եղած պիտի լինի։ Դեմետրի, միաժամանակ Վահագն աստուծու յաջորդ ս. Կարապետն եւս իբրեւ «գիսաւոր» է երեւում։ Այդ մականունը յետոյ ըմբռնուել է իբրեւ Իննակնեան տեղի կամ Մշոյ Ծամի անուն, եւ վերջը իբրեւ առանձին անձնաւորութիւն եւ եղբայր Դեմետրի։

*Այս հին աստուածութեան կամ աստուածութիւնների անունները փոխանակել են Մամիկոնեան նախնիների անուններին։ Երկու տարբեր առասպելներ շփոթուել են միմեանց հետ, եւ Գիսանեայ—Դեմետրի անունով պատմուել է Մամ—Կոնի զրոյցը։*

5. Հիւսիսային ազգերի դէմ կռիւ։— *Հին վէպից Զենոբի մէջ գտնում ենք եւ Տրդատի կռիւը հիւսիսային ազգերի դէմ, որը, սակայն, կրած է գրական ազդեցութիւն։*

Դա նոյն կռիւն է, որ Խորենացին (Բ. 82, 85) Աղուանքում է դնում։ Զենոբի մէջ այդ կռիւը լինում է Վրաստանում, ուր կռւում են միայն Տրդատի զօրքերը, եւ Տարօնում։ Այստեղ կռիւ վարողն է ինքը Տրդատը Հռոմից վերադառնալուց յետոյ։ Բուզանդի մէջ Տարօնում հիւսիսային ազգերի դէմ մի կռիւ կայ յիշուած՝ միայն Տրդատի որդի Խոսրովի օրով։ Սանեսանի զօրքերը տարածւում են ամբողջ երկիրը, եւ նրանց մի մասը բանակ է դնում ի «լերինն որ կոչի Ցլու գլուխ»։ Վաչէ զօրավարը, որ այդ ժամանակ գնացել էր «զերկայն ճանապարհ ի կողմանս Յունաց», վերադառնում, գալիս, յարձակւում է հիւսիսականների վրայ եւ ամէնքին կոտորում։ Այս կռուի տեղը, Ցլու գլուխ, որ Թագաւորը բաշխում է Վաչէին իբրեւ քաջութեան պարգեւ (Բուզ. Գ. 7, 8), նոյն է, ինչ որ ուրիշ տեղ (Գ. 14) յիշուած Ցուլ լեռը, որ է Տարօնի Տաւրոս լեռը։ Կը նշանակէ՝ Բուզանդի մէջ հիւսիսականների դէմ կռիւը կատարւում է Տարօնում, Յունաստանի (Հռոմի) հեռաւոր ճանապարհից դարձող Վաչէի ձեռով, իսկ Խորենացու եւ Զենոբի մէջ նոյն կռիւը նոյն հանգամանքներով պատմւում է Տրդատի համար։ Ըստ Խորենացու՝ կռիւը լինում է Աղուանքում, իսկ ըստ Զենոբի՝ Տարօնում։ Դրանք ժողովրդական վէպի նոյն միջադէպի արձագանգներն են՝ տարբեր ձեւերով պատմուած։ Զենոբի մէջ գտնում ենք նոյնիսկ հին վէպի մի գիծ այս կռուի մէջ, այն է՝ Աղձնեաց իշխանի դաւաճանելն իր Թագաւորին եւ պատժուելը։

*Տրդատ Թագաւորը ճանապարհ է ընկնում «գնալ ի դուռն կայսեր վասն գնելոյ դաշինս խաղաղութեան ի միջի իւրեանց»։ Նա գալիս, հասնում է Ապահունիք գաւառի Մանծկերտ քաղաքագեղը։ Այդ ժամանակները «արքայն հիւսիսոյ» զօրքով յարձակուել էր Վրաց իշխանի վրայ, նրան փախցրել մինչեւ Կարնոյ քաղաքը, իսկ նրա երկիրը գերեվարութեան մատնել։ Վրաց իշխանը Տրդատից օգնութիւն է խնդրում։ Նա Ապահունի իշխանի ձեռով երեսուն հազար մարդով օգնում է վրացիներին։ Հայ զօրքերը գնում են Վրաստան, մի ամիս մնալով այնտեղ, գերիներին ետ են դարձնում, երեք իշխան եւ չորս հարիւր մարդ բռնում, բերում են Թագաւորի մօտ։ Սա հրամայում է գերիներին դնել Ողականում եւ ինքը գնում է Հռոմ։*

*Հայ զօրքերը Վրաստանից վերադառնալու ժամանակ՝ այնտեղ կողմնապահ էին Թողել Աղձնիքի իշխանին չորս հազար մարդով։ Բայց սա կա—*

*չառում է Հիւսիսի թագաւորից եւ նրան բերում է Հայաստանի վրայ: Մինչ այդ՝ Տրդատը վերադառնում է եւ անտեղեակ լինելով իրերի դրութեանը, պաշարւում է Կուասում: Հիւսիսականների թագաւորի նպատակն էր բռնել Տրդատին. «քանզի Տրդատ բազում գաւառս եւ քաղաքս էր զնոցա քանդեալ եւ վաթսուն հազար արս ի գերութիւն իջուցեալ ի Դուին»: Բայց Տրդատն առանց շփոթուելու՝ դասաւորում է իր զօրքերը եւ առաւօտեան իրեն պաշարողներին, վեց հազար հոգու, «որպէս ի թակարդ արկեալ, սուր ի վերայ եդեալ կոտորեցին, եւ անուանեցաւ տեղին այն Թակարդ»: Կոտորում են եւ գիւղի վրայ յարձակուողներին:*

Իսկ թագաւորն Հիւսիսոյ առեալ զզօրսն իւր,
Գնաց ի Հաշտենից տափարակն:
Եւ առաքեաց թուղթ առ Տրդատ,
Թէ՝ «Եկ ի վաղիւն տացուք պատերազմ,
Եւ եղիցի օր յաղթենականն ի մէջ երկոցունցս.
Կամ տացես զիշխանն իմ յիս,
Եւ հարկս հնգետասան տարւոյ.
Ապա թէ ոչ՝ քանդեմ զերկիրդ քո,
Սրով եւ գերութեամբ եւ մահուամբ,
Որպէս զի ծանիցես զդէմս խոզութեան քո,
Որ եղեր առաջի զօրաց քոց:
Արդ ըստ այդմ արա զպատասխանիսդ»:

*Հայոց թագաւորը պատասխան չի տալիս, այլ իր զօրքերով գնում է հիւսիսականների վրայ: Մարտն սկսւում է:*

Ձայն բարձեալ արքայն Հիւսիսոյ ասէր.
«Արքա՛յ Հայոց, ի՛նձ մատիր»:
Եւ իբրեւ եկին ընդդէմ իրերաց,
Սկսան իբրեւ զմրնաւորս քարահատաց,
Կամ իբրեւ զուռնաւորս որք պատեն զշանթս հրայրեացս,
Մինն առնոյր եւ միւսն իջուցանէր:
Քանզի արքայն Հիւսիսոյ մեծահասակ էր
Եւ կորովի իբրեւ զՏրդատ:
Եւ բազում կոփեալ միմեանց, ոչինչ եղեւ:
Բայց սկսաւ պակասիլ արքայն Հիւսիսոյ.
Եւ գիտացեալ եթէ՝ վնասելոց եմ,
Եւ քանզի նօպանաւոր էր՝
Անապարեաց եւ ձգեաց զնօպանն,
Եւ արգել զաջ թեկն ընդ պարանոցն.
Եւ փութանակի դարձաւ եւ կղթեաց զնօպանն,
Մինչ զի եւ չկարաց ընաւ շարժել զձեռն Տրդատ:
Եւ մտրմնկեալ զկուշտ երիվարին՝
Զկնի Գեդռեհոնին այնպէս փութացեալ,

Մինչ զի ոչ ետ քայլել նմա առաջի իւր տասն քայլ:
Իբրեւ էհաս նմա, ասէ.
«Կատաղի՛ շուն, խառանեցիր զկնի քո ջլացդ»:

*Տրդատն սպանում է հիւսիսականների թագաւոր Գեղաեհոնին: Եւ այնուհետեւ միպական մանրամասնութեամբ պատմում է, թէ ինչպէս այս եւ այն իշխանները մարտնչում ու յաղթում են հիւսիսականներին: Նրանց մնացորդները միայն հազիւ հասնում են իրենց երկիրը: Վերջը բռնում են Աղձնիքի իշխանին եւ բերում են թագաւորի առաջ: Նա ուզում է «ծայրատել զոտս եւ զձեռս նորա», բայց Ս. Գրիգորն արգելք է լինում, եւ միայն «ի պատուոյն մերժել հրամայեաց, և վարել ի գաւառէն Հայոց» (էջ 45 և հտն.):*

## ՏԱՐՕՆԻ ՊԱՏԵՐԱԶՄԸ

1. Բովանդակութիւնը: — *Յովհան Մամիկոնեանի մասի մէջ հին վէպից մնում է Մուշեղի վրայը, որ ընդարձակուած է Գայլ Վահանի եւ յաջորդների վրայներով իբրեւ «Պատերազմ Տարօնոյ»: Բովանդակութիւնը հետեւեալն է: Նիխորճէսը սպանում է Պարսից Որմիզդ թագաւորին. սրա որդին՝ Զամր Խոսրովը փախչում է Յունական երկիրը եւ Մօրիկ կայսրից զօրք առնելով՝ գալիս է նուաճելու իր երկիրը: Մշոյ ու Խութայ տէր և Տարօնոյ ու Սասունի իշխան Մամիկոնեան Մուշեղին Դուինում Հայոց մարզպան է կարգում Խոսրովը և ինքը յունական զօրքերով գնում դէպի Բահլ Շահաստան: Յոյները հպարտութեամբ չեն ուզում Հայոց զօրքի հետ մէկտեղ մնալ, այլ մի օրուայ ճանապարհ հեռու են բանակ դնում: Այն ժամանակ Նիխորճէս թագաւորը ութսուն հազար զօրքով յարձակւում է Մուշեղի երեսուն հազար զօրքի վրայ: Մուշեղը քաջալերելով իր զօրքին և ս. Կարապետին օգնական կանչելով՝ յաղթում Նիխորճէսին եւ նրա գլուխը մուրճով ջարդելուց յետոյ՝ կըտրում, ձգում իր մաղախը: Կոտորում են նրա բանակի մարդկանց, միայն քառասուն եւ ութ իշխան ու հազար մարդ կենդանի բռնում են:*

*Խոսրովն ուրախ է եւ ուզում է պարգեւ տալ հայերին, բայց յոյներն ամօթով մնալով, որ յաղթութիւնը հայերն են տարել, նախանձում են Մուշեղին, եւ Մօրիկն ուղարկում է Խոսրովին ասելու. «Գիտե՞ս դու դայդ, որ արքայի մահու սպառնայ Մուշեղ»: Խոսրովը մտածում է դարան մահու գործել Մուշեղին, կանչելով նրան իր մօտ. բայց Խոսրովի քոյրն իմանալով եղբօր նենգութիւնը՝ իմաց է տալիս Մուշեղին, եւ սա քառասուն իշխանի հետ զինուած ու ձի նստած գալիս է թագաւորի վրանի դուռը, «եւ ամենայն խըստութեամբ տուեալ պատասխանի, եւ ի լոյս ածեալ զմահու դարանն, թքակոծեցին զնա... Իբրեւ լուաւ զայն թագաւորն՝ երկեաւ, քանզի մանուկ էր: Իսկ իշխանն Մուշեղ արձակեաց առ Յունաց զօրավարն եւ ասէ. «Կամեցայք դուք սպանանել զիս նենգութեամբ. արդ մի՛ զարթուցանէք զառիւծ՝ որ ի քուն է եւ մի՛ զգայլ՝ որ զիւր բարսն մոռացեալ է. ապա թէ ոչ, այն որ զութսուն հազարսն յաղթահարեաց, կարող է եւ զեւթանասուն հազարսն սատա-*

կել: Եւ ինքն թողեալ զզօրսն ի Դուին, ի բաց եկաց ի մարզպանութենէն, եւ առեալ զզօրս իւր, որ ի Մամիկոնեան տանէն էին, եկն ի գաւառ իւր»:

Մինչեւ այստեղ Մուշեղի այս վէպը միեւնոյն զրոյցն է, ինչ որ Սեբէոսի պատմածը, միայն աւելի մանրամասն է, աւելի ժողովրդական վիպական ձեւով: Նոյնպիսի ժողովրդա-վիպական բնաւորութիւն ունի եւ շարունակութիւնը, որ չկայ Սեբէոսի մէջ:

Սպանւում է Մօրիկը, եւ Խոսրովը գնում է նրա մահուան վրէժն առնելու: Նա մարդ է ուղարկում Մուշեղին, որ իր հետ գայ. բայց Մուշեղը պատասխան չի տալիս: Խոսրովը վերադարձին իր քեռորդի Միհրանին երեսուն հազար զօրքով ուղարկում է Տարօն Մուշեղի վրայ՝ հրամայելով բռնել նրան եւ Պարսկաստան տանել, եւ «զտեղիսն, յորս նա զհաւատոն ունէր, կործանել եւ զկրօնաւորսն սպանանել»: Ս. Կարապետի կրօնաւորները փախչում են Ողական, ուր ամրանում է եւ Մուշեղը: Պարսիկները գալիս են եօթն խոտաճարակներին կոտորում: Մուշեղ իշխանը, որ հարիւր քսան տարեկան ծերունի է, այդ լսելով «զաւուրս երիս իբրեւ զմեռեալս դնէր անխօս»: Զօրքը նրան խնդրում է Միհրանին ճանապարհ դնել, եւ նա կանչում է իւր մօտ Վահանին, որին Տարօնի իշխան էր կարգել, երբ ինքը Դուինում Հայոց մարզպան էր, եւ նրան ուղարկում է Միհրանի դէմ:

Վահանը, որ նոյնպէս ծեր է, ութսունութը տարեկան, խորամանկութեամբ դարաններ դնելով, կոտորում է Միհրանի բոլոր զօրքերին Օձ քաղաքում եւ ուրիշ տեղերում, սպանում է Միհրանին եւ քառասուն հոգի միայն զրուցատար թողնում Պարսից թագաւորի համար: Իր երկրում խաղաղութեամբ մեռնում է Մուշեղը, եւ նրա տեղը Մամիկոնեան տան իշխան նստում է Վահանը:

Խոսրովը երկրորդ անգամ Վահանի վրայ ուղարկում է Միհրանի հօրեղբայր Վախտանգին երեսուն հազար զօրքով: Վահանից հարկ եւ հնազանդութիւն են պահանջում, բայց նա մերժում է, եւ դարձեալ յաղթում են պարսիկներին: Նոյն տարին մեռնում է Վահանը, եւ տեղն անցնում իր որդին՝ Սմբատը, որ կռուի մէջ օգնական էր իր հօրը:

Միւս տարին Վախտանգը դարձեալ հաւաքում է քսան հազար զօրք եւ գալիս Սմբատի վրայ, հարկ եւ հնազանդութիւն ուզելու: Բայց Սմբատը յաղթում է Վախտանգին եւ մինչեւ անգամ նրա կնոջն ու որդուն գերում է եւ Այծից բերդը դնում. Վախտանգի եղբայրը՝ Սուրէն՝ ինն հազար մարդով գալիս է գնելու իր եղբօր կնոջն ու որդուն, բայց սրան էլ Սմբատը ճանապարհ է դնում: Խոսրովը դարձեալ ուղարկում է Տիգրան անունով մէկին քսան հազարով, որ պահանջում է Մուշեղի եւ Գայլ Վահանի ոսկորները: Սմբատը սրան էլ յաղթում է եւ ապա մեռնում է, եւ տեղն անցնում որդին՝ Վահան Կամսարական, որ հօր օգնականն էր նրա կռիւների մէջ:

Տասնութ տարի յետոյ Խոսրովը յիսուն հազար զօրք է ուղարկում Տարօն Վարդուհրի անուն մէկի ձեռով. բայց Վահան Կամսարականն իր որդի Տիրանի հետ յաղթում է պարսիկներին եւ վերջանում է Տարօնի պատերազմը. «Վճար եղեւ պատերազմին Տարօնոյ»:

Յովհան Մամիկոնեանն այս բոլոր պատերազմներն, ամենայն մանրամասնութիւններով, պատմում է իբրեւ Տարօնում կատարուած իրողութիւններ, որոնց մասին ոչ մի յիշատակութիւն չի անում Սեբէոս պատմագիրը:

2. Ժողովրդականի ծագումն ու խմբագրումը: — Այս վէպն իսկական ժողովրդական մի պատմուածք է, իսկապէս պատմուածքներ, որոնք գրեթէ ամբողջապէս աւանդական բանահիւսութիւնից են ծագում, ուստի եւ ունին իրենց մէջ ժողովրդական վիպական ոճի յատկութիւններն ու մոտիւները:

Ժողովրդական զրոյցն ու երգն իբրեւ աղբիւր յիշւում է մութը կերպով պատմուածքներից մէկի համար: Դա է Սմբատի կռիւը Պարսիկ Սուրէնի զօրքերի հետ (էջ 37–42): Սմբատի նիզակակիցն է այդ մարտի մէջ Վարազ Պալունի իշխանը, «դի այնչափ հզօր էր, որ մարդոյն քան զմինն այլ ոչ կրկնէր»: Երկուսն էլ քաջ մարտնչում են: Կռուից յետոյ Սմբատը հրամայում է պարսից դիակներն իրար վրայ կուտել մարտի տեղում բլրի վրայ, որ եւ Վարազի արած կոտորածի համար կոչւում է Վարազաբլուր: Ապա իրենք գալիս իջեւանում են Կենաց Վայրք կոչուած գիւղում: Այդ ժամանակ գիւղացիները երգ ու պարով դիմաւորում են յաղթական մարտիկներին:

Եւ իբրեւ մտին ի գիւղն,
Ընդ առաջ եղեն նոցա պարաւորքն,
Եւ երգս առեալ բազում ինչ իրաց՝ գովէին:
Որ եւ յետոյ ի հոտել դիականցն եւ յորդնել,
Շէր հանեալ ասէին.
«Կերան զազանք զմարմինս դիականցն Վարազայ,
Եւ գիրացան:
Կուզ կերեալ՝ ուռաւ որպէս զարջ.
Եւ աղուէս հպարտ եղեւ քան զառեւծ.
Գայլ, քանզի շատակեր էր, պայթեաց,
Եւ արջ, քանզի զոր ուտէն՝ չմնայ առ ինքն,
Ի սովոյ մեռաւ:
Անգեղք, քանզի ագահք էին,
Նստան եւ այլ ոչ կարացին վերանալ.
Մկունք, քանզի շատ կրեցին ի ծակսն,
Ոտքն մաշեցան»:
Զայս ամենայն ասացին,
Եւ ի դէպ էր վասն իրացն.
Որ եւ կոչեցաւ անուն գեղջն Շիրակաւանք:

Էջ 42.

Մի կողմ թողնելով Վարդ Պատրիկի կնոջ՝ Մարիամի մասին պատմածը եւ վերջին երկու հատուածները՝ Ծիծառնայ խաչի եւ Տիրանի մասին, որոնք առանձին զրոյցներ են, մնացածն, ինչ որ պատմում է Յովհան Մամիկոնեանն իբրեւ «Տարօնի պատերազմ», կամ երկրորդ հին վէպի մնացորդներն են, կամ տեղական զրոյցներ, որոնք խմբուած են եղել «Պար-

սից պատերազմի» շուրջը եւ կապուած են եղել այդ պատերազմը վարող հերոսներից որեւէ մէկի անուան հետ: Անշուշտ, որոշ տեղերում երեւում են նաեւ խմբագրողի յաւելումները, ինչպէս են՝ խոտաճարակների աղօթքը (էջ 16), գլուխների վերջում (էջ 28, 29, 43, 49) տրուած տեղեկութիւնները ս. Կարապետի վանքի մասին, վանահայրերի յաջորդութիւնը, այլեւ շատ տեղերում աւելացրած կրօնական բովանդակութեամբ կտորներ: Բայց ամբողջն ընդհանրապէս ժողովրդական է:

Առանձնապէս աչքի է ընկնում այն, որ Տարօնի բնակիչների մէջ եղել են բազմաթիւ զրոյցներ, որոնցով բացատրուած են եղել տեղանունները: Այդ ժողովրդական ստուգաբանութեան զրոյցներն եւս յարած են եղել «Պարսից պատերազմին»: Եւ այդ բնական է: Այդ միեւնոյնը գտնում ենք եւ մեր նոր վէպի մէջ: Դաւթին մահացու վէրք է հասցնում իր զարմի մի աղջիկ. Դաւիթը բռնում է նրան.

Զոռ դրեց վըր մէկ ոտվուն,
Ու քաշեց *ճլոտեց*, քալեց սարու տկու գեղ.
Ու զըդ գեղի անուն դրեց *Ճլոտխ-Ճապկխ*:
Ու էդ գեղ լէ յար հըմկա՝
Ցանդ է Չըղուրայ բերան,
Ու անուն լէ՝ *Ճապկխ* (1):

Այդպիսի զրոյցները, սակայն, «Տարօնի պատերազմի» մէջ այնքան շատ են, մանաւանդ վէպի վերջի մասում, եւ մի քանիսն այնպէս անկապ են մէջ բերուած, որ դժուար է կարծել, թէ ժողովրդի մէջ հէնց այդպէս պատմուած լինէին բոլորը (2): Որդէցորդի յաջորդութիւնը (Մուշեղ, Գայլ Վահան, Սմբատ, Վահան Կամսարական եւ Տիրան), ինչպէս տեսել ենք, յատուկ է մեր հին ու նոր աւանդական վէպերին: Բայց ընդհանուր խմբագրութիւնը, երեւում է, կատարուած է Յովհան Մամիկոնեանի ձեռով, այն էլ բաւական պարզամիտ կերպով, առանց ուշ դարձնելու մշակութեանը: Ուստի կան մէջը նաեւ անհնար բաներ: Այսպէս, օրինակ, Սմբատը պատանի է (էջ 33) եւ կարճ ժամանակից յետոյ նա արդէն ծերունի է (էջ 41, 47): Այդ տարբերութիւնը ծագում է, անշուշտ, տարբեր պատումներից կամ ձեռագրական աղճատումներից:

3. Պատմականը:— Կարելի չէ ասել, թէ այդ բոլոր զրոյցները միայն Մամիկոնեանների վրայ են պատմուած եղել: Գայլ Վահանի թոռ Վահան Կամսարականը հաւաստեաւ մասամբ նոյն Գայլ Վահանն է, կրկին պատմուած: Բայց նրա Կամսարական մականունը ցոյց է տալիս, որ նա Մամի-

(1) Սրուանձտեանց Գ., Գրոց ու Բրոց. Կ. Պոլիս, 1874 թ., էջ 179:

(2) Չհաշուած Պորպէս. Քարհար, Գրգուռ անունների համար գրածները, այդտեղ գտնում ենք եւ հետեւեալ անունների ու դրանց զրոյցները· Առինչ (էջ 32), Մախու ագարակ, Թիլ (էջ 34). Մախու բլուր (36). Արեմածոր. Գողոց աղբիւր (39). Ժողովս (40), Թմբրածոր, Վարագաբլուր, Շիրականիք (42). Հոնընկէ (47), Մոզուց գերեզման (45), Հանդիսեանք (47), Յետսանկ (48), Վայր Անկնիս. Պաղակ. Փանդիկ (52), Հայկերտ (53):

կոնեան չէ եղել, ինչքան էլ խմբագրողը բացատրէր, թէ նա «մայրենեօք» այդպէս է կոչուել: Վահանի որդի Սմբատի անունը յիշեցնում է վիպական Սմբատ Բագրատունուն: Նրա վրայ էլ պատմուած կայ (էջ 44) Սմբատ Բագրատունու Մեհրուժանին պսակելու պատմութեան նման մի բան: Պարսից զօրավարը մարդ է ուղարկում Սմբատին՝ խոստանալով մեծութիւն, միայն թէ նա Մուշեղի եւ Գայլ Վահանի ոսկորները տայ իրեն: «Իսկ նորա կալեալ զպատգամաւորսն, հրայոյզ շամփուր մի երկաթի, եւ եդ պսակ շուրջ զճակատովն եւ ասէ. Կաց տեսանեմ, թէ վասն քո զինչ պարգեւս գայցէ ինձ, որ ես քեզ պսակ եդի»: Այս Սմբատի անունը հին վէպի Սմբատի մի արձագանգ է լոկ, ինչպէս եւ Մուշեղը հին վէպի Մուշեղն է:

Իսկ ո՞ր պատմական անձի յիշողութիւնն են Գայլ Վահանն եւ Վահան Կամսարականը, որոնց վրայ գալիս են պարսից զօրավարները, եւ որոնց տեղ կը սպասէինք, որ հին վէպի Մանուէլ Մամիկոնեանը դուրս գար: — Գայլ Վահանի անունը, կարծում ենք, փոխանակած է Մանուէլին՝ 5-րդ դարու հերոս Վահան Մամիկոնեանի պարսիկների դէմ վարած կռիւների ազդեցութեան տակ: Իսկ Վահան Կամսարականի անուան մէջ մնում է յիշողութիւն Արշաւիր Կամսարականի որդիներից՝ Վահանի, որոնք գործակից էին Վահան Մամիկոնեանին եւ սրա վարած կռիւներում ընդդէմ պարսիկ Սուրէն, Միհրան եւ ուրիշ զօրավարների: Թէ Վահան Մամիկոնեանի մասին զրոյցներ են եղել, երեւում է Սեբէոսից, որին ծանօթ չէ Ղազար Փարպեցու Պատմութիւնը, որ եւ հաւաստեալ ժողովրդական աւանդութիւններից առնելով՝ Փարպեցուց տարբեր պատմում է Վահանի ապստամբութիւնը, պարսիկներին հալածելը եւ Գերանայ դաշտում պարսիկներին յաղթելը: Արդ, Սեբէոսը պատմում է նաեւ, թէ ինչպէս Վարդան Մամիկոնեանն ապստամբում է Խոսրով Անուշ Ռուան թագաւորից, սպանում է Սուրէն Մարզպանին. Թագաւորն ուղարկում է Վարդանի վրայ Միհրան անունով մէկին, քսան հազար զօրքով, ապա եւ ուրիշներին. եւ նոյնիսկ ինքը թագաւորն է գալիս Վարդանի վրայ, բայց նա էլ յաղթւում է եւ իր կնոջը գերի թողնելով հայերի ձեռին՝ փախչում է: Այս Մամիկոնեան Վահանի ու Վարդանի յիշողութիւններն են, անշուշտ, որ մնացել են «Տարօնի պատերազմի» մէջ, միայն Վահան ու Սմբատ անունների հետ կապուած: Այս Վարդան Մամիկոնեանի մասին շատ բան չգիտենք, իսկ պատմական Վահան Մամիկոնեանի բնաւորութիւնը յայտնի է Փարպեցուց, որը շատ լաւ բնորոշում է Վահանին Վաղարշ թագաւորի բերանով. «Մի՛ դուցէ, — ասում է Վաղարշը, — յղեալ քո առ Վահան, եւ նա պատճառանօք քաղցր խօսելով ընդ քեզ՝ խաբիցէ զքեզ եւ վնաս ինչ առնիցէ: Վասն զի այրն ինքն քաջ է եւ բազմամիտ է. քանզի եւ ցայժմ ոչ այնքան զայնպիսի գործեան վճարեաց նա եւ որք ընդ նմա էին՝ լոկ քաջութեամբ»: Եւ այդ բնաւորութիւնը երեւում է Վահանի բոլոր արարքների մէջ, երբ նա կոտորում է պարսիկներին: Նոյնպիսի բնաւորութիւն գտնում ենք եւ «Տարօնի պատերազմի» մէջ Գայլ Վահանի համար: «Ցիրաւի է ինձ անունդ [Գայլ], ասում է ինքը հերոսը. քանզի գամ կոտորեմ, երթամ եւ այլ գամ» (էջ 33): Բայց այդ գայլի նման կոտորող

*Վահանը ոչ այնքան քաջութեամբ, ճակատ առ ճակատ կռուելով է յաղթում թշնամիներին, որքան խաբէութեամբ ու խորամանկութեամբ: Նա «իմաստութեամբ» որսում է պարսիկներին եւ թակարդի մէջ ձգելով ջարդում է նրանց: Ժողովուրդը սովորաբար, եւ ոչ միայն մեր մէջ, խորամանկութիւնը խելք է համարում, իսկ ռազմական խորամանկութիւնը՝ «իմաստութիւն», ինչպէս է եւ մեր «Տարօնի պատերազմի» մէջ:*

4. Վիպական մոտիվներ եւ գաղափարականացում չափազանցումով:— *«Տարօնի պատերազմի» մէջ ընդհանրապէս նոյն վիպական ոգին է երեւան գալիս, ինչ որ «Պարսից պատերազմի» մէջ. բայց կան եւ նոր մոտիվներ: Ամէնից առաջ հէնց այդ ռազմական խորամանկութիւնը: Մինչ հայ իշխանները, գլխաւորապէս Գայլ Վահանը, այնպէս «իմաստուն» են հանդիսանում, պարսիկներն, ընդհակառակն, անմիտ ու միամիտ են եւ խաբւում են: Շատ պարզ երեւում է, որ այդ զրոյցների մի մասը պատմուել են ոչ միայն Մամիկոնեան իշխանների եւ նրանց զինակիցների քաջութիւնը գովելու համար, այլեւ պարսիկներին ծաղրելու: Հակառակորդների այդ խաբուածութեամբ էլ բարձրանում են Մամիկոնեանները: Զուարճալի է նոյնիսկ այն երգը, որ յօրինուած է Վարազպերչի վրայ, որ եւ բերուած է վերեւում: Հարեւանների ծաղրը զրոյցների մէջ, — լինի հարեւան գիւղերի կամ գաւառների, թէ հարեւան ազգերի, — մի սովորական երեւոյթ է աւանդական բանահիւսութեան մէջ:*

*Երեւում է, թէ ինչպէս միամտաբար զուարճացել են այդ վէպի ունկնդիրները լսելով, թէ ինչպէս Գայլ Վահանը Մուշեղից ապստամբ ձեւանալով, գնում է Պարսից զօրավար Միհրանի մօտ եւ, իբր այս վերջինիս հաւատարիմը, չորս-հինգ անգամ խաբում է նրան, նրա զօրքերը մաս-մաս անելով կոտորում եւ վերջն անագորոյն կերպով սպանում նրան: Նա շարունակ խաբում է եւ նրա բազմաթիւ իշխաններին ու բոլորին մէկ-մէկ կոտորում եւ նոյնիսկ մերկացնելով ու ծաղրելով, նրանց կենդանի-կենդանի այրել տալիս ուրախութեան ժամանակ: Միհրանի երեսուն հազարնոց բանակից ազատւում են միայն քառասուն մարդ, այն էլ ինչի՞ համար:*

Եւ հրամայեաց արս քառասուն թողուլ՝
Զրուցատարս Պարսից արքային:
Եւ ետ տանել զգլուխն Միհրանայ
Առ թագաւորն Պարսից, ասելով.
«Այս մարզպանն Հայոց յորժամ եկն յերկիրս մեր,
Եւ զօրս հակառակեալ ընդ իրեարս՝
Գունդ խնդրեցին եւ ոչ կարացին գտանել:
Եւ Յո՛յնք մեր թշնամիք էին,
Ի նոսա ոչ իշխեցաք գնալ.
Եւ ձեզ ընդ ակամբ էաք.
Եւ ձեր զօրացն գունդ ոչ կայր.
Ապա կտրեցաք զգլուխդ զայդ, եւ խաղացաք:
Այլ լուաք, եթէ ի Տաճկաստանէ

Ելեալ էր ի Բոստր քաղաք,
Ցերկիր տափարակ եւ դաշտաձեւ,
Եւ գիտեմ, որ գնդի խաղայք.
Առէ՛ք զգլուխ քեռորդւոյդ ձերոյ,
Եւ եղիցի դա ձեր զուէդ ազգաց յազգս»:
Եւ իբրեւ զնացին արքն քառասուն,
Եւ տարան զգլուխն Միհրանայ առ արքայն խորրով,
Եւ նա խռովեցաւ, պղտորեցաւ,
Ամաչեաց զամօթն յաւիտենից:

էջ 28·

*Վէպի մէջ չափազանց մեծ տեղ է բռնում մարտը, որ Փէոդալի կեն-ցաղի մէջ էլ կարեւոր դեր է կատարում: Փոխադարձ ծաղրը, անարգանքն եւ արհամարհանքը մարտի ժամանակ սովորական է այս վէպի մէջ եւս: Վահանը ջարդում է իր վրայ եկած պարսկական զօրքերը: Վախտանգ զօ-րավարը սաստիկ բարկանում է նրա վրայ:*

Առաքեաց դարձեալ զԱսուր ի վերայ ութ հազարաւ:
Որք եկեալ բանակեցան յեզերս Մեղտայ,
Եւ արձակեցին առ Վահան այսպէս·
«Ա՛յ չարաբարոյ Գայլ Վահան,
Մինչ գիտես, եթէ ծառայեյոց ես Արեաց արքային,
Ընդէ՞ր այդպէս յանդգնեալ անամօթիս:
Արդ արի ե՛կ առ մեզ, եւ լե՛ր հարկատու·
Ապա թէ ոչ, մեռանիս որպէս զշուն»:
Եւ նորա լուեալ զայն, առեալ վեցհազար այր՝
Գնաց ի վերայ նոցա ինքն եւ որդին իւր Սմբատ:
Իբրեւ կացին հանդէպ իրերաց,
Սկսաւ Ասուր թշնամանալ զՎահան,
Եւ Գայլ կոչէր նմա:
Եւ նա ասէ· «Ցիրաւի է անունդ իմ·
Քանզի զամ կոտորեմ, երթամ եւ այլ զամ»:
Եւ սկսան մարտնչել ընդ միմեանս:
Իբրեւ խմբեցաւ պատերազմն,
Ակն կալաւ Սմբատ որդին Վահանայ՝
Ի վերայ Ասուրայ, եւ պատահեցաւ նմա:
Իսկ Ասուր տեսեալ, եթէ պատանի է,
Քամահեաց զնա եւ ասէ·
«Քարապաշտ հարճորդի ի բաց կաց,
Զի ի պատերազմօ՛ղ արսն ելանեմ անցանեմ»:
Եւ նա ասէ· «Որդի սատանայի,
Ցիրաւի է անուն քո Ասուր,
Զի սուր քո չէ ինչ·

Եւ ի մարտնչել ընդ կորճին՝
Ծանիցես զպարտութիւն քո»:

էջ 33.

*Սմբատն ու պարսից զօրավար Վախտանգը ճակատամարտի մէջ մենամարտում են.*

Եւ յամենայն կողմանց ի վերայ յարձակեցան,
Եւ ի մէջ առին զզօրսն Պարսից.
Եւ խմբեցաւ պատերազմն ընդ իրարս,
Մինչ զի ոչ գոյր հնար ճանաչել զմիմեանս,
Բայց միայն ի ձայն փողոցն եւ ի տեսս դրօշացն:
Իբրեւ ի դիմի հարան Վախտանգ եւ Սմբատ,
Ասէ Վախտանգ. «Կա՛ց, հա՛բնորդի,
Թէպէտ եւ զբազումս ջնջեցեր,
Սակայն այսօր չպրծնիս ի ձեռաց քաջ արանցս,
Որ զէշ զէշ պատառեն զձեզ սուսերք մեր»:

էջ 35.

*Երկուսով հարւածում են միմեանց: Յաղթում է Սմբատը:*

Եւ հանեալ զսուրն՝
Կտրեաց զգլուխ նորա,
Եւ ոչ կարաց ունել.
Զի զբազում մարդկան
Վազեաց զգլուխն Վախտանգայ:
Իսկ մի ոմն ի ծառայիցն նորա
Էառ զգլուխն նորա եւ փախեաւ:
Եւ հասեալ Սմբատայ՝
Եհար մրճովն ի վերայ գագաթանն,
Եւ գոգեաց զսաղաւարտն,
Եւ զլխոյն ոսկրն փոսեալ՝
Տեղի տայր սաղաւարտն մրճին Սմբատայ,
Եւ հազիւ կարաց հանել:
Եւ նորա հանեալ ընկէց զգլուխն, եւ ինքն մեռաւ:
Եւ միւս այլ ծառայի առեալ զգլուխն՝ փախեաւ:
Եւ Սմբատ զհետ մտեալ՝ ասէ.
«Պարսի՛կք, մի՛ անմտանայք.
Զի մինչեւ յայս անկաւ Վախտանգ,
Որ սրտացաւ ծառայքդ զգլուխդ առեալ փախչիք:
Ապա գիտասջիք, թէ ձեզ այդպէս պարտ է լինել»:
Եւ ձգեալ ծառային զգլուխն ի կուրծսն Սմբատայ,
Եւ ասէ. «Տա՛ր խորովեա եւ կեր զդա.
Վա՜յ ձեզ, որ այլ վաղ ոչ սպանէք»:
Եւ զհետ մտեալ ծառային, ասէ.
«Ա՛յ տիրատեաց պարսիկ,

Զգլուխդ քո ընդէ՞ր ոչ փոխանակեցեր տեառն քո:
Արդ որովհետեւ տիրատեաց էք,
Ես բառնամ զգլուխ քո ի քէն»:
Եւ եհար զնա տիգաւն ի սիրտն,
Եւ անցոյց զտէգն յայնկոյս,
Եւ ընկեցեալ յերիվարէն,
Կտրեաց զգլուխ նորա:
Եւ դարձաւ մեծաւ յաղթութեամբ ի բլուրն...
Եւ իբրեւ վճարեցաւ պատերազմն,
Հրամայեաց ծածկել զնոսա ի ձորս եւ ի հեղեղատս:
Եւ կոչեցաւ բլուրն այն Մահու բլուր:

*էջ* 35 *եւ հտ.*

*Երբ Սմբատը Վախտանգի ամբողջ բանակը ոչնչացնում է, Նրա որդուն ու կնոջն առնում, տանում են Այծից բերդը:*

Եւ յղեալ առ Պարսից թագաւորն Խոսրով, եւ ասէ.
«Տո՛ւր ինձ երկոտասան տարւոյ հարկ,
Որ զօրքդ քո զիմ երկրիս զխոտն եւ զհացն կերան,
Եւ զփայտն այրեցին.
Եւ զջրոյ՝ զոր արբին՝ զգինն.
Եւ զտաճարացն զգինս,
Զոր իմ հայրն այրեաց վասն քո, Գայլ Վահան.
Եւ դարձեալ զսպորնի գինն,
Վաթսուն հազար դահեկան,
Որ զքո զօրացն զգիշախոտ հալաւն
Եւ զարիւնաթաթախ հանդերձսն
Լուանալ տուաք եւ ազաք:
Ապա թէ ոչ, գամ հարիւր մարդով ի վերայ քո,
Եւ զամենայն Պարսիկս զերեալ՝ ի Տարօն ածեմ,
Եւ ի քո աստուածքդ շունն խառնեմ,
Որ փոխանակ դոցա հաչեն ի ձեզ:
Արդ փութով, զոր ինչ ասացի քեզ, արձակեա:
Ապա թէ ոչ, տեսանես,
Թէ զինչ անցք անցանեն ընդ ձեզ»:

*էջ* 36 *եւ հտ.*

*Ահա թէ ինչ պատգամ է ուղարկում Տարօնի, Խոյթի, Ճապախի ու Սասունի տէր Մամիկոնեան իշխանը Իրանի աշխարհակալ Խոսրով Թագաւորին։ Ֆէոդալական շրջանի անապարծ հերոսական գաղափարականացումն է այդ, որով լի է այս վէպը։ Լաւ է, որ վիպասանն աւելացնում է, թէ Թագաւորն այդ «լուեալ, ծաղր առնէր զՍմբատ. եւ ոչ դրեաց պատասխանի թղթոցն Սմբատայ»։ Նոյն ոգին երեւում է ամէն միջադէպերի մէջ։ Ահա փրկանքի մասին պատմուած սիւժետը։*

Բայց եղբայրն Վախտանգայ Սուրէն,
Առեալ հարեւր հազար դահեկան,
Եւ ինն հազար այր, եկն ի Տարօն,
Գնել զկինն եւ զորդին Վախտանգայ:

*Սմբատը դիմաւորելով նրանց՝ ընդունում է սիրով ու բերում Մուշ: Տասն օրից յետոյ Սուրէնն ուզում է իմանալ, թէ ո՛ւր է իր եղբօրորդին:*

Իսկ նոքա ցուցին զբերդն [Այծից],
Թէ անդ է: Եւ նա ասէ.
«Անդ այծարա՞ծ է, թէ՞ դիւարած»:
Եւ ծիծաղեալ Սմբատայ՝
Ընդ աղի բանն Սուրենայ,
Առաքեաց եւ ետ բերել
Զկինն եւ զորդին առաջի իւր:
Եւ իբրեւ ածին, ասէ Սուրէն.
«Իշխա՛ն հզօր ի վերայ աշխարհիս Հայոց,
Տա՞ս զսոսա Պարսից արքային տուրս»:
Իշխանն ասէ. «Պարսից արքային
Եւ մեռեալ շուն մի ոչ տամ,
Որ ճաշ ուտէ առանց գնոյ, թող թէ զդոսա:
Բայց դու գնել թէ կամիս, քաջ տամ.
Ապա թէ ոչ, գնացէք դուք երեքեանդ՝
յԱրծրունիս այծ արածեցէք,
Եւ բերդին ծառայութիւն արարէք,
Եւ զիմ հացս կերայք աներախտիս»:
Իսկ Սուրէն քանզի իմաստուն այր էր, ասէ.
«Ո՛վ բարեպաշտ եւ հզօր իշխան,
Թէ եւ զշուն դարպասիդ քո արածել տայիր,
Դեռ պարծանս է մեզ՝ որ ի դրան քում կայաք,
Թող թէ այծ արածել:
Բայց թէ լսէք մեզ,
Առէ՛ք ի մէնջ հարեւր հազար դահեկան,
Եւ երկու հազար ուղտ,
Եւ վեց [հազար] պարսիկ ձի,
Եւ զմեզ տուրս տուք զայս կինս եւ զմանուկս»:
Իշխանն ասէ. «Զայդ որ բերեալ ես, այդ մե՛ր է.
Զի զքո զլուխդ կտրեմ,
Եւ զոր ունիս՝ յիս առնում:
Բայց թէ դոքա քեզ պիտոյ են,
Դու քրիստոնեայ լեր եւ կնքեա՛ց,
Եւ զիս ա՛ռ եւ ի Պարսիկս գնա, եւ դոքա քե՛զ.
Ապա թէ ո՛չ, ձեզ ա՛յլ հնար իմացէք»:

*Սուրէնը բերում է, փրկանքները ներկայացնում է Մամիկոնեանին.*

Իսկ նա ասէ. «Հաւանիմ տրոցդ,
Բայց հարեւր եւ ութսուն հազար՝
Փայտ են տարեալ ի Քարքէոյ.
Եւ չորեք հարեւր հազար դահեկանի՝
Խոտ են կերեալ ի դաշտէդ.
Եւ վաթսուն հազար դահեկանի՝
Որ զեղն եւ զեղջերու եւ զնապաստակ երկրիս
Որսացեալ են եւ կերեալ:
Զջրոյ եւ զհացի զինն թողում,
Բայց զանոյշ զինին Ասորոց եւ Սալանայ եւ զՄոխրայ
Այս երկու տարի է՝ որ յինէն կտրեալ էին,
Եւ ինքեանք արբին, զայն թող տան:
Եւ զվեց գաւառին հարկն, զոր առեալ են,
Եւ զքաղաքին մուտսն, զոր կերեալ են,
Չորեք հարեւր [հազար] դահեկան,
Զայդ ամենայն թող բերեն,
Եւ դու քրիստոնեայ լեր,
Եւ դիս ի Պարսիկս տար, եւ դոքա քե՛զ»:

**էջ 37** *եւ հտ.*

*Ապա պատմում է, թէ ինչպէս Սմբատը Սուրէնին ուխտի է տանում իր վանքը, ճանապարհին նենգութեամբ սպանում են նրան ու պարսիկ իշխաններին եւ յետոյ մարտնչելով նրա զօրքի հետ, կոտորում են նրանց: Սակաւաթիւ մարդկանց միայն ազատում են.*

Իսկ զարսն որ ի Մեղտի տարան,
Բժշկեալ ի ցաւոցն վիրացն,
Եւ ետ նոցա զանձս եւ երիվարս եւ զէնս.
Եւ յղեաց զնոսա ի Պարսիկս:

**էջ 42**

*Մամիկոնեանները, ինչպէս «Պարսից պատերազմի» մէջ, միշտ յաղթող են: Այս երրորդ վէպի մէջ նրանք նոյնիսկ ժամանակաւոր անյաջողութիւններ չեն ունենում: Այստեղ նրանք կոտորում են Տարօնի վրայ յարձակուող բոլոր պարսիկներին, իսկ իրենցից ոչ ոք չի սպանւում՝ բացի մի քանի անզէն ու ծեր կրօնաւորներից: Չկան այն դաւաճաններն անգամ, որոնք երեւան են գալիս մեր երկրորդ հին վէպի մէջ: Հայ իշխանները բոլորը ոչ միայն քաջ կռուող են, այլեւ միշտ իրար պահում են եւ նեղութեան ժամանակ օգնութեան հասնում: Ո՛չ մի մատնիչ: Քաղաքացիներն էլ մասնակցում են կռւին: Գաղափարականացումն, ուրեմն, կատարեալ է եւ մինչեւ վերջը տարած, աւելի եւս պարզամիտ կերպով, քան «Պարսից պատերազմի» մէջ:*

*Մինչ «Պարսից պատերազմի» մէջ կան բազմաթիւ ճակատամարտեր, որոնց համար չունենք մարտական մասի նկարագիրներ, — անշուշտ եղել*

*են, բայց Բուզանդը համառօտել է այստեղ — «Տարօնի պատերազմի» մէջ միշտ սիրով արուած են նկարագիրները, յաճախ հերոսների տրամախօսութիւններով, յիշուած են մարտի վայրերը — ամրոցներ, քաղաքներ, մօրեր, աւաններ, անցքեր, լեռներ, գետեր, գաւառներ, գիւղեր, վանք, բլուր, դաշտ, մայրի, ձոր, քարագլուխ եւ այլն: Միշտ սիրով պատմուած են մարտական մանրամասնութիւններ, ինչպէս դարանակալութիւններ, թշնամիների ձիերը քշել հեռացնելը եւ պարսիկների կռիւը ձիագողերի հետ, հսկայ Տրդատի պէս գետն անցնելը եւ նմանները: Մարտի մէջ մենամարտերը սովորական են եւ այդ անում են իրար ծաղրելով: Յաղթողները սովորաբար կտրում են յաղթուած թշնամիների գլուխներն ու պահում:*

Եւ հասեալ ի դաշտն, որ ի վերայ Մատրավանիցն,
Եւ բոլորեալ ռազմ կանգնեցին:
Եւ եկեալ առ միմեանս Վարդուհրի,
Եւ Տիրան՝ որդին Վահանայ,
Ասէ Վարդուհրի. «Կախարդասա՛րք,
Դուք ի կախարդսն էք պանծացեալ,
Եւ կախարդութեամբ կամիք յաղթել Պարսից քաջացն»:
Ասէ Տիրան. «Եթէ կախարդ եմք, դու վայր մի անսա,
Զի ես զքո ձիոյ ազիդ քեզ տեսանել տամ»:
Եւ անապարեալ ի բաց ձգեաց
Զաջոյ ոտնն սռնապանօքն հանդերձ.
Եւ նորա հակեալ յայնկոյս՝ անկաւ:
Ասէ Տիրան. «Վարդուհրի, մի՛ մեղադրեր,
Գլուխդ հակեաց եւ ընկէց զքեզ.
Արդ ուղղեմ զբեռնդ»:
Եւ ապա բառնայ:
Եւ կտրեալ զգլուխն՝ ետ ցծառայ մի եւ ասէ.
«Պահեա զդա, որ իջանեմք ի Մատրավանս
Եւ զնդի խաղամք առաջի Սուրբ Կարապետին»:

*Էջ* 51 *եւ հտ.*

*Երբեմն նկարագիրն ու պատմուածքը շատ ընդարձակուած են, ինչպէս հետեւեալի մէջ Սմբատի որդի Վահանի մասին.*

Իսկ Վահանայ լցեալ իմաստութեամբ,
Առեալ երկերեւր կաշեայ ասպար,
Եւ արկ զհարեւր ջորեօք ամեհեօք,
Երկաթ մի յայս կոյս ասպարին, եւ երկաթ մի յայն.
Եւ գնաց մերձ ի բանակն Հոնին,
Որ փոխանակ էր Տիգրանայ,
Եւ ունէր ընդ ձեռամբ իւրով ութ հազար այր,
Եւ բանակեալ էր մերձ ի Քարագլուխն,
Որ հայի հանդէպ Տարօնոյ լերինն:
Եւ էր սա զատակաց յայլոց բանակացն:

Արդ առեալ Վահանայ զհարեւր ամենի ջորիսն,
Եւ տարաւ զնոսա յեզր քանակին·
Եւ ի տասն ջորիսն այր մի՝ որ զհետ երթայր:
Եւ իբրեւ խրթեցին զջորիսն սրով,
Եւ արկին ի քանակն,
Եւ ինքեանք զհետ մտեալ՝
Զփող պատերազմին հնչեցուցին,
Եւ առ ձեռն սկսան կոտորել·
Եւ կանչեալ զարհուրեցան,
Ժպրհեցան եւ աղմկեցան յոյժ:
Քանզի եւ ջորիքն ընդ ձայն ասպարացն
Եւ ընդ զթրացն աղմկել,
Եւ ընդ փողոցն բախելն խրտուցեալ,
Յամենայն կողմանց լոկ արշաւէին ի բանակն:
Եւ զօրքն կարծէին, եթէ հեծեալ է,
Եւ ձայն սուսերացն ի կոտորելոցն է.
Իւրաքանչիւր ոք լոկ վա՛յ ճչէին,
Ոչ գիտելով զհետս անձանց·
Քանզի տէր պատերազմէր ընդ նոսա:
Արդ քանզի այլ զօրքն ոչ կարէին անցանել,
Զի էր մութն, եւ մեր զօրքն լոկ սատակելով նեղէին,
Եւ զԲարագլուխն բնաւ չկարացին յիշել,
Զի յիմարեցոյց զնոսա տէր:
Ապա թողեալ զկարասին,
Դէմ փախստի ի Բարագլուխն արարին:
Եւ սկսան ի վայր հոսել
Ահաւոր վիմացն ընդ բարձրութեան:
Եւ ոչ ոք կարաց գիտել զիրսն,
Մինչեւ պակասեցաւ ճիչ աղաղակին:
Եւ ապա գիտացին զօրքն Հայոց,
Թէ ընկղմեցան Պարսիկքն·
Դարձան ինքեանք ի բանակետղ,
Եւ զկարասին եւ զգանձն ժողովեցին,
Եւ զերիվարսն եւ զուղտսն,
Եւ արձակեցին ի գաւառն Պալունեաց:
Եւ ընդ ձի եւ ընդ ջորի եւ ընդ ուղտ եւ ընդ էշ՝
Գտաւ ութ եւ տասն հազար,
Որ ծածկէր զերեսս գաւառին:

*Էջ* 45 *եւ Հտ.*

*Ցեռոյ Սմբատը յաղթանակում է միւս բանակի վրայ եւ դարանակալ-ների օգնութեամբ մեծ կորուստ են պատճառում պարսիկներին.*

Եւ չորեք հազար գլուխ համարով
Ընկեցին ընդ քարն, որ կոչեցաւ Հռնընկէց:

*«Պարսից պատերազմի» մէջ կին ու երեխայի սպանութիւն չկայ: Ընդհակառակն, Մուշեղը Շապուհի կանանցը պատուաւոր կերպով ետ է ուղարկում: Ապա «Սասնայ Ծռերի» մէջ Դաւիթը, մենակ մի մարդ, չի ուզում յանկարծակի յարձակուել թշնամիների բանակի վրայ, որպէսզի «Զասեն՝ Դաւիթ գող եկաւ, գող գնաց»: Այստեղ հակառակն է: Այդպիսի վեհանձնութիւն չկայ: Կոտորի՛ր՝ որքան կարող ես եւ ինչպէս կ՚ուզես: Պարտուած պարսիկների մնացորդները փախչում, ժողովւում են մի տեղ եւ իջնում, ճաշում են: Այդ ժամանակ Ողականից երկու հարիւր յիսուն այր դուրս են գալիս որս անելու: Երբ նրանք տեսնում են՝*

Զի յանհոգս էին իջեալ Պարսիկքն,
Գողաբար յարձակեցան ի վերայ,
Եւ ոչ ոք կարաց յերիվարն ելանել·
Այլ ի շուրջ եկեալ եւ ի սեղան անդր՝
Սպանին հինգ հարեւր եւ ութ այր:
Եւ վասն որ անդ ժողովեալ սպանին,
Կոչեցաւ անուն տեղւոյն ժողովս:

էջ 40·

5· Կրօնական տարրը: — *«Տարօնի պատերազմի» մէջ առանձնապէս աչքի է ընկնում ս. Կարապետի դերը: Ճիշտ է, խմբագրողն իր կողմից աշխատել է բարձրացնել տեղական կրօնական սրբավայրի նշանակութիւնը, բայց նրա աւելացրածն ու ժողովրդականը տարբերւում են: Վէպի ու զրոյցների մէջ հէնց ս. Կարապետը մեծ տեղ է բռնել: Թշնամիների յարձակման նպատակն է սկզբում ապստամբ Մուշեղին բռնել, տանել Պարսկաստան, նրա «հաւատի տեղերը» կործանել ու կրօնաւորներին սպանել (էջ 15): Մուշեղին նրանք բռնել չեն կարողանում. բայց հետագայում պահանջում են նրա եւ Գայլ Վահանի ոսկորները եւ աւերում են իշխանների գերեզմանները.*

Բայց խնդրէ զնշխարս Մուշեղայ իշխանին
Եւ զքո հօրն՝ Վահանայ:

էջ 43, 45·

Եւ կամէին անցանել ի վանսն Գլակայ,
Զի հանցեն զոսկերսն թշնամեացն:

էջ 49·

*Նոյն անում են պարսիկները եւ «Պարսից պատերազմ» վէպի մէջ. Նրանք քանդում են Արշակունի Թագաւորների գերեզմանները:*

Զի ասէին ըստ իւրեանց··· ըստ օրինացն,
Թէ վասն այսորիկ բարձեալ տանեմք
Զոսկերս թագաւորացն Հայոց յաշխարհն մեր,
Զի փառք թագաւորացն եւ բախտքն,

Եւ քաջութիւն աշխարհիս,
Յաշխարհին մեր եկեսցեն:

*Բուզ. Դ. 24.*

*«Պարսից պատերազմի» մէջ կրօնական կռիւը երեւան է գալիս Արշակի անկումից յետոյ, առանձնապէս Վահան Մամիկոնեանի եւ Մերուժան Արծրունու ձեռով, որոնք աւերում են եկեղեցիները եւ մարդկանց ստիպում են «ի պաշտօնն դառնալ Մազդեզանցն». նոյնիսկ նախարարների կանանց սպանել են տալիս, երբ նրանք յանձն չեն առնում ուրանալ քրիստոնէութիւնը. ատրուշաններ են շինում շատ տեղերում: Բայց յետոյ՝ «Մուշեղ զօրավարն Հայաստանեայց շրջէր ընդ երկիրն եւ աւերէր զատրուշանսն Մազդեզանցն: Իսկ զՄազդեզունսն, որ մի անգամ ի բուռն արկին, զամենեսեան տայր հրաման սպարապետն Մուշեղ ունել եւ հրով խորովել»: Այս միեւնոյն կրօնական կռիւը, ինչպէս տասցինք, երեւում է եւ «Տարօնի պատերազմի» մէջ: Վահանը Միհրանի գլուխը կախելով երդից՝ ասում է տան մէջ գտնուած պարսիկներին. «Այս այն գլուխն է, որ խորհէր զՍուրբ Կարապետն հիմն ի վեր առնել եւ զկրօնաւորսն հրով այրել» (էջ 26): Վախտանգ զօրավարը «փախէ պատրուշանն ի դուռն Կաթուղիկէին» (էջ 30): Պարսիկները սպառնում են «զտեղիսն յորս նա [Մուշեղ] զհաւատս ունէր՝ կործանել»:*

Ապա թէ ոչ, զամ ի տեղին,
Աւէ, ուր հաւատք ձեր են.
Զայն բրեմ եւ աւերեմ,
Եւ կրակատուն առնեմ զեկեղեցիս ձեր,
Եւ զձեզ ի դուռն արքունի խաղացուցանեմ:

*էջ 44.*

*Եթէ նրանք այս սպառնալիքները չեն կատարում, որովհետեւ չեն կարողանում: Ահա թէ ինչ է ասում Գայլ Վահանը պարսիկներին յաղթելուց յետոյ.*

Վաշի՛ր, զի՞նչ եդիք ի մտի,
Ի պարսի՞կ հաւատ կամէիք
Դարձուցանել զերկիրս Հայոց:

*էջ 27.*

*Պարսիկները կրօնաւորներին կոտորում են, բայց միայն ծերերին, որովհետեւ միւսներին չեն կարողանում:Նրանք կա՛մ փախչում, ամրանում են Ողական ամրոցում, կա՛մ իրենք էլ մասնակցում են մարտին, բայց իրենց կրօնաւորական ձեւով.*

Եւ գնացին ի պատերազմ.
Եւ արձակեցին առ հայրն (1) Գրիգոր...
Եւ տարան ի պատերազմ
Երեք հարեւր ութսուն եւ հինգ կրօնաւոր կընդով:

(1) Հայր — վանահայր:

Իբրեւ խմբեցաւ պատերազմն
Յեզերս Արածանոյ, առ անտառովն,
Որ կոչի Կաղամախեաց բլուր,
Կրօնաւորքն սեւազգեստք էին,
Մազեղինօք եւ կնկղաւորք,
Եւ ընդ տասն առնն ժամահար (1) մի,
Եւ ընդ երկուսն խաչադրօշ բարձրաբուն:
Եւ ճակատեցան նոքա ընդդէմ իրերաց ի պատերազմ,
Յայնկոյս գետոյն, որ ի դաշտին·
Զոր տեսեալ թշնամիքն զարմանային:
Եւ Վարդուիրի (2) ոչ եմուտ ի պատերազմ,
Այլ, «տեսից», ասէ «թէ նոքա զինչ գործեն»:

*Եւ ի՞նչ պիտի անէին այդ կրօնաւորները: Չպիտի կարծել, թէ նրանք արիւն պիտի թափէին: Նոր վէպի՝ «Սասնայ Ծռերի» մէջ էլ կրօնաւորը, իսկապէս ճգնաւոր դարձած իշխանը, թշնամիների դէմ կռուին մասնակցում է, բայց առանց արիւնի. այլ նա թշնամիներին հաւաքում, բերում է Դաւթի առաջ, եւ սա կոտորում է նրանց: Իսկ այստեղ, «Տարօնի պատերազմի» մէջ, կրօնաւորներն, ըստ միջնադարեան գաղափարախօսութեան, աւելի մեծ բան են անում.*

Եւ իբրեւ խմբեցաւ պատերազմ ընդ իրարս,
Եւ կամէին փախչել Վահանեանքն,
Յայնժամ նոցա ծունր կրկնեալ,
Միաբան աղաղակեցին առ Աստուած՝
Աղօթիւք եւ լի արտասուօք·
«Ո՛վ տէր, հա՞ր զմեր պատերազմն,
Ո՛վ Կարապետ, զարթիր ի ձայն պաշտօնէիցս»:
Եւ զայս ասացեալ միաբան՝ յոտն կացին,
Եւ զնշան խաչին դարձուցանէին ի վերայ թշնամեացն,
Եւ հարին զժամահարսն յանդուգն:
Եւ հայեցեալ Վահանայ ի գունդն կրօնաւորացն,
Ետես յաջ թեւս նոցա երիտասարդ մի՝ ահագին տեսլեամբ,
Եւ թագ ծիրանի ի գլուխ նորա, եւ խաչ,
Եւ ի հանդերձ նորա հուր փայլատակեալ:

*Էջ* 50 *եւ հտ.*

*Թշնամիներն էլ այդ տեսնում են, խելքները թռցնում են, լցւում գետը, սկսում են փախչել: Վահանեանները հալածում ու կոտորում են նրանց:*

*Ուրիշ անգամ էլ ս. Կարապետն օգնութեան է հասնում Մամիկոնեան իշխաններին: Պարսիկները կրկնապատիկ թուով գալիս են, գիշերով շրջա-*

(1) Ժամահար — կոչնակ, ժամ կանչելու տախտակը, որ զարնում էին:

(2) Պարսից զօրավարը:

*պատում են Սմբատին: Սա, վստահելով ս. Կարապետին, գիշերով դուրս է գալիս թշնամիների դէմ:*

Եւ ել ջահիւք ի վերայ զօրացն Պարսից,
Եւ յանկարծակի տեսին այր մի գիսաւոր,
Որ լոյս փայլէր ի հերացն նորա,
Եւ զաչս թշնամեացն կուրացուցանէր:

**էջ 34.**

*Թշնամիներն սկսում են միմեանց դէմ կռուել եւ իրար կոտորել, հայերն էլ միւս կողմից են ջարդում:*

Եւ այնչափ կոտորեցին զնոսա,
Մինչեւ հեղեղատք արեանց ելանէին:

**էջ 34.**

*Այսպէս եւ մի ուրիշ անգամ: Պարսիկները, թուով բազմամարդ լինելով, հետապնդում են հայոց զօրքերին.*

Եւ տուեալ զետոյն՝ նեղէին զնոսա...
Զի աստի թշնամիքն, եւ անտի գետն:

*Բայց Սմբատն ու իր մարդիկը դարձեալ յաղթում են.*

Եւ կնքեալ զանձինս իւրեանց,
Դիմեցին ի վերայ Պարսիցն:
Եւ երեւեցաւ նոցա ի պատերազմին
Այր մի ահեղ եւ լուսաւոր,
Եւ հեր նորա լոյս փայլատակէր:

**էջ 47 եւ հտ.**

*Հայերն այդ տեսնելով իմանում են, որ ս. Կարապետն է, ուրախանում են եւ յարձակուելով թշնամիների վրայ՝ ջարդում նրանց:*

*Այդ զրոյցները, թէպէտ կրօնական եւ կրօնաւորներից յօրինուած, բայց ժողովրդականացած են: Ս. Կարապետ, ինչպէս ուրիշ դէպքերում, այստեղ էլ փոխանակած է հին Վահագնին, որ ամպրոպի, որոտ ու կայծակի աստուածն է: Մարիամ Արծրունու զրոյցի մէջ ս. Կարապետը երեւում է այդ կնոջ իբրեւ «այր մի գիսաւոր ընդ ամպս որոտացեալ» (էջ 11): Ժողովրդական է նաեւ կռուից առաջ ուխտ գնալը ս. Կարապետի վանքը, որ Մամիկոնեանների «Հայրենական տունն» է, նրանց վանքը, որ իրենք են շինել (էջ 31, 38): Ժողովրդական է եւ այն, որ կրօնաւորներին աղաչում են, որ աղօթք անեն, պատարագ անեն, որպէսզի նրանց աղօթքի զօրութեամբ կարողանան յաղթել թշնամիներին (էջ 44): Այս միեւնոյն մոտիւները գտնում ենք եւ նոր ժողովրդական վէպի՝ «Սասնայ Ծռերի» մէջ: Դա միջնադարեան կրօնական աշխարհայեցողութեան արտայայտութիւնն է: Երբ ծերունի Սմբատը մենակ է մնում եւ թշնամիներից շրջապատուած նեղն է ընկնում,*

Զայնարկեալ ի Ս· Կարապետն, ասէր·
«Ահա ժամ, ո՛վ Մկրտիչ Կարապետ···
Ո՞ւր են իմ սուրբ կրօնաւորացն աղօթքն»:

*Նոյն կրօնական ոգու արդիւնք է եւ այն, որ Սմբատը ս· Կարապետի վանքում աղօթում է, եւ ապա*

Ետ բերել երկոտասան թուր,
Եւ դնել առաջի բեմին,
Մինչեւ պատարագ մատուցանէին:
Եւ ապա առեալ ասէ· «Տէ՛ր, հաւատամք ի քեզ,
Թէ եւ այս սուրքս եղիցին խմոր այլ սուսերաց,
Եւ հրամանաւ քով յաղթեսցուք նոցա»:

*էջ* 44·

*Դա ֆէոդալական կեանքի մի գիծ է, որ միայն մեր մէջ չի կատարուել: «Պարսից պատերազմի» մէջ էլ Մուշեղի համար ասւում է, թէ նա «զխաչ նշանն եւ զզէնն մատուցանէր առ Ներսէս, զի օրհնեսցէ»* (*Բուզ·* Ե· 4):

6· Ընդհանուր բնաւորութիւնը: — *Ինչքան էլ կրօնական տարրը բաւականի շեշտուած է այս վէպի մէջ, բայց եւ այնպէս էականը ոչ թէ այդ է, այլ քաղաքական ու տնտեսական կողմը եւ պատերազմը դրա համար: Եւ այլապէս էլ չէր կարող լինել, քանի որ դա մեր երկրորդ հին վէպի մի մնացորդն է, որ ձեւափոխուած է հետագայ դարերի պատմական ազդեցութեամբ: Հայ թագաւոր չկայ: Ֆէոդալական հիերարխիայի — դասակարգութեան մէջ գերիշխան տէրը ոչ թէ հայ Արշակունին է, այլ Պարսից թագաւորը: Մուշեղը կռւում է պարսկական գահի ժառանգի համար, եւ պարսից թագաւորն է նրա դէմ նենգութիւն անում: Միւս կողմից՝ հին ընդարձակ վէպը, «Պարսից պատերազմը», սրա մէջ կորցրել է իր ընդհանուր ազգային բնաւորութիւնը եւ դարձել է Տարօնի տեղական վէպ, Տարօնի տեղական ֆէոդալների հերոսական պատմութիւն: Այստեղ իշխող են Մամիկոնեանները, որոնց ենթարկւում են տեղական երկրորդական հողատէր իշխանները՝ «Հաշտենից, Պալունեաց, Արջուց, Եղնուտայ»: Մամիկոնեանները Տարօնի տէրն են, բայց նրանց իշխանութեան տակ են նաեւ՝ Խոյթ, Շատախ ու Սասուն, այլեւ Հարք, Հաշտեանք եւ Ապահունիք գաւառները: Սասունցիներն արդէն, իբրեւ «Սանասարի ցեղ», մասնակից են կռիւներին· «երկու հարեւր այր աշտենաւորս ի Սանասարայ ցեղէն թողոյր [Վահան] ի Ծծմակըն»:*

*Գերիշխան տէրը, ինչպէս ասուեց, Պարսից թագաւորն է: Նրանից ապստամբում են Մամիկոնեանները եւ պարսիկների դէմ պատերազմում են ոչ թէ, ինչպէս «Պարսից պատերազմի» մէջ է, Հայաստանի անկախութեան եւ Արշակունի թագաւորների իրենց «տէրերի» համար, այլ հէնց իրենց տեղական անկախութեան համար: Նրանց վրայ գալիս են պարսկական բանակները, տեղի են ունենում բազմաթիւ մարտեր ու մենամարտեր, բայց պատերազմները չեն կարողանում ենթարկել նրանց: Մամիկոնեանները նոյնիսկ խրոխտալով են խօսում Սասանեան հզօր արքայի եւ նրա զօրավար-*

*ների հետ։ Նրանք ոչ մի կերպ չեն համաձայնում հնազանդուել պարսիկներին։ Հնազանդութեան պայմանն է հարկատուութիւն։ Վախտանգը զօրքով գալով Ապահունիք՝*

Արձակէր հարկապահանջս ի Հարք
Եւ ի Հաշտեանք եւ ի Տարօն.
Առ որ գրեն գաւառապետքն.
«Եթէ Վահան տայ, եւ մեք.
Ապա թէ ո՛չ, ունայն գնայք ի մէնջ»։

**էջ 30.**

*Յետոյ նա Վահանին է գրում սիրով. «Դու արի ե՛կ առ իս, եւ երդուիր տալ զհարկ արքունի եւ կալ հնազանդ, եւ յառաջին պատւին ձեր մնալ»։ Վահանը նրան չափազանց վիրաւորական պատասխան է տալիս (էջ* 31)*։ Վահանի մահից յետոյ՝ նա նոյնը Սմբատին է ասում.*

Եւ առաքեաց առ Սմբատ,
Եթէ՝ «Կամ ե՛կ որ պատերազմիմք,
Եւ կամ հնազանդեաց եւ տուր հարկս»։

**էջ 34.**

*Սմբատը նոյնիսկ պատասխան չի տալիս։ Իշխանների դժտութիւնը պարսիկների հետ եւ նրանց ապստամբութիւնը պարսիկներից՝ պատճառ ունէր սկզբում այն, որ Խոսրովը, հին վիպական մոտիվով, ուզում էր դաւադրութեամբ սպանել Մուշեղին։ Բայց յետոյ վէպի ընթացքում գլխաւոր խնդիրը լինում է հարկատուութիւնը եւ հարկի պատճառով ապստամբելն ու չենթարկուելը պարսիկներին։ Այսպէս ուրեմն, այս վէպի մէջ պարսիկների կողմից գլխաւոր ձգտումն է հպատակեցնել Մամիկոնեաններին եւ հարկի տակ դնել նրանց՝ քանդելով նրանց կրօնական սրբավայրը։ Բայց հայերը միշտ յաղթող են դուրս գալիս, որով եւ փառաբանւում են Մամիկոնեան հերոսները։ Կը նշանակի՝ վէպն իր զարգացման այս ձեւի մէջ, ըստ էական խնդրի եւս նոյն ֆէոդալական գաղափարախօսութեան արտայայտութիւնն է կրում իր մէջ, ինչ որ «Պարսից պատերազմը»։ Եւ այսպէս էլ պէտք է լինէր։ Այս ազնուական վէպը, թէպէտ Յովհան Մամիկոնեանի ժամանակ անցած է եղել տեղական աշխատաւոր ժողովրդին, բայց դեռ չի ազդուած նրա կեանքից։ Իշխաններն արդարեւ, ունին «ծառաներ», որոնք նրանց համար սպասաւորութիւն են անում տանը եւ մարտի ժամանակ, եւ անպայման հասարակ ժողովրդից են, բայց վէպի մէջ նրանք շատ աննշան դեր են կատարում։ Նոյնպէս եւ քաղաքացիները։*

*«Տարօնի պատերազմի» ընդհանուր բնաւորութիւնը, որ եւ Հայկի վէպինը եւ «Պարսից պատերազմինն» է, այնուհետեւ էական գծերով մնում է նոր վէպի, «Սասնայ Ծռերի» մէջ, միայն այստեղ ժողովրդական տարրը, ռամիկ ժողովրդի կենցաղն ու գաղափարները կարեւոր տեղ են բռնում։ Բացի այդ, վէպը կերպարանափոխուած է նաեւ նոր պատմական դէպքերի ու անձերի ազդեցութեան տակ, այն է՝ Մուշեղի ու Վահանի տեղ անցել է Դա-*

ւիթը, պարսիկների տեղ անցել են արաբացիները եւ ապա՝ Մսրայ մելիքները. Տարօնի տեղ՝ նրա կից Սասունը, որ հետագայ դարերում աւելի նշանաւոր դեր է խաղացել, քան Տարօնը: Բայց եւ Մուշեղի զրոյցն եւս, այս հերոսի կռիւը պարսիկների դէմ Տարօնում, դեռ մինչեւ վերջերս Մուշեղի անունով պատմւում էր Տարօնի եւ Սասունի գիւղացիների մէջ իբրեւ անկախ վէպ:

## ՄԱՔԱՌՈՒՄ ԱՐԱԲԱԿԱՆ ԲՌՆԱՊԵՏՈՒԹԵԱՆ ԴԷՄ
## ՂԵՒՈՆԴ ՊԱՏՄԱԳԻՐ

1. Ազատագրական կռիւներ:— *Հայ ժողովրդի վիճակն եղել է գրեթէ շարունակ պայքար մղել օտար տէրութիւնների դէմ իր գոյութեան եւ իր հոգեւոր կեանքի պաշտպանութեան համար: Եւ մեր պատմութեան ներքին իմաստը գլխաւորապէս այդ պայքարի մէջ է. դրա արտայայտութիւնն է եղել ընդհանրապէս եւ մեր գրականութիւնը: Հազիւ պարսկական ճնշումները թուլացած էին, եւ հայկական կուլտուրան սկսել էր բարձրանալ, որ հանդէս է գալիս մի նոր թշնամի: Արաբիայի ցեղերը՝ կրօնով ու քաղաքականօրէն խալիֆաների ձեռի տակ միացած՝ Մահմէդի մահից (622 թ.) կարճ ժամանակ յետոյ՝ արագ տիրում են արեւելեան աշխարհին. 640-ական թուականներին նրանք մտնում են եւ Հայաստան: Իշխանութիւնն անցնում է Իսլամին: Մօտ երեք դար այդ բռնապետութիւնը, առանձնապէս 8-րդ դարի սկիզբներից ի վեր, ծանր կերպով նստում է մեր ժողովրդի վրայ: Հայերի կողմից սկսւում է դրա դէմ ոչ միայն կուլտուրական պայքար, այլեւ զինուած ապստամբութիւն, մինչեւ կարողանում են թօթափել արաբական լուծը:*

*Հայկական բանաստեղծութիւնը, հոգեւոր երգի մէջ ամփոփած, չի դառնում արտայայտիչ այս երկարատեւ շրջանի: Դարձեալ հին զարգացած գրական տեսակը — պատմագրութիւնն է, որ տալիս է մեզ ընդարձակ պատկերը արաբական կեղեքումների եւ ապստամբ ժողովրդի ընվզումների: Դրան է վերաբերում, ինչպէս տեսանք, Սեբէոսի Պատմութեան վերջին մասը. նրան հետեւել են յաջորդ դարերում ուրիշները:*

2. Ղեւոնդ պատմագիր (1):— *Հին շրջանում անհատն առանձին արժէք չունէր, դրապէս եկեղեցականները կրթւում էին ճգնաւորական ոգով, արհամարհանք տածելով դէպի իրենց սեփական անձը: Իր մասին խօսելն իր գրքի մէջ՝ կը համարուէր ընդհանրապէս խոնարհութեան հակառակ մի գործ: Դրա համար մենք, բացի սակաւաթիւ բացառութիւններից ու տեղեկութիւններից, շատ բան չգիտենք գրեթէ մեր բոլոր հին հեղինակների, նոյնպէս եւ այս պատմագրի վերաբերմամբ: Միայն այսքանը կարելի է ասել, որ Ղեւոնդը եղել է եկեղեցական. ոմանք նրան վարդապետ են կոչում, ուրիշները՝ երէց: Իր գրքի վերջում գրուած յիշատակարանից իմաց-*

(1) Պատմութիւն Ղեւոնդեայ մեծի վարդապետի Հայոց, Ս. Պետերբուրգ, 1887:

ւում է, որ իր աշխատութիւնը նա գրել է «ի հրամանէ տեառն Շապհոյ Բագրատունւոյ»։ Թէ ինչ մարդ է եղել այդ գրասէր իշխանը՝ յայտնի չէ։ Պատմութիւնը հասնում է մինչեւ 788 թուականը. Պատմութեան վերջին մասերը յօրինում է նա իբրեւ ժամանակակից։

Ձեռագրերների մէջ Ղեւոնդի Պատմութիւնն ունի այսպիսի մի վերնագիր. «Պատմութիւն Ղեւոնդեայ մեծի վարդապետի Հայոց որ յաղագս երեւելոյ Մահմետի եւ զկնի նորին, թէ որպէս եւ կամ որո՛վ օրինակաւ տիրեցին տիեզերաց, եւս առաւել ազգիս Հայոց», բայց Պատմութիւնն սկսւում է Մահմէտի մահից։ Առաջին երեք գլուխների մէջ նա պատմում է, թէ ինչպէս արաբացիներն առաջին երեք խալիֆաների օրով տիրում են Պաղեստինին, Ասորիքին ու Պարսկաստանին եւ երեք անգամ զանազան կողմերից մտնելով Հայաստան՝ աւար եւ գերի են առնում, աւերում երկիրը եւ Դուին մայրաքաղաքը։ Յունական իշխանութիւնը, որ երկրի տէրն էր, չի կարողանում դիմադրութիւն ցոյց տալ, միայն հայ զօրքը Թէոդորոս Ռշտունու զօրավարութեամբ յարձակումներ է գործում արաբացի ասպատակաւորների վրայ եւ աջողում է գերիներն ու աւարը ետ խլել։ Այնուհետեւ Ղեւոնդը՝ սկսած Մուաւիայից (661–680 թ.) մինչեւ Հարուն–էլ–Ռաշիդի (Ահարոն որդի Մահմէտի, 786–809 թ.) երկրորդ տարին մի առ մի յիշատակում է ամիրապետներին իրենց իշխանութեան տարիներով հանդերձ, տեղեկութիւններ տալիս նրանց մասին։ Մէջէմէջ նա գրում է նաեւ Հայաստանի կառավարիչների – հրամանատարների, եւ հայ իշխանների արարքները. նկարագրում է այն աւերումները, որ Հայաստանը կրել է մերթ արաբներից ու յոյներից, մերթ հիւսիսային ազգերից — Խազիրներից, եւ թէ ինչպէս արաբները ծանր հարկահանութիւններ էին անում, աշխատում էին ոչընչացնել հայ ազնուականներին, սրանք էլ դիմադրում էին, առաջ էին գալիս ժողովրդական ապստամբութիւններ։ Բացի այդ ամենից՝ նա բերում է նաեւ Օմար խալիֆայի եւ Լեւոն Գ. կայսրի հետաքրքիր թղթակցութիւնը։ Այս է ահա Ղեւոնդի ժամանակագրութեան կարճառօտ բովանդակութիւնը։

Իր գրած նիւթը նա պատմում է մերթ համառօտ, մերթ ընդարձակ մանրամասնութիւններով. ամէնը շատ պարզ ու թեթեւ ոճով, երբեմն կտրուկ։ Կրում է, ինչպէս ուրիշները, Ս. Գրքի ազդեցութիւնը. իր կրօնական ոգով սա էլ երբեմն դէպքերը մեղքով է բացատրում։ Բայց անտարբեր չի մնում դէպի իր պատմածը, սովորաբար նաեւ դէպի պատմական անձերը։ Կուլտուրական շինարարական գործ ընդամէնը երկու եկեղեցու կառուցում է յիշում նա, այն էլ 7–րդ դարի վերջին քառորդում, երբ արաբական իշխանութիւնը դեռ մեղմ էր դէպի հայերը։ Հայաստանի իշխան Գրիգոր Մամիկոնեանն Արագածոտն գաւառի Արուճ աւանում (արդի Թալիշ գիւղում) շինում է մի եկեղեցի։ Նրան յաջորդում է 690–ական թուականների սկիզբներում Բագրատունի Աշոտ պատրիկը, «այր երեւելի եւ նախամեծար ի մէջ նախարարացն Հայոց... ճոխ եւ պերճ յիշխանութեանն, եւ յամենայն վարս երկրայինս զգաստ եւ առաքինասէր, եւ ազնուական քան զամենեսեան, եւ ծանօթ երկիւղին Աստուծոյ, եւ հոգաբարձու ամենայն

բարեգործութեան, փոյթ յուսումնասիրութեան․ եւ զարդարէր զեկեղեցիս Աստուծոյ վարդապետական արուեստիւք եւ պաշտօնէից խմբաւորութեամբ, պատուէր եւ երեւելի սպասուք յիւրոց գանձուց։ Եւ չլինէր զեկեղեցին Գաբիւնից յիւրում ոստանին» (Ե․ 16)։— Սակաւ մարդկանց է այսպէս ներբողում մեր այս պատմագիրը։ Նրա երկի մէջ քիչ կան գեղարուեստական տարրեր։

Ընդարձակ պատմական հայեացք չունի Ղեւոնդը։ Նա արաբացոց գործողութիւնների համար երկու հիմնական դրդապատճառ գիտէ։ Դրանցից առաջինը հէնց սկզբում բնորոշում է այսպէս․ «Զպատուէր օրինադրին իւրեանց ունէին օժանդակ, զոր պատուիրեացն որոմանցն սերմանողի, թէ՝ Ելէ՛ք ի վերայ աշխարհաց, նուաճեցէ՛ք զնոսա ընդ ձեռամբ ձերով․ զի մեզ, ասէ, տուեալ է ի վայելս պարարտութիւն երկրի․ կերա՛յք զմիս ընտրելոց երկրի եւ արբէ՛ք զարիւն զօրաւորաց» (Ա․ 4)։ Սա Իսլամի առաջնորդող ընդհանուր սկզբունքն էր։ Երկրորդ դրդապատճառը վերաբերում է հայ ազնուականութեանը։ Դա մի քաղաքական ծրագիր էր, որ գործադրում են 8-րդ դարի սկզբից։ Վլիթ (Վալիդ Ա․ 705–715 թ․) խալիֆայի համար գրում է Ղեւոնդը․ «Սա յառաջնում ամի իշխանութեան իւրոյ խորհեցաւ բառնալ յաշխարհէս Հայոց զտոհմ նախարարաց նոցին… զի ասէր եթէ միշտ խութ եւ գայթակղութիւն լինելոց են իշխանութեանս մերոյ»։ Նոյնը մտածում են եւ նախորդ ամիրապետի օրով։ Այդ ծրագիրն աշխատում են գործադրել ամենայն դաժանութեամբ։

3․ Գազանութիւններ եւ կեղեքումներ։— Նախճաւանի կողմերի հրամանատարն իր մօտ է կանչում նախարարներին իրենց հեծեալներով, իբրեւ «եթէ անցուցանել ի համարու արքունի եւ առնուլ հռոգ եւ դառնալ։ Եւ նոքա, — շարունակում է Ղեւոնդը, — ըստ օրինի պարզմտութեան իւրեանց՝ հաւատարիմ համարեալ զնենգութիւն գաղտասոյր որսողացն՝ վաղվաղակի անդր հասանէին»։ Նրանց երկու մասի են բաժանում, մի մասին ողջ ողջ այրում Նախճաւանի եկեղեցում, միւսին՝ Խրամ քաղաքի։ Ուրիշներին էլ բանտարկում են եւ նրանց՝ ամէն հարստութիւնը յափշտակելուց յետոյ՝ կոտորում են, եւ «անժառանգ առնէին զաշխարհս ի նախարարաց,— գրում է Պատմագիրը եւ շարունակում։— Յայնմ ժամանակի թափուր եղեալ աշխարհս Հայոց ի տոհմէ նախարարաց՝ մատնէին որպէս զոչխարս ի մէջ գայլոց։ Եւ թշնամեացն ամէնօրինակ չարեօք յարձակեալ ի վերայ՝ յանհուն աղէտս վտանգի պահէին զբնակիչս աշխարհիս Հայոց» (Ժ․ 31 եւ հտն․)։

Պատմագիրը բնականաբար միշտ էլ լի է զայրոյթով դէպի այդպիսի վազանութիւններ կատարողները եւ սովորաբար կարողանում է նրանց դէմքը նկարելու համար պատշաճ ուժեղ արտայայտութիւն գտնել։ Ահա թէ նա ինչպէս է դծագրում մի տարի միայն իշխող (785–786 թ․) Մուսէ ամիրապետին եւ նրա նշանակած ոստիկանին․ «Եւ էր [Մուսէ] այր ժանտ եւ ապարասան եւ այսակիր, որ յանչափ չարժող այսոյն որ ի նմա՝ ի դըսանել իւրում ի խաղս անարժան բարուցն՝ զմարդիկ կանգնէր փոխանակ

մղլակի՝ նետաձիգս առնել ի նոսա ի վարժումն անձին իւրոյ, զոր առժամայն հարեալ սատակէր ի կենաց: Եւ իբրեւ հաստատեաց զիշխանութիւնն իւր՝ առաքէ ի վերայ երկրիս Հայոց փոխանակ Ոոհայ զԹազմ ոմն, որ արդարեւ ըստ անուանն իւրոյ խազմարար եւ դժոխաձեւ: Որ իբրեւ եհաս ի քաղաքն Դուին՝ ընդ առաջ եղեն նմա ամենայն նախարարք Հայոց՝ ընդ առաջ լինէին նմա եւ իշխանք տանն Արծրունեաց՝ Համազասպ եւ Սահակ եւ Մեհրուժան: Իսկ բարեատեաց Թշնամին տեսեալ զգեղաղէշ վայելչութիւն փառաց նոցա եւ զբարեզարդութիւն ազատախումբ գնդին որ ընդ նոսա՝ վաղվաղակի ըմբռնեալ զնոսա՝ տայր ի պահեստ բանտի դանձինս զօրավարաց նախամարտկաց եւ քաջաց»: Ապա մանրամասն նկարագրում է, թէ ինչպէս չարաչար տանջելով սպանում են այդ անմեղ մարդկանց, որոնք չեն ուրանում իրենց հաւատը:

Սրտի կսկիծով պատմում է Ղեւոնդը ծանր հարկերի մասին առանձնապէս Աբբասեան տոհմի իշխանութեան ժամանակ: Հեշմ (Հաշիմ, 724–745) ամիրապետն իր առաջին տարում աշխարհագիր է անել տալիս Հայաստանում «վասն ծանրացուցանելոյ զանուր լծոյ ծառայութեան հարկատրութեան ազգի ազգի չարեօք»: Արաբացիների ներքին խռովութիւնների միջոցին հայերն ապստամբում են եւ հարկ չեն վճարում, բայց երբ իշխում է Աբդլա ամիրապետը (Աբուլ-Աբբաս, 750–754 թ.), նա իր եղբօր ձեռով ամէն նեղութիւն տալով պահանջում է հարկերը, սկսելով նախ Հայաստանից: «Ելեալ յաշխարհս Հայոց՝ բազում վշտօք եւ նեղութեամբ վտանգէր զամենեսին եւ հասուցանէր ի չքաւորութիւն տնանկութեան, մինչեւ պահանջել հարկս ի մեռելոցն: Եւ զամենայն բազմութիւն որբոց եւ այրեաց չարալլուկ տառապեցուցանէր. վտանգէր զքահանայս եւ զպաշտօնեայս աստուածային խորանին խոշտանգանօք եւ քքօք այպանութեան եւ գանիւք՝ ի յայտ ածել զանուանս վախճանելոցն եւ զընտանիս նոցուն: Խոշտանգէր եւ զբնակիչս աշխարհիս՝ բռնագոյն եւ դառն հարկապահանջութեամբ, առնուլ ըստ գլխոյ բազում զուզէս արծաթոյ, եւ դնել կնիք կապարեայ յամենեցուն պարանոցս: Իսկ տոհմ նախարարացն որ կամաւ եւ որ յակամայ յաճախէին տալ ընծայս ձիոց, ջորւոց եւ հանդերձից պատուականաց եւ զայլ մթերս ոսկւոյ եւ արծաթոյ, որպէսզի կարասցեն լնուլ զբերան վիշապին որ յարձակեալ էր ապականել զերկիրս»: Վերջում Պատմագիրը յայտնում է, թէ «յայնմհետէ հատաւ սակ արծաթոյն, որ դայր ամի ամի յարքունուստ զօրացն Հայոց: Եւ զհամար հեծելոցն պահանջէին յիշխանացն. եւ հարկ լինէր ի տանց իւրեանց հանդերձել զգունդս զօրացն եւ զընթացս զրավաստակ աշխատութեանցն ողջ պահել»: Դրա համար եւ Հայոց աշխարհի իշխանը, Իսահակ Բագրատունին, — գրում է Ղեւոնդը, — «առաջնորդէր զօրաց իւրոց ակամայութեամբ կոխել զաշխատութիւն մարտիցն ուր եւ առաքէր» (ԻԸ. 127 եւ հտն.):

Ծանր հարկապահանջութեան մի ահռելի վիճակ է պատկերացնում ընթերցողի առաջ Ղեւոնդն իր Պատմութեան ԼԳ. (էջ 135 եւ հտ.) գլխի մէջ: Հասարակ, անպաճոյճ լեզուով մի պատմուածք է դա, բայց իր բո-

վանդակութեամբ միայն՝ քամնեցնող է: Նոյն դժնդակ վիճակը շարունակւում է ոչ պակաս նաեւ «ագահ եւ արծաթասէր» Հարուն էլ–Ռաշիդի օրով, երբ «ոչ ոք էր տէր ընչից իւրոց», «Թափուրք ի ստացուածոց մնային, մերկք, եւ բոկք, եւ սովամահք» (ԽԱ. ԽԲ. 166 եւ հտ.):

4. Դիմադրութիւն եւ ապստամբութիւն: — Արաբական բռնապետները 8րդ դարի սկզբում արդէն, ինչպէս տեսնեց վերեւում, մտածում են «բառնալ զազատախումբ տոհմն յաշխարհէս Հայոց հանդերձ նոցին հեծելովք»: Նախարարները հալածուած են: Վասպուրականի իշխանները հասնում են Ակոռի. Նրանց հետապնդում են 5000ից աւելի արաբներ եւ «կամէին կենդանւոյն կլանել զնոսա»: Հայերն անցնում են Երասխի ձախ կողմը եւ բանակում են Վարդանակերտ աւանում, եւ «պատգամ յղեալ առ զօրսն Տաճկաց՝ «Ընդէ՞ր, ասէ, պնդեալ գայք զկնի մեր. զինչ ինչ մեղաք ձեզ. ահաւադիկ երկիրդ մեր առաջի ձեր է. ձեզ տուեալ զբնակութիւնս մեր, զայգիս մեր եւ զանտառս, եւ զանդաստանս մեր. արդ ընդէ՞ր եւ զանձինս մեր խնդրէք: Թոյլ տուք մեզ գնալ ի սահմանաց մերոց»: Արաբները մերժում են: Հայերը թէպէտ եւ թւով 2000ից պակաս էին, սաստիկ ջարդ են տալիս արաբներին, որոնցից մօտ 300 հոգի միայն փախչում, ապաւինում են «առ տիկինն Շուշան»: Հայերը ուզում են դրանց էլ կոտորել, բայց «ընդ առաջ ելեալ տիկինն Շուշան՝ բազում աղերսանօք եւ դաշամբք թափէր զնոսա մերկս եւ բոկս եւ հետեւակս եւ վիրաւորս, զորոց առեալ պատէր զվէրս եւ ողջացուցանէր եւ զգեցուցանէր հանդերձիւք: Տայր եւ դրաստս յիւրոց երամակաց եւ առաքէր առ իշխանն Իսմայելի»: Թէ ով է եղել այդ «ողորմած» տիկին Շուշանը, Պատմագիրը լռում է այդ մասին: Բայց այդ պատմական դրւագի մէջ գտնում ենք աւելի քան հին վիպական վեհանձնութեան ոգին. Մուշեղ Մամիկոնեանը Շապուհ արքայի գերի ընկած կանանց է պատուով ճանապարհ դնում դէպի իրենց ամուսինը, որ հայ կանանց չարաչար անպատուել էր, իսկ սա, այս տիկին Շուշանն աւերող ու կոտորող մարտիկներին, որոնց ընկերները հէնց նոյն ժամանակում հինաբար յարձակւում են Վասպուրականի Բջնունիքում, բայց պարտւում եւ ոչնչացւում են (Ը. 23 եւ հտն.): Ղեւոնդն այս ամբողջը պատմել է վիպական ձեւով ու մանրամասնութիւններով, տրամախօսութիւններով, որ բացադրութեան մէջ մտցնում են բանաստեղծական կենդանութիւն: Այս ոճական յատկութիւնը մերթ մերթ երեւում է նրա ուրիշ պատմուածքների մէջ եւս, որոնցից մի քանիսն իսկապէս վիպական դրւագներ են ժողովրդական բնաւորութեամբ:

Երբ Աբբասեանների իշխանութիւնը հաստատւում է, անասելի կերպով նեղում են հայերին հարկերով եւ այլ բռնութիւններով: 774 թ. ապստամբութիւնը ծագում եւ ծաւալւում է տարերային կերպով: Ղեւոնդը մանրամասն պատմում է այդ (ԼԴ. 137—152): Նա այդ էլ, հետեւանքից դատելով, անուանում է «անմիտ խորհուրդ», բայց նրա բոլոր համակրութիւ-

նը կռուողների կողմն է. «Քանզի իբրեւ տեսին նախարարք Հայոց զվտանգ տարակուսանացն հասեալ ի վերայ ինքեանց՝ եդին զոգի ի ձեռին իւրեանց եւ ձեռնամուխ եղեն յիրս, զոր ոչ կարէին վճարել, վասն զի նուազունք էին: Այլ սակայն լաւ համարեալ զմահ քաջութեամբ քան զկեանս վտանգաւոր՝ ձեռնամուխ եղեն յիրս ապստամբութեան, եւ ի բաց կացին ի հնազանդութենէն Իսմայելի»: Ապստամբութիւնն սկսում են Արտաւազդ ու Մուշեղ Մամիկոնեանները՝ սպանելով հարկի հրամանատարներին եւ հարկահաններին: Նրանց միանում են եւ ուրիշ իշխաններ, բացի Բագրատունի Աշոտից, որ ոչ թէ չէր ուզում, որ հայերն ազատուեն արաբական բռնապետութիւնից, այլ չէր հաւատում գործի աջողութեանը՝ նկատի ունենալով թշնամու մեծ ուժը: «Եւ ժողովեալ ամենայն նախարարք Հայոց ի մի վայր՝ առնէին առ միմեանս երդմունս եւ դաշինս ուխտի՝ կեալ եւ մեռանել ընդ միմեանս»: Նրանց միանում են եւ աշխատաւորները. «բազումք ի ռամիկ ժողով[րդ]ոց եկեալ խառնէին ի գունդն նոցա», «ժողովէին առ նա [Մուշեղ] ամենայն վշտատեսք եւ վտանգեալք հոգւով», — գրում է Ղեւոնդը: Չեն պակասում եւ հոգեւորականները: Ամէնքը կարծում էին, — ասում է Պատմագիրը, — թէ արաբների իշխանութեան վերջն է, «մանաւանդ պատրեալք առաւել ի կարծիս առն միոյ մոնոզոնի, որ մոլորութեան հոգւովն շարժեալ՝ մարգարէանայր սնոտիս եւ ընդունայն ասելով. «Ահա մերձեալ է ժամանակ փրկութեան ձերոյ. զի այժմ ընդ հուպ դարձցի գաւազան թագաւորութեանն միւս անգամ ի տուն Թորգոմայ, առնուլ ձեզ վրէժ յազգէն Իսմայելի եւ դուք մի՛ զանգիտէք յերեսաց նոցա, թէ նուազունք իցէք, զի մի այր ի ձէնջ հալածեսցէ զհազարսն, եւ երկուքն զբիւրսն. զի զպատերազմն ձեր տէր պատերազմեսցի — զօրացարո՛ւք, մի՛ զանգիտէք»: Եւ այսպէս տեսիլ սուտ եւ ըղձանս ի սրտից օր ըստ օրէ պատմէր նոցա, որում առհասարակ հաւատացեալ՝ տեսանող զնա կոչէին»: Իսկ ինքը Ղեւոնդը այդ՝ ազատութեան համար ոգեւորող մենակեացին կոչում է «մոլեկան մոնոզոն», անշուշտ միայն այն պատճառով, որ ապստամբութեան գործն աջողութեամբ չի վերջացել եւ աղետաւոր վախճան է ունեցել: Բայց եւ այնպէս նա սիրով պատմում է ամբողջը, եւ վերջին էպիզոդը, Արճէշ աւանում 775 թ. տեղի ունեցած ճակատամարտը նկարում է իբրեւ մի հերոսական գործ, մի «Վարդանանց պատերազմ», երբեմն նոյնիսկ ոճական նմանութեամբ Եղիշէին: Կռիւը լինում է ոչ լոկ կրօնի, այլ աւելի եւս ազգի ազատութեան համար: «Իսկ քաջայաղթ նահատակքն [=մարտիկները] թէպէտ եւ նուազունք էին ի մէջ չարաշուք որսողացն՝ սակայն ոչ զանգիտեցին ի դառնաշունչ օրհասէն, այլ մինչ ի սպառ դումարեալք ոգւով չափ՝ մարզէին զմիմեանս բանիւք ասելով. «Քաջութեամբ մեռցուք ի վերայ աշխարհիս մեր եւ ի վերայ ազգիս, եւ մի՛ տեսցեն աչք մեր կոխան առնել պղծալից արանց զբարարանս մեր» (էջ 149): Եւ սակաւաթիւ մարտիկ հերոսներն անվախ մարտնչում են երեսուն հազար թշնամիների դէմ. «Զի որպէս ասացաք ի նոյն ինքն ի թշնամեացըն, — գրում է Պատմագիրը, — ունէին, ասէ, ընդ ինքեանս մարտակիցս

*դհրեշտակական բազմութիւնս, որ մարմնական տեսլեամբ երեւէին թշնամեացն. զի տեսանէին երիցունս եւ պապասս [=քահանաներ] աւետարանօք եւ մոմեղինօք եւ խնկօք առաջ նոցա երթալով՝ զօրացուցանէին զնոսա»: Դրանք, հարկաւ, եղել են հոգեւորականներ, որոնք ուրիշ դէպքերում էլ մասնակցել են այդպիսի մարտերին: Աննախապաշտ թշնամիներն այլապէս չէին կարող բացատրել խիզախ քաջերի գործը, որոնք անխնայ կոտորում են թշնամիներին, մինչեւ ձեռքերը յոգնում են զէնքի ծանրութիւնից, կամ զրկւում են զէնքերից եւ ընկնում են քաջի մահով: «Որոց զօրագլխացն անուանքն են այսոքիկ. ի տանէն Բագրատունեաց սպարապետն Սմբատ, եւ Սահակ՝ բարձակից եւ նիզակակից նորին. ի տանէն Մամիկոնեանց Մուշեղ զօրավար եւ Սամուէլ տէր Մամիկոնէից, որ էր որդի մատաղ եւ առոյգ գեղեցկութեամբ, աներ սպարապետին մեծի. եւ ի տանէն Գնունեաց Վահանն դաշնակ: Եւ այլք բազումք ի նախարարաց եւ յազատաց զորս ոչ բաւեմ մի ըստ միոջէ թուել, որք անկանէին իբրեւ արք ԳՌ» [=երեք հազար]: Եւ յայնժամ սաստկապէս յաճախէին ողբք եւ աշխարհանք աշխարհիս Հայոց. վասն զի առաջնորդք մեծք եւ զօրագլուխք պատուականք բարձան ի միջոյ ի միում վայրկենի ժամու. եւ երկիրս առ հասարակ ի խոր տխրութեան ըմբռնեալ՝ կոծէին կոծ մեծ եւ աւաղէին զվախճան նախամարտկացն հզօրաց եւ քաջաց: Եւ եւս դժնդակ նեղութիւն էր, զի եւ ոչ տեղի անգամ գոյր լալոյ եւ ողբոց համարձակապէս զննջեցելոցն, եւ ոչ հաց սգոյ բեկանել ի տունս իւրեանց, եւ ոչ տալ գերեզմանի զվախճանելոցն»: Այսպէս է վերջացնում Ղեւոնդն այդ դիւցազներգութեան արժանի սխրագործութեան պատմութիւնը:*

## ՅՈՎՀԱՆՆԷՍ ԿԱԹՈՂԻԿՈՍ ԴՐԱՍԽԱՆԱԿԵՐՏՑԻ

1. Կենսագրութիւն:— *Այս պատմագրի կեանքի ու գործունէութեան մասին մենք շատ տեղեկութիւններ ունենք, աւելի շատ, քան մեր որեւէ այլ հին հեղինակի մասին: Լինելով կաթողիկոս եւ մասնակից իր ժամանակի քաղաքական գործերին՝ նա առանց քաշուելու գրել է իր մասին, իբրեւ կաթողիկոսի: Նա իր «Տարք կաթողիկոսաց» աշխատութեան մէջ յայտնում է, որ Մաշտոց կաթողիկոսի մահից յետոյ ընտրուել է ինքն, որ էր «Յաշակերտութենէ նորին սրբոյն Մաշտոցի, այլ եւ արեան հարազատութեամբ մերձաւոր նմին գոլով եւ հայրենեօք ի մեծ դաստակերտէն Դրասխանակերտէ. եւ ընկալայ զաթոռ նորին ի յխզ* [=346+551=897] *թուականութեանս Հայոց»: Իր Հայոց Պատմութեան* (1) *մէջ էլ գրում է. «Զկնի [Մաշտոցի] ապա հէքս ես եւ թշուառականս եւ պասքեալս ընդ հոգեւոր արբուցման խրատու*

---

(1) Յովհաննէս կաթողիկոսի Դրասխանակերտցւոյ Պատմութիւն Հայոց, Թիֆլիս, 1912, էջ 183:

Յովհաննէս որ զսոյն զայս գրեցի գիրս՝ ոչ ըստ արժանեաց անձայ յաթոռ սրբութեան, թերեւս ոչ կարացեալ դիմակ գոլ հրամանի արքային եւ կամ այլոց եւս նախարարակոյտ բազմութեանն։ Զի թէպէտ եւ յաշակերտութենէ առն սրբոյն Մաշտոցի ի մանկութենէ իմմէ, այլ եւ ազգակից հարազատութեան նորա ըստ մարմնոյ, սակայն կուրացեալ գերանով մեղաց իմոց՝ ոչ բաւական զանձն վարկայ դնել ի նշմարել զշիղ յական եղբօրն»։ Ժամանակակից Թովմայ Արծրունին (1) գրում է․ «Եւ փոխանակ նորա [Մաշտոցի] ժառանգէ զաթոռ հայրապետական երանելին տէր Յովհաննէս, որ սնեալ եւ ուսեալ առ ոտս սրբոյն Մաշտոցի․ նորին հրահանգեալ կրթարանի ուսումնասիրութեանն վարժիւք ոռոգացեալ, այր քաղցրաբարոյ եւ հեզահայեաց, հասարակաբար առհասարակ զինքն վարկանելով, արտաքոյ ամբարտաւանական բարձրայօնութեանն՝ կալով յաշտիճան հեզոցն, դրուատեալ ի փրկչէն մերմէ Յիսուսէ Քրիստոսէ»։ Թէ ինչ են եղել Մաշտոցի «կրթարանի ուսումնասիրութեան վարժութիւնները»՝ այդ մասին ոչինչ չի հաղորդում ոչ ինքը, ոչ էլ Թովման։ Սեւանի ճգնազգեաց Մաշտոցից նա, անշուշտ, ստացել է խիստ կրօնական կրթութիւն, քաջ ծանօթացել Ս․ Գրքին ու հայ մատենագրութեանը, վարժուելով միանգամայն եւ հռետորական արուեստին։ Ստեփանոս Ասողիկը նրան «ճարտասան» է անուանում։ Երբ Գառնեցի Գէորգ կաթողիկոսն Ատրպատականի Աֆշին ոստիկանից բանտարկւում է, Յովհաննէսը, որ այդ ժամանակ կաթողիկոսական «դրան եպիսկոպոս» էր, փրկանքի համար պահանջուած դրամը ժողովելով՝ կաթողիկոսին ազատում է բանտից։ Այլեւս ուրիշ բան չի յայտնում նա իր մասին՝ նախ քան իր կաթողիկոսութիւնը։

Կաթողիկոսական շրջանում նա շատ անգամ խաղաղութեան միջնորդ է հանդիսանում իրար հետ կռուող իշխանների, կամ թագաւորների եւ իշխանների միջեւ, ինչպէս նաեւ Հայոց թագաւորի եւ Ատրպատականի ոստիկանների միջեւ։ Երբ երկրորդ անգամ հաշտութեան համար բազմաթիւ ընծաներով գնում է Ատրպատականի ոստիկան Յուսուփի մօտ, բռնւում է նրանից, բանտի ու կապանքների մէջ անասելի նեղութիւններ է կրում երկար ժամանակ, մինչեւ որ յաջողում է փախչելով ազատուել։ Բայց արաբացիների ահից չի կարողանում Հայաստանում մնալ, քաղաքէ քաղաք փախչելով գնում է Աղուանից երկիրը, ուր մեծ հիւրասիրութիւն է գտնում․ ապա անցնում է Վրաստան, Ատրներսեհ թագաւորի մօտ։ Այստեղ նա Կ․ Պոլսի Նիկողայոս պատրիարքից մի ցաւակցական թուղթ է ստանում Հայաստանի աւերմունքների համար, վերադառնում է Հայաստան, Տարօն գաւառը։Սմբատ թագաւորի մահից յետոյ մի թուղթ է գրում Բիւզանդիայի Կոստանտին կայսրին՝ խնդրելով նրան օգնել հայերին ընդդէմ արաբների։ Կայսրը մարդ է ուղարկում իր մօտ հրաւիրելու կաթողիկոսին եւ արքայորդի Աշո-

(1) Թովմայի վարդապետի Արծրունւոյ Պատմութիւն տանն Արծրունեաց, Ս․ Պետերբուրգ, 1887, էջ 243։

տին: Սա գնում է Կ. Պոլիս, իսկ կաթողիկոսը հրաժարւում է գնալուց, որպէսզի տկարամիտներին գայթակղութիւն չպատճառի, թէ յարակցում է քաղկեդոնականներին: Տարօնից նա անցնում է Դերջան, ապա գնում է Մանեայ այրը, այցելում է Սեպուհ լեռան ճգնաւորներին, որոնց հետ ապրում է ինն ամիս եւ դժկամակութեամբ թողնելով ճգնաւորական կեանքը՝ վերադառնում է արեւելեան Հայաստան, երբ նրան ետ են կանչում: Նա ցաւում է, որ վերադարձել է, որովհետեւ կարծես արաբացիների գործած աւերմունքները բաւական չէին, հայ իշխաններն եւ թագաւորներն էլ ապիրատութեամբ միմեանց դէմ են զինւում եւ ինքը նրանց հաշտեցնելու համար՝ նորից մեծ նեղութիւններ է կրում: Իր միջնորդութիւնը Սմբատի որդի Աշոտ թագաւորի եւ Յուսուփի ձեռով թագաւորած Աշոտ սպարապետի միջեւ, որոնք իրար հետ կռւում էին՝ պատմելուց յետոյ՝ գրում է նա. «Եւ այսպէս զերկեամ մի ելուզակօրէն զկնի իւերաց դառոյթս տայլն: Իսկ ես աւա՛ղ եղկելի անձին իմոյ կարդայի, զի բազում անգամ բնակեաց անձն իմ ընդ այնոսիկ ոյք ատէին զողջոյն, վասն զի ես էի խաղաղարար եւ յորժամ խօսէի՝ նոքա մարտնչէին ընդ իս» (էջ 299): Ծերութեան օրերում, երբ Նասր ոստիկանը զօրքով գալիս է Դուին, կաթողիկոսն ստիպուած է լինում հալածական փախչելու Գեղայ լեռան ծործորները, ապա Սեւանայ կղզին, այստեղից էլ «ի ձեռակերտ ամրոցիկն իմ Բիւրական» — ասում է նա, — «զոր ստացեալն էր իմ դանձի գնոյ, ուր եւ շինեալ յարդարեալ իսկ էի եկեղեցի համահեղոյս կոփածոյ քարամբք պերճապաճոյճ պճնողութեամբ եւ նկարակերտ յօրինուածով, եւ վանս կուսակրօն միանձացելոց գնա հաստատեալ»: [Եկեղեցին մնում է ցայսօր]: Այստեղ էլ, սակայն, նա չի կարողանում երկար ժամանակ հանգիստ մնալ արաբացիների ձեռից, որոնք գալիս, պաշարում, առնում են այդ ամրոցիկը եւ միջի մարդկանց կոտորում: Կաթողիկոսը, սակայն, դրանից քիչ առաջ փախչում է Բագարան, Աշոտ թագաւորի մօտ: «Իսկ ես, — գրում է նա, — որ նախ չոգայ ի թագաւորազանց բողբոջն Աշոտոյ՝ առ նմին կացեալ մնայի մինչեւ ամարայինն յաչունն յեղանակեալ յեղափոխէր, բազմաբար բարեաց մտաց բարութիւն եւ լրութիւն սիրոյ առ ի նմանէն ընկալեալ առատաձեռնութեամբ ի բոլոր մասունս պիտառութեանց: Եւ ապա առ ի նմանէն յղարկեալ չոգայ առ թագաւորն Հայոց Գագիկ, ըստ միշտն հրաւիրման ի կոչման նորա. վասն զի հայրապետանոց տունն հանդերձ գիւղօք եւ գերդաստանք առ հասարակ ընդ ձեռամբ նուաճեալ էր Նորայն, եւ մեք անբնակ իմն վայրակացեալ, եւ ոչ ոք էր այն՝ որ զուն ի վերայ գործէր ոգւով չափ սակս նորոգման մայրաքաղաք եկեղեցւոյն, եւ հոգեւոր մշակութեամբ հանդիսանայր առ ի դարձուցանել զփերութիւն նոր Սիոնի. զի յոյժ պակասումն եւ լքումն լինէր ամենայն պատերազմող ձեռին»: Վասպուրականի Գագիկ թագաւորն եւ իր եղբայր Գուրգէնն էլ նրան մեծ պատւով հիւրամեծարում ու յուսադրում են: Նա մեռնում է խորին ծերութեան հասած՝ 925 եւ 930 թուականների մէջ. ճիշտ տարին չի պարզւած:

2. «Պատմութիւն Հայոց»: — *Յովհաննէս կաթողիկոսից մնում են երկու աշխատութիւն, մէկ՝ վերեւում յիշած «Շարք կաթողիկոսացն Հայոց», որ մի ցանկ է հայոց կաթողիկոսների՝ սկսած Գրիգոր Լուսաւորչից մինչեւ 10-րդ դարը՝ համառօտ կենսագրական տեղեկութիւններով. մէկ էլ «Պատմութիւն Հայոց», որ գրել է ծերութեան հասակում եւ վերջացրել է մահից մի քանի տարի առաջ: Սկզբում դրած ունի մի «Յառաջաբան Պատմութեան», որի մէջ բերում է իր գրելիքի համառօտ ծրագիրն եւ յայտնում է այսպէս. «Եւ արդ մի՛ եւս ինձ այլ յիրս յառաջաբանութեան եղիցի ծախել զժամանակս. վասն զի ծերութիւն ցաւագին՝ մահ առ դուրս պատրաստ ունի, եւ տաղնապ տարակուսիցս հապճեպ տայ պատմել զանցս անցից աղէտիցս եւ անհնարին խռովութեանց հասելոց կալելոց զմեզ: Արդ այսուհետեւ յարահետ եւ յաղքատիմաց խանձէ մտացս յառաջ ձգեցից բան երագադիր դպրի գրչութեամբ»: Ինչքան էլ նա ինքն ասում է, թէ արագ եւ շտապով պիտի գրի, Պատմութեան մէջ էլ թէ՝ «շտապ տագնապի տարակուսանացս ոչ ներէ ինձ ծախել զժամանակս ի ներբողումն սորա [= Մեծն Տիգրանի] քան թէ փութալ յայլ ինչ որ առաջիկայ», եւ իսկապէս շտապով էլ գրում է, բայց եւ այնպէս չի կարելի ասել, թէ այդ մեծ գործը նա կարճ ժամանակում «շարունակաբար, անընդհատ, մի շնչով» գրած լինի: Այդ երեւում է, օրինակ, նրա վերաբերմունքի փոփոխութիւնից: Երբ Գագիկ Արծրունին դաւաճանելով իր թագաւորին՝ Յուսուփ ոստիկանից ստանում է «թագ արքայական», Պատմագիրը նրան անուանում է «թագակերպեալ իշխանն Գագիկ», բայց յետոյ մեծ գովեստով է խօսում նրա մասին եւ նոյնիսկ անուանում է նրան «թագաւորն Հայոց Գագիկ»:*

*Առաջաբանից (էջ* 4) *երեւում է, որ նրանից խնդրողներ են եղել գրել Պատմութիւնը. «... զառ ի յինէն խնդրողացն»: Վերջաբանի մէջ էլ յայտնում է, որ նա շտապով գրել է «ի հրամանէ թագաւորաց», հաւանօրէն Աշոտ Բ. եւ Գագիկ Արծրունի թագաւորների, նրանց մօտ հիւրասիրուած ժամանակ: Բայց Պատմութեան ընթացքում յաճախ դիմում է եզակի ձեւով՝ «քեզ ո՛վ ընթերցասէրդ» (էջ* 12, 16, 23, 69, 111, 131, 141, 166, 228):

*Յովհաննէսի այդ մեծ երկը, առանց գլուխների ու մասերի բաժանման, մի ամբողջական հայոց պատմութիւն է, ջրհեղեղից սկսած, — ինչպէս հնումն վարւում էին, — մինչեւ* 923—924 *թ.: Հին մասը նա բնականաբար քաղում է նախորդ պատմագիրներից: Այս մասի մէջ եւս, սակայն, կան այնպիսի տեղեկութիւններ, առաւելապէս կաթողիկոսների համար, որ ուրիշ աղբիւրներից յայտնի չեն:* 8*րդ դարի վերջերի եւ* 9*րդի առաջին կէսի համար դրեթէ միայն կաթողիկոսների մասին է գրում Յովհաննէսը. եւ այդ նա,* 8*րդ դարի վերջին տասնամեակի մասին գրելիս, բացատրում է այսպէս. «Եւ վասն զի սպառսպուռ Հագարացիքն տիրեցին կալան զՀայաստանեայս եւ մեծամեծք աշխարհիս նուաղեցան, եւ մնացեալք զօղեալ դադարեալ կային ընդ լծով ծառայութեան նոցա. սակս այսորիկ իսկ յայսմ վայրի պակասեաց ի Պատմութենէ աստի գրոյցք իշխանաց մերոց. բայց եթէ գուցէ դտցի ինչ՝ բաւական քեզ բերցի նախ քան զմեզ պատմեալն ի Շապհոյ պատ-*

մագրէ» (էջ 111)։ Կը նշանակի՝ արաբները հասել էին քաղաքական նպատակին. հայ նախարարութեան անկումն էր, ոչ, հարկաւ, կատարեալ ոչընչացումը։

Պատմութիւնն առանձնապէս հետաքրքիր եւ կարեւոր է դառնում 850ական թուականներից սկսած, երբ Տաւրոս լերան բնակիչները, սասունցիները, սպանում են Աբուսէթ ոստիկանին Տարօնում, եւ բռնաւոր Բուղան ի վրէժխնդրութիւն աւերմունքներ է գործում եւ դերում նախարարներին։ Համեմատաբար շատ համառօտ է խօսում Աշոտ Բագրատունու իշխանութեան եւ թագաւորութեան շրջանի համար՝ յայտնելով, թէ Շապուհ Բագրատունի պատմագիրը մանրամասն գրել է այդ մասին։ Շատ ընդարձակ տեղեկութիւններով սկսում է պատմագրել Սմբատ թագաւորի (891 — 915 թ.) եւ սրա որդի Աշոտը ժամանակը, եւ հանդիսանում է այդ շրջանի հայոց պատմութեան ամենագլխաւոր աղբիւրը, ոչ միայն ժամանակակից, այլեւ իր պատմած շատ դէպքերի ականատես եւ մասնակից լինելով իբրեւ կաթողիկոս։

3. Ինքնակենսագրութիւն եւ գրական գործ։ — Յովհաննէս կաթողիկոսի այդ երկն իր մի խոշոր մասով ոչ թէ սոսկ պատմութիւն է այս բառի սովորական իմաստով, այլ ինքնակենսագրութիւն կամ յիշողութիւններ, եւ իբրեւ այդպիսին՝ կեանքի անմիջական կենդանի կոնկրետ արտայայտութիւն։ Իր ձեւով էլ դա աչքի է ընկնում։ Թէպէտ ծերութեան ժամանակ գրի առնուած, բայց սկզբի մասը մի կողմ թողած, մեծ թափով ստեղծուած մի իսկական գործ է դա, որ վկայում է հեղինակի մտաւոր կարողութեանը։ Որքան Պատմութեան հին մասը, որ ուրիշներից է առնում, արագ ու հապճեպ, համառօտելով, սեղմ բովանդակութեամբ է առաջ տանում, այնքան աւելի ծաւալուն ոճով եւ իրական կեանքի գծերով է առաջ բերում իր ժամանակակից պատմութիւնը։ Ամէն հատուածներն այդ երկի լի են հեղինակի ապրումներով, յաճախ նրա կրած նեղութիւններով, նրա ցաւագին վշտահարութեամբ ժամանակի տխուր ու թշուառ կացութեան համար։ Կարդալիս շարունակ տեսնում եւ զգում ենք հեղինակին, որ շատ զգայուն է դէպի ուրիշների տառապանքները։ Դրա համար եւ նա ազդում է, երբեմն նրա խօսքը նոյնիսկ յուզիչ է իր մանրամասնութիւններով, մանր բաների պատմուածքներով, որոնք տեղ են գտնում սովորաբար ինքնակենսագրութիւնների ու յուշիկների մէջ։ Նրա սրտից անպակաս է նաեւ ատելութիւնը դէպի երկրի աւերիչներն ու դաւաճանները։ Մերթ այնքան սաստիկ է նրա ցաւը դէպի անմեղ վնասուածները, այլեւ ընդհատելով պատմուածքը՝ մարգարէական եղանակով, նաեւ մարգարէների խօսքերով, քնարական զեղումներով ողբում է երկրի աւերումը, հայ ազգի անկումն ու թշուառութիւնը։

Իբրեւ քերթողական արուեստին վարժուած գրող՝ Յովհաննէսը ջանում է ըստ ամենայնի ճարտասանօրէն ու գեղեցիկ պատմել եւ իր ոճով էլ ազդել։ Մէկ մէկ գովում է կամ բնութագրում է իր սիրելի անձերին, յաճախ առանձին մակդիրներով, ինչպէս, օրինակ՝ «իմաստունն Գագիկ», «մեծ եւ

խոհեմ եւ հանճարեղ իշխանն Հայոց Գրիգոր», «հեզահամբոյրն [Սմբատ]», «հոյակապ իշխանն մեծ Սահակ», «ամենահարուստ եւ բազմահանճար թագաւորն»: Սիրում է որեւէ դիպուկ ածականով որոշել առարկաները, գործողութիւնները: Յօրինում է ընդհանրապէս զարդարուն դարձուածներով, ճոխ, պատկերաւոր արտայայտութիւններով, նմանութիւններով, ճարտասանական ձեւերով. «Հէնք Իսմայէլեան ասպատակացն իբրեւ զհրդեհս յանտառս եւ ի շամբս վառեալ, այսպէս սփռեալ տարածեցին զճարակս բոցոյ ի մէջ ժողովրդոց մերոց. եւ գտաւ ամենայն գլուխ ի ցաւս եւ ամենայն սիրտ ի տրտմութիւն» (էջ 232): Յաճախ, սակայն ընկնում է ճոռոմաբանութեան, աւելորդ պաճուճանքների եւ բազմաբառութեան մէջ, կամ հոմանիշների աւելորդ կուտակութիւններ է անում. «ոչ կարացեալ տեւել, ժուժալ, տանել եւ համբերել պատերազմին» (էջ 125): «Եւ յայնմհետէ ապա նիւթ հրաբորբոք դառնութեան մատոյց գտեալ [ոստիկան Յուսուփ] զայնպիսի յաղթութիւն՝ հրակիզութիւնս բազումս սփռեալ տարածանէ ընդ ոլորտս երկրի մերոյ: Եւ ի միջօրէի իբրեւ ի գիշերի մութ եւ մէգ եւ մառախուղ եւ խաւար աղջամղջին պատեալ պաշարէր զԱսքանազեանս ազգ եւ ի լծակս կշռոց եղեալ զերկուռս տաղնապ տարակուսանաց՝ հակամիտեալ կուտեալ գտանէին ի վերայ մեր ծանրատաղտուկ անուր Հագարու առաւել քան զքարինս ձեռոյն Նաքովրայ... Քանզի արմատ դառնութեան, զոր երբեմն խլեալ Տէր ի տանէս Թորգոմայ՝ կրկին շառաւիղեալ տնկեցաւ յիմանալի անդաստանս մեր՝ ի փշահեղձ մացառս վերընձիւղեալ յեղծումն եւ յապականութիւն: Եւ այնուհետեւ ահա սիրտ իմ տանջեալ տաղնապի տարակուսանօք եւ հաչեալ մաչի փոր իմ ի լալոյ, զի յանօրէնութեանց մերոց այցելութիւն Տեառն անտես արար զմեզ, եւ ի սեւաթոյր տխրութենէ գործոց մերոց խեթիւ հայեցաւ ի մեզ արեգակն ճշմարիտ. եւ մատնեցաք ի ձեռս ծանրասրտի երկրորդըն փարաւոնի եւ դառն գործավարաց նորա, որք առաւել եւս քան զանուր կաւափաղաղ աղիւսագործութեանն վէրս ի վերայ եդեալ՝ կործանեցին զմեզ անհնարին հարուածովք ի վերայ հարուածոց: Վասն զի իբրեւ զմրրիկ հողմոյ շնչեալ ի մեզ մահաբեր Իսմայէլեան օդն դառնաշունչ եւ ըստ նմանութեան փոշոյ պտուտաբար ցնդեալ՝ ի բաց զմեզ տարադրեաց ի մեր բնակութենէ. եւ ըստ սաստկութեան ուղխից յորձանաց հեղեղեալ ողողեալ՝ արբոյց զհողի յիմարութեան առհասարակ՝ իբրեւ զոչխար ի սպանդ զմեզ վարատեալ» (էջ 219 եւ հտն.): Բայց նա միշտ այսպիսի ոճով չի գրում, այլ յաճախ աւելի թեթեւ ու պարզ ձեւով:

4. Նմանողական ոճ. Քերթողական արուեստ եւ «գեղջուկ բան»: — Յովհաննէսն իր Պատմութեան առաջին մասը պատմում է իր աղբիւրների արտայայտութեան ձեւերով ու խօսքերով, երբեմն իւրացնելով նրանց նոյնիսկ մտածելու եւ յօրինելու եղանակը, դատողութիւններն ու կարծիքները: Ժամանակակից նիւթի մէջ եւս նա շատ անգամ ինքնուրոյնութիւն չի ցոյց տալիս: Ս. Գրքից ոչ միայն բազմաթիւ նմանութիւններ եւ վկայութիւններ է մէջ բերում, այլեւ շատ խօսքեր այնպէս աննկատելի գործածում է իր գրուածքի մէջ, որ թւում է, թէ իր մտածածները, իր սեփական

դարձուածներն են: Նոյն ձեւով նա օգտւում է նաեւ Ագաթանգեղոսից եւ ուրիշներից, մանաւանդ Մ. Խորենացուց եւ Եղիշէից:

Յովհաննէս Պատմագրի ոճի այս նմանողական յատկութիւնը, որ երեւում է արդէն Ղեւոնդ Պատմագրի մէջ, եւ մեծ չափերով նաեւ Յովհաննէսի ժամանակակից Թովմա Արծրունու Պատմութեան մէջ, գլխաւորապէս նրանից է առաջանում, որ այդ դարում գրաբարն արդէն սովորովի դպրոցական լեզու է եղել: Առօրեայ խօսակցութեան ժամանակ ուրիշ լեզու են բանեցրել, գրելիս՝ ուրիշ, թէպէտեւ այդ երկուսը, հարկաւ, դեռ քիչ են տարբերուել միմեանցից: Կենդանի խօսակցական լեզուն, «գեղջուկ բանը», արդէն այնքան զօրացած է եղել, որ արժանացել է նոյնիսկ գրական դառնալու. Շապուհ պատմագիրը «դեղջուկ բանիւ» է գրել իր ժամանակի մանրամասն պատմութիւնը: Լեզուի այս երկուութիւնը բնականաբար ազդել է նաեւ ոճի վրայ, եւ միմեանցից աւելի եւս հեռացել են ըստ ոճի երկու տեսակ գրութիւնները, որ, ըստ Մ. Խորենացու, յօրինում էին մէկը պերճախօսութեամբ, միւսը՝ «հասարակաց խօսիւք», որ եւ Յովհաննէսն անուանում է, ըստ «քերթողացն արուեստի» կամ «ըստ քերթողական հրահանգացըն», եւ «ըստ գեղջկաց անարուեստից»: Երկրորդ տեսակի երկերն ինչպէս իրենց լեզուով սովորական ու պարզ էին, նոյնպէս եւ գրութեան եղանակով. չէր պահանջւում յաճախել հռետորական ձեւեր ու պատկերաւոր արտայայտութիւններ: Ուստի գրողները կարիք չունէին ճարտասանական վարժութիւնների: Քերթողաբար յօրինելու համար, ընդհակառակն, հարկաւոր էին առանձին «հրահանգներ» թէ՛ լեզուի եւ թէ՛ քերթողական ոճի վերաբերեալ: Այդ «քերթողական արուեստն» ահա սովորում էին դպրոցներում հին մատենագիրների վրայ հրահանգուելով, որով եւ մեր հին մատենագրութիւնը դառնում էր նմանողութեան եւ նոյնիսկ ընդօրինակութեան առարկայ: Նմանում էին ոչ միայն նախորդների լեզուին, այլեւ նրանց ոճին, գործածում էին նրանց դարձուածները, խօսքերը, մտածութեան ձեւերը, պատկերները եւ այլն, երբեմն նոյնիսկ չափազանց: Յովհաննէսն, օրինակ, Աշոտ Ա.ին նկարագրում է ինչպէս Մ. Խորենացին Մեծն Տիգրանին եւ Սմբատ Բագրատունուն, իսկ Եղիշէից առնում է կանանց նկարագիրն իր ժամանակի կանանց համար: Նրա գրչի տակ այդ ըստ «քերթողաց արուեստի» ճոռոմ նմանողական ոճն այն աստիճանի չի հասնում, որ խրթնաբանութիւն դառնայ, մանաւանդ որ նրա երկի մէջ կան շատ հատուածներ, որոնք, ինչպէս ասուեց վերեւում, համեմատաբար պարզ ու բնական ոճով են, իր սեփական պատկերներով: Բայց եւ այնպէս Յովհաննէսը չի սիրում շատ պարզութիւնը եւ բարձրից նայելով Շապուհի գեղջուկ գրուածքին՝ աշխատում է գրել քերթողաբար. «Ոչ ըստ գեղջկաց անարուեստից երկրորդեալ զայն ինչ զոր նախ քան զմեզ քաջք եւ բանաստեղծք արդոյականք եւ զարմանալիք զարժանի բան պատմութեան... արձանագրեցին... զի մի՛ տղայաբար ինչ յանդգնեալ զմիանգամ գրեալսն երկրորդեցից եւ զքերթողացն արուեստ տապալեցից, եւ զայն վերծանողացն ծիծաղելիս կացուցից (էջ 4 եւ հտ.): Ժամանակակիցների ճաշակով այդպիսի ոճն է համարուել դեղե-

ցիկ: Այս մասին տեսնել նաեւ Գրիգոր Նարեկացի, պար. 11. «Հռետորական խրթին ոճ»:

5. Հայաստանի վիճակը: — Յովհաննէսի այդ դրական երկը մեր առաջ բաց է անում իր ապրած ժամանակի, մի 30 – 35 տարիների, ուժեղ դծագրուած ընդարձակ պատկերը: Դրա մէջ անդրադարձած են մի կողմից՝ Հայաստանի իրական ներքին դրութիւնը, միւս կողմից՝ արաբական բռնութիւնները, որոնք ծայր աստիճանի են հասնում այդ շրջանում, ապա նաեւ իշխանների կռւին արաբների դէմ: Այստեղ մենք տեսնում ենք, որ սկզբում քաղաքական մեծ յաջողութիւններ է ունենում Հայոց Սմբատ Թագաւորը: «Եւ այսպէս ձգտեալ աճեցուցանէր [Սմբատ] գչաւիղ տէրութեանն իւրոյ յարեւմտից հիւսիսոյ մինչեւ ցԿարնոյ քաղաք, եւ անդր եւս քան զԿղարջս՝ քերեալ մինչեւ առ ափն ծովուն մեծի, եւ մինչեւ ցսահմանս Եգերացւոց եւ մինչեւ ցստորոտ մեծի լերինն Կովկասու, զԳուգարացիս եւ զԾանարս մինչեւ ցԴուռն Ալանաց, առեալ եւս յինքն եւ զամրոց դրան պահակի նոցա եւ անտի ի հարաւակողմն կոյս զԿուր գետով մինչեւ ի քաղաքն Տփխիս. եւ զՍւափ գաւառ մինչեւ ի քաղաքն Հունարակերտ եւ մինչեւ ի Տուս եւ ի Շամքոր»: Նրա իշխանութեան մէջ էին Մեծ Հայաստանի մնացած կողմերն եւս՝ բացի Աղձնիքից: Նա յաջողում է անմիջապէս կապուել ամիրապետի հետ եւ ոչ Ատրպատականի ոստիկանի միջոցով: Սա վախենում է նրա զինուորական ուժից՝ բարեկամ ձեւանալով նրան: Վրաց Ատրներսեհ արքան, որին Սմբատն ինքն էր թագաւորեցրել Վրաստանի վրայ, գալիս է Թագաւորի մօտ այցելութեան՝ Զատիկը միասին տօնախմբելու համար: Իսկ Յուսուփ ոստիկանը «բազում երիվարս սրավարս սօսս եւ աշխպարանօքս պատրաստեալ՝ բազմազան պճնայարմար զարդուք եւ զինուք, ոսկեսանձ, ոսկենկար պաճուճանօք, այլ եւ թագ եւս յոսկւոյ Սոփերայ կազմեալ, եւ ի նմա յելուզեալ յեռեալ վարսակալ մարգարտատող ապազարդութիւնս, եւ այլ եւս ականս պատուականս եւ բազում եւ երեւելի զգեստս արքունականս ոսկեճամուկս եւ չղարչատեռն հրաշանկարս միանգամայն՝ առաքէ ի պատիւ մեծարանաց արքային Սմբատայ»: Նոյնպիսի ընծաներ տալիս է նա եւ արքայորդի Աշոտին: «Բայց եւ ես, որ զայս գրեցի, — շարունակում է Պատմագիրը, — պատուեցայ պատուասիրաբար յոստիկանէն զգեստուք ըստ օրինի կարգիս. եւ ջորի պաճուճարար ոսկեզօծ զարդուք առաջի մատուցանելով ինձ»: Թագաւորն էլ իր կողմից պակաս նուէրներ չի տալիս Յուսուփին եւ ճանապարհ դնում նրան դէպի Ատրպատական:

Շարունակենք տեսնել, թէ ինչպէս է նկարագրում Պատմագիր կաթողիկոսն երկրի ծաղկումն այդ դեռ խաղաղութեան շրջանում: «Իսկ աշխարհիս Հայաստանեայց յաւուրսն յայնոսիկ այց արարեալ Տեառն եւ պատսպարեալ եւ յաջողեալ ի բոլոր բարութիւնս՝ բնակեցան իւրաքանչիւր ոք ի ժառանգութիւնս իւրեանց. եւ սեպհականեալ զերկիր՝ տնկեցին այգիս եւ արմատացուցին բուրաստանս ձիթենեաց եւ պարտիզաց. հերկեցին հերկս արտաքոյ փշոց եւ կթեցին պտուղս հարիւրաւորս. զեղան շտեմարանք ցորենոյ ի ժամանակի լրութեան հնձոց. լցան գուբք գինւոյ ի կութս այգես-

տանեայց եւ լերինք ցնծութիւն զգեցան, զի բազմացան ի նմա արօտականք անդեայք արջառոց եւ հօտք ոչխարաց: Եւ գլխաւոր Նախարարք մեր յապահովացեալք եւ հանգուցեալք ի հինից ասպատակաց՝ շինէին եկեղեցիս վիմարդ. հաստահեղոյս ձուլեալ կրով՝ ի մենաստանս եւ յաւանս եւ յագարակըս... Եւ այսպէս վիճակ ցանկալի՝ լի պտղատածօղ արդասեօք պարարտութեամբ՝ առհասարակ ամենեցուն տուաւ ձրի նորին շնորհօքն Աստուծոյ... բղխէր աղբիւր բարեաց» (էջ 198 եւ հտն.):

Այսպէս ծաղկում էր Հայաստան աշխարհը: Բայց արդէն սկսել էին ծայր առնել նախարարների ոտնձգութիւններն արքայի դէմ եւ Ատրպատականի ոստիկանի նենգութիւնները: Արծրունի իշխանների դաւաճանութեան պատճառով Սմբատը պարտւում է Աղձնիքի ոստիկանից, եւ դա սկիզբն է դառնում Հայաստանի դժբախտութիւններին (էջ 173 եւ հտն.): Եւ մենք Պատմագրի մանրամասն եւ բազմազան տեղեկութիւններով հարուստ պատմուածքների մէջ տեսնում ենք, թէ ինչպէս Սմբատ Թագաւորն աշխատում է հաստատ պահել իր տէրութիւնը՝ աշխատելով անկախ մնալու Ատրպատականի ոստիկանից եւ բարեկամական յարաբերութիւն պահելով բիզանդական կայսրութեան հետ, իսկ հայ իշխանները, այդ մանր բռնակալները, զուրկ որեւէ քաղաքական հասկացութիւնից, ամէն տեսակ արգելքներ են հանում արքայի դէմ: Նրանք ձգտելով անկախ իշխանութիւններ կազմելու՝ դաւադրութիւններ են սարքում ե՛ւ Թագաւորի, ե՛ւ միմեանց դէմ, կռւում են իրար հետ, մէկմէկու ձեռքից յափշտակում են կալուածները, բերդերը, իրար երկիր աւերում, հունձն այրում, բռնում շղթայում, բանտարկում մէկը միւսին, սպանում կամ քիթը կտրում, կամ կուրացնում. Թագաւորին քսութեամբ գրգռում սրա նրա դէմ, դաւաճանում են արքային, ապստամբում են նրանից, նոյնիսկ թշնամիների կողմն անցնում «Թագաւոր» տիտղոսըն ստանալու համար, թշնամիներին առաջնորդում Հայաստան, ուզում են սպանել արքային, սրա սիրելիներն անգամ անցնում են օտարի կողմը: Եւ այսպէս երկիրն ապրում է մի եղերական վիճակ ընդհանուր շահերի ըմբռնումից զուրկ այդ անձնասէր Փէոդալների ձեռից: Եւ այսպէս վարւում են նրանք այն ժամանակ, երբ հարաւից Միջագետքի ոստիկանները մուտք են գործում Հայաստան, միւս կողմից նաեւ Ատրպատականի այն ոստիկանը, որ մի ժամանակ վախենալով Հայոց Թագաւորից՝ բարեկամ էր ձեւանում, հէնց նոյն Յուսուֆը, որ վերեւում յիշուեց, տարիներ շարունակ աւերում է Հայաստանը, ամէն տեսակ անգթութիւններ գործելով: Քանի որ Հայոց Թագաւորի դիմադրական ուժը պակասել էր՝ նա ստիպուած է լինում նոյնիսկ կրկնակի հարկ տալու, բայց ոչինչ չի օգնում այդ արիւնարբու արաբի սիրտը ողոքելու. Նա խաբէական միջոցներով գերեվարում է իշխաններին, նրանց ընտանիքի անդամներին ու նրանց արձակելու համար մեծ փրկանքներ պահանջում, աշխատում է բռնել, ոչնչացնել եւ ոչնչացնում է բոլոր աչքի ընկողներին: Նա տմարդօրէն ձերբակալում է նաեւ Թագաւորին ու տանջալից մահով սպանում նրան: Արքայորդի Աշոտը սոսկալի կերպով վրէժխնդիր է լինում իր հօր համար: Եւ այս բոլորը եւ շատ այսպիսիները

պատմում է Յովհաննէսը մանրամասնօրէն, իբրեւ իրար յաջորդող իրողութիւններ։

«Իսկ բազմահանդէսն այն եւ աջողակն է հրահանգս կրթութեան վարժից մարտի Աշոտ որդի արքային Սմբատայ, բազում ընթացութիւնս եւ նահատակութիւնս քաջութեանց ուժեղակ մրցութեամբ ցուցանէր ի ժամանակի հալածանացն, եւ անցանէր զանցանէր զամենեքումբք արիարար հանդիսիւ, որք կենօք եւ աւուրբք զուգահաւասար նմա էին։ Սա նախ քան զկատարումն վկայօրէն վախճանի հօր իւրոյ՝ գրեթէ իբրեւ զարծուի սաւառնաթեւ սըլացեալ ընդ օդս, այնպէս սրավարեալ խոյանայր զկնի զիշատեալ այլազգեացն, որք ասպատակ սփռեալ տարածեալ էին ընդ երեսս երկրի մերում. եւ նախ քան զամենայն ինչ ի փոքր մի վայրկեան ժամանակի յինքն առ հասարակ գրաւեալ նուաճէր զբոլոր իսկ ամրոցս տէրութեան հօր իւրոյ, զոր առեալ կալեալ էր ոստիկանին։ Եւ զորս միանգամ պահնակս անդ ի Սառակինոսացն գտանէր՝ ի սուր սուսերի մաշէր եւ պատուարօք եւ պահնակօք եւ բազում ոճկօք զամուրսն ամրացուցեալ՝ եւ ինքն զհետ թշնամեաց կրթէր, ուր եւ ասպատակք իսկ հինից Իսմայէլականացն գտանէին։ Եւ ամենայնիւ յամենայնի աներկիւղաբար սրտի գրեթէ զեղիական պատերազմն յարդարէր ընդդէմ հակառակամարտիցն հանդերձ հարազատ եղբարբն իւրով Աբասաւ։ Եւ ապա կառավար կալեալ զմիտս իւր՝ առ Աստուած հայէր, եւ հասեալ ի վերայ Իսմայէլեան զօրուն, որ նստէրն իսկ ի Բագրեւանդ գաւառի՝ սըրոյ ճարակ զամենեսեան զնոսին տայր, եւ զգլխաւոր երէցս նոցա ձերբակալ արարեալ՝ հրամայէր տիկ ձեւացուցանել եւ կախել զպարսպաց ամրոցացն առ ի տեսիլ եւ յահարկութիւն բազմաց։ Եւ ինքն ապա չուեալ գնացեալ ի Շիրակ գաւառ, եւ ի վերայ հասեալ զօրուն, որ ի նմա որջացեալ զետեղեալ կային՝ եւ զայն եւս առ հասարակ ընդ սուր հանեալ եւ զմնացեալսն վարատեալ վտանէր։ Եւ անտի դարձեալ իբր զօդապարիկ իմն երթեալ հուէ զկողմամբք Գուգարաց՝ եւ զայնս եւս ամրոցս իւրոյ տէրութեանն առ հասարակ յինքըն գրաւէր նուաճէր։ Եւ ապա անտի յեղակարծումն իբրեւ զորոգայթ իմն ի վերայ հասանէր զօրուն Հագարացւոց, որ ի մայրաքաղաքին Վրաց կային ի Տփխիս, եւ անդ զամենըս սրոյ ճարակ տայր եւ զայլս ի պատուականաց ձերբակալս արարեալ՝ երկաթի կապանօք ի մեռաղս բանտից պահէր. զի ընդ այնոսիկ քրիստոնէից փոխանակեսցէ՝ զրաւաթափ առնելով, որք ըմբռնեալ իսկ էին ի ձեռն չար ոստիկանին։ Եւ ապա անտի առեալ զաւար եւ զկապուտ բազում՝ դառնայ ի գաւառն Տաշրաց. եւ լուեալ եթէ զօր Իսմայէլեան զօղեալ նստեալ զուգարեալ կայ յամուրս խորաձորս Ագաստեւոյ, եւ ապա այնուհետեւ անձնընտիր զզօրս իւր արարեալ իբրեւ արս երկերիւր՝ եւ երթեալ ղռոյթ իմն ի վերայ զօրու Հագարացւոյն տուեալ անհնարին մարտ քաջութեան՝ առ հասարակ զնոսա սրոյ ճարակ տայր. եւ առեալ զկապուտ կողոպուտն՝ դառնայր ի բանակն իւր։ Եւ իսկ եւ իսկ չուեալ երթեալ առ յաւէտ սիրելի իշխանն իւր Գուրգէն եւ անդ ի միասին զհասարակացն հոգս խորհրդաբար տեսեալ՝ ապա երթեալ գնայր զկողմամբք ամրոցացն Արշարունեաց։ Եւ յայնմհետէ ոչ եւս յաւելին ելանել ապականիչքն յաշխարհ տէրութեան նորա»։

Թագաւորում է Աշոտն իր հօր փոխանակ։ Մի րոպէ թւում է, թէ վերջ պիտի տրուէր երկրի սրածութեանը, բայց հայ իշխաններն նրանից էլ ապստամբում են, եւ վերջը նա էլ անզօր հալածական է մնում Դուինում նստած արաբացի ոստիկանի զօրքերի առաջ։ Եւ այս ամէն չարիքների վրայ աւելանում են ասպատակութիւնները, սոսկալի սովը, որ ուժեղ ու մանրամասն նկարագրում է Պատմագիրը (էջ 261)։

*«Բայց եւ ես տխրական տրտմութեան բանս ինչ սատ յառաջ բերեմ առել. քանզի դըրացիք մեր եւ ազգք որ շուրջ զմեօք են՝ Յունականք եւ Եգերացիք եւ Գուգարացիք եւ Ուտիացիք, Հիւսիսական ազգք բնակեալք առ ոտամբն Կովկասու, ի մտի եդեալ եթէ գուցէ յինքեանս հետի աղագս գտանել մարթասցին՝ ստիկանն չար թէ երբեք չէն գտցէ զքաղաքըս եւ զաւանս եւ զգեօղս, վասն այնորիկ ի խլել եւ ի բրել, կորուսանել եւ յատակել ջանացան առ սաորատով իւրաքանչիւր աշխարհաց իւրեանց. եւ ապա խառն ընդ նոսին եւս աւազակք եւ սրիկայք ելին ի մարտս ընդ երկրի մերում. եւ բազում ինչ այն էր՝ որ ի նըմանէ անցք ընդ աստուածաշէն եկեղեցիս անցանէին յեղծումն եւ ի խոպանումն եւ յապականումն վարակեալ: Եւ զբազում զաշխարհս իբրեւ զանապատ՝ անկոխ անջրդի ցուցեալ տապալէին. եւ դրեթէ իբրեւ զերկիր, որ ոչ անց մարդ ընդ նա եւ ոչ բնակեցաւ ի նմա որդի մարդոյ՝ այնպէս զապատն անապատ առնէին: Եւ վասն ընդ միմեանս բախելոյ բազում ճապաղիս արեան հեղեալ՝ դիակամբք լնուին զերեսս երկրի մերոյ, եւ առ հասարակ յաւարի առեալ կապուտ բազում՝ խաղացուցանէին յինքեանս ըստ իւրաքանչիւր աշխարհաց կչիռ: Եւ այսպէս անմարդացեալ եւ անզաւակացեալ, խոպանացեալ եւ անչքեղացեալ այնուհետեւ աւանք եւ շէնք մեր եղեն իբրեւ զանդաստան մացառախիտ. եւ ցամաքեցան բողբոջք բուսոց արօտավայրաց եւ արօտից. եւ քաղաքք մեր կործանեցան առ ի չգոյէ բնակչաց. Եւ երկրագործք մեր սպառեցան եւ սուգ զգեցան: Եւ այսպէս ծածկեցին զմեզ անարգանք մեր, եւ ի մեզ բովանդակեալ լցաւ մարգարէութիւնն Եսայեայ, եթէ «Երկիր ձեր աւերակ, քաղաքք ձեր հրձիգք, զաշխարհս ձեր առաջի ձեր օտարք կերիցեն՝ աւերեալ եւ կործանեալ յազգաց օտարաց» (էջ 256 եւ հտ.):*

*Յովհաննէսի ժամանակը շատ աւելի դաժանաղէտ է եղել, քան 8-րդ դարում Ղեւոնդի նկարագրածը. ոչնչացւում են ո՛չ միայն ազնուականները. «Եւ միանգամայն իսկ ազատն եւ անազատն, զօրաւորն եւ պատերազմողն, զինապետն եւ դատաւորն, խորհրդականն եւ քննիչն, իմաստունն եւ հանճարեղն, ծերն եւ տղայն, մեծն եւ փոքրն մատնեցան ի ձեռըս բռնադատ պերչացն» (էջ 231): Սովկալի ծանր դրութիւն է ապրել երկիրը. ամենից աւելի դժուար է եղել թշուառ ռամկի վիճակը: Իշխանները նրա վրայ նայում էին իբրեւ իրենց ապրանքի: Մի իշխան միւսի «գաղթը» քշում, տանում էր իր կողմը, երբեմն եւ բերդում ամրացնում. մի ուրիշն առնում էր իր թշնամի իշխանի բերդը «եւ սրոյ ճարակ զբերդապահնակսն տուեալ՝ եւ խաղացուցեալ զգաղթ բնակչաց երկրին առհասարակ ազխիւ իւրեանց յամուրս տէրութեան իւրոյ, եւ զարտորայս նոցա, որ մերձ էր ի հունձս՝ տարաժամ դայն հնձեալ գերանդիւք եւ հրաբորբոք հըրկիզեալ»: Միմեանցից ետ են պահանջում աշխարհի գաղթը (310 եւ հտն.): Թշնամու առաջից փախչում են ընդհանրապէս, եւ «թագաւորն Գագիկ... ընդ ինքեան առեալ տանէր զգաղթ կարաւանին», ճանապարհին պաշտպանելով, մինչեւ ամրացնում են լեռների մէջ, թշնամին գալիս՝ «տեսանէ անդ զաշխարհն ամենայն առ հասարակ թափուր եւ ունայն ի բնակչաց մնացեալ» (էջ 327 եւ հտն.): Իսկ բնակիչներից նրանք, որ չէին կարողանում «գաղթել յամրոցսն», կողոպտւում կոտորւում էին, կամ գերի տարւում: Ահռելի էր այդ թշուառականների դրութիւնը. երբ թշնամին ասպատակում էր,*

իշխանն ամրանում էր բերդում, իսկ գաւառի գաղթն ընդհանրապէս մնում էր դուրսը բերդի չուրջը:

«Իսկ մեծամեծ աւազանոյն ձորոց եւ լերանց եւ անապատից եւ քարաժեռաց եւ ամ-րոցաց պարապէին. եւ այլ եւս խառնիճաղանճքն եւ բոկոտն եւ մերկանդամ եւ թափառա-կան ի սով եւ ի ծարաւ եւ ի լքուցումն հարեալք եւ հաչեալք՝ ցանեցիր լերանց եւ դաշ-տաց բերէին. ոմանք ի ձմեռնային սառնասոյղ ձիւնախախաղ սառնամանեացն մրսեալք ծայ-րատէին եւ հեղձնուին. իսկ այլք յամառնային հիւղական յորդաբորբ ջերմութենէն տոչոր-մամբ կիզեալք այրէին եւ խորովէին: Իսկ տկարացեալքն ի հալածեալ փախստենէն մատնեալք ի ձեռս դրժողացն՝ անխնայ անողորմ սրոյ նոցա տապաստ արկեալ՝ ոռոգանէին արեամբ զերեսս երկրի. իսկ ոմանք զլեթէ զանբան անասունս ի գերութիւն վարէին. եւ բազում ներգեւեալ արս եւ կանայս եւ մատաղ մանկտի իբրեւ զգառինս ի մէջ գայլոց ածեալ ի ըն-պանդ վարէին: Իսկ զոր պարտն վարկանէին վաճառակութ լինել՝ զայն արտաքոյ տարեալ տրոհէին յայլոցն՝ զորդի ի հօրէ, զեղբայր յեղբօրէ, զկին յառնէ, եւ զմայր ի դստերէ եւ զհարսն ի սկեսրէ, եւ զանդխակիցն ի մօրէն ի ստենէ ի բաց ի գրկացն յափշտակեալ: Եւ անդ էր ապա տեսութիւն ողորմելի եւ ողբք անհանդուրժելիք եւ լալումն անտանելի եւ բա-խումն կրծից եւ կքումն արտեւանաց եւ փողումն անձին եւ սարսափումն սրտի եւ ճչումն կոծոյ եւ ցաւումն գեղոյ եւ խզումն հերաց: Իսկ զոչ պիտանացուսն ի գործ վաճառաց եւ կամ Սոդոմայական արբանեկութեանց ի մեռալս եւ ի բանտս եւ ի չղթայս տարեալ մղէին՝ սաստիկ տանջանարանօք խոշտանգեալ, եւ ըստ Հոմերական օտար կանոնին ի փարթամէն եւ ի փանաքէն զնոյն կշիռ միապէս պահանջէին զանձս ոսկւոյ եւ արծաթոյ: Եւ միանգա-մայն իսկ զմեծս եւ զփոքունս ի մի տանջանս մահու դատապարտեալ սպառէին սպանմամբ յաշխարհէ աստի. եւ զայլս եւս ոմանս ըստ Սոդոմնեան ազգին առ սակաւ սակաւ զարիւ-նըս նոցա ծծէին՝ աղճատեալ չարիմաց խորհրդով ապահութեան, յաղուրդ ոչ ունելով: Իսկ զայլս ոմանս մահացան գեղըմպութեամբ խարդաւանեալ՝ որպէս թէ ողորմութիւն զայն ի նոցանէ լեալ այնոցիկ, յորս ներգործէին զչարս. եւ զայլս հնարիմաց խեղդանօք հեղձա-մըղձուկ սատակէին. եւ զոմանց զսարսափելիս իմն ընդ կեանս խառնեալ, զի մինչդեռ եւս յստանաւոր նոցա կալով՝ կենդանւոյն ի կրծիցն ի վայր դահիճքն սրով զորովայնն հեր-ձուին, եւ մինչեւ զշունչն աւանդեալ էր՝ ի դուրս զլերդն կորզէին, մասունս տալով զայն իւրաքանչիւր ումեք իբր ի կատարումն ինչ լիութեան պիղծ պաչարման [պաշտաման?] իւրեանց: Իսկ այլք ոմանք, որք թեթեւ համարեալք եւ անտեսեալք էին յաչս նոցա՝ հա-մարձակութիւն սակս այնորիկ առեալ իբրեւ զլռիկ էին եւ գնային, զորոց զհետ մտեալք վազերբք եւ ասպարօք եւ նրանօք՝ իբրեւ զուռնկս ոստաքանց արարեալ ծայրատէին, եւ անպիտանս առնէին ի ձեռաց եւ յոտից եւ ի բոլոր անդամոց: Իսկ այլ ոմանց պարանս ա-ռատկաց յերկոսին կողմանս ի գլուխս եւ յոտս նոցա եդեալ՝ եւ բազում ուժեղակ մարդ-կամբք այսր անդր ձգձգեալ՝ մինչեւ լուծանել միջոյն. եւ ապա երկսայրի սրով բախեալ՝ միջով չափ ընդ երկուս բարժանէին: Իսկ զի զեռեւս չնչոյն ի նոսա գոլով առ տապոյ վը-տանգին, կամ յայլոց եւս ձեռաց ապրելոյ ըստ գլխոյ կուսէ մասնն կանգնէր՝ կայր փոքր մի ի վերայ հատածի միջոյն եւ խոխոտէր խօսել կամ զանցս ինչ աղէտին, կամ ըստ հայ-ցուածոյ ինչ նմա ոմանց. թէպէտեւ վտանգն չուտափութիւն լեզուին տուեալ՝ ոչ բաւէր զբանն ինքնակատար յայտնել: Իսկ զոմանս հրամայէր, զի կապեսցեն յանխնայ եւ հատուա-ծեսցեն [հարուածեսցեն?] մտրակօք արջառաջլաց ի կողս եւ յորովայնս թափանցանց վի-

*բուրեալք. եւ մինչ շունչ նոցա կենդանի էր ի նոսա՝ որկանէին յերկիր եւ քարշէին: Իսկ կիսոց զունչս եւ զականջսն հատանէին, եւ զմատունս մարմնոյ նոցա կտորէին, եւ զմատունս նոցա ծայրաքաղ առնէին. եւ զոմանս յետ անհնարին հարուածոց ի կոճեղս պնդէին՝ եւ պրկեալ կային զծակօք յատան յերկոսեան, մինչ զի անհնարին լինէր նոցա նստել կամ ընկողմնել եւ զխոնջ տագոյ աշխատութեանն սակաւ ինչ թմբել» (էջ 246 եւ հմն.):*

*Իրենց անագորոյն եղեռնագործութիւնները թշնամի արաբները, հարկաւ, ոչ միշտ եւ ոչ ամբողջ Հայաստանում են կարողացել անել. շատ նահանգներում ու գաւառներում զգուշանում էին կամ քաջութեամբ պաշտպանւում նրանցից «բազում հեծելազօր գնդիւ եւ ամրացօք եւս», ինչպէս գրում է մեր Պատմագիրն իր յիշողութիւնների վերջընթեր հատուածիկի մէջ (էջ 359) Սիւնիքի համար: Բայց եւ այնպէս այստեղ էլ նա պատմում է, որ Քեղեայ ամրոցի բնակիչները՝ ոստիկանի գալը լսելով՝ զարհուրած թողնում փախչում են, զինուորներն էլ հեռանում են, եւ Նսրը ոստիկանը մի երկու օրից յետոյ՝ այդ ամրոցը նուաճում է առանց որեւէ նեղութեան, «եւ շուրջանակի զգեօղս եւ զաւանս եւ զագարակս յիւր անուն պայազատէ», այսինքն՝ սեփականում է իրեն: Այս են Յովհաննէսի պատմած վերջին դիպուածները: Ցաւօք, նա չի յայտնում դրանց թուականը, եւ նա առհասարակ որքան շատ մանրամասն է գրում եւ շատ տեղեկութիւններ է հաղորդում, այնքան շատ քիչ թուականներ է յիշում. թէպէտ եւ կարող էր, անշուշտ, շատ թուականներ յիշատակել: Հայաստանի այս դժբախտ դրութիւնն ընդհանրապէս յարատեւում է մինչեւ այն ժամանակ, երբ Յովհաննէսը գրում է իր Պատմութեան վերջաբանը՝ «Բան ինքնաբոյն սակս յիշատակի անուան իւրոյ»: Նրա մահից մի քանի տարի յետոյ, 920-ական թուականների վերջերում, դադարում են խռովութիւններն եւ աւերմունքները, եւ Հայոց աշխարհը զարմանալի արագ նորոգւում է ժողովրդի ներքին ուժով ու տոկունութեամբ:*

6. Հայաստանի աւերմունքի պատճառները ըստ Պատմագրին եւ նրա եզրակացութիւնը: — *Յովհաննէս կաթողիկոսը, որի համակրութիւնն ընդհանրապէս Աշոտ Ա.ի ժառանգների եւ առանձնապէս Սմբատի կողմն է, խորն ըմբռնում է սրա անյաջողութիւնների եւ Հայաստանի դժբախտ դրութեան պատճառները: Թագաւորը, ինչպէս վերեւում ասուեց, աջողում է դուրս գալ իշխանութիւնից Յուսուֆի, որ էր «ոստիկանն Պարսից եւ Հայոց եւ Վրաց եւ Աղուանից»: «Բայց ոստիկանին Յուսուփայ յաւէտ իմն չար թուեալ հատուածիլն ի նմանէ թագաւորին Սմբատայ» (էջ 195): Նա ամէն կերպ, Ե՛ւ զէնքի ուժով, Ե՛ւ խաբէական միջոցներով, աշխատում է վրէժ առնել Սմբատից եւ նորից իրեն ենթարկել Հայոց երկիրը: Բայց դա դրսից եկող յարձակումն էր, էականն այդ չէր: Դրա դէմը կարելի էր առնել, եթէ Սմբատն ունենար առաջուայ զինուորական ուժը, որից վախենում էր Յուսուփը: Երկիրը, սակայն, այժմ իբրեւ մի կազմակերպուած ամբողջութիւն չէր դիմադրում ոստիկան Յուսուփին. եւ դրա մէջ էր հէնց՝ երկրի թուլութեան եւ աւերման հիմնական պատճառն ըստ պատմագիր կաթողիկոսի: Ազգային միութեան գաղափար, ընդհանուր շահերի ըմբռնում չկար իշխան–*

ների մէջ. չկար եւ նոր ստեղծուած քաղաքական միութեան, ընդհանուր հայրենիքի գաղափարը: Ազնուականների համար «հայրենիքը» իրենց հայրենական կալուածներն էին: Գագիկ Արծրունին Սմբատ Թագաւորից չստանալով Նախջաւան քաղաքը, որ ժէր իր հայրենականն էր եղել, դիմում է ոստիկան Յուսուփին: «Իսկ նորա ախորժաբար ընկալեալ՝ տայր նմա Թագ արքայական եւ պատիւս եւ պարգեւս արքունականս, ի բակտումն միաբանութեան նոցա զայն հնարեալ գործել, զի դիւրագաւ լիցին այնուհետեւ երկաքանչիւրքն ըստ ի նմանէ դրժելոյ» (էջ 209 եւ հտն.): Յովհաննէսը զայրոյթով է խօսում այդ գործի մասին. դրանով բացւում էր «կորստական դուռը», «զոր ոչ այլ ումեք քան թէ Աստուծոյ գոյր կարողութիւն փակել զնա, — գրում է նա:

Եկեղեցին միայն ընդհանուր էր. եւ եկեղեցականները, սկսած Մովսէս Խորենացուց, աշխատել էին ընդհանուր հայրենիքի գաղափարը պատուաստել հայերի մէջ: Յովհաննէս կաթողիկոսը, որ ունէր ազգային ինքնագիտակցութիւն, յաճախ հաշտութեան միջնորդ էր հանդիսացել իրար հետ կռուող իշխանների միջեւ, բայց մեծ մասամբ ի զուր աշխատել էր նրանց միացնել մի ընդհանուր գործի շուրջ: Նա դառնացած սրտով գրում է. «Իսկ իբրեւ այսպէս կրեցաք տագնապս տարակուսից ի հինից օտարաց, ի մերս ապա յինէաք ի Թագաւորս եւ յիշխանս ակնկառոյց, այլեւ ի պետս եւ ի նախարարս երկրի մերոյ: Եւ յուսացեալ սպասէաք ոչ եւս ընդ փորձութեանն խառն վրիպել սոցա եւ անկանիլ. այլ ջան առաջի դնել եւ եւս նեղութեան հնարել եւ վայելչաբար ի միասին կապակցիլ հասարակ եղբայրութեամբ եւ իբրեւ զմի այր միանալ, եւ ընդ Դաւթի պարսաքարել զնորս Գողիաթու մսեղէն բուրգն... կամ իբրեւ զՄակաբէ ի շուրջ պատեալ պատերազմէն փրկել, եւ այսպէս ազատել զկաթուղիկէ եկեղեցի եւ լուծանել զլուծ ի պարանոցէ հաւատացելոց, եւ չահել զորդիս սպանելոց: Բայց ոչ զայս եղեւ տեսանել մեզ, այլ զնորին հակառակն կրեցաք» (257 եւ հտ.):

Իսկ ի՞նչ էր այդ հակառակը. «Վասն զի նուաղունքն քան զմեծամեծսն ձեռներէց լինել ջանային, — շարունակում է Պատմագիրը, — եւ ծառայքն ըստ Սողոմոնի հնարէին, զի զտեարս տրեխաւորեալ՝ ի գետնի գնացուցեն եւ ինքեանք ելցեն յերիվարս ահիպարանոցս եւ առաթուր հարոզս՝ խրոխտացեալք եւ սնքացեալք մեծաւ ապստամբութեամբ»: Պատմագրի այս խօսքերից, թերեւս, կարելի է հետեւցնել, թէ այն խառն ժամանակներում դասակարգային պայքար էլ է եղել, աշխատաւորների ընդվզում ընդդէմ երկրի ազնուականների: Ապա նա շարունակում է. «Իսկ Թագաւորք մեր եւ պետք եւ իշխանք զորս ի բնէ նախարարութիւնք էին՝ ջանային վարատել եւ խլել յիւրաքանչիւրոցն բնակութեանց, եւ ըստ ախորժից իմն ձեռական եւ նոր ստեղծանել պայազատս եւ սպասալարս: Այլ եւ եղբայր ընդ եղբօր եւ ազգայինք ընդ ազգայինս ընդվզեալ ի նախանձ եւ ի չարակնութիւն եւ ի դրդութիւն եւ ի կատարեալ ատելութիւն ընդ միմեանս բերէին: Եւ այսպէս համագունդ ընդ միմեանս հարեալք՝ հակառակութիւն եւ ի կռիւ

*պայքարէին․ եւ միշտ սուր յաղգեր ունելով՝ բազում եւս քան զթշնամիսն հեղուին ի միմեանց զարեան ճապաղիս եւ առ հասարակ զքաղաքս եւ զգեօղս եւ զաւանս, եւ զագարակս, այլ եւ զտունս իւրեանց քանդէին ձեռօք իւրեանց. եւ* գրեթէ այն իսկ օճիրք հակառակութեան գտան պատճառք հինիցն՝ եկելոց ի վերայ մեր» (*էջ* 257 *եւ հտն.*)։

*Եւ ի՞նչ պիտի լինէր կաթողիկոսի Պատմութեան եզրակացութիւնը, բայց եթէ այն դիմումը, որ նա իր կոչման վայել կերպով իբրեւ խնդիր ու խրատ ուղղում է Հայաստանի մեծամեծներին իր գրքի վերջաբանի մէջ, կոչ անելով նրանց, որ լսող լինին իր* «բաղաձայնութեան (=համաձայնութեան, միաբանութեան) խրատին», *թողնեն իրենց «անկարգ ճամարտակելը» միմեանց դէմ, միաբան լինեն եւ չլինեն հեռեւող եղբայրասպան կայէնին։ Եւ այն ժամանակ, հաւատացած է նա, ոչ թէ թշնամիները հայերին, այլ հայերն իրենց թշնամիներին գետին կը տապալեն։*

## ՏՈՄԱՅԻՆ ՊԱՏՄԱԳՐՈՒԹԻՒՆ
## ԹՈՎՄԱ ԱՐԾՐՈՒՆԻ

1. Կենսագրական։— *Հին ժամանակներից սկսած Արծրունի տոհմը Հայոց նշանաւոր նախարարական տներից մէկն է եղել։ Երբ* 9-*րդ դարում Բագրատունիները մեծ յաջողութիւններ են ունենում, միւս տոհմերն եւս ձգտում են տեղական քաղաքական կազմութիւններ առաջ բերելու․ դրանցից աչքի են ընկնում Արծրունիները, որոնք մեծ առաջադիմութիւն են ունենում Գրիգոր Դերենիկ իշխանի եւ աւելի եւս՝ նրա որդի Գագիկի ժամանակ։ Արծրունիների իշխանութիւնը կամ թագաւորութիւնը, որ յիշուած իշխանների օրով տիրում էր բաւական շատ գաւառների, քաղաքականապէս բաժանւում է Բագրատունիների Հայոց թագաւորութիւնից եւ մրցակից է հանդիսանում նրան։ Այս առանձին մարզային իշխանութիւնն ահա առաջ է բերում եւ իր առանձին տեղական կուլտուրական շինարարութիւնն եւ առանձին տոհմային պատմութիւնը* (1)։

*Թովմա Արծրունու Պատմութեան «Յառաջաբանութիւնից» իմացւում է, որ Գրիգոր Արծրունեաց տէրը եւ Վասպուրականի իշխանն (որ սպանւում է* 886–887 *թ.) է հրամայել Թովմային գրել մի մատեան, որի մէջ լինէր Արծրունի տոհմի ազգաբանութիւնն ու պատմութիւնը սկզբից մինչեւ իր ժամանակները։ Առաջին դպրութեան Զ. գլխի մէջ* (*էջ* 45), *սակայն, յիշւում է, թէ գրում է հրամանով «Գագիկ Հայոց զօրավարի եւ Վասպուրական իշխանի», որ Գրիգոր Դերենիկի երկրորդ որդին էր եւ իր եղբայր Աշոտի մահից յետոյ՝* 905 *թ. դառնում է Վասպուրական իշխան։ Նոյն դպրութեան վերջում եւս* (*էջ* 76) *խօսքն ուղղում է նոյն Գագիկին․ «...զոր չարադրեալ յայտարարութեամբ յանդիման կացուցաք քեզ, քաջդ բանասիրաց,*

(1) Թովմայի վարդապետի Արծրունւոյ Պատմութիւն տանն Արծրունեաց, Պետերբուրգ, 1887։

Գագիկ Վասպուրական եւ մեծ զօրավար Հայոց»: Ըստ այսմ Թովման իր Պատմութիւնն սկսել է գրել Գրիգոր Դերենիկ իշխանի հրամանով եւ շարունակել է նրա որդի Գագիկի պատուէրով: Պատմութեան մէջ (Գ. գլ. Իէ. էջ 243) յիշատակում է Պատմագիր Յովհաննէս կաթողիկոսին՝ «երանելի» անուանելով նրան, եւ քանի որ այդ ածականը վախճանուած մարդու համար էր գործածւում, կը նշանակի՝ Թովման իր Պատմութիւնը գրել է երկար ժամանակի ընթացքում, նոյնիսկ Յովհաննէս կաթողիկոսի մահից յետոյ՝ որ մեռել է, ինչպէս ընդունում են, շուրջ 925 թուականներին:

Թովման Պատմութեան երկրորդ մասի անցքերին ժամանակակից է, պաշտօն ունեցող մէկն իբրեւ «վարդապետ»: Առաջին դպրութեան վերջում յիշելով Մովսէս Խորենացուն եւ Կորիւնին իբրեւ աղբիւր՝ «որպէս գրեալ հաստատեալ կայ հաւատարմապէս վարդապետացս քաջաբան եւ լի իմաստութեամբ շարագրածք հրաշափառագոյն», անմիջապէս յարում է. «Այս փոյթ ինձ Թովմայի, որ ոչ վերջոտնեալ կալայ ամօթով զյետին տեղին, այլ փոխանակ սոցա մատեայ ի տեղիս յայս»: Նա հարկ եղած դէպքում չի խորշում ցոյց տալու իր հմտութիւնն աստուածաբանական խնդիրների մէջ եւ առաջ բերելու իր հայեացքներն ու կարծիքները: Երեւում է, որ իր ժամանակի գիտակ ու հետաքրքիր մարդկանցից է եւ լրջութեամբ է վերաբերում իր գործին: Յաճախ յիշատակում է թուականներ:

2. Պատմութիւնը:— Թովմայի գրած Պատմութեան մեզ հասած մասը բաժանւում է երեք դպրութիւնների. բայց նիւթով իսկապէս բաժանւում է երկու մասի՝ հին պատմութիւն, որ Ադամից սկսած հասնում է մինչեւ 850 թուականը, եւ նոր պատմութիւն՝ այդ թուականից յետոյ: Հին պատմութեան համար նա յիշատակում է աղբիւրներ, սովորաբար առանց անունները տալու: Դրանց մի մասը յայտնի են, ուրիշներն անծանօթ են մնում: Բայց չնայելով դրան՝ Պատմութեան այս մասն առանձին արժէք չունի. Երեւում է, որ հեղինակը շատ յերիւրած բաներ է մտցրել իր գրքին մէջ: Հետեւելով Մ. Խորենացուն՝ Արծրունի տոհմի համար հնագոյն ժամանակներում գտնում է անունների շարք եւ արարքներ, որոնք ոչ մի նշանակութիւն չունեն: Դրանք ծագում են պատուիրատուի ցանկութիւնից, ինչպէս գրում է նա՝ դիմելով Արծրունեաց տէր Գրիգորին. «ընկալեալ ի մեզ զհրաման պատուիրանի քո, զոր ախորժակք փափագելիք զքեզ ստիպեցին՝ ներքադրեալ ի յիշատակարանս մատեանից զնախնեացն քոց զազգաբանութիւն եւ զորպիսութիւն, կարգաւ ածել զթիւսն ըստ ծննդոց իւրաքանչիւրոց մինչ առ մեզ զբովանդակութիւնն չափաբերել, եւ որ վասն անցիցն Հայոց ի Տաճկաց զպետութենէն ներգործեցաւ»: Պատմագիրը հետեւելով այդ պատուէրին՝ հարկ է համարում Արծրունիներին մէկ մէկ մասնակից դնել այս կամ այն նշանաւոր պատմական դիպուածին: Ինչքան էլ շատ բան այս սնափառութեան հետեւանքով ստեղծուած լինի, բայց ամէնը միայն նրան վերագրել կարելի չէ. դրանց մի մասը ցեղի տան մէջ ժամանակի ընթացքում հետզհետէ կազմուած զրոյցներ են, որոնք կարող են նոյնիսկ պատմական հիմքի վրայ յօրինուած լինել: Կան նաեւ ժողովրդական զրոյցներ, ինչպէս

է, օրինակ, Լեզուայ գիւղի (այժմեան Լեզք գիւղի) հետ կապուած զրոյցը, որով Արա Գեղեցիկը կենդանանում է, եւ ուրիշները (1)։

Նոր պատմութեան համար, որ սկսւում է Բ. դպրութեան Ե. գլխից (էջ 106), Թովման նախորդ գլխի վերջում յայտնում է, թէ ուրիշները չեն գրել, եւ թէ ինքը ժամանակակից է դրան. «Բայց մեզ կայ առաջի ասել վասն Ջափրայ եւ չար գործոց նորա, անդէրս մնացեալ յայլոց, զոր կատարեաց ի վերայ աշխարհի Հայոց երկայնագոյն ժամանակաւ, եւ անըմբերելի նեղութեամբ ի մերս հանդիպեալ աւուրս, որ էր Հայոց [=300+551=851] թուականն»։ Այստեղ շատ մանրամասն պատմուած են նախ այն կռիւները, որ հայերն ապստամբելով՝ Տարօնի իշխան Բագրատ Բագրատունու գլխաւորութեամբ հարկերի պատճառով մղում են արաբական հարկահանների դէմ, երբ եւ սասունցիներն իրենց լեռներից իջնելով՝ կոտորում են Տարօնում արաբներին եւ յետոյ ամիրապետն ուղարկում է մեծ բանակով Բուղա զօրավարին, որ աւերմունքներ է գործում, գերում հայ նախարարներին։ Ապա պատմում է, թէ ինչպէս յետոյ նախարարները հետզհետէ գերութիւնից ազատւում են, հիմնւում է Հայոց թագաւորութիւնը Բագրատունի Աշոտ իշխանի ձեռով եւ այլն։ Պատմագիրը բնականաբար առանձին ուշադրութիւն է դարձնում Արծրունիների պատմութեանը՝ Արծրունի Աշոտի, սրա որդի Գրիգոր Դերանիկի (այլեւ՝ Դերենիկ), սրա որդիներ՝ Աշոտ, Գագիկ եւ Գուրգէն իշխանների եւ ուրիշների, մանրամասն մէջ բերելով նրանց վարած կռիւները եւ շինարարութիւնները։ Պատմութիւնը թերի մնում է 261-րդ էջի վերջում, Գուրգէնի կռիւների վրայ ընդդէմ արաբական ցեղերի։ Վերջին նախադասութիւնն է՝ «Եւ մեծի փորձութեանցն հասելոց լինէր ի վերին հրամանէն հանդարտութիւն...»։

Թովման Պատմութեան երկրորդ մասի անցքերին ժամանակակից է, մասամբ ականատես է, կամ պատմութիւնը լսել է ականատեսներից։ Դրա համար եւ նրա գրածն արժէքաւոր մի աղբիւր է այդ ժամանակի համար։ Նա սուղապատում գրող է, նրա գրածները մասամբ ճշդւում են եւ արաբական աղբիւրներով։ Բայց այս ամէնի հետ նկատւում է նրա մէջ նաեւ Արծրունի տոհմի տեղական հայրենասիրութիւնը։ Լինելով Արծրունի եւ գրելով Արծրունի իշխանների հրամանով՝ նա զերծ չէ տոհմային սնապարծութիւնից, ուստի եւ յաճախ գովաբանում է այդ տոհմի իշխաններին, բայց իբրեւ եկեղեցական պարսաւում է նրանց ուրացութիւնն ու չար գործերը։ Երբեմն էլ լռութեամբ անցնում է այնպիսի դէպքերը, որոնք պատուաբեր չէին լինիլ Արծրունիների համար, ինչպէս, օրինակ, այն, որ Թուխ դեւի վրայ Սմբատ թագաւորի պարտութիւնը լինում է, ըստ Յովհաննէս պատմագրի, Արծրունի իշխանի դաւաճանութեան հետեւանքով։ Այսու հանդերձ՝ Թովմա Արծրունու երկը մի շատ կարեւոր աղբիւր է արաբական բռնապետութեան վերջին շրջանի պատմութեան համար։

Լինելով ժամանակակից Յովհաննէս կաթողիկոսին՝ Թովման նոյն-

---

(1) Մ. Աբեղյան, Հայ ժողովրդական առասպելները, էջ 598 եւ հտն.։

պիսի հայեացքների տէր է, ինչ որ Յովհաննէսը․ նոյնչափ եւ աւելի եւս ազդւում է Ս․ Գրքից եւ Մ․ Խորենացուց։ Ոճի կողմից՝ բառացի նմանողութեամբ ենթարկւում է աւելի Եղիշէին, մնալով, սակայն, անճաշակ ճոռոմաբան։ Յօրինում է ոչ միակերպ, մերթ պարզ ու դիւրին, մերթ մթին չարահիւսութեամբ՝ խորտ ու բորտ արտայայտութիւններով, անսովոր բառերով կամ բառերի աւելորդ կուտակութեամբ։ Երբեմն էլ ձգտում է գեղեցիկ գրելու, նմանութիւններով եւ այլ ձեւերով զարդարելու իր գրութիւնը։ Այսպէս, օրինակ, հետեւեալը․ «Իսկ իբրեւ լուաւ Թագաւորն զայս գոյժ աղաղակի հասեալ ի դուռն արքայի՝ մրմռեալ իբրեւ զառիւծ եւ իբրեւ զարջ տարակուսեալ՝ վառեալ լինէր իբրեւ զբոց հնոցի, իբրեւ զալիս ծովու դիզեալ կուտմամբ փրփրեալ ծիրանագոյն արիւնամման, ուժգին գոչելով անդնդաքակ յուզմամբ, իբրեւ զհեղեղատ յորդահոս ի ճայթմանէ կարկտահոս ամպոց, հրախառն տոչորմամբ եռացեալ շուրջ զսրտիւն արիւնն՝ մաղձախառն բերմամբ յապուշ զմիտսն կրթեալ՝ կայր ի մէջ տարակուսի» (էջ 114)։ Այստեղ դնում ենք նրա լաւագոյն գլուխներից մէկը՝ Սասունցիների ապստամբութեան մասին։

«Վասն մահուան Յովսեփու ի լեռնայնոցն Խութայ եւ պատմութիւն նոցա։ Իբրեւ ձմեռն ընդմիջեցաւ եւ օդն խստացեալ թանձրացաւ միգախառն մրրկալից, եւ թանձրութիւն ձեանն հարթայատակ դիզաւ շուրջ զստորոտով լերինն, յորում տեղւոջ քաղաքն Տարօնոյ շինեալ էր, ուր բնակեալ բայանայր զօրավարն Տաճկաց, զօրհաստական արջոյն բերելով նմանութիւն, որ յաւուրս ձմերայնոյ արմատովք պարենաւորեալ՝ ի մէջ կենաց եւ մահու անցեալ որջանան ի բոյնս իւրեանց։ Իսկ ի շնչել հարաւային օդոյն, եռացուցանելով երկրի ի վեր զջերմային զօրութիւնն, զուարթացուցանելով անդնդական բերմամբն զընդարմացեալ արմատս եւ զբոյսս ի հիւսիսային սառնամանեաց օդոյն շնչելոյ, եւ բայացեալքն եթէ գազանք եւ եթէ թռչունք, յորժամ զգան զջերմութիւն օդոյն ի հասարակել տունջեան եւ գիշերոյ՝ ի գարնանային եղանակի ելեալք յիւրաքանչիւր կայենից. եւ բազում այն են որ ի նմին իսկ սատակին. եւ կէսքն դիւրըմբռնելի որսորդաց լինին. եւ ապրեալքն սաստիկս հասուցանեն վտանգս ուր եւ դիպեցին, եթէ մարդկան եւ եթէ այլոց ինչ կենդանեաց։ Սոյնպէս եւ այրն այն Յովսէփ զօրավարն Տաճկաց մնայր անցանել ձմերանն՝ զի ելցէ ի վերայ աշխարհիս Հայոց սրով եւ գերութեամբ եւ մեծամեծ հարուածովք եւ զմեծամեծս աշխարհիս խաղացուցանէ ի գերութիւն եւ կացուսցէ ի վերայ աշխարհիս գործավարս, որ ըստ իւրեանց հրամանի զկարգս աշխարհի յօրինեսցեն եւ իւրեանք հանդերձ ընտանեօք իւրեանց նստցին յամուրս Հայոց։

«Յայնժամ բնակիչք լերինն իբրեւ տեսին, թէ վարեցաւ իշխանն ի գերութիւն, ինքեանք պատրաստեալ են զնոյն փարչմանն կրել զոր դաշտայինքն կրեցին՝ հաւին միաբան բազմութիւնն մեկնակազէնքն Խութայ ի հնարս արուեստագիտութեանն իւրեանց, զոր ի պէտս օժանդակութեան ձմերայնոյ հնարաւորեալ էին։ Եւ բարձեալ աշտեայս հանապազակիրս ի պատրաստութիւն գազանացն որ ի մայրիսն որջանան, կամ թշնամեաց ի վերայ հասելոց, եւ եկեալ ի վերայ քաղաքին պաշարեն զնա, եւ զզօրսն մատնեն ի սատակումն սրոյ, զպատանդսն Վասպուրականի հանեն յարգելանէն. եւ գերեացն ընդարձակեն, զկապուտ նոցա բաժանեն յինքեանս։

«Բայց ինքն կարծեցեալ մարզպանն փախստեայ անկանի ի բարձրաբերձ եկեղեցին, որ յանուն Փրկչին մերոյ շինեալ էր յիշխանէն Բագարատայ, ի ծախս մեծամեծ գանձուց իբրեւ ՅՌ—աց (երից հազարաց)։ Եւ անդ ի միջոց գմբեթին ղօղեալ սալարեալ սարսռալից դողմամբ զետեղեալ լինէր։ Եւ մեկնակաղէնքն պատեցին շուրջ զեկեղեցեաւն, եւ ելեալ առ նա ոմանց ընդ փորուած գմբեթին՝ եւ եհար մի ոմն աշտէիւն ընդ միջոց թիկանցն, եւ ընդ անթովքն հանեալ ի ներքոյ թոքացն՝ փչեաց զոգին եւ թաղեցաւ զթաղումն իշոյ։

«Եւ ես աչօք իմովք տեսի զայրն զայն, որ հարեալն էր զնա, եւ ի նմանէ ստուգեցի վասն նորա։

«Եւ անդէն իսկ եւ իսկ փութացաւ, եհաս գոյժկան առ թագաւորն, եթէ սպանաւ զօրավարն քո եւ ապստամբեաց ի պետութենէ քումմէ աշխարհն Հայոց։

«Աստանօր սակաւուք բացայայտեցից զորպիսութիւն բնակչաց լերինն. թէ զիա՞րդ կամ ո՞րպիսի ոք են, եւ ո՞րպէս հնարաւորեալ յապրուստ անձանց վճարեն զկարեւոր պէտս իւրեանց լի աշխատութեամբ եւ սաստիկ տառապանօք. եւ բնակութիւն նոցա ի խորաձորս եւ ի փապարս լերանց եւ ի պուրակս մայրեաց, ի գագաթունս լերանց։ Եւ բնակեն առանձին ըստ տունս ազգաց, եւ այնչափ ի բացեայ են ի միմեանց՝ մինչ թէ ոք յարանց զօրաւորաց ի բարձրաբերձ տեղեաց ուժգին խանչիցէ՝ հազիւ թէ ուրեք կարիցէ առնուլ զբոմբիւն ձայնին, իբրեւ ի վիմաց ինչ արձագանգ լինելոյ կարծիս բերելով։ Եւ կէսքն վրիպեալք ի բնական հայրենի լեզուէն, յաղագս հեռաբնակ լինելոյ եւ անհամբոյրք միմեանց հանդիպեալք, եւ խօսս միմեանց եղեալ կարկատուն մուրացածի բանիւք։ Եւ այնքան խրթնի անծանօթ պատահեն առ միմեանս, մինչեւ թարգմանաց անգամ կարօտանան։ Եւ զպէտս կերակրոցն վճարեն ի սերմանց ինչ, առաւել ի կորեակ կոչեցեալ սերմանէն, զոր ոմանք ի սովլ ժամանակի հաց անուանեն. եւ ընոյն սողեալ ոտիւք ի միջոցս պրակացն, կամ երկմտանի փայտատովք սերմանեալ։ Եւ է զգեստ նոցա ասուիս ի ծածկոյթ մերկութեանն, եւ օդ ոտիցն հնարաւորեն զձեւ կաւշկաց, ի մորթոց այծից կազմեալ, եւ միով կերակրով եւ միով հանդերձիւ բաւականանան զամառն եւ զձմեռն։ Եւ են ստացեալ զէնս աշտեայս հանապազ կրելով ընդ ինքեանս, ի պատրաստութիւն գազանացն որք ի լերինն բնակեն։

Այլ եւ ի ժամանակս հասելոց թշնամեաց յերկիրն իւրեանց՝ գան միաբան լեռնայինքն յօգնութիւն իշխանացն, զի են տիրասէրք։ Իսկ վասն ձեանն անկայուն զօրութեանն որ այն ինչ յամպոյն ի վայր զեղեալ լինին՝ հնարաւորեալ իւրեանց փայտս իբրեւ զանուրս չուանօք պարունակեալ շուրջ զոտամբք, դիւրաւ ընթանան ի վերայ ձեանն իբրեւ ընդ ցամաք երկիր։ Եւ են գազանաբարոյք, արիւնարբուք, առ ոչինչ համարելով զսպանումն եղբարց հարազատաց, նա եւ զանձանց եւս։ Եւ կոչին սոքա մեկնակաղէնք սուրհանդակք, բնակեալք ի լերինն որ բաժանէ ընդ Աղձնիս եւ ընդ Տարօն։ Եւ յաղագս խրթնի եւ անհետազօտելի խօսիցն եւ բարուցն կոչին Խութ, յորոց անուն եւ լեառն Խոյթ անուանի։ Եւ գիտեն զսաղմոսն զհին թարգմանեալսն վարդապետացն Հայոց, զոր հանապազ ի բերան ունին։ Սոքա են զռեահք Ասորոց, որ չուեցին զկնի Ադրամելեայ եւ Սանասարայ որդւոյ Սենեքերիմ արքայի թագաւորի Ասորեստանի եւ Նինուէի, յորոց անուն ինքեանք Սանասնայք զինքեանս անուանեն։ Եւ են հիւրասէրք, օտարընկալք, պատուադիրք» (էջ 119 եւ հտն.)։

# ԱՆԱՆՈՒՆ ՊԱՏՄԱԳԻՐ

1. Թերի պատմագիրներ։— Թովմա Արծրունու Պատմութիւնն ամբողջ չի հասել մեզ. դա վերջի մասից թերի է։ Թերի է եւ այս երկրորդ պատմիչի երկը, որ նոյնպէս Արծրունեաց տոհմի պատմութիւն է։ Այդ երկու աշխատութիւնները գրուած են եղել մի գրքի մէջ, որի մէջտեղից թերթեր են պոկուած եղել. դրա հետեւանքով առաջին գրքի վերջին մասն է պակասում, երկրորդ գրքի սկզբի մասը։ Կան շատ բաներ էլ, որ երկուսի մէջ եւս պատմուած են. այսպէս, օրինակ, Թովմա Արծրունու գրքի երրորդ դպրութեան ժԹ գլխի մէջ (էջ 217 եւ հտն.) պատմուած է «վասն ծննդոց Դերանկին» (որս Աշոտ, Գագիկ եւ Գուրգէն որդիների), մի քանի դէպքեր Դերանկի ժամանակից, նրա սպանուելը, ապա Դերանկի որդիների՝ Աշոտի, յետոյ Գագիկի օրով կատարուած դէպքերը, — մինչեւ բստ յիշուած տպագրութեան 261-րդ էջի վերջը։ Շարունակութիւնը, 262-րդ էջի սկզբից, երկրորդ պատմիչի գործն է։ Այստեղ սկսւում է Դերանկի երրորդ որդու ծննդից՝ «Տուեալ եղեւ Նմա ի տեառնէ եւ այլ եւս որդի մի, զոր անուանէ յանուն հօրեղբօր իւրոյ Գուրգէն»։ Ապա պատմըւում է Դերանկի մի քանի գործերը եւ սպանուելը, յետոյ նրա որդիների՝ Աշոտի, ապա Գագիկի իշխանութիւնը եւ այլն։ Ամէն մտադիր ընթերցող էլ այդ խոշոր կըրկնութիւններից խկոյն նկատում է դրանց՝ երկու տարբեր հեղինակների գործեր լինելը, եւ այդ նկատել են առաջին հրատարակիչները։ Բայց չնայելով դրան՝ յետոյ հրատարակել են իբրեւ մի երկ՝ Թովմա Արծրունու, որովհետեւ առաջին գրքի հեղինակը Թովմա Արծրունին է։ Այսպէս Թովմայի գործն է համարուել ամբողջը նաեւ հին դարերում։

Պատմութեան վերջում կայ մի յաւելուած (գլ. ԺԲ.), որ մի համառօտ տեսութիւն է Արծրունեաց իշխանութեան՝ սկսած Գագիկ Արծրունի արքայի մահից մինչեւ 12-րդ դարի երկրորդ քառորդը. դրա մէջ յիշւում են 1021, 1041, 1092 եւ 1121 թուականները։ Յաւելուածն անողն իր ժամանակի վերջին Արծրունի իշխանի մեծ գովքի մէջ ասում է. «Նա ստացաւ զմատեանս Թովմայի զպատմագիրս այս եւ ետ նորոգել վերստին...»։ Ուրեմն ամբողջը համարուել է իբրեւ մի հեղինակի գործ։ Սրանից յետոյ կայ մի յիշատակարան, որից երեւում է՝ ամբողջ գիրքը, Ե՛ւ Թովմայի, Ե՛ւ Անանուն պատմիչի գործերը, արտագրուած են իբրեւ մի պատմութիւն Թովմայի. «Աւարտեցաւ գեղեցկայարմար Պատմութիւնս այս, զոր արարեալ ատուզաբանութեամբ անյաղթ եւ գիտնական վարդապետին Թովմայի»։ Արտագրութիւնը կատարուած է 1303 թ. Աղթամարի Ս. Խաչի վանքում «ի խնդրոյ աստուածարեալ գիտնական եւ արդիւնական վարդապետի, միանգամայն եւ արհիական աստիճանի արժանացելոյ տեառն Ստեփաննոսի, որ է ակն արեւելեան եւ աթոռակալ մեծի Սիւնեաց տանն»։ Կը նշանակի՝ Ստեփաննոս Օրբէլեանի ժամանակ եւս այդ երկու տարբեր գործերը համարուել են իբրեւ մի գործ։ Այսպէս շարունակում են այդ երկուսը մի գործ համարել մինչեւ վերջերս էլ. թէպէտ շատ պարզ է, որ դրանք երկու տարբեր գործեր են։ Երկրորդ հեղինակի անունը յայտնի չէ. պայմանօրէն կոչւում է Անանուն պատմագիրք։

2. Անանուն պատմագիր:— Այս հեղինակի գրած Պատմութիւնից(1) երեւում է, որ նա եղել է բաւական հմուտ մի անձ, շատ կարդացած, շատ էլ ճանապարհորդած. «Որ ինչ ի սկզբանց անտի շինութեան աշխարհիս Հայոց ի Հայկայ աղեղնաւորէ եւ ի նորուն զարմից եւ ցկաթոտ եւ վաւաչոտ Շամիրամն տիկին Ասորեստանեայց եւ ի նմանէ յայլս եւ այլոց եւս յաւէտ ձեռակերտք եւ շինուածք յիւրաքանչիւրոցն յերկրիս մերում եղեն,— գրում է նա, — մեր առ ամենայնն անձամբ հասեալ եւ աչօք տեսեալ, ձըկտեալ եւ ի հեռաւոր աշխարհս, մինչեւ ցԿղարջս եւ Շուշեթացիս եւ առ լերամբն Կաւկոսա եւ յԱհիզ, մինչեւ ի մուտսն Գաղայ, եւ ընդ Տայաստան և ընդ ամենայն հիւսիսականս եւ ընդ արեւելս ի հետիոտս գնալով՝ տեսաք զգործ քաջաց եւ նախնեաց» (էջ 293): Նա եղել է իր պատմած դէպքերի ժամանակակից, շատ բանի ականատես, հաւանօրէն եկեղեցական, թերեւս Արծրունի: Թէ ո՞վ է նրանից խնդրել գրել այդ Պատմութիւնը, այդ յայտնի չէ: Ամենայն հաւանականութեամբ՝ Գագիկ Արծրունի թագաւորը չբաւարարուելով Թովմա Արծրունու երկով՝ մի երկրորդ պատմիչի էլ գրել է տուել իր ժամանակի պատմութիւնը, որի մէջ փառաբանուած լինէր ինքն իր եղբայրների հետ եւ իր հայրը: Պատմութեան առաջին մասը, որ սկզբից թերի է, վերջից ունի այս ծանօթութիւնը. «Կատարեցաւ կարգ ծննդաբանութեան երից որդւոց մեծանուն եւ քաջամարտիկ իշխանին Գրիգորի. յորում եւ գործք նորին ամենայաջողակք եւ զրաւ նորուն ի դաւելոյ ոմանց Հայաստանեայց եւ Պարսից եւ ողբք ի վերայ նորին» (էջ 268): Շարունակութիւնը, երկրորդ մասը, որի վերնագիրը չի մնացել («Չորրորդ դպրութիւն» բառերը հրատարակչի աւելացրածն է, իբր Թովմա Արծրունու պատմութեան չորրորդ մաս), վերաբերում է առանձնապէս Գագիկ թագաւորին: Սրան է դիմում նա, անշուշտ, երբ գրում է. «Զոր եւ ես քեզ, սիրելի՛ քաջ, եւ քաջի արանց նախնական, որ եւ զպատմութիւնս յինէն պահանջեցեր, ոչ իբրու յայլոց համբաւուց տեղեկացեալ ընծայեալ արժանացուցանեմ քեզ ստայօդ բանից պաճուճեալ առասպելս, այլ ականատես եւ ականջալուր, եւ իմով իսկ ձեռօք չօշափեալ՝ պատմեմ քեզ հաւաստապէս վեղելոցն զարմանս» (էջ 290 եւ հտ.):

Այս անանուն պատմիչն իր ամբողջ պատմութեան մէջ շարունակ մեծամեծ գովեստներ է տալիս Գագիկին: Մինչդեռ Յովհաննէս Պատմագիրն զայրացնում է «թագակերպեալ իշխան» Գագիկի «թագաւոր» տիտղոսն ըստանալը Յուսուփից, — որովհետեւ դրանով թուլանում էր հայկական իշխանութիւնը եւ կործանում էր պատրաստւում Սմբատ թագաւորի մեծ ջանքերով ընդարձակած եւ Ատրպատականի ոստիկանից անկախ դարձրած տէրութեան համար, — այս Անանուն պատմիչը մեղքը ձգում է Սմբատ թագաւորի վրայ եւ սքանչացած նկարագրում է, թէ ինչպէս Ատրպատականի ոստիկան Յուսուփը նրան թագաւորեցնելով՝ զարդարում է. «Եւ եդեալ թագ

(1) Այս երկրորդ հեղինակի Պատմութիւնն սկսւում է Պետերբուրգի 1887 թ. հրատարակութեան 262-րդ էջի սկզբից. «Տուեալ եղեւ նմա ի տեառնէ եւ այլ եւս որդի մի»:

ի գլուխ նորա զուտ ոսկի բազմարուեստ յօրինմամբ հիւսեալ մարգարտովք եւ մեծագնի ակամբք պատուականօք, զոր ոչ բաւեմ պատմել: Եւ զգեցուցեալ ոսկեզարդ պատմուճան միանգամայն եւ գօտի սուսերաւ, հանդերձ ոսկեհուռն փայլեալ զարդու, որ ի վերայ քան զմիտս եւ զբան անցանէ պատմողաց: Եւ հեծեալ յերիվարն քաջակազմ ոսկեհրաշ սարուցն՝ փայլէր իբրեւ զարեգակն ի մէջ աստեղաց. եւ բազմութիւնք զօրացն սպառազինեալ յաջմէ եւ յահեկէ՝ թնդմունք ճայթմանց եւ փայլատակունք սուսերաց, գոչմունք փողոց եւ հնչմունք եղջերաց, վանգիւնք սրնգաց եւ հեշտալուր քնարացն, տաւիղք հանդերձ դրօշիւք նշանաց առաջին եւ զկնի, եւ ի ձայնն ահեղ զհետ դղրդեալ բանակն արքունական զօրուն: Եւ այսպիսի փառաւորութեամբ հաստատեալ տայ ի ձեռս նորա զբոլոր Հայաստան աշխարհս հանդերձ մեծամեծ քաղաքօք եւ ամենայն վայելչութեամբքն. զոր ես ոչ դանդաղիմ ասել զօծումն սորա աներեւութաբար լեալ ի Հոգւոյն սրբոյ, ըստ առաքելոյն գոչման որ ասէ՝ Ոչ ումեք է իշխանութիւն, եթէ ոչ յԱստուծոյ, եւ որ էն՝ յԱստուծոյ է կարգեալ» (էջ 285 եւ հտ.): Ահա՛ թէ ի՛նչ: Մահմեդական Յուսուփն իր շահերի համար Արծրունի Գագիկին թագաւոր է կարգում հակառակ Բագրատունիների, այս Անանուն Պատմիչի համար այդ կարգումն Աստուծուց է: Նա Գագիկին զարդարում է երեւելի պաճուճանքներով, Պատմիչիս համար դա եղել է «աներեւութաբար օծումն Սուրբ Հոգուց»: Այլապէս վարուել չէր կարող նեղ տոհմային փառասիրութեամբ լցուած եւ իշխանութեանը չողոքորթող ու նրա համար աշխատող հոգեւորական մեկնաբանը, որ ամէն կերպ փառաբանում է «զիմաստակիր խոհականութեան զործրս մեծի արքային Հայոց Գագկայ», եւ իրեն Գագիկի անձը: Նրա համար այս թագաւորը միշտ «մեծ արքայ Գագիկ» է, «մեծ արքայ Հայոց Գագիկ», «մեծ թագաւոր Հայոց Գագիկ»: Նա քաջ է, աշխարհաշէն, խաղաղասէր, «որ հոգաբարձէր իբրեւ զհայր եւ խնամածու ի վերայ աշխարհիս Հայոց, որ եւ ի վերայ բարեխնամող գթութեանց որով զաղքատս դարմանէր, ըզգերեալս դարձուցանէր, զգրկեալս փրկէր, դատ առնէր որբոց եւ տայր իրաւունս այրեաց»: Այսպէս այս Գագիկ Արծրունին մի եկեղեցականի իդէալ է, որի անունը միշտ որեւէ գովեստով է յիշում այս Պատմիչը, եւ որի զէնքի աջողութիւններն ընդդէմ շրջապատող արաբական ցեղերի եւ մանաւանդ նրա շինարարութիւնները մեծ սիրով պատմում է նա՝ «առ ի յիշատակ թողլով զկնի եկելոց, եւս եւ ի պարծանս տանն Արծրունեաց»:

Թէ այդ պալատական պատմիչն ինչպէս գովերգել գիտէ իր թագաւորի ե՛ւ արտաքին կերպարանքը, ե՛ւ ներքին պատկերը, դրա համար աւելորդ չի լինիլ այստեղ բերել նրա պատմութեան մեզ հասած վերջին գլուխը:

«Յայտարարութիւն կերպարանութեան եւ անձին եւ փառաց մեծի արքային Հայոց Գագկայ: Եւ քանզի նախածանօթ եւ յառաջգիտութեամբ Աստուծոյ, գիտելով զնա թէ այնպէս լինելոց է, անդստին յորովայնէ մօր իւրոյ ելից զնա իմաստութեամբ հոգւովն: Վասն որոյ եւ շնորհեաց նմա պատկեր լուսազարդ եւ հասակ փառաց անհամեմատ ի մէջ ամենայն մսեղեաց բանական ազգի. հարթ եւ ուղիղ, վայելուչ եւ պայծառ երեսօք. հեր գլխոյ նորա թխակերպ, գանգուրագեղ գիսաւորութեամբ ու-

ղեբեկ ջոկացեալ ի վերայ սպետափառ ճակատուն յոյժ խուռնախիտ թանձրութեամբ. մրազարդ կամարաձեւ կցուցք յունիցն, եւ բիբք եւ արտեւանունք հանդերձ պտղովք վկայեալք, իբրեւ զշուշան ի հովիտս ծաղկեալ ծաւալին հրաշազարդ յօրինմամբ: Ունչք երկայնագոյնք եւ վայելչաւորք, լսելիք դիւրալուրք եւ դիւրահաւանք ի բարիս եւ պայծառք լուսահրաշ նմանեալ գունով: Շրթունք նորա իբրեւ զլար կարմիր, ատամունք նորա հուպ առ միմեանս, զտեալք յաղտոյ: Տեգք մօրուաց նորա զօրէն մանուշակի ծաղկեալք ի վերայ գունագեղ այտից՝ ի կերպս զուարթնոց տեսողացն զնա ցուցանէր: Եւ յիրաւի այսպիսիք նմա շնորհազարդ փառաց պարգեւք ի վերուստ. վասն զի նա ըստ նմանութեանն Յովսիայ թագաւորեալ նորոյ Իսրայէլի՝ վերագոյն քան զնա լրացոյց զկարգս եկեղեցւոյ սրբոյ: Ուստի եւ յոյժ սիրելի էր ինձ յայսմ ժամանակի առնուլ ի հնդկայինն աշխարհէ եւ ի Տպազ քաղաքէ, մանաւանդ թէ ի քարկոփչացն, եւ յԱզէրպաարացւոց եւ Թէբէշացւոց վաճառուց զոսկետեսակն տպագիովն, եւ չարամանել ի թագի նորա յաւուրս թագի զբօսանաց, մանաւանդ յորժամ ի փրկական պասեք տէրունական տօնիցն իբրեւ զփեսայ յառաջատէ ծագիւր ըստ նմանութեանն արուսեկին. ուստի եւ ի գունագոյն ականցն հիւսելոց մարգարտախուռըն զարդուցն ի գլուխս եւ ի լանջս եւ ի գաւակս երփվարին խրոխտացելոյ ճաճանչք լուսոյ ճառագայթէին. այլ եւ ի հոսանս հրաձգութեանցն առաջի նորա եւ ի կայթմունս թնդականացն եւ ի հնչմունս փողոցն առ հասարակ դղրդեալ բիւր բիւրոց մարդկան, ամենայն ակն զնա բաղձայր տեսանել, ուստի եւ ամենայն հոգիք աղաղակէին «Տէր, կեցո զթագաւորն եւ լուր մեզ». եւ արդարեւ արժանի էր օծեալն Աստուծոյ եւ բարձրն քան զամենայն թագաւորս երկրի՝ այսպիսի եւ ի վեր քան զսոյնս գովութեանց:

«Վասն զի նա խաղաղութեան եւ շինութեան առիթ: Նա աւազակաց խանձող եւ հերքիչ: Նա իրաւանց եւ դատաստանաց արդարով կշռիչ: Նա ամբարտաւանից բարձրաթռիչ թեւոցն հարթող: Նա որջացելոց բազմաց ի բարձրաբերձ ամրոցաց սորբջոյց: Նա ապստամբաց անզերծանելի ծուղակ: Նա գաղտնի նենգութեանց թշնամեաց նախատեսող եւ կարթ կորզիչ: Նա սիրելեաց եւ կամարարաց իւրոց անծախ պարգեւ, այլ եւ անուշահոտ բուրաստան, լի համապայծառ ծաղկովք: Նա տան իւրում կանաչատունկ ոսկեսաղարթ լի աստուածայորդոր սիրով եւ բերկրաբեր ուետիք: Նա որդւոց իւրոց կրթարան բարեաց եւ մշտաբուղխ աղբիւր իմաստից: Նա ամենայն արուեստականաց ղոնրաց եւ անվրէպ քանոն: Նա բռնաւորաց սպառնալեաց բքաբեր, եւ ահարկու հողմոցն ընդդիմակաց լեառն բարձր եւ անդրդուելի վէմ: Նա խարդախող եւ կարծեցուցիչ հրովարտակաց եւ պատգամաց այլազգեաց յղելոց առ նա հուր ծախիչ: Նա ի սիրտս բռնաւորաց Բաբելացւոց, Մարաց եւ Պարսից, Յունաց եւ բարբարոսաց հրացեալ եւ յարաշարժ բեւեռ: Նա հարցափորձող իմաստնոց խորք ծովու կամ բարձրութիւնք երկնից որ անհասն է: Նա յոսկեզարդ զահոյսն ուրախութեանց բազմեալ նազելի ճոխութեամբ իբրեւ զառիւծ զօրաւոր հաւատովք անճեղեալ ի փառս տեառն: Նա ի սեննակս ոսկեզարդս երեկօթիցն քաղցրանինջ քնով զուգեալ իբրեւ զվիշապ, եւ ահ հզօր զօրութեան նորա շրջապատեալ զբոլոր Հայաստանեօքս՝ իբրեւ զպարիսպ պղնձի անմերձենալի պահէր յերկիւղէ եւ ի գաղտաձիգ նետից թշնամեաց: Նա ի վերայ դրացեաց իւրոց եւ իւրոց հնազանդելոց հովանի ամրապահեստ, եւ արագ...» (էջ 303 եւ հտն.):

*Սրա նման մի գովք Թագաւորի շատ չենք գտնիլ մեր հին գրականութեան մէջ: Դա մի ամբողջ ճառ է եւ ճառօրէն կրկնութեամբ յօրինուած: Թէ վերջն է՛լ ինչ պիտի ասէր այդ Անանունը, չգիտենք, որովհետեւ վերջին մասը պակասում է: Այդ գրուած է այն ժամանակ, երբ դեռ Գագիկի մազերը թուխ են եղել: Անանուն Արծրունին այնքան գովեստների մէջ մոռանում է որեւէ թուական յիշատակել:*

3․ Գագիկ Արծրունու շինարարութիւնը: — *Եթէ այս Գագիկի «Թագաւոր» կոչուելու փառասիրութիւնը մի կողմ դնենք, նա, իսկապէս մի արժանաւոր իշխան է եղել թէ՛ իր մարտական եւ թէ՛ շինարարական գործունէութեամբ, եւ անհիմն չեն այն գովեստները, որ այս Պատմիչը տալիս է նրան: Նրա Թագաւորութեան երկրորդ կէսի ժամանակ արդէն սկսւում է Հայաստանում 10րդ դարի մեծ կուլտուրական շինարարութիւնը, որի մէջ իր դերն է կատարում եւ Վասպուրականը: Գագիկի շինարարական գործերի մասին բաւականի գրում է Թովման (էջ 252 եւ հտն․): Նոյնը հրճուանքով պատմում է եւ Անանուն Արծրունին, աւելի շնորհքով եւ ճաշակաւոր եւ, կարելի է ասել, նոյնիսկ գեղեցիկ:Մեր հին գրականութեան լաւագոյն նկարագիրներից են, օրինակ, նրա գրածները Ոստան աւանի, Աղթամար կղզու չէնքերի՝ Աղթամար քաղաքի եւ Աղթամարի եկեղեցու մասին (Գլ․ Ձ․ Է․ Ը․ էջ 290 — 299): Այս վերջինը իր զարդաքանդակներով մնում էր մինչեւ մեր օրերը եւ հիացմունքի արժանանում եւ թերեւս դեռ մնում է, եթէ չի աւերուել:*

> *«Ամենեցուն իսկ ընթերցասիրաց յայտնի են պատմեալքս՝ զի այր արծաթասէր որով ղելուլ զպարանոցն լուսագոյն համարի, քան եթէ զանգ մի տուժել յարծաթոյն. եւ եթէ զարեգակն տեսանիցէ արձակելով զճառագայթսն ի խնամս տիեզերաց ըստ հրամանի խնամողին Աստուծոյ՝ ընդդէմ նորա ասէ. ընդէ՞ր փոխանակ լուսոյդ ինձ ոսկի ոչ բղխես. եւ եթէ աղբիւր ակնավճիտ տեսանիցէ՝ ասէ, չեմ ծարաւի, եւ ոչ երբեք առնից ի քէն ջուր. մատո՛ ինձ արծաթ: Իսկ բարք անարծաթասէր գոլով Թագաւորին, զուտ եւ մաքուր մնալով յայսպիսի մեծավէր ախտէ՝ խնամ ածէ ոչ միայն անձինն զբօսանաց, այլ եւ բնաւ աշխարհիս Հայոց. տայ զմթերս գանձուց ի ձեռս գործավարաց եւ արուեստաւորաց՝ պարապաւորել ամրութեամբ զբլուրս գաղաթնաւորս եւ զանտառիկ ամրոցս բերդից ի գաւառս եւ ի միջոցս երկրի, ի պէտս ապաստանի փախուցելոց ի հինից եւ ի խռովութեանց օտար ազգաց. յորոց ի բազում ամրոցաց պարսպելոց յիշէ անուն՝ երկուս տեղիս կարի ինձ յոյժ հաճեալ նուաճէ ակնակառոյց լինելով. մինն առ եզերբ ծովուն, որ է աւանն Ոստան ի գաւառն Ռըշտունեաց, որ է յոյժ բարեխառն, ի չորից ծագաց երկրի օդոց առ հասարակ նա ընչելով. նաեւ ծառովք պտղաբերովք սաղարթեալ եւ այգեւէտ բազմութեամբք յոյժ վայելչացեալ զարդարի. բղխեն եւ աղբիւրք բարեխառնք շուրջ զքաղաքաւն, օգնականութիւն մատուցանելով մարդկան ի բազում պէտս, այլ եւ ի հարաւակողմն կուսէ ամրոցին մերձ կայ բարձրաբերձ լեառնն Արտօս, որ ի գարնանայինն եղանակ ամբարեալ պահէ յինքեան զգալարութիւն արմատոց եւ ծաղկանց, եւ զձիւնահորս ամբարձեալ ի պէտս Թագաւորաց, եւ ամենայնի որ ցանկացի ոք առնուլ: Նաեւ ի*

գլխոյ լերինն հոսեալ իջանեն գետք սահմանակարկաջք յորդահոսք, որով ոռոգանի երկիրն առ հասարակ. որք եւ ի ծով անկանելով՝ բղխեն ձկունս մանունս առ ի պէտըս վայելչութեան բնակչաց աշխարհին, եւ ամբարեն ինչս բազումս ի գանձս թագաւորաց, զոր եւ արքայի առեալ նուիրէ ի դարմանս աղքատաց: Եւ ինքն դաշտն ամրոցին է ծովահայեաց եւ յոյժ վայելուչ: Եթէ չարժեսցի ծով յուզեալ ի հողմոց՝ ծաղկաձեւ ալիքն զբօսացուցանողք եւ վայելուչք երեւին. եւ եթէ մաքուր յօդոյ լինիցի՝ զամենեցուն աչս գրաւէ զիւրն տեսանել ծաւալումն. վասն որոյ եւ արքայի ձեռնարկեալ շինէ ի նմա տաճարս եւ սենեակս եւ փողոցս հրաշալիս պատկերակերպս եւ ազգի ազգի յօրինուածս, զոր ոչ բաւեմ պատմել: Պարսպէ եւ զծովակողմն զօրաւոր վիմօք, զնելով զհիմունսն յանհնարին խորութեան, շինէ եւ ի գլուխ պարսպին ընդդէմ ծովուն տաճար մի ճեմարանոց ոսկեզարդ եւ պէսպէս պաճուճեալ դեղովք, արեգակնահրաշ ճառագայթաձեւս ի խողտանս աչաց եւ յուրախութիւն սրտի ինքեան եւ իւրոց արժանեացն. իսկ զդրունս կազմեալ կամարաձեւս, օդաբերս, զովացուցիչս, միանգամայն եւ լուսանցոյցս չողախաղացս, որք ի ծագել եւ ի մտանել արեգականն փայլատակելով ի վերայ ծովուն՝ չող գործեն ի սիրտս տաճարին, եւ յերփըն երփն շրջշրջելով զդրօշեալ պատկերատիպսն եւ զզանազան յօրինուածսն՝ զմիտս հիացուցանէ զտեսօղացն, եւ ի վեր անդր անցանէ քան զպատմողաց գիտութիւն: Իսկ մեր ի բազմաց զսակաւն յիշատակելով ահա ասացաք որ ինչ յաղագս Ոստանն աւանի» (էջ 291 եւ հտ.): Տե՛ս եւ Աղթամար քաղաքում շինած պալատի նկարագիրը (էջ 295 եւ հտ.):

Այսպիսի հատուածների մէջ Անանուն Արծրունին հանդիսանում է իբրեւ իսկական գրող: Եւ Թովմա Արծրունու երկը կարդալուց յետոյ՝ ընդհանրապէս հաճելի է լինում ընթերցումն այս հեղինակի գրուածքի, նայելով իր չռայլած գովեստներին ու մեծարանութեանը: Նա էլ նմանում է նախորդներին, բայց աչքի է ընկնում իր համեմատաբար պարզ ու թեթեւ, կանոնաւոր, բնական ու հարթ ոճով: Նա գիտէ իր խօսքը համեմել յարմարաւոր իմաստալից ասացուածներով կամ դատողութիւններով, կամ զարդարել պատշաճ նմանութիւններով, ինչպէս, օրինակ, հետեւեալը. Գագիկը պաշարում է Մայմանկի որդի Ծապուհի բերդը. վերջինս «իմացեալ եւ զիւրն եւ զիւրոց գործակցաց նեղութիւն՝ յանկարծօրէն, իբրեւ զպտուղ մի ինքնահաս ի բարձր ոստոց ի գոգս անկեալ թափողի՝ այնպէս յանմերձենալի ծայրից ամրոցին ստորիջեալ անկանի առ ոտս երջանիկ իշխանին Գագկայ»: Երբեմն երկու երեք նմանութիւններ է բերում միեւնոյն բանի համար, ինչպէս, օրինակ. մեռնում է Աշոտ իշխանը, «զկնի այսորիկ յաջորդէ զաթոռ իշխանութեանն Գագիկ եղբայր Աշոտոյ, ըստ նմանութեան երկուց ակնավճիտ աղբերց մերձակայից. յորոց մի ոմն նուազեալ՝ միւսն եւ՛ս յաւէտ ի վեր զբղխումն արձակիցէ. զոր օրինակ եւ երկուց վիշապաց կամ կորեանց առիւծուց՝ մինն զուգեալ՝ միւսն բարձրագոյնս խրոխտայցէ», եւ այլն (էջ 277):

Հետաքրքիր է գեղեցիկ նկարագիրն այն մեծ ողբ ու սուգի, որ Գրիգոր Դերենիկ իշխանի սպանման առթիւ անում են ամէնքը եւ նրա կին Սո-

փին (էջ 266 եւ հտն.)։ Այստեղ գտնում ենք շատ նման կողմեր «Սասնայ Ծռերի» մէջ կատարուած սուգերի։

«Իսկ համբաւ հզօրին կորստեան, իբրեւ զամպ թանձրամած խաւարային լցեալ սաստկութեամբ՝ ելեալ տարածեցաւ ի վերայ Հայաստանեայցս, մանաւանդ ի վերայ բարձրագոյն եւ սեփական Վասպուրականն կոչեցեալ նահանգի. յորում տիկնայք եւ աղախնայք թողեալ զկանացի բնութեանն պատիւ՝ ի գռեհս եւ ի փողոցս բացագլխաւ ընդ երկիր զանձինս իւրեանց քարշէին։ Որք յանհնարին սգոյն դառնութեան՝ մատաղ մանկտոյն զսովորականն մոռացան դիեցուցանել զկաթն, որոց միայն պարապեալ միմեանց ձայնակցելով։ Ուստի եւ ի կրծաբախ ճակատահար ճայթմանցն եւ ի բարձրաձիչ աղաղակացն հնչեաց դուռն դարպասու արփիադեզ տիկնոջն մեծի Սոփեայ։ Որք յաշխարելն իւրեանց ասէին այսպէս, «վա՜յ, կորեաւ մեծանուն իշխանն, եւ անտերունչ մնաց երկիրս Հայոց»։

«Իսկ տիկինն խիզախեալ յանպարտելի զօրութիւն հզօրին ասէ, «զի՞ դուք, ո՜վ մարդիկք, եւ ընդէ՞ր գործել զայդ յանդգնիք. չի՛ք ուրեք թշնամիք. ո՛չ ուստեք պատեալ պատերազմ։ Ո՞վ ոք զայդ գործել համարձակեցաւ, ո՞վ ոք զռահվիրատուր ախոյանարձակ քաջազգի վարուժանն իմ հաւահար առնել կամ ի ծուղակ ըմբռնել կարողանայր, եւ ոչ ինքն օժտեալ ի նմանէն մեռանէր. ո՞վ ոք զբարձրաթիռ արծիւն քաջահնչող եւ ահարկու ձայնիւ ի խոնարհ սուզել լինէր ձեռնհաս. ո՞վ ոք զանյաղթ վիշապն սանձել մերձենայր, եւ ապրեալ լինէր ինքն»։ Զայսոսիկ եւ եւս յաւէտ քան զսոյնս ասէ տիկինն ընդդէմ լալականացն։

«Իսկ իբրեւ ստուգեցաւ իրն եւ համբաւն ճշմարտեցաւ կորստեան՝ ապա այնուհետեւ յերկիր անկեալ զերեսս ի գետնի դնելով, մոխիր ի վերայ ցանելով գլխոյն, եւ խաւար ձեռագործ յօդս ցնդէ տաճարին։ Եւ ի բաց ընկեցեալ զպատուադիր քօղն մարգարտահիւս զարդուն, զգեցեալ զսեաւս ի զգեստից, եւ պատրաստեալ գլխոյ իւրում արկանելիս թխակերպս, եւ յառաջ կոչեալ զդստերս՝ ազոյ որոց յօրինէ կարգս, կարգեալ կացուցանէ դասս դասս՝ պարաւորս երրայեցիս եւ զթագաւորացն Իսրայէլի նուագել տայ զողբս։

«Ցայնմ աւուր սուգ առին սուրբ եկեղեցիք եւ դասք պաշտօնէից։ Ի բաց առան ի դրաց սենեկացն ոսկեհուռն կամարաձեւ եռանդոյն տարազք, եւ սեաւք խորշորագոյնք եւ յոյժ տխրալիք զտեղին փոխաբերեցին. եւ ընթացեալք այսր անդր սուրհանդակք լալականացս՝ խցին զլուսանցոյց պատուհանս հրաշակերտ ապարանիցն, հրամանաւ տիկնոջն. «զի մի, ասէ. արեգակն յանհաս բարձրութեանն երկնից ճեմեցի կամար եւ զճառագայթս ի խոնարհ արձակելով՝ զիմս լուսաւորեսցէ խաւար. եւ կամ լուսինն ի լրմանն ժամանեալ ամսեակ, արուսեկիւն հանդերձ եւ բնաւ զարդուն աստեղաց՝ զիմս փարատեսցէ մէգ, մինչեւ տացէ ինձ Աստուած յորդւոց իմոց այրասիրտ նման հօր իւրոյ, որ ի կեանս իմ կամ թէ զկնի կենաց իմոց ի վերայ գերեզմանին տացէ աւետիս՝ առեալ վրէժ հեղման արեան հօր իւրոյ այնոցիկ, որք զայս ինձ հատուցին խաւար»։

«Զայս մեզ ընծայեցին՝ որք տեսօղք լեալ էին գործոյն եւ որք ի գիրկս զմանկունքն կրէին, եթէ զայսոսիկ ասելով տիկնոջն՝ ձգեալ լինէր զձեռսն ի վերայ ուսոյ հրաշազարդ մանկանն Գագկայ, ոչ գիտեմ հանդէպ գոլով, կամ թէ մարգարէաբար իսկ զայս առնէր մեծ օրիորդն Սոփի, երջանիկն ի տիկնայս։ Ցաւուրս դառնութեան

*սգոյն այնորիկ ձեռք երկրագործաց եւ արուեստականացն լքեալ յիւրաքանչիւր վաստակոցն՝ եղեալ ծնկաց եւ ծնօտից՝ լային դառնապէս. տեարք եւ ազատք ի միասին հաւաքեալ, չար ողբովք զմխեանց ճմլեցուցանէին զսիրտս: «Ո՞ւր, ասեն, լքեալ կորուսաք զպատուական մարգարիտն, զպարծանքն Հայոց, զքաջն անպարտելի, որ զմեծ պատերազմունս դիւրաւ մղէր, եւ անուն բարձրագոյն ինքեան եւ մեզ ստանայր: Ո՞ւր է բարեժմիտ չրթանցն ժպտումն, որ բազմերանգ բազմականս ոսկեզարդ գահոյիցն միշտ զմեզ ուրախարարն զմայլեցուցանէր բաժակաւ: Ո՞ւր առատ ձիրք ձեռինն պարգեւաբաշխ, որ երեւելի զարդու՝ ցանկ զմեզ չքեղացուցանէր: Վա՜յ եւ աւա՜ղ մերոյս կենդանութեան: Ընդէ՞ր ոչ պատահեաց մեզ օրն այն ի մեծ պատերազմի ի մէջ նիզակախուռն զօրաց. թերեւս եւ մերոց լինէր բարձումն կենաց»: Աստ ի մէջ կացեալ հայրապետաց եւ ճգնաւորաց դասք զարթուցանէին զմիտս կնոջն եւ զայլոց կոծողացն յերկիւղն Աստուծոյ, եւ առ սակաւ մի փարատէին աղէտ սգոյն դառնութեան»:*

## ՄՈՎՍԷՍ ԿԱՂԱՆԿԱՏՈՒԱՑԻ

*Այս պատմիչը, ինչպէս ինքը գրում է (1), է Ուտի գաւառի Կաղանկատուաց գիւղից («առ ստորոտով լերինն, որ է յանդիման դեղջն մեծի Կաղանկատուաց, որ ի Նմին յՈւտի գաւառի՝ յորմէ եւ ես»): Գրել է իր հայրենիքի՝ Աղուանից պատմութիւնը սկզբից մինչեւ 10րդ դարի կէսերը, առանձին ուշադրութիւն դարձնելով եկեղեցական դէպքերին: Պատմութեան առաջին հատորի նիւթը քաղուած է հայ մատենագիրներից՝ Մ. Խորենացի, Եղիշէ եւ ուրիշները, այլեւ Սրբոց Վարքից՝ «Յայսմաւուրքից», ինչպէս եւ հետագայ դարերի զրոյցներից Աղուանից եկեղեցու ծագման մասին: Քաղաքական ու եկեղեցական դէպքերի հետ պատմում է նաեւ տեսիլներ, նահատակութիւններ, սրբերի նշխարների գիւտեր, աղանդաւորների հալածանքներ եւ այլն: Բերում է եւ կանոններ ու թղթեր, որոնցով աւելի հարուստ են Պատմութեան երկրորդ ու երրորդ հատորները: Պատմական տեսակէտից աւելի կարեւոր են այս երկու հատորները, որոնց մէկ կան բազմաթիւ տեղեկութիւններ ոչ միայն Հայոց եւ Աղուանից եկեղեցական յարաբերութիւնների մասին, այլեւ շատ բան Աղուանից կաթողիկոսների եւ Միհրական հարստութեան իշխանների մասին, ինչպէս եւ խազիրների ու հոների արշաւանքների, Հերակլ կայսրի եւ Խոսրով Ապրուէզ թագաւորի պատերազմների վերաբերեալ: Վերջին դէպքը, որ յիշում է Կաղանկատուացին, է՛ Պարտաւ մայրաքաղաքի առումը ռուզիկների, որ է՝ ռուսների ձեռով 914 թուականից ոչ շատ յետոյ (ըստ ոմանց՝ 944 թ.): Այս դէպքից յետոյ կան երկու գլուխներ եւս, որոնց մէջ բերուած են Աղուանից իշխանների ու կաթողիկոսների ցանկերը մինչեւ 988 թ.: Վերջին անունները կարող են, սակայն, ուրիշների ձեռով աւելացրած լինել: Այս հեղինակը 10րդ դարում է գրել իր երկը. 10րդ դարի հեղինակ Ուխտանէս եպիսկոպոսը, որ հաւանօրէն 986 թուից առաջ է վախճանուած համարւում,*

---

(1) Մովսէսի Կաղանկատուացւոյ Պատմութիւն Աղուանից աշխարհի, Թիֆլիս 1912, Բ. 11, էջ 155:

*բառացի օգտւում է նրա գրքից*(1) ։

*Մովսէս Կաղանկատուացու երկն իսկապէս պատմագրութիւն չէ, ոչ էլ ժամանակագրութիւն, այլ մի քաղագրութիւն, որի մէջ նիւթերը դըրուած են ժամանակաբանական կարգով։ Նա գլխաւորապէս Աղուանից կողմերի պատմութիւնը նկատի ունենալով՝ իր ձեռի տակ ունեցած գրաւոր աղբիւրներից՝ թղթերից, կանոններից եւ այլն քաղում, կազմում է իր դիրքը, բազմազան ոճերով, երբեմն մութն ու ճոխաբան, երբեմն էլ պարզ ու կենդանի, նայելով թէ ի՛նչ աղբիւրից է օգտւում։ Նա առանց մշակելու կամ քննադատելու, մէջ է բերում ամէն ինչ, որ իր աչքին կարեւոր է թւում, երբեմն նաեւ այնպիսի բաներ, որ Աղուանից պատմութեան հետ որեւէ առընչութիւն չունեն ։*

*Մ. Կաղանկատուացին իսկապէս մեծ մասամբ արտագրում է իր աղբիւրները՝ բառացի կամ կրճատելով։ Այս քաղագրութիւնն երբեմն այնպէս մեխանիկօրէն է արուած, որ նոյնիսկ անփոփոխ պահուած է աղբիւրների դէմքը. այսպէս, օրինակ, Խազիրների արքայորդու մօտ 7–րդ դարում Աղուանից Վիրոյ կաթողիկոսի գնալու պատմութեան մէջ պահուած է մի երկու տեղ առաջին դէմքը, եւ թւում է թէ Կաղանկատուացին ինքն է այդպէս պատմում եւ նա 7րդ դարի հեղինակ է եւ կաթողիկոսի հետ իբրեւ դեսպան գնացած մարդկանցից մէկն է ։*

*«Անդ տեսաք զբազմոցս նոցա ի գունս ի վերայ ծնղաց ըստ նմանութեան փաղանգաց ծանրաբեռն ուղտուց. իւրաքանչիւր կոնք մի լցեալ մսով յանսուրբ անասնոց, ըստ նմին եւ սկտեղք, յորում Թանային յուտելն իւրեանց յաղաջուր, եւ զբաժակս եւ զըմպելիս արծաթեղէնս քանդակունս յակի համակեալս, զորս բերեալ էին յաւարէն Տփխեաց. ընդ նմին եւ զըմբոցս եղջիւրեղէնս եւ զշորամաձեւս փայտեղէնս մեծամեծս, որով զարգանակն լափէին. եւ նովին պարարտական սաղոյց անլուայ աղտիւքն՝ յաբխոռն յանգգայս՝ ի միոյ բաժակէ՝ երկու երկու կամ երեք երեք ի նոցանէ զանապակ գինին, կամ զկաթն ուղտուց եւ ձիոց յանյագ որովայնս իւրեանց իբրեւ ի տիկս ուռուցիկս չափէին։ Ոչ օրինաւոր մատուակք էին առաջի նոցա, եւ ոչ սպասաւորք ի թիկանց կողմանէ, եւ ոչ անգամ որդւոյ Թագաւորին, բայց գինաւորք, որք զգուռն նոցա պահէին չուրջանակի ապարափակ նիզակախիտ զգուշութեամբ։ Եւ իբրեւ մուծին զնոսա ի ներքս ըստ մի դանապահս մինչեւ ցերկրորդն՝ եւ զընծայս ողջունին բարձեալ ի բազկաց մերոց զինի կաթողիկոսին, ապա ընթացան ընդ առաջ նորա եւ հրամայեցին ամենեցուն փոխել ոտն ոտն եւ երկիր պագանել երիցս անգամ, եւ զայլսն արգելեալ յերկրորդ դրանն եւ փոխեալ ի նոցանէ զօժիտսն ի բազուկս իւրեանց, տարան զկաթուղիկոսն միայն ի ներքսագոյնն, ուր նստէր արքայորդին։* ***Եւ ի յանդիման լինելն երկիր եպագ կաթուղիկոսն ի վերայ երեսաց իւրոց եւ մատոյց նման զպատարագսն,*** *նոյնպէս եւ մեծամեծացն ամենեցուն։ Եւ ընկալեալ ի* ***ձեռաց նորա, եւ յոյժ քերկրեալ*** *ի տեսանելն զնա հանդերձ բազմութեամբ երթեալ առ նա, նստել հրամայեաց նմա մերձ առ ինքն ի խորանի անդ» (Բ. 14, էջ 182 եւ հտ.)։*

---

(1) Ուխտանէս եպիսկոպոս, Վաղարշապատ, 1871, հատուած երկրորդ, Պատմութիւն բաժանման Վրաց ի Հայոց, գլ. ԿԵ., էջ 128 եւ հտն. ։

## ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ

# ՎԱՀԱՆ ԳՈՂԹՆԱՑԻ

1․ Նախաբանը։ — Արաբական բռնապետությունն եւս անդրադարձած է վկայաբանությունների մէջ։ Պատմագիրները յիշատակում են նահատակություններ․ մոլեռանդ բռնակալներն ստիպել են քրիստոնեաներին ընդունել մահմեդական կրօնը․ նրանք յաճախ մերժել են այդ եւ լաւ են համարել չարչարուելով սպանուել, քան իրենց հայրերի հաւատը թողնել։ Այդպէս են վարուել, օրինակ, Համազասպ եւ Սահակ Արծրունի եղբայրները, որոնց չարչարանքի մասին, ինչպէս տեսանք, գրում է Ղեւոնդ պատմագիրը։ Կայ նրանց համար նաեւ առանձին վկայաբանութիւն (1), որի մասին այստեղ չենք խօսիլ։

Այդպիսի վկայաբանութիւններից մէկն է եւ Վահան Գողթնացունը, որի համար տպագրուած կայ եւ մի երկրորդ խմբագրութիւն (2)։ Հեղինակը վերջաբանի մէջ, որի մասին յետոյ խօսք կը լինի, գրում է․ «սկսայ պատմագրել, սկիզբն առնելով ուստի արժան իսկ էր, ի նոյն յարեալ զվկայութիւն սրբոյն Վահանայ» (էջ 57 եւ հտ․)։ Եւ իսկապէս, այս գրուածքի առաջին մասն է․ «Ողբք վասն չարեացն որ անցին ի վերայ աշխարհիս Հայոց ի ՃԾԲ [=152+551=703 թ․] թուականութեանն հրկիզութեամբ եւ գերութեամբ ի հարաւային ազգէն Իսմայելի»։

«Ահա մերկացաւ սուրն փաղակաւոր ի պատենիցն, զոր տեսանող ակամբն յառաջագոյն սպառնացեալ ողբայր մարգարէն։ Սո՛ւր ծարաւի արեամբ՝ զարթեալ ի մեզ ազգն Իսմայելի, ընդ չորեսեան կողմանս երկրի գոչեալ առեւծաբար․ կամ իբրեւ չորեքին հողմովք բախելով զծով, զաշխարհիս մեծութիւնս։ Որ արդեւք թէ եւ առ Իսրայէլ լինէր մարգարէութիւնն, զայն եւ առ մերս առնու ձայնն․ մանաւանդ Երուսաղէմ մինչեւ ի հիմն քակեալ լինէր, եւ մեր՝ բոլո՛ր աշխարհս քակեալ աւերեցաւ։ Զվայելչութիւն երկրիս՝ օտարազգիք կալան․ եւ ազատութիւն եւ տէրութիւն եւ իշխանութիւն նախարարացն՝ անարգութեամբ յերկիր կործանեցաւ։ Անդ մանկունք ողայք գքարի հարեալք․ եւ մերքս՝ առհասարակ ծնողք եւ մանկունք ի գերութիւն… Աւդ որպէս յայնժամ, նոյնպէս եւ այժմ մեզ՝ ճանապարհքն Սիովնի սգան․ ո՛չ ապականեալ բարձա՛ւ լոյս պայծառազարդութեան սուրբ սպասուց եւ զարդուց եկեղեցեաց․ ուրախութիւն հոգեզարդ տօնից եւ ցնծութիւն աստուածային հոգեւորական երգոց, քահանայից եւ պաշտօնէից, եւ միանգամայն իսկ առհասարակ վայելչու-

---

(1) Տես՝ Սոփերք Հայկականք, ժԲ․ Վենետիկ, 1854, էջ 61–80, «Վկայաբանութիւն սրբոց իշխանացն Համազասպայ եւ Սահակայ նախարարացն Հայոց ի տանէ Արծրունեաց»։

(2) Սոփերք Հայկականք, ժԳ․ «Ողբ վասն չարեացն աշխարհիս Հայոց եւ վկայաբանութիւն սրբոյն Վահանայ Գողթնացւոյ», Վենետիկ, 1854, երկրորդ խմբագրութիւնը՝ անդ, էջ 61 – 91․ «Պատմութիւն անցից ի հարաւայինն ազգէ ի վերայ Հայոց եւ վկայաբանութիւն սրբոյն Վահանայ որդւոյ Խոսրովի Գողթան տեառն»։

*թիւն աշխարհիս: Վասն զի մրրիկ տապախառնի տխրաբեր շնչեալ օդովն հարաւոյ, բարձ զառագաստ փափկութեան... եւ յայտնեցաւ թխութիւն թանձրութեան կառւոյն. խաւարագզած թանձրութիւն անհնարին սեւութեանս. գո՛յն, որ ունելոց էր զամենայն աշխարհս Հայաստան երկրիս...»:*

*Ողբից յետոյ պատմւում է, որ արաբական բռնակալները «զզօրս եւ զզօրագլուխս, զպետս եւ զիշխանս, զազատատոհմս եւ զնախարարազունս բնաջինջ կորստեամբ բառնալով՝ սրափողոտ խողխողմամբ սպառէին»: Նրանք այդպէս վարւում են, որովհետեւ «բազում անգամ վատթարեալ լինէին ի նոցանէն բազումք՝ ի սակաւ, քաջամարտիկ եւ պատուական նախարարացն»: Շատ զգածուած եւ մանրամասն նկարագրւում է նախարարների ողջ ողջ հրկիզումը Նախիջեւանի եւ Խրամի (Հրամի) եկեղեցիներում, ինչ որ Ղեւոնդն էլ պատմում է: Աբդլմելիքի հրամանով, Կասմ անունով մէկի միջոցով, որ Հայաստանի հրամանատարն էր, այդ չարագործները դաւադիր լինելով՝ նախարարներին խաբէութեամբ ժողովում են եկեղեցիների մէջ. դռները փակում, աղիւսով շարում, եւ «զվերնայարկսն քակեալ՝ լուցին հրով, եւ քան զԲաբելովնին ի վեր բարձրացուցին այրեցական նիւթովքն: Անդ բռնութեան թագաւորին երկիւղ, եւ աստ լեգէոն այսոց ի մարդիկ մտեալ՝ մոլեգնեցուցանելով, չուրջ ընթացուցանելով եւ զսուրան փայլեցուցանէին: Անդ ապա հօր՝ որդեծնաց զուգ աղխն այրէր. եւ ի վերուստ ի ձեղուանէն անկանէր կրակն. եւ մանկանցն ի հարդերձան վառէր հուրն. հարքըն ի բաց կորէին, զի առ նոցա ողորմահութիւնն՝ զիւրեանցն ոչ յիշէին. եւ զոյգ այրէին առհասարակ ամենեքեան: Արդ ողբա՛ եւ զմերս, սուրբդ Աստուածոյ...Սո՛ւգ առ, երկիր. ողբա՛, երկին, յոգւոց հանէք առհասարակ, զձիչ բարձէք ընդ մարգարէին. զի ահա մէգ եւ մառախուղ ի ձեզ տարածեցաւ: Արտասուօք բազմաց մի՛ հոգար, Երեմիա, որ զաչս աղբիւրս խնդրէիր. ի մեր աշխարհս խսկ ծովացաւ արտասուաց աղբերքս»: — Փայտակերտն այրւում է, ամէնքը ներսում խեղդւում են. վերջը «նոյնպէս եւ ամենայն երեւելի մարտիկ զօրացն սրով գլխատեալ՝ զփայտէ կախեցան»: Եւ այդ համարում էին համաշխարհային քաջութիւն՝ «տիեզերահամբաւս առնելով զիւրեանց քաջութիւն», — իրենց քաջութեան համբաւն ամբողջ աշխարհում տարածելով: Ապա սպանուածների տները կողոպտում են, նրանց ընտանիքները եւ ուրիշ շատերին գերում, բերում են Դուին, ջերմ օրերին պահում արգելարանում: Շատերն այդտեղ մեռնում են. «որպէս կարծեմ, յոլովութիւն լինէր մեռելոցն, քան թէ մնացեալ կենդանեացն», — գրում է վիպագիրը: «Եւ յաչնան հասեալ ժամանակ, հանեալ զնոսա յարգելատան տեղեացն, զպարանոցսն կնքէին, եւ առեալ տանէին զնոսա յԱսորեստանեաց երկիրն համարով եւ գրով: Եւ հասեալ ի Դամասկոս՝ զազատ զունդն յարքունիս ունէին եւ զմանկունս նոցա յարուեստս տային, եւ զայլն բաժանեցին զգերութիւնն: Իսկ զմեռելոցն ի ճանապարհի ոչ գիտեմ, եթէ ընկալա՞ւ զնոսա գերեզման, եւ եթէ ո՞րպէս ընկեցեալ եղեն ի տեղիս»:*

2. Պատումը:— *Արաբները հայերին բռնի դարձնում էին մահմեդական եւ նոյնիսկ այդպիսիներին խիստ արգելում էին ետ դառնալ իրենց*

առաջուայ հաւատին — քրիստոնէութեան: Այս պատումի սիւժետը պատում է ահա այդպիսի կրօնափոխութեան շուրջը եւ դրանով բազմակողմանի կերպով պարզուած է այդ խնդիրը ո՛չ միայն կրօնական, այլեւ հասարակական տեսակէտներով:

Վահան Գողթնացին, Գողթան տէր Խոսրով իշխանի որդին, մէկն է այն երեխաներից, որոնք, ինչպէս Նախարանի մէջ պատմուած է, գերի են տարւում արաբների ձեռով: Նրան մօտ չորս տարեկան հասակում դարձնում են մահմեդական եւ անունն էլ փոխում Վահապ: Երեխան ընդունակ է լինում, բարեշնորհ· լաւ ուսում է առնում, լաւ տեղեկանում նրանց ուսմանն ու կրօնին, վարդապետութեանը· քաջ եւ կորովի խօսքի տէր է լինում, եւ բարձրանալով դառնում է արքունի դիւանադպիր:

Իշխում է Օմարը· նա հրամայում է ժողովել գերի հայերին եւ ամէնքին արձակում է: Վահան-Վահապն իմացել էր, որ ինքը գերուած հայերից է· նա էլ ուզում է վերադառնալ Հայաստան: Օմարը դժուարանում է թոյլ տալ նրան, որ հեռանայ, որովհետեւ նա հարկաւոր մարդ էր· մէկ էլ՝ չէր հաւատում, թէ նա գերուած հայ է: Հայերի վկայութիւնը նա չի ընդունում: Միջադէպքում գտնւում են տասնուհինգ արաբ գիտնականներ, որոնք ծանօթ էին Վահանին եւ լաւ տեղեակ էին նրա անցեալին· նրանք վկայում են: Այն ժամանակ Օմարը, չուզելով բռնութիւն գործ դնել՝ որպէսզի նրան պահի, խոստումներ է անում նրան աւելի եւս մեծացնելու եւ պատիւներ տալու: Բայց ոչինչ չի ազդում Վահանին, որ վերջն ասում է Օմարին. «Արձակեցէք, որ տեսանեմ զորչափութիւն աւերածոյ երկրին իմոյ հայրենեաց, եւ ձեր հրամանաւ գործակալ արարեալ՝ առ ձեզ հասանեմ»:

Գալիս է Գողթն, ամիրապետի հրովարտակով վերակացուներ է կարգում· լսում է, թէ Օմարը մեռաւ, ուրեմն այլեւս չկար նրան տուած խօսքը, թէ կը վերադառնայ, եւ նա այլեւս կարիք չի տեսնում վերադառնալու: Սկսում է ապաշխարել, ողբալ իր մանկական տարիքում ունեցած ուրացութիւնը· նա իրեն քրիստոնեայ է համարում եւ կամենում է քրիստոնեայ մնալ: Երբ այդ տեսնում են իւրայինները, ստիպում են նրան ամուսնանալ, որպէսզի նրանից իշխանութեան ժառանգ մնայ Գողթնում: Ամուսնանում է Սիւնիքի տէրերի ազգականներից մէկի հետ: Բայց քանի գնում է, նրա մէջ զօրանում է քրիստոնէական բարեպաշտութեան եռանդը — պահք, աղօթք, տքնութիւն, արտասուք: Եւ որովհետեւ ուսումնական մարդ էր, նա համոզմունքով գիտակցաբար դառնում է իր հայրենական հաւատին:

Սկսւում է նրա տրագիկական վիճակը· նա բարոյապէս ճնշւում է եւ տանջւում, որ ինքը ծածուկ քրիստոնեայ է, եւ ուրացութեան անունը դեռ մնում է իր վրայ: Եւ վերջապէս վճռում է թողնել ամէն բան, եւ առնելով ճանապարհի ծախք եւ քսան ձիաւոր՝ ճանապարհ է ընկնում, որ գնայ Յունաց աշխարհը: Երբ հասնում է Վայոց ձորը, կինը թախանձում է նրան, որ յայտնի, թէ ո՛ւր է գնալու: Նա միտքը յայտնում է կնոջը, սա էլ իմաց է տալիս իր եղբայրներին· հաւաքւում են, կանայք լալիս արտասուք են թափում՝ ասելով. «Դու, որ ամիրապետի իշխանութեամբ առել ես հայրե-

նական երկիրդ՝ մեզ համար էլ մեծ յոյս էիր. այժմ այդ դիտաւորութիւնը որ ունիս՝ մենք օտար կը դառնանք, դու մեզ համար ո՛չ կենդանի կը լինիս, ո՛չ մեռած»: Նրա շուրջը նստած արտասուելով եւ նրան ողբելով, ասում էին. «Նայիր, տես մեր կեանքի խիստ դժուարութիւնը. գուցէ քեզ պահանջեն մեզանից. քեզ հետ՝ կը գանք օտար երկրում ապրելու եւ մեռնելու»: Բայց եւ այնպէս նա կնոջը թողնում է իր աներոջ մօտ եւ անցնում է Վըրաստան, որպէսզի այնտեղ ունեցած իր մերձաւորների օգնութեամբ կարողանայ ճանապարհը շարունակել:

Մի տարուց յետոյ նա ետ է դառնում գալիս Հայաստան, Արագածոտն գաւառը: Խորհուրդ են անում, թէ ինչպէս նրան ուղարկեն «Թագաւորաբնակ քաղաքը», այսինքն Կոստանդնուպոլիս: Նրա հետ եղած ձիաւորները թողնում են նրան: Մինչ այդ՝ լուրը տարածւում է, որ նա թողել է մահմեդականութիւնը, եւ նա ստիպուած է «այսր անդր աներեւութաբար շրջել Քրիստոսի ատելիների երկիւղից, որոնք աշխատում էին որսալ նրան»: Վահանը դառնում է հալածական. ոչ ոք չի համարձակւում նրան իր մօտ ընդունել: Նրա բոլոր ունեցածը վատնւում է: Իր հետ եղողները հեռանում են նրանից եւ նրան մենակ են թողնում, եւ նա աղքատի ձեւով այլակերպուած ման է գալիս: Ամէնքը վախենում են եւ ասում. «Երթիցէ՛ գնասցէ՛ ի բաց, զի մի՛ եւ մեզ եւ անձին կորուստ լինիցի»:

Վահանը Վաղարշապատ քաղաքում հանդիպում է կաթողիկոսին, յայտնում է նրան իր գլխին եկած փորձանքը: Կաթողիկոսն ասում է. «Գնա անապատ, որպէսզի ուրիշներին վնաս չտաս»: Նա գնում է մի մենաստան Շիրակ գաւառում. վեց ամիս մնում է այնտեղ եւ իր կրօնաւորութեամբ զարմացնում է ամէնքին: Բայց կրօնաւորներն իմանալով նրա ով լինելը՝ սկսում են վախենալ, յայտնում են գաւառի տիկնոջը, իշխանակնոջը, որ ասում է. «Թող հեռանայ, որ մի՛ գուցէ մեր եւ ձեր գլխին մի պատիժ լինի Թագաւորից»: Նա էլ գնում է մի անյայտ ու սակաւամարդ անապատ. եւ այնտեղ աւելի եւս ճգնում է մէկ հանդերձով եւ բոբիկ ոտքերով, շարունակ գիրք կարդալով:

Վերջապէս՝ նա վճռում է գնալ ամիրապետից խնդրել, որ թոյլ տայ, որ ինքը յայտնի քրիստոնեայ լինի. «Զի ես ոչ կատարեալ մտօք զնոցայն ընկալայ, աւէր սուրբն, այլ ի տղայութեան հասակի... Զի թէ իւրեանց բանութիւնն զիս տանջէ եւ յիմն ոչ հայլին իրաւունս, եւ ես ոչ տրտմիմ»: Ոմանք նրան խորհուրդ են տալիս թողնել այդ միտքը, բայց նա իրեն պատրաստ է համարում չարչարուելու եւ սպանուելու: Կային եւ նրան քաջալերողներ: Նա գնում է Մաքենոց վանքը, ապա Երաշխաւորք կոչուած անապատն Արճկէում, որի առաջնորդը՝ Արտաւազդ անունով՝ սիրով ընդունում է նրան, եւ գնալու ժամանակ տալիս է նրան ինչ որ պէտք էր ճանապարհի համար: Եւ նա գնում է: Հասնում է Ռուհա, ապա վերջապէս հասնում է Ռուծափ, ուր բնակւում էր Շամ (=Հեշմ) խալիֆան: Մեծ դժուարութիւններով կարողանում է ամիրապետին յայտնել իր միտքը: Աշխատում են նրան ամէն խոստումներով ետ կանգնեցնել իր մտքից. Նա հաստատ է մնում

իր որոշմանը եւ սպանւում 737 թ.: Նրա այս կեանքը պատմուած է, հարկաւ, ամէն վկայաբանական մոտիւներով ու վիպական մանրամասնութիւններով, որ չբերուեցին այստեղ:

Այս է եղել տխուր պատկերը Հայաստանի իրական դրութեան արաբական իշխանութեան դարերում: Ուսեալ, պիտանի, իմաստուն «ամենայն խորհրդակցացն վերադոյն», «ամենայն խորհրդոց հմուտ եւ սիրելի», «լաւ բարքի» տէր մարդը թշուառանում եւ ոչնչացւում է միայն նրա համար, որ կամենում է հետեւել իր խղճին, իր համոզմունքին: Նրան ասում են՝ մի անգամ որ քեզ քո անգէտ ժամանակ գրել են մեր կրօնին, — հնումն ամէն մտաւոր բան կապուած էր կրօնի հետ, — դու այլեւս իրաւունք չունես քո սեփական մտածմունքն ու համոզմունքն ունենալու եւ աւելի եւս՝ յայտնելու այն: Այսպէս են եղել միշտ բռնակալները, որոնք պետական կրօնը, եւ նոյնիսկ դաւանութիւնը, հովանաւորել են բռնութեամբ:

Մտքի այդ ճնշուածութիւնը, մտաւոր ստրկութիւնն արդէն ծանր էր Վահանի նման մէկի համար: Նրա այդ հոգեկան դառն վիճակը, սակայն, աւելի եւս ծանրանում էր իր կնոջ, իրայինների մասին հոգալու պահանջից: Նրա մէջ յաղթող է դուրս գալիս գաղափարը, եւ ոչ ընտանիքն ու մերձաւորները: Նա լքում է նրանց: Բայց դարձեալ նա դժբախտ է. այդ զոհողութեամբ էլ չի կարողանում հասնել իր նպատակին — ազատ եւ յայտնի հետեւել իր խղճին ու համոզմունքին: Նա ստիպուած է նորից չարունակել թաքցնել այդ: Նա այդպէս պարտաւոր էր վարուել մէկ՝ իր մերձաւորների համար, որովհետեւ բռնակալներից հալածւում էին այդպիսիները: Սակայն այդ լաւ մարդու թշուառութիւնը միայն այդքանը չէր: Շրջապատողները, ամբողջ ստրկացած հասարակութիւնը, ե՛ւ քրիստոնեաների վերակացուները, ե՛ւ իր օգնականներն ու ընկերները, ե՛ւ կրօնաւորները, ե՛ւ նոյնիսկ անյայտ ու սակաւամարդ տեղում ապրող անապատականները, ամէնքը, երկիւղից, գուցէ եւ ակամայ, խորշում, խուսափում են նրանից, այնքան ճնշող է արաբական բռնութիւնը: Ասում էին. «Թող հեռանայ մեզնից, որ մենք չվնասուենք»: «Եւ այսու առաւել եւս զայրացուցանէին զսուրբն, — ասում է վիպագիրը, — եւ ապա յամենայնէ մերկացեալ լինէր յիւր օգնականացն եւ ի թոշակէն»: Նրա հետ մնում է միայն մի մարդ իր սիրողներից — բայց վերջը նրան էլ դանց չարեց դեւը, ասում է վիպագիրը: Այդ մարդն ասաց. «Ես էլ կը գնամ իմ ընկերների յետեւից. տո՛ւր ինձ ձիդ ու սուսերդ, որ ես քեզ չմատնեմ քո արիւնն ուզողների ձեռքը»: Նա, Վահանն, էլ տեսաւ այդ մարդու խորամանկութիւնը, տուաւ նրան նրա ուզածը եւ սիրով ճանապարհ դրեց նրան: Այսպէս՝ նա հալածւում է ե՛ւ իր խղճից, ե՛ւ արաբացոց տէրութիւնից, ե՛ւ հայ հասարակութիւնից: Նա ուզում է ապրել, մարդավարի ապրել իր հայրենիքում իր սեփական համոզմունքով, բայց չի կարողանում: Այնքան տանջւում է նա հոգեպէս, որ վերջապէս՝ այլեւս չի դիմանում. յուսահատութիւնից լաւ է համարում դիմել ամիրապետին, իր այդ վիճակից ազատուելու համար, կամ ազատ ապրելու թոյլտուութեամբ, կամ թէկուզ մահով:

Ահա թէ ինչպէս ուժեղ պարզուած է մեր առաջ այդ նահատակի հոգին, որ ձգտում է խղճի ու համոզմունքի ազատութեան: Իրական կեանքի պատկերով, հերոսի հոգեբանական ճշտութեամբ եւ բնականութեամբ այս փոքրիկ պատմուածքը շատ գրաւիչ եւ ազդու է: Այստեղ, ինչպէս ժողովրդական վէպի մէջ, ամէն ինչ հասարակ ոճով պարզւում է միայն սիւժեով ու գործողութեամբ, որ ծաւալւում է մեր առաջ:

3· Հեղինակը:— Այս վկայաբանութեան համար բազմաթիւ օրինակներ կան ձեռագիրների մէջ· դրանք երբեմն տարբեր մշակումների են ենթարկուած: Պետական Մատենադարանի No. 934 ճառընտրի 39բ էջի վըրայ յիշուած կայ այս պատումի հեղինակը այսպէս. «Զոր գրեաց հայրն Արտաւազդ Երաշխաւորի վանացն ճշգրտիւ զամենայն եւ կարգեալ նշանակեաց տաւնախմբել գյիշատակ սրբոյն Վահանայ ի նոյն աւուր կատարման իւրոյ»: Դա նոյն Երաշխաւորի վանքի առաջնորդ կամ կրօնաւորահայր Արտաւազդն է, որ սիրով ընդունում է Վահանին իր վանքում: Այպա վկայաբանութեան վերջաբանի մէջ (էջ 55 եւ հտն.) պատմւում է առաջին դէմքով, որ Վահան Գողթնացու սպանուելուց եօթը տարի յետոյ Երաշխաւորի վանքի կրօնաւորահայր Արրտաւազդը, որ եւ Աբրահամ, մի քանի «եղբայրներ» հետն առած, գնում, գտնում է սրբի գերեզմանը, տեղի եպիսկոպոսի ձեռով «հոռոմ գրով» ստանում է Վահանի վկայութեան պատմութիւնը, վերադարձին Ուռհայում այդ թարգմանել է տալիս հայերէն: Յետոյ երբ Հայաստան է հասնում, գրում է վկայաբանութիւնը· «Եւ ապա սկսայ պատմագրել, — ասում է նա, — սկիզբն առնելով անտի ուստի արժան իսկ էր»: Այսպէս ուրեմն, այս վկայաբանութեան հեղինակը ոչ միայն ժամանակակից է Վահան Գողթնացուն, այլեւ ծանօթ նրան: Եւ ինչքան էլ հետագայում վերամշակումների ենթարկուած լինի այդ երկը, պատմուածքի սրտառուչ ձեւից եւ մանրամասնութիւններից անկասկած է բուն հեղինակի ժամանակակից լինելն իր պատմած եւ ողբացած անձերին ու աղետալի դէպքերին:

Վահան Գողթնացու համար յօրինուած կան նաեւ տաղեր եւ շարական (էջ 93 եւ հտն.):

## ՎԻՊԱԿԱՆ ԲԱՆԱՀԻՒՍՈՒԹԻՒՆ

## ՊԱՏՄԱԿԱՆ ԶՐՈՅՑՆԵՐ

1· Անանուն Զրուցագիր:— Էջմիածնում 1921 թ. հրատարակուեց մի նորագիւտ անանուն ձեռագիր (1): Մի ընդարձակ «Յառաջաբանի» մէջ ջանացուած է ապացուցել, թէ դա 9-րդ դարի հեղինակ Շապուհ Բագրատունու կորած Պատմութիւնն է: Բայց այդ եզրակացութիւնն ընդունելի չէ: Այդ երկի բովանդակութիւնն այնպէս, ինչպէս կայ ձեռագրի մէջ, չի հա-

(1) Պատմութիւն Շապհոյ Բագրատունւոյ, ի լոյս ածին Գ· Տէր-Մկրտչեան եւ Մեսրոպ եպիսկոպոս, Էջմիածին, 1921:

մապատասխանում պատմագիր Յովհաննէս կաթողիկոսի հաղորդած մանրամասն տեղեկութիւններին Շապուհ Բագրատունու Պատմութեան մասին։ Բացի այդ՝ կայ նաեւ հետեւեալ հանգամանքը։ Շապուհ Բագրատունին ժամանակակից է եղել Յովհաննէս կաթողիկոսին ու Թովմա Արծրունուն եւ գրել է իշխանաց իշխան (թագաւոր) Աշոտ Բագրատունու եւ նրա ժամանակաշրջանի պատմութիւնը։ Նա հաւանօրէն այդ Աշոտ թագաւորի որդի Շապուհ Բագրատունին է։ Եթէ այդ անանուն ձեռագիրը պատմագիր Շապուհի Պատմութիւնը լինէր, դա չէր կարող իր բովանդակութեամբ այնքան շատ տարբերուել ժամանակակից Յովհաննէսի եւ Թովմայի պատմածներից 9-րդ դարի երկրորդ կէսին եւ 10-րդ դարի սկիզբներին կատարուած դէպքերի վերաբերեալ։ Եթէ այդ նորագիւտ ձեռագրի սկզբի եւ վերջի մասերը մնացած լինէին, թերեւս այնտեղ յիշուած լինէին գրուածքի վերնագիրն ու գրողի անունը. բայց քանի որ այդ չկայ, երկը մնում է անանուն, եւ ըստ դրա բովանդակութեան՝ դրա հեղինակը պայմանօրէն կոչում ենք Անանուն Զրուցագիր։

Հայ ժողովուրդն երբեք անտարբեր չի մնացել դէպի իր կեանքի պատմական իրողութիւնները, որ նա անդրադարձրել է իր վիպական բանահիւսութեան մէջ, լինի սա պատմական զրոյց, թէ ժողովրդական վէպ (էպոս)։ Այդպիսի բանահիւսութեան համար առատ նիւթ է տուել նաեւ արաբական տիրապետութեան շրջանի պատմութիւնը. առաջացել են բազմաթիւ ժողովրդական զրոյցներ եւ վէպեր։ Հաւանօրէն մի ոչ եկեղեցական գրագէտ, որ փոքր ուսումնական պատրաստութիւն է ունեցել, գրի է առել մի շարք այդ պատմական զրոյցներից եւ պատմավէպերից այն լեզուով, որ նա լսել է, գուցէ եւ ինքը պատմել է, եւ անջատ զրոյցներն իր հասկացած ձեւով դասաւորել է ժամանակագրական կարգով մի գրքի մէջ։ Նրա այդ գրուածքն է ահա, որ հասել է մեզ։ Միակ յիշուած թուականն է 913. բայց դա չի կարող 10-րդ դարի վերջերից վաղ գրուած լինել, որովհետեւ այդ ժողովրդական «պատմական զրոյցները», նոյնիսկ 913 թուականով գրուածը, մեծ մասամբ շատ զարգացած են եւ ժամանակակիցների թողած իրական պատմութիւնից բաւականին հեռացած են։ Ապա դրանք չեն կարող աւելի ուշ գրուած լինել, քան 11-րդ դարի առաջին տասնամեակները, քանի որ դրանց պատմական հիմքը, 9-րդ դարի վերջին եւ 10-րդ դարի առաջին տասնամեակներին վերաբերեալ, դեռ բոլորովին չի մթնած։

Զրոյցներն սկսւում են Մահմեդով, որ չինում է Պաղտադ քաղաքը։ Ապա պատմւում է Մօրիկ կայսրի, Հացունեաց Խաչի, Սահակ կաթողիկոսի մասին ծանօթ զրոյցները, եւ մի երկու ուրիշները։ Դրանք կան նաեւ տարբեր աղբիւրների մէջ, որոնցից կարող է ազդուած, գուցէ եւ օգտուած լինել Անանուն Զրուցագիրը։ Այդ զրոյցների լեզուն եւս այնպէս ռամկական չի, ինչպէս յաջորդ պատումների, որ գրքի երեք քառորդ մասն են կազմում (էջ 29–84)։ Սրանք վերաբերում են Վասպուրականի իշխաններին, եւ ամենամեծ մասով՝ Արծրունիներին։ Դրանցից առաջինները խօսում են Թէոդորոս Ռշտունու եւ նրա որդի Վարդ Պատրիկի մասին։ Վերջինս ապրում

է 80 տարի: Նրա որդին, Մուշեղ, — ասում է, — «ոչ էր ի նմանութիւն հօրն իւրոյ: Ապա հակառակութիւն եղեւ տանն Հայոց, զի ոչ կամեցան զտէրութիւն տան Մանաճի [=Մանաճիհրի, Ռշտունեաց] եւ բաժանեցին զաշխարհ Հայոց ի մէջ Բագրատունեաց եւ ի մէջ Արծրունեաց, եւ կալան ի բաժին զաշխարհն Հայոց՝ զհիւսիսոյ դեհն տուն Բագրատունեաց, որ էր անուն նորա Բագրատ, զՎասպուրականի դեհն տունն Արծրունեաց» (էջ 37):

Արծրունիների համար յետոյ անմիջապէս յիշւում են մի քանի սերունդներ՝ 1· Գադիկ եւ Սմբատ եղբայրներ, 2· Աշոտ, Գրիգոր եւ Համազասպ եղբայրներ, 3· Աշոտ, 4· սրա որդիները՝ Կադիկ եւ Սահակ, սրա կինը՝ Սմպատուհի, Աշոտ Բագրատունու դուստրը, 5· Սահակի եւ Սմբատուհու որդին՝ Գրիգոր Դերէն, սրա կինը՝ դուստր Սիւնեաց իշխանին, 6· սրանց որդին՝ Աշոտ, 7· սրա որդիները՝ Գրիգոր Դերէն, Կադիկ եւ Համազասպ· Գրիգոր Դերէնի կինը՝ Սոփի, դուստր Բագրատայ կաապաշտի, 8· սրանց որդին՝ Աշոտ, 9· սրա որդիները՝ Համազասպ եւ Դերէն, սրա կինը՝ Հրանուշ, դուստր Աշոտ Բագրատունու, 10· սրանց որդիները՝ Աշոտ, Գուրգէն եւ Կադիկ: Ցաջորդ սերունդները չկան, դուցէ այն պատճառով, որ գրքի վերջը պակասում է: Ինչպէս կարելի է տեսնել, Անանուն Զրուցագրի աշխատութեան երկրորդ մասը (էջ 37—85) մի պատմութիւն է որդէցորդի իրար յաջորդող Արծրունի իշխանների, որոնք մասամբ պատմական անձեր են: Նրանց առաջին չորսը (1 – 4) եւ 6-րդը լոկ անուններ են:

Թովմա Արծրունուն ծանօթ չեն Զրուցագրի 1–7 սերունդները: Առաջին Արծրունի իշխանները, որ Թովման յիշում է 9-րդ դարի երկրորդ կէսի սկզբում, են «Աշոտ եւ եղբարք իւր Գուրգէն եւ Գրիգոր» (էջ 107, 109), որոնք իրենց զօրքով գնում են օգնելու Տարօնի իշխան Բագրատ Բագրատունուն ընդդէմ հարկահան Մուսէի: Աշոտի կինն է Հրանուշ, իսկ որդին՝ Գրիգոր (էջ 139), որ եւ յաճախ Դերենիկ կամ Դերանիկ է կոչւում· սրա երկրորդ կինը (առաջինի մեռնելուց յետոյ) է իշխանաց իշխան (ապա՝ թագաւոր) Աշոտ Բագրատունու դուստրը՝ Սոփի (էջ 207, 229· նաեւ ըստ Անանուն Արծրունու՝ էջ 266 եւ հտն·): Գրիգոր Դերենիկի որդիներն են՝ Աշոտ (կինը՝ Սեդա), Գադիկ եւ Գուրգէն: Թովմա Արծրունին գրում է, ինչպէս տեսանք, Գրիգոր Դերենիկի, ապա նրա որդի Գագիկ իշխանի (յետոյ՝ թագաւոր) հրամանով· նա չէր կարող չիմանալ եւ սխալ գրել Գրիգոր Դերենիկի հօրն ու մօր անունները, նրա կնոջ անունն ու ծագումը, այլեւ Դերենիկի որդի Աշոտի կնոջ անունը: Արդ՝ կանանց անունները փակագծերի մէջ դնելով՝ ունենում ենք, ըստ Թովմա Արծրունու՝ Աշոտ (Հրանուշ) — Գրիգոր Դերենիկ (Սոփի, դուստր Աշոտ Բագրատունի թագաւորի) — Աշոտ (Սեդա, որ, ըստ Յովհ· կաթ·ի, դուստր է Գագիկ Ապումրվանի), Գադիկ, Գուրգէն:

Անանուն Զրուցագիրն ունի երկու խումբ՝ Ա· 6· 7· 8· Աշոտ — Գրիգոր Դերէն (Սոփի, «դուստր Բագարատայ կաապաշտի») — Աշոտ· Բ· 8· 9· 10· Աշոտ—Դերէն (Հրանուշ, «դուստր Աշոտի Բագրատունւոյ») — Աշոտ (Սեդա, դուստր Ապումրվանի), Գադիկ, Գուրգէն: Որ Անանուն Զրուցագրի այս շարքերը նոյնն են թէ՛ իրար հետ եւ թէ՛ Թովմա Արծրունու գրածի հետ՝ այդ պարզ է: Տարբերութիւնը միայն կանանց անունների մէջ է: Զրուցագրի երեք Դերէնները նոյն անձն են: Ըստ երեւոյթին Զրուցագիրը լսել է զրոյցներ Արծրունի Դերէնի մասին եւ տարբեր անձեր կարծելով՝ իր կազմած ազգաբանութեան մէջ գրել է երեք անգամ Դերէն, որդին՝ Աշոտ (5—10 անունները): Այդ հանգամանքը, ինչպէս

եւ այն, որ նրա մօտ կանանց անունները ստոյգ չեն, ցոյց է տալիս, որ Անանուն Զրուցագիրը մօտիկ ծանօթութիւն չունի Արծրունի առձի պատմութեանը։ Այդ հաւաստւում է եւ ուրիշ կողմերից։ Ըստ Զրուցագրի՝ երրորդ Դերէնի որդի Աշոտին Ապումրվանը կապել եւ դրել է Նկան ամրոցում, ուր եւ նա մեռել է. Ապումրվանին սպանել են Սմբատ Թագաւորի թելադրութեամբ եւ նրանից յետոյ իշխել է Գագիկը 913 թ.։ Բայց Թովմա Արծրունին, ինչպէս եւ Յովհաննէս կաթողիկոսը (էջ 177), պատմում է, որ Ապումրվանի սպանուելուց յետոյ՝ Վասպուրականում իշխում է Դերենիկի որդի Աշոտը, որ հիւանդանալով մեռնում է 905 թ. Նախիջեւան քաղաքում։ Ապա նրա մահից յետոյ, ուրեմն 905 թ., Վասպուրականում իշխում է Գագիկը։ Եւ վերջապէս՝ բերենք եւ հետեւեալը։ Ըստ Անանուն Զրուցագրի՝ Գրիգոր Դերենիկին սպանում են Սմբատ Թագաւորի թելադրութեամբ իր քրոջ անարգանքի վրէժը լուծելու համար. ըստ Թովմա Արծրունու՝ այդ իշխանը սպանւում է իշխանաց իշխան Աշոտի օրով եւ հաւանօրէն նրա թելադրութեամբ (տե՛ս էջ 225 եւ հտ.), եւ ապա նոյն Աշոտն, արդէն իբրեւ Թագաւոր, գնում է մխիթարելու նրա կնոջը՝ Սոփիին, որ իր դուստրըն էր։ Այսպէս եւ ուրիշ տարբեր հանգամանքներ, որ չէր կարող ստոյգ չիմանալ պատմագիր Շապուհ Բագրատունին։

2. Զրոյցներ Գրիգոր Դերէնի մասին։ — Այս իշխանը եւ նրա հայրն, Աշոտ Արծրունին, նշանաւոր դեր են խաղացել 9րդ դարի երկրորդ կէսին. նրանցով նորոգուել է Արծրունիների մեծ իշխանութիւնը Վասպուրականում։ Նրանց մասին մանրամասն պատմում են Թովմա Արծրունին եւ Անանուն Արծրունին. բաւականի յիշատակութիւն է անում եւ Յովհաննէս կաթողիկոսը. «Բայց յետ վախճանելոյ Աշոտոյ մեծի եւ հռչակաւորի իշխանի տանն Արծրունեաց... պայազատէր զիշխանական պետութիւնն զայն Գրիգոր որդի նորա ընդ նորա, որ Դերենիկն անուանիւր։ Եւ էր նա այր սէգ եւ ըղձաստ եւ սօս ի գնացս ոտից, եւ զօրաւոր արդեամբք եւ բանիւ, եւ տնօրինէր միշտ յամենայն բարեձեւութիւնս բերիլ» (Յովհ. 135)։Այս իշխանի մասին են ահա պատմուել ժողովրդական զրոյցներ։

Առաջին զրոյցով՝ ծնողները զաւակ չունեն. մայրն ամուսնուց խնդրում է, որ թոյլ տայ իրեն գնալ Աշոյ (Աշտատայ) անապատն ուխտ, որպէսզի Աստուած մի զաւակ տայ իրենց, «եւ մեք տամք զնա փոխ տեառն», — կցում է նա, այսինքն նուիրենք Աստուծուն, որ կրօնաւոր դառնայ։ Մարդ ու կին գնում են, տանելով «եղինս սպիտակս եւ գառինս սպիտակս սրբութեան եկեղեցեացն»։ Վանահայր Գրիգորն եւ իր վանականներն ամբողջ գիշերը հսկում են անում նրանց համար։ Նրանք ունենում են մի արու զաւակ. մկրտել են տալիս նոյն վանքում. անուանում են Գրիգոր։ Երբ ժամանակը հասնում է, տանում են նրան վանք, «եւ ի հետ իւրեանց ընծայս բազումս, եւ ամենայն կրօնաւորացն զգեստս եւ հողաթափս»։ Մայրը որդուն տալիս է վանքին «փոխ տեառն զամենայն աւուրս կենաց իւրոց», եւ հայրը «կոչեաց մանկան անունն Դերէն, որ կոչի որդի վանաց»։ — Անանուն Արծրունին (էջ 280) այսպէս է բացատրում այդ անունը. «Քաջն եւ յաղթողն մեծանուն իշխանն Գրիգոր, անուանեալն Դերանիկ, որ թարգմանի՝ ուխտիւք խնդրեալ ի տեառնէ»։

*Մանուկը մեծանում է վանքում, ուսում առնում, գեղեցիկ էլ ձայն ունէր: Վանահայրը հագցնում է նրան կրօնաւորական զգեստ, եւ երբ նա արդէն լաւ սովորել էր բոլոր կարգերը, ուզում է նրան քահանայութեան կարգ տալ: Բայց ուրիշ բան է պատահում: Վանքում կար մի գեղեցիկ աղջիկ, «քոյրադուստր հօրն Գրիգորի», որին հագցրել էին հաւատաւորի, այսինքն՝ կուսանի զգեստ. ուրեմն պիտի կոյս դառնար: Մի օր վանքի վերեւում սալ էին քաղում երկուսով, մանուկ Դերէնը եւ հաւատաւոր աղջիկը: «Եւ ի չատորայ ցանկացել էր Դերէն աղջկանն. եւ անկարծակի կալաւ զնա եւ բռնադատեաց եւ արար կամաց իւրոց»:*

*Վանահայրն այդ իմանում է եւ յայտնում է տղայի հօրը:«Տեսանե՞ս՝ զինչ գործեաց մանուկս այս. եւ ոչ կարէ բնակել ի վանք. զի ոչ կարեն հանդուրժել դառինք եկեղեցեայ կորեանք առիծոց. վասն զի ապականեաց զորոջն եկեղեցեաց, զոր բազում աշխատութեամբ սնուցի»: Գրիգոր Դերէնի կրօնաւորութիւնը վերջանում է. հայրը նրան տուն է բերում եւ ամուսնացնում Սիւնեաց իշխանի դուստրի հետ:*

3. Երկրորդ զրոյցով՝ *Գրիգոր Դերէնն ունի երկու եղբայր, անունները Գագիկ եւ Համազասպ: Աւագ եղբայրը Գրիգորն է: Եղբայրները բաժանում են Վասպուրականի երկիրը. Վան քաղաքը բաժին է ընկնում Գրիգոր Դերէնին:Ապա զրոյցը նրա համար ասում է.«Էր այր առատ եւ զուարթ, որ ոչ նման էր նմա այլ մարդ ի վերայ յերկրի, ոչ ի մեծաց եւ ոչ ի փոքունց: Եւ էր նորա ծառայ մի ի տանէն Գնունեաց, եւ անուն նորա Գորդ Զաֆրան: Եւ նա էր արքունիան ի Վան, եւ յորժամ լինէր ի ժամ ճաշոյն՝ իջանէր ի մոյտան Վանայ եւ անդ նստէր ի սեղան, եւ արք որ անցանէին ճանապարհորդաց՝ կոչել տայր եւ նստուցանէր՝ ուտէր եւ ըմպէր, նոյնպէս եւ ղքաղաքացիսն զլաւ եւ զվատ: Սովոր էին գալ եւ նստել ի սեղանն ամենայն ոք, եւ ոչ կայր չափ ուտել եւ ըմպելոյ»:*

*Դերէնն սկսում է չքաւորել. վերջանում են նրա բոլոր ստացուածքները, որ ամբարել էր հայրը. վրծնում են եւ նրա երամակներն ու խաշները: Եղբայրները ծաղրում են նրան: Նա իր երկիրը, իր բերդերն ու դիւղերը վաճառում է եղբայրներին, դրանց գնով չարունակում է ուրախութիւն անել. «Ուտէր եւ ըմպէր, եւ ոչ եթող զսովորական բնութիւն իւր»: Մնում է միայն իր Վան քաղաքը: Նրա Գագիկ եղբայրն այդ քաղաքն էլ գնում է, տալով նրան «գանձս եւ հանդերձս պայծառս եւ զձիս եւ զջորիս». Նրա ապարանքներից ոչ մէկն էլ չի թողնում նրան, որ նա նստէր միջին: Բայց եւ այնպէս՝ ամէն առաւօտ «Գային սովորականքն՝ փողահարքն եւ գնահարքն եւ տաւեղահարքն, եւ խաղարարիքն կաքաւէին առաջի նորա: Եւ ոչ կայր նմա ցնորումն եւ կամ հոգս աւաղութեան որպէս հարցն իւրոց, բայց միայն ուտէր եւ ըմպէր»: Նրա ազատների (ազնուականների) խմբերը թողնում են նրան. մի մասը գնում են Գագիկին, մի մասն էլ Համազասպին: Ուր որ նրա արածը լսում են՝ ծաղրում են նրան: Նրա ազատներից՝ մօտին մնում է միայն նրա Գնունի Զաֆրան ծառան: Եւ այսպէս չքաւորւում է նա. մնում են միայն երկու ձի, մէկն իրենը, մէկն էլ Զաֆրան ծառայինը:*

*Առաւօտեան, կիրակի, Դերէնն ասում է Գորդ Զաֆրանին. «Այսօր ոչ մի բան չունենք վայելելու. ի՞նչ պիտի անենք»: Ծառան, որ տիրոջ հաւատարիմ ընկերն էր, պատասխանում է. «Ա՛ռ այսօր ձին իմ եւ զհանդերձս իմ եւ զզրեհն իմ եւ զսաղաւարտս իմ եւ վահանս այսօր, եւ մի՛ պակասեցուցաներ զսովորական սեղան քո. իսկ ի վաղիւն զինչ պատրաստէ Աստուած՝ զայն առնեմք»: «Եւ այն օրն պատրաստեցին զճաշն ըստ սովորութեան իւրեանց եւ ուրախ եղեն մինչեւ իրիկունն, եւ գնաց ամենայն մարդ ի տուն իւր, եւ մնաց Դերէն մէն եւ Զաֆրան ծառայ նորա, եւ նուիրակ մի եւ մատըրուակ մի, եւ այլ ոչ ոք»:*

*Նստել են վրանում Դերէնն ու Զաֆրան ծառան եւ մտածում են, թէ միւս օրը ծախեն Դերէնի ձին ու հանդերձները եւ ճաշ պատրաստեն: Այդ ժամանակ մի ճանապարհորդ, տեսնելով մոմեղէնների լոյսը, գալիս նստում է վրանի դռանը: Դերէնը ձայն է տալիս նրան. «Ո՞վ ես, եւ ինչո՞ւ ես եկել»: Բայց այն մարդը խօսել չի կարողանում, որովհետեւ տաճիկ (արաբ) էր: Այն ժամանակ Զաֆրանը նրան բռնում, վրանն է ներս տանում Դերէնի մօտ: Դերէնը նրա հետ տաճկի լեզուով է խօսում, որովհետեւ նա տաճկերէն սովորել էր: Հարցնում է նրան.*

*— Ո՞րտեղից ես գալիս: Նա պատասխանում է.*

*— Ասորեստանից եմ գալիս. խօսել չեմ կարողանում, որովհետեւ իմ շատ տեղս վիրաւորել են: Եթէ ճար ունէք՝ դեղ արէք իմ վէրքերիս:*

*«Յայնժամ Դերէն էբաց զխոցուած գլխոյ նորա եւ ձեռք նորա եւ եդիր դեղ խոցերուն. զի էր հմուտ բժշկական արուեստին, եւ ոչ էհարց աւելի կամ պակաս: Եդիր առաջի նորա սեղանն եւ բաժակ, եւ յոյժ մեծարեաց զնա, մինչեւ զարմացաւ այրն ընդ բարիմտութեան նորա, զի եդիր բաժակն ի ձեռին նորա: Եւ Դերէնն էառ զքնարն ի ձեռն եւ ուրախացնէր զնա, եւ անչափ սիրեաց զնա, զի Դերէնն այր զուարթ էր եւ սիրուն եւ բարեխորհ եւ աղեկատեսակ: Եւ յորժամ առաւօտ եղեւ, յարուցեալ ասէ այրն այլազգի.*

*— Ո՛վ բարի այր դու, այդչափ բարեխորհ ես դու. զի չեմ տեսեալ զայլ ոք ի մարդկանէ: Զի ոչ հարցեր ընդ իս, թէ ուստի՞ գաս, կամ ո՞ երթաս»:*

*Այն ժամանակ այլազգին պատմում է, որ ինքը Բաղդադի թագաւորն է, Արաբկեր կոչուած թշնամիները յարձակուել են Բաղդադի վրայ, իր զորքը դաւաճանել է նրան: Նա ուզեցել է գնալ Խորասան, որի թագաւորի կինն է իր քոյրը. բայց ճանապարհին ծառաները թողել են նրան, եւ նա դիմել եկել է Դերէնի մօտ, որովհետեւ պատմել են նրան Դերէնիկի «առատութեան» համար:*

*— Ես առ նա դիմեալ եկի, — շարունակում է այլազգին, — միթէ (=գուցէ) տացէ ինձ ձի եւ մարդ եւ առաջնորդեսցէ ինձ յարեւելք, զի գընացից առ փեսայն իմ եւ առից ի նմանէ զօրք եւ գանձս բազումս, եւ երթամ պատերազմիմ ընդ թշնամիքն իմ եւ թափեմ զքաղաքն իմ զԲաղդատ: Եւ ա—*

ղաչեմ զքեզ, ո՛վ բարի այր դու, տա՛ր զիս առաջի Դերենկին, որ հոգայ զճանապարհն իմ, եւ քեզ բարի լինիցի Աստուծոյն քո զոր պաշտես:

Հայէր Դերէնն առ Ջաֆրան եւ ծիծաղէր: Եւ նա (այլազգին) սրտմել ասէր.

— Մի՛ ծիծաղեր, աղաչեմ զքեզ. տա՛ր զիս առ նա: — Այնժամ ասէ Դերէնն.

— Չէ՛ աստ Դերէնն, այլ ես հոգամ զքեզ ուր եւ կամիս: — Եւ նա ասէ.

— Մի՛ ստեր, ես լսել եմ, որ աստ է: — Եւ նա ասէ.

— Չէ՛ աստ:

Յայնժամ կալեալ զձեռանէ նորա՝ համբուրեաց զնա եւ ասէ.

— Երդվի՛ր, թէ չէ աստ Դերէնն: Եւ նա ասէ.

— Զի՞ երդնում, ես եմ Դերէնն զոր դու խնդրես:

Եւ նա զարմացաւ եւ ասէ.

— Ապա է՞ր է զի նստիս ընդ դրուց քաղաքին, բաստ է. այս քաղաքս քո է եւ այս բարձր աշտարակս: Զի՞ է քեզ, ասա ինձ:

Եւ նա պատմեաց նմա զամենայն զոր արարեալ էր: Եւ զարմացաւ:

Եւ ասէ Դերէնն.

— Ո՛վ մեծ արքայ Բաբելացոց, երեկի օրն զիմ ծառային ձին վաճառեցաք եւ վայելեցաք, եւ այսօր զինս կամէաք վաճառել: Եւ արդ արի՛ հեծիր զիմ ձիս, եւ զիմ հանդերձս հագիր, եւ ա՛ռ զիմ թուրս զհետ քո:

Եւ կոչեաց զմարդն մի, որ գիտէր զճանապարհն առնել ի Պարսիկս, եւ տուեալ նմա վարձ դահեկանս, եւ յղարկեց զհետ նորա մինչեւ ի Խորասան»:

Երբ այլազգին գնում է, Դերէնն ասում է Ջաֆրանին. «Էլ մենք չպիտի մնանք այս քաղաքում, ուր մեզ ծաղրում ու կատակում են: Արի գնանք Ասորեստան, որպէսզի անծանօթ լինենք տեղացիներին եւ կարողանանք ծառայել մէկին եւ ապրել»: Գնում են Մոսուլ քաղաքը: Եւ ահա երեք մարդ նստել են քաղաքի դռներին. հարբած էին, բայց է՛լի խմում էին: Իրիկնադէմ էր, եւ Դերէնը յոգնած էր ճանապարհից: Եկաւ ինքն ու Ջաֆրանը, եւ նստեցին նրանց մօտ: Նրանցից մէկը հարցրեց.

— Ուստի՞ գայք դուք: — Նրանք պատասխանեցին.

— Ի հեռաւոր աշխարհէն Հայոց, ի Վանէ:

Իբրեւ լվան ասեն.

— Զիա՞րդ կայ բարեխնուն իշխանն, որոյ Դերէնն ասեն: Եւ նա ասէ.

— Աղե՛կ:

Եւ նոքա տվել նոցա երդումն եւ ասէ.

— Ասա՛, իրա՞ւ է զինչ ասեն զնմանէ:

— Զի՞նչ ասեն, — հարցնում է Դերէնը: — Եւ ասեն արքն Մոսլցիք.

— Գան վաճառականքն մեր եւ ասեն, թէ Դերէնն այն սովորութիւն

*ունի, զվրանն իւր հարել է ի վերայ ճանապարհին, որ պողոտայն է քաղաքին, եւ անդ ածեալ զսեղանն իւր առաւօտէ օրն, եւ նստուցանէ զամենայն ճանապարհորդս, զլաւ եւ զվատ, եւ բնակիչք քաղաքին ամենայն աւուր: Եւ բազում երգեցիկք եւ գուսանք հնչեցուցաննն զձայնս իւրեանց մինչեւ երեկոյն. չկայ ճարակ մարդոյ երթալ ի տուն իւր: Եւ այսպէս սովորութիւն Նորա:*

*Վերջն այդ մարդիկն իմանում են, որ հէնց Դերէնի հետ են խօսում: Այդ երեք մարդը քաղաքի պատուաւորներից էին: Նրանց սովորութիւնն էր օրը իրենցից մէկի տանը ճաշել: Ճաշից յետոյ տան տէրն իր հիւրերին տալիս էր նուէրներ: Դերէնին էլ հրաւիրում են եւ երեք օր պատւում են նրան, մեծ ընծաներ տալիս: Դերէնն ընծաները կապում, կնքում է իր մատանիով եւ թողնում տան տէրերի մօտ:*

*Գնում են Բաղդատ: Թագաւորը, որ Խորասանից եկել, տիրել է քաղաքին, հրապարակում շրջելիս՝ տեսնում է Դերէնին ու Զաֆրանին, ճանաչում է նրանց, պատուիրում է, որ նրանց բաղանիք տանեն. ուղարկում է Դերէնին «հանդերձ պատուական ոսկեհուռն. եւ սարօք ձի». մեծամեծներից մէկին էլ ուղարկում է նրա ետեւից. բերում են պալատ: Ութ օր շարունակ մեծ հրաւէրք է անում Թագաւորը, ամենամեծ պատիւներն է տալիս Դերէնին, եւ յետոյ մանրամասն պատմելով յայտնում, թէ ինչո՛ւ է այդպէս վարւում: Ապա պատւով ու զօրքով ճանապարհ են դնում Դերէնին դէպի իր հայրենիքը: Նա գալիս տիրում է Վասպուրականում եւ ամուսնանում:*

*Վերջը պատմւում է, որ մեռնում է Բաղդատի այդ Ալի Թագաւորը, որ սիրում էր Դերէնին, նրան փոխանորդում է Մահմեդ, «մարդ մի պիղծ եւ չար»: Նա յարձակւում է Հայաստանի վրայ, առնում է Դուինն քաղաքը եւ գալիս դէպի Վասպուրական: Դերէնը նրան ուղարկում է «զանձս ոսկոյ եւ արծաթոյ, ձիս եւ ջորիս» եւ ասում, որ իր երկիրը չաւերի: Բայց Թագաւորը չի լսում եւ անվայել խօսքերով անարգում է Դերէնի դեսպանին եւ ասում. «Դու շատ զանձ ես տանել ի տանէն Բաղդատայ, ա՛մ կամիմ ես գալ նստիլ ի արքունի քաղաքն քո, որ Վան ասեն, եւ հանեմ զքեզ յաշխարհէդ Վասպուրականի եւ տամ զդա Տաճատայ Անձեւացոյ, զի նա սիրէ զիս»:*

*Դերէնը զօրքով դնում է նրա վրայ. վասպուրականցիները ջարդում են արաբների բազմութիւնը. Թագաւորը փախչում է. Դերէնը մեծ ռազմաւար է ձեռք բերում:*

*«Եւ այսպէս կացեալ բազում ժամանակ ծերացեալ եւ նստուց զԱշոտ որդին իւր տէր Վասպուրականի: Եւ մեռաւ Դերէն եւ տարան թաղեցին զնա ի Վարագ: Եւ եղեւ աւուրսն Աշոտոյ շինութիւն եւ խաղաղութիւն յաշխարհին Վասպուրականի»:*

4. Երրորդ զրոյցը Դերէնի մասին: — *Դերէնն ընդարձակում է Վասպուրականի իշխանութեան կալուածները: Դրա մէջ էին մինչեւ Աղի ծովը՝ Սալամաստ, Հեր, Ճահուկ եւ այլն: Աշոտ Թագաւորի մահից յետոյ Սմբատը նոյնպէս ընդարձակում է իր տէրութեան սահմանները: «Եւ էր նա այր*

կռող եւ պատերազմող եւ առատամիտ»: Երբ նա աջողութիւններ ունեցաւ, «մեծամտեցաւ եւ անուանեաց զինքն Սմբատ տիեզերակալ»:

«Եւ էր Դերէնն այն կնկասէր»,— այսպէս է սկսում գրողի գործողութիւնը: «Եւ էր այր մի եւ անուն նորա Ապումսար, եւ նա տիրեաց Հերայ եւ Մարանդու եւ Մաղհազանի: Եւ վասն բռնակալութեան սիրէր զԴերէնն: Եւ բազում ծախս հանէր Դերէն այն մարդոյն, զի ունէր դուստր մի գեղեցիկ յոյժ, եւ սիրեաց զնա Դերէն, եւ համարձակեցաւ Դերէնն երթալ ի տունն Ապումսրայ եւ կենայր բազում աւուրս եւ ապա դառնայր ի աշխարհն իւր ի Վասպուրական: Եւ բերէր զԱպումսար զհետ իւր ի Վան եւ բազում աւուրս ուրախութեամբ պահէր եւ տուրս բազումս տայր եւ դարձուցանէր ի Հեր: Եւ այսպէս առնէր ժամանակս բազումս, եւ զկին իւր ի բաց թողեալ՝ ոչ սիրէր զնա...

Յայնժամ Հրանուշ քոյր իւր [Սմբատ Թագաւորի] ուղարկել առ Սմպատ եղբայրն իւր եւ ասէ, թէ «Իմ այրս Դերէնն թողել է զիս եւ զայլազգի կին մի կու սիրէ ի Հերայ՝ զդուստրն Ապումսրայ, եւ անչափ անդրգնել է եւ ամառել յայլազգին, որ զհասարակ տարին գնայ ի հոն կենայ եւ զամենայն բարիք տանս Վասպուրականի անդ տանի եւ պատրաստէ նոցա կերակուր, այլ եւ զհանդերձս, զզանձս, զձիս եւ ջորիս տանի անդ ի կնոջն այլազգոյ, եւ անչափ լրբութեամբ սիրէ զնա, եւ զորդիս առ ոչինչ համարի եւ անտես առնէ: Եւ դու տիեզերակալ եղբայր իմ, յորմէ սարսեն ամենայն թագաւորք եւ իշխանք եւ մեծամեծք յերկրի, մի՛ տալ զիս արհամարհել զի քոյր քո՛ եմ եւ ոչ զոք ունիմ այլ տէր»:

Եւ իբրեւ զայս լուաւ թագաւորն Սմբատ՝ տրտմեցաւ յոյժ: Ուղարկեաց առ Դերէնն եւ ասէ. «Զի՞ առնես զայդ ապիրատութիւնդ, զոր չէ պատեհ. զքոյրս Հրանուշ, զոր ոչ այդպիսի գեղ եւ ի կանայս, համեստ եւ գեղեցիկ, դու զայդ թողուս ու այլազգին երթաս. չերկնչի՞ս Աստուծոյ: Եթէ վասն պոռնկութեան այլ իրք ի պէտք են քեզ՝ կան բազում կանայք աշխարհիդ Վասպուրականի: Եւ այլ լսեմ թէ զամենայն կանայք ազատաց քոց ապականել ես: Երկի՛ր Աստուծոյ. զի չէ քեզ բարի այդ ձայնդ զոր լսեմս զքէն»:

Ապա երբ լսեց Դերէն զթուղթն Սմպատայ՝ ասաց ընդ մարդն, որ դեսպանն էր. «Դու կարի յանձնահաճել ես ի քո մեծութեանդ որ աջողեցաւ, դու ի՞նչ ես որ զայդ ընդ իս ասես: Իմ տանս տէր եմ ու իմ կամացս. զոր սիրեմ՝ զայն առնեմ. թէ չես հաճիլ դու՝ ուղարկէ՛ ու ա՛ռ զքոյրն քո. եթէ ոչ՝ ես ուղարկեմ առ քեզ»:

Եւ յորժամ լուաւ զայս թագաւորն Հայոց Սմբատ՝ հրամայեց գրել հրովարտակ ի Հեր առ որդիքն Ապումսրայ: Եւ էին նոքա եղբարք չորք: Ետ գրել առ նոսա այսպէս. «ի Սմպատայ ի Հայոց եւ ի Վրաց թագաւորէ եւ ի տիեզերակալէ առ որդիք Ապումսրայ, որ այժմ ունիք զտէրութիւնդ Զաբեւանդ գաւառի եւ զաւանդ՝ քաղաքն Հերայ, զգլուխդ Պարսից: Լսեմ թէ Դերէնիկս, որ իմ փեսայ է, զԲուլինար քոյրն ձեր սիրէր. չամաչէ՞ք դուք

զայդ տալ առնել: Ամենայն հաւատի ճաւչք էք: Եթէ քոյրդ ձեր առ նա գե-րի էր՝ պարտ է ձեզ ձայն Խորասան ընկենուլ եւ առ խա եւ քոյրն ձեր ի գերութենէ թափել»:

Իսկ նոքա գրեցին նմա պատասխանի, եւ ասեն. «Ո՛վ արքայից ար-քայ, մեք երկնչիմք ի յահէ քումէ եւ ոչ իշխեմք ձեռն արկանել ի Դերէն· զի գիտեմք որ փեսայ է քո: Ա՛մ, եթէ մեզ ոչ բարկանաս՝ մեք չտամք նմա գալ առ մեզ եւ մեք չենք կամացն չարապատչաճ գործոյ նորա առ մեզ»:

Եւ յորժամ լուաւ արքայն Սմպատ զթուղթն նոցա՝ եւ հրամայեաց գրել առ նոսա այսպէս. «Ի Սմպատ թագաւորէ Հայոց եւ Վրաց եւ բազում գաւառաց ինքնակալէ առ Ալի եւ Մահմէտ որդիքդ Ապումսրայ. Լուայ զգիր, որ հրովարտակի ձեր, զոր գրել էիք զի երկնչիք յինէն եւ ոչ իշխէք չար առնել Դերենայ իշխանին Վասպուրականին. ա՛մ ես երդուել եմ յԱստուածն իմ զոր պաշտեմ՝ անահ էք յինէն դուք: Առաջագոյն ուղարկեցէք առ նա, թէ՝ Մի՛ գալ այլ առ մեզ, եւ եթէ նա անդգնի գալ՝ ի լուռ կացէք. եւ յոր-ժամ գայ՝ սպանէք զնա, եւ անպարտ էք յարենէ նորա: Ապա եթէ անսեա առնէք զհրամանս իմ եւ ոչ սպանէք զնա՝ վկայ է Աստուած, որ զՀերն ի հիմանէ քակեմ եւ զձեզ ի սուր սուսերի մաշեմ»:

Եւ յորժամ տարան զհրաման թագաւորին առ որդիքն Ապումսրայ՝ եւ նոքա ուղարկեցին առ Դերէնն եւ ասեն, թէ՝ «Այլ մի՛ գալ դու առ մեզ վասն մեր քվերս. զի բազումք կան եւ ծիծաղեն զմեզ եւ հայհոյեն»: Եւ ծի-ծաղեցաւ Դերէնն:

Եւ ասէ Ապումրվան [որի դուստր Սեւային Դերէնն առել էր իր ան-դրանիկ որդի Աշոտին կնութեան]. «Լո՛ւր, իշխանա՛ց իշխան, չէ պարտ այլ ի Հեր երթալ, զի չան բնութիւն են որդիք Ապումսրայ»: Եւ նա ասէ. «Լուռ կաց, Ապումրվա՛ն, չեն նոքա ինձ դիմակաց, եւ եթէ կամիմ՝ այսօր քակեմ պարիսպ Հերայ եւ զերկիրն աւար հարկանեմ»:

Եկաց զամռան աւուրքն ի աշխարհն իւր ի Վասպուրական, եւ յոր-ժամ հասան աւուրքն աշնան՝ աջողեցաւ գնալն ի քաղաքն ի Հեր, որպէս սո-վորութիւն էր իւր: Եւ ամենայն ազատքն իւր լսէին զայն, որ յղարկել էր Սմպատ թագաւորն առ որդիքն Ապումսրայ եւ ոչ իշխէր մարդ ասել ընդ Դերէնն, զի այր խիստ էր եւ բարկացող: Եւ ապա հրաման ետ ծառայից իւրոց եւ բարձան հաց եւ գինի եւ խաշինք եւ ոչխարք գէրք պարարտք եւ զամենայն բարութիւն որ աշխարհին Վասպուրականի: Եւ յղարկեաց զմի ոմն որոյ անուն էր Մլեհ Ճախամանեցի. «Ա՛ռ զայս ամենայն բարութիւնդ եւ գնա ի Հեր եւ ասա ընդ Ալի եւ ընդ Մահմէդ որդիքն Ապումսրայ, թէ կամիմ գալ ձմեռել առ ձեզ, զի ուր բազում լինի ի Մարանդայ լերինքդ եւ ի Մահղազանի դաշտներդ: Եւ ինքն առեալ զօրքն եւ զազատքն իւր գնաց ի Ճահուկն գաւառ»:

Ապա Դերէնը բռնել եւ բանտարկել է տալիս Ապումրվանին, սա բան-տից էլ զգուշացնում է նրան, որ չգնայ Հեր: Դերէնն անարգում է նրան եւ դիմում է դէպի Հեր: Ապումսարի որդիքը շատ զօրքով նրա դէմն են դուրս

դալիս։ Դերէնին զգուշացնում են, որ այդ օրը չգնայ Հեր․ բայց նա չի լսում։ Եւ ապա պատմւում է, թէ ինչպիսի տեղում եւ ինչպէս սպանում են նրան։ Նրա դին իր սիրական Կուլինարը գնում է եւ ուղարկում իր աշխարհը։

Կան նաեւ ուրիշ հետաքրքիր զրոյցներ, ինչպէս են՝ Յուսուփի, Տաճատ Անձեւացու, Խութ ու Սասունի եւ այլ զրոյցները։ Վերջինները «Սասնայ Ծռերի» նախնական պատմուածքներն են։

5․ Զրոյցների բնաւորութիւնը։— Այստեղ բերուեցին Անանուն Զրուցագրի գրքի երկրորդ մասի զրոյցներից երեքը, մեծ մասամբ չատ սեղմ եւ կարճառօտ։ Դրանք, ինչպէս եւ միւսներն, իսկական բանահիւսական երկեր են, գեղեցիկ թեթեւ պատումներ, որոնք չատ հաճելի են թէ՛ իրենց բովանդակութեամբ եւ թէ՛ աւելի եւս իրենց ձեւով։ Մեր պատմագիրների նկարագրած մեծ աւերումների եւ կրօնական միտումներ քարոզող գրականութիւնից յետոյ՝ երբ մարդ կարդում է այդ հասարակ զրոյցները, մի փոքր հանգստանում է։ Դրանք բոլորն ունեն մի ընդհանուր յատկութիւն․ պատմուած են պարզամտութեամբ, ընտանեկան կամ, ինչպէս ասում էին, ռամկական, այսինքն ժողովրդական լեզուով, մի առանձին համով ու հոտով, որ միայն Բուզանդի որոշ պատումների մէջ ենք գտնում։ Չկայ քերթողական սովորովի արուեստականութիւնը․ ամէն ինչ գեղջկական է, լի անսեթեւեթ բնականութեամբ, թէ՛ մանրամասն պատմուածքը եւ թէ՛, երբեմն նոյնիսկ հեգնութեամբ ասուած, տրամախօսութիւնները, որոնցով յագեցուած է պատմուածքը։ Չկայ հեղինակի ձգտում զարդարելու եւ գեղեցկացնելու իր գրական երկը, եւ նա նոյնիսկ չի մտածում, թէ պատմելու ժամանակ գրական երկ է ստեղծում, եւ դրա մէջ է հէնց այդ զրոյցների հրապոյրը։ Զրուցաբանը ոչ զուարճացնել է ուզում, ոչ էլ խրատել, սովորեցնել․ այլ նա այնպէս պատմում է միամտութեամբ, որ ունկնդիրը հաւատում է, թէ ինքը կատարուած եղելութեան մասին է լսում, ինչպէս որ իրօք այդպէս է մասամբ, քանի որ այդ զրոյցների հիմքը պատմական է։ Ունկնդիրը հետաքրքրւում է զրոյցի գործողութեամբ։ Ամէն զրոյց ունի իր թեման, որ ոչ թէ հեղինակի մտածելով է դրւում, այլ անզգալի կերպով բխում է գործողութիւնից։ Եւ գեղեցիկն էլ այդ է, դա է ժողովրդական պատմուածքի բնականութեան ու կենդանութեան բուն աղբիւրը։

Առնենք Դերէնի զրոյցները։ Դրանցից առաջինի մէջ հանուած է միջնադարեան բարքերից մէկը․ ամուլ կանանց ուխտի գնալը զաւակ ունենալու համար՝ զաւակը կուսակրօն դարձնելու խոստումով։ Դա եկեղեցու ձգտումն էր — քարոզել եւ զարգացնել կուսակրօնութիւն։ Բայց բնութիւնն առնում է իրենը, եւ զրոյցի մէջ ծաղրուած է կուսակրօնութիւնը, լինի տղամարդկանց թէ կանանց։ Վերածնութեան շունչ է զգացւում այս զրոյցի մէջ այն ժամանակ հէնց, երբ Հայաստանում, ինչպէս կը տեսնենք, զարգանում էր վանականութեան ու ճգնաւորութեան ոգին, բայց եւ միւս կողմից լինում էր կեանքի եւ աշխարհայեցութեան փոփոխութիւն։

Երկրորդ զրոյցի մէջ եւս զգում ենք նոյն շունչը. դա էլ ուղղուած է մարմինը պահքով ու ապաշխարութեամբ ճնշողների դէմ: Այստեղ փառաբանուած է անզուսպ կերուխումը. գուսաններով եւ երգեցիկներով ու երգեցուհիներով, պարով ու կաքաւով ուրախութիւնը, որ իդէալականացրած է խիստ չափազանցումով: Ռամիկ զրուցաբանը համակրում է ոչ թէ Դերէնի եղբայրներին, որոնք գնում են իրենց եղբօր կայքը, այլ այդ անվերջ ուրախացողին, որ առատաձեռն է, բացսիրտ ու բարեսիրտ, խտրութիւն չի դընում քաղաքացիների մէջ: Նրա ցանկալի հիւրերն են «ե՛ւ լաւը, ե՛ւ վատը», ե՛ւ անծանօթը: Դրա համար էլ նա, ինչքան էլ վատնում է իր ունեցածը, միշտ ուրախութիւն է գտնում նաեւ օտար տեղերում, ե՛ւ Մոսուլում, ե՛ւ Բաղդատում, եւ իր բարեսրտութեան համար վարձատրուելով՝ իր վատնածից աւելին է ձեռք բերում: Այս պատումն ապրում է մինչեւ մեր օրերն իբրեւ ժողովրդական զրոյց, թէ «քէֆ անողին քէֆ չի պակսիլ», այն տարբերութեամբ, որ ուրախացողը, ըստ մեր օրերի զրոյցի, իր ամէնօրեայ աշխատանքով է ուրախանում, իսկ Անանուն Զրուցագրի միջնադարեան ազնուական Դերէնը զուարճանում է վատնելով իր հայրենական ժառանգութիւնը:

Դերէնի երրորդ զրոյցի մէջ երեւան է բերուած առն եւ կնոջ ներքին ընտանեկան յարաբերութիւնը. ամուսնու անհաւատարմութիւնն առ իր կինը, եւ սրա հոգացութիւնն իր պատուի եւ իր զաւակների համար: Գլխաւոր խնդիրն է ընտանեկան սրբութեան պահպանումը: Քրոջ անարգանքի համար վրէժխնդիր է լինում եղբայրը՝ սպանել տալով «կնկաւէր», այսինքն ուրիշ կանանց սիրող մարդուն: Մի երկու կողմից միայն, բայց ուժեղ գծագրուած են ե՛ւ ամուսինները, Հրանուշն ու Դերէնը, ե՛ւ Հրանուշի ու Կուլինարի եղբայրները, ե՛ւ ինքը Կուլինարը, Դերէնի սիրական այլազգուհին, որ մի վայրկեան է միայն հանդէս գալիս, չմոռանալով, որ Դերէնը սիրել է իրեն. «Եւ զԴերէն առին այլազգիքն, — ասում է զրուցագիրը, — եւ տարան ըսպանած ի քաղաքն Հերայ, եւ քոյր նորա Կուլինար գնեց զմարմինն նորա եւ յղարկեաց ի աշխարհն Հայոց, եւ տարան թաղեցին ի վանքն Ծրպայ, ուր նշան սուրբ խաչին էր»:

Դժուար թէ պատմական լինի Գրիգոր Դերէնի սպանումի ընտանեկան պատճառը. այդպիսի բան չեն ակնարկում ժամանակակից պատմագիրները: Դա եղել է մի քաղաքական սպանութիւն, որին զրոյցի մէջ տրուած է ընտանեկան բնոյթ: Ըստ Անանուն Արծրունու՝ Դերենիկի կինը՝ Սոփին, ինչպէս տեսանք, չափազանց սիրելի էր իր ամուսնուն եւ ողբացել նրա մահը: Բայց որ գերութիւնից վերադարձած իշխանները, որոնց մէջ էին եւ Դերենիկն ու իր հայրը, ապրել են «վարս բերելով անառակութեամբ եւ արբեցութեամբ, խառն անկողնօք եւ պղծութեամբ», այդ մասին յայտնում է Թոման (էջ 216): Անշուշտ այդ բարքերի արձագանգն է այս զրոյցի նիւթը:

# ՀՈԳԵՒՈՐ ԵՐԳ
## ՍԿԻԶԲՆ ՈՒ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ

1․ Հոգեւոր երգի ծագումն եւ ընդհանուր բնոյթը (1)։ — *Մեր գրականութեան, իմա՛ գրաւոր դպրութեան, սկզբում հայ մտքի ազգային ստեղծագործութիւնն ամենից աւելի բանաստեղծութեան մէջ պիտի երեւան գար։ Բայց այստեղ հէնց՝ ամենից պակաս է երեւում ինքնուրոյնութիւն եւ հայկական կեանք։ Հին Վիպասանութիւնն եւ Երգք Առասպելաց չեն արժանացել բանաստեղծական, գրական–գեղարուեստական մշակութեան․ նրանցից, իբրեւ պատմական աղբիւրներից, ինչպէս տեսանք, օգտուել են միայն պատմագիրները․ եղել են եւ մի երկու ճարտասանական մշակութիւններ։ Աւելի եւս տխուր բախտ է ունեցել հայկական հին քնարերգութիւնը — գուսանների ուրախութեան երգը, որի մէջ փառաբանւում էր սէրն ու կեանքի զուարթ աշխարհայեցութիւնը, այլեւ նոյնիսկ «լալեաց բանաստեղծութիւնը», որ նոյնպէս կապուած էր իրական կեանքի հետ։ Այս երգերից եւ ոչ մէկը գրի առնուած անգամ չունինք մեր գրականութեան այս շրջանում։ Աշխարհուրացութեան ձգտումով բռնուած հին եկեղեցական բանաստեղծը շատ չէր կարող ազդուել հին հաւատալիքներից ու գաղափարներից, կամ իր ոգեւորութեան աղբիւր ունենալ հայկական իրականութիւնն իր բազմազան կողմերով, եւ ոչ էլ կեանքի ուրախութիւնն ու վայելչութիւնը։ Նրան զբաղեցնողը գլխաւորապէս Ս․ Գիրքն էր, ինչպէս եւ հաւատքի վերաբերեալ այս կամ այն խնդիրը։ Այս պատճառով եւ այս շրջանում գրեթէ միայն հոգեւոր երգ ենք գտնում։ Սա էլ իր նիւթով, ձեւով եւ ստուար քանակով միայն մի փայլուն ու ճիշտ արտայայտութիւն է մեր նախնիքների կրօնական զգացմունքների, եւ ամենապայծառ կերպով ցոյց է տալիս այն բաժանումը, որ ըստ գաղափարախօսութեան առաջ է բերել քրիստոնէութիւնը հայ եկեղեցականութեան եւ աշխարհականութեան միջեւ, ի բաց առած, հարկաւ ընդդէմ այլազգիների մաքառման քաղաքականութիւնը, որ ընդհանուր էր երկուսի համար եւս։ Հոգեւոր երգն էլ, սակայն, վերջին հաշուով նոյն մաքառման միջոցներից մէկն էր։ Նա ժողովրդի մէջ զօրացնում էր քրիստոնէութիւնը՝ ոչ հաւատացող այլազգիների հանդէպ։*

*Եկեղեցական բանաստեղծութիւնն ամենից առաջ օրհներգութիւն է, որ ընդհանուր եկեղեցու մէջ ծնուած եւ զարգացած է քրիստոնէական աստուածպաշտութեանը հանդիսաւորութիւն տալու համար։ Առաջին քրիստոնեաները եկեղեցում հրէական սովորութեամբ Աստուծուն փառաբանում էին երգելով սաղմոսներ եւ Ս․ Գրքի մի քանի օրհնութիւնները, որոնք հետագայում եւս մնում են ժամերգութեան մէջ։ Հասարակ ժամաւորն աստ-*

---

(1) Տես՝ «Արարատ» ամսագիր 1912, Թիւ՝ 7–8, 9, 10–11, 12․ Մ․ Աբեղեանի «Ուրուագծեր Հայոց գրականութեան պատմութիւնից», «Տաղականների մասին», «Ս․ Գրքի եւ կանոնի ազդեցութիւնը շարականների վրայ», «Դաւանաբանութեան եւ մեկնաբանութեան ազդեցութիւնը շարականների վրայ»։

ուածապաշտութեանը մասնակից էր լինում միայն կրկնելով Ս. Գրքի երգերից ընտրոշ բառեր ու խօսքեր, կամ ցնծութեամբ ասելով՝ «ալէլուիա, ամէն, շնորհեա Տէր, Յիսուս Քրիստոս Տէր մեր, կեցո՛ Տէր, կեցո՛ եւ ողորմեա, Տէր ողորմեա, Քեզ Տեառնդ յանձն եղիցուք, Աստուծոյ յանձն, առաջի քո Տէր» եւ այլն: Ժողովրդի այս ձեւի մասնակցութիւնը, ըստ 10–րդ դարի հեղինակ եւ նշանաւոր եպիսկոպոս Խոսրով Անձեւացու (1), երկար ժամանակ մնացել է Հայոց եկեղեցում: Կրօնական եռանդը, սակայն, ընդմիշտ բաւարարութիւն չէր կարող ստանալ միայն հին երգերով եւ բացագանչութիւններով. ուստի յօրինուել են նոր երգեր, որոնք 4–րդ, հաւանօրէն եւ 5–րդ դարերում եղել են դեռ մեծ մասամբ փոքրիկ կտորներ եւ իրրեւ յաւելուած ասուել են սաղմոսներից կամ Ս. Գրքի օրհնութիւններից յետոյ: Այս նոր երգերն իրենց նիւթն առնում են Աստուածաշնչից, եւ սաղմոսների եւ մարգարէական օրհնութիւնների քնարական տարրը որոշում է նրանց ոգին: Դրանք յօրինւում են նոյնիսկ Ս. Գրքի բառերով: Այդպէս է եղել հոգեւոր երգի ծագումն ու վիճակն ընդհանուր եկեղեցու մէջ այն ժամանակ, երբ լինում է Հայոց գրերի գիւտը եւ հիմք է դրւում մեր գրականութեան:

Դժբախտաբար մեր հոգեւոր երգերի հեղինակները մեծ մասամբ անյայտ են. մենք չգիտենք, թէ մեր ո՛ր երգն ո՛ւմնից եւ ե՛րբ է գրուած: Դրանք անանուն են:

*Սակաւաթիւ ծանօթութիւններն այդ մասին կա՛մ 13–րդ դարից են գալիս, կա՛մ երգերի ժողովածուների Շարակնոցների մէջ (2) գրուած տեղեկութիւններն են, որոնք նոյնպէս շատ հին չեն, որովհետեւ շարակնոցի շատ հին ձեռագիր չունինք: Այս ծանօթութիւններն էլ, սակայն, քիչ բան են տալիս, որովհետեւ յաճախ տատանւում են. միեւնոյն երգը մի տեղ մէկին է վերագրւում, մի ուրիշ տեղ՝ մի ուրիշին: Աւանդութեան հաստատուն լինելու դէպքում էլ շատ բան չէ, որ իմանում ենք. որովհետեւ, ճիշտ ասած, այս կամ այն յայտնի անձի անուան հետ կապուած են մի շարք երգեր, որոնք բոլորը չեն կարող մի հեղինակի գործ լինել: Օրինակ՝ Սահակ Պարթեւին վերագրւում են Աւագ շաբթի «կանոնները», իսկ Մեսրոպին՝ «Ապաշխարութեան կարգը», բայց այդ կանոններից ոչ մէկը եւ ոչ միւսը չեն կարող ամբողջապէս մի մարդու ասած լինել. Նրանց երգերի մէջ մեծ տարբերութիւն կայ ե՛ւ ձեւի, ե՛ւ բանաստեղծական ըմբռնման, բայց որ գլխաւորն է՝ յոյ–*

---

(1) Մեկնութիւն ժամակարգութեան, արարեալ երանելւոյն Խոսրովու Անձեւացեաց եպիսկոպոսի եւ կարգադրեալն Մովսէսի գիտնական վարդապետի. Յօրթագիւղ, 1840, էջ 6, 7, 12 եւ այլն. «Զնոյն եւ ժողովուրդքն ասեն՝ «Կեցո՛ Տէր»: «Եւ ասեն ժողովուրդքն միաբան՝ ոչ թէ՝ տո՛ւր այլ եթէ՝ շնորհեա տէր»: «Յայս ձայն ողորմագին պաղատանաց եւ ժողովուրդն զհայցուածսն միաբանեն ասելով՝ առհասարակ՝ Տէր ողորմեա՛»: «Եւ երկիր պագանելով ամենեցուն, անդէն առ Պարգեւատուն ասեն՝ Առաջի քո տէր»: Եւ ապա ասեն ժողովուրդն՝ Տէր ողորմեա՛», եւ այլն:

(2) Շարական հոգեւոր երգոց, Էջմիածին, 1861, էջ Ա–Դ:

Հեղինակների, ինչպէս եւ առանձին երգերի մութ կտորների բացատրութեան մասին տես՝ Գաբրիէլ Աւետիքեանի «Բացատրութիւն շարականաց», Վենետիկ, 1814:

ների մէջ անգամ կանոնները պատկանում են եկեղեցական բանաստեղծութեան զարգացման աւելի ուշ շրջանի: Կը նշանակէ՝ այդ կանոնների բազմաթիւ երգեր հետզհետէ են յօրինուած եւ հետագայում, երբ կազմուած են կանոնները, վերագրուած են մի անձի, Սահակին կամ Մեսրոպին: Անշուշտ աւանդութիւններն, ինչքան էլ ուշ ժամանակի լինին, կարող են նաեւ որոշ պատմական հիմք ունենալ, եւ կարելի է, հարկաւ, մասամբ պարզել, թէ ի՛նչ է այդ աւանդութիւնների հիմքը եւ ո՛րը կարելի է հաւանական կամ ընդունելի համարել, կամ մերժել. ուրիշ խօսքով, մասամբ որոշել մեր հին հոգեւոր երգերի հեղինակները. բայց այդ դեռ եղած չէ եւ այժմ հեշտ չէ անել (1):

Մի անգամ որ մեր հոգեւոր երգերի հեղինակներն անյայտ են կամ հաւաստի յայտնի չեն, ասել չի ուզիլ, որ այժմ այդպիսի վիճակի մէջ անհնար է մեր այդ բանաստեղծութեան զարգացման ընթացքը ճշտութեամբ ըմբռնել եւ ժամանակաբանական կարգով բացատրել. այլ այդ կարելի է միայն ընդհանուր եւ էական գծերով որոշել: Մեր բանաստեղծութեան այս տեսակն ինքնաբուխ չի եղել մեր մէջ. այլ ինչպէս քրիստոնէութիւնը դրսից է եկել, նոյնպէս եւ նրա բանաստեղծութիւնը, որ ազդուելով հրէական քնարերգութիւնից՝ միշտ հետեւել է գլխաւորապէս յունաց օրհներգութեան զարգացմանը: Եւ այս հասկանալի է. 5-րդ եւ նոյնիսկ 6-րդ դարերում միեւնոյն վանքերում երբեմն յոյն եւ հայ միասին ապրում էին, եւ ամէն մէկն իրենց լեզուներով փառաբանում Աստուծուն, ինչպէս վանապետ Ս. Թէոդոսի (+519 թ.) Բեթղեհեմում հիմնուած վանքում (2): Բնականօրէն այսպիսի դէպքում այն նոր երգերը, որ յոյները երգում էին, հայերն եւս պիտի երգէին հայերէն թարգմանելով, կամ թէ իրենք եւս նոր երգեր պիտի յօրինէին նմանելով յունական երգերին: Հետագայում եւս հայերի եւ յոյների յարաբերութիւնը բոլորովին չի խզւում, չնայելով քաղկեդոնական վէճերին:

Թէ ո՛րքան է ազդել յունաց օրհներգութիւնը մեր եկեղեցական բանաստեղծութեան վրայ, ցաւօք, դեռ պարզ յայտնի չէ. որովհետեւ այս ուղղութեամբ ուսումնասիրութիւններ դեռ չեն եղած: Տաղականների բաղդատութիւնը յունաց օրհներգութեան հետ՝ անշուշտ շատ բան կը պարզէր: Յունաց հոգեւոր քնարերգութեան եւ երաժշտութեան ազդեցութեանը վկայում են մեր եկեղեցական երգ ու երաժշտութիւն ցոյց տուող բառերը՝ սաղմոս, մեսեդի, ստողոդի, մեղեդի, կանոն, տաղ եւ այլն: Ինչպէս յետոյ կը տեսնենք, կանոնների շարքն եւս հետեւում է յունականին:

2. Հոգեւոր երգի սկիզբն եւ նոր երգերի ազատ մուտքը եկեղեցու ժա-

(1) Նախքան այդ՝ հարկաւոր է հրատարակել մի «շարակնոց», որ պիտանի լինի գիտական գործածութեան համար (մինչեւ այժմ եղածները եկեղեցու ժամերգութեան համար են միայն սահմանուած), որի մէջ ամփոփուեն բոլոր երգերն այլ ընթերցուածներով եւ իրենց մէջ ունեցած ծանօթութիւններով: Այս տեսակէտով մի կարեւոր ժողովածու է հետեւեալը. «Հին եւ նոր պարականոն կամ անվաւեր շարականներ», լոյս ընծայեց Սահակ վարդ. Ամատունի, Վաղարշապատ, 1911:

(2) **K. Krumbacher,** Geschichte der Byzantinischen, Litteratur, 1897, էջ 683:

մերգութեան մէջ:— Ինչքան էլ Շարակնոցների ու միւս յիշատակութիւնները չեն ստուգուած, բայց եւ այնպէս դրանք զուրկ չպիտի համարուեն պատմական հիմունքից: Այդ վկայութիւնները մեր հոգեւոր երգի սկիզբը դնում են 5-րդ դարում: «Նախ սուրբն Իսահակ եւ սուրբն Մեսրոպ տասցին դուԹն եղանակաւոր ձայնոն եւ զերկու ձայն ստեղխ: Ապա սուրբն Իսահակ՝ զՂազարուն եւ զկարգն Աւագ շաբաԹուն, եւ սուրբն Մեսրոպ՝ զկարգն Ապաշխարութեան»: Ըստինքեան անհաւանական չէ, որ այդ դարում, — երբ եկեղեցու պաշտամունքի լեզուն հայանում էր եւ Ս. Գրքի սաղմոսներն ու օրհնութիւնները հայերէն էին Թարգմանում ժամերգութեան ժամանակ երգելու համար, եւ երբ մի քանի դրական տեսակների հիմն էին դնում, — Թարգմանէին նաեւ ընդհանուր եկեղեցու մէջ ընդունուած նոր հոգեւոր երգերը, եւ մինչեւ իսկ ինքնուրոյն կամ նմանողական նոր երգեր եւս յօրինէին: Բացի նրանցից՝ որոշ երգերի հեղինակ են՝ Մովսէս Քերթող, «Ստեփաննոս Սիւնեցի առաջինն՝ որ յաչակերտաց անտի սրբոց Թարգմանչաց, [երգեաց] զեօԹն ձայնսն Աւագ օրհնութեանց: Յօհան Մանդակունին՝ զԱնըսկիզբն բանն Աստուած՝ եւ զՀամբարձին, զոր ոմանք Օձնեցւոյն տան»: Այս նշանաւոր կաԹողիկոս եւ հեղինակ Յովհան Օձնեցու (717-728 Թ.) վկայութեամբ (1) Սահակ ՊարԹեւն է հեղինակ գիշերային ժամի չորս քարոզների, Յովհան Մանդակունին է յօրինել նշանաւոր ԶարԹուցեալքս քարոզը եւ նրան յաջորդող աղօԹքը: ԵԹէ իրօք նրանք մասնակից են եղել մեր ժամակարգութեան կազմութեանը, հետեւաբար կարելի չէ անտես անել հետագայ դարերի վկայութիւնը, որով Սահակն ու Մեսրոպը եւ Յովհան Մանդակունին դրւում են իբրեւ առաջին հոգեւոր երգիչներ: Ի հարկէ, այժմ, ինչպէս վերեւում նկատուեց, չենք կարող հաստատ ասել, Թէ նրանք ո՛ր երգերն են յօրինել. բայց կարելի է այն գոնէ ընդունել, որ մեր հոգեւոր գրականութեան հետ սկիզբն է առել նաեւ մեր հոգեւոր երգը:

Մեր հոգեւոր երգի սկիզբը 5-րդ դարում դնելով հանդերձ՝ անհաւանական է կարծել, Թէ այդ դարում մեծ օրհներգութիւններ գրուած լինին. յոյների մէջ անգամ այդպիսի երգերը ծագում են առանձնապէս 6-րդ եւ 7-րդ դարերում: Բայց կարող ենք ասել, որ 6-րդ դարի վերջերում մեր եկեղեցական քնարերգութիւնը պիտի բաւական զօրեղացած լինէր, քանի որ 7-րդ դարի առաջին քառորդում Կոմիտաս կաԹուղիկոսի «Անձինք նուիրեալք» երգի մէջ մեր հոգեւոր երգը բաւական մեծ կատարելութեան է հասած իր ձեւով. ուստի պէտք է ընդունել, որ մեր եկեղեցական բանաստեղծութեան ծաղկման մի նախապատրաստական շրջան եղած պիտի լինէր եւ տէրունական տօների համար արդէն երգեր յօրինուած պիտի լինէին նախ

(1) Յովհաննու իմաստասիրի Օձնեցւոյ մատենագրութիւն, Վենետիկ, 1833, էջ 28, 31 եւ այլն, նաեւ Վենետիկ, 1834 թ. լատիներէն թարգմանութեամբ հանդերձ: Երկերն են՝ Ատենաբանութիւն.— Կանոնք.— Ընդդէմ Պաւղիկեանց.— Ընդդէմ երեւութականաց. Յաղագս կարգաց եկեղեցւոյ.— Վասն մեծի աւուր միաշաբաթին.— Սակս գիշերային ժամու, եւ ուրիշները:

քան Հռիփսիմեանց «Անձինքի» նման մի մեծ քերթուածի երեւան գալը: Այս քերթուածն էլ, հարկաւ, մենակ չպիտի լինէր իր տեսակի մէջ: Բայց ոչ բոլոր այդպիսի օրհներգութիւնները հասել են մեզ:

Մի ուրիշ, թէպէտ դարձեալ հետագայ դարերի վկայութիւնից էլ երեւում է որ այդ երգերն առանձնապէս բազմացած են լինում 7-րդ դարում, մինչ որ իբր անհրաժեշտութիւն է առաջ գալիս նրանց խմբագրութեամբ պարապելու: Կիրակոս Գանձակեցին (1) գրում է, թէ Ներսէս Շինողի ժամանակ այնքան «բազմացեալ էին երգ շարականաց յեկեղեցին Հայոց, մինչ ոչ գիտել միւս գաւառի երգեցող՝ զմիւսոյն»: Եւ նա պատմում է, թէ մի անգամ այդ կաթուղիկոսը Վարդավառի տօնին աշխարհաժողով բազմութեամբ Բագաւանում է լինում, եւ «ասացին շարական Վարդավառի հարցինն, եւ միւս դասն ոչ կարաց փոխել զնա, եւ փոխեցին բազում շարականս, եւ ոչ զայն եւս գիտէին: Ապա հայրապետն Ներսէս հաւանութեամբ ամենայն ժողովոյն ընտրեցին զպիտանին եւ զօգտակարն. զի յամենայն յեկեղեցիս յամենայն աւուր մի պաշտօն լիցի ըստ աւուրն խորհրդոյ. եւ ընտրեցին արս իմաստունս, զի շրջեսցին ընդ ամենայն աշխարհս Հայոց եւ զնոյն կարգաւորութիւնս հաստատեսցեն, որ է մինչեւ ցայսօր»: Նոյնը պատմում է համառօտ եւ Վարդան Արեւելցին (2), աւելացնելով, թէ ընտրութիւնը լինում է «ի ձեռն սրբոյն Բարսղի՝ մականուն Ճօն կոչեցելոյ, որ էր առաջնորդ սուրբ ուխտին, որ Դպրավանք կոչի, ի գաւառին Անւոյ... վասն որոյ Ճօնընտիր շարականն, որ այժմ պաշտի յեկեղեցիս Հայոց»: Վարդանի ու Կիրակոսի այս պատմութիւնը մի վկայութիւն է միայն նրա համար, որ մեր հոգեւոր բանաստեղծութեան ծաղկելուն նպաստել է առանձնապէս այն, որ դարեր շարունակ մեր եկեղեցիներում միատեսակ ժամերգութիւն եւ կանոնական պարտադիր երգեր չեն եղել, եւ թէ փորձեր են եղել շարականների մէջ ընտրութիւն անելու ու միատեսակութեան վերածելու ժամերգութիւնն այդ նկատմամբ: Որ Վարդանի ու Կիրակոսի ժամանակ այդ միատեսակութիւնն արդէն հաստատուած է եղել, այդ պարզ է. բայց որ «Ճօնընտիր» շարականը՝ 7-րդ դարում կազմուած լինի, այդ կարելի չէ ընդունել (3):

Նոր հոգեւոր երգերի մուտքը ժամերգութեան մէջ՝ հետագայ դարերում էլ դեռ ազատ է մնացել եւ եկեղեցիներում միեւնոյն երգերը չեն երգել: Այս ազատութեան մի մեծ վկայութիւն ունինք Յովհան Օձնեցուց (կաթուղիկոս 718–728): Նա հոգում է ոչ թէ նոր երգերի միատեսակութեան համար, այլ Ս. Գրքի սաղմոսների ու օրհնութիւնների:

Նա իր նշանաւոր Ատենաբանութեան երկրորդ հատուածի մէջ, որի վերնագիրն է՝ «Ամբաստանութիւն զնոցանէ, որք այլաձեւապէս եւ ոչ միով օրինակաւ կատարեն զկանոնս եւ զկցորդս եւ զկարգեալ զպաշտամունս», գրում է. «Քանզի տեսանեմ ի յոլովագոյն եւ ի ծանր իրս անկարգութիւն բազմացեալ, ոչ միայն ի ժողովրդականս, այլ առաւել յուխտի

---

(1) Պատմութիւն Հայոց, արարեալ Կիրակոսի վարդապետի Գանձակեցւոյ, Թիֆլիս, 1909, էջ 59:

(2) Մեծին Վարդանայ Պատմութիւն տիեզերական, Մոսկուա, 1861, էջ 96:

(3) Հաւանական է կարծել, որ Կիրակոսն ու Վարդանը, որոնց երկսի աղբիւրն անպայման մէկ է, մի պատմական շփոթութիւն են բովանդակում. դէպքը երեւի 12-րդ դարից, Ներսէս Շնորհալուց եւ իր ժամանակակից, «ամենագովելի» եւ «աստուածաշնորհ» Բարսեղ վարդապետից (+1162 թ.) փոխուած է 7-րդ դարի Ներսէս Շինողի ժամանակը:

*մանկունս եւ յառաջնորդս եկեղեցեաց։ Որք մին լեզու ի ձեռն միոյ քարոզի եւ մի՛ ելաք ճշմարտութեան ճանապարհ, եւ արդ բազմահետք եւ բազմաշաւիղք եղաք, յանչափարար եւ զանազան եւ այլաձեւսն առնելոյ՝ թէ զվարս եւ եթէ զփառաբանութիւնսն առ Աստուած։ Մինչ գրեթէ զնոյն կրել զվնասս ըստ հնոյ պատմութեանն՝ պատերազմել մեզ այր ընդ եղբօր, եւ այր ընդ ընկերի, քաղաք ընդ քաղաքի եւ օրէնք ընդ օրէնս։ Երկրական զբօսանօքն եւ վաճառանացն տուրեւառութեամբք խօսակիցք եւ հաշուեկիցք իրերաց լինելով, եւ առ խաղաղութեանն Աստուած ժողովեալք՝ զխաղաղութիւնն խնդրել՝ խուճապիմք եւ խռովիմք։ Եւ իբրեւ այլազգիք՝ տանիմք եւ բերեմք զմիմեանս, լինելով սա նմա խումբ եւ այլք այլոց դուժ» (էջ 4 եւ հտն.)։ Ցաւօք, այս Ատենաբանութեան Ժ. գլխի վերջը եւ ԺԱ. ԺԲ. ԺԳ. գլուխներն ու ԺԴ. գլխի սկիզբը պակասում են. բայց եղածից պարզ երեւում է, թէ ինչ խառնաշփոթութիւն է իշխելիս եղել Նրա օրով Հայոց եկեղեցիներում աստուածպաշտութեան ժամանակ։ Ուրիշ տեղ էլ, կանոնների մէջ (էջ 28), գրում է, թէ «Արժան է զառաւաւտինսն (առաւօտեան աղօթքը) ամենեցուն նմանս միմեանց եւ զնոյն եւ ըստ նմին կարգի կատարել. զի այսպէս վայել է քրիստոսասիրաց, որ նորին լեզուոյ եւ ազգի են, միաբանութեամբ փառաւորել զԱստուած եւ յօրհնել զվարս ուղիղս»... Եւ Յովհան Իմաստասէր կաթուղիկոսի բոլոր ջանքն այն է, որ մի քանի եկեղեցական ծէսերի ու ժամերգութեան մէջ միատեսակութիւն հաստատուի։ Ինչպէս երեւում է, Նրա Կանոնները հասնում են իրենց նպատակին, ինչ որ ժամակարգութեանն են վերաբերում, որովհետեւ այնտեղ դրուած սաղմոսները, օրհնութիւնները, կցուրդները, քարոզները, աղօթքներն ու մաղթանքները գտնում ենք Խոսրով Անձեւացու վերեւում յիշուած Ժամակարգութեան Մեկնութեան մէջ, բոլորը եւ նոյն կարգով. փոփոխութիւնը եղել է միայն ընդարձակուելով։*

*Օձնեցին, սակայն, որ այնքան հոգում է ժամակարգութեան միակերպութեան համար, ոչ իր Ատենաբանութեան, ոչ Կանոնների եւ «Յաղագս կարգաց եկեղեցւոյ» գրուածքի մէջ չի խօսում նոր երգերի կարգաւորութեան եւ միակերպութեան մասին, այլ միայն Ս. Գրքից առածների եւ ընդհանուր եկեղեցուց ընդունուածների, ինչպէս եւ քարոզների եւլն. համար։ Որ նա նոր երգերի մասին չի խօսում, դրանից կարելի չէ եզրակացնել, ինչպէս վարուել են, թէ իբր Նրա օրով չեն եղել հոգեւոր երգեր կամ սաղմոսների նմանողութիւններ եւ իբր նրան այդպիսիք ծանօթ չեն եղել(1)։ Նա այդ երգերի մասին չի խօսում, որովհետեւ դրանց երգեցողութիւնն ազատ է եղել եւ նա միտք չի ունեցել դրանք կարգաւորել, այլ աղօթքները, քարոզներն ու հին հոգեւոր երգերը։ Հէնց Նրա եւ ուրիշների վկայութեամբ գիտենք, որ այդպիսի երգեր եղել են 5-րդ դարից ի վեր։*

3. Կցուրդներ։— *Յովհան Օձնեցին Ատենաբանութեան մէջ (էջ 12 եւ հտ.) խօսում է այդ մասին, թէ թէպէտ եւ մենք հայերս Քրիստոսի Ծննդեան եւ Աստուածայայտնութեան տօները միասին միեւնոյն օրն ենք կատարում, բայց ոմանք աստուածպաշտութեան ժամանակ միայն Ծննդեան տօնն են սիրում կատարել, «իսկ յայտնութեանն խորհրդոյ՝ եւ ոչ միով իւիք կամին ճառս ի մէջ բերել»։ Իմաստասէր կաթուղիկոսն այդպէ՛ս վարուողների դէմ ի միջի այլոց հետեւեալ առարկութիւնն է բերում. եթէ այդպէս լինէր, ասում է նա, այն ժամանակ «է՞ր աղագաւ եւ* կցուրդս *գեղեցկանուագս ըղմկրտութեանն բանից յօրինեցին երանելիքն մեր վարդապետք»։ Օձնեցին չի*

---

1) N. Ter-Mikaelian. Das Armenische Hymnarium, Leipzig, 1905, էջ 61 եւ հտ.։

յայտնում, թէ ո՛վ են այդ երանելի վարդապետները. Նրանք, անշուշտ, ոչ ժամանակակիցներ են եղել եւ ոչ մօտիկ ժամանակներում ապրածներ, քանի որ նրանց հեղինակութիւնը պարտաւոր էին ընդունել նաեւ Օձնեցու պէս չմտածողները, որոնք չէին ուզում մկրտութեան տօնի յիշատակութիւն անել եւ ջրօրհնէք կատարել, հակառակ նախնական վաղնջուց սովորութեան. «Այլ զոր ասեմս, այս նախնական սովորութիւն ի վաղնջուց հետէ նախահաւեալ եւ մինչեւ առ մեզ հասեալ... Օրհնէին զջուրն, ձէթ արկանելով ի նա»:

Այդ «երանելի վարդապետներ», որ «զմկրտութեանն բանից», որ են Աւետարանի մէջ մկրտութեան վերաբերեալ խօսքերը, — գեղեցկանուագ կցուրդներ էին յօրինած, հարկաւ, Աւետարանի խօսքերի յարասութեամբ, ինչպէս են հին հոգեւոր երգերը, — անշուշտ միայն այդ արած չէին լինիլ. Նրանք կցուրդներ յօրինած պիտի լինէին նաեւ Ծննդեան եւ միւս տէրունական տօների համար: Թէոդորոս Քռթենաւորի, իրեն Յովհան Իմաստասէրի ուսուցչի, ճառերից(1) իմանում ենք, որ երգեր եղել են եւ Աստուածածնի վրայ: Նա Քրիստոսի Ծննդեան օրն Աստուածածնի գովեստն անելով՝ ասում է. «ԶՄարիամ կոյս Աստուածածին համաբոլորապսակեալ հաւատով սրբոյ Երրորդութեանն, ընդհանրական առաքելաշէն եկեղեցի՛ք Քրիստոսի, փառատրողական երգաբանութեամբ հոգեզուարճ նուագարանօք՝ վերագոչեսցուք ի սերկեան աւուրս դասախմբութեամբ. վասն զի յայսմ աւուր ընկալան մեծարգոյ աւետիքն բոլորաբնակ տիեզերք: Քանզի Հօր հաւասար Բանն Աստուած... ծնաւ այսօր ի Բէթղէհէմ»: Եթէ չլինէին Աստուածածնի վրայ երգեր, նա իր ունկնդիրներին չէր հրաւիրել «երգաբանութեամբ», «նուագարանօք» փառաւորելու նրան: Եւ ինքն իսկ Քերթողն իր «Գովեստի» մէջ շարականի նման մի ներբող է յօրինում Քրիստոսի ծննդեան վրայ.

Այսօր ցնծան բերկրականն *կցրդիւք*
Եւ գեղազգեակ պարախնդութեամբ
Երկնայինք եւ երկրայինք...
Գալստեամբ Որդւոյն Աստուծոյ:
... Այսօր ամպք աստուածայինք
Եւ ցօղք հոգէզուարճք,
Վերաբերեալ բուսովք
Ստորացողին ի մարդիկ
Գալստեամբ Որդւոյն Աստուծոյ: Եւ այլն:

Մենք ճառերի յարաբերութիւնը շարականների հետ՝ յետոյ կը տեսնենք: Այստեղ Թէոդորոսի այս երգաբանութեան առաջին տան հետ բաղդատելու համար՝ դնենք միայն Աստուածածնի Ծննդեան կանոնի մի շարականի առաջին տունը.

Այսօր ցնծան երկնայինքն
Եւ պար առեալ ի բարձունս

(1) Տպուած է Յովհան Օձնեցու Մատենագրութեան տեսւում, Վենետիկ, 1833:

Երգեն զերգս հոգեւորս
Յաւուր ծննդեան Սրբուհւոյն:

Ինչ որ Յ. Օձնեցու «Ատենաբանութեան» եւ Թէոդորոսի «Գովեստի» մէջ կցուրդ է կոչւում, նոյնը շարականի մէջ, ինչպէս վերեւի վկայութիւններից կարելի է տեսնել, սւում է հոգեւոր երգ, որ մեր մատենագրութեան մէջ յաճախ յիշւում է սաղմոսների եւ օրհնութիւնների հետ: «Հոգեւոր երգ» կոչումն, հարկաւ, ընդհանուր նշանակութիւն ունի, թէ՛ հին, Ս. Գրքի երգերին կը յարմարուի եւ թէ՛ նոր եկեղեցական երգերին. իսկ «կըցուրդ» կոչուել են առանձնապէս նոր հոգեւոր երգերը, նոյնիսկ 5-րդ դարում:

Թէ կցուրդ բառը երգ է նշանակում եւ հնումն այդպէս, եւ ոչ շարական բառով, կոչուել են նոր եկեղեցական, ոչ Ս. Գրքի, երգերը, այդ երեւում է շատ տեղերից: Բացի վերեւում դրածներից կարելի է եւ ուրիշ վկայութիւններ եւս բերել: Յովհան Իմաստասէրն, օրինակ, կանոնների մէջ, էջ 27. ԺԻ. գրում է. «Արժան է շաբաթն օր երեկուսն մարտիրոսաց պաշտել... եւ զճրագացն օրհնութիւն ասել՝ Լոյս զուարթ սուրբ»: Իսկ Ատենաբանութեան մէջ (էջ 22) ԺԵ. գլխի մէջ, որի վերնագիրն է՝ «Թէ զինչ խորհուրդ եւ յերեկոյին պաշտամանն գտանիցի ի սաղմոսս եւ ի կցուրդս եւ յաղօթս ի նոցին կարգաւորութիւնս», աւելի մանրամասն խօսելով գրում է, թէ սաղմոսներից յետոյ (որոնք են՝ Խոնարհեցո՛ եւ Ապրեցո. տե՛ս էջ 29. ԻԳ) «զճրագացն նուագ են զկցուրդ», որ է նոյն «Լոյս զուարթ» երգը: Ուրեմն այս նոր եկեղեցական հռչակաւոր երգը, որ Աստուածաշնչի երգ չէ, մի տեղ օրհնութիւն է կոչւում, մի ուրիշ տեղ՝ կցուրդ: Խօսելով «ս. Աստուած» աղօթքի մասին, Օձնեցին յաճախ յիշեցնում է՝ «զերեքսրբեանն երգել զփառաբանութիւն հանդերձ սրբոյ Աստուածածնին կցրդիւն». «Զսուրբ Աստուածն՝ հանդերձ սրբոյ Աստուածածնին կցրդիւն ի վերջն անցուցանել» (էջ 29 եւ հտ.). իսկ այդ կցուրդն է «Փառաւորեալ եւ օրհնեալ միշտ Ս. Կոյս»-ը:

Կցուրդ բառի մի ուրիշ ձեւն է «կցորդ». Հաիկազեան Բառգրքի մէջ այս ձեւով վկայութիւն է բերուած Ոսկեբերանից՝ «Յօրինեալ բարբառովք՝ ազգի ազգի կցորդիւք (յուն. տաղիւք կամ մեղեդեօք)»: Նոյնն ունի եւ Ղ. Փարպեցին(1): Սա Սահակի ձեռով Աստուածաշնչի թարգմանութեան եւ դպրոցների բացման պատմութիւնն անելուց յետոյ՝ գրում է, թէ մարդկանց բազմութիւնը դիմում էին եկեղեցի եւ «ընթանային խնդալիցք... ի տունս, մեծամեծք եւ տղայք սաղմոսելով եւ կցորդս ասելով ընդ ամենայն տեղիս»: Կարելի չէ Փարպեցու «կցորդս ասելը» հասկանալ «կցորդ սաղմոս» ասելու համար. քանի որ սաղմոսել բառի հետ է գրուած. իսկ կցորդ սաղմոս ասելն եւս սաղմոսել է: Դա նոր երգերի համար է գործածուած: Հետեւաբար առաջին թարգմանիչները հէնց՝ յօրինել են նոր հոգեւոր երգեր: Ղազար Փարպեցին (էջ 32) գրում է Սահակի համար, թէ նա «յոյժ առլցեալ անցուցանէր վարժիւք զրաղում զիտնովքն Յունաց, եղեալ կատարելապէս հմուտ երգողական տառիցն եւ հռետորական յորդասաց յայտնաբանութեան, եւս առաւել տեղեկացեալ փիլիսոփայական արուեստիցն ցուցանիւր»:

---

(1) Ղազար Փարպեցւոյ Պատմութիւն Հայոց, Թիֆլիս, 1907, էջ 36:

Որ Սահակը կատարելապէս հմուտ է եղել «երգողական տառից», կը նշանակի՝ իրական հիմք ունի Շարակնոցի հաղորդումը, թէ «նախ սուրբն Սահակ եւ սուրբն Մեսրոպ աստցին զուէթն եղանակաւոր ձայնսն», հաւանօրէն եւ այն, որ նրանք հեղինակ են եղել կցուրդների:

Նոր երգերն այսպէս կցուրդ կամ կցորդ կոչուել են այն պարզ պատճառով, որ դրանք, ինչպէս վերեւում յիշատակուեց, սկզբում եղել են փոքրիկ երգեր եւ իբրեւ յաւելուած ասուել, կցուել են Ս. Գրքի սաղմոսներից կամ օրհնութիւններից յետոյ: Սկզբնական շրջանում եւ յետոյ էլ երկար դարեր ժամերգութեան մէջ իշխողն եղել է Ս. Գրքի սաղմոսն ու օրհներգութիւնը. մինչդեռ կցուրդներն անկախ բնաւորութեամբ երգեր չեն եղել, այլ Ս. Գրքի երգերի մի յոկ յարասութիւն, կամ յարասութիւն օրուայ տօնի խորհրդի յիշատակութեամբ: Այս յարասական երգերի մասին, որոնք ունին հնութեան դրոշմ, յետոյ առանձին կը խօսենք: Այստեղ հարկաւոր է նկատել, որ կցուրդ, հետագայում կցորդ ձեւով, կոչուել են նաեւ սաղմոսներից կազմուած հատուածները, ոչ ամբողջական սաղմոսները, այլ սաղմոսներից առած որոշ թուով տներ, կամ, ինչպէս Բառգրքում բացատրուած է՝ «տուն մի սաղմոսի ի խորհուրդ աւուրն, որում կցի եւ սկիզբն նորին զկնի». բայց այս դէպքում կցուրդ բառն այնպէս է գործածուում, որ սաղմոսի կցուրդ է հասկացուում(1): Այսպէս կոչուել են այդ սաղմոսները, որովհետեւ դրանք էլ մի տեսակ նոր կազմուած երգեր են եղել, սաղմոսից տներ միայն, երբեմն տան կէ՛սն առած, եւ տները յետ ու առաջ շուռ տուած, եւ դարձեալ իբրեւ յաւելուած ասուել են ուրիշ երգերից յետոյ:

Այս կցուրդ սաղմոսների եւ միւս կցուրդների, այսինքն Նոր Հոգեւոր երգերի տարբերութիւնն սկզբնապէս մեծ չէ եղել. երկուսն էլ սկզբնապէս նոյնն են. ուստի նոյն անունով եւ կոչուել են: Կցուրդ սաղմոսները Նոր Հոգեւոր երգերի առաջին սաղմն են միայն: Այն ժամանակ, երբ եկեղեցում Ս. Գրքի սաղմոսներն ու օրհնութիւններն էին միայն երգում եւ ոչ նոր երգեր, նոր երգերի պահանջին բաւականութիւն է տրուել միայն կցուրդ սաղմոսներով. ազօթողը երկիւղածութեամբ վերաբերելով Ս. Գրքի բնագրին՝ իրենից ոչ մի բառ չաւելացնելով սաղմոսի բնագրի մէջ, բաւականացել է միայն նրանով, որ տների մէջ ընտրութիւն է արել եւ առել այնպիսի տներ եւ նոյնիսկ տան այնպիսի հատուածներ, որոնց բովանդակութիւնը յարմար է համարել օրուայ խորհրդին եւ տօնի բնաւորութեանը:

Կցուրդ սաղմոսների մի երկրորդ, աւելի բարձր աստիճանն են միայն այն կցուրդները, որոնք յօրինուած են գրեթէ ամբողջապէս Ս. Գրքի այն հոգեւոր երգերի բառերով, որոնց եաեւից կից երգւում են, բայց ոչ անփոփոխ պահելով Ս. Գրքի երգի բնագիրը, այլ նորից խմբագրելով այն:

---

(1) Այսպէս՝ Յովհան Օձնեցին, էջ 12՝ «սաղմոս կցուրդ ասելով»· էջ 121՝ «սաղմոսելն կցրդիւ».— էջ 123՝ «սաղմոս կցրդիւն՝ Տէր սիրեցի»· էջ 28՝ «զկցուրդսն զոր առնալ է ի սաղմոսացն» եւյն·: Տօնացոյցի մէջ նոյնը կոչուած է կցորդ սաղմոս· տե՛ս էջ 311, 395, 216, 226, 416 եւյն·:

*Օրինակ՝ Հետեւեալը*։

1․ *Ինձ օգնութիւն ի Տեառնէ Աստուծոյ Իսրայէլին եկեսցէ*։

2․ *Եւ որ պահէն զԻսրայէլ աջովն իւրով․*

*Ինձ օգնութիւն ի Տեառնէ Աստուծոյ Իսրայէլին եկեսցէ*։

3․ *Զի նա է տէր տերանց եւ Աստուած յաւիտենից,*

*Ինձ օգնութիւն ի Տեառնէ Աստուծոյ Իսրայէլին եկեսցէ*։

*Ապաշխարութեան կարգի այս շարականը, որ սաւում է երեկոյեան՝ «Համբարձի զաչս իմ ի լերինս, ուստի եկեսցէ ինձ օգնութիւն։ Օգնութիւն ինձ ի Տեառնէ եկեսցէ» եւլն․ սաղմոսից յետոյ, պարզապէս նոյն սաղմոսի յարասութիւնն է։ Բայց այս երգը մենակ չէ․ մեր շարականների մէջ շատ շատերն այսպիսի յարասութեամբ են յօրինուած*։

*Սրանցից զարձեալ մի աստիճան միայն հեռանում են այն երգերը, որոնց հեղինակները մի փոքր ազատ են շարժւում։ Նրանք պահելով Ս․ Գրքի օրհնութեան կամ սաղմոսի մի տող կամ մի խօսք իբրեւ կրկնակ՝ մընացածն իրենցից են յօրինում, միայն տեղ տեղ դարձեալ յարասութիւն անելով Ս․ Գրքի այն երգին, որի կցուրդն է նոր երգը։ Եւ վերջապէս՝ կըցուրդ սաղմոսների հակառակ ծայրում, աստիճանաբար հեռանալով նրանցից, կանգնած են այն երգերը, որոնք Ս․ Գրքի հոգեւոր երգից անկախ յօրինուածք ունին, թէպէտ դարձեալ միշտ Ս․ Գրքի ասացուածքներով ու պատկերներով մտածուած։ Բայց այս տեսակի շարականներն արդէն յօրինուած են ոչ իբրեւ Ս․ Գրքի երգի կցուրդ, այլ իբրեւ բոլորովին անկախ տօնական երգեր, ինչպէս է, օրինակ, Հոփսիմեանց «Անձինքը», որի հեղինակը երգի մէջ հէնց հրաւիրում է․ «Տօնեսցուք սուրբ ուղղութեամբ ի հնձանս նոցունց... Ցնծութեամբ տօնեսցուք զկիշատակս նոցունց»*։

*Թւում է, թէ այսպիսի մեծ տօնախմբական երգերը կոչւել են կացուրդ, որ հետագայում, հնչիւնական նմանութեան պատճառով, շփոթւել է կցուրդ բառի հետ եւ գործածւել նրա տեղ։ «Կցուրդ» բառը Բառգրքում բացատրուած է նախ՝ իբրեւ «հանդէս տեսարանաց եւ տօնից, համախմբութիւն... տօնախմբութիւն»։ Այդ յաճախ գործածուած է յունաբանական հին թարգմանութիւնների մէջ, յունարէնի «պանէգիրիս» բառի փոխանակ․ ապա՝ «երգն ի կացուրդս», այսինքն՝ «նուագ երգոց տօնս ի տօնս»։ Այսպէս, ի միջի այլոց, 12-րդ դարում, Սարգիս վարդապետի, Ներսէս Շնորհալու զաւակցի, գրուածքներում՝ «տօնախմբութեամբ եւ հանդիսաւոր կացրդիւք»․ նոյնպէս եւ Գրիգոր Անաւարզեցու Ցայսմաւուրքում՝ «երգեաց կացուրդ Ծննդեան Քրիստոսի քաղցրաձայն եղանակաւ», «երգեաց Տէրունական տօնս կացուրդս հազար» եւլն․, այլեւ տաղարանների ու գանձարանների մէջ՝ «կացուրդ Յովհաննու Կարապետի», «կացուրդ սրբոց քառասնից», «կացուրդ Ղազարու յարութեան», եւլն․*։

4․ Կանոն, կարգ։ Շարականներ։— *Ինչպէս տեսանք, մինչեւ 8-րդ դարը, այլեւ հետագայում դեռ երկար ժամանակ, նոր երգերի մուտքն եկեղեցու մէջ՝ ազատ է եղել։ Այս ազատութիւնն իր կողմից մեծ շարժառիթ է եղել նորանոր կցուրդներ յօրինելուն․ որովհետեւ հոգեւոր երգը յօրինւում էր մի զործնական նպատակի համար, այն է՝ երգիչը կարող էր ինքն եկեղեցում երգել իր յօրինած երգը, այլեւ յոյս ունենալ, որ իր երգն ընդունելութիւն կը գտնի եկեղեցուց։ Բայց ինչքան էլ երգերը բազմանա-*

յին, մինչեւ 8-րդ դարը յոյների, ինչպէս եւ հայերի մէջ, ո՛չ բոլոր տօներն ունէին իրենց յատուկ երգերը եւ ո՛չ Ս. Գրքի երգերի ամէն մէկից յետոյ անպատճառ պէտք է նոր երգեր ասէին միշտ: Այս դարից սկսած ժամերգութեան մէջ մի մեծ փոփոխութիւն է մտնում. դա «կանոնների» գիւտն է, որ իր կողմից նպաստում է հոգեւոր երգերի բազմանալուն: Աշխատում են, որ ամէն տօն ունենայ իր առանձին նոր երգը, որ պիտի երգուէր տօնի օրը, այն էլ ոչ թէ մի երգ, այլ մի շարք երգեր. որով եւ առաջանում է ամէնօրեայ ժամերգութեան մէջ նոր երգերի շարքը, կարգը, կանոնը:

Յունաց եկեղեցական բանաստեղծութեան մէջ կանոնների հնարողը համարւում է Կրետէի արքեպիսկոպոս Անդրէաս (մօտ. 650-720 Թ.), իսկ զարգացումն եղել է 8-րդ դարում Յովհաննէս Դամասկացու ձեռով. «Կանոնները կազմւում են 8 կամ 9 տարբեր երգերից, որոնցից իւրաքանչիւրն իր առանձին կազմութիւնն ունի եւ բաղկացած է եղել սկզբնապէս աւելի, հետագայում մեծ մասամբ 3 կամ 4 տնից: Երգերի իններակ թիւը համապատասխան է յայտնապէս Հին Կտակարանի 9 երգերին, որ քրիստոնեաները հնագոյն ժամանակներից ի վեր երգում էին սովորաբար» (1): Կանոնների այս մեքենայական շէնքը գտնում ենք նաեւ մեր Շարակնոցի մէջ: Ամէն կանոն ունի մի շարք երգեր իրենց ուրոյն կազմութեամբ:

Դրանք կոչւում են՝

1. Օրհնութիւն, որ ասւում է գիշերային ժամերգութեանը Մովսէս մարգարէի «Օրհնեսցուք զՏէր, զի փառօք է փառաւորեալ» օրհնութիւնից յետոյ իբրեւ կցուրդ.

2. Հարց, որ ասւում է իբրեւ կցուրդ Երից Մանկանց «Օրհնեալ ես, Տէր Աստուած հարցն մերոց» օրհնութեան.

3. Գործք կամ գործատուն, որ նախորդ օրհնութեան՝ «Օրհնեցէք, ամենայն գործք Տեառն, զՏէր» մասի կցուրդն է.

4. **Մեծացուսցէ**, որ ասւում է իբրեւ կցուրդ Ս. Աստուածածնի փառաբանութեան՝ «Մեծացուսցէ անձն իմ զՏէր».

5. Ողորմեա, կցուրդ «Ողորմեա՛ ինձ, Աստուած» սաղմոսի.

6. Տէր յերկնից, կցուրդ «Օրհնեցէ՛ք զՏէր յերկնից» սաղմոսի.

Այս վեց երգերն առաւօտեան ժամերգութեան կարգում են:

7. Ճաշու, որ զանազան սաղմոսների կցուրդ է եւ ասւում է «Ճաշու ժամերգութեան» ժամանակ:

8. Համբարձի, որ կցուրդ է երեկոյեան ժամերգութեան «Համբարձի զաչս իմ ի լերինս» սաղմոսի:

Երգերի այս շարքը սովորաբար կոչւում է յունարէն կանոն բառով, յաճախ նաեւ հայերէն կարգ բառով, ինչպէս՝ կարգ աւագ շաբաթուն, կարգ ծննդեան, կարգ ապաշխարութեան: Որոշ զարձուածով միայն գործածւում է սարf բառը. մի երգ «իւր սարօքն» ասել՝ նշանակում է, օրինակ, մի «օրհնութիւն» կամ «հարց» նոյն կարգի պատկանող միւս տեսակի երգերով միասին ասել: Կանոնի ամէն մի երգն առանձին առած կոչւում է շարա-

---

(1) Krumbacher. Cesch. d. Byz. Litt. էջ 695 եւ հտ.:

կան, *իսկ երգերի ժողովածուն ըստ կանոնների ասւում է* Շարակնոց:

*«Շարական» բառը փորձել են զանազան ձեւով բացատրել՝ պարսկերէն կամ ասորերէն բառերից· ես կարծում եմ՝ դա հայերէնում կազմուած բառ է, մի ածանցում կանոն ու կարգ բառերի համանիշ, առօրեայ խօսակցութեան մէջ աւելի սովորական շարք բառից: Կարգերի ամէնօրեայ կատարման ժամանակ եկեղեցու պաշտօնեաների բերանին կարող էր բնականօրէն միեւնոյն շարքին պատկանող ամէն մի երգն առանձին կոչուել «շարական երգ», ապա գոյականաբար մենակ՝ շարական, շարականք: Բայց այս բառն իր կազմութեամբ այնպիսի է, որ կարող է նաեւ հաւաքական նշանակութեամբ իբրեւ յոգնակի գործածուել, ինչպէս, օրինակ, նոյն կազմութիւնն ունեցող «գեղական», «բազմական» եւ այլ բառերը: Այս պատճառով «շարական» բառը նշանակում է ոչ միայն նոյն շարքին պատկանող մի հատ երգը, այլեւ յաճախ հաւաքական նշանակութեամբ՝ շարականների ժողովածու, շարակնոց: Շարական բառն իր այս նշանակութեամբ, իբրեւ նոյն շարքին պատկանող երգ, պիտի գործածուէր, հարկաւ, այն ժամանակ, երբ կանոններն արդէն մտած եւ ընդհանրացած են եղել մեր ժամերգութեան մէջ եւ կազմուած են եղել շատ տօների համար կանոնի պահանջուած երգերի շարքերը· ուստի այդ բառը հնումը յայտնի չէ եւ, որքան գիտեմ, առաջին անգամ 12-րդ դարի հեղինակների մէջ է երեւում· բայց կարող է այս դարից առաջ էլ գործածուած լինել, որովհետեւ կանոնները 10-րդ դարի երկրորդ կէսից արդէն ընդհանրացած են մեր ժամերգութեան մէջ:*

5· Ստեփանոս Սիւնեցի (երկրորդն) Իմաստասէր եւ կանոնների սկիզբը:— *Կանոնը Հայոց հոգեւոր երգի մէջ սկսել է մտնել 8-րդ դարի առաջին կէսին ապրող [երկրորդ] Ստեփանոս Սիւնեցու ձեռով, որ իր ժամանակի նշանաւոր գիտուններից մէկն է եղել: «Էր սա որդի աւագ երիցու մեծ մայրաքաղաքին Հայոց Դվնայ, — գրում է Օրբէլեանը* (1), *— եւ սնանէր եւ զարգանայր ուսմամբ ի տան կաթողիկոսարանին Հայոց»: Հասակ առնելուց յետոյ՝ նա գնում է Մաքենոցաց վանքը, աշակերտում «հարանց հայր» Սաղմի մօտ, «որ եւ յօրինեաց զպայծառացուցիչն տօնից տէրունականաց եւ զյիշատակս մարտիրոսաց զՏօնականն է* 150 [=150+551=701] *Թուին Հայոց»: Ապա Ստեփանոսը կամենալով աւելի ուսում առնել՝ դիմում է «յաղբիւրն իմաստից՝ ի վարդապետարանն Սիւնեաց, որ գլուխ էր ամենայն գիտնոց Հայոց, եւ պայծառացեալ դպրոցքն, որ ի նմա»: Այստեղ նա աշակերտում է Սիւնեաց Մովսէս եպիսկոպոսին: Հմտանալով կրօնական ուսման մէջ՝ ինքն էլ պարապում է վարժարանի աշակերտների հետ: Յետոյ նա վերադառնում է Դուին, մնում կաթողիկոսարանում, «եւ ոչ դադարէր երբեք ի մեկնելոյ զգրեանսն Հին եւ Նոր Կտակարանաց: Ապա եղեւ նմա հակառակել վասն հաւատոյ ընդ երկաբնակ իշխանի միոյ, որ էր ասպետ Հայոց՝ Սմբատ Բագրատունի· եւ զի ոչ էր հմուտ արտաքին փիլիսոփայական արհեստին, ոչ հաւանեցաւ իշխանն բանից նորա· այլ անարգեաց զՍտեփաննոս տղէտ կոչելով եւ կամէր հալածել»: Այդ ժամանակ նա գաղտնի դուրս է գալիս քաղաքից եւ ծպտուած՝ գնում է Կոստանդնուպոլիս, բնակ-*

(1) Պատմութիւն նահանգին Սիսական, արարեալ Ստեփաննոսի Օրբէլեան, արքեպիսկոպոսի Սիւնեաց, Թիֆլիս, 1910, էջ 130–144:

ւում է մի միայնակեացի մօտ, «որ էր հմուտ արտաքին իմաստից»: Այնտեղ սովորում է յունարէն ու լատիներէն. «Վարժէր զցայգ եւ զցերեկ ի գիրս եւ յարհեստս նոցա ըստ փիլիսոփայական ոճոյն»: Շարունակ պարապում է ընթերցանութեամբ: Գնում է Աթէնք, այստեղ էլ կատարելագործում իր ուսումը. վերադառնում է Կ. Պոլիս եւ Հիպատոս Դաւիթ անունով մէկի օգնութեամբ թարգմանում է «զգեղեցիկ գիրսն սրբոյն Դիոնիսիոսի (1). եւ զնէ ինքն դժուարագոյն եւ խրթին բանիցն լուծումն բան առ բան. թարգմանէ եւ զգիրսն քաղցրաբան Գրիգորի Նիւսացւոյ զբնութեան եւ կազմութեան» (2): Ապա գնում է Հռոմ, եւ այնտեղից հետո առնելով մի քանի գրքեր՝ վերադառնում է Դուին: Այստեղ նա պարապում է գրական գործով՝ գրելով պատասխան Գերմանոս պատրիարքի թղթին: «Մեկնեաց եւ զբեանս բազումս՝ զԱրարածքն, զՅոբն, զԵզեկիէլն եւ այլ բազումս... արար եւ ճառս». «մեկնեաց եւ զխորհուրդն գիշերային պաշտամանն»: Ձեռնադրւում է Սիւնիքի եպիսկոպոս եւ մէկ (ըստ ուրիշների՝ ութ) տարի յետոյ «ի ձորն Եղեգեաց [=Դարա Ալագեազ] յաւանն Մոզան» բացօթեայ քնած ժամանակ 735 թ. սպանւում է մի պոռնիկ կնոջից, որին սաստիկ յանդիմանել էր եպիսկոպոսը:

Ինչպէս Ստ. Սիւնեցու այս կենսագրութիւնից կարելի է տեսնել, իբրեւ գրականագէտ նա գրել է ճառեր, պարապել է գլխաւորապէս մեկնութիւններով եւ զանազան թարգմանութիւններով, որոնք մնում են: Նա ունի եւ քերականական մեկնութիւն (3), որի համար եւ կոչուել է Քերթող:

Բերենք եւ հետեւեալը նրա կենսագրից: «Էր սորա քոյր մի, — գրում է Օրբէլեանը, — ի մանկութենէ ստացեալ զվարս կուսութեան եւ առանձնացեալ ի ձորակին Գառնւոյ յայրի միոջ, եւ անտանելի վարս ճգնութեան կրէր յանձին. որոյ անուն Սահակդուխտ: Սա յոյժ հմուտ էր երաժշտական արհեստին, որ եւ ի ներքոյ վարագուրի նստեալ՝ ուսուցանէր զբազումս: Եւ արար կցուրդս եւ մեղեդիս քաղցրեղանակս, յորոց մին Սրբուհին Մարիամ, որ իւրով անուամբն է յօրինեալ: Եւ անդէն ի նմին վախճանեալ դնի ի հանգստի»: Իր եղբօրն արժանաւոր այս կինը մեր առաջին բա-

(1) Դիոնիսիոս Արիսպագացի [Արիոպագացի], եկեղեցու հայրերից մէկը, որի երկերից կան շատ թարգմանութիւններ, որոնք մասամբ կատարուած են, ըստ այդ երկերի յիշատակարանների, Ստեփանոս Սիւնեցուց: Տես՝ Գար. Զարբ., Մատենադարան Հայկական թարգմանութեանց նախնեաց, Վենետիկ, 1889, էջ 381 եւ հտն.:

(2) Գրիգոր Նիւսացի. «Յաղագս բնութեան մարդոյ». Տես՝ Զարբ. Մատենադարան թարգմանութեանց նախնեաց, էջ 371: Տես անդ նաեւ էջ 629–632. «Նեմեսիոս»: Այս թարգմանութիւնը տպագրուած է. «Նեմեսիոսի փիլիսոփայի Եմեսացւոյ՝ Յաղագս բնութեան մարդոյ», Վենետիկ, 1889, կազմուած է 45 գլուխներից, որոնցից երկրորդն ու երրորդը վերագրուել են Գրիգոր Նիւսացուն:

(3) «Արուեստ Դիոնիսեայ Քերականի եւ հայ մեկնութիւնք նորին՝ Դաւթի փիլիսոփայի, Անանուն մեկնչի, Մովսէսի Քերդողի, Ստեփաննոսի Սիւնեցւոյ» եւլն., ի լոյս էած եւ ի քննին արկ Ն. Ադոնց, Պետրբ., 1915:

նաստեղծուհին ու երաժշտուհին է, որ յիշւում է գրականութեան մէջ: Եւ ինքը Ստեփանոս Իմաստասէրը նոյնպէս եղել է երաժիշտ եւ հոգեւոր երգերի հեղինակ:

Նրա համար Կիրակոս Գանձակեցին (1) գրում է. «Արար երգս հոգեւորս քաղցր եղանակաւ՝ շարականս, կցորդն եւ երգս»: Ստեփանոս Օրբելեանը նոյնն աւելի որոշ է դնում. «Բաժանեաց և զութ ձայնսն և կարգեաց՝ շարեաց շարականս՝ զյարութեան օրհնութիւնսն. երգեաց եւ կցուրդս քաղցրահամս, յարմարեաց եւ զատողոգին յինանցն եօթն եղանակօք յոյժ խորհրդաւոր եւ զպահոցն որ յաղուահացսն երգի»: Օրբելեանի այս հաղորդածից որոշ իմացւում է, որ Ստեփանոս Սիւնեցին Յինանց ատողոգիները, որ եւ ատողոգիական սաղմոսներ, «յարմարել է եօթն եղանակով», այսինքն կազմել եւ եղանակ է դրել. այստեղ նա ստեղծող է իսկապէս միայն եղանակի. ապա նա «երգել է քաղցրահամ կցուրդներ»:

Շարակնոցների մէջ շարականների հեղինակների համար գործ են ածւում բացի առնել բառից՝ նաեւ ասել, երգել, ոգել բառերը, ինչպէս՝ «Անեղն ի հայրէ, Իմաստուն կուսանքն, Որ յաթոռ փառաց բազմեալ... Տէր Ներսէս Կլայեցին հայոց կաթողիկոսն է երգել». «Զաւագ շաբաթին Մեծացուցէքն Վարդանայ է ասացեալ». «Զյարութեանն Անանիա Շիրակացին է ոգեալ». «Եւ հարց մի այլ ի խաչին կարգն... Տէր Ներսէս Կլայեցին... է երգել»(2): «Որք զծորանս հոգւոյն արբին եւ ընդ ժամանակս երգեցին զեղանակաւոր երգս շարականաց»(3): Երգել յօրինելու նշանակութեամբ բնական է այս հին քնարերգուների համար, որովհետեւ նրանք երգի թէ՛ բառերն էին յօրինում, թէ՛ եղանակը եւ թէ՛ իրենք էլ երգում էին: Կը նշանակէ՝ Սիւնեաց եպիսկոպոս Ստեփանոսն՝ ըստ Կիրակոսի եւ Օրբելեանի՝ յօրինել է կցուրդներ, թէ՛ բառերը եւ թէ՛ նրանց եղանակները. եւ շարակնոցների մէջ նա համարւում է հեղինակ Մարտիրոսաց շարականների(4): Բայց այս դէպքում այդ չէ կարեւորը Օրբելեանի հաղորդածի մէջ, այլ այն, որ նոյն եպիսկոպոսը «բաժանել է ութ ձայները եւ կարգել, շարել է շարականներ՝ յարութեան օրհնութիւնները»: Այստեղ նա ոչ երգի բառերի յօրինող է հանդէս գալիս եւ ոչ եղանակի. նա միայն «կարգող, շարող» է:

«Յարութեան օրհնութիւնների» ուսումնասիրութիւնից(5) պարզւել

---

(1) Պատմութիւն Հայոց արարեալ Կիրակոսի վարդապետի Գանձակեցւոյ, Թիֆլիս, 1909, էջ 68:

(2) Հին եւ նոր պարականոն կամ անվ. շարակ., էջ 92, 96, 124:

(3) Հեղինակների մասին Յառաջաբան ծանօթութիւն էջմիածնում 1861 թ. տպ. Շարականի, էջ Ա.:

(4) Հին եւ նոր պարականոն կամ անվ. շարակ., էջ 176: Իսկ էջմիածնում 1861 թ. տպ. Շարակնոցի մէջ սրա համար ասւում է՝ «Ստեփաննոս Սիւնեցի երկրորդն՝ (երգեաց) զՍրբութիւն Սրբոց խաչին, զոր ոմանք Ստեփաննոս Մոկաց եպիսկոպոսի տան, որ Ապարանցի եւս կոչի»:

(5) «Արարատ», 1912 սեպտեմբ. թիւ 9, էջ 826—835, Մ. Աբեղեանի «Շարականների մասին»:

է, որ դրանք սկզբնապէս եղել են կցուրդներ տասն «մարգարէական օրհնութիւնների» եւ հետագայում իրօք մեքենայաբար «կարգուել չարուել են» իբրեւ կանոնի «օրհնութիւն»: Այս գործը, որ կապուած է ժամերգութեան կանոնի հետ, կատարել է Ստեփանոս Սիւնեցին: Դրանով նա կանոնը մտցրել է Հայոց եկեղեցու ժամերգութեան մէջ: Եւ այս հասկանալի է: Նա պարապել է ժամերգութեամբ եւ գրել է ժամակարգութեան մեկնութիւն: Ապա՝ նա, ինչպէս տեսանք, երկար ապրել է յոյների մէջ այն ժամանակ, երբ սկսել էին զարգանալ ժամերգութեան կանոնները: Յունաստանում ծանօթանալով կանոններին եւ հայրենիք վերադառնալուց յետոյ պարապելով ժամերգութեան խնդրով՝ շատ բնական է, որ նա փորձէր մեր մէջ եւս յոյների մէջ տեսած կանոնները մտցնել, եւ այնպէս մեքենայօրէն կարգէր, չարէր տասը մարգարէական օրհնութիւնների կցուրդներն իբրեւ Յարութեան օրհնութիւններ: Յարութեան կանոնի մնացած մասերի համար (հարց, մեծացուցէ եւլն․) երգեր չէին պակասիլ. որովհետեւ ժամերգութեան մէջ Ս. Գրքի այդ օրհնութիւնները կային արդէն. եւ իսկապէս, մեր Շարակնոցի մէջ Զատկից մինչեւ Հոգեգալուստ «Յինանց» բոլոր օրերի համար կան առանձին «հարցեր» իրենց սարքով. իսկ «օրհնութիւնները» միայն այդ յարութեան օրհնութիւններն են: Կանոնների ընդհանրացած շրջանում միայն Ներսէս Լամբրոնացին, երեւի տեսնելով, որ այդ օրհնութիւններն իրենց բովանդակութեամբ շատ էլ յարմար չեն, գրել է երեք կանոն՝ «Այսօր յարեաւ», «Նորոգեալ կզզիք» եւ «Համբարձաւ Տէրն մեր», որոնք ասւում են Զատկին, Նոր կիւրակէին եւ Համբարձմանը, փոխանակ յարութեան օրհնութիւնների:

Ստեփանոս Սիւնեցին մտցնելով կանոնը, կարող էր ուրիշ կանոնների շարականներ եւս կարգել. բայց այդ չգիտենք: Իսկ որ նա ամենից առաջ Յարութեան օրհնութիւններ իրենց սարքով պիտի կարգէր, այդ հասկանալի է այն պատճառով, որ Յարութեան կարգն անհրաժեշտ էր ոչ միայն «Յինանց» համար, այլեւ սովորական կիրակի օրերի համար: Դա ամէնօրեայ ժամերգութեան մէջ բռնում էր ամենից կարեւոր տեղը. ուստի կանոնը դրանից էլ պիտի սկսուէր:

Որ ասում ենք, թէ Ստեփանոս Սիւնեցին մտցրել է կանոնը մեր ժամերգութեան մէջ, այնպէս չպէտք է կարծել, թէ կանոնները մի անգամից ընդունելութիւն են գտած Հայոց եկեղեցիների մէջ եւ տարածուած: Վերեւում մենք տեսանք, որ նոյն ժամանակներում միատեսակ ժամերգութիւն չի եղել, եւ Յովհան Օձնեցին աշխատում է միակերպութիւն մտցնել գոնէ Ս. Գրքի երգերի եւ աղօթքների ու քարոզների մէջ. բայց նրա պատուիրած ժամակարգութիւնն եւս հետագայում անփոփոխ չի մնում, այլ ընդարձակւում եւ փոխւում է: Ժամերգութեան այսպիսի ազատ միջոցին Ստեփանոս Սիւնեցին կարող էր իր կողմից եւս ազատօրէն փոփոխութեան ենթարկել այն՝ մտցնելով կանոնը: Բայց նրա այս նորաձեւութիւնը երկար ժամանակ դեռ տեղական բնաւորութիւն պիտի ունենար, մինչեւ որ, քանի յոյների

մէջ կանոնները հետզհետէ ընդհանրանում էին, մեր մէջ եւս զօրանային 8-րդ եւ 10-րդ դարերի մէջ: Խոսրով Անձեւացու օրով, ուրեմն 10-րդ դարի կէսերին, արդէն ընդունելութիւն է գտած եղել այս կանոնը:

Մի անգամ որ կանոնը մտնում է մեր ժամերգութեան մէջ, բնականաբար պիտի աշխատէին հետզհետէ հին կցուրդներից ու կացուրդներից զանազան տօների համար կանոնի պահանջած թուով երգերի շարքեր կազմել: Կցուրդ երգերն, ուրեմն, վերածւում են «շարական» երգերի, եւ առօրեայ գործածութեան մէջ հին կցուրդ բառը եա է մղւում, մնալով միայն կցուրդ սաղմոսի նշանակութեամբ, եւ առաջ է գալիս «շարական» բառը: Նոր հոգեւոր երգերը, կանոնի շրջանում յօրինւում են արդէն իբրեւ կանոնի շարքի երգեր, եւ դրանք, թէեւ Ս. Գրքի օրհնութիւններից ու սաղմոսներից յետոյ էին ասւում, բայց սրանցից աւելի անկախ բնաւորութիւն ունէին, քան առաջ: Վերջ ի վերջոյ ժամերգութեան մէջ առաջնակարգ տեղը տրւում է Նոր երգերին, իսկ Ս. Գրքի Երգերը մնում են միայն իբրեւ «սկսուածքներ», այսինքն դրանցից միայն մի մի խօսքեր են երգւում Նոր երգերի սկզբում. ինչպէս՝ «Օրհնութիւնից» առաջ միայն՝ «Օրհնեցուք զՏէր, զի փառօք է փառաւորեալ», «Մանկունքից» առաջ միայն՝ «Օրհնեցէք մանկունք, զՏէր եւ օրհնեցէք զանուն Տեառն»: Այսպէս եւ միւսները:

6. Հոգեւոր երգի երկրորդ ծաղկումը: Տաղականների զարգացման դադարումը:— Ինչքան էլ հին կցուրդները շատ լինէին, դրանք չէին կարող բաւական լինել զանազան տօների համար. որովհետեւ ամէն տօնի կանոնի համար մի շարք երգեր էին հարկաւոր, մանաւանդ որ հետզհետէ նոր տօներ էին հաստատւում, կամ տօները ոչ թէ օրուայ հանդէսով էին վերջանում, այլ մի քանի օր էին տեւում: Այս պատճառով պէտք էր սպասել, որ կանոնի շրջանում մեր հոգեւոր քնարերգութիւնը նոր ուժով զարգանար. սակայն Ստեփանոս Սիւնեցուց յետոյ 9-րդ եւ 10-րդ դարերում չեն յիշատակւում հոգեւոր երգերի հեղինակներ: Եւ այդ, կարծում եմ, անհիմն չէ: Այն դարերում արդարեւ կանոնները հետզհետէ ընդունելութիւն են գտել, բայց չեն եղել անհրաժեշտ պարտադիր. ուստի եւ չեն ազդել հոգեւոր երգի զարգացման վրայ: Կանոն կազմողներն, անշուշտ, աւելի հին երգերից են կանոնի մասերը լրացրել, քան նորերը գրել: Իսկ յաջորդ 11-րդ, 12-րդ եւ 13-րդ դարերում, երբ կանոնն արդէն ժամերգութեան անհրաժեշտ կարգ է եղել, մեր հոգեւոր երգը նորից սկսել է ծաղկել, եւ յիշատակւում են երգիչների անուններ: Այս ժամանակներում նորանոր երգերով, եւ նոյնիսկ ամբողջական կանոններով, ընդարձակւում է մեր Տաղարանը եւ, ինչպէս երեւում է, ընդհանրապէս մեծ փոփոխութեան է ենթարկւում մեր ժամերգութիւնը: Հին մեծ Երգերը, դրուելով իբրեւ կանոնի մասեր, երբեմն կրճատւում են, որովհետեւ կանոնի ամէն շարական, ինչպէս յոյների մէջ, մեր մէջ եւս, սակաւ բացառութեամբ, կազմւում է երեք տնից: Աշխատում են տէրունական տօների պատկերներ, այսինքն տօնի յաջորդ օրերի կարգեր, եւ սրբոց տօների կանոններ կազմել, կամ կանոնի պակաս երգերը լրացնել

ներով։ Բայց չնայելով դրան՝ մինչեւ վերջն էլ մեր Շարակնոցի մէջ պակասում է այս կամ այն կանոնի համար շարքի այս կամ այն մասը, որովհետեւ հեշտ չէր այդքան մեծ թւով երգեր յօրինել։ Այսպիսի պակասորդները ժամերգութեան ժամանակ լրացնում են ուրիշ կանոնների մասերից։

Շարակնոցի այս խմբագրութիւնն ընթացել է բնական ձեւով, հետըզհետէ եւ զանազան մարդկանց ձեռով. պաշտօնական խմբագրութիւն յայտնի չէ, բացի Վարդանի եւ Կիրակոսի հաղորդածից, որ հաւանօրէն 12-րդ դարին է վերաբերում։ Բայց չնայելով դրան՝ որ շարականների զարգացումը գրեթէ մի անգամից դադարում է 13-րդ դարում։ Այստեղ եւս մեր հոգեւոր երգը հետեւում է յունական օրհներգութեանը, որի ծաղկումը վերջանում է 11-րդ եւ 12-րդ դարերի մէջ։ Դրա պատճառն այն է, որ ժամակարգութիւնը փակւում է, եւ նոր երգերն այլեւս չեն ընդունւում ամէնօրեայ ժամերգութեան կանոնի մէջ։ Եկեղեցական բանաստեղծութիւնը, ուրեմըն, ինչ որ շարականների տեսակին է վերաբերում, կորցնում է իր գործնական նպատակը եւ բնականաբար դադարում է զարգանալուց։ Բանաստեղծները յոյս չունենալով, թէ իրենց երգերը կ'ընդունէին կանոնի մէջ, այլեւս չեն գրում շարականներ, որով եւ շարականի տեսակը գրեթէ 14-րդ դարուց արդէն մեռնում է։ Նոյն շրջանում խմբագրւում է Շարակնոցը, որի մէջ որոշ կարգով դասաւորուած են մեծ թւով երգեր։ Շատ բան չի առնուած այդ պաշտօնական ժողովածուի մէջ եւ կորած է անհետ։ Ձեռագիր Շարակնոցների մէջ, սակայն, կան եւ «պարականոն շարականներ»։ Նոր հոգեւոր երգի պահանջը, սակայն, այնուհետեւ բաւարարութիւն է ստանում հոգեւոր տաղերով, որոնց երգեցողութիւնը եկեղեցում երկար դարեր դեռ ազատ է մնում։

## ՁԵՒՆ ՈՒ ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆԸ

1. Միատեսակութիւն։— *Շարականների արուեստն ու յատկութիւնները բխում են նրանց ծագման եւ զարգացման պատմութիւնից։ Հոգեւոր երգն ստեղծուած լինելով եկեղեցու պէտքի համար՝ ամենից առաջ եղել է մի յարմար միջոց ժողովրդի մէջ բարեպաշտութիւն զօրացնելու եւ քրիստոնէական ուսումը տարածելու։ Դա մի կողմից՝ կա՛մ օրհներգութիւն է, կա՛մ աղաչական բնաւորութիւն. միւս կողմից՝ դիդակտիկական-ուսուցական բանաստեղծութիւն է։ Ուստի թէպէտեւ մեր շարականների մէջ կան այնպիսիները, որոնք ունին զգացմունքի ջերմութիւն ու գաղափարների վըսեմութիւն, եւ արտայայտուած են մեծ ուժով, բայց նրանց մէջ ընդհանրապէս չպիտի որոնել քնարերգութեան բարձր թռիչքներ եւ փայլուն ու բազմազան արտայայտութիւններ։ Յաճախ դրանք աչքի են ընկնում եւ վերին աստիճանի պարզութեամբ կամ հետեւակ բաներ են։ Չպէտք է մոռանալ մի հանգամանք եւս։ Այդ բանաստեղծութիւնը չի յօրինուած կարդացուելու համար, այլ եկեղեցում աղօթաւորներից երգուելու։ Հետեւապէս*

այս դրական տեսակը գնահատելու համար՝ միշտ պիտի նկատի ունենալ նաեւ եղանակը, որ բանաստեղծութեանը տալիս է իր գոյնը:

Շարականների արուեստի մէջ ամենից առաջ աչքի է ընկնում ձեւի միակերպութիւնը: Դրա գլխաւոր պատճառը նիւթի միատեսակութիւնն է: Յօրինուած լինելով քրիստոնէական վարդապետութիւնը սովորեցնելու համար՝ այս երգերը բովանդակում են կարճ, ամփոփ պատմուածքներ Աւետարանից կամ սրբերի կեանքից՝ յարմարեցրած տէրունական կամ սրբերի տօներին: Բայց ինչքան էլ տէրունական տօները տարբեր լինեն, դրանք գաղափարով շատ մօտ են իրարու եւ միեւնոյն խորհրդի համար են հաստատուած. իսկ զանազան սրբերն ու մարտիրոսները, թէպէտ անուններով տարբեր, իսկապէս դարձեալ նոյն բնաւորութիւնն ունին եւ նոյն ու նման բանի համար են սրբացած: Այդ երգերի մէջ իշխող գաղափարն է, ուրեմն, ըստ քրիստոնէական դաւանանքի, Քրիստոսի մարդեղութեան խորհուրդը մարդկային ազգի փրկութեան համար եւ Քրիստոսի սիրոյն նուիրուածութիւնը, որին միանում է եւ օրհնաբանութիւնը, ապաշխարութիւնն ու խընդրուածքը: Այս միատեսակ նիւթը բնականօրէն միատեսակ ձեւով էլ պիտի արտայայտուէր, որովհետեւ դժուար է նոյն եւ նման բաների մասին նորանոր ձեւերով երգել, նոյնիսկ եթէ բանաստեղծները տարբեր են: Հասկանալի է, որ նրանք այդ բազմաթիւ երգերի մէջ նոյն նիւթն ու գաղափարներն անվերջ կերպով պիտի յեղյեղէին:

Միատեսակութիւնն առաջանում է եւ ուրիշ հանգամանքներից: Հոգեւոր բանաստեղծութիւնը ծագած եւ զարգացած լինելով Ս. Գրքի օրհնութիւնների ազդեցութեան տակ ու նրանց նմանողութեամբ՝ բանաստեղծական պատկերները, դարձուածքներն ու արտայայտութեան եղանակներն ընդհանրապէս Ս. Գրքի բանաստեղծութիւնից են առնուած, եւ նոյնիսկ պատմութիւնը, որքան կարելի է, Աւետարանի մօտիկ եւ նրա բառերով է արւում, կամ թէ յարասութիւն են անում: Բանաստեղծները բարեպաշտական երկիւղածութեամբ չէին համարձակւում շատ հեռանալ Աստուածաշնչի բնագրից: Եւ իր այս յատկանիշը, որ նոյնպէս ձեւի միատեսակութիւն է առաջ բերում, մինչեւ վերջն էլ աւելի կամ պակաս չափով պահում են մեր շարականները:

Հոգեւոր երգի ծագման պատմութեան հետ կապուած է մեր շարականների յօրինուածքի մի ուրիշ յատկութիւն եւս, դարձը, որից մեծ մասամբ կախուած է շարականների բնորոշ ոգին եւ քնարականութիւնը: Դարձը կամ կրկնակը այն տողերը կամ բառերն են, որոնց դառնում են, կամ որ կրկնւում են իւրաքանչիւր տան վերջում եւ որոնց մէջ է երեւան գալիս երգչի զգացումը: Դարձերը սովորաբար շատ նման են իրար եւ կազմուած են յաճախ Ս. Գրքի օրհնութիւնների կամ սաղմոսների խօսքերից: Դրանք շարականների հնագոյն տարրն են: Սկզբնապէս ժամերգութեան ժամանակ կրկնել են բացագանչութեամբ Ս. Գրքի օրհնութիւններից կամ սաղմոսներից որոշ բառեր ու խօսքեր, որոնք եւ պատճառ են դարձած նոր երգեր

*յօրինելուն: Այդ կրկնութիւններն այնուհետեւ կա՛մ դարձել են առանձին երգերի առաջին տունը, կա՛մ առնուած են նոր երգերի մէջ իբրեւ դարձ: Հնագոյն երգերը, սակայն, բացի դրանից՝ յօրինուած են նաեւ յարասութեամբ Ս. Գրքի օրհնութիւնների ու սաղմոսների: Բայց այս յատկութիւնը, դարձն ու յարասութիւնը, չպիտի մոլորութեան մէջ ձգի. ամէն երգ, որ ունի այդպիսի առաջին տուն կամ դարձ եւ յօրինուած է յարասութեամբ՝ դեռ անպատճառ հին էլ չէ. որովհետեւ մի անգամ որ առաջին հոգեւոր երգերն այդպէս են յօրինուած, հետագայում դա սովորութիւն է դարձել, եւ նոր երգերն եւս յաճախ հների նման են յօրինել: Այդպիսով ստեղծուել է երգերի մի երեք-չորս ընդհանուր ձեւ, չաբլոն, որ բանեցընում էին բանաստեղծները: Կանոնների շրջանում այս ընդհանուր ձեւերը նոյնիսկ հաստատուն են դառնում. կանոնի ամէն մի մասն իր առանձին կերպարանքն է ստանում, որին պիտի յարմարուէր ամէն նոր երգ: Այսպէս, օրինակ, շատ երգերի մէջ չաբլոնական ձեւով կրկնւում է Ս. Գրքից առնուած «Աստուած հարցն մերոց»:*

1. Այսօր ցնծան
Երկինք եւ երկիր
Յարութեամբ քո, Տէր,
Աստուած հարցըն մերոց:
2. Այսօր նորոգեցան
Տիեզերք ամենայն
Յարութեամբ քո, Տէր,
Աստուած հարցըն մերոց:
3. Այսօր հրեշտակապետն
Աւետարանէր
Զյարութիւն քո, Տէր,
Աստուած հարցըն մերոց:

էջ 370

*Բերենք եւ հետեւեալը.*

1. Քրիստոս յարեաւ ի մեռելոց:
2. Ընդ արշալոյսն առաւօտուն
Կանխեալ կանանցն ի գերեզմանն ասելով՝
Քրիստոս յարեաւ ի մեռելոց:
3. Եւ առ նոսա ասէր հրեշտակն՝
Զի՞ խնդրէք ըզկենդանին ընդ մեռեալս.
Քրիստոս յարեաւ ի մեռելոց:
4. Փութացարուք, ո՛վ սուրբ կանայք,
Եւ պատմեցէք աշակերտացն ասելով՝
Քրիստոս յարեաւ ի մեռելոց:

էջ 325

2. Մեսրոպ Մաշտոցին *վերագրւում են «Ապաշխարութեան կարգի» բազմաթիւ երգերը։ Առնենք «Ողորմեայի» շարականները։ Դրանք սկզբնապէս կցուրդ են եղել «Ողորմեա ինձ, Աստուած» սաղմոսի, ուստի եւ յարասութիւն են այդ սաղմոսի եւ իրենց բնութութեամբ արդէն ապաշխարական են։ Այս կարգի շարականները սրտայոյզ ողբեր են եւ ամենից գեղեցիկներն են։ Բանաստեղծը (աւելի ճիշտ՝ բանաստեղծները) ճնշւում, նեղւում է իր բազում մեղքի ծանրութեան տակ. զգում է, որ մոլորուած է, վիրաւորուած ընկած է թշնամուց։ Նա կորցրել է իր սրտի հանդիստը, ներքին խաղաղութիւնը, հաւասարակշռութիւնը. հոգով հիւանդ է եւ մօտ է ընկղմուելու չարիքի անդունդի մէջ։ Զարհուրելով իր այս վիճակից՝ նա դողում է, շարունակ արտասւում է ու հառաչում, խորին խոնարհութեամբ զղջալով՝ իր սիրտը բաց է անում Աստուծոյ առաջ եւ իր յոյսը միայն Նրա վրայ է դնում, աղերսանքով, սրտայոյզ ողբերով աղաչում է Նրան, որ իր մեծ գթութեամբ քաւէ իր յանցանքը, ողորմի ու փրկէ իրեն՝ աչագին հրից։ Այս է ահա այս շարականների բովանդակութիւնը։ Այս կարգի հնագոյն երգերը գրեթէ բառացի յարասութիւն են սաղմոսի, եւ կամ առաջին տունն ամբողջ սաղմոսից է կազմուած։*

1. Ողորմեա՛ ինձ, Աստուած։
Զի քեզ միայնո՛յ մեղայ։
2. Առաւել լուա՛ զիս
Ի տղմոյ յանցանաց,
Աղբի՛ւր բժշկութեան,
Եւ ողորմեա՛։
3. Յարենէ փրկեա՛ զիս,
Որ հոգւոց եւ մարմնոց
Ունիս իշխանութիւն,
Եւ ողորմեա՛։

*Էջ* 168

1. Ողորմեա՛ ինձ, Աստուած։
2. Ի լսել զձայն փողոյն յահագին աւուրն,
Յորժամ հարկանէ հրեշտակապետն
Եւ կոչէ ի դատաստան,
Ողորմեա՛ ինձ, Աստուած։
3. Ի նստիլ քո յատենի, դատաւո՛ր ահեղ,
Յորժամ առնես հրափորձութեամբ
Զքննութիւն որդւոց մարդկան,
Ողորմեա՛ ինձ, Աստուած։

*Էջ* 124

*Սաղմոսին կապուած մնալով հանդերձ՝ Ապաշխարութեան այս երգերը, սակայն, աւելի ինքնուրոյնութիւն ունին, քան շատ ուրիշ շարական-*

*ներ։ Բանաստեղծներն աւելի ազատ են շարժւում, սաղմոսից առնելով միայն ընդհանուր գլխական ոգին եւ դարձերը, որ են սովորաբար «Ողորմեա՛ ինձ, Աստուած», երբեմն նաեւ նոյն նշանակութեամբ, դարձեալ սաղմոսից ազդուած, ուրիշ դարձերով՝ «Մեղայ քեզ, տէր, քաւեա՛ զիս», «Արդ անկեալ աղաչեմ, թո՛ղ ինձ, տէր», «Խնայեա՛ ի մեղուցեալ ծառայս», «Խնայեա՛ ի մեզ, տէր, ողորմութեամբ», «Մի՛ անտես առներ, Հայր, զաղաչանս իմ», եւ այլն։*

1· Անկանիմ առաջի քո
Եւ խնդրեմ զթողութիւն
Յանցանաց իմոց·
Մի՛ անտես 'առներ, Հա՛յր, զաղաչանս իմ։
2· Աղաղակեմ, որպէս մաքսաւորն,
Եւ հեղում զարտասուս իմ
Առաջի քո, որպէս պոռնիկն·
Մի՛ անտես առներ, Հա՛յր, զաղաչանս իմ։
3· Յաներեւոյթ թշնամւոյն պարտեցայ
Եւ ի գաղտնի նետից
Բանսարկուին վիրաւորեցայ·
Մի՛ անտես առներ, Հա՛յր, զաղաչանս իմ։

Էջ 192

1· Զըղջման իմոյ զարտասուս
Արկանեմ առաջի քո, Քրիստո՛ս,
Թո՛ղ ինձ զմեղս իմ,
Որպէս երբեմն ըզպոռնկին,
Որ միայնդ ես բազմագութ։
2· Անկանիմ առաջի քո, Քրիստո՛ս,
Որ հովիւդ ես բանաւոր հօտի·
Խնդրեա եւ զիս զմոլորեալս,
Որ միայնդ ես բազմագութ։
3· Ըզմեղս իմ ցուցից քեզ, Քրիստոս,
Որ բժիշկդ ես հոգւոց եւ տէր կենաց,
Բժշկեա՛ եւ զիմ զհիւանդութիւնս,
Որ միայնդ ես բազմագութ։

Էջ 122

1· Մաքսաւորն հառաչանօք ի տաճարին
Էառ ըզքաւութիւն·
Նովին ձայնիւն եւ ես գոչեմ՝
Ողորմեա՛ ինձ, Աստուած։
2· Աւազակն աղաչէր ի խաչին՝
Յիշեա՛ զիս, տէր·

Նովին ձայնիւն եւ ես գոչեմ՝
Ողորմեա՛ ինձ, Աստուած:
3. Անառակ որդին աղերսանօք աղաչէր զՔեզ՝
Հայր, մեղայ յերկինս եւ առաջի Քո.
Նովին ձայնիւն եւ ես գոչեմ՝
Ողորմեա՛ ինձ, Աստուած:

Էջ 174

1. Ցոյս ի՛մ ես դու, Տէ՛ր,
Քաւիչ յանցանաց իմոց.
Մի՛ անտես առներ
Զբրղխումն արտասուաց իմոց.
Ողորմեա՛ց ինձ, Աստուած:
2. Առ Քե՛զ ապաւինեցայ
Որպէս զանառակ որդին.
Հա՛յր, մեղայ յերկինս
Եւ առաջի Քո.
Ողորմեա՛ց ինձ, Աստուած:
3. Փրկեա՛ զիս, Աստուա՛ծ,
Ի բազում մեղաց իմոց,
Արա՛ արժանի
Քոյին սուրբ արքայութեանդ,
Ողորմեա՛ց ինձ, Աստուած:

Էջ 153

*Ապաշխարութեան կարգի մէջ, սակայն, կան մի քանի «ողորմեաներ», որոնք ոչ միայն յարասական չեն, այլեւ չունին սովորական դարձերը, բայց եւ այնպէս դրանք եւս կրում են նոյն զղջական բնաւորութիւնը.*

1. Ալիք յանցանաց զիս ալեկոծեն,
Եւ մեղք իմ բազում զիս յանդիմանեն:
2. Արդ զի՞նչ արարից մեղուցեալ անձամբս,
Որ չեմ ապրելոց յահագին հրոյն:
3. Մեղայ Քեզ, Քրիստո՛ս, որդի՛ Աստուծոյ,
Շնորհեա՛ զթողութիւն բազում յանցանաց իմոց:

Էջ 218

1. Ծո՛վ կենցաղոյս հանապազ զիս ալեկոծէ.
Մրրկեալ ալիք թշնամին ինձ յարուցանէ.
Նաւապետ բարի, լե՛ր անձին իմոյ ապաւէն:

Էջ 132

1. Մեղք ի՛մ բազում են յոյժ,
Ծանր են Քան զաւազ ծովու.

Քանզի քեզ միայն՛յ մեղայ,
Ողորմեա՛ ինձ, Աստուած։

2․ Բաց, տէ՛ր, ըզդուռն ողորմութեան,
Որ ողբալով կարդամ առ քեզ,
Քանզի քեզ միայն՛յ մեղայ,
Ողորմեա՛ ինձ, Աստուած։

3․ Հեղ յի՛ս ըզգթութիւնդ քո,
Բազումողո՛րմ եւ մարդասէր․
Քանզի քեզ միայն՛յ մեղայ,
Ողորմեա՛ ինձ, Աստուած։

էջ 154

3․ Սահակ Պարթեւին *վերագրուած երգերից մի առանձին տեսակ են կազմում այն շարականները, որոնք աչքի են ընկնում իրենց վերին աստիճանի պարզութեամբ։ Դրանք նոյնպէս յարաակական երգեր են, բայց չեն կրում կանոնի ազդեցութիւնը, այլ Աւետարանի պատմութեան ամփոփումն են, սովորաբար Աւետարանի իրեն բառերով։ Երգիչը միայն մի պարզ նպատակ ունի՝ երգի միջոցով սովորեցնել Աւետարանի պատմութիւնը։ Այս խմբի երգերը, եթէ կարելի է այսպէս ասել, մեր շարակնների մէջ վիպական երգեր են։ Բերենք մի օրինակ։ «Աւագ շաբաթու կարգի» մէջ կան չորս երգեր (Այսօր կանգնեցաւ, էջ 251․ Արծաթասիրութեամբ, էջ 254․ Ի գիշերին, յորում, էջ 254․ Ո՛վ սքանչելի, էջ 256), որոնք իրենց միանման պարզութեամբ, զգացմունքի խորութեամբ եւ վիպականութեամբ մի երգչի գործ են երեւում եւ կազմում են մի ամբողջութիւն։ Դրանք յօրինուած են ժամերգութեան այն մասի համար, որ ամենահին ժամանակներից դրուել է քրիստոնեայ ժողովրդի սիրտն ու հոգին։ Դա Աւագ հինգշաբթի լոյս Աւագ ուրբաթ գիշերային ժամն է, Յիսուսի վերջին օրերը, ոտնլուայից մինչեւ թաղումը։ Այդ ժամանակ կատարւում էր Յիսուսի մահուան սգածէսը, մեռնող եւ յարութիւն առնող աստուծու մահուան սուգը, որ գալիս էր նախաքրիստոնէական հին դարերից։ Մեծի ուրբաթի այդ հսկման տօնին աւետարան կարդալու սովորութիւնը հին է․ չորս Աւետարանիչների ամէն մի ընթերցուածից յետոյ՝ ժամաւորներն իրենց զգացումնքն են յայտնել, երգելով այդ երգերը եւ մի քանի կարճ տների մէջ կրկնելով կարդացած Աւետարանի բովանդակութիւնը։ Այս պատճառով շարականների ոճն ու բովանդակութիւնը շատ պարզ է։ Պատմւում է, թէ ինչպէս տէրը լուանում է աշակերտների ոտները՝ յայտնելով, թէ նրանցից մէկն իրեն պիտի մահու մատնի։ Աշակերտները խիստ տրտմում են ու խռովում եւ ուզում են իմանալ, թէ ո՛վ է մատնողը։ Դա Յուդան է, որ, մինչ Յիսուս Ձիթենեաց լեռան վրայ աղօթում է, շտապում է քահանաների մօտ իր պայմանը կապելու․ քահանաները կշռում են նրա համար երեսուն արծաթ եւ տիրոջն առնում, տանում են Պիղատոսի մօտ։— Այս պարզ պատմուածքի մէջ բանաստեղծը լցուած է մեծ սիրով առ տէրը, որ մարդկային ազգի մեղքի թողութեան համար է աշխատում։ Երգիչը նրա եւ նրա աշակերտների հետ յուզ-*

*ւում ու խռովում է. միւս կողմից՝ նա զայրանում է «անօրէն» եւ ապե-րախտ աչակերտի վրայ, որ արծաթասիրութեամբ մատնում է իր տիրոջն, այն էլ՝ համբոյրի միջոցով.*

Ո՛վ համբոյր նենգութեան,
Նշան եւ առիթ մահու,—

*բացագանչում է նա՝ ընդհատելով վիպումը: Եւ ապա նկարագրում է Ցուդային.*

Մերկացա՛ւ յինքենէ
Զաստուածային սուրբ հոգին,
Եւ զգեցաւ զսատանայ,
Որպէս հանդերձ արկաւ զիւրեաւ:

*Երբ հրեաները «ի խաչ հա՛ն» են կանչում, նա այլեւս չի կարողա-նում հանդարտ պատմուածքը շարունակել, այլ յանկարծ տեսնում է իր ա-ռաջ խաչելութիւնը՝ տէրը խաչի վրայ, «սքանչելի եւ ահաւոր» պատկերով.*

Ո՛վ սքանչելի,
Եւ տեսի՛լ ահաւոր.
Զարարիչն երկնի եւ երկրի
Այսօր տեսաք ի խաչին.
Տեսեալ զտէր ի խաչին՝
Խաւարեցաւ արեգակն,
Եւ վարագոյր Տաճարին
Ցելոյր վերուստ մինչ ի վայր:
**Անարգաբար խաչեցաւ**
Տէրն ի մէջ ի յանօրինաց.
Զի լըցցի գիրն որ ասէ,
Թէ ընդ անօրէնսն համարեցաւ:

**Էջ** 256

*Պէտք է երեւակայել ժամերը հանդցրած մութ եկեղեցին, լի արտա-սուող ժողովրդով, կէս գիշերային ժամին, որ հասկացուի, թէ ի՛նչ սար-սուռ էր անցնում հաւատացեալ աղօթաւորի հոգով, երբ այս սրտաճմլիկ աղօթ երգն էր հնչում:*

4. Դաւանաբանութեան ազդեցութիւնը շարականների վրայ:— *Բացի Աւետարանի պատմութեան ուսումից՝ հոգեւոր երգը յաճախ միաժամանակ ծառայել է ժողովրդին նաեւ դաւանաբանական ուսում տալու: Մարդիկ հե-տաքրքրւում եւ ապրում էին դաւանաբանական եւ նոյնիսկ մեկնաբանական խնդիրներով, որոնց համար ամբոխները նոյնիսկ կռիւներ էին մղում: Բնա-կան է, որ հոգեւոր երգն իր մէջ անդրադարձնէր եկեղեցական կեանքի այդ կողմը: Այդպիսի դաւանաբանական շարականների ամենապարզ եւ հին տե-սակն իր մէջ ամփոփում է սովորաբար Քրիստոսի աստուածութեան ընդ-հանուր ստորոգելիները: Հետագայ դարերում, սակայն, մուտք են գործել եւ այնպիսի դաւանաբանական խնդիրներ, որոնք եկեղեցու մէջ վէճի ու պառակտման առարկայ են դարձած: Այս վերջին տեսակի շարականներն ա-*

ռանձնապէս աչքի են ընկնում իրենց սառն ու վերացական, հետեւակ բնաւորութեամբ: Արդարեւ շատ չեն այն երգերն, որոնք ամբողջապէս յատուկ դաւանաբանութեան համար յօրինուած լինին. բայց չափազանց մեծ է այն երգերի թիւը, որոնց այս կամ այն տողի մէջ դիտաւորեալ կերպով սահեցրած է որեւէ դաւանաբանութիւն: Բերենք իբրեւ օրինակ՝ Ծննդեան «Խորհուրդ մեծ» նշանաւոր օրհնութիւնը «Ծննդեան կարգից», որ վերագրւում է Մովսէս Քերթողին(1).

Խորհո՛ւրդ մեծ եւ սքանչելի,
Որ յայսմ աւուր յայտնեցաւ.
Հովիւքն երգեն ընդ հրեշտակս,
Տան աւետիս աշխարհի:
Ծնա՛ւ նոր արքայ
Ի Բեթղեհէմ քաղաքի.
Որդի՛ք մարդկան, օրհնեցէ՛ք,
Զի վասն մեր մարմնացաւ:
Անբաւելին երկնի եւ երկրի
Ի խանձարուրս պատեցաւ:
*Ոչ մեկնելով ի Հօրէ՝*
Ի սուրբ այրին բազմեցաւ:

էջ 23

Թւում է, թէ բանաստեղծը բնականօրէն, անգիտակցաբար գրել է վերջին տան ընդգծուած տողը՝ «ոչ մեկնելով ի Հօրէ», բայց դա յատուկ դիտաւորութեամբ կատարուած բան է: Դաւանաբանութեան այդ խնդիրը շատ է զբաղեցրել «Ծննդեան կարգի» երգիչներին. ուստի եւ բազմաթիւ երգերի մէջ զանազան ձեւերով երեւում է այդ:

Այս դաւանաբանական շարականներին իրենց բնաւորութեամբ մօտենում են այն երգերը, որոնց յօրինողը, ուսուցանելու նպատակով, պարզապէս յիշեցնում է Քրիստոսի աստուածային ընդհանուր յատկութիւնները, առանց որեւէ դաւանաբանական խնդրի յաւակնութիւն ցոյց տալու: Եւ այս լինում է յաճախ առանձին արուեստով: Բանաստեղծն առնում է մի աստուածային յատկութիւն, ապա պատմում է Յիսուսի կեանքից մի արարք իբրեւ հետեւանք նրա յիշուած աստուածային յատկութեան: Այսպէս, օրինակ, Ղազարոսի յարութեան կանոնի մէջ, որ ընծայւում է Սահակ Պարթեւին, Քրիստոս ներկայանում է իբրեւ կենդանարար, աղբիւր կեանքի եւ անմահութեան. նրա դիմաց է մահ, գերեզման, եւ նա իր ամենազօր հրամանով սարսեցնում է դժոխքը եւ մեռելին յարութիւն տալիս: Ամենասովորական ձեւն է, սակայն, աստուածային եւ մարդկային յատկութիւնների հակադրութիւնը: Առնենք դրա համար Աւագ շաբաթի Թաղման կանոնը: Սրա

(1) «Սուրբն Մովսէս Քերթող [երգեաց]՝ զՆրագալուցի Ուրախացիրն, զկարգ Ծըննդեանն եւ զԱնթառամն, զՏեառնընդառաջին, զՅարութեան հարցն, զՎարդավառին», եւ ուրիշ երգեր:

առաջին երգը, որ «իւր սարօք» ընծայում են շարակնոցները Սահակ Պարթեւին, ինչպէս երեւում է, յօրինուած է տօնական հանդէսի, Թափօրի համար. դա սկզբից մինչեւ վերջը հիւսուած է դիտաւորեալ, որոշ նպատակով կազմուած հակադրութիւններից: Բանաստեղծն ամէն առաջին տողի մէջ դընում է աստուածային յատկութիւնները եւ ապա յաջորդ տողի մէջ ճարտարութեամբ յիշեցնում է թաղման պատմութիւնից մի այնպիսի վայրկեան, որ առաջին տողերի մէջ յիշուած աստուածային յատկութեան հետ մեծ հակադրութիւն է կազմում. որով եւ այս բանաստեղծութիւնը զարնում է լսողի ոչ այնքան զգայարաններին, որքան մտքին: Այս ձեւով, սակայն, կարողանում է երգիչն արտայայտել իր սքանչացումը եւ մի բաւական վեհ ու վսեմ բանաստեղծութիւն յօրինել.

Պարգեւատուն ամենեցուն
Այսօր խնդրի պարգեւս ի Պիղատոսէ.
Եւ արկողն զլոյս որպէս զօթոց՝
Հաւանի պատիլ ի Յովսէփայ:
Կենդանատուն ամենեցուն
Այսօր դնի ի նոր գերեզմանի
Եւ զանձն անմահութեան
Կնքի մատանեաւ քահանայից:

էջ 274

Այս կանոնի ամբողջ շարքի մէջ սոյնպիսի հակադրութիւններով, երբեմն նոյնութեան հասնող կրկնութիւններով, շարունակ յեղյեղւում են նոյն գաղափարներն ու նոյն դէպքերը: Այս կրկնութիւնները, որ ձանձրալի միատեսակութիւն են մտցնում ոչ միայն այս, այլեւ ուրիշ կանոնների մէջ, մեր այժմեան ճաշակով բանաստեղծութեան պակասութիւն են կազմում. բայց մի ժամանակ դրանք համարուել են հոգեւոր երգի արժանիքը: Կրկնութիւնը, եթէ ամբողջ կանոնի յօրինողը մէկ բանաստեղծ է, առաջանում է մի գլխաւոր պատճառից: Ինչքան էլ բանաստեղծն ընդունակ լինի, ինչպէս ասուեց վերեւում, նա չի կարող ութ–ինը երգ գրել նոյն նիւթի մասին եւ ամէն անգամ նոր գաղափարներ ու նոր ձեւեր ստեղծել: Նա ստիպուած է ճապաղել իր ասելիքը եւ մի երկար ու ձիգ կանոնի մէջ նոյն միտքը նոյն ձեւով զարգացնել շարունակ: Իսկ եթէ կանոնի տարբեր մասերը տարբեր բանաստեղծների գրած են, այդ ժամանակ կրկնութիւնը ծագում է այն ընդհանուր երեւոյթից, որ գտնում ենք միշտ բոլոր գրական տեսակների մէջ: Մտքի եւ ձեւի սկզբնական ճարտար գիւտերը մի հաստատուն կերպարանք են տալիս բանաստեղծութեան որոշ տեսակների, ստեղծւում է որոշ կաղապար, որից դուրս գալ չեն կարողանում յաջորդ բանաստեղծները: Այս դէպքում նմանողութիւնը նախորդներին՝ անխուսափելի է: Այսպէս մեր միջնադարեան աշխարհիկ երգիչները նման եւ նոյն ձեւերով գովում են գեղեցկութիւնը, վարդ ու գարուն: Կրօնական օրհներգութեան մէջ, սակայն, այս նմանողութիւնը երբեմն բառացի կրկնութեան է հասնում. որովհետեւ, ինչպէս հաւատքի համար որոշ, հաստատուն դաւանանքներ են ստեղծւում, նոյն-

պէս այդ արտայայտելու համար որոշ բառեր, դարձուածքներ ու բանաձեւեր են առաջ գալիս: Եւ այս երկուսը, եկեղեցու ընդունած դաւանանքն ու նրա արտայայտութեան պատրաստի կանխահաւան ձեւը, պարտաւոր էր բանեցնել ամէն երգիչ: Ուստի եւ նոյն նիւթի մասին գրող բանաստեղծները բնականաբար յաճախ նոյն դաւանաբանական խնդիրներն են շօշափում, նոյն ստորոգելիներն են ասում նման հակադրութիւններով, այսինքն բաղդատութիւն են դնում Քրիստոսի աստուածային եւ մարդկային յատկանիշների մէջ: Եւ այս հակադրութիւնները կազմում են մեր տէրունական տօների շարականներից շատի էութիւնը. որովհետեւ ծննդեան տօն լինի թէ թաղման, յարութեան տօն լինի թէ համբարձման, միշտ նոյն մարդեղութեան տնօրինական խորհուրդն է, որով Քրիստոս ե՛ւ Աստուած, ե՛ւ մարդ է: Այսպիսի հակադրութիւնների մէջ բանաստեղծների անձնական գիւտը միայն այն է, թէ ո՛ր աստուածային ստորոգելին, որ ընդունուած է դաւանաբանութեան մէջ կամ յայտնուած է Ս. Գրքում, Քրիստոսի ո՛ր մարդկային յատկութեան կամ արարքի հետ կը կապեն: Եթէ բանաստեղծը շնորհքով է, այս տեսակէտից, հարկաւ, մի նոր բան անում է, թէ չէ՝ նա կրկնում է իր նմանողութեան աղբիւրը: Դրա մի լաւ օրինակն է Մեծի շաբաթու նոյն թաղման կանոնը: Այստեղ ամբողջ կանոնի մէջ մի քանի անգամ պատմւում է նոյն բանը, թէ ինչպէս Յովսէփը Քրիստոսի մարմինը խնդրում է Պիղատոսից, պատանում է, դնում նոր գերեզմանի մէջ. թէ ինչպէս նրա գերեզմանը կնքում են, եւ զինուորները պահպանում: Այս պատմութիւնն ամբողջ կայ արդէն առաջին «օրհնութեան» մէջ՝ «Պարգեւատուն ամենեցուն», որ հին երգ է եւ, ինչպէս ասուեց, վերագրւում է Սահակ Պարթեւին: Նոյնը կրկնւում է եւ միւս երկու «օրհնութիւնների» մէջ, որ Ներսէս Շնորհալուն են վերագրում, եւ կանոնի միւս մասերի մէջ, որ դարձեալ Սահակ Պարթեւին են վերագրում, բայց տարբեր ձեւերով (1):

Թէ ե՛րբ է մեր հոգեւոր երգի մէջ մտել աստուածային եւ մարդկային յատկութիւններից այսպիսի հակադրութիւններ կազմելու արուեստը, այդ յայտնի չէ: Դա յատուկ հայոց հոգեւոր երգի մի ձեւ չէ, եւ իր բնաւորութեամբ այնպիսի է, որ ամենավաղ ժամանակներում եւս կարող էր գործադրուել եկեղեցական բանաստեղծութեան մէջ: Մեր շարականոցների աւանդութեամբ Ս. Սահակ Պարթեւին վերագրուած երգերի մէջ արդէն գտնում ենք այդ ձեւը չափազանց գործածուած: Այսպիսի բաղդատութիւնների տեսակների թիւը բաւական շատ չէ. բայց ինչքան էլ դրանք բազմազան լինին, որովհետեւ նոյնը յաճախ կրկնւում է ոչ միայն նոյն, այլեւ տարբեր կանոնների մէջ, ուստի եւ մեր հոգեւոր երգը տաղտկալի միակերպութիւն է ստանում: Բանաստեղծների երեւակայութիւնն ազատ չի գործում, նրանք կաշկանդուած են մնում մի անգամ արդէն ստեղծուած ձեւի մէջ եւ մեքենայօրէն նոյնը կրկնելով են յօրինում իրենց նոր երգերը:

---

(1) Մանրամասները՝ «Արարատ», 1912, Թիւ 12, էջ 1146 եւ հտն. Մ. Աբեղեանի յօդուածը:

5· Մեկնաբանութեան ազդեցութիւնը: — *Բացի դաւանաբանական ուսումից՝ չարականների նիւթի եւ արուեստի վրայ մեծապէս ազդել է նաեւ մեկնաբանութիւնը, որով Ս· գրքի պարզ իրողութիւններին եւ իրերին տրուած է խորհրդաւոր, սիմբոլիկ նշանակութիւն, եւ Աւետարանի այս կամ այն դէպքի հետ կապուած է Հին Կտակարանի որեւէ դէպք: Այս սքոլաստիկական բացատրութիւնները զարգանում էին մեկնութիւնների ու ճառերի մէջ· բայց որոշ մեկնութիւններ եւ նմանութիւններ ընդհանրացած լինելով՝ ամէնքից ընդունելի էին դառնում, եւ հոգեւոր բանաստեղծը պարտաւոր էր հաշուի առնել այդ: Ուստի եւ մեր հոգեւոր երգն իր ձեւով ու պատկերներով յաճախ կախուած է սքոլաստիկական մեկնութիւններից:*

*Այս տեսակէ չարականների գեղեցիկ օրինակ են Ս· Խաչի կանոնները, որոնցից Վերացման Խաչինը վերագրւում է* Սահակ Ձորափորեցի *նշանաւոր կաթողիկոսին* (678–703 *թ·*) (1), *որ Թէոդորոս Քռթենաւորի աշակերտըն է, մի ժողովրդական մեծ հռչակ վայելող անձ: Յայտնի է նրա մահուան մասին ժողովրդական զրոյցը, որ պատմում են մեր պատմագիրները: Խաչի պաշտամունքը 7րդ դարում շատ զօրացած էր Յիսուսի «Խաչափայտի» գերուելու եւ ազատուելու կապակցութեամբ, ուստի անհաւանական չէ, որ Սահակ Ձորափորեցին Խաչի համար երգեր յօրինած լինի: Դրանց մէջ Խաչի բոլոր նկարագիրն ու համեմատութիւններն առնուած են մեկնութիւններից եւ ճառերից: Այդ երգերն իրենց առանձին տների բովանդակութեամբ ու պատկերներով գրեթէ չեն տարբերւում, օրինակ, Դաւիթ Անյաղթի մի մեկնութիւնից եւ «Ներբողեանից ի ս· Խաչն»* (2) *: Կան նմանութիւններ նաև Սահակ Ձորափորեցու ուսուցիչ Թէոդորոս Քռթենաւորի «Ներբողեան ի ս· Խաչն» ճառին:*

*«Ս· Խաչը» յաճախ երգւում է իբրեւ «նշան յաղթութեան» թշնամիների դէմ, «գաւազան զօրութեան» հաւատացեալների համար: Ըստ ինքեան այս նմանութիւնն անյաջող չէ, բայց դա ոչ թէ բանաստեղծի մտքի եւ երեւակայութեան ծնունդն է, այլ լոկ նրբամիտ մեկնաբանի, կամ ճոռոմ ճառախօսի: Խաչի այդ սիմբոլիկ նշանակութիւնն իբրեւ զօրութեան գաւազան՝ ծագել է Մովսէս Մարգարէի գաւազանի մեկնութիւնից իբրեւ խաչի նշանակ: Այսպէս ս· Խաչն է եւ «մորենին վառեալ, որ ոչ այրիւր»: Շարականների մէջ, սակայն, ոչ միայն Խաչը, այլեւ Աստուածածինը նոյնպէս կոչւում է «մորենի անկիզելի», եւ այս երկուսի համար եւս դա Մովսէսի մորենու նմանութիւնն է, որ ծագում է մեկնաբանից: «Օրհնեալ ես, փայտ սուրբ, որ վերագոյն մորենւոյն առ Կոյսն բնաւորեցար սքանչելեօք», գրում է Դաւիթ Անյաղթը (էջ* 115) *եւ ապա աշխատում է ապացուցել, որ խաչի*

(1) «Սուրբն Իսահակ Ձորափորոյ՝ որ գնաց ընդդէմ տաճկաց՝ զխաչին, զեկեղեցւոյ, Զկենդանագիր անարատն, եւ զՏէր յերկնիցն՝ որ զարդարեաց»(Շարակնոցի առաջաբանում)։

(2) Կորիւն վարդապետի, Մամբրէ վերծանողի եւ Դաւիթ Անյաղթի Մատենագրութիւնք, Վենետիկ, 1833, էջ 103 եւ հտն·:

մորենին «բարձրագոյն գոյ հրաշից»: Մովսէսի մորենու չվառուիլը թերեւս այնքան զարմանալի չէ, որովհետեւ «դալարագոյն զօրութիւն թփոյն առ հուր աննիւթ տեւականութեան՝ թերեւս խորշի ի զարմանց», մինչդեռ խաչի փայտը «յոյժ դիւրակէզ եւ ցամաք» լինելով հանդերձ՝ «պահեցաւ անկէզ», չնայելով որ նրա վրայ էր աստուածային «հուրը» (Քրիստոս) եւ նըրանից «իբրեւ եռանդնոտ յիմանալի քրայէ՝ արտաշիկագոյն առու հրախառն սուրբ արեանն հոսմամբ ի վերայ իջեալ»: Դաւիթ Անյաղթը Մարգարէից մէջ մի տեղ յիշուած Եմմանուէլի կառքը, որ եւ քառադէմ կառք», այլեւ «բազմակն», մեկնաբանում է խաչի համար, եւ ահա բանաստեղծը երգում է·

Անպատումն կառք·
Անքննելի խորհրդոյն ընդունարան,
Ո՛վ սուրբ քառաթեւ,
Ի սաւառնաթեւից յարաթռելոց սրովբէից
Անտեսաբար ահիւ պատուեալ:

էջ 498

*Այսպէս եւ ս· Խաչը, թէ՛ ըստ մեկնաբանին եւ թէ՛ ըստ երգչին, մարգարէի տեսած եօթնաջահեան ոսկի աշտանակն է, Սաբեկայ ծառը, Մովսէսի անապատում բարձրացրած օձը, սրբութեան սեղան, աթոռ տէրունեան, արքայութեան բանալին, անապատի մէջ Իսրայելացոց առաջնորդող լուսոյ ամպը եւլն·, եւլն·: Բերենք ս· Խաչի երգերից մէկի այս տունը՝ «Ո՛վ քառաթեւ յուսածին, գերապանծ նիշ, կառուցող կենացն ամենից, միշտ բազկատարած առ քեզ է՛ն»: Այս միեւնոյնը կայ նաեւ Սահակ Ձորափորեցու ուսուցիչ Թէոդորոս Քռթենաւորի ս· Խաչի ճառի մէջ (1):*

*Մի անգամ որ բանաստեղծն այսպէս կաշկանդուած է միջնադարեան սքոլաստիկական մեկնութեամբ՝ նա այլեւս չէր կարող ազատ մտածութիւն ու թռիչք ունենալ, նոր ինքնուրոյն գաղափարներ դնել իր երգի մէջ· անհրաժեշտօրէն պէտք է զգացմունքի ջերմութիւնը փոխանակէր ցամաք ու սառն դատողութիւնը: Նա իր նիւթը մշակում է մեքենայաբար· չի կարողանում մեկնաբանների ընդունած պատկերների շրջանակից դուրս գալ եւ իր համար արտայայտութեան նոր, կենդանի զգացած ձեւեր ստեղծել: Նրա գործածած նմանութիւններն ու փոխաբերութիւնները չինծու են, մութ ու անբնական: Եւ այս ամէնի հետեւանքն այն է լինում, որ մեկնաբանական շարականների մեծ մասը բանաստեղծական ոչ մի արժէք չունին· դրանք Խաչի գրոյցների կցկտուր պատմուածքներ են երգի ձեւով:*

*Սակայն, թէեւ բանաստեղծների ճաշակն այսպէս փչացած է սքոլաստիկական մեկնաբանութիւնից, դարձեալ Խաչի երգերի մէջ կան մի քանի այնպիսիները, որոնք գեղեցիկ են իրենց խրախուսական աշխուժով: Խաչի հաւատքը շատ ջերմ է եղել, մանաւանդ 7րդ եւ 8րդ դարերում, երբ Հայոց*

---

(1) Աւետիքեան Գ· — Բացատր· շարականաց, էջ 531:

*երկիրը զարդարում էին խաչարձաններով։ Ուստի բանաստեղծի սրտից թըռչում են առ խաչը ոգեւորութեան խօսքեր, որոնք լի են յափշտակիչ քնարականութեամբ․*

Զօրութիւն սուրբ խաչի՛ քո, Քրիստոս,
Որ կանգնեցեր ի փրկութիւն աշխարհի,
Սա՛ պահեսցէ զմեզ յամենայն փորձութենէ։

*էջ* 488

1․ Գաւազան զօրութեան
Զխաչ քո՛ ետուր մեզ, Քրիստոս․
Եւ սովա՛ւ յաղթեսցուք անօրէն թշնամւոյն։
2․ Սա՛ է զէն յաղթութեան՝
Սրբեալ արեամբ որդւոյն Աստուծոյ․
Եւ սովա՛ւ յաղթեսցուք անօրէն թշնամւոյն։

*էջ* 491

*Դաւանաբանութիւնն եւ մանաւանդ մեկնաբանութիւնն առանձնապէս ազդել են նաեւ Աստուածածնի երգերի վրայ, որոնք բաւական մեծ տեղ են բռնում մեր Շարակնոցի մէջ։ Այստեղ եւս գրեթէ բոլոր պատկերներն ու նմանութիւններն առնուած են մեկնարաններից։ Սուրբ Կոյսն է՝ երկին վեհագոյն, քերովբէ հողեղէն, սիւն հրեղէն, լուսոյն աշտարակ, սափոր ոսկի երկնային հացին, ամպ թեթեւ, գեղմն իմանալի․ «Զքեզ, երկնային դուռն, զոր ետեսն Եզեկիէլ, եւ սափոր, զոր ծանեաւ Գեդէոն, սերովբէ հողեղէն վեհագոյն քերովբէից, օրհնութեամբ զքեզ Աստուածածին, մեծացուցանեմք»։ Սրբից երգերի մէջ նա է խորան լուսոյ, անապական տաճար, մորենի անկիզելի եւլն․, եւլն․, բոլորը մեկնաբանների յօրինած բացատրութիւններ եւ ոչ թէ բանաստեղծների երեւակայութեան արդիւնքը։ Դրանց մէջ առանձին տեղ է բռնում լուսոյ պատկերը։*

6․ Միհրի կրօնի ազդեցութիւնը։ — *Քրիստոնէութեան առաջին չորս դարերում Պարսից արեգակի եւ լուսոյ աստուած Միթրայի (Միհրի) կրօնը, որ շնորհիւ իր զրաւիչ միստերիաների տարածուած էր նաեւ Հռոմէական ընդարձակ կայսրութեան մէջ, ազդում է քրիստոնէական դաւանանքի կազմակերպութեան վրայ։ Նիկիական հաւատոյ հանգանակի մէջ Քրիստոս կոչւում է «Աստուած յԱստուծոյ, լոյս ի լուսոյ»։ Քրիստոնեաները, լուսոյ պաշտամունքի ազդեցութեամբ, աղօթքի ժամանակ երեսները դարձնում էին դէպի արեւելք (աղօթարանը), լուսոյ միստիկական աշխարհը, որտեղից ծագում է արեգակը, որի հետ նոյնանում է Քրիստոս՝ «արդարութեան արեգակը»։ Նոյն ձեւով արեւմուտքը սիմբոլաբար համարւում է խաւարի, ուրեմն եւ սատանայի բնակարան։ Մկրտութեան ժամանակ մկրտուողն ամենից առաջ պէտք է երեսը դէպի արեւմուտք դարձրած՝ հրաժարուէր խաւարի իշխանից, հեթանոսութիւնից («Հրաժարիմք ի սատանայէ»)․ ապա դառնալով դէպի արեւելք, նա խոստանում էր Քրիստոսի, արդարութեան արեգակի, ծառայ դառնալ։ Եւ այսպիսով՝ լոյս, արեգակ, տիւ, հուր, կեանք*

եւ անապականութիւն, ցնծութիւն, եւ հակառակը՝ դժոխք, մէղ ու գիշեր, տրտմութիւն, խաւար, մահ ու ապականութիւն՝ առանձին տեղ են բռնում քրիստոնէական հաւատքի մէջ։ Նորոգւում է քրիստոնէական հաւատալիքի մէջ լուսոյ եւ խաւարի հին կռիւը սիմբոլաբար իբրեւ իմանալի կամ գիտութեան լուսոյ կռիւ ընդդէմ անգիտութեան կամ կռապաշտութեան խաւարի։

Հոգեւոր երգը, լինելով արտայայտութիւն եկեղեցու ընդունած դաւանութեան, այստեղ եւս իր մէջ անդրադարձնում է իմանալի լուսոյ այս պաշտամունքը. մեր շարականների մոտիւների մի մեծ մասը, առանձնապէս Աստուածածնի, մասամբ եւ ա(յ)րուՆական շարականների, կազմուած են այս լուսոյ հաւատալիքի վրայ։ Անշուշտ, այս ամէնը հեթանոսական կրօնի ազդեցութեան տակ է ծագած, բայց առանձնապէս հայկական չէ։ Մեր հոգեւոր երգերի այս կողմը միայն թերեւս նրա համար աւելի զարգացած է, որ աւելի համապատասխան է եղել մեր հին հաւատալիքներին, ինչպէս որ նոյնը գտնում ենք մեր արդի ժողովրդական հաւատքի մէջ եւս։ Դա կազմում է քրիստոնէական դաւանաբանութեան մի մասը, որ գեղեցիկ արտայայտուած ենք գտնում Երրորդութեանը նուիրուած մի դաւանաբանական շարականի, «արեւագալի» երգի մէջ, որ ասւում է այն ժամանակ, երբ ծագում է առաւօտեան լոյսը։ Երգիչը հոգով վերանալով լուսոյ միստիկական աշխարհը եւ դիմելով լուսոյ Արարչին՝ խնդրում է, որ իր հոգու մէջ ծագի իմանալի լոյսը.

Լո՛յս, արարի՛չ լուսոյ, առաջին լոյս,
Բնակեալդ ի լոյս անմատոյց, հայր երկնաւոր,
Ի դասուց լուսեղինացն օրհնեալ,
Ի ծագել լուսոյ առաւօտուս՝
Ծագեա՛ ի հոգիս մեր զլոյս քո իմանալի։

Էջ 596

Ըստ այսմ Քրիստոս է «լոյս ի լուսոյ ծագումն, արեգակն արդար», իմանալի լոյս, արփիական լոյս, աղբիւր լուսոյ եւ ճառագայթ անշիջանելի լոյս։ Նա է «արկողն զլոյս որպէս զօթոց»։ Նա իր ծննդով իբրեւ արեգակ ծագում է հերքելու անգիտութեան խաւարը եւ լուսաւորելու ու կեանք տալու արարածներին։ Այսպէս, օրինակ, Մովսէս Քերթողին վերագրուած երգերի մէջ.

Ի հօրէ՛ ծագեցար
Լուսաւորել զարարածս,
Արդարութեա՛ն արեգակն.
Տէ՛ր, փա՛ռք քեզ։

Էջ 24

Լոյս ի լուսոյ, ծագեալ ի հօրէ,
Եւ լուսաւորեաց զտիեզերս...

Էջ 27

*Քրիստոս է «իշխան մահու եւ կենաց»: Նրա ամենազօր հրամանից թողում է մահը, դժոխքը սարսափում ու պարտւում է, ապականութիւնը լուծւում, եւ խափանւում մահու իշխանութիւնը: Նա ոչ միայն լոյս եւ կեանք է, այլեւ «Հուրն Աստուած», որ իր աստուածային կրակը տարածում է ահասարակ բոլոր տիեզերքի մէջ, բարկութեամբ գոռալով իջնում է «ի ստորին կողմն երկրի», դժոխքը, այդ մահու խաւարային բանտը, եւ այրում է նրա դռները: Նա ինչպէս մի պատերազմող յաղթական թագաւոր իր հզօր կարողութեամբ քաջութեամբ կռւում է բռնակալ վիշապի հետ, ջարդում է նրա գլուխը, եւ կամ կապում, գերում է այդ հզօրին, հրդեհելով ու աւերելով նրա ամրութիւնները եւ այնտեղ փակուածներին ու կապուածներին արձակում եւ ազատութիւն է շնորհում: Դա արդէն հին արեգակի եւ վիշապի, լուսոյ եւ խաւարի կռիւն է, որ իմանալի կերպով փոխադրուած է քրիստոնէութեան մէջ:*

*Մի անգամ որ Քրիստոս ներկայանում է իբրեւ լոյս եւ արեգակ, բնականաբար Ս. Կոյսն եւս կոփարանւում է իբրեւ «մայր լուսոյ».*

Այսօր աստեղք եւ լուսինն
Ընդ արեւու հրճուելով՝
Գովեն զկոյսն ի հօրէ
Ցաւուր ծննդեան լուսոյ մօրն:

**Էջ 5**

*Նրա պատկերը, սակայն, աւելի թանձրանում է, եւ նա դառնում է ինչպէս «լոյս, երկին վեհագոյն, լուսաւոր երկնակամար, տաճար լուսոյ, առաւօտ խաղաղութեան եւ արուսեակ զուարթարար, պայծառ երկինք եւ ամպ լուսեղէն, արեւելք», որից ինչպէս մի արշալոյսից ծագում է արեգակը եւ լուսաւորում, ինչպէս որ նոյնը գտնում ենք մեր ժողովրդական աղօթքների մէջ.*

Խորանմայարկ, կամարանման
Ցոլինեցար սուրբ կոյս Աստուածածին···
Աստուածածին, խորան լուսոյ
Անվայրափակ արփւոյն կենաց·
Որ եղեր արեւելք
Արեգականն արդարութեան···

**Էջ 469, 17**

*Աստուածածինը համեմատելով ամպի հետ՝ իր մէջ ընդունում է հին հաւատալիքների ուրիշ կողմեր եւս. «Ամպ թեթեւ եւ լուսաւոր, որ զանձրեւսն կենաց ի քեզ հեղեալ ի յերկնային ծովէն, հոսեցեր ի յերկիր ծարաւուտ»: Պատկերները երբեմն առնւում են ծառ ու ծաղկից՝ «Աստուածատունկ խնկաբեր ծառ յանուշահոտ բուրաստանէն, որ ի գնացս հոգւոյն վտակաց տնկեցար եւ զանմահութեան պտուղն ի ժամու ետուր մեզ».*

Ո՜վ գերահրաշ ծաղիկ, բուրեալ յեդեմայ,
Հոտ անմահութեան ծննդոցս եւայի...

էջ 58

*Ինքն Աստուածածինը պատկերացւում է անձամբ իբրեւ մի «մարգարտափայլ, ծիրանազգեաց բերկրեալ սուրբ կոյս, քան զերկինս բարձրագոյն եւ քան զարեգակն պայծառագոյն», ամբողջը լոյս, որի շուրջը փարում է համատարած լոյսը, որ վրան հագած ունի արեգակը «եւ ընդ ոտիւք լուսին ստուերատեսակ», եւ որին «ազգք եւ ազինք անդադար երգով մեծացուցանում» են.*

Զքե՛զ, ամէնօրհնեալ Աստուածածին,
Մա՛յրդ լուսոյ եւ առագաստ Աստուծոյ բանին,
Մեծացուցանեմք:
Զքեզ, պայծառ երկինք եւ ամպ լուսեղէն,
Ծնող արարչին եւ մորենի անկիզելի,
Մեծացուցանեմք:

էջ 59

*Թէպէտ եւ հին հաւատալիքների արձագանգներն այսպէս մէկ մէկ լսելի են լինում մեր հոգեւոր երգերի մէջ, բայց եւ այնպէս դարեր շարունակ ամենայն օր եւ օրը մի քանի ժամ երգուելով՝ այդ երգերը վերջ ի վերջոյ հասնում են իրենց նպատակին: Դրանք, միացած եկեղեցական գրականութեան միւս տեսակների հետ, ոչ միայն քրիստոնէութիւնը պաշտպանում են Զրադաշտի եւ Մահմեդի կրօնների դէմ, ոչ միայն Ս. Գրքի, յատկապէս Աւետարանի պատմութիւնները ժողովրդականացնում են եւ նոյնիսկ դաւանութիւն սովորեցնում, այլեւ կրօնական եռանդը մեծացնում են մերթ ուրախ երգերով, սքանչացման ցնծալից փառաբանութիւններով, եւ յաճախ տխուր ողբերով, լալահառաչ պաղատանքներով:*

7. Հոգեւորի երգերի ոտանաւորը: — *Որքան միակերպ են հոգեւոր երգերի բովանդակութիւնն եւ արտայայտութեան ձեւերն ընդհանրապէս, այնքան աւելի բազմազան են դրանց մէջ գործածուած ոտանաւորի չափերը: Այստեղ գտնում ենք արձակին մօտեցող կտորներից մինչեւ մեր ամենաբարձր երաժշտական ոտանաւորները: Այս վերջինները վերաբերում են մեր գրականութեան յաջորդ շրջանին, երբ սկսում են շարականների համար կիրառել աշխարհիկ բանաստեղծութեան չափերը: Մեր հոգեւոր երգերի, ինչպէս եւ մեր բանաստեղծութեան ամէն տեսակի ոտանաւորները, լեզուի առոգանութեան տեսակէտից, մանրամասն ուսումնասիրուած են սրա հեղինակի մի ուրիշ աշխատութեան մէջ* (1): *Այստեղ հարկաւոր է առնել միայն հետեւեալը:*

*Մի ժամանակ կարծում էին, թէ մեր շարականներն արձակ յօրի-*

---

(1) Հայոց լեզուի տաղաչափութիւն (մետրիկա), ուսումնասիրեց պրոֆ. դ-ր Մ. Աբեղեան, Երեւան, 1933. հոգեւոր երգերի համար՝ էջ 320–349, 352, 357–368, 380–385:

*նուածք ունին. որովհետեւ աշխատում՛ էին դրանց մէջ գտնել 11–րդ դարից ի վեր գործածական դարձած մեր չափերը, եւ չէին գտնում։ Նոյն կարծիքը երկար ժամանակ եղել է նաեւ յունական հոգեւոր երգերի վերաբերմամբ։ Շարականների տաղաչափութեան հիմունքը նոյնպէս վանկերի թիւն և ռիթմական չեչտերն են կազմում, միայն աւելի մեծ ազատութեամբ, քան մեր սովորական ոտանաւորների մէջ։ Բանաստեղծութիւնը բաժանւում է, ինչպէս յունականում՝ «տների»* («οἶκοι» = *տուն*), *որոնց մէջ տողերի թիւն առհասարակ որոշ է, որովհետեւ տները երգւում են միեւնոյն ընդհանուր եղանակով։ Տողերի մէջ, սակայն, ռիթմական ոտքերի, կամ թէ անդամների թիւը, ինչպէս եւ սրանց վանկերի թիւը, տատանւում է յաճախ։ Այսպիսով կազմւում են սովորաբար ազատ ոտանաւորներ։ Օրինակ՝ եամբական պարզոտնեայ ազատ ոտանաւորներ են հետեւեալները.*

| | | | | |
|---|---|---|---|---|
| Ուրա՛խ լեր, սո՛ւրբ եկե՛ղեցի՛, | =4 | ոտք, | 8 | վանկ |
| Բանզի՛ Քրիստո՛ս արքա՛յն երկնի՛ց | =4 | » | 8 | » |
| Այսօ՛ր պսակեա՛ց ըզքե՛զ խաչի՛ւն իւրո՛վ | =5 | » | 10 | » |
| Եւ զա՛րդարեա՛ց զամո՛ւրքս քո՛ | =4 | » | 8 | » |
| Սքա՛նչելի՛ փառօ՛ք իւրո՛վք։ | =4 | » | 7 | » |

էջ 462

*Այսպէս եւ այս երգի չափունակութեան մէջ։*

*Մէկ վանկը երկարելով կարող է անցնել երկու վանկի տեղ, ինչպէս, օրինակ, հետեւեալ եռատուն բանաստեղծութեան մէջ.*

| | | | | |
|---|---|---|---|---|
| 1. *Հա՛յր*, | =1 | ոտք, | 1 | վանկ |
| Բազո՛ւմողո՛րմ, | =2 | » | 4 | » |
| Խոստո՛վանի՛մ առ քե՛զ | =3 | » | 6 | » |
| Որպէ՛ս *դանա՛ռա՛կ* որդի՛ն | =4 | » | 7 | » |
| *Թո՛ղ* ինձ ը՛զմեղս ի՛մ, | =3 | » | 5 | » |
| Եւ ո՛ղորմեա՛։ | =2 | » | 4 | » |
| 2. *Տէ՛ր*, | =1 | ոտք, | 1 | վանկ |
| Որ զը՛թացա՛ր | =2 | » | 4 | » |
| Ի կի՛նն քանա՛նացի՛, | =3 | » | 6 | » |
| Գըթա՛ եւ յի՛ս, | =2 | » | 4 | » |
| Ի մե՛ղաւո՛րս | =2 | » | 4 | » |
| Եւ ո՛ղորմեա՛։ | =2 | » | 4 | » |
| 3 *Տէ՛ր*, | =1 | » | 1 | » |
| Որ դա՛րձուցե՛ր ըզմա՛քսաւո՛րն | =4 | » | 8 | » |
| Ի գի՛տութի՛ւն ճըշմա՛րտութեա՛ն | =4 | » | 8 | » |
| Դարձո՛ եւ զի՛ս, | =2 | » | 4 | » |
| Ըզմո՛լորեա՛լս, | =2 | » | 4 | » |
| Եւ ո՛ղորմեա՛։ | =2 | » | 4 | » |

էջ 118

Կան եւ ուրիշ ձեւեր անապեստեան ոտքերով եւ անդամաւոր կազմութեամբ: Ինչպէս կարելի է տեսնել, տողերի մէջ ոտքերի ու վանկերի թիւը հաւասար չէ. ուստի դրանք կարող չեն կատարելապէս նոյն եղանակի կրկնութեամբ երգուել, այլ բանաստեղծ-երգիչը հնարաւորութիւն ունի ազատ շարժուելու՝ հետեւելով իր երաժշտական զգացումին: Կան բազմաթիւ շարականներ եւս, որոնց տների տողերը կազմուած են հաւասարաթիւ ռիթմական ոտքերից, կամ թէ անդամներից, բայց սրանց մէջ էլ վանկերի թիւը հաւասար չէ: Եւ այդ անհաւասարութիւնը կազմում է շարականների ոտանաւորների առանձնայատուկ գեղեցկութիւնը բազմազանութեամբ: Այդպիսով մեր այդ հոգեւոր երգերի մէջ տները մերթ հաւասար երկար տողերով են ընթանում, ծանր ու լուրջ, մերթ կարճ ու փոքրիկ տողերով, արագ ու թեթեւ սլանում: Եւ այդ է հէնց այդպիսի ոտանաւորների ռիթմական հրապոյրը, մանաւանդ երբ այդ շարժուն խաղացքը համապատասխանում է բովանդակութեանը: Ինչպէս սկզբում ասուեց, այդ ոտանաւորները յօրինուած են ոչ թէ կարդալու համար, այլ հմուտ ճարտարապետութեամբ կերտուած հոյակապ տաճարների կամարների տակ, աղօթաւոր բազմութեան առաջ, երգելու համար: Այդ ժամանակ այդ երգերը զօրեղ ազդեցութիւն էին գործում, քանի որ իրար միանում էին եկեղեցական ճարտարապետութիւն, կրօնական բանաստեղծութիւն ու երաժշտութիւն եւ հաւատացեալների սրտաբուխ օրհներգութիւն կամ լալագին աղօթք հառաչանքով ու հեծութեամբ: Բայց լաւագոյն հոգեւոր երգերի ընթերցումն էլ, նոյնիսկ այժմ, ազդում է, թէպէտ եւ դրանց գոյն ու թռիչք տուողը եղանակն էր:

Գրականութեան պատմութեան մէջ պէտք էր որոշել շարականների բովանդակութեան եւ ձեւի, այս դէպքում չափածոյութեան, միասնաբար կրած փոփոխութիւնները կամ զարգացումը: Բայց այդ կատարել հնարաւոր չէ այժմ, որովհետեւ հոգեւոր երգերի ոտանաւորների տեսակների զարգացման ընթացքը կապուած է այդ բանաստեղծութեան պատմութեան հետ, իսկ այս հին շրջանում յօրինուած մեր հոգեւոր երգերի ոչ հեղինակները եւ ոչ դրանց յօրինման ժամանակը դեռ պարզուած չեն: Ապա՝ մի հին բանաստեղծութիւն, ինչպիսին է մերը, որ շարունակ հաղորդակից է եղել այլ ազգերի բանաստեղծութիւններին, բնականաբար պէտք է ընդունէր ուրիշներից եւ գործադրէր զանազան չափեր: Այս խնդիրն եւս, որ կարեւոր է պատմութեան համար, դեռ չի պարզաբանուած: Եւ վերջապէս՝ ինչ որ աւելի եւս կարեւոր է՝ մեր հոգեւոր երգերը յօրինուած են, ինչպէս ասուեց, ոչ թէ կարդալու համար, այլ երգելու, եւ ամենայն հաւանականութեամբ երգուելով են յօրինուած: Ուստի դրանց ոտանաւորների կազմութեան եւ զարգացման ընթացքի համար՝ գերակշիռ նշանակութիւն է ունեցել երգի եղանակը: Ցաւօք, դեռ բոլորովին անծանօթ է մեր հին երաժշտութիւնը: Շարակնոցներում բառերի վրայ դրուած բազմաթիւ խազերի ուսումնասիրութիւնը դեռ մնում է անելու եւ հին հայկական հոգեւոր եղանակները յայտաբերելու: Այս պայմաններում կարելի չէ այս պատմութեան մէջ պարզել, թէ ի՛նչպէս, ի՛նչպիսի ժամանակաբանութեամբ եւ ո՛ր բանաստեղծնե-

*րի ձեռով առաջ են եկել եւ զարգացել մեր Հոգեւոր երգերի մէջ գործածուած չափերը: Կոմիտասի «Անձինք նուիրեալք» օրհներգութեան եւ Դաւթակի քերթուածին մէջ գործածուած չափը տեսանք իր տեղում:*

*Յանգի գործածութիւն չկայ Հոգեւոր երգերի այս Հին շրջանում, բայց կայ «ակրոստիք» ասածը, որ եկեղեցական բանաստեղծութեան կարեւոր առանձնայատկութիւններից մէկն է: Դրանով գլուխների կամ տողերի սկզբում ծայրերի տառերը մի որոշ դիտումով կապւում են իրար հետ: Այդպիսի «ծայրակապերի» կամ «գլխակապերի» մի քանի տեսակները կան, որոնց գործածութիւնը Հայոց գրականութեան մէջ երեւում է յաջորդ շրջանում: Յունական եկեղեցական բանաստեղծութեան մէջ ամենից վաղ կիրառուել է «այբբենական ծայրակապը», այն է՝ բանաստեղծութեան տների առաջին տողերը սկսւում են այբբենական կարգով: Այսպէս յօրինուած են մեզանում Կոմիտասի «Անձինք նուիրեալք» երգը, ինչպէս եւ Դաւթակ ճարտասանի քերթուածը, որ տեսանք վերեւում: Այսպիսի ծայրակապը մեծ ազդեցութիւն է ունեցել երգերի ծաւալի վրայ, քանի որ ամբողջ 36 տուն պէտք էր յօրինել: Դա այժմ բանասիրական նշանակութիւն միայն ունի: Դրանով որոշւում են տները, կամ տողերը, կամ նաեւ Հեղինակների անունները: Այսպէս, օրինակ, Ս. Խաչի շարականներից մէկի («Կանոն երրորդ աւուրն՝ Սրբութիւն սրբոց շնորհեցեր») տների սկզբի տառերը կազմում են՝ «Ստեփաննոս»: Դա կարող էր արգելք լինել որեւէ տան կամ տողի դուրս ընկնելուն, իսկ երբ երգից որեւէ տուն դուրս է ձգուել, դրանով իմացւում է: Մեր շարակնոցների մէջ կան մի քանի երգեր, որոնցից մնում է միայն Ա–Ե տները. մնացածները կրճատուած են երգի երկարութեան պատճառով: Օրինակ՝ մեր լաւագոյն, թերեւս Հնագոյն մի Հոգեւոր երգից («Ապաւինեցաք ի Խաչ քո») Շարակնոցի մէջ առնուած են միայն Ա–Ե տները, բայց ուրիշ ձեռագիրների մէջ կան նաեւ դրա մի քանի այլ տները*(1):

## ԽԱՂԱՂ ՇԻՆԱՐԱՐՈՒԹԵԱՆ ԴԱՐ

## ՍՏԵՓԱՆՈՍ ՏԱՐՕՆԵՑԻ ԱՍՈՂԻԿ

1. Խաղաղութեան դարաշրջան:— *Աշոտ Բ.ի եղբայր Աբաս Թագաւորը* (929–953 *թ.*), *ըստ Ստ. Տարօնեցու* (2), *իր քաղցր բարքով եւ քաջազօր զօրութեամբ յաղթող է հանդիսանում շուրջանակի եւ Հայոց աշխարհի համար շինութեան ու խաղաղութեան պատճառ է դառնում: Խաղաղութիւնը յարատեւում է մի հարիւրամեակ եւ աւելի, երբ շինարարութիւնն իր առանձնապէս փայլուն զարգացումն է ունենում Հայաստանում: Դա մեր ֆէոդալիզմի ամենաբարեբախտ շրջանն է: Սակայն որ «խաղաղութեան» մասին*

(1) Աւետիքեան Գաբրիէլ, «Բացատրութիւն շարականաց», Վենետիկ, 1814, էջ 542:

(2) Ստեփաննոսի Տարօնեցւոյ Ասողկան Պատմութիւն տիեզերական, Ս. Պետերբուրգ, 1885, էջ 171:

է խօսում, չպէտք է բացարձակ մտքով հասկանալ այն: Եղել են երբեմն կարճատեւ յարձակումներ հարեւան երկիրներից գլխաւորապէս ասպատակութիւնների եւ յափշտակութիւնների համար, բայց դրանք շուտով ետ են մղուել: Երկիրը բաժանուած էր մի շարք ինքնագլուխ հայկական իշխանութիւնների միջեւ, որոնց մի քանիսը թագաւոր անունն էին կրում — Բագրատունի Արծրունի, Սիւնի թագաւորներ. Բագրատունիները՝ նոյնիսկ Անու, Կարսի եւ Տաշիրքի թագաւորներ. մի ժամանակ նաեւ եռեակ Արծրունի թագաւորներ, եւ ուրիշները: Կային նաեւ մահմեդական բռնակալներ: Արեւմուտքում տիրակալ էին բիզանդական կայսրները: Այդ մանր իշխանութիւնները երբեմն գժտւում էին միմեանց հետ եւ նոյնիսկ զէնքի էին դիմում, բայց ընդհանրապէս հաշտ էին մնում, եւ հայ իշխանները մրցակցում էին երկրի շինարարութեան եւ մշակոյթի զարգացման համար: Երկրում կրօնական հալածանք չկար մահմեդականների կողմից, բայց Արեւմուտքում, կայսրութեան պատկանող մասում, յոյների կողմից լինում էին ոտխմունքներ, որ քաղկեդոնականութիւն ընդունեն հայերը: Դրա հետեւանքով շատ հայ վանականներ Արեւմուտքից տեղափոխւում են հայկական իշխանութիւնները եւ հիմնում են նոր վանքեր Շիրակում, Սիւնիքում եւ այլուր: Հարիւրամեակը չլրացած՝ սելջուկեան թուրքերն արշաւում են երկրի հարաւային մարզերի վրայ, միւս կողմից՝ բիզանդական կայսրներն արեւմուտքից, հարաւից ու հիւսիսից գրաւումներ են անում: Այնուամենայնիւ խաղաղութիւնն ընդհանրապէս դեռ չի վրդովւում Հայաստանի միջնաշխարհում եւ արեւելեան կողմերում, եւ երկիրը շարունակում է բարգաւաճել տնտեսապէս ու կուլտուրապէս:

2. Կենսագրական տեղեկութիւններ Ստ. Տարօնացու մասին եւ նրա գրած Պատմութիւնը:— 10-րդ դարի խաղաղ շինարարութեան եօթանասունեւհինգ տարիների պատմիչն է Ստեփանոս Տարօնեցին, որ կոչւում է Ասողիկ (երբեմն նաեւ Ասողնիկ): Այդ մականունը, ինչպէս կարծում են, նա ստացած պիտի լինի լաւ երաժիշտ, երգիչ (երգ ասող) եղած լինելու համար. բայց հաւանական է՝ լաւ «ասմունք» ունեցած լինելու համար: Նա ապրել է 10-րդ դարի երկրորդ կէսին եւ 11-րդի առաջին կէսին: Անանիա Մոկացի կաթողիկոսի (943—965 թ.) ժամանակ ծաղկած վանքերի եւ նշանաւոր վարդապետների մասին գրելիս՝ նա ասում է. «Զոմանս ի սոցանէ ի ծերութեան իւրեանց՝ ի տղայութեան մերում տեսաք աչօք մերովք, ճաշակելով ի քաղցր ճաշակաց բանից նոցա» (էջ 178): Նա իր «Տիեզերական պատմութիւնը» գրել է Սարգիս կաթողիկոսի (992—1019) հրամանով, միաժամանակ եւ այդ կաթողիկոսի կարգադրութեամբ զբաղուած է եղել վանքերը շրջագայելով եւ եկեղեցու հոգսերով: «Յարածուփ շրջանք եւ հանապազորդեան հոգք եկեղեցւոյ, որ ըստ հրամանի ձեր, — գրում է նա իր գրքի վերջում (էջ 285), խօսքն ուղղելով կաթողիկոսին, — ոչ թողացուցանէին մտաց իմոց պետեղել ի պատշաճ յօրինուած բանիս. զոր կրեմ զփառս եւ զանարգանս, զգովութիւն եւ զպարսաւանս ի ծանրասիրտ եւ ի խստապարանոց ազգէս մերմէ, ի՛ բարեխոհ եւ ի բղջախոհ մարդկանէ»: Պատմու-

*թիւնը գրել վերջացրել է 1004 թուականին. «Այս ամ երեքտասան է Հայրապետութեան Տեառն Սարգսի, — գրում է նա այդ թուականի համար, — տիեզերափայլ եւ մեծաշնորհ հովուապետի, զորոյ զհրամանն ընկալեալ՝ ի վեր քան զկար իմ՝ զհնազանդութեան օրէնսն կատարելով՝ աղքատիմաց բանիւք՝ զբանս յիշատակիս գրեցի» (էջ 285)։ Նա մեռել է «ծայրագոյն» ծերութեան տարիքում՝ ըստ Գրիգոր Մագիստրոսի հաղորդածին։*

*Ստեփանոս Ասողիկն եղել է իր ժամանակի բանիբուն վարդապետներից մէկը։ Նա լաւ տեղեակ է Ս. Գրքին, հմուտ է աստուածաբանական խնդիրներին, որոնցով սիրում է զբաղուել. հակառակորդ է քաղկեդոնականներին, որոնք սկսել էին ոտնձգութիւններ եւ հալածանքներ անել հայերի դէմ Արեւմուտքում։ Նա սիրող է վանական կեանքի եւ նոյնիսկ ճգնաւորութեան։ Կիրակոս գիտնականի համար գրում է, թէ բնակւում էր Նիգ գաւառի Թեղենիս կոչուած անապատում, «առ հօր Երեմիայի ճգնաւորին Քրիստոսի եւ ընկերակցին իմոյ» (էջ 186)։ Ինչպէս վերեւում բերուած հատուածից երեւում է, Ասողիկ ունեցել է իրեն գովող բարեկամներ եւ անարգողներ ու պարսաւողներ. վերջիններից չատ դժգոհ է եղել Պատմիչը, բայց չի յայտնում, թէ ինչի՛ց է առաջացել այդ անարգանքն ու պարսաւը։ Գալով նրա երկին, պէտք է ասել, որ նա հետեւող է պարզ ոճին, չի սիրում խրթնութիւն եւ զարդարուն պերճաբանութիւն, չի խճողում իր գրութիւնը բազմաբանութեամբ եւ ճոռոմութեամբ, չատ ճիշտ բնորոշելով ինքն իրեն ըստ իր ժամանակի հայեացքի, թէ յօրինել է «աղքատիմաց բանիւք»։*

*Ասողիկի «Տիեզերական պատմութիւնը» բաժանուած է երեք հանդէսի։ Առաջինի նիւթը մի համառօտ պատմութիւն է, յաճախ լոկ ժամանակաբանական մի ցանկ Իսրայելացոց, Պարսից, Պտղոմեան, Հռոմայեցոց, Ասորեստանցոց, Մարաց, Պարթեւաց եւ Հայոց թագաւորների։ Երկրորդ հանդէսը պարունակում է Հայոց կարճառօտ պատմութիւն Տրդատից մինչեւ Աշոտ Ա., միաժամանակ եւ նա գրում է կաթողիկոսների մասին սկզբից մինչեւ Գառնեցի Գէորգ կաթողիկոսը։ Բացի այդ՝ նա համառօտակի խօսում է նաեւ Պարսից Սասանեան թագաւորների, Արաբացոց ամիրապետների եւ Յունաց կայսրների մասին՝ դնելով նրանց անունների ցանկը։ Այս երկու հանդէսի նիւթն Ասողիկը քաղում է, յաճախ բառացի, առանց քննութեան, «ի պատմագրական տառից», նախորդ պատմագիրներից, որոնց անունները եւ յիշատակում է գրուածքի սկզբում։ Նա երբեմն միեւնոյն դէպքը երկու անգամ մէջ է բերում տարբեր կերպով, նայելով իր աղբիւրներին(1)։*

*Երրորդ հանդէսը, որ հեղինակը կոչել է «Պատմութիւն ժամանակաց ինքնախօսութեան», պարունակում է 117 տարուայ պատմութիւն Աշոտ Ա.ից*

---

(1) Օրինակ՝ էջ 74 պատմում է գրերի գիւտի մասին ըստ Կորիւնի եւ ըստ Ղ. Փարպեցու եւ սրանց անուններն էլ յիշում է. յետոյ՝ էջ 139 եւ հտ. ուրիշ աղբիւրից առնելով գրում է. «Ցաւուրս սորա [Սահակայ] դպրութիւն Հայոց լեզուիս ԻԹ գիր ի Դանիելէ փիլիսոփայէ Ասորւոց կարգեցաւ, իսկ զեօթն գրոցն պակասութիւն Մեսրովբ երանելի Տարօնեցի խնդրուածովք յԱստուծոյ առնու»։

մինչեւ Գագիկ Ա. Թագաւորի ժամանակները: Սրա առաջին գլուխների պատմութիւնն եւս, որ վերաբերում են առաջին երեք Բագրատունի թագաւորներին, նոյնպէս քաղուած է նախորդ պատմագիրներից: Ստ. Տարօնացու իսկական «ինքնախօսութիւնն» սկսւում է Աբաս Թագաւորի ժամանակից (929 թ.) եւ հասնում է մինչեւ 1004 թուականը Գագիկ Ա.ի տասնուհինգերորդ տարին: Այստեղ նա իսկապէս մի ժամանակագրութիւն կամ տարեգրութիւն է յօրինում: Առանց որեւէ ներքին կապակցութեան, յաճախ միեւնոյն գլխի մէջ, խառն, իրար ետեւից տարիների կարգով եւ տարիները յիշատակելով, մէջ է բերում ամէն տեսակի դիպուածներ Հայոց թագաւորների ու կաթողիկոսների եւ արաբացոց ու մանաւանդ բիզանդական իշխողների: Երբեմն բաւական մանրամասն եւ ընդարձակ պատմում է իրեն համար կարեւոր երեւացող դէպքերը: Ասողիկի Պատմութեան այս մասն առանձնապէս հետաքրքիր է Հայաստանում կատարուած շինարարութեան նկատմամբ: Նա բաւականին տեղեկութիւններ է տալիս վանքերի, նրանց վանահայրերի ու նշանաւոր վարդապետների մասին, նկարագրում է վանական կեանքն եւ կարգ ու կանոնը, յիշատակում է, թէ այդ շրջանում ո՛ր վանքերն են հիմնուել և որո՛նց մէջ ծաղկել է ուսումը: Շատ բան եւ շատերին նա անձամբ տեսել է: Խլաձորի վանականների մասին գրելուց յետոյ՝ նա աւելացնում է. «Առ որս եղեալ իմ յաւուրս սուրբ քառասնորդացն՝ գրեցի զբանս յիշատակիս այսորիկ սակաւուք, եւ զչափ ժամանակացս թուեցի ըստ կարի» (էջ 175): Ասողիկի այս հաղորդումները, որոնք ծագում են վանքերին մօտիկ ծանօթ պատմիչից, շատ կարեւոր են պարզելու համար այդ դարի կուլտուրական վիճակն ու ոգին, որի մասին կը խօսուի քիչ յետոյ: Նախ այստեղ դնենք երկու հատուած տեսնելու համար, թէ ինչպէս է նա յօրինում:

«Եւ զկնի Աբասայ թագաւորեաց Աշոտ որդի նորա, որ եւ Շահնշահ կոչիւր՝ ամս ԻԵ: Եւ Մուշեղ եղբայր նորա առ նովաւ թագաւորեաց ի Կարս: Այս Աշոտ խաղաղասէր բարուք կալեալ զաշխարհս Հայոց՝ խոնարհութեամբ եւ ողորմածութեամբ զանցոյց զամենեքումբք. վասն զի զգոնջացեալսն եւ զկաղսն եւ զկոյրսն հաւաքէր առ ինքն, բարձակից ինքեան առնելով ի խրախճանութիւնսն. զոմանս ի նոցանէ իշխանս եւ իշխանաց իշխանս եւ կիւրապաղատս անուանէր եւ զբօսնոյր նոքօք. եւ զքոսն կարմիր եւ զմէրս նոցա առաջի աչաց իւրոց փոխանակ զարդուց եւ ականց փայլելոց համարէր: Այլ եւ զբաժակն իւր թագաւորական ըմպելեօք մատուցանէր նոցա, եւ յորժամ թարախ վիրաց նոցա խառնէր ընդ գինւոյն՝ յայնժամ զմնացորդս նոցա առեալ ինքն ճաշակէր: Եւ այնքան առատաձեռնութեամբ բաշխէր կարօտելոց՝ մինչեւ ի մահուն իւրոյ ոչ լինել դրամ մի ի գանձատան նորա. այլ եւ զկապուտ զարդուցն եւ զբազմականացն եւ որմոց տայր կարօտելոց: Եւ քաւեաց զմեղս իւր ողորմութեամբ եւ զթով տնանկաց» (էջ 180 եւ հտ.):

Բերենք եւ հետեւեալ գլուխը: «Յաղագս չար գործոցն Սմբատայ, եւ մահ նորին»: «Եւ յորժամ յաջողեցաւ գործ թագաւորին Հայոց Սմբատայ ի ներքնոց եւ յարտաքնոց, եւ մեծացաւ յոյժ ի յղփութիւն հացի եւ ի լիութիւն գինւոյ՝ անօրինեցաւ նա. բարձրացաւ սիրտ նորա, եւ բարձրացաւ առաւել քան զինքն: Գործեաց նա երիս չարս զժուարինս առ ի ասել եւ արժանի արտասուաց:

Առաջին՝ զի այրեաց նա հրով զայր ոմն անմեղ այսպիսի պատճառաւ: Էր նորա

համբարանոց խոտի եւ օրանի ի քաղաքն Անւոյ ի բազում ամաց կուտեալ. եւ լուցին զնա հրով: Եւ այր ոմն ի քաղաքին ցնորեալ ի խելաց մաղասկաթ գոլով՝ եւ աղօթէր նա յառաւօտանալ ժամուն յեկեղեցւոջն ընդ ժողովրդեանն. եւ ելեալ բառնայր զբով կրակին, որով զխունկն բուրեցուցանէին: Եւ ասեն մարդիկ. «Զի՞նչ է այդ». եւ նա ասէ. «Երթամ այրել զհամբարանոցս Թագաւորին»: Եւ եկեալ պատմեցին Թագաւորին, եւ նա հրամայեաց՝ նախ զաչսն փորել եւ ապա ծղով եւ եղեգամբ պատել եւ հրոյ ճարակ տալ: Եւ արարեալ այնպէս՝ ընկեցին արտաքոյ քաղաքին: Եւ անապատաւոր կրօնաւորաց ոմանց ի քաղաքին հանդիպեալ՝ զլուրն լուան եւ յողորմելի տեսութիւնն ժամանեցին. կամեցան հողոյ տալ զքրիստոնէին մարմին, եւ թաղեցին ըստ օրինի քրիստոնէից: Իսկ Թագաւորն լուեալ՝ ցասմամբ մեծաւ բարկացաւ, հրամայէ ի գիշերի հանել եւ շանց ընկենուլ զքրիստոնէի մարմինն զխանձողեալ: Եւ կրօնաւորացն յառաւօտանալ աւուրն կամեցեալ ելանել ընդ դուռն քաղաքին՝ երթալ ի բնակութիւնս իւրեանց, եւ տեսեալ զնա գէշ շանց եղեալ՝ եւ ձայնս բարձեալ՝ լային ի վերայ ողորմելի տեսութեանն. բարբառեցան եւ Թագաւորին անէծս ցաւագինս, եւ առ զայրանալ սրտիցն՝ ասացին. «Այսպէս եւ նորա ոսկերացն ելանել ի գերեզմանէն»: Որ եւ կատարեցաւ իսկ:

«Եւ երկրորդն ի չարեացն՝ զի ստեաց նա երդմանն, զոր հաստատեալ էր նա առ ամիրայն Գողթան, զոր նա ըստ հեթանոսական դենին՝ պահեաց, եւ սա քրիստոսական օրինօք՝ ոչ պահեաց. այլ ուխտադրուժ եղեալ՝ տայ զզօրսն Հայոց օգնական Սալարին՝ ամբարշտեցուցանել զնա, որ մերժեալն էր յԱստուծոյ. եթէ ոչ էր խափանեալ ի կասկածանաց նենգոյ եղբօր իւրոյ Գագկայ:

«Եւ երրորդ չարն սարսափելի եւս է՝ զի զդուստր քուերն իւրոյ էառ խառնակութեամբ:

«Եւ այսու ամենայն չարեօք բարկացոյց նա զանբարկանալին Աստուած. եւ անդէն եհար Աստուած ցասմամբ մեծաւ նախ զկինն զայն եւ սատակեաց. եւ Թագաւորին կոծ մեծ արարեալ ի վերայ նորա՝ հարաւ եւ ինքն բորբոքմամբ տապոյ բոցակէզ ցաւոց. եւ մեռաւ անդէն եւ թաղեցաւ ի նմին քաղաքի ի ՆԼԸ թուականին:

«Եւ ապա կին ոմն ի քաղաքէն երազ պատմէր զաւուրս, թէ «Թագաւորն Թմբրական դեղովք դնի ի գերեզմանի, եւ կենդանի է, եւ երեւեցաւ ինձ»: Եւ համբաւն դղրդէր զքաղաքն ամենայն՝ մինչ եղբայր նորա Գագիկ հրամայէ նոյն առն, որ զդի այրեցեալ մեռելոյն եհան՝ երթալ, հանել եւ տեսանել, եւ պատմել քաղաքին եւ զօրացն՝ եթէ ահա՛ մեռեալ է: Եւ այսպէս յայլմէ այլ պատճառով զբան կրօնաւորացն կատարեաց Տէր, վասն զի արդարադատ է՝ զմասնաւորն աստ՝ եւ զբովանդակն առ հանդերձեալսն հատուցանելով ամենեցուն» (էջ 253 եւ հտն.):

## ԳՐԻԳՈՐ ՆԱՐԵԿԱՑԻ

1. Հասարակական-գաղափարային միջավայր: — *Գրիգոր Նարեկացու բանաստեղծութիւնը լաւ հասկանալու համար՝ պէտք է նախ ծանօթանալ այն հասարակական-գաղափարային մթնոլորտին, որի մէջ սնուել եւ ապրել է նա, եւ որի արտայայտութիւնն է նրա ստեղծագործութիւնը* (1):

---

(1) Մ. Աբեղեան, «Ս. Գրիգոր Նարեկացի», «Ազգագրական Հանդէս», ԻԴ գիրք, Թիֆլիս, 1917, էջ 85 - 135:

կրօնական էր այն դարի իշխող ոգին եւ ուղղութիւնը ոչ միայն մեր մէջ, այլեւ ընդհանուր աշխարհում: Դրա զարգացմանը մեծում նպաստել էին եկեղեցու հայրերն ու վարդապետներն իրենց քարոզներով եւ կենդանի օրինակներով, իրենց դաւանաբանական վէճերով եւ կռիւներով: Այդ պատրաստել էր նաեւ նախորդ դարերի գրականութիւնն իր ամբողջութեամբ, երբ եկեղեցին իր ձեռքի տակ ունեցած միջոցներով ձգտում էր ամբողջ քրիստոնէութիւնը մի ապաշխարող, աշխարհուրաց դրութեան մէջ դնելու: Կրակապաշտութեան, ապա եւ մահմեդականութեան դէմ վարած կռիւների բովով անցնելով՝ հայ ժողովուրդն իր առաջաւոր մասով խորացրել էր արդէն քրիստոնէական գաղափարները: Յարմար ժամանակ էր միայն հարկաւոր, որ այս կրօնական ոգին իր բոլոր թափով երեւան գար հայկական կեանքի մէջ եւ առաջ բերէր իր փայլուն գեղարուեստն ու գրականութիւնը: Եւ այդ լինում է Աշոտ Երկաթի մահից յետոյ, խաղաղութեան դարում, երբ հաւատն էր կազմում բոլոր հոգիների էութիւնը. երբ արդէն ընդհանրապէս իշխում էր քրիստոնէական աշխարհայեցութիւնն Աստուծու եւ Սատանայի, մեղքի եւ քաւութեան, դրախտի եւ դժոխքի, այս աշխարհի եւ այն աշխարհի մասին. երբ թագաւորում էր աշխարհի ու կեանքի ունայնութեան գաղափարը, իրական աշխարհը երազ էին համարում, կամ, ժամանակակից Պատմագրի խօսքով, «ստուեր զկեանս աշխարհիս համարեալ»: Իսկական աշխարհն ու կեանքը եւ մարդուս բուն հայրենիքն, ըստ այդ հայեացքի, հանդերձեալ յաւիտենականն էր, դրախտային աշխարհն ու կեանքը մահից յետոյ: Իսկ դրան արգելք էր լինում մարմինը. դրան հասնել կարելի էր միայն մեռնելուց յետոյ: Ուրեմն պէտք էր «հանապազամեռիկ կեանքով» մեռցնել մարմինը, կենդանի մեռնել, տանջանքների ենթարկելով իրեն: Եւ մարդ որքան աւելի ապաշխարէր, տանջէր իրեն քաղցով ու ծարաւով եւ այլ միջոցներով, այնքան աւելի լաւ՝ հոգու համար:

Հոգու այս կռիւը մարմնի դէմ եւ մարմնի ոչնչացումն իր գործնական արտայայտութիւնը գտնում էր ամենից առաջ վանական եւ ճգնաւորական կեանքի խառակեցութեան մէջ: Նախորդ դարերում էլ շինուած էին շատ վանքեր, բայց վանքերի թիւը խիստ բազմանում է, եւ վանականութիւնը զօրանում է առանձնապէս 10րդ դարում: Աշոտ Երկաթի եղբայրը՝ Աբաս թագաւորը (929-953 թ.), ինչպէս ասուեց վերեւում, ըստ Ստեփանոս Տարօնեցու, մեր աշխարհի համար շինութեան եւ խաղաղութեան պատճառ է դառնում: «Յայսմ ժամանակի ծաղկեալ պայծառանայր կարգ կրօնաւորական հանդիսից յաշխարհիս Հայոց»: Շատ տեղերում շինւում են եղբայրանոցներ, եւ համախմբւում են մեծ բազմութեամբ միաբաններ. այսպէս՝ Կամրջաձորի վանքն Արշարունիքում, Հոռոմոսի վանքն ու Դպրեվանքը Շիրակում, Խլաձորի վանքը Դերջանում, Հնձուց վանքը Կարինում, Մովսէսի վանքը Կարբերդում, Ցախաց քարի վանքը Վայոց Ձորում, Նարեկի վանքը Ռշտունիքում: Նոյն կրօնաւորական-շինարարական գործն աւելի մեծ եռանդով շարունակւում է եւ Աբասի յաջորդի, նրա որդի Աշոտ Գ.ի օրով (953 - 978 թ.): «Յաւուրս սորա շինեցան կրօնաւորանոցք, ճգնաւորակա-

նաց տեղիք Սեաւորդեաց աշխարհին… որոց երկոցունց տեղեացն անուանք Հաղբատ և Սանահին… միաբանք ի տան Աստուծոյ՝ արանց հինգ հարիւրոց»: Շինում են եւ ուրիշ վանքեր, կամ հները նորոգում, ինչպէս՝ Վարագայ ուխտի, Ձորոյ վանքը Վանի մօտ, Ապարանից վանքը Մոկսում, Շողագայի վանքը Գեղամայ գաւառում, Մարմաշէնի վանքը Կումայրիի մօտ, Սեւանայ վանքը: Աւելի վաղ Աղթամարի Սուրբ Խաչը հիմքից վերաշինում է Վասպուրականի թագաւոր Գագիկը եւ մեծ շքեղութեամբ, քանդակներով ու պատկերներով զարդարում ներսից ու դրսից: Նոյնը կատարւում է եւ ուրիշ կողմերում: Սիւնիքում, օրինակ, նորոգում կամ նոր շինում են բազմաթիւ վանքեր, ինչպէս, օրինակ, 906 թ. Տաթեւի վանքը, որի համար Ստեփանոս Օրբելեանը (1) գրում է. «Երեւելի էր ի մէջ ամենայնի ոչ միայն շինուածովք. այլ եւ պայծառանայր քահանայական եւ կրօնաւորական դասուք ի չափ հինգհարիւր եղբարց. լի էր եւ ծովամատոյց փիլիսոփայիւք երաժըշտական երգոց, ճոխ էր եւ վարժարանն վարդապետական կրթութեամբն. նաեւ արհեստաւորք նկարչացն եւ գրողաց անհամեմատք»: Այս վանքի եկեղեցին հետագայում եւս՝ 930 թ., նկարազարդւում է: Այսպէս ծաղկում էր վանական ճարտարապետութիւնը՝ քանդակագործութեան, նկարչութեան ու երաժշտութեան հետ:

Բացի վանքերից իրենց տաճարներով՝ շինում եւ զարդարում էին բազմաթիւ հոյակապ եկեղեցիներ քաղաքներում ու գիւղերում, ինչպէս՝ Կարսի եկեղեցին, Անի քաղաքի Կաթողիկէն եւ Ս. Գրիգորի եկեղեցին Զուարթնոց եկեղեցու ձեւով, Արգինայի եկեղեցին եւ կաթողիկոսարանը, ուր եւ կազմուած էր մատենադարան, եւ ուրիշները: Կառուցում էին եւ բնակութեան գեղեցիկ շէնքեր, քաղաքներն ամրացւում հզօր պարիսպներով եւ այլն, բայց գլխաւոր ուշադրութիւնը դարձնում էին եկեղեցական, կրօնաւորական շէնքերին: Կաթողիկոսները, նրանց ազդեցութեամբ եւ իշխանները, հովանաւորում էին կրօնաւորութիւնը: Այդ համարւում էր մի բարի գործ «հոգու փրկութեան» համար: Այսպէս, օրինակ, Կարսի Աբաս Թագաւորի համար (984-990 թ.)Ստեփանոս Ասողիկը (էջ 197) գրում է.«Եւ ապա խորհուրդ բարի կալեալ յանձին՝ շինել վանս ի փրկանս անձին իւրոյ եւ ի յիշատակ հոգւոյ յաւիտենական: Եւ ընտրեաց տեղի ընտրանաւ ի գլուխ Արշարունեաց գաւառին, որում Շիրիմն կոչիւր. եւ ընդարձակագոյն պարըսպեալ որձաքար վիմօք, չորեքկուսի ձեւով, յիւրոց գանձուցն մեծածախ աշխատութեամբ յարդարեալ ղամենայն շինուածսն պիտոյից ի բնակութիւն կրօնաւորաց»: Նոյնպէս վարւում էին եւ իշխանուհիները: Այսպիսի հովանաւորութեամբ բազմանում եւ ամէն տեսակ նուէրներով ու կալուածներով հարստանում էին վանքերը: Այդ անհրաժեշտ էր հոգեւորական դասի համար, մանաւանդ կաթողիկոսների ու եպիսկոպոսների, որոնց իշխանութեան յենարանն էր կրօնաւորութիւնը. դրանով նրանք քաղաքական մեծ ազդեցութիւն էին ձեռք բերում, իշխում էին թագաւորների ու միւս փոքրիկ տէրերի մտքի վրայ: Ուստի վանքերը լցւում էին հարիւրաւոր տղամարդկան-

(1) Ստ. Օրբելեան, Պատմութիւն նահանգին Սիսական, Թիֆլիս, 1910, էջ 226:

ցով, որոնք կտրւում էին աշխարհից եւ իրենց նուիրում էին բարեպաշտու-
թեան գործին: Կուսանոցներ չեն յիշւում, բայց վերոյիշեալ Աբասի մօր հա-
մար գրում է Ասողիկը. «Իսկ մայր Թագաւորին Աբասայ, բարեպաշտուհի ի
բարեպաշտ ծնողաց, որ էր քոյր Թագաւորացն Փառիսոսոյ Սենեքերիմայ եւ
Գրիգորի, ի բաց ընկեցեալ զերկրաւոր պսակն եւ յոչինչ համարեալ զփառս
անցաւորս՝ ընթանայր զհետ երկնաւորին. զվարս կրօնաւորութեան յանձն
առեալ՝ երթեալ բնակէ ի տեղին, որ Թրին վանք կոչի (զի են եկեղեցիք փո-
րածոյ ի սպիտակ քարի ընդդէմ հարաւոյ). եւ աղօթից եւ գործոց բարեաց
պարապեալ եւ հոգեւոր առաքինութեան»:

Վանականներն ապրում էին միաբանական կեանքով. հետեւելով Ս.
Բարսեղի սահմանադրութեանը՝ ոչ մի սեփականութիւն չունէին. «Էր նոցա
ամենայն ինչ հասարակաց», «հաւասարակեացք, միաբանականք»: Իրենք ի-
րենց ենթարկում էին ամէն տեսակ զրկանքների ու նեղութիւնների: Երբեմն
հագնում էին աղքատի պէս գծուծ զգլեակներ, մարմինները տանջում էին
բրձով ու խարազանով, ման էին գալիս բոբիկ ոտներով, «ճգնազգեստ խոնարհա-
գարդ վայելչութեամբ զարդարեալք ի ճաշակս անճաշակ, մի անգամ միայն
յաւուր ճաշակեալ եւ զովացեալ ջրով ի շաբաթու եւ ի կիւրակէի արբմամբ
յաւուրս սուրբ քառասնորդաց»: Ոչ ոք հասարակաց սեղանից դուրս բերանը
բան չէր դնում, ոչ միրգ եւ ոչ նոյնիսկ դալար խոտ. «Ոչ ստանալ մարդոյ
ինքեան եւ ոչ խերեւէչ մի. ոչ ճաշակել ուրուք քան զհասարակաց սեղանն,
ո՛չ ի մրգաց եւ ո՛չ ի դալար խոտոյ»: Այսպէս իրենց անձը չափազանց պա-
հեցողութեամբ ճնշելով՝ իրենց զրկում էին եւ քնից: Ամբողջ գիշերներ արթ-
նութեամբ եւ հսկումով էին լուսացնում, որովհետեւ ցերեկը գործում էին
ձեռքով, միաժամանակ եւ աղօթում, իսկ գիշերը մինչեւ լոյս սաղմոսում.
«գործել եւ զԴաւթեան նուագն հնչեցուցանել ի գիշերի եւ ի տուընջեան»,
կամ ինչպէս ուրիշ տեղ մէկի մասին գրում է Ասողիկը. «Ի տուէ եւ ի գիշե-
րի աշխատէր ի մշակութիւն տեառն, գործել ձեռօք եւ սաղմոսել բերանով
ցայգատարած բազկատարածութեամբ, արտօսրիջոյց ողբովք լցեալ զա-
ւուրս»: — «Եւ սոցա ա՛յս գործ նահատակութեան», — աւելացնում է Պատ-
մագիրը վանականների նկարագրի վերջում: Սովորաբար այսպիսի ողբա-
գին տխուր կեանքով էին ապրում վանականները: Նրանց թոյլատրւում էր
զուարթանալ միայն որոշ տէրունական տօներին, ինչպէս՝ Քրիստոսի Ծը-
նընդեան, Յարութեան եւ Վարդավառի: Անշուշտ, ոչ ամէնքն այդպիսի
խստակեցութեամբ չէին օրերն անց կացնում: Բայց եւ այնպէս՝ այս մարդի-
կըն ընդհանրապէս ամէն ինքնասիրական եւ մարմնական հոգսերից ազատ
լինելով՝ միայն մի հոգս ունէին. որքան կարելի է, շատ տանջել իրենց եւ,
որքան հնարաւոր է, շատ «զարդարուել ողորմածութեան զարդերով». որով-
հետեւ հաւատում էին, թէ ամէն արած ողորմութեան համար վարձ պիտի
ստանան այն աշխարհում (ուստի եւ «վարձք» բառը ստացել է «ողորմու-
թիւն» բառի նշանակութիւնը): Այդ պատճառով եւ նրանք աշխատում էին,
իրենց ձեռով անձամբ մշակում էին վանական ընդարձակ կալուածները,
պահում վանքի անասունները, բայց իրենց աշխատածն իրենք չէին ամ-
բողջապէս վայելում, այլ մասամբ բաշխում էին ուրիշների: Լինում էին
եւ այնպիսիները, որ երբ աղքատների էին հանդիպում, հանում

էին իրենց հագի զգեստներն եւ նրանց հագցնում: Հանգստեան տեղ եւ սընունդ էին տալիս ամէն անցորդի ու ճանապարհորդի եւ օտարականի, որոնք կարող էին վանքերում օթեւանել ինչպէս իրենց տանը: Այս դէպքում «վանքը» ծառայում էր իր սկզբնական նշանակութեամբ իբրեւ «օթեւան», «իջեւան»:

Շատերն այսպիսի միաբանական ճգնութեամբ չէին գոհանում, քաշւում էին ամայի լեռներն ու անտառները, անապատները, միայնանում քարանձաւների ու խոռոչների մէջ, ուր անսուաղութեամբ ապրում էին օրերով, «մեռեալ ի կենդանութեան եւ ի մահու զկեանս քարոզեալ», — գրում է Ասողիկը: Այսպիսիներն իսկապէս գիշեր ցերեկ միայն աղօթքով էին պարապում՝ «վերնականներին խօսակից լինելով», ըստ Գրիգոր Նարեկացու: Դա արդէն միստիցիզմ էր, կրօնական ֆանտազիայի բնագաւառն իր տեսիլներով ու յափշտակութեամբ, երբ մենակեացներն ու վանականներն իրենց խուցերում բորբոքուած երեւակայութեամբ հաւատում էին, թէ հաղորդութիւն, հաղորդակցութիւն են ունենում հրեշտակների, նոյնիսկ Աստուծու հետ. տեսնում են նրանց, խօսում նրանց հետ եւ լսում նրանց ձայնը:

Այս բոլորի հետ միասին՝ այդ մարդիկը հոգեպէս էլ հանգիստ չէին, այլ շարունակ տանջւում էին իրենց երեւակայութեան ստեղծած սարսափներով, սատանայի փորձանքներով: Չկար գիտութիւն, որ խոհականութեամբ զսպէր նրանց հիւանդագին երեւակայութիւնը եւ հաւասարակշռութիւն մտցնէր նրանց կեանքի մէջ: Արդարեւ վանահայրերը յաճախ լինում էին ուսեալ մարդիկ, յիշւում են եւ նշանաւոր գիտնական վարդապետներ, բայց նրանք իրենք ենթակայ էին միստիկական հաւատալիքներին: Նրանց ուսումն ու գիտութիւնը սահմանափակուած է եղել հոգեւորով. նրանք հմտութիւն են ունեցել միայն Ս. Գրքի եւ առհասարակ կրօնական գրականութեան, եւ նրանց գործն է եղել մի կողմից՝ խօսքով ուսուցանել կրօնական գիտելիքները, քարոզել «Աստուծոյ պատգամները», միւս կողմից՝ աւելի մեծ խստակեցութեամբ բարի օրինակ դառնալ եղբայրներին իրենց ճգնութեան մէջ:

«Էին եւ վարդապետք վարժեալք վարդապետութեամբ Տեառն եւ ուսուցիչք ճշմարտութեան, — գրում է Ասողիկը (էջ 178). — Բասիլիոս ծերունին, քաջակորովն ի խօսս եւ քաջաքարոզն ի պատմել զօրէնս Տեառն. եւ Գրիգոր քահանայ յամուսնացելոց, յորդախօսն եւ առատաբանն ի պատգամս Տեառն. եւ Ստեփանոս, աշակերտ Բարսղի, որ Հոգեւորն կոչեցաւ, առաքելաշնորհ բանիւ եւ գործով. ընդ սմա եւ մեծանունն ի գիտութեան եւ յառաքինութեան Մովսէս, որ քառասուն աւուրբք ձգտեցուցանէր զանսուաղութիւնն: Եւ Դաւիթ աղքատակերպ եւ գծծասէր գիտնականն, որում անունն Մաշկոտն կոչի. եւ Պետրոս, հաւաստի մեկնիչ Գրոց սրբոց...»: Այսպէս եւ Կամրջաձորի վանքի վանահայրը՝ «իմաստակն Սամուէլ, բազմաշնորհն ի գիտութիւնս Գրոց սրբոց եւ յերգս երաժշտութեանց»: Մի ուրիշի, Խլաձորի վանքի վանահայր Բարսեղի համար գրում է Պատմագիրը, թէ լցնում էր «զամենեցուն զպակասութիւն կամ զվերակացութիւն գիտնա-

կան եւ իմաստնական հանճարով»: Նոյնպէս եւ Կարբեցի Մովսիսավանքը յայտնի է եղել «բազմապայծառ եւ բանական իմաստնովք»: Նոյնպէս եւ Դպրեվանքը: Խաչիկ կաթողիկոսի օրով յայտնի են եղել մի քանի վարդապետներ՝ «Յովհաննէս՝ խաչակիրն Քրիստոսի, որ տկար բանիւ եւ մեծ գիտութեամբ բացայայտէր զգիտութիւն Գրոց սրբոց... Հանդոյն նմին եւ առատ գիտութեամբ գերամաքուր հայրն Յովսէփ, առաջնորդ ուխտին, որ Հնձուցն անուանի վանք, ի Կարին գաւառի: Եւ Կիրակոս գծծակերպ գիտնականն... որ բնակէր յոլովակի յանապատին, որ Թեղենիան կոչի, ի Նիգ գաւառի... Եւ վայելչաբանն Սարգիս յաշխարհէն Աղուանից, որ ի մանկութենէ զԳիրս սուրբս ի բերան առեալ, եւ ծերացեալ արդ: Եւս եւ Յովհաննէս քահանայ յամուսնացելոց» (էջ 185 եւ հտ.) :«Եւ առաջնորդ Սանահնի՝ Յովհաննէս գիտնական այրն Աստուծոյ»:

Այս «գիտնական» վարդապետների (ուսուցիչների) մօտ ժողովւում էին երկրի զանազան կողմերից ուսումնածարաւ երիտասարդներ, որոնք ամենայն սիրով ու ջանքով, տանելով ամենայն զրկանքներ, աշխատում էին ուսում ձեռք բերել, եւ ձեռք բերածները լինում էր ծանօթութիւն ս. Գրքերի, ըսքոլաստիկական նրբամիտ մեկնութիւններ ու դաւանաբանական վէճերի մասին տեղեկութիւններ: Նրանց մի մասը մնում էր հէնց վանքերում՝ նուիրուելով ճգնական խստակեցութեանը. իսկ ուրիշները վերադառնում էին աշխարհային կեանքին, կամ դառնում էին քահանայ, եւ իրենց ամբողջ կեանքում շարունակում էին որոճալ իրենց ձեռք բերած ուսումը եւ տարածել աշխարհում, ու միշտ երանի էին տալիս իրենց երիտասարդական վանական կեանքին:

Եւ ահա այսպիսով եկեղեցու բեմից քարոզով եւ վանական կրթութիւն ստացած աշխարհականների միջոցով ճգնաւորական աշխարհայեացքը թափանցում էր նաեւ ֆէոդալական հասարակութեան միւս երկու դասերի — աշխարհականութեան մէջ: Միաժամանակ զարգանում էր եւ մի նոր դասակարգ՝ առեւտրով հարստացած քաղաքացիութիւնը: Եւ եթէ ազնուականն ու փարթամ քաղաքացին մի կողմից՝ սանձարձակ ազատութիւն էին տալիս իրենց անասնական կրքերին՝ զրկում ու կեղեքում էին, գանձի ու հարստութեան, զուարճութեան, շուայտ կերուխումի ետեւից էին ընկնում, ասում էին կամ լսում գուսանների ուրախութեան ու սիրոյ երգեր, միւս կողմից՝ սակայն, նրանք անձնատուր էին լինում նաեւ կրօնական բարեպաշտական գործերի՝ վանքեր շինել, եկեղեցուն նուէրներ տալ, աղօթել, եկեղեցի յաճախել, աղքատներին խնամել եւ նոյնիսկ, ինչպէս բերուեց վերեւում, Աշոտ Գ.ի պէս ողորմածութեան գործերով զբաղուել: Հեշտութեամբ մի ծայրայեղութիւնից միւսին էին անցնում: Մի ծայրայեղութիւնը ժառանգաբար բերում էին կոպիտ, բարբարոսական բարքերի շրջանից, իսկ միւսն արդիւնք էր եկեղեցու վանական-ճգնաւորական ազդեցութեան: Եւ այս ազդեցութիւնը ոչ միայն բարձր դասակարգի՝ թագաւորների եւ ազնուականների վրայ էր երեւան գալիս, այլեւ քաղաքացու եւ ռամկի, եւ ազնուական ու ռամիկ հաւասար պատկառում ու վախենում էին կրօնաւորներից, որոնք ե՛ւ սուրբ, ե՛ւ

հրաշագործ էին համարում:

Ժամանակի սնոտիապաշտական ոգին ճգնաւորներին ու վանականներին զարդարում էր հրաշալի պատմութիւններով: Մէկը, Կարմիր Հայր, մի աւերակ եկեղեցու մէջ աղօթքով սատկեցնում է մի վիշապ, որ շրջակայ բնակիչների համար սարսափ էր դարձած. մի ուրիշը, Վարդիկ Հայր, հնազանդեցնում է առիւծին, որ բերում էր նրան եղջերուների կաթը եւ իր երկու կոյր կորիւններին նրա առաջն է ձգում. սուրբը ձեռը վրան դնելով բժշկում է նրանց կոյր աչքերը: Այսպիսի կրօնաւորների աղօթքն եթէ հրաշագործ էր համարւում, զարհուրելի էր անէծքը, որ հաւատում էին, թէ անպայման պիտի կատարուի: Նրանք դրանով իշխում էին ռամկի եւ ամէնքի մտքի ու երեւակայութեան վրայ: Այդ անէծքն է, որ, ինչպէս բերուեց վերեւում, դրդում է բազմամարդ Անի քաղաքի ամբոխին եւ ստիպում Գագիկ թագաւորին գերեզմանից հանելու իր նոր թաղած եղբօր՝ Սմբատ թագաւորի դին:

Վանքերում ուսածները մէկ մէկ նաեւ գրականութեամբ էին պարապում: Այդպիսիներից մէկն էր Ստեփանոս Տարօնեցին. մէկ ուրիշը՝ Մեսրոպ Երէց(1), որ ծաղկաքաղ անելով յօրինել է Մեծն Ներսէս կաթողիկոսի պատմութիւնը:

Սրա հեղինակն ինքը յիշատակարանի մէջ գրում է. «Ի ՆԺԶ [=967] թուականիս Հայոց եւ ի վեհապետութեանն տեառն Վահանայ Հայոց կաթուղիկոսի, եւ յամս Աշոտոյ Բագրատունւոյ Հայոց թագաւորի ի տանէն Շիրակայ, ես Մեսրովպ նուաստ քահանայ ի Վայոց Ձորոյ ի գեղջէ Հողոցմանց, ուստի Յովսէփ էր երանելի նահատակն յաւուրս սրբոյն Վարդանայ... մեծ ցանկութեամբ ծաղկաքաղ արարի զգիրքս զայս ի Հայոց մնացորդացս՝ յԱրեւելից գրոց. զյաղթութիւն եւ զկատարութիւն թագաւորացն Հայոց եւ Վրաց, եւ զառաքինութիւն եւ զսքանչելիս հայրապետաց տոհմից սրբոյն Գրիգորի Լուսաւորչին, եւ զտեսիլ եւ զկտակ սրբոյն Ներսէսի եւ զյաղթութիւն եւ զքաջութիւն արիական ազգին Մամիկոնէից... Եւ արդ զայս հանեալ յԱրեւելից գրոց ի Հայոց մնացորդացն պատմութեանց, եւ ետու որդիացելոյ իմոյ սուրբ աւազանին ծննդեամբն՝ Վահանայ Մամիկոնենոյ, ի գիւղն որ կոչի Վարժի»:

Յիշուած բազմաթիւ վանքերից ու վարդապետներից առանձին ուշադրութիւն է գրաւում Նարեկայ վանքը եւ դրա վանահայր Անանիա Նարեկացին, որի համար գրում է Ասողիկը. «Անանիա, փիլիսոփայն մեծ, որ եւ վանական Նարեկի: Սորա եւ գիրս է ասացեալ ընդդէմ աղանդոյն Թոնդրակաց եւ այլոց հերձուածոց»: Այդ վանքը, ինչպէս եւ շատ ուրիշներ, շինուել է Անանիա Մոկացի նշանաւոր կաթողիկոսի օրով (941–965 թ.): «Այսպէս եւ յայսմ ժամանակիս շինեցաւ Նարեկ ի Ռշտունեաց գաւառին նոյն կարգաւորութեամբ, բազմամարդ պաշտօնապայծառ երգեցողովք եւ գրական գիտողօք»: Անանիա Նարեկացին, ուրեմն, հոգ է տարել իր վանքում, իր աշակերտների մէջ զարգացնելու «գրականագիտութիւնն» ու «երգեցողութիւնը»: Ինքն Անանիան էլ պարապել է գրականութեամբ, յօրինել է մեկ–

(1) Պատմութիւն սրբոյն Ներսիսի Պարթեւի Հայոց հայրապետի, «Սոփերք Հայկականք», հատոր Զ., Վենետիկ, 1853:

*նութիւններ, ճառեր, «Հաւատարմատ որ ընդդէմ երկաբնակացն»: Նրանից մնում է եւ «Գիր խոստովանութեան»: Նրա դպրոցի աշակերտն է Գրիգոր Նարեկացին: Անանիա Նարեկացու աշակերտն է եւ* Ուխտանէս եպիսկոպոսը, *որ կոչւում է «եպիսկոպոս Սեբաստացւոց». նրա գրքի երրորդ հատուածը պակասում է ձեռագրի մէջ, իսկ երկրորդը թերի է: Սա պաշտօնական գրութիւնների մի ժողովածու է՝ «Գիրք Թղթոցից» առած* (1):

*Գրքի վերնագիրն է՝ «Զպատմութիւնս յերիս հատուածս, զոր ասացեալ է տեառն Ուխտանիսի Սե[բաստացւոց] եպիսկոպոսի՝ ի խնդրոյ հաւրն Անանիայի Նարեկավանից առաջնորդի եւ նախաչար վարդապետի, հատուածն առաջին՝ յաղագս Թագաւորաց եւ Հայրապետաց մերոց, եւ երկրորդն վասն բաժանման Վրաց, եւ երրորդն՝ յաղագս մկրտութեան ազգին այնմիկ Ծադն կոչեցեալ»: Առաջին հատուածի առաջին գլխի վերնագիրն է՝ «Պատասխանի Թղթոյն Անանիայի եւ խոստումն կատարել զհայցուածս նորա»* (էջ 113): *Այս ընդարձակ եւ իր տեսակի մէջ առանձնայատուկ նամակից իմացւում է, որ Ուխտանէսը եղել է Անանիա Նարեկացու աշակերտը՝ «քո յետին եւ տրուպ աշակերտս, կամ թէ որդիս, թէ ախորժելի է քում պատուասիրութեանդ, եւ կամ թէ ինձ համարձակելի՝ անուանեալս Ուխտանէս»* (էջ 10): *Նա աշակերտական ակնածութեամբ չափազանց գովում է Անանիային, անուանելով նրան «կատարեալ եւ աստուածային շնորհիւ պայծառացեալ, եւ ձրիւք սուրբ Հոգւոյն առլցեալ գիտութեամբ, եւ հոգեւորական երգով գեղգեղմամբ գեր ի վերոյ քան զամենեսեան, եւ ամենայն պատուիրանաց Աստուծոյ հասեալ եւ հաստատեալ քան զբազումս, ո՛վ աստուածազարդ եւ վսեմական այր իմ տէր, եւ տիեզերական վարդապետ, իբր ծառ իմն բազմապտուղ եւ բարձր ի մէջ վայելուչ եւ աստուածատունկ դրախտիդ Նարեկայ կոչեցեալ ուխտի, սաղարթ առեալ եւ փարթաւորեալ վարուք առաքինութեամբ, եւ ծաղկեալ ի տան տեառն», եւ այլն* (էջ 8): *Անանիան, ինչպէս երեւում է այդ հետաքրքիր նամակից, քաջալերել է իր աշակերտներին գրականութեամբ պարապելու: Նա նախ բերանացի յորդորել է Ուխտանէսին պատմութիւն գրելու. «Արդ քանզի ի ժամանակին յայնմիկ, յորժամ եկիր առ աստուածապատիւ եւ սուրբ հայրապետն մեր Խաչիկ՝ բերելով նմա ընծայ եւ պատարագ հոգեւոր զգիրս Հաւատարմատ որ ընդդէմ երկաբնակացն, զոր քո ինքնին խօսեալ ի խորհուրդ հաւատոյ... են բերան ի բերան խօսեցար ընդ իս յաղագս պատմութեանս...»: Եւ Ուխտանէսը մի առ մի յիշեցնում է օրն ու ժամը եւ տեղը — Ախուրեան գետի եզրին նստած — երբ Անանիան ուզեցել է, որ նա պատմութիւն գրի* (էջ 11 *եւ հտ.*): *Յետոյ էլ նա Ուխտանէսին նամակով յիշեցրել է այդ մասին:*

*Կրօնաւորական ոգին առաջ է բերել նաեւ իր գեղեցիկ արտայայտութիւնն արուեստի միջոցով: Եղել են, ինչպէս տեսանք, երգեցողներ, որոնք անպայման յօրինել են տաղեր, եղանակ դրել եւ անձամբ երգել. բայց այդ տաղերը գրքերի մէջ չարտագրուելով, մեծ մասամբ չեն պահուել: Մնում են միայն այդ դարաշրջանի եկեղեցական ճարտարապետութեան ու քանդակագործութեան մնացորդները, որ այժմ հիացում են պատճառում մասնագէտներին եւ մեր հին մշակոյթի պարծանքներն են: Ապագայի ուսումնասիրութեամբ պիտի ցոյց տրուի այն սերտ կապը, որ եղել է ժամանակի կրօ-*

---

(1) Ուխտանէս եպիսկոպոս, Հատուած առաջին, Պատմութիւն Հայոց, Վաղարշապատ, 1871: Հատուած երկրորդ, Պատմութիւն բաժանման Վրաց ի Հայոց, Վաղարշապատ, 1871:

նական ոգու եւ իր այդ քարերէն արտայայտութեան մէջ: Նոյն դարում ծաղկել են նմանապէս եւ նկարչութիւնն ու երաժշտութիւնը, բայց ժամանակը երաժիշտների ու նկարիչների անուններ չի պահել:

Յիշւում է միայն նշանաւոր ճարտարապետ Տրդատի անունը: Ասողիկը գրում է. «Արկանէ [Թագաւորն Սմբատ] հիմն եւ մեծաշէն եկեղեցւոյն ի նոյն քաղաքին Անւոյ ի ձեռն ճարտարապետին Տրդատայ, որ զկաթողիկոսարանին եկեղեցին շինեաց յԱրգինայ» (էջ 187): Ապա նա պատմում է, թէ 989 թ. մեծ երկրաշարժից Կ. Պոլսում կործանւում են շատ եկեղեցիներ, «նոյն ինքն Սոփիայն, որ կաթողիկէն է՝ հերձանիւր պատառմամբ վերուստ ի վայր: Վասն որոյ բազում ջան եղեւ արհեստաւոր ճարտարացն Յունաց առ ի վերստին նորոգել: Այլ անդ գիպեալ ճարտարապետին Հայոց Տրդատայ քարագործի՝ տայ զօրինակ շինուածոյն, իմաստուն հանճարով պատրաստեալ զկաղապարս կազմածոյն եւ ըսկըզբնաւորեալ զշինելն. որ եւ գեղեցկապէս շինեցաւ պայծառ քան զառաջինն» (էջ 250 եւ հտ.):

Շատ աւելի բախտաւոր չի եղել եւ բանաստեղծութիւնը, որից մնացել են միայն Գրիգոր Նարեկացու մի քանի տաղերն եւ Ողբերգութիւնը: Բայց այդ քչի մէջ էլ արդէն տեսնում ենք, որ մինչ շարականները զուրկ են ինքնուրոյնութիւնից եւ իրական կեանքից ու բնութիւնից, այժմ մի խակատիպ քնարերգութիւն է առաջ գալիս, որ մի կողմից՝ երգչի իրեն սիրտն է բաց անում մեր առաջ, միւս կողմից՝ հետեւելով կեանքի իրականութեանը, իր մէջ անդրադարձնում է հէնց այն կրօնաւորական ոգին եւ ճգնաւորական միստիկ աշխարհայեցութիւնը, որ ունեցել են նրա դասի մարդիկը — հազարաւորներ ու բիւրաւորներ:

Գրիգոր Նարեկացին մեր առաջին մեծ բանաստեղծն է:

2. Կենսագրութիւնը: — Գրիգոր Նարեկացու կեանքի մասին շատ քիչ տեղեկութիւն ունինք: Նա եղել է կրօնաւոր Նարեկայ վանքի, որ, ինչպէս տեսանք, նշանաւոր է եղել «բազմազարդ պաշտօնապայծառ երգեցողովք եւ դրական գիտողօք»: Երգիչ եւ դրագէտ Գրիգորի անունը, սակայն, չի յիշատակում ժամանակակից Պատմագիրը, որովհետեւ այն միջոցին, երբ Ասողիկն իր Տիեզերական Պատմութիւնը վերջացնում էր, Գրիգորը դեռ նոր էր յօրինել եւ հրատարակել իր «Ողբերգութիւնը», որով խկապէս հռչակուել է նա:

Նրա հայրն էր Խոսրով Անձեւացեաց եպիսկոպոսը (1), ժամանակի նշանաւոր անձերից մէկը, հմուտ եկեղեցական գրքերի, գիտուն մի մարդ, որից մնում են «Մեկնութիւն ժամակարգութեան» եւ «Մեկնութիւն Խորհրդոյ սրբոյ պատարագին»: Վերջինիս յիշատակարանի մէջ ինքը Գրիգորն այսպէս է գրում իր հօր մասին. «Շնորհիւն Աստուծոյ եղեւ մեկնութիւն այսմ դրոց ի ձեռն Խոսրովայ Անձեւացեաց եպիսկոպոսի, յոյժ հետեւողի պատուիրանացն Աստուծոյ. զոր մեզ եւ գովել անճահ է, զի մի՛ գայթակ-

(1) Տես՝ Երգոց Երգի մեկնութեան յիշատակարանը, Գրիգոր Նարեկացւոյ Մատենագրութիւնք, Վենետիկ, 1840, էջ 367:

դեսջիք ի նոյն՝ վասն գոլոյ նորին հայր իմ ըստ մարմնոյ. որոյ չեմ արժանի կոչիլ որդի եւ ոչ վարձկան ըստ գրեցելումն... Այլ յոյժ ամաչեցեալ եւ տարակոյս գտանիմ ես Գրիգոր պարտաւոր պատուիրանաց սուրբ Գրոց: Արդ առաջին սուրբ Գրոցս այսորիկ գծագրութիւն եղեւ ձեռամբ Սահակայ որդւոյ տեառն Խոսրովու, այս գրոցս մեկնողի ՅՂԹ թուականութեանս Հայոց» (մեր թ. 950 թ.):

Զամչեանը Գրիգորի ծննդեան թուականը դնում է մօտաւորապէս 951 թուին. «Ի թուին Հայոց իբր Ն» (այսինքն յամի Տեառն 951): Այս ենթադրական տարին ուրիշներն այնուհետեւ բանեցրել են իբրեւ հաստատուն թուական Գրիգորի ծննդեան համար: Բայց որովհետեւ, ինչպէս վերեւում գրուած յիշատակարանից երեւում է, նրա հայրն 950 թ., պատարագի խորհրդի մեկնութեան տարում, եպիսկոպոս է եղել, ուստի եւ Գրիգորը պէտք է ծնուած լինի այդ թուից առաջ, քանի որ «անհնար է 10-րդ դարում կանամբի եպիսկոպոս ենթադրել Հայաստանում» (1): Ցաւօք, կարելի չէ որոշել, թէ 950 թուից ո՛րքան առաջ ծնուած պիտի լինի նա: Նրա հայրն Անձեւացեաց եպիսկոպոս է դառնում 941 թուից ոչ առաջ, որովհետեւ նա այդ վիճակն ստանում է Անանիա Մոկացի կաթողիկոսից (941–965 թ.) (2): Ենթադրելով, որ Գրիգորը մի տարեկան մատղաշ երեխայ է եղել հօր ձեռնադրութեան ժամանակ եւ որ հայրը ձեռնադրուել է Անանիա Մոկացի կաթողիկոսի առաջին տարում, ըստ այսմ Գրիգորը ծնուած կարող է լինել 940 թուին, իսկ ամենից ուշ՝ 949 թուին. որովհետեւ հայրը 950-ին արդէն եպիսկոպոս է յիշւում: 940 թուից շատ առաջ չի կարելի դնել Գրիգորի ծնունդը, որովհետեւ նա իր Ողբերգութեան Մատեանի մէջ ինքն իրեն 1001–1003 թուականներին, թէպէտ հասակն առած, բայց ծեր չի համարում: Այսպէս՝ 83-րդ բանի մէջ գրում է. «Ահա բարդեցան, կուտեցան շրջանակք ամացս ընդունայնութեան, յորմէ հետէ յայտնեցեալ ցուցայ՝ յոչպէտս երեւեալ ի յարգանդէ մօրն իմոյ սենեկի փուշս դժնկի մեղաց շառաւիղի»: Բայց 87-րդ բանի մէջ գրում է. «Եթէ հասից յամս ծերութեան քեւ առաջնորդեալ արժանիս մահու, մի՛ թողցես զտկարութիւնս, մի՛ անարգեր զալիսն, մի՛ կորացուցես զկործանեալն, մի՛ զիջուցես զկքեալն»... Ենթադրելով, որ նա ամենից ուշը 949 եւ ամենավաղը 940 թ. ծնուած լինի, այս խնդրուածքն անելիս (Ողբերգութեան այդ բանը գրուած է 1001–1003 թուին) նա պէտք է լինէր 53 – 62 տարեկան: Եթէ 62 տարեկանն արդէն ծեր պիտի համարուի, 53–55 տարեկան հասակին կարող էր նա իր համար գրել «եթէ հասից յամս ծերութեան»... Այսպէս՝ նա ծնուած պիտի լինի 940-ական թուականներին, աւելի շուտ այդ թուականների երկրորդ հնգամեակին:

Գրիգորը մեծացել է Նարեկայ վանքում. «Սնեալ եւ վարժեալ սրբութեամբ եւ իմաստութեամբ առ ոտս Անանիայ վարդապետի, առաջնորդի Նա-

(1) «Արարատ», 1897, էջ 93. «Անանիա Մոկացի», յօդուած Գ. Տ.-Մկրտչեանի:

(2) Նոյն, էջ 91:

րեկայ վանից ի Ռշտունիս»(1)։ Այս տեղեկութիւններց երեւում է, որ հայրը եպիսկոպոս դառնալով՝ իր որդուն փոքր հասակից արդէն յանձնել է Անանիա Նարեկացուն, որի եղբօր դստեր որդին էր Գրիգորը, ինչպէս յիշում է ինքը Ապարանից Խաչի եւ Աստուածածնի Ներբողների վերջում (էջ 422)․ «Ես Գրիգոր՝ յետին վարժապետաց եւ կրտսեր բանասիրաց, որդի դստեր եղբօր Հօր Անանիայի հոգեզարդ եւ մտավարժ փիլիսոփայի եւ ըստ վարուց մաքրութեան կրօնից գովելոյ եւ հռչակելոյ»։

Գրիգորի հետ նոյն վանքում կրօնաւորել է եւ իր աւագ եղբայրը՝ Յովհաննէս, որի համար նա մեծ գովեստով է խօսում իր գրուածքների յիշատակարաններում․ «Յիշատակեսցես... զիս եւ զեղբայրն իմ անդրանիկ զՅովհաննէս ցանկալի անուն ի միում կարգի, որ գիտնականն է եւ հանճարեղ իմաստասէր, քան զիս առաւել յամենայնի» (Յիշատակարան Ներբողի Ապարանից Խաչի)։ Իսկ Ողբերգութեան Մատեանի վերջում գրում է․ «Ես Գրիգոր կրօնաւոր քահանայ, յետին բանահիւսաց եւ կրտսեր վարժապետաց, գործակցութեամբ եղբօր իմոյ ընտրելոյ Յովհաննէս կոչեցելոյ՝ Նարեկայ մեծափառ եւ բարձրապատիւ ուխտի վանականի․ որք իբրեւ զմի մարմին բանական ի յերկուց առ մի կերպարան շինելոյ դիմաց կենցաղավարելով, ոչ միայն հարազատք, այլ եւ միաշունչք, միակրօնք, համապատիւք զուգահաւանք, ի քառից աչաց առ միեւնոյն շաւիղ խորհրդոց տեսելք» (էջ 268)։

Այս սերտ սիրով կապուած եղբայրների ուսուցիչը, Անանիա Նարեկացին, որ ապրել է մինչեւ Խաչիկ կաթողիկոսի (972–991 թ.) ժամանակները (2), եղել է իր ժամանակի համբաւաւոր եւ գիտուն, միաժամանակ եւ մեծ կրօնաւորներից։ Ստ. Տարօնեցին (էջ 178) նրա համար, ինչպէս վերեւում տեսանք, գրում է․ «Փիլիսոփայն մեծ... Սորա եւ գիրս է ասացեալ ընդդէմ աղանդոյն Թոնդրակաց եւ այլոց հերձուածոց»։ Նա եղել է քաջ մեկնիչ Ս. Գրքի, գրել է մեկնութիւններ եւ ճառեր՝ «Վասն աղօթից, պահոց եւ արտասուաց», «Վասն զղջման եւ արտասուաց եւ աղօթից», եւ մի ուրիշը՝ «Խրատ հոգեւոր թէ որպէս կարասցէ մարդ որոշել զմիտս յերկրաւորաց եւ զայս կեանս արհամարհել եւ Աստուծոյ միայն ցանկալ եւ արքայութեան նորա» (3)։

Գրիգոր փոքր հասակից մեծանալով այսպիսի մարդու ձեռի տակ, որ խօսքով ու գործով քարոզում էր ուրանալ աշխարհը, յաղթել աշխարհին եւ «ոչ ըմբռնիլ ի կենցաղոյս պատրանս», բնականաբար պիտի կտրուէր դրսի աշխարհից։ Նա կտրուած էր ընտանեկան կեանքից․ մօր երես, անշուշտ, տեսած չէր, կամ շատ փոքր հասակում տեսած, իսկ հայրն իր մօտ չէր

(1) Յայսմաւուրք, Կ. Պոլիս, 1834, էջ 99։

(2) Ուխտանէս, Էջմիածին, 1874, էջ 11։

(3) Այս գրուածքը «Խրատ ոգեշահ, թէ որպէս կարասցէ մարդ զմիտս որոշել յերկրաւորացս» վերնագրով՝ ձեռագիրների մէջ կայ նաեւ Անանիա Սանահնեցու անունով։ Տես «Արարատ», Էջմիածին, 1901, էջ 274։

ապրում: Եւ եթէ մէկ մէկ նա հանդիպում էր հօրը, նրա մօտ էլ նոյնն էր տեսնում ու լսում, ինչ որ վանքում, — ժամագիրք, սաղմոս ու հոգեւոր երգ, եւ զղջում, լաց ու արտասուք: Նա արտաքին աշխարհին ծանօթանալու առանձին հնարաւորութիւն չունէր, բացի ուխտերից եւ բացառիկ այցելութիւններից, բնականաբար նրա ուշն ու միտքը պիտի ուղղուէր միայն մի բանի — հետեւել եւ սիրել այն, ինչ որ իր շուրջը տեսնում էր վանքի կրօնաւորների մէջ: Եւ նա մեծանալով մնում է նոյն վանքում, ուր կրթուել էր. կրօնաւորում է եւ ձեռնադրւում քահանայ. Հայոց ՆԻԶ=մեր թուականութեան 977 թուին նա ինքն իրեն արդէն քահանայ է յիշում Երգոց Երգի մեկնութեան յիշատակարանի մէջ: Մնալով վանքում՝ նա ճգնարանի նոյն խստութիւններին է ենթարկում իրեն, ինչ ուրիշները. ցերեկը գործել մըշտամռունչ աղօթքներով, գիշերը աքնել դարձեալ աղօթելով, տանջել իրեն քաղցով ու ծարաւով, ծնրադրութեամբ երկրպագութիւններ անելով. «ձայն հառաչանաց», «աչք կողկողագինք, արտասուօք ողբոց», «ծնկովքն հաստատութեամբ իբր գարշապարաւ ոտին վարիլ», — ահա թէ ինչով էր զբաղւում նա իր կեանքում:

Սակայն Գր. Նարեկացու հայրն ու վարդապետը միայն սոսկ կրօնաւորներ չէին. նրանք իրենց ժամանակի նշանաւոր գիտնականներն ու դրագէտներն էին. եւ Գրիգորի պէս ընդունակ մէկը մանուկ հասակից արդէն, աչքի առաջ ունենալով նրանց օրինակը, սիրում է ոչ միայն կարդալ եւ ուսման ու իմաստութեան ետեւից լինել, այլեւ շարադրել: Եւ իսկապէս, Գրիգորը խորը հմտացած է ժամանակի գիտութեանը, ընդարձակ ծանօթութիւններ ունի ոչ միայն Ս. Գրքի, այլեւ եկեղեցական գրուածների: Նա այդ հմտութիւնը ձեռք է բերել տոկուն ընթերցանութեամբ. Մոկաց Ստեփանոս եպիսկոպոսին դիմելով՝ նա ասում է. «Եւ ինձ տառապելոյս օգնեա՛ աղօթիւք, որ յարաժամ դեգերիմ յընթեռնուլն» (էջ 423):

Այդ ճգնաւորութեան եւ գիտնականութեան համար է, անշուշտ, որ նա կարգւում է, ըստ «Յայսմաւուրքի», Նարեկայ վանքում «վարժապետ միանձանց ի սուրբ վարս եւ յաստուածային գիտութիւնս»: Նա ինքն իրեն անուանում է «յետին վարժապետաց եւ կրտսեր բանասիրաց» (էջ 422), «յետին բանահիւսաց եւ կրտսեր վարժապետաց» (էջ 268): «Զայլս խրատեմ եւ ես ինքն անփորձ եմ. միշտ ուսանիմ եւ երբեք ի ճշմարտութիւն գիտութեան ոչ հասանեմ», ասում է նա համեստութեամբ (Ողբ. բան ՀԱ. էջ 182): Ահա՛ մի կեանք, որ անցել է ամբողջ աղօթելով, յարաժամ կարդալով եւ միշտ ուսանելով եւ ուսուցանելով ու խրատելով ուրիշներին, միաժամանակ եւ բանահիւսելով:

Այսպիսի մի կրօնաւորը չէր կարող վարդապետութեան աստիճան ստացած չլինել: Ողբերգութեան ՀԱ. բանի մէջ, էջ 186, նա գրում է իր համար՝ թուելով իր կոչումները. «Պետ վարժից կոչեցայ յանձինս դաստախազ. ռաբբի ռաբբի անուանեցայ եւ զգովեստ առ Աստուած եղծի. բարի ասացայ առ եղկութեանն ժառանգութիւն. սուրբ վկայեցայ ի մարդկանէ, որ եմ անմաքուր առաջի Աստուծոյ. արդար դաւանեցայ ամենայն իրօք ամ-

բարիշտս. հեշտացայ ի գովեստ մարդկան, զի ծաղր եղէց յատենին Քրիստոսի. յաւազանէ կոչեցայ արթուն, եւ ես ի քուն մահու ննջեցի. ի փրկութեանն աւուր հսկող յորջորջեցայ, բայց զգաստութեանն աչս կափուցի»: Այս վկայութիւնից իմացւում է, որ Գրիգոր (=Արթուն) եղել է Նրա մկրտութեան անունը, որ նա վարդապետ (=ռաբբի) է եղել, եւ բացի վարժապետ (կամ պետ վարժից) կոչումից՝ յորջորջուել է նաեւ Հսկող, անշուշտ, գիշերային տքնութիւնների համար. նա ինքն իրեն Հսկող է կոչում նաեւ Ողբերգութեան ամէն մի բանի վերնագրի մէջ: Բացի այդ, մարդիկ գովել են նրան ինչպէս մի բարի, սուրբ եւ արդար մարդու: Նա այդ գովեստը իրօք ստացել է մարդկանցից, որոնց խիստ հաճելի է եղել իր վարքով, եւ նրան իր կենդանութեան ժամանակ նոյնիսկ երանի են տուել. «Առ պարտաւոր գերիս ողջամիտ կամօք ակնարկեն, որպէս թէ ի մասանցդ քո կեցուցչաց ի պահպանարան հոգւոյս ծածկութի լիով ունիցիմ... Եւ որպէս շուք իմն վայելչական դնել ախորժեն ինձ անարժանիս սիրելիքն քո վասն քո՝ նայեցեալ ի կրօնս զգեստու բարեկերպութեան, չգիտելով զբիծս գաղտնեացն՝ երջանիկ կարդան եղկելւոյս» (Բան ՁԳ. էջ 233):

Սակայն Նարեկացին ունեցել է նաեւ թշնամիներ ու բամբասողներ եւս: «Ցայսմաւուրքը» գրում է, թէ «Որովհետեւ նա ամենայն փութով աշխատում էր ուղղել եկեղեցու խանգարուած կարգաւորութիւնը, ուստի մի քանի յաչաղկոտներ չարախօսեցին նրա մասին եպիսկոպոսների եւ իշխանների մօտ, եւ այդ ճշմարտութեան վարդապետին կոչում էին ծայթ եւ հերձուածող»: Եւ ապա պատմում է Նարեկացու մասին տարածուած զրոյցը, թէ ինչպէս իշխաններն ու եպիսկոպոսները, հաւաքուելով՝ ուզում են նրան դատի մատնել. հրաւիրակներ են ուղարկում սրբի մօտ, որ նրան տանեն, դատարան տանեն: Նա հեզութեամբ ընդունում է եկողներին եւ ճանապարհ ընկնելուց առաջ հացի հրաւիրելով նրանց՝ առաջները դնում է երկու խորոված աղաւնի: Օրն ուրբաթ պաս է. հրաւիրակները յիշեցնում են այն մասին Նարեկացուն: Սուրբը ներողութիւն է խնդրում, որ մոռացել է, թէ օրը պաս է, եւ ասում է, որ իր հիւրերն հրաման տան աղաւնիներին թռչելու: Հիւրերն, ի հարկէ, այսպիսի բան անել չէին կարող. բայց ինքը Նարեկացին հրամայում է, եւ աղաւնիները կենդանանալով թեւ են առնում, թռչում: Բնականաբար սարսափում են եկողները, իրենց աչքով տեսնելով Նարեկացու սրբութիւնը, եւ ամբաստանութիւնն ի դերեւ է ելնում (1):

Թէ իրօք նա թշնամիներ էլ է ունեցել, այդ երեւում է Ողբերգութիւնից. նոյն ՁԳ. բանի մէջ նա բարեկամներից առաջ յիշատակում է թշնամիներին.«Յիշեա՛ յայսմ Ողբերգութեան մատենի բանիս խոստովանութեան եւ

(1) Այս զրոյցը մեր օրով եւս իբրեւ ժողովրդական երգ ասւում էր Նարեկացու վրայ ուրիշ երգերի եւ զրոյցների հետ, որոնց բոլորի մէջ փառաբանւում է սուրբն իր հրաշագործութիւններով: Տե՛ս Գարեգին ս. Յովսէփեանի «Փշրանքներ», Թիֆլիս, 1892, էջ 16 եւ հտն.:

*զոր ի մարդկային ազնէ զթշնամիս մեր՝ ի բարի... Մի՛ բարկացցիս նոցա վասն իմ, Տէր, իբրեւ զսուրբս բամբասողաց՝ առ յանձն սիրոյդ որ յիս, այլ որպէս զչարս կշտամբողաց եւ իրաւամբ նախատողաց՝ ներեա՛ յանցանաց նոցա: Եւ արդ մատուցեալ երկաքանչիւրոցս առաջի քո, Արդարադատ, ոմանք առ մեզ վնասակարագոյնք ոսկեւոք, թերեւս եւ յիրաւի բամբասելոցս... մի՛ սաստկեսցես զիմսն խածանողսն* (էջ 291): *Թէ ինչու են թշնամացել եւ բամբասել նրան, այդ չի իմացւում նրա մատեանից. անհաւանական չէ «Յայտնաւորքի» հաղորդածը, թէ նրան ամբաստանում էին իբրեւ հերձուածողի: Նրա հայրը, Խոսրով Անձեւացեաց եպիսկոպոսը, իր ծերութեան հասակում բանադրւում է իրեն ձեռնադրող Անանիա Մոկացի կաթողիկոսից իբրեւ հերձուածող: Նրա ուսուցիչ Անանիա Նարեկացին, ինչպէս իր Խոստովանութեան Գրից երեւում է, «մերձ ի մահ վիճակում, ոչ ինքնաբերաբար, այլ կատարելով կաթողիկոսի հրամանը՝ անիծել է Թոնդրակեցիներին», ամենայն հաւանականութեամբ այն պատճառով, որ Խոսրով եպիսկոպոսի եւ կաթողիկոսի միջեւ տեղի ունեցած վէճերից յետոյ՝ «կարող էր կասկած ծագել եւ Անանիա Նարեկացու ուղղափառութեան մասին, քանի որ խնամիական կապեր կային սրա եւ Խոսրովի միջեւ եւ Անանիա Նարեկացուն էր աշակերտում Խոսրովի որդին՝ պատանի Գրիգորը»* (1): *Շատ հաւանական է, որ նոյն կասկածն եղել է եւ Գրիգոր Նարեկացու մասին, քանի որ սա էլ գրած ունի թուղթ ընդդէմ Թոնդրակեցի աղանդաւորների* (2):

*Գր. Նարեկացու կենսագրութիւնից էլ ուրիշ հաւաստի բան չգիտենք, եւ հաւանօրէն շատ բան էլ չի պակասում: Նրա կեանքն անցել է շատ միատեսակ. աղօթել, կարդալ, գրել, դաս տալ, խրատել, եւ ապա դարձեալ աղօթել ի խորոց սրտի: Շատ միակերպ մի կեանք, որ թւում է, թէ ձանձրալի պիտի լինէր մի մարդու համար, որ վերին աստիճանի զգայուն սրտի տէր է, գիտէ յուզուել ամէն մի չնչին բանից, որ ամբողջապէս եռանդ ու գործունէութիւն է շնչում, եւ որի վառ երեւակայութիւնը մի վայրկեանում տանում է նրան պանդական կողմեր իր ճգնարանի պատերից դուրս: Բայց նա մանկութիւնից միայն մի աշխարհ է ճանաչում — իր ներքինը, իր սիրտն ու միտքը, իր հոգին ու հայեցողական կեանքը, որով եւ նա շարունակ զբաղուած է, եւ այդ՝ բաւականութիւն է տալիս նրան: Եւ եթէ մէկ մէկ ձանձրանում էր նա, բաւական է, որ աղօթէր Աստուծուն, եւ ահա՛ նոր ուժ ստացած, նոր եռանդով կարող էր շարունակել իր մենաւոր եւ վարդապետական կեանքը. «Եթէ ի տխրանաց ինչ ձանձրութենէ ոք նուաղեսցի, կանգնեսցի՛ վերստին հաստարանաւ այս հառաչանաց ի քեզ յուսացեալ»* (*Ողբ. Բան Գ. էջ* 9):

---

(1) «Արարատ», 1897, էջ 94: Տե՛ս եւ Մ. Օրմանեան, «Ազգապատում», Կ. Պոլիս, 1912, էջ 1144 եւ հտն.:

(2) Հրատարակուած է «Բազմավէպում», 1893 թ.: Տե՛ս Մ. Օրմ. «Ազգապատում», էջ 1181 եւ հտն. իբրեւ աղբիւր յիշուած է «Գիրք Թղթոց», Թիֆլիս, 1901, էջ 495, 498—502:

Գր. Նարեկացու մահուան տարին նոյնպէս յայտնի չէ: Զամչեանը նրան (ըստ «Յայսմաւուրքի») մեռած է դնում մօտ 50 կամ 52 տարեկան հասակում՝ Հայոց ՆԾԲ թուականի փետրուարի 27-ին, մեր թ. 1003 թուին. իսկ Զարբհանալեանը նրան մօտ 60 տարեկան է մեռած համարում, հասցնելով նրա կեանքն, ուրեմն, մօտաւորապէս մինչեւ 1011 թուականը, քանի որ նա նրան ծնուած դնում է 951 թուականին: Փետրուարի 27-ն առնուած է «Յայսմաւուրքից», իսկ թէ ո՛րտեղից են առնուած նրա տարիքն ու մահուան ենթադրական թուականները, այդ յայտնի չէ: Նա թաղւում է նոյն Նարեկայ վանքում, Սանդուխտ կոյսի եկեղեցու մօտ՝ ըստ «Յայսմաւուրքի»: Նոյն տեղում մինչեւ վերջերս ցոյց էին տալիս նրա գերեզմանը, որ ուխտատեղի էր: Ժողովուրդը մինչեւ այժմ պատմում է եւ երգում է նրա հրաշագործութիւնների մասին: Այսպէս՝ պատմում են, թէ նա մի օր առանձնանում է մի քարայրի մէջ աղօթելու եւ այլեւս դուրս չի գալիս: Երկար սպասելուց եւ որոնելուց յետոյ, երբ մտնում են նոյն քարայրը, այնտեղ մարդ չեն գտնում: Այն ժամանակ պահքով եւ աղօթքով խնդրում են Աստուծուն, որ նրա տեղն ցոյց տայ, եւ հրեշտակն իջնելով յայտնում է, թէ սուրբն Աստուծու մօտ է բարձրացած: Ժողովրդի հայեացքով այդպիսի մեծ սուրբն չէր կարող մեռնել: Գր. Նարեկացու սրբութեան մասին զրոյցներն իր ժամանակից են հէնց գալիս, եւ այդ զրոյցները ծագած են նրա սրբակեաց կեանքի համար, բայց հետագայում այդ եղել է աւելի նրա գրական մեծ վաստակի եւ մանաւանդ Ողբերգութեան Մատեանի համար, որ ժամանակակիցների եւ յետնորդների աչքին իբրեւ մի հրաշալիք է երեւացել:

3. Երկերը: — Մենք մինչեւ այժմ դժբախտաբար չենք կարող ասել, թէ նրանից որքան երկեր են մնացել: Յայտնիները հետեւեալներն են (1)՝ 1. Գանձեր (թւով երեք), 2. Տաղեր ու մեղեդիներ (քանից աւելի), 3. Մի թուղթ Թոնդրակեցիների դէմ, 4. «Մեկնութիւն Երգոց Երգոյն», որ գրուած է Վասպուրականի Գուրգէն թագաւորի հրամանով Հայոց ՆԻԶ = մեր թ. 977 թուին, 5. «Պատմութիւն Ապարանից խաչին, եւ Ներբող Ս. Խաչի եւ Ներբող Ս. Աստուածածնի», որոնք գրուած են Մոկաց եպիսկոպոս Ստեփանոսի խնդրով 989 թուից յետոյ եւ Ողբերգութիւնից առաջ, 6. «Ներբող Առաքելոյ», որ գրուած է Ողբերգութիւնից առաջ, 7. «Ներբող Ս. Յակոբայ Մծբնայ Հայրապետին», 8. «Մատեան Ողբերգութեան», որ մեր բանաստեղծի ամենամեծ երկն է:

Ողբերգութեան վերջում կայ հետեւեալ յիշատակարանը. «... Ի յաւարտումն կատարման իններեակ յոբելինին, ի սկիզբն պսակելոյ մտի տասնեկին յաբեթական տոհմիս տումարի, յետ երից ամաց անցելոց որ զկնի զալստեան ի կայս եւ ի կոյս կողմանց հիւսիսոյ զիմաց արեւելից՝ յաղթող

(1) Սրբոյ հօրն մերոյ Գրիգորի Նարեկայ վանից վանականի մատենագրութիւնք, Վենետիկ, 1840:

*եւ մեծ կայսերն Հոռոմոց Բասլի, յորժամ ընդարձակ եւ մակաղաւիթ կանոնաւ ափիռ տարածէր... անթարթափ վերասլացեալ ի յաջ եւ յահեակ՝ անպհականել յաւելուլ բաժինս մասանց վիճակաց խմբից աշխարհաց ի ծոց իւր, արդ ի յայնմ անդորրութեան միջոցի, յորում եղերեալ ընդոտնեցան թշնամիք եկեղեցւոյ, ստացեալ հիմնեցի, կառուցի... զբազմաստեղնեան դրուագս գրութեան այսմ սափերի արգասաւորի, ես Գրիգոր»... Իններորդ յոբելեանի վերջը հայոց 450 թուականն է, իսկ տասներորդ յոբելեանի սկիզբը՝ 451 թուականը, որ սովորական հաշւով անում են մեր թ. 1001 եւ 1002 թուականները: Անշուշտ, բանաստեղծն իր այս մեծ երկը չէր կարող կարճ ժամանակում գրել: Նա գրում է. «Յետ երից ամաց անցելոց, որ զկնի գալըստեան... կայսերն Հոռոմոց Բասլի»: Արդ, Ստ. Տարօնեցին «գալն Վասլի թագաւորին Յունաց յաշխարհն արեւելից» դնում է հայոց 449 թուին, որ է մեր թ. 1000 թուականը: Այս թուականի Զատկի օրը մեռնում է Դաւիթ Կիւրապաղատը, որ իր աշխարհը թողել էր Վասիլ կայսրին, եւ կայսրը Կիլիկիայի Տարսոն քաղաքում լսելով այդ՝ շտապով գալիս է տիրելու Կիւրապաղատի երկիրներին: «Եւ անցեալ թագաւորն ընդ Հանձիթ եւ ընդ Բալու՝ ելանէ ի լեառն Կոհերայ, — յաւուր Վարդավառի տօնին, — որ ընդ մէջ Հաշտենից, Ծոփաց եւ Խորձենոյ» (1): Ապա նա գալիս, բանակ է դնում Վաղարշակերտ քաղաքի մօտ: Բոլոր մանր թագաւորներն ու իշխանները սարսափած գնում են նրա բանակը, բացի Հայոց Գագիկ Բագրատունի թագաւորից: Գնում են նոյնպէս երկու Արծրունի եղբայր թագաւորները, Սենեքերիմ եւ Գուրգէն: «Եւ արքունատուր ընծայիւք պատուեալք ի նմանէ, — գըրում է Ասողիկը, — տասնաձեռն ոսկւով եւ արծաթով. եւ հրովարտակ առաքեալ առ մերձաւոր ամիրայսն Տաճկաց, զի մի՛ մեղիցեն աշխարհին Վասպուրականի՝ դադարեցոյց զառ եւ զգերութիւն եւ զհարկապահանջ բռնութիւնն»: Կը նշանակէ՝ Վասպուրականի թագաւորները նեղուելիս են եղել սահմանակից մահմեդականներից, եւ նրանց նեղութիւնը դադարել է, եւ երկիրը խաղաղել է միայն կայսրի ահից: Այդ անդորրութեան միջոցին ահա Գր. Նարեկացին 1001 - 1002 թ. սկսում է գրել իր Ողբերգութիւնը եւ վերջացնում է կայսեր գալուց երեք տարի յետոյ՝ 1003 թ., որովհետեւ կայսրը 1000 թ. ամառն է եկել, երեք տարի յետոյ լինում է, ուրեմն, 1003 թ. ամառուանից յետոյ (2):*

---

(1) Ստեփաննոսի Տարօնեցւոյ Ասողկան Պատմ. Տիեզ., Պետերբուրգ, էջ 276:

(2) Վասիլ կայսրը 449 թ.=1000 թ. Հայաստան գալուց յետոյ՝ վերադառնում է Կ. Պոլիս եւ յաջորդ տարին, 450 թ.=1001 թ., նորից է գալիս: Այս երկրորդ գալստեանն է ակնարկում Նարեկացին գրելով՝ «անթարթափ ի նոյն վերասլացեալ»: Արիստակէս Լաստիվերտցին Վասիլի գալը դնում է նրա թագաւորութեան (976—1025 թ.) 25-րդ տարում, ուրեմն 976+25=1001 թ.: Երեք տարի յետոյ լինում է 1004 թ.: Ըստ այսմ, ուրեմն, Նարեկացին իր մեծ երկը վերջացրած պիտի լինի 1004 թուականին: — Արիստ. Լաստ. Պատմ. գլուխ Ա. «Անցք ընդ աշխարհս Հայոց»:

Գրիգոր Նարեկացու դրական երկերը, բացի Ողբերգութիւնից եւ տաղերից, նիւթով եւ ձեւով նոյնն են նախորդ դարերում եւ իր ժամանակ զարգացած գրականութեան հետ․ մեկնութիւն, ներբողեան եւ հոգեւոր երգ: Երգոց Երգի մեկնութեան մէջ, օրինակ, նա առանձնապէս չի տարբերւում նախորդներից, բայց եթէ իր համեմատաբար պայծառ ու գեղեցիկ մտածութեամբ: Նոյնն է եւ ներբողեանների մէջ: Ս․ Խաչի ներբողեանն, օրինակ, սկզբում խաչի զօրութեան մի սքոլաստիկական սովորական մեկնութիւն է, ձեւերն ու նիւթը մեծ մասամբ նախորդներից մշակուած: Հին ճառերի ու ներբողեանների երկարաբան արուեստակեալ լեզուն ու ճոռոմ արտայայտութիւնը գտնում ենք եւ Նարեկացու մէջ: Ներբողեանների մէջ կար եւ քնարական մաս, որի մէջ կէս բանաստեղծական եւ կէս ճարտասանական ձեւով գովաբանւում էր ներբողելի անձը․ այստեղ արդէն մեր բանաստեղծն ազատ է զգում իրեն, եւ նրա ներբողեաններն այս մասի մէջ դառնում են երբեմն օրհնաբանական բանաստեղծութիւններ, նոյնիսկ ոտանաւորով յօրինուած: Բայց ինչպէս էլ լինի, դրանք իսկական բանաստեղծական ներընչման արդիւնք չեն, այլ յօրինուած են ուսուցչական նպատակով:

Նրա գանձերը, թւով երեք, որոնց տների գլխագրերը կազմում են «Գրիգորի երգ» գլխաբանը (ակրոստիխ) (1), սկսւում են «գանձ» բառով, իսկական գանձ (փող, հարստութիւն) բառի նշանակութեամբ: Դրանք տօնի օրուայ յատուկ մաղթանքներ են, ուղղուած Ս․ Հոգւոյն, եկեղեցւոյն ու Ս․ Խաչին, աւելի դաւանաբանական բովանդակութեամբ, որոնց մէջ առանձնապէս խնդրուածքներ են լինում քահանայապետի եւ եկեղեցական դասի համար, նոյնպէս եւ վարժապետների ու թագաւորի համար իր զօրապետներով ու զօրքերով: Առանձին շնորհք չի երեւում նաեւ այս գանձերի մէջ, որոնք հետաքրքիր են միայն իբրեւ մեր ամենահին յատուկ մաղթանքները:

Իսկական բանաստեղծ Նարեկացին երեւում է Ողբերգութեան եւ միայն մի քանի տաղերի մէջ․ բայց նախ հետեւեալի մասին:

4․ Բանաստեղծական արուեստի տեսութիւնը:— Այն ժամանակ, երբ ծաղկում էր ճարտարապետութիւնն իր համաչափութեամբ եւ ներքին ուժեղ արտայայտութեամբ, բանաստեղծութիւնը չէր կարող մնալ անարուեստ վիճակի մէջ, առանց որեւէ տեսութեան: Եւ իսկապէս, Նարեկացու երկերի մէջ ոչ միայն որոշ, երբեմն շատ նուրբ արուեստ ենք գտնում, այլ տեսնում ենք նաեւ նրա հայեացքը բանաստեղծութեան թէ՛ բովանդակութեան եւ թէ՛ ձեւի մասին:

Ամենից առաջ նա չի խորշում բնութիւնից, ունի բնութեան զգացում: Ինչ որ Անանիա Շիրակացին ըստ իր ժամանակի գիտութեան դրել է իբրեւ աղբիւր կեանքի ու կենդանածնութեան, ամէն ինչի լինելութեան, այն է՝ արփին–արեգակը ջերմութեամբ ու լուսով, որ տարածւում են երկրի վրայ, այլեւ օդն ու ջուրը, նոյնը Գրիգոր Նարեկացիին երգում է բանաստեղծօրէն: Նա բնութիւնն զգում է իբրեւ մի շարժուող, ապրող, կեն–

---

(1) Քառասնից տաղը նոյնպէս ունի «Գրիգորի է երգս այս» գլխաբանը:

դանի միութիւն, որ ունի իր վսեմ խորհրդաւորութիւնը: Ինչպէս իմանում ենք նրա՝ «Վարդավառի տաղից», որի վերլուծութիւնը վերջում էլ կը տեսնենք, ամէն կենդանութեան սկիզբն է արփին–արեգակը վեհ վարսերով. նա է, որ գունավառում է ամէն ինչ. նա քաշում է ամպը, որից ցօղն է շաղում եւ մարգարտազարդում թուփ ու կանաչ: Բայց արեգակն իր համատարած ծովի մէջ, նրանից վառ առնող ու փռուող վարդը, գոյնզգոյն ծաղիկները, շողշողուն ու խուռն տերեւների մէջ սնուող պտուղը, հովտում շաղով լցուած շուշանը, որ արեգակի դէմ շողշողալով հովահարւում է հիւսիսային հովից եւ հարաւային լեռան քաղցր օդից, եւ վերջապէս՝ գիշերային երկնակամարը լուսնի դէմ գունդ գունդ բոլորած աստղերով, — այս ամէնը կազմում են ոչ միայն մի մեծ ներդաշնակ ամբողջութիւն, այլեւ նոյնիսկ մի աստուածային երաժշտութիւն: Ռ. Զարդարեանի «Մենաւոր ծառի» մէջ գտնում ենք հետեւեալ տողերը. «Երգէ՛, ո՛վ ծառ, որ կը մնաս իբրեւ լարուած տրամադրելի քնար, բնութեան արձակ հովերուն, արձակ բանաստեղծութեան առջեւ. երգէ՛ անփութօրէն վշտակոծ կամ ցնծալից եղանակները. երգէ՛ ինչպէս որ տուն կու տայ հիւսիսի քամին կամ մեղմաթեւ հովիկը. ի՛նչ հոգ, բաւական է որ անկեղծ ըլլան բոլոր ձայներն ու անոնց հաղորդուած յուզումները, որ քու սաղարթներուդ, տերեւներուդ մէջէն կ'անցնին ու կը շնչեն»: Այս միեւնոյնը Նարեկացին արտայայտել է շատ կարճ. «Տերեւն՝ տաւիղ Տուողին, Զօր երգէր Դաւիթ հրաշալին»: Հովից սօսափող տերեւը, ուրեմն, հնչուն բնութիւնն առհասարակ, դա Աստուծու քնարն է, որ նուագում է նաեւ սաղմոսերգու բանաստեղծը: Բանաստեղծն ինքն էլ, սակայն, Աստուծու քնարն է. «Սուրբ Երրորդութեանդ արժանացուք լինել քնար միշտ հոգեւոր հնչմանց» (Տաղ Համբարձման, էջ 478): Կը նշանակէ, մեր Նարեկացու հայեացքով, բանաստեղծն էլ նոյնն է անում, ինչ որ բնութիւնը: Նա երգելով բնութիւնը՝ նուագում է աստուածային քնարի վրայ: Արհամարհուած եւ անտես արուած, նոյնիսկ մեղսական համարուած բնութիւնն, ուրեմն, կենդանանում, ստանում է իր իրաւունքը: Բնութիւն երգելն արդէն համարւում է մի աստուածային փառաբանութեան գործ կատարել, որովհետեւ բնութիւնն ինքը փառաբանում է Աստուծուն. «Երկինք պատմեն զփառս Աստուծոյ»: Այս անհրաժեշտ էր բանաստեղծութեան համար, քանի որ առանց բնութեան, — լինի արտաքին բնութիւնը, թէ մարդու հոգեկան ներքինը, ներքին բնութիւնը, — չկայ ոչ մի զօրեղ քնարերգութիւն: Արտաքին բնութիւնից, սակայն, նա դեռ բանաստեղծական պատկերներ է առնում նմանութիւնների, գեղեցիկ ձեւի համար, կամ այն գործածում է այլաբանութեան համար, բացի մի տաղից, որի մէջ բնութիւնն է գովերգում դարձեալ կրօնական նպատակով: Բայց բնութեան այսպիսի ձեւական կիրառութիւնն էլ ոճի համար՝ իսկապէս բնութիւն երգել է: Իսկ մարդու ներքին բնութիւնը նա նիւթ է դարձնում բանաստեղծութեան:

Միւս կողմից՝ բնութիւնից չխորշող այս բանաստեղծը գիտէ, թէ աստուածային ներշնչումն ունի իր մէջ. նա զգում է, թէ իր խօսքի շնորհքն

*Աստուծուց է. նրա մէջ աստուածային ձայնն է խօսում:*

Եղիցի՛ հոգի քո խառնեալ ի սա,
Շունչ զօրութեան Մեծիդ միացի՛
Ի քո՛ ինձ շնորհեալ ստեղծաբանութիւնս:

*Այսպէս է դիմում նա Աստուծուն Ողբերգութեան սկիզբներում (Բան Գ. էջ 10): Մի ուրիշ տեղ (Բան ՀԴ. էջ 191) ասում է. «Ի Քէ՛ն ազդեցաւ գրել ինձ զսոսին»:*

*Մի անգամ որ բանաստեղծութեան համար գիտակցական պահանջ է ներշնչումը, այսպիսի գիտակցութիւնից բանաստեղծութիւնը դառնում է արդէն կենդանի շունչ, ինքնաբուխ արտայայտութիւն անհատական զգացմունքի ու տպաւորութեան: Քնարերգութեան մէջ մտնում են մարդկային հոգին ու բնութիւնը, ապա՝ բանաստեղծութիւնը ձեւով էլ կերպարանափոխւում է: Քերթուածը յօրինւում է ոչ թէ մեքենայաբար, կաշկանդուած սովորական ու աւանդական ձեւերով ու նիւթով: Դա այլեւս նմանողական չէ, ինչպէս էր ընդհանրապէս չարականների մէջ, այլ ստեղծւում է մի նոր բան եւ րոպէի թելադրութեան համեմատ: Ինչպէս եւ ինչ որ Աստուած կամ նրա տաւիղ բնութիւնը կը խօսի բանաստեղծի սրտում, այնպէս էլ նա կ'երգի անկեղծ, իր ամբողջ էութեամբ, լինի նրա երգը Աստուծու փառաբանութիւն, ինչպէս նրա տաղերն են, թէ սրտի խորքերից բխած մաղթանք ու աղերս, մի անարիւն զոհաբերութիւն Աստուծուն, միանգամայն եւ օրհնութիւն, ինչպէս է նրա Ողբերգութիւնը.*

Ձայն հառաչանաց հեծութեան սրտի՝ ողբոց աղաղակի
Քեզ վերընծայեմ, Տեսո՛ղդ գաղտնեաց·
Եւ մատուցեալ եդեալ ի հուր թախծութեան անձին տոչորման՝
Զպտուղ բղձից ճենճերոյ սասանեալ մտացս՝
Բուրվառաւ կամացս առաքել առ Քեզ···
Ելցէ՛ ի խորոց սրտի զգայութեանց խորհրդակիր սենեկիս՝
Վաղվաղակի ժամանել առ Քեզ՝
Կամաւորական նուէր բանական զոհիս,
Ողջակիզեալ զօրութեամբ ճարպոյ՝
Որ յի՛սն է պարարտութիւն:

*Այսպիսի անձնական քնարերգութիւնը միայն, — որ մի կողմից՝ խօսում է սեփական ներքին ապրումներից, միւս կողմից՝ չի խորշում բնութիւնից, — պիտի դառնար իսկական բանաստեղծութիւն: Բայց այդ դեռ քիչ է. դրա համար հարկաւոր էր նաեւ երկու ուրիշ բան՝ հարուստ նիւթ կամ բովանդակութիւն եւ արուեստաւորութիւն: Ինչքան էլ բանաստեղծական երկի մէջ հեղինակի իրեն ապրումները, իր անձնական զգացումներն ու խոհերը պիտի լինին կերպացած, բայց եւ այնպէս դրանք պիտի ունենան ընդհանուր արժեքաւոր բնաւորութիւն: Զուտ անձնական քնարերգութիւն*

*անելով Հանդերձ՝ բանաստեղծը, այսպէս ասած, իր սրտի մէջ պիտի զգայ իր ժամանակի եթէ ոչ բոլոր մարդկանց, գոնէ իր Հասարակութեան, իր դասի Հոգին եւ ոչ միայն իր սրտի բաբախումները դնի իր երգի մէջ, այլեւ ուրիշներինը: Եւ մեր Գրիգոր Նարեկացին գիտակցում է արուեստի այս տեսութիւնը. նա իր Ողբերգութեան Համար պարզապէս յայտնում է, թէ ամենայն դասի եւ Հասակի, իր ժամանակի բոլոր քրիստոնեաների Հոգին է ներկայացնում՝ «նշաւակեալ յիւրում պատկերին».*

Եւ քանզի առ ամենայն հասակ
Տնկեցեալ յերկրի ազգ բանականաց՝
Այս պատուէր՝ նկարագրական
Նորոգ մատենի ողբոց նուագի,
Որ զամենեցունց ունի զկրից պատահմանց
Նշաւակեալ յիւրում պատկերին,
Իբր կցորդ մեծգիտական կարեաց համայնից,
Առ բոլոր գումարըս բազմահոյլով
Տիեզերակոյտ քրիստոնէից...

(*Բան Գ. էջ 7 եւ Հտ.*)

*Ուրիշների զգացումներն եւ ապրումներն իր անձի վրայ արտայայտելով, սակայն, նա տարրկայական բանաստեղծութիւն չի յօրինում, մի լոկ քերթողական ձեւով չի բանեցնում իր եսը. այլ միաժամանակ խսկական անձնական քնարերգութիւն է անում, որովհետեւ խորը կերպով զգում է, որ այն ամէնը, ինչ որ ուրիշներն ունին եւ ինքն արտայայտում է, նաեւ իրենն է, իր սեփականն է (Ողբերգ. Բան ՀԲ. էջ 186):*

Ոչ ոք մեղաւոր իբրեւ զիս,
Ոչ ոք անօրէն, ոչ ոք ամբարիշտ,
Ոչ ոք անիրաւ, ոչ ոք չարագործ,
Ոչ ոք վրիպեալ, ոչ ոք սխալեալ,
Ոչ ոք մոլեգնեալ, ոչ ոք խարդախեալ,
Ոչ ոք շաղախեալ, ոչ ոք ամաչեցեալ, ոչ ոք դատապարտեալ.
Ե՛ս միայն եւ այլ ոչ ոք,
*Ե՛ս ամենայնն եւ յի՛ս ամենեցուն:*

*Թէ անձնականութիւնը որքան մեծ տեղ է բռնում, այդ երեւում է Հետեւեալից: Բանաստեղծն իր Ողբերգութիւնը գրել է իբրեւ աղօթից մատեան այն նպատակով, որ մարդիկ այդ գրքի վրայ աղօթելով փրկութիւն ստանան. բայց այս դէպքում էլ նա Հոգում է նաեւ իր Համար: Շատ անգամ նա կրկնում է, թէ քանի որ այս աղօթքներն իր Հոգուց են բխել, ուստի երբ ուրիշներն իր այդ գրքի վրայ աղօթեն, այդ միեւնոյնն է, թէ ինքն է աղօթում.*

Եղիցի՛ բղխումն արտասուաց սովաւ վարժելոցն,
Եւ պարգեւեալ տացի ի ձեռն սորին ապաշաւ բղձից.—

Շնորհեսցի՛, Տէ՛ր, եւ ի՛նձ ընդ նոսին
Առ ի քէ՛ն զղջումն կամաց...
Նուիրեսցի վասն ի՛մ այսու մատենիւ պաղատանք նոցին,
Եւ բանիւս այսու հեծութիւնք նոցին ընդ իմ խնկեսցին...
Եթէ եղցեն ի՛նձ բարեպարիշտք ընծայիլ սովաւ,
Ընկա՛լ կենդանեօքն վասն քո, գթա՛ծ, եւ զի՛ս ընդ նոսին:

*Բան Գ., էջ* 8

*Եւ վերջապէս, բանաստեղծութիւնը, ասացինք, պէտք է յօրինուած լինի որոշ արուեստով, այսինքն ձեւով գեղեցիկ պիտի լինի: Իսկ դրա համար հիմնական պայման է, որ գեղարուեստական երկը բազմազանութեան մէջ միութիւն պէտք է ունենայ, որ է՝ մի հիմնական գաղափար, մի գործողութիւն եւ, եթէ քնարերգութիւն է, նաեւ մի ընդհանուր եղանակ, տոն: Մեր Ողբերգութեան հեղինակը վերջաբանի մէջ այսպէս է բնորոշում իր երկը. «Ստացեալ հիմնեցի, կառուցի, կարդեցի, կուտեցի, արձանացուցի, դիզի, բարդեցի, ցուցի հաստատելով* ի հրաշակերտութիւն միազոյ իրի ըզբազմաստեղնեան դրուագս դրութեան *այսմ տոփերի արգասաւորի»: Ուրեմն իր երկը նա ըմբռնում է իբրեւ բազմաճիւղ դրուագներով հրաշակերտութիւն միազոյ իրի, մի՛ բանի, այսինքն՝ ստեղծագործութեան նիւթն է մի ընդհանուր միայուն գաղափար, մի՛ խնդիր, որ կազմում է երկի էութիւնը, անցնելով ամբողջ երկի միջով: Դա միութիւնն է, մնացածներն այդ մէկ նիւթի բազմազան զարգացումներն են միայն, որ էական գաղափարի շուրջը ճիւղաւորւում են զանազան ձեւերով: «Փոխեալ եղանակ բանիս [=խօսքի դարձուածը], այլ ոչ զեղկութիւն աղետիս», ասում է նա (Բան ԻԵ., էջ* 58)*. այսինքն՝ բանաստեղծութեան ոչ միայն նիւթը մէկ միութիւն ունի, այլեւ տոնը նոյնն է մնում նոյն երկի համար:*

*Ահա՛ մի ամբողջ տեսութիւն բանաստեղծական արուեստի մասին, որի տարերքը գտնում ենք նրա երկերի մէջ: Բանաստեղծութեան այսպիսի ըմբռնումի արգասիքն է այն, որ Ողբերգութեան Մատեանի մէջ, որ խիկապէս մեր առաջին մեծ բանաստեղծական երկն է, մի նոր արուեստաւորութեամբ եւ մի նոր շնչով միայուն ձեւ են ստացել ոչ միայն կրօնաւորի անհատական ու դասային, այլեւ ընդհանուր մարդկային յաւիտենական գաղափարներ ու զգացումներ, ապրումներ ու անրջանքներ, եւ այս՝* 11*րդ դարի սկզբում, այն ժամանակ, երբ եւրոպական նոր ազգերը ոչինչ կամ գրեթէ ոչինչ չունէին: Նարեկացին մեր հոգեւոր բանաստեղծութիւնն այդ երկով եւ մի քանի տաղերով մի անգամից բարձրացրել է իր հանճարով, ամփոփելով այն ամէնը, ինչ որ նախորդ դարերում մեր հոգեւոր քնարերգութեան մէջ կար արտայայտուած, մի այնպիսի ինքնայատուկ ձեւով, որին նմանել չեն կարողացել:*

5. «Մատեան Ողբերգութեան»: Միստիկ մենակեացը, միստիցիզմ եւ քնարերգութեան աղբիւրը: — *Ի՞նչ է նպատակն եւ էութիւնը Ողբերգու-*

*թեան Մատեանի* (1), *որ է «ի խնդրոյ հայցմանց հարց միանձանց եւ բազմաց անապատականաց ասացեալ»։ — Ինքը հեղինակն անփոփոխ կրկնուող վերնագրերով, որ դնում է ամէն մի «բանի», այսինքն՝ մասերի համար, շատ լաւ բացատրում է այդ. «Վերստին յաւելուած կրկին հեծութեան նորին հոկողի առ նոյն աղերս մաղթանաց բանի ի խորոց սրտից խօսք ընդ Աստուծոյ»։ Սրտի խորքում կուտակուած է մեղքը. Աստուած մի անաչառ դատաւոր է, բայց եւ ներող ու գթած հայր. Հոկողի խօսքն Աստուծու հետ հեծութիւն ու զղջում է աղօթախառն. իսկ նպատակն է փրկութիւնը։ Այս է կազմում այդ ճգնաւորական Ողբերգութեան էութիւնը, միութիւնը։ Եւ այս՝ ժամանակի քրիստոնէական միստիցիզմն է, որ ցայտուն արտայայտութիւն է գտել Նարեկացու մէջ։*

*Նրա երկի մանրամասնութիւնների մէջ մենք տեսնում ենք ընդհանրապէս հին քրիստոնեայի եւ մասնաւորապէս մենակեացի եղերերգական վիճակն իր ամբողջ պատկերով եւ աշխարհայեցութեամբ։ Տիեզերքը չունի նրա, ինչպէս եւ ուրիշների համար այն մեծութիւնը, ինչ որ հիմա մեզ համար։ Դա կազմում էր մի երեք յարկանի մեծ շէնք՝ երկինք, երկիր եւ դժոխք կամ սանդարամետք անդնդոց, — Աստուծու, հրեշտակների ու արդարների բնակարանը, մարդկանց ժամանակաւոր կացարանը եւ սատանաների տանջարանը։ Այստեղ, ինչպէս մի ընդարձակ բեմի վրայ, ինչպէս գեղեցիկ արտայայտել է մի Ֆրանսիացի բանաստեղծ, աշխարհի սկզբից ի վեր կատարւում էր մի մեծ դործողութիւն, որի վախճանն առաջուց յայտնի էր, որ լինելու էր վերջին դատաստանը։ Մարդն արարածների մէջ Աստուծու ամենից սիրելին էր։ Ինչպէս Եզնիկ Կողբացու երկի ուսումնասիրութեան ժամանակ տեսանք, ամէն բան ամենակարող Աստուածը ստեղծել է միայն մարդու համար, նոյնիսկ հրեշտակներն ու սատանաները, եւ նրա հոգացողութեան միակ առարկան մարդն էր։ Աստուած, սակայն, անմիջապէս չի խառնւում մարդկանց գործերին, որովհետեւ ստեղծելով մարդուն՝ տուել է նրան ինքնիշխանութիւն, ազատ կամք, կա՛մ գործել բարին եւ գնալ երանութեան դրախտը, կա՛մ թէ չար գործել եւ գնալ դժոխքը, յաւիտենական տանջանքի տեղը։ Թէպէտ եւ մարդն իր գործերով անարժան էր, բայց Աստուած բարերար էր, միշտ խնամում էր նրան. նա յայտնի էր առ մարդն ունեցած բարերարութիւններով, կամենում էր, որ մարդը փրկուի, եւ նոյն-*

(1) Գրքի ամբողջ վերնագիրն է. «Դրութիւնք յոգնաթախանձ բանից օգտակարաց, ապաշաւանաց, հոգեշահ խրատուց, անձին առգտանաց զղջականաց, կանոնաց կենաց, կամաւորութեամբ յանձնառութեանց, աներեւութից յայտնութեանց, մեղանաց խոստովանութեանց, ցուցմունք զաղտնեաց, տարածմունք ծածկեցելոց, յանդիմանութիւնք թագուցելոց, ապեղանիք զօրաւորք վիրաց անբժշկականաց, դեղք ազդողականք ցաւոց անտեսակա-նաց, հնարաւորութիւնք բազմամասնեայ երկանց վտանգից, ի դիմաց կարեաց ամենից բնութեանց առիթք արտասուաց, պատճառք աղօթից, ի խնդրոյ հայցմանց հարց միանձանց եւ բազմաց անապատականաց ասացեալ Մատեան Ողբերգութեան Գրիգորի Նարեկայ վանից վանականի»։

իսկ Աստուծոյ Որդին մարդացել է դրա համար: Եւ մարդը կարող էր փրկուել, որովհետեւ ոչ մի մեղք չկար, որ անկեղծ ապաշխարութեամբ չքաւուէր: — Այս է ահա Գրիգոր Նարեկացու, նրա հետ եւ նրա նման ուրիշների աշխարհայեացքը:

Տիեզերքի, մահուան ու այն աշխարհի առեղծուածն, ուրեմն, որ քնարերգութեան վսեմ նիւթն է կազմում, որոշ էր հին քրիստոնեայի համար, եւ նա չպիտի այդ գաղտնիքի անյայտութեան առաջ իր ներքին յուզումներն ունենար: Եւ թւում է, թէ այն ժամանակ չպիտի առաջ գար մաքուր եւ զօրեղ քնարերգութիւն. որովհետեւ եկեղեցին արդէն հոգացել էր ամէն բանի համար, ամէն մետաֆիզիկական խնդիր արդէն որոշուած էր, եւ բանադրանքի սպառնալիքով ոչ ոքի թոյլ չէր տրւում եկեղեցուց դուրս եւ եկեղեցուց տարբեր մտածել եւ զգալ, ուրեմն եւ փակուած էր անձնականութիւնը, քնարերգութեան աղբիւրը: Բայց այն ժամանակ ահա՛ Գրիգոր Նարեկացու հանճարով մեր կրօնական երգը դառնում է արտայայտութիւն անհատական երազանքների, կրօնական զօրեղ եւ յաւիտենականութեան խնդիրների:

Ինչո՞ւ այսպէս: — Որովհետեւ հոգացուած էր միայն սովորական մարդու համար, որ հանգիստ ապրում էր, զի նա այնպէս գիտէր, թէ բաւական էր, որ ինքը մեռնելուց առաջ խոստովանուէր եւ հաղորդուէր, եւ կը մեռնէր՝ հաւատալով թէ կ՚արդարանայ, դրախտ կ՚երթայ: Իսկ խոհուն եւ զօրեղ ոգիները հէնց այդ աշխարհայեցութեան մէջ գտնում էին հոգեկան տանջանքների աղբիւր: Սովորական մարդու մահը՝ նրանց համար անմահութիւն չէր, այլ մեռելութիւն, մի չար մահ: Դա մինչեւ անգամ անասունի մահ էր.

Իբր զանզգայ պաճարս անասնոց
Մեռանի՛մք եւ ոչ զարհուրիմք,
Կորնչի՛մք եւ ոչ հիանամք,
Թաղեցեա՛լ լինիմք եւ ոչ խոնարհիմք,
Տարագրի՛մք եւ ոչ տագնապիմք,
Եղծանի՛մք եւ ոչ զղջանամք,
Մաշի՛մք եւ ոչ մտառեմք,
Պակասի՛մք եւ ոչ պատրաստիմք,
Գնա՛մք եւ ոչ զգուշանամք,
Գերի՛մք եւ ոչ եւս զգամք:

**Բան ԾԵ. էջ 140**

Մարդու վախճանը չպիտի լինէր միայն արդարանալ, այլեւ ձեռք բերել բարձրագոյն բարիքը, այն է՝ անբաժանելի միանալով աստուածութեան հետ, որ ամենայն կատարելութեան լուսատիպն է, ստանալ մի աստուածային անդորրութիւն: Ա՛յս էր ահա իսկական փրկութիւնը, որին ձըգտում էին զօրեղ ոգիներր եւ որ խորը ցնցում է մեր բանաստեղծի ամբողջ էութիւնը, եւ նա ուրիշ հազարաւորների հետ անձնատուր է լինում ճգնութեան եւ միստիցիզմի:

Իսկ ես ոչ միայն կարդամ,
Այլ նախ հաւատամ մեծութեան Նորին.
Ոչ երէ վասն պարգեւաց Նորա՝
Մատուցեա՛լ յողոք դեգերիմ,
Այլ իբր զկենդանութիւն իսկապէս,
Եւ զշնչոյ տուրեւառութիւն հաւատի,
Առանց որոյ ո՛չ է շարժողութիւն կամ ընթացութիւն.
Զի ոչ այնքան յուսոյն հանգուցիւ,
Որքան սիրո՛յն կապանօք բերիմ:
Ոչ ի տուրսն, այլ ի տուո՛ղն յաւէտ կարօտիմ.
Ոչ փառքն են ինձ անձկալի,
Այլ փառաւորեա՛լն է համբուրելի.
Ոչ կենացն փափագանօք,
Այլ կենարարի՛ն յիշատակաւն միշտ ճենճերիմ.
Ոչ վայելիցն տարփանօք հեծեմ,
Այլ հանդերձողի՛ն տենչանօք
Ցերիկամանց սստի կականիմ.
Ոչ զհանգիստն խնդրեմ,
Այլ զհանգուցչի՛ն զերեսս աղաչեմ.
Ոչ հարսնարանին խնճոյիւք,
Այլ փեսայի՛ն անձկութեամբ մաշիմ...
Աներկմիտ յուսով հաւատամ՝
Ի կարողի՛ն ձեռն ապաստանեալ՝
Ոչ քաւութեան միայն հասանել,
Այլ զնոյն ինքն տեսանե՛լ՝
Ցողորմութիւն եւ ի գթութիւն
Եւ յերկնիցն ժառանգութիւն,
Թէպէտ եւ յոյժ եմ տարագրելի:

*Բան ԺԲ. էջ* 27 *եւ Հտ.*

Զօրեղն ինքնութեամբ զիս Հօր ընծայեալ,
Անդէն առ նմին, նովիմբ միշտ ի Քեզ՝
Ճնչոյս ողջունիւ կապեալ ընդ շնորհիդ՝
Ի Քեզ միանալ անբաժանելի:

*Բան ԻԴ. էջ* 57

Ի Քեզ, Տէ՛ր, անկայց՝
Միացեալ իսպառ անբաժանելի:

*Բան ՁԵ. էջ* 226

Եղիցի՛ ողորմութիւն Ստեղծողիդ ընդ իս,
Եւ շունչ ոգւոյս իմ ընդ Քեզ
Անբաժանօրէն կապաւ միացեալ ի մի:

*Բան Ղ. էջ* 235

Քրիստոնէական միստիցիզմը թէ՛ տեսականօրէն եւ թէ՛ գործնապէս կատարեալ արտայայտութիւն է գտել մեր բանաստեղծի մէջ: Մարդու անձնաւորութիւնը, միանալով Աստուծու հետ, բոլորովին չի կորցնում իր առանձնութիւնը եւ չի ոչնչանում՝ լուծուելով աստուածութեան մէջ. այլ նրա հետ եւ նրա՛ հաւասար ունենում է անճառելի լոյսի մէջ՝ անվախճան «փառք վայելչութեան», «անդորրութիւն կենաց հանգստեան». մարդն Աստուծու մէջ եւ Աստուած ինքը մարդու մէջ.

Նոր հաստատեցի գոյութիւն բնութեանս
Մարմնեղէն յարկի անդամոցս,
Ցորում հանգուցեալ անլքանելի՝
Բնակեցես բազմեալ ախորժ տենչանօք՝
Միութեամբ հոգւոյս իմ ընդ Քեզ:

Բան ՀԸ. էջ 209

Այս փրկութիւնը լինում է միայն Աստուծու շնորհքով, որ Նա իբրեւ ձրի տուրք բաշխում է մարդկանց, բայց ոչ ամէնքին. «Դարձիր, Տէ՛ր, դարձիր քաղցրութեամբ ի խնամս գթութեան ձրի եւ ամենառատ պարգեւօք սիրոյ՝ մխիթարել յաւէտ զտրտմեալքս համաչափիդ տագնապաւ տապոյ տոչորման անբժշկականի» (Բան ԽԸ. էջ 123): Բայց մարդն ինքն էլ պիտի աշխատի այդ շնորհքին արժանանալ: Դրա համար նա պիտի ունենայ ամենից առաջ հաւատ, յոյս եւ մանաւանդ սէր. առանց դրանց՝ ուժգնաբար զղջումը, ինչպէս եւ մեղանչելը, միապէս կորստեան է մատնում: Հաւատով կարելի է ամենայն բան անել, եւ հաւատով է միայն, որ ապաշխարողը կանգնած է զգում իրեն: Յոյսը տանում է դէպի տուրքը, փառքը, կեանքը, վայելչութիւնն ու հանգիստը, մի խօսքով՝ արդարացումը: Իսկ սէրն է միայն, որ փրկութիւն է բերում, որովհետեւ սէրն առ Աստուած կարօտում է Աստուծուն իրեն տեսնելու եւ նրա հետ միանալու: Մի անգամ որ միստիկն ունի փրկութեան համար անհրաժեշտ հաւատը, յոյսն ու սէրը, այնուհետեւ մնում է նրան գործադրել փրկութեան միակ միջոցը. նա պէտք է ամբողջովին նուիրուի Աստուծուն, ուրանայ իր անձը՝ միայն Աստուծով եւ Աստուծու մէջ ապրելու համար: Նա պէտք է խորասուզուի իր հոգու մէջ, որ Աստուծու պատկերն է. շարունակ դիտի, քրքրի ու վերլուծի այն, որ միեւնոյն է, թէ «հոգու աչքը յառած կեանքի գլխին» (1), շարունակ Աստուծուն դիտի: Նա պէտք է շարունակ աշխատի ազատուել ու կտրուել զգալի աշխարհից, մարմնի կարիքներից ու կրքերից, մաքրուել արտաքին բաներից: Իսկ դրա համար էլ պէտք է միշտ թուլացնի, ճնշի մարմինը, ինքն իրեն նուաստացնի, մեղադրի, աղօթի եւ Աստուծու ողորմութիւնն ու գթու-

(1) «Ոչ յառեցի զակն ոգւոյս ի գլուխն իմ կենաց Քրիստոս» (Բան ԾԵ. էջ 141):

*թիւնը հայցի (1), մինչեւ որ վերջ ի վերջոյ կարողանայ միանալ Աստուծուն եւ կատարեալ անդորրութեամբ երջանկանալ՝ դառնալով աստուածանման:*

*Բայց հնարաւո՞ր է արդեօք ուրանալ մարմինն ու աշխարհը: Այս անհնարութիւնն ահա դառնում է ներքին յուզումների աղբիւր, Փիզիկապէս էլ նրան կեղեքում է: Բայց դա դառնում է միանգամայն եւ իսկական զօրեղ քնարերգութեան աղբիւր, մի տխուր բանաստեղծութեան, որով ապաշխարողը պատկերանում է իր հոգեկան ձգտումներով ու սարսուռներով:*

6. Հոգու եւ մարմնի հակառակութիւն: Ունայնութեան երգը: Քրիստոնէական յոռետեսութիւն:— *Մարդս լինելով հանդերձ Աստուծու ստեղծագործութեան կենտրոնը, իսկապէս մի թոյլ էակ է, կազմուած երկու հակառակ մասերից՝ մարմնից եւ հոգուց: Փրկութեան ձգտելով՝ նա շարունակ ներքին պայքարի մէջ է եւ չգիտէ, թէ որի՛ կամքը կատարի, մարմնի՞, թէ՞ հոգու: Այս երկուութիւնն է ահա, որ դառնում է նրա համար տանջանքի պատճառ: Պէտք էր մեռցնել մարմինն եւ ուրանալ աշխարհը եւ ամէն ինչ նիւթական, որովհետեւ հին քրիստոնէական հայեացքով մարմին ու հոգի, աշխարհի կեանք եւ հանդերձեալ կեանք իբրեւ երկու հակառակ եւ անհաշտ բաներ կանգնած էին դէմ ու դէմ: Մարմինը զօրանար, հոգին էր թուլանում, եւ ընդ հակառակն: Մէկը, երկիրն, ունայնութիւն էր ու տառապանք. միւսը, երկինքը, իսկական բարիք եւ անդորրութիւն: Եւ ահա ծնւում է մեր բանաստեղծութեան մէջ զօրեղ քնարերգութիւնն* աշխարհի ունայնութեան, իրական կեանքի ոչնչութեան եւ մարդու թուլութեան մասին:

Տարր ժամանակիս յանէից,
Անցեալն աննյայտ եւ ապառնին կարծողական,
Ե՛ս անհամբեր եւ բնութիւն թերահաւատ,
Ոտք անհաստատ եւ միտք ցնդեալք,
Կիրք հարկաւորք եւ բարք անժուժկալք,
Մարմին մեղսամակարդ
Եւ յօժարութիւն երկրասէր,
Դիմամարտութիւն տնկակից
Եւ խառնութիւն ներհակական,
Բնակութիւն կաւեղէն
Եւ անձրեւք ուժգնակիք·
Կարիք անթուելիք եւ պատահարք ամենազրաւք,
Միտք չարախնամք եւ տենչմունք բարիատեացք,
Կեանք առօրեայք եւ զմբաղք սակաւաւորք,

(1) «Քանզի որպէս ոչ է առանց Քրիստոսի Աստուծոյ՝ հոգւոց փրկութիւն, եւ ոչ առանց տեսման աչաց՝ առ լոյս զուարճութիւն, եւ կամ առանց արուեստին նշուլից արեւու երբեք քաղցրութիւն,— այսպէս եւ ոչ առանց խոստովանութեան ծածկութից եւ աղտոնաց անձին՝ քաւութիւն» (Բան Ը. էջ 126):

Խարմունք յիմարութեան եւ խաղալիք տղայական․
Աշխատութիւնք ընդունայնք
Եւ վայելմունք երազական,
*Համբարք ոչնչից եւ պահեստք հողմոց,*
*Նմանութիւնք ստուերաց*
*Եւ կերպարանք ծիծաղելիք։*

**Բան ԾԵ․ էջ 141**

*Ահա թէ ի՛նչ է իրական կեանքը եւ մարդը։ Բայց այդ չէ միայն․ մարդկային կեանքը ե՛ւ զզուելի ու զարշելի է ե՛ւ չունի ոչ մի լաւ բան իր մէջ․ «ընտանիք թշնամիք, հարազատք հակառակք, եւ որդիք դաւաճանողք» են։*

Սիրտս նանրախորհուրդ, բերանս չարախօս․
Ակնս յայրատատես, ականջս վրիպալուր․
Ձեռնս մահածից, երիկամունքս անփորձ․
Ոտնս մոլորաշաւիղ, ընթացքս անէրկիւղ․
Հետք խոտորնակ, շունչք ծխախառն, զնացք խաւարային․
Գոյութիւն լերդի վիմական,
Խորհուրդ ծորեալ, կամք անկայուն,
Զար անփոփոխ, բարեմասնութիւն սասանեալ․
Անձն տարագիր, աւանդ վանառեալ։
Գազան վիրաւոր, թռչուն նետահար․
Փախստական քարավէժ,
Ըմբռնեցեալ վնասապարտ, աւազակ ծովակուր։
Ձիւնուր նենզաւոր, մարտիկ անպատրաստ,
Սպառազէն անժուժկալ, մշակ հեղգացեալ։
Աղօթական անխրախոյս, բեմական տորնաքարշ․
Քահանայ անկնդրուկ, օրինական աննուէր։
Դպիր կշտամբեալ, իմաստակ խելագար,
Ճարտասան աննոռնի։
Կերպ անպատկառ, դէմք անամօթ,
Երեսք յպրշեալ, գոյն անհամբոյր,
Տիպ տմարդի, գեղ ծանակեալ։
Խորտիկ խանգարեալ, ճաշակ զարշեցեալ։
Այգի դաղձնաւոր, որթ որդնահար․
Պարտէզ փշաբեր, հասկ ուտնահալ․
Մեղր ի մկանց ճարակեալ, անպատսպար անկեալ։
Սնապարծ, յուսահատ․
Անհամոզելի նզով, անհաշտական բաժանեալ.
Ունայնարան շաղակրատ,
Պանծարամիտ զոռոզ, անասնօրէն ապիրատ․
Դժոխային ազահ, աներասան յանդուգն․

Մոլեգնութիւն անասնոյն,
Զեռնաձգութիւն սպանող։
Տատանկացան երկրագործ․
Երջանկութիւն եղկելի,
Վայելչութիւն անշքեալ․
Կարողութիւն տկարացեալ,
Բարձրութիւն խոնարհեալ,
Փառաւորութիւն ընդոտնեալ․
Պատուիրանազանցութիւն յարակայ,
Սխալանք ինքնակամ։
Մատակարար կամակոր,
Խորհրդակից ննջաւոր,
Բարեկամք հատուածեալ։
Հազարապետ գողամիտ․
Մերձաւոր կծծի, բաշխող ժլատ․
Վերատեսուչ կարկամ, ոգի անախտակիր։
Իղձք անսէր, բարք ատեցող․
Աղիք անգթականք, գնացք անխոհեմ։
Աներեւոյթք վնասեալք,
Ծածուկք անիծեալք, դիպուածք թշնամանեալք։
Վաճառական վատնիչ, շահարար շուայտեալ․
Պաշտօնեայ արբեցող,
Գանձուց ստիկան երկմիտ,
Պատգամաւոր բանսարկու․
Դռնապան քնէած․
Աղքատ հպարտ, մեծատուն ժխտող։
Դիւանապետ անօրէն, պահապան մատնիչ, բնակակից
չարախօս։
Սուրհանդակ անժաման, թղթաբեր պարտաւոր․
Առաքեալ խռովարար, միջնորդ անիմաստ։
Արքայ արտալած, թագաւոր թարմատար,
Կայսր ոգեկործան, իշխան տիրադաւ․
Զօրավար զրկող․
Դատաւոր ակնառու, ռամիկ ինքնագործ։
Նախատողի ծաղր, սիրելւոյ աշխար,
Բանագրի դարով,
Ցանդիմանչի դատախազութիւն։

*Բան ԾԶ. էջ 142 եւ հտ.*

*Եւ այսպէս՝ աւելի ու աւելի վատթար են ամէն բան եւ ամէնքը, ամէն պարագմունքի եւ ամէն դասակարգի մարդիկ։ Աշխարհի յոռետեսութիւնը սովալի է, ոչ մի լաւ բան չի տեսնում նա կեանքի մէջ։ Բայց սարսափելին այն է, որ թէպէտ աշխարհն ու կեանքն այսպիսի են, բայց*

*մարդս կազմուած լինելով մարմնից, ինչքան էլ ճիգ է թափում, չի կարողանում ուրանալ այդ աշխարհն ու մարմինը եւ միանալ Աստուծուն:*

Եւ արդ, վասն զի ի ձեռն մեծիդ
Եւ ամենահնար Արուեստաւորիդ,
Իմս եղանութեան Տեառն եւ Աստուծոյ,
Իբր ի քրայս ընտրութեան փութոյ քոյ սիրոյ՝
Հանապազ եռամ եւ ոչ երբեք պարզիմ,
Միշտ խառնիմ զուգիլ եւ ոչ եւս միանամ·
Ահա՛ զուր, Արծաթագործդ երկնաւոր իմ ճարտարապետ,
Ի սնոտիս վաստակեալ առ իս աշխատիս…
Եւ չարութիւնս իմ ոչ հալեցաւ·
Զոր ինձէն մոլեալ չարաչար՝
Իբր զխելագար դիւաբախ իմն ողորմելի՝
Ցանդգնեալ անկարս խօսիմ՝
Զիմս զպարտիսս անեցուցանել,
Քան հաշտութեան հնարս ինձ այսու կազմել:

*Բան ԿԹ. էջ* 177

7· Մեղքը եւ սատանան:— *Որ պայքարողը չի կարողանում հեշտութեամբ հասնել իր նպատակին, դրա պատճառն այն է, որ մարդը հոգուց եւ մարմնից կազմուած լինելով հանդերձ՝ միաժամանակ խաղալիք է երկու ներհակ ուժերի մէջ· Աստուած եւ հրեշտակները ձգտում են նրան բարձրացնել, իսկ սատանան իր լեգէոններով նրան յետ է քաշում: Աշխարհում եւ մարմնի վրայ իշխում է սատանան, որ ամենայն հրապոյրներ ստեղծելով մարդուս մեղքի փորձութեան մէջ է ձգում չարունակ: Եւ մարդն ահա իր անձնիշխանութեամբ գտնւում է մի տրագիկական, միշտ յուզալից վիճակի մէջ: Նա ցանկանում է Աստուծու կամքը կատարել, որպէսզի բարձրանայ ու վեր խոյանայ. բայց ծնուած րոպէից ժառանգաբար արդէն բերում է իր հետ մեղքը· բացի այդ՝ նրա ազատ կամքը թոյլ է, ամէն վայրկեան սատանան դրդում է նրան մեղանչել, եւ նա մեղանչում է ու գլորւում ցած:*

*Արդարեւ, չատ դժուար է որոշել, թէ Նարեկացին անձնապէս մեղք ասելով ինչ է հասկանում: Նա իսկապէս չգիտէ, թէ ինչ է մեղքը, անձնական մեղքը, որի մասին եւ սովորաբար տարտամ, անորոշ բառերով է անցնում: Բայց նա ամենից առաջ միստիկ կրօնաւոր է, ուրեմն աշխարհի կեանքից հրաժարուած մարդ. ուստի նրա համար ամենայն ինչ աշխարհային՝ մեղք է: Աշխարհային «անկայուն» կեանքը, սակայն, մի «պատրողական գինի» է, որ գրաւում, յիմարացնում է «երկրածին մարդուն», եւ մարդը, խելագարուած, չի կարողանում չմտածել, չզբաղուել դրանով:*

Մոլորեցայ անառակ ընթացիւք ի միտս վայրենիս·
Ցանդգնեցայ շրթամբք խօսից ի բանս երկրաւորս·
Զակատեցայ անկասելի ի պատկառելեացն գործոց…
Գիրկս ածի կենցաղոյս սիրոյ,
Եւ ի Քեզ թիկունս փոխանակ դիմաց դարձուցի·

Ի բռիչս մտաց ընդ խաւար խորհրդոց սլացայ․
Զանարատ հոգիս մարմնոյս փափկութեամբ յաւէտ վտանգի…
Ցաղօթարանն վայրի ընդ պատաղմունս այսր կենցաղոյս շրջանակեցայ․
Ոչ կացուցի յոտին զերիվար մտացս երասանաւ բանին։

*Բան․ Ի․ էջ 47*

*Այսպէս ամենամեծ իրական մեղքն այն է, որ նա չի կարողանում աչխարհից իր միտքը կտրել եւ իր մարմինը ոչնչացնել․ «Ցեղխպտոս մինչ ունիս զօրաւոր զղարձն» (Բան Բ․)։*

*Մի անգամ որ այդ մեղքը կայ՝ մնացած ամէնը երկրորդական է։ Ոռովհետեւ, ինչպէս, ի՞նչ հարկաւոր է, թէ նա ի՞նչ մեղք ունի իր սրտի վրայ ծանրացած․ բաւական է, որ նա այդ մեղքը սրտի բոլոր խորութեամբ զգում է, եւ այդ մեղքը նրա վրայ լեռնացած է եւ երկնային բարձրութիւնից մինչ ցած է գլորում նրան, եւ ինքը ճնշւում է նրա բեռան տակ։ Ուստի բուռն սաստկութեամբ նկարագրում է նա աւելի* մեղքի զգացումը, *մեղաւոր մարդուն, քան մեղքը։ Նա տառապում է մեղքի հետեւանքներով, ինչպիսի մեղք էլ լինի, նա ունի իր ոչնչութեան, անկեալ դրութեան զգացումը․ ըզգում է իրեն հողով ջախջախուած, ինչպէս մի խորտակուած նաւ կեանքի ծովում։ Եւ այն գիտակցութիւնը, թէ իր ամէն մի քայլը մեղք է եւ թէ ի կորուստ տանող մեղքերն անչափ բազմազան են եւ աւելի քան ծովափի աւազը, — այդ է ահա՛, որ փշաքաղում է նրան եւ ծփում, մրրկում է նրա էութիւնը։*

Զի թէպէտ եւ յոյժ բազում են մանունքն
Ի յափունս ջրոյն համահաւաքեալք,
Այլ ուրոյնք եւ առանձնակաւք
Ի ծննդոց անեյութենէ․
Իսկ մեղաւք իմոյս յանցանաց անթիւք,
Զորս անհնար է առնուլ ի միտ։
Ոմն եւ ծնունդք իւր, ոմն եւ շառաւիղք իւր․
Ոմն եւ բիծք իւր, ոմն եւ արկածք իւր․
Ոմն եւ փուշք իւր, ոմն եւ արմատք իւր․
Ոմն եւ հաստուածք իւր․
Ոմն եւ պտուղք իւր․
Ոմն եւ նշխարք իւր, ոմն եւ նիւղք իւր․
Ոմն եւ ոստք իւր, ոմն եւ արմկունք իւր․
Ոմն եւ նիրանք իւր, ոմն եւ մատունք իւր․
Ոմն եւ խլրտմունք իւր, ոմն եւ զօրութիւնք իւր…

*Բան Զ․ էջ 15—16*

*Մեղքի հետեւանքների այս սոսկումն ինչպէս խորտակում, ջախջախում է նրան։ Այդ մեծ թուարկութիւնը հէնց, որի մի փոքր մասը միայն*

բերուեց վերեւում, ըստինքեան խորտակող է եւ սարսռալից. մարդ շընչասպառ է լինում կարդալիս, կարծես, մեղքերի ճնշումից: Նրանք անչափ եւ անսահման են եւ նրանց ծնունդն եւ հետեւանքն աւելի եւս զարհուրելի: Նրա երեւակայութիւնն ստեղծում է միշտ նորանոր մեղանչական ահարկու դրութիւններ, որոնք հալածում են նրան:

Իր միստիկական ձգտման մէջ նա մի րոպէ հոգու անդորրութիւն չունի, միշտ տոչորւում է խռովայոյզ վիճակով, որովհետեւ միշտ զգում է եւ նոյնիսկ տեսնում է, որ սատանան, հեշտածին մեղքի ստեղծողն, իր բիւրաւոր լեգէոններով, աներեւոյթ կանգնած է միշտ նրա մօտ: Բանսարկուն իր ձեռքին ունի նետ ու սլաքներ, որոնցով գաղտնի վիրաւորում ու խոցում է նրան. կա՛մ իբրեւ ընդդիմամարտ կռուող վրայ դիմելով՝ պատերազմ է հանում, կա՛մ սատակման ու մահու կապով փակում է, կա՛մ ձգում տղմասիկ գբի մէջ, վհի ու գնդանի մէջ, մեղքի երկաթներով շղթայելով: Երբեմն նա՝ իբրեւ խաբող՝ հաճութիւններ է բերում ու մեղքի մուրհակներ առնում մարդուց եւ «բժժանօք յուռթից» կախարդել խորամանկում. կամ բանաստեղծի շուրջը մառախուղով պատում, որի մէջ նա դէպի կորուստն է ընթանում. կամ դիւական տենդ ու ջերմ բերում մարդուս, մահացու թոյն լցնում նրա մէջ: Նա մերթ մարդու համար հաղբ ու որոգայթ է պատրաստում իբրեւ որսող եւ պատրելով վհի մէջ ձգում նրան. մերթ մարդու վրայ լուծ է դնում եւ սայլի լծում նրան, կամ իբրեւ խածատող գայլ՝ ժանիք է ցոյց տալիս. երբեմն էլ աղուական խածմունք ազդում հոգուն, այսինքն հեշտասիրական զգլխու յարուցանելով՝ կործանում է մարդուն, մոխրի ու աղմի մէջ թաւալեցնում, իսկ ինքը հեռու կանգնած քրքջում է նրա վրայ:

Սատանայի ահն, ինչպէս եւ մեր այժմեան սնապաշտական հաւատալիքների մէջ, աւելի մեծ է գիշերը, երբ թանձրամած խաւարը բռնում է աշխարհը եւ մեր Հսկողը գիշերային հսկումից յետոյ, վաստակած բազմածուփ աշխատանքից, կարճ ժամանակով պէտք է իր խշտեակը մտնի: Սատանայի գործունէութիւնն եռանդուն է խաւարի մէջ, որ նրա իշխանութիւնն է, եւ ունի իր առանձին արհաւիրքները: Նա իր գնդերով պաշարում է աղօթողին, որ վտանգաւոր դրութեան մէջ է եւ «աներեւելի ծանրութեամբ» զարհուրում է «ի ցնորից եկամուտ պղտորութեանց», «ի տխրական անրջոց»: Նա բազմատխուր տարտամութեան մէջ վախենում է, որ մի՛ գուցէ չարը մի նոր վէտ անի եւ իր քնած տեղը, իր «մեռօրինակ դադարման» ժամանակ, մի նոր փորձանքի մէջ ձգի իրեն «աներեւոյթ մտածութեամբ», բասրելի կրքով, պատկառելի դիպուածներով, — այսինքն հին Դրուժայի գիշերախաբութեամբ: Եւ բանաստեղծն ամենամեծ հոգացողութեամբ խնդրում է Աստուծուն, որ պահի իրեն այդ վտանգից, որ Աստուած իր խօսքով սրբի նրա պատսպարանը. հրեշտակները գնդերով, մարգարէները կտակարանով, առաքեալներն աւետարանով պահապան կանգնեն իրեն: Իբրեւ չարահալած է ամենից առաջ խաչը, որ պիտի պահի նրան,

*լինի նրա երգերի պահպանարան, դրուի տան շեմքին, որ սատանան չկարողանայ ներս մտնել: Սենեակի մուտքն ու շեմքը, երդը, առաստաղը, իր անկողինը, իր անձն ու սիրտը, զգայարանները, բոլորն առանձին առանձին հոգացողութիւն են պահանջում: Աստուած պիտի ուղարկի իր զուարթունների գնդերը, որոնք պիտի կռուեն ընդդէմ դեւերի դասերին, որպէսզի ինքը, բանաստեղծը, ինչպէս անվնաս պառկում է քնելու, այնպէս էլ անվնաս զարթնի: Այս աղօթքները սատանայի դէմ (տե՛ս առանձնապէս Բանք ԺԲ· էջ* 28· ՂԱ· 237) *ունին մի տեսակ «կապքի» աղօթքների բնաւորութիւն, որ ցարդ տարածուած են մեր ժողովրդի մէջ. երկուսի մէջ էլ չարահալած միջոցներն են՝ խաչը, երկաթ, քացախ եւ այլն: Անպայման դրանք մասամբ ժողովրդական հաւատալիքից են ծագում, բայց իրենք եւս շատ աւելի ազդել են մեր ժողովրդական սնահաւատքի վրայ: Բերենք այստեղ ԺԲ· բանի վերջի մասը, որ շատ սիրուած է եղել:*

**Մաղթանք զօրաւոր արեւուց գիշերայնոյ:**

Ընկա՛լ քաղցրութեամբ, տէր Աստուած հզօր,
Զդառնացողիս զաղաչանս·
Մատի՛ր գթութեամբ
Առ պատկառեալս դիմօք·
Փարատեա, ամենապարգե՛ւ,
Զամօթական տխրութիւնս·
Բարձ յինէն, ողորմա՛ծ,
Զանբերելի ծանրութիւնս.
Անջրպետեա, հնարաւո՛ր,
Զմահացու կրթութիւնս·
Աւարեա, միշտ յաղթո՛ղ,
Զխաբողին հաճութիւնս·
Բացադրեա, վերնայի՛ն,
Զմոլելոյն մառախուղ·
Կնքեա, կեցուցի՛չ,
Զկորուսչին ընթացմունս.
Ցրուեա, ծածկատե՛ս,
Զըմբռնողին չար գտմունս·
Խորտակեա, անքնի՛ն,
Զմարտողին դիմեցմունս:
Տեառնագրեա՛ քո անուամբդ
Զլուսանցոյց երդ յարկիս·
Պարփակեա՛ քո ձեռամբդ
Զառաստաղ տանարիս·
Գծագրեա՛ քո արեամբդ
Զմուտ սեմոց սենեկիս·

Կերպացո՛ զքո նշանդ
Ի հետս ելից մաղթողիս․
Ամրացո՛ քո աջովդ
Զհանգստեանըս խշտին․
Մաքրեցե՛ս ի հաղբից
Զծածկարան անկողնոյս․
Պահեցե՛ս քո կամօքդ
Զտառապեալ անձն ոգւոյս․
Անխարդա՛խ արասցես
Զքո շնորհեալ շունչ մարմնոյս․
Կացուցե՛ս շրջափակ
Զպար զօրուդ երկնայնոյ․
Կարգեցե՛ս ի դիմի
Ընդդէմ դիւացն դասու․
Տո՛ւր հանգիստ բերկրութեան
Մահահանգոյցս նիրհման
Ի խորութեան գիշերոյ…

8․ Աստուած եւ մարդս: Ապաշխարողի ինքնաձաղկումը: — *Ինչպէս զարհուրանքով զգում է բանաստեղծը սատանայի ներկայութիւնն իր կողքին, նոյնպէս նրա համար զգալի է եւ ներկայութիւնը Աստուծու, որի ողորմութեան նշոյլները ծագելիս ամէն ինչ դիւական ոչնչանում է: Բայց մինչ սատանան գործում է, Աստուած անձնիշխան է թողնում նրան, իր պատուիրանները միայն տուած լինելով մարդուն, թէ ի՛նչպէս կարող է նա փրկուել: Բանաստեղծը, սակայն, գիտակցում է իր թուլութիւնն ու ոչընչութիւնը եւ կը ցանկանար նոյնիսկ անձնիշխան չլինել, միայն թէ չմեղանչէր, եւ իր ու Աստուծու տարբերութիւնն այնպէս անհունապէս մեծ չլինէր, որովհետեւ որքան Աստուած մեծ է, կարող, բարձր ու մաքուր, այնքան ինքը՝ չնչին, թոյլ, ստոր, տղմալից ու պիղծ: Նա երբեմն նոյնիսկ մի տեսակ նախանձով է երգում Աստուծու փառքը, որովհետեւ ինքը չունի այդ․*

Քեզ արդարութիւն հանդերձեցեր, բարերա՛ր,
Եւ ինձ՝ ամօթ եւ պատկառանս պատրաստեցեր․
Քեզ փառս վայելչականս,
Եւ ինձ՝ նախատինս յարմարաւորս․
Քեզ քաղցրութեան յիշատակ,
Եւ ինձ՝ մաղձ քացախեալ ի կատարածի․
Քեզ բարեբանութիւն անլռելի,
Եւ ինձ՝ ձայնս ողբոց աղաղակի․
Քեզ օրհնութիւնս բազմարժանիս,
Եւ ինձ՝ պատասխանատուութիւնս ամենավարանս․

Քեզ բարձրութիւնս անճառ գովեստից,
Եւ ինձ՝ զանիւն լիզելոյ պատիժ ճաղանաց:

*Բան Ի. էջ* 46

Դու *լոյս* ես եւ *յոյս*,
Եւ ես՝ խաւ*ար* եւ յիմ*ար*,
Դու իսկութեամբ բար*ի* գովել*ի*,
Եւ ես՝ համայնիւն *չար* ապիկ*ար*.
Դու տէր ստոր*ից* եւ երկն*ից*,
Եւ ես՝ անիշխան շնչ*ոյս* եւ հոգւ*ոյս*.
Դու բարձր*եալ* ի կարեաց զատ*եալ*,
Եւ ես՝ տաժան*աւոր* եւ վտանգ*աւոր*.
Դու ի վեր քան զ*կիրս* երկ*րիս*,
Եւ ես՝ կաւ անարգ*ութեան* զարշ*ութեան*.
Դու… մնաս յաւի*տեան* յանբաւ բարձրու*թեան*,
Եւ ես՝ միշտ կորնչիմ…
Ի քեզ ոչ է մթ*ութիւն* կամ նենգ*ութիւն*,
Եւ ես բովանդակն իսկ *լցեմ*,
Որ զաւանդ իմ ոչ պահ*եցեմ*:

*Բան ԶԳ. էջ* 221

*Աստուծու եւ մարդու այս տարբերութեան պատճառն ինքը մարդն է իր ազատ կամքով, թէ չէ՝ Աստուած միայն էութեամբ բարի է եւ մարդուս միայն լաւ է ստեղծել, եւ ինքը մարդն է իր ազատ կամքով ընկել (Բան ԽԶ. եւյն.)։ Մարդուն մնում է՝ ընկած դրութիւնից բարձրանալու համար՝ ապաշխարել եւ յոյսը դնել Աստուծու բարութեան եւ գթութեան եւ ամենակարողութեան վրայ։*

Աստուա՛ծ բարերար, հզօր ահաւոր.
Հա՛յրդ բարի ողորմութեանդ շնորհի,
Որոյ անունդ իսկ Մեծիդ
Զգթութիւն եւ զընտանութիւն աւետարանէ…
Թէպէտ եւ քո՛ իցեն պարգեւք եւ քո՛՝ ողորմութիւնք,
Այլ ոչ ի պարգեւսն ես այնքան հոչակեալ,
Որքան յողորմութեանն…

*Բան ԺԳ. էջ* 29

Հա՛ն զիս ի բանտէս, արձակեա՛ ի կապանացս.
Զե՛րծ ի շղթայիցս, փրկեա՛ ի խեղդմանէս.
Ազատեա՛ ի տագնապէս, քակտեա՛ ի յերկաթիցս.
Լո՛յծ ի պաշարմանցս, արտաքսեա՛ յերկմտութեանցս.
Սփոփեա՛ ի տխրութեանցս, հանգո՛ ի նեղութեանցս.

Փարատեա՛ ի վշտացս, հանդարտեա՛ ի խռովութեանցս.
Ապաքինեա՛ ի յալոյս, մերժեա՛ ի հեծութեանցս.
Հեռացո՛ ի յողբոցս, կազդուրեա՛ ի կականմանցս.
Աստուա՛ծ ողորմութեան,
Եւ պարգեւատո՛ւ քաղցրութեան,
Մի՛ զզրաւեալս արհամբ հզօրիդ՝
Անտես արարեալ ընդ վայր կորուսաներ.
Կանգնեա՛ զհասեալս յափն մահու՝
Ի բազմավտանգ հիւանդութենէս:

*Բան ՁԳ. էջ 221 եւ հտ.*

*Բայց զարհուրելին այն է, որ այդ բարերար, ողորմած Աստուածն ապաշխարողի բազմատեսակ եւ բիւրաւոր աղերսանքների եւ հարցումների դիմաց մի անտարբեր ու խոր լռութիւն է պահում եւ երբեք չի յայտնում, թէ նա արդեօք այս հեծեծանքներից յետոյ պիտի փրկուի՞, թէ՞ ոչ: Երբեք չի բացւում «այն աշխարհի» թանձր վարագոյրը: Բանաստեղծն այդ անորոշութեան առաջ տանջւում է, նրա սիրտը նուաղում է՝ ցանկանալով իմանալ, թէ Աստուած պիտի յիշէ՞ իր բարերարութիւնը.*

«Անտեսեսցե՞ս զգթասիրեալդ, խնամո՛ղ.
Այլայլեսցե՞ս զմարդասիրելդ, անփոփո՛խ.
Նախանջեսցե՞ս զկենագործելդ, անվախճա՛ն»...

*Քանի որ Աստուած ոչինչ չի պատասխանում, բանաստեղծին մնում է միայն եզրակացութիւններ հանել Աստուծու արարքներից ու ստորոգելիներից եւ Նրա հետ մի աղերսախառն դատ վարել, թէ անպատճառ պիտի փրկի իրեն:*

*Միւս կողմից, սակայն, բանաստեղծը սոսկումի մէջ է Աստուծու առաջ. որովհետեւ Նա ինչքան բարի հայր է, նոյնքան եւ արդար դատաւոր է: Ուստի կարող է պատահել, որ բանաստեղծը ոչ միայն Աստուծու հետ չմիանայ, այլ նոյնիսկ մեղաւոր լինի, քանի որ ամենայն րոպէ կարող է գալ վերջին դատաստանը, որ ինչքան էլ հեռու լինի մարդկութիւնից, անհատի համար ամէն վայրկեան գալիս է մահով: Այս պատճառով Աստուած, իսկապէս Քրիստոս, ամենից առաջ եւ աւելի յաճախ ներկայանում է բանաստեղծին իբրեւ «գաղտնիքների տեսող» դատաւոր, որի ահաւոր ձայնը շարունակ ուժգին հնչում է արդէն Նրա ականջին: Նրա սիրտը դրանից ամբոխւում է, միտքը սասանում. ներսում սկսւում է մի զօրեղ կռիւ չար ու բարի յուզմունքների, որոնք երկու ներհակ բանակի բաժանուած՝ միմեանց հետ միշտ ընդհարւում են, — որովհետեւ դատաստանի սարսափը միշտ կայ Նրա առաջ, — եւ Նրան ձգում են ամենավարան տարակուսանքի մէջ: Նա շարունակ զգում է իրեն ինչպէս մի յանցաւոր՝ կանգնած դատաստանի առաջ, ինչպէս մի եղեռնագործ, որ առաջուց գիտէ թէ իրեն սոսկալի պատիժներ պիտի տան: Եւ վերջապէս տեսնում է իրեն ինչպէս մի դատապարտուած.*

«Ահ, զուր եւ որոգայթ անճողոպրելի··· տագնապաւ մեծաւ առ դուրս ինձ հասեալ՝ զամօթն մշտնջենաւոր աստէն գծագրել»: Ազատուելու ոչ մի միջոց չկայ, բայց եթէ դարձեալ յուսալով Աստուծու շնորհքին՝ բանալ իր վիրաւոր սրտի խորքը, նկարագրել իր հոգին, խոստովանելով տարածել իր մեղքերը, միաժամանակ եւ գիտակցելով իր ոչնչութիւնը՝ փառաբանել Աստուծու մեծութիւնն ու բարութիւնը:

Դրա համար է հէնց, որ Նրա խռովայոյզ սրտից բխում է Նրա խօսքը Աստուծու հետ ինչպէս մի «հառաչանքի ձայն, սրտի հեծութիւն, ողբ ու աղաղակ», որից նրա անձը տոչորւում, ճենճերւում ու հալւում է ողջակիզուելով:

Այս է ահա ամբողջ Ողբերգութեան «միազոյ իրի հրաշակերտութիւնը»: Ամէն «բան», ինչպէս կոչում է հեղինակն իր այս քնարերգութեան գլուխները, այդ «միազոյ իրի» բարդումը, կուտակումն է, ներքին յուզման ու շարժմունքի մի մի կողմերի պատկերացումը, ահ ու սարսափի ցուցումը, գետնաքարշ ու աղեխարշ պաղատանքը, սրտի գաղտնարանի բացատրութիւնը, անձի քննումը մեղքի առաջ ու տենչանքը վեր խոյանալ, հասնել «լոյսի» աղբիւրին: Ամէն ինչ թանձր գոյներով նկարած եւ մարդկային հոգու եւ նոյնիսկ մարմնի բոլոր ուժով զգացած: Յարունակ խորասուզուելով ինքն իր մէջ՝ վերլուծում է նա իր մեղաւոր հոգին, շարունակ մտածելով Աստուծու վրայ՝ ճգնում է կտրուել զգալի աշխարհից եւ չկարողանալով դրան հասնել՝ մեղադրում է իրեն:

Եւ այս ապաշխարութիւնն ու կոծը, ինքնանուաստացումն ու ձաղկումը, անձնապարսաւն ու քարկոծումը, ինքն իրենից զզուանքն ու վայ տալը, նոյնիսկ սեփական մարմնի ատելութիւնը չափ ու սահման չունին: Նա մեծ հաճոյքով անում է այդ ամէնը, որովհետեւ որքան շատ ջարդի իրեն, այնքան ազատ կը լինի կորստից. որքան շատ պաղատի, այնքան շատ կ՚ընդունի Աստուծու շնորհքը. որքան շատ յանդիմանի իր մեղաւոր անձը, իր յանցանքները երգի, այնքան շատ դուրս կը գայ կեանքի մթին վհից «ի լոյս անձկալի»:

Եւ վասն զի եդի զքեզ նպատակ
Հանդէպ երեսաց տեսութեան մտացս,
Ա՛նձն իմ անպիտան,
Վիմօք ձգելոց արձանաց բանից,
Իբր զանբնդել զազան վայրենի,
Անողորմաբար զքեզ քարկոծել···

**Բան Թ. էջ 21**

Եւ իսկապէս ստղտանքի ամէն մի խօսքը մի ծանր քար է, որով Նա ինքն իրեն ղանակոծում է (Բան Ի. էջ 47): Սարսռացնող է ապաշխարողի այս ողբերգական տեսարանը, որ բաց է անում մեր առաջ բանաստեղծը: Միակ մխիթարութիւնը, որ կայ այս մռայլ բանաստեղծութեան մէջ, այն է՝ որ փրկութեան վստահութիւնն իսպառ կտրուած չէ եւ տեղ տեղ երեւում

է յոյսի նշոյլ: Յոյսը երբեմն զօրանում է, եւ այդ վայրկեաններում նա փոքր ինչ բացւում է եւ ինքն իրեն քաջալերում. «Եւ արդ հի՞մ տրտմիս, ա՛նձն իմ կործանեալ՝ ոչ յաստուածուստ հնարաւորութեանց, այլ ի քումդ ինքնագործ հակամիտութեանց. կամ ընդէ՞ր զիս խռովես՝ յուսահատութեամբ սատանայականաւ»: Յուսոյ հիմք կազմում է նախ այն, որ Աստուծու համար հնարաւոր է ամենայն ինչ: Այս ժամանակ նա, սիրով լցուած, Աստուծու մեծութիւնն է երգում, երբեմն մեծ հոյակապութեամբ, ինչպէս ամբողջ ԿԳ. բանը, որի մէջ Աստուծու ամենակարող արարքները թուած են զօրեղ թափով: Ապա՝ կայ եւ այն գիտակցութիւնը, թէ մեղքերը ինչքան «հեշտածին» են, նոյնքան էլ «դիւրամեռ» են:

Քանզի զայն ամենայն գունդս չարութեան
Բանսարկուին զօրաց՝
Սակաւ մի արտօսր կաթուածոց աչաց, —
Իբր զննիս զեռունս բազմոտանիս
Խխայթից երկրի ակար խլրտմանց՝
Անկեալ ի վերոյ ծորումն ձիթոյ,
Կամ դոյզն դեղ ինչ սատակչական, — ցամաքեցուցանէ.
Եւ դոյզն մի հառաչումն սրտի հեծութեան ելեալ ի յոգւոյ,
Իբր շնչումն հարաւային ջերմութեան խառնեալ յարեւու,
Զսառնամանեաց սառնութիւն հալէ...

Բան Ի. էջ 17

Բայց այդ դեղերն են՝ «դժուարակուռ պտուղք ծառոց անհասանելեաց, եւ անկոխ ճանապարհաց երկք եւ տաժանմունք»: Դրանով, հետեւաբար, մխիթարութիւնը մեծ չէ, եւ տանջանքն աւելի եւս սաստկանում է, մանաւանդ որ եթէ մի կողմից՝ ապաշխարութեամբ ջնջւում է մեղքը, միւս կողմից՝ միշտ նորանոր մեղքեր են ծնւում (Բան ՀԱ. էջ 152 եւ հտ.), եւ ապաշխարողը մնում է նոյն վշտահար, նոյն տրագիկական վիճակի մէջ: Ուստի նա պէտք է ապաշխարի եւ միշտ ապաշխարի, իրեն նուաստացնի ու պարսաւի:

9. Երեւակայութիւնը. ձեւը. տեսիլներ:— Բանաստեղծի մեծ երեւակայութիւնը, որ Ողբերգութեան մէջ հակուած է աւելի դէպի բնութեան եւ կեանքի մռայլ տեսարանները, աւելի ու աւելի տանջագին վիճակով ճնշում է նրան, ստեղծելով միշտ նորանոր զարհուրելի պատկերներ: Նրա երեւակայութիւնն ունի այն էական յատկանիշը, որ ամբողջական պատկերներ է ընդգրկում: Նա «տեսանող» է. տեսիլը մեծ տեղ է բռնում նրա հոգու մէջ: Եւ իրօք, յաճախ նրա աչքին երեւում է ոչ միայն սատանան զանազան կերպարանքներով ու որոգայթներով, այլեւ վերջին դատաստանը, դժոխքը, իր մահը եւլն.: Եւ նա տեսնում է սովորաբար ոչ թէ հեռուից, ընդհանուր եւ էական ուրուագծերով, այլ մօտից, պատկերի մանրամասնութեամբ եւ բոլոր պայծառութեամբ: Վերլուծութիւնը, լինի մարմնի թէ հոգու, տեսարանների թէ գործողութեան, նրա երեւակայութեան ու մտածութեան կա-

*բեւոր զէնն է, եւ դրանով է նա ազդում: Շատ սրտառուչ է նրա* տեսիլն իր մեռնելու, մեռած *եւ նոյնիսկ թաղուած ու փոշիացած լինելու.*

Ողորմեա, Տէ՛ր, մահու մեղապարտիս
Յաւուր արձակման շնչոյս կենդանութեան,
Մինչ աչացս ողորմագին հայեցուածս
Ի բարձունս կողկողիցի,
Զբազմակարծեան ուղւոյն զանզերծ ընթացիցն
Զանփախչելին ճանապարհ յաչս բերելով,
Մտացս տեսմամբ ամենայնիւ վտանգեալ·
Եւ ի յերդ բնակութեան յարկիս նկատեալ յելիցն շաւիղ.
Թշուառացեալ կիսամեռութեամբ,
Դիմօք այլայլութեան, տատանմամբ մատանց,
Կարկամ հառաչմամբ, նուազ հեծութեամբ,
Նրբական ձայնիւ, յոգի թախծութեան
Յոգնամասնեայ տարակուսանաց՝
Ի խորոցս աներեւութից
Զգործեցելոցս ողբալով հառաչեմ:
Կարող ես, բարեգո՛ւթ, եւ անդ հրաշագործել,
Յաւէտ զօրութեամբ ասելով,
Թէ՝ Ողջ եղիջիր յոգւոյդ խորտակմանէ···
Կամ թէ՝ Երթ ի խաղաղութիւն որբեալ ի մեղաց:
Եւ որ յայնմ ժամու ոչ ժամանեցից պաղատել,
Այսօր ընկալցիս մարդասիրապէս,
Ո՛վ երկայնամիտ, բազմաշնորհ, ամենակեցո՛յց:

*Տեսարանը փոխւում է. Նա արդէն մեռած է:*

Յորժամ, որ այժմս բանապանոյն
Խրոխտաձայն, սիգացող, բարձրապարանոց՝
Անկեալ դնիմ դի անկենդան,
Կարկեալ ի խօսից, կաշկանդեալ ձեռօք,
Լքեալ անդամօք, խփեալ շրթամբք,
Կափուցեալ աչօք, տախտակ անշարժուն.
Կոճղն կիսայրեաց, արձան անզգայ·
Պատկեր անբարբառ, գոյութիւն անշունչ.
Ողորմելի տեսիլ, աշխարհելի կերպարան·
Ողբալի օրինակ, եղկելի դէմք,
Արտասուելի նմանութիւն, լռեցեալ լեզու·
Ցամաքեալ խոտ, թօթափեալ ծաղիկ·
Ծորեալ գեղ, շիջեալ ղամբար·
Դատարկ կոկորդ, խոպանացեալ սիրտ·
Աղխեալ ազդարան, սպառեալ աղբիւր·
Թալկացեալ մարմին, ժողխեալ որովայն, քակտեալ տաղաւար·

Կոտորեալ ոստ, բաժանեալ յօդ,
Հատեալ ծառ, աղցեալ արմատ.
Թողեալ տուն, հնձեալ արտ, ստորախուզեալ բոյս.
Օտարացեալ բարեկամ, մոռացեալ պահեստ.
Թաղեալ գարշութիւն, մերժեալ ատելի,
Բարձեալ խէթ, անարգեալ կմախք,
Եւ իբր զանպիտան առ ոտն կոխեալ:
Կարօտեալ այլոց մաղթանաց,
Որք զհաւատոց թշուառիս՝ ձայնիւ նուագեալ՝
Աղերս հառաչման, ցօղով արտասուաց,
Բարերարիդ գթութեան ի բարձունս տարածանեն.
Զառ քեզ դարձն յեղանակեն արգահատելով...
Արդ լքաւ, մերժեցաւ, բարձաւ, տրոհեցաւ,
Փախեաւ, սրացաւ, տեղի ետ
Կցորդութիւն զուգութեան կենցաղոյս կենդանութեան,
Եւ յոյսդ որ ի քէն պարգեւ՝
Մնացական եւ անջնջական յիշատակարան պահեցաւ:

*Բան ՀԴ. էջ 188 եւ հտ.*

*Այսպիսի մանրամասն նկարագիր սեփական մահուան եւ մեռած դրութեան՝ միայն Նարեկացին կարող էր տեսնել: Նոր բանաստեղծներից Դուրեանն էլ ունի «Իմ մահը», բայց որքա՜ն տարբերութիւն երկսի մէջ: Մէկն իր յիշատակով է անմահ մնում, նրան ցաւ է պատճառում, որ իր յիշատակը կարող է մեռնել: Իսկ միւսը գիտէ, որ ինքն անմահ է, բայց սարսում է, թէ մի՛ գուցէ Աստուծու հետ միանալու փոխանակ՝ բաժանուի նրանից, եւ ցաւում է միայն, որ փրկուելու համար ինքն այլեւս չպիտի կարողանայ ապաշխարել, աղօթել եւ պիտի կարօտի ուրիշների աղօթքին՝ Աստուծուց գթութիւն ստանալու համար: Բայց այստեղ եւս նա յուսահատ չէ. իր փոխանակ նա աղօթող ունի իր Ողբերգութիւնը: Շատ բանաստեղծներ գրել են իրենց «Յուշարձանը». Գր. Նարեկացին՝ նոյնպէս:*

Իսկ ինձ եղիցի՛ պատգամս այս բանի
Արձան փորագրեալ ամենեւին անեղծանելի,
Որ փոխանակ իմոյ եղկելւոյս անձին մահացուի՝
Անդադար հնչմամբ հեծութեան լալոյ
Առանց լռելոյ միշտ աղաղակէ:
Լիցի՛ եւ ոսկերացս քակտեցելոց՝
Ի հողապատեան շիրմին վերարկուին՝
Անմռունչ ձայնիւ զայս խոստովանել.
Հասցէ եւ մարմնոյս ի հող լուծելոյ՝
Բարբառով իմն անազդելեաւ
Ծածկատեսիդ զսոյն պաղատել:

*Բան ԿԶ. էջ 168*

Նրա «արձան» Ողբերգութիւնն, ուրեմն, երկրաւոր յիշատակի անմահութեան համար չէ, այլ դարձեալ փրկութեան մի մաղթանք մշտամռունչ: Նրա քակտուած ոսկորներն ու լուծուած մարմինն էլ ձգտում են տիեզերական ոգուն միանալու համար պաղատանք անել իր «արձանով»:

Վերջին դատաստանի համար Նարեկացին յաճախ յիշատակում է, թէ հեռուից տեսնում է մտքով այդ «հրափորձական ընտրութեան օրը».

Ուշիւ մտացս տեսեալ ի հեռուստ
Զհանդերձելոցն հանդէս ահաւորափայլ:

Բան Խ. էջ 104

Վերջին դատաստանի նկարագիրը, որ մեծ տեղ է բռնում Նրա երկի մէջ, համեմատ է քրիստոնէական հաւատալիքին, բայց եւ շատ բան աճեցրած է: Երկինքը այլայլելով գալարւում է եւ դղրդալով դիպչում երկրիս յատակին, իսկ լայնատարած թանձր գետինն իր հիմքերից սասանւում, տատանւում է. ուժգնակի բախման հետ թնդում են ներքին խորքերը, հարթըւում են լեռները. քարերը եւ բոլոր տարերքները հրդեհւում, հալւում եւ, ինչպէս ծովի խռովայոյզ ալիքները, կուտակւում են, որպէս թէ փախչելով: Փոխւում են բոլոր արարածները նոր կերպարանք ընդունելով.

Ծածկութիւնք գործոցս հրապարակին,
Եւ աներեւոյթք կրից մեր յայտնին.
Վարք կրօնից մեր ներգործեցելոց
Ի մարմինս մեր նկարին:

Ինչպէս մեր արդի ժողովրդական սնահաւատքով՝ հոգին այդ միջոցին դուրս է լինում, մարմինը՝ ներսը. հոգին, ուրեմն, պարզ տեսնում է իր կիրքերով: «Յորժամ դպրութիւնք հրաշիցն զարմանալեաց... յիւրաքանչիւր մարմինս անպակաս գրութեամբ իսկոյն երեւին, եւ խորութիւնք անճառիցն կնքելոց յիմաստից ատեացս առաջի աչաց մերոց կերպարանին» (Բան ՀԹ. էջ 210 եւ հտն.): Այդ ժամանակ երկնքի թագաւորն, անկաշառ եւ անխաբելի, նստում է վերջին ահաւոր դատաստանին, հատուցման վճիռն իր ձեռքին: Եւ մեղապարտ բանաստեղծն ամբողջ էութեամբ սոսկում է եւ միայն անբաւ թուով վայ տալիս իրեն. «Քանզի սաստիկ է յիշատակն իսկ յառաջեալ քան զհանդիպումն»: Նա չգիտէ, թէ ի՛նչ անէ: Փախչել է ուզում հապճեպ տագնապով, բայց փախուստն անզերծ է.

Ոչ արագմամբ ոտից փախչելի,
Ոչ թիկանց դարձուցանելի.
Ոչ դիմաց ընդ երկիր մածուցանելի,
Ոչ բերանով ընդ հող հաստելի.
Ոչ ի խորս երկրի զօդելի:

Բան Դ. էջ 10. ԿԸ. էջ 175 եւ հտ. եւ այլն:

Այդ ժամանակ պահապան հրեշտակը, որ մարդուս կենակից հզօր ոստիկանն է, ամբաստանում է, եւ Հատուցանողն ահաւոր յանդիմանում է:

*Նրա սպասաւորներն առանց խնայելու խուճապելու են, ոմանց կեանքի հրբաւիրում, ուրիշներին ամօթի դատապարտում։*

Կիսոց դէմս լցեալս ծաղու ցուցանեն,
Եւ ինձ տհարկուս եւ քատմնելիս երեւեցուցանեն.
Ոմանց պսակս յուսապանոյես մատուցանեն,
Եւ այլոց կորուստ մահու բողոքեն.
Արդարոցն ձայն աւետեաց,
Եւ ինձ գոյժ անվախճան վշտաց։
Յորժամ առ բարիսն՝ մահու յաղթութիւն խայտ մեռանի.
Եւ ինձ՝ չարագործիս կրկին յարակայի.
Ուր դրանն բախել ոչ ինչ ազդիցէ,
Վճար եղեալ գթութեանն առ իս։

*Բան ՀԹ. էջ* 211

*Ողբն ու արտասուքը, որ մեռնելուց առաջ գրաւում են երկինքը, այն ժամանակ իբրեւ ապաժաման ընդունայնութիւն արհամարհւում են։ Բանաստեղծը սոսկում է, որ մի գուցէ մեռնելուց առաջ բաւականաչափ հեծութիւն ու հառաչանք ունեցած չլինի.*

Զտանջարանսն բազմապատիկս
Անձամբ անձին աստէն իսկ պատրաստեցի,
Զիա՞րդ մխիթարեցայց համառօտեալս յոյսոյ։
Զի եթէ զօրքն յուսոյ՝ դասուք արդարոցն,
Որ փառաւորեալքն են երանութեամբ, սարսեն դողալով,
Ոչ բաւեն բերել զահաւոր տեսիլ
Երեսաց մեծ դատաւորին,
Ես՝ եղկելիս, աւանդակորոյս,
Սատակման որդիս, ո՞ւր երեւեցայց,
Որ ոչ միայն չեմ պսակելոց,
Այլ եւ պատուհասն իմ անտանելի,
Եւ կորուստն անապառելի։

*Բան ՀԹ. էջ* 111 *եւ հտ.*

*Եւ նա տեսնում է* դժոխքը, *կորստեան խորխորատը, ուր «հրեղէն են գետքն, անանցանելի փոսկքն, Թանձրամած խաւարն, եւ արտաքոյ այցելութեան մառախուղն. ապականութեան է գուբն, եւ մշտնջենաւոր է տագնապըն. ամենադրաւ տարտարոսն, եւ անզերծ սահմանանիքն», — անտանելի պատուհասների, մի դառն, դժնդակ օթեւանի տեղ մեղաւորների համար, որդներով ու զարչահոտութեամբ լի մի անել արգելարան, մի անփախչելի որոգայթ։ Այնտեղ պատիժները համեմատ են գործած մեղքերին.*

Զի ոչ ջերմն սիրով առ ընկերին կարիս մատուցայ՝
Յիրաւի ի նախնումն փտանգին տագնապեալ սառնում։
Եւ զի ոչ զցանկականն խորոխտականութիւն սանձեցի՝
Յարժանի կրեմ եղկելիս զանզովանալի զկիզումն։

Եւ քանզի ոչ սիրեցի զլուսոյդ անտիս,
Արդար հատուցմամբ ի մթութիւն ըմբռնողական
Միգին կորստեան վրիպեալ դանդաչեմ:
Եւ զի ոչ խորեցի զմանուկս փոքունցն յանցանաց,
Իբր անվնասակարք վարկանելով,
Պատկանապէս ի խածանողականացն
Զազիրն զեռնոց խթեալ խոցոտիմ:
Եւ զի ոչ ձեռն կարկառի
Առ կիրս վտանգաւորին՝ այց առնել նմին,
Ի դէպ իսկ ըստ գծագրութեան այսր օրինակի
Ապականութեանն գրոյ նուիրեալ մատնիմ:

*Բան ԺԹ. էջ* 44

*Բանաստեղծին, որ իրեն դատապարտուած է տեսնում եւ դժոխքի դռներին, ուրիշ բան չի մնում, բայց եթէ խնդրել Աստուծուն, որ բաւական համարի այս տեսլից կրած տանջանքը եւ չտապի ազատել իրեն:*

Այլ արագեա՛, ամենապարգեւ զօրութի՛ւն անճառ,
Ձեռն փրկութեան՝ ի կորուստ գերելոյս.
Զի օգնեալ ի Քէն, դարձայց միւս անգամ ի դրանց դժոխոց...
Եւ մի՛ մատնեցայց կորեանցն առիծուց,
Որք խնդրեն ի Քէն զիս ի կերակուր՝
Ծախել ատամամբքն զազանութեան.
Զի զորովայն մահուն լցուցեալ՝
Զաստուստ պարարեալս անդ ձգեալ հալեն,
Ուր անսպառ պահի մնացուած մթերիցն
Ի ծախումն յաւիտենից:

*Բան ՀԹ. էջ* 212

*Ինչպէս սատանայի դիմաց՝ տժգոյն է Աստուծու պատկերն, որ յաճախ վերացական ընդհանուր ստորոգելիներով է որոշւում, նոյնպէս եւ դըժոխքի նկարագրի մօտ թոյլ ու տարտամ է* դրախտի *կամ* արքայութեան *պատկերը: Բանաստեղծը դրախտի տեսիլ չունի, մինչ ընդհանրապէս նա ուժեղ է յատկապէս սատանայի ու դժոխքի տեսարաններով եւ քստմնելի երեւոյթներ ցուցադրելիս: Իսկ ինչ որ իր տանջագին վիճակին, իր նուաստացմանն է վերաբերում, նրա երեւակայութիւնն անսահման մեծ է ու բազմադիմի: Յաճախ նա ստեղծում է խոշոր պատկերներ, իրենց բոլոր մանրամասնութեամբ, որոնք արդէն լոկ նմանութիւններ չեն, այլ անկախ տեսարաններ ու նկարագիրներ: Այսպէս Բան ԻԵ. էջ 58 եւ հտ. խորտակուած նաւի ընդարձակ տեսարանն, եւ կամ Բան ԾԴ. էջ 138 խեղդուողի պատկերն աւելի կարճ, բայց զօրեղ («Եւ քանզի ի ծուփս բազմավտանգս ալեաց ընդ հողմոյ...»):*

10. Ուրիշ ձեւական յատկութիւնները խօսքի գիւտերի եւ պատկերների առատութեամբ:— *Երեւակայութեան մեծութիւնից ու բազմադիմի լինե-*

*լուց է առաջանում եւ նրա լեզուական գիւտերի յորդութիւնը, որով նա միեւնոյն իմաստն արտայայտում է բազմազան ձեւերով, երբեմն համանիշ խօսքերով ու բառերով, որոնք նրա մտքի մէջ ծնւում են միաժամանակ: Ինչպէս, օրինակ, հետեւեալ շատ սիրուած «բանի» մէջ.*

Որդի՛ Աստուծոյ կենդանւոյ, ...
Որ տկարանայ առ ի քէն եւ ոչինչ.
Որ ի ծագել անստուեր նշուլից
Ողորմութեան քոյ փառաց՝
Հալին մե՛ղք, հալածին դե՛ւք,
Զնջին յանցա՛նք, խզին կապա՛նք, խորտակին շղթա՛յք,
Կենդանածնին մահացե՛լք,
Բժշկին հարուա՛ծք, ողջանան վէ՛րք,
Բառնին ապականութի՛ւնք,
Տեղի տան տխրութի՛ւնք,
Նահանջին հեծութի՛ւնք,
Փախնու խաւա՛րն, մեկնի մէ՛գն,
Մերժի մառախո՛ւղն, փարատի մռա՛յլն,
Սպառի աղջամո՛ւղջն, վերանայ մո՛ւթն,
Գնայ գիշե՛րն, տարագրի տագնա՛պն,
Զքանան չարի՛քն,
Հալածին յուսահատութի՛ւնքն, —
Եւ թագաւորէ՛ ձեռն քո ամենակար,
Քաւի՛չդ ամենայնի...

*Բան ԽԱ. էջ* 106

*Շատ անգամ մի կամ երկու պատկեր բաւական կը լինէր իր մտածմունքն ու զգացմունքը լրիւ եւ զօրեղ արտայայտելու համար, բայց նա բազմաթիւ գիւտեր, մէկը միւսից զօրեղ եւ գեղեցիկ, շարում է ետեւէ ետեւ անխտիր: «Զի՛ ոչ երբեք հարթ ընթանայ երիվար առանց սանձակալի, եւ ոչ նաւ համբառնայ հանդէպ առանց ուղղչի, եւ ոչ արօր կչիռ ինչ գործէ առանց մաճակալի, եւ ոչ երկուորեակք լծոցն ի ճահ ճեմեսցին առանց եզողի, ոչ ամպ վերաչուէ առանց հողմոյ, ոչ աստեղք ցնդին եւ կամ գումարին առանց ժամանակին, ոչ արեգակն փոխաբերեալ շուրջանակի՝ առանց տարրական օդոյ, եւ ո՛չ նոքօք հանդերձ առանց բարեգործիդ հրամանաց ակնարկութեան»* (*Բան ԾԴ. էջ* 138)*: Բան ՀԱ. էջ* 182 *եւ հտ. մօտ ութսուն միանման իմաստով պատկերաւոր խօսքեր յաջորդում են միմեանց:*

*Պատկերների այս յորդութիւնից յաճախ լեզուն կորցնում է պարզութիւնը, եւ երկը ծանր ու դժուար հասկանալի է դառնում, մասամբ նոյնիսկ ճոռոմութեան մէջ ընկնում: Եւ այս է նրա արուեստի ամենաթոյլ կողմը. որովհետեւ բանաստեղծութեան տեխնիկային հմուտ գրողը թոյլ չի տալ, որ երեւակայութիւնը բռնանայ իր վրայ եւ առանց ընտրութեան գրի առնել տայ ամէն ինչ, որ իր մտքում ծնւում է: Նա իր երեւակայած պատ-*

*կերներից կ՚ընտրի մի երկու լաւագոյնը միայն: Արդ, Ողբերգութեան ամէն մի «բանը» սովորաբար երեք–չորս դրութիւնից է կազմուած. յաճախ երգն սկսւում է Աստուծու գովեստով, նրա ստորոգելիներն ու արարքները թուելով. ապա բանաստեղծն ինքն իրեն մեղադրում է եւ վերջը գթութիւն հայցում: Բայց այսքանը նա ճապաղում է երկու–երեք եւ աւելի էջերի վրայ եւ երբեմն նոյնիսկ շատախօսութեան մէջ է ընկնում: Ընթերցողը միշտ պէտք է իր միտքը լարուած պահի, որպէսզի իրար վրայ կուտակւող յախուռն կրկնութիւնների մէջ չմոռանայ ամբողջ «բանի» ընդհանուր իմաստը, որ վերջը պիտի կապուի մի յապաղող նոր իմաստի հետ:*

*Չպիտի մոռանալ, որ այս ոճը, նոյնիմաստ խօսքերի կուտակութիւնը բոլորովին համապատասխան է եղել մենակեացների հոգեբանութեանը: Նրանք ամէն օր, ամէն ժամ, միակերպ կրկնութեամբ պայքարել են եւ չեն ձանձրացել: Այստեղ, այս ձեւի մէջ էլ Գր. Նարեկացին, ուրեմն, անդրադարձրել է ճգնական աղօթողների իրականութիւնը: Այդ կրկնութիւնները նոյնիսկ ցանկալի են եղել նրանց համար: Բայց այժմ էլ մի անգամ որ ընթերցողը մտքի լարումը յանձն է առնում, նա վարժւում է բանաստեղծի մտածութեան եղանակին, եւ այնուհետեւ այդ պատկերների ու կրկնութիւնների տարափը թողում է իր առանձին ազդեցութիւնը: Ընթերցողն ընկնում է բանաստեղծի խօսքի առատաբուխ հոսանքի մէջ, նրա սիրտն եւս լցւում է նոյն յորդութեամբ, որ զեղւում է բանաստեղծի յուզուած սրտից, եւ նա բանաստեղծի հետ ծփում է զգացմունքի նոյն յորձանքների մէջ: Նա եւս յուզւում է ու տարւում է մտքի ու սրտի լեռնացած կոհակներից, որոնք անդադար ձգտում են երկինք, ընկնում փշրւում են ու նորից ուռչում են, եւ անվերջ: Նման պատկերների կուտակութիւնը, կը նշանակէ, այժմ մեզ համար էլ թերութեան հետ ունի նաեւ առաւելութիւն, մանաւանդ որ դրանք յաճախ սոսկ կրկնութիւն չեն, այլ նոյն հոգեկան կամ ֆիզիկական վիճակի նուրբ նկարագիրներ տարբեր տարբեր կողմերից: Նա այդ ձեւով քրքրում, վերլուծում է ներքին վիճակը, կամ աւելի կենդանի դարձնում արտաքինը (տե՛ս էջ 174—175, Բան ԿԸ. էջ 62—63, Բան ԻԶ. էջ 72—73, Բան ԻԹ. եւ այլն): «Ահա ա՛յս կերպարանք ճշգրտագոյն պարտաւորիս յանդիմանութեան, տխուր դէմ, քաղեալ ճաճանչ, ցամաքեալ խոնաւութիւն, երիթացեալ շուրթն, անչքեալ տիպ, տրտմեցեալ ոգի, այլայլեալ ձայն, կրկնեալ պարանոց: Եւ զի թէ ոք զխկութիւնն իսկ նշանակեսցէ, ոչ անօրինէ. անամբարտաւան միտ, անհպարտ սիրտ, անխնդրող պարգեւի թշուառ, անաղերսալի պասքեալ, ինքնակշտամբելի դեգերեալ, իրաւամերժ սովեալ, արդարալլուկ քաղցեալ, պատշաճաղատ հարուածեալ, ինքնավկայ մահապարտեալ, արժանապէս հանեալ, անձնանէծ եղկելի»:*

*Ինչպէս պատկերների թուի մէջ չափ չգիտէ, նոյնպէս եւ նրանց տեսակի մէջ ընտրութիւն անել չունի: Երբեմն, ինչպէս յատուկ է ամբողջ միջին դարին եւ ռամկին, ամենանուրբ եւ վեհ մտածութիւնից յանկարծակի անցնում է անճաշակ, կոպիտ ու խիստ արտայայտութեան, եւ մի անգամ նոյնիսկ (Բան ԿԹ. էջ 177 եւ հտ.) Աստուածային Արծաթագործի քուրայի*

*մէջ եռալու մեծ պատկերից յետոյ անցնում է յանկարծ բորոտների, որովայնի եւ աղիքների որդերի ու միջատների, նոյնպէս սիրով կատարած նկարագրին։ Բայց եւ այնպէս լուերի մանրամասն չափ երակուն նկարագիրը, որ իր տեսակի մէջ առաջինն է, գեղեցիկ է։ Բերենք այստեղ այդ։*

Ասպատակք այլոց վայրենեաց,
Ըստ նմանութեան դիւաց գիշերամարտից,
Եւ մեկնազէն բարբարոս զնդից խուարասիրաց,
Եւ գազանութեամբ քանասար գայլոց արաբացւոց,
Կորակոր զնացիւքն, արջնաթոյր գունովն,
Կրկնապարոյր կռածագ կտցաւն,
Որ զօրէն ունի խայթոցաց կարճի,
Իբր դժնիկ փշովք խոցոտեալ ծծեն,
Զգեն զարեանն խոնաւութիւն,
Եւ յանկողինս մահճաց հանգստեանն
Վաստակս կրից ցուցանեն։
Եւ կարկառեալ ուրուք ձեռն՝
Հատուցանել զհատուցումն նոցա նոցին,
Վաղվաղակի զգան զվնաս վտանգին՝ զոր ազդեն մարդոյն,
Եւ անդէն իսկոյն յերկամարմին փոքր հասակաւն,
Իբր թեւօք իմն թռիչս արձակեն,
Եւ ըստ մարախի ձեւոյ ոստոստեալ՝
Այսր անդր տարաբերին․
Եւ ըստ բազմապատիր ննգութեան
Բարոյից դաւող աղուեսուց՝
Խորամանկեալ խուսափեն ի պատուածս բազում եղից,
Զի յերկիւղէ մահուն ապրեսցին։
Եւ այնքան չքոտի եւ անքատ անձամբքն
Ոչ միայն զռամիկսն եւ զխառնիճաղանճս,
Այլ եւ զթագաւորս հզօրս եւ անազինս
Փախուցանեն, հանեն, տարազրեն
Ի դստիկոն յարկի ապարանիցն բարձրութեան,
Եւ կամ ի բացէ քնակեցուցանեն։
Քա՛ջք արանց արեաց,—
Որք իշխեցին ամբոխից,
Եւ տիրեցին ժողովրդոց,
Եւ առին զքաղաքս ազգաց,—
Զպարտութիւն իւրեանց զօրաւոր ձեռինն ինքեա՛նք վկայեն,
Թէ՝ «Քանզի ոչ կարացաք
Ի դիմի հարկանել վեհիցն քռնութեան,
Վասն այնորիկ խոյս տուեալ հասաք յայս տեղի»։

*Բան կԹ․ էջ* 177 *եւ Հտ․*

*Այսպիսի չքնաղների պատկերներով կամ սուր, զարշ առարկաների նմանութիւններով յաճախ նա միայն իր մեղաւոր վիճակի զզուելիութիւնն է ուզում ցոյց տալ (էջ 3, 51, 103. Բան Բ. ԻԲ. ԼԹ. եւ այլն)։*

Մեռեալ պատկերիս մի՛ ոխս պահեսցես,
Ընդ անշունչ կերպարանիս մի՛ ի դատ քններթեան մտցես,
Մահու տանջեցելոյս մի՛ հարուածս յաւելցես...
Կործանեալ շինուածոյս մի՛ պատուհաս մատուցես,
Ծանս սպանելոյ մի՛ քարինս արձակեսցես...
Լուսոյ ջախջախելոյ մի՛ սաստիկս որոտասցես...
Ի յոտս քո անկանիմ եւ զզարշապարիդ հետս համբուրեմ,
Զպարտութիւնս խոստովանիմ եւ զմեղանս հրապարակեմ,
Կշտամբանաց քարամբք կոծիմ եւ հառաչանօք սրտիս տապանամ...

*Բան ԿԶ. էջ 168 եւ Հան.*

*Հէնց այսպիսի նուաստ իրերով ու դրութիւններով է, որ բանաստեղծը խիստ ուժեղ կերպով դէմ ու դէմ է դնում Աստուծու մեծութիւնը եւ իր չնչնութիւնը, նրա բարերար գթութիւնն եւ իր ընկած դրութիւնն, իր անճարակութիւնն ու սրտի բոցը, եւ վերջապէս իր սորտաքարշ աղիողորմ աղաչանքն Աստուծուն, որ գթայ իրեն։*

Ամպարտաւանեցայ փոշիս շնչաւոր,
Ամպարհաւանեցայ կաւս ձայնաւոր,
Հպարտացայ հողս անարգութեան,
Ի վեր ամբարձայ մոխիրս մերժելի,
Բազուկ կառուցի բաժակս մանրելի.
Տարածեցայ առաւել իբր վեհ,
Եւ դարձեալ իբր զհերքեալ՝
Առ իս հնքնամփոփեցայ։
Բարկութեանն բոցով ցոլացայ տիղմս բանաւոր.
Իբր զանմեռ ոք մեծամտեցի՝
Որ ընդ քառոտանեաց մահու եմ փակեալ։

*Բան. Ի. էջ 47*

Անկեալ կամ չարեօք ի մահիճս ախտից անկողնոց մեղաց՝
Դի կենդանի եւ խօսուն մեռեալ.
Կարեկցեալ իմուս թշուառութեան՝
Ողբականօք քքուանաց ձայնից,
Ո՛վ բարերար որդի Աստուծոյ,
Օրհնաբանեալ աչացըդ ցօղով
Վերականգնեսցես ի կենդանութիւն,
Իբր զփիրելին ի յանշնչական մեռելութենէ։
Ստոյգ դառնացողս ի գրի մեղաց կամ տարակուսեալ.
Ձեռն մատուցեալ, Արե՛ւ անստուեր, Որդի Բարձրելոյ,

Հանցես զիս ի լոյս քումդ նշուլից…

*Բան ԺԸ. էջ 41 եւ Հտ.*

*Հազարաւոր, մէկը միւսից զօրեղ ու գունաւոր արտայայտութեան կոյտերի մէջ՝ նա դեռ իր գրիչը գտնում է թոյլ եւ չգիտէ, թէ ինչպէս իր անարժան անձը ներկայացնի: Այդ ժամանակ նա դիմում է չափազանցութեան ձեւին.*

Զի եթէ զլին մի ծովուց
Ի յորակութիւն դեղոյ հեղեղեցից,
Եւ զդաշտս ապարխօք բազմօք սահմանեալ՝
Ի տարածումն լայնութեան քարտենի չափեցից,
Եւ զպուրակս յոգունց անտառաց շամբից եղեգանց
Ի հատուածս գոյութեան գրչաց կազմեցից,—
Եւ ոչ զթիւ մի ի բարդեալցն անօրէնութեանց
Զօրեցից ընդ գրով սահմանի զրաւել:
Նա՝ զի թէ զմայրըս Լիբանանու
Ի մի լուծ կշռոց զօդեցից,
Եւ կամ զլեառնն Արարատեան
Ի կէտ ամբարձման նժարի իմոյ
Արդարութեան միջնորդ կացուցից,—
Ոչ հաւասարէ այնր հարթութեամբ համազուգակցել:

*Բան Թ. էջ* 20

*Չափազանցութիւնների համար տե՛ս եւ Բան ԿԸ. էջ* 174: *Դրախտի չորս գետերի հոսանքներն իբրեւ իր աչքերից բխող արտասուքներ, Բան ԺԵ.* 34: *Ջրհեղեղի ջրերի կուտակութիւնից էլ վեր են իր մեղքերի չեղջերը:*

11. Հռետորական խրթին ոճ:— *Այսպիսի մեծ երեւակայութիւն ունեցող բանաստեղծին բնականաբար բաւականութիւն չպիտի տար մեր լեզուն, որ զարգացած էր պատմութեան, ներբողականի ու մեկնաբանութեան համար եւ արդէն անգոյն ու վերացական էր դարձած: Այս պատճառով եւ նա ստեղծում է մի նոր, ինքնատիպ լեզու, հարուստ ինքնահնար դարձուածքներով եւ բառերի յաճախ նուրբ ու բազմիմաստ կիրառութեամբ: Եւ որ գըլխաւորն է՝ նա վերացական դարձած ու ճարտասանական լեզուն դարձնում է թանձրացած ու գունաւոր նկարէն, քանի որ նա ամէն ինչ մտածում եւ զգում է պատկերներով:*

*Սակայն ճարտասանութիւնը, այն էլ դպրոցական ճարտասանութիւնը, դեռ նրա երկի մէջ բաւականին տեղ է բռնում: Նա առաջաբանների մէջ երբեմն նոյնիսկ յայտնում էլ է այդ, թէ աշխատում է զանազան ճարտասանական ձեւեր գործածել, որպէսզի ոճին բազմազանութիւն տայ: Այդ հին ճարտասանութեան արդէն յատուկ էր համանիշ բառերի եւ արտայայտութիւնների կուտակութիւն, ինքնաստեղծ բառերի ու երկար պարբերոյթների սէր, անկանոն ու բարդ, արտասովոր ու նորաձեւ բացատրութեան հակում, որ Նարեկացու երկի մէջ եւս տանում է դէպի մթնութիւնն եւ երկարաբանութիւնը:*

Գրիգոր Նարեկացու տաղերի մէջ եւս երեւում է իր դարի քերթողութեան վատ ազդեցութիւնը: Նրա արուեստն այդ երգերի մէջ յաճախ հետեւակ եւ վերացական է, ինչքան էլ դրանց ստանաւորներն իբրեւ այնպիսին գեղեցիկ են: Զորս–հինգ ընտիր տաղերի մէջ անգամ երբեմն յօրինուածքը շատ մութն է ինքնահնար կամ անգործածական բառերով, կամ թէ ժամանակի ճաշակի համեմատ խրթնաբանութեամբ, արուեստական կնճռոտ ու խորհրդաւոր արտայայտութիւններով: Շատ բառեր եւ նոյնիսկ խօսքեր այդպիսի տաղերի մէջ դեռ բացատրուած չեն, ինչպէս՝ չարժվարժենի, նէճէմ թէ նէճէմ, ատիճաղ պատիճաղ եւ այլն: Պակաս չեն եւ մանկական բառախաղութիւնները, մեծ մասամբ՝ կրկնութեամբ, որոնք իր ժամանակի «անճաշակ ճաշակի» արդիւնք են, ինչպէս՝ «էին աջոյ աջոյ ձեռին Աջոյն իւր աջ ընդ աջմէ հօ՛ր, Հօր ընդ աջմէ լուսոյն փառաց», — ուզում է ասել՝ «էին աջոյ ձեռն է ընդ աջմէ հօր լուսոյն փառաց»: Այսպիսի բառերով ու կրկնութիւններով խրթնանում ու թուլանում են նոյնիսկ նրա՝ Ծննդեան եւ միւս մի քանի տաղերը, որոնք սակայն եւ այնպէս՝ սիրուն բանաստեղծութիւններ են. որովհետեւ ինչքան էլ մթին լինին, իրենց ամբողջութեամբ հասկանալի են մնում, եւ մենք կարողանում ենք վայելել նրանց գեղեցկութիւնը:

Այսպիսի ոճը բացառիկ մեր լեզուի մէջ ստեղծուած չէր. եւ մեր լեզուի մէջ համարում են այդ իբրեւ հետեւանք արաբական ազդեցութեան: Բայց 6–րդ դարից արդէն յոյների մէջ, հին քերթողների եւ հռետորների լեզուի ազդեցութեամբ, առաջ էր եկել մի այդպիսի արուեստական չինծու պերճ լեզու, իսկապէս մի սեթեւեթ ոճ, որի մէջ ճարտասանական ձեւերը, պատկերաւոր արտայայտութիւններն ու փոխաբերութիւններն աւելի գերադաս էին համարւում, քան սովորական պարզ ու բնական բացատրութիւնները: Այս հռետորական ոճին 7–րդ դարում արդէն նմանում էին եւ մեր քերթողները, ինչպէս Թէոդորոս Քռթենաւորը, որոնք բացի իրենց ինքնահնար բառերից ու դարձուածքներից՝ ենթարկւում էին երբեմն նաեւ յունաբանութեան: Նրանք արդէն այն ժամանակ, երբ դժուար է ենթադրել արաբական ազդեցութիւն, գրում էին չափազանց ծանր, խճողած, զարդարուն ու վերամբարձ ոճով: Այս հռետորական լեզուն այնուհետեւ շարունակւում է զարգանալ մինչեւ 10–րդ դարը: 9-րդ դարում, Յովհաննէս կաթողիկոսի օրով արդէն, ինչպէս տեսանք, հաստատուած էր գրութեան երկու տեսակ կամ եղանակ — պարզ եւ հռետորական կամ, ինչպէս հետագայում կոչում է Ներսէս Շնորհալին, «մեկին բան» եւ «ծածուկ ճառ»: Միեւնոյն հեղինակը գրում է երբեմն մեկին, նոյնիսկ ժողովրդական պարզ ձեւով, երբեմն նաեւ մթին եղանակով, որ շատ դժուար է հասկանալ, ինչպէս են երբեմն Նարեկացու տաղերի մէջ տողեր ու բառեր:

Ոճական այս երեւոյթը կայ, եւ աւելի եւս, նաեւ ստորին դարերի ասորական գրականութեան մէջ. «սքանչացած արաբական լեզուի հարստութեան վրայ՝ ուզում են ցոյց տալ, թէ ասորերէնը ետ չի մնալ իրենց ոսոխների լեզուից: Որոնում են քիչ պատահող կամ արուեստական արտայայտութիւններ, որոնցով, իբր հնարանութիւններով, կարծում էին թէ բանաս–

տեղծական պատկերներն աւելի ցայտուն են դառնում»: «Զլուած ձեւով որոնում էին քիչ գործածուող բառեր, համարձակ նորաբանութիւններ ու դարձուածքներ, բնական արտայայտութիւնը շուռ էին տալիս եւ դարձնում մի հանելուկ, որի բանալին պէտք էր ունենալ հասկանալու համար»:— Մեր լեզուի մէջ ոճն այս աստիճանի մթութեան հասել է 11-րդ դարում Գրիգոր Մագիստրոսի մի քանի երկերի մէջ, բայց եւ Գր. Նարեկացու տաղերի մէջ եւս, ինչպէս ասուեց, կան մի քանի մութ հատուածներ: Թէ արաբական լեզուն մեր քերթողների այս ոճի վրայ ազդեցութիւն ունեցել է թէ չէ եւ ինչպէս, այդ խնդիրը դեռ պարզուած չէ:

12. Ոտանաւորը:— Հաւանաբար արաբական բանաստեղծութիւնից է անցել հայերէնին եւ յանգը, որի գործածութիւնը չկայ մեր հոգեւոր երգերի մէջ: Նարեկացու Ողբերգութիւնից իմանում ենք, որ 10-րդ դարում արդէն յանգի գործածութիւնը եղել է մեր աշխարհիկ բանաստեղծութեան մէջ: Եւ այս հասկանալի է. արաբական բանաստեղծութիւնն աւելի շուտ մեր աշխարհիկ երգերի վրայ պիտի ազդէր, քան եկեղեցական երգերի: Լալեաց բանաստեղծութիւն յօրինող ողբասացները, — «ըստ ձայնից կողկողանացն եւ զբանիցն յարմարութիւն հանդերձեն, ի նոյն գիր բերեալ զաւարտմունս տանցն, որովք առաւել սաստիկ մորմոքեալ ճմլեցուցանեն զաղէտս կարեացն սրտին ըղձից առ արտասուացն բղխմունս» (էջ 61, Բան ԻՁ.): Եւ ապա ինքը բանաստեղծն այս ամբողջ Բանը յօրինում է «հայրենի չափով» եւ «ի» յանգով. ուրեմն, ինչպէս արաբական կասիդայի մէջ, յանգը նոյն է մի շարք երկատող տների մէջ:

Պարտուցն ժխտեալ տաղանդացն՝ / ճեպով մեծաւ ի տուժի,
Ես ապիկար մատնեալ / անարժան գործովքս յիրաւի,
Վատնիչ արքունին գանձուց / կրկնադատ եւ անթափելի,
Պատասխանատու մեծին / ըմբռնեալ անհրաժարելի,
Բիւր քանքարոյ խնդիր՝ / ես չունիմ կշիռ մի ունկի:

Եւ այսպէս մինչեւ ամբողջ «բանի» վերջը: Նոյն «ի» յանգը, ինչպէս եւ ուրիշ յանգեր, նա բանեցնում է Ողբերգութեան մէջ նաեւ ուրիշ տեղերում: Յիշենք եւ նոյն տաղերի մէջ յանգեր կարմելը կամ տողամիջի յանգերը, ինչպէս՝ «Դու լոյս ես եւ յոյս, /եւ ես խաւար եւ յիմար...»: Տարունակութիւնը բերուած է վերեւում § 8:

Տաղերն անյանգ ոտանաւոր են. յանգերն այստեղ պատահական են: Սակայն տաղերի, ինչպէս երբեմն նաեւ Ողբերգութեան մէջ, նա աշխատում է տպաւորութիւն առաջ բերել բաղաձայնների հանդիպութեամբ. այս կողմից խիստ աչքի է ընկնում, օրինակ, Վարդավառի տաղը, որ բերուած է ներքեւում: Նարեկացու մի քանի տաղերի մէջ գտնում ենք «պատասխանի» կոչուած ձեւը, որ կայ եբրայական բանաստեղծութեան մէջ եւ 5-րդ դարում արդէն գործածական է եղել ասորական եկեղեցական բանաստեղծութեան մէջ. այն է՝ յաջորդ տողը կամ տունը սկսւում է նախորդ տան կամ տողի վերջին բառով, կամ նրա մի մասով, կամ մի նման բառով, եւ կամ

թէ տողի սկզբում դրւում է նախորդ տնից կամ տողից մի բառ կամ միտք. այսպէս են, օրինակ, տաղերն «Ի յարութիւն Ղազարու» (էջ 469—472), Համբարձման (էջ 477— 478): Դնենք այստեղ մի կտոր «Յարութեան տաղից» (էջ 474 եւ հտ.), որ յօրինուած է հայրենի չափով:

Ես ձայն զառիծուն առեմ,
Որ գոչէր ի քառաթեւին.
Ի քառաթեւին գոչէր,
Ձայն առնէր ի սանդարամետսն:
Սանդարամետն այն ի դող եղեալ,
Սասանէր ի ձայնէն ահեղ:
Ահեղ ձայնս որ ես լուայ,
Սա քակէ զամուրս որ ունիմ.
Զամուրս իմ քակել կամի,
Գերելոցն առնել գերեդարձ...

Կրկնութեան այս արուեստը հաւանօրէն ասորերէնից անցած պիտի լինի հայերէնին աւելի վաղ քան 10–րդ դարը:

Ողբերգութեան Մատեանի մէջ կիրառուած է առհասարակ «խառն ոտանաւոր իշխող հնգավանկ անդամներով», միայն երբեմն (աւելի տողերի սկզբում) հինգվանկանի անդամին փոխանակում են 3–4, կամ նոյնիսկ 6 կամ 7–վանկանի անդամներ: Դա ազատ անդամներով մի յօրինուածք է, որ բաւական մօտենում է արձակ խօսքին, բայց եւ շատ նուրբ ոտանաւոր է եւ շատ յարմարւում է բովանդակութեանը եւ այդ Ողբերգութեան արտասանութեանը, երբ աղօթողներն իրենց մենաւոր խցերում, ինչպէս դեռ գրքիս հեղինակի մանկութեան օրերում, այդ ոտանաւորի ամէն առաջին անդամի հետ գլուխներն իջեցնում էին դանդաղ եւ ապա ամէն երկրորդի հետ բարձրացնում: Դրանով, կարծես, որոշւում էր այդ երկի չափը: Եթէ Ողբերգութեան չափածոյ լինելն ընդհանրապէս չեն հասկացել եւ չեն ընդունել, պատճառն այն մոլորութիւնն է, որով մեր սովորական տաղաչափական ձեւերից մէկն են ուզեցել տեսնել դրա մէջ: Ինքը հեղինակն իր այդ երկը ոչ միայն բանաստեղծութիւն է անուանել, այլեւ երգ, նուագ եւ նոյնիսկ «չափաբերականք», այսինքն ոտանաւոր: Այդպէս յօրինուած են եւ մեր մի շարք հոգեւոր ու ժողովրդական երգերը: Մանրամասնութիւններ այդ չափի մասին՝ կարելի է գտնել սոյն հեղինակի մի ուրիշ աշխատութեան մէջ (1), իսկ այստեղ այսքանս միայն պիտի ասել: Տողի մէջ երկավանկ կամ եռավանկ ոտքը «միանալով թէ՛ նախորդ եւ թէ՛ յաջորդ ոտքերի հետ՝ կազմում է հնգավանկ անդամներ». ապա՝ տողասկզբի կարճ անդամները՝ սովորաբար զօրեղ շեշտուելով՝ երկարում են եւ մօտենում են հինգվանկանի անդամներին: Բացի այդ՝ այս տիպի ոտանաւորների հետ մէկ մէկ

---

(1) Հայոց լեզուի տաղաչափութիւն (մետրիկա), ուսումնասիրեց Պրոֆ. դ–ր Մ. Աբեղեան, Երեւան, 1933, էջ 380 եւ հտն.:

գործածուած կան եւ այլ տեսակի կազմութեան տողեր, որոնցով եւ բազմազանութիւն է մտնում ռիթմի մէջ: Կան, հարկաւ, եւ արձակ կտորներ: Բերենք վերեւում յիշուած գրքից հետեւեալ հատուածը (1):

«Այս ձեւի ազատ ոտանաւորներով, որոնց մէջ իշխող է հնգավանկ անդամը, յօրինուած են նաեւ Գրիգոր Նարեկացու «Գանձերը», «Ներբողները» (մասամբ), ինչպէս եւ նրա «Ողբերգութեան Մատեան»ի քնարական հատուածները մեծ մասամբ, բացի այն տեղերից, որոնց մէջ բանաստեղծը միանման կերպով թւում է Աստուծու ստորոգելիները, կամ միեւնոյն միտքը յեղյեղում է տարբեր արտայայտութեան ձեւերով, բայց նման կազմութեան խօսքերով: Այս մասերի մէջ էլ, սակայն, յաճախ նա դիմում է իր սիրած ռիթմին եւ կազմում է հնգավանկ անդամներով, երբեմն եւ ուրիշ տեսակի ոտանաւորներ: Այս Նարեկեան ոտանաւորը հոգեւոր երգերի նոյն տեսակի ոտանաւորից ոչ մի ուրիշ տարբերութիւն չունի, բայց եթէ այն, որ հոգեւոր երգերը մեծ մասամբ համաթիւ տողեր ունեցող փոքր տներով են յօրինուած, խօսքերը համեմատաբար կարճ են, եւ քիչ անգամ նոյն խօսքի մասերը դրւում են երկու–երեք տողի մէջ, — մինչդեռ Գր. Նարեկացու բանահարուստ «Ողբերգութեան» մէջ ասացուածներն ընդարձակուելով ծաւալւում են, անցնելով մի շարք համեմատաբար աւելի երկար տողերի մէջ, մինչեւ որ մտքի մի զօրեղ հատուածով միանալով մի ամբողջութիւն են կազմում, առանց որեւէ կանոնաւորութեան, առանց ձգտման՝ այդ հատուածները նոյնաթիւ տողերից կամ մօտաւորապէս հաւասարաչափ կազմելու: Կան, սակայն, հատուածներ, որոնց մէջ Նարեկեան խօսքը վերածւում է շարահիւսական փոքր անդամների, որոնց իւրաքանչիւրը կազմում է մի առանձին տեսակի ոտանաւոր: Այսպիսի կտորներն իսկապէս ազատ ռիթմական կամ գեղարուեստական պրոզա են: Բայց կան բազմաթիւ հատուածներ եւս, որոնց մէջ կայ զօրեղ ռիթմ հնգավանկ ազատ ոտանաւորի, մանաւանդ երբ կարճ անդամներն՝ ըստ իմաստի ուժեղ են արտասանւում: Անշուշտ, այնպէս, ինչպէս տպագրուած են իբրեւ արձակ գրուածքներ, ո՛չ Նարեկացու յիշուած երկերը եւ ոչ էլ մեր հոգեւոր երգերից շատերը, կարդալիս անմիջապէս չեն թողնում յաճախ ոտանաւորի տպաւորութիւն: Հարկաւոր է նախ՝ այդ բանաստեղծութիւնները տողատել, ապա՝ որոշել, թէ ո՛ր բառերի վրայ են խօսքի եւ զգածական շեշտերը, եւ յետոյ նոր կարդալ, եւ այնուհետեւ նոր կը զգացուի մեծ թափով յօրինուած այդ բանաստեղծութեան ռիթմը: Յուսալով, որ ապագայում կը տպագրուի մեր այս հին բանաստեղծութիւնների բնագիրն, ինչպէս պէտք է, հարկաւ, օգտուելով նաեւ ձեռագիրների տարբեր ընթերցուածներից, ներքեւում բերում ենք միայն մի քանի հատուածներ Գր. Նարեկացու «Ողբերգութիւն»ից, առանց այլեւս մտնելու թէ՛ այդ երկի եւ թէ՛ մեր հին երգերի ոտանաւորների ուրիշ մանրամասնութիւնների մէջ»: Այդ հատուածները մասամբ բերուած են վերեւում, այստեղ դնում ենք հետեւեալները·

(1) Անդ, էջ 382 եւ հտն.:

Ի խէ՛թ խըղճիս խոցոտիմ,
Եւ բոցով / շընչոյս / ճենճերի՛մ,
Աղի ցօղո՛վ արտասուացս այրիմ,
Եւ երիկամանցս ազդմամբ կիզանիմ,
Յուսակըտո՛ւր օդով ցամաքիմ,
Եւ դառնաշունչ հողմով շիջանիմ,
Թախանձանա՛ց բանիւս երերիմ,
Եւ կողկողագին հեծութեամբ դողամ:

(*ԿԶ. Բանի վերջին մասից*)

Մեղա՛յ մեծիդ / բարերարութեան,
Անարգըս մեղայ.
Մեղա՛յ ծագման / ըդ ճառագայթից,
Խաւարըս մեղայ.
Մեղա՛յ շնորհացդ / անբաւ երախտեաց,
Արդարեւ մեղայ.
Մեղա՛յ սիրոյդ / վերնում գթութեան,
Յայտնապէս մեղայ:

(*ԻԷ. Բանից*)

*Վերջացնելով՝ մի անգամ էլ պիտի կրկնել, որ Գր. Նարեկացու Ողբերգութեան Մատեանը, — որ ժողովրդականացած է «Նարեկ աղօթից» կամ «Նարեկ» անունով, — իր բուռն զեղումներով, իր բազմադիմի երեւակայութեամբ եւ ջերմ հաւատի անկեղծ արտայայտութեամբ, մեր բանաստեղծութեան առաջին մեծ հրաշակերտութիւնը լինելով՝ ոչ միայն հրաշալիք է երեւացել մեր ժողովրդի աչքին, այլեւ մի սրբութիւն հրաշագործ զօրութեամբ: Դարեր շարունակ ժողովրդի հաւատքով, նա իբր բուժիչ զօրութիւն է ունեցել եւ բուժիչ է եղել ոչ միայն հոգեւոր, այլեւ մարմնաւոր ցաւերի: Եւ որ զարմանալին է, ինքը հեղինակը գուշակել է, որ իր գիրքն այդ դերը պիտի կատարի.*

Եթէ համբարտակին վստահութեան մեղօք յատակի,
Այսու արձանօք պատկանեցելովք
Աջով քո պաշտպան՝ դարձեալ կառուցի:
Եթէ յուսոյն ձգարան սուսերբն յանցանաց հատեալ կտրեսցի,
Կցեսցի դարձեալ միւս անգամ կամօք
Ամենակալիդ բարուք պատուաստեալ:
Եթէ վտանգ մահու անձնական ցաւոյ զոք պաշարեսցէ,
Գտցէ փրկութիւն սովաւ առ ի յոյս
Կենաց՝ յաղօթելն առ քեզ, կեցուցիչ:
Եթէ տագնապաւ ոք տարակուսի ի սիրտ խոցիցի,
Քաղցրութեամբ քո՝ սովաւ ապրեալ ողջասցի...

Եթէ սարսուռ դիւացն ջերմանն՝ դողութեամբ ինչ զոք խռովեսցէ,
Սթափեսցի ի սոյն յայս նշան…

*Բան Գ. էջ 9 եւ Հտ.*

13. Տաղերը։— *Այսպէս «տաղ» կոչւում են ոչ միայն կրօնական, այլեւ աշխարհիկ բովանդակութեամբ երգերը — «տաղ սիրոյ եւ ուրախութեան»։ Կրօնական տաղերը տարբերւում են միւս հոգեւոր երգերից այնու, որ դրանք չեն յօրինուել իբրեւ կցուրդ Ս. Գրքի երգերի, ուստի եւ չեն ասուել վերջիններիցս յետոյ իբրեւ շարական երգեր։ Տաղերը տէրունական եւ սրբերի տօների վերաբերեալ յատուկ երգեր են։ Արդարեւ եղել են տօնախմբութիւնների համար ոգուած եւ ուրիշ երգեր, ինչպէս Հոփսիմեանց «Անձինք նուիրեալք» մեծ քերթուածը, բայց մինչ սրանք մտել են կանոնի երգերի շարքի մէջ եւ դարձել են շարական, տաղերը, դուցէ սակաւ բացառութեամբ, անկախ են մնացել հոգեւոր երգերի հաստատուն կարգից։ Տաղերի երգեցողութիւնն եւս ժամասացութեան ժամանակ ազատ է եղել, կարող էին դրանք երգուել կամ չերգուել, այդ մինչեւ 20-րդ դարն էլ կախուած է եղել եպիսկոպոսի կամ ժամարարի կամքից։ Բացի այդ՝ չարականների խմբագրութիւնից յետոյ յօրինուած նոր տաղերն եւս կարող էին երգուել եկեղեցում. ուստի նոյնիսկ դեռ 19-րդ դարում յօրինուել են բազմաթիւ նորերը։ Հոգեւոր տաղերի այսպիսի ծագման եւ կատարմանն իբրեւ հետեւանք առաջացել են այդ երգերի յատկութիւնները։*

*Տաղերի համար պարտադիր չեն եղել շարականների, հին հոգեւոր երգերի մէջ գործածուած տաղաչափական ձեւերը։ Թէպէտ մեծ դժուարութեամբ, — եւ թունդ բարեպաշտների կողմից մեծ տհաճութեամբ, — հոգեւոր տաղերգուները գործածել են նաեւ աշխարհիկ տաղերի չափերն եւ արտայայտութեան ձեւերը։ Եւ Գրիգոր Նարեկացու արժանիքներից մէկն էլ այդ է. նա համարձակուել է ոչ միայն տաղերի, այլեւ յանգերի նկատմամբ մէկ մէկ նաեւ Ողբերգութեան մէջ հետեւել աշխարհիկ երգասացներին, չնայելով որ այդ խոտելի էր համարւում նոյնիսդ դեռ 12-րդ դարում։ Ներսէս Շնորհալին միայն՝ իր մեծ ազդեցութեամբ ընդունելի է դարձրել այն։ Գր. Նարեկացին իր տաղերի մէջ կիրառել է բացի ազատ ոտանաւորներից նաեւ աշխարհիկ չափերից 4—4, 3—4 / 44. 5—4—4. 2—3—2 / 3—2—3. 2—3—3—3 եւ այլ պարզ կամ բարդ ոտքերով (անդամներով) կազմուած ռիթմիկ ոտանաւորները։*

*Տաղերն եւս արդիւնք են նոյն իրականութեանը, ինչ որ Ողբերգութիւնը, բայց մինչ վերջինիս մէջ բանաստեղծը ցաւագին ու մռայլ է, տաղերի մէջ, առանձնապէս դրանց մի քանիսի, նա երեւում է համեմատաբար թեթեւ ու զուարթ ոգով։ Դա առաջանում է այդ երկու տիպի բանաստեղծութիւնների նիւթի ու նպատակի տարբերութիւնից։ Վանական-կրօնաւորական կեանքի միակ ուրախ ժամանակը եղել է տէրունական տօների պայծառ պաշտամունքը, երբ մի կարճ միջոցով գոնէ՝ թոյլատրւում էր թողնել ողբը եւ ուրախանալ Քրիստոսի ծննդեան եւ յարութեան, համբարձման ու*

*պայծառակերպութեան տօնի օրերը: Հետագայ դարերում այդպիսի տօներին նոյնիսկ «աբեղաթող» ասածն էր լինում, այսինքն՝ աբեղաներին ազատութիւն էր շնորհւում ուրախանալու ամբողջ օրը: Նոյնիսկ շարականների մէջ երեւում է այս տօնական զուարթութիւնը, եւ կան շարականներ, որ ունին մինչեւ անգամ ցնծագին փառաբանական բնաւորութիւն, օրինակ՝ հետեւեալը.*

Այսօր ցնծան երկինք ի վերուստ
Մեծապայծառ աւետեօք,
Եւ արարածք ամենայն
Զգեցան զհանդերձ փրկութեան:
  Այսօր ցնծան մանկունք առագաստի,
Քանզի Քրիստոս յարուցեալ՝
Փարատեաց ըզսուգ եւ զտրտմութիւն,
Եւ լուսաւորեաց զաշխարհս:

*Այսպիսի ուրախ տօնակատարութեան ժամանակ ասուելու համար յօրինուած տաղերն էլ, որ կանոնից դուրս երգուելով՝ պիտի առանձին շուք տային հանդէսին, բնականաբար ունեցել են զուարթ բնաւորութիւն: Եւ Գր. Նարեկացին իր տաղերով իսկապէս այս կարգի շարականների տեսակն է զարգացրել. այն ինչ նրա Ողբերգութիւնն, ընդհակառակն, ապաշխարութեան երգ է եւ զարգացումն է ապաշխարութեան հոգեւոր երգերի եւ ընդհանրապէս «Ողորմեա» կոչուած շարականների: Դա էլ իրօք այն տխուր ու լալահառաչ հոգեւոր երգերի կատարելատիպն է, միայն ինքնայատուկ ձեւով: Այս բանաստեղծի անունով երեւան եկած տաղերի մեծ մասը, սակայն, առանձին գրական արժէք չունին:*

14. Վերածնութեան շունչը:— *Գր. Նարեկացու մի քանի տաղերի մէջ առաջին անգամ գտնում ենք մեր գրականութեան մի բանաստեղծական տեսակը, որի մէջ հեղինակը սիրոյ եւ բնութեան, գարնան եւ կանացի գեղեցկութեան երգն է երգում, միայն թէ այդ սէրը չունի ոչինչ նիւթական, ֆիզիքական. դա երկնային սէրն է, ուղղուած առ Աստուածածինը: Բայց եւ այնպէս այս հոգեւոր բանաստեղծութիւնն իր ձեւով արդէն խիստ տարբերւում է շարականների տեսակից: Ս. Գրքի նմանողութիւնն եւ մեկնաբանական ու դաւանաբանական ազդեցութիւնն արդէն ետ են մղուած: Բանաստեղծն, ընդհակառակն, ոչ միայն տաղաչափութեան, այլեւ արտայայտութեան ձեւերով ազդւում է աշխարհիկ ուրախութեան եւ սիրոյ տաղերից, որոնք այդ ժամանակ շատ զարգացած են եղել մեր ֆէոդալների եւ քաղաքացիների մէջ: Բանաստեղծութիւնն այլեւս սառն ու անկենդան յղացում չէ սովորական ձեւերով, այլ դարձել է անհատական ներշնչում: Օրհներգութիւնը դարձեալ յօրինւում է Քրիստոսի կամ սրբերի ու եկեղեցու փառաբանութեան համար, բայց չունի այլեւս դիդակտիկական նպատակ: Այս պատճառով, հակառակ շարականների բանաստեղծութեան, տաղասացը ձգտում է իդէալական պատկերներ առաջ բերել, չբաւականանալով Ս. Գրքի յարասութեամբ եւ կարծիքներ միայն արտայայտելով: Վերացական բանա-*

ձեւեր եւ դաւանաբանութեան ակնարկող բառեր այլեւս չկան· այլ դրա փոխանակ խօսում է ինքը բնութիւնը, որից, ինչպէս Ողբերգութեան մէջ, այստեղ էլ կենդանի զգացած պատկերներ է առնում բանաստեղծը:

Ծննդեան տաղի մէջ բանաստեղծի երեւակայութիւնն ազատ չարժուելով՝ խաղում է, հակառակ ճգնաւորական մռայլ ոգուն, բնութեան մեղմ գեղեցկութիւնների մէջ, առաւօտեան արեւածագից թռչտում է թուփ ու տերեւին, որոնց վրայ իջնում է առաւօտեան ցօղիկը, որ երբ արեւն իր ծայրը ցոյց է տալիս, վառ ի վառեալ փայլում է· կամ նա դիտում է ցօղագին ամպը եւ օդի մէջ չաղուած անձրեւի կաթիլները, եւ ամպից անցնում է լուսաւոր լիալուսնին, որի ետեւից բարկ աստղերով ճեմում է գիշերավար արուսեակը: Դա գարնան գեղեցիկ հարսանիքն է, որ ներդաշնակութեամբ երփնազարդուած՝ դեղգեղում է իր երգը: Բայց դա այլաբանօրէն միաժամանակ եւ հոգեւոր գարնան, նոր հոգեւոր կեանքի սիմբոլիկ պատկերն է, — եւ ոչ միայն մեր բանաստեղծութեան մէջ, — որ բացւում է «Սիրոյ», այսինքն Քրիստոսի ծնունդով իբրեւ «փառաց լուսոյ» «ծագումն յարփւոյն», որ, ըստ քրիստոնէական հաւատքի, մարդկային ազգի սիրոյ համար եկել, ծնուել է ինչպէս երկնքից իջնող մի ցօղաբեր ամպ, կամ ինչպէս մի գարնան ծաղիկ Ս. Կոյսի ծոցից.

Զսէր իւր ի մեզ քաղցրիկ ցօղեալ···
Ի սիրո՛յ սէր ծանուցեալ,
Սիրաբողբոջ տարփմամբ լցեալ,
Սիրով ընդ սէր միաբանեալ:

Գարնան այս ընդհանուր երգին խառնում է բանաստեղծը եւ իր երգը·

Ե՛րգ զարմանալի, ե՛րգ շարժվարժենի:
Տեղին եղեր բարեկերտին·
Խորհո՛ւրդ, խորհո՛ւրդ,
Համերամ զա՛րդ, երամից զա՛րդ,

այսպէս բացականչում է նա՝ դիմելով Ս. Կոյսին, «բարեկերտի» մօրը, որ նա ներկայանում է նրան մի գաղափարական կնոջ պատկերով, այնպէս նկարագրուած, ինչպէս մի աշխարհական երգիչ իր կանացի գեղեցկութեան իդէալը կը նկարագրէր: Նա ամբողջապէս մի «զարդ» է, նռնի ու նշտարենի հասակով· «յունիցն նրբենի ի մի կից կամար» կարծես «միջօրէի ժամն» է ծագում.

Աչքըն ծով ի ծով ծիծաղախիտ
Ծաւալանայր յառաւօտուն,
Երկու փայլակնաձեւ արեգական նման·
Շողն ի ժմին իջեալ յառաւօտէ լոյս:

*Նրա նռնենի այտերը, կամարակապ ձեռները եւ ամբողջ արտաքինը պատկերացւում են կենդանի եւ ուժեղ.*

Բերանն երկթերթի, վարդն ի շրթանցն կաթէր.
Լեզուին շարժողին քաղցր երգանայր տաւիղն...
Վարսիցն երամից զարդ ոլորս են առեալ,
Եռահիւսակն բոլորեալ այտիւք,
Ծոցքն յուսափայլ, կարմիր վարդով լցեալ.
Ծղիքքն ծիրանի մանուշակի հոյլք:
Խնկեալ ի կնդրկէ բուրվառ՝
Հրով սատուածայնով լցեալ,
Ձայն քաղցրանուագ որ ի նմանէ հնչէր:

*Չի մոռացւում նոյնիսկ գեղեցիկ կապոյտ, ծիրանի բեհեզեայ պատմուճանը, ոսկեշող, արծաթափայլ ոսկետառն գօտին, զարդարուած թանկագին քարերով, եւ նոյնիսկ քայլուածքը, ձայնը.*

Գօտին արծաթափայլ, ոսկետառն,
Կամարակապ, յականց շափիւղայ,
Մանրամասին յօրինուածով պճնեալ:
Անձինն ի շարժել մարգարտափայլ գեղով,
Ոտիցն ի գնալ՝ շողն ի կաթել առնոյր:

*Դա մի գեղեցիկ պատկեր է, մի սքանչելի տեսիլ, որ*

Հանդարտիկ խաղայր, թիկնէթեկին ճեմէր,

*այսինքն՝ կոտրտուելով, ուսերը շարժելով հանդարտ ճեմում էր.*

Որոյ սիւնն ի սրտին նուախայօրէն
Կարկաչայր սաթբերունի սէր:

*Մարդ ակամայ յիշում է Պեշիկթաշլեանի «Ձեմք մ՚լեառն հսկային», որի մէջ բանաստեղծը հրապուրւում է գեղեցկութիւններովը բնութեան, որի ամենամեծ զարդն է երգող կոյսը: Բայց չմոռանանք, որ Նարեկացու բնութիւնը, զարունը, — ինչպէս ընդհանրապէս միջնադարեան, եւ ոչ միայն հայ, եկեղեցական երգիչների համար, — մի այլաբանութիւն, մի սիմբոլ է միայն Քրիստոսի ծննդեան համար, իսկ նկարագրած գեղեցիկ կինը Ս. Կոյսն է, մայրը նորածին Փրկչի «Բարեկերտի», ինչպէս կոչւում է մանուկ Յիսուսը եւ ոչ միայն մեր բանաստեղծութեան մէջ: Ուստի բանաստեղծը վերջացնում է իր տաղն այսպէս.*

Այն Թագաւորին, այն նորածին Փրկչին,
Զքեզ պսակողին փառք յաւիտեանս:

*Դա իսկապէս ջերմ սրտից բխած մի օրհներգութիւն է միայն, ուղղուած առ Ս. Կոյսը, որ ոչինչ այլաբանական չունի իր մէջ, իբր սեփական*

սիրոյ առարկան ի դէմս Սրբուհու երգուած: Բայց այդ օրհներգութիւնն ամբողջապէս Թարմութիւն է, անպէս զգացուած է եւ մարդկօրէն նկարուած ամէն ինչ, որ անպայման իրական կեանքի մէջ տեսածից ու զգացածից է առնուած: Միւս կողմից, սակայն, այն սէրը, որ գովում է բանաստեղծը, մի աննիւթական սէր է. որովհետեւ երգուած կոյսն ինքն աննիւթ է.

Սերովբէանմամն, քերովբէաթոռ,
Հուպ երրակին լոյս զերազանց,
Լուսոյն արփի վեհինանեմ:

Նա, ինչպէս Աստուածածնի ներբողի մէջ (էջ 414 եւ հտ.), գրում է.

Ի մարդկային զարմէ հրեշտակ երկնային,
Ցեղծականաց սեռիցս անմահ սերովբէ.
Ի հողային նիւթոյ ոսկի Սոփերայ.
Ի ծովային բերմանց շնորհալոյս մարգարիտ,
Ի Յեսսեանն բուսոյ քաղցրապտուղ ծաղիկ...
Ցօղոյն հանդարտիկ ամպ անձրեւաճիր,
Արեւուն ծագման ակն արփիափայլ,
Մերկացելոյ այգոյն աստղ առաւօտին,
Գիշերային մթոյն խօսնակ բերկրանաց...
Վեհին պատկեր կերպիւ կշռորդեալ
Թեթեւ պարզութիւն հիւթիւ բաղկացեալ...

Նա մի անհասանելի աստուածային պաշտելի էակ է, երկնքի իսկուհին, «մեծ, երջանիկ, անարատ դշխոյ», մի լուսեղէն պատկեր, որի բարեխօսութեանն է դիմում յաճախ բանաստեղծը խոնարհ, գեռնաքարշ աղօթքներով, որոնց մէջ զգայական սիրոյ հետք անգամ չի նշմարւում:

Այլ բեկեալ սրտիւ, մատանց տատանմամբ, յոյս առեալ դարձի
Զդէմս ի յերկիր եդեալ՝ պաղատիմ մօրդ Յիսուսի.
Բարեխօսեա՛, մաղթեա՛ քաւութիւն ինձ մեղաւորի,
Դո՛ւ զօրաւոր փրկանակ կենաց, Իսկուհի՛ յերկնի,
Քեզ օրհնութիւնք ձայնից եւ բուրմունք խնկոց ի յերկրի,
Եւ անուշից իւղոց մատուցումըն յամենայնի:

(Ողբ. Բան ԻԶ. էջ 62)

Մի ուրիշ տեղ գրում է.

Աղաչեմ զքեզ, սուրբ Աստուածածին,
Հրեշտակ ի մարդկանէ, մարմնատեսիլ քերովբէ,
Երկնաւոր արքայուհի,
Անխառն իբրեւ զօդ, մաքուր որպէս լոյս,
Անշաղախ ըստ նմանութեան

Պատկերի արուսեկին բարձրութեան,
Գերազանց քան զբնակութիւն
Անկռխելին սրբութեանց···

*Այսպէս հէնց սկզբից մեր բանաստեղծութեան մէջ, եւրոպացիներից շատ առաջ, կնոջ պատկերը դրւում է մի միստիկական խորհրդաւորութեան մէջ, որին մօտենում է բանաստեղծը մի խորին ակնածութեամբ ու հոգեւոր հիացումով: Բանաստեղծն արդարեւ գուսանական երգերի մէջ փառաբանուած երկրաւոր սիրոյ չքեղ պատկերներով է նկարագրում, — եւ այլապէս էլ չէր կարող, — բայց նա այդ բոլորը ծառայեցնում է միայն իր հոգեւոր հիացմունքի առարկան զգալի դարձնելու համար: Եւ ո՛րքան նուրբ, ազնիւ ու մաքուր կերպով, միաժամանակ եւ վառ արտայայտութիւններով է նա այդ անում եւ պայծառ գծագրում մի կնոջ իդէալական պատկեր, որ այնուհետեւ իշխում է մեր հին բանաստեղծութեան, մեր սիրոյ երգի մէջ*(1)*: Այս արդէն նշան էր, որ բանաստեղծութիւնը փոխւում էր:*

*Ս. Կոյսի նկարագրից յետոյ անցնում է «մանկան» կամ փեսայի գովեստին նմանութեամբ Երգոց Երգի (որ իսկապէս մի սիրոյ երգ է, այլաբանութեամբ մեկնաբանուած Քրիստոսի եւ եկեղեցու վրայ): Եւ վերջապէս «Յայտնութեան» տաղի մէջ, որ «Ծննդեան» տաղի շարունակութիւնն է, աւետիս է տալիս տիեզերքին Քրիստոսի ծննդեան եւ մկրտութեան համար: Բնութեան սիրահար բանաստեղծը չի մոռանում իսկական ժողովրդական ձեւով աւետիս տալ նաեւ ծառերին ու ծաղիկներին, ջրերին ու լեռներին. եւ տեսէք, թէ ինչպէս մի քանի բառերով մանրամասն նկարել գիտէ բոյսերի ու ջրերի շարժումը:*

Աւետիս ծառոց ծաղկանց,
Բողբոջախիտ խիտասաղարթ,
Գոյն գեղեցիկ, պտղինաւէտ
Ակնահաճոյ, համ քաղցրունակ,
Հոտ բուրազուարթ, փունջ խուռներամ,
Ծայրից վարդից փթթինազարդ,
Թերթ տարածեալ ոսկենանանչ
Տերեւախիտ կանաչացեալ:—
Աւետիս տայր Յովհաննէս
Յորդ աղբերաց, հոյլ վտակաց·
Ջուր մանուածոյ ծիծաղ ծաւալ,
Կարկաջահոս ուխինահոս,
Ծայթինաւէր մանուածաւալ
Շրջանապտոյտ մանր աւազին·

(1) Տե՛ս Մ· Աբեղեանի «Հին գուսանական ժողովրդական երգեր», Երեւան, 1931, էջ 122 – 142· «Կնոջ արտաքինի նկարագիրը սիրու երգերի մէջ», սկսած Գր· Նարեկացուց մինչեւ Սայեաթ–Նովա, այլեւ ժողովրդական երգերի մէջ:

Հոլով խորոց մէտ մէտ զուգին,
Վայր, վեր, անէջ, վեր, վայր ի վեր՝
Փութան ի ջուրսն Յորդանանու:

Տաղերի մէջ եւս երեւում է բանաստեղծի երեւակայութեան էական կողմը, որ խիստ զարգացած է Ողբերգութեան մէջ. նա նկարչի նման տեսնում է ամբողջական պատկերներ: Այսպէս «Յարութեան» տաղերից մէկի մէջ տեսնում ենք Յիսուսին քառաթեւի վրայ՝ ինչպէս մի առիւծ ահեղ ձայնով գոչելիս դէպի Սանդարամետը, որ դողալով սարսում է. առիւծն Յիսուս քանդում է Սանդարամետի ամրոցները եւ այնտեղ գերուածներին աւար անելով՝ ազատում է տանջանքներից եւ անանց պսակներով զարդարում է նրանց:

Աւելի գեղեցիկ է նրա «Յարութեան» տաղը սայլի պատկերով, որ մի այլաբանութիւն է եւ որի մեկնութիւնը հէնց ինքը հեղինակը յօրինել է: Առանց այդ մեկնութեան՝ այդ երգը դրեթէ լոկ նկարագիր է մի սայլի, միայն այլաբանութեան պատճառով, զուցէ եւ աղաւաղուած լինելով, յօրինուածքի գաղափարը մթնած է: Այստեղ տեսնում ենք Մասիսից (Սինայից) իջնող մի արքայական սայլ, զարդարուած բեհեզներով եւ ծիրանիներով, վրան դրուած է ոսկի գահոյք, որի վրայ նստած է արքայորդին. նրա աջ ու ձախ կողմերից կանգնած են սերովբէք ու քերովբէք, առջեւում գեղեցիկ մանուկներ, գլխերին տէրունական խաչը, ձեռքերին սաղմոսարան ու քնար, եւ երգում ու ասում են՝ «Փա՛ռք Քրիստոսի ամենազօր յարութեան»: Բայց

Ածեա՛լ են ածեալ,
Զսայլիկն ածեա՛լ են կացուցեա՛լ.
Եւ տես՛ չշարժէ՛ր սայլիկն ա՛յն,
Եւ տես՛ չխաղա՛յր անիւն ա՛յն:

Սայլն ունի ամէն պատրաստութիւն ու զարդարանք. ունի հարիւր բարդ խոլրձան, մի բարդ կորնկան, մէկն էլ մանուչակ «խրձադիզեալ»: Նրա սամիքն արծաթի են, լուծը ոսկի, սամոտիքը ապրշմի, «փոկեր չարած, չարանման, հոյլ մարգարիտ». նրա քշող ճորտը ճոճ է եւ ճապուկ, ուսամիջակ, հաստաբազուկ, լայնաթիկունք, խարտիշագեղ, որ ահեղագոչ ձայն է տալիս եզնամոլին, կանչում է աթոռակին, — բայց եւ այնպէս սայլը Մասիսի աջ կողմում անշարժ կանգնած է մնում: Սակայն երբ լծում են եզները — «սաթ ու սպիտակ, ծաղկախայտուցք, արագաքայլք, ընթացականք, եղջիւրն ամէն խաչանման, եւ մազն ամէն հոյլ մարգարիտ», — այդ ժամանակ ահա՛ տեղից շարժւում է սայլը, «ի յառեղէն առեալ շարժումն կուրծն սայլին»: Ճորտը ձայն է տալիս եզնամոլին, եւ սայլը դլդլալով ու ճռնչալով գնում, մտնում է Երուսաղէմ, եւ Սիոնի որդիքը երգելով ասում են՝ «Փառք Քրիստոսի ամենազօր յարութեան»:

Ի՞նչ է այս, եթէ ոչ թագաւորական հանդիսաւոր գնացքը սայլով: Անպայման այսպիսի գնացքներ Արծրունեաց թագաւորների՝ տեսել է Նա-

*ընկացին եւ հէնց այդ գրի առել: Բայց այս տաղի արժէքն այնքան իր նկարագրի մանրամասնութեան, իրականութեան ճշգրիտ պատկերի մէջ չէ, որքան արտայայտութեան ձեւի մէջ: Բանաստեղծը լեզուին իշխող արուեստաւոր է. Նրա այս տաղը մեր խառն ազատ ոտանաւորների մի շատ ընտիր օրինակ է, որի մէջ ոտանաւորն իր բազմազան ձեւերի ռիթմով ըստ ամենայնի յարմարւում է բովանդակութեան փոփոխութեանը՝ մնալով միանգամայն եւ ընդհանրապէս շատ ռիթմիկ* (1):

*Նոյնպիսի հմուտ արուեստով, միայն «Հայրենի» կոչուած չափով* (2—3—2 / 3—2—3)(2), *յօրինուած է եւ նրա Վարդավառի տաղը, որ բերւում է այստեղ ամբողջապէս:*

ՎԱՐԴԱՎԱՌԻՆ (ՏԱՂ)

Գոհա՛ր վարդըն վառ առեալ
Ի վեհից վարսիցն արփենից՝
Ի վեր ի վերայ վարսից
Ծաւալէր ծաղիկ ծովային:
Ի համատարած ծովէն
Պըղպըջէ՛ր գոյնըն այն ծաղկին.
Երփին երփնուննակ ծաղկին

---

(1) Թէ Գր. Նարեկացու երգերից այս կամ այն առնուած է մեր շարակնոցի մէջ, թէ չէ, այդ մինչեւ այժմ յայտնի չէ: Այս «Յարութեան» տաղի վերջում կան «Այսօր արձակեցաք» բառերը, որոնք չեն կապւում ամբողջ տաղի հետ եւ մնում են իրենց համար անկախ: Այս երկու բառը «Յարութեան Տէր յերկնից» կոչուած շարականներից մէկի երրորդ տան առաջին բառերն են: (Տես՝ Շարական հոգեւոր երգոց, էջմիածին, 1861, էջ 378): Այդ շարականի առաջին եւ երկրորդ տներն են.

*Փա՛ռք Քրիստոսի ամենազօր յարութեանն:*
*Քրիստոսի ամենազօր յարութեանն*
*Երկրպագեն սերովբէքն,*
*Եւ վեցթեւեան քերովբէքն,*
*Հոգեւորական հնչմամբ երգեն ասելով՝*
*Փառք Քրիստոսի ամենազօր յարութեանն:*

Այս շարականի կրկնակը, որ նոյնն է «Յարութեան» տաղի կրկնակի հետ (Փա՛ռք Քրիստոսի...), շարականի բովանդակութիւնն ու փառաբանական բնաւորութիւնը, սերովբէների ու քերովբէների երեւան գալը, «Այսօր արձակեցաք» բառերը, եւ վերջապէս ազատ ոտանաւորը երկուսի մէջ էլ,— այս ամէնը ցոյց են տալիս, որ այդ «Յարութեան» շարականն եղել է Նարեկացու «Յարութեան» տաղի շարունակութիւնն իբրեւ Սիոնի որդիների երգ, որ պէտք է լինէր տաղի վերջում եւ պակասում է: Որովհետեւ շարականը շատ ծանօթ է եղել, տաղն արտագրողը բաւականացել է տաղի վերջում դնել շարականի երրորդ տան սկզբի երկու բառերը միայն՝ «Այսօր արձակեցաք», դրանով յիշեցնելով, թէ ի՛նչ է տաղի վերջը:

(2) Այս հայրենի չափի մասին տես՝ Մ. Աբեղեանի «Հայոց լեզուի տաղաչափութիւնը», էջ 267—276:

Շողշողէ՛ր պըտուղն ի ճըղին։
Քըրքում վակասիր պըտուղն
Սընձաննէ՛ր խուռն տերեւով․
Տերեւըն տաւիղ Տուողին,
Զոր երգէր Դաւիթ հրաշալին։
Ի փունջ խուռներամ վարդից
Գոյնըզգոյն ծաղկունք ծաղկեցան․
Այդ սօս ու տօսախ ծառերդ
Վարդագո՛յն ոստս արձակեցին։
Այդ ճոճ ու բողբոջ արաւսդ(1)
Զարդ առեա՛լ վարդըն շուշանին՝
Շուշանըն շողէր յովտին․
Շողշողէ՛ր դէմ արեգական։
Այն հիւսիսային հաւէն
Հով հարեալ զոհար շուշանին․
Յայն հարաւային լեռնէն
Քաղցր օդով ցօղէր շուշանին։
Շուշանըն շաղով լըցեալ,
Շող շաղով եւ շար մարգարտով․
Ծաղկունքդ ամէն շա՛ղ առին,
Շաղն յամպէ՛ն, ամպն յարեգակնէն,
Աստեղքդ ամէն շուրջ առին,
Դէմ լուսնին գունդ գունդ բոլորին․
Գունդ գունդ խաչաձեւ զնդակ,
Յօրինուած իրենից շուրջանակ
Փառք հօ՛ր եւ որդւոյն, յաւէտ,
Սուրբ հոգւոյն այժմ եւ յաւիտեանս։

*Այս տաղը՝ բացի վերնագրից ու վերջին երկու տողից՝ ոչինչ կրօնական չունի իր մէջ։ «Վարդավառ» անունն էլ իսկապէս քրիստոնէական չէ։ Այսպէս կոչուել է Ջրի դիցուհու Աստղիկի տօնը. որովհետեւ նրան նուիրական է եղել վարդը։ Մեծ հանդէսներով կատարել են այդ տօնը, դիցուհուն վարդեր ձօնելով, ջուր սրսկելով եւ այլն։ Քրիստոնէութեան ժամանակ այդ հեթանոսական տօնի փոխանակ կատարել են Յիսուսի պայծառակերպութեան տօնը․ բայց անունը եւ հանդէսները պահել են հեթանոսականը։ Մեր հին հեղինակները յիշում են այդ տօնի ծագումը հեթանոսականից(2)։ Այդ իմացել է, անշուշտ, եւ Գրիգոր Նարեկացին։ Նա ազդուելով*

(1) Տպուած է ըստ ձեռագրին «ասրաւսդ». ուղղում եմ «արաւսդ» — արօսդ։ «Արօս» կոչւում է «աբօսի» ծառի, սին ծառի պտուղն եւ ինքը ծառը։

(2) Պրոֆ․ դ-ր Մ․ Աբեղեան, «Վիշապներ» կոչուած կոթողները իբրեւ Աստղիկ-Դերկետոյ դիցուհու արձաններ, Երեւան, 1941, էջ 76 եւ հտն․։

«Վարդավառ» անունից՝ նկարագրել է ամառուայ կանաչավառ բնութիւնը — բողբոջող ու պտղող եւ ոստեր արձակող ծառեր, փթթող վարդ ու շուշան, ծլող ու բուրող ծաղիկներ, շաղ ու շող, լեռնային քաղցր օդ ու փչող հով, լուսին, աստղազարդ երկինք: Ամբողջապէս լուսով ու գոյնով եւ շարժումով հեղեղուած, անուշահոտ բուրմունքով լի մի թարմութիւն:

Բանաստեղծն այստեղ ոչ միայն բնութեան զգացում ունի, այլ գիտէ նաեւ դիտել բնութիւնը եւ սրա գեղեցկութիւնից տպաւորուելով՝ անդրադարձնել տալ այդ մեզ մի հրապուրիչ արուեստով, առանց որեւէ մթնութեան, ռիթմիկ-երաժշտական ոտքերով ու բաղաձայնների հանդիտութեամբ շոյելով մեր ականջը, միաժամանակ եւ խաղուն դարձնելով ոտանաւորը: Եւ որ գլխաւորն է՝ նա մի քանի կարճ խօսքերով հանում է բնութեան ընդարձակ նկարէն մի պատկեր, մեծ վարպետութեամբ թելադրելով ընթերցողին լրացնել պակասը: Եւ այդ լուսափայլ պատկերը ոչ թէ սառած, մեռած մի վայրկեան է, այլ, — ինչպէս վերեւում, նրա «Բանաստեղծական արուեստի տեսութեան» մէջ ($ 4) բացատրուեց, — է՛ շարժուող կենդանի միութիւն, մի ներդաշնակ ամբողջութիւն դառնալութեան վիճակի մէջ: Այս արդէն մի նոր արուեստ է ե՛ւ ձեւով, ե՛ւ բովանդակութեամբ: Բնութիւնը ոչ միայն ծառայում է իբրեւ աղբիւր բանաստեղծական նմանութիւնների, ոճական պատկերների համար, — ինչպէս Ողբերգութեան մէջ, — այլ ինքը բնութիւնը դառնում է երգի նիւթ: Բանաստեղծը երգում է բնութիւնը, թէպէտ դարձեալ կրօնական նպատակով:

Նարեկացու այդպիսի երգի մէջ, սակայն, արդէն զգացւում է վերածնութեան շունչը:

Խաղաղ շինարարութեան դարն ունեցել է իր խորին ազդեցութիւնը կեանքի վրայ: Եկեղեցական դասի կրօնական ոգին՝ հասնելով իր գագաթնակէտին եւ կատարելագործելով իր հոգեւոր երգերը՝ արտադրել է գրականութեան մէջ Ողբերգութեան Մատեանը, ամենամեծը՝ ինչ որ կարող էր: Սկսել է բարձրանալ մի նոր դասակարգ — քաղաքացիութիւնն իր նոր պահանջներով: Բանաստեղծութիւնը հետեւելով իրական կեանքին՝ պիտի անհրաժեշտօրէն շուռ գար իր հակադրութեանը — գրականութեան աշխարհականացմանը. 10-րդ եւ 11-րդ դարերն ստեղծել էին դրա համար պայմաններ: Գուսանական ուրախութեան բերանացի երգերը, որ այդ դարերում շատ սիրուած են եղել աշխարհականներից — ազնուականներից ու հարուստ քաղաքացիներից, հանդիսացել են հայկական վերածնութեան նախակարապետներ: Բայց այդ շրջանի համար ցաւօք չունենք գրի առնուած գուսանական երգեր, ոչ էլ ընդարձակ վիպական բանահիւսութիւն, կամ թէ գուցէ մինչեւ այժմ այդպիսիններ երեւան չեն եկել, բացի «Պատմական զրոյցներից», որ արդէն տեսել ենք, եւ որոնց մէջ արդէն զգացւում է վերածնութեան ոգին: Ուստի եւ մենք տակաւին չենք կարող պարզել խաղաղ շինարարութեան դարի հայ գրականութեան հարիւրամեայ դարաշրջանի լիակատար պատկերը, որ անդրադարձրած լինէր ժամանակի իրականութիւնն ամբողջովին՝ իբրեւ արտայայտութիւն Ֆէոդալական հասարակակարգի երեք

*դասերի եւ բարձրացող քաղաքացութեան: Ինչ էլ լինի, վերածնութեան կարապետ է արդէն Գրիգոր Նարեկացին, մեր հին մեծ բանաստեղծը: Սակայն նա իր էութեամբ պատկանում է դեռ նախորդ շրջանին. նրա Ողբերգութիւնն ու տաղերը, — մի կողմ թողած նրա միւս գրական երկերը, — ըստ բովանդակութեան արտայայտիչ են ոչ թէ ազնուականութեան ու քաղաքացութեան աշխարհիկ ոգու, այլ այն դարի եկեղեցական դասի կրօնական ոգու, որով տոգորուած էին եւ աշխարհականները: Բայց եւ այնպէս նրա մի քանի բանաստեղծութիւնների մէջ հնչում է արդէն վերածնութիւնը: Սկսւում է հայոց հին գրականութեան մի նոր շրջան — վերածնութեան գրականութիւնը»*(1) :

---

(1) Հայոց հին գրականութեան այս երրորդ շրջանի պատմութեան համառօտագրութիւնը տպագրուած է ՍՍՌՄ Գիտութիւնների Ակադեմիայի Հայկական Ֆիլիալի «Տեղեկագրի» մէջ, թիւ 5—6 (10—11), Երեւան, 1941, էջ 85—106. Պրոֆ. դ-ր Մ. Աբեղեան, «Վերածնութիւնը հայոց հին գրականութեան մէջ»: Այլեւ առանձին տպագրութիւն:



# ՑԱՒԵԼՈՒԱԾՆԵՐ

## ԱՌԱՋԻՆ ՑԱՒԵԼՈՒԱԾ

## ՎԻՊԱՍԱՆՔԻ ՊԱՏՄԱԿԱՆ ՀԻՄՔԸ

1· Ժողովրդական վէպերի պատմականութեան մասին ընդհանրապէս:— *Վերջերս ժողովրդական վէպի (էպոսի) մասին՝ բանահիւսութեան այդ ճիւղով չպարապած մարդիկ առաջ քշեցին մի սխալ տեսակէտ, թէ ժողովրդական վէպն իբր ծագում եւ կազմւում է դարերի պատմութեան ընդհանուր ազդեցութեան տակ՝ առանց մէկ որոշ կոնկրէտ եղելութեան: Արդարեւ ժողովրդական վէպը կրում է իր մէջ որոշ պատմական դարաշրջանի ազդեցութիւնն ու ոգին, նոյնիսկ յիշողութիւններ մի ամբողջ դարաշրջանից, բայց վէպի գործողութիւնը, ինչպէս եւ գործող անձերը, ֆանտաստիկ ստեղծագործութիւն չէ, այլ ծագում է, առաջ է գալիս մի որոշ, կոնկրէտ պատմական դէպքի, եղելութեան հետեւանքով: Վէպը որոշ կոնկրէտ եղելութեան բանաստեղծական պատմուածքն է: Հարկաւ, մի քանի անգամ յօրինուելուց յետոյ՝ դա իր մէջ առնում է նաեւ ուրիշ զանազան, եւ վա՛ղ եւ ո՛ւշ ժամանակների պատմական անձերի մասին երգերից ու զրոյցներից տարրեր, եւ այդպիսով առաջանում են յարակցումներ եւ անաքրոնիզմներ: Բայց դարձեալ դրանց բոլորի հիմքը որոշ կոնկրէտ անձեր ու եղելութիւններն են: Խնդիրն այստեղ վէպի գործողութեան եւ գործող անձերի մասին է լոկ: Տե՛ս եւ «Վիպասանք», $ 2:*

*Մի անգամ որ այսպէս է վէպի ծագումն ու զարգացումը, բնականաբար վէպի ուսումնասիրութեան կարեւոր խնդիրներից մէկն այն է, որ որոշուի վէպի պատմականութիւնը, այսինքն թէ որո՛նք են այն պատմական կոնկրէտ, յատուկ եղելութիւնները, որ անդրադարձուած են այս կամ այն վէպի մէջ: Այդ միեւնոյն է, թէ որո՛նք են այն պատմական եղելութիւնները, որոնցով ապրել է ժողովուրդը, կամ ո՛րն է տուեալ վէպի իրականութիւնը թէ՛ ըստ դարաշրջանի եւ թէ՛ ըստ յատուկ, կոնկրէտ պատմական անձերի եւ եղելութիւնների:*

2· Վիպասանքի պատմական նիւթը:— *Մեր այս հին վէպի պատմականութիւնն աւելի պարզելու համար հարկաւոր ենք համարում, բացի Վիպասանքի մասին հատուածի մէջ գրուածից՝ նաեւ հետեւեալ պատմական տեսութիւնը*(1)*: Վէպի գլխաւոր հերոսներից մէկն է Արտաշէսը: Այս վիպական անձի մէջ յարակցուած են յիշողութիւններ մի քանի պատմական*

(1) Մ· Աբեղեան, Հայ ժողովրդական առասպելները, էջ 286—289, 315—325, 595 եւ հտն· :

անձերի մասին։ Վիպական Արտաշէսը շինում է Արտաշատ քաղաքը։ Դա յիշողութիւն է ամենից առաջ Արտաշէս Ա.ի, Հայոց թագաւորութեան հիմնադրի, որ շինել է Արտաշատ մայրաքաղաքը (180 թ. մ. թ. ա.)։ Արտաշատի, Հայաստանի քաղաքական կեանքի հնագոյն կենտրոնի մասին երգը, որ մտել է վէպի մէջ, ասուել է նախ բուն իսկ հիմնադրի, Արտաշէս Ա.ի վրայ։

Արտաշէս Ա.ից յետոյ վիպասանների վրայ խորին ազդեցութիւն թողել է Արտաշէսի սերունդ Մեծն Տիգրանի երկարատեւ եւ աշխարհակալ իշխանութիւնը։ Այնուհետեւ առանձին կերպով յուզել է երգիչներին Մեծն Տիգրանի որդու, Արտաւազդի եւ այս Արտաւազդի որդի Արտաշէսի (Բ.) պատմութիւնը, որով սկսուել է վէպի երկրորդ մասը դառնալ մի ամբողջական պատմուածք։ Այս թագաւորի պատմութիւնը, որ գուցէ շատերին ծանօթ չէ, մենք այժմ կարդում անցնում ենք, եւ իր համառօտութեամբ մեզ վրայ թերեւս ոչ մի առանձին տպաւորութիւն չի թողնում։ Գուցէ նոյնիսկ շատ չնչին բան երեւի երգի կամ վէպի նիւթ դառնալու համար։ Բայց այդ միայն մեզ համար եւ այժմ։ Պէտք է երեւակայել Հայաստանի վիճակն 1-ին դարում մեր թ. ա., երբ հայերն Արտաշէս Ա.ի ձեռով անկախութիւն էին ձեռք բերել. Մեծն Տիգրանը միութիւն էր մտցրել բաժանումների մէջ եւ միացրած ուժով հայերին աշխարհակալութեան ճանապարհով տարել, տիրելով շրջակայ երկիրներին եւ կործանելով Սելեւկեան պետութիւնը։ Ազգային գիտակցութիւնը նոր զարթնած եւ ազգային հպարտութիւնը մեծցած էր։ Բայց որքան աւելի ճոխացած էր այդ հպարտութիւնն, այնքան աւելի խորը պիտի լինէր եւ Մեծն Տիգրանի որդի Արտաւազդի ու սրա որդի Արտաշէսի ցաւալի վիճակի թողած տպաւորութիւնը։ Արտաւազդի օրով Մեծն Տիգրանի, արքայից արքայի տէրութիւնն ընկնում է։ Հռոմայեցի Անտոնիոսը դաշնակցելով հայերին թշնամի Մարաց թագաւորի հետ՝ զօրքով մտնում է Հայաստան։ Հայոց արքան, Արտաւազդը խաբուելով՝ իր կնոջ եւ որդիների հետ գերի է ընկնում Անտոնիոսի ձեռքը եւ շղթայուած տարւում է Եգիպտոս։ Արքան սպանւում է այնտեղ. նրա որդիները գերութեան մէջ կորած են։ Ազատւում է միայն արքայորդին Արտաշէս։ Հայերից բերդականներ պաշտպանում են Արտաշէսին։ Նա իր կեանքն ազատելու համար ստիպուած է Պարթեւների մօտ փախչելու։ Իսկ Անտոնիոսը, «յանկուցեալ զոմանս կամաւ, զոմանս բռնութեամբ՝ լինէր տէր համօրէն աշխարհին Հայոց»։Հայաստանը յաղթուած է, եւ Անտոնիոսի գլուխը հայ խոյրով պսակուած։ Իշխում է Մարաց թագաւորը, որի խնամակալութեամբն է որոշում յանձնել Անտոնիոսը իր որդուն, կարգելով սրան Հայաստանի թագաւոր։ Մեծն Տիգրանի, արքայից արքայի տէրութիւնն այլեւս չկար։ Չկար եւ սիրելի Արտաշէսի հին, բնիկ ցեղը, որ հարիւր յիսուն տարուց է վեր փառքով թագաւորում էր։ Բայց ահա՛ պարթեւների մօտ ապաստանած արքայորդին՝ Արտաշէսը պարթեւական զօրքով եւ օգնութեամբ գալիս է եւ մարերի դէմ կռուելով յաղթում է նրանց ու ետ առնում իր հօր գահը, տիրում նոյնիսկ Մա-

բաստանին: Նոր զարթնող եւ ինքնաճանաչութեան եկող մարդկանց համար ի՞նչ աւելի արժէր երգել, քան այս անցքը: Վիրաւորուած ազգային հպարտութիւնը բաւականութիւն էր ստացած. բնիկ թագաւորական ցեղն իր գահի վրայ էր նորից, այն էլ մեծ կատաստրոֆից յետոյ: Իսկ կատաստրոֆները, ինչպէս եւ յաղթական փառքերը վիպական շրջանում, ահա՛ երեւակայութիւնը ցնցող պատմական իրողութիւնները: Եւ մեր Վիպասանքի ստուերագիծն արդէն պատրաստ է Արտաշէս Ա.ի եւ այս Արտաշէսի պատմութիւնից: Հայոց թագաւորը (Սանատրուկ) սպանւում է. կինն ու որդիքը ոչնչանում են. իշխում է օտար ցեղի թագաւոր (Երուանդ), որ բարեկամ է հռոմայեցիներին ու մարերին եւ բարձրացնում է մարացոց տէր Արգամին, տալով նրան թագաւորութեան երկրորդական գահը (Բ. 44): Հայոց թագաւորական տնից ազատւում է հաւատարիմների ձեռով Արտաշէս արքայորդին միայն, որ փախչում է պարսիկների մօտ. պարսիկների թագաւորը զօրքով օգնում է նրան, եւ նա գալիս է իր հօր կորած գահը ձեռք բերում: Նա «բազում չարչարում է» Մարաց ազգը (Բ. 61): Նա բարեկամ է պարսիկներին. արհամարհում է հռոմայեցիներին, բայց երբ սրանք զօրքով գալիս են նրա վրայ, հարկատու դառնալով հնազանդւում է նրանց: — Ահա վիպական Արտաշէսի պատմութիւնը, բայց ահա Արտաւազդեան Արտաշէսի իսկական պատմութիւնը: Աւելացրէք վրան եւ յիշողութիւններ Սելեւկեան շրջանի Երուանդների մասին, այլեւ Արտաշատի շինութեան հին զրոյցն ու երգը, որ Արտաշէս Ա.ի անունով պատմւում կամ երգւում էր արդէն, եւ մենք կ'ունենանք Արտաշէսի վէպի առաջին մասն ամբողջ: Երկու տարբեր Արտաշէսների մասին երգուածներն ու պատմուածքները վիպասաններից մի մարդու վրայ պատմուած, մի Արտաշէսի անունով:

Այս Արտաշէսեան վէպը՝ նորոգող ու կերպարանափոխող տարրեր ընդունել է շատ մօտիկ ժամանակում կատարուած այլ նշանաւոր դէպքերից եւս, — Միհրդատ (35—37 թ. եւ 41—45 թ.), Հռադամիզդ (45—52 թ.) եւ Տրդատ Ա. թագաւորների անցքերից: Միացման համար իբրեւ հանգոյց ծառայել է պատմական դէպքերի նմանութիւնը Արտաշէսեան վէպի հետ: Վրաց Փարսման թագաւորի որդին՝ Հռադամիզդ (ըստ վէպի՝ Երուանդ), սպանում է Հայոց Միհրդատ թագաւորին (ըստ վէպի՝ Սանատրուկ) կանանցով եւ որդիներով հանդերձ եւ իր հօր օգնութեամբ թագաւորում է Հայաստանում (45—52 թ.), ծառայելով Հռոմի շահերին: Նա բռնանում է հայերի վրայ եւ աւելի դառնում նախարարներին: Բայց այդ ժամանակները Պարթեւների Վաղարշ Ա. թագաւորը յարմար է համարում Հայաստանը նուաճել: Նա իր կրտսեր եղբօրը, Տրդատին (ըստ վէպի՝ Արտաշէս) պարթեւական զօրքով ուղարկում է Հայաստան թագաւորելու (51 թ.): Հայերն ատելով օտար եւ բռնակալ Հռադամիզդին՝ սիրով ընդունում են նրան եւ անցնում են Պարթեւների կողմը: Հռադամիզդը փախչում է, եւ Տրդատը բնակութիւն է հաստատում Արտաշատում: Փոփոխութիւնը հռոմայեցիների հաճութեամբ չէր եղել. ուստի նրանք ուղարկում են Դոմետիոս Կորբուլոն զօրապետին, որ արշաւելով Հայաստան՝ առնում է Արտաշատն եւ այրում (58 թ.): Տեղի են

ունենում բազմամեայ պատերազմներ։ Բայց վերջը Պարթեւները յաղթող են հանդիսանում, եւ Տրդատը մնում է Հայոց թագաւոր, որից եւ սկսւում է Արշակունի հարստութիւնը Հայաստանում (66 թ. մ. թ.)։ Տրդատ Ա.ը նորոգում է, խկապէս նորից շինում է Արտաշատ մայրաքաղաքը Հռոմից բերած արուեստագէտների ձեռով։ Նրա օրով ալանները 72 (կամ 75) թուին Կասպից անցքով արշաւում, ասպատակում են Մարաստան եւ ապա անցնում են Հայաստան։ Հայոց թագաւորը, ինչպէս պատմում է Յովսեպոսը, նրանց դէմ է դուրս գալիս կռւով, «եւ փոքր մի եւս՝ եւ անկանէր ի ձեռս նոցա. քանզի մի ոմն ի նոցանէ ընկէց պարան ի պարանոց նորա, եւ քարշէր զնա՝ եթէ չէր նորա աճապարեալ հատանել զայն սրով»։ Ալաններն աւերելով աշխարհը՝ քաշւում են իրենց երկիրը։ Ալանները 135 թ. դարձեալ, նախապէս համաձայնելով Վրաց թագաւորի հետ, որ բաց է անում նրանց առաջ Կովկասեան կիրճը (Ալանաց դուռը, Դարիալի կիրճը), նորից իրենց աւերիչ յարձակումն են գործում Աղուանքի, Մարաստանի եւ Հայաստանի վրայ, եւ հասնելով մինչեւ հռոմէական Կապադովկիա, ասպատակում, ետ են դառնում։

Դէպքերի նմանութիւնը մեծ է, եւ վիպասաններն Արտաշէսեան վէպի վրայ աւելացրել են տարրեր եւ այս նոր կատարուած դէպքերից։ Խորենացու վիպական պատմութիւնը, — մէկից դրած անունների տարբերութիւնն ու դէպքերի չփոթութիւնը, — նոյն է ինչ որ Հրադամիզդի եւ Տրդատ Ա.ի պատմութիւնը։ Արտաշէսի եւ Երուանդի վէպի մէջ վրացիներն օգնում են Երուանդին (=Հրադամիզդ), եւ նրանց Փարսման թագաւորն անձամբ գալիս է կռուելու Արտաշէսի դէմ. «Եւ զօրքն Վրաց, հանդերձ արքայիւն իւրեանց Փարսմանաւ, թէպէտ եւ յանդուգն յարձակմամբ յառաջեալ բախէին, արագապէս դառնային ի միւս կողմն փախուցեալ» (Բ. 46)։ Առասպելի մէջ երգուել է, թէ հռոմայեցիների կողմից Դոմետ ոմն եկել է կռուելու Արտաշէսի դէմ (Բ. 54)։ Դա, անշուշտ, Տրդատի դէմ կռուող Դոմետիոս Կորբուլոնի յիշողութիւնն է։ Վիպասանքի մէջ Արտաշէսը հիմնում է Արտաշատը։ Տրդատ Ա.ի օրով Արտաշատը հիմնովին կործանւում եւ նորից շինւում է Հռոմից բերել տուած ճարտարապետների ձեռով։ Այդպիսի դէպքում Արտաշատի հիմնուելու հին երգը, ինչպէս լինում է սովորաբար, աւելի եւս մեծ ուժով կարող էր կենդանանալ այդ քաղաքի վերաշինութեան պատճառով, եւ հին թագաւորի գովեստը նոր թագաւորի համար երգուել, նորի համար եւս պահելով սիրելի ու ժողովրդական Արտաշէս անունը։ Արտաշատ քաղաքի շինութիւնն, ուրեմն, որ երգւում էր Վիպասանքի մէջ Արտաշէս Ա.ի անունով, եւ Տրդատի միւս գործերի նմանութիւնը Վիպասանքի ուրիշ միջադէպերին՝ եղել են վիպական խմորման կենտրոն։ Եւ այնուհետեւ Արտաշէսի մասին երգն եւ Վիպասանքի առաջին մասն իրենց են քաշել եւ Տրդատ Ա.ի միւս արարքների գովեստն ու պատմութիւնը. Ալանների ասպատակութիւնը վրացիների հետ, «Միաբանեալ Ալանք լեռնականօքն ամենայնիւ, յինքեանս արկանելով եւ զկէս Վրաց աշխարհին» (Խոր. Բ. 50), Տրդատի կռիւը նրանց դէմ, Դոմետիոս Կորբուլոնի գալուստը Հայաստան,

եւ շատ կենցաղական գծեր, եւ վերջապէս՝ բուն միթական բնաւորութիւն ունեցող տառապեալներ։

Այսպէս ուրեմն՝ Վիպասանքի հերոս Արտաշէսը յիշողութիւն է՝ պատմական Արտաշէս Ա․, Արտաշէս Բ․ (եւ Արտաշէս Գ․) եւ Տրդատ Ա․ թագաւորների, իսկ վիպական Երուանդը յիշողութիւն է Արտաշէս Ա․ի նախորդի, Հայաստանի վերջին կառավարչի Սելեւկեան տիրապետութեան ժամանակ, այլեւ ուրիշ նախորդ Երուանդների։ Իսկ վիպական շղթայուած Արտաւազդը, դա յիշողութիւն է Մեծն Տիգրանի որդու, Արտաշէս Բ․ի հօր, Հայոց Արտաւազդ թագաւորի, որ Վիպասանքի մէջ դարձել է վիպական Արտաշէսի որդին։ Սանատրուկ թագաւորը, որ երեւան է գալիս վէպի սկզբում իբրեւ Արտաշէսի հայր, նոյնպէս պատմական անձի յիշողութիւն է։

Տրդատ Ա․ից սկսած՝ հարիւր տարուայ ընթացքում Հայաստանի քաղաքական վիճակն ընդհանրապէս նոյնն է մնում մինչեւ 161 թուականը, երբ Հայաստանում դարձեալ սկսւում է յամառ պատերազմ երկու հարեւան մեծ տէրութիւնների միջեւ։ Հռոմայեցիները 163 թ․ մարտով առնում, կողոպտում եւ հիմնովին աւերում են Արտաշատ մայրաքաղաքը (որ, սակայն, յետոյ դարձեալ վերականգնւում է)։ Նրանք Այրարատեան դաշտում շինում են մի քաղաք, որ կոչւում է Նոր քաղաք։ Հայերն Արտաշատի աւերման պատճառով գրգռւում են եւ սկսում են մարտնչել հռոմայեցիների դէմ։ Բայց սրանք զսպում են «բռնկուած ազգային ապստամբութիւնը» եւ յաջորդ տարին, 164 թ․, Նոր քաղաքը յայտարարում են մայրաքաղաք։ Պատերազմըն այնուհետեւ շարունակւում է Հայաստանից դուրս մինչեւ 166 թ․։ Նոր քաղաքում հռոմայեցիները պահում էին ուժեղ կայազօր, այդ պատճառով Սանատրուկ թագաւորը (190—196 թ․) չի կամենում այդտեղ նստել։ Նա իր նիստը փոխադրում է Միջագետքի Մծբին քաղաքը, որ վաղուց ի վեր պատկանում էր Հայաստանին։ Այս Սանատրուկ թագաւորն ահա, որ յայտնի է եղել իր շինարարութիւններով եւ իր այլ բարեմասնութիւններով, ժողովրդականութիւն է վայելել, արժանացել է երգ ու զրոյցի եւ անաքրոնիզմով դարձել է վիպական Արտաշէսի հայրը։ Նա ըստ վէպի էլ սպանւում է, բայց որսի ժամանակ։

Պարթեւներն սկսում են հռոմայեցիների դէմ ռազմական գործողութիւններ։ Սանատրուկի որդի Վաղարշը, հռոմայեցիներից դժգոհ լինելով Մծբինի գրաւման պատճառով, միանում է պարթեւներին։ Նրանք պաշտպանում են Մծբինը (197 թ․)։ Սեպտիմ Սեւեր կայսրն Արեւմուտքը խաղաղեցնելով՝ վերադառնում է Արեւելք պարթեւների դէմ։ Բայց պատերազմն սկսելուց առաջ՝ նա հաշտւում է Հայաստանի թագաւոր Վաղարշի հետ, տալով նրան Մծբինի փոխարէն կալուածներ Կապադովկիայում։ Բացի այդ՝ նա Հայաստանից հեռացնում է հռոմէական օկուպացիոն զօրքերը եւ Հայաստանի սեփական բանակը զօրացնելու համար՝ հռոմէական պետական գանձարանից յատուկ գումարներ է նշանակում իբրեւ մշտական նպաստ։ Այս հաշտութիւնից յետոյ հռոմէական կայազօրը հեռանում է Նոր քաղաքից, եւ Վաղարշը նստում է այնտեղ։

Վիպական անձ է դարձել եւ Սանատրուկի որդին, այս Վաղարշը: Նրա աջողութիւնները, ինչպէս եւ այն, որ նրա օրով Հայաստանի քաղաքական կենտրոնը ետ է փոխադրւում Մծբինից Այրարատ, առաջ են բերել զրոյցներ, կապուած Նոր քաղաքի ու իրեն՝ Վաղարշի անուան հետ: Խորենացին (Բ. 65) գրում է այս թագաւորի համար. «Թէ լոկ եւ այլքն կեցին, բայց ասեմ զսա եւ յետ մահուանն կեալ, յաղագս բարի անուանն քան զթուլագոյնս ի թագաւորացն: Վասն զի ի սորա աւուրս միաբանեալ ամբոխութիւն հիւսիսականաց, զԽազրաց ասեմ եւ զԲասլաց, արտաքս քան զդուռն Ճորայ ելանեն, առաջնորդ եւ թագաւոր ունելով ինքեանց զՎնասեպ ոմն Սուրհապ. որք անցեալ վտարին այսր զԿուր գետով: Որոց պատահեալ Վաղարշ ամբոխիւ մեծաւ եւ արամբք մարտկօք՝ ցիր դիաթաւալ կացուցանէ զամբոխն ընդ երեսս դաշտին, եւ ձիգ զհետ եղեալ՝ անցանէ ընդ կապանն Ճորայ: Ուր միւսանգամ միաբանեալ թշնամեացն՝ յօրինեցին ճակատ. զորս թէպէտ եւ վանեալ քաջացն Հայոց՝ փախստականս առնէին, սակայն Վաղարշ մեռանի ի ձեռաց կորովեաց աղեղնաւորաց»: Պատմական Վաղարշի մահն այսպէս չի եղել: Եթէ ճիշտ է Սանատրուկի սպանուելն Ալանների դէմ կռուի մէջ, այն ժամանակ պարզ է, որ հօր մահուան եղելութիւնը պատմուած է նրա որդու, Վաղարշի վրայ: Զրոյցները պատմել են նաեւ Վաղարշի ծննդեան եւ շինարարութիւնների մասին: «Սա շինէ աւան մեծ զտեղի ծննդեան իւրոյ»: Դա Վաղարշաւանն է Մուրցի եւ Երասխի գետախառնուրդում: Աւելի կարեւոր է նրա միւս գործը. «Սա պատեաց պարսպաւ եւ զհզօր աւանն Վարդգեսի, որ ի վերայ Քասախ գետոյ... պատեաց պարսպաւ եւ հզօր պատուարաւ՝ եւ անուանեաց Վաղարշապատ, որ եւ Նոր քաղաք»:

ԵՐԿՐՈՐԴ ՅԱՒԵԼՈՒԱԾ

## ՄԱՇՏՈՑԻ ԳՈՐԾԸ ԵԴԵՍԻԱՅՈՒՄ ԵՒ ՍԱՄՈՍԱՏՈՒՄ

1. Եդեսիա քաղաքի մասին:— *Ո՞ր քաղաքում է Մաշտոցը վերջնական եզրակացութեան հասել հայերէնի նշանագրերի մասին եւ յօրինել իր այբենարանը: — Կորիւնի երկի մէջ, ըստ մեր ձեռքի տակ ունեցած բնագրին, չկայ այդ քաղաքի անունը: Ինչպէս կը տեսնենք, եղել է այդ, բայց դուրս է ընկել: Դրա համար բացուել է զանազան ենթադրութիւնների դուռ: Կորիւնը յիշում է երեք քաղաք — Եդեսիա, Ամիդ, Սամոսատ: Տարօրինակ կերպով եղել են ասողներ, թէ նշանագրերի «գիւտը Սամոսատական քաղաքին մէջ կատարուած էր»* (1)*: Մարկուարտն այդ ցոյց տալու համար՝ Կորիւնի պատմածը «Մեսրոպեան նշանագրերի» գիւտի մասին՝ համարում է երկու տարբեր աղբիւրներից ծագած: Նա «մանաւանդ զի եւ նշանագիրքն իսկ յայլոց դպրութեանց թագեալք եւ յարուցեալք դիպեցան» խօսքից յետոյ*

(1) **Dr. Jos. Marquart,** Uber das armenische Alphabet in Verbindung mit der Biographie des hl. Maschtotz. տպագրուած է «Հանդէս Ամսօրեայ», Վիեննա, 1911, **No. No. 1, 4, 11, 12.** գերմաներէնի հետ նաեւ հայերէն թարգմանութիւնը:

իբրեւ չարունակութիւն համարում է՝ «Անտի ի Սամուսատական քաղաքն գումարէր» մինչեւ «Եւ անդ վաղվաղակի նշանակեալ, անուանեալ եւ կարգեալ, յօրինէր սիղոբայիւք եւ կապօք»: Յետոյ իբրեւ չարունակութիւն· «ապա յետ այնորիկ առնոյր թուղթս յեպիսկոպոսէ քաղաքին»... եւ այսպէս մինչեւ վերջը: Այսպիսով, Կորիւնի պատմածի միջից երկու ամբողջ հատուած հանելուց յետոյ, «անտի» բառի տակ թելադրում է հասկանալ Հայաստան կամ Վաղարշապատ, որտեղից Մաշտոցը գնում է Սամոսատ, եւ այնտեղ լինում է գրերի գիւտը, եւ այնտեղից անմիջապէս վերադառնում Հայաստան: Այդ հանած անկախացրած հատուածները, որ իբր երկրորդ աղբիւրից է ծագած համարում Մարկուարտը, են հետեւեալները· մէկը՝ «Յետ այնորիկ դարձեալ կրկին անգամ ի նոյն հոգս դառնայր» խօսքից սկսած մինչեւ «զոմանս յասորի դպրութիւնն կարգէր եւ զոմանս յունական դպրութիւնն» խօսքը ներառեալ: Միւսը՝ իբրեւ դրա չարունակութիւն· «Եւ ապա հրաժարեալ յեպիսկոպոսացն սրբոց, օգնականօք իւրովք իջանէր ի քաղաքն Սամոսատացւոց»...և ապա չարունակաբար մինչև «հանդերձ ուսուցանելով մանկունս գրիչս նմին դպրութեան» ներառեալ: Այս իբր երկրորդ աղբիւրից ծագած հատուածով Մաշտոցը գնում է Եդեսիա եւ Ամիդ քաղաքները, աշակերտներին երկու խմբի բաժանում (ասորական եւ յունական), թէ որտեղ՝ չկայ, ապա նա գնում է Սամոսատ, ուր և գտնում է Հռոփանոսին, լինում է Սամոսատում, միայն տարբեր ձեւով պատմուած, եւ իբր Կորիւնն իր տարբեր աղբիւրներից իմացածները չարել է մեքենայաբար, որով գրերի գիւտը երկու անգամ է պատմուած:

Նախ՝ Կորիւնն այդպէս մեքենայաբար չարող հեղինակ չէ: Ապա՝ Կորիւնի բնագրի այդպիսի մեխանիկական կտրատումը, որ արել է Մարկուարտը, բոլորովին անհիմն է եւ ծագած է բնագիրը չհասկանալուց: Գրերի գիւտը երկու անգամ չի պատմուած: Մաշտոցը Սամոսատում, Հռոփանոսի օգնութեամբ, ինչպէս յաջորդ հատուածի մէջ ցոյց կը տրուի, բոլորովին ուրիշ բան է անում: Նա Հռոփանոսի ձեռով յարդարում է իր արդէն գտած տառերի գեղագրութիւնը: Իսկ տառերի գիւտը Մաշտոցն արել է, ինչպէս պարզ եւ որոշ պատմել է Կորիւնը, Սամոսատ գնալուց առաջ, մի ուրիշ քաղաքում, որտեղից եւ յետոյ Սամոսատ է գնացել նա:

Բերեմ Կորիւնից այն հատուածը, որի մէջ պատմւում է գրերի գիւտը, որի մէջ եւ պիտի լինէր քաղաքի անունը, բայց չկայ: Մաշտոցը գնում է ասորական Եդեսիա եւ Ամիդ քաղաքները: «Ընդդէմ լինէր սուրբ եպիսկոպոսացն, որոց առաջնոյն Բաբիլաս անուն եւ երկրորդին՝ Ակակիոս. Հանդերձ կղերականօքն եւ իշխանօքն քաղաքաց (Վ. քաղաքին) պատահեալ եւ բազում մեծարանս ցուցեալ հասելոցն, ընդունէին հոգաբարձութեամբ ըստ Քրիստոսի անուանելոցն կարգի: Իսկ աշակերտասէրն վարդապետին զտարեալսն ընդ իւր յերկուս բաժանեալ՝ զոմանս յասորի դպրութիւնն կարգէր եւ զոմանս [ի](1) յունական դպրութիւնն՝ անտի ի Սամուսատական քաղաքն

(1) «Ի» նախդիրը չկայ· պէտք է աւելացնել:

գումարէր(1)։ Իսկ նորա խուռն հաւասարօք զսովորականն առաջի եդեալ զաղօթս... Եւ այնպէս բազում աշխատութեանց համբերեալ վասն իւրոյ ազգին բարեաց ինչ օճան գտանելոյ։ Որում պարգեւէր իսկ վիճակ յամենաշնորհողէն Աստուծոյ. հայրական չափուն ծնեալ ծնունդս նորոգ եւ սքանչելի՝ սուրբ աջովն իւրով, նշանագիրս հայերէն լեզուին։ Եւ անդ վաղվաղակի նշանակեալ, անուանեալ եւ կարգեալ, յօրինէր սիղոբայիւք — կապօք։ Եւ ապա հրաժարեալ յեպիսկոպոսէն (2) սրբոյ հանդերձ օգնականօք իւրովք իջանէր ի քաղաքն Սամոսատացւոց» (3)։

Թարգմանութիւնը. «Ներկայացաւ սուրբ եպիսկոպոսներին [հասկանալի է՝ Եդեսիա եւ Ամիդ քաղաքների. Մ. Ա.], որոնց առաջինի անունը Բաբիլաս էր եւ երկրորդինը՝ Ակակիոս. [Նրանք] կղերականների եւ քաղաքների [հասկանալի է՝ իւրաքանչիւրն իր քաղաքի] իշխանների հետ դիմաւորեցին եւ շատ մեծարանքներ ցոյց տալով հասնողներին՝ ընդունեցին՝ հոգ տանելով քրիստոնեաների կարգի համաձայն։ Իսկ աշակերտասէր ուսուցիչն իր հետ տարածներին երկու [խմբի] բաժանելով՝ ոմանց ասորական դպրութեան կարգեց, եւ ոմանց յունական դպրութեան [կարգելով]՝ այնտեղից՝ ուղարկեց Սամոսատ քաղաքը։ Եւ նա իր ընկերների հետ սկսեց սովորական աղօթքները... Եւ այսպէս նա շատ նեղութիւններ քաշեց իր ազգին մի բարի օգնութիւն գտնելու համար։ [Եւ] ամէն բան շնորհող Աստուծուց իսկապէս պարգեւուեց նրան [այդ] բախտը. նա իր սուրբ աջով հայրաբար ծնեց նոր եւ սքանչելի ծնունդներ — հայերէն լեզուի նշանագրեր։ Եւ այնտեղ շուտով նշանակեց, անուանեց ու դասաւորեց, յօրինեց սիղոբաներով — կապերով։ Եւ ապա հրաժեշտ տալով սուրբ եպիսկոպոսին՝ իր օգնականների հետ միասին իջաւ Սամոսատ քաղաքը»։

Ով որ բնագրական քննութեամբ — տեքստերի կրիտիկայով պարապել է, կամ հէնց ամէն ուշադիր կարդացող էլ կը նկատի, որ բերուած հատուածի մէջ պակասում է մի քաղաքի անուն, որից իրենց կոնկրէտ նշանակութիւնը ստանում են անտի եւ անդ դերանուանական մակբայները։ Որովհետեւ երբ կարդում ենք, թէ Մաշտոցն «իր հետ տարածներին երկու խմբի բաժանելով՝ ոմանց ասորական դպրութեան կարգեց, եւ ոմանց յունական դպրութեան կարգելով՝ անտի (այնտեղից) ուղարկեց Սամոսատ քաղաքը», իսկոյն հարց ենք տալիս, թէ ի՞նչ անուն պէտք է հասկանալ «անտի» մակբայական դերանուան տակ։ Նոյնը նոյնպէս նաեւ քիչ յետոյ գործածուած «անդ» բառի նկատմամբ։ Շատ պարզ է, որ անտի բառից քիչ առաջ անհրաժեշտօրէն պիտի լինի մի քաղաքի անուն, որ դուրս է ընկել։ Այդ ա-

(1) «Գումարել» բայը յաճախ նշանակում է նաեւ «ուղարկել». Կորիւնն ինքն էլ քիչ յետոյ երկրորդ անգամ գործածում է այդ բառն «ուղարկել» իմաստով։ Վաղարշապատում իրենց աշակերտներին ուսում տալուց յետոյ՝ Սահակն ու Մեսրոպը նրանց ուղարկում են զանազան կողմեր. «Սկսան իսկ սիւնք եկեղեցւոյ... գումարել... ի տեղիս տեղիս Հայաստան ազգին դաս դաս զաշակերտեալսն ճշմարտութեանն»։

(2) Տպուած է՝ յեպիսկոպոսացն սրբոց. պէտք է ուղղել՝ յեպիսկոպոսէն սրբոյ։

(3) Տպուած է՝ Սամոստացւոց. պէտք է ուղղել՝ Սամոսատացւոց։

նունն է «Եդեսիա», ինչպէս քիչ յետոյ կը տեսնենք: Աղճատուած բնագիրը պէտք է վերականգնել ոչ թէ կամայօրէն կրճատումներ անելով, ինչպէս վարուել է Մարկուարտը, այլ պակաս անունն աւելացնելով, յատկապէս «կարգէր» բառից յետոյ, այսպէս.

«Իսկ աշակերտասէրն վարդապետին զտարեալսն ընդ իւր յերկուս բաժանեալ՝ զոմանս յասորի դպրութիւնն կարգէր [ի քաղաքին Եդեսացւոց], եւ զոմանս [ի] յունական դպրութիւնն՝ անտի ի Սամուսատական քաղաքն գումարէր», — ... «ոմանց ասորական դպրութեան կարգեց [Եդեսիա քաղաքում], եւ ոմանց յունական դպրութեան [կարգելով]՝ այնտեղից Սամոսատ քաղաքն ուղարկեց»(1): Այսպիսով վերանում է բնագրի մթնութիւնը եւ անտի ու անդ բառերի տակ հասկացւում է Եդեսիա: Հետեւաբար եւ գրերի գիւտը եղել է Եդեսիա քաղաքում, որտեղից եւ Մաշտոցը, գրերի գիւտից յետոյ, գնացել է Սամոսատ: Ուրեմն այս քաղաքում չի եղել գրերի գիւտըն ըստ Կորիւնի:

Հիմա հարց է, թէ ինչո՞ւ «անտի» բառից առաջ պակասած անունը Եդեսիա պիտի լինի, եւ ոչ թէ Ամիդ: Այդ պարզւում է հետեւեալ հանգամանքներով: Մաշտոցը, տեսանք, Սամոսատ գնալուց առաջ լինում է Ամիդ եւ Եդեսիա քաղաքներում: Նախ՝ մէկում, յետոյ՝ միւսում: Նա գրերի գիւտն անում է այդ երկու քաղաքներից մէկն ու մէկումն եւ այնտեղից գնում երրորդ քաղաքը՝ Սամոսատ: Արդ, այդ երկու քաղաքներից որը երկրորդն է ըստ Մաշտոցի ուղեւորութեան ճանապարհի, այնտեղ էլ տեղի է ունեցել գրերի գիւտը: Եթէ նա առաջ Եդեսիա է գնացել, յետոյ՝ Ամիդ եւ այստեղից՝ Սամոսատ, կը նշանակէ՝ Ամիդն է երկրորդ քաղաքը, եւ գրերի գիւտը եղել է Ամիդում: Իսկ եթէ, ընդհակառակն, նա առաջ Ամիդ է գնացել, յետոյ՝ Եդեսիա, կը նշանակէ՝ Եդեսիան է երկրորդ քաղաքն ըստ Մաշտոցի ուղեւորութեան ճանապարհի, եւ գրերի գիւտը եղել է Եդեսիայում, եւ այստեղից նա գնացել է Սամոսատ:

Ո՞րն է այդ երկրորդ քաղաքն ըստ Մաշտոցի ուղեւորութեան ճանապարհի: Այդ որոշելու համար թերեւս մի հիմք համարուի այն, որ Կորիւնը Մաշտոցի ուղեւորութեան մասին պատմելիս յիշում է առաջ Եդեսիան, յետոյ՝ Ամիդը, հետեւաբար կը կարծուի, թէ Մաշտոցն առաջ Եդեսիա է գնացել, յետոյ՝ Ամիդ: Սակայն Կորիւնի գրքի մէջ «առաջին» եւ «երկրորդ» բառերը

(1) Նորայր Բիւզանդացին (Կորիւն վարդապետ եւ թարգմանութիւնք նորին, Տփխիս, 1900, էջ 17) մի ծանօթութեամբ յիշելով իր մի ուրիշ աշխատութիւնը՝ «Քննասէր», պրակ Ա. 15, ի միջի այլոց ասում է, թէ «Անդ 15, գրած եմ, թէ ի թարգմանչաց ոմանք յԵդեսիա զետեղեցան յուսումն ասորերէնի, եւ թէ յԵդեսիոյ ի Սամուսատ յղեցան այլքն, որպէսզի յունարէն ուսանին. այժմ զօրաւոր պատճառս ունիմ կարծելոյ թէ առաջինքն յԱմիդ զետեղեալ են եւ թէ յԱմիդայ ի Սամուսատ յուղարկեալ են երկրորդքն». — Ցաւօք, ես չկարողացայ ձեռք բերել հեղինակի յիշած աշխատութիւնը, որպէսզի տեսնէի, թէ արդեօք նա որեւէ կերպ հիմնաւորե՞լ է իր կարծիքը Եդեսիայի մասին, թէ՞ լոկ յայտարարել է: Այստեղ էլ նա չի՞ յայտնել այն «զօրաւոր պատճառները», որոնց հիման վրայ նա փոխել է իր կարծիքը եւ Ամիդ քաղաքում է դրել ասորերէն սովորողներին եւ այնտեղից Սամուսատ ուղարկել միւսներին յունարէնի համար:

*մի քանի անգամ գործածած կան ըստ նախապատուութեան. «Արամբք երկուք, աշակերտօքն իւրովք, որոց առաջնոյն Յովհան անուն կոչէին, յԵկեղեաց գաւառէն, եւ երկրորդին Յովսէփ անուն, ի Պաղանական տանէն»* (էջ 15)։ *«Եղբարս երկուս յաշակերտացն յուղարկել... զՅովսէփ, զոր ի վերոյ յիշեցաք, եւ երկրորդ Եզնիկ անուն»* (էջ 30)։ *«Որ եւ Ղեւոնդէս առաջնոյն անունն էր, եւ երկրորդին՝ Կորիւն»* (էջ 31)։ *«Եւ անուանք... են այս. առաջնում Յովսէփ, զոր եւ ի սկզբան գրեցաք, երկրորդին՝ Թադիկ»* (էջ 40)։ *«Առաջնումն Վահան անուն յազգէն Ամատունեաց, որ էր հազարապետ Հայոց Մեծաց, եւ երկրորդին Հմայեակ»* (էջ 40)։ *«Որոց առաջինն Յովսէփ, գլխաւոր ժողովոյն, եւ երկրորդն Յովհան անուն»* (էջ 41)։ *Այսպէս եւ Եդեսիա քաղաքն ու իր եպիսկոպոսն առաջին են կոչուել ըստ նախապատուութեան եւ ոչ ըստ ուղեւորութեան ճանապարհի։ «Ի քաղաքս երկուս Ասորոց, որոց առաջինն Եդեսիա կոչի, եւ երկրորդն՝ Ամիդ անուն»։ «Եպիսկոպոսացն, որոց առաջնոյն Բաբիլաս անուն եւ երկրորդին՝ Ակակիոս»։*

*Կարո՞ղ էր արդեօք Եդեսիան ըստ ուղեւորութեան ճանապարհի լինել առաջին քաղաքը, այսինքն Մաշտոցը նախ Եդեսիա գնար, յետոյ՝ Ամիդ եւ այնտեղից՝ Սամոսատ։ — Գ. Տ. Մկրտչեանը շատ ճիշդ գրում է. «Մաշտոցը... աշխարհագրական դիրքից դատելով՝ անշուշտ՝* առաջ *հասնում է Ամիդ, այժմեան Դիարբեքիր, եւ* յետոյ՝ *Եդեսիա = Ուրհա, որ շատ աւելի հեռու է»։ Քիչ յետոյ. «Ինքը Մաշտոցը դեռ Եդեսիայում է. եւ ահա այդ քաղաքումն է տեղի ունենում Մեսրոպեան գրերի գիւտը»*(1)։ *Այս կարծիքը, ինչքան էլ «անշուշտ» բառով ասուած, ըստ իս բաւարար չափով չի հիմնաւորուած։ Մարդիկ երբեմն ստիպուած երկայն ճանապարհով են գնում։ Ստիպուա՞ծ է արդեօք Մաշտոցը երկայն ճանապարհ բռնելու։ Ամիդ քաղաքից առաջ Եդեսիա գնացած լինելու համար՝ Մաշտոցը պէտք է Վաղարշապատից գնար Ատրպատական, այնտեղից անցնէր Միջագետք եւ մեծ ճանապարհ կտրելով հասնէր Եդեսիա, ապա գնար Ամիդ եւ այնտեղից՝ Սամոսատ եւ յետոյ նորից վերադառնար նոյն գծով՝ Սամոսատից Ամիդ, Եդեսիա, Միջագետքից Ատրպատական եւ այնտեղից՝ Վաղարշապատ։ Իսկապէս շատ երկայն ճանապարհ։ Այսպիսի երկայն ճանապարհ կը բռնէր Մաշտոցը, եթէ այն ժամանակ քաղաքական արգելառիթ հանգամանքներ լինէին կարճ ճանապարհով գնալու համար։ Արդ, Մաշտոցի ժամանակ՝ Վանանդ, Բասեն, Բագրեւանդ, Ապահունիք, Բզնունիք, Մանձկերտ, Տարօն եւ սրանցից արեւելք գտնւում էին արեւելեան Հայաստանում հայոց թագաւորութեան մէջ Վռամշապուհի իշխանութեան ներքոյ, արքայից արքայի գերիշխանութեան տակ, ուստի ոչ մի քաղաքական արգելք չկար, որ Մաշտոցը Վաղարշապատից կարճ ճանապարհով անցնէր Տարօն եւ այնտեղից Ամիդ, յետոյ՝ Եդեսիա եւ Սամոսատ։*

*Ապա՝ մի հանգամանք էլ կայ, որ պէտք է ուշադրութեան առնել։ Եթէ Մաշտոցն առաջ Եդեսիա հասած լինէր, այնտեղ, այս ասորական կենտ-*

(1) «Արարատ» ամսագիր. 1912, մայիս–յունիս, թիւ 5—6, էջ 508 եւ հտ., Գ. Տ.-Մկրտչեան. «Հայ գրերի 1500-ամեակի առթիւ»։

ռնում հէնց՝ իր աշակերտներին երկու խմբի կը բաժանէր եւ յունարէն սովորողներին այստեղից կ'ուղարկէր Սամոսատ, որ Եդեսիայից շատ աւելի մօտ է, քան Ամիդից, եւ ոչ Եդեսիան կը թողնէր, կը գնար Ամիդ եւ նոր այնտեղից Սամոսատ կ'ուղարկէր նրանց:

Ապա դարձեալ՝ Ամիդ յիշւում է միայն Մաշտոցի ուղեւորութեան ժամանակ, մինչդեռ հետագայում, ինչպէս պատմում է Կորիւնը, Մաշտոցն ու Սահակն իրենց աշակերտներին ուղարկում են «ի կողմանս Ասորոց, ի քաղաքն Եդեսացւոց... զի յասորական բարբառոյն՝ զնոցին հարցն սրբոց զաւանդութիւնս հայերէն գրեալս դարձուսցեն»: Կը նշանակէ՝ աւելի կարեւորութիւն տրւում էր Եդեսիային իբրեւ ասորական դպրութեան կենտրոնի:

Այս հանգամանքները նկատի ունենալով՝ այդ հետեւութիւնը պէտք է անել, որ Մաշտոցն իր աշակերտների հետ Ամիդի վրայով Եդեսիա է գնացել: Այս երկրորդ քաղաքում նա աշակերտների մի մասը թողել է ասորական դպրութիւն սովրելու, միւս մասն «անտի» — այնտեղից ուղարկել է Սամոսատ յունարէնի համար: Ինքը մնացել է Եդեսիայում եւ գրերը «անդ» — այնտեղ վերջնական կերպով յօրինելուց յետոյ՝ ինքն էլ Եդեսիայից գնացել է Սամոսատ:

2. Ի՞նչ է արել Մաշտոցն Եդեսիայում:— 1) Կորիւնը պարզապէս ասում է, թէ Մաշտոցը «Ծնեալ ծնունդս նորոգ եւ սքանչելի՝ սուրբ աջովն իւրով — նշանագիրս հայերէն լեզուին», — «Իր աջ ձեռքով ծնեց նորոգ եւ սքանչելի ծնունդներ — հայերէնի նշանագրեր», այսինքն՝ նոր նշանագրեր ստեղծեց, գրեց իր աջով: Այս շատ պարզ է: Բայց չնայելով դրան՝ ասում են, թէ Մաշտոցի գործը «կայանում է Դանիէլ եպիսկոպոսի գործածած ալփաբետի որեւէ բարեփոխութեան մէջ»: Կորիւնի գրածից կարելի չէ եզրակացնել ոչ այդ «գործածութիւնը» եւ ոչ այդ «բարեփոխութիւնը»(1): Ուրիշ մէկն էլ(2) վերջերս այսպէս է դատել. «Ըստ ինքեան ճիշտ չէ այն, թէ իբր միայնակեաց Մաշտոցը 5-րդ դարում յօրինել է հայկական նշանագրութիւնը: Հին հայկական աղբիւրները խօսում են ոչ թէ հնարման մասին, այլ առաջուց գոյութիւն ունեցող հայկական ալփաբետի լրացման մասին»: — Հիմնովին սխալ է այս պնդումը. ոչ թէ հին հայկական աղբիւրների վրայ պիտի հիմնուել, այլ հնագոյն աղբիւրների: Այդ հնագոյն աղբիւրն է Կորիւնի գիրքը: Դրա մէջ այդպիսի բան չկայ, այլ, ընդհակառակն, այնտեղ Մաշտոցը յօրինում է հայերէնի համար նոր ալփաբետ: Կորիւնից յետոյ Ղ. Փարպեցին յղում է Կորիւնի մօտ, իբրեւ «հաւաստեաւ», «ճշմարտապէս» պատմողի, իսկ ինքը ոչինչ չի պատմում Մեսրոպեան գրերի մասին: Ապա Մ. Խորենացին (Գ. 53) պարզապէս գրում է, թէ Մեսրոպը «եստեղծ զնշանագիրս մեր»: Հնագոյն աղբիւրներն այդ երեքն են: Ստեփանոս Տարօնեցի

(1) Այսպէս, իր քիչ առաջ յիշուած յօդուածի մէջ Մարկուարտը, որ հայ գրի պատմութեան համար միակ վստահելի աղբիւր՝ Կորիւնի գրածն է ընդունում:

(2) Պրոֆ. Ս. Ջանաշիա, մի յօդուածի մէջ, «Իզվեստիա», 11 յուլիսի, 1940, Թիւ 158:

*Ասողիկը*(1) (10—11-*րդ դարում առնելով «ի պատմագրական տառից» (գրքերից) դրերի գիւտի մասին նախ պատմում է ըստ Կորիւնի եւ Ղ. Փարպեցու, ապա երկրորդ անգամ, ուրիշներից քաղելով, յիշում է այսպէս գըրելով. «...Սահակ յորոյ ուսուցս դպրութեան Հայոց լեզուիս* իբ *գիր է Դանիէլէ փիլիսոփայէ Ասորւոց կարգեցաւ, իսկ զեօթն գրոցն պակասութիւն Մեսրովբ երանելի Տարօնեցի խնդրուածովք յԱստուծոյ առնու»: Այդ եօթը գիրն, անշուշտ, եօթը ձայնաւորներն են, որոնք շատ ուշ, Մխիթարեանների ձեռով, մի ձեռագրի լուսանցքի ծանօթագրութիւնից առնուելով, ընդմիջարկուել են եւ Մ. Խորենացու «Հայոց պատմութեան» տպագրութեան մէջ: «Ոսկեփորիկ» կամ «Վարդանագիրք» կոչուած ձեռագրի մէջ* (13-*րդ դար*), *այլեւ գանձարանների ոտանաւոր գրութիւնների մէջ եւ ուրիշ տեղեր նոյնպէս խօսում են Մաշտոցի յօրինած տառերի մասին, եւ նրան վերագրում են կամ* 14 *գիր, կամ* 12, *կամ* 11, *կամ* 19 *գիր եւ այլն: Դրանք բոլորն ուշ դարերի լոկ ենթադրութիւններ են եւ ծագել են բնականաբար իբրեւ պատասխան այս հարցի: Եթէ Դանիէլեան նշանագրերը բաւական չեն եղել հայերէնի համար, արդեօք քանի՞ տառ են պակաս եղել, ուրեմն եւ Մաշտոցը քանի՞ տառ պէտք է յօրինէր, հետեւաբար եւ յօրինել է: Բոլորը «գիտական» կոմբինացիաներ են, որոնք այժմ արժէք չունեն: Գրերի գիւտի պատմութեան հիմքը* հնագոյն գրողի ժամանակակից *եւ հնագոյն աշակերտ Կորիւնի գիրքն է, որի մէջ ոչ մի խօսք չկայ Դանիէլեան ալփաբետի լրացման մասին: Խնդիրն այստեղ, հարկաւ այն մասին չէ, որ Մաշտոցը, ինչպէս եւ ամէն ուրիշ ոք, անգիր լեզուի համար այբբեն յօրինելիս՝ նկատի կ'ունենար իր ծանօթ լեզուների՝ ասորերէնի, պարսկերէնի, այլեւ Դանիէլեան նըշանագրերը, եւ կ'օգտուէր նրանցից: Խնդիրն այն մասին է, որ հնագոյն հայկական աղբիւրները Դանիէլեան նշանագրերի «բարեփոխութեան», եւ կամ «առաջուց գոյութիւն ունեցող հայկական ալփաբետի» «լրացման» մասին չեն խօսում: Տարունակենք տեսնել, թէ ի՞նչ է գրում Կորիւնը:*

2) «*Եւ անդ վաղվաղակի նշանակեալ, անուանեալ եւ* կարգեալ»: *Ուրեմն Մաշտոցն ինքը* կարգաւորել, *այսինքն՝* դասաւորել *է իր ստեղծած նոր նշանագրերը: Արդ՝ երբ մեր այբբենարանի մէջ տառերի կարգը համեմատում ենք յունական ալփաբետի տառերի դասաւորութեան հետ, երկուսի մէջ եւս նոյն կարգն ենք գտնում, միայն հայերէնին յատուկ աւելի հնչիւնների համար տեղ տեղ առանձին գրեր կան նոյն շարքի մէջ: Բացի այդ՝ հայերէնի ՈՒ հնչիւնի համար մեր այբբենարանի մէջ չկայ յատուկ նշանագիր: Գրութեան մէջ այդ պարզ ձայնաւորը Մաշտոցն արտայայտել է ՈՒ երկտառով՝ հետեւողութեամբ յունարէնի* ου *երկտառին, որ սկզբնապէս ար-*

(1) Ստեփանոսի Տարօնեցւոյ Ասողկան պատմութիւն տիեզերական, Ս. Պետերբուրգ, 1885, Բ. դպրութիւն, առաջին գլուխ, էջ 74, Գ. դպր., առաջին գլուխ, էջ 139: Ասողիկի երկրորդ անգամ, տարբեր ձեւով պատմուածքի աղբիւրն է, ըստ Ֆրեդ. Կոնիբերի, Անանիա Շիրակացու պատմական երկը: Տես՝ «Հանդէս Ամսօրեայ», 1903, էջ 30, 33. «Մ. Խորենացու Պատմութեան ժամանակի մասին»:

տայայտիչ է եղել երկբարբառի եւ Մաշտոցի շրջանում դարձած ՈՒ ձայնաւորի նշան։ Վերագրուածներից պարզ է, որ Մաշտոցը հետեւել է յունական ալփաբետին, որին ինքը վարժ է եղել մանկութիւնից։ Դրա հետեւանքով հայերէն տառերը գրւում են ձախից աջ եւ հատ հատ։

3) Մաշտոցն ինքն անուանել է տառերը՝ այբ, բեն, գիմ, դա, և այլն։ Թէ ի՛նչ ծագում ունեն այդ անունները, արդեօք որեւէ նշանակութիւն ունեցե՞լ են, այդ դեռ պարզուած չէ։

4) Մաշտոցն ինքը նշանակել է տառերը։ Այդ վերաբերում է տառերի արտաքին ձեւին, գծագրութեանը։ Քիչ վերեւում նոյնն արտայայտուած է այս խօսքով, թէ նա «իր սուրբ աջով հայրաբար ծնեց նոր եւ սքանչելի ծընունդներ — հայերէն լեզուի նշանագրեր», այսինքն իր աջով գրեց, նշանակեց։ Մեր տառերի ձեւերն եւս ըստ այսմ Մաշտոցինն են։ Այդ ձեւերը հետագայում շատ փոփոխութիւն են կրել. Մեսրոպեան տառերի ձեւին մօտ կը լինի անշուշտ հին երկաթագիրը։

5) Կորիւնն այդ նշանագրերը սքանչելի բառով է բնորոշում։ Այդ վերաբերում է ոչ թէ տառերի արտաքին ձեւին, այլ ալփաբետի կատարելութեանը։ Մաշտոցի ժամանակի այբբեններից եւ ոչ մէկը եւ ոչ նոյնիսկ յունարէնը, բաւական չէր հայոց լեզուի բոլոր հնչիւնական հարստութիւնն արտայայտելու համար։ Դանիէլեան նշանագրերը նոյնպէս թերի էին դուրս եկել. մինչդեռ Մաշտոցի այբբենը կատարելապէս յարմարեցրած է հայերէնի հնչիւնական սիստեմին։ Դրանով անհամեմատ աւելի հեշտացած է եղել հայերէն գրել-կարդալու գործը. որովհետեւ «Մեսրոպեան նշանագրերը» (այսպէս անուանել է Մովսէս Խորենացին) հիմնուած են կատարեալ հնչիւնական սկզբունքի վրայ, որ է՝ ամէն հնչիւն իր առանձին տառը պիտի ունենայ, եւ ամէն տառ մէկ հնչիւնի արտայայտիչը պիտի լինի։ Արդարեւ ՈՒ ձայնաւորը, ինչպէս ասուեց, ՈՒ երկտառով է նշանակուած, բայց այդ երկտառը միշտ եւ ամէն դէպքում միեւնոյն ձայնաւորն է արտայայտել՝ զուարթ — զու-արթ, եւ վանկային ՈՒ ձայնաւորը միշտ եւ ամէն դէպքում այդ երկտառով է արտայայտուած եղել։ Հետագայ դարերում միայն, լեզուի զարգացման հետեւանքով, ՈՒ ձայնաւորը բաղաձայնի եւ ձայնաւորի միջեւ դարձել է վ. զուարթ — զվարթ։ Մաշտոցի ալփաբետի այս կատարելութիւնը հետեւանք է նրա հեղինակի՝ իր ժամանակի, նոյնպէս մեր ժամանակի համար զարմանալի խորին ծանօթութեան հայերէնի հնչիւնական դրութեանը, մեր լեզուի բազմաթիւ հնչիւնների նուրբ տարբերութիւններին։ Դրա համար նա, որ լեզուաբանական պատրաստութիւն ունեցած չի եղել, պէտք է երկար ժամանակ դիտողութիւններ անէր կենդանի արտասանութեան վրայ, լսած բառերը վերածէր իրենց վանկերին ու հնչիւններին եւ փորձեր անէր գրելու, որ եւ նա արել է «բազում աշխատութեանց համբերեալ վասն իւրոյ ազգին բարեաց ինչ օճան գտանելոյ», — գրում է Կորիւնը։ Պէտք է ընդունել, որ հնչիւնների նկատմամբ նա հետեւել է մայրաքաղաքի արտասանութեանը։

Եւ վերջապէս՝ 6) «Յօրինէր սիղոբայիւք — կապօք» — «յօրինեց սի-

ղոբաններով — կապերով»։ Ի՞նչ է նշանակում այս խօսքը։

Յունարէն «սիլլամբանոյ» բայը նշանակում է լատիներէն **colligo**, գերմաներէն **zusammenfassem, vereinigen, zusammenbinden, vernbinden**, միացնել, իրար կապել։ Դրանից է «սիլլաբի» բառը, որ նշանակում է՝ իրար միացում, կապում, այլ եւ՝ իրար միացրածը, կապածը, կապ, առանձնապէս խօսելիս, ուստի եւ վանկ։ Դրանցից է եւ «սիլլաբիֆոյ», որ նշանակում է գրերը կամ վանկերն իրար հետ արտասանել, **buchstabieren**, լատ. **syllabas connecto.** վանկեր կապել, գերմ. **verbinden, verknupfen**, ա՛յն ինչ որ հայերէն ասում ենք՝ գիր կապել, գիրկապ կարդալ, կամ մէկ բառով՝ հեգել, որ է՝ վանկ կապել։

Կորիւնի վերեւում գրած խօսքի մէջ «կապ» բառն ըստ այսմ թարգմանութիւն է յունարէն «սիլլաբէ» (սիղոբա) բառի. ուստի այդ երկուսի մէջ «եւ» շաղկապը չպիտի լինի. նոյնպէս նաեւ Դանիէլեան նշանագրերի մասին գրածի մէջ՝ «զսիղոբայս եւ զկապս» (1)։ Գրաբարում սովորական կիրառութիւն է օտար բառերի ետեւից դնել նաեւ հայերէն թարգմանութիւնը. օրինակ՝ հէնց նոյն Կորիւնի գրքի մէջ կայ «եպիսկոպոս տեսուչս եկեղեցւոյն Սիւնեաց»։

Կորիւնը պատմում է, թէ Մաշտոցը նոր նշանագրերը նշանակելուց, անուանելուց եւ դասաւորելուց յետոյ, այդ նշանագրերը «յօրինում է սիղոբաններով — կապերով»։ Այդ նշանակում է, որ Մաշտոցն առանձին նշանագրերի գործը վերջացնելուց յետոյ՝ անմիջապէս նոյն նշանագրերը յօրինել է «կապերով», վանկերով։ Ուրիշ խօսքով՝ Մաշտոցը յօրինել է կարդալ սովորեցնելու դասագիրք։ Նա հայոց լեզուի առաջին ուսուցիչն էր եւ բնականաբար նա էլ առաջինը պիտի յօրինէր առաջին այբբենարանը՝ իր նշանագրերը «կապերով» կարդալու, կամ «գիրկապ» կարդալու համար։

Այդ տիպի այբբենարանը, անշուշտ որոշ զարգացումով, յարատեւել էր մինչեւ մեր օրերը։ Տողերիս գրողը հէնց այդպիսի այբբենարանի վրայ է սկսել կարդալ սովորել։ Տառերն իրենց անուններով՝ այբ, բեն, գիմ, դա եւ այլն կարգով սովորելուց եւ լաւ «գրաճանաչ» լինելուց յետոյ, — այսինքն՝ երբ ամէն մի տառի նշանը տեսնում էինք, կարողանում էինք իսկոյն անունը տալ, սկսում էինք «գիր կապել», ապա եւ «գիրկապ» կարդալ։ Դրա համար նախ «կապում» կամ «գիրկապ էինք անում» պարզ վանկերը՝ բաղաձայն + ձայնաւոր կամ ընդհակառակը՝ ձայնաւոր + բաղաձայն։ Տողի մէջ գրուած էր լինում՝ բա, բե, բէ, բը, բի, բո, բու կամ աբ, եբ, էբ, ըբ, եւ այլն։ Առաջին շարքի վանկերը գիրկապ էինք անում կամ կապում էինք այսպէս. բեն–ա՛յբ–բա՛, բեն–ե՛չ–բե՛ (մեր օրով արտասանում էին՝ բեն–ե՛չ–բե՛), բեն–է՛–բէ՛, բեն–ը՛թ–բը՛ (մեր օրով արտասանում էին՝ բեն–ե՛թ–բը՛), բեն–ինի՛–բի՛, բեն–ո՛–բո՛ (մեր օրով արտասանում էին՝ բեն–ո՛–բո՛), բեն–ո–ի՛ւն–բու՛. (մեր օրով՝

---

(1) Յունարէնի «սիլլաբէ» բառը Դիոնիսիոսի Քերականութեան մէջ թարգմանուած է յունաբան հայերէնով՝ «շաղաշար», աւելի՝ «փաղառութիւն» եւ «վանկ» բառերով։ Կորիւնին ծանօթ չեն այս բառերը, նա պարզապէս թարգմանում է «կապ»։ «Փաղառութիւն» = «բաղառութիւն»՝ բառը բառացի թարգմանութիւն է յունարէնի։

ըեն–ո՛–հի՛ւն–րո՛ւ)։ Այսպէս եւ չուտ տուած շարքի վանկերը՝ աք, եք, իք եւ այլն կապում կամ հեգում էինք այր–բե՛ն–ա՛ք եւ այլն։

Նոյն եղանակով կապելով կարդում էինք բառերը, նախ՝ միավանկները, յետոյ՝ երկավանկները եւ այսպէս մինչեւ շատ երկայն բառերը։Օրինակ, բարի բառը կապերով կարդում էինք՝ բեն–ա՛յբ—բա՛, րէ–ինի՛—րի՛, բա՛–րի՛։ Թարգմանիչ բառը հեգում էինք այսպէս՝ թո–այբ–րե–գի՛մ—թա՛րգ, մեն–ա՛յբ—մա՛, թա՛րգ–մա՛, նու–ինի–չա՛—նի՛չ, թա՛րգ–մա՛–նի՛չ։ Երկայն բառերից առաջինը, որքան յիշում եմ, տրուած էր ինձ «աշխատողականաց», երկրորդը՝ «բարեխօսականաց»։ Դրանցից առաջինի գրերը կապում էինք այսպէս՝ այբ–շա՛—ա՛շ, խե–ա՛յբ—խա՛, ա՛շ–խա՛, տիւն–ո՛–տո՛, աշ–խա՛–տո՛, ղատ–ա՛յբ—ղա՛, աշ–խա–տո՛–ղա՛, կեն–ա՛յբ—կա՛, աշ–խա–տո–ղա՛–կա՛, նու–այբ–ցո՛—նա՛ց, աշ–խա–տո–ղա–կա՛–նա՛ց։ Այս ամէնը կատարւում էր որոշ եղանակաւորութեամբ, չեշտելով եւ երկարելով։ Այնքան կրկնում էինք այդպէս կապելը, որ երբ տեսնում էինք, օրինակ, «բա» գրութիւնը, առանց «գիրկապի», ասում էինք բա։

Այս էր կարդալ սովորելու հին մեթոդը, որ հնարաւոր չէր հայերէնում աջողութեամբ գործադրել տառերի, — լինեն ձայնաւորների թէ բաղաձայնների, — թերի գրութեամբ, ինչպէս էին Դանիէլեան նշանագրերը, որոնք, ինչպէս Կորիւնը գրում է, «բաւական չէին հայերէն լեզուի սիղոբաները — կապերն ամբողջութեամբ արտայայտելու համար»։ Մեսրոպեան նշանագրերն այդ նկատմամբ անթերի էին․ դրանք արտայայտում էին հայերէնի բոլոր հնչիւնները, «հրաշալի» էին ըստ Կորիւնի։

Բայց, ցաւօք, այդպէս չէ բառերի գրութիւնը Ը ձայնաւորի նկատմամբ։ Մաշտոցը հնարել է այդ հնչիւնի համար առանձին տառ, բայց գրութեան ժամանակ այդ տառը բանեցրել է միայն մի շարք բառերի սկզբում, ինչպէս՝ ընդ, ընթանալ, ըմպել, ըղձալ, ընկեր, ըստ եւ այլն։ Բառերի մէջ այդ ձայնաւորը չի գրել․ մտանեմ, գտանեմ, թքանեմ, կծանեմ, կլանեմ, նոյնպէս եւ մտաւոր, գլուխ եւ նման բառերի սկզբի երկու բաղաձայնի միջեւ արտասանուել է Ը ձայնաւորը, ինչպէս եւ այժմ, մըտանեմ, թըքանեմ, կըծանեմ եւ այլն, բայց գրուած են առանց Ը տառի։

Թէ այս կարգի բառերի սկզբի երկու բաղաձայնի միջեւ հնումն արտասանուել է Ը հնչիւնը, այդ կարելի է ապացուցել բայերի անցեալ կատարեալ ժամանակով։ Յայտնի է, որ գրաբարում բայերի այդ ժամանակի այս կամ այն դէմքը, երբ միավանկ է, սկզբից ունի Ե ձայնաւորը, իսկ բազմավանկերը չունեն այդ։ Արդ, մտանեմ բայի կատարեալը լինում է՝ մտի, մտեր, եմուտ, մտաք, մտէք, մտին։ Հետեւաբար մտի, մտեր, մտաք, մտէք, մտին ձեւերը երկավանկ են եղել իբրեւ մըտի, մըտեր, մըտաք, մըտէք, մըտին, թէ չէ՝ կը լինէին եմտի, եմտեր, եմտաք, եմտէք, եմտին։ Այսպէս եւ գտանեմ—գտի, գտեր, եգիտ եւայլն․ թքանեմ, թքի, թքեր, եթուք եւ այլն․ լքանեմ, լքի, լքեր, ելիք եւ այլն․ կծանեմ, կծի, կծեր, եկիծ եւ այլն․ կլանեմ, կլի, կլեր, եկուլ, կլաք, կլէք, կլին։ Հետեւաբար դրանք հնումն արտասանուել են՝ գըտի, թըքի, լըքի, կըծի, կըլի։ Այսպէս եւ սնուցանել, ծնուցանել, թռուցանել, լցուցանել, խփուցանել բայերից — սնոյց, ծնոյց,

թռոյց, լցոյց, խփոյց = սընոյց, ծընոյց, թըռոյց, լըցոյց, խըփոյց եւ այլն: Սրանց նման նաեւ գլուխ—գըլուխ, մտաւոր—մըտաւոր, սնունդ—սընունդ, եւ հազարաւոր ուրիշ բառեր: Բայց՝ ստեղծի—եստեղծ, սպանի—եսպան. ուրեմն ստեղծանել, սպանանել, ստանալ, սպասել եւ նմաններն արտասանուել են առանց Ը ձայնաւորի:

Մեր ժամանակներում հեշտ հեգելու, այսինքն վանկ կապելու համար, այբբենարանում այդպիսի բառերի միջեւ Ը ձայնաւորը գրում էին, օրինակ՝ մըտի: Դժուար թէ նոյնը եղած լինէր Մաշտոցեան շրջանում: Այն ժամանակ «մտի» գրութիւնը, օրինակ, պիտի վանկ կապէին ոչ թէ ինչպէս մեր օրով՝ մեն-ը'—մը', տիւն-ինի'—տի', մը-տի, այլ ուղղակի այսպէս՝ մեն-տիւն-ինի'—մըտի': Այդ, ի հարկէ, բաւական դժուարութիւն կը պատճառէր: Բայց նոյնիսկ մեր օրով աւելին էինք անում: Յայտնի է, որ Աստուած բառը գրւում էր կրճատ ձեւով՝ Ած, վրան «պատիւ» կոչուած նշանով: Արդ, մեր ժամանակ այբբենարանի սկզբում գրում էին «Ած իմ», որ վանկ կապելով ասում էինք, այբ-ծա'—ա'ծ, ինի-մե'ն—ի'մ, Աստուա'ծ—ի'մ: Այսպէս ուրեմն միայն Ած գրութիւնը դառնում էր Աստուած: Շատ կրկնելով վերջապէս վարժւում էինք Ած գրութիւնը տեսնելով՝ Աստուած կարդալու. Նմանապէս՝ Յս—Յիսուս, Քս—Քրիստոս, և. ուրիշները: Դա, ի հարկէ, մի տեսակ վանկագիր կամ պատկերագիր էր:

Կար եւ մի ուրիշ տեսակ հեգում չգրուող Ը ձայնաւորի համար: Երբ ես «տետրից» անցայ «սաղմոս», ապա «ժամագիրք» եւ «աւետարան» կարդալու, այն ժամանակ՝ «մտի փրկիչ», «թշնամի» բառերի նմանները վանկ էինք կապում այսպէս. մեն-տի'ւն—մը'տ, ինի'-ի', մը'տ-ի': Փիւր-րե'—փը'ր, կեն-ինի-չա'—կի'չ, փը'ր-կի'չ. Թո-շա'—թը'շ, նու-ա'յբ—նա', թը'շ-նա', մեն-ինի'—մի', թըշ-նա'-մի': Ուրիշ խօսքով՝ բառերի սկզբում առնում էինք երկու բաղաձայն տառ եւ նրանց մէջ Ը արտասանում: Այսպէս եւ բառերի երկրորդ եւ այլ վանկերի նկատմամբ, եթէ նրանց մէջ չգրուող Ը հնչիւնը կար, օրինակ՝ «աստղ» բառը կապելով կարդում էինք՝ այբ-սէ—ա'ս, տիւն-ղա'տ—տը'ղ, ա'ս-տըղ: Այս վերջին եղանակով եւս կարող էին հեգած լինել չգրուող Ը ձայնաւորը նաեւ հին ժամանակներում:

Ինչի՞ց է առաջացել Ը տառի բառերի մէջ չգրելը: Դա կարող է ծագած լինել ձայնաւորներով անկատար արեւելեան գրութիւնների ազդեցութեան հետեւանքով: Բայց այդ դէպքում ինչո՞ւ միւս բոլոր ձայնաւորները պիտի գրէր Մաշտոցը, բացի Ը ձայնաւորից բառերի մէջ: Ըստ իս՝ Մաշտոցըն այստեղ եւս հետեւել է յունարէնի գրութեանը: Այս լեզուի մէջ չկայ Ը հնչիւն եւ տառ, բայց կայ բառերի սկզբում երկու եւ նոյնիսկ երեք բաղաձայնների կապակցութիւն, օրինակ՝ **bdella** (բդե'լլա), **glossa** (գլո'սսա), **gnathos** (գնա'թոս), **grama** (գրա'մա), **thronos** (թրո'նոս), **cleptès** (կլե'պտէս), **crotos** (կրո'տոս), **ctétor** (կտէ'տոր), **mnas** (մնա'ս), **platos** (պլա'տոս), **pneuma** (պնե'ւմա), **practicos** (պրակտիկո'ս), **stratégia** (ստրատեգի'ա), եւ այլն: Նոյնպէս եւ յատուկ անունները՝ Պտոլեմէոս, Պլատոն, Թրակիա եւ այլն: Դրանց հետեւողութեամբ հայերէնում եւս գրել են բդեաշխ, գլուխ, գնամ, գրեմ, կրակ, կտաւ, մնամ, ստրուկ եւ նմանները, թէպէտ եւ հայերէն բառերն արտասանուել են «բըդեաշխ,

*գըլուխ, գընամ» եւ այլն։ Բայց ո՞վ կարող է ասել, թէ Մաշտոցը յունարէն բառերը հայերէնի պէս Ը-ով չէր արտասանում, ինչպէս որ այժմ օտար լեզուների, օրինակ՝ ռուսերէնի բառերն արտասանում են՝* dva *—դըվա,* dno *—դընո,* glasa *—գըլասա,* cniga *—կընիգա,* mnogo *—մընոգո։ Մի անգամ որ յունարէն բառերը գլոսսա, գնաթոս եւ այլն հայերէնի պէս արտասանէին՝ գըլոսսա, գընաթոս եւ այլն, հայերէնի գլուխ, գնալ եւ նման բառերն էլ հեշտութեամբ յունարէնի պէս կը գրէին եւ Ը-ով կ՚արտասանէին՝ գըլուխ, գընամ։ Կայ մի ուրիշ հանգամանք եւս։ Մեր այս Ը ձայնաւորը, որ ըստինքեան էլ կարճ է, յաճախ այնպէս սղւում է, որ կարելի չէ գրութեան մէջ առանձին տառով արտայայտել։ Նոյնը հաւանօրէն եղել է եւ Մաշտոցի ժամանակ, եւ երեւի այդ եւս իր կողմից ազդած պիտի լինի, որ մաշտոցեան գրութեամբ բառերի մէջ այդ ձայնաւորը չի նշանակուած։*

*Մեր գրութեան այս թերութիւնը 5րդ դարից ի վեր շարունակւում է։ Մի ժամանակ ռամկաւորների մէջ գրում էին չսղուած Ը ձայնաւորը։ Վերջին տասնամեակներում այդ ի զուր թողել են, եւ կարծես այժմ տրամադրութիւն կայ նոյնիսկ առղաղարձի ժամանակ եւս Ը չգրելու։ Այդ սխալ երեւոյթ է* (1)։

3․ Ի՞նչ է արել Մաշտոցը Սամոսատում։ *— Կորիւնը գրում է․ «Եւ անդէն ի նմին քաղաքի գրիչ ոմն հելլենական դպրութեան Հռոփանոս անուն գտեալ․ որով զամենայն ընտրութիւնս նշանագրացն [վար․ նշանագրոյն] զնրբագոյնն եւ զլայնագոյնն, զկարճն եւ զերկայնն, զառանձինն եւ զկրկնաւորն [վարիանտ՝ զկրկնայարն] յօրինեալ եւ յանկուցեալ», — եւ հէնց այնտեղ նոյն քաղաքում գտաւ հելլենական դպրութեան մի գրագիր՝ Հռոփանոս անունով, որի ձեռով նշանագրերի բոլոր զանազանութիւնները՝ բա-*

---

(1) Թոյլատրելի չէ անգիտանալ մեր այս Ը ձայնաւորի գոյութիւնը եւ մեր բառերն ու յատուկ անունները, հետեւելով մեր թերի գրութեանը, բաղաձայնների կուտակութեամբ գրել օտար լեզուների մէջ, ինչպէս վարւում են նոյնիսկ մեր «գիտնականները», օրինակ՝ գերմաներէն Mkrttschjan, Trtchkan, Tchknavor, Pndjassar, («Kommunist», 1940 յունիսի 18), Ptgni («Kommunist», 1940, յուլիսի 9, No.157), Pgndsi amar (նոյն, օգոստոսի 9, No. 183) միայն նրա համար, որ հայերէնում գրւում են՝ Մկրտչեան, Թռչկան, Ճգնաւոր, Փնջասար, Պտղնի, Պղնձի, բայց հայերէնում այդպիսի անունները արտասանւում են եւ կարող են գրուել՝ Մըկըրտչեան, Թըռչկան, Ճըգնաւոր, Փընջասար, Պըտըղնի, Պըղընձի եւ նոյնիսկ կան Թըռչըկան, Մըկըրտըչեան արտասանողներ։ Ուրիշ լեզուներով գրելիս այդպիսի դէպքերում անպայման պէտք է դնել համապատասխան ձայնաւորը եւ եթէ այդպիսի դէպքերում անպայման պէտք է դնել համապատասխան ձայնաւորը եւ եթէ այդպիսին չկայ, մի ուրիշ մօտիկ ձայնաւոր․ ռուսերէնում, օրինակ, ¡ եւ աւելի եւս (ինչպէս ադրբէջաներէնում, թաթարերէնում եւ այլն այժմ ռուսական նշանագրերով գրելով վարւում են) ei ձայնաւորը, որ աւելի մօտ է մեր Ը ձայնաւորին։ Օրէմն Մկոյեան Mikoyan, Meikoyan, Mikirtitchian, Meikeirteitchian. Peindjassar եւ այլն։

*բակն ու հաստը (նուրբն ու լայնը), կարճն ու երկայնը, առանձինն ու կըրկնաւորը (վարիանտ՝ կրկնայարը) ամբողջապէս յօրինեց ու վերջացրեց:*

*Ահա մի հատուած, որ սխալ մեկնութիւնների ենթակայ է եղել: Նախ նկատեմ, որ այդ կտորն եւս տպագրուած բնագրի մէջ աղճատուած է. այնտեղ չկայ՝ «եւ գլայնագոյնն»: Որ Մաշտոցը Սամոսատում դիմում է հելլենական դպրութեան մի գրագրի օգնութեան, այդ ցոյց է տալիս, որ նա բաւարար չի համարել իր գտած տառերի արտաքին ձեւը, գծագրութիւնը: Նա հարկ է տեսել, որ իր նշանագրերը յարմար լինեն նաեւ գրութեան,* գեղագրութեան *նկատմամբ, այն էլ յունական տառերի հետեւողութեամբ, ձախից դէպի աջ գրութեամբ: Դրա համար նա իրեն ձեռնհաս չհամարելով, դիմել է մի յոյն գրագրի (որ երեւի իր ժամանակին յայտնի գրագիր է եղել), եւ ոչ թէ Եդեսիայում ասորական դպրութեան մի ասորի գրագրի:*

*ա) Մաշտոցն այն յոյն գրագրի օգնութեամբ վերջնապէս յօրինել է «նրբագոյնն ու լայնագոյնը», նշանագրերի նուրբ ու լայն, բարակ ու հաստ մասերը, կողմերը, այսինքն՝ թէ տառերի ո՛ր կողմերը, ո՛ր մասերը հաստ կամ բարակ պիտի լինէին, որպէսզի ե՛ւ գեղեցիկ, ե՛ւ յարմար լինէին գրելու:*

*բ) Մեսրոպեան նշանագրերի մէջ, մեր հին երկաթագրից դատելով, չկան «կարճ ու երկայն նշանագրեր», բոլորն էլ միահաւասար են: Բայց կան առանձին նշանագրերի մէջ ինչպէս հաստ ու բարակ, նոյնպէս եւ կարճ ու երկայն մասեր: Ուստի Կորիւնի գրածը, թէ Մաշտոցը յոյն գրագրի ձեռով յօրինել է կարճն ու երկայնը, կարելի չէ հասկանալ «կարճ ու երկայն նշանագրեր»: Բոլորովին անհիմն եւ անընդունելի է այն կարծիքը, թէ «կարճ ու երկայն նշանագրերով պէտք է իմանանք անշուշտ ձայնաւոր նշանագրերը» (Մարկուարտ): Այն էլ «անշուշտ» բառով ասուած: Ի՞նչ հիման վրայ: Ոչ մի առանձին գործ չէր կարող ունենալ մի յոյն գրագիր հայերէնի «կարճ ու երկայն ձայնաւորների» նկատմամբ, եթէ միայն հայերէնում այն ժամանակ կային այդպիսիները, — մի բան, որ մերժելի է, բացի գուցէ Ե եւ Է տառերի համապատասխան հնչիւններից: Յոյն գրագիրն այն խորհուրդը միայն կարող էր տալ, թէ առանձին նշանագրերի կարճ ու երկայն մասերը գեղագրական տեսակէտով ինչպէս պիտի դասաւորուեն տառի բուն մասի վերաբերմամբ, կարճ մասը երկայն մասի ա՞ջ, թէ՞ ձախ կողմում. վերեւո՞ւմ, թէ՞ ներքեւում:*

*գ) Մաշտոցը յոյն գրագրի օգնութեամբ յօրինել, վերջացրել է «զառանձինն եւ զկրկնաւորն» (վարիանտ՝ «զկրկնայարն»): Այս բառերն էլ սխալ մեկնութիւնների տեղիք են տուել, ինչպէս Մարկուարտի այս կարծիքը. «Առանձինն եւ կրկնաւոր նշանագրելով...պէտք է հասկանալ կրկին | եւ r-ները, ինչպէս նաեւ Ի եւ Վ, որոնցմէ Ի եւ Վ միայն սկզբնատառ կը կազմեն»(1): Նախ՝ «կրկին | եւ r» ասելով Մարկուարտը հասկանում է*

(1) Մարկուարտ, «Հանդէս Ամսօրեայ», 1912, էջ 52:

մեր Ր եւ Ռ, Լ եւ Ղ տառերը, որոնցից վերջինը Լ հնչիւնին մօտիկ մի հըն-չիւնի նշանագիր է եղել: Ապա՝ սխալ է ասել, թէ «Ռ եւ Վ միայն սկզբնա-տառ կը կազմեն»: Սկզբնատառ չեն այդ գրերը առնել, բառ, ծով եւ հա-զարաւոր ուրիշ բառերի մէջ:

Ապա դարձեալ՝ նա Ւ տառն առնում է իբրեւ Վ-հնչիւն, ինչպէս 19րդ դարում արտասանուել է ձայնաւորների մէջ: Բայց ոչ մի հիմք չունենք ա-սելու թէ, օրինակ, քաղաքաւ, աւետիք բառերը Մաշտոցն արտասանել է ինչպէս այժմ՝ քաղաքավ, ավետիք, եւ ոչ թէ աւ մասն իբրեւ երկբարբառ, ինչպէս գերմաներէն au, Aue, Bau, bauen բառերի մէջ au: Որ Ւ տա-ռը եղել է կիսաձայն ՈՒ ձայնաւորի նշանագիր եւ ուրիշ ձայնաւորների հետ միասին կազմել է երկբարբառներ՝ ԱՒ, ԵՒ, ԻՒ, այդ պարզ է: Բայց որ Մաշտոցը միեւնոյն Վ հնչիւնի համար բանեցնէր մէկ Վ տառը, մէկ էլ կի-սաձայնի նշանագիր Ւ տառը, — այդ անընդունելի է: Մի անգամ որ նա հնարել էր Վ տառը, սրանով էլ կը գրէր այդ տառին յատուկ հնչիւնը: Եթէ չէ գրած՝ ավետիք, ավար, այլ գրած է աւետիք, աւար, կը նշանակի՝ այդ-պիսի բառերի մէջ Ւ տառը Վ չի արտասանուել, ինչքան էլ այդ կարգի բա-ռերի մի մասը փոխառութիւն լինեն եւ դրանց մէջ Ւ հաւասար դրուի օտար լեզուների Վ հնչիւնին: Օտար լեզուներից փոխառած այդպիսի բառերի մէջ Վ տառը հայերէնում կարող էր վերածուած լինել Ւ կիսաձայնի, դրա հա-մար ունենք օրինակներ: Այս Ւ տառը հետագայում է որոշ դէպքերում դար-ձել Վ հնչիւնի նշան: Մնում են, ուրեմն, Ր, Ռ եւ Լ, Ղ:

Եթէ Մաշտոցն ինքն անձամբ վերլուծել եւ զանազանել է մեր Զ, Ս · Ժ, Շ · եւ մեր Բ, Պ, Փ · Գ, Կ, Ք · Դ, Տ, Թ · Ձ, Ծ, Չ · Ջ, Ճ, Ց տառերի արտայայտած հնչիւններն իրենց նուրբ տարբերութիւններով եւ նրանց հա-մար յատուկ նշանագրեր է յօրինել, նա պիտի կարողանար անշուշտ նոյնն անել նաեւ Ր ու Ռ եւ Լ ու Ղ տառերի նկատմամբ: Մի յոյն գրագիր նոյնիսկ դժուար կը կարողանար մեր այդ բազմաթիւ բաղաձայնների նուրբ տարբե-րութիւններն ըմբռնել, օրինակ՝ մեր Ր եւ Ռ տառերի հնչիւնները ջոկել մի-մեանցից: Մաշտոցն այդ տառերի գրութեան նկատմամբ այնքան պիտի դի-մէր մի յոյն գրագրի, որքան եւ միւսների: «Կրկնաւոր» ասածն այդ Ր, Ռ, եւ Լ, Ղ տառերը չեն:

Ի՞նչ է արտայայտուած այդ «առանձին» եւ «կրկնաւոր» կամ «կըրկ-նայար» բառերով: — Շատ պարզ բան: Մեսրոպեան նշանագրութեան բոլոր 36 տառերն էլ առանձին են, այսինքն ջոկ, մենակ, զատ-զատ են, իրենց յա-տուկ մէկ առանձին հնչիւնով, մէկ տառ մէկ հնչիւնի արտայայտութիւն կամ մէկ առանձին հնչիւն մէկ առանձին տառով արտայայտուած: Բայց կայ նաեւ ՈՒ հնչիւնը, որ չունի իր առանձին նշանագիրը. դա արտայայտուած է եր-կու բառի միացումով: Դա, այդ կրկնատառը, «կրկնաւոր» է, կամ «կրկնա-յար» (ինչպէս կայ իբրեւ վարիանտ), այսինքն՝ երկու տառի «յարում», կը-ցում, միացում: Մաշտոցը Սամոսատում յոյն գրագրի ձեռով յօրինել, վեր-ջացրել է «առանձին» նշանագրերի գծագրութիւնը, նրանց հաստ ու բարակ, կարճ ու երկայն մասերը, եւ առանձին տառերի ձեւն ընդհանրապէս, գուցէ

եւ շատ բան փոխելով Եղեսիայում իր «նշանակած», նախադծած ձեւերից: Քանի որ ըստ Կորիւնի՝ նա «կրկնաւորը» կամ «կրկնայարն» էլ յօրինել, վերջացրել է այն գրագրի ձեռով, կը նշանակի՝ նրա ազդեցութիւնը եղել է նաեւ նկատմամբ ՈՒ ձայնաւորի «կրկնաւոր» կամ «կրկնայար», այսինքն երկտառ գրութեան, որ, ինչպէս վերեւում ասուեց, կատարուել է յունարէնի on երկտառի հետեւողութեամբ: Եւ այդ հասկանալի է: Մի յոյն գրագիր, որ վարժուած է եղել յունարէնի գրութեան, ըստ վարժութեան հէնց պիտի ձգտէր պահել տալ յունական գրութեան ձեւերը: Եւ ՈՒ կրկնաւորի նկատմամբ յաջողել է նա, մանաւանդ որ Մաշտոցն ինքն էլ հելլենական դպրութեանն էր վարժուած մանկութիւնից:

Թէ կոնկրէտ ի՛նչ է եղել առանձին տառերի գծագրութեան նկատմամբ այս «գրիչ» Հռոփանոսի ազդեցութիւնը, այդ մասին ոչինչ չենք կարող իմանալ: Ոչինչ որոշ չէ նաեւ այն մասին, թէ հայերէն նշանագրերի ձեւերը ազդուա՞ծ են արդեօք Դանիէլեան նշանագրերից, կամ ո՞ր ազգերի ալփաբետներից կարող են մասամբ փոխ առնուած կամ ազդուած լինել, կամ գուցէ գծագրուած են ինքնուրոյն ձեւով: Այդ մասին կան բացատրութիւններ ու ենթադրութիւններ, բայց ես կարեւոր չեմ համարում այդ բերել այստեղ: Նոր այբբեն յօրինողն, անշուշտ, պիտի օգտուէր իրեն ծանօթ նշանագրերից:

Մի կարեւոր խնդիր, սակայն, ուշադրութեան չի առնւում մեր նշանագրերի արտաքին ձեւերի նկատմամբ: Այդ այն է, թէ Մաշտոցը, որ հետեւել է յունական ալփաբետին, ինչո՞ւ ուղղակի չի փոխ առել այդ ալփաբետը՝ վրան աւելացնելով նշանագրեր այն հնչիւնների համար, որոնք չկան յունարէնում. կամ թէ ինչո՛ւ նա չի առել ասորական գրութիւնը՝ նոյնպէս վարուելով դրա հետ: Դրա պատասխանը պարզ է: Ինչպէս վերեւում յիշուեց, Հայաստանն այն ժամանակ բաժանուած էր երկու մասի: Արեւմտեանը հռոմէական կայսրութեանն էր պատկանում, այնտեղ պաշտօնական լեզուն էր յունարէնը: Իսկ արեւելեանը Պարսկաստանին էր ենթակայ. այստեղ էլ պարսկերէնի հետ ընդունուած էր ասորերէնը: Արդ, եթէ Մաշտոցը յունարէն ալփաբետն ընդունէր, Արեւելքում չէր թոյլատրուի այդ: Նոյնպէս եւ ասորերէնն Արեւմուտքում չէր անցնի: Դրա համար եւ Մաշտոցը հայկական այբբենը նոր ձեւերով է կազմել, որպէսզի այդ արգելառիթ հանգամանքները վերանային, եւ հնարաւոր լինէր ամէն տեղ հայերի մէջ մտցնել հայերէն լեզուով դպրութիւնը:



# Փ. ԲՈՒԶԱՆԴԻ ՀԱՅՈՑ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ ԱՌԱՋԻՆ ԵՒ ԵՐԿՐՈՐԴ ԴՊՐՈՒԹԻՒՆՆԵՐԻ ԽՆԴԻՐԸ

Այս խնդիրը, որով զբաղուել են շատերը (1), դրական նշանակութիւն չունի, բայց դա դեռ չի կորցրել իր բանասիրական հետաքրքրութիւնը: Ինչպէս իր տեղում ասուեց, Բուզանդն իր գրքի մասերը կոչել է «դպրութիւն»: Արդ՝ այդ գրքի մէջ կան միայն երրորդ, չորրորդ, հինգերորդ եւ վեցերորդ դպրութիւնները: Նոյնպէս եւ ցանկերի վերնագրերի մէջ, որոնք են՝ «Յոստումն երրորդ», «Չորրորդ դպրութիւն Բիւզանդեայ», «Հինգերորդ դպրութիւն Բիւզանդեայ», իսկ վեցերորդը՝ լոկ «Բիւզանդեայ»: Գրքի սկզբում կայ մի առաջաբան «Յոստաբանութիւն նախագիտելի» վերնագրով: Այդ սկսւում է այսպէս. «Այս ինչ է ի դպրութիւնս երրորդ պատմութեանցս. ժամանակագիր կանոնք մատենից, եւ առ նմին դպրութիւնք երեք, այսինքն են սոքա չորք մատեանք եւ չորեքին միոյ իրաց յիշատականք են»: Այս առաջաբանը, ինչպէս բովանդակութիւնից երեւում է, վերաբերում է մեզ հասած չորս դպրութիւններին:

Քանի որ «առաջաբանները» դրւում են գրքերի սկզբում, եւ Բուզանդի գրքի սկզբում եղած առաջաբանը վերաբերում Գ–Զ դպրութիւններին, ապա ուրեմն չի եղել նրա երրորդ դպրութիւնից առաջ գրուած բան, հետեւաբար եւ Բուզանդի Հայոց Պատմութիւնն ամբողջապէս հասել է մեզ: Այսպէս են դատել որոշ բանասէրներ: Բայց նրանց այդ կարծիքն անընդունելի է հետեւեալ հիմունքով.

Ոչ ոք չի կարող լրջութեամբ պնդել, թէ Բուզանդը չէր կարող իր Պատմութեան միջում սրա երկրորդ մասի համար գրել մի առանձին առաջաբան, որի մէջ բերէր այնտեղ գրելիքի բովանդակութիւնը: Դրա համար բաւականի օրինակներ կան մեր պատմագրութեան մէջ: Ահաւասիկ Մովսէս Խորենացու Հայոց Պատմութիւնը, որի երեք գրքերն էլ ունին իրենց առանձին առաջաբանները, երրորդ գրքինն՝ ամբողջ Ա. գլուխը. ...«Երրորդ առնելով գիրս, որ ինչ յետ սրբոյն Տրդատայ»:

---

(1) Ն. Բիւզանդացի, Փաւստոս Բիւզանդ եւ իւր Պատմութիւն Հայոց, «Բնաշխարհ», Ա., 1887:

Ն[դիշէ] Մ[ատթէոսեան], Փաւստոս Բիւզանդ, Վիեննա, 1890:

Ա. Գարագաշեան, Քննական Պատմութիւն Հայոց, Թիֆլիս, 1895, հատ. Գ. գլ. Գ:

Ստ. Մալխասեանց, Ուսումնասիրութիւն Փաւստոս Բուզանդի Պատմութեան, Վիեննա,

Դասընթաց Հայոց մատենագրութեան պատմութեան, Ստ. Մալխասեանցի դասախօսութիւններից, հեղինակի թոյլտուութեամբ, վիմատիպ, Թիֆլիս, 1899:

*Առաջին եւ երկրորդ դպրութիւնների դէմ բերում են հետեւեալ առարկութիւնը։ Ղազար Փարպեցին յիշելով Ներսէսի անէծքը՝ աւելացնում է. «Ըստ գրելոցն ի պատմութեան երկրորդումն, ի ճառին հնգետասաներորդի» (Փարպ. ԺԵ.)։ Այդ անէծքը գտնւում է Բուզանդի Չորրորդ դպրութեան տասնեւհինգերորդ գլխի մէջ։ Այստեղից պրոֆ. Ստ. Մալխասեանցը եզրակացնում է, թէ մեր ունեցած Չորրորդ դպրութիւնը «Փարպեցին ճանաչում էր իբրեւ երկրորդ դպրութիւն. ուրեմն եւ մեր Գ. դպրութիւնը նրա ժամանակ համարւում էր առաջին դպրութիւն։ Այնպէս որ այս վկայութեամբ հաստատ ապացոյց ունինք, թէ 5-րդ դարի վերջերում Փաւստոսի Պատմութիւնը նոյն սկիզբն է ունեցել, ինչ որ ունի մեր ձեռքը հասած ձեռագիրներում. ուրեմն եւ կորած Ա. եւ Բ. դպրութիւնների մասին խօսք չի կարող լինել»։ Այս իբր «հաստատ ապացոյց» դրողի ուշադրութիւնից փախչում է երկու բան։ Նախ՝ այն, որ Փարպեցին չի գրում* «ի դպրութեան *երկրորդումն»*, *այլ* «ի պատմութեան *երկրորդումն»։ Նա իր գրքի սկզբում հէնց՝ Ագաթանգեղոսի Պատմութիւնն անուանում է «Առաջին գիրք Պատմութեանն Հայոց», Բուզանդինը՝ «Երկրորդ գիրք» կամ «Պատմութիւն երկրորդ գրոց», իսկ իրենը՝ «Երրորդ պատմութիւն»։ Կը նշանակի՝ երբ Փարպեցին գրում է «ի Պատմութեան երկրորդումն», այդպէս նա կոչում է անում Բուզանդի Պատմութեանը եւ ոչ թէ նրա երկրորդ դպրութեանը։ Ապա՝ թոյլատրելի չէ «Պատմութիւն» բառն ըստ հաճոյս դարձնելով «Դպրութիւն», եզրակացնել, թէ Փարպեցին իբր առանց յիշելու գրքի անունը, Բուզանդի Հայոց Պատմութիւնը, ուղղակի սրա «Երկրորդ դպրութիւնն» է յիշել։ Կոչում անողը հեղինակի ու գրքի անունն է յիշում եւ Փարպեցին յիշել է։ Իսկ որ նրա կոչումի մէջ յիշուած է գլուխը (ճառ), առանց յիշելու «դպրութիւնը», այս վերջինը կարող է հետագայում դուրս ընկած լինել, կամ հէնց Փարպեցին մոռացած լինել յիշելու։ Սոյնը կարելի չէ ասել Բուզանդ հեղինակի եւ իր երկի համար, քանի որ այդ յիշուած է իբրեւ «երկրորդ պատմութիւն»։*

*Ապա դարձեալ՝ ընդունելի չէ այն ենթադրութիւնը, թէ հետագայում որեւէ մէկի խելքին փչել է՝ առաջի դպրութիւնը դարձնել երրորդ, երկրորդը՝ չորրորդ, երրորդը՝ հինգերորդ, չորրորդը՝ վեցերորդ, եւ այսպէս զգուշութեամբ փոխել ոչ միայն բնագրի, այլեւ ցանկերի վերնագիրների մէջ։ Պարզ է, որ այդպիսի աննպատակ եւ անմիտ փոփոխութիւն չի կատարուել։ Բայց որ Ղ. Փարպեցու ձեռին եղած օրինակի մէջ արդէն Ա. եւ Բ. դպրութիւնները չեն եղել (կամ գուցէ եղել են, բայց նա դրանց մասին չի՛ խօսում), այդ ոչ թէ «Երկրորդ պատմութիւնը» «Երկրորդ դպրութիւն» դարձնելով պէտք է եզրակացնել, այլ Փարպեցու գրածից։ Նա բերում է Բուզանդի Պատմութեան բովանդակութիւնը, որ համապատասխան է Գ–Զ դպրութիւններին։*

*Եւ վերջապէս, զարմանալի կերպով անուշադրութեան է մատնւում Փ. Բուզանդի իրեն գրած առաջաբանը («Յոստաքանութիւն նախագիտելի»),*

որի սկզբի մասից մի կտոր բերուեց վերեւում: Այստեղ ասել է ինքը հեղինակը. «Այս ինչ է ի դպրութիւնս երրորդ՝ պատմութեանցս» — Այս բանն է պատմութիւններիս այս երրորդ դպրութեան մէջ... եւ նրա հետ (առ նմին=առ երրորդ դպրութեանն) երեքը» եւ այլն: Պարզ է, որ հեղինակը մեզ հասած չորս դպրութիւններից առաջինը կոչել է «երրորդ դպրութիւն», որի հետ միասին յաջորդ երեքը արել են չորս. «այսինքն են սոքա չորք մատեանք» եւ այլն:

Այսպէս ուրեմն, Բուզանդը գրած է եղել իր Հայոց Պատմութեան նաեւ առաջին եւ երկրորդ դպրութիւնները: Եւ մենք հեղինակից իրենից՝ գիտենք, թէ ի՛նչ է եղել այդ երկու դպրութիւնների բովանդակութիւնը: Նա երրորդ դպրութեան առաջին գլխի մէջ գրում է բառացի թարգմանութեամբ այսպէս. «Թադէոս առաքեալի քարոզութիւնից եւ նրա վախճանից ու մարտիրոսութիւնից մինչեւ Գրիգորի վարդապետութեան վերջանալն ու իր հանգիստը եւ առաքելասպան Սանատրուկ արքայից մինչեւ Տրդատ Թագաւորի ակամայ հնազանդուելը հաւատքին եւ նրա հանգիստը... Այդ ամէնն ուրիշների ձեռով գրուեց: Բայց մենք էլ մեր այս պատմութեան կարգի մէջ փոքր ի շատէ դրինք, չթողինք զանց անելով, իրերի պատշաճ կարգի համար: Վասն զի մեր պատմութիւնը՝ կայ բան՝ որ առաջին է եւ կայ բան՝ որ վերջին է. իսկ ինչ որ միջին եղաւ, այն ուրիշների ձեռով գրուեց: Բայց որպէսզի մեր պատմութեան մէջ ընդհատում չերեւայ, մի փոքր (1) նշանակեցինք, ինչպէս պատի շինուածքի մէջ ամբողջի աւարտման համար դրուած մի աղիւս: Այդ բանը, ինչ որ սրանից յետոյ է գալիս (կարգւում), պատմւում է հէնց այստեղ սրա մասին»: Այս վերջին խօսքերը վերաբերում են յաջորդ գլխին. «Յաղագս որ ինչ վասն մեծի քահանայապետին Գրիգորի եւ նոցունց շիրմանցն», որից յետոյ սկսւում է Տրդատի որդի Խոսրովի եւ ուրիշների պատմութիւնը, ինչպէս յայտնել է սկզբի առաջաբանի մէջ: Երրորդ դպրութեան այս առաջին գլխից տեսնում ենք, որ Փ. Բուզանդը Պատմութիւնը բաժանել է երեք մասերի, որ կոչում է՝ առաջին, միջին եւ վերջին: Միջին պատմութիւնն, — ասում է նա, — ուրիշների ձեռով գրուած է. դա է Թադէոս առաքեալի քարոզութիւնից մինչեւ Գրիգորի հանգիստը, եւ Սանատրուկ Թագաւորից մինչեւ Տրդատի հանգիստը: Առաջին պատմութիւնը բնականաբար ընկնում է Թադէոս առաքեալից եւ Սանատրուկից առաջ. իսկ վերջին պատմութիւնն է, ինչ որ խոստանում է գրել, Տրդատի որդի Խոսրովից սկսած: Վերջին պատմութիւնը մեր ունեցած Գ–Զ դպրութիւններն են: Միջին պատմութիւնը քանի որ ուրիշները գրել են, նա չի գրել, բացի մի «աղիւսից»: Իսկ առաջին պատմութիւնը, որ նախնական պատմութիւնն է, նա պէտք է գրած լինի առաջին երկու դպրութիւններում:

---

(1) Բնագիրը՝ «հուն մի»—խուն մի=մի փոքր: Տպուած է՝ «երեւեցի հուն մի, նշանակեցաք». ստորակէտը պիտի դնել «հուն մի» բառից առաջ:

# «ՊԱՐՍԻՑ ՊԱՏԵՐԱԶՄ» ՎԷՊԻ ՊԱՏՄԱԿԱՆՈՒԹԵԱՆ ԽՆԴԻՐԸ

1. Մեր պատմաբանների թերութիւնը:— *Ագաթանգեղոսի եւ Բուզանդի Պատմութիւնների մէջ եղած վիպական տարրերի պատմականութիւնը որոշելու համար ուրիշ միջոց չունենք, բայց եթէ այդպիսի պատմուածքները համեմատել իրական պատմական տուեալների հետ: Արդ՝ հայոց հին պատմութեան աղբիւրները յոյն-հռոմէական գրողների սակաւաթիւ կցկտուր յիշատակութիւններն են, այն էլ սովորաբար Հայաստանում կամ Հայաստանի հետ ունեցած պատերազմների ու քաղաքական յարաբերութիւնների մասին: Ուստի հնարաւոր չէ «Պարսից պատերազմ» վէպի մէջ յիշուած բոլոր անձնանուններն ու դէպքերը համեմատելով նրանց հաղորդածների հետ՝ որոշել, թէ ի՛նչն է պատմական, եւ թէ վէպն ի՛նչպէս է օգտուել եղելութիւններից: Բանը դժուարանում է եւ հետեւեալ հանգամանքներով: Թէպէտ եւ արդէն բաւական թուով հեղինակներ, ե՛ւ պատմաբաններ, ե՛ւ բանասէրներ ուսումնասիրել են Հայաստանի հին պատմութիւնը յոյն ու հռոմէական աղբիւրների հիման վրայ եւ գրել են հին շրջանի Հայոց պատմութիւնը, բայց եւ այնպէս դեռ չի պարզուած Հայաստանի նոյնիսկ հին քաղաքական պատմութիւնը եւ անգամ Հայոց թագաւորների յաջորդականութեան կարգը: Այդ հեղինակները ոչ սակաւ անգամ չափազանց հակասում են իրար, թէպէտ եւ նրանք օգտւում են նոյն աղբիւրներից: Միւս կողմից՝ մեր բանասէրներն ու պատմութիւն գրողները երրորդ եւ չորրորդ դարերի Հայոց պատմութեան համար օտար աղբիւրների հետ, այն էլ ոչ ներքին կեանքի համար, իբրեւ աղբիւր բանեցնում են նաեւ Ագաթանգեղոսի ու Բուզանդի վիպական պատումները: Այսպիսով պատմագէտ ու գրականագէտ նոյնացւում են, եւ առաջ է գալիս մի չփոթ դրութիւն: Գրականագէտները պատմութեան օգնութեամբ պիտի պարզէին վէպի պատմականութիւնը, նրա դարաշրջանը, նրա մէջ եղած անձերն ու դիպուածները, ընդհակառակն, պատմագէտներն իրենք պատմութիւն են գրում՝ վէպից քաղելով այն: Ծեչտում եմ, խնդիրը ներքին կեանքի մասին չէ:*

*Մի անգամ որ պարզ է, որ Ագաթանգեղոսի ու Բուզանդի պատմական երկերի մէջ մեծ տեղ է բռնում վիպական տարրը, ապա կարելի չէ նրանցից, առանց վերապահութեան, օգտուել քաղաքական պատմութեան համար: Մոռացւում է կամ անգիտացւում է, որ վէպը երբեք պատմութիւն չէ, այս բառի այժմեան նշանակութեամբ: Արդարեւ վէպն ընդհանուր գծերով իր մէջ պահում է իր դարաշրջանի սոցիալական բնոյթն ու ոգին, բայց դա ճշտութեամբ չի վերարտադրում պատմական եղելութիւնները ոչ անձերի, ոչ ժամանակի, ոչ տեղերի եւ ոչ էլ նոյնիսկ իրողութիւնների վերաբերմամբ: Իսկ առանց դրանց պատմաբանի համար չկայ պատմական իրականութիւն:*

*Վէպը բանաստեղծութիւն է, պատմական բանաստեղծութիւն, որի նախահիմն է միայն պատմականը։ Որքան էլ որ դա առատ նիւթ է տալիս մի որոշ դարաշրջանի ներքին կեանքի ուսումնասիրութեան համար, բայց եւ այնպէս մնում է այլափոխուած պատմութիւն։ Դրա մէջ չկայ ժամանակագրութիւն։ Կան անաքրոնիզմներ, անձերի եւ եղելութիւնների շփոթումներ։ Աւելացրէք վրան եւ այլ փոփոխութիւնները, որ յատուկ են աւանդական բանաստեղծութեանը, — իրական եղելութիւնների հետ խառնուրդը չեղած, չկատարուած բաջաղանքների, ընդհանուր վիպական մոտիւների եւ այլն, եւ այն, որ տարբեր եղելութիւնները կորցնելով իրենց մանրամասնութիւնները՝ մի ընդհանուր գոյն ու ձեւ են ստանում։*

2. Վաղարշ եւ Տրդատ Բ.: Ներսեհի պարտութիւնը 297 թուին. Տրդատ Գ.:— *Մեր երկրորդ հին վէպի պատմական նիւթն սկսւում է Հայաստանի Վաղարշ թագաւորի ժամանակից, այս նշանաւոր անձի եղերական վախճանից։ Անտոնիոս (Կարակալլա 211—217) կայսրը, որ նորոգում է պատերազմը պարթեւների հետ, Արեւելք գալով՝ նենգութեամբ իր մօտ է կանչում Հռոմի բարեկամ Հայոց Վաղարշ թագաւորին եւ չղթայում նրան։ Հայերը զէնքի են դիմում հռոմայեցիների դէմ։ Վաղարշի որդի Տրդատը թագաւոր է հռչակւում (215 թ.)։ Կարակալլան նրա վրայ զօրք է ուղարկում. բայց «Թէոկրիտոս զոր առաքէր նա զօրօք ի վերայ Հայոց՝ մատնէր չարաչար ի պարտութիւն»(1)։ Տրդատն սպասելով, որ պատերազմը պիտի շարունակուի, գնում է պարթեւների մօտ՝ նրանցից օգնութիւն խնդրելու։ Եւ իսկապէս, Անտոնիոս կայսրը հետեւեալ տարին, պատերազմական մեծամեծ ուժերի գլուխ անցած, նորից գալիս է Արեւելք, որպէսզի հայերին նուաճէ, եւ եթէ հարկ լինի, նաեւ պարթեւներին(2)։ Երբ նա երկրորդ անգամ պահանջում է, որ պարթեւները հայերին չօգնեն եւ Տրդատին իրեն յանձնեն, ապա պարթեւների թագաւորը համաձայնում է դրան։ Բայց Տրդատին աջողւում է Հայաստան մտնել եւ շարունակել թշնամական գործողութիւններն ընդդէմ հռոմայեցիների (216 թ.)։ Յաջորդ տարին Կարակալլան սպանւում է։ Նրա յաջորդը՝ Մակրինոս (217—218), պարտուելով պարթեւներից, հաշտութիւն է կնքում նրանց հետ։ Նա հաշտւում է Հայաստանի հետ։ Եւ որովհետեւ այդ ժամանակ գերութեան մէջ մեռել էր Հայաստանի թագաւորը՝ Վաղարշ, կայսրը թագ է ուղարկում նրա որդի Տրդատ Բ.ին, որ արդէն թագաւոր էր փաստօրէն(3)։ Կայսրը Հռոմից ետ է դարձնում Տրդատի մօրը, որ տասնումէկ ամիս բանտարկուած էր։ Բացի այդ՝ նա Տրդատին վերադարձնում է Հայաստանից տարած աւարը եւ նրա հայրական կալուածները Կապադովկիայում, որ Կարակալլան արքունիք էր դրաւել։*

*Քիչ յետոյ, 226 թ., Պարսկաստանում տեղի է ունենում քաղաքական*

(1) Գարագաշեան Ա. Մ.— Քննական պատմութիւն Հայոց. Բ., Թիֆլիս, 1895, էջ 264. նոյն տեղում՝ Դիոն Հէ. 12, 21։

(2) Հայոց նախնական պատմութիւնն ըստ Մոմզէնի, Վաղարշապատ, 1904, էջ 53։

(3) Անդ, էջ 54։

*մեծ իրողութիւնը: Արտաշիր Սասանեանը, յաղթելով իր հակառակորդ վերջին պարթեւ թագաւոր Արտաւան Ե.ին, գահ է բարձրանում, եւ այնուհետեւ պետութեան գլուխ կանգնում են Սասանեան արքաները, որոնք Կիւրոսի եւ Քսերքսէսի սերունդ համարում իրենց եւ ձգտում էին աշխարհակալութեան: Արտաշիրն* (226—241 *թ.) իր իշխանութեան սկզբում հէնց՝ յարձակւում է Հայաստանի վրայ, այստեղ եւս Արշակունի իշխանութեանը վերջ տալու համար: Բայց նա «վանեալ վկանդեալ ի բնակաց երկրին եւ ի մարաց ոմանց եւ յորդւոցն Արտաւանայ, եղանէր փախստեայ, որպէս ասեն ոմանք, կամ որպէս այլք ասեն, դառնայր յետս՝ գումարել մեծ եւս բազմութիւն զօրաց»*(1), 228 *թ.: Յետոյ նա* 230 *թ. յարձակւում է հռոմէական երկիրների, այն է՝ Միջագետքի, Ասորիքի եւ Կապադովկիոյ վրայ: Երկու տարի յետոյ՝ Ալեքսանդր Սեւեր* (222—235) *կայսրը սկսում էր իր արշաւանքը պարսիկների դէմ: Նրա հիւսիսային բանակը Հայաստանի վրայով շարժւում է դէպի Մարաստան*(2)*, ուր հռոմայեցիները, հայերի օգնութեամբ, սաստիկ նեղում են պարսիկներին: Հայերը, որոնք պահում են իրենց անկախութիւնը, Մաքսիմին* (235—238) *կայսրի ժամանակ*, 236 *թ., իբրեւ Հռոմի դաշնակիցներ, օգնական զօրք են ուղարկում գերմանների դէմ պատերազմի ժամանակ:*

*Պարսիկները* 241 *թ., Արտաշրի յաջորդ Շապուհ Ա.ի* (241—272) *օրով, տիրում են Միջագետքին, հաւանօրէն մտնում են Հայաստան: Գորդիանոս կայսրը* (238—244) *ստիպուած է լինում* 242 *թ. պատերազմ սկսել պարսիկների դէմ: Նա ետ է առնում Արտաշատը, ապա Անտիոք, Մծբին եւ այլն*(3)*: Բայց նա սպանւում է եւ նրա յաջորդ Փիլիպպոսի ժամանակ հաշտութիւն է կնքւում* 244 *թ., երբ հռոմայեցիները ձեռնաթափ են լինում Հայաստանից: Բայց Շապուհն իսկոյն չի մտնում Հայաստան: Սկիւթացի ազգերը յարձակւում են Պոնտոսի, Կապադովկիայի եւ ընդհանրապէս Փոքր Ասիայի վրայ: Նրանց խմբերը երեւում են Հայաստանի Բասեն գաւառում: Այդ ժամանակ միայն,* 252 *կամ* 253 *թ., Շապուհը գրաւում է Հայաստանը:* Տրդատ թագաւորը փախչում է հռոմայեցիների մօտ, իսկ նրա որդիները պարսիկների կողմն են անցնում(4): *Երկրում իշխում է Արտաւազդ թագաւորը, պարսից դաշնակիցը, որի մի նամակը մնում է* 260 *թուից: Աւրելիան կայսրի ժամանակ* (270—275) *Հայաստանը համարւում է անկախ երկիր եւ ոչ հռոմէական: Աւրելիոս Կարոս* (282—284) *կայսրը վերսկսում է պատերազմը: Նա* 282 *թ. մտնում է Հայաստան եւ այնտեղ վերականգնում է Նախ–*

---

(1) Գարագաշեան, Քննական պատմութիւն, Բ., 268: Նոյն տեղում՝ Դիոն, գիրք 2—3: Տես նաեւ՝ Հայոց նախն. պատմ. ըստ Մովսէսի, էջ 54:

(2) Asdaurian, Die Bez. zw. Armenien und Rom, էջ 124 եւ հտն.:

(3) Գարագաշեան, Քնն. պատմ. Հայոց, Բ., 1895, Թիֆլիս, էջ 272:

(4) «Եւ սովաւ (Գաղղեաւ=Գալլուս, 251—253 թ.) սկսան խլրտել պարսիկք որ հասին գրաւեցին զՀայաստան, ուստի փախեաւ արքայն [Հայոց] Տրդատ, այլ որդիք նորա անկան առ Պարսիկս»: Զոնար, Տարեգիրք, ԺԲ. 21. Տաշեան, Ագաթանգեղոս, էջ 106:

կին կարգերը։ Նրա յաջորդների օրով եւս Հայաստանը մնում է հռոմայեցիների ազդեցութեան տակ եւ խաղաղութիւն է լինում մինչեւ 293 թ.(1)։ Թէ ո՞վ է եղել Հայաստանի թագաւորը՝ այդ յայտնի չէ։

Պարսից Ներսեհ թագաւորը (293—303) վերսկսում է պատերազմը Հռոմի հետ։ Նա նախ յարձակւում է Հայաստանի վրայ։ Դիոկլետիանոս կայսրը (284—305) դիմադրում է նրան պատերազմով։ Գալերիոս Մաքսիմոս կեսարը, որ զօրավարն էր, սկզբում, 296 թ. պարտութիւն է կրում Միջագետքում։ Բայց յետոյ նա պատերազմը տեղափոխում է Հայաստան, ուր բնակիչներն օգնում են հռոմայեցիներին։ Կռուից առաջ Գալերիոսն անձամբ, երկու (երեք) ձիաւորի հետ, լրտեսում է թշնամու բանակը։ Արիւնահեղ ճակատամարտի մէջ Ներսեհը, չնայելով իր զօրքի բազմութեանը, կատարեալ պարտութիւն է կրում եւ ինքը վիրաւորուած փախչում է։ Նրա ամբողջ ճամբարը, գանձը, ընտանիքը, թագուհին, որդիներն ու դուստրները եւ բազմաթիւ նշանաւոր պարսիկներ գերի են ընկնում հռոմայեցիների ձեռքը (297 թ.)։ Թշնամիները նրա կանանց ու դուստրներին պահում են պատուով։ Հաշտութիւնից յետոյ գերիները վերադարձւում են։ Այդ ժամանակից սկսած՝ Հայաստանը մնում է Հռոմի գերիշխանութեան տակ, եւ Հայոց երկրին աւելանում է Ատրպատականը կամ նրա հիւսիս-արեւելեան մասը։ Խաղաղութիւն է լինում ամբողջ քառասուն տարի մինչեւ Կոստանդիանոս կայսրի մահը, 337 թ.։ Թէ ո՞վ է եղել Հայաստանի թագաւորը այդ յայտնի չէ։

Յիշենք եւ հետեւեալը։ Եւսեբիոս Կեսարացին (270—338) հայերին քրիստոնեայ է դնում 4-րդ դարի սկզբում եւ գրում է, թէ հայերը կրօնի համար նոյնիսկ պատերազմ են տուել Մաքսիմի Դայայի (307—313) դէմ։ «Գրգռեցաւ պատերազմ ի բռնաւորէ անտի ընդ Հայոց, որ ի սկզբանէ բարեկամք եւ նիզակակիցք էին հռոմէական ժողովրդեանն։ Եւ նոքին եւս քրիստոնեայք էին եւ եւ ջերմագոյնք ի բարեպաշտութեան... Ջանացաւ աստուածատեացն բռնաւոր՝ բռնութեամբ ածել զնոսա ի պաշտօն կռոց եւ դիւաց եւ յայն սակս զբարեկամսն յաւելիս, զդաշնաւորսն ի թշնամիս դարձոյց... այլ ինքն ի պատերազմի անդ հանդերձ զօրու իւրով գունակ գունակ նեղեալ վտանգեցաւ չարաչար»(2)։ Եւսեբիոսը չի յիշում Հայոց թագաւորի անունը։ Միայն Սոզոմենոսը, եկեղեցական պատմիչ 5-րդ դարում (ծնուած 5-րդ դարի սկզբում), յիշում է Հայոց Տրդատ թագաւորին, որի օրով հայերը քրիստոնէութիւն են ընդունել։ Բայց այդ ժամանակ կար արդէն հայ գրականութիւնն, ըստ որի նոյնպէս 3-րդ դարի վերջում եւ 4-րդի սկզբներում թագաւոր է եղել Տրդատ (Գ)։

Հիմա տեսնենք՝ ինչ են գրում մեր պատմաբաններն ու բանասէրները։

---

(1) Հայոց նախն. պատմ. ըստ Մոմզէնի, էջ 55 եւ հտն.։ Նաեւ՝ Գր. Խալաթեան, «Ուրուագիծ Հայաստանի Պատմութեան» (ռուսերէն), էջ 345 եւ հտն.։

(2) Եւսեբ., Եկեղեց. պատմութիւն, Թ. գլ. Ը։ Գարագաշ., Քնն. Պատմ., Գ., Թիֆլիս, 1895, էջ 6։

3· Խոսրով Մեծ։— *Ըստ վէպի (Ագաթանգեղոսի եւ Մ· Խորենացու պատումներ), Սասանեան Արտաշրի իշխանութեան սկզբում, ուրեմն 226 թ· Հայաստանի մէջ թագաւոր է եւ նրա դէմ տաս տարի քաջութեամբ պատերազմ է մղում (ըստ Մ· Խորենացու՝ Վաղարշի որդի) Արշակունի Խոսրովը։ Նրան դաւաճանի ձեռով սպանել տալուց յետոյ՝ Պարսից թագաւորը տիրում է Հայաստանին։ Խոսրովի որդիներից «մանկիկ մի փոքրիկ», Տրդատ անունով, փախցնում են դայեակները Յոյների (Հռոմայեցիների) կողմերը։ Այնտեղ նա մեծանում է եւ Գոթաց թագաւորին մենամարտութեամբ յաղթելուց յետոյ՝ հռոմայեցիների օգնութեամբ գալիս թագաւորում է Հայաստանում՝ իր ամբողջ կեանքում կռուելով պարսիկների դէմ։ Վերեւում ըստ օտար աղբիւրների բերուած պատմութիւնից՝ այսքանն է միայն ըստ Ագաթանգեղոսի։ Դա մի չափազանց այլափոխուած պատմութիւն է եւ չատ քիչ նմանութիւն ունի 3-րդ դարի հայոց պատմութեանն ըստ արտաքին հեղինակների։*

*Հիմա հարց է· արդեօք պատմակա՞ն է այս Խոսրով անունով թագաւորը։ — Մեր բանասէրներն ու պատմաբանները մեծ մասամբ ընդունել են այս Մեծ Խոսրով թագաւորի իրական գոյութիւնը եւ մինչեւ անգամ նրա տարիներն են որոշել։ Բայց այդ գիտնականների կարծիքներն ընդունելի չեն, որովհետեւ, չնայելով նրանց ճիգերին՝ ոչ մի կերպ չի ապացուցուած, թէ 3-րդ դարում եղել է Հայոց թագաւոր Խոսրով անունով եւ թէ նա է պատերազմել Արտաշրի դէմ։*

*Առնենք նրանցից եօթը·*

1· ԽԱԼԱԹԵԱՆ(1)։ *Տրդատ Բ·ից յետոյ, որ մեռնում է «անորդի», Հայաստանում թագաւորում է Արտաւան Ե·ի եղբայրն Արշակ Բ·։ 222—238 թ·* նոյնը կոչւում է Խոսրով։ *Սրա որդին Տրդատ Գ· թագաւորում է 238 թուից եւ 252—253 թ· (ուրեմն ոչ «մանկիկ մի փոքրիկ») փախչում է հռոմայեցիների մօտ· 297 թ· թագաւորում է դարձեալ մի Տրդատ, թէ արդեօք դա Տրդատ Գ·ն է, թէ Տրդատ Դ·, այդ անորոշ է թողնում։*

2· ՍԱՆԴՍԱԼՃԵԱՆ(2)։ *Վաղարշ, Սանատրուկի որդի 194—216 թ·։*
*Տրդատ Բ· (Վաղարշի որդին) 218—222 թ·։*
*Արշակ Ա·*— Խոսրով Ա·, *Արտաւան Դ·ի եղբայրը, մօտ 222—250 թ·։*
*Տրդատ Գ· (Խոսրովի որդին), առաջին անգամ թագաւորում է մօտ· 250 թ·, նա պարսիկներից փախչում է։*
*Արտաւազդ Ե· 252 թ·։*
*Տրդատ Գ· երկրորդ անգամ 297 — մօտ· 323 թ·։*

---

(1) *ՈՒՐՈՒԱԳԻԾ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ* (ռուսերէն), էջ 326 եւ հտն·, 334, 338, 339 ըստ Justi I, էջ 511։

(2) **Sandaljian**, Histoire documentaire de l'Arménie, t. II, Rome, 1917, էջ 560 եւ հտ·, 577 եւ հտ·, 589։

3· ԱՍՏՈՒՐԵԱՆ(1)։ Տրդատ Բ·ից յետոյ խոսքով մօտ· 222—250 թ· «Թէ սա Արտաւանի հարազատ եղբայրն է եղել՝ մենք այդ չգիտենք»։ Նոյն տեղում ծանօթութեան մէջ· «Միայն Ագաթանգեղոսի յունարէն թարգմանութիւնը Խորենացին անուանում է Արտաւանի եղբայր (անշուշտ այդ պատճառով Պրոկոպը նոյնպէս անուանում է նրան [Արշակին] Պարթեւաց թագաւորի եղբայր»)։

Տրդատ Գ· մօտ· 287—336, երեխայութեան ժամանակ 252 թ· փախել է հռոմայեցոց երկիրը։

4· ՏԱՇԵԱՆ(2)։ Տրդատ Բ· մեռել է 221 թ· յետոյ խոսքով, որի սպանուելը 253 թուից առաջ· Տրդատ Գ· թագաւորել է 253-ից առաջ մանկական հասակում եւ այդ հասակում էլ փախել է 253 թ·։ — Ապա Տաշեանը բերում է Տրդատ Գ·ի թագաւորելու մասին զանազան կարծիքներ եւ հաւանական է համարում, թէ նա թագաւորել է 266—267 թ·, երբ եղել է Գոթերի արշաւանքն ի Փոքր Ասիա· «Լիդիա, Փռիգիա, Գաղատիա, նաեւ Գամիրք ողողուած էին»։ Տրդատ Գ·ը երկրորդ, իսկապէս երրորդ անգամ թագաւորել է 287 թ·։

Առաջին երկու հեղինակները, Խալաթեան եւ Սանդալճեան (համարներ 1 եւ 2), Խորենացին համարում են Պարթեւների թագաւոր վերջին Արտաւանի եղբայրը՝ Արշակ, նոյն եւ խոսքով անունով· միայն առաջինը նրան դնում է 222—238 թ·, իսկ երկրորդը՝ մօտ 222—250 թ·։ Նրանց այս տեղեկութիւնները ծագում են Պրոկոպիոսի հետեւեալ խօսքերից, որ այստեղ բերում եմ Տաշեանի թարգմանութեամբ։ «Թագաւոր էր երբեմն Հայոց անդրանիկն ի նոցունց ազգէ, որպէս վկայէ հնոցն պատմութիւն։ Քանզի իբրեւ կործանէր Աղեքսանդր Մակեդոնացի զթագաւորն Պարսից, կացին մնացին Պարսք ընդ լծով։ Այլ Պարթեւք ապստամբեալք ի Մակեդոնացւոց՝ տարան զյաղթութիւնն եւ վարեցին զնոսա ի բաց եւ հասին կալան մինչեւ ցգետն Տիգրիս։ Հանդարտեցին Պարսիկք ընդ իշխանութեամբ սոցա ամս հինգ հարիւր, մինչեւ ցժամանակն՝ յորում Աղեքսանդր որդի Մամեայ թագաւոր էկաց Հռոմայեցւոց։ Եւ յայնժամ մի ոմն թագաւորացն Պարթեւաց զեղբայրն իւր զԱրշակ կարգէր արքայ Հայոց, որպէս ասէ իսկ Պատմութիւնն Հայոց։ Զի մի՛ ոք կարծիցէ զԱրշակունիս ի Հայոց սերեալ, որք (Արշակունիք) զամս հինգ հարիւր մնացին խաղաղութեամբ եղբայրութեան ազգատոհմին։ Արքայն Հայոց ի Մեծ Հայս նստէր, եւ անդստին ի կանուխ ժամանակաց հնազանդ էր ինքնակալին Հռոմայեցւոց» եւ այլն (3)։

«Աղեքսանդր որդի Մամեայ» է Ալեքսանդր Սեւեր (222—235)։ Պար-

---

(1) Die polit. Bez. zw. A. u. R., էջ 121, 127։

(2) Տաշեան Յ·, Ագաթանգեղոս, Վիեննա, 1891, էջ 96, 106 եւ հտ· 109, 120, 123 եւ այլն։

(3) Տաշեան. Ագաթանգեղոս, էջ 103 եւ հտ· Պրոկոպիոս, վասն շինուածոց Յուստինիանու, գիրք Գ· 1։

թեւների տէրութիւնը տեւել է մինչեւ 226 թ․, ուրեմն մինչեւ այս կայսրի ժամանակը։ Պրոկոպիոսի այդ հատուածի մէջ ընդգծած խօսքն այնպէս են հասկացել, թէ Աղեքսանդր Սեւերի առաջին տարում («յայնժամ»), ուրեմն 222 թ․, Պարթեւների թագաւորն իր եղբայր Արշակին կարգել է Հայոց թագաւոր։ Եւ որովհետեւ այդ ժամանակ Պարթեւների թագաւորն էր Վաղարշի որդի Արտաւան Ե․ (կամ Դ․), ուստի եւ Արշակը նրա եղբայրն էր։ Եւ որովհետեւ, ըստ Ագաթանգեղոսի, այդ ժամանակ Հայոց թագաւորը Խոսրով էր կոչւում, ուստի Արշակը նաեւ Խոսրով է կոչուել։ Հետեւաբար Ագաթանգեղոսի յիշած Խոսրովը թագաւորել է 222 թ․։ Կը նշանակի՝ այդ ժամանակ մեռած պիտի լինէր նախորդ թագաւորը Տրդատ Բ․։ Այս թագաւորն, ըստ Խալաթեանի, նոյնիսկ «անորդի» է մեռել, երեւի բացատրելու համար, թէ ինչու Տրդատ Բ․ի որդին չի թագաւորել, այլ Արտաւանի եղբայրը։ Դրան իբրեւ ապացոյց համարում են այն, որ Ագաթանգեղոսի յունարէն թարգմանութիւնը Խոսրովին անուանում է Արտաւանի եղբայր (1)։ Բայց այդ ամէնը սխալ հասկացման հետեւանք է։

«Եղբայր», «եղբայրութիւն» բառերը Ագաթանգեղոսի եւ Բուզանդի մէջ Պարթեւական թագաւորական տոհմի համար գործածւում է «ազգակից», «ազգատոհմ» բառերի նշանակութեամբ։ Այսպէս, օրինակ, Ագաթանգեղոսի մէջ հէնց՝ Խոսրովի համար գրուած է․ «Թէպէտ եւ էր ի մեծի տէրութեան վասն բնութեան եղբայրութեանն ազգատոհմին, զի հնազանդեցան թագաւորութեան Ստահրացւոյն... Նուաճեալ էին ի տէրութիւնն Արտաշրի, քան ընդ տէրութիւն իւրեանց ազգատոհմին եւ եղբայրութեանն»։ Այստեղ «եղբայրութիւն» եւ «ազգատոհմ» համանիշ են, եւ «եղբայրութիւն»ը վերաբերում է քիչ ներքեւում յիշուածներին որ են՝ «տոհմայինքն», «տոհմքն եւ ազգապետքն եւ նախարարքն եւ նահապետքն Պարթեւաց», որոնք ենթարկուել էին Արտաշրին։ Այսպէս եւ Բուզանդը (Գ․ 5․) Մազքութների թագաւորի համար, որ պարթեւական տոհմից էր, գրում է․ «Եհաս նա [Գրիգորիս] մինչեւ ի ճամբար բանակին Արշակունւոյ արքային Մազքթաց... Քանզի եւ նոցա եւ Հայոց թագաւորացն մի ազգաւորութիւն էր տոհմին ընութեան» (Բուզ․ Գ․ 6)։ «Թագաւորն Մազքթաց Սանէսան անհնարին նիւթեաց զսրտմտութիւն ոխութեան ընդ իւրում ազգակցին Խոսրովու արքային Հայոց»։ «Եւ խոյս ետ թագաւորն Հայոց Խոսրով յիւրմէ եղբարցն, նոյն ի Սանէսանայ յարքայէն Մազքթաց»։ Դարձեալ՝ երբ Սանէսանի գլուխը բերում են Խոսրովին, սա «իբրեւ ետես լալ սկսաւ․ ասէ․ Եղբայր իմ էր, ազգաւ Արշակունի»։ Այսպէս ուրեմն, «եղբայր» բառը գործածւում է Արշակունիների համար ոչ իսկական իմաստով, այլ իբրեւ «ազգակից»։Այս խնդիրն սպառուած համարելով՝ անցնենք Պրոկոպիոսի հատուածին։

Տաշեանն արդէն նկատում է․ «Պրոկոպիոսի խօսքերը՝ թէեւ մթին՝ բոլորովին այլազգ ալ կրնան հասկացուիլ, այսինքն սոյն խնդրական մասն Արշակայ՝ Արշակունեաց հիմնադրին վրայ առնելով»։ «Հոս «յայնժամ»

(1) Գարագաշեան, Քնն․ պատմ․ Հայոց, Բ․, էջ 268 եւ հտ․։

պէտք է Պարթեւաց պետութեան կանգնուելու ժամանակին վրայ առնուլ․ եւ տար կը սախլեն կարծենք նաեւ յաջորդ խօսքերը»։ Ոչ թէ այդպէս «ալ կըրնան հասկացուիլ», այլ հէնց այդպէս միայն կարելի է եւ պիտի հասկանալ։ Պրոկոպիոսը խօսում է Հայոց երկու թագաւորական տոհմերի ծագման մասին․ մէկը, հինը, — գրում է նա, — հայերից է սերուած, միւսը, Արշակունին, ոչ թէ հայերից, այլ Պարթեւական տոհմից։ Արշակունիների ծագումը բացատրելու համար՝ նա խօսում է նախ Պարսկաստանի Պարթեւ իշխողների մասին, — որոնք թագաւորել են այնտեղ հինգ հարիւր տարի մինչեւ Ալեքսանդր Սեւերի ժամանակը, — եւ ապա աւելացնում է․ «եւ այն ժամանակ [այսինքն Պարթեւական թագաւորութեան սկիզբներում] Պարթեւաց թագաւորներից մէկն իր եղբայր Արշակին կարգեց Հայաստանի թագաւոր»։ Եւ այս ասում է նա, ինչպէս շարունակութիւնից իմանում ենք, «որպէսզի ոչ ոք չկարծի, թէ հայերից են սերուած Արշակունիները, որոնք հինգ հարիւր տարի խաղաղութեամբ մնացին (Պարսկաստանում իշխող) ազգատոհմի հետ» եւ այլն։ Որ Պրոկոպիոսը Հայաստանի երկու թագաւորական տոհմերի ծագման մասին է խօսում, եւ որ նա ասում է, թէ Արշակունիները հինգ հարիւր տարի խաղաղ ապրել են (Պարսկաստանում իշխող) իրենց ազգատոհմի հետ, — այսինքն՝ այնքան տարի, որքան Պարթեւներն, ըստ Պրոկոպիոսի, իշխել են Պարսկաստանում, — այդ ցոյց է տալիս, որ նա հայ Արշակունիների ծագումը դնում է ոչ թէ 222 թ․, Ալեքսանդր Սեւերի ժամանակի մի Արշակից, Պարթեւների վերջին թագաւոր Արտաւանի եղբօրից, այլ Պարթեւական իշխանութեան հէնց սկիզբներից։

Պրոկոպիոսը վերեւի մէջբերումի մէջ ընդգծուած խօսքն առնում է «Հայոց պատմութեան» մի գրքից, քանի որ նա անմիջապէս աւելացնում է՝ «որպէս ասէ իսկ Պատմութիւնն Հայոց»։ Եւ, իսկապէս, մեր պատմական գրուածքներում եղել է այդ աւանդութիւնը, թէ Պարթեւական տէրութեան սկիզբներում նրանց թագաւոր Արշակ Մեծը թագաւորեցրել է Հայաստանի վրայ իր որդի Արշակին, որից եւ սերուել են հայ Արշակունիները։ Այդ աւանդութիւնը գտնում ենք Սեբէոսի Պատմութեան սկզբի մասում․ «Յայնմ ժամանակի թագաւորեցոյց Արշակ զորդի իւր զԱրշակ Փոքր կոչեցեալ ի վերայ աշխարհիս Հայոց ի Մծբին քաղաքի», եւ այլն։ «Արդ՝ թագաւորէ Արշակն Փոքր կոչեցեալ՝ յամի հարիւրերորդի քսան եւ իններորդի թագաւորութեանն Արշակայ հաւր իւրոյ՝ ի վերայ Հայաստան երկրի՝ ի Մրծուին քաղաքի, եղբարբ իւրով Վաղարշակաւ», եւ այլն (1)։ Նոյնը նաեւ Մովսէս Խորենացու Հայոց Պատմութեան մէջ (Ա․ 9․ եւ այլն), միայն «Արշակ» անուան փոխանակ՝ Վաղարշակ, «Արշակ մեծ, արքայ Պարսից և Պարթեւաց... սա թագաւորեցուցանէ զեղբայր իւր զՎաղարշակ ի վերայ աշխարհիս Հայոց», եւ այլն։ Թերեւս այդ միեւնոյն աւանդութիւնն եղել է նաեւ Բուզանդի Հայոց Պատմութեան սկզբի մասի մէջ, որ չի մնացել, եւ սրանից է այդ ծանօթ եղել Պրոկոպիոսին, քանի որ կարծում են, թէ այդ հեղինակն ուրիշ դէպքում օգտուել է Բուզանդից։

---

(1) Պատմ․ Սեբէոսի եպիսկոպոսի ի Հերակլն, Թիֆլիս, 1913, էջ 13, 15։

Այսպէս ուրեմն, մէջտեղից վերանում է Արտաւանի եղբայր Արշակի, նոյն եւ խոսրով թագաւորի գոյութիւնը, *որ սխալ հասկացման արդիւնք է: Հետեւաբար նոյն սխալի հետեւանքով է նաեւ Արշակի, նոյն եւ Խոսրով թագաւորի իշխանութեան սկզբի տարին դնել 222 թուականը, ուրեմն եւ մինչ այդ մեռած համարել Տրդատ Բ.ին:*

*Այդ կարծեցեալ Արշակի, նոյն եւ Խոսրովի* սպանման 238 *թուականը, որ ունին Խալաթեանը եւ Մորգանը, ուրիշ բան չէ, եթէ ոչ Արտաւանի սպանման թուականի, 226ի վրայ աւելացրած 12 թիւը:Իսկ այս 12 թիւը կազմել են այսպէս՝ Խոսրովն, ըստ Ագաթանգեղոսի, Արտաւանի մահից յետոյ առաջին տարին (ուրեմն մէկ տարի) բան չի կարողանում անել. ապա տասը տարի արշաւանքներ է գործում եւ վերջին արշաւանքից յետոյ՝ ձմեռն, ուրեմն մէկ տարի, անցկացնելով՝ գարնանը պատրաստւում է նորից արշաւելու Պարսկաստանի վրայ, բայց սպանւում է: Ուրեմն անում է 1+10+1=12 տարի Արտաւանի մահից յետոյ:*

*Այժմ տեսնենք, թէ ի՛նչ են ասում երկրորդ երկու հեղինակները:*

*Տաշեանը (համար 4), չնայելով իր ճիշտ բացատրութեանը կարծեցեալ Արշակի մասին, դարձեալ առանց որեւէ հիմքի, Տրդատ Բ.ին մեռած է դնում մօտ 221 թուականին, որպէսզի յետոյ թագաւորեցնէ Խոսրովին: Նոյնպէս վարւում է եւ Ասատուրեանը (վերեւի համար 3), Խոսրովի առաջին տարին դնելով 222 թուականը: Այս երկուսը, ուրեմն,* պարզապէս ընդունում են խոսրով թագաւորի գոյութիւնն *այդ շինծու թուականով. իսկ նրա սպանման տարին դնում են դարձեալ մօտ 250 թուականին: Այս երկրորդ թուականը յարմարեցրած է 252 կամ 253 թուին, երբ Տրդատ թագաւորը, ինչպէս վերեւում տեսանք, փախել է: Միայն ըստ արտաքին աղբիւրի, այդ* փախչող Տրդատն արդէն տարիքաւոր է, *զաւակներ ունի. իսկ* սրանց մօտ նա երեխայ է, *ինչպէս Ագաթանգեղոսի մէջ: Բացի այդ՝ որովհետեւ արտաքին աղբիւրով այդ փախչող Տրդատն արդէն թագաւոր է յիշւում, ուստի սրանք էլ նրա հօրը մեռցնել են տալիս 252 թուականից առաջ՝ այդ երեխային թագաւորեցնում են մօտ 250-ին եւ նոր փախցնում: Ուրեմն* իրենց ուզած ձեւով, իբր «հաւանական» ենթադրութեամբ, *մի բան Ագաթանգեղոսից են առնում, մի բան էլ այլ աղբիւրից եւ* իրենցից մի նոր պատմութիւն են յարմարեցնում:

*Այս բանը շատ լաւ զգում է Տաշեանը: Նա բերելով Զոնարի վերեւում (ծանօթութեան մէջ) դրուած հատուածը, գրում է. «Արդ՝ թէ Զոնար ճիշտ պատմած է հոս՝ այս Տրդատը նոյն չէ Ագաթանգեղայ Տրդատայ հետ. վասն զի այն մանուկ փախած կ'ըսուի, իսկ այս այր կատարեալ է, որդի(ք) ունի: Բայց եթէ այս այսպէս՝ ապա ուրեմն 253ին կար բոլորովին ուրիշ թագաւոր մը Հայոց. եւ որովհետեւ 217ին ալ ուրիշ Տրդատ մը գտանք,* կրնայ հետեւցուիլ թէ նոյն անձն է երկու տեղն ալ յիշուածը: *Ասով բովանդակ Խոսրովու անձին վրայ պատմածներն այս անձին վրայ պէտք կ'ըլլայ առնուլ, եւ ըսել թէ կա՛մ* խոսրով անուն թագաւոր մը չկայ *եւ կա՛մ բոլորովին ուրիշ դրից եւ ժամանակի մէջ է. նաեւ մեզի ծանօթ Տրդատայ պատ-*

մութիւնը շատ այլակերպ կ'ըլլայ, եւ այլ նման ենթադրութիւններ պէտք կ'ըլլայ կուտել» (1): Եւ որպէսզի «Տրդատայ պատմութիւնը շատ այլակերպ» չլինի, նա ձգտում է ապացուցելու Խոսրով անունով թագաւորի գոյութիւն ունեցած լինելը: Որո՞նք են այդ ապացոյցները:

ա) Այն, որ Եղիշէի մէջ կայ. «Նախնին մեր Տրդատոս... ի տղայութեան փախուցեալ... սնաւ յերկրին Յունաց», այլեւ թէ Տրդատ փախաւ «ի հայրասպան մարդախոշոշ հօրեղբարց» (ընդգծումները Տ.-ինն են): Բայց այդտեղ Խոսրով անուն չկայ, եւ այդ ամբողջը համապատասխան է Ագաթանգեղոսին եւ ոչ թէ «ըստ մասին հակառակ»: Ագաթանգեղոսի մէջ էլ Տրդատը փախած ժամանակ երեխայ է եղել. այնտեղ էլ նրան սպանողները, իբրեւ Պարթեւական տոհմի մարդիկ, Տրդատի հօրեղբայրներ կարող էին կոչուել, ինչպէս տեսանք վերեւում «եղբայր», «եղբայրութիւն» բառերի գործածութեան մասին:

բ) «Հայ Արշակունի թագաւորաց մէջ կը գտնենք սովորութիւն մը որով թոռան վրայ կը կրկնուի հաւուն (=պապի) անունը: Գիտենք Տրդատայ որդւոյն անունը՝ Խոսրով, եւ այս երաշխաւոր է թէ Տրդատայ հայրն ալ նոյնպէս կ'անուանէր, որուն վկայ է՝ անկախ յԱգաթանգեղայ՝ նաեւ Բուզանդ»: Նախ՝ որ ե՛ւ Ագաթանգեղոսի, ե՛ւ Բուզանդի մէջ Տրդատի հայրը Խոսրով է կոչւում, այդ հասկանալի է, որովհետեւ երկուսն էլ ծագում են նոյն վիպական աւանդութիւնից, եւ բացի այդ՝ Բուզանդը Ագաթանգեղոսից անկախ չէ, նրան ծանօթ է Ագաթանգեղոսը, թէպէտ անունը չի տալիս, եւ նա միշտ նկատի ունի Ագաթանգեղոսի Պատմութիւնը: Բայց որ պապի անունը թոռան վրայ են դնում, այդ անհրաժեշտօրէն միշտ չի գործադրուել: Ուստի՝ որ Տրդատի որդին Խոսրով է կոչուել, դրանից կարելի չէ անհրաժեշտօրէն եզրակացնել, թէ Տրդատի հայրն էլ իրօք Խոսրով է կոչուել, ուրեմն եւ այդ վիպական Խոսրով անունով թագաւորն իրօք գոյութիւն է ունեցել:

գ) Թեբէի արքունի շիրմաց արձանագրութեան մէջ... կը յիշուի նաեւ (բերուած է յունարէնը եւ հայերէնը) «Խոսրով հայ՝ տեսեալ զարմացայ»: Տաշեանը «հայ» բառից յետոյ աւելացնում է «ազգաւ», որ չկայ յունարէնում: «Այս տողը մեր խնդրոյ տակ դնուող Խոսրովի վրայ առաւ Լըգրոն, որուն համամիտ է եւ Կութշմիտ, որ կը կարծէ, թէ Խոսրով իւր Վաղարշ հօրմէն Սեպտիմոս Սեւերոսի քով պատանդ ուղարկուած էր, եւ անոր հետ 202-ին յ. Ք. այցելութեան եկաւ Մեմնոնի սեան եւ Թեբէի ալ հընութեանց» եւ այս առթիւ գրուած ըլլայ այս արձանագրութիւնը»:

Այս ամէնը լոկ ենթադրութիւն է առանց որեւէ հիմքի: Յիշուած արձանագրութիւնը ցոյց է տալիս այն միայն, որ Խոսրով անունով մի հայ այցելել է Թեբէի հնութիւնները: Բայց որ նա պատանդ է եղել եւ այլն, այդ լոկ խօսքեր են: Ապա ընդունելի չէ, որ 3րդ դարի սկզբում պարթեւա-

(1) Տաշեան, Ագաթանգեղոս, էջ 106 եւ հտ.:

ղըն արքայորդին իրեն այդպէս պարզ կերպով «Հայ» կոչէր եւ ոչ թէ «Պարթեւ» կամ «Արշակունի»: Ագաթանգեղոսի մէջ անգամ այդ թագաւորական տոհմը դեռ միայն այսպէս է անուանւում: Այսպէս, օրինակ՝ Տրդատը Հռիփսիմէի համար ողբալիս ասում է. «Զի զՅունաց աշխարհն եւ զՀռոմայեցւոց քաջ գիտեմ, եւ զմեր Պարթեւաց կողմանսն, վասն զի բնութեամբ իսկ է մեր»: Անակի համար ասում է. «Պատասխանի ետ Պարթեւն». «կազմեցաւ Պարթեւն». «իբրեւ վայն լսէր Պարթեւն». «որդի Անակայ Պարթեւի»: Նոյնպէս Տրդատի հրովարտակի մէջ. «Եւ ի մեր դիւցախառն Պարթեւաց հայցէ այցելութիւն». «Ցեռատունկք եւ Ցեռասունք մեր Արշակունեաց»: Այսպէս եւ Բուզանդի մէջ:

Այսպէս ուրեմն, ոչ մի կերպ չի ապացուցուած Խոսրով անունով թագաւորի գոյութիւնը 3-րդ դարում: Բայց չնայելով դրան՝ գտնում ենք եւ հետեւեալն այդ Խոսրովի մասին:

5. ԱՍԼԱՆ Գ. (1): Տրդատ Բ. (218—253): Սա Պարսիկներից փախչում է Հռոմայեցոց երկիրը: Ապա թագաւորում հաւանօրէն 261 — մօտ. 267 թ. Խոսրովը, «Տրդատ Բ.ի կրտսեր եղբայրը, որ պահուած էր հռոմէական երկրում»: Աղբիւրը չի յիշուած: «Ազգային աղբիւրները նրան, այսինքն՝ Խոսրովին, դարձնում են Արտաշրի ժամանակակից՝ չփոթելով սրան իր եղբայր Տրդատի հետ»: Ծապուհի խարդաւանքով սպանւում է Խոսրովը, ազատւում է որդին՝ Տրդատ, որին, ազգային աւանդութեամբ, փախցնում են հռոմէական երկիրը: Նա թագաւորում է քսան տարեկան հասակում 287 թ.: Ներսեհի յարձակման ժամանակ 295 թ. փախչում է հռոմէական երկիրը եւ ապա նորից թագաւորում է 297 թ. Գալերիոսի յաղթութիւնից յետոյ:

Ահա մի պատմութիւն, որի մէջ ամէն ինչ կոկուած է: Վիպական Խոսրով Մեծը նոյնացրած է Տրդատ Բ.ի եղբայր մի Խոսրով թագաւորի հետ, որի գոյութիւնը յայտնի չէ ոչ մի տեղից: Այդպէս չեն մտածում ոչ միայն նախորդ, այլեւ հետեւեալ հեղինակները:

6. ՄՈՐԳԱՆ (2): Տրդատ Բ., որ կոչւում է նաեւ Խոսրով Ա. Մեծ, 217—238. Տրդատ Գ. 250—330:

Եւ վերջապէս՝

7. ԳԱՐԱԳԱՇԵԱՆ (3): «Տրդատ Բ. ըստ Հայոց Խոսրով, որդի Վաղարշու», թագաւորել է մինչեւ 250-ական թուականները, իսկ Տրդատ Գ. 297—337:

Ինչպէս վերեւում բացատրածից կարելի է տեսնել, յիշուած եօթ հեղինակները եօթը տեսակ պատմութիւն են գրել, նախ՝ այն պատճառով, որ իրենց չհիմնաւորուած ենթադրութիւնները համարում են պատմութիւն,

---

(1) **Kévork Aslan,** Etudes historiques sur le peuple arménien, **Paris, 1928,** էջ 132, 135, 138 եւ հտն.:

(2) **Jacques de Morgan,** Histoire du peuple arménien, Paris, MIXCXIX, էջ 96 եւ հտ., 102:

(3) Քնն. պատմ. Հայ. Գ. էջ 302, 306, Բ. 268:

ապա՝ աշխատում են պատմութիւնը յարմարեցնել վիպական աւանդութեանը: Վէպի մէջ, անշուշտ, կայ պատմականութիւն, բայց կարելի չէ դրանից պատմութիւն հանել, — այստեղ խօսքը պատմական անձերի եւ դէպքերի ու թուականների մասին է, — այս կամ այն ենթադրութիւններն անելով, ինչքան էլ արտաքին աղբիւրների օգնութիւնը լինի: Տրդատ Բ.ին վաղ մեռցնելու ոչ մի հիմք չկայ: Արտաքին աղբիւրով՝ 253 թուին փախչում է Տրդատ թագաւորը, իսկ նրա որդիներն անցնում են պարսիկների կողմը: Կը նշանակի՝ այդ փախչող թագաւորը երեխայ չի եղել: Կարելի չէ այդ թըւականը նկատի ունենալով՝ առնել 250 կամ մօտ 250 թուականը. այդ ժամանակ ըստ կամս մեռցնել մի թագաւոր, վէպին հետեւելով՝ նրա անունը Խոսրով կոչել, եւ այս կամ այն կերպ բացատրելով՝ այդ փախչող թագաւորին երեխայ դարձնել, որպէսզի դառնայ Տրդատ Գ. եւ յարմար գայ Ագաթանգեղոսի պատմութեանը, թէ Խոսրովի որդի Տրդատին երեխայ ժամանակ փախցնում են հռոմէական երկիրը: Բայց երբ ըստ Ագաթանգեղոսի Պատմութեան՝ հաշիւներ են անում, Խոսրովն սպանուած է լինում 238 թ., ուրեմն եւ նրա որդի երեխայ Տրդատին այդ ժամանակ են փախցրած: Բայց դրան ուշադրութիւն չեն դարձնում: Եւ այդ բաւական չէ, այս փախցրած երեխային մօտ 250 թ. արդէն թագաւորած են դնում, որովհետեւ արտաքին աղբիւրի մէջ փախչողը թագաւոր է: Քանի հակառակն ապացուցող աղբիւր երեւան չի եկել, այդ 253 թ. փախչող թագաւորը պէտք է համարել ոչ թէ Տրդատ Գ.ը, այլ Տրդատ Բ.ը, որ թագաւորած է, ուրեմն 215-ից մինչեւ 251—252 կամ 253 թ.:

Կարո՞ղ է Տրդատ Բ.ը նաեւ Խոսրով կոչուած լինել, թէ՞ չէ, եւ կամ արդեօք նա ունեցե՞լ է Խոսրով անունով մի եղբայր, որ թագաւորել է նրանից յետոյ ու սպանուել է եւ այդ Խոսրովի որդի մանուկ Տրդատին փախցրել են, — մենք այդ ասելու համար եւ ոչ մի հիմք չունենք: Եթէ այդ հաւաստի լինէր, ապա վիպական Խոսրով անուան պատմականութիւնը, թէպէտ անաքրոնիզմով, շատ պարզ կը լինէր: Բայց այդ ստեղծուած է միմիայն վէպի հիման վրայ: Մենք այն միայն կարող ենք ասել, որ Արտաշրի (226—241 թ.) ժամանակ, ըստ Ագաթանգեղեան վէպի, Հայաստանում թագաւոր է Խոսրով անունով մէկը: Իսկ վէպը պատմութիւն չէ արդի իմաստով:

Հիմա հարց է: Եթէ Մեծն Խոսրովը հաւաստի պատմական չէ, ապա ի՞նչպէս պէտք է բացատրել, որ Ագաթանգեղոսի մէջ Արտաշրի ժամանակ կայ Խոսրով անունով թագաւոր: — Վէպի մէջ (Փ. Բուզանդի մէջ) կայ նաեւ Խոսրով Կոտակ (Փոքր), վիպական Մեծն Խոսրովի թոռը: Նրա անունն եւս յայտնի չէ արտաքին աղբիւրներից: Բայց նա կապուած է կաթողիկոսական տոհմի եկեղեցական անձերի — Արիստակէսի, Վրթանէսի մասին եղած զրոյցների հետ եւ մօտ հարիւր տարով մօտ է Բուզանդին: Ուստի եւ պատմական յիշողութիւնն այս թագաւորի անուան մասին թէ՛ վէպի եւ թէ այլ աւանդութիւնների մէջ կարող էր կենդանի պահուած լինել եւ անհրաժեշտօրէն պէտք է ընդունել, որ պատմական է եղել այդ մէկ Խոսրովը, Տրդատ Գ.ի որ-

դին: Իսկ վիպական առաջին Խոսրովը, Մեծ Խոսրովը, լոկ մի ստեղծական գործող անձ է: Վէպերի մէջ պատահում է, որ մէկ գործող անձը երկուսի է բաժանւում: Դրա համար օրինակներ կան նաեւ մեր «Սասնայ Ծռերի» մէջ: Այստեղ մի շարք վարիանտների մէջ ունենք երեք սերունդ՝ Սանասար—Դաւիթ—Մհեր: Բայց կան մի շարք վարիանտներ եւս, որոնց մէջ Մհերի համար ստեղծուել է մի պապ, Մեծ Մհեր կամ Առիւծաձեւ Մհեր անունով, իբրեւ Սանասարի որդի, եւ այնուհետեւ Մհերն ինքը կոչւում է Փոքր Մհեր, եւ այսպիսով կազմուել է չորս սերունդի յաջորդութիւն՝ Սանասար—Մեծ Մհեր—Դաւիթ—Փոքր Մհեր: Դրա համար իբրեւ պատճառ ծառայում է սովորաբար այն, որ մէկ մէկ երեխաների վրայ պապի անունն են դնում: Բաւական է, որ վիպասաններից մէկն ասի՝ երեխի անունը դրին պապի անունով Մհեր, — եւ «Սասնայ Ծռերի» համար կան պատումներ, որոնց մէջ Փոքր Մհերը հէնց այդպէս պապի անունով է կոչուել, — եւ ահա ստեղծւում է, — եւ «Սասնայ Ծռերի» մէջ ստեղծուել է, — մի նոր գործող անձ — վիպական Մեծ Մհերը: Եւ ոչ այդ միայն: Մի երկու պատումի մէջ՝ Մեծ Մհերին մի որդի է լինում, վիպասանն ասում է. «Անուն դրին Դաւիթ, պապկի անուան վրայ» — եւ ահա՛ ստեղծուել է մի երկրորդ Դաւիթ, Թլոր Դաւթի պապը, որի որդին է Մեծ Մհեր, Թոռը Դաւիթ, սրա որդին Փոքր Մհեր, եւ այսպիսով առաջ է եկել հինգ սերունդ՝ Սանասար—Դաւիթ—Մեծ Մհեր—Թլոր Դաւիթ—Փոքր Մհեր: Քանի որ Մեծն Խոսրովի պատմականութիւնը չէ հաստատուած որեւէ հաւաստի պատմական աղբիւրից, պէտք է կարծել, որ այսպիսի մի ձեւով ծագել է եւ «Խոսրով Մեծն» իբրեւ պապ: Պատմական Խոսրովն իր փոքր մարմնի, կարճ հասակի պատճառով՝ կոչուած է եղել Խոսրով Կոտակ (=Փոքր), ըստ Խորենացու (Գ. 81)՝ «Փոքր Խոսրով», իսկ այնուհետեւ համապատասխան ձեւով ստեղծուել է պապ Խոսրովն իր «Մեծ» մակդիրով: Եւ այսպիսով սկզբնական երեք վիպական սերունդները՝ Վաղարշ—Տրդատ—Խոսրով դարձել են չորս՝ Վաղարշ—Խոսրով Մեծն—Տրդատ—Խոսրով Կոտակ (Փոքր):

Երբ մէկ վիպական գործող անձը երկուսի է բաժանւում, պապ եւ թոռ (կամ հայր եւ որդի), նոր ծագած անուանը սովորաբար վերագրւում են միւս հերոսներից մէկի կամ միւսի այս կամ այն դէպքերը. հասկանալի է, տարբեր պատումների մէջ յաճախ նաեւ տարբեր ձեւերով եւ տարբեր դէպքեր: Այսպէս, օրինակ, «Սասնայ Ծռերի» մէջ Մեծ Մհերի վրայ պատմում են Սանասարի վէպից դիպուածներ, ինչպէս են՝ Սանասարի (կամ իր եղբօր) կենակցութիւնը Մսրայ Մելիքի կնոջ հետ եւ նրանից Մսրամելիքի ծնունդը. իր որդիներին՝ Դաւթին եւ միւսներին յանձնելը Մսրամելիքին, որ սա պահի նրանց: Նման ձեւով եւ այս ստեղծական Խոսրով Մեծի վրայ պատմուած են այնպիսի դէպքեր, որոնք պատմական Վաղարշինն ու իր որդի Տրդատ Բ.ինն են, կամ ասւում են նաեւ վիպական Վաղարշի (ըստ Մ. Խորենացու պատումի) ու վիպական Տրդատի վրայ եւս: Այստեղ էլ կրկնւում է, ուրեմն, միեւնոյն վիպական երեւոյթը ինչ որ ուրիշ դէպքերում: Այս կամ այն վիպական հերոսին վերագրւում են ուրիշ վիպական հերոսի կամ պատմական անձի մասին պատմածները. որովհետեւ «կապն անունի եւ մարդու միջեւ շատ

*թոյլ է․ անունները յաճախ փոխւում են, մոտիւներն աւելի կայուն են»* (1)։ *Մոտիւն այս դէպքում պատմականօրէն այն է, որ պատմական Տրդատ Բ.ն առնում է մէկ իր հայր Վաղարշի վրէժը, մէկ էլ իր ազգակից Արտաւանի վրէժը։ Հիմա այս մոտիւներից վիպական Մեծն Խոսրովին, նայելով պատումներին, վերագրուել է կա՛մ հօր, Վաղարշի, կա՛մ որդու, Տրդատի դերը, որովհետեւ նա, մտնելով Վաղարշ—Տրդատ յաջորդութեան մէջ, եթէ մի կողմից դարձել է Վաղարշի որդին, ուրեմն Տրդատի փոխանակը եւ Վաղարշի վրէժ առնողը, միւս կողմից դարձել է Տրդատի հայրը, ուրեմն Վաղարշի փոխանակը, սպանուողը, որի վրէժն առնում է Տրդատը։ Այսպէս՝ ըստ Խորենացու պատումի* (Բ. 65)*՝ Խոսրովը (փոխանակ պատմական Տրդատ Բ.ի) առնում է Վաղարշի վրէժը․ իսկ ըստ Ագաթանգեղոսի պատումի՝ Խոսրովը (փոխանակ պատմական Տրդատ Բ.ի) առնում է Արտաւանի վրէժը․ բայց միաժամանակ եւ նա դարձել է Տրդատի հայրը (փոխանակ Վաղարշի) եւ նրա վրէժն առնում է որդին Տրդատը։ Եւ վերջապէս՝ ըստ Սեբէոսի պատումի՝ այդ Մեծն Խոսրովի օրով են Հայաստան գալիս Մամիկ-Կոնակը, իսկ ըստ Խորենացու պատումի՝ Մամկոնը Տրդատի ժամանակ է գալիս։ Այսպէս ուրեմն, ինչ որ Խոսրովի համար պատմւում է՝ վէպի մի կամ միւս փոփոխակի մէջ կայ նաեւ կա՛մ Վաղարշի, կա՛մ Տրդատ Բ.ի համար պատմուած։*

4․ Տրդատի վէպը։— *Այս վէպը կազմուած է հետեւեալ մասերից․*

*ա) Հօրը, Խոսրովին, դաւադրութեամբ սպանում են։*

*բ) Թշնամին, Պարսից թագաւոր Արտաշիրը, տիրում է Հայաստանին․ «Անդ ոմն պրծեալ ապրեցուցանէր ի հինէ անտի յորդւոցն Խոսրովու թագաւորին Հայոց մանկիկ մի փոքրիկ»։ Դայեակները Տրդատին փախցնում են Յոյների (=Հռոմայեցոց) կողմերը, կայսեր պալատը («ի դուռն կայսեր»)։*

*գ) Տրդատն այնտեղ սնւում, մեծանում է, քաջութիւններ է գործում, եւ երբ նա կայսրի փոխանակ մենամարտում, յաղթում է Գոթերի թագաւորին, այն ժամանակ Հռոմայեցոց թագաւորը թագադրում է նրան եւ օգնական զօրք տալով, ուղարկում է Հայոց աշխարհը։ Այստեղից նա կռւով քշում է պարսիկ զօրքերը եւ ինքն իշխում իր հայրենական տէրութեանը։*

*դ) Նա իր ամբողջ կեանքում շարունակում է կռուել պարսիկների դէմ․ «Զամենայն ժամանակս իւրոյ թագաւորութեան աւերէր, քանդէր զերկիրն Պարսից... զժամանակս կենաց իւրոց պատերազմեալ եւ առնէր մարտից յաղթութիւն... եւ խնդրէր զքէնս վրիժուց իւրոց հայրենեացն»։*

*ե) Նրա եւ Հռիփսիմէի դէպքը։*

*զ) Ըստ Խորենացու պատումի՝ նա կռւում է հիւսիսային ազգերի դէմ։ Եւ վերջապէս՝*

*է) Նրա օրով Մամիկոնեանների նախնին, ըստ Սեբէոսի՝ Մամիկ-Կոնակ, ըստ Խորենացու՝ Մամկոն գալիս է Հայաստան։*

---

(1) *«Սերպիական Դիւցազնավէպ»* (ռուսերէն), Ն․ Բրաւնովա Academia, էջ 112։

Ի՞նչ դէպքերի հիման վրայ է առաջ եկել այս վէպը: Այստեղ գտնում ենք երեք պատմական Տրդատների յիշողութիւն յարակցուած ի մի: Միջուկը կազմում է Տրդատ Բ·ը:

ա) Տրդատ Բ·ի հօրը, Վաղարշին, դաւաճանութեամբ, ինչպէս տեսանք, իր կնոջ հետ դնում են բանտ, ուր եւ մեռնում է նա:

բ) Ազատւում է Վաղարշի որդին, Տրդատ Բ·ը, որ հետագայում պարսիկներից փախչում է հռոմէական երկիրը, եւ Հայաստանը ենթարկւում է պարսիկներին:

Տրդատ Բ·ի երկու թշնամիները վէպի մէջ վերածուել են մէկի: Քանի որ նա հռոմայեցիների հետ չատ չուտով հաշտւում է ձեռնտու պայմաններով, եւ այնուհետեւ հռոմայեցիները բարեկամ են մնում հայերին, իսկ պարսիկները թշնամական յարաբերութեան մէջ, ուստի վէպը, ըստ Ագաթանգեղոսի պատումի, պահել է Տրդատի եւ իր հօր համար մէկ թշնամի — պարսիկները: Բացի այդ՝ ինչպէս որ Վիպասանքի մէջ Մեծն Տիգրանի թոռ Արտաշէսը դարձել է մի երեխայ, որին փախցնում են պարսիկների մօտ, նոյնպէս եւ այս վէպի մէջ հռոմայեցիների մօտ փախչող Տրդատը դարձել է երեխայ: Դա վիպական գիծ է. իդէալական հերոսը չի կարող մեծ հասակում փախչել, նա մանուկ հասակում է փախչում օտար երկիր: Շարունակենք համեմատութիւնը:

գ) Հռոմայեցիների օգնութեամբ իշխել են Հայաստանում մի քանի Տրդատ անունով թագաւորներ: Այսպէս՝ Տրդատ Ա·ը Հռոմում է թագադրուել: Նոյնիսկ Տրդատ Բ·ին հռոմայեցիներն օգնել են Շապուհ Ա·ի դէմ, որ մտել էր Հայաստան. եւ վերջապէս՝ Տրդատ Գ·ը, որ պատմական անձ է, թագաւորել է վերջնապէս 297 թուականին օգնութեամբ հռոմայեցիների, որոնք պարսիկներին երկար ժամանակով դուրս են քչել Հայաստանից Պարսից Ներսեհ թագաւորի վրայ տարած յաղթութեամբ:

դ) Որ վիպական Տրդատն իր ամբողջ կեանքում «զամենայն ժամանակս իւրոյ թագաւորութեան» պատերազմում է պարսիկների դէմ եւ աւերում նրանց երկիրը. դա յիշողութիւն է անպայման Տրդատ Բ·ի պատերազմների ընդդէմ հռոմայեցիների եւ պարսիկների՝ մինչեւ իր փախչելը: Վրան կարող են աւելացած լինել նաեւ Տրդատ Գ·ի ժամանակ մինչեւ 297 թուականը պարսիկների դէմ տրուած պատերազմների յիշողութիւնները: Բայց այս թագաւորը չի կարող լինել վէպի պատմական հերոսը, քանի որ նրա թագաւորութեան ժամանակ՝ սկսած 297 թուից խաղաղութիւն է եղել: Հետագայում հոգեւորականութեան աւանդութեամբ վիպական Տրդատի դէպքերը համարուել են այդ քրիստոնեայ թագաւորի արարքների յիշողութիւն:

ե) Տրդատի եւ Հռիփսիմէի դէպքը, որ ամուսնութեան մի թափառական վիպական մոտիւ է, Տրդատ Բագրատունու եւ Նաղենիկի մասին պատմուած զրոյցի մի փոփոխակը, մտել է Տրդատի վէպի մէջ:

զ) Հիւսիսականների արշաւանք եւ ասպատակութիւն եղել է ե՛ւ Տրդատ Բ·ի ե՛ւ Տրդատ Ա·ի ժամանակ: Ինչպէս յայտնի է, այս վերջին թագաւորի օրով ալաններն արշաւում, ասպատակում են Մարաստան եւ ապա

անցնում Հայաստան: Տրդատ Ա.ը նրանց դէմ է դուրս գալիս կռւում: Մարտի ժամանակ նա «եւ փոքր մի եւս՝ եւ անկանէր ի ձեռս նոցա. քանզի մի ումն ի նոցանէ ընկէց պարան ի պարանոց նորա, եւ քարշէր զնա՝ եթէ չէր նորա աճապարեալ հատանել զայն սրով» (1): Նման բան պատմուած է եւ վիպական Տրդատի մասին: Հիւսիսականների դէմ կռւի մէջ Բասիլների թագաւորը «հանեալ յասպազինէն զներդեալ քեմխատապատ պարանն, եւ կորովութեամբ ձգեալ յեռուստ կողմանէ, ճարպ դիպեցուցանէ յուս ձախակողմանն եւ յանութ աջակողմանն. զի էր վերացուցեալ զձեռն ածել ումեք սուսերաւ. եւ ինքն վառեալ վերտ պահպանակօք, ուր ոչ գծէին նետք: Եւ քանզի ոչ կարաց շարժել ձեռամբ զհսկայն, զլանջիւք առ երիվարին. եւ ոչ այնչափ ինչ չութափեաց մտրակել զերիվարն, քան թէ ահեակ ձեռամբն ի ներդեայն աճապարեալ սկային, եւ սաստկութեամբ ուժոյն դիրեաւ ցանցեալ, ի ճահ դիպեցուցանէր զերկայրին, եւ ընդ մէջ կտրէր զայրն եւ ընդ զոյգ պարանոցին զգլուխ երիվարին: Իսկ զօրացն ամենայն տեսեալ զթագաւորն իւրեանց եւ զզօրաւորն միջակտուր յայնպիսի ահաւոր բազկէ լեալ, ի փախուստ դառնային. զորոց զհետ մտեալ Տրդատ, վարէ մինչեւ յաշխարհն Հոնաց» (2): Տրդատ Ա.ի կռիւը հիւսիսականների դէմ, որ մտել է Վիպասանքի մէջ եւ պատմուել Արտաշէսի վրայ, բնականօրէն աւելի մանրամասն երգուել ու պատմուել է եւ իրեն Տրդատի անուան վրայ:

է) Վիպական Տրդատի օրով Մամիկոնեանների նախնու գալը Հայաստան՝ դժուար է որեւէ պատմական Տրդատի հետ կապել. այդ մասին յայտնի չեն պատմական տեղեկութիւններ:

Այսպէս ուրեմն, պատմական Վաղարշի որդի Տրդատ Բ.ի օրով կատարուած դէպքերից, — ազդուելով, — նաեւ միւս Տրդատների նման գծերից, — կազմուել է Տրդատի վէպը, այն էլ բոլորովին նման Արտաշէսի վէպին, ինչ որ արդէն տեսել ենք «վէպի յօրինուածքի» մասին խօսելիս:

5. Խոսրով Կոտակ:— Այս թագաւորի, ինչպէս եւ սրա յաջորդ Տիրանի անունը յայտնի չէ արտաքին աղբիւրներից. բայց կարելի չէ ասել, թէ դրանք ստեղծական անձեր են: Ինչ որ վիպւում է այս Խոսրովի մասին, ընդհանուր առմամբ պատմական է: Կոստանդիանոս Մեծի մահից (337 թ.) յետոյ, երբ Պարսից Շապուհ Բ. թագաւորը (310–379) Միջագետքում պատերազմ է սկսում Հռոմի դէմ (338 թ.), այդ ժամանակ Հայաստանում ներքին խռովութիւններ եւ ապստամբութիւններ են ծագում: Պարսիկների կողմն անցածները ասպատակութիւններ են անում նոյնիսկ հռոմէական սահմանային երկրներում: Թագաւորն (անունը յայտնի չէ) ստիպուած է լինում փախչել պարսկասէրների ձեռից: Բայց Կոստանդ կայսրը (337–361) շուտով, 339 թ., մտնում է Հայաստան եւ երկիրը խաղաղեցնում ու կարգաւորում է հռոմէական գերիշխանութեան ներքոյ (3): Այնուհետեւ մինչեւ 359 թ. հայերը Հռո-

(1) Գարագաշեան, Քնն. պատմ. Հայոց, Բ., էջ 242. առնուած է Յովսեպոսից:

(2) **Մ. Խորենացի, Բ. 85:**

(3) Գարագաշեան, Քնն. Պատմ. Հայոց, Գ., Թիֆլիս, էջ 9 եւ հտն. ըստ Յուլիանոսի ճառի. Գաթրճ., Տիեզ. Պատմ., հտ. Բ., 463, ծան. 1:

մի կողմն են եւ 351 թ. Կոստանդ կայսրին հեծելազօրով օգնում են Արեւմուտքում նրա վարած պատերազմի մէջ:

Խոսրով Կոտակի վէպի մէջ Վաչէ զօրավարի համար ասւում է, թէ «երթեալ էր նա ի ժամանակին յայնմիկ զերկայն ճանապարհս ի կողմանս Յունաց», թէ ինչո՛ւ, այդ յայտնի չէ: Դա, անշուշտ, մի յիշողութիւն է կայսրին Արեւմուտքում հեծելազօրով օգնելուն: Յիշւում են նաեւ ներքին խռովութիւնները Հայաստանում եւ պարսկասէր դաւաճանները: Թագաւորը փախչում է, բայց ոչ պարսիկների կողմն անցածների ձեռից, այլ Մազքութների արշաւանքի ժամանակ: Այս ամէնով հանդերձ՝ ըստ Վէպի էլ երկիրը ներսում ընդհանրապէս խաղաղ է մնում: «Խաղաղութիւն եւ շինութիւն, մարդաշատութիւն եւ առողջութիւն, պտղաբերութիւն եւ ստացուածաշատութիւն եւ շահեկանութիւն... յոյժ յաւուրս սոցա աճեալ բազմացաւ» (Բուզանդ, Գ. 3), «Եւ կայր արքայ ի հանգստի, եւ աշխարհ ի շինութեան եւ ի խաղաղութեան զամենայն աւուրս կենաց նոցա» (Գ. 8):

6. Տիրանի վէպը:— Այս թագաւորի մասին ոչինչ յայտնի չէ արտաքին աղբիւրներից: Որ Տիրանը, Հայր Մարդպետի դրդելով, կոտորել է տալ Արծրունիներին եւ Ռշտունիներին (Բուզ. Գ., 18), դրա պատմականութիւնը որոշելը հնարաւոր չէ: Իսկ նրա գերուելու եւ կուրացուելու պատմութիւնը (Բուզ., Գ. 20) իսկական վիպական պատմուածք է: Տիրան թագաւորի ձիեր յիշւում են եւ Վիպասանքի մէջ (Խորեն., Բ. 62): Վիպական է եւ Տիրանի գերեվարութեան պատճառով պատերազմը Հռոմի եւ պարսիկների միջեւ: Արդարեւ այդ պատերազմն ունի պատմական հիմք, բայց դա այլափոխ յիշողութիւն է Պարսից Ներսեհ թագաւորի եւ Գալերիոսի ճակատամարտի, որ, ինչպէս տեսանք վերեւում, կատարուել է Հայաստանում 297 թ.: Վիպական անաքրոնիզմով այդ պատմւում է Ներսեհ թագաւորի (294–303) և Վաղէս կայսրի (364–378) համար, որոնց համաձայնութեամբ և թագաւորել է Տիրանի որդի Արշակը: Այս անաքրոնիզմը հէնց՝ պարզ ցոյց է տալիս այդ պատմուածքի վիպական ծագումը: Թէ Վէպի մէջ Ներսեհի եւ Գալերիոսի պատմական ճակատամարտն է պատմուած, այդ շատ պարզ երեւում է մանրամասնութիւնների նոյնութիւնից: Ըստ Վէպի՝ Վաղէս կայսրն անձամբ իր բանակի գլուխ անցած մտնում է Հայաստան ընդդէմ Պարսից թագաւոր Ներսեհի. ճակատամարտից առաջ նա երկու մարդով, ծպտուած, մտնում է Պարսից բանակը, լրտեսում: Ներսեհի ահագին բանակը պարտութիւն է կրում, նա ինքը մենակ փախչում է. Նրա բոլոր ճամբարը, գանձը, բամբիշը, կանայքը բոլոր ստացուածքով ու ծառայողներով գերի են ընկնում յոյների (հռոմայեցիների) ձեռքը: Ապա հաշտութիւնից յետոյ՝ Վաղէս կայսրը Ներսեհի կանանցն արձակում է մեծ պատուով, եւ բոլոր գերիներին ետ է դարձնում: Այս ամէնը պարզապէս վիպական յիշողութիւն է Գալերիոսի եւ Ներսեհի ճակատամարտի, որ տեսանք վերեւում: Եթէ նոյնիսկ մի կողմ թողնենք անաքրոնիզմը, չէր կարող պատահել, որ Վաղէսի օրով էլ Հայաստանում այդպիսի մեծ ճակատամարտ կատարուած լինէր պարսիկների ու հռոմայեցիների միջեւ, եւ այդպիսի ամօթալի պարտութիւն կրէին

պարսիկները, ու դրա մասին չյիշէին արտաքին հեղինակները։ Չպիտի մոռանալ եւ այն, որ Բուզանդը միայն երկու անուն գիտէ Պարսից թագաւորներից — Ներսեհ եւ Շապուհ, եւ վերջինս առաջին անգամ երեւում է միայն Արշակի օրով (Դ. 16)։ Ապա առանձնապէս նկատի պիտի ունենալ, որ Բուզանդի պատմածը (Գ. 20, 21) իր ամբողջութեամբ պարզապէս մի վիպական պատմուածք է թէ՛ իր ձեւով եւ թէ՛ իր բովանդակութեամբ։

7. Արշակ թագաւոր։— Վէպի այս մասին մէջ կան մի քանի պատմական յիշողութիւններ։ Պատմական է Արշակի ամուսնութիւնը Ողոմպիի հետ (Բուզ., Դ. 15)։ Կոստանդ կայսրը, Արշակին իր կողմը գրաւելու համար, նրան ամուսին է տալիս իր մեռած եղբայր Կոստասի (337–350) նշանած Ողոմպիին։ Այս ամուսնութիւնը յիշւում է 357 թ., ուրեմն կատարուել է 350 եւ 357 թուերի միջեւ, խաղաղութեան ժամանակ։ Պարսից զօրավարները 355 թ. սկսում են նեղութիւն պատճառել Միջագետքին եւ Հայաստանին. բայց խաղաղութիւնը չի խանգարւում։ Պատերազմն սկսւում է 359 թ.։ Կոստանդ կայսրը 360 թ. մեծ բանակով գալիս է Կեսարիա, կանչում է իր մօտ Արշակին, որ խոստանում է հաւատարիմ մնալ հռոմայեցիներին եւ մեծ ընծաներով վերադառնում է Հայաստան։ Եւ նա հաւատարիմ է մնում Կոստանդ կայսրին, ինչպէս եւ յետոյ Յուլիանոսին (361–363)։ Այս մասին յիշատակութիւն չկայ վէպի մէջ։ Ընդհակառակն, այնտեղ (Բուզ., Դ. 16, 18) պատմուած է, թէ Շապուհի հրաւէրով Արշակը գնացել է նրա մօտ, մեծ պատիւներ ստացել նրանից, երդուել է հաւատարիմ մնալ նրան, բայց յետոյ փախել է նրա մօտից եւ այլն, եւ այլն։ Այս ամէնը, հարկաւ, պատմական չէ, լոկ վիպական պատմուածք է իր բոլոր մանրամասնութիւններով։

Գուցէ պատմական հիմք ունեցած լինին ներքին միջադէպերը, որ են՝ Արշակաւանի շինութիւնը, Հայր Մարդպետի սպանուելը (Բուզ., Դ. 12, 14), Գնելի սպանութիւնը եւ այլ, բայց այդ հնարաւոր չէ հաւաստել։ Պատմական կարող է եղած լինել նաեւ Վաղէսին ուղարկած պատգամաւորութիւնը բարեկամութեան համար (ինչպէս որ Արշակը Յուլիանոսին էլ պատգամաւորներ է ուղարկել սրա թագաւորելու ժամանակ)։ Բայց որ Արշակը, Վաղէսի վրայ բարկացած լինելով, վեց տարի շարունակ աւերել տուած լինի հռոմէական երկիրները մինչեւ Անկիւրիա (Դ. 11), այդ չի եղել եւ յիշողութիւն է թերեւս Մաքսիմինի դէմ վարած պատերազմի, որ բերում է Եւսեբիոսը։ Նոյնպէս պատմական իրողութիւն չէ եւ այն, թէ 359–363 թուերին տեղի ունեցած պատերազմի ժամանակ Արշակը Շապուհին օգնելու համար՝ ջարդած լինէր հռոմէական բանակը Միջագետքում՝ Մծբինի մօտ՝ Վասակ զօրավարի ձեռով (Բուզ., Դ. 20)։

Իսկ զօրքն Յունաց հասեալք,
Մածեալք բանակեալք էին
Իբրեւ զաւազ առ ափն ծովու բազմութեամբք։

Պարսից զօրքերը դեռ տեղ չեն հասել, Վասակն Այրարատեան գնդով

*յարձակւում է հռոմէական բանակի վրայ, եւ*

Առհասարակ ընդ սուր հանեալ կոտորէին,
Այնպէս զի ոչ ապրեցուցանէին ի նոցանէ եւ ոչ զմի:
Եւ առնուին զկապուտ,
Զաւար յունական զօրուցն,
Զի ոչ գոյր չափ կամ թիւ,
Որչափ լցան զանձիւք եւ անհամար կարասեաւ,
Մեծաւ աւարաւն յղփացան:

*Տապուհը դրա համար մեծ պատիւներ էր ուզում անել եւ մինչեւ անգամ իր դուստրը կնութեան տալ նրան, բայց Արշակը խաղալիք է դառնում պալատական խարդաւանքի եւ նորից փախչում Տապուհի մօտից: Այս ամէնը պատմական չէ: Ամմիանը, որ այդ պատերազմներին մասնակից է եղել եւ Ամիդի սաման կոտորածից ազատուած, ոչ միայն այդպիսի բան չի յիշում, այլ, ընդհակառակն, Արշակին անուանում է հռոմայեցիների մշտական եւ հաւատարիմ բարեկամ: Այդ վիպական պատումն այլափոխ յիշողութիւն է անպայման Միջագետքում Վաղարշի որդի Տրդատ Բ.ի ընդդէմ հռոմայեցիների վարած աջող պատերազմների, որ երգուել է Արշակի վրայ:*

*Զնայելով Արշակը հաւատարիմ դաշնակից էր հռոմայեցիներին՝ Յուլիանոսի սպանուելուց յետոյ Յոբիանոսը* (363–364 *Թ.*) *Տապուհի հետ հաշտուելիս ընդունում է այն պայմանը, որով հռոմայեցիները հայերին չպիտի օգնէին, երբ պարսիկները յարձակուէին Հայաստանի վրայ: Այսպիսի մի կէտ յիշւում է եւ Վէպի մէջ* (*Բուզ.*, *Դ.* 21): *Եւ պարսիկները* 364 *Թ. սկսում են իրենց յարձակումները Հայաստանի վրայ: Արշակն եւ իր ժողովուրդն, ըստ Ամմիանի, չորս տարի շարունակ հերոսական դիմադրութիւն են ցոյց տալիս իրենցից շատ աւելի մեծ ուժերով եկող պարսիկներին: Այս պատերազմը, որ Վէպի մէջ պատմւում է չափազանց մանրամասնութիւններով, ըստ Վէպի՝ տեւում է «ամս աւելի քան զերեսուն»* (*Դ.* 20)*. «Զերեսուն եւ զչորս ամս եառուն պատերազմ երկիրս Հայոց ընդ Թագաւորին Պարսից»* (*Դ.* 50)*: Վախճանը լինում է երկրի քայքայումն եւ Արշակի կորուստը: Այնուհետեւ վիպւում է, թէ ինչպէս Տապուհը փորձում է Արշակին եւ Անուշ բերդի մէջ բանտարկել տալիս նրան, եւ վերջն Արշակը ինքնասպան է լինում: Ամբողջը վիպական գեղեցիկ պատմուածքներ են: Պարսիկներն աւերում եւ գերեվարութիւն են անում, առնում Արտագերսը եւ գերում ու չարամահ անում Փառանձեմ թագուհուն, յետոյ ինքը Տապուհն էլ գալիս է Հայաստան եւ աւերմունքներ գործում, այլեւ նոյնն անում են Մերուժան Արծրունին եւ Վահան Մամիկոնեանը* (*Բուզ.*, *Դ.* 54–59)*: Այս վիպական պատմուածքն իր հիմքում նոյնն է, ինչ որ ժամանակակից Ամմիանի հաղորդածը: Սրա տակից՝ Տապուհն Արշակի աչքերը հանել է տալիս: Արդեօք այս չէ՞ վէպի մէջ պատմուել Արշակի հայր Տիրանի վրայ:*

8. Պապ թագաւորը:— *Սրա վէպն իր հիմքում պատմական է: Պար-*

սիկների եւ Հռոմի միջեւ պատերազմը տեղի է ունենում 371 թ. գարնանը, եւ պարսիկները պարտւում են։ Իսպէս այս է պատմուած, միայն վիպական ձեւով, եւ կրկին պատմուածքներով (Բուզ., Ե. 1, 2, 4, 5, 8)։ Պատմական է նաեւ Պապի սպանուելը դաւադրութեամբ։ Այս եղեռնագործութիւնը Տրայանոսի, ըստ Բուզանդի՝ Տերենտի ձեռով տեղի է ունեցել 374 թ. աշնանը։ Յաջորդ Թագաւոր Վարազդատի, ինչպէս եւ երկրի կառավարիչ Մանուէլի մասին ոչինչ յայտնի չէ արտաքին աղբիւրներից։ Հաւանօրէն դրանք եւս իրենց հիմքում պատմական են։

9. Պատմական եղելութիւն եւ վիպական բանահիւսութիւն։— Երբ ասւում է, թէ այսինչ վիպական դէպքն իր հիմքում պատմական է, կամ էապէս պատմական է, այդ պէտք չէ հասկանալ այն մտքով, թէ վէպի մէջ հարազատ ճշտութեամբ պահուած է պատմական եղելութիւնը։ Նոյնիսկ պատմական համարուած մասերի մէջ էլ վէպը պատմական է լոկ այն չափով, որ դա հիմնուած է մի կատարուած իրողութեան վրայ։ Յաճախ մի երկու գիծն են միայն իրական եղելութիւնից, մնացածը բանաստեղծական մշակութիւնն է պատահած դէպքերի, վիպասանների մտքի եւ երեւակայութեան արդիւնքը, ոչ միայն վիպական մանրամասնութիւնների, այլեւ գաղափարախօսութեան նկատմամբ։ Վիպասանները յօրինում են ամէն ինչ ժամանակի պահանջի համեմատ։ Չենք կարող ասել, թէ իրապէս պատմական երկեր են անգամ Արշակի եւ Պապի մասին այն պատմուածքները, որոնց պատմական ծագումը հաւաստի է։ Բաւական է միայն այդպիսի մի հատուած համեմատել ժամանակակից Ամմիանի պատմածի հետ, եւ իսկոյն կ'երեւայ տարբերութիւնը եւ հասկանալի կը լինի հատուածի պատմականութիւնը։ Այստեղ կը բերենք մէկը միայն համառօտ բովանդակութեամբ (1)։

Արշակի բռնուելուց յետոյ՝ Շապուհը Կիւղակ ներքինուն եւ Արտաւան զօրավարին պատուիրում է առնել Արտագերսը, ուր ամրացած էր Փառանձեմը Պապի հետ։ Կիւղակն Արտաւանի հետ մօտենում է պարսպին. նրանց, իբրեւ պատգամաւորների, թողնում են ներս մտնել։ Նրանք սկզբում փորձում են վախեցնել Թագուհուն, որպէսզի նա անձնատուր լինի, բայց յետոյ զգացուելով թագուհու վիճակից՝ անցնում են նրա կողմը. եւ ամէն կերպ հաւատարմութեամբ օգնում են թագուհուն եւ Պապին։ Նրանք կոտորել են տալիս պաշարող պարսկական զօրքերը։ Արքայորդի Պապն իր մօր խրատով — բերդից գաղտնի ելնելով փախչում է Վաղէս կայսեր մօտ։ Կիւղակն ու Արտաւանը պատգամաւորներ են ուղարկում Վաղէսի մօտ, խնդրելով, որ նա թագաւորեցնի Պապին եւ օգնական զօրքեր տայ։ Պապը վերադառնում է Հայաստան եւ ենթակայ է լինում Շապուհի հալածանքին։ Կիւղակն ու Արտաւանը Պապի հետ են լինում, մինչեւ սա Շապուհի խորամանկ թելադրանքով սպանել է տալիս նրանց։ Մինչ այդ՝ պարսիկները երկար պաշարումից

(1) Ամմիանոսի հատուածն այդ մասին տես՝ Գարագաշեան, Քնն. Պատմ., Գ., էջ 153–157։

*յետոյ՝ իրենց բոլոր ուժով ընկնում են Արտագերսի վրայ եւ, երկուստեք ճակատամարտերից յետոյ, սպառելով բերդազօրի ուժը՝ առնում են այդ բերդը, եւ Փառանձեմը բերդի բոլոր գանձերով՝ ընկնում է նրանց ձեռքը:*

*Վէպի մէջ գտնում ենք այս բոլորը պատմուած, բայց տարբեր ձեւով եւ վիպական մանրամասնութիւններով (Բուզ. Դ. 55): Պարսից Թագաւորն իր իշխաններից երկուսին՝ մէկի անունը Զիկ, միւսինը Կարէն, հինգ հարիւր բիւր (=հինգ միլիոն) զօրքով ուղարկում է Հայաստանն աւերելու: Փառանձեմն ամրանում է Արտագերսում: Պարսիկներն այդ բերդը պաշարում են տասներեք ամիս: Պապը, հակառակ Ամմիանի պատմածի, հէնց պաշարման սկզբից Արտագերսում չէ:*

Իսկ Պապ, որդին Արշակայ,
Ոչ դիպեցաւ անդ ի Հայոց աշխարհին.
Զի առ թագաւորն Յունաց դիպեցաւ:

**Բուզ., Դ. 55**

*Այսպէս էլ պէտք է լինէր ըստ վէպի, քանի որ վէպի մէջ առաջ պատմուած էր Պապի մասին, թէ նա պատանդ էր տրուած կայսրին:*

Բայց ծնաւ ապա Փառանձեմ
Թագաւորի ուստր մի,
Եւ կոչեցին զանուն նորա Պապ.
Եւ սնուցին զնա, եւ ի չափ հասուցին:
Եւ իբրեւ ջրթափեաց, եւ եղեւ հուժկու,
Ետուն բզնա պանդանդ
Ի դուռն կայսերն յերկիրն Յունաց:

**Բուզ., Դ. 15**

*Կիւղակի եւ Արտաւանի ու նրանց կատարած դերի մասին ոչ մի խօսք: Հանդէս է գալիս Վասակ սպարապետի որդի Մուշեղը, որ ժողովում է «զամենայն ազատագունդ մարդկանն» եւ նրանց հետ գնում է կայսրից խնդրելու, որ Թագաւորեցնի Պապին եւ օգնի իրենց (Բուզ., Դ. 1, Ե. 55): Մինչ բանակցութիւն էին վարում կայսրի հետ, նրանք եւ Պապն ամէն չարաթ դեսպաններ են ուղարկում Փառանձեմին, որ դիմանայ, անձնատուր չլինի պարսիկներին: Բայց պաշարման տասնուչորսերորդ ամսից յետոյ մահտարաժամ է ընկնում բերդնորդների մէջ եւ կոտորւում են բոլորը, մօտ տասնմէկհազար տղամարդ եւ մօտ վեց հազար կանայք: Եւ բերդում մնում է միայն Փառանձեմ տիկինը երկու նաժիշտներով: Այժմ ահա երեւան է գալիս Մարդպետը:*

Ապա եկն եմուտ գաղտն ի ներս ի բերդն
Հայր Մարդպետ ներքինին
Եւ թշնամանեաց զտիկինն մեծապէս իբրեւ զբոզ մի:
Սկսաւ դնել թշնամանս ազգին Արշակունեաց,

Զի վատախորհուրդք են, վատանշանք, կորուսին զաշխարհս եւ․ «Իրաւի անց ընդ ձեզ այդ, եւ այլ զի անցցէ»։
Ել գաղտուկ եւ փախեաւ։

Բուզ․, Դ․ 55

*Այսքանը միայն։ Այնուհետեւ տիկինը տեսնելով, որ ինքը մէն մենակ է մնացել, բերդի դուռը բանում է, պարսիկները բռնում են նրան եւ իջեցնում բերդից։ Ինն օր եւ ինն գիշեր կրում, իջեցնում են Հայոց թագաւորի գանձերը եւ թագուհու հետ քշում դէպի Պարսկաստան։*

*Մի կողմ թողնելով վիպական մանրամասնութիւնները, տեսնում ենք, որ վէպի մէջ Մամիկոնեաններին մեծ դեր է տրուած, Արտագերսի առումը պատմուած է իբրեւ հետեւանք ոչ թէ հայերի պարտութեան, երկուստեք ճակատամարտից յետոյ, այլ աստուածային պատուհասի, եւ այն էլ ի՛նչ մեծ չափազանցումով։ Եւ վերջապէս ուշադրութեան պիտի առնել միայն ներքինի Հայր Մարդպետի գաղտնի կերպով բերդը մտնելն ու թագուհուն թշնամանելը (=անարգել, նախատել)։ Դա մի չափազանց փոխուած յիշողութիւն է Կիւղակի եւ Արտաւանի Արտագերս մտնելուն։*

*Պապն, ինչպէս Ամմիանը պատմում է, Շապուհի խորամանկ թելադրութեամբ սպանել է տալիս իր հաւատարիմ Կիւղակին եւ Արտաւանին։ Այդ երկու սպանութիւնն էլ կայ վէպի մէջ ամենայն վիպական մանրամասնութիւններով։ Պապին, երբ նա արդէն թագաւորում էր, պատմում են Հայր Մարդպետի վերոյիշեալ արարքը, որ նա թշնամանել, այսինքն անարգել, նախատել է թագուհուն։ Նա Մուշեղին հրաման է գրում չարամահ անել Մարդպետին։ Եւ Մուշեղը կատարում է թագաւորի հրամանը։ Նա Մարդպետին դաւով իր մօտ է կանչում, իբր նրան մեծարելու համար․*

Եւ էին աւուրք ձմերայնոյ,
Եւ սաստկացեալ, կցեալ էր գետն Եփրատ։
Ապա կոչեալ եղեւ առ նա Հայր Մարդպետն
Իբրեւ ի պատիւ մեծարանաց․
Եկն եմուտ Մարդպետն ի բերդն յՈղական։
Ետ հրաման զօրավարն Մուշեղ զօրականացն՝
Ունել զնա եւ մերկանալ իբրեւ ի մօրէ,
Եւ կապել զձեռս նորա ի ներքոյ ծնկաց նորա,
Եւ իջուցանել զնա ի գետն,
Եւ դնել ի վերայ սառինն կցելոյ գետոյն․
Եւ սաստկեցաւ անդէն։
Եւ եղեւ ի վաղիւ անդր չոգան, տեսին,
Զի ուղիղ գլխոյն ի ցրտոյն վայրեալ,
Ի բաց իջեալ, թափեալ էր ընդ քիթս նորա,

Բուզ․, Ե․ 3

Նրա տեղը Հայր Մարդպետ է կարգւում Գղակ անունով մէկը: Դա Ամմիանի յիշած Գիւղակ ներքինին է: Գղակին էլ Պապ թագաւորը սպանել է տալիս: Երբ հայ եւ հռոմէական զօրքերը Շապուհին վերջնապէս ջարդում են, Տերենտ եւ Մուշեղ զօրավարները Գղակին երեսուն հազար զօրքով սահմանապահ են թողնում Հայաստանի եւ Պարսկաստանի սահմանի վրայ: Նա կաշառուելով՝ դաւաճանութեամբ խոստանում է Շապուհին նրա ձեռը մատնել Պապ թագաւորին եւ Մուշեղ զօրավարին: Բայց հաւատարիմ նախարարներն այդ իմաց են տալիս թագաւորին: Սա իր մօտ է կանչում Գղակին, նըրան Պարսից թագաւորի մօտ դեսպան ուղարկելու պատրուակով, եւ սպանել տալիս նրան: Սպանութեան մանրամասնութիւնները բերուած են առաջ:

Եւ հատին զգլուխ նորա,
Եւ հանին հարին ի նիզակի.
Եւ կանգնեցին ի հրապարակին արքունի:

Բուզ., Ե. 6

Այս երկու մահապատիժները, որ կատարել է տալիս Պապը, նոյնն են, ինչ որ գտնում ենք Ամմիանի մօտ: Բայց վերջինիս պատմածի եւ Վէպի պատմուածքի մէջ չափազանց մեծ տարբերութիւն կայ, մի կողմ թողած վիպական մոտիւներն ու մանրամասնութիւնները: Ինչի՞ց է առաջանում այդ տարբերութիւնը: — Ամենից առաջ նրանից, որ վիպասանը պատմագիր չէ, այլ բանաստեղծ, ֆէոդալական բանաստեղծ: Նրա նպատակը չէ կատարուած իրողութիւնը ճշտութեամբ վերարտադրել: «Նրա խնդիրն է հարկաւոր ձեւով լուսաբանել պատմութիւնը կամ ստեղծել այնպիսի պատմութիւն, որ բաւարարում է ֆէոդալի պատմական պատկերացումներին»: «Վէպը երգում է այն պատմութեան մասին, որ հարկաւոր է ֆէոդալին», համապատասխան է նրա պահանջներին ու հայեացքներին: Այդ պատճառով նա պատմութիւնից չի առնում ամբողջը, այլ միայն մէկ մասը: Բացի այդ՝ նա պատմութիւնը փոփոխութեան է ենթարկում եւ տալիս է կատարուած իրականութեանն իր ժամանակի պահանջի համեմատ սոցիալական արժեքաւորում, որոշ սոցիալական իմաստ: Կը նշանակի՝ վիպասանը պատմութիւնից ստեղծում է այն, ինչ որ ուզում է ինքը, իր պատուէր տուող իշխանաւորը, ֆէոդալը, իր ունկնդիրը: Պապ թագաւորը դեռ չթագաւորած՝ Շապուհի թելադրանքով սպանել է տալիս իր երկու հաւատարիմ վասալներին: Վիպասանը չէր կարող նրանց մահապատիժը ներկայացնել Ամմիանոսի պատմածի համեմատ, թէ մանուկ թագաւորն իր բարեկամներին ըսպանել է տալիս խաբուելով խորամանկ Շապուհից: Նա այդ սպանութիւնները պատճառաբանում է այլ կերպ: Թագաւորը պատժում է նրանցից մէկին իբրեւ իր մօրն անարգողի, իսկ միւսին՝ իբրեւ մի դաւաճանի: Ուրեմն վիպասանը պատմութիւնն այնպէս է լուսաբանում, որ բաւարարում է իշ-

խողի պահանջներին ու շահերին: Բնականաբար այդ ժամանակ պատմութիւնը նախ՝ ամբողջապէս չի առնում, եւ ապա՝ ըստ վիպասանի լուսաբանութեան, կրում է փոփոխութիւն եւ յագեցւում է վիպական մանրամասներով ու մոտիւներով: Իրական պատմութեան այս փոփութիւնն սկսւում է նոյնիսկ ձայնարկուների եւ գուսանների այն երգերից, որոնք, ինչպէս տեսել ենք, ծագել են կոնկրէտ դէպքերի անմիջական տպաւորութեան տակ:

## ՀԻՆԳԵՐՈՐԴ ՅԱՒԵԼՈՒԱԾ

# ՏԻՄՈԹԷՈՍ ԿՈՒԶԻ «ՀԱԿԱՃԱՌՈՒԹԵԱՆ» ԹԱՐԳՄԱՆՈՒԵԼՈՒ ԺԱՄԱՆԱԿԸ

*Այս խիստ յունաբան թարգմանութեան տարեթիւը որոշելը կարեւոր է յունաբան դպրոցի եւ դաւանաբանական պայքարի գրականութեան սկզբնաւորութեան ժամանակը ճշտելու տեսակէտից, այլեւ Մովսէս Քերթողահօր ապրած ժամանակի, ինչպէս եւ «Գիրք Թղթոց» ժողովածուի մէջ նրա եւ Յովհան Մանդակունու անունով պահուած թղթերի ոչ կեղծ լինելու նկատմամբ: «Հակաճառութեան» մասին գրելիս՝ տեսանք, որ դրա ի լոյս ընծայողներն իրենց առաջաբանի մէջ այդ գրքի հայ թարգմանութեան ժամանակը դնում են 6րդ դարի կէսերին, հիմնուելով Հայոց Զաքարիա կաթողիկոսին Փոտ պատրիարքի (9րդ դարի երկրորդ կէսին) գրած թղթի մի կտորի վրայ, ըստ որի Տիմոթէոսի «Հակաճառութեան» թարգմանութիւնը կատարուել է իբր Ներսէս Բ. (548/549—556/557 թ.) կաթողիկոսի օրով, Դուինի ժողովի ժամանակ: Գ. Տէր-Մկրտչեանն այդ գրքի մէջ յիշուած ամսաթուերի վրայ հիմնուած՝ տոմարական հաշիւներով ցոյց տուաւ, որ «Հակաճառութեան» հայ թարգմանութիւնը կատարուել է 480 փետր. 29 — 484 փետր. 28 քառամեակում (1): Նոյն ժամանակներում Փոտի թղթի այդ կտորի համար աղբիւր համարուեց մի Անանունի* **De rebus Armeniae** *գրութեան մի հատուածը (2), որի մէջ Տիմոթէոսի գրուածքի թարգմանութեան ժամանակը դրւում է 6-րդ դարի կէսերին, Դուինի ժողովի ժամանակ, ուրեմն 554 թ.: Գ. Տէր-Մկրտչեանը երկրորդ անգամ հանդէս գալով՝ պնդեց իր որոշած 480–484 թուականի վրայ, եւ վերջին այդ Անանունի տուած տեղեկութիւնների նկատմամբ առարկեց, թէ «եօթներորդ դարում եւ յետոյ շատ բնական է, որ հակաքաղկեդոնական ամէն գրութիւն պիտի կապէին վեցերորդ դարու երկրորդ կէսում դաւանաբանական վէճերի բռնկման հետ, երբ հայ եկեղեցին պաշտօնապէս բաժանուեց Արեւմուտքից»: Եւ*

(1) «Արարատ» ամսագիր, Վաղարշապատ, 1908, էջ 564—589:

(2) Ն. Ակինեան, Տիմոթէոս Կուզ հայ մատենագրութեան մէջ, Վիեննա, 1909: Նոյնը նաեւ «Հանդէս Ամսօրեայ», 1908:

ինչպէս, հետագայ դարերից եկած այդ արտաքին տեղեկութիւնները չեն կարող վստահելի լինել եւ բնականաբար «Անանունի ցուցումները... անզօր են բուն Տիմոթէոսի Թարգմանութեան մէջ պահուած թուականի դէմ, եթէ այս վերջինում սխալ կամ թիւրիմացութիւն չկայ»:

Ապա նա պարզեց եւ հետեւեալ հանգամանքը: «Գիրք Թղթոց» ժողովածուի մէջ յիշուած Մովսէս Քերթողահայրը, ամենայն հաւանականութեամբ Ղազար Փարպեցու յիշած Մովսէս փիլիսոփան, իր մի թղթի մէջ (որ կայ «Գիրք Թղթոց» ժողովածուի մէջ Սահակ կաթողիկոսի եւ իր թղթակիցների գրութիւններից յետոյ իբրեւ վեցերորդ թուղթ) օգտուել է «Հակաճառութեան» թարգմանութիւնից, իսկ Մովսէսի այդ թղթից, ինչպէս յետոյ երեւաց, նաեւ «Հակաճառութիւնից», օգտուել է Յովհան Մանդակունին իր մի գրութեան մէջ, որ յիշուած ժողովածուի մէջ դրուած է Մովսէսի թղթից յետոյ (1): Դրանով նոյնպէս հաստատուեց, որ 5րդ դարի 80-ական թուականների սկզբին արդէն թարգմանուած է եղել «Հակաճառութիւնը»: Սրա ի լոյս ընծայողներից մէկը, Կարապետ եպ. Տէր-Մկրտչեանը, յետոյ փոխեց իր կարծիքն, ընդունելով 480—484 քառամեակը (2): Հետագայում, պրոֆ., այժմ ակադ. Յակոբ Մանանդեանը, սակայն, որդեգրեց «Հակաճառութեան» ի լոյս ընծայողների Առաջաբանում դրած կարծիքը: Տեսնենք թէ նա ինչպէս է հիմնաւորում այդ (3):

«Որքան եւ ուղիղ է տոմարական այս հաշիւը,— գրում է նա,— սակայն թարգմանութեան այդ թուականը բուն է (ընդգծումները իմն են: Մ. Ա.) կասկածելի ու անհաւանական զանազան տեսակէտներով:

ա. Այդ եզրակացութիւնը հակասում է Փոտի եւ Անանունի դրական ու որոշ վկայութիւններին»: — Տեսնենք:

Կարող ենք ասել, որ Փոտի թղթի մէջ այդ կտորն ամենեւին «դրական ու որոշ», կամ, ինչպէս քիչ վերեւում նա գրում է, «պարզ ու որոշ մի վկայութիւն» չէ: Դա մի մութ կտոր է, եւ Տիմոթէոսի «Հակաճառութեան» ի լոյս ընծայողներն էլ իրենց Առաջաբանի մէջ (էջ XXIV ) այդ համարել են մութ՝ այսպէս գրելով՝ «Իսկ Փոտ պատրիարքի յիշատակութիւնը Տիմոթէոսի գրուածքի թարգմանութեան մասին այնքան մութն է, որ...»: Այդ կտորից բնաւ որոշ կերպով չի երեւում, թէ «Հակաճառութիւնը» թարգմանուած լինի Դուինի ժողովի ժամանակ, այլ այդտեղ ուրիշների հետ եւ Տիմոթէոս Կուզին յիշելուց յետոյ՝ անմիջապէս աւելացրած է թարգմա-

(1) Տես՝ վերեւում յիշուած «Շողակաթ», Վաղ., 1913, էջ 157 եւ հտն.:

(2) «Շողակաթ», էջ 89 եւ հտն.: Աւելի մանրամասն եւ լրացումներով՝ տե՛ս «Կնիք հաւատոյ ընդհանուր սուրբ եկեղեցւոյ...», հրատ. Կարապետ եպիսկոպոսի, Էջմիածին, 1914, Ներածութիւն, էջ LVII եւ հտն.:

(3) Յունաբան դպրոցը եւ նրա զարգացման շրջանները, քննական ուսումնասիրութիւն, գրեց Յակոբ Մանանդեան, պրոֆ. Հայաստանի Պետական Համալսարանի, Վիեննա, 1928, § 38, էջ 95–102:

նութեան մասին. «... եւ զՏիմոթէոս Աղեքսանդրացին, որում Կուզն կոչեն. որ զգրեանս թարգմանեցին ի Հայս՝ որ կոչեն յետին թարգմանիչք»(1)։ Այսպէս կարելի է գրել եւ 6-րդ դարի կէսից շատ տասնեակ տարիներ առաջ կատարուած մի թարգմանութեան համար։ Եւ ո՞վ են այդ «յետին թարգմանիչք» կոչուածները. արդեօք առաջին թարգմանիչներից յետոյ գործող՝ 5-րդ դարի «կրտսե՞ր» կոչուած թարգմանիչները։ Յամենայն դէպս, այդ կտորը մութն է։ Մնում է միայն Անանունը։ Եւ Գ. Տէր-Մկրտչեանն արդէն գրել էր. «Այս բոլորի դէմ ի՞նչ ունենք առարկելու։ Միայն Անանունի [De rebus Armeniae] տեղեկութիւնները (որից առնում է Փոտ)»։ «Անանունի ցուցումները, սակայն, — ինչպէս տեսուեց վերեւում, — անզօր են բուն Տիմոթէոսի թարգմանութեան մէջ պահուած թուականի դէմ», «տոմարական ուղիղ հաշուի» դէմ։

Մի հանգամանք եւս։ Պրոֆ. Յակոբ Մանանդեանի ուշադրութիւնից վրիպել է այն, որ եթէ 480—484 թուականն իրեն «թւում է կասկածելի ու անհաւանական» նրա համար, որ դա «հակասում է Փոտի ու Անանունի [Փոտի աղբիւրն Անանունն է։ Մ. Ա.] «վկայութիւններին», ապաքէն այս վերջին վկայութիւններն էլ (իսկապէս մէկ վկայութիւնը) իրենց կողմից «թւում են կասկածելի» ու անհաւատալի, որովհետեւ հակասում են հէնց «Հակաճառութեան» մէջ պահուած իսկապէս «դրական ու որոշ» թուականին։ — Անցնենք նրա երկրորդ հիմունքին.

Նրան 480–484 թուականը «թւում է կասկածելի ու անհաւանական», որովհետեւ դա

«բ. հիմնովին յեղաշրջում է հայ եկեղեցու կրօնա-դաւանաբանական պատմութեան վերաբերեալ ժամանակագրութիւնը, որ արդիւնք է բանասիրական նորագոյն ուսումնասիրութիւնների»։

Դա օբեկտիւ պատճառաբանութիւն չէ։ Դա նշանակում է, թէ որովհետեւ ակադ. Մանանդեանը չի ցանկանում իր ուզած «ժամանակագրութեան» յեղաշրջումը, ուստի նրան 480—484 թուականը «թւում է կասկածելի ու անհաւանական»։ Գիտական խնդիրների համար այդպէս չպիտի մըտածել, այլ միայն օբեկտիւ իրականութիւնը պէտք է որոնել, թէկուզ ընդունուած «ժամանակագրութիւնը» խախտուի։ Թէ ի՛նչ «կրօնա-դաւանաբանական պատմութեան վերաբերեալ ժամանակագրութիւն» է յեղաշրջւում, եւ ի՛նչ «նորագոյն ուսումնասիրութիւններ» են, այդ մասին եւ ոչ մի ակնարկ։ Որքան յայտնի է, այդ 480—484 թուականով յեղաշրջւում է քաղկեդոնականների, — լինեն սրանք այլազգի թէ հայազգի, — ոչ թէ «նորագոյն», այլ այն հին մաշուած հաղորդումը, թէ հայերը մինչեւ Դուինի ժողովը, Ներսէս Բ., եղել են քաղկեդոնական, երկաբնակ։ Այսպէս հէնց Փոտ պատրիարքն իր վերեւում յիշուած թղթի մէջ գրում է. «Եւ հայք վտանգեալք ի հինից պարսից, ոչ զօրեցին եւ պարապեցան գալ ի ժողովն. վասն այնորիկ չեհաս

---

(1) Ցիտատն այստեղ բերւում է «Հակաճառութեան» թարգմանութեան «Յառաջաբանից» էջ XVII։

պատճառ ժողովոյն ի Հայք հաւատեաւ. բայց հակառակութիւն ինչ վասն ժողովոյն [Քաղկեդոնի] ոչ գոյր, այլ ամենեքեան ընդունէին զժողովն [Քաղկեդոնի] մինչեւ ի ժողովն Դվնայ» (1)։ Դա հին քաղկեդոնականների տեսակէտն է, որ պատմագիր Մ. Չամչեանի եւ առհասարակ Մխիթարեան վարդապետների ազդեցութեամբ ընդհանրացած է եղել մի ժամանակ։ Նրանց հարկաւոր էր դաւանաբանական վէճերի ժամանակ ասել, թէ իրենք են պահել հայկական հին դաւանանքը, եւ ոչ թէ Հայոց եկեղեցին։ Նորագոյն հետազօտութիւններն, ընդհակառակն, ցոյց են տալիս, որ օտարների այդ տեսակէտը սխալ է. Հայոց կաթողիկոսները, նոյնիսկ 5-րդ դարից սկսած, երկաբնակութեան հակառակ դիրք են բռնել, եւ Հայոց եկեղեցու դաւանութիւնը եղել է առաջին երեք տիեզերական ժողովներինը։

Անցնենք նրա երրորդ հիմքին։

«գ. Այդ Թարգմանութեան եւ ոչ մի հետք չէ յաջողւում գտնել կրօնա-դաւանաբանական հայ գրուածքներում եօթներորդ դարի երկրորդ կէսից առաջ»։

Այսպիսի առարկութիւն չպիտի մէջ բերուէր, որովհետեւ եթէ դա որեւէ արժէք ունի 480—484 թուականների թարգմանութեան հաւաստի կամ անհաւաստի լինելու նկատմամբ, ապա նոյնպիսի արժէք պիտի ունենար նաեւ 554 թուականին կատարուած թարգմանութեան համար։ Դարձեալ՝ տարօրինակ է երեւակայել, թէ հին հայ «կրօնա-դաւանաբանական» գրականութեան մէջ ամէն տեղեկութիւն կամ «հետք» պիտի յաջողուի գտնել, այն էլ ուզած ժամանակին, այս կամ այն գրքի կամ դրա թարգմանութեան ժամանակի մասին, իսկ եթէ մէկին կամ միւսին այդ չի յաջողուել մի գրքի մասին, ուրեմն այդ գիրքը կամ դրա թարգմանութիւնը գրքի մէջ յիշուած թուականին չի եղել։ Այսպէս դատելով ինչե՞ր չի կարելի ասել եւ հեշտութեամբ մերժել։ Եւ վերջապէս՝ չէ՞ որ Տիմոթէոսի Հակաճառութեան «հետքը» գտնուած է 5-րդ դարի հեղինակներ Մովսէս Քերթողահօր եւ Յովհան Մանդակունու թղթերի մէջ։

Նա իր երրորդ «տեսակէտից» յետոյ անմիջապէս գրում է.

«Ինձ թւում է, որ բոլոր այս հակասութիւններն ու առարկութիւնները հեշտութեամբ վերանում են Դիոսկորոսի մահուան հայ ամսաթուի մի շատ պարզ ու ընդունելի սրբագրութեամբ»։ Ի՞նչ է այդ «սրբագրութիւնը»։ — Ձեռագիրների մէջ է «Թովթ Ե. սեպտեմբեր Բ. հոռի Զ.» (2)։

---

(1) Տիմոթէոս Կուզի Հակաճառութիւն, էջ XVII ։ Այստեղից եմ բերում ցիտատը, փակագծերի մէջ, պարզութեան համար, աւելացնելով «Քաղկեդոնի» բառը։

(2) Այս ամսաթուերը յայտնի են չորս տարբեր աղբիւրներից, որոնց մասին կարեւոր չէ այստեղ խօսել։ (Մանրամասները՝ «Շողակաթ», էջ 156)։ Դրանց չորսի մէջ էլ է՝ սեպտեմբեր Բ, հոռի Զ։ Չորսից մէկի մէջ կայ նաեւ Թովթ Ե, այսինքն Թովթ 5, որ համապատասխան է սեպտեմբեր 2ին. մինչդեռ երեքի մէջ է՝ «թուղթ է-րդ» (եւթներորդ)։ Սա աղճատուած է Ե եւ Է տառերի շփոթութեամբ, որ շատ սովորական է ձեռագիրների մէջ։ Թէ այստեղ Ե տառի այդպիսի աղճատման հետ գործ ունենք, այդ շատ պարզ երեւում է նրանից, որ նախորդ երեք բառն էլ աղճատուած են, «յաւսորիցն, ուր գարշաւանն

Նա «սրբագրում» է այսպէս՝ Թուղթ է, սեպտեմբեր Դ, Հոռի ԻԶ, այսինքն՝ 5-ը դարձնում է 7, 2-ը դարձնում է 4, եւ 6-ը դարձնում է 26 եւ աւելացնում. «Այս դէպքում՝ Թուղթ է = սեպտեմբեր Դ = Հոռի ԻԶ զուգաւորութեան հանդէպ կ՚ունենանք 552—556 թուականները»: Այդ նշանակում է, որ նա ձեռագիրների մէջ եղած ամսաթուերը փոխում է այնպէս, որ իր ցանկացած տարեթիւը դուրս գայ: Բայց այդպիսի կամայական փոփոխութիւններով, եթէ ցանկացուի, շատ ու շատ ուրիշ տարեթուեր էլ կարելի է հանել, եւ նա ինքն յետոյ ուրիշ թուականներ էլ է հանում:

Մի անգամ որ ձեռագրական ցուցումներն այս են՝ «Թուղթ Ե. սեպտեմբեր Բ. Հոռի Զ», կարելի չի, առանց գիտական հիմնաւորման, լոկ «ինձ թւում է» բառերով այնպիսի «սրբագրութիւններ» անել, իսկապէս փոփոխութիւնների ենթարկել ձեռագիրների ունեցած երեք ամսաթուերը, ինչ է թէ ուզած 552—556 քառամեակը հանուի: Ինչպէս երեւում է, նա ինքն էլ այդ մտածել է. ուստի քիչ յետոյ՝ այլեւս չդիպչելով «Թուղթ Ե. սեպտեմբեր Բ.» ամսաթուերին՝ երկրորդ անգամ նա փոխում է միայն «Հոռի Զ.» ամսաթիւը եւ գրում է. «Իսկ Թուղթ Ե = սեպտեմբեր Բ = Հոռի ԻԶ զուգաւորութեան հանդէպ,480—484 քառամեակի փոխարէն, կ՚ունենանք 560—564 թուականները»: Եւ ապա շարունակում է. «Ուրեմն՝ առաջարկած սրբագրութեամբ Տիմոթէոսի Հակաճառութեան հայերէն թարգմանութեան ժամանակը որոշւում է 552—564 թուականների ժամանակամիջոցում՝ միանգամայն համապատասխան Փոտ պատրիարքի եւ Անանունի վերոյիշեալ վկայութիւններին»: Տեսնենք: Նախ՝ նա չի նկատում, որ երկրորդ անգամ հանած իր 560—564 տարեթուերով բոլորովին ոչնչացնում է ստուգութիւնն Անանունի (որից եւ Փոտի) հաղորդած տեղեկութեան, ըստ որի, — ինչպէս հասկացել են ուրիշները եւ ինքը ակադ. Մանանդեանը,— Հակաճառութիւնը պիտի թարգմանուած լինի իբր Դուինի ժողովի ժամանակ, ուրեմն 554 թ., Ներսէս Բ. կաթողիկոսի օրով, որովհետեւ եթէ Հակաճառութիւնը կարող է թարգմանուած լինել 560—564 քառամեակի ժամանակամիջոցում (երբ Ներսէս Բ. կաթողիկոսն արդէն վախճանուած էր), կը նշանակէ ստոյգ չէ Փոտի հաղորդումը, թէ թարգմանուած է 554 թ.: Կամ մէկ քառամեակը (552—556 պիտի լինի, կամ միւսը (560-564). չի կարող միաժամանակ եւ այս լինել եւ այն: Եւ այդ բաւական չէ, նա միացնում է այդ երկու քառամեակի տարեթիւերը, հետները լրելեայն միացնում է նաեւ դրանց միջի քառամեակը 556—560, եւ ստանում է 552—564 թուականները: Ուրեմն 12 տարիների

[=զընթացսն] կատարեաց ի Քրիստոս Թովք Ե» դարձել է «յԱսորիս ուր զաշակերտսն կատարեաց ի Քրիստոս Թուղթ է-րդ» (մէկի մէջ՝ յեբսորաց, ուր զընթացսն... եւթներորդ): Արտագրողն իր աչքի առաջ ունեցել է մաշուած կամ կիսատ ջնջուած չորս բառեր եւ չի կարողացել ճշտութեամբ վերականգնել: Այս շատ պարզ է ամէնքի համար, որ բազմաթիւ հայկական ձեռագիրների հետ գործ են ունեցել: Կը նշանակի՝ «Թուղթ է» գրութիւնն էլ սկզբնապէս եղել է «Թովք Ե», ինչպէս է՛ մէկի մէջ:

մի միջոց, իբր «միանգամայն համապատասխան Փոտի... վկայութեանը»: Բայց Փոտը մէկ շատ որոշ տարեթիւ, 554 թուականն է յայտնել Դուինի ժողովի համար, բիւզանդական կայսրների եւ Պարսից թագաւորի տարիների հաշիւներով, սկսած Քաղկեդոնի ժողովից (1), եւ ոչ թէ ամբողջ երեք քառամեակ:

Ապա՝ նա (ակադ. Մանանդեան) կարծում է, թէ իր իբր «ընդունելի սրբագրութեամբ», ինչպէս երկու տեսակ «սրբագրութիւններով», «բոլոր հակասութիւններն ու տարակուսութիւնները հեշտութեամբ վերանում են»: Ամենեւին ո՛չ: Նա չի նկատում, որ Հակաճառութեան տուած ամսաթուերով, թէկուզ «սրբագրած» ձեւով, միայն մէկ քառամեակ կարելի է հանել, եւ ոչ թէ միաժամանակ երեք միացեալ քառամեակ՝ 552—564 թ.:

Ապա դարձեալ, որ զարմանալին է, այսպիսի ձեւերով եւ «ինձ թւում է», «թւում է», «կարծում եմ» բառերով ասած խօսքերից յետոյ, արդէն առանց «թւում է», «կարծում եմ» բառերի, նա յայտարարում է, թէ Տիմոթէոսի Հակաճառութեան «թարգմանութեան ժամանակը ճշտւում է: Ստացւում է ժամանակագրական հաստատուն մի թիւ, որի վրայ յենուելով՝ կարելի է լուսաբանել յունաբան դպրոցի վերաբերեալ մի շարք ուրիշ խնդիրներ»: Դա տրամաբանական կոպիտ սխալ է: Ճիշտ եւ հաստատուն եզրակացութեան համար ճիշտ եւ հաստատուն նախադրեալներ պէտք էր ունենալ եւ ոչ թէ «թւում է», «կարծում եմ» բառերով ասած բաներ եւ վերոյիշեալ եղանակներով հանած թուականներ:

Եւ այդքանը բաւական չէ, նա իր այդ իբր «ճշդուած», իբր «հաստատուն» թուականների վրայ հիմնուելով՝ մերժում է Քերթողահայր Մովսէսի, ինչպէս եւ Յովհան Մանդակունու գրութիւնների վաւերականութիւնը, այսպէս դատելով. «Տիմոթէոսի Հակաճառութիւնը թարգմանուած է... 552—564 թուականների ժամանակամիջոցում: Պարզ է ուրեմն, որ... Մովսէս Քերթողահօր եւ Յովհաննու եպիսկոպոսապետի թղթերը, եթէ նրանք օգտուել են Հակաճառութեան թարգմանութիւնից, չեն կարող 'ա տարուել ոչ հինգերորդ դար, ոչ էլ անգամ վեցերորդ դարի կէսը»: Այս նշանակում է չապացուցուածով, չապացուցուած թուականով, մերժել ի– ականութիւնը: «Այդպիսի պատմական յիշատակարանների վաւերականութիւնն ու անվաւերականութիւնը մեր ճաշակով կամ մեր կազմած տեսութիւններով չի որոշւում, այլ միայն պատմական տուեալներով»: Իսկ պատմական ստոյգ տուեալն այն է, որ Հակաճառութիւնն, ըստ իր մէջ պահուած ամսաթուերի, թարգմանուել է սեպտեմբեր 2-ին, հոռի 6-ին, որ է 480—484 թուականների միջոցին, քաղկեդոնական վէճերի ամենասուր բորբոքման ժամանակ, ինչ որ մենք արդէն տեսել ենք իր տեղում:

---

(1) Փոտի տուած ցուցումներով՝ Դուինի երկրորդ ժողովը տեղի է ունեցել 554 թուականին: Տես՝ Տիմոթ. Կուզի Հակաճառութեան Առաջաբանը, էջ XVII:

ՎԵՑԵՐՈՐԴ ՑԱՒԵԼՈՒԱԾ

# ՔԵՐԴՈՂԱՀԱՅՐ ՄՈՎՍԷՍ ԽՈՐԵՆԱՑԻ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ ԹՂԹԻ ՎԱՒԵՐԱԿԱՆՈՒԹԻՒՆԸ

*Վերջերս պրոֆ. Ստ. Մալխասեանցը մի նոր տեսութիւն քարոզեց Մովսէս Խորենացու մասին. մեր այս հռչակաւոր պատմագիրն իբր «եղել է քաղկեդոնական (երկաբնակ)» (1): «Գիրք Թղթոց» ժողովածուի մէջ եղած գրութիւնը Մովսէս Քերդողահօր՝ ուղղուած է ընդդէմ երկաբնակութեան. քանի որ Խորենացին եղել է երկաբնակ, հետեւաբար այդ թուղթը, գրութիւնը, կեղծ է, — այսպէս է մտածում Ստ. Մալխասեանցը. կամ թէ՝ որպէսզի Խորենացին քաղկեդոնական լինի, այդ թուղթը պիտի կեղծ լինի: Ապացոյց դրա կեղծութեան նա բերում է այս. «Այդ ճառն ընդհանրապէս ճանաչուած էր կեղծիք»: «Նրա կեղծութիւնն ընդունում են Օրմանեանը, Ակինեանը եւ Յ. Մանանդեանը: Վերջինս նրա գրութեան ժամանակը որոշում է 6–րդ դարի վերջերում կամ 7–րդ դարի սկիզբներում»(2): Տեսնենք: Յ. Մանանդեանի կարծիքները եւ սրանց գնահատութիւնը մենք տեսանք վերեւում: Եթէ այս նոր տեսութեան հեղինակը, Ստ. Մալխասեանցը, կէտ առ կէտ հետեւած չլինէր Յ. Մանանդեանի պատճառաբանութիւններին, նա, պէտք է կարծել, Մանանդեանի գրածի մասին կ՚արտայայտուէր նոյնպէս, ինչպէս նրա, Մանանդեանի, մի ուրիշ կարծիքի համար նա գրել է. «Տրամաբանօրէն սխալ է ապացուցելին ընդունել իբրեւ ապացոյց՝ մի ուրիշ բան ապացուցելու համար» (3): Ապա եթէ նա մտադրուած չլինէր Մ. Խորենացուն անպատճառ քաղկեդոնական դարձնել, նա չէր բաւականանալ փակագծերի մէջ միայն գրելով՝ «Թուղթը վաւերական են համարել, իբրեւ Մովսէս Խորենացու գործը 5–րդ դարում՝ Գալուստ Տէր–Մկրտչեանը (Միաբան) եւ Կարապետ եպիսկոպոսը», եւ ցոյց տալով դարձեալ Յ. Մանանդեանի գրքի էջը, նա այսպէս չէր գրի՝ «Որ այս թուղթը կեղծ է՝ յայտնի է նրանից, որ պարունակում է մի հատուած ի յատուկ բառեր ու դարձուածքներ Տիմոթէոս Կուզի Հակաճառութեան հայերէն թարգմանութիւնից»: Այլ նա կը բերէր Գ. Տ.–Մկրտչեանի ապացոյցը, որ յիշուած թարգմանութիւնը կատարուած է 480—484 թուականների մէջ, ուրեմն եւ Քերդողահայր Մովսէսը կարող էր օգտուել դրանից: Բայց այդ չի արել նա, պրոֆ. Ստ. Մալխասեանցը, որովհետեւ նրան հարկաւոր էր, որ Քերդողահայր Մովսէսի յիշեալ գրութիւնը կեղծ լինի, ապա թէ ոչ՝ այդ Մովսէսը երկաբնակ չէր դուրս գալ: Այդ անելու փոխանակ՝ նա կոչում է անում Օրմանեանին եւ Ակինեանին: Վերջինիս գրածի վերնագիրն եւ էջը չի յիշել նա եւ ես ձեռի*

---

(1) Ստ. Մալխասեանց, Խորենացու առեղծուածի շուրջը, Երեւան, 1940, էջ 130 եւ հտն.:

(2) Անդ, էջ 105, 143:

(3) Անդ, էջ 66:

տակ չունեմ Ակինեանի ասածը․ իսկ Օրմանեանը գրում է (1)․ «Գիրք Թղթոցին մէջ ճառ մը կայ՝ Երանելի մեծի Քերթողահօրն Մովսէսի Խորենացի եպիսկոպոսի, որուն մէջ երկու բնութեան բացատրութիւնը կը հերքուի (Թղթ․ 22), իբրեւ առանց Քաղկեդոնի յիշատակութեան, սակայն հաւանականագոյն է յետին ժամանակներու մէջ տարբեր Մովսէսի մը գործ կարծել»: Այսքան միայն, լոկ խօսքով, ապացոյց եւ ոչ մի բան:

Ստ․ Մալխասեանցի երկրորդ կարծեցեալ ապացոյցը հետեւեալն է: Նա գրում է․ «9-րդ դարում մի վրացի հեղինակ, նրանց նշանաւոր Արսէն Սափարեցի կաթողիկոսը, պատմելով այն մասին, թէ Կոմիտաս կաթողիկոսը, Յովհան Մայրագոմեցու հետ ինչ միջոցներով էին կռւում Քաղկեդոնի ժողովի կողմնակիցների դէմ՝ ի միջի այլոց ասում է (2)․ [Կոմիտասը] «Մեկնաբանեց (3) հերձուածողական գրութիւններն Տիմոթէոս Աղեքսանդրացւոյ, որ Կուզ կոչուեց, եւ Պետրոս Թափիչինը, որը Գայլ կոչուեց, եւ Սեւերոսի եւ այլ հերձուածողների, եւ [այս գրութիւնները] մակագրեց [այնպէս], իբրեւ թէ ուղղափառ վարդապետների՝ սուրբ Սահակի ու Մովսէսի ճառերն են, եւ այսպիսի կեղծիքով հաւատացրեց ամբողջ երկիրն Հայոց»: Արսէն կաթողիկոսի գրածն ըստ բերուած թարգմանութեան ուրիշ կերպ կարելի չէ հասկանալ, բայց եթէ Կոմիտասը Տիմոթէոսի եւ միւսների «հերձուածողական գրութիւնները» «մեկնաբանելով», այսինքն մեկնելով, մակագրել է, այսինքն վերնագիր դնելով վերագրել է Սահակին ու Մովսէսին: Բայց պրոֆ․ Ստ․ Մալխասեանցն այնպէս կ բերում այդ ցիտատի բովանդակութիւնը, իբր թէ Արսէն կաթողիկոսն ասած լինէր, «թէ Կոմիտաս կաթողիկոսը կեղծեց հերձուածողական (այսինքն հակաքաղկեդոնական) գրուածքներ ու վերագրեց ուղղափառ վարդապետների, սուրբ Սահակին ու Մովսէսին, իբր թէ սրանք են գրել» (4): Ապա՝ նա առանց որեւէ հիմքի, լոկ խօսքով, յայտարարում ու կրկնում է, թէ Արսէն կաթողիկոսի յիշածը, Մովսէսին վերագրածը, «Գիրք Թղթոց» ժողովածուի մէջ տպուած Քերթողահայր Մովսէսի Թուղթն է (5): Ապա դարձեալ՝ նա չուտ տալով ասում է, թէ այդ Թուղթն իբր «Կոմիտաս կաթողիկոսն եւ Յովհան Մայրագոմեցին յօրինել են երկաբնակների դէմ եւ վերագրել Մովսէս Խորենացուն» (6): Այսպէս՝ Ստ․ Մալխասեանցը կարելի է համարել ասել նաեւ, թէ կարեւոր են համարել «կեղծ ճառ յօրինել հայ ժողովրդին խաբելու համար»: Նա ազատ է գրելու նաեւ, թէ կեղծողներն այդ արել են «եր-

---

(1) Ազգապատում, գրեց Մաղաքիա արքեպիսկոպոս Օրմանեան, Կոստանդնուպոլիս, 1912, էջ 501, $ 338:

(2) Խոր․ առեղծուածի շուրջը, էջ 104 եւ հտ․: Ցիտատի համար յիշուած է «Մելիքսեթ-Բեկ, Վրաց աղբիւրները Հայաստանի եւ հայերի մասին», էջ 73–74:

(3) Երեւի ուզում է ասել «մեկնեց»:

(4) Անդ, էջ 142:

(5) Անդ, էջ 105, 142 եւ այլն:

(6) Անդ, էջ 142:

կու նպատակով: Նախ՝ Մովսէսի վրայից «երկաբնակութեան... արատը վերացնել... եւ երկրորդ՝ նրա բարձր հեղինակութեամբ, նրա անունը կրող կեղծ թղթով կռուել երկաբնակների դէմ: Նրանք հաշւում էին, որ Մովսէսի մահից յետոյ, 120—130 տարուայ ընթացքում, հազիւ մնացած լինի յիշողութիւն նրա քաղկեդոնականութեան մասին» (1): — Կոմիտաս կաթողիկոսն եւ Յովհան Մայրագոմեցին կենդանի չեն, որ այդ բաներն ասողին դատարան քաշ տան: Իսկ մենք միայն իրաւունք ունենք հարցնելու՝ ո՞րտեղից է նա իմացել այդ բոլոր բաները:

Կոմիտասը Կաթողիկոս է եղել 615—628 թ.: Նա ապրել եւ գործել է, ուրեմն, 6-րդ դարի երկրորդ կէսին եւ 7-րդ դարի առաջին քառորդին, Քերդողահայր Մովսէսի մահից շուրջ մի դար յետոյ: Նոյնպէս եւ նրա ժամանակակից Յովհան Մայրագոմեցին: Այդ ի՞նչպէս կարողացան նրանք կեղծիք անել եւ «հաւատացնել ամբողջ երկիրն Հայոց», «հայ ժողովրդին խաբել», այնպէս, որ իր ժամանակակիցները, գոնէ Մայրագոմեցու հակառակորդները, չիմացան, իսկ 9-րդ դարում մի վրացի կաթողիկոս իմացաւ այդ: Բայց չշարունակենք:

9-րդ դարում վրացի կաթողիկոսը կարող էր չիմանալ, բայց պրոֆ. Ստ. Մալխասեանցը գիտէր, որ Քերդողահայր Մովսէսի Թուղթը «մեկնաբանութիւն» չէ ոչ Տիմոթէոս Կուզի եւ ոչ ուրիշ ոքի գրուածքի: Ապա, Արսէն կաթողիկոսը կարող էր չիմանալ, բայց պրոֆ. Ստ. Մալխասեանցը գիտէր, որ Տիմոթէոս Կուզի անունը չէին կարող ջնջել 7-րդ դարում, նրա Հակաճառութեան հայերէն թարգմանութիւնը հէնց իրեն հեղինակի, Տիմոթէոսի անունով է յայտնի եղել եւ մնացել մինչեւ մեր օրերը: Ապա՝ դարձեալ՝ Արսէն կաթողիկոսը կարող էր չիմանալ, բայց պրոֆ. Ստ. Մալխասեանցը գիտէր, որ եղել է եւ մինչեւ մեր օրերը մնացել է «Կնիք Հաւատոյ» կոչուած գիրքը, դաւանաբանութեան կարեւոր կտորների մի ընդարձակ ժողովածու, «յաւուր Կոմիտաս կաթողիկոսի հաւաքեալ» (հաւաքողի համար ենթադրում են, թէ Յովհան Մայրագոմեցին է եղել), որի մէջ կան վկայութիւններ, բերուած նաեւ Տիմոթէոս Կուզից եւ հէնց սրա անունով: Այս հանգամանքները ցոյց են տալիս, որ Տիմոթէոս Կուզի անունը փոխելու հիմք չկար, դրանք բաւական են ցոյց տալու համար նաեւ այն, որ Արսէն կաթողիկոսը վայրիվերոյ ծանօթութիւն ունէր իր գրածի մասին: Բայց մենք չշարունակենք:

Ստ. Մալխասեանցն երկրորդ անգամ էլ (2) խօսում է վրաց Արսէն կաթողիկոսի հաղորդածի մասին, այսպէս գրելով. «Եթէ մի քաղկեդոնական կաթողիկոս ուղղափառ վարդապետ (ընդգծումը հեղինակինն է: — Մ. Ա.) է կոչում Մովսէս Խորենացուն... պարզ է, որ նա Մովսէսին եւս ճանաչում է իրեն նման, այսինքն քաղկեդոնական (ընդգծումն իմն է: — Մ. Ա.): Ոչ մի կասկած չկայ, որ այս վկայութիւնը ճիշտ է»: — Նախ՝ նկա—

---

(1) Անդ, էջ 142 եւ հտ.:

(2) Անդ, էջ 142 եւ հտ.:

տեմ, որ Արսէն կաթողիկոսն «ուղղափառ վարդապետների» մէջ դնում է եւ Սահակին, գրելով՝ «իբրեւ թէ ուղղափառ վարդապետների՝ Սուրբ Սահակի եւ Մովսէսի ճառերն են»: Եւ ինքը պրոֆ. Մալխասեանցն էլ քիչ առաջ, մի երեք տող վերեւում, գրում է, թէ Կոմիտասը «վերադրեց ուղղափառ վարդապետների, Սուրբ Սահակին եւ Մովսէսին»: Որ այդպէս է, ինչո՞ւ նա մի երեք տող ներքեւում հանում է Սահակի անունը եւ չի գրում. «Եթէ մի քաղկեդոնական կաթողիկոս ուղղափառ վարդապետներ է կոչում Սահակին եւ Մովսէս Խորենացուն... պարզ է, որ նա Սահակին ու Մովսէսին եւս ճանաչում է իրեն նման, այսինքն՝ քաղկեդոնական»: Ինչո՞ւ է նա հանում Սահակի անունը: Շատ պարզ է, թէ ինչո՛ւ: Եթէ հայկական անցեալի մասին վայրիվերոյ ծանօթութիւն ունեցող մի վրացի կաթողիկոս 9-րդ դարում չէր կարող իմանալ, որ Հայոց Սահակ կաթողիկոսը վախճանուել է 439 թուականին, Քաղկեդոնի ժողովից տասներկու տարի առաջ եւ կարող էր նրան քաղկեդոնական դարձնել, Ստ. Մալխասեանցն այդ լաւ գիտէր եւ չէր կարող Սահակ կաթողիկոսին քաղկեդոնական համարել: Ուստի նա հանել է Սահակի անունը: Այս կէտը միայն, որ Արսէն կաթողիկոսն իրեն նման «ուղղափառ», այսինքն քաղկեդոնական է համարում Սահակ կաթողիկոսին, ա՛յդ միայն ցոյց է տալիս, որ նրա վկայութիւնը ստոյգ չէ: Բայց այս եւ նախորդ կէտերը ցոյց են տալիս նաեւ, որ ուղիղ չէ պրոֆ. Ստ. Մալխասեանցի բանեցրած մեթոդն իր տեսութիւնն ապացուցելու համար: Բերենք եւ հետեւեալը:

Նա մի ուրիշ տեղ (1) բերում է մեր նշանաւոր հեղինակ Յովհան Օձնեցու Մովսէսի մասին մի կտոր. «Զերկոսին զնոսա ասեմ սուրբս՝ զՍահակ եւ զՄաշտոց, եւ զամենեսին զընտրեալսն զորբանեակս նոցուն եւ զգործակիցս, զԵղնիկ եւ զայլսն, եւ կամ որ ըստ նոցանէ եւ ոչ հեռի ի նոցանէ զմեծն իմաստասիրաց եւ զհռչակեալն ընդ տիեզերս զտէր Մովսէս, որք էին միանգամայն արուեստաւորք, թարգմանիչք եւ ուղղափառք»: Մէջ բերելով այս կտորը՝ նա այսպէս շարունակում է. «Ուրեմն Յովհան Օձնեցի կաթողիկոսը (վախճանուած 727-ին) ամենամեծ գովեստներով յիշատակում է մեծ իմաստասէր, հռչակաւոր Մովսէսին, ժամանակով ոչ հեռու Սահակից, Մեսրոպից, Եղնիկից (ընդգծումն իրենն է: — Մ. Ա.), իբրեւ արուեստաւոր (քերթողական արուեստի հմուտ) եւ թարգմանիչ»: Ինչո՞ւ Ստ. Մալխասեանցն այստեղ էլ, իր բացատրութեան մէջ, դուրս է թողել «ուղղափառ» բառը: Եթէ նա հաւատում է Յովհան Օձնեցու մի քանի վկայութիւններին եւ դրանց մի մասը նոյնիսկ ընդգծում է, ինչո՞ւ չի ընդունում եւ դուրս է թողնում նրա գրած վերջին «ուղղափառ» բառը, որով Մովսէս Խորենացին երեւան է գալիս ոչ իբրեւ քաղկեդոնական: Այդ ձեռնտու չէր նրա տեսութեան համար... Այդ մասում նա չի հաւատում նաեւ 7-րդ դարի երկրորդ կէսին եւ 8-րդ դարի առաջին քառորդին ապրած Յովհան Օձնեցուն: Բայց դրա փոխանակ նա առանց տատանուելու գրում է. «Ոչ մի

(1) Անդ, էջ 106:

կասկած չկայ, որ այս վկայութիւնը [այն, որ Արսէն կաթողիկոսը Մովսէսին ճանաչում է քաղկեդոնական: Մ. Ա.] ճիշտ է. անկարելի է ենթադրել, որ [քաղկեդոնական: Մ. Ա.] Արսէն կաթողիկոսը մի չարափառ (հակաքաղկեդոնական) վարդապետի [=Մ. Խորենացու: Մ. Ա.] կեղծելով ուղղափառ [=քաղկեդոնական: Մ. Ա.] դարձնէր»: Այո՛, «անկարելի է ենթադրել...», «կեղծելու» եւ «խաբելու» շնորհքը տրուած է եղել միայն հայերին. քաղկեդոնականները զուրկ են եղել այդ շնորհքից... Բայց այդ Արսէն կաթողիկոսը ս. Սահակին էլ քաղկեդոնական է դարձրել...:

Կարո՞ղ էր արդեօք Արսէն կաթողիկոսը կամ նրա աղբիւրը քաղկեդոնական իմանալ Մովսէսին:— Անշուշտ, բայց ոչ յատկապէս միայն Մովսէսին: Մենք վերեւում (հինգերորդ Յաւելուած) արդէն տեսանք, որ քաղկեդոնականները բոլոր հայերին քաղկեդոնական են համարում մինչեւ 554 թ., Դուինի ժողովը: Բիզանդիայի Փոտ պատրիարքը նոյն 9-րդ դարում (857 թուից նա պատրիարք է) նոյնիսկ գրում է, թէ հայերն «ամենեքեան ընդունէին զժողովն [Քաղկեդոնի] մինչեւ ի ժողովն Դվնայ»: Բայց քաղկեդոնականների այս խօսքերը դեռ ապացոյց չեն, թէ 554 թ. Դուինի ժողովում հայերն ուրացել են իրենց հայրենի դաւանութիւնը եւ ետ կանգնել Քաղկեդոնից: Այս մասին կը տեսնենք յետոյ:

Այսպէս՝ Ստ. Մալխասեանցն առանց որեւէ ապացոյցի, ուրիշների եւ իր լոկ խօսքերով յայտարարում է, թէ Քերդողահայր Մովսէսի յիշեալ Թուղթը կեղծ է: Ոչ մի կերպ այդ չի ապացուցուած: Լոկ խօսք է եւ նրա գրածը, թէ այդ Թուղթը «լեզուով ու ոճով բոլորովին օտար է Խորենացու լեզուին ու ոճին», ուզում է, երեւի, ասել՝ Խորենացու Հայոց Պատմութեան լեզուին ու ոճին: Ամենեւին «օտար» չէ: Հայոց Պատմութիւնը գրուած է աւելի հարազատ հայերէնով, որովհետեւ դրա յօրինման ձեւը, նիւթն ու նպատակը բոլորովին տարբեր են Թղթի ձեւից, նպատակից ու նիւթից: Սա պատմութիւն չէ, այլ դաւանաբանական-փիլիսոփայական մի գրուածք, բնականաբար եւ բառերով ու ձեւով, ոճով պիտի տարբեր լինէր Պատմութիւնից, եւ աւելի եւս յունաբան պիտի լինէր, ինչպէս են այդպիսի բովանդակութիւն ունեցող գրուածքները: Բայց, ինչպէս յայտնի է, Մովսէս Խորենացին Հայոց Պատմութեան մէջ էլ մէկ մէկ գործածում է յունաբանութիւններ: Եթէ սրանք հաւաքենք եւ իրար ետեւից շարենք, կը տեսնենք, որ Թղթի լեզուն ու ոճը աւելի յունաբան չէ, քան Պատմութեան մէջ գործածածները:

Մի անգամ որ Մովսէս Քերդողահօր յիշուած Թղթի կեղծութիւնը չի ապացուցուած, այդ Թղթով հաստատւում է նրա ոչ քաղկեդոնական լինելը, քանի որ դա իր բովանդակութեամբ ուղղուած է երկաբնակութեան դէմ: Մնաց մեզ տեսնել, թէ արդեօք Ստ. Մալխասեանցն ապացուցե՞լ է ուրիշ փաստերով մեր Մովսէս Քերդողահօր քաղկեդոնականութիւնը:

## ԵՕԹՆԵՐՈՐԴ ՅԱՒԵԼՈՒԱԾ

# ՀԱՅՈՑ ԵԿԵՂԵՑՈՒ ԴԻՐՔԸ ՔԱՂԿԵԴՈՆԱԿԱՆՈՒԹԵԱՆ ՎԵՐԱԲԵՐՄԱՄԲ 5ՐԴ ԴԱՐԸ ԵՐԿՐՈՐԴ ԿԷՍԻՆ

1· «Հայոց աշխարհի աղանդ», մծղնէութիւն եւ ուրիշ աղանդներ:— *Մեր հռչակաւոր պատմագիր Խորենացին քաղկեդոնական եղած լինի, թէ ոչ՝ այդ այժմեան ժամանակում ոչ մի նշանակութիւն չունի: Միայն որ նրան քաղկեդոնական է յայտարարել ոչ աննշան մէկը, այլ պրոֆ. Ստ. Մալխասեանցը, դրանով, ցաւօք, նոր առասպել է ստեղծւում մեր Պատմահօր եւ առհասարակ մեր գրականութեան պատմութեան մասին: Այդ նորանշան տեսութեամբ առանց որեւէ ապացոյցի գլխիվայր շուռ է տրւում 5-րդ դարի թարգմանիչների եւ նրանց հակառակորդների յարաբերութեան հիմքը: Ուստի մենք ստիպուած ենք զբաղուել այդ խնդրով:*

*Նրա ելակէտն են Խորենացու Ողբի հետեւեալ կտորները, որ նա ընդգծում է.* «Վրդովեցաւ ուղղափառութիւն, կայկայեցաւ տգիտութեամբ չարափառութիւն». «այժմ մարտք ի ներքուստ... եւ մարտք ի հերձուածողաց». «*ո՞վ կարկեսցէ զյանդգնութիւն* ընդդէմ առողջ վարդապետութեան հակառակ յարուցելոցն». ...«սանձահարէր զլեզուս օտարաձայնս». «*եւ ոչ* զլեզուս չարս *եւ* զտգիտութիւնս... սանձահարեցէք»:— *Նախ՝ ասեմ, որ մասամբ ճիշտ չի բերուած Խորենացու բնագիրը, որի մէջ է.* «*Վրդովեցաւ* խաղաղութիւն, արմատացաւ անկարգութիւն. դրդուեցաւ *ուղղափառութիւն, կայկայեցաւ տգիտութեամբ չարափառութիւն*»:

*Մ. Խորենացին, բնականաբար, իրեն ուղղափառ է համարել եւ ոչ թէ չարափառ, հերձուածող: Ուրեմն եթէ պարզուի, թէ ովքե՛ր են եղել ուղղափառներն ու չարափառները, հերձուածողները, կ'որոշուի եւ Խորենացու դաւանութիւնը: Այսպէս է մտածում հեղինակը, եւ իբր պարզում է այդ, բայց ոչ թէ պատմական տուեալներով, այլ արդումենտացիայով: Նրա սկզբնական դրոյթներն են.*

1· «*5-րդ դարի երկրորդ կիսում ամբողջ քրիստոնեայ աշխարհն զբաղուած էր քաղկեդոնական վէճերով,* — ուրիշ աղանդների յիշատակութիւն չկայ: *Եւ Հայաստանում էլ այս ժամանակները չէ յիշւում որեւէ այլ աղանդ, որ կարողանար* սասանեցնել երկիրը, *վրդովէր ուղղափառութիւնը, հիմնաւորուէր երկրում եւ* պատերազմէր *ուղղափառների դէմ*»:

2· «*Ուրիշ կերպ անկարելի է հասկանալ վերոյիշեալ խօսքերը* [*Խորենացու: — Մ. Ա.*], *քան եթէ վերագրելով քաղկեդոնական—հակաքաղկեդոնական պայքարին*»: «*Ոչ մի կասկած չէ կարող լինել, որ այստեղ խօսքը վերաբերում է* միայն *քաղկեդոնական վէճերին, քաղկեդոնականներին ու հակաքաղկեդոնականներին*»:

*Նախ՝ նկատեմ, որ Մ. Խորենացու մէջ բերուած այդ խօսքերից կարելի չէ եզրակացնել, թէ Հայաստանում որեւէ աղանդի կողմից իրօք «պատերազմել են» ուղղափառների դէմ եւ «սասանեցրել երկիրը»: Բառերն ունեն իրենց նշանակութիւնը:*

Ապա՝ հակապատմական է ասել, թէ «ուրիշ աղանդների յիշատակութիւն չկայ», եւ երբ «Հայաստանում էլ այդ ժամանակները չի յիշւում որեւէ այլ աղանդ»: Ուրիշ երկիրները թողնենք, առնենք միայն մեր աշխարհի աղանդները, որոնք գոյութիւն են ունեցել եւ ուրիշների մէջ:

Մեր գրականութիւնը դրերի գիւտից յետոյ՝ իր սկզբի շրջանում, ինչպէս տեսանք, գործնական բնաւորութիւն ունի: Եզնիկն իր «ընդդիմակների» մէջ երրորդ տեղում դնում է քրիստոնէական աղանդաւորներին եւ մանրամասնօրէն հերքում է Մարկիոնի աղանդը, նրա հետ մէկ մէկ դնելով եւ ուրիշներին. «Մարկիոնն եւ Մանի եւ Մծղնեայք», «Մարկիոնի եւ Մանեայ եւ այլոցն նոյնպիսեաց» եւ այլն: Ես այստեղ չպիտի խօսեմ այն մասին, թէ ո՛ւր եւ ի՛նչ մեծ դեր են խաղացել երկար ժամանակ Մարկիոնին եւ Մանի աղանդները (մանիքէութիւնը). միայն այսքանը պիտի չեշտեմ, որ եթէ Հայաստանում վտանգաւոր չլինէին այդ աղանդները եւ «կրօնք փիլիսոփայից» ուղղափառութեան համար, ինչպէս եւ պարսից կրօնը քրիստոնէութեան համար, ապա Եզնիկը դրանք չէր հերքիլ: Կար եւ նեստորականութիւնը: Միամիտ պիտի լինել կարծելու համար, թէ Հայաստանն ազատ է եղել այդ աղանդից, որ տարածուած է եղել Արեւելքում եւ հովանաւորուել պարսկական կառավարութեան կողմից: Դեռ Սահակի եւ Մաշտոցի օրով, ինչպէս պատմում է Կորիւնը, Հայաստան մուտք են գործել նեստորականութեան սկզբնահօր՝ Նեստորի ուսուցիչ Թէոդորոս Մոպսուեստացու դրուածքները:

Մի փոքր աւելի խօսենք այստեղ Եզնիկի յիշած «մծղնեայք» անունով աղանդաւորների մասին: Դրանք Մեսալեաններ (=աղօթողներ) կոչուած սորական աղանդաւորներն են, որոնք 5-րդ դարում մուտք են գործել Հայաստան եւ շատ վտանգաւոր են եղել ուղղափառութեան համար: Շահապիվանի եկեղեցական ժողովը, որ կայացել է «միաբանութեամբ աւագաց Հայոց եւթներորդ ամի վախճանելոյն ս. Սահակայ», շուրջ 446/447 թուին, ուրեմն Մ. Խորենացու օրով, Սահակի եւ Մաշտոցի աշակերտ Յովսէփի նախագահութեամբ, առանձնապէս զբաղուել է եւ մծղնեաներով: Ժողովի կանոնների նախաբանի մէջ կարդում ենք. «Բազմանային, որք յաճախէին ի գործն պղծութեան... եւ տարածէր օր ըստ օրէ եւ լինէր յաճախումն մծղնէից եւ այլոց չարեաց... յաշխարհիս Հայոց» (1): Կանոնները վերաբերում են մեծ մասամբ պղծութեան կամ պոռնկութեան, շնութեան, կնահաններին եւ այլն:

Տեսնենք՝ ինչպէս են բնորոշւում կանոնների մէջ այդ աղանդաւորները: ԺԴ. կանոնը պատուիրում է. «Եպիսկոպոս ոք կամ երէց կամ սարկաւագ կամ ով եւ իցէ ոք ի պաշտօնէից կամ յուխտէ, տանուիկին զոք մի՛ իշխեսցէ ունել, որպէս սովորութիւն է մծղնէից. ապա թէ ոք ունիցի եւ վկայութեամբ յայտնեսցին, ի կարգէն յորում եւ իցէ՝ մերժեսցի ի բաց եւ համարեալ եղիցի որպէս ամբարիշտ եւ որպէս մաքսաւոր, զի սուրբ խորհուրդըն տէրունական զանարգս ընդունի, զի արատաւորք ի ձեռս անարատից փրկեսցին»: — Մծղնեայ հոգեւորականներն, ուրեմն, սովորութիւն են ու-

(1) Կանոնագիրք Հայոց, խմբեց Արսէն Ղլտճեան, Թիֆլիս, 1913, էջ 59 եւ հտն.:

նեցել «տանուտիկին» անունով սիրականներ պահել: Այդ համարւում է ամբարշտութիւն, արատաւորութիւն: Սահակ կաթողիկոսի օրով երկու «ընդդիմափառ» աթոռակալների՝ Բրքիշոյ եւ Շամուէլ ասորիների համար նոյնը պատմում է Մ. Խորենացին (Գ. 64, 66), Բրքիշոն իր հետ բերել է «եւ կանայս տնկալուչս», ապրել է «անժուժաբար» եւ այլն:

Մծղնէութիւնը հաւասար է դասւում պղծութեան, պղծագործութեան հետ: Այսպէս, օրինակ, Ի. կանոնի մէջ մի քանի անգամ խօսւում է պղծութեան մասին. վերջին հատուածի մէջ ասւում է. «Ապա եթէ յոստիկանի տան գտցի պղծութիւն կամ ինքն եւ ընտանիքն, որպէս ասացաք, զընտանիս կշտամբեսցեն ըստ օրինի պատուհասի զոր եդաք. ապա եթէ ինքն եւս ընդ ընտանիսն ի մծղնէութեան գտցի, կալցեն միաբան պղծագործ ընտանեօք հանդերձ եւ ի հրապարակ անցեն», եւ այլն: Այդ «ըստ օրինի պատուհասը» որոշուած է ԺԹ. կանոնի մէջ. «Եթէ ոք ի մծղնէութեան գտցի կամ երէց կամ սարկաւագ կամ աբեղայ, քահանայութիւնն լուծցի, աղուէսդրոշմ ի ճակատն դիցի եւ ի տեղիս ճգնաւորաց յապաշխարութիւն տացեն: Ապա եթէ դարձեալ ի նմին գտցի, զջիղսն երկոսին կտրեսցեն եւ ի գաղենոց տացեն... գոյն պատուհաս եւ աբեղային: Ապա եթէ արք կանամբք եւ որդւովք գտցին յաղանդին, զարանց եւ զկանանց եւ զիրագէտ մանկանց զջիղսն կտրեսցեն, աղուէսդրոշմ ի ճակատն դիցեն եւ ի գողենոց տարցին յապաշխարութիւն. եւ մանկունք, որք չիցեն գիտացեալ զպղծութիւնն, կալցին եւ տարցին ի ձեռս սուրբ պաշտօնէից Աստուծոյ, որք սնուսցեն եւ ուսուսցեն զնոսա ի հաւատս ճշմարիտս եւ յերկիւղ տեառն»:

Այս մծղնեայ=մեսալեան կոչուած աղանդի ծագման եւ ուսմունքի մասին որոշ ծանօթութիւններ չկան. դրա հետեւողը «ճգնութիւնից հրաժարւում էր եւ անխտիր հաղորդակցութիւն էր պահանջում տղամարդոց եւ կանանց մէջ»: Ինչպէս ընդունում են, այս միեւնոյնն է եղել Հայաստանի «բարբարիանոս», իսկապէս «բորբորիանոս (=տղմասէր, աղտոտ) աղանդը, որին պատկանողներին Մաշտոցը, Թէոդոս կայսրի հրամանով հալածել է: Կորիւնն այդ աղանդաւորներին անուանում է «ժանտագործ», որ նշանակում է «պոռնիկ», ինչպէս որ պոռնիկ Ռահաբին եւս նա ժանտագործ է անուանում(1):

Եփեսոսի տիեզերական ժողովն արդէն նզովել է մծղնեայ աղանդաւորներին, եւ երբ Շահապիվանի ժողովն այնպիսի խիստ պատուհասներ է սահմանում մծղնեաների համար, — լինին սրանք հոգեւորական թէ աշխարհական, ռամիկ թէ ազնուական, — այդ ցոյց է տալիս, որ այդ աղանդը տարածուած է եղել Հայաստանում, նոյնիսկ ամբողջ ընտանիքներով յարած են եղել այդ աղանդին: «Ընդհանրապէս այս պատիժների խստութիւնից երեւում է, որ աղանդի տարածումը մեծ երկիւղ էր ազդում, եւ այն հանգամանքը, որ նրա հետեւողների թւում տղամարդոց եւ կանանց հետ յիշւում են նաեւ մանուկներ, որ պատիժներ են սահմանւում նրան յարող իշխանների, նախարարների, ոստիկանների եւ նրանց ընտանիքի համար՝ պարզ նշան

(1) Կորիւն, Վարք Մաշտոցի, Երեւան, 1941, էջ 26, 66 եւ հտն.:

է, թէ որչափ ընդարձակութիւն է տուել նա» (1)։

Շահապիվանի ժողովի սահմանած խիստ պատիժներով այդ աղանդը չէր կարող վերջանալ եւ չի վերջացել։ Յովհան Իմաստասէր Օձնեցին իր «Ընդդէմ Պաւղիկեանց» ճառի (2) մէջ գրում է. «Նախկին մծղնէութեան պայղակենութեան խեչերանք, որք խրատեալք, եւ ոչ իմաստնացեալք, ի Ներսիսէ կաթուղիկոսէ [երեւի՝ Ներսէս Գ-ն է։ — Մ. Ա.] ,զկնի նորուն մահուանն խուսեալք չողան զօղեցին յոլորտս ուրեք աշխարհիս մերոյ։ Եւ ի նոսա հաստուածեալք եկին յարեցան կշտամբեալքն ի կաթողիկոսացն Աղուանից պատկերամարտք ոմանք. զի սիրէ առ համանմանիսն իւր հասանել վրիպեալն ի ճշմարտութենէն»։ Յիշուած «պատկերամարտերն» առաջ են եկել 7-րդ դարում. հետեւաբար մծղնէութիւնը Հայաստանում եղել է մինչեւ այդ ժամանակները։ Իսկ 5-րդ դարում, Վարդանանց պատերազմից յետոյ, Հայոց աշխարհի ներքին քաղաքական եւ կրօնական չփոթ վիճակը նպաստաւոր է եղել դրա համար։ Ղազար Փարպեցուն, ինչպէս նրա Թղթից իմանում ենք, մեղադրել են, թէ «Ղազար սաէ, թէ պոռնկութիւն մեղք չեն. գոյն եւ մարզպանին ասդրէ»։ Ապա դարձեալ ասում են, թէ Ղազարն «աղանդաւոր է»։ Աղանդի անունը չի տալիս նա, այլ գրում է. «Որ եւ զանուն անգամ աղանդոյն, որով բամբասէին յանդգնեալքն՝ կարի յոյժ համարիմ աղտեղի՝ նշանակել գրով։ Այլ նկատումն հայհոյանացն զնոցունց իսկ գյառաջագրելոցն բերէ զնմանս, — բերեւս եւ չնչինս համարել զպոռնկացելոցն զգործս»։ Քիչ յետոյ Ղազարը գրում է. «Իսկ Հայոց աշխարհի աղանդ զոր ասեն՝ անանուն է ըստ վարդապետի եւ անգիր ըստ բանի։ Ի հաւատոյ եւ յուսմանէ տգէտք երեւին, եւ ի գործս ծոյլք եւ անժոյժք. յորոց, ըստ անգիտութեանն, որ է ի նոսա, եւ անկարգ ըստ վարուց՝ այդպիսի իսկ արդարեւ աղանդոց վայել էր բուսանել, ըստ յօղուածոյ առասպելաբանութեանն, թէ՝ Ըստ խոզի հարսնացելոյ՝ կոյաջուր բաղանիք»։ — Շատ պարզ է, որ այդ «Հայոց աշխարհի աղանդը» պոռնկութիւնը մեղք չի համարել, եւ խօսքը մծղնէութեան մասին է։ Մեսալեանների աղանդի մասին եւս յայտնի է, որ դա «որոշ աղանդապետի անուն չի կրում, ինչպէս արիոսականութիւնը, նեստորականութիւնը եւ այլ քրիստոնէական աղանդներ. չունի իր որոշ վարդապետութիւնը եւ այդ վարդապետութիւնը պարունակող գրուածքներ» (3)։ Այսպէս եւ «Հայոց աշխարհի աղանդն» ըստ Փարպեցու։

Շահապիվանի ժողովի «ԺԹ. կանոնն ուրիշ ծանր պատիժների շարքում սահմանում է հասարակաց մծղնէների ոտքի ջղերը կտրել եւ դռնեդուռ տանել, իսկ այսպէս պատժելու պատճառն այն էր հաւանօրէն, որ մծղնէները, կրօնական ոգեւորութիւն առաջ բերելու համար՝ դերվիշների, հին սեմական նաբիների, կամ այժմեան ռուս պրիգունների նման մոլեկան պարեր

---

(1) Կարապետ ծ. վարդապետ [Տէր-Մկրտչեան], Հայոց եկեղեցու պատմութիւն, Մասն Ա., Վաղարշապատ, 1908, էջ 133—136։

(2) Յովհաննու Իմաստասիրի Աւձնեցւոյ մատենագրութիւնք, Վենետիկ, 1833, էջ 39։

(3) Կարապետ ծ. վ. [Տէր-Մկրտչեան] Հայոց եկեղեցու պատմութիւն, Մասն Ա., Վաղարշապատ, 1908, էջ 133։

էին պարում» (1)։ Որ Յովհան Օձնեցին մծղնէութեան համար, ինչպէս վերեւում տեսանք, իբրեւ համանիշ գործածում է «պայղակենութիւն» բառը, դրանից պէտք է եզրակացնել, թերեւս, որ մծղնեաներն իրենց աղօթքներն ու այդպիսի պարերը կատարելուց յետոյ՝ մութը տեղերում կոյրզկուրայն խառնակւում էին պոռնկութեամբ, ինչպէս վարւում էին որոշ աղանդաւորներ։ Հայկազնեան լեզուի Առձեռն Բառարանի մէջ ըստ երեւոյթին ճիշտ բացատրուած է այդ «պայղակենութիւն» բառը՝ իբրեւ «գէշ աղանդ՝ մթութիւն սիրող, կուրութիւն» (2)։ Ահա «Հայոց աշխարհի աղանդը», վերջին նկարագիրը վերապահութեամբ առած։

Թողնենք Հայաստանում եղած միւս աղանդները, Խորենացու համար «Հայոց աշխարհի աղանդը», Եփեսոսի տիեզերական ժողովում նզովուած մծղնէութիւնը, որ այդպէս շատ տարածուած է եղել, անշուշտ չարափառութիւն է եղել։ Երբ նա գրում է. «արմատացեալ անկարգութիւն... կայկայեցաւ տգիտութեամբ չարափառութիւն», մի՞թէ աւելի բան է ասում, քան ինչ որ Փարպեցին գրել է այդ չարափառ աղանդի հետեւողների համար՝ անուանելով նրանց «յուսմանէ տգէտք» եւ «անկարգ ըստ վարուց»։ Իսկ թէ ի՛նչ է ուղղափառութիւնը Փարպեցու եւ Խորենացու համար, մենք այդ քիչ յետոյ կը տեսնենք։

Այսպէս ուրեմն, Հայաստանում եղել են աղանդներ 5-րդ դարի երկրորդ կէսին։ Պրոֆ. Մալխասեանցը, սակայն, այդ աղանդներն անգիտացել է, որպէսզի մնան միայն քաղկեդոնականներ եւ հակաքաղկեդոնականներ, եւ ապա ինքը հակաքաղկեդոնականներին չարափառ դարձնի, իսկ քաղկեդոնականներին՝ ուղղափառ։ Բայց մի անգամ որ նրա հիմնական սկզբնական դրոյթը, ինչպէս տեսանք, հակապատմական սխալ է, ապա սխալ է եւ նրա բանավարութեան շարունակութիւնն ու վերջնական եզրակացութիւնը, որ նա հանում է մի քանի նոյնպիսի դրոյթներով եւ հակատրամաբան դատողութեամբ։

2. Անընդունելի կարծիքներ եւ անհիմն դատողութիւններ։ — Պրոֆ. Մալխասեանցի հիմնական դրոյթի հակապատմական սխալ լինելը ցոյց տալուց յետոյ՝ այլեւս իսկապէս կարիք չկար նրա յօդուածի միւս կէտերի վրայ կանգ առնելու։ Բայց եւ այնպէս տեսնենք դրանցից մի քանիսը։ Ես սկըզբում, իմ սովորութեամբ, մանրամասնօրէն վերլուծել էի նրա կարծիքները,

(1) Անդ, էջ 135։

(2) «Պայղակենութիւն» բառը կազմուած է «պայղակ» բնից ծագող «պայղակ-եան» բառից. իսկ «պայղակ», որից «պայղակումն», նշանակում է՝ «լուսէն վնասուիլը, կուրանալը» (Առձեռն Բառ.), կամ «աչքի մթնելը, շլացում, կուրութիւն» (Աճառ. Արմատական Բառ.)։ «Պայղակեան» անունը, հաւանօրէն, մծղնեաների անկարգ վարքից առնուած մի ժողովրդական կոչում է։ Ընդունելի չէ Աճառեանի Արմատական Բառարանի բացատրութիւնը, թէ «պայղակենութիւն» բառը «վատ մտքով յառաջացուած է Պաւղիկեան աղանդներին «պաւղիկեան» բառի հետ յարմար նմանաձայնութիւն կազմելու պատճառով»։ Այս բառը գործածել է Յովհան իմաստասէր Օձնեցին, արդարեւ «Ընդդէմ Պաւղիկեանց» ճառի մէջ, բայց ոչ սըրանց համար, այլ մծղնէութեան։

*բայց կը բերեմ կարճառօտ: Նախ՝ ոչ մի կերպ չի հիմնաւորուած, օրինակ, նրա խօսքը, թէ Հայաստանում վաղուց մրցում էին ասորական եւ յունական* «կրօնական *հոսանքներ», թէ* «կրօնական հողի վրայ» *մրցութիւն է եղել այդ երկու հոսանքների միջեւ: Ապա՝ սխալ է կեանքն անշարժացած տեսնել եւ ենթադրել թէ մի նոր երրորդ հոսանք չէր կարող առաջ եկած լինել եւ քաղկեդոնականութեան կամ հակաքաղկեդոնականութեան յարած, ուստի եւ միայն այդ երկու, ասորական եւ յունական հոսանքների միջեւ պիտի մըղուէր պայքարը քաղկեդոնականութեան շուրջը, եւ դրանցից մէկը դառնար քաղկեդոնական, միւսը՝ հակաքաղկեդոնական: Դարձեալ՝ ոչ մի բանի վրայ չեն հիմնաւորուած, — բայց եթէ չարունակ կրկնած «անկասկած», «վիճելի կարող չէ լինել» եւ նման ձեւերի վրայ, — նաեւ նրա հետեւեալ դրոյթները.*

«Կասկածից դուրս է, *որ ասորական հոսանքը հակաքաղկեդոնական էր:*

*«Ուրեմն քաղկեդոնիկ պէտք է լինէր յունական հոսանքը, որի գլխաւոր գործիչներից մէկը, գուցէ պարագլուխն էր ինքը՝ Խորենացին:*

*«Սրանից հետեւում է, որ Խորենացին ուղղափառ կոչում է իր դաւանութիւնը, այսինքն՝ քաղկեդոնականութիւնը, որի դէմ կռուողներին, ասորական հոսանքին պատկանող հակաքաղկեդոնականներին կոչում է հերձուածողներ, իսկ նրանց «դաւանութիւնը՝ չարափառութիւն»:* «Այլապէս չի կարող լինել», «հակառակ մեկնութիւն տալը··· անկարելի է», «չի կարելի այլ մեկնութիւն տալ»:

*Դիցուք («դիցուք» եմ ասում) թէկուզ ճիշտ լինէին նրա այդ բոլոր ասածները եւ այն, թէ «քաղկեդոնիկ պէտք է լինէր յունական հոսանքը», բայց մի՞թէ դրանից տրամաբանօրէն կարելի է եզրակացնել, թէ Խորենացին քաղկեդոնական է եղել: Այդպիսի եզրակացութեան համար պէտք էր այսպիսի մի նախադրեալ ունենալ՝ «յունական հոսանքին պատկանող բոլոր անհատներն, առանց բացառութեան, քաղկեդոնական են եղել», եւ նո՛ր ասել, թէ Խորենացին պատկանել է յունական հոսանքին, ապա ուրեմն նա էլ քաղկեդոնիկ է եղել եւ «ուղղափառ կոչում է իր դաւանութիւնը, այսինքն քաղկեդոնականութիւնը», եւ այլն: Ինչքան էլ նա՝ Մալխասեանցը իբրեւ հիմնաւորում տայ, թէ «քաղկեդոնականութեան ամրոցը Բիզանդիայում էր գտնւում», բայց եւ այնպէս նա չի կարող պնդել, թէ Յունաստանում ուսած մեր թարգմանիչները, որոնք «ընդհանուր անունով կոչւում էին թարգմանիչ, քերթող», ամէնքն անհրաժեշտօրէն պէտք է ազդուէին իրենց ծանօթներից եւ քաղկեդոնական դառնային: Ղ. Փարպեցին օրինակ, որ Յունաստանում է ուսել եւ յունասէր է, ինչպէս յետոյ կը տեսնենք, քաղկեդոնիկ չէ: Բիզանդական պետութեան մէջ, այլեւ Բիզանդիոն քաղաքում, կային նաեւ բազմաթիւ հակաքաղկեդոնականներ, որոնք մի ժամանակ մինչեւ անգամ դերիշխող են եղել: Մովսէս Խորենացու համար նոյնիսկ կարելի չէ այդպիսի ազդեցութեան մասին խօսել, քանի որ նա յունական ուսումն առել է Քաղկեդոնի ժողովից առաջ, այն էլ ոչ թէ Բիզանդիոնում, այլ Ալեքսանդրիայում, որ հակաքաղկեդոնականութեան «ամրոցն» էր:*

*Հուսկ ապա՝ նա մի այսպիսի փաստարկում էլ է դնում. «Վերջապէս*

Խորենացու «մարտք ի հերձուածողաց» խօսքը կարող է վերաբերել միայն հակաքաղկեդոնականներին, որոնք հերձուած կազմեցին, այսինքն անջատուեցին ընդհանուր քրիստոնէական եկեղեցուց, մերժելով ընդունել տիեզերական ժողովի սահմանած դաւանաբանութիւնը»: — Նա չի նկատում, որ այդ դրութեամբ ինքը կանգնում է հետագայ դարերի քաղկեդոնականների տեսակէտի վրայ, եւ անգիտանում է, որ Խորենացու ժամանակ, Քաղկեդոնի ժողովից յետոյ երեք տասնամեակի ընթացքում Արեւելեան հռոմէական կայսրութեան մէջ քաղկեդոնականութիւնն իբրեւ գերակշռող, այն էլ ոչ միշտ, կենտրոնացած էր միայն Բիզանդիոնում եւ Թրակիայում. ամբողջ Արեւելքն ու Եգիպտոսը եւ Լիբիան հակաքաղկեդոնական էին: Այդ երկու կողմերը վիճում ու կռւում էին, եւ հակաքաղկեդոնականները հէնց, որոնք կանգնած էին առաջին երեք տիեզերական ժողովների վրայ, իրենց համարում էին ուղղափառ, իսկ քաղկեդոնականութիւնը համարում էին հերձուած ընդհանուր եկեղեցուց, եւ քաղկեդոնականներին՝ հերձուածող: Ինչո՞ւ, ուրեմն, Ալեքսանդրիայում ուսած Խորենացին չէր կարող իրեն ուղղափառ ճանաչել եւ հերձուած ընդունել քաղկեդոնականութիւնը, իսկ հերձուածող համարել քաղկեդոնականներին, եւ «մարտք ի հերձուածողաց» ասելով, հասկանալ նաեւ քաղկեդոնականների յարուցած կռիւները:

Չմոռանանք եւ հետեւեալը: Նա գրում է, թէ Մ. Խորենացին իբրեւ քաղկեդոնական է հալածանքի ենթարկուել «հակաքաղկեդոնիկ ասորական խմբի կողմից»: Իբրեւ դրա ապացոյց բերում է նա Ղ. Փարպեցու հետեւեալ կտորը. «Երանելի փիլիսոփոսն Մովսէս... ո՞չ ապաքէն ի տեղւոջէ ի տեղի աբեղեանց [ընդգծումները Ստ. Մալխասեանցինն են: Մ. Ա.] Հայոց հալածական արարին. ո՞չ զլուսաւորիչն եւ զողխտահալած գրեանն նորա առ անգիտութեան փաքաղ-իկէս կոչէին»: Այս կտորից նա հետեւցնում է, թէ «Խորենացուն հալածող հոգեւորականներին նա [=Փարպեցին] խմբական անունով կոչում է աբեղայական խումբ, ասորերէն աբեղայ բառով. ուրիշ դէպքերում նա [=Փարպեցին] գործ է ածում «կրօնաւոր», «պարեգօտաւոր» բառերը: Ստոյգ չէ նրա, Ստ. Մալխասեանցի ասածը: Նախ՝ նա շատ լաւ գիտէ, որ Փարպեցու գործածած «աբեղեան» բառը նշանակում է՝ աբեղաներ եւ ոչ թէ «աբեղայական խումբ»: Ապա՝ «աբեղայ» (ինչպէս եւ «քահանայ») ասորական ծագում ունեցող բառից կարելի չէ եզրակացնել, թէ այդ «կը գործածէին ասորի աբեղաները կամ նրանց յարած հայերը», իսկ ուրիշները՝ «կրօնաւոր», «պարեգօտաւոր» բառերը: Փարպեցին «պարեգօտաւոր» եւ «աբեղայ» բառերն անխտիր գործածում է իրար փոխանակ: Այսպէս, օրինակ, նա գրում է, թէ «Պարեգօտաւորները» լսելով, որ մէկը գովում է իրեն՝ Փարպեցուն՝ ասում են. «Վասն գիտութեանդ որ ասէքդ՝ արդարեւ յառաջնում քաջ համեղս ասէր եւ զօրաւորս, բայց ապա յարդի ժամս բնաւ վատ ասէր» (էջ 431). «Ի նախնումն գիտնաբար խօսէր Ղազար եւ այժմ անգիտաբար» (էջ 434): Եւ այդ է Փարպեցու մեղադրական կէտերից մէկը: Իսկ նոյն այդ «պարեգօտաւորների» համար Փարպեցին քիչ յետոյ գրում է՝ «Հայոց աբեղէնքս» (էջ 432): Յետոյ էլ (էջ 438) նա հալածանք հանողներին կոչում է պարեգօտաւորներ՝ «տեսեալ պարեգօտաւորաց...»:

*Փարպեցու գրածից բնաւ կարելի չէ եզրակացնել եւ այն, թէ փիլիսոփոս Մովսէսը քաղկեդոնական դաւանանքի համար է հալածուած եղել։ «Փաթաղ-իկէս» բառով, — որի նշանակութիւնը՝ «աղճատուած, աղաւաղուած, թիւր», կարծում եմ, դեռ ստուգելի է, — ծաղրուած են Մովսէսի գրուածքները ոչ թէ դրանց դաւանական բովանդակութեան համար, այլ յունաբան աղճատ, աղաւաղ լեզուի եւ փիլիսոփայական, քերականական, քերթողական բովանդակութեան, քերականական ու քերթողական* արուեստի *համար, որից բան չէին կարող հասկանալ տգէտ աբեղաները։ Դրա համար եւ նա դոչում է. «Ո՞վ այսուհետեւ զմերս յարգեսցէ* զուսումն... *ո՞վ կարկեսցէ զյանդգնութիւն ընդդէմ առողջ վարդապետութեան [=ուսման։ Մ. Ա.] հակառակ յարուցելոցն, որք... առ ամենայն բան նմանապէս դժուարին, եւ չար օրինակ անձանց գրեն զայն՝ զծիծաղելն զմեօք եւ զարհամարհելն իբրեւ զանհատատանովք, եւ որ ոչ ինչ պիտանացու ունիցի* արուեստ»*։ Դրանք «ուսումնատեաց բարք» ունեցող տգէտներն են։ Այդպէս է եղել միշտ, տգէտները միշտ ծաղրել են լուսաւորութիւն բերող գիտուններին, եւ նոյնիսկ հալածանքի ենթարկել։ Խորենացու ժամանակ տգիտութեան վրայ աւելացել է եւ պարսկական օրէնսացեան ընդդէմ յունասէրների եւ աւելի եւս յունաբանների։*

*Եւ վերջապէս՝ պրոֆ. Մալխասեանցը ստեղծագործում է. իբր «Խորենացին գրել է... հակաքաղկեդոնականների տգիտութիւնը... հալածող գրուածքներ... բայց այս տգիտահալած գրուածքները, որոնց մէջ ջատագովուած է եղել քաղկեդոնական դաւանաբանութիւնը, մեր ձեռքը չեն հասել։ Հայոց եկեղեցին յաջորդ դարերում խնամքով ոչնչացրել է... քաղկեդոնական ոգով գրուածքները»։ Սրանից էլ աւելի մեծ երազական թռի՛չք մտքի երիվարի։ Եւ այդ միակը չէ, բայց այստեղ այլեւս կարեւոր չէ երկարել նրա այդպիսի տողերի մասին։ Միայն այս ասենք, որ նա առանց որեւէ հիման այս էլ է գրում. «Գիւտ կաթողիկոսն ինքն էլ... Քաղկեդոնի բանաձեւին համակրող, դոնէ համբերատար էր»։ «Ինչո՞ւ չէին կարող 5-րդ դարում քաղկեդոնիկ լինել Գիւտ կաթողիկոսը, Խորենացին, Փարպեցին եւ ուրիշները...»։*

3. «Ուղղափառութիւնն» ըստ Ղ. Փարպեցու եւ Մ. Խորենացու, եւ Հայոց եկեղեցու դաւանութիւնը 5-րդ դարի երկրորդ կէսին։ — *Ղ. Փարպեցին իր Հայոց Պատմութեան առաջին դրուագը այսպէս է վերջացնում. «Եւ ի բարեխօսութենէ սուրբ հանգուցելոցն արանց [=Սահակի եւ Մաշտոցի] շնորհեցաւ աշխարհիս Հայոց պաշտօն* ուղղափառ *հաւատոց մինչեւ ցամն երկոտասաներորդ Յազկերտի արքային Պարսից որդւոյ Վռամայ»։ Այս Յազկերտի թագաւորութեան առաջին տարին է* 439 *թուին, տասներկուերորդ տարին լինում է, ուրեմն* 451 *թուին* (439+12=451)։ *Այս* 451 *թուականին հէնց տեղի է ունեցել Քաղկեդոնի ժողովը։ Կը նշանակի՝ ըստ Փարպեցու՝ մինչեւ այդ թուականը Հայաստան աշխարհի քրիստոնէական հաւատն եղել է ուղղափառ։ Հայերի ուղղափառութիւնն, ուրեմն, ոչ թէ քաղկեդոնակա-*

նութիւնն է, Քաղկեդոնի ժողովի որոշումներով, այլ նախ քան Քաղկեդոնը առաջին երեք տիեզերական ժողովների: Եւ որովհետեւ Փարպեցին իր Հայոց Պատմութիւնը գրել է 5-րդ դարի վերջերում կամ 6-րդ դարի սկիզբներին, հետեւաբար այդ ժամանակներում նա Հայոց աշխարհի ուղղափառութիւնը տեսել է քաղկեդոնի ժողովից առաջ եղածի մէջ: Սա մի կարեւոր պատմական փաստ է, որի վրայ, որքան գիտեմ, ուշադրութիւն չեն դարձրել Հայոց եկեղեցու պատմութիւն գրողները:

Փարպեցին ուսել է Յունաստանում, յունասէր է, գովեստով է խօսում յոյների եւ նրանց ուսման մասին: Ինչպէս տեսանք, նրան մեղադրում էին՝ համարելով նրան աղանդաւոր հետեւող «Հայոց աշխարհի աղանդի», որ է, ինչպէս ընդունում են, մծղնէութիւնը: Նա իրեն արդարացնելու եւ իր ուղղափառութիւնը ցոյց տալու համար գրում է իր Թղթի մէջ. «Բայց իմ ըստ կարի պարապեալ յունական ուսմանցն եւ ըստ զօրելոյ տկարամտութեանս իմոյ կարդացեալ զգիրս արանց սրբոց, որք վառեալք սուրբ Հոգւոյն զինու՝ զսուրս հոգեփողոտս աղանդաւոր ուսմանցն, դարձուցանէին անդրէն ի սիրտս նոցունց, եւ զաղեղունս նոցա փշրեցին, եւ զփրկաւոր վարդապետութիւնն իւրեանց գրով մեզ աւանդեցին, հոգացեալ իբրեւ զարդարեւ ողեսէր հարս՝ զամենայն ազգս մարդոյ օգուտն. զորոց յերկար ոք եւ ջերմ սիրով ընթերցեալ զգրեալս՝ անվնաս եւ դիւրազերծ կարէ լինել հրարձակ նետից չար ձգողացն. զորոցն ասեմ զԱթանասէ Աղեքսանդրացւոյ, եւ զերկուց միանուն արանցն՝ զԿիւրղէ Աղեքսանդրացւոյ եւ զԿիւրղէ Երուսաղեմացւոյ, եւ զԲարսղէ Կեսարացւոյ, եւ զԳրիգորէ Նազազացւոյ, որ եւ յաղագս առաւելեալ ի նմա շնորհի ուղղափառ գիտութեան Աստուածաբան յորջորջեցաւ. եւ զմերոյին առաքելանման նահատակին Գրիգորի, զվարդապետէն Հայոց, եւ զնոցունց նմանեացն, որք զնոյն շաւիղ առողջամտութեանն հետեւեալ վարդապետեցին... Յաղագս որոյ եւ զայլսն ամենայն եւ զորս առ նոսա արանցն՝ ծառայք նորա ունին զամենայն գրեալսն, զԱրիոսի Աղեքսանդրացւոյ եւ զԱպողինարիսի Լաւոդիկեցւոյ, եւ զՆեստորի զԱնտիոքացւոյ, եւ զԵւտիքեայ Կոստանդինուպօլսեցւոյ, եւ զԿումբրիկայ ստրկի, որ եւ յետոյ Մանի զինքն անուանափոխեաց, ուստի եւ Մանիքեցիք կոչեցան աշակերտեալքն նմա. եւ զայլոցն բազմաց զնոյնանման կորստեան ճանապարհին ուղեկցաց, զորս սուրբ կաթողիկէ եւ առաքելանման եկեղեցւոյ նզովեալ եւ արտաքս ընկեցեալ՝ յամենայնէ ի բաց, եւ մեկուսացեալք ի յԱստուծոյ ուղղափառ ուխտէն՝ մինչեւ ցայսօր վարին ներկեալք իւրաքանչիւր ախտիւ, անծածուկքն միմեանց, եւ յայտնի են ամենայն ուղղափառ ժողովրդոց» (1):

Փարպեցու Թղթի այս կտորն եւս Հայոց եկեղեցու դաւանութեան համար 5-րդ դարի երկրորդ կէսի վերջերում՝ մի կարեւոր փաստաթուղթ է, որի վրայ նոյնպէս ուշադրութիւն չեն դարձրել: Այդ հատուածի առա-

(1) Ղազարայ Փարպեցւոյ Պատմութիւն Հայոց եւ Թուղթ առ Վահան Մամիկոնեան, Թիֆլիս, 1907, էջ 418 եւ հտն.:

ջին մասի մէջ մեր Պատմագիրը բերում է ուղղափառ սուրբ Հայրերի անունները, որոնց հետեւում է ինքը, ուրեմն եւ Հայոց եկեղեցին, քանի որ նա այդ նշանաւոր հայրերին յիշում է իր ուղղափառութիւնը ցոյց տալու եւ իրեն արդարացնելու համար: Այդ բոլոր հայրերն ապրել եւ գործել են Քաղկեդոնի ժողովից առաջ, չորրորդ դարում, բացի Կիւրեղ Աղեքսանդրացուց, որ վախճանուել է դարձեալ Քաղկեդոնից առաջ 444 թ.: Առնենք դրանցից վերջինիս, Աղեքսանդրիայի այդ նշանաւոր եպիսկոպոսին, որի օրով Մովսէս Խորենացին ուսել է այդ քաղաքում: Նրա մասին խօսուած է մեր Պատմահօր կենսագրութեան մէջ: Այստեղ բերենք միայն նրա մեզ հետաքրքրող դաւանանքը «բնութիւնների» վերաբերեալ:

«Կիւրեղ Աղեքսանդրացու քրիստոսաբանական դրութիւնը նոյնն է իր գլխաւոր գծերով, ինչ որ Աթանասինն ու Կապադովկացիներինը», այսինքն՝ Բարսեղ Կեսարացունն ու Գրիգոր Աստուածաբանինը, որոնց եւ յիշում է Փարպեցին: Ըստ Կիւրեղ Աղեքսանդրացու՝ Քրիստոսի մէջ «աստուածային եւ մարդկային բնութիւնները միացած են անայլայլելի եւ անխառն կերպով եւ կազմում են մի՛ անձնաւորութիւն... Երկու բնութիւնների միութիւնն այնպէս է, որ իսկապէս միայն մարդեղութիւնից առաջ կարելի է այդ բնութիւնների բաժան լինելը նկատել.— Նրանից յետոյ մարդկայինը մի բնութիւն է կազմում աստուածայինի հետ», եւ ոչ թէ «երկու բնութիւնն էլ բաժան բաժան մնում մի անձի մէջ»: «Այդ պատճառով Կիւրեղը չարունակ գործ է ածում ապոլինարիստական բանաձեւերը — «Մի՛ է բնութիւն բանին Աստուծոյ մարմնացեալ» եւ «Մի բնութիւն յերկուց բնութեանց»: Պարզ է, որ Կիւրեղի վարդապետութիւնը զուտ միաբնակական է»: Քաղկեդոնի ժողովն, ընդհակառակն, երկու բնութիւնների յարաբերութիւնն այսպէս է որոշում. «Մի եւ նոյն Քրիստոս յերկուս բնութիւնս, անխառն եւ անփոփոխ [Եւտիքէսի դէմ], անքակտելի եւ անբաժանելի [Նեստորի դէմ]» (1):

«Յերկուց բնութեանց մի՛», այս է եղել դաւանանքը Կիւրեղ Աղեքսանդրացու, որին հետեւում է Ղ. Փարպեցին: Դրա համար եւ միաբնակների մեծ պարագլուխներից մէկը, Տիմոթէոս Կուզն իր «Հակաճառութեան» մէջ Կիւրեղ Աղեքսանդրացուց վկայութիւնն է բերում ընդդէմ երկաբնակների, ինչպէս՝ «Մի՛ն որդի եւ մի՛ նորա բնութիւն գոլ ասեմք», «Մի՛ որդի եւ մի՛ իւր բնութիւն գոլ ասեմք... ե՛ւ Աստուած, համանգամայն ե՛ւ մարդ» (2): Այս է եղել, ըստ Ղազար Փարպեցու վկայութեան ե՛ւ իրեն՝ Ղազարի, ե՛ւ Հայոց եկեղեցու դաւանանքը բնութիւնների վերաբերեալ՝ 5-րդ դարի վերջին քառորդին, երբ եւ կարեւոր է համարուել հայերէն թարգմանել Տիմոթէոս Էլուրոսի կամ Կուզի Հակաճառութիւնը: Բայց դա

---

(1) Ընդհանուր եկեղեցական պատմութիւն, հիւսեց Ե. Տէր-Մինասեանց, Էջմիածին, 1908, էջ 314. 328. 329. 293 եւ հտ. «Ամբողջ գիրքը քաղուած է... գերմանական ներկայ գիտութեան լաւագոյն դասագրքերից եւ այլ մասնագիտական աշխատանքներից» («Յառաջաբանից»):

(2) Տիմոթէոսի «Հակաճառութիւն», էջ 31, 108, 61 եւ այլն:

խնդրի մի կողմն է։

Ղ. Փարպեցու վերեւում բերած հատուածի երկրորդ մասի մէջ յիշւում են ա'յն աղանդաւորների անունները, որոնց նզովել է «սուրբ կաթողիկէ եւ առաքելանման եկեղեցին» եւ մերժել եկեղեցու «ուղղափառ ուխտից»։ Արիոս, Ապողինարոս եւ Նեստոր, որոնք առաջին երեք տիեզերական ժողովներով են մերժուած։ Բայց Փարպեցին յիշում է Եւտիքէսին եւ Մանիքեցիների աղանդի հիմնադիր Մանիին։ Որ ըստ Փարպեցու՝ Հայոց ուղղափառ եկեղեցին այդ ժամանակներում նզոված է եղել Եւտիքէսին,— եւ այդ անպայման պատմական իրողութիւն է, — կը նշանակէ՝ Հայոց եկեղեցին 5րդ դարի վերջին քառորդին արդէն, Ղազարի Թղթի գրելու ժամանակ, որոշ դիրք է բռնած եղել Քաղկեդոնի ժողովի պատճառով յուզուած խնդիրների նկատմամբ։ Եթէ այդպէս չլինէր, Ղազարը չէր համարձակուել վերեւում յիշուած երեք նշանաւոր նզովուած աղանդապետների հետ մի շարքի մէջ ինքնագլուխ կերպով դնելու Եւտիքէսին, որովհետեւ, ինչպէս ասուեց, նա այդ ամէնը գրում է իր ուղղափառութիւնը ցոյց տալու եւ իրեն արդարացնելու համար։ Բայց դրանով Ղազարը չէր դառնալ քաղկեդոնական-երկաբնակ, ինչպէս չի եղել եւ չէ Հայոց եկեղեցին, որ, ինչպէս յետոյ էլ կը տեսնենք, Ղազարի ժամանակից սկսած մինչեւ օրս էլ նզովել է Եւտիքէսին։ Քաղկեդոնի ժողովից շատ չանցած «միաբնակները եռանդուն կերպով աշխատում էին Եւտիքականութիւնը հեռու պահել իրենցից. նոքա մինչեւ անգամ Եւտիքէսին դատապարտում են՝ սկսած Տիմոթէոս Էլուրոսից»։ Այսպէս վարւում էին, որովհետեւ «միաբնակները... ցանկանում էին Կիւրեղի վարդապետութեան վրայ մնալ» (1)։ Քաղկեդոնականները սովորաբար նոյնացնում են եւտիքիանութիւն եւ միաբնակութիւն (մոնոֆիզիտութիւն)․ միաբնակները, սակայն, մերժում են եւտիքիանութիւնը, որովհետեւ դա ծայրայեղ միաբնակութիւն է, իսկապէս ապոլինարեան ուսումը, որ «մարդկային անձնաւորութիւնը միանգամայն ոչնչացած է համարում Քրիստոսի մէջ», որ եւ մերժուած էր Կոստանդնուպոլսի տիեզերական ժողովով (381 թ.)։ Եւտիքէսն էլ ընդունում էր Քրիստոսի մէջ մէկ բնութիւն, բայց մէկ աստուածային բնութիւնը, «որի մէջ ներծծուած է մարդկային բնութիւնը, ինչպէս մի կաթիլ ծովի մէջ»։ Այս պատճառով եւ միաբնակները, որոնց հետ եւ Հայոց եկեղեցին, մերժել են Եւտիքականութիւնը։

Հետաքրքիր է, որ Ղ. Փարպեցին Եւտիքէսից յետոյ իբրեւ նզովուած յիշում է Մանիին եւ նրա հետեւող Մանիքեցիներին։ Եթէ մի կողմից՝ այդ ցոյց է տալիս, որ Մանիքեցի աղանդաւորներն այդ ժամանակ բազմացած են եղել Հայաստանում, — Եզնիկ Կողբացին էլ մէջ է բերում եւ Մանիին, — միւս կողմից՝ այդ պարզ ապացոյց է, որ այդտեղ էլ հայերը հետեւել են միաբնակներին։ Այսպէս՝ Տիմոթէոս Կուզը գրում է. «Ամաչեսցեն երկաբնականքն եւ Եւտիքեայ աշակերտքն, եւ տարաբեղունք Մանիքեցոցն պատ-

(1) Ընդհ. եկեղեցական պատմ., էջ 338։

կառեցին՝ Հանդերձ Նեստորիւ եւ ամենայնիւք հերձուածողաւք, քանզի Բանն մարմին եղեւ, այս է մարդ՝ ընդ մնալոյն Աստուած»: «Ամաչեսցեն երկաբնականքն... ամաչեսցեն նոյնպէս Եւտիքիանականքն, Թոռունք Մանիքացւոցն» (1): Հասկանալի է, թէ ինչու Եւտիքէսից յետոյ կից յիշւում են Մանիքեցիները, որոնց «թոռներն» են համարուել Եւտիքեանները: Հասկանալի է նաեւ, թէ ինչու Փարպեցու դաւանական կտորի մէջ Նեստորից յետոյ յիշւում են Եւտիքէսն եւ Մանիքեցիների աղանդապետ Մանին:

Այսպէս՝ Հայոց եկեղեցու դաւանութիւնը 5-րդ դարի երկրորդ կէսին եղել է առաջին երեք տիեզերական ժողովների դաւանութիւնը, Նախաքաղկեդոնեան Հայրերի, յատկապէս Կիւրեղ Աղեքսանդրացու ուղղափառութեամբ «բնութիւնների» վերաբերեալ: Որ ուրիշների հետ նզովել են եւ Եւտիքէսին, որանից յետոյ յիշելով նաեւ Մանիքեցիներին, — ինչպէս է նաեւ Տիմոթէոսի Հակաճառութեան մէջ, — այդ ցոյց է տալիս, որ 5-րդ դարի երկրորդ կէսին գիտակցաբար նկատի են ունեցել մէկ բնութեան խնդիրը: Թէ ո՛ր թուականներից ի վեր, այդ կարելի է որոշել հետեւեալով:

Փարպեցին վերեւում բերուած դաւանական կտորից յետոյ նոյն Թղթի վերջում գրել է այս խօսքերն իր հաւատքի մասին. «Ոչ թերակատար գոլով սուրբ եւ ստոյգ հաւատ, զոր ունեայ ի տղայութեանն յերանելւոյ Աղանայ, կեամ նովիմբ եւ ի նմին անփոփոխութեամբ մինչեւ ի վախճան կենցաղոյս իմոյ»(2): Այդ «սուրբ եւ ստոյգ» (=ճշմարիտ) հաւատքն, ուղղափառութիւնը, ուրեմն, Ղազարը սովորել է Աղան Արծրունուց, որի համար Թղթի ընկրդրում գրում է, թէ «պատոյգն զիս պարեգօտիւք ի ծառայութենէ աշխարհիս եւ ազատութեան եղեւ մեզ առիթ»(3): Փարեցու գործածած «տղայութիւն» բառն այստեղ չպիտի հասկանալ «երեխայութիւն», այլ «պատանութիւն»: Անշուշտ, դաւանութեան մասին ուսում առնելուց յետոյ է մտցուել նա կրօնաւորութեան մէջ, երեւի 16—18 տարեկան հասակում: Որովհետեւ Փարպեցին ծնուած է մօտաւորապէս 443 թուին, ուրեմն նա կրօնաւոր է դարձել մօտաւորապէս 450-ական թուականների վերջերում, կամ 460-ական թուականների սկզբներում, երբ նա դեռ կարող էր իր համար «տղայութիւն» բառը գործածել: Իր նշանակէ՝ այդ թուականներին արդէն Աղան Արծրունին անպայման եւ ուրիշները նրա հետ, «բնութիւնների» խնդրի նըկատմամբ կանգնած են եղել միաբնակների տեսակէտի վրայ՝ «ստոյգ»=ճշմարիտ եւ «ուղղափառ» հաւատ ճանաչելով Նախաքաղկեդոնեան դաւանութիւնը, միաժամանակ եւ մերժելով Եւտիքէսին իբրեւ ծայրայեղ միաբնակի:

Գանք հիմա Մովսէս Խորենացուն: Նրա մասին պիտի նկատի ունենալ հետեւեալ հանգամանքները: Որ Յունաստանում ուսած եւ յունասէր Ղ. Փարպեցին քաղկեդոնական չէ, հետեւաբար թոյլատրելի չէ առհասարակ

(1) Տիմոթէոս Կուզի Հակաճառութիւն, էջ 239, 245:

(2) Ղ. Փարպեցի, Պատմութիւն Հայոց, 437:

(3) Անդ, էջ 411:

յունական ուսում ստացողներին, որոնց թւում եւ Խորենացուն, քաղկեդոնական համարել: Մանաւանդ պիտի նկատի ունենալ, որ Խորենացին, ինչպէս վերեւում ասուեց, ոչ թէ Յունաստանում է ուսել, այլ Աղեքսանդրիայում, այն էլ Քաղկեդոնի ժողովից առաջ, այդ քաղաքի եպիսկոպոս Կիւրեղ Աղեքսանդրացու ժամանակ: Շատ բնական է, որ «բնութիւնների» վերաբերմամբ նա էլ պիտի հետեւող լինէր Կիւրեղ Աղեքսանդրացուն, որին նա դաւանութեան նկատմամբ ճանաչում է իբրեւ «սուրբ հայր» (Հայոց Պատմ. Գ. 61): Ուրիշ խօսքով՝ նա «ուղղափառութիւն» ասելով նոյնը պիտի հասկանար, ինչ որ Ղազար Փարպեցին:

Խորենացին չէր կարող առաջին երեք տիեզերական ժողովներով սահմանուած հաւատը չարափառութիւն անուանել: Երբ նա ասում է. «վրդովեցաւ խաղաղութիւն... դրդուեցաւ ուղղափառութիւն, կայկայեցաւ տգիտութեամբ չարափառութիւն», այդ նշանակում է, որ առաջ խաղաղութիւն է եղել, որ վրդովուել է խռովութեամբ. առաջ ուղղափառութիւն է եղել, որ դրդուել (խախտուել) է չարափառութեամբ: Մի բան, մի դրութիւն պէտք է առաջուց գոյութիւն ունենայ, որ վրդովուի, դրդուի մի նոր բանով, նոր դրութեամբ: Արդ՝ հինը եղել է նախաքաղկեդոնեան ուղղափառութիւնը, նորը՝ քաղկեդոնեան երկաբնակութիւնը, եւ կարող էր ոչ թէ երկրորդը, նորը, հնով դրդուել, խախտուել, վրդովուել. այլ առաջինը, հինը՝ նորով: Հետեւաբար վրդովողը, դրդողը, նոր եկող քաղկեդոնեան երկաբնակութիւնը չէ, որով եւ դա չէ Խորենացու «ուղղափառութիւն» ասածը: Դա կարող է միայն նրա ասած «չարափառութիւնը» լինել: Բայց ոչ միայն դա, այլեւ այն ուրիշ աղանդները, յատկապէս մծղնէութիւնը, որ եղել են Հայաստանում, ինչպէս տեսանք վերեւում. դրանց, այդ ամէնին է ակնարկում Խորենացու գործածած «կայկայեցաւ» բազմապատկական բայը:

Կանգ առնենք եւ հետեւեալի վրայ, որից ազդուել է Խորենացին գրելով՝ «վրդովեցաւ խաղաղութիւն... դրդուեցաւ ուղղափառութիւն», «մարտք ի հերձուածողաց» եւ այլն: Տիմոթէոս Կուզն «Ի ժողովն Քաղկեդոնի»(1) գլուխն սկսել է այսպէս. «Քանզի յետ քակելութեան ամպարիշտ վարդապետութեանն Նեստորի, յետ մոռացման զնորայն հայհոյութիւնս եւ յամենայնում խաղաղութեան եւ անխռով ծաւալութեան գոլ, զի յամենայն եկեղեցիս Քրիստոսի մախանաւք բանսարկուին տրամաբանութիւն չարժի ի Թագաւորականին...», «Նեստորի ամպարիշտ վարդապետութիւնը եղծելուց եւ նրա հայհոյանքները մոռացութեան տալուց յետոյ՝ կատարեալ խաղաղութեան և [հաւատքի] անխռով ծաւալման մէջ էին, որ ահա բանսարկուի նախանձով՝ Թագաւորական քաղաքում (Կ. Պոլսում) Քրիստոսի բոլոր եկեղեցիներում վիճաբանութիւն ծագեց...»: Ապա Տիմոթէոսը պատմում է, թէ վիճաբանութիւնը լինում է Կոստանդնուպոլսի եպիսկոպոս Փլաբիանոսի եւ նոյն քաղաքի երէց ու վանապետ Եւտիքէսի միջև ,որոնք երկուսն էլ ուղիղ չեն մտածել,—«ոչ մի ի նոցանէ ուղղապէս խորհեցեալ գտանին», որովհետեւ Փլա-

(1) Հակաճառութիւն, էջ 144 եւ հտն.:

րիանոսը «վերստին չինել փուլթայր զՆեստորի հայհոյութիւնս… սկսեալ ազանդել երկուս բնութիւնս ի վերայ միոյ Քրիստոսի եւ հարկեցուցանէր զեւտիքէս հաւանել աղանդոց երկուց բնութեանցն» եւ այլն: — Այսպիսով 448 թուից արդէն սկսւում էին երկու ու մի բնութեան մասին վիճաբանութիւնները, որ Քաղկեդոնի ժողովից յետոյ սաստկանում են եւ վերածւում կռիւների, եւ վրդովւում է խաղաղութիւնը եկեղեցու, այլեւ պետութեան մէջ: Բայց տեսնենք, թէ ի՛նչ է գրում Տիմոթէոս Կուզը· «Եւ դայթակղեաց ի ժողովոյն Քաղկեդովնի ամենայն համարեա աշխարհ. քանզի յամենայն երկիր արտաքս եկն չարահաւատութիւնն նոցա, եւ յեզերս աշխարհի բայց ամպարշտութեան [=«չարափառութիւն»: Մ. Ա.] նոցա: Քանիք հազարք սակս այսորիկ խողխողեցան վասն Քրիստոսի, եւ յԱղեքսանդրիա եւ յԵգիպտոսի եւ յԵրուսաղէմ. զի ոչ երկրպագեցին պատկերին ոսկւոյ եւ ոչ հաւանեցան հաւասարել ժողովոյն Քաղկեդովնի, այլ զսա նզովէին համարձակութեամբ եւ առաջի իշխանացն եւ առաջի պետացն, մատնեալք լինէին ի թուեցելոցն հովուաց եւ խողխողեալք լինէին յաղագս Քրիստոսի… Եւ խաղաղարարս զինքեանս վերաքարոզեցին, որք զխաղաղութիւն հեռի ի բաց հալածեցին եւ երկպառակութիւնս եւ դայթակղութիւնս եւ հալածանս անդամոցն Քրիստոսի արարաւղք, ուխտք իսկ եղեալք եւ պատերազմացն ի վերայ յարութեան: …եւ մինչ յաւուրս յայսոսիկ տարաձայնութիւն եւ բաժանումն եւ երկպառակութիւնք եւ յեկեղեցականս զոն աւրէնս, եւ ի հաւատս Քրիստոսի քարոզեցին ահա ասելով խաղաղութիւն, խաղաղութիւն, իբր սուտ մարգարէքն Իսրայեղի, եւ ո՞ւր է խաղաղութիւն: …Ամենեցուն ահա բարեպաշտացն փակեալ են բերանք, իսկ բացան եւ համարձակին ամենայն հայհոյիչք, եւ յանդուգն լեզու զՔրիստոսէ բարբառելով եւ սուտ թիւն, այլ ոչ հաւատ. հարստահարեաց ի վերայ երկրի եւ սով եղեւ լսել զբանն Տեառն, քանզի ո՞ր եկեղեցի ոչ սգայ յԵգիպտոս եւ ի Լիբիէ եւ յարեւելս»: Ահա եւ Խորենացու խօսքերը՝ «վրդովեցաւ խաղաղութիւն», «կայկայեցաւ չարափառութիւն» եւ այլն: Խնդիրն այստեղ, հարկաւ, այն մասին չէ, որ Խորենացին կարող է այս խօսքերը ոչ թէ Տիմոթէոսից, այլ ուրիշ հեղինակից առած լինել. դա ոճական կողմն է: Այլ խնդիրն այն է, որ մեր Պատմագրի գրածը բովանդակութեամբ նոյնանում է Տիմոթէոսի գրածի հետ վերաբերմամբ այն դրութեան, որ Քաղկեդոնի ժողովի պատճառով եղել է 5-րդ դարի երկրորդ կէսին:

Ուշադրութեան պիտի առնել եւ այն, որ Տիմոթէոսի կարծիքով,— որ նա ուրիշ անդամներ էլ կրկնում է, — երկու բնութեան վարդապետութիւնը Նեստորի աղանդի վերականգնումն է: «Արեւելքը միշտ կասկածի մէջ է եղել, թէ արդեօք… քաղկեդոնականութիւնը նեստորականութիւն չէ՞» (1), եւ նոյնիսկ նեստորականութիւն էլ համարել են: Այս կարծիքին եղել են նաեւ Պարսկաստանի նեստորականներն, ինչպէս եւ հայերը 6-րդ դարի ըս-

(1) Ե. Տէր-Մինասեան, Ընդհ. եկ. պատմ., էջ 336, Ե. Տէր-Մինասեան, Հայոց եկեղեցու յարաբերութիւնները ասորոց եկեղեցիների հետ, էջմ., 1908, էջ 77 եւ հտն.:

կիզբներին, անպայման եւ աւելի առաջ: Այդ երեւում է Բաբգէն կաթողիկոսի մօտաւորապէս 508 թ. «Ի Պարսս առ ուղղափառ» գրած երկրորդ նամակից: Պարսկաստանի «ուղղափառները», որոնք դաւանակից են եղել հայերին, յայտնում են, թէ նեստորականները «զմարտ պատերազմի նորոգելով» պնդում են իրենց մոլորութեան վրայ՝ «ի ժողովոյն Քաղկեդոնի զօրացեալ»: Այդ նշանակում է, որ այդ նեստորականները համարել են, թէ Քաղկեդոնի ժողովով ընդունուել է Նեստորի վարդապետութիւնը: Հայոց կաթողիկոսն իր թղթի մէջ գրում է. «Փախչիմք ուրացեալ զ'ի Քաղկեդոնին ստութիւն Նեստորի և այլոցն նմանից, զոր գիտեմք կեղծաւորութեամբ փախուցեալ ի հեթանոսութենէ եւ ի հրէական մոլորութենէ, եւ զնոյն խոստովանին զհեթանոսութիւն, միանգամայն եւ զհրէութիւն»: Կաթողիկոսի նամակի այս կտորը համարել են երկդիմի: Բայց ոչ մի երկդիմութիւն չկայ. դա վերաբերում է պարզապէս Քաղկեդոնի ժողովին: «Ստութիւն» բառով անուանում է Նեստորի վարդապետութիւնը, ինչպէս որ Տիմոթէոս Կուզը վերեւում բերուած հատուածի մէջ երկաբնակութեան համար գրում է «ստութիւն, այդ ոչ հաւատ»(1): Տիմոթէոսն ուրիշ տեղ(2) գրում է. «Նզովեմ զամենայն հերձուածս... եւ զ'ի Քաղկեդոնին եղեալ ժողովն»: Արդ, Բաբգէն կաթողիկոսի թղթի մէջ գործածուած է, Տիմոթէոսից ազդուելով, միեւնոյն բանաձեւը, միայն «ժողով» բառի տեղ գրուած է «ստութիւնն Նեստորի եւ այլոց նմանից» և վրիպուած է «եղեալ» բայը, ինչպէս վարւում են յաճախ (3) «ուրացեալ զ'ի Քաղկեդոնի [եղեալ] ստութիւն Նեստորի եւ այլոց նմանից»,— «ուրանալով (մերժելով)Նեստորի եւ այլ նմանների ստութիւնը, որ եղել է Քաղկեդոնում»: Այդ նշանակում է, թէ Քաղկեդոնում եղած որոշումն ուրիշ բան չէ, բայց եթէ Նեստորի սուտ վարդապետութիւնը. ուստի անմիջապէս հրէական մոլորութիւն է անուանում այդ: Այսպէս եւ Մ. Խորենացին (Գ. 61) գրում է, թէ Նեստորը «հրէական իմացմանց հետեւեալ՝ հայհոյեաց...»:

Քաղկեդոնի ժողովի վերաբերմամբ Հայոց կաթողիկոսի բռնած այս դիրքն ունեցել է իր նախապատրաստական շրջանը, սկսած Ղ. Փարպեցու պատմութեան շրջանից, եւ այդ դիրքը պաշտօնապէս որոշուած է 506 թուականից առաջ արդէն եւ ոչ թէ, ինչպէս կարծում են առաջին անգամ՝ մօտաւորապէս 508 թ.: Այսպէս ենթադրում են այն հիմամբ, որ Բաբգէնի առաջին Թղթի մէջ, որ գրուած է 506 թ. Դուինի ժողովի կողմից, չկայ Քաղկեդոնի յիշատակութիւն, խօսւում է միայն Նեստորականութեան մասին. իսկ նրա երկրորդ Թղթի մէջ մերժւում է Քաղկեդոնը, դրւում է Հայոց եկեղեցու դաւանութիւնը, ուրիշների հետ երկու անգամ նզովւում է Եւտի-

---

(1) Հակաճառութիւն, էջ 150:

(2) Անդ, էջ 330:

(3) Օրինակ՝ Խոր. Պատմ. Հայոց, Գ. 28. «Նետիւք խոցոտել զ'ի վերայ պարսպին», որ է՝ «զ'ի վերայ պարսպին եղեալսն»:

ար(1)։ Այստեղ, այս երկրորդ Թղթի մէջ գրուած դաւանութիւնը նոյնն է, ինչ որ Ղ. Փարպեցունը։ Արդ՝ Բաբգէնի առաջին Թղթի մէջ իշխանների շարքում առաջին տեղում յիշուած է Վարդ Մամիկոնեանը, իսկ նրա երկրորդ Թղթի մէջ նոյնպէս գրւում է՝ «Ի Վարդայ Մամիկոնէից տեառնէ եւ ի Հայոց մարզպանէ»։ Կը նշանակի՝ 506 թուականից առաջ Վահան Մամիկոնեանն արդէն վախճանուած է եղել, եւ նրան փոխանորդել է իր եղբայր Վարդը։ Իսկ Ղ. Փարպեցու Թուղթն ուղղուած է Վահանին, ինչպէս եւ նրա Հայոց Պատմութիւնն, ուրեմն, գրուած է Բաբգէն կաթողիկոսի 506 թ. գումարած ժողովից տարիներ առաջ։ Հետեւաբար եւ այդ ժողովից, 506 թուականից առաջ արդէն որոշուած է եղել Հայոց եկեղեցու դիրքը մի բնութեան եւ երկու բնութեան վերաբերմամբ, քանի որ այդ որոշ է ըստ Ղ. Փարպեցու Թղթի, նոյնիսկ Եւտիքէսին նզովելով հանդերձ։ Այդ կատարուած է հաւանօրէն Յովհան Մանդակունու կաթողիկոսութեան ժամանակ, երբ եւ 480—484 թուականների մէջ թարգմանել են Տիմոթէոս Կուզի Հակաճառութիւնը, երբ Քերթողահայր Մովսէսը, ապա եւ Յովհան Մանդակունի կաթողիկոսը գրել են իրենց յայտնի Թղթերն ընդդէմ երկաբնակութեան։ Ուրեմն այդ ժամանակներում, 5-րդ դարի վերջին տասնամեակներում արդէն, հայերն, իբրեւ արեւելցի, բնականաբար պաշտօնապէս կանգնել են արեւելեան քրիստոնեաների ուղղափառութեան տեսակէտի վրայ, այն էլ շատ որոշ կերպով, բնութիւնների նկատմամբ ըստ Կիւրեղ Աղեքսանդրացու, միաժամանակ եւ նզովելով եւ Եւտիքէսին։

---

(1) Գիրք Թղթոց, էջ 49 եւ հտ.։

# ՑԱՆԿ

## ԱՆՁՆԱՆՈՒՆՆԵՐԻ

# ՑԱՆԿ

## ԵՐԿՐՈՐԴ ՇՐՋԱՆ

## ԵԿԵՂԵՑԱ - ՔԱՂԱՔԱԿԱՆ ՄԱՔԱՌՄԱՆ ԳՐԱԿԱՆՈՒԹԻՒՆ

## ԱՌԱՋԻՆ ՀԵՂԻՆԱԿՆԵՐ

## ԱՌԱՋԻՆ ՊԱՏՄԱԳԻՐՆԵՐ



## ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՎԷՊ

## ԴԱՍԱԿԱՆ ՊԱՏՄԱԳԻՐՆԵՐ

## ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆՆԵՐ



## ԴԱՒԱՆԱԲԱՆԱԿԱՆ ՊԱՅՔԱՐԻ ԳՐԱԿԱՆՈՒԹԻՒՆ

## ԲԱՆԱՍՏԵՂԾՈՒԹԻՒՆ



## ՊԱՏՄԱԳՐՈՒԹԻՒՆ



## ՎԻՊԱԿԱՆ ԲԱՆԱՀԻՒՍՈՒԹԻՒՆ



## ՄԱՔԱՌՈՒՄ ԱՐԱԲԱԿԱՆ ԲՌՆԱՊԵՏՈՒԹԵԱՆ ԴԷՄ

## ԵՐԿՐՈՐԴ ՅԱՒԵԼՈՒԱԾ



## ԵՐՐՈՐԴ ՅԱՒԵԼՈՒԱԾ



## ՉՈՐՐՈՐԴ ՅԱՒԵԼՈՒԱԾ



## ՀԻՆԳԵՐՈՐԴ ՅԱՒԵԼՈՒԱԾ



## ՎԵՑԵՐՈՐԴ ՅԱՒԵԼՈՒԱԾ



## ԵՕԹՆԵՐՈՐԴ ՅԱՒԵԼՈՒԱԾ